# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

# ՈՍԿԵԲԵՐԱՆ

Digitized by Google

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԻ

## ՃԱՌՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

---

ՅԱՄԻ 1861 ՌՅԺ

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ոչ Ճառս Ոսկեբերանի զոր յայլևայլ դէպս խօսեցեալ է նորա, պատեհաւս այսու տամք 'ի լոյս 'ի վայելս հասարակաց, թէպէտ և յոյժ նուազունս թուով քան որչափ ինչ կան 'ի յոյն բնագրին. և զայն յերկուս կարգս բաժանեցաք ըստ յոյն տպագրին՝ հետևեալ հմուտ քննաբանութեան Մոնֆոքոնի, յառաջինումն զհարազատսն և զաներկբայելիսն դասեալ ըստ նորա, և յերկրորդումն զերկբայականսն. յաւելաք զկնի և զորս յազգի մերում ևեթ գտանէին յանուն սուրբ վարդապետին, յունականին նոցա ցարդ չերևեալ ուրեք և կամ կորուսեալ և թերևս 'ի սպառ ընդ անհարազատս գրեալ 'ի գիտնոց. դէպք ժամանակաց և հայրենասիրացն իղձք տացեն լրումն ամենայն թերութեանց 'ի ճոխութիւն և 'ի ճշգութիւն ազգային ցանկալի մատենագրութե̃ց։

Ի ստորևս Ճառիցս իւրաքանչիւր գտցեն խնդրողք զթիւ օրինակաց նոցա, և զմեր ընտրութիւն 'ի նոսա 'ի բաղդատութենէ յունականին։

Digitized by Google

հաւատարմագոյնք ։ Քաղաք այս մեծ և յոգնամարդ, բազմութիւն սքանչելի և մեծ՝ առ մեր վատութիւն բերանաբաց է, որպէս թէ . . . .[1] յիմում բերանոյ այսքան հոյլք ժողովելոցս լսումն, վաղվաղակի արդեօք արգելեալ լինէր երկիւղիւ հոսումն, և անդրէն դարձեալ յետս վտակն ։ Իսկ յորժամ ոչ զգետոց և ոչ զաղբերացն միայն, այլ և ոչ զանարգ մասն ցօղոյ ամբողջ պահեսցէ զչափ, զիարդ ոչ իցէ երկիւղ՝ մի գուցէ և այս սուղ հոսումս թողցէ զմեզ ահիւ ցամաքեալ ամենայն, և լինիցի նմանապէս իմն որ և մարմնոյն հանդիպեալ սովորեաց ։ Եւ զինչ լինիցի մարմնոյն ։ Ո յոլովս բազում անգամ հաւաստեաւ ունելով ձեռօք, և մատամբք շուրջ պնդելով 'ի վերուստ, զարհուրեալք յանկարծակի զամենայն ցնդեմք, թուլան . . . . այ խստութեամբ հաւաքեցի ձեզ սուղ ինչ իմաստս, փոքրս այս՝ և յահէ զանխլացեալ 'ի բաց գնացէ, և զմիտս մեր անապատ թողլով թռչիցի ։

Եւ վասն որոյ աղաչեմ զձեզ զամենեսին, նմանապէս մաղթեմ զիշխանս և զիշխեցեալս, որքան մեզ ահ արկէք միահամուռ ընթանալով 'ի լսելութիւնս, նոյնքան ընձեռեցէք քաջալերութիւն փութով աղօթից. և աղաչեցէք՝ որ տայն բան աւետարանչաց զօրութեամբ բազմաւ, տացէ ինձ բան 'ի բանալ բերանոյ իմոյ ։ Ձեզ ամենայն իրօք և ոչ մի ինչ աշխատութիւն այդքանեաց և այդպիսեաց՝ զմիոյ մանկան զօգի որ ահիւ է լքեալ՝ պնդել. դարձեալ իրաւացի գտանիք զայս հայցուած ինձ տալով. զի յաղագս ձեր 'ի վտանգս յայս եդու զանձն, վասն ձեր և սիրոյդ ձերոյ, քան զոր ոչ ինչ է զօրաւորագոյն և ոչ բռնագոյն, որ և ոչ զմեզ հմուտս ունել ասելոյ՝ դաւանեցոյց առնել, և 'ի վարդապետութեան ասպարէզ հանդիսանալ պատրաստեաց, թէպէտ և ոչ յառաջագոյն քան զայս բուռն հարաք զմարտէս, այլ միշտ ընդ լռողն էաք կարգեալք և յանհոգութեան հանդարտութիւն վայելէաք ։ Եւ ո՞ այսքան խիստ և դժուարածող, մինչ զի ձեր ժողովքդ 'ի մէջ անցեալ, և լսելութեանս ջերմագոյն ցանկացողք լինել՝ ոչ ասելոյս, թէպէտ և քան զամենայն մարդ անձայնագոյն ոք իցէ ։

1 Տողք երկու խանգարեալք. նոյնչափ և զինի ։

Կամէի նախ առաջին՝ յեկեղեցիս հանդերձեալ գալ՝ զբանս սկսանել զյառաջաբանիս որ մեզ լեզու զայս տայ ած ։ Զի և այն իսկ է պարտ և արժան․ քանզի ոչ միայն զկալոց և զհնծանի, այլ և զբանից պտուղս տալ պարտ է այ, և զբանին առաւել ևս քան զորայից․ որքան և մեզ սա ընտանագոյն է պտուղ, և նմա սիրելի պտուղին այ ։ Զի զողկոյզ և զհասկ զոգք երկրի բերեն, և մատուցանեն անձրևոցն ՚ի վերայ հոսմունք, և երկրավաստակացն ձեռք դարմանեն․ իսկ զածայինն օրհնութիւն ծնանի երկիւղած անձն, մատուցանէ բարի մըտածութիւնն, և ընդունի յըշտեմարանս երկնից ած․ արդ որքան լաւագոյն է քան զերկիր անձն, այսքան և սա վեհագոյն է քան զայն ընծայ ։

Յաղագս այսորիկ և ՚ի մարգարէիցն ումն այր զքանչելի և մեծ, որում անունն էր Ովսէէ, որք այ ընդդիմացեալքն էին և կամէին հաշտեցուցանել զնա, պատուիրէր ասելով․ բերէք ընդ ձեզ ոչ արջառոց հօտս և ոչ նաշհոյ այսքան չափս, ոչ տատրակ և աղաւնի և ոչ այլ ինչ այնպիսեացն․ այլ " բերէք ընդ ձեզ, ասէ, բանս „ ։ Իսկ զինչ պատարագ է բան, թերևս ասիցէ ոք․ մեծ է, ով սիրելի, և պանծալի և քան զայլսն ամենեսեան վեհագոյն ։ Իսկ ով զայս ասէ․ որ սա ինքն մանաւանդ զայս քան զայլսն գիտէ հաւաստեաւ, առաքինին և մեծն Դաւիթ ։ Վասն զի այ երբեմն գոհացողութիւնն ունէր ընծայելով՝ յաղթութեանն պատերազմի եղելոյ, այսպէս իմն ասէր " Օրհնեցից զանուն այ իմոյ հանդերձ երգով․ և մեծացուցից զնա գովութեամբ „ ։ Իսկ ապա զընծայիս զայսորիկ զգերազանցութիւնն մեզ ցուցանելով ՚ի վերայ եած․ " Եւ հաճոյասցի այ քան զորթ մատաղ, որ բերէ զեղջերս և զկճղակս „ ։

Ախորժէի և այսօր զայս ընծայ առաջի դնել և ես, զսեղան ՚ի զոհից այսոցիկ հոգևոր արեամբ շաղախել ։ Այլ զինչ կրեցից, իմաստուն այր ըմբերանէ զիս և զարհուրեցուցանէ ասելով․ " Ոչ է գեղեցիկ գովութիւն ՚ի բերան մեղաւորի „ ։ Զի զոր օրինակ ՚ի պտղոց ոչ միայն ծաղիկքն պարտ և արժան է թէ մաքուրք իցեն՝ այլ և ձեռքն որ յօրինեն զնոսա, նոյնպէս և յածային օրհնութիւնս, ոչ բանիցն ևեթ վայելէ հաղորդս լինել երկիւղածութեանն, այլ և որ պատշաճեցուցանէն

ըստ իրաւացւոյն . քանզի չար գաղան է մեղաւորն , գաղան չար և անընդել[1] , ոչ 'ի ծառայակցաց մարմնոս զչարութիւնն ցուցանելով , այլ 'ի փառսն տէրունեանս զչար Թոյնսն հեղու . քանզի " Վասն ձեր , ասէ , անուն իմ հայհոյի 'ի հեթանոսս ,, : Յաղագս այնորիկ զնա իբր յանծայրն գուռակ՝ յաշխարհէ 'ի բաց վարեաց մարգարէն , և արտաքոյ քան զսահմանս բնակեցոյց . նոյնպէս և առաքելոյն երաժշտականն զքաղցրալար քնարի[2] զվատահնչող աղի խզէ , զի մի այլոց հնչումն յարմարութեանն ժանտասցի . նմանապէս և արուեստաւոր բժիշկ զփտեալ անդամ հատանէ , զի մի 'ի նմանէ ժանտահոտութիւնն յայլոց անդամոց քաղցրողջութիւնն ընԹասցի . այսպէս և մարգարէն արար , իբրև զվատահնչող աղին և իբրև զանդամ ապականեալ յամենայն մարմնոյ յարարածոցս զմեղաւորն 'ի բաց եհատ :

Իսկ արդ զինչ արդեօք առնելի իցէ մեզ : Վասն զի հաւատք , հարկաւոր է ամենայն իրօք լսել : Իսկ ո՞չ ոք մեզ ներեսցէ օրհնել զտէրն մեր , և ընդ վա՞յր կոչեցաք զձեր զաղօթսդ , մնացեալ 'ի ձեր բարեխօսութիւնդ ապաւինեցաք : Ոչ ընդունայն , մի լիցի . քանզի մեւս եւս օրինակ փառաբանութեան ձերովք աղօթիւքդ 'ի մէջ տարակուսանացս այսց իբրև փայլակն իմն 'ի խաւարի երևեալ , որովք մեզ իշխանութիւն է զծառայակիցսն գովել . նոցա պատուեցելոցն յամենայն իրօք փառքն երևեալ ելանեն . որպէս և ինքն ասէ . " Պայծառասցի լոյս ձեր առաջի մարդկան , որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զհայր ձեր որ յերկինս է ,, : Նա մեւս եւս փառաբանութեան օրինակ . զոր և մեղաւորի կարողութիւն է ասել , և ոչ լուծանել զօրէնսն :

Իսկ զո՞ արդեօք գովեսցուք 'ի ծառայակցացն . զոչ այլ ոք , բայց զհաստարակաց զվաստակս վարդապետ , և յաղագս փառաւս և յաղագս աշխարհի ամենայնի . զի զոր օրինակ սա զձեզ խրատեաց մինչև ցսահ յաղագս Ճշմարտութեանն կեալ , նոյնպէս և դուք զայլ մարդիկ ուսուցանէք՝ յանձնէն մանաւանդ քան թէ 'ի բարեպաշտութենէն 'ի բաց կալ : Արդ կամիք եթէ աստի յօրինեսցուք զգովութեանցն զպսակս . ախորժէի և ես .

1 Օրինակքն ընդել :    2 Օրինակքն քնար :

այլ տեսանեմ անբաւ խորս զուղղութիւնս՝ և երկընչիմ մի գուցէ յատակն իջանելով բանս տկարացի դարձեալ 'ի վեր ընթանալ։ Վասն զի հարկաւոր է զհիմն ուղղութեանն պատմել, զօտարութիւնս, զհսկմունս, զհօգս, զբանս, զխորհուրդս, զմարտս, զյաղթութիւնս, և զնահատակութիւնս ընդ նահատակութեանս միաւորել. իբր որ ոչ քան զմեր միայն, այլ և քան զամենայն մարդկային լեզու մեծագոյն են. առաքելական ձայնի կարօտեալ հոգւով շարժելումն, որում զամենայն և ասել և վարդապետել կարողութիւն էր։ Յաղագս որոյ զայսու մասամբ զանց առնելով, 'ի միւս ևս զգուշագոյնն երթիցուք, 'ի յոր իջանելումն աւելի փոքր ինչ է կարողութիւն։

Արդ բեր յաղագս ժուժկալութեան շարժեսցուք զբանս, զնորդ ժուժկալեաց որովայնի, որպէս անտես արար զփափկութիւն, զնորդ ծաղր արար զբազմապատիկ սեղանն, և այս 'ի յոքնազան տան սնեալ։ Աքանչելի ինչ ոչ իցէ որում [1] յաղքատութեան եկաց՝ 'ի ցամաքուտ և 'ի խիստ վարս յայս գալ, վասն զի ունի վարդապետ իւրաց զաղքատութիւնն վաճառակից միանգամայն և ուղեկից, և զբեռն հանապազօր 'ի նմանէ թեթևացուցանէ. բայց որ փարթամութեան լեալ է տէր, ոչ դիւրաւ զըմբռնմունս նորա 'ի բաց մերկանայ, այնքան ախտիւն պար շուրջ զնորա անձամբն թուչելով։ Իսկ յոլովութիւն վտանգիցն ծանր խաւարաւ զնորա զաչս մտացն խնուն. ոչ թողացուցանեն յերկին նայել, այլ 'ի վայր բանադատեն հայել և առ երկիր բերանաբաց լինել։ Քանզի ոչ ինչ է և ոչ ինչ այլ խափան երթալոյն յերկին որպէս զընչեղութիւնն և որ 'ի յընչեղութենէն չարիք. և ոչ է իմ այս բանս, այլ 'ի Նոցուն իսկ յերկնից վճիռս էջ. “Դիւրագոյն է, ասէ, ուղտու ընդ ծակ ասղան անցանել քան փարթամի յարքայութիւն երկնից„։ Այլ ահա դժուարին այս, մանաւանդ թէ անկարելիս այս՝ եղև կարելի։ Իսկ զոր յառաջագոյն Պետրոս տարակուսէր առ վարդապետին և ուսանել հայցէր, զայս փորձիւ ամենեքեան գիտացաք յաւէտ առաւելագոյն քան զայն։ Քանզի ոչ սա միայն

1 Օրին. պակասէր որում յաղքատութեան էկաց. յաւելու 'ի յօրինէն։

յերկլին եւ, այլ և զբազմութիւն մեծանէ զայսքան հան-դերձ ընչեղութեամբ և միւս ևս քան զփարթամու-թիւնն ոչ ինչ նուազ խափան ունելով զմանկութիւնն և զտարտամութիւնն, որք զամենայն մարդկան բաւա-կանք են կախարդել զանձինս:

Այնպիսի իմն ունէին յառութիս, այնպէս պատրաստեն զգեղմն. այլ քան զայսոսիկ սա զօրացաւ և զերկնից բուռն եհար, և առ անդ յիմաստութիւնն փոփոխեաց զինքն. և ոչ զպայծառութիւն մերձաւոր կենացս զմը-տաւ ինչ ած, և ոչ 'ի նախահարցն վեհութիւնն հայե-ցաւ. մանաւանդ թէ և զնախահարցն երջանկութիւնս հայեցաւ, ոչ որ ըստ բնական իրացն կապեալք էին ընդ նմա, և որք ըստ յորդորական բարեպաշտութեն պատշա-ճագոյնք էին նմա. յաղագս որոյ և այսպիսի եղև: Քան-զի հայեցաւ 'ի հայրապետն Աբրահամ, հայեցաւ 'ի մեծն Մովսէս որ 'ի տան թագաւորի սնեալ, և 'ի սեղանոյ հա-ղորդեալ սարկերխոնկացոյ[1], և 'ի մէջ եգիպտական ամբո-խիցն ըմբռնեալ. գիտէք զինչ բարբարոսացն իսկ որքան ամբարտաւանութք և առ այս երևութիւք լինի, զա-մենայն անպատուելով զայն՝ առ կաւ և առ աղիւս հա-տուածեաց, ընդ ծառայս և ընդ գերիս գոլ բաղձացաւ թագաւորն և թագաւորի նորին որդի: Յաղագս այնո-րիկ պայծառաձևով ելանէր և քան զոր յառաջագոյնն ունէր՝ առ զհատուցումն:

Քանզի յետ փախստեանն և առ աներոյն ծառայու-թեան և օտարութեան և տառապանաց, ելանէր թա-գաւորին լեալ թագաւոր, մանաւանդ թագաւորին լի-նելով ած. վասն զի "Եդի զքեզ, ասէ, ած Փարա-ւոնի,,: Եւ պայծառագոյն էր քան զթագաւորն, ոչ թագ ունելով և ոչ ծիրանիս զգեցեալ և ոչ կառս վա-րեր ոսկեղէնս, այլ զամենայն զհպարտութիւնն զայն կոխեաց. "Ամենայն փառք դստեր թագաւորի 'ի ներ-քոյ,,: Ելանէր ունելով զաւազան, որով ոչ մարդկան ևեթ հրամայէր, այլ երկնի և երկրի և ծովու և օդոց և ջուրց բնութեան և լճաց և աղբերաց և գետոց. քան-զի զամենայն զոր ինչ կամէր Մովսէս, այն նշանք լի-նէին, և 'ի նորա ձեռս դարձեալ փոփոխեալ ձևանային

1 Այսպէս յօրինակին, զոր յոյնն սինպասէոծ ասէ:

տարածք ։ Այս զոր օրինակ աղախին որ բարեմիտ զտեառըն սիրելի տեսանելով մերձ լեալ՝ յամենայնի հաւանի և հնազանդի, նոյնպէս զնա տեսանելով՝ լինէին այնոքիկ ։ Այս մանուկ էր, եթէ երբէք եղև մանուկ ․ զի և ոչ ես իսկ հաւանիմ, այլ 'ի նոցունց 'ի խանձարրոցն այնպէս էր 'ի նմա ալևորաց իմաստութիւնն ․ բայց ըստ հասակին բանի մինչ մանուկն էր, զամենայն իմաստութենէ բուռն հարկանէր, և ուսեալ զընթութիւնս մեր ․ զի տեղի իմն է անտառաւոր, զախտս անձին բանիւ բարեպաշտութեամբ իբրև գերանդեաւ իւիք դիւրաւ 'ի բաց հատանէր, մաքուր զսա ընձեռելով իբրև երկրագործի զանդաստանս 'ի սերմանցն ցանումն ․ և ընկալեալ զամենայն 'ի խորս սաւաքէր, որպէս զի 'ի վերուստ արմատացեալք ոչ արկածից ճառագայթիցն տայցեն տեղի, և ոչ 'ի փշոցն դարձեալ հեղձնուցուն ։

Այս զոգլին գարմանէ այսպէս ․ իսկ զմարմնոյն զխայտանս՝ ժուժկալութեան դեղովքն զսպէր, իբրև ձիոյ իմիք խստերախի՝ մարմնոյն զպահոցն սանձս 'ի բերան արկանէր ․ և ցայնքան յերկարէր զկնի, մինչ զի զնոյն ինքն զցանկութեանցն խաթարէր[1] զերասնս, սակայն հանդերձ օրինաւոր խնայութեամբ ։ Քանզի ոչ 'ի վայր ընկենոյր զմարմինն, որպէս զի մի ձին խափանեալ անպիտանացու նմա լինիցի առ 'ի սպասաւորութիւն ․ և ոչ 'ի սաստիկ քաջողջութիւնս անկանել թողացուցանէր, զի մի բազմամիս լեալ՝ հակառակ երասանակալին դարձեալ յարուսցէ զխարհուրդան ․ այլ միանգամայն առողջութեան նորա և քաջողջութեան խնամարկէր ։ Այս ոչ մինչ մանուկն էր այնպիսի ոք էր, և յորժամ էանց ըղհասակաւն զայնու՝ և զնախախնամութիւնն ելոյծ ․ այլ և այժմ յորժամ յանքոյթ նաւահանգստեանն 'ի ծերութեանն նստի և զնոյն ունի խնամակալութի ։ Վասն զի մանկութիւն, ով սիրելի, խորոց նմանեցաւ մօրելոյ և վայրագ ալէկոծութեանց և որ լի է այսովք չարութեանց ․ իսկ ալիք իբրև նաւահանգիստ առանց ալէկոծութեան զծերոցն դադարեցուցանէ զանձինս, ընձեռելով 'ի հասակէն փափկանալ զգուշութեամբ ։ Յորում սա այժմ վայելելով և 'ի նաւահանգստի նստե-

1 Յօրինակին խաթարէր գրեալ ։

Digitized by Google

լով քան որք 'ի մէջ խորոցն սկաանին՝ ոչ ինչ նուազ է 'ի հոգս։

Նա զայս երկիւղ ընկալաւ 'ի Պաւղոսէ որ 'ի նոյն ինքն յերկինս յայս ել, և որ զկնի սորա 'ի վեր ընթացաւ և 'ի յերկրորդն մերձեցեալ ասէր. "Արկանչիմ մի գուցէ այլոց քարոզելով՝ ես անփորձ լինիցիմ„, վասն այնորիկ և սա մշտնջենաւոր հաստատեաց զինքն յերկիւղի, զի յաւիտենական իցէ 'ի համարձակութեան. և նստի 'ի վերայ ղեկաց, ոչ ընդ աստեղացն պայծառութիւնս նայելով և ոչ զ'ի ներքոյ ջրոյ զվէմս և զանձաւս դիտելով, այլ դիւացն 'ի վերայ յարուցեալ, և սատանայի 'ի չարագործութենէն և 'ի խորհրդոցն կռուելոյ և 'ի շուրջ բնակեցելոցն զգուշանալով՝ զամենեսեան պահել յաներկիւղութեան. որպէս զի մի 'ի նաւարկելոցն ոք փորձ առցէ մրրկաց իրիք՝ զամենայն հնարի։ Յաղագս սորա իմաստասիրութեան մեք առանց ալէկոծութեան նաւեմք ամենեքեան, լի զառագաստ սփռեմք զնաւիս։

Թէպէտ և առաջին 'ի հօրէն վրիպեցաք՝ որ և զսա մեզ ծնաւ, 'ի տարակուսանս էին մեր իրք. յաղագս որոյ և ողորմելի ողբացաք, ոչ վստահանալով աթոռոյս այնպիսի զայլ որ զայր դարձեալ ընդունել։ Բայց յորժամ սա երևեցաւ և էանց 'ի մէջ, ամենայն տրտմութեանն այնմ անցանել արար իբրև ամպոյ, և զտխրականն բոլորեսեան ծածկեաց. ոչ սուղաբար 'ի մէնջ 'ի բաց ջնջելով զսուգն, այլ այնպէս յանկարծակի՝ որպէս թէ երանելւոյն ինքն ննջեաց արդեօք և 'ի տապանէն յարուցեալ յաթոռ նստաւ յայսմ։

Այլ մոռացաք հայրենի ուղղութեանցս փափաքանօք քան զչափ բանից արտաքս անկեալք, ոչ ըստ չափաւոր ուղղութեանցս, զի յայնմանէ չև ևս ճաշակեցաք, այլ ըստ չափ յարմարական մերոյ մանկութեանս։ Ներ այսուհետև զբանս իբրև 'ի նաւահանգստի լռութեամբ դադարեցուսցուք. բայց ոչ կամին 'ի բաց կալ, այլ դժուարին և զայրանան, ամենայնիւ յղփանալ բաղձանս. բայց այդ անհնարին է, ով մանկունք։ Դադարեսցուք այսուհետև հալածելով զանըմբռնելին. բաւական և մեզ 'ի մխիթարութիւն ասացեալքս։ Զի և իւղոց անուշից ոչ եթէ զսանն միայն հեղուցու, այլ թէ և ծայրիւ մասինն մերձենայցէ, զօդս լնկէ, և զմեր-

ձայնարս զամենեսեան անուշահոտութեամբ քում։ Մի և այժմ եղև, ոչ յաղագս զօրութեան մերոյ բանից, այլ վասն սորա ուղղութեանց։ Յիշեցուք այսուհետև երթիցուք յաղօթս դադարելով, և համարձակ մեծանեսցուք աղաչեսցուք զի համարակից մայրս մեր անշարժ և անզգուշելի կացցէ մնասցէ, և հոգիս մեր այս վարդապետութեամբ և ուսումնարանս և հովիւս յերկնայնագոյն կեանս ժառանգեսցէ։

Այս եթէ է ինչ ձեր և մեր բան, քանզի ոչ ընդ քահանայս զանձինս համեմատել իշխեմք, զի և ոչ օրէն իսկ է մկրտածին ընդ կատարեալ ծնունդս 'ի թիւ անկանել, այլ եթէ է ինչ ձեր առ իս բան իբրև առ տղայ ոք, աղաչեցէք յաղօթս մեզ 'ի վերջաւոր լինել հոմանոն։ Պետք էին մեզ և յառաջագոյն բազում զգուշութեան յորժամ առանձինն կեաք զանհոգ կեանս. բայց որովհետև 'ի մէջ եկաք, և եթէ զխառն` թողում, եթէ մարդկային փութով և եթէ ինքնային շնորհիւ` ոչ ինչ ընդ ձեզ յաղագս այդորիկ համարձակեմ, զի մի ինչ ոք զիս պատճառեալ ասիցէ, բայց սակայն զի 'ի մէջ եկաք, և ընդ զօրաւոր[1] ձուկս ընդ այսու մտաք; բազում ձեռաց են մեզ պէտք, բիւր աղօթից, որպէս զի կարիցեմք զաւանդն հատուցանել ամբողջ աւանդադրին տեառն յաւուրն յայնմ, յորժամ որ զանազանդան հաւատացեալ են` կոչին և 'ի նոյնս մածանելին և զվարկն պահանջեսցին։ Արդ աղօթեցէք մի 'ի կասկեացն մեզ լինել և մի 'ի խաւար անկելոցն, այլ որք կարիցեն գոնէ չափաւոր ինչ թողութեան հանդիպել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր փառք պատիւ և զօրութիւն հանդերձ սրբոյ և բարերարի հոգւոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Յօրինակին զօրաւոր 'ի ձուկս։

Վասն զի թշնամանք են զզէն ընկենուլ և պատերազմողացն ծաղր լինել. իսկ որ կայ մնայ կռուելով, եթէ սպանանիցէ և եթէ տեղի տացէ փոքր ինչ, ոչ ոք այնպէս դժոխաբարոյ և ոչ անհմուտ պատերազմողացն զայնպիսին բամբասիցէ արդեօք ոք երբէք։ Ոչ պատերազմելոցն է ոչ ընդունել վէր. իսկ որ սրտմտութեամբ ընդդէմ պատերազմողացն յարձակիցին, լինի երբեմն և անկանիլ 'ի մարտին. որպիսի քեզ եղև, քանզի յանկարծակի զոր պարտէիրն սպանանել՝ ըմբռնեալ ցուցար։

Այլ վստահացիր. դուզնաքեայ պէտս ունիս արթնութեան, և ոչ հետք մնասցեն 'ի քեզ վիրացն. մանաւանդ թէ ա̃յ շնորհաւն և զնորին իսկ զսատանայի խորտակեսցես զգլուխն։ Մի ոք զքեզ խռովեցուսցէ. վասն զի ետես սրահայեաց ակամբ չարն զքո զանձինդ զառաքինութիւն, և քաջ նահատակ ընդդէմ ինքեան ածել 'ի յոլորիցն իւրաց, վստահացաւ զմարդն՝ որ այնպէս վաղվաղակի ստացար զփոյթն հակառակ նմա, եթէ 'ի նմին կայցես մնայցես՝ ոչ դիւրաւ կարէ յաղթել նա քեզ։ Վասն այնորիկ զարթեաւ փութացաւ յարեաւ բազում իրօք հակառակ քո, մանաւանդ թէ ընդդէմ ինքեան գլխոյն, եթէ կամեսցիս կալ մնալ առաքինապէս։

Վասն զի ընդ քո արժանաւորութիւնն և ընդ հաստնեաւ եռանդն և ընդ փոփոխումն 'ի բարւոյ ո՞ ոչ զարմացաւ. որ զփափուկ կերակուրն արհամարհէիր, և զբազմապատիկ զգեստն անտես առնէիր, ամենայն հպարտութիւն կոխեալ էր, զամենայն արտաքնոցն իմաստութիւն ձգեալ և վաղվաղակի յաստուածային բանս փոփոխեցեր. բովանդակ տիւք յընթերցուածս ծախեալ լինէին, և . . . [1] մասն զիշխանութեան ներեաց նմա ոճ ունել։

Արդ եթէ քեզ փոյթ յաղագս արտաքին բանիցն էր, զամենականսն և որք անդ պատիւն են և համարձակութիւնք՝ յիշեցուցանելով մաղթէի արդեօք վերլուտին յաղագս այնորիկ յաշխատութիւնս. այլ զի վասն երկնայնոցն ընթանամք, և յերկրի և ոչ մի են բանք, որ անդ են դատաստանքն՝ զայն քեզ յիշեցուցանեմ,

1 Թուղթ մի անկեալ է։

զեւեմն զահաւոր և զարմանալի. «Վասն զի ամենեցուն մեզ մերձ կայ պարտ և արժան է բեմին Քրիստոսի, զի իւրաքանչիւր ոք առնու մարմնով զգործեցեալսն եթէ բարի և եթէ չար»: Պատուաւոր նստելոց է յայնժամ նա, որ այժմ անարգէին 'ի քէն: Զի՞նչ ասիցեմք յայնժամ նմա, եթէ կայցեմք մնայցեմք անարգելով զնա. զի՞նչ խօսիցիմք ասա ինձ. զիա՞րդ զհոգս պատճառիցեմք. այլ յառաջագոյն ասաց. «Զի՞նչ օգտեսցի մարդ եթէ զաշխարհս ամենայն շահեսցի, և զանձն իւր տուժեսցի»: Բայց թերևս յայլո՞ց խաբեցաք. այլ և ոչ Ադամայ ինչ օգնեաց 'ի պատասխանիսն զկինն պատճառս առաջի բաղբաղելով և ասելով. «Կինս զոր ետուր ինձ, սա զիս խաբեաց». որպէս և ոչ զկինն՝ օձն:

Ահաւոր է, ով սիրելի Թէոդորոս ատեանն այն. ոչ ոսոխաց կարօտի, և ոչ վկայութեան անսայ, քանզի ամենեքեան մերկապարանոցաւ կան առաջի դատաւորին. և ոչ ընդ գործոցն միայն, այլ և ընդ մտածութեանցն դատաստան պարտի ընդունել. քանզի քննիչ է խորհրդոց և մտածութեանց դատաւորն այն: Այլ թերևս ակարութիւն մարմնոյ ասիցես և ոչ կարել բառնալ զլուծն Քրիստոսի: Այլ մի՛ք այսուցիկ պատասխանիք, զլուծն Քրիստոսի ոչ կարելով ընդունել, և ոչ զբեռն զօրել բառնալ զթեթևն. ծանո՞ւնք իցեն և դժուարինք աշխատութեանց հանգիստք: Յայտնի կոչէ զքեզ Քրիստոս ասելով. «Եկայք առ իս ամենայն տաժանեալք և բեռնաւորեալք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ 'ի ձեզ և ուսարուք յինէն զի հեզ եմ և խոնարհ սրտիւ և գտջիք հանգիստ անձանց ձերոց. վասն զի լուծ իմ քաղցր է և բեռն իմ թեթև»: Զի՞նչ թեթևագոյն է, ասա ինձ, քան թէ 'ի հոգոց և յիրաց և յերկիւղից 'ի բաց մերժելով՝ արտաքոյ յալեաց աշխարհիս լինել և յանքոյթ նաւահանգստին դադարել:

Զի՞նչ քեզ թուիցի յաշխարհէս երանելի լինել և ընտիր. զիշխանութիւնս ամենայն իրօք, ասեն, և զընչեղութիւնս և զմարդկան հաճոյ լինել: Այլ զի՞նչ քան զայսոսիկ թշուառականագոյն, յորժամ ոք առ քրիստոնէիցն փառս համեմատիցէ. քանզի իշխանն ընդ բազմութեանն անկեալ կայ զայրացմանն և յոլովութեան անբան յարձակմանց, մեծամեծ երկիւղից իշխանացն

և ընդ իշխեցելոցն հօտովք. և որ երէկ իշխանն էր, այսօր ռամիկ. քանզի 'ի տղայական խաղուցն ոչ ինչ զանազանի մերձակայ կենցաղս։ Ո՛ որ օրինակ անդ ոմն թագաւոր և ոմն զօրավար, և այլքն զզօրականացն կարգն կատարեն, և 'ի հասանել գիշերոյն ոչ թագաւորն է և ոչ իշխան և ոչ զօրավարն, նոյնպէս և 'ի յայնմ աւուր ոչ 'ի կերպարանացն՝ այլ 'ի գործոցն իւրաքանչիւր ոք առցէ պատիւն։

Փառք արդեօք պատուականք իցեն, որ անցանեն իբրև զծաղիկ խոտոյ. այլ ընչեղութիւն, ընդ որում ստացողքն հաշին. քանզի "Վայ, ասէ, ընչեղացն, և եղուկ որ յուսացեալ են 'ի զօրութիւնս իւրեանց, և 'ի զօրութիւն փարթամութեան իւրեանց պարծեցին"։ Քրիստոնեայ ոչ երբէք յիշխանաց ռամիկ լինի և ոչ յընչեղութենէ աղքատ և ոչ անփառ 'ի փառաւորութենէ. այլ կայ մնայ չոխացեալ յորժամ աղքատանայն, և յորժամ նուաստացուցանել զինքն փութայ. և յորժամ իշխէն, ոչ մարդկան իշխէ, այլ աշխարհակալաց խաւարիս այսորիկ. ոչ ոք լուծանել զնա կարէ։

Բարւոք է ամուսնութիւն, ձայնակից լինիմ և ես, քանզի "Պատուական է ամուսնութիւն, ասէ, և անկողինք անարատք. այլ զշունս և զպոռնիկս դատի ած"։ Բայց դու ոչ ես կարես այսուհետև զարդարութիւն ամուսնութեանն պահել. քանզի որ 'ի յերկնային փեսայն մերձենայ՝ զնա թողլով և 'ի կանայս մերձենալով շնութեան են իրքն, թէպէտ և բիւր անգամ ամուսնութի զայնուսիկ կոչէ նա. մանաւանդ եթէ քան զշնութիւն այն դժնդակագոյն է որքան վեհագոյն է քան ըզմարդ ած։ Մի՛ ոք զքեզ խաբեսցէ ասելով զամուսնութիւնն ոչ արգել ած. գիտեմ զայդոսիկ և ես, զի ոչ խափանեաց զամուսնութիւնն ած, այլ զշնալն արգել, եթէ կամիցիս՝ որ մի լիցի երբէք՝ մերձենալ յամուսնութիւն։ Եւ զինչ սքանչելիք, եթէ ամուսնութիւնն իբրև զշնութիւն դատիցի յորժամ անարգի ած։ Սպանումն զարդարութիւն եբեր, և մարդասիրութիւնն առաւել քան զսպանումն դատապարտեաց. վասն զի մինն ըստ կամացն էր, և միւսն արգելեալ լինէր յայ. Փենեհէզի համարեցաւ յարդարութիւն, զի զպոռնիկ կինն և զայրն խոցելով սպանանէր. իսկ զՍաւուղ սուրբն այ

Սամուել զբոլոր գիշերն սգալով և արտասուելով ոչ կարաց զերծուցանել 'ի դատապարտութենէն զոր եած ած հակառակ նմա. վասն զի զայլազգեաց թագաւոր զոր իրաւացի էր սպանանել՝ ապրեցոյց առանց այ կամացն:

Արդ եթէ մարդասիրութիւն[1] առաւել քան զսպանումն դատապարտեաց յաղագս ոչ լսելոյ այ, զինչ հրաշալի թէ ամուսնութիւն իբրև զչնութիւն դատապարտեսցի յաղագս անարգելոյն զՔրիստոս: Զի զոր օրինակ 'ի սկզբանն ասացի՝ թէ ռամիկ ոք էիր, ոչ արդեօք 'ի զինուորութիւն ոք գրէր զքեզ. բայց այժմ ոչ ես տէր ես քոյինքեան այնպիսւոյ թագաւորի զինուորեալդ. զի եթէ կինն իւրում մարմնոյն ոչ իշխէ, ևս առաւել որք Քրիստոսին զինուորեն՝ իւրեանց մարմնոյ ոչ են տեարք: Որ արհամարհի այժմ, նոյն յայնժամ է դատաւոր: Արդ զայսոսիկ զմտաւ ած յարաժամ և զգեստն հրեղէն. վասն զի «Գետ հրոյ ձգեալ լինի առաջի դիմաց նորա». ոչ ևս լինի վստահանալ 'ի տանջանացն վախճան, որ այնմ հրոյ մատնի: Այն ինքն կենցաղոյս այսորիկ հեշտութիւնք 'ի ստուերաց և յերազոց ոչ ինչ զանազանին. վասն զի նախ քան զկատարումն առնումեղացն զիջանին հեշտութեանցն իրք. իսկ որ յաղագս նոցա են տանջանքն՝ վախճան ոչ ունին. և հեշտութիւն առ սուղ ինչ ժամանակ, բայց վտանգն յաւիտենական: Զի և անհաստատուն է աշխարհիս ընչեղութիւնն, որ ոչ մինչև ցերեկոյ բազում անգամ կայ մնայ: Այլ ըղփառօն ասիցես. լուր արդարոյն որ ասէ. «Կեանք իմ թեթևագոյնք են քան զսուրհանդակ»: Զի զոր օրինակ նոքա նախ քան զդադարելն 'ի բաց վազեն, նոյնպէս և կեանքս յառաջ քան զմերձ գալ՝ թռչին:

Ոչ ինչ քան զանձն պատուականագոյն է. զի և ոչ որք զվերջին յիմարութեանն զհետ չոգան, անգիտացան զայս. զի քան զանձն պատուականագոյն ոչ ինչ է՝ յարտաքնոց ոմն յարարողաց[2] ասաց: Գիտեմ զի առ չարին պատերազմն տկարագոյն եղեր. գիտեմ զի 'ի մէջ հեշտութեան բազում կաս: Բայց եթէ ասասցես թշնամւոյն՝ թէ զհեշտութիւնս քո ոչ պաշտեմ և արմատոյ ամենայն չարեացն քո ոչ պագանեմ երկիր, եթէ յա-

1 Օրինակն. արդարութիւն. Նշա. բառս յաւելին: 2 Իմա փէքինող:

ռեսցես 'ի վեր զակն, թօթափեսցէ և այժմ զլուծն փրկ-կիչն. և որք արկին զքեզ 'ի հուրն, 'ի նմին կիզեսցէ. իսկ քեզ 'ի մէջ հնոցին լմպել ցօղ և սիք շնչեցեալ առաքեսցէ, մինչ զի և ոչ 'ի խորհուրդս քո և 'ի մտածութիւնս մերձեսցի հուրն, բայց զքեզ միայն մի՛ տաչորեսցես: Քանզի զզօրաւոր քաղաքս բազում անգամ զէն և մեքենայք ոչ կարացին արտաքուստ կործանել. իսկ մատնութիւնք միոյ կամ երկուց 'ի ներքս բնակեցելոց 'ի քաղաքին անաշխատ մատնեցին թշնամեացն: Արդ և այժմ մի՛ ոք զքեզ որք 'ի ներքս են խորհուրդք՝ մատնեսցեն, և եթէ բիւր մեքենայս ածցէ 'ի վերայ քո արտաքուստ չարն՝ մնոտի և ընդունայն մերձեցուցանէ:

Զբազումս ունիս այ շնորհիւն զմեծամեծ յուսակէտս և բժշկողս որք յաղագս քո անձինդ դողան՝ զսուրբն այ զՎալերիոս և որ ամենայնիւ նորա եղբայրն զՖլորենտիոս, զՔրիստոսի հանճարով զիմաստունն զՊորփիւրիոս և այլս յոլովս, որք հանապազօր ողբան յաղագս քո, և աղօթելով ոչ դադարեն. և պատահէ նոցա յաղագս որոյ աղաչեն, եթէ փոքր ինչ զքեզ 'ի բաց կացուցանել կամեսցիս 'ի ձեռաց պատերազմողացն: Եւ զիա՞րդ ոչ յիմարութիւն է, եթէ նոքա և ոչ այժմ անյուսանան զքո փրկութիւնն՝ յարաժամ ընդունել զնորեանց մասն աղաչեն, քեզ՝ որ միանգամ ընկղմեցար՝ ոչ վերստին յառնել, այլ կալ մնալ, և ո՛չ գոչես առ թըշնամին՝ խողխողել մի՛ խնայեր: “Միթէ որ գլորիցէն, ո՞չ յառնիցէ„ իմաստուն մարգարէութիւնն ասաց. իսկ դու այսմիկ վայրապար ընդդէմ ասես. քանզի 'ի գլորելն անյուսանալ ոչ[1] այլ ինչ է, քան թէ ասել՝ որ գլորիցէն ոչ յառնիցէ: Մի՛ աղաչեմ, մի՛ այնքան 'ի մեզ հեղցես զցաւսն: Ոչ ասեմ այժմ եթէ քանամեայ ունէիր զցաւս, այլ յոլովս արարեր և զամ ժամանակն 'ի Քրիստոս կեցեր, 'ի վերջին ծերութեանն զայդոսիկ ախտացար դժուարութիւնս, և ոչ յայնժամ անյուսանալ էր բարւոք. այլ 'ի միտ առնուլ որ 'ի խաչին աւազակն արդարացաւ, և որք 'ի մետասաներորդ ժամուն գործեցին և բովանդակ աւուրն առին զվարձն: Զի զոր օրինակ ոչ է բարւոք որ 'ի վերջին ծերութիւնն

1 Գրչագրէք յօրինակին ոչ . . . ոչ յառնիցէ. յաւելու 'ի յառնէն:

Digitized by Google

կործանելն անյուսանալ՝ եթէ ողջամիտ իցեն, սոյնպէս և զգուշագոյն՝ այդպիսի յուսովք մնանիլ և սնել, եթէ առ ժամ մի վայելեցից 'ի հեշտութե կենցաղոյս, և զկնի սուղ ինչ ժամանակ աշխատեալ՝ զամենայն ժամանակացն ընկալեալ զվարձս ։ Յիշեմ զի բազում անգամ ասելը յորժամ զքեզ յոլովակի խրատէին 'ի դպրոցսն երթալ, եթէ 'ի փոքր ժամանակիս յայս կործանեցից զկեանս իմ, զինչ պատասխանի տաց նմա որ ասացն՝ մի կար մընար, փութա առ տէրն, մի յապաղեր օր ըստ օրէ ։ Զայնպիսի խորհուրդ ստանալով կապեա զաւաղակն. քանզի այնպէս ասէր զմեր զելս ճանապարհաց կոչէ Քրիստոս 'ի ձեռն անգիտութե գալ հասանել 'ի վերայ ։

Զմտաւ ած[1] զաշխարհիս զհոգս, զառանձինն և զհասարակաց լեալս, զիշխանաց զերկիւղս, զքաղաքացեաց նախանձ որ մինչ 'ի վերջին վտանգսն հասանէ, զաշխատութիւնս և զտառապանս, և զծառայից վայելուչ փաղաքշանս, և որ ոչ հպատակ սարկացն յարմարի, զաշխատութեանց պտուղ աստուստ վախճանեալ քան զոր[2] ոչ ինչ լինի վտանգաւոր. յոլովից և ոչ վայելել դիպեցաւ յաղագս որոյ տարժանեցանն. այլ զառաջինն զհասակն յաշխատութիւնս և 'ի վտանգս ծախելով, յորժամ յուսացանն ընդունել զվարձս՝ անցեալ գնացին ոչ ինչ ընդ ինքեանս ունելով ։ Քանզի եթէ երկրաւոր թագաւորս յետ բազում վշտաց համբերելոյ և յոլով նահատակեցելոյ 'ի պատերազմունս՝ հազիւ ոք տեսցէ համարձակ, զիարդ ապա հայել կարասցէ յերկնաւորն որ զամենայն ժամանակսն այլոց եկաց և զինուորեցաւ ։

Ո՞չ ես ախորժեսցես զմտաւ ածելով զկնոջ և զմանկանց և զծառայից. Վտանգաւոր է ոչ ստանալ որդիս, ցաւալի է և ստանալն. քանզի մինն անսոր ամուսնութիւն է, և միւսն դառն ծառայութեան համբերեալ ։ Հիւանդացաւ մանուկն, երկիւղ և ոչ փոքր. վախճանեցաւ տարաժամ, սուգ անմխիթար. և ըստ իւրաքանչիւր ուրուք հասակի զանազան հոգք յաղագս նոցա, աշխատութիւնք և երկիւղ ։ Դժնդակ է զաղքատն առնուլ կին, դժուարին է և զճոխն. քանզի մինն յինչսն

1 Պակասէր յօրինակին Զմտաւ ած. յաւելաւ 'ի յունէն ։

2 Պակասէր քան զոր ։

Տես, ով Թէոդորոս, զնաւաբեկութիւնս. և աղաչեմ փախիր 'ի յանդնդոյն, փախիր յալէկոծութեցն, և 'ի բարձրագոյն տեղիս ժամանեա՝ ուստի ոչ ըմբըռնել: Յարութիւն լինելոց է, ով Թէոդորոս, և դատաստան, ատեան մեզ աստուստ ելանելով կայ մնայ. "Քանզի ամենեցուն մեզ պարտ է մերձ կալ 'ի բեմն Քրիստոսի,,: Ոչ մնոտի սպառնացաւ զգեհեննն, և ոչ վայրապար այնքան բարիս պատրաստեաց:

Ստուեր է և քան զհովանի ոչ ինչ լաւագոյն կենցաղոյս իրք, յոլով երկիւղիւք լցեալ և բազում վտանգիւք, վերջին ծառայութեամբ: Մի՛ տուժեցիս զայս և զայն զյաւիտեանն. իշխանութիւն է քեզ զերկոսեան շահել՝ եթէ ախորժեսցես, որ գիտեսդ զի և զաստիսս շահիս որ 'ի Քրիստոսն կեան. որպէս վարդապետէ Պաւղոս ասելովն "Ես 'ի ձեզ խնայեմ,,. և դարձեալ. "Զայս 'ի ձեր յօգուտն ասեմ,,: Տեսանես զի և աստ քան զամուսնացեալսն գերագոյն է որ զտեառն հոգայ: Ոչ երթալոյն անդր ապաշաւել: Ոչ ոք ըմբիշ յորժամ վախճանեսցի հանդէսն և վախճանեսցի տեսարանն՝ մրցել կարասցէ: Զայսոսիկ միշտ զմտաւ ած, և զսուր սուսերի թշնամւոյն խորտակեա, որով զբազում սպանանէ. այս է զգլորելոյն հատանել զյոյս. զօրաւորագոյն քան զայն զէն՝ որովք կռուի՝ ոչ ունի: Այլ զայնոսիկ զկապանսն եթէ կամեսցուք, ա̃յ շնորհիւն լուծել կարեմք վաղվաղակի:

Գիտեմք զի ըստ չափն արտաքս ելի թղթոյս. այլ ներեա, վասն զի ոչ կամօք ընդ այն անցեալ, այլ 'ի տրտմութէ և 'ի սիրոյ հարկեալ, այլ յաղագս որոյ և բռնադատեցին զիս զայս թուղթս գրել: Թէպէտ և բազումք խափանէին ասելով, դադարեա 'ի մնոտի աշխատութեանց, 'ի վերայ վիմաց սերմանես ասէին ինձ, բայց ես ոչ ումեք լուայ. քանզի յոյս, ասացի առ իս ինքն, կամելովն ա̃յ կալայց. սակայն զինչ թուղթ եթէ զոր ոչն ըղձանայցեմք դիպեսցի, զի 'ի բամբասանացն ձողոպրիցեմք և ոչ ևս լինիցիմք չարք. այն որ յայսմ ծովու յորժամ զարուեստակիցսն տեսանիցեն 'ի նաւէ 'ի բաց անկանելով՝ որ յալէկոծութեցն քակիցի, 'ի վերայ տախտակացն բերեալք լինէին, առագաստ սփռեն և հաստատեն ընկենուն և 'ի մակոյկն ելանեն, յանդիմանելի 'ի

և իբրև զԹածի մօր և քաջ վարդապետի զնորա փրկու-Թիւնն ընծեռեաց պահոցն . քանզի " յնու փայտէ կերի-ցես, ասէ, բայց ՚ի փայտէ գիտուԹեն բարւոյ և չարի ոչ կերիցես „, պահոց է տեսակս : Արդ եԹէ ՚ի դրախտին հարկաւոր էին պահքն, եւս առաւել արտաքոյ դրախտին . եԹէ նախ քան զմեղսն պիտանացու էր դեղն, առաւել եւս զկնի վէրին : ԵԹէ ոչ երբէք պատերազմի ընդ ցանկու-Թեցն յարուցեալ, վասն զի դժնդակ էր մեղ վէրն՝ յո-ռովից յայլոց զկնի այնոցիկ ցանկուԹեցն որ ՚ի դիւացն է, հարկաւոր պահոցն կռուակցուԹիւն գտաւ : ԵԹէ այսմ ձայնի էր լուեալ Ադամայ՝ ոչ արդեօք լսէր երկրորդ ձայ-նին որ ասէր . " Հող էիր և ՚ի հող դարձցիս „ : Այլ վասն զի ոչ լուաւ, յաղագս այնորիկ մահ և աշխատու-Թիւնք և հոգք և տրտմուԹիւնք և կեանք որ քան զա-մենայն մահ ծանրագոյնք . նորին աղագաւ փուշ և տա-տասկք, յայն սակս քրտունք և կեանք տաժանաւորք :

Տեսեր զիարդ ած զայրանայ յորժամ պահքն Թշնա-մանին . ուսիր և որպէս հրձուի ՚ի պահել պահոցն : Եւ զոր օրինակ ՚ի Թշնամանելն մահ ՚ի վերայ Թշնամանո-ղին պատուհաս, նոյնպէս և ՚ի պատուելն զմահ ՚ի բաց եհան : Քանզի կամելով քեզ ցուցանել զնորայն զօրու-Թիւն, ետ իշխանուԹիւն պահոց զկնի հրամանին, յետ

**[illegible] զԹանձր մօր և [illegible] վարդապետի [illegible] յանձնե-ցից [illegible] . Քանզի [illegible] ասէ Թէ « Ամէն [illegible] ծառոյ պտուղը [illegible] կերիցես ; [illegible] ՚ի ծառոյն գիտուԹեան չարին և բարւոյն մի ուտե-ցէք [illegible] », [illegible] պատուիրանը պահոցն : Զի եԹէ ՚ի դրախտին [illegible] և հարկաւոր էին պահքը, որչափ եւս ա-ռաւել արտաքոյ դրախտին : Զի եԹէ [illegible] քան զմեղանչելն [illegible] դեղ էին պահքը, քանի եւս առաւել յետ հանցանաց : Զի եԹէ մինչ-չև զգայուԹեան ցանկուԹեանցն . պատերազմելու էր՝ ՚ի մեզ և պատ-ճառ էր մեղաց, որչափ եւս առաւել յետ պատերազմի ցանկուԹեանցն [illegible] . զի ընդդէմ [illegible] մեծ հնարք [illegible] են պահքը : Զի Թէ այսմ ձայնին լսեալ էր Ադամ, արդեօք ոչ ևս լսէր երկրորդ բարբառոյն որ ասէր Թէ « Հող էիր և անդէն ՚ի հող դարձցիս » : Այլ որովհետև [illegible], վասն այնորիկ մահ և աշխատուԹիւնք և [illegible] տրտմուԹիւնք և կեանք ծանրագոյն քան զմահ եղան . վասն այնորիկ փուշ [illegible], վասն այնորիկ քրտունք և [illegible] և կեանք աշխատուԹեան .**

**Տեսանես զիարդ բարկանայ Աստուած ՚ի Թշնամանել պահոցն . և ու-սիր [illegible] Թէ զիարդ [illegible] ՚ի պատուել պահոցն . Քանզի [illegible] Թշնամանեցաւ, [illegible] ՚ի վերայ Թշնամանո-ղին . նոյնպէս և յորժամ [illegible], զմահն ՚ի բաց եհան : Ուստի և կամի ցուցանել քեզ զօրուԹիւն նորա, զոր ետ իշխանուԹիւն նմա յետ**

Digitized by Google

վճարելոյ առեննին զածեալսն 'ի մահ 'ի միջոցէ Ճանապարհէն 'ի բաց յափշտակել և 'ի կեանս վերստին ածել։ Այլ զայս ոչ յերկուս և կամ յերիս և կամ 'ի քան մարդիկ արար, այլ 'ի բոլոր բազմութի՛ նինուէացւոց քաղաքին մեծ և զքանչելի, որք 'ի գուճ իջեալ կային, առ նմին ինքն 'ի խորխորատին խոնարհեցուցանելով զգլուխն, զ'ի վերուստ բերեալ վերն էին պատրաստ ընդունել, զոր օրինակ իբրև 'ի վերուստ զօրութիւն անկեալ 'ի վերայ նոցա յափշտակեաց զնոսա 'ի մարգարէին ձեռաց։ Բայց եթէ բարւոք թուի, նմին իսկ պատմութեանն լուիցուք։

" Այլ եկն բան տեառն առ Յովնան ասելով. արի և գնա 'ի Նինուէ քաղաք մեծ ,,։ Նոյնէն վաղվաղակի զնա մեծութեամբ քաղաքին պատկառեցուցանել կամեցաւ, զհանդերձեալ փախուստն նորա տեսանելով։ Նոյն լուիցուք և քարոզութեանն։ " Երեք եւս աւուրք, ասէ, և Նինուէ կործանեսցի ,,։ Ընդ ադաղաւ առնել կամելով զզժնդակագոյնսն' յառաջագոյն ասէ. զի մի արասցէ զոր կանխաւն առաց։ Նման այնորիկ և զգեհենն ընդառնացաւ, զի մի 'ի վերայ անցցէ զգեհենն. զարհուրեցուցանէն զձեզ, ասէ, բանքն, և մի արամեցուսցեն իրքըն։ Ընդէր զկանխաւ սահմանեալ օրն այնպէս 'ի նե-

[illegible]

« Եւ եկն, ասէ, [illegible] [illegible]

[illegible] լուիցուք քարոզութեանն։ « Ցեա [illegible] [illegible] կործանեսցի »։ Արդ ընդէր [illegible]

ղագոյն ժամանակ հաւաքեաց. զի և զնինուեացւոցն լուեցեն որք կարացին զերիս աւուրս զայնքան մեղանացն բարկութիւնն լուծանել. և ընդ այս մարդասիրութիւնն սքանչանայցես, որ երից աւուրց ապաշխարութիւն բաւական եղև յաղագս այնքանեաց յանցանաց: Նա դու մի կործանիցիս յանյուսութիւն, թէպէտ և բիւր անգամ իցես մեղուցեալ: Զի զոր օրինակ հիւանդամիտն և տաղտկացեալն թէպէտ և բազում ժամանակս աւնուցու յապաշխարութիւն՝ ոչ ինչ մեծ գործէ և ոչ հաշտեցուցանէ զնա ընդ ինքեան յաղագս պղերգութեանն, նոյնպէս և կանգնեալն և որ յօժարամտութեն եայ և հանդերձ բազում փութով զապաշաւանսն ցուցանէ, 'ի սուղ ժամանակի զյոլով ժամանակայն զյանցանսն ջնջել կարէ:

Ո՛չ երիցս անգամ Պետրոս ուրացաւ, ո՞չ հանդերձ երդմամբ երիցս, ո՞չ յաղախնոյ ուրուն 'ի վատթար բանից զարհուրեցաւ: Նա ապա զի՞նչ. տարեա՞ց ինչ բազմաց կարօտացաւ յապաշխարութիւն իւր. և ոչ երբէք. այլ 'ի նմին գիշերի գլորեցաւ և յարեաւ, և ըզվէրն և զդեղն ընկալաւ. հիւանդացաւ և յառողջութիւն վերստին եկն: Զի՞նչ և կամ որո՞վ օրինակաւ. ելաց և ողբացաւ. մանաւանդ եթէ ոչ ելաց վարկպարազի, այլ հանդերձ յոգն փութով և սրտով: Յաղագս որոյ և աւետարանիչն ոչ ասաց եթէ ելաց պարզաբար,

ժողովեաց ազգին նինուէացւոց ուսցիս զարուեստ, որք երրորդական աւուրբքն կարացին զայնչափ մեղաց բարկութիւն ցածուցանել. և զայս մարդասիրութեանն զարմասցիս, երրորդ աւուրբքն բաւական եղեալ վասն անչափ յանցանացն: Եւ դու մի կասեսցես և հրաժարեսցես, թէպէտ և բիւր անգամ իցես յանցուցեալ: Զի որպէս և որ որ ակարն և թոյլն է 'ի մտաց՝ թէպէտ և բազում ժամանակս կայցէ յապաշխարութե՝ ոչ ինչ կարէ օգուտ շահել անձին իւրում, և ոչ զնա ընդ իւր հաշտեցուցանել վասն թոյլ կամաց իւրոց, նոյնպէս և որ փոյթն և յորդորն է և քաջալերութեամբ կեայ և բազում աշխատութեամբ զապաշխարութիւն ցուցանիցէ, կարէ 'ի սակաւ ժամանակի բազում ամաց զմեղս յանցանացն խափանել:

Ո՞չ առաքեալն Պետրոս երդմամբ երիցս ուրացաւ, ո՞չ 'ի միջի յաղջկակին աղախնոյ բանից ահնածեալ և երկեաւ: Եւ ապա զի՞նչ. բազում ինչ ամս արկ 'ի վերայ ապաշխարութեանն. և ոչ ուրեք, այլ 'ի նմին և 'ի նոյն գիշերի գլորեցաւ և կանգնեցաւ. զի զվէրսն առ և սպատացաւ, և դարձեալ բժշկեցաւ և առողջացաւ: Եւ եթէ ասես եթէ զի՞նչ և կամ որպէս, ելաց, ասէ, դառնութեամբ. և ոչ եթէ ընդ վայր և վայրապար, այլ բազում, ասէ, փութով և ջերմու-

այլ եթէ "Ելաց դառնապէս"։ Եւ որպէս զօրութիւն արտասուացն էր, և ոչ նմին բան յանդիմանն կարէ կասեցուցանել. այլ նոցին իսկ ելք ցուցին յայտնապէս։ Քանզի յետ չար կործանմանն այնորիկ, զի ուրացութեանն և ոչ մի ինչ չար է հաւասար, այլ սակայն զկնի այնքանեաց չարի դարձեալ զնա յառաջին պատիւն եհած վերստին, և զվերակացութիւն եկեղեցեաց ամենայն աշխարհի ընծեռեաց նմա. և որ մեծն է քան զամենայն, եցոյց մեզ զնա քան զամենայն առաքեալսն առաւել ունել սէր առ տէրն. վասն զի ասէ. "Պետրոս, սիրե՞ս զիս առաւել քան զդոսա"։ Ի յամիկ և ոչ բան մի լինի հաւասար յառաքինութիւնս։

Ոչ մի ասիցես եթէ նինուէացւոցն յիրաւի ներեաց բարբարոսաց և անմիտ մարդկանն, քանզի "Ծառայ, ասէ, որ ոչ գիտէ զկամս տեառն իւրոյ և ոչ առնէ, տանջեսցի սակաւ", զի մի զայսոսիկ ասիցես, այդորիկ աղագաւ զՊետրոս քեզ 'ի մէջ ած զծառայ՝ որ զկամս տեառն իւրոյ գիտէր. այլ սակայն և սա մեղանչելով և ոչ վերջին մեղս, տես առ որպիսի համարձակութեան բարձրութիւն վերստին ել։ Եւ արդ մի այսուհետև և դու ընդ մեղսն կործանիցիս. վասն զի դժնդակագոյն քան զմեղսն՝ կալ մնալ 'ի մեղսն, և չար ևս քան զգլորումն՝ անկանել կալ

թեամբ։ Վասն այնորիկ իսկ և աւետարանագիրն ոչ ասաց եթէ Ելաց փայրապար, այլ «Ելաց, ասէ, դառնապէս»։ Եւ որպիսի արդեօք էին արտասուացն այնր զօրութիւնքն, բանիւ ոք ոչ է կարող հասուցանել. բայց ապա հանդէս իրացն յայտ առնէ։ Այլ զհետ անարժան յանցանացն ուրացութեան, քանզի ոչ համեմատեն այսմ յանցանաց այլ յանցանք և կամ մեղք, բայց սակայն և յետ այսպիսի յանցանաց դարձեալ անդրէն յառաջին պատիւ փառացն կարգեաց և իշխան 'ի վերայ ամենայն տիեզերաց կացոյց, և զլուխ ամենայնի կացոյց զնա մեզ և առաւել քան զամենայն առաքեալսն։ Զի սէրն իսկ նորա հանդէս լինի նմա առ տէրն իւր, որպէս և ասէ իսկ՝ թէ «Պետրոս, սիրես դու զիս առաւել քան զդոսա»։ Քանզի 'ի վեր քան զայս և կամ թէ նման սմին զի՞նչ ևս այլ լցէ 'ի փոյթ առաքինութեան մնաց։

Քանզի մի ասիցես եթէ նինուէացւոցն յիրաւի և ըստ կարգի ներեաց ած արանց խուժադուժ և ագիտաց, զի որպէս և գրեալն իսկ է թէ «Ծառայ որ ոչ գիտէ զկամս տեառն իւրոյ և ոչ առնէ զհրամանս նորա, արբցէ գան՝ բայց սակաւ», զի մի զայս ասիցես, վասն այսորիկ ած քեզ զՊետրոս զծառայն իւր 'ի մէջ՝ որ գիտէր զկամս տեառն իւրոյ. բայց սակայն և նա թէպէտ և յանցեաւ զանհնարին յանցանս, տես յորպիսի համարձակութիւն կամ 'ի պատիւ փառաց վերացաւ։ Այնպէս և դու յորժամ մեղանչիցես, մի անկեալ վհատիցես ամենայնիւ. զի անհնարին և կարևոր մեղք այն են որք կան և մնան 'ի նմին։

'ի կործանմանն : Զայս և Պաւղոս ողբայ և ողայ, զայս ողբոյ արժանի լինել ասէ . "Մի՛ գուցէ 'ի գալն իմ առ ձեզ, նուաստասցուսցէ զիս Ած, և ողբացայց յաղագս բազմաց„ : Ոչ որք մեղուցեալ են պարզաբար, այլ յաղագս որոց ոչ ապաշխարեցին 'ի կռապաշտութենէն և յանմաքուր գործոց : Իսկ ապաշխարութեանն ո՛ր իցէ արդեօք պատեհագոյն ժամանակ քան զպահոց ժամանակ : Այլ երթիցուք վերստին 'ի պատմութիւնն :

Լուեալ զբանս զայսոսիկ մարգարէին, էջ 'ի Յոպպէ փախչել 'ի Թարսիս յերեսաց տեառն : Ո՞ւր փախչիս, ով Յովնան . ո՞չ լուար 'ի մարգարէէն որ ասէ . "Յո՛վ երթայց ես յոգւոյ քումմէ, կամ յերեսաց քոց ես յո՞ փախեայց„ . յերկիր, այլ տեառն է երկիր և լիութիւն իւր . իսկ 'ի դժոխս, այլ եթէ իջից 'ի դժոխս՝ մերձ ես, ասէ . այլ յերկինս, թէ ելանեմ, ասէ, յերկինս դու անդր ես . իսկ 'ի ծո՛վ, և անդ ընկալցի զիս աջ քո . որ և 'ի սմա իսկ եղև :

Բայց այնպիսի են մեղք, 'ի բազում յանմտութիւնս արկանեն զմեր զանձինս . և իբրև արբեցութեամբք և խելագարութեամբ ըմբռնեալք, վայրապար և սնոտի բերեալ լինին, եթէ 'ի խորխորատ և եթէ 'ի գահավիժութիւն և եթէ այլ ինչ 'ի ներքոյ կայցէ՝ անկանին առանց պահպանութեան . նոյնպէս և որք 'ի մեղսն

Զի զայս և առաքեալն իսկ ինքն տխրի և ողբանայ, զայն ողայ և ասէ . « Թէ մի յորժամ գայցեմ, ասէ, առ ձեզ, նկուն ինչ առնիցէ զիս Ած վասն ձեր, և սուգ առեալ գամնիցիմ վասն բազմաց 'ի ձէնջ » : Ոչ ասէ թէ որք մեղանն լոկ, այլ ասէ՝ թէ « Եւ որք ոչն զղջացան վասն գիջութեան և պղծութեանն զոր գործեցին » : Իսկ արդ վասն ապաշխարութեան որպիսի արդեօք ժամանակ 'ի դէպ լինելոց իցէ քան զժամանակ պահոցն : Բայց արդ դարձցուք անդրէն 'ի նոյն ճառ պատմութեանն :

Քանզի յորժամ լուաւ մարգարէն զպատգամն, էջ Յոպպէն զի փախիցէ 'ի Թարսիս յերեսաց տեառն : Յո՞ փախստական լինիս այր դու . ո՞չ լուար մարգարէին որ ասէ . « Յո՞ երթայց ես յոգւոյ քումմէ, և կամ յերեսաց քոց ես յո՞ փախեայց » . ընդ երկիր, այլ տեառն է երկիր լրիւ իւրով . 'ի դժոխս, այլ « Թէ իջանեմ անդ մօտ ես . և անդ, ասէ, ձեռն քո առաջնորդեսցէ ինձ և աջ քո ընկալցի զիս » . որում և եղև իսկ այս :

Բայց քանզի այսպիսի են մեղք, որ 'ի բազում մոլորութիւն անմըտութեան ընկղմեն զանձինս մեր . որպէս արբեցութիւնք և գլխագարութիւնք ունիցին զոք, և նա ընդ վայր և վայրապար բանդագուշեալ շրջեսցի, և եթէ պատահեսցէ նմա խորխորատ կամ քարանձաւ և կամ զինչ և իցէ վէմս, յանկնայ և յանկրկիւղ անկեալ կործանես-

յարձակին, իբրև դժնդակ իմն արբեցութեամբ գործոյն ցանկութեամբ ըմբռնեալք՝ ոչ գիտեն զինչ գործեն. ոչ զմերձակայս և ոչ զհանդերձեալսն տեսանեն:

Ի տեառնէ փախչիս, ասա ինձ. սակաւ ինչ անսա, և նոյին իսկ յիրացն ուսցիս՝ զի և ոչ յաղախմնէն 'ի ծովուն ձեռաց կարես փախչել: Քանզի միանգամայն ելանելով 'ի նաւն, նա և ծովն զալիսն յարոյց, և 'ի բարձրութիւնս մեծ փութայր ամբառնալ. և զոր օրինակ աղախին ոք բարեբարոյ զծառայակից իւր գտանելով փախուցեալ գողանալով 'ի տէրունական ստացուածոցն՝ ոչ յառաջագոյն 'ի բաց կայ, բիւր իրս ընդունողացն զնա 'ի վերայ հատուցանելով, մինչև առեալ զնա 'ի բաց գնասցէ, նոյնպէս և ծովն զծառայակիցն զիւր գտանելով՝ փութայր բիւր իրս վտանգ նաւավարացն ընձեռել խռովելով և գոչելով. ոչ յատեան ձգէր, այլ ինքնաձեռն սպառնայր ընկղմել զնաւն, եթէ ոչ զծառայակիցն 'ի բաց տացեն զնա:

Եւ ապա նաւորդքն զինչ այսօրիկ եղելոցն: Արարին, ասէ, հանուին արտաքս 'ի կարասոյն, այլ նաւն ոչ

ցի, նոյնպէս և որք 'ի մեղս ըմբռնեալք լինին՝ իբրև յարբեցութիւն անառակութեան 'ի գործս ցանկութեան կապեալք և կաշկանդեալք, լքեալք և պաշարեալք են, և ոչ գիտեն զինչ գործեն. ոչ զմօտաւորս գիտեն և ոչ զհեռաւորն ճանաչեն և ոչ զտէրն զմտաւ ածեն:

Բայց դու այսուհետև ունկն դիր և անսա վայր մի և յիրաց անտի ուսցես զհանգամանսն: Զի 'ի ձեռաց ծովուն և 'ի ծառայակցէն իւրմէ ոչ կարաց ապստամբել և փախչել: Զի մինչ չև էր նորա հասեալ 'ի նաւն, և ծովն անդրէն զալիսն կուտակեալ վերացուցանէր և բարձրացեալ դիզանէր. և իբրև զծառայ տիրասէր և հաւատարիմ՝ զծառայակիցն իւր գտեալ իբրև զապստամբ և զփախստական, իբրև զգող և զաւազակ տէրունական ստացուածոցն, և ոչ 'ի բաց կայ և հեռանայ յայնցանէ որ առընթերակայն և վանատուքն լեալ էին նմա, և բազում եպերանօք[1] և գարշանօք[2] նկուն առնէ[3] զնա, մինչև հանեալ առնուցու 'ի նմանէ զտէրունական[4] զգիւտն: Նոյնպէս և ծովն գտեալ զծառայակիցն իւր ճանաչէր և բազում ինչ իրօք աշխատ առնէր զնա, ամբոխէր աղմկէր բարկանայր. ոչ 'ի դատաստան ձգեալ տանէր, այլ ինքնին սպառնայր նմա և սաստէր առ 'ի յընկղմել զնա և զուղևորսն նորա, և բարկացեալ գոռալով բարձրանայր առ 'ի յափշտակել զնոսա, եթէ ոչ զծառայակիցն իւր առեալ 'ի դուրս տայցեն:

Եւ իբրև այս ամենայն լինէր, զինչ արդեօք առնէին նաւավարքն: Ընկեցին, ասէ, զկարասի իւրեանց 'ի նաւէ անտի, և նաւն սակայն ոչ

1 Երկու օրին. կերպարանօք:
2 Մի օր. գործովանօք:
3 [illegible]
4 Երկու օր. զգտանելն տէրունական զգտարանն: Նոյնպէս:

թեթեւանայր. քանզի բեռն ամենայն տակաւին 'ի ներքըս կայր մնայր՝ մարգարէին մարմինն, ծանր բեռն, ոչ ըստ մարմնոյ բնութեան, վասն զի ըստ մեղացն ծանրութեան. և զի ոչ այնպէս ծանր և դժուարաբառնալի է քան զմեղսն և ստամբանելն։ Այսր աղագաւ Զաքարիաս 'ի դէմս կապարոյ տպաւորեաց զմեղսն. և Դաւիթ զբնութիւնս նոցա գրելով ասէ. «Անօրէնութիւնք իմ գեր 'ի վերոյ ամբարձան քան զգլուխ իմ, իբրև զբեռն ծանր 'ի վերայ իմ ծանրացան»։ Իսկ Քրիստոս, որք յոլով 'ի մեղս կացեալք էին, աղաղակէր նոցա. «Եկայք ամենայն աշխատեալքդ և բեռնաւորեալքդ, և ես հանգուցանեմ զձեզ»։ Այնոքիկ զընաւն ծանրացուցին յայնժամ և ընկղմել հանդերձեալ էին։

Իսկ Յովնան 'ի քուն էր և խորդայր։ Խոր էր քունն. բայց ոչ հեշտութեան, այլ տրտմութեան, այլ կլացեալ մնաց, այլ տխրացեալ. վասն զի բարեմիտ ծառայքն վաղվաղակի զգան զյանցանսն, զոր և նա կրեաց. զի յետ գործոյն մեղանացն ծանեաւ զմեղացն դժնդակութիւն։ Այնպիսիք իսկ են մեղքն. զկնի ծնանելոյն կատարելապէս, յայնժամ զերկունս 'ի վերայ ծնողի հոգւոյն արկանէ ընդդէմ օրինաց մերոց ծննդեանս։ Վասն զի միանգամայն ծնեալք լինելով զերկունս լուծանեմք.

թեթևանայր. քանզի ծանրութիւն բեռին 'ի ներքս անդր կայր, այսինքն մարմին մարգարէին. ոչ եթէ բնութիւն մարմնոյն էր ծանր, այլ յանցանք մեղացն էին քան զբեռն ծանր. քանզի ոչ ինչ է այնպէս ծանր և դժուարաբեռն քան զմեղս և զապստամբութիւն։ Վասն այնորիկ մարգարէն Զաքարիաս 'ի դէմս կապարի նշանակէ զմեղս. և Դաւիթ մարգարէն զբնութենէ նորա նշանակելով ասէ՝ թէ «Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ, որպէս բեռն ծանր ծանրացան 'ի վերայ իմ»։ Իսկ Քրիստոս, որք ընդ բազում մեղօք հնազանդեալ կային, աղաղակէր և ասէր ցնոսա. «Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռնեալք, և ես հանգուցից զձեզ»։ Քանզի նա էր որ զնաւն ծանրացուցանէր յայնժամ և կամէր ընկղմել։

Իսկ Յովնան 'ի քուն կայր և խորդայր։ Խոր էր քունն. ոչ քաղցր քուն, այլ տրտմութեան. և ոչ էր անհոգութեան, այլ զղջման։ Զի ծառայ ուղիղ գիտէ և իմանայ զխաս յանցանաց իւրոց, որպէս և նայն գիտաց. զի յետ գործոյ մեղացն գիտաց և 'ի միտ առ զկարիս[1] մեղացն։ Քանզի և են իսկ այնպիսի մեղքն, զի յետ մեղացն ծնանելոյ՝ յայնժամ յարուցանէ և գրգռէ զերկունս ծննդեան ոգւոցն ընդդէմ օրինաց մերոյ ծննդեանն։ Քանզի մեք յորժամ ծնանիմք, զցաւս եր-

1 Մի օր. զկարծիս. այլ օր. զկարօտս։

իսկ մեղքն համանգամայն ծնեալք ճեղքեն երկամբքն զխորհուրդսն որ ծնանին զնա ։

Եւ նաւապետն զինչ․ մատուցեալ ասէ ցնա․ “Արի կոչեա զտէր ած քո„ ։ Ծանեաւ այնուհետեւ ՚ի փորձէ իրացն թէ ոչ է սովորական ձմեռն, այլ ած առաքէ զհարուածն, և մեծ քան զմարդկային արուեստ մրրրիկքն, և ՚ի նաւուղղին ձեռն օգուտ և ոչ ինչ ։ Վասն զի այլում մեծագունի էին կարօտացեալ նաւուղղի լեալքն, որ ամենայն աշխարհի առաջնորդէ, և ՚ի վերուստ պէտս ունէր նաւարկութեանն, վասն այնորիկ և նոքա զղեկսն և զառագաստն և զլարսն և զամենայն գործիս թողեալ, զձեռս ՚ի վեր յերկինս ունէին ամբառնալով, և առ ած աղաչէին ։

Եւ իբրև այնպէս ոչ ինչ առաւել լինէր օգուտ, արկանէին, ասէ, վիճակս, և մտեալ վիճակն վճառ ՚ի պարտաւորն ։ Իսկ նոքա և ոչ այնպէս զնա առեալ ընկղմէին, այլ յայնքան յամբոխի և խռովութեան ՚ի վերայ կայելոյ, որպէս ՚ի բազում ինչ խաղաղութեան վայելեալք՝ այնպէս ատեան ՚ի նաւին կացուցանէին, և բանս տային ասել նմա, և պատասխանեաց արժանի առ-

կանցն լուծանելք․ իսկ յորժամ մեղքն ծնանին, պատառեն և հերձուն ցաւօք զծնողս իւրեանց, այսինքն զխորհուրդս չարս ։

Եւ ապա զինչ եւ նաւապետն․ զարթոյց զնա և ասէ․ «Արի կարդա առ տէր ած քո» ։ Քանզի գիտաց այնուհետեւ տեղեկաբար եթէ ոչ է դղրդումն ծովուն ըստ սովորութեան ալուցն հանապազորդաց, այլ ածական հրաման է, և վերին և հզօրագոյն հարուածքն քան զարուեստ մարդկան, և ոչ ինչ յօգուտ և ՚ի շահ են ճգնութիւնք և աշխատութիւնք մինքենայից նաւավար ճարտարապետին ։ Այլ նա այլում ումեմն կարօտանայր և յօգնականութիւն հնարէր կոչել որ զամենայն աշխարհս արար և կազմեաց և հաստատեաց իւրով իմաստութեամբն, և վասն այնորիկ ՚ի վերին օգնականութիւն ապաւինեալ լինէր ։ Վասն այնորիկ և նոքա թողին լքին զղեկս և զառագաստս զօգաւորս և զհեծանս կանգնագերս և զառասանս լարաձիգս և զամենայն կազմակերպս ըստ կազմածոյ չափուն իւրեանց․ զձեռս ՚ի վեր առեալ յաղօթս և ՚ի պաղատանս պատրաստէին․ զաչս ՚ի յերկինս համբառնային և զած աղաչէին ։

Եւ իբրև ոչ ինչ լինէր աւելի քան զդէպն, ապա արկանէին վիճակս, և մտանէր այնուհետեւ վիճակն զպարտականն ՚ի ձեռս պատուհասին ։ Բայց սակայն նոքա ոչ այնպէս առեալ ընկղմէին զնա․ այլ յայնպիսի նեղութեանց և խռովութեանց որպէս ՚ի մէջ բազում խաղաղութեանց ուշիմաց[1] գործս կատարէին, և դատաստան յօրինեալ կարգէին անդէն ՚ի ներքս ՚ի նաւին ։ Պատասխանի տային ընդ միմեանս և աղերսա-

1 Ներկու օր․ ուշ ՚ի խործս փաղաքէին ։

նէին որպէս հանդերձեալք ումեք տալ զհամարս, որով զվարկն առնէին։

Դու լուր նոցին իսկ, որ իբրև յառենի զամենայն քննէին. զինչ քո գործ, ուստի՞ գաս, յո՞ երթաս, յորմէ՞ գաւառէ, յորմէ՞ ժողովրդենէ ես դու։ Թէպէտ և չարախօսեաց ծովն գոչելով, յանդիմանեաց վիճակն և հակառակ վկայեաց, այլ սակայն ոչ 'ի ծովուն գոչել և ոչ 'ի վիճակին հակառակ վկայել՝ զվճիռն 'ի վերայ երբեք ածէին. այլ իբրև 'ի դատաստանի ասխացն մերձեցելոց վկայիցն շուրջ կայելոց և յանդիման եղելոց՝ ոչ յառաջագոյն դատաւորք զվճիռն 'ի վերայ բերէին, մինչև ինքն իսկ դատապարտեալն ոսոխ իւրում մեղանացն լինիցի, նոյնպէս և անդ նաւավարք արք բարեարոյք և անմիտք՝ որք յառեանս բարեկարգութիւնքն էին՝ նմանեցուցանէին. զի թէպէտ և յօքնակի երկիւղ այնպիսի մրրիկք այնչափ խռովութիւն մերձ կայր 'ի նոսա, և ծովն ոչ չունչ կլանել անսայր նոցա. այնպէս ամբոխեալ լինէր փութայր գոչելով և յաճախակի զալիսն 'ի վերայ յորուցանելով։

Ուստի այնքան եղև նախախնամութիւն. յո՞յ տնօրէնութենէն։ Զի զոր ա՟ծ տնօրինէր, նոյն և լինէր. զմարգարէն նոքիմբք խրատէր մարդասէր լինել և գած, և զբեթէ գոչէր առ նա և ասէր. նմանող լեր նաւոր-

նօք խօսէին և հաւաստեաւ զամենայն ինչ քննէին, որպէս թէ զխարդ կարացեն վճիռ առնել թէ ով ոք 'ի նոցանէ յանցաւոր և պարտական գտանիցի։

Բայց արդ լուր դու նոցա, զի որպէս 'ի դատաստանի զամենայն ինչ հարցանեն՝ թէ զինչ իցեն, ասեն, քո գործք, և կամ թէ ուստի գաս և կամ յով երթաս և կամ թէ յորմէ աշխարհէ ես և կամ յորմէ ժողովրդենէ։ Արդ յայնժամ ծովն լինէր զնմանէ ամբաստան և աղաղակէր, և յանդիմանէր վիճակն և վկայէր. բայց սակայն ոչ առ 'ի ծովու աղաղակէն և ոչ առ 'ի վիճակին վկայելն՝ զնա ընդ պատուհասիւ փակէր. այլ որպէս 'ի դատաստանի 'ի մէջ դատախազաց և վկայից յանդիմանէր և պատուհասեալ կշտամբէր։ Զի որպէս դատաւորք ոչ յառաջանան նախ 'ի դատել զյանցականն մինչ չև խոստովանեալ իցէ վասն մեղաց իւրոց զոր գործեաց, նոյնպէս և անդ նաւավարքն՝ ագէտք և անտեղեակք էին կարգաց և իրաւանց օրինաւորաց։ Եւ զի այնչափ ահ և երկիւղ ալեացն կուտակելոց և այնչափ խռովութիւնք շուրջ զնոքօք պատէր, և նաւն անհնարին ահիւ վարանեալ տագնապէր նաւավարօքն։

Եւ արդ նմա ուստի արդեօք լինէին այսպիսի խնամակալութիւնք, եթէ ոչ յո՞յ տեսչութենէն։ Զի ա՟ծ էր որ պատրաստէր և յօրինեալ կարգէր զայնպիսի ինչ իրս լինել, զի նոքօք խրատեսցէ զմարգարէն, և

գացդ արանցդ անմտաց. դոքա և ոչ զմի անձն արհամարհեն, և ոչ զմինդ անխնամ առնեն զմարմինդ քո. իսկ դու զբոլոր քաղաքն որ այնքան բիւրս ունի, մատնեցեր որքան ինչ 'ի քէն էր: Դոքա պատճառս լեալ զքեզ իւրեանց չարութեանն դատնելով, և ոչ այնպէս յարձակեցան 'ի դատապարտութեանն վճիռ. իսկ դու և ոչ մի ինչ ունիս բամբասել զնինուէացիսն, ընկղմեցեր զնոսա և կորուսեր: Դու իմով հրամանաւ երթալ և 'ի փրկութիւն կոչել 'ի ձեռն քարոզութեանն՝ ոչ հնազանդիս. դոքա ոչ յումեքէ լսելով զամենայն առնեն և հնարին, որպէս զի զքեզ զդատապարտեալդ 'ի պատուհասից զերծուցանիցեն:

Վասն զի յետ ծովուն չարախօսութեան և զկնի յանդիման ցուցանելոյ վիճակին, ինքն ինքեան ոսոխ եղև և զփախուստն խոստովանեաց, և ոչ այնպէս յարձակեցան 'ի կորուստ մարգարէին, այլ ներէին և բռնադատէին՝ զի զնա և մի զկնի այնքան յանդիմանութե մատնեսցեն ծովուն յարձակմանն: Բայց ոչ հրամայէր և ոչ այնպէս ծովն, մանաւանդ եթէ ած ոչ թողացուցանէր. զոր օրինակ 'ի ձեռն նաւորդացն, նոյնպէս և

ուսուցանէ մարգարէր լինել և խոնարհ, և նոքիմբք իսկ խրատէր զնա և ասէր՝ եթէ նման լեր գէթ նաւավարացդ արանց անմտից և աղգիտաց. զի դոքա, ասէ, և ոչ վասն միոյ ոգւոյ անփոյթ առնեն, և ոչ զմի մարդ արհամարհեն և անտեսանեն. իսկ դու, ասէ, [illegible] հարեր [illegible] և դու ձեռնհաս էիր: Եւ դոքա ուսուցին, ասէ, զառաջինն պատճառս իւրեանց նեղութեանցն որ վասն քո լինին, սակայն և ոչ այնպէս դատապարտեն 'ի [illegible] զքեզ: Իսկ արդ դու սոյնպիսի պատճառս ոչ ունիս վասն նինուէացւոց, և ոչ 'ի կորուստ նոցա յառաջագոյն դատապարտեալ ես զի ընկղմեսցին և կորիցեն: Եւ զի դու, ասէ, իմ հրամանի չանսացեր առ 'ի փրկութիւն [illegible] քարոզութեանդ քով. իսկ դոքա յումեքէ ոչ լուան և ոչ [illegible] ոք, և ամենեքին հնարին և [illegible] վասն քո, զի զքեզ որ դատապարտ լինելոց ես [illegible] կորստեան՝ ազատեսցեն, և մի կորուսցեն և [illegible]:

Զի դէպ եղեւ ծովուն չարախօսութեան և զկնի յանդիմանութեան վիճակին՝ [illegible] և ինքն իսկ վասն իւր ոսոխ եղև և զփախուստն խոստովանեաց, սակայն նոքա և ոչ այնպէս ձեռն արկանէին 'ի մարգարէն, այլ խնայէին 'ի նա, և ջանային իւրեանց 'ի [illegible]: Զի վասն նորա և զկնի այն ամենայն յանդիմանութեան հնարէին [illegible] 'ի ծովուն [illegible], այլ ծովն ոչ այնպէս ներէր նոցա և թողացուցանէր: Բայց ոչ եթէ ծովն ինքնին զայն առնէր, այլ Աստ. զի որպէս նաւավարացն [illegible], նոյնպէս և [illegible]

ից, տերանց, իշխանաց, իշխեցելոց, աղայոց, ծերոց, մանկանց, ալևորաց, և ոչ անբանից բնութի՛ 'ի յայնմ հարկէ ազատ լինէին ։ Մ՛մենայն ուրէք քուրձ, ամենայն ուրէք մոխիր, ողբք և հառաչանք. զի և նոյն ինքն որ զթագն ունէր, 'ի թագաւորական աթոռոյն իջանելով՝ քուրձ զգենոյր, մոխիր ցանէր 'ի գլուխն, և այնպէս զքաղաքն յափշտակէին 'ի վտանգից անտի ։ Այլ էր տեսանել հրաշափառագոյնս ինն յաղագս խորգոյն քան զծիրանիսն հանձս լեալս. զի զոր ինչ ոչ կարացին առնել ծիրանիքն, զայնունիկ զօրեաց յօրինել խորգն. և զոր ոչ կատարեաց թագն, զայն աւարտեաց մոխիրն ։

Տեսանե՞ս զի ոչ վայրապար ասէի թէ ոչ 'ի պահոց, այլ յարբեցութենէ և յանյագ ուտելոյ երկնչել պարտ և արժան է. վասն զի արբեցութիւն և շուայտութիւն զհաստատեալ քաղաքն սասանեցին և կործանել ես հանդերձեալք. իսկ պահք զդրդեալն և որ պատրաստ էր 'ի վայր անկանիլ՝ հաստատեցին ։

Հանդերձ պահօք և Դանիէլ 'ի գուբ առիւծուցն մտեալ և իբրև ընդ ոչխարս ձեռնընդելս լինելով այնպէս ելանէր. որք և գազանութեամբք զայրացեալք և զապառուժն տեսանէին և յառաջինկայ սեղանն ոչ մերձենային. այլ և բնութեամբ զայրացեալք, զի ոչ ինչ

[illegible]

Արդ տեսանես զի ոչ ինչ ընդ վայր ասացի [illegible] թէ ոչ 'ի պահոց արժան է երկնչել և յաղօթից, այլ յարբեցութենէ և [illegible]. զի արբեցութիւն և [illegible] զքաղաքն [illegible] և [illegible], իսկ պահքն և աղօթքն հաստատեցին և կանգնեցին.

Հանդերձ պահօք նաև Դանիէլ 'ի գուբ առիւծուցն [illegible] և իբրև ընդ ոչխարս [illegible] [illegible] զի [illegible] և [illegible] 'ի [illegible] և 'ի [illegible], այլ սակայն 'ի [illegible] ոչ իշխէին [illegible]

քան զաւիծանն է վայրենագոյն 'ի գազանս և սողոց. քանզի զեօթն աւուրս ոչ ճաշակէին կերակուրս. իբրև դաշնի ուրուք հրամայել զխորտիկսն մարգարէականս փառաւորել գոլէին, պատկառէցին 'ի կերակրոյն:

Նոյնոքիւք և երեք մանկունքն 'ի բաբելոնական հնոցի մտեալք և բազում ժամս դեգերեալք 'ի հուրն, քան զնոյն ինքն զհուրն պայծառագոյն ունելով զմարմին 'ի հնոցէն ելանէին: Որ եթէ հուր էր այն որ երևէր, իսկ հուր զիա՞րդ ոչ գործէր զհրոյ գործ. և եթէ մարմինք էին այնոքիկ, զիա՞րդ ոչ զմարմնական ախտն կրէին: Զիա՞րդ, հարց ցպահօն և պատասխանի առնէ քեզ, և նոքա լուծանեն զառակն: Քանզի էր արդարև իսկ առակ, մարմնոյն բնութիւնն մարտնչէր ընդ բնութիւն հրոյն, և յաղթութիւն մարմնոյն լինէր:

Տեսե՞ր զհրաշափառագոյն զկռիւն, տեսե՞ր զքանչելի յաղթութիւնն. զարմացիր ընդ պահսն, և տարածեալ ձեռօք ընկալ: Զի յորժամ և 'ի հնոցի օգնեն և 'ի գբի առիւծուց պահեն, զդևս հալածեն, զհրամանս այ լուծանեն, զախտիցն զմոլորութիւնն ցածուցանեն և յաղթութիւն զմեզ վերատին ածեն և յոլով

թիւնն իւրեանց գրգռէր զնոսա. քանզի ոչ ինչ է այլ գազան չար քան զնոսա 'ի բանանալ և 'ի բեկանել, որք մանաւանդ և եօթնօրեայ աւուրքքն սովական և արգելականք լեալ էին 'ի սովորութենէ կերակրոյն իւրեանց: Այլ իբրև դդաշնիձս և զապանոցս ներքուստ 'ի ներքս հրամայէին մինեանց և յօժարեցուցանէին առ 'ի ձգել զբաղուկս և արկանել զնովաւ, զի արեամբ և շաղախէ նորա լցցին և յագեսցին: Այլ նոքա ակնածեալք և կասեալք ամաչէին 'ի մարգարէական մարմնոյն հպել և մերձենալ:

Նոյնն և երեք մանկունքն 'ի Բաբելոն 'ի հնոց հրոյն իջեալք և բազում ժամս ընդ հրոյն խօսէին, և լուսաւորագոյն և պայծառագոյն նոցա մարմինն 'ի հնոցէ անտի դուրս ելանէր: Իսկ արդ եթէ հուր իսկ էր հուրն այն, զիա՞րդ ոչ գործէր զգործ հրոյ. և եթէ մարմինք էին մարմինքն այն, զիա՞րդ իբրև զմարմինս ոչ չարչարէին: Արդ ասիցես եթէ զիարդ, մատիր հարց ցպահս, և արասցէ քեզ պատասխանի և մեկնեսցէ քեզ զօրինակն: Զի արդարև էր իսկ օրինակ բնութիւն մարմնոյն ընդդէմ բնութեան հրոյն, և յաղթեալ բնութիւն հրոյն գտանէր:

Տեսե՞ր զպատերազմն զարմանալի, տեսե՞ր զքանչելիս յաղթութեն. և զարմացիր ընդ պահս և ընկալ զսա զնա 'ի քեզ խնդութեամբ: Զի յորժամ 'ի հնոցի կայրէ օգնել և 'ի գբոյ առիւծուց պահէ և զդևս հալածական առնէ և զհրաման պատուհասին այ յոլորմութիւն դարձուցանէ և զմոլեգնութիւն ախտից ցանկութեանց 'ի բաց մերժէ և յաղթութիւն զձեզ ձգէ և բազում խաղաղութեան պատճառ 'ի

Ձեալք՝ այնպէս դանդաղին և խորշին, արբեցութեամբ այսօր զինքեանս ապականեն, յաղագս այսորիկ պատուիրեմ, որպէս զի մի որ 'ի պաՀոց օգուտն է՝ յառաջագոյն 'ի բաց բարձցուք որկորստութեամբն և արբեցութը։

Ո՛վ իմ որքչարաչար կերպարանօք սնանին մարդիկ, յորժամ զպառն դեղն Հանդերձեալ լինին ըմպել, և լցեալ զինքեանս բազում կերակրովք այնպէս զդեղն առնուցուն բռնութեամբ Համբերելով, 'ի յօգտիցն արտաքս անկանին, դժուարագոյնս առնեն զմարդն առ ապականութիւնն. իսկ բժշկացն մանկունք ոչ ընթրելով քուն լինել Հրամայեն, զի ամենայն դեղն յառաջնումն 'ի Հիւանդարար յաւելորդ մաղձն մերձենայցէ։ Այնպէս և 'ի պաՀմն եթէ ոք զինքն յոլով արբեցութեամբ լցցէ այսօր, և վաղիւ 'ի նոցանէ ընդունիցի զդեղն, անպիտան զայն և անօգուտ առնէ. աշխատութեանց Համբերելով՝ զշաՀս և զպտուղս իւրացն ոչ ընդունի, և յառժամայն յարբեցութենէն եղեալ չարիք զամենայն ըզպաՀոցն ծախեն զզօրութիւն։ Ապա եթէ զմարմինն թեթև պատրաստեսցես, և արթուն խորՀրդովք ըզդեղն ընկալցիս, զյոլովս 'ի Հնոց մեղացն մաքրել կարասցես։

'ի [illegible] և [illegible]. այսպէս [illegible]։ Իսկ յարբեցութեան և [illegible] և [illegible] Հայք։ [illegible] այսորիկ [illegible], զի մի որ 'ի պաՀոց [illegible] և [illegible], որկորստութեամբ և արբեցութեամբ [illegible]։

[illegible] 'ի [illegible], զի [illegible] և [illegible], թէ [illegible], [illegible], այլ [illegible]. [illegible], [illegible] այսորիկ [illegible], զի [illegible] 'ի [illegible], զի [illegible] և 'ի [illegible] և [illegible]։ Այնպէս և [illegible] եթէ [illegible] և [illegible], և [illegible], [illegible] և [illegible]. զի [illegible] և [illegible], այլ 'ի [illegible], որ [illegible]. որ և [illegible] և [illegible]։ Ապա եթէ [illegible] և [illegible] և [illegible], և [illegible] և [illegible], և [illegible], [illegible] և [illegible]։

Արդ մի այսուհետեւ արբեցութը մնացուք 'ի պահսն, և մի 'ի պահոցն յարբեցութիւն ելցուք դարձեալ, զի մի այնպիսի լինիցիմք որպէս եթէ ոք զախտացեալ մարմին և որ յառնել հանդերձեալ իցէ, աքայի հարկանելով ուժգնապէս ընկենուցու դարձեալ 'ի վայր. որ և լինի անձանց մերոց յորժամ յերկոցունց կողմանց և զակերլն և զկատարած արբեցութեամբ՝ որ 'ի պահոցն լինի մեզ արթնութիւն՝ խաւարեցուցանեմք. Զի զոր օրինակ որք ընդ փաղանն հանդերձեալ են մարտնչել, բազում զինուք և ամրութեամբք զինեն զկարեւոր անդամսն և անդէն, և այնպէս առ նոսա մերձենան 'ի կռուիւն, նոյնպէս և այժմ յոլովք են 'ի մարդկանէ որք իբրև ընդ փաղանի ումեք մարտնչել հանդերձեալ իցեն՝ ընդ պահսն, այնպէս որովայնամոլութեամբ զինին երգիծուցանելով հանդերձ բազում խելագարութեամբ ընդունին զպահոցն զակն. Եւ եթէ հարցիցէ ոք էր աղագաւ 'ի բաղանիս ընթանաս այսօր, զի մաքուր մարմնով ընկալայց, ասէ, զպահսն. և եթէ դարձեալ հարցիցէ վասն էր արբենաս, 'ի պահս մտանել հանդերձեալ եմ, ասէ. Եւ զիա՞րդ ոչ իցէ յիմարութիւն՝ մաքուր մարմնով և անմաքուր հոգւով յարբեցութենէն զգեղեցիկ զառաքինութիւնն զայն ընդունել.

Որ հնար և առաւելագոյն ևս քան զայսօսիկ ասել. բայց որ ողջախոհքն են՝ և այնքիկ բաւական են յուղ-

Եւ արդ մի այսուհետեւ դանդաչեսցուք արբեցութեամբ մնացուք 'ի պահս, և մի 'ի պահոց յարբեցութիւն ընկղմեսցուք. որպէս թէ ոք հիւանդացեալ իցէ և ակարացեալ մարմնով, և սակս առաքինեալ փոքր մի և կազդուրեալ, և հարկանիցի յումեքէ և անդէն միւսանգամ գլորեալ վերստորեսցի. որպէս մերոց անձանցս լինիցի յերկոցունց կողմանց 'ի սկզբանն և 'ի կատարմանն զոր պահօք արժան է մեզ զգուշանալ և պատրաստել. Որպէս և 'ի պաղանց սպառնողաց բազում զինուք զգուշանալ և ծածկել զկարեւոր մարմինս մեր որ ընդդէմ նոցա պատրաստեալ է նահատակել, այնպէս և այժմ բազումք 'ի մարդկանէ 'ի պահս իբրև 'ի պաղանտամարտիկ ինչ կազմեալ են, և ինքեան խծողէն զպորտ և զորովայն իւրեանց, և երգիծուցանեն և ադջամղջեալ թմբրեցուցանեն բազում անմտութեամբ զանձինս իւրեանց, և ընդդէմ պատահին համբուրականն և ընտանեկան գեղեցիկ սեղեան պահոցն. Զի թէ զոք հարցանիցես, եթէ ընդէր 'ի բաղանիս փութաս երթալ այսօր, պատասխանի տայ և ասէ, թէ վասն զի 'ի պահս կամիմ մտանել. Եւ արդ զիա՞րդ արդեօք իցէ այս մարթ և պատշաճ, եթէ զմարմին սրբեսցես և զհոգին աղտեղացուցանես.

Իր ինչ արդեօք հնար աւելի քան զայս ասել, այլ խմաստոցն և

ղութիւն. վասն որոյ հարկաւոր է դադարեցուցանել զբանս, քանզի զհզօրս ցանկամք լսել զձայն. զի մեք իբրև հովուական մանկունս նուրբ եղեգամբ հնչեցաք որպէս ընդ կաղնւոյ և ընդ կաղամախոյ ընդ հովանեաւ քահանայիցս այսոցիկ նստելով. իսկ սա իբրև զքաջ երաժշտական զոսկի քնար կազմեալ, ձայնակցութեամբ բախէ անաղեացն զբոլոր տեսարանս զարթուցանել, նոյնպէս և սա՝ ոչ ձայնակցութեամբ աղեաց, այլ ձայնակցութեամբ բանից և գործոց յոլովս 'ի մեզ ամբարեսցէ օգտութիւնս: Զայսպիսի վարդապետս և Քրիստոս խնդրէ. քանզի ասէ "Եթէ որ արասցէ և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեանն երկնից": Եղիցի և մեզ աղօթիւք սորա և ամենայն աթոռակցացն արժանի լինել արքայութեանն երկնից շնորհօք և մարդասիրութե՟ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ սուրբ հոգւոյն յաւիտեանս. ամէն:

նուագքն բաւական են յուղղութիւն. վասն որոյ հարկ է կատարել զճառս բանիս, քանզի և հայրենի բարբառոյն ցանկացեալ եմ լսել. զի մեք իբրև զտղայ մանկունս և հովիւս երգեցաք սրնգիւ և փողով որպէս ընդ հովանեաւ[1] կամ ընդ քահանայական իշխանութեամբ նստեալ երգեցաք. իսկ որ հայրս մեր է, իբրև ճարտարապետ և արուեստագէտ զօրինաւորն քնարն զոսկեփողն 'ի մի ձայն միաբանութեամբ հարկանէ և պատշաճէ, և քաղցրաձայն բարբառով զամենեսեան ժողովէ և ամփոփէ, ոչ 'ի միաբանութիւն փողոյ, այլ 'ի միաբանութիւն բանից և գործոց բազում շահի և օգտի. քանզի և Քրիստոս զայսպիսի վարդապետս ընտրեաց. «Որ արասցէ, ասէ, և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեանն երկնից»: Աղօթիւք սորա և աթոռակցացս ամենեցունց՝ եղիցի մեզ և ամենայն ժողովրդոց եկեղեցւոյ արժանի լինել արքայութեանն երկնից շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր և սուրբ հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

1 Օրինակ մի յաւելուածով ընդ հովանեաւ նստեալ. յայլս համառօտ հովանեաւ [illegible] ընդ քահանայական պակասի:

## ՅԱՂԱԳՍ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

Տեսէք յառաջնում կիւրակէին զպատերազմն և զյաղթութիւնն, զպատերազմն սատանայի և զյաղթութիւնն Քրիստոսի. տեսէք որպէս ապաշխարութիւնն գովէր, և բանսարկուն հարուածոյն ոչ հանդուրժէր, այլ երկեաւ և զարհուրեցաւ: Զի երկնչիս, ով բանսարկու, և ընդ գովեստ ապաշխարութեան զի հեծես, զի տագնապիս: Այո, ասէ, յիրաւի տագնապիմ և նեղիմ և խռովիմ: Ընդէ՞ր, ասա ինձ ով բանսարկու: Զի զմեծ զէնն իմ յափշտակեաց և եհան յինէն ապաշխարութիւնն: Զո՞ր զէն: Զպոռնիկն, զմաքսաւորն, զհայհոյիչն, զաւազակն: Եւ արդար իսկ և ճշմարիտ, զբազում և զմեծ զէնն սատանայի յափշտակեաց ապաշխարութիւնն. և անդէն զնոյն բարձրաբերձ քաղաքն նորա կործանեաց, և տունս բժշկութեան ունի զվէրսն յապաշխարութենէ. քանզի ոչ ինչ գոյ նման ապաշխարութեան, սիրելի, զորոյ զփորձն յառաջագոյն եցոյց:

Իսկ արդ ընդէ՞ր և վասն էր այսպիսի խօսիք ոչ վայելեմք և հանապազ մտանելով յեկեղեցի ողջունիմք ընդ ապաշխարութեան: Մեղաւոր ես և եթէ արդար, մուտ յեկեղեցին. թէ մեղաւոր իցես, մուտ զի խոստովանեսցես զմեղսն. և եթէ արդար ես, մուտ զի մի վրիպեսցիս յարդարութենէն. քանզի երկոցունց նաւահանգիստ է եկեղեցին: Մեղաւոր և յանցական իցես, մուտ ապաշխարութեամբ զգեցեալ, ասա ա՜յ թէ մեղայ. զի՞նչ աշխատութիւն է այս կամ զի՞նչ ծախք, որպիսի՞ նեղութիւնք կամ որպիսի՞ վիշտք՝ բանիւ ասել թէ մեղայ: Զի թէ դու քեզէն խոստովանեսցիս զմեղսն, ոչ ունիս դատախազ զբանսարկուն. յառաջեա և յափշտակեա զնորա պատիւն, զի նորա պատիւն բանսարկութիւն է: Իսկ արդ եթէ քեզէն իսկ յառաջեսցես և ասիցես զմեղս քո, ջնջեսցես զյանցանս քո, գիտացեալ թէ այնպիսի ոսոխ ունիցիս՝ որ լռել ոչ կարէ: Մեղա՞ր, մուտ ասա ա՜յ թէ մեղայ. ոչ ինչ զքեզ այլ պահանջեմ, բայց զայս միայն. զի և գիրն ածեղէն ասէ.

“Ա՛սա դու յառաջ զմեղս քո, զի արդարասցիս”․ պատմեա զյանցանս քո, զի լուծցես զպարտիս․ ոչ ինչ աշխատութիւն է այս և ոչ թոշակ բանից և ոչ վար ընչից և ոչ այլ ինչ այսպիսի․ բանիւ ասա և խոստովան լեր զյանցանսն և ասա թէ մեղայ։

Իսկ ուստի՞ իցէ այս յայտ, ասիցես, եթէ խոստովանեցեմ նախ զմեղս իմ, քաւիցեմ զյանցանսն։ Ի գրոց ունիցիս զօրինակն․ որ ասացն՝ և քաւեաց, և որ ոչն խոստովանեցաւ՝ պարտաւորեցաւ։ Զի Կային վասն նախանձու սպան զեղբայր իւր զԱբէլ, և զհետ նախանձու սպանումն գնաց․ և առեալ սպանանէր զնա 'ի դաշտին։ Իսկ ապա զի՞նչ ասէր ցնա ա̃ծ․ “Ո՞ւր է, ասէ, Աբէլ եղբայրն քո”։ Որ ամենագէտն էր ամենայնի, հարցանէր ոչ առ 'ի չգիտել, այլ յապաշխարութիւն ձգէր զսպանողն։ Իսկ թէ ոչ առ 'ի չգիտել հարցանէր, յայտ արար զկնի այնր․ “Ո՞ւր է, ասէ, Աբէլ եղբայրն քո”։ Իսկ ետ պատասխանի թէ “Ոչ գիտեմ, միթէ պահապա՞ն եմ ես եղբօրն իմոյ”։ Համարեա եթէ պահապան չիցես, իսկ սպանող ընդէ՞ր․ զի ոչ պահէիր, ընդէ՞ր սպանանէիր․ բայց սակայն խոստովանիս զայս թէ պարտական իցես պահպանութեան։ Իսկ ապա զի՞նչ ասիցէ ցնա ա̃ծ․ “Գոչումն արեան եղբօր քո բողոք ունի առ իս յերկրէ”։ Իսկ իբրև յանդիմանեաց, և անդէն զպատուհասն 'ի վերայ հատուցանէր, ոչ այնչափ վասն սպանմանն, որչափ վասն լրբութեանն․ զի ոչ այնչափ ատեաց զյանցաւորն, որչափ զանամօթն։

Նա և յետ այնորիկ Կային յապաշխարութիւն եկն, այլ ոչ ընկալաւ զնա ա̃ծ, քանզի ոչ յառաջագոյն խոստովանեցաւ զմեղսն։ Իսկ տես զի՞նչ ասէրն, թէ “Մե՛ծ է պատիժ պատուհասիս քան զներել թողութեան իմոյ”․ իբրև այն թէ՝ այնչափ յանցեայ որ չեմ արժանի կեալ։ Իսկ ապա զի՞նչ ասէ ցնա ա̃ծ․ “Հեծութբ̃ և երերանօք շրջեսցիս 'ի վերայ երկրի”․ և հրամայէր նմա ա̃ծ զանհնարին տանջանսն։ Ոչ ընջեմ զքեզ, ասէ, զի մի մոռացումն լիցի ճշմարտութեանն․ այլ դնեմ զքեզ օրէնս 'ի կարգացումն ամենեցուն, զի եղիցին տառապանքն մայր իմաստութեան։ Իսկ ապա շրջէր Կային զօրէն շնչաւորի իբրև զարձան գնայուն լուռ մուռ, և առաւել եւս հնչէր քան զփող բարբառովն․ մի՛ ոք, ասէ,

Digitized by Google

տրտեսցէ զայս, զի մի կրեսցէ զայս։ Ընկալաւ զպատիժսն պատուհասից վասն անամօթութեանն իւրոյ. զոր ոչ խոստովանեցաւ, յանդիմանեալ կշտամբեցաւ վասն մեղացն. զի թէ կամօք խոստովանեալ էր յառաջ, ջնջեալ էր զմեղսն։

Իսկ զի ուսցիս զայն եթէ այնպիսի ինչ իրք են, տես թէ որպէս այլ ոք այլում նախ քաւեաց զմեղսն։ Իսկ եկեսցուք առ Դաւիթ մարգարէ և թագաւոր, առ արքայն և մեծատունն. մանաւանդ առաւել ևս յօժարութեամբ զնա մարգարէ կոչեմ. զի թագաւորութիւն 'ի Պաղեստին միայն էր, իսկ մարգարէութիւն ընդ տիեզերս աշխարհի. և զի թագաւորութիւնն առ սակաւ ժամանակս էր և քակտեցաւ, իսկ մարգարէութիւնն անմահական մատուցանէ զպատգամսն։ Դիւրին է արեգական շիջանել, քան թէ բանին Դաւթայ եղծանել. "Երկինք և երկիր անցցեն, ասէ, և բանք իմ մի անցցեն"։ Իսկ իբրև նա անկաւ 'ի շնութիւն և 'ի սպանողութիւն, "Ետես, ասէ, կին գեղեցիկ զի լուանայր", և ցանկացաւ նմա, և կամք նորա զգործն կատարէին։ Իսկ էր մարգարէն 'ի շնութեան, մարգարիտն յաղբ. այլ և ոչ իմանայր թէ մեղաւ, այնպէս էր արբեալ 'ի ցանկութեանն։ Զի յորժամ կառավարն գինեւլից իցէ, կառքն ընդ որ կամին և երթան. զի որպէս կառք և կառավար, նոյնպէս շունչ և մարմին. ապ' եթէ ոգին թըմբրեսցի, և մարմին 'ի տիղմս թաթաւի։ Զի մինչ դեռ կառավարն հարուստ կայ [1], և կառացն դիւրին է. իսկ յորժամ նա լքանիցի [2] և ոչ կարիցէ հաստատել և ունել զերասանակն, և ինքնին իսկ կառքն 'ի տագնապի լինին։ Նոյնպէս և մարդ մինչև ինքն զգաստ անձինն և տքնել կարէ հոգին, մարմինն 'ի զգաստութեան է։ Իսկ յորժամ յիմարեսցի, և ինքն մարմինն աղտովք և ցանկութեամբ թաթաւի։ Իսկ ապա զինչ. շնացաւ Դաւիթ և ոչ իմանայր, և ոչ յանդիմանէր յումեքէ, և 'ի վախճանի ծերութեան. զի գիտասցես՝ եթէ իցես ծոյլ, և ոչ ալիքն ինչ քեզ օգնեսցեն. և եթէ իցես փոյթ, և ոչ մանկութիւն ինչ քեզ վնասել կարիցէ։ Զի ոչ

1 Ի վեց օրինակաց երկաթագիր մի հատուածոյ [illegible]. երեք օր. [illegible] է, [illegible] է։

2 Երկաթագիր մի [illegible] [illegible] հարկանին. . [illegible]։

եթէ հասակի են իրքն, այլ կամաց են գործքն. Նոյնպէս և Դանիէլ երկոտասանամեան էր և զծերսն յանդիմանեաց, իսկ ծերքն հնացեալ աւուրբք զգործս պանկութեան գործէին. և ոչ նոցա ծերութիւնն ինչ օգուտ եղև, և ոչ նորա մանկութիւնն ինչ վնասեաց։ Ո՛չ ի ուցիս եթէ ոչ հասակի, այլ ՚ի կամս իւրաց է զգաստութիւնն. զի Դաւիթ իսկ ՚ի նմին ծերութեան էր, և յայնժամ ըմբռնեցաւ ՚ի շնութեան և սպանութիւն ևս գործեաց. քանզի արբեալ էր կառավարն անժուժկալութեամբ։

Իսկ ապա զի՞նչ. «Առաքեաց, ասէ, առ նա զՆաթան մարգարէ»։ Մարգարէն գայր առ մարգարէն։ Նոյնպէս այս և առ բժիշկս լինի. զի յորժամ բժիշկն տկարանայցէ, ապա այլ բժիշկ պիտոյ է նմա։ Նոյնպէս և անդ մարգարէ էր յանցականն, և մարգարէ էր որ ըղդեղն բժշկութեան դնէր։ Գայր առ նա Նաթան մարգարէ. և ոչ եթէ վաղվաղակի դրաց ՚ի դուրս յանդիմանէր զնա և կոչէր անօրէն և պիղծ, շուն և սպանող, թէ այսչափ պատիւս առեր յԱյ, և դու զպատուիրանն նորա կոխա՞ն արարեր։ Ոչ այնպիսի ինչ ասաց նմա Նաթան, զի մի զնա յանամօթ լրբութիւն դարձուսցէ. զի որ ինչ հրապարակաւ յանդիմանեն մեղք, ՚ի լրբութի դարձուցանեն զյանցաւորն։ Այլ գայր առ նա, իրաւամբք[1] դատաստանի կարգէր և դնէր և ասէր՝ եթէ, «Արքայ, բանս ինչ ունիմ խօսել ընդ քեզ. էր ոմն մեծատուն, էր և աղքատ ոմն»։ զմեծատունն կոչէր անդ զԴաւիթ, և զաղքատն՝ զՈւրիա. «Էր ոմն, ասէ, մեծատուն, էր և ոմն աղքատ. ունէր մեծատունն հօտս և անդեայս բազումս, իսկ աղքատին էր որոջ[2] մի, ՚ի բաժակէ նորա ըմպէր և ՚ի սեղանոյ նորա ուտէր և ՚ի վերայ լանջացն նորա հանգչէր»։ Այնու զհարազատութիւն մերձաւորական խնամոցն յայտ առնէ։ «Իսկ իբրև եկն հիւր, խնայեաց մեծատունն յիւրն, և առեալ զենոյր զորոջ աղքատին»։ Տեսանես զիարդ նիւթէ անդ զկրան, ընդ սպնգով[3] ծածկեալ ունէր զերկաթն։

Իսկ ապա զի՞նչ պատասխանի առնէր թագաւորն.

1 Մի յերկաթագրացն իրօք։
2 Երկք օր. որոջին։
3 Երկք օր. սպունգաւ։

կարծեալ այլում զհրամանն՝ առնէր զպատուհասն։ Օ՜ ի այսպիսի են մարդիկ, զի. վասն այլոց յօժարագոյնք են ’ի հրաման պատուհասին խստագոյն սաստիւք։ Եւ ապա ասէր Թագաւորն, թէ “Կենդանի է տէր, արժանի մահու է այնպիսին, և տուժեսցի ընդ միոյ չորեքկին„։ Եւ ապա զի՞նչ պատասխանի ետ նմա՝ Նաթան. ոչ բազում ժամս ձմլեաց զվէրսն, այլ վաղվաղակի արագ արագ հասանէր ’ի կտրել զվէրսն, զի վաղվաղ հատմամբքն կողասցի զցաւս ախտին. թէ “Դու ես, արքայ„։ Եւ ապա զի՞նչ առնէր նմա պատասխանի. ասէ. “Մեղայ տեառն„։ Ոչ ասաց՝ եթէ դու ո՞վ ես որ յանդիմանես զիս, և կամ ո՞վ յղեաց զքեզ համարձակել առ իս, և կամ ո՞րպէս իշխեցեր զայդ առնել։ Ոչ ինչ այսպիսի ասաց և ոչ զմտաւ ած, այլ ծանեաւ զիւր մեղսն և ասէ. “Մեղայ տեառն„։ Ապա Նաթան զի՞նչ. “Եւ տէր եթող, ասէ, զմեղս քո„. քեզէն զքեզ, ասէ, պարտաւորեցեր, և ես թողում զպատիժն. կամօք խոստովանեցեր զմեղսն, և ես թողում զյանցանսն. քեզէն զպատիժն յանձն առեր, և ես թողի զպատուհասն։ Տեսէ՞ր զկարգ կատարեալ գրեալն, թէ “Ասա դու նախ զանօրէնութիւնս քո, զի արդարասցիս„։ Արդ զի՞նչ ջան է ասել յառաջագոյն զմեղսն։

Կայ և այլ ճանապարհ ապաշխարութեան։ Ո՞ր իցէ այն։ Տրտմել և յոգւոց հանել վասն մեղաց և քաւել զյանցանս։ Ոչ ինչ ’ի քէն պահանջեմ աւելի, բայց թէ ողբայցես զմեղսն. ոչ ասեմ քեզ զանդունդս հատանել և անցանել, և ոչ ’ի նաւահանգիստն իջուցանել, և ոչ ընդ դաշտս անցանել, և ոչ ճանապարհ գնալ, և ոչ ինչս ծախել, և ոչ ընդ խռովական և անդադար ալիս ծովու ճանապարհորդել. այլ սգալ վասն մեղացն։

Եւ դարձեալ ասիցես. եթէ տրտմեցայց վասն մեղացն, լուացի՞ց զմեղսն։ Ունիս և զայս օրինակ ’ի գրոց. էր ոմն Թագաւոր Աքաաբ անուն, վկայէ թէ յառաջ արդար էր և Թագաւորեաց։ Այլ նա որ արդար Թագաւորն էր, ’ի չարութենէ Յեզաբելէ կնոջէ իւրմէ դարձաւ, և սպանումն և ագահութիւն միանգամայն կատարէր։ Նաբութեայ ուրումն յեզրայելացւոյ [1] այգւոյն

1 Երկաթագիրքն Իզրայէլացւոյ. նոյնպէս և զինի։

ցանկացաւ, և յղէր առ նա և ասէր՝ թէ տուր ինձ զտե-
ղին զոր ցանկացայ, և առ յինէն զգինն և կամ տեղի
փոխանակ տեղւոյն։ Եւ նա ասէ ցնա՝ թէ քաւ լիցի ինձ
զժառանգութիւն հարց իմոց վաճառել։ Իսկ Աքաաբ
ցանկանայր այգւոյն, այլ ոչ կամէր բռնադատել. զի
յայնմանէ և 'ի հիւանդութիւնս դառնայր։ Եւ յետ
այնորիկ մտանէր առ նա կին նորա Յեզաբէլ, անամօթ
և հրաժարեալն 'ի բարեաց, պիղծն և աղտեղին, և ա-
սէր ցայրն իւր. զի՞ տրտմեալ ես և կամ ընդէ՞ր ոչ ճա-
շակես. յոտն կաց, կեր արբ, և՛ ես արարից քեզ ժա-
ռանգել զայգին Նաբութեայ յեզրայելացւոյ։ Եւ ա-
ռեալ գրէր թուղթս յերեսաց թագաւորին առ ծերս
և առ իշխանս և ասէր. քարոզեցէք պահս, և կացու-
ցէք արս սուտս վասն Նաբութեայ՝ թէ օրհնեաց զա̃ծ
և զարքայ, այսինքն հայհոյեաց։ Ո՛վ պահք փութով և
լի անօրէնութեամբ. քարոզեցին պահս, զի սպանումն
արասցեն։ Իսկ Նաբութ քարկոծէր և մեռանէր։ Եւ
իբրև լսէր Յեզաբէլ, ասէր ցայր իւր ցԱքաաբ. արի
ժառանգեա զայգին, զի մեռաւ Նաբութէ։ Իսկ նա
առ ժամանակ մի տրտմէր, և ապա մտանէր ժառանգէր
զայգին։ Եւ յայնժամ առաքէր առ նա Ա̃ծ զԵղիա մար-
գարէ և ասէր. երթ ասա ցԱքաաբ, թէ փոխանակ զի
սպանէր և ժառանգեցեր և հեղեր արիւն արդար, այն-
պէս հեղցի արիւն քո, և շունք լիզեսցեն զարիւն քո և
պոռնիկք լուասցեն յարեան քում։ Աստուածական էր
բարկութիւնն, լի սաստիկ հրամանօք, լի պատժովք։
Եւ տես եթէ յո՞ առաքէ զնա. յայգին. ուր մեղքն ե-
ղեն, անդ և պատիժքն. ուր անօրէնութիւնն, անդ և
պատուհասն։ Իբրև տեսանէր զԵղիա Աքաաբ, ասէր՝
թէ "Ահա գտեր զիս թշնամի իմ". իբրև այն թէ յան-
ցաւոր գտեր զիս և մեղաւոր, ունիս ժամանակ առ 'ի
պատժել զիս։ Գտեր զիս թշնամի իմ՝ զի ասէրն, քան-
զի հանապազ յանդիմանէր զԱքաաբ Եղիա. գիտէր
թէ մեղաւ։ Յամենայն ժամ, ասէ, յանդիմանէիր զիս,
բայց այժմ աւելի ես 'ի դէպ պատուհասես զիս։ Եւ
կարգայր առաջի նորա զպատուհասն. "Այսպէս ասէ
տէր, փոխանակ զի սպանէր և ժառանգեցեր և զարիւն
առն արդարոյ հեղեր, այսպէս հեղցի քո արիւնդ, և
շունք լափեսցեն զարիւն քո և պոռնիկք լուասցեն յա-

րեան քում„ ։ Բայց նմա զհրամանն՝ թէ ա̃ծական էր պատուհասն ։ Եւ իբրեւ լուեր զայս Բաքաբ, յոյժ սգայր եւ տրտմէր վասն մեղացն եւ ճանաչէր զյանցանսն, եւ ա̃ծ անցուցանէր 'ի նմանէ զպատուհասն ։ Բայց նախ յանձն առեալ առաջի կայր Եղիաս, զի մի սուտ երեւեսցի, եւ զնոյն կիրս կրեսցէ զոր կրեացն Յովնան ։

Բայց ցնա ա̃ծ՝ թէ երթ քարոզեա 'ի քաղաքն մեծ 'ի Նինուէ, յորում բնակեալ են երկոտասան բիւր մարդկան, թող զկանայս եւ զմանկտի, թէ "Երեք եւս աւուրք եւ Նինուէ կործանեսցի„ ։ Եւ Յովնան ոչ կամէր երթալ, գիտացեալ զմարդասիրութիւնն ա̃յ· այլ դառնայր 'ի փախուստ ։ Ասէր· եթէ ես երթայցեմ քարոզիցեմ, եւ դու իբրեւ մարդասէր զղջանայցես, եւ ես իբրեւ սուտ մարգարէ մեռանիցիմ ։ Բայց սակայն եւ ծովն ոչ առեալ թագուցանէր, եւ պահէր անդրէն 'ի Նինուէ, որպէս եւ զխմաստուն զծառայակից իւր պահէր ։

"Էջ, ասէ, Յովնան փախչել, եւ եգիտ նաւ մի որ երթայր 'ի Թարսիս · ետ գինս եւ եմուտ 'ի նա„ ։ Ո՞ւր փախչիս, Յովնան · յերկիր յա̃յլ փախչիս · այլ "տեառն է երկիր լրիւ իւրով„ ։ Կամ ընդ ծո̂վ երթայցես · "Նորա է ծով եւ նա արար զնա„ ։ Այլ յերկինս · ո՞չ լուար Դաւթի զի ասէ՝ թէ "տեսի յերկինս զգործս մատանց քոց„ ։ Բայց սակայն յերկիւղէն փախստական լինէր · կարծէր թէ փախիցի, այլ ճշմարտութեամբ փախչել յա̃յ անհնարին է ։ Այլ յորժամ եհան ընկեաց զնա ծովն արտաքս 'ի Նինուէ, ապա քարոզէր եւ ասէր · "Երեք եւս աւուրք եւ Նինուէ կործանեսցի„ ։ Զի գիտասցես թէ այն իսկ կայր 'ի մտի, 'ի փախուստ տայր զանձն, թէ ա̃ծ մարդասէր է, զղջանայ վասն չարութեանն զոր ասաց ածել 'ի վերայ նոցա · եւ ապա երեւեսցի նա իբրեւ սուտ մարգարէ ։ Զի յետ քարոզելոյն 'ի Նինուէ, ելանէր արտաքս քան զքաղաքն, եւ հայեցեալ ակն ունէր թէ զինչ լինելոց է ։ Եւ իբրեւ տեսանէր թէ երեք աւուրքն անցանէին եւ պատուհասն ոչ առնոյր վճիռ, յայնժամ ապա ինքնին մտայոյզ լինէր եւ ասէր · "Ո՞չ այս էին բանքն զոր խորհէի՝ թէ ա̃ծ գթած է եւ ողորմած, երկայնամիտ է եւ զղջանայ վասն չարեաց մարդկան„ ։

Եւ արդ զի մի նոյն իրքն անցցեն ընդ Եղիա որպէս

և ընդ Յովնան, ասէր նմա զիրսն թէ վասն էր Աքաաբու ներէրն: Եւ զինչ ասէ ած ցԵղիա. «Տեսե՞ր, ասէ, զիարդ գնաց Աքաաբ սգով և տրտմութեամբ առաջի իմ. և մի արարից ըստ չարութեան նորա»: Ծառայ[1] տեառն իւրում լինէր ջատագով, և աղերսէր ած մարդոյ վասն մարդոյ: Մի՞ կարծեր, ասէ, թէ վայրապար ինչ ներեցի նմա, այլ զի շրջեաց զբարսն և փոխեաց, և անցոյց զբարկութիւն իմ: Մի՞ կարծիցես սուտ զմարգարէութիւնն, զի դու ճշմարտութեամբ ասացեր. եթէ ոչ էր փոխեալ զբարսն, ունէր արդարև կրել զպատիժ պատուհասին. այլ նա աւանիկ զբարսն փոխեաց, և ես անցուցի զբարկութիւնն: Եւ ասէ. տես որպէս գնաց Աքաաբ սգով և տրտմութեամբ առաջի իմ. ոչ արարից ըստ բարկութեան իմոյ: Տես զիարդ 'ի տրտմութենէ քաւին մեղք:

Երրորդ ճանապարհ ապաշխարութեան, զի 'ի բազմութենէ ճանապարհացն դիւրին լիցի քեզ փրկութիւն գտանել, տես որպիսի զէն է հեզութիւն և խոնարհութիւն, և նոքօք լուծանես զկնճիռն մեղաց: Ունիս և զոցա վկայութիւն 'ի գրոց ընթերցուածոց որ առ փարիսեցին և մաքսաւորն: Ելին, ասէ, փարիսեցին և մաքսաւորն 'ի տաճարն կալ յաղօթս: Եւ սկսանէր փարիսեցին զիւրոյ զառաքինութեանցն թիւ ասել. ոչ եմ մեղաւոր որպէս զամենայն աշխարհս և ոչ որպէս զմաքսաւորս զայս: Թշուառական և անյագ անձն, զամենայն աշխարհս պարտաւորեցեր, ընդէ՞ր և զոր առ քեզ մերձաւորդ էր՝ նեղեցեր. ո՞չ էր բաւական քեզ աշխարհս ամենայն, եթէ ոչ և զմաքսաւորդ դատապարտէիր. զամենայն ոչ բանսարկեցեր, և դէթ 'ի մի այրդ ոչ խնայեցեր: Ոչ եմ, ասէ, որպէս զամենայն աշխարհս, և ոչ որպէս զմաքսաւորս զայս. երկիցս 'ի շաբաթու պահեմ, և տասանորդս տամ յամենայն ստացուածոց իմոց աղքատաց: Ամբարտաւանութեան բանս խօսէր: Ով թշուառականդ, ոչ յագեցար աշխարհաւ, այլ զայդ որ ընդ քեզ էր պարտաւորէիր:

Եւ իբրև լուաւ զայս մաքսաւորն, ոչ ասաց թէ դու ո՞վ ես որ ընդ իս զայդ ասես, կամ ուստի՞ գիտես զվարս

1 Այսպէս ամենայն օրինակքն. բայց յոյնն Բաբէլ փոխն ծառայի:

իմ, ոչ երբէք կացեր ընդ իս, ընդէ՞ր այդպէս ամբար-
հաւաճես, և կամ քեզ ո՞վ վկայ կայ բարեգործութե̃
քում, զի զանձնդ գովես և յարգես: Այլ ոչ ինչ տայր
պատասխանի առ այն մաքսաւորն, այլ խոնարհեալ եր-
կիր պագանէր և ասէր ցա̃ծ, թէ թողութիւն արա ինձ
մեղաւորիս: Եւ իբրև խոնարհեալ հնազանդէր մաք-
սաւորն, լինէր արդարացեալ. և փարիսեցին կորուսեալ
զարդարութիւնն զոր ունէր՝ իջանէր ՚ի տաճարէն. իսկ
մաքսաւորն իջանէր զարդարութիւն զգեցեալ: Եւ բանք
իւրացն յաղթեցին. զի մին գործովքն յարդարութենէն
վրիպէր, և միւսն բանիւ խոնարհութե̃ զարդարութիւն
ստանայր: Եւ ոչ եթէ խոնարհութի̃ ինչ էր այն. զի խո-
նարհութի̃ յայնժամ էր՝ յորժամ մեծ ոք լինի և զանձն
խոնարհեցուցանէ. իսկ մաքսաւորին ոչ էր խոնարհու-
թիւն, այլ ստոյգ ճշմարտութեամբ բանիւք մեղաւոր
էր: Զի զի՞նչ իցէ այլ չար քան զմաքսաւորութիւն,
ասա ինձ, որ օտար վաստակոց է վաճառական, օտար
աշխատութեանց բաժանակից. զի զոմն յաշխատութե̃
տեսանէր, և շահիցն բաժանորդ գտանէր. ո՞չ ապաքէն
դառն մեղք են մաքսաւորութիւն. զի ոչ այլ ինչ է մաք-
սաւորութիւն, բայց եթէ անամօթ բռնութիւն, օրի-
նաւորական մեղք, դէմք ագահութեան: Զի՞նչ է չար
քան զմաքսաւորութիւն, ասա ինձ, որ նստի ՚ի ճանա-
պարհակիցս [1], և զօտարաց աշխատութիւնս և զվաս-
տակս կթէ, և զաշխատութենն; ոչ ինչ փոյթ է նմա,
և յորժամ շահք՝ յորում ոչն աշխատեցաւ՝ անտի բա-
ժին առնու անիրաւութեամբ: Իսկ արդ եթէ մաքսա-
ւորն որ ճշմարիտն ապաշխարեաց՝ եհաս արդարութե̃,
որչափ ևս առաւել որ խոնարհ և հեզ իցէ. զի ահաւա-
սիկ որ խոստովանեաց զմեղսն ճշմարտութեամբ՝ արդա-
րացաւ:

Կամիս ուսանել թէ ով է խոնարհ և հեզ, հայեաց
՚ի Պաւղոսի խոնարհութիւնն, զՊաւղոս զվարդապետն
աշխարհաց զիմաստունն զհոգևորն, զանօթն ընտրեալ,
զնաւահանգիստն խաղաղութե̃, զաշտարակն անշարժ,
որ միով մարմնով ընդ ամենայն աշխարհ ընթանայր:
Տեսէք զնա, հայեցարուք ընդ նա խաղաղութեամբ,

1 Այլք յանցս կամ ՚ի կիրս ճանապարհաց.

ընդ տգէտն և իմաստունն, ընդ աղքատն և ընդ մեծատունն. զնա ճշմարտութեամբ ասեմ խոնարհ և հեզ, որ բիւր ինչ աշխատութիւնս յանձին իւրում կրէր, որ բիւր անգամ պատերազմեալ նահատակէր ընդդէմ սատանայի, որ քարոզէրն և ասէր՝ թէ "Շնորհք նորա որ յիս են՝ ոչ ինչ ընդունայն եղեն, այլ առաւել քան զամենեսեան վաստակեցի". որ բանտին համբերէր և տանջանացն և հարուածոցն, որ թղթովք իւրովք զամենայն աշխարհս որսայր, որ երկնաւորական բարբառոյն կոչեցաւ, որ հեզութեամբ ասէր՝ եթէ "Ես եմ տրուպն առաքելոց, որ չեմ արժանի թէ կոչեցայց առաքեալ": Տեսե՞ր զմեծ խոնարհութիւնն, տեսե՞ր զհեզութիւնն Պաւղոսի, տեսանե՞ս զի տրուպ կոչէր զանձն և ասէր թէ չեմ արժանի թէ կոչեցայց առաքեալ, այն էր ճշմարտութեամբ խոնարհութիւն. աստի հրաժարեալ և զինքն տրուպ կոչէր: Զմտաւ ած թէ ով էր որ ասէրն զայն բանս. Պաւղոս քաղաքապետն երկնից, որ զմարմինն լոկ ունէր զկուրեաւ, սիւն հաստատութե եկեղեցւոյ, որ յերկրի հրեշտակ և յերկինս մարդ: Դիւրաւ այսուհետև ընդ նորա գնացսն հայեցեալ՝ զնորա գեղեցկութիւն առաքինութեանցն պատմեմք: Ոչ այնպէս երբէք արեգակն ծագեալ պայծառական ճառագայթիւքն լուսաւորէ և ուրախ առնէ զաչս տեսլեան իմոյ, որպէս և զերեսն Պաւղոսի որ լուսաւոր առնէ զիմ միտս. զի արեգակն զերեսս միայն լուսաւորէ, իսկ Պաւղոս անդր 'ի վեր համբարձեալ թռուցանէ յերկնաւոր կամարն, և բարձրագոյն քան զարեգակն կացուցանէ 'ի վեր քան զլուսինն: Զի այնպիսի է զօրութիւն առաքինութեանն, զմարդ հրեշտակ առնել, զոգիս յերկինս թռուցանել. զայսպիսի առաքինութիւնս ուսուցանէ մեզ Պաւղոս:

Այլ ոչ է զանց առնել որ առաջիս կայ. ցուցանել կամիմ զերրորդ ճանապարհն հեզութեան, եթէ մաքսաւորն ոչ խոնարհեցաւ, այլ ստուգութեամբ ասաց և մերկաց զիւր զմեղսն և եղև արդարացեալ. ոչ ինչս ծախելով, և ոչ ընդ անդունդս անցանելով, և ոչ ընդ մեծ ճանապարհ աշխատելով, և ոչ զխիրելիս աղերսելով, և ոչ ժամանակ ծախելով. այլ հեզութեամբ և խոնարհութեամբ զարդարութիւն ստացաւ: Որում արժա-

նիս արտացէ տմ, և զմեզ զամենեսեան շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

## Ի ՍԿԶԲԱՆ ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴԱՑ ԱՍԱՑԵԱԼ, ՅԱՂԱԳՍ ՀԱՑԱՌՈՒԹԵԱՆ, ԵՒ ԹԷ ՎԱՍՆ Է՞Ր ՅԵՐԿՆԻ ԵՒ ՅԵՐԿՐԻ ՍԿԻԶԲՆ ԱՌԱՐ ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԷՍ

Հեշտալի նաւավարաց է գարունն, առևտրականաց և երկրագործաց. բայց ոչ նաւավարաց և ոչ երկրագործաց այնպէս հեշտալի է գարունն, որպէս որք կամիցին իմաստասիրել. առևտրելի է պահոց ժամանակ հոգևոր վաճառուց գարունն, ճշմարիտ խորհրդոյն խաղաղութիւն: Ցանկալի երկրագործացն հեշտալի է գարունն, զի ծաղկօք պսակեալ տեսանէ զերկիր, և իբրև զպատմուճան ինչ փռեալ տարածեալ ամենայն տունկք. բազմազան բոյսք բանջարոց: Ախորժելի է և նաւավարաց գարունն, զի ծովային մրրկանունքն զգուշութեամբ ունին զխաղակութիւնն տարածեալ ալեացն, և 'ի բազում խաղաղութեան զդելփինքն խաղացուցեն, և մերձ առ նմին խոր նաւուն ընկղմելով՝ բազում անգամ 'ի վեր գալով երևեցին: Բայց մեզ հեշտալի է գարունն պահոց. զի յալեաց մեզ ոչ 'ի ջրոյ, այլ յանբաւն ցանկութեանց զխստացանել սովորեաց. և պսակ մեզ ոչ 'ի ծաղկանց, այլ 'ի շնորհաց հոգւոյն դնէ. «Պսակ շնորհաց ընկալցիս, ասէ, 'ի գլուխ քո»: Ոչ այնպէս ծիծառն երևելով սովորեաց հալածել զձմեռն, որպէս պահք երևեալ զձմեռն ախտից մտաց մերոց արտաքս հանեն: Ոչ ևս այնուհետև կռիւ հոգւոյ առ մարմինն, և ոչ ընդդէմ դառնայ տիկնոջ աղախինն. այլ ամենևիմբ սպասաւորագոյն մարմնոյ լուծեալ լինի:

Այս արդ բազում է 'ի մեզ խաղաղութիւն, յորում հանդարտութիւն, եթէ և մեք զմակոյկ վարդապետութեանս ձգեսցուք 'ի նաւահանգստէն 'ի նաւահանգիստըն առաքելով 'ի լսելիս ձեր զբանս մեր. եկ 'ի նորագոյն միասին համարձակեսցուք և մեք յաղագս երկնի և երկրի և ծովու, և այլոց արարածոց մարմնոյս իմաստասիրեսցուք. քանզի այսօրիկ ընթերցան մեզ այսօր:

Եւ զինչ առ մեզ, ասէ, որ յաղագս արարածոց է քան սիրելի: Քանզի 'ի մեծութենէ և 'ի գեղեցկութենէ ստացուածոց համաստապէս երևի արարիչն, զի որքան ընդ մեծութիւն և ընդ գեղեցկութիւն արարածոց զարմանայցեմք՝ այնքան առ արարիչն պաշտպանիմք, մեծ բարի է գիտել զինչ արարիչ և զինչ արարած, զինչ գործ և զինչ գործողն: Ով եթէ զայնոսիկ հաւաստեաւ գիտէին թշնամիք Ճշմարտութեանն, ոչ արդեօք զամենայն խառնակէին զգերիվերոյսն 'ի ստորև անելով, ոչ զաստեղս և ոչ զերկին 'ի խոնարհ՝ և զերկիր 'ի վեր տարեալ հանէին. այլ զերկնից թագաւորն 'ի թագաւորական աթոռոյն իջուցանելով ընդ արարածս կարգեցին, և զստացուածս ա̃ծայինն նախագոյութեամբն պատուեցին: Եթէ յաղագս արարածոցս գեղեցիկ գիտէին իմաստասիրել մանիքեցիք, ոչ արդեօք զապականեալ զնիւթն յոչընչէն անեղութեան պատուովք պատուէին: Եթէ յաղագս արարածոցս գեղեցկապէս գիտէին իմաստասիրել, ոչ մոլորէին 'ի Ճշմարտութենէ, ոչ արդեօք հաւանեալ պաշտէին զստացուածս քան զստացողն: Գեղեցիկ է երկին, այլ զի երկիր պագցես արարչին. պայծառ է արեգակն, այլ զի պաշտեսցես որ գործեացն զնա. ապա եթէ կայցես մնայցես յարարածոցս 'ի հիացման, և առ գեղեցկութեան գործոցս անցեալ նստիցիս, լոյսն քեզ խաւար լինի, մանաւանդ եթէ լուսոյն որպէս խաւարաւ վարիս:

Տեսեր որքան բարի է գիտել զարարածոցս զբանս: Արդ մի զանց առնիցես զշահիւքն, այլ հաւաստեաւ միտ դիր ասացուածոյս. քանզի ոչ յաղագս երկնի և երկրի և ծովու միայն ասեմք, այլ և յաղագս լինելութեան մերոյ ասեմք, և ուստի մահ, ուստի տատանելի կեանքս, ուստի տրտմութիւնք և հոգք. զի յաղագս այդոցիկ և յոլովից այլոց բանս առաջի դնելով ա̃ծ, ըզգիրս զայսոսիկ առ մեզ առաքեաց. ոչ որպէս թէ պատասխանիս ինչ մարդկան առնիցէ ա̃ծ, այլ գոչէ 'ի ձեռն մարգարէին ասելով. “Եկայք և յանդիմանեսցուք ասէ տէր”: Ոչ պատասխանիս միայն առնէ և յատեան մտանէ, այլ թէ որպէս փախիցուք 'ի դատապարտութենէն՝ ուսուցանէ. զի և ոչ վայրապար ասէ՝ եկայք և յանդիմանեսցուք, այլ յառաջագոյն վարդապետեաց

զինչ ասել և զինչ առնել իցէ պարտ, և այնպէս յատեան ձգեաց։ Նա լուր վերստին մարգարէական բանիցս. "Լուացարուք մաքուրք եղերուք. 'ի բաց բարձէք զչարութիւն անձանց ձերոց. ուսարուք բարի առնել, դատ արարէք որբոյն, արդարացուցէք զայրին,,. և ապա ասէ. "Եկայք յանդիմանեսցուք ասէ տէր,,։ Ոչ կամիմ զձեզ մերկս և ամայիս յիրաւանցն առնել. այլ զինելով զձեզ պատասխանեօքն յայնպիսի յանդիմանութիւն կոչեմ. վասն զի յատեան կամիմ մտանել ընդ ձեզ, ոչ զի դատապարտեցից, այլ զի խնայեցից։ Նոյնպէս և այլուր ասէ. "Ասա դու զանօրէնութիւնս քո, զի արդարասցիս,,։ Ունիս ասել դառն և անընդել. յառաջագոյն ժամանելով յափշտակեա զնորա կարգն, և կարկեա զանամօթ բերանն։

Արդ 'ի սկզբանն ընդ մարդկան խօսէր Ած, որպէս կարողութիւն էր մարդկան լսել. առ Ադամ եկն, նոյնպէս սաստեաց Կայենի, այնպէս խօսեցաւ ընդ Նոյի, այնպիսի հիւրութեամբ առ Աբրահամ եկն։ Իսկ յորժամ 'ի չարութիւն խոտորեցաւ բնութիւնս մեր, և իբրև յարտաքին իմն սահման զինքն որոշեաց, յայնժամ իբրև 'ի հեռաւորութեան որոշեցելոց գիր առաքէր, որպէս զի 'ի ձեռն թղթոյ ուրուք զառաջին սէրն նորոգեսցէ առ մեզ։ Նա զգիրս զայսոսիկ առաքեաց Ած. իսկ բերէր Մովսէս։ Իսկ զինչ ասեն գիրքս. "Ի սկզբանէ արար Ած զերկինս և զերկիր,,։ Ո՞ր աղագաւ արդեօք ոչ յաղագս հրեշտակաց։ Քանզի եթէ յարարածոցս արարիչն տեսանի, առաւելագոյն ևս արդեօք 'ի նոցանէ երևէր. գեղեցիկ է երկին, այլ ոչ այնպէս գեղեցիկ իբրև զհրեշտակս. պայծառ է արեգակն, բայց ոչ պայծառագոյն իբրև զհրեշտակապետս։

Ընդէ՞ր արդեօք զբարձրագոյն եթող զՃանապարհն, ընդ նուաստագոյնն մեզ առաջնորդէ։ Վասն զի ընդ Հրեայսն խօսէր, որք յանբանութիւնն անկեալ կային, յԵգիպտոսէ այն ինչ ելեալք, ուր կոկորդիլոսս և շունս և զկապիկս պաշտէին մարդիկ. վասն որոյ և ոչ էր հնար ընդ բարձրագոյն Ճանապարհն առաջնորդելով գալ արարչին. գեր 'ի վերոյ էր Ճանապարհն այն, այլ խիստ և զառ 'ի վեր և առաւել ուղղեալ տկարաց. վասն այնորիկ զնոսա ընդ դիւրագոյնն ածէր, յաղագս երկնի և

Digitized by Google

երկրի և ծովու և երևելեացս ամենեցուն առնէր զվար-
դապետութիւնս: Նա զի այս էր պատճառն, յորժամ
սուղ ինչ աճեցին, լուր զիարդ ընդ նոսա մարգարէն յա-
ղագս այնոցիկ խօսեցի վերին երանութեանցն. "Օրհ-
նեցէք զտէր յերկնից, օրհնեցէք զնա 'ի բարձանց.
օրհնեցէք զնա ամենայն հրեշտակք նորա, գովեցէք
զնա ամենայն զօրութիւնք նորա. զի նա ասաց և եղեն,
ինքն պատուիրեաց և ստացան,,:

Եւ զի՞նչ զարմանալի եթէ 'ի հնումն այսպէս էր վար-
դապետութեանն օրինակ. որ և 'ի նորումն յորժամ
իմաստասիրագոյն վարդապետութեանցն էր ժամանակ,
ընդ աթենացիսն Պաւղոս ընդ նոյն ճանապարհ եկն,
ընդ որ և Մովսէս զհրեայսն խրատելով: Զի և ոչ
նա յաղագս հրեշտակաց և հրեշտակապետաց ասաց նո-
ցա, այլ յաղագս երկնի և երկրի և ծովու, այնպէս իմն
հրապարակախօս լինէր. "Աստուած որ արար զաշխարհս
և զամենայն որ 'ի նմա, նա երկնի և երկրի տէր է. ոչ
'ի ձեռագործ տաճարս բնակէ,,: Բայց և ոչ յորժամ
ընդ փիլիպեցիսն խօսէր, ընդ այս ճանապարհ ած զնո-
սա. այլ 'ի բարձրագոյնս հանէր զնոսա 'ի հրապարակա-
խօսութիւնս, այսպիսի իմն ասելով, եթէ "Նովաւ հաս-
տատեցաւ ամենայն որ յերկինս և որ յերկրի է, եթէ
աթոռք, եթէ տէրութիւնք և իշխանութիւնք և եթէ
պետութիւնք, ամենայն նովաւ և 'ի նա արարաւ: Նոյն-
պէս և Յովհաննէս զի ընդ կատարեալս խօսէր ընդ ա-
շակերտսն իւր, առ որ զամենայն արարածս միանգա-
մայն յիշեաց. քանզի ոչ ասէր թէ երկին և երկիր և
ծով, այլ "Ամենայն նովաւ եղև, և առանց նորա եղև
և ոչ ինչ,,, եթէ երևելիք և եթէ աներևոյթք:

Զոր օրինակ առ վարդապետսն լինի. զի որք 'ի մօրէ
զմանկունսն առնլով վարդապետեն նոցա նախ առաջին
ուսուցանելով զգիրն, իսկ որ յայլմէն երբեմն առնուցու
'ի վարդապետէ զաշակերտսն, 'ի բարձրագոյն վարդա-
պետութիւնսն տարեալ հանէ, նոյնպէս առ Մովսիսիւ
և Պաւղոսիւ և Յոհաննու եղև: Աստն զի Մովսէս
առ զբնութիւնս մեր, որ ոչ ինչ գիտէր, որ այն ինչ 'ի
կաթանէն էր 'ի բաց վճարեալ՝ զառաջինն զնծայաշտու-
թեանն մեզ ուսոյց զգիրս. իսկ Յոհաննէս և Պաւղոս
իբրև 'ի վարդապետէ 'ի Մովսիսէ զմեզ առնլով, 'ի վար-

Digitized by Google

զապետութիւնս տարեւոր հանեն, եւ զառաջինն զուգնաքեօք յափշտակեցին։ Տեսե՞ր զերկոցուն զվարդապետութեանցն զազգակցութիւն. տեսե՞ր զմիաբանութիւնն. լուա՞ր որ յաղագս զգալեացս էր հրապարակախօսութիւն. լուր դարձեալ վասն Դաւթայ որ ասէ. “Զի նա ասաց եւ եղեն”. նոյնպէս դարձեալ ’ի նորումն ասացին յաղագս աներեւոյթ զօրութեանցն եւ վասն զգալեաց արարածոցս. “Ի սկզբանէ արար ա՟ծ զերկինս եւ զերկիր”։ Բանս այս փոքր է եւ սակ եւ մի բան, այլ զամենայն զհակառակորդացն զաշտարակն կործանել կարէ։

Գիտեա եւ հայեա. մանիքեցին ասէ՝ եթէ անեղ է նիւթն. ասա նմա. “Ի սկզբանէ արար ա՟ծ զերկին եւ զերկիր”. եւ զամենայն զամբարտաւանութիւն նորա կործանես վաղվաղակի։ Այլ ոչ հաւատաց բանի գրոյս. եւ վասն այնորիկ իբրեւ ’ի մոլեկանէ ’ի բաց դարձցուք ’ի նմանէ։ Զի որ այնմ ոչ հաւատայ երեւելապէս, սութեամբ զճշմարիտն բամբասէ, եւ զիա՞րդ ոչ յայտնի ըղմոլեկանութեան իւրոյ բերէ ’ի մէջ զանհաւատալի վարդապետութիւնն։ Եւ կամ զիա՞րդ յոչնչէ լինին, ասէ։ Դու ինձ ասա, զիա՞րդ յեղելոյ ումեքէ լինիցի ինչ. վասն զի յոչնչէ երկիր եղեւ եւ ահա հաւատամ, իսկ դու յերկուանաս. եւ եթէ յերկրէ եղեւ մարդ՝ երկոքեան խոստովանիմք։ Արդ ասա ինձ զոր խոստովանիմքն երկոքեան, եւ դիւրագոյնս ցոյց, զիա՞րդ եղեւ մարմնոյ բնութիւն. քանզի յերկրէ կաւ եւ աղիւս, սափոր եւ խեցի լինի. բայց մարմինն ’ի յերկրէ լեալ՝ ոչ ոք երբէք ետես։ Արդ զիա՞րդ եղեւ մարմնոյ բնութիւն, զիա՞րդ ոսկր ստեղծաւ, ո՞րպէս ջիլք, զիա՞րդ երակք, ո՞րպէս չնչերակք, ո՞րպէս նեարդք եւ ճարպ եւ մարմին եւ մորթ եւ եղնգունք եւ մազ եւ այսպիսեաց այլ եւ այլ բնութեանց զանազանութիւնք՝ ’ի միոջէ պատճառէ ’ի յերկրէ էին։ Այլ ոչ ունիս ասել։ Եւ զիա՞րդ ոչ իցէ յիմարութիւն, որք զյայտնիսն եւ զդիւրագոյնսն անգիտանան, զդժուարինսն եւ զտարակուսելիսն խուզել եւ քննել։

Կամի՞ս զքեզ եւ յայլ դիւրագոյնս ածից որ հանապազ լինին. այլ սակայն եւ ոչ զայս բանս ինչ ասես։ Հացիւ կերակրիմք հանապազօր. ասա ինձ զիա՞րդ հացի բնութիւնն այն յարիւն փոփոխի, եւ ’ի խօղ եւ ’ի խար-

տեաչ մաղձն և 'ի յայլ նման խոնաւութիւնս. զի ոմն է խիտ և խիստ, և արիւն կակուղ և ցնդող. իսկ միւսն սպիտակ և ցորենագոյն, և միւսն շառագոյն և սեաւ. և զայլոցն ամենեցուն զգունոց զանազանութիւնս եթէ ոք կամիցի անցանել բանիւ, յոլովագոյն զմիջոցն գտցէ զհացի և զարեան: Որդ զիա՞րդ այսոքիկ լինին, ասա ինձ և զբանն հատո 'ի բաց. այլ ոչ ունիս: Իսկ արդ զհանապազորդեան կերակրոյս որ այլայլի՝ ընձեռել ոչ ունիս, զի՞նչ զարարչութեա՞նն պահանջես զքննութի. և զիա՞րդ ոչ վերջին անմտութիւն իցէ այն:

Եթէ իբրև զմեզ է ած, պահանջեաց զեղելոցն ըղբան. մանաւանդ թէ և ոչ այնպէս. քանզի յոլովք են 'ի մարդկանէ եղելոց արուեստից զի որպէս լինին՝ ասել ոչ ունիս. որպիսի ինչ, զիա՞րդ յերկրէ ընդ հողոյն լինի ոսկւոյ բնութիւն, զիա՞րդ յապակոյ մաքրութիւն աւազն փոփոխի. և այլս բազումս է ասել այդպիսիս, որ լինին 'ի մարդկային արուեստէ, և զբանն ոչ գիտեմք: Բայց սակայն եթէ ըստ մեզ է ած, պահանջեաց զբանն. ապա եթէ անբաւաբար 'ի մէնջ է որոշեալ և առանց հաւասարութեան գերազանցեալ, զիա՞րդ ոչ վերջին յիմարութիւն իցէ՝ զանբաւ նորա զիմաստութիւնն և զզօրութիւնն խոստովանելով ածային և անհասանելի, իբրև զմարդկային զարուեստէ իմեքէ այնպէս մի ըստ միոջէ զեղելոցն բանս պահանջել:

Նաև 'ի բաց թողլով զխորհուրդս, 'ի վէմն անշարժ վերստին եկցուք. "Ի սկզբանէ արար ած զերկինս և զերկիր": Ի վերայ այսր բանի կաց մնա. մի մարդկային խորհրդոց խառնութիւնք փոփոխեսցեն զքեզ. "Զանզի խորհուրդք մարդկան երկնչոտք և դիւրաւ յանցանելիք մտածութիւնք նոցա": Մի զհաստատունն թողլով, զապականութենէն և որ դիւրաւն կործանի զփըրկութենէն բուռն հարկանիցես զանձին քո. այլ մնա, որ ուսարդ և հաւատացեր, և ասա. "Ի սկզբան արար ած զերկինս և զերկիր": Եթէ մանիքեցի ոք մերձեսցի, եթէ ոք զմարկիոնեանն զվաղենտինոսեան աղանդսն ախտանայցէ, եթէ այլ ոք ով իցէ, զայս բան առաջի դիջիր. և եթէ տեսանիցես ծիծաղեալ, դու արտասուեա զնա իբրև մոլեկան. տօսախի ունին նոքա ըղգոյնն դեղին, և կափուցեալ զյօնս, և զբանից ցածու-

թիւն. այլ փախիր 'ի պատրանացն, և որ ընդ մորթով ոչխարի ծածկեալն է՝ գայլ գիտեա. և մանաւանդ վասն այնորիկ ատեա զնա, զի առ քեզ առ ծառայակիցդ ընդդել և ցած կարծի թէ իցէ, իսկ առ հասարակաց մեր տէրն քան զկատաղեալ շունն մոլեկան եւս է, և առանց հաշտութեան յերկինս զպատերազմն գործէ, մարտ անհաշտելի և զօրութիւն հակառակ ընդդէմ կացեալ մեր ուսուցանէ: Փախիր 'ի չարութեանցն, ատեա զմահացու դեղն. զոր 'ի հարցն ընկալար զժառանգութիւն ածայինն գրոց՝ զհաւատս և զվարդապետութիւնս, զայս ընկալ բազում զգուշութեամբ. “Ի սկզբանն արար ած զերկինս և զերկիր”: Իսկ զի՞նչ այսորիկ. նախ առաջին զերկին և ապա զերկիր, նախ զձեղուն և ապա զյատակս. զի և ոչ ընդ հարկաւորութեամբ անկեալ կայ, և ոչ կարգի արուեստին ծառայէ. վասն զի բնութեան և արուեստի և այլոցն ամենեցուն՝ կամք ած են արարիչ և արուեստագէտ:

“Իսկ երկիր էր աներևոյթ և անկազմ”: Ո՞րպէս հաւասար զերկինս յարմարեալ եած անցոյց, իսկ զնոյն ինքն զերկիրս առ սակաւ արուեստակել ասէ Մովսէս: Զի 'ի լուսագոյն 'ի տարրէն ուսեալ զնորա զօրութիւնն, հաւանեսցիս թէ և զայս կարէր որպէս զնա գոյացուցանել. այլ յաղագս քո և փրկութեան քո ոչ արար այնպէս: Զխո՞րդ վասն իմ և վասն փրկութեան իմոյ, ասէ: Հասարակաց սեղան և դայեակ և մայր է երկիր, յոլովակի և գերեզման հասարակաց. և մարմինք մեր 'ի սմանէ և կերակուր մարմնոցս մերոց աստուստ, բնակութիւն 'ի սմա և վարք, և զկնի մահու 'ի սա դարձեալ ճանապարհ: Արդ զի մի պիտոյից հարկաւորութիւն առաւել քան զարժանն հրաշանալ ընդ սա պատրաստեսցէ, և զպարեգործութեանցն յոլովութիւն յամպարշտութիւն կործանեսցէ, ցուցանէ քեզ նախ քան զլինելն անկերպարան և անօրինակ, զի զտկարութիւնս տեսանելով սքանչասցիս ընդ արարիչն սորա և զամենայն աստի զլեալս զօրութիւնս, զի փառաւորեսցես որքան յաղագս մերոյ հանգստեանն պատրաստեաց: Փառաւորի ած ոչ ուղիղ վարդապետութեամբքն միայն, այլ և 'ի ձեռն առաքինութեանն. քանզի “Պայծառասցի, ասէ, լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տես-

Digitized by Google

ցեն զգեղեցիկ զգործս ձեր և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս „։

Վասն յաղագս ողորմութեան առաջի դնել ձեզ բանս. այլ աւելորդ ինձ թուի բանիւ վարդապետել ձեզ, որ գործով խրատել կարէք այժմ՝ 'ի մէջ նստելով Հօրս մերոյ և վարդապետի. որ զտունս Հայրենի իբրև 'ի նոյն ինքն այս 'ի նախահարցն ընկալեալ, զի յօտարացն մխիթարութիւն զսա կազմիցէ, այնպէս միշտ ամենայն ուստեք որ յաղագս Ճշմարտութեանն են հաւաքեալք՝ բառնալով ընդունի և բազմապատկաւ մխիթարութեամբն մխիթարէ. մինչ զի ոչ գիտել թէ պարտ է սմա՞ առաւել կոչել զտունս զայս՝ քան թէ օտարաց. մանաւանդ վասն այսորիկ իսկ սորա պարտ և արժան է վարկանել զտունս լինել՝ զի օտարացն է։ Քանզի մեր ստացուածք յայնժամ առաւել մեր լինին, յորժամ ոչ մե՛զ՝ այլ օտարացն միշտ զայնոսիկ ունիցիմք։ Եւ զիարդ, ես ասեմ. եթէ յաջոյ ձեռին աղքատին դիցես զարծաթն, ոչ զրպարտողն զքեզ զրկել կարէ, ոչ յաչաղկոտի ակն տեսանէ, ոչ աւազակ յափշտակէ, ոչ գող ական հատանէ, ոչ ծառայ առնլով փախչի. վասն զի անկողոպուտ է տեղին այն։ Իսկ եթէ 'ի տան թաղեսցես, աւազակի և մահատուի և յաչաղկոտի և զրպարտողի, ծառայից և ամենայն վնասու առնիցես դիւրամուտ զտեղին։ Բազումք բիւր գրօք և նգօք յարտաքին դժրութեանցն ամրացուցանեն, բայց 'ի պահապանացն ոչ կարեն փախուցանել. այլ նոքին իսկ պահապանքն առնլով փախչին։ Տեսանե՞ս զի յայնժամ մանաւանդ տէարք ստացուածոցն եմք, յորժամ աղքատացն զայնոսիկ աւանդեմք։

Եւ ոչ պահպանութեան աղագաւ միայն ամրագոյն է տեղին այն, այլ և շահից և յոլով օգտից որոց պատճառքն լինի։ Քանզի եթէ մարդկան փոխ տայցես, ըզհարիւր մասն առնուս. իսկ եթէ ա̃յ փոխ տայցես 'ի ձեռն աղքատացն, ոչ զհարիւրաւոր մասն, այլ զհարիւրապատիկն ընկալցիս։ Եւ եթէ սերմանեսցես 'ի քաջաբեր անդաստան, յորժամ յաճախագոյն բերիցէ զպտուղն, տասնպատիկ քեզ զսերմն բերէ. իսկ եթէ յերկինս սերմանեսցես, զկնի լինելոյն հարիւրապատիկ, և զկեանսն յաւիտենականս ընկալցիս։ Եւ աստ բազում աշ-

Digitized by Google

խաստութիւնք որ զսերմն ընկենուն յերկիր. բայց անդ առանց արօրոյ և եզանց և մշակաց և ամենայն տարժանման սերմանողացն բուսանին պտուղքն. ոչ խորշակ, ոչ հեղեղք, ոչ ժանգ, ոչ կարկուտ, ոչ մարախոց[1] հոյլք, ոչ դեռոց ուղխք և ոչ այլ ինչ ամենևին որք անդ սերմանեն՝ երկեցուցանել կարեն երբէք. այլ քան զամենայն վնաս դեր 'ի վերոյ անցեալ կան անդ սերմանողքն և սերմանքն:

Արդ յորժամ ոչ վիշտք, ոչ վնասք, ոչ անբերութիւն իցէ՝ և ևս առաւելագոյն սերմանողացն լինիցին բոյսք և այնքան յաճախեն բարիքն, մինչ ոչ ունին լսել և ոչ ակն ետես և ոչ 'ի սիրտ մարդոյ ել, զիա՞րդ ոչ վերջին յիմարութեան իցէ թողուլ զյաճախագոյնսն, և զնուազիցն զհետ երթալ, և զգուշագոյնսն լքանել, որ դժրութեամբքն լի են և բազում վրիպանս ունին՝ յայն ձեռնարկել: Ո՞ր արդեօք լինիցի մեզ թողութիւն որք զայն առնեմք, ո՞ր պատասխանիք: Ամենայն իրօք զաղքատութիւն առաջի դնեմք. այլ ոչ եմք քան զայլն զայն աղքատագոյն, որ զերկուս դանգան և եթ ունելով և զայն արկ: Նախանձեսցուք այսուհետև ընդ նորա ընչեղութիւնն. նմանեսցուք յօժար առատամտութեան նորա, զի և յառատութենէն այնմ բարեաց հանդիպեսցուք. որոց լիցի մեզ ամենեցուն արժանաւոր լինել աղօթիւք և բարեխօսութեամբ քահանայից շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք և զօրութիւն հանդերձ սուրբ հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԸՆԴԷ՞Ր ՅԱՂԱԳՍ ԱՐԵԳԱԿԱՆ ԵՒ ԼՈՒՍՆԻ, ԵՐԿՆԻ ԵՒ ԵՐԿՐԻ ԵՒ ԱՅԼՈՑՆ ԱՍԱՑ՝ ԵՂԻՑԻ՛, ԻՍԿ ՎԱՍՆ ՄԱՐԴՈՅՆ՝ ԱՐԱՍՑՈՒՔ. ԵՒ ԶԻ՞ՆՉ՝ ԸՍՏ ՊԱՏԿԵՐԻՆ

Յիշեցէ՞ք զխնդիրսն որ յառաջագոյն եդաւ մեզ առաջի. քանզի յայսպիսիկ զմեզ յապարատանութիւն և յանմտութիւն ամբաստանեայք, մինչ զի և 'ի խնդրոյն եւս

1 Յօրինակին նմանոց հոյլք. եդաւ ըստ յունին:

լուծումն յանդգնել մեզ. մանաւանդ եթէ ոչ իսկ իցէ ապարասանութեան և յանդգնութեան գործ այսոքիկ: Զի և ոչ 'ի մեր զօրութիւնս ինչ վստահանամք, այլ յաղօթս քահանայիցդ և 'ի ձեր, զամենայն 'ի բաց ընկենլով մերկանամք 'ի հանդէս յայսմիկ: Պաղատանք եկեղեցւոյ այնքան կարեն, մինչ զի թէ և քան զքարինս անզգայագոյնք եմք, քան զամենայն թեւաւորս թեթեւագոյնք զլեզուս մեր գործէլին: Զի զոր օրինակ հիւսիսի 'ի մէջ անկեալ առագաստի նաւին՝ քան զնետ արագագոյն սլացուցանէ զնաւն, նոյնպէս և եկեղեցւոյ աղօթք յասողին լեզու անկեալ՝ քան զամենայն հիւսիսոյ հողմ արագագոյն շարժէ զլեզուն. յաղագս որոյ և մեք հանապազօր համարձակելով հանդիսանամք: Զի եթէ յարտաքին նահատակութիւնս որ տասն միայն և քսան ունիցի բարեկամս 'ի բազմութենէ՝ յօժարամտութեամբ 'ի հանդէսն մտանէ, որչափ ևս առաւել մեք որք ոչ տասն կամ քսան միայն, այլ ամենայն իսկ տեսարանս յեղբարց և 'ի հարց են հաւաքեալք՝ համարձակութեամբ զայս արասցուք. և սակայն յարտաքին նահատակութիւնն ոչ ինչ շահի նահատակեալն 'ի սիրողացն, այլ որքան զձայնն լսիցէ և սքանչելի լեալ երեւեսցի, և հակառակիցի առ դիմամարտն որ 'ի վեր նստիցին. բայց իջանել 'ի հանդիսարանն և ձեռն կարկառել և լուծանել զոտս նահատակեցելոյն և կամ այլ ինչ այսպիսի ցուցանել՝ նոցա ոչ է օրէն: Քանզի որք զհանդէսն զայնոսիկ կանխաւ յօրինեցին, ցիցս շուրջ արկանելով և չուանս ձգելով՝ այնպէս զտեսողացն զմոլորութիւն արգելուն: Իսկ զինչ զարմանալի եթէ տեսողացն իջանելով ոչ է օրէն, ուր և մանկամարդացն արտաքոյ մրցարանին կալով՝ 'ի հեռուստ զվարդապետութեանն կռուակցութի ընձեռել մարտակցացն հրամայեն, բայց 'ի մօտ ոչ ներեն երթալ: Այլ ոչ և աստ այնպիսի. քանզի աստ վարդապետի և տեսողի 'ի մեզ իջանել հնար է, և մօտ կալ սիրով և աղօթիւք մերում տկարութեանս օգնել:

Արդ եկայք ըստ ըմբշացն զմարտէն բուռն հարցուք. զի նոքա յորժամ 'ի մէջ կալեալք լինին, 'ի բռնութենէ սահմանեալ տեղւոյն արտաքս զինքեանս 'ի շուրջ կացելոցն ձգեն յաղագս տեղւոյն նեղութեան, և մաք-

րելով 'ի յինքեանց զաւազն՝ դարձեալ 'ի հանդիսի տե-ղին վերստին երթան, և երթեալք անդրէն ոչ ուղղա-կի մերձենան առ մարտակիցսն, այլ այնու օրինակաւ 'ի կապանս զինքեանս կացուցանեն, յորում էին յառա-ջագոյն՝ և լուծան։ Բայց զի և մեզ ոչ տեղւոյ նեղու-թիւն, այլ ժամանակի ուղղութիւն լուծանել զբանն հարկաւոր է, եկայք երթիցուք 'ի տեղի հանդիսի վերըս-տին, և զհանդէսն ընկալցուք 'ի յընթերցելոյն մեզ։

"Եւ ասաց ա̃ծ՝ արասցուք մարդ ըստ պատկերի մե-րում և ըստ նմանութեան"։ Մի յառաջագոյն զայն պարտ և արժան է խնդրել, ընդէ՞ր արդեօք յորժամ երկին լինէր, ոչ երբէք ասացաւ՝ արասցուք. այլ՝ եղի-ցի երկին, եղիցի լոյս, և մի ըստ միոջէ արարածոցս մասն այսպէս. աստ միայն խորհուրդ և այցելութիւն և առ-այլումն համապատիւ հաւասարութիւն։ Զի՞նչ ար-դեօք իցէ որ լինելն հանդերձեալ էր զի այսքան վայե-լէ պատիւս։ Մարդ է կենդանի մեծ և հրաշալի, քան զամենայն ստացուածս այ̃ պատուականագոյն. յաղագս որոյ երկին և երկիր և ծով և այլ ամենայն ստացուա-ծոցս մարմին. մարդ որոյ փրկութեանն ա̃ծ այնպէս փա-փագեաց, մինչ զի և ոչ 'ի միածինն խնայեաց յաղագս նորա. քանզի ոչ հեռացաւ զամենայն առնլով, և հնա-րելով 'ի վեր նստոյց. "Եւ ընդ նմա նստոյց զմեզ ընդ աջմէ յերկնաւորս 'ի Քրիստոս Յիսուս"։ Վասն այ-սորիկ խորհուրդք և այցելութիւն և հաւանակցութի̃. իբրև ոչ եթէ ա̃ծ խորհրդոց ինչ կարօտանայ, մի՛ լիցի. այլ ձեւով բանիցն զեղելոյն ցուցանել զպատիւ։

Եւ զի՞ մարդ քան զաշխարհ պատուականագոյն է։ Զոր օրինակ թագաւոր հանդերձեալ մտանել 'ի քաղաք, զօ-րավարք և իշխանք և զինուորք և ամենայն ծառայք յա-ռաջագոյն ժամանեն՝ զի զթագաւորական ապարանս կազ-մեսցեն, և զայլ ամենայն սպասաւորութիւնսն յօրինե-լով հանդերձ բազում պատուով ընդունին զթագաւորն, նոյնպէս և աստ իբրև զթագաւոր ոմն հանդերձեալ մը-տանել, յառաջագոյն ժամանեաց երկին, նախ ընթա-ցաւ արեգակն, կանխաւ եմուտ լոյս. ամենայն եղև և յօրինեցաւ, և ապա մարդ հանդերձ յոլով պատուով 'ի ներքս եմուտ։ "Արասցուք մարդ ըստ պատկերի և նմանութեան մերում"։ Լուիցէ հրեայ, ցո՛վ ասաց ա̃ծ՝

արասցուք ։ Մովսէսի են գիրքս, Մովսէսի՝ որում հաւատալ ասեն, այլ ոչ հաւատան. «Քանզի եթէ հաւատայիք, ասէ, Մովսէսի, հաւատայիք արդեօք և ինձ»։ Բայց այժմ առ նոսա գիրքն, իսկ առ մեզ գրոյն զանձն. առ նոսա գիրքն, առ մեզ և գիրքն և միտքն ։

Բ՛րդ առ ո՞ ասէ՝ արասցուք մարդ ։ Հրեշտակ, ասեն, և ցհրեշտակապետս ։ Այլապար և յախուռն բարբանջեն. զոր օրինակ ստահակք ծառայք՝ ՚ի տերանց պատուհասեալք՝ ուղղակի ոչ ինչ ունիցին պատասխանիս առնել, որ ինչ գայցեն՝ ՚ի լեզուն՝ զամենայն խօսին, նոյնպէս և նոքա. առ հրեշտակ ասաց. ո՞ր հրեշտակ կամ ո՞ր հրեշտակապետ. քանզի ոչ հրեշտակաց է զաշխարհ առնել և ոչ հրեշտակապետաց գործել զայս ։ Ե՞ր աղագաւ յորժամ զերկին արար՝ ոչ ասաց հրեշտակի և կամ հրեշտակապետի, այլ ինքեամբ անցոյց ՚ի մէջ. իսկ յորժամ զպատուականագոյն կենդանին քան զերկին և զամենայն աշխարհ առնել զմարդն, յայնժամ զծառայս հաւասարորդս արարչութեանն ։ Ոչ են այսոքիկ, ոչ են. հրեշտակացն է գործ մերձ կալ, այլ ոչ զարարածս առնել. հրեշտակապետացն սպասաւորել, այլ ոչ կամացն հաղորդ լինել խորհրդոյն ։ Լուր զինչ ասէ Եսայիաս յաղագս սերովբէիցն վերին զօրութեանցն. «Տեսի զտէրն նստեալ ՚ի վերայ աթոռոյ բարձու և վերացելոյ, և սերովբէք մերձ կային շուրջ զնովաւ. վեց թեւք միոյ միոյ, երկուքն ծածկէին զերեսս իւրեանց» պարապէին զդէմսն. յայտ է թէ յաղագս ոչ կարելոյ ընդունել զփայլատակունսն որ յաթոռոյն բերեալ լինէր ։ Զի՞նչ ասես. սերովբէքն մերձ կային և յայնպիսի զարմացման և ՚ի հիացման էին, և զայն[1] խոնարհումն ա̅յ տեսանէին. իսկ հրեշտակք և խորհրդո՞յն եւս հաղորդ լինիցին նմա և այցելութեանն հաւասարորդք. այլ ոչ ունին այսքան ։

Եւ ո՞վ ոք իցէ, ասէ, ցոր ասէն՝ արասցուք մարդ ։ «Աքանչելի խորհրդակիցն, իշխանն, ա̅ծն հզօր, պետն խաղաղութեան, հայրն հանդերձելոյ յաւիտենին». նոյն ինքն միածին ա̅յ որդին. ցնա ասէ՝ «արասցուք մարդ ըստ պատկերի և ըստ նմանութեան մերում» ։ Զի և

1 Յօրինակին զայնուիկ ։

ոչ ասաց եւեթ՝ ըստ իմում և ձերում. այլ, «ըստ պատկերի մերում», զմի կերպարան ցուցանելով և զմի նմանութիւն. բայց Այ և հրեշտակաց ոչ է մի կերպարան և ոչ նմանութիւն նոյն. քանզի որպէս արդեօք արարչին և սպասաւորի կերպարան մի լինել և նմանութիւն. որպէս զի ամենայն ուստեք մեզ[1] բանս ուսուցանէ. և զիշխանութեան ասա ասէ զկերպարան, զոր 'ի կարգէ յայտնէ: Աստ զի ասելով՝ ըստ կերպարանի և ըստ նմանութեան, 'ի վերայ եած. «Եւ իշխեսցեն ձկանց ծովու». իսկ իշխանութիւն Այ և հրեշտակաց ոչ է մի. քանզի որպէս արդեօք ծառայից և տեառն, սպասաւորաց և հրամանատուին:

Բայց և այլ ինն դարձեալ մեզ 'ի վերայ բերեն ամենայն ասելով, թէ կերպարան ունի Ած զայս զոր և մեք ունիմք: Զարաչար իմանան զառացեալսն. վասն զի ոչ զմարմնութեանն ասաց զկերպարանն, այլ զիշխանութեան զպատկեր, որպէս յայտնեցաք կարգաւ 'ի վերաբերելոցն. Եւ զի ոչ է Աստուածութիւնն մարդապատկեր, լուր Պաւղոսի որ ասէ. «Այր ոչ պարտի ծածկել զգլուխ իւր, վասն զի պատկեր և փառք Այ է. իսկ կինն փառք է առն իւրում. յաղագս որոյ, ասէ, զիշխանութիւնն ունելով 'ի վերայ գլխոյն»: Պատկեր ասա անփոփոխելի կերպարանացն Այ Ած է. և վասն այնորիկ կերպարան մարդոյ յաւի, վասն զի և Ած այնպէս տպաւորեցաւ. ըստ նոցա ոչ էր պարտ զայրն միայն պատկեր ասել, այլ և զկինն. Քանզի կնոջ և առն զուգաւորեալ է կերպարանն և նմանութիւն մի: Եւ ընդէ՞ր այր կերպարան Այ ասի, իսկ կինն ոչ ես. վասն զի ոչ զկերպարանէն որ 'ի դէմսն է՝ ասէ, այլ զկերպարանն որ ըստ իշխանութեան է զոր այրն միայն ունի և ոչ եւ կինն: Վասն զի այրն ոչ ումեք հնազանդի. իսկ կինն ընդ հնազանդութեամբ է առն, որպէս և Ած ասաց. «Առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ»: Յաղագս այնորիկ այրն կերպարան Այ է, զի ոչ ունի զգերագոյն, որպէս և ոչ քան զԱծ վերագոյն ոք է, այլ ամենայնի իշխէ. կին փառք են առն, զի նա հնազանդեցաւ: Եւ դարձեալ այլուր ասէ. «Ոչ պարտիմք ոսկւոյ և արծաթոյ կամ քարանց քանդակե-

1 Յոյնն չէր բանին ստասնին :

լոց յարուեստէ և 'ի մտածութեանց մարդկան՝ վարկանել զա՟ծութիւնն լեալ նման ,, ։ Զոր ասէ, այսպիսի է. ոչ միայն քան զերևելի պատկեր գերազանցեալ է ա՟ծութիւնն, այլ և ոչ միօք տպաւորեալ ինչ այնպիսի հնար լինի որպէս էն ա՟ծ ։ Եւ զիա՞րդ զմարդոյ կերպարան ունել կարիցէ զորմէ Պաւղոս ասէ՝ և ոչ մի միտք մարդոյ կարեն տպաւորել յինքեանս զա՟յ զբնութիւնն. զմեր կերպարանս և զդէմս ամենեքեան 'ի մեզ դիւրաւ տպաւորեմք խորհրդով ։

Դարձեալ յաղագս ողորմածութեան կամի 'ի վերայ բերել բանս, այլ ժամս մեզ ոչ ներէ. յաղագս որոյ 'ի լաւութիւն երթիցուք. այսուհետև այն միայն երաշխաւոր առնել զձեզ՝ հաւատեաւ զամենայն ասացեալսն ունել, և յաւէտ ուղիղ առաքինութեանն առնել խնամակալութիւն, զի մի մնասի և վայրապար այսր ժողովիցիմք ։ Զի[1] եթէ զուղիղ վարդապետութիւնն պահիցեմք, և զործոյն առաքինութիւն ոչ մերձ լինիցին, ամենայն իրօք արտաքս անկանիմք յաւիտենական կենացն. զի "Ոչ ամենայն որ ասէ ինձ տէր տէր՝ մտցէ յարքայութիւնն երկնից, այլ որ առնէ զկամս հօր իմոյ որ յերկինս է ,, ։ Արասցուք այսուհետև զկամս նորա ամենայն փութով, բարեմտութեամբ և յօժարութ՟բ, զի կարասցուք յերկինս մտանել և բարեաց սիրողացն ա՟յ հանդիպել. որոց լիցի ամենեցուն մեզ արժանաւոր լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Ք՟ի, ընդ որում փառք հօր հանդերձ սուրբ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

### ԶԻ՞ՆՉ Է՝ ԸՍՏ ՆՄԱՆՈՒԹԵԱՆՆ, ԵՒ ԸՆԴԷ՞Ր ԱՍԱՑԵԱԼ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵԶ՝ ԻՇԽԵՍՑԵՆ ԳԱԶԱՆԱՑ, ԵՒ ՈՉ ԻՇԽԵՄՔ. ԵՒ ԶԻ ԲԱԶՈՒՄ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆ Է ԱՅՍ

Զոր օրինակ սերմանողացն օգուտ ոչ ինչ է յորժամ 'ի Ճանապարհս զսերմն ընկենուցուն, նոյնպէս և ասողին ոչ ինչ առաւել յորժամ 'ի լսողացն միտս բանն

1 Յօրինակին պակասէր Զի եթէ . . . պահիցեմք. յաւելաւ 'ի յունէն ։

ոչ բերիցի, այլ վայրապար յօդս ցնդի բանին բնութիւն և անօգուտ լքանէ զլսողսն: Զայս ոչ վայրապար ձեզ ասացի. այլ զի մի առ պարզագոյն մտածութիւնսն բերանաբացեալք միայն իցէք, այլ զի և զխորագոյնսն համարձակիցէք իմանալ: Զի եթէ ոչ այժմ իջանեմք 'ի խորս գետոյն յորժամ թեթև են մեր ոտք առ 'ի լուղելն, և սուր աչն, ոչ ինչ մաղձով չարաւ կերակրով նեղեալք, բաւական լիցի հոգին, որպէս զի մի հեղձնուլ, երբ իջցուք, յորժամ վայելումն և փափկութիւն է, արբեցութիւն և սեղան շատակերութեամբ լցեալ. այլ յայնժամ և ոչ շարժել զանձինս է դիւրաւ. այնպէս բեռն ծանր կերակրոյն ճնշէ զոգին:

Ոչ տեսանէք զի և որք զքարինսն բազմապատիկ գտանել կամին, ոչ 'ի վեր առ եզերն նստելով զալիսն թուելով կարիցեն գտանել զցանկալին, այլ 'ի նոյն ինքն 'ի խորսն մերձին. և սակայն բազում աշխատութիւն 'ի խնդրելն, յոլով վտանգ 'ի գտանելն, և զկնի գտանելոյն շահ ինչ ոչ. քանզի զինչ մեծ 'ի ներքս 'ի կեանս մեր բերիցէ բազմապատիկ քարանցն գինն. երանի թէ ոչ և մեծ չար ևս ինչ բերէր: Վասն զի որ խոտորեցուցանէ զմեր կենցաղս և վեր 'ի վայր առնէ, ոչ այլ ինչ է իբրև զընչիցն մոլութիւն: Այլ սակայն զոգի և զմարմին նոցա մաշելով առօրեայ կերակրոյն աղագաւ, յանդգնին մտանել յալիսն. իսկ աստ ոչ վիշտք, ոչ աշխատութիւն այնպիսի յերկարեալ, այլ սուղ է և թեթև, և նոյն իսկ գտելոցն պահպանութիւն. վասն զի որք դիւրաւն գտանին, դիւրաւ և արհամարհելիք բազմաց լեալ թուին: Ոչ է աստ ալեաց խռովութիւն 'ի խորս գրոց, այլ քան զամենայն նաւահանգիստս դիւրագոյն այս խոր. ոչ է հարկաւոր 'ի խաւարային անդընդոցն խորս իջանել, և ոչ զանբան ջրոցն հոսմունս 'ի վերայ փրկութեան մարմնոյն դարձուցանել. այլ յոլով է աստ լոյս, և քան զնոյն ինքն զճառագայթս պայծառագոյն, բազում է խաղաղութիւն. ամենայն խռովութիւն խափանեալ, և գտողացն այն շահ որքան և ոչ բանիւ յանդիման կացուցանել կարելի է: Ո՛հ այսուհետև վստահացուք խնդրել:

Լուաք եթէ ըստ կերպարանի արար ած զմարդն, և եթէ զինչ իցէ ըստ կերպարանի և նմանութեանն, ա-

ստացաք եթէ ոչ բնութեանս անփոփոխութիւն, այլ իշխանութեանն նմանութիւն. իսկ ըստ նմանութեանն՝ ցած է լինել և հանգարտ, ըստ կարի նմանեցուցանել այ ըստ քանի իշխանութեանն, որպէս և ասէ Քրիստոս. «Նմանողք եղերուք հօրն ձերում որ յերկինս է»։ Զի զոր օրինակ յերկրիս յայսմիկ 'ի լայն և ընդարձակ կենդանիք են ոմանք անբանք և ոմանք գազանք, նոյնպէս և ընդարձակութեան ագւոյս մերում 'ի խորհուրդս ոմանք են անբանագոյնք և գեռունք, և ոմանք գազանայինք և վայրագք. և պարտ է ամենեցուն այնոցիկ իշխել, խորհրդոցն նոցա ամենեցուն զիշխանութիւնն տալ։

Եւ զիա՞րդ արդեօք յաղթող լինիցին զգազանայինք խորհրդոցն, ասէ։ Զինչ ասես, ով մարդ. առիւծուց յաղթեմք և զնոցա անձինս ընդելացուցանեմք, և յերկուանաս եթէ զգազանային խորհուրդ յընտանութիւն կարես փոփոխել. և սակայն առիւծու ըստ բնութեան է[1] գազանութիւնն, և ոչ ըստ բնութեան ընտանութիւնն. իսկ քեզ հակառակ նմին՝ ըստ բնութեան[2] ընտել, և ոչ ըստ բնութեանն գազանութիւն։ Արդ որ ըստ բնութեանն է արտաքս հանէ, և զոչ ըստ բնութեանն ունէ 'ի գազանին յանձին. զի ըստ բնութեանն ոչ կարիցես պահել. և ո՞րքան է այս պղերգութիւն։ Առիւծուցն յանձին և այլ իմն դժուարութիւն զինի այսոցիկ է. զի 'ի խորհրդոցն ամայի է գազանին անձն. այլ սակայն տեսեալ յոլովակի առաւել քան զոչխարս ընդելագոյն ընդ հրապարակս ածեալս, բազումք 'ի վաճառարանսն և արծաթ յոլով ետուն ունողին՝ վարձ իմն արուեստին և իմաստութեանն, որով և զգազանն ընտանեցոյց. իսկ քում անձինդ և խորհուրդ է և երկիւղ և յաւէտ բազում ուստեք օգնականութիւն։ Մի՛ այսուհետև բաղայս ինչ առիցես և պատճառս. կարողութիւն է թէ ախորժես հեզ լինել և հանդարտ։

«Արասցուք մարդ ըստ կերպարանի և նմանութեան մերում, և իշխեսցեն գազանաց»։ Այստանօր մեզ հեթանոսք 'ի վերայ գան և ասեն զբանն ստել. քանզի ոչ

1 Օրինակքն պակասեր է գազանութիւնն, և ոչ ըստ բնութե. յաւելու 'ի յունէն։

2 Օրինակքն նմանութեան։

մեք, ասեն, միայն ոչ իշխեմք գազանացն, այլ և նոքա ևս մեզ իշխեն, և յաճախագոյնս մեզ արկանեն արհաւիրս: Յաւէտ այս ոչ ճշմարիտ. զի բաւական են դէմքն երևեալք յառից՝ արտաքս մերժել զգազանն. այնքան առաւել երկիւղն: Ապա եթէ ուրեք օգնել ինքեանց յարձակեսցին, կամ սովոյ հարկ արարեալ, կամ 'ի մէնջ ուրեք նեղեալք՝ բազում անգամ 'ի հարկաւորութիւնս կոչեմք զնոսա. այսոքիկ ոչ կատարեալ իշխանութեանն են: Զի և ոչ եթէ որ 'ի մէնջ աւազակս 'ի վերայ եկեալս տեսանիցէ զլինել՝ 'ի վրէժ առնուլ յարձակիցի՝ իշխանութեան իրք են, այլ մանաւանդ իւրոյ փրկութեանն է նախախնամութիւնն. բայց սակայն ոչ ապտի առնեմք զպատասխանիս, այլ 'ի միւսմէ կողմանէ ուստի և ձեզ պիտանացու է ասել:

Երկնչիմք 'ի գազանացն և զարհուրիմք, ոչ ընդդէմ ասեմ, զի և յիշխանութենէ իսկ արտաքս անկաք, ըզնոյն ասեմ և ես. բայց ոչ այս սուտ զի՞ոյ զօրէնան ցուցանէ: Քանզի 'ի սկզբանն ոչ այնպէս իրքն անկեալ կային. այլ երկնչէր և դողայր, և 'ի ներքոյ սարսեալ էր տեառն. իսկ յորժամ 'ի համարձակութենէն արտաքս անկաք և 'ի պատուոյն, նմին իրի[1] երկնչիմք 'ի նոցանէ: Ուստի՞ է այս յայտ. "Ած զգազանսն առ Ադամ տեսանել զինչ կոչեսցէ զնոսա". և ոչ հրաժարեաց իբրև զարհուրեալ Ադամ, այլ իբրև հնազանդեալ ծառայից՝ անուանս նոցա ամենեցուն եդ: Եւ այս էր նշանակ տէրութեանն. յաղագս որոյ և Ա̃ծ կամելով նմա և 'ի ձեռն այսոցիկ վարդապետել զիշխանութեանն զարժանաւորութի̃, զանուանցն դիրս հրամայեաց նմա, և զգրեալսն կոչեաց այնպէս. քանզի զամենայն զոր կոչեաց Ադամ, այն է անուն նոցա: Արդ այս է նշանակ ոչ ահաւորք լեալ մարդոյն գազանքն 'ի սկզբանն:

Երկրորդ միւս ևս քան զայս յայտնագոյնս՝ առ կինն օձին խօսք: Զի եթէ էին ահաւորք մարդկան գազանք, ոչ արդեօք տեսանելով զօձն՝ կայր մնայր կինն, և ոչ զխորհրդակցութիւնն ընդունէր, և ոչ այնքան ընդ նմա կամակարութեամբ խօսէր, այլ վաղվաղակի արդեօք 'ի դիմացն տագնապեալ 'ի բաց գնայր. իսկ անդ խօսէր և

1 Յօրին. պատկառանէր նմին իրի երկնչիմք 'ի նոցանէ. յաւելուած 'ի յօրինին:

ոչ երկնչէր, զի ոչ և ս էր երկիւղս այս։ Այլ իբրև մեղքն մտին, 'ի բաց բարձան պատուոյ իրք։ Եւ զոր օրինակ 'ի ծառայսն որք քաջահամբոյքն են՝ ահաւորք ծառայակցացն լինին, նոյնպէս և մարդոյն եղև. ցորքան ունէր առ նմ համարձակութիւն, ահաւոր էր գազանացն. իսկ յորժամ ընդդիմացաւ, և 'ի վերջին ծառայիցն երկընչէր դատաւ այնուհետև։ Եւ եթէ ոչ այս է, դու ինձ ցոյց նախ քան զմեղանսն եթէ ահաւորք էին գազանքն մարդկան. այլ ոչ ունիս։ Իսկ եթէ զկնի այնոցիկ եմուտ երկիւղն, և այս տէրունական նախախնամութեանն էր։ Քանզի եթէ տուեալ պատուիրանն շարժեցաւ 'ի մարդոյ անտի և լուծաւ պատիւն որ նմա ընձեռեցաւ, յա̃յ անշարժ կալ մնալ, ոչ լինէր դիւրին. զի եթէ յորժամ անհնազանդին մարդիկ և ոչ անհնազանդքն՝ 'ի նմին պատիւս վայելիցեն, հրահանգին 'ի չարութիւնն և ոչ դիւրաւ 'ի բաց կան 'ի չարէն։ Քանզի եթէ այժմ երկիւղից և պատուոց և պատուհասից 'ի վերայ եկելոց ոչ անսամք ողջախոհանալ, զի՞նչ արդեօք լինէաք եթէ ոչ ինչ կրէաք չար յաղագս դժնդակութեանցն որոց յանցեաքն. որպէս զի խնամելով զմեզ և հոգ տանելով նմ 'ի բաց եհան յիշխանութենէն։

Դու ինձ և աստանօր դիտեա զանձառ մարդասիրութիւն նորա. վասն զի Ադամ յամենայն 'ի պատուիրանէն խոտորեցաւ և զբնաւին էանց զօրինօքն. իսկ նմ ոչ եղոծ զամենայն զպատիւն, և ոչ 'ի բնաւէ զնա արտաքս եհան յիշխանութենէն, այլ զայն կենդանիս միայն արտաքս յիշխանութենէն եթող լինել՝ որք ոչ յոյժ սմա օգտաբերք 'ի պէտս կենացն էին. իսկ զկարևորսն և զպիտանացուս և որք յաւէտ զսպասաւորութիւն 'ի ներքս բերեն կենաց մերոց, զնոսա եթող մեզ 'ի ծառայութեան։ Եթող զարջառաց զնախիրս, զի արօր ձգեսցեն, և զերկիր հերկեսցուք և սերմանեսցուք. եթող զբեռնակրացդ ազգ, զի զպիտանացուսդ բերելով փոխանակիցեմք միմեանց, և օգնականութիւն առ վաստակն ունիցիմք. եթող զոչխարացն հօտս, զի ունիցիմք հանդերձս բաւականապէս զզգեստուցն պէտս. և զայլ ազգս կենդանեացն եթող, որք յոլով մեզ 'ի ներքս բերեն զպէտս։ Վասն զի պատուհասելով զմարդն ասէր. “ Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո„. զի մի

նորա խօսէր այսպէս ասելով. «Արասցուք մարդ ըստ կերպարանի և ըստ նմանութեան մերում, և իշխեսցեն գազանաց երկրի»: Նախ քան զկեանսն պատուէն, և յառաջ քան զարարչութիւնն պսակն, և նախ քան զլինելն 'ի թագաւորական աթոռն ելանէր: Մարդիկ որք ընդ ինքեամբք են, 'ի վերջին ծերութեան յետ բազում աշխատութեանց և բիւր վտանգից զոյս 'ի խաղաղութեան և 'ի պատերազմունս կրեն, յայնժամ պատուեն. իսկ ա͞ծ ոչ այսպէս, այլ վաղվաղակի լեալ նա՝ 'ի պատիւն յայն եած, ծանուցանելով եթէ ոչ ուղղութե͞ց երախտիք են լեալքն, այլ ա͞ծային շնորհ և ոչ պարտք:

Արդ առնուլ նմա զիշխանութիւնն՝ յա͞յ մարդասիրութենէն միայն լինէր. իսկ արտաքս անկանելն յիշխանութենէն՝ յիւրմէ պղերգութենէն: Նա զոր օրինակ թագաւորք զոչ հնազանդեալս հրամանացն իւրեանց լուծանեն յիշխանութենէն, նոյնպէս և ա͞ծ արար մարդոյն յայնժամ, ելոյծ զնա յիշխանութենէն: Հարկաւոր է ասել այսօր որքան և յայլմէ պատուոյ զմեզ մեղացն բնութիւն մերժեաց, և որքան ծառայութեան 'ի ներքս եմոյծ օրինակս, և իբր զբռնաւոր ոք բազմօրինակ կապանօք ամենապատիկ իշխանութե͞ք զմեր բնութիւնս կապեաց:

Արդ է իշխանութիւն և ծառայութիւն առաջին, ըստ որում արք կանանց իշխեն. վասն զի յետ մեղացն այսմ պէտք եղեն: Նախ քան զյանցանելն համապատիւ էր առնն. զի յորժամ ստեղծանէրն զնա ա͞ծ, որովք բանիւք վարեցաւ 'ի ստեղծմանն առնն, նոքիմբք և յարարչութեան կնոջն. զի որպէս ասաց զնմանէ «Արասցուք մարդ ըստ պատկերի և ըստ նմանութեան մերում», և ոչ ասաց՝ եղիցի մարդ, նոյնպէս և զկնոջէն ոչ ասաց՝ եղիցի կին, այլ և աստ «Արասցուք նմա օգնական». և ոչ պարզաբար օգնական, այլ «ըստ նմա». դարձեալ զհամապատիւն յայտնեաց:

Նա քանզի յոգունս 'ի կենացս մերոց պէտս անասունքն օգնականութեան հաղորդութիւն 'ի ներքս ածեն, զի մի 'ի ծառայիցն զոք կարծեսցես լեալ և զկինն, տես զիարդ առնէ երևելի և զզանազանութիւնն: «Ած զգազանսն, ասէ, առաջի Ադամայ, և ոչ գտաւ օգնական նման նմա»: Նա զինչ արդեօք, ոչ էր օգնական

ձի յարմարեալ 'ի պատերազմունս. եզն ո՞չ էր արդեօք օգնական արօր ձգելով և աշխատակից մեզ լինելով 'ի սերմանցն սփռումն. էշ և ջորի ո՞չ էր օգնական զբե-ռինս բերել և գործակից լինելով մեզ: Վասն այսորիկ հաւաստեաւ ասնէ զորոշումնն. զի ոչ ասաց պարզաբար՝ եթէ ոչ գտաւ օգնական նմա, այլ “ոչ գտաւ օգնական նման նմա”: Նոյնպէս և աստ՝ արասցուք նմա օգնա-կան՝ ոչ պարզաբար, այլ “արասցուք նմա օգնական ըստ նմա”: Այսքիկ նախ քան զյանցանսն:

Իսկ յետ մեղանացն “Առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ”: Արարի զքեզ, ասէ, համապատիւ. ոչ վարեցար գեղեցկապէս իշխանութեամբն, փոփոխեցիր առ հնազանդութիւնն. ոչ բերեր զազատութիւնն, ըն-կալ զծառայութիւնն. ոչ գիտես իշխել, և 'ի ձեռն նո-րին իրացն ուսուցեր զփորձն, լեր այսուհետև իշխե-ցեալ, և զայլն ծանիցես տէր. “առ այր քո դարձ քո և նա տիրեսցէ քեզ”: Եւ զի մի լուեալ “նա քեզ տի-րեսցէ” և ծանր ինչ վարկանիցի զտէրութիւնն, նախ առաջին զխնամակալութեանն զանուն եդ, “առ այր քո դարձ քո”. այս է՝ ապաւինութիւն քո և նաւահանգիստ և ամրութիւն նա եղիցի քեզ. յամենայն 'ի վերայ ե-կեալ դժնդակութիւնս առ նա դարձցիս՝ ապաւինել քեզ տամ: Ոչ այսու միայն, այլ և բնականօք ոմամբք զնոսա կապեաց հարկաւորութեամբք, իբրև անխզելի իմն զփափագանայն շղթայս զնոքօք էարկ:

Տեսե՞ր զկարգ 'ի ներքս մուծին զհնազանդութիւնն մեղքն. իսկ դիւրահնարն և իմաստունն ած և այնո-քիւք յօգտակարութիւն մեզ արար: Լու՛ր զկարգ և Պաւղոս վասն նորա հնազանդութեանն ասէ, զի ուս-ցիս զհնոյն և զնորոյս զձայնակցութիւնն. “Կին, ասէ, հեզութեամբ ուսցի ամենայն հնազանդութեամբ”: Տեսե՞ր զի և նա հնազանդեցուցանէ ռանն զկինն. այլ ներբեաց և լուիցես դարձեալ զնոյն պատճառ: Ընդէ՞ր ա-մենայն հնազանդութեամբ “կնոջ, ասէ, վարդապե-տել ոչ հրամայեմ”: Վարդապետեաց երբեմն չարա-չար Ադամայ: “Եւ ոչ ձխաբեանել քան զայրն”, վասն զի ձխաբեանեաց չարապէս, “այլ կալ 'ի ցածութէ”: Ասա և զպատճառն. “Քանզի Ադամ ոչ խաբեցաւ, իսկ կինն պատրեալ 'ի յանցանս եղև”: Յաղագս այնո-

Digitized by Google

րինկ 'ի վարդապետական աթոռոյն զնա 'ի վայր իջոյց։ Զի որ վարդապետելն ոչ գիտէ՝ ուսցի. ապա եթէ ոչ ախորժէ ուսանել՝ այլ վարդապետել կամիցի, և զինքն և որք ուսանինն կորուսանէ. որպէս և կնոջն յայնժամ եղև։ Այլ զի հնազանդեցաւ առնն և յաղագս մեղացն էր հնազանդութիւնն՝ յայտ յայսցանէ է։

Կամիք և զայն լսել "Առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ"։ Ախորժեմ ուսանել զկարգ և զխնամակալութենէն այնորիկ Պաւղոս խօսի, և զտէրութիւնն խառնէ ընդ սէրն։ Իսկ ո՞ւր զայս առնէ. կորնթացւոցն առաքելով ասէր. "Արք սիրեցէք զկանայս"։ ահա "առ այր քո դարձ քո"։ "Իսկ կանայք զի երկնչիցին յարանց", ահա "նա տիրեսցէ քեզ"։ Տեսէ՞ր զկարգ առանց ծանրանալոյ է տէրութիւն, յորժամ ցանկացող մոլեկան կնոջ ծառայելոյ տէր լիցէ, յորժամ երկիւղն հանդերձ սիրով 'ի բաց բառնայ զծանրութիւն ծառայութեանն։ Արդ մի զայս իշխանութիւն 'ի ներքս եմուծ անհնազանդութիւնն։ Իսկ մի յայն ինչ հայեսցիս եթէ առ պիտանացուս յարմարեալ զայն ած, այլ զի զնոյն ինքն զծառայութեանն բնութիւն մեղքն պատճառեցին։

Իսկ երկրորդ ծառայութեան տեսակ քան զառաջինն ծանրագոյն, և նա զսկիզբն և զպատճառն 'ի մեղաց ունի. քանզի յետ ջրհեղեղին որ առ Նոյիւ և հասարակաց ամենեցուն նաւաբեկութեան ամենասատակութեանն այնորիկ մեղաւ 'ի ծնողն Քանան, և մերկացեալ տեսանէր զհայրն, մանաւանդ եթէ մերկացոյց առ եղբարսն չարախօսութեամբ, և անտի ծառայ լինէր եղբարցն։ Վասն զի ժանտացոյց զբնութեանն քաջատոհմութիւն յօժարութեամբ չարութիւն. և մանաւանդ յիրաւի. վասն զի գիրք բնաւ յաղագս արդարոյն առնեն պատասխանիս, յաւէտ եթէ բանիւ զամենայն նմա ընծայեն զթողութիւն։ "Սկսաւ Նոյ այր երկրագործ"։ Իսկ սկսաւն յոլով ունի զպատասխանիսն արբեցութեանն. զի ոչ որքան պէտք էին ըմպել զգինին՝ գիտէր, և ոչ զկարգ ըմպել՝ անապակ եթէ ընդ ջուր խառնեալ. ոչ եթէ վաղվաղակի ըմպել 'ի հնձանացն լցեալ կամ եթէ սուղ ինչ ժամանակ անսալ։ Արդ գիրք 'ի ձեռն այսոցիկ պատասխանիս առնեն յաղագս

Digitized by Google

Նոյի. խակ որ 'ի նմանէ ծնեալն էր և յաղագս նորա ապ֊
րեալ, զի վասն հօրն պատուոյ ոչ կորեաւ ընդ այլոն ա֊
լեկոծութեամբ, ոչ 'ի նոյն ինքն 'ի բնութիւնն հայէր
և ոչ զփրկութիւնն յիշէր և ոչ երկիւղիւ ողջախոհա֊
նայր, տեսանելով տակաւին զնշխարս այ՟ բարկութեանն
մնացեալս և զթշուառութեանն հետս երևեալս և զե֊
ղելոյն զերկիւղ զարգացեալ, թշնամանեաց զծնողն:
Յաղագս այսորիկ պատուիրէ ա՟ծ ասելով. «Մի՛ փա֊
ռաւորիր յանպատուութենէն հօր քո, զի ոչ են քեզ
փառք որքան թշնամանք»: Բայց և ոչ զայսոսիկ ծա֊
նեաւ նա, այլ մեղաւ մեղս քան զամենայն թողութիւն
մեծագոյն. և նորին աղագաւ պատիժս ետ ընդ մեղացն
զծառայութիւնն, եղբարցն ստրուկ եղև, և որ 'ի բնու֊
թենէն էր նախագահութիւնն՝ բարուցն չարութեան
մասնեաց: Այս երկրորդ ծառայութեանն օրինակ:

Կամիս և զերրորդն ուսանել. ծայրագոյն է նա և
քան զերկոսեան զառաջինսն և յաւէտ ահաւոր: Վասն
զի այնոքիւք ոչ ողջախոհացաք, յերկարեաց 'ի մեզ
զկապանսն: Իսկ ո՞ր իցէ այն. իշխանացն և պետացն. և
ոչ այնպէս իբրև զծառայութեանցն, այլ յոյժ ահաւոր:
Քանզի սուր է տեսանել սրեալ ամենայն ուրեք, դա֊
հիճս, պատիժս, տանջանարանս, պատուհասս, մինչև
մահու և կենաց իշխանութիւն: Իսկ զի այսօրինակ իշ֊
խանութիւն հարկաւոր եղև յաղագս մեղացն, լուր
դարձեալ նմին Պաւղոսի որ ասէն. «Կամիս չերկնչել
յիշխանութենէն, բարի արա և ընկալցիս գովութիւն
'ի նմանէ. ապա եթէ չար առնես՝ երկիր, զի ոչ մնոտի
զսուրն ունի»: Տեսանե՞ս զի յաղագս չարագործացն է
իշխանն և սուրն. լուր դարձեալ զնոյն յայտնագոյն:
«Վրէժ խնդրէ, ասէ, չարագործին»: Իսկ ոչ ասաց
եթէ վայրապար իշխան է, այլ զի՞նչ. «ոչ ընդունայն
զսուրն ածէ». զինեալ քեզ զդատաւորն 'ի վերայ կա֊
ցոյց: Զոր օրինակ հայր ոք բարեգութ զորդիս յինքն
ստահակեալս և յաղագս հայրենի սիրոյն արհամարհողս
տեսանելով՝ դատաւորաց և վարդապետաց ահաւո֊
րաց ընձեռէ, նոյնպէս և ա՟ծ զբնութիս մեր քամահողս
զնա յաղագս բարերարութեն տեսեալ՝ իբրև վարդա֊
պետաց ոմանց և դատաւորաց իշխանացն աւանդեաց.
որպէս զի զմեր պղերգութիւնն 'ի բաց դարձուսցէ:

Digitized by Google

Բայց եթէ ախորժէք, և 'ի հնմէն զոյն զայս տեսցուք, զի յաղագս չարութեան մերոյ՝ իշխանութեանս այսմիկ եղեն պէտք: Ի մարգարէիցն ոմն զայրացեալ յաղագս անիրաւութեանց այսպէս իմն ասէր. "Լռե՞ս 'ի հարստահարել ամբարշտի զարդարն, և առնե՞ս զմարդիկ իբրև զձկունս ծովու և իբրև զսողունս որք ոչ ունին իշխանս": Արդ ուրեմն յաղագս այդորիկ իշխանք, զի մի իբրև զսողունս իցեմք. դորին աղագաւ պէտք, զի մի իբրև ձկունք կլանիցեմք զիրեարս. զի զօր օրինակ յաղագս ցաւոց դեղք, նոյնպէս և յաղագս մեղաց պատիժք: Վասն որոյ և որ առաքինութեամբն կեայ՝ նոցա վերակացութեանն ինչ ոչ կարօտանայ, լուր զինչ ասէն Պաւղոս. "Եթէ կամիս չերկնչել յիշխանէն, զբարիս գործեաց և ընկալցիս գովութիւն 'ի նմանէ": Տեսող է, ասէ, քո դատաւորն. եթէ ուղիղ կեցցես, ոչ տեսող միայն, այլ և գովիչ: Դու զինչ ես ասեմ և զիշխանին պէտս, որ և քան զմիւս իշխանացն իւր մեծագոյնս գեր 'ի վերոյք են որք զիմաստասիրութեանն զհետ երթան. քանզի իշխանք՝ իշխանաց են օրէնք: Այլ սակայն և ոչ օրինաց կարօտանայ որ հեշտութեամբն կեայ. լուր և զայս Պաւղոսի որ ասէն. "Արդարոյն 'ի վերայ օրէնք ոչ կան". յաւէտ ես իշխանացն վերակացութե ոչ է: Ահա երրորդ իշխանութեանն օրինակ, և սա 'ի մեղացն և 'ի չարութենէն ունի զպատճառն:

Դու զիա՞րդ ասէ Պաւղոս "Ոչ է իշխանութիւն, եթէ ոչ յԱյ": Նա մեզ զիշխանս յօգտակարագոյնս պատրաստեաց: Ածին 'ի ներքս զպէտսն նորա մեղքն. իսկ Ած առ 'ի յօգտակարութիւն մեզ վարեցաւ[1]. որպէս և պէտք ծառայութեանն 'ի մեղացն եղեն, և պատեհագոյնս զնոսա յարմարեաց Այ իմաստութիւնն:

Այլ կանգնեցարուք, և զծուլութիւն 'ի բաց դիք: Օ՜ ինչ է այս. յաղագս դրոյ ընդ ձեզ խօսիմ, դուք զաչս ձեր 'ի բաց դարձուցեալ՝ առ ջահսն և որք լուցանեն զճրագունսն՝ փոփոխեցայք. որքան յուլութեան նշանակ իցէ այս, զմեզ թողուլ՝ 'ի նոսա նայել: Մարդիկ լուցանեմ և ես 'ի գրոյ, և լեզուս մեր ջահ բորբոքեալ 'ի վարդապետութեանն: Այս լոյս մեծ և լաւագոյն է

1 Դժուարին տողք երկք 'ի բաղդատութենէ ընդ յունականին:

քան զայն. զի ոչ եթէ պատրոյգ 'ի ձէթ թացեալ լու-
ցանեմք որպէս անդ, այլ զոգիս բարեպաշտութեամբ
ռռոգեալս՝ լռելութեանն ցանկութեամբ բորբոքեմք ։
Խօսէր երբեմն և Պաւղոս 'ի վերնատան ուրեմն ։ Բայց
մի ոք զիս կարծեսցէ Պաւղոսի հաւասարեցուցանել
զանձն. ոչ եմ մոլեալ. այլ զի ուսանիցիք եթէ որքան
փոյթ 'ի լսելութիւնն ցուցանել է պարտ և արժան ։
Խօսէր Պաւղոս 'ի վերնատանն, և երեկոյ ժամանեաց,
որպէս և այժմ, ջահք էին բաւականք 'ի վերնատանն.
և ապա Եւտիքոս 'ի պատուհանէն 'ի վայր անկաւ. ոչ
եղծ անկումնն զժողովն, և ոչ յարոյց զտեսութիւն
մահն. այնպէս էին բևեռեալք ընդ լսելութիւն ածայինն
բանից ։ Դուք ոչ ինչ օտար տեսէք և ոչ հրաշափառա-
գոյն. այլ այր որ զսովորականսն առնէ, և զդէմս անդր
դարձուցէք, որում թողութեան այդ իցէ արժանաւոր ։
Մի ոք ինչ սաստիկ զպատուհաս կարծեսցէ. զի ոչ ե-
թէ ատեամք, այլ խնամ տանելով մեղադրիցեմք ։
"Արժանի հաւատալոյ վէրք բարեկամաց քան զկամա-
ւոր համբոյրս թշնամեաց" ։ Արդ յարուցեալք այսու-
հետև 'ի բաց թողէք զայդ հաւր, և հայեցարուք 'ի
լոյս գրոց ։

Աստ զի միւս ևս օրինակ իշխանութեան ձեզ կա-
միմ ասել, որ ոչ 'ի մեղաց էառ զպատճառն, այլ 'ի նմին
իսկ 'ի բնութենէս ։ Եւ ո՞ր իցէ այս. որ 'ի ծնողացն 'ի
մանկանցն լինի ։ Վասնզի երկանցն հատուցումն երախ-
տեացէ այնպիսի պատիւ. յաղագս որոյ և ոմն ասէ.
"Իբրև տերանց ծառայեաց ծնողացն". և զպատճառն
'ի վերայ ածէ ասելով. "Զ ինչ նոցա տայցես, որպէս
նոքա քեզ". զքեզ ծնան, դու զնոսա ծնանել ոչ կա-
րես ։ Եւ զի յայսմիկ նուաղեալք լինիմք, այլով իւիք
յոլովեսցուք 'ի նոսա պատուովքն, մի յաղագս բնու-
թեանն օրինաց, այլ նախ քան զբնութիւնն յաղագս
տեառնն երկիւղին ։ Զի և յոյժ իսկ կամի ած ծնեցե-
լոցն պատուել զծնողսն. և որք զայս առնեն, մեծամեծ
բարիս հատուցանէ. իսկ որք զանցանեն զօրինօքն, սաս-
տիկ չարեօք պատժէ ։ Վասնզի "որ չարախօսէ զհայր
կամ զմայր, մահու վախճանեսցի". և որոց պատուեն
զնոսա, այսպէս ասէ. "Պատուեա զհայր քո և զմայր,
զի քեզ բարի լինիցի և երկայնաժամանակեայ եղիցիս

՚ի վերայ երկրի „ ։ Օ՜ երկայնութի՟ կենացն եդ մրցանակ պատուողացն զնոսա, և որ վերջին չարն Թուի տարաժամ մահն՝ զայն և պատուհաս Թշնամանողացն զնոսա, զոմանս ձգելով ՚ի բարեմտութի՟ պատուոյն խոստմամբք, և զոմանս ակամայ ՚ի բաց տանելով ՚ի լուտանացն պատուհասին երկիւղիւ ։ Օ՜ի և ոչ վայրապար մեռանել հրամայէ Թշնամանողին զհայրն, և ոչ դահճի զնա առնելով յատենէն ՚ի բաց տանի ընդ հրապարակն, և ոչ արտաքոյ քաղաքի զգլուխն հատանէ. այլ ածէ զնա ՚ի մէջ քաղաքին հայրն, և առանց ցուցանելոյ իւրքն հաւատարիմ լինելին. և յիրաւի ։ Օ՜ի որ զինչս և զմարմինս յաղագս որդւոյն վատնէր, ոչ արդեօք չարախօս նորա լինէր, եթէ ոչ յոլով առաւելութիւք էին Թշնամանացն ։ Բայց ածէ զնա ՚ի մէջ քաղաքին և կոչէ զբազմութիւնն ամ՟ և ապա ասէ զամբաստանութիւնն, և նոքա լսելով ամենեքեան՝ իւրաքանչիւր ոք քար առեալ սատակեն զԹշնամանողն հօրն ։ Օ՜ի ոչ տեսող միայն է պատժոյն, այլ և ինքնագործ նոցա կամին լինել օրէնքն. զի զայն իւրաքանչիւր ոք տեսանելով որովք զքարն ինքն եարկ ՚ի վերայ գլխոյ լուտացողին զհայրն, բաւական յիշատակ յուղղութիւնն ընկալցի ։

Նա այլ ինչ մեզ օրէնադիրն զեկուցանէ, եթէ որ զծնողսն Թշնամանէ, ոչ զնոսա միայն զրկէ, այլ և զամենայն իսկ մարդիկ ։ Յաղագս այնորիկ զամենեսեան ՚ի հաղորդութիւն տանջանացն կոչէ իբրև Թշնամանեալս զբոլորեսեան, և զբազմութիւնն միանգամայն և զքաղաքն շուրջ կացուցանելով զամենեսեան խրատէ, և որք ոչն ունին հաղորդութիւն առ որս դատաստանն է ծնողացն, զի Թշնամանեալք զայրասցին որպէս հասարակաց բնութեանս լուտացելոյ, և զայնպիսի մարդ իբրև զժանտախտ և զհասարակաց ցաւս ոչ ՚ի քաղաքէն միայն, այլ և ՚ի լուսոյն ՚ի բաց վարեսցեն ինքեանք ։ Վասն զի պատերազմող է այնպիսին և ամենեցուն հասարակաց Թշնամի, այ՟ և մարդկան և օրինաց և հասարակաց ամենեցուն մերոց կենացս ։ Յաղագս այնորիկ ամենեցուն ձեռնարկել հրամայէ ՚ի սպանումն, իբրև մաքրութիւն ինչ քաղաքին գործելով ։

Բազում ձեզ բարի լիցի զի հանդերձ այսպիսի հեշտութեամբ որ յաղագս Թշնամանողին զհայր էր բանն՝

ընկալջիք, և փոխանակ քարանց բարբառովքդ զնա քարկոծեցէք. նշանակ է այդ իւրաքանչիւր ուրուք 'ի ձէնջ յոլով բարեմտութիւն 'ի հարսն ցուցանել: Վասն զի յայնժամ յաւէտ սքանչանալ ընդ օրէնսն սովորեցաք որք զյանցաւորսն պատժէին, յորժամ ոչ ինչ զխոցեալք զմեր մեղս: Յաղագս այսր ամենայնի գոհասցուք զմարդասիրէն ա՟յ՝ որ խնամ տանի կենաց մերոց, և նախահաղութեամբ ծնողացն ողջախոհացուցանէ զորդիսն, և զամենայն յաղագս մերոյ փրկութեան տնօրինէ. որում փառք միանգամայն որդւոյն և սրբոյ հոգւոյն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

ԵԹԷ ՈՉ ՅԱՂԱԳՍ ԱԴԱՄԱՅ ՊԱՏԺԻՄՔ. ԵՒ ԵԹԷ ՄԵԾԱԳՈՅՆ ՔԱՆ ՈՐ ՎՆԱՍՆ ՆՈՐԱ Ի ՆԵՐՔՍ ԵՄՈՒՏ ՏՐՏՄՈՒԹԻՒՆ ՔԱՂՑՐՈՒԹԻՒՆ, ԵՒ ԵԹԷ ՏԱՆՋԻՆՔ ՀԱՅԻՑԻՄՔ. ԵՒ ԸՆԴԴԷՄ ԱՅՆՈՑԻԿ ՈՐՔ ԶԱՆՑ ԱՌՆԵՆ ԶԱՂՔԱՏԱՒՔ

Դուք թերևս կարծիցէք արդեօք թէ որ յաղագս տէրութեան ձեր բանն ամենայն սաստեցաւ, բայց ես յոլովագոյն տեսանեմ զպտուղ 'ի նոսա երևեալ. այլ մի տագնապիցիք, մինչև զամենայն կթեսցուք: Վասն զի և աշխատասէր մշակք յորժամ տեսանեն զայգի յոլով տերևովք լցեալ, ոչ զարտաքինն ողկոյզսն համարեն միայն, այլ և 'ի ներքսն յածին զաղէշան շրջելով և ընտերևսն յուզելով, որպէս զի մի՛ զփոքր ինչ զխաղողոյն զպտուղսն ընդ տերևովք ծածկեալ զանխլասցին: Արդ մի՛ քան զնոսա երևեսցիք պղերգագոյնք, և մի՛ 'ի բաց կայք մինչև զամենայն առնուցումք. և մանաւանդ զի աշխատութիւնս իմ է, իսկ պտուղքն ձեր:

Ամբառնեցայք երէկ զկանոնս, մանաւանդ եթէ ոչ զկանոնս, այլ զԱ՟ծ, զի 'ի ձեռն մերոյ զծառայութի 'ի ներքս եմոյծ: Այլ թերևս առիցեն այժմ ցմեզ կանայք. ընդէ՞ր նա մեղաւ, և մեք զպատասխանատուեսցուք. և յանցանքն եղեն միոյ զինեաց, իսկ մեղադրութիւնն հասառակ[1] բնութեանս մերոյ: Այլ ծառայքն առիցեն թերևս. վասն էր. Նա զհայրն թշնամանեաց, և պատուհասքն ընդ ամենայն ազգս եանց: Այլ որք յիշխանացն երկրն-

1 Թերևս հասարակ:

չին, զոյն բաղբաղեն՝ էր աղագաւ այլք չարութեամբ կեան, և մեք ընդ լծով իշխանութեամբ մատնեալք եղաք: Եւ արդ զի՞նչ ասասցուք առ նոսա ամենեսեան:

Մ՛ի է ամենայն խնդրոյն լուծումն. զի մեղան առաջինքն, և 'ի ձեռն անհնազանդութեան զծառայութի՟ն 'ի ներքս մուծին, և զմտեալն՝ որք յետ նոցա մարդիկ՝ մեղօք իւրեանց տիրացուցին յինքեանց: Զի եթէ ունիցին ինչ ցուցանել ամենեւին 'ի մեղացն մաքուր, պատշաճագոյնս իմն թուին ասել. ապա եթէ ինքեանք յոլով սպառնալեօք իցեն պատժապարտք, աւելորդ ընդդիմամարտութիւնս այս է: Զի ես ոչ ասացի եթէ այն ինչ մեղք զծառայութիւն 'ի ներքս մուծին և այս մեղք զծառայութիւն ոչ ածեն 'ի ներքս, այլ եթէ ամենայն մեղք՝ ծառայութեան վիճակակիցք են. և ոչ եթէ ըզզանազանութիւն սխալմանցն միայն բամբասեցի, այլ և զընութիւն յանցանացն: Զի զոր օրինակ ամենայն անբժշկելի ցաւք 'ի մահ տանին՝ և ոչ ամենայն նորին բնութեան են, նոյնպէս և բոլոր մեղք զծառայութիւն ծնանին, այլ ոչ ամենեքեան նորին են: Մ՛եղաւ Եւա ճաշակելով 'ի փայտէն, և յաղագս նորին դատապարտեցաւ. մեղար դարձեալ և դու, այլ մեղս հաւասար նորա դժնդակագոյնս քան զնոյնս: Եւ վասն ծառայիցն արժան է ասել զնոյն, և յաղագս իշխեցելոցն, և եթէ 'ի ներքս ածին առաջինքն, և որք զկնի նոցա՝ հաստատեցին զտէրութեանն զօրութի՟ 'ի ձեռն որոց մեղանն:

Ունիմ և այլ ազգ ես պատասխանի առնել, եթէ յոլովք յառաքինութիւն երթալով՝ վերստին 'ի բաց ազատեցան 'ի ծառայութենէն. և նախ առաջին յաղագս կանանց զբանս հրահանգեսցուք, զի տեսցես զկարգ շուրջ եդ նոցա Պաւղոս կապանս, և ինքն դարձեալ զայն ելոյծ: “Եթէ ոք կին, ասէ, այր ունիցի անհաւատ, և այրն ախորժեսցէ բնակել ընդ կնոջն, մի՛ թողցէ զնա”: Ընդէ՞ր. “Զի՞ գիտես, կին դու, եթէ զայրն ապրեցուսցես”: Եւ զիա՞րդ կարէ, ասեն, զայրն ապրեցուցանել կինն: Վարդապետելով խրատելով ածէ 'ի բարեպաշտութեանն բան: Եւ սակայն երէկ ասէիր, ով երանելիդ Պաւղոս, եթէ “Կնոջ վարդապետել ոչ հրամայեմ”. զիա՞րդ զնա վարդապետ առնես աստ: Ոչ մարտընչիմ ընդ իս ինքեան, ասէ. այլ և յոյժ միաբանիմ: Լուր

և էր աղաղաւ ՚ի վեր հանէ ՚ի վարդապետական աթոռն, զի ուսցիս զՊաւղոսի իմաստութիւնն ։ “ Վարդապետեսցէ այլն „ . քանզի “ ոչ խաբեցաւ Ադամ „ ասէ ։ “ Ուսցի կինն „ . վասն էր . “ զի խաբեցաւ „ . քանզի կինն պատրեալ եղև ՚ի յանցանսն ։ Իսկ աստ հակառակ նմին . յորժամ անհաւատ է, ասէ, այլն և հաւատացեալ կինն, ոչ խաբի, ասէ, վասն զի հաւատացեալ է, և ուսցի այլն, քանզի պատրեալ է և անհաւատ ։ Հակառակ դարձան, ասէ, վարդապետական իրք, ընդդէմ դարձցին և տէրութեանն ։

Տեսանե՞ս զկարգ ոչ բնութեանն, այլ խաբէութեն ամենայն ուրեք և մեղաց ցուցանէ զծառայութիւնն ընդհետ երթեալ ։ Այն և առ կինն խաբէութիւն ՚ի սկըզբանն, զհետ չոգաւ խաբէութեանն և հնազանդութիւնն . փոխեցաւ զկնի այնորիկ առ Ադամ խաբէութիւնն, փոխեցաւ և հնազանդութիւնն ։ Զի զոր օրինակ ՚ի սկզբանն առն՝ փրկութիւն կնոջն հաւատացաւ, վասն զի ոչ էր խաբելոց այսպէս իմն ասելով, “ և առ այր քո դարձ քո, և նա տիրեսցէ քեզ „, նոյնպէս և աստ հաւատացելոյն որ զանհաւատ այրն ունէր, զփըրկութիւն առն հաւատայ կնոջն ասելով . “ Զի գիտես, կին, եթէ զայրն ապրեցուսցես „ ։ Զինչ արդեօք քան զայս յայտնագոյն լինիցի, զի ոչ բնութեանն, այլ մեղացն զհետ երթայ ծառայութիւնն ։

Զնոյն և յաղագս ծառայիցն է ասելի . “ Ծառա՞յ կոչեցար, ասէ, մի փոյթ լիցի քեզ „ ։ Տեսանե՞ս զկարգ դարձեալ ցուցանէ սոսկ անուն զծառայութիւնն լեալ յորժամ առաքինութիւնն մերձ իցէ ։ “ Այլ և եթէ կարիցես ազատ լինել, մանաւանդ վարեցիր „ . այս է յաւէտ կացջիր մնասջիր ՚ի ծառայութեանն ։ Ընդէ՞ր . “ Զի որ ՚ի տէր ծառայն կոչեցեալ է, ազատ տեառն է „ ։ Տեսէ՞ր մինչև յանուն եւեթ զծառայութիւնն և իրօք զազատութիւնն ։ Ընդէ՞ր արդեօք թող մնալ ծառայ . զի զազատութեանն ուսցիս զառաւելութիւն ։ Զի զոր օրինակ քան զչիջուցանել զհնոցն յորում երեք մանկունքն էին՝ առաւել հրաշափառագոյն էր թողուլ զնա և անվնաս պահել զմարմինսն, նոյնպէս և քան լուծանել զծառայութիւնն՝ մնալ ՚ի նմա և ցուցանել զազատութիւնն յաւէտ ես մեծագոյն է և զարմանալի ։ Յա-

զ[illegible] նորին եւս ասէ. «Թէ և կարիցես ազատ լինել, մահուանէդ փախիցես»։ Մնասջիր ծառայ, ասէ, քանզի զճշմարիտ ազատութիւնն ունիս։

[illegible] է յաղագս իշխանացն զսոյն տեսանել։ Թա-գաւոր էր Նաբուգոդոնոսոր, որ և զհնոցն բորբոքեաց հանդերձ յոլով սաստկութեամբ, և զերիս մանկունս 'ի մէջ եած անցոյց, պատանիս, ամայիս, որք և ոչ մի ինչ ունէին վերակացութիւն, ծառայս, գերիս, անքաղաքս։ Այլ զինչ ասէր. «Սեդրաք, Միսաք, Աբեդնագով, աստուածոց իմոց ոչ ծառայէք, և պատկերի ոսկւոյ զոր կանգնեցի՝ երկիր ոչ պագանէք»։ Զինչ և նոքա. տես զիարդ զնոսա առաքինութիւնն զգերիսն առաւել քան զթագաւորն արար, զի քան զնորին զթագաւորին բարձ-րագոյն ևս եցոյց զնոցա զմիտսն։ Զի ոչ իբրև ընդ թա-գաւորի խօսէին, այլ որպէս առ հնազանդ ոք բան ու-նելով [illegible] հանդերձ համարձակութեամբ պատաս-խանի տային. «Ոչ ինչ են պէտք, ասեն, յաղագս այ-դորիկ պատասխանի առնել թագաւորի»։ ոչ բանիւք, ասէին, այլ իրօք արասցուք զպատասխանիսն. «Է Ա՟ծ յերկինս, կարող է զերծուցանել զմեզ»։ Յիշեցուցին նմա որ 'ի Դանիէլէն եղև բարեգործութիւնն, զնոյն բանս ասացին զոր և մարգարէն ասաց յայնժամ։ Այլ զինչ նա ասէր. «Ոչ մոգուց, գիտաց և քաղդէից ըղ-բանդ զոր թագաւոր պահանջէ. այլ է Ա՟ծ յերկինս որ յայտնէ զխորհուրդս»։ Զայս նմա յիշեցուցանէին զձայնն, որպէս զի արասցեն զնա հեզագոյն։ Այլ ապա ասեն. «Եթէ ոչ՝ գիտուն լիցի քեզ, թագաւոր, զի զաստուածս քո ոչ պաշտեմք, և պատկերիդ զոր կանգ-նեցեր՝ երկիր ոչ պագանեմք»։

Տեսե՛ր զիմաստութիւն մանկանցն այնոցիկ։ Զի մի՛ բամբասանս տկարութեամբ ա՟յ՝ որք յայնժամ անդն մերձ էին՝ առնիցեն, եթէ հանդիպեալ էր նոցա անկա-նելով 'ի ներքս 'ի հնոցն մտանել, յառաջագոյն ժա-մանեալ խոստովանեցին զնորա զօրութիւնն ասելով՝ եթէ «Է Ա՟ծ յերկինս որ կարէ զմեզ ապրեցուցանել». և դարձեալ զի մի՛ փախուցեալք 'ի բոցոյն՝ թուեսցին իբրև հատուցմամբ ա՟յ ծառայել, 'ի վերայ ածեն՝ և ե-թէ «գիտուն լիցի քեզ, թագաւոր, զի զաստուածս քո ոչ պաշտեմք». միանգամայն և զա՟յ զօրութիւնն քա-

ըղձեցին, և զպատրաստութիւն անձանց իւրեանց 'ի տան-ջանս ցուցին. զի մի զոր յաղագս Յովսեփայ ասէր բան-սարկուն զըպարտելով, զնոյն և վասն նոցա ասիցէ: Այլ զինչ յաղագս Յովբայ ասաց սատանայ, եթէ "Ի ձրի պաշտէ զքեզ Յոբ. զամենայն զնորա շուրջ ամրացու-ցեր որ 'ի ներքոյ և արտաքոյ": Նոյն զի մի և յաղագս նոցա, ասէ, ունիցի այնպիսի ինչ ասել, ինքեանք յա-ռաջագոյն ժառանգեալ կարկեցին զբերանն անամօթի: Նոյն զոր ասէին՝ թէպէտ և գերի ոք իցէ, թէ և ծա-ռայ, եթէ օտար և եթէ յայլոց գաւառի շրջիցի և զա-ռաքինութիւն ընդ ինքեան ունիցի, քան զամենայն թա-գաւոր թագաւորագոյն լինի:

Տեսեր և զկանանց ծառայութիւն լուծեալ և զարք-կացն և զիշխեցոյն. եկ քեզ ցուցից և զգազանացն եր-կիւղ արտաքս ընկեցեալ: Նոյն զԴանիէլ 'ի գուբ առ-իւծուցն 'ի նմին 'ի Բաբելոնի երբեմն. բայց ոչ իշխե-ցին մերձենալ 'ի նա առիւծքն, վասն զի զթագաւորա-կան կերպարանն պայծառացեալ տեսին 'ի նմա, զայն կերպարանն զոր տեսին յԱդամ նախ քան զմեղանսն. յաղագս այնորիկ հանդերձ նովին հնազանդութեամբ մատուցեալք առ Ադամ զանուանս ընդունէին յայն-ժամ. և ոչ անդ միայն, այլ և Պաւղոսի նոյն եղև: Քանզի և նա 'ի բարբարոսաց կղզին եղեալ մերձ նս-տէր 'ի հուր ջեռնլով. և ապա 'ի խորշոտոյն ելեալ իժ բուռն հարկանէր զձեռանէ նորա: Այլ զինչ զկնի այնո-րիկ լինէր. անկաւ գազանն վաղվաղակի. վասն զի մեղս ոչ եգիտ, և ոչ խածանել կարաց: Այլ որպէս մեք յոր-ժամ 'ի գիտանոց ինչ աղորկ կամիցիմք 'ի վեր ելանել, ոչ ուստեք գտանելով զորմէ բուռն հարկանիցեմք, 'ի վայր անկանիմք վաղվաղակի՝ թէ խոր իցէ 'ի ներքոյ կամ վիհ, նոյնպէս և գազանն, և այն զի խարոյկ 'ի ներ-քոյ կայր, ոչ եգիտ մեղաց ինչ հակառակ ըմբռնումն, և ոչ ուր զատամունսն ցցէր, 'ի վայր անկաւ 'ի խարոյկն և ապականեցաւ:

Այսմիս ասացից քեզ և զերկրորդ օրինակ պատասխա-նեացս. մի զի ոչ առաջինքն մեղան ևեթ, այլ և որ զկնի նոցա. երկրորդ որք ուղղեցին և 'ի յայամ իսկ 'ի մեր-ձակայ աշխարհիս թեթևագոյն զփորձութիւն ծառայու-թեանն. մանաւանդ եթէ ամենեքեան իսկ 'ի նմանէ 'ի

բաց վճարեցան, որպէս և յաղագս կանանցն և վասն իշխեցելոցն և յաղագս գազանացն ցուցաք: Երրորդ զկնի այնոցիկ մեծութիւն բարեացն, յորոց 'ի սկզբան մեղուցեալքն զմեզ արտաքս հանին, եկեալ Քրիստոս խոստացաւ մեզ այժմ զբարիսն:

Ընդէ՞ր ողբաս, ասա ինձ. զի զքեզ' մեղանչելով Ադամ 'ի դրախտէ՞ն արտաքս եհան: Ուղղեա, ասէ, և նախանձեցիր ընդ առաքինութիւնսն, և ոչ քեզ զդրախտն, այլ զնոյն ինքն զերկինս բացից, և ոչ ինչ զնախատեղծեցելոյն յանհնազանդութենէն թողու քեզ կրել դժնդակութիւն: Ողբա՞ս զի զքեզ յիշխանութենէ գազանացն ելոյծ. ահա քեզ և զդևս հնազանդեցուցանեմ, եթէ զգուշանայցես. քանզի "Գնասջիք, ասէ, 'ի վերայ օձից և կարճաց և 'ի վերայ ամենայն զօրութեան սատանայի": Ոչ ասաց իշխեցէք, որպէս գազանացն, այլ կոխեսջիք ուժգնագոյն, 'ի ներքս մուծանելով զիշխանութիւնն: Յաղագս այսորիկ և Պաւղոս ոչ ասաց' թէ հնազանդեցուսցէ զսատանայ ընդ ոտիւք ձերովք, այլ եթէ "Աստուած խորտակեսցէ ընդ ոտիւք ձերովք": Ոչ ևս որպէս յառաջագոյն "Նա քում յողասցէ գարշապարի, և դու նորա գլխոյն", այլ բոլորովին իսկ է յաղթութիւն, մաքուր յաղթանակն, ամենևին ապականութիւն պատերազմողին, խորտակումն և կորուստ: Հնազանդեցաւ առնդ Եւա. բայց ես զքեզ ոչ առնդ միայն, այլ և նոցին իսկ հրեշտակացն առնեմ զուգապատիւ, եթէ ախորժեսցես: Զրկեալ քեզ 'ի մերձակայ կենացս, իսկ ես քեզ զհանդերձեալսն շնորհեմ, զանծերանալին և զանանցն և որ բիւր բարեօք լի է:

Արդ մի ոք այսուհետև յաղագս յառաջագունիցն վշտանալ ինչ կարծեսցէ. վասն զի եթէ կամեսցուք ընդ ամենայն անցանել, յոյժ մեծագոյնք են տուեալքս քան զոր կորուսաքն. այլ յուսացելոցս և այլքն յայտնի ևս են: Մեզ աշխատութիւն 'ի ներքս եած Ադամ. Քրիստոս խոստացաւ կեանս, ուստի փախստական եղեն երկունք և տրտմութիւնք և հեծութիւնք, և զարքայութիւնն երկնից շնորհէ. վասն զի "Եկայք, ասէ, օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն նախ քան զսկիզբն աշխարհի: Քան-

զի քաղցեայ և ետուք ինձ ուտել, ծարաւեցի և արբուցէք զիս, օտար և ժողովեցէք զիս, մերկ և զգեցուցէք զիս, 'ի բանտի էի և եկիք առ իս,,:

Լսիցեմք արդեօք զերանելի զձայնն զայն. ոչ յորժ ինչ զօրանամ ես, վասն զի յոլով է մեզ աղքատացն արհամարհանք: Պահոց ժամանակ, լռելութիւն այսչափ, և փրկութեան ուսմանն մտադրութիւն, աղօթք յաճախակի, ժողովք հանապազորդեանք. և զինչ զկնի այնոցիկ. խնամակալութիւն 'ի բաց գնացեալ: Նատի զհօյլս աղքատացն պարապաձև 'ի կողմանց յերկացունց կացեալս իբրև սիւնս տեսանեմք, այլ ոչ իբրև զմարդկային մարմինս, այնպէս զանց առնեմք անդորմաքար. իբրև զպատկերս ինչ անշունչ և ոչ իբրև զշնչաւոր մարդիկ ճեպիմք 'ի տուն: Նոյն քաղցն, ասեն, հարկ առնէ: Այս քաղցն հաւանեցուցանէ կալ մնալ. քանզի լցեալք որովայնիւք, ըստ առակին, զքաղցեալսն անգիտանան. իսկ քաղցեալքն յիւրեանց 'ի կարեացն զայլոցն ես ճանաչէն, մանաւանդ և ոչ այնպէս զինքն կարէ ամենայն տեսանել: Դուռ 'ի պատրաստեալ սեղանն հրճուիս, և ոչ սուղ ինչ մնայ անտես. իսկ աղքատն կայ մինչև յերեկոյ փութացեալ և ճեպեալ զաւուրեայ կերակուրն բովանդակել. և տեսանէ զորս կատարեալ, և զարծաթն ոչ լցեալ 'ի կերակրոյն բաւականութիւն, վտանգի և երգիծանի և առնուլ քան զիւր զօրութիւնն յանդգնել հարկի: Վասն այնորիկ և երեկորին ուժգնապէս զմեզ թախանձեն երգելով և երդմնեցուցանելով, ողբան կականեն և զձեռս կարկառեն, և օթափոխեալ զմեզ ունին, բիւր և այլ ինչ լրբել հարկին: Քանզի երկնչին մի գուցէ յորժամ ամենեքեան 'ի տուն գնասցեն, 'ի խաղաղութեան քաղաքիս մոլորել հանդերձեսցին: Այլ զոր օրինակ 'ի նաւաբեկութիւնս որք անկեալ 'ի տունջեան յորժամ ըմբռնեսցէ տախտակ՝ երեկորին ճեպի 'ի նաւահանգիստն, զի մի գուցէ 'ի հասանել գիշերոյն զդժնդակ նաւաբեկութեան ըղփորձ առնուցու, նոյնպէս և աղքատքն իբրև 'ի նաւաբեկութենէ երկուցեալք 'ի սովոյն՝ փութան նախ քան զերեկոյն առ կերակուրն իւրեանց բաւական զարծաթն ժողովել, զի մի ամենեքեան 'ի տուն երթեալք՝ արտաքոյ նաւահանգստին մնասցեն. քանզի է նոցա նաւահանգիստ օգնականացն ձեռք:

Բայց մեք և ոչ 'ի հրապարակս առ նոցա թշուառութիւնն խոնարհիմք, և ոչ 'ի տուն երթեալք. այլ և սեղան մերձ կացեալ առ մեզ, բազում անգամ բիւրուք լցեալ բարեօք, եթէ բարիս պարտ և արժան իցէ կոչել զորս 'ի դատապարտութիւն մերոյ անմարդութեցն ունեմք, սակայն մերձ կալ 'ի սեղանն՝ լսելով 'ի փողոցացն 'ի խոնարհուստ զձայնն 'ի գալն նոցա և մեծաբարբառս աղաղակել 'ի սրահն, ողբացեալք 'ի խորին խաւարին, բազում ամայութեամբ, և ոչ այնպէս խոնարհիմք. այլ լցեալք ևս 'ի քուն երթամք և յանկողինս մտանեմք. և յայնժամ մեծապէս 'ի խոնարհուստ ողբացելոցն լսեմք իբրև զշան ինչ կատաղացելոյ, այլ ոչ իբրև զմարդկան ձայն, այնպէս զանց առնեմք. և ոչ յաղագս ժամանակին խոնարհիմք, զի ժամ է այնուհետև գիշերոյն, և յամենեցուն ննջելն նա միայն ողբայ, և ոչ առ թեթևութիւն խնդրոյն, զի քան զհաց աւելի ինչ ոչ խնդրէ և կամ փոքր ինչ արծաթ, և ոչ առ մեծութիւն թշուառութեանն՝ զի ընդ մշտնջենաւոր ընդ սովոյն կռուի, ոչ առ հեղգութիւն աղաչողին՝ զի այնպէս պաշարեալ կարեօք ոչ առ դուրս գալ և ոչ մերձ լինել իշխէ, այլ 'ի խոնարհուստ յաւէտ 'ի հեռաստանէ ըզպաղատանս առաջի դնէ: Իսկ եթէ առցէ, բիւր աղօթս ընձեռէ. ապա եթէ ոչ առնու, և ոչ այնպէս դառն բան հանէ, ոչ թշնամանէ և ոչ հայհոյէ որք կարող են տալ և ոչ տան: Այլ որպէս եթէ ոք 'ի դահճէ ումեքէ յանըմբռնելի 'ի տանջանս ածեալ՝ զմերձաւորսն ամենեսեան աղաչէ և պաղատի, և ոչ միում օգնականութեան դիպելով հանդերձ բազում անմարդութեամբ 'ի տանջանս ածեալ լինի, նոյնպէս և նա 'ի դահճէ ումեքէ 'ի գիշերին ձգէ զձեռն հանդերձ գոչելով և աղաչելով զոր 'ի վեր 'ի տունս անդ նստիցին, և ոչ միում մարդասիրութեան պատահէ, առանց ողորմութեան ածեալ լինի բազում հակառակութեամբ:

Բայց և ոչ մի ինչ յայսցանէ զմեզ հաւանեցուցանէ. և զկնի այնքան անմարդութեան յերկին ձգել իշխեմք զձեռս և յաղագս ողորմութեան խօսել ընդ ա̃յ և թողութիւն խնդրել մերոց յանցանացն, և ոչ զարհուրիմք թէ մի գուցէ շանթի զկնի այնպիսի աղօթից 'ի վայր անկցի հակառակ խակութեան և անմարդու-

թեան մերոյ։ Ո՜ խնդրդ 'ի քում երթալդ, ասա ինձ, և 'ի հանդիստ, և ոչ երկնչիցէք մի յերազի այնպէս մեզ 'ի վերայ եկեալ կայցէ պատքեալ, ազատեղեալ, զպատառատուն զգեցեալ. ողբասցէ և հառաչիցէ զմեր խաղաթիւնն սոգատանելով։ Վասնզի 'ի յոլովից բազում անգամ լուայ որք ասէին, եթէ 'ի տուընջեանն ամառնա առնելով զաղքատացն զօգնութիւնս, 'ի գիշերի չուանօք վարակեալք յաղքատացն ձեռաց քարշեալք՝ ըկեր վտանգս ընդունէաք։ Բայց այս քուն է և երազ և աժամանակեայ տանջանք. իսկ մեք ո՞չ զարհուրիցիմք, ասա ինձ, մի գուցէ զաղքատն զայն որ ողբայ և աղաղակէ և լայ, 'ի գոգն տեսանիցեմք յԱբրահամու, որպէս զԼազարոս ընչեղն այն։ Նու աստուստ ձեռամբ խղճի մտացն թողում զգայն և զանմխիթար զտանջանարանն զայնոսիկ, զխարդ հայցեաց ջուր, զխարդ և ոչ կաթիլ միում գիւտեցաւ, որպէս լեզուն պապակեալ լինէր, զխարդ յաճախ զպաղատանսն առաջի դնելով՝ և ոչ 'ի միում թողութեան ինչ վայելեաց, որպէս անման տանջեալ լինէր։

Բայց մի երբէք լիցի զայն փորձ ուսանել, այլ բանիւ լսելով փախիցուք 'ի գործոց տապանելեաց, և Աբրահամու սիրոյն արժանի ցուցեալք՝ 'ի նոյն 'ի նորա անձին երթիցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք հօր համդերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ԵԹԷ ՆԱԽ ՔԱՆ ԶՈՒՏԵԼՆ Ի ՓԱՅՏԷՆ ԳԻՏԷՐ ԱԴԱՄ ԶԻՆՉ ԲԱՐԻ ԵՒ ԶԻՆՉ ՉԱՐ. ԵՒ ԵԹԷ ՊԱՐՏ Է Ի ՏԱՆ ԿՐԹԵԼ ԶԱՍԱՑԵԱԼՍ ՅԵԿԵՂԵՑԻՈՋ

Սիրելիք զպահս, զի մայր է ողջախոհութեան և ամբիւր ամենայն իմաստութեան. սիրեսցուք զպահս վասն ձերոյ և մերոյ սիրոյն, քանզի ինձ զքահանայական զժողովս զայս հաւաքէ և զփափաքելի դէմս դարձեալ տայ տեսանել, ընձեռէ և հանդերձ համարձակութեամբ փափկանալ 'ի տօնիս այսմ. քանզի տօն և կացուրդ և բիւր բարիս ոչ ոք սխալեսցէ զձեր ժողովդ անուանել։ Ո՜ւ եթէ 'ի հրապարակ ոք երթալով և միում ումեք

Digitized by Google

մերձելոյ պատահելով՝ բազում անգամ զամենայն աղքատութիւն 'ի բաց դնէ, իսկ մեք ոչ 'ի հրապարակս, այլ յեկեղեցւոջս ամենեքեան պատահեալք, ոչ միում ումեք դիպելով մերձելոյ, այլ այսքանեաց և այսպիսեաց եղբարց և առ հարս մերձ լինելով, զիա՞րդ ոչ զամենայն ինչ 'ի բաց դիցուք ։

Ոչ արդ ոչ բազմութեամբն միայն քան զժողով աթոռակցացն 'ի հրապարակին լաւագոյն է, այլ և նովին իսկ բնութեամբ խօսիցն ։ Վասնզի որք 'ի հրապարակս խմբեալ նստիցին և իրերաց աթոռակիցք լինին, բազում անգամ և յաղագս անմիտ ինչ իրաց խօսին և զցուրտ բանս 'ի ներքս ածեն, և խօսին յաղագս որոյ ոչ ինչ նոցա իցէ պատշաճ ։ Որ և սովորեալ իսկ եմք յաճախակի փութալ զայլոց իրս քննել և խուզել. որ և զիւրով վճռել, և 'ի վտանգաւոր ունի բանս արտաքս զաղել, և լուեալ մեք յերկարեմք. և յոլովք բազում անգամ այնպիսի աթոռակցութեամբ բիւր վտանգս արկին 'ի վերայ ինքեանց. և արդ զի անօգուտք և ցուրտք և աշխարհականք ամենայն խօսքն այն են, և հոգևոր ինչ բան ոչ երբէք վաղվաղակի յայնպիսի ժողովս մտանէ ։ Իսկ աստ ոչ այնպիսի ինչ ոք ունի ասել, այլ ամենայն հակառակ նմին. քանզի բոլոր անշահ խօսք 'ի բաց են վարեալք, և ամենայն հոգևոր վարդապետութիւն 'ի ներքս մտեալ ։ Վասն զի յաղագս անձանց ձերոց խօսիմք և որ ինչ հոգւոյ պատշաճագոյն է, վասն պայծառ յաղթանակացն, և մարդասիրութեանն նորա և յաղագս նախախնամութեանն ամենեցուն, և վասն այլոց բոլորեցուն որ մանաւանդ պատշաճագոյն է մեզ՝ եթէ վասն էր եղաք, և զինչ զկնի այնորիկ որ աստի հրաժարումն է՝ հանդիպեսցի հանգիստ մեզ, և յորպիսի ինչ մեր իրք լինիցին ։

Այլ ժողովս այս ոչ մեք միայն, այլ և մարգարէքն և առաքեալքն հաղորդին. և մեծ քան զամենայն այս է զի ինքն բոլորեցուն տէրն Յիսուս 'ի մէջ մեր կայ, որպէս և ինքն ասաց. “ Ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա „ ։ Այլ եթէ ուր երկու կամ երեք ժողովեալ է՝ 'ի մէջ է, որչափ ևս առաւել ուր այսքան արք, այսքան կանայք, այսքան հարք, առաքեալք և մարգարէք 'ի մէջ ամենե-

Digitized by Google

ցուն։ Յաղագս որոյ և մեք հանդերձ յօժարամտութեամբ բարբառիմք, յանդ 'ի յորդորումն ձեզ փոյելելով՝ ըզխրատումն ձեզ հաստուցանեմք։ Վասնզի խոստացաք ասել վասն փայտին՝ յառաջագոյն քան զնա լեալ գիտութիւն բարւոյ և չարի Ադամայ, թէ և նախ քան զուտելն ունէր զգիտութիւնն զայն։

Արդ համարձակեալք այժմ ասասցուք՝ եթէ գիտէր զծանօթութիւնս զայս. և եթէ ոչ գիտէր զինչ բարի և զինչ չար, և քան զնոյն ինքն զանբանսն անբանագոյն էր, և քան զծնաւայսն տեառն անմտագոյն։ Այլ զիարդ ոչ իցէ յիմարութիւն, այծից և ոչխարաց գիտել որ բանջար նոցա պիտանացու իցէ և որ սատակիչ, և ոչ յամենեսեան յարձակել յերևեալսն, այլ ունելով զծանօթութիւնն և գիտել հաւաստեաւ զինչ նոցա վնասակար է և զինչ օգտակարագոյն. իսկ մարդն յայնպիսի գիտութենէ զրկեալ։ Որ եթէ ոչ զայն ունէր, և ոչ իմիք արժանի էր, այլ և վատթարագոյն քան զամենայն։ Յոլովագոյն ընտրելի էր նմա 'ի խաւարի շըրջել և կուրացեալ աչօք 'ի լուսոյ զրկեալ, քան թէ ոչ գիտել զինչ բարի կամ զինչ չար։ Վասն զի եթէ զայս հանցես 'ի կենաց մերոց, զամենայն զմեր կեանս 'ի բաց բառնաս և բազում խառնակութեամբ զամենայն լնուս։ Այսուիկ որով յանբանիցն զանազանիմք՝ որով քան զգազանս լաւագոյնք եմք, զչարութիւն և զառաքինութիւն գիտելով, զվատթարն ճանաչելով, և զգեղեցիկն ոչ անգիտանալով։ Այլ եթէ մեք զայդ գիտեմք այժմ, և ոչ մեք միայն, այլ և սկիւթացիք և բարբարոսք, եւս առաւել մարդն յայնժամ նախ քան զմեղսն գիտէր զայս. և ոչ այնքան պատուովք պատուեալ և ըստ պատկերի և ըստ նմանութեան ա՟յ[1] եղեալ և զարդարեալ այլովք օրհնութեամբքն՝ 'ի գլխոյ բարեացն ամենայն մընայր։ Վասն զի զբարի և զչար այնոքիկ միայն անգիտանան, որք ըստ բնութեանն են զրկեալք 'ի մտացն. իսկ Ադամ յոլով իմաստասիրութեամբ էր լցեալ. լսէ զնորա ցոյցսն. “Այլ ած առ նա զգազանսն տեսանել զինչ կոչեսցէ զնոսա. և զոր ինչ կոչեաց զնոսա Ադամ,

1 Յօրինակին պակասէին բառքդ ա՟յ եղեալ և զարդարեալ. յաւելան 'ի յունէն։

այն անուն է նոցա„։ Զմտաւ ած որքան իմաստութիւն էր լցեալ, այնքանեաց ազանց և այսպէս զանազանից և ամենեցուն զանհաւատալիս անասնոց անուանս 'ի վե-րայ դնէր, և սակայն զամենայն հաստատունս կարաց դնել։ Վասնզի այնպէս ընկալաւ զանուանադրութիւնն ած, մինչ զի ոչ ևս շարժել բանիւ զկոչմունսն զայնո-սիկ, ոչ ինչ սխալելով եդողին զանուանսն՝ ոչ 'ի բաց ե-բարձ զնոցա կոչմունսն. քանզի ասէ. “Զոր ինչ կար-դաց Ադամ, այն է անուն նոցա„։

Արդ նա անգիտանա՞յր զինչ բարի և զինչ չար. և զիա՞րդ ունիցի բան։ Այլ դարձեալ եած առ նա զկինն, և տեսանելով զնա վաղվաղակի ծանեաւ զընութեանն հաղորդութիւն. և զինչ ասէ. “Սա այժմ ոսկր յոս-կերաց իմոց„[1]։ Բայց ոմանք ոչ զայս միայն ասեն զնոր-մանէ զեկուցանել, այլ և զօրինակ արարչութեանն, և եթէ ոչ ևս լիցի կնոջն նոյնպիսի լինելութեան օրինակ, յաղագս որոյ և ասաց “սա այժմ ոսկր„. զոր և միւս թարգմանիչ հաւաստագոյն թարգմանելով ասաց՝ սա միանգամ. որպէս թէ ասիցէ, այժմ յատուկ եղև կին յառնէ միայնոյ, իսկ զկնի այսորիկ ոչ այնպէս եղիցի, այլ յերկաքանչիւրոցն. “Ոսկր յոսկերաց իմոց և մար-մին 'ի մարմնոյ իմմէ„։ Վասնզի բովանդակ յստեղծուա-ծոյն առնլով ած մասն ինչ այնպէս ստեղծ զկինն, զի ըստ ամենայնի հաղորդեսցի առն նա. “Սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ„։ Տեսանես զի յայն սակս եդ զանուն, զի և անուն իսկ վարդապետիցէ զհաղորդու-թիւն բնութեանն, և վարդապետութիւն ըստ բնական հաղորդութեանն և արարչութեանն օրինակ, պատճառ սիրոյ յաւիտենականի և կապ միաբանութեան։ Այլ ա-պա զի՞նչ ասէ. “Փոխանակ այսորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր, և յարեսցի առ կին իւր„։ Ոչ ասաց վայ-րապար՝ միաւորեսցի, այլ յարեսցի, զհաւաստի մերձա-ւորութիւնն յայտնելով։ “Այլ եղիցին երկոքեանն 'ի մարմին մի„։

Արդ որ այսքան գիտէր, ասա ինձ, ո՞չ ճանաչէր ար-դեօք զինչ բարի և զինչ չար. և զիա՞րդ ունիցի բան։ Վասնզի եթէ ոչ գիտէր զինչ բարի և զինչ չար նախ

1 [illegible] 4 ։

քան զուտելն 'ի փայտէն՝ և զկնի ուտելոյն ուսաւ, մեղ-
քն եղեն նմա իմաստութեանն վարդապետ, և օձն ոչ
ևս խաբեաց զդք, այլ խորհրդակից գտաւ օգտակա-
րացն նորա, 'ի գաղտնէ արար նա զխորդ: Մի՛ լիցի. ոչ
է այս, ոչ է: Զի եթէ ոչ գիտէր զինչ բարի և զինչ
չար, զիա՞րդ զպատուիրանն էառ. վասն զի և ոչ ոք իսկ
ընձեռէ օրէնս որ ոչն գիտէ զինչ չար է յանցանելն. իսկ
ա՛ծ ետ և զյանցուցեալն պատժեաց, ոչ արդեօք զերկո-
սեանն զայն առնէր, եթէ ոչն ճանաչող գոյր 'ի սկզբանն
էր արարեալ առաքինութեան և չարութեան: Տեսա-
նե՞ս զիարդ ամենայն ուսոյք մեզ ցուցաւ՝ եթէ ոչ զկնի
ուտելոյ 'ի փայտէն՝ զբարի և զչար գիտաց. այլ և նախ
քան զայն իմանայր:

Արդ զայս ամենայն ընկալեալք և 'ի տուն գնացեալք՝
կրկնապատիկ մերձ դիցուք զսեղանն, զկերակրոցն և ըմ-
պելութեան, և խօսեսցի զասացեալսս այլն, լուիցէ կին,
լուիցեն և մանկունք, մի զրկեսցին և ծառայք 'ի լսելու-
թենէս: Եկեղեցի[1] արա զտուն քո. պատասխանատու ես և
մանկանցն և ծառայիցն փրկութեան: Եւ զոր օրինակ
մեք ընդ ձեր պահանջեմք բան, նոյնպէս իւրաքանչիւր
ոք 'ի ձէնջ պահանջեսցի բան[2] վասն ծառայի, վասն
կնոջ և վասն որդւոց: Նմին իրի յետ այսպիսի պատ-
մութեանց՝ և երազոցն ևս երևոյթք զձեզ ընկալցին
հեշտութեամբ 'ի բաց վճարեալք յամենայնէ. վասն
զի որ ինչ 'ի տունջեան անձն վարժի, զնոյն սովորեաց և
'ի քուն տեսանել: Եւ եթէ զհանապազօրեայ ասացեալ-
սըն պահիցեմք, ոչ յողով ինչ կարօտանամք աշխատու-
թեան. զի և յայտնագոյն որ զկնի այսորիկ իսկ բանն
լինի մեզ, և յօժարագոյն վարդապետութիւնն: Եւ զի
առաւել ևս լիցի ձեզ և մեզ օգուտ, մեզ 'ի վարդապե-
տութենէս, և ձեզ 'ի լսելութենէն զկնի մարմնական
սեղանոյն, սեղան հոգևոր ձեզ մերձ դիցի: Զի և ամ-
րութիւն ձեզ և զարդ լինիցի, և մերձաւոր կենացս զօգ-
տակարութիւն ա՛ծ ուղղեսցէ, յարմարեալ լիցի ամե-
նայն և դիւրին. քանզի "Խնդրեցէք, ասէ, զարքայու-
թիւն երկնից, և այս ամենայն յաւելցի ձեզ": Խնդ-

1 Պակասէր յօրինակին Եկեղեցի արա զտուն քո. յաւելաւ 'ի յունէն:

2 Պակասէր յօրին. բան ... Նմին իրի յետ. յաւելաւ 'ի յունէն:

ընթասցուք այսուհետև զայն, զի և որ աստ են և որ անդ բարիքն՝ պատահիցիմք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք Հօր հանդերձ սրբով Հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

ԸՆԴԷՐ ՓՈՅԹ ՃԱՆԱՉԵԼՈՑ ԲԱՐԻՈՑ ԵՒ ՉԱՐԻ ԿՈՉԻ ՓՈՅԹՆ, ԵՒ ԶԻՆՉ ԱՐԴԵՕՔ «ԱՅՍՕՐ ԸՆԴ ԻՍ ԻՑԵՍ Ի ԴՐԱԽՏԻՆ»:

Յաւէտ աղաչեցի երբեկ զձեր սէրդ յիշել զասացեալն, և կրկին անգամ յերեկորին մերձ դնել զկերակրոցն և զբանից, զոր եղեալ վայելեսցեն կերողքն: Այլ զինչ. տողեօք արարէք զայն, եղիք կրկնապատիկ զսեղանն: Գիտեմ զի արարէք. և ոչ յայնմանէ միայն, այլ և յայսմանէ ճաշակիցէք. քանզի ոչ 'ի վատթարագոյնս փութալով՝ անփոյթ զլսողացն առնիցէք: Բանզի սա լաւագոյն է քան զնա. ըստ որում զայն խոհարարացն ձեռք եղին առաջի, իսկ զայս մարգարէիցն լեզուք յօրինեցին. և նա որ յերկրէ բոյսս են՝ ունի, իսկ սա զհոգւոյն պտուղ. և այն սեղանոյ յապականութիւն ձեալքն կերակուրքն, իսկ սորայս յանապականութիւն. նա զմերձաւոր զկեանս մեր ունի, և սա 'ի հանդերձեալսն մեզ առաջնորդէ:

Արդ զի եղիցք զկնի այնր սեղանոյ և զայս՝ գիտեմ, և ոչ յարմարագոյն է զձեր ծառայ հարցանել, որ քան զայն յայտնի է հրեշտակ: Այլ զինչ է այս. զկայթումն յառաջեալսն, զզրկութիւնն որ 'ի վարդապետութիւն էր: Աստ զի առացի ձեզ երեկ թէ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ արասցէ զտունն եկեղեցի, և մեծապէս կայթեալքն յայտնելով զհեշտութիւնս որ յայտնելոց է. իսկ որ հանդերձ հեշտութեամբ լսէ, նա և 'ի գործոյն ցոյց պատրաստ. յաղագս այսորիկ և այսօր յօժարամտագոյն յառաջեցայ 'ի վարդապետութիւնս:

Բայց սթափեցարուք այժմ. զի ոչ միայն ասողին, այլ և լսողացն ևս առաւել 'ի հոգս լինել պարտ և արժան է: Մեք զմի ևեթ զփոյթ ունիմք առաջի արկանել զառէկրունեան մարմինն[1] զինչս. բայց ձեզ առաւելա-

1 Ի յոյնն չիք մարմինն:

գոյն և ս աշխատութիւն, զի և ընդունելոյ զայս և հան_գերձ բաղում զգուշութեամբ պահել: Ի վերայ դիր այ_սուհետև զկնի ասացելոցն՝ զշրունս զփականս զնիզս, և զահաւոր խորհուրդս իբրև զպահապանս անձանս ամե_նայն ուստեք շուրջ կացուցէք ոգւոյ. վասն զի լիրբ է գողն և յարաժամ տքնէ և յաճախապէս 'ի վերայ յար_ձակի. և թէպէտ և յողովակի վրիպէ, բաղում ան_գամ յանդգնի: Արդ լցցին պահապանքն ահաւոր. և եթէ տեսցեն զստամբայ եկեալ կամելով յափշտակել ինչ յաւանդելոցն, հանգերձ յոքն աղաղակաւ 'ի բաց հալածեսցեն զնա. և եթէ հոգս ինչ աշխարհականս 'ի վերայ ածիցէ, արգելցեն. եթէ մոռացումն բնութեա վտանգեսցէ, կրթութեամբ յիշատակաւ ընդդատու_ցեն. վասն զի ոչ երբէք ինչ վտանգէ կորուսանել զանե_րունեան ինչսն:

Ոչ եթէ որք զայս ինչս ընդունիցին՝ յարժամ զրկեն զհաւատացեալսն՝ բաղում անգամ մահու պատահին, որք զլոյծ պատուականագոյնն քան զամենայն ընդունի_ցին՝ եթէ կորուսանիցեն՝ ընդ որպիսի պատուհասիւք արգելօք անկանիցին: Այլ այսմ ընչից պահպանութեան պարտապանք միայն են ընդունակք, և այլ և ոչ մի. զի որքան ընկալաւ, նոյնքան նոցա 'ի բաց առեալ հարկ լինի, և առնել ինչ ոչ ոք 'ի նոցանէ պահանջէ. իսկ այլ բա_նիցն ոչ պահպանութեան միայն են պարտականք, այլ և յողով գործոց. զի ոչ զոր ընկալաքն եթէ հատուցա_նել հրամայիմք, այլ և կրկնապատիկ զայն ընծայել տեառն: Այլ առակայն եթէ պահել միայն առաջի կայր, յաւէտ հոգոյ և փութոյ կարօտեալ լինէին իրքն. իսկ յարժամ և աճեցուցանել ևս զնոսա հրամայէ մեզ, ըն_մտաւ ած որքանի՞ աշխատութեան և հոգոյ մեք հաւա_տացեալքս[1] կարօտանամք:

Յաղագս այսորիկ և որ զհինգ տաղանդն հաւատա_ցաւ, ոչ նոյնչափ մատոյց, այլ կրկնապատիկ. զի այնո_քիկ տեառն մարդասիրութեանն էին, այլ պարտ էր և ծառային զիւր փոյթն ցուցանել[2]: Որում դարձեալ մի տաղանդն հաւատացաւ, և եդեր զնոյն զոր հաւա_

1 Իմա որոց հաւատացաւ ար_ծաթ քանքին:

2 Գանկաւքն առակ 3:

տացաւն. ոչ նուազեցոյց, ոչ սակաւացոյց զաւանդն, և ոչ զկէսն եբեր, այլ զի ոչ շահեցոյց և ոչ կրկնապատիկ ընծայեաց զհաւատացեալն՝ զվերջին պատուհասն եառ, և թերևս յիրաւի։ Եթէ կամէի, ասէ, զայդ պահել միայն, և այլ շահ ինչ ոչ լինել դովաւ, ոչ ես արդեօք 'ի ծառայից ձեռս տայի զայդ։ Դու ինձ տես և զմարդասիրութիւն տեառն։ Դարձեալ մատոյց որ զհինգն հաւատացաւ՝ և այլ ևս հինգ, և որ զերկուսն՝ այլ ևս զերկուս, և 'ի նոյն հատուցումն երկոքեան վայելեցին։ Զի որպէս նմա ասաց «Բարի ծառայ առաքինի և հաւատարիմ, վասն զի 'ի սակաւուդ հաւատարիմ ես, 'ի վերայ յոլովից զքեզ կացուցից», զնոյն և սմա ասաց. և շահն ոչ նոյն, բայց գոլութիւն նոյն և վարձ հաւասար։ Ընդէր արդեօք. վասն զի ոչ 'ի քանիութիւն ընծայեցելոյն, այլ 'ի զօրութիւն 'ի գործունեաց հայեսցի ած։ Ո՛րքա իւրաքանչիւր որ ըստ կարողութեան գործեցին. զառաւելութիւն ընծայիցն և զնուազութիւն ոչ ալարկութիւն նորա և ոչ փոյթ սորա, այլ զանազանութիւն աւանդին արար։ Ո՛ր հինգն էառ և հինգ ևս ընծայեաց, և միւսն երկուս էառ և այլ երկուս բերեալ մատոյց, և ոչ ըստ իմիք նուազեցաւ բանիւ փութոյն, զի և սա կրկնապատիկ և նա զհաւատացեալ աւանդն գործեցին. իսկ որ զմին էառ, մեկնակ բերեալ մատոյց, յաղագս որոյ և պատուհասեցաւ։

Արդ լուայք որքան պատիժք առաջի կան ընչիւքն տէրունականօք[1] անգործ եղելոցն. ապա ուրեմն պահեսցուք և գործեսցուք զշահն, և յոլովագոյն յայնսիկ ցուցցուք զվաճառականութիւն։ Մի՛ ոք ասասցէ՝ տգէտ եմ, աշակերտ եմ, բան ոչ ունիմ վարդապետութեան, անուսումն և ոչ իմիք արժանաւոր։ Թէպէտ և տգէտ ես, եթէ աշակերտ, և եթէ մի տաղանդոյ հաւատացար, գործեա զհաւատացեալն, և զնոյն վարձ վարդապետին ընկալցիս։ Այլ զի և պահէք զասացեալս և հանդերձ բազում զգուշութեամբ ունիք՝ հաւատամ. բայց զի մի՛ յայս բան զամենայն ծախիցեմք, բեր և ըզկարգաւորն[2] զերեկեան ասացելոցն առաջի դիցուք այժմ, ձեզ զայս պահպանութեամբն վարձ հատուցանելով։ Զի

1 Պակասէր յօրինս. տէրունականօք անգործ եղելոցն. յաւելաւ 'ի յունէն։

2 Իմա՝ որ կարգաւ զհետ գայ։

վուրդս այս. զիս թողլին աղբիւր ջրոյ կենդանւոյ, և փորեցին իւրեանց գուբս ծակոտկէնս որք ոչ կարեն ունել ջուր ,,: Տեսանե՞ս դարձեալ զի չար է անհնազանդութիւնն և թողուլ. առ ժամանակ մի զայս պահեսցուք եթէ բարի է հնազանդութիւնն և չար անհնազանդութիւն, և գիտասցուք զայն: Զի վասն այսորիկ իսկ գիտութեան բարւոյ և չարի կոչեցի փայտն, զի պատուիրանն հրահանգէր զնոցայն հնազանդութիւն՝ 'ի փայտէն եղև: Գիտէր և նախ քան զայն եթէ բարի է հնազանդութիւնն և չար անհնազանդութիւնն. բայց յետոյ ուսաւ յայտնագոյն 'ի ձեռն իւրացն փորձութեան որ նովիմբ փայտիւն եղև:

Որպէս և Կայէն գիտէր զեղբայրն, գիտէր և զիւր զչարն. լուր զինչ ասէրն. "Եկ երթիցուք 'ի դաշտ ,,: Եւ ընդէ՞ր արդեօք ձգիցես 'ի հայրենի գրկաց զեղբայրդ 'ի դաշտ. ընդէ՞ր կացուցանես ամայի, ընդէ՞ր մերկ առնես 'ի խնամակալութենէ, հի՞մ հեռի 'ի հայրենի դիմացն տանիս, է՞ր աղագաւ ծածկես զյանդգնութիւնդ, եթէ ոչ զարհուրեցար 'ի մեղացն: Զի՞նչ և զկնի սպանումն առնելոյն հարցեալ՝ դարձեալ դժուարիս և ստես. քանզի ա͞յ ասացեալ "Ո՞ւր է Աբէլ եղբայր քո ,,, "Ո՛չ, ասէ, պահապան եմ ես եղբօրն իմոյ ,,. ուստի յայտ է եթէ հաւաստեաւ գիտելով եկն 'ի գործն յայն: Արդ զոր օրինակ նա գիտէր և նախ քան զփորձն եթէ չար է սպանումն, և ուսաւ յայտնագոյն զկնի այնորիկ յորժամ զպատուհասն ընկալաւ և լուաւ "հեծեծելով և երերալով լիցիս 'ի վերայ երկրի ,,, նոյնպէս և հայրն նորա[1]:

Վասն զի զչարն նորա զամենայն գիտեմք և նախ քան զգործելն, այլ յայտնագոյն ևս ուսանիմք զկնի գործելոյն, ևս առաւել յորժամ տանջիմքն: Այսպէս էր Կայէն, գիտէր յառաջագոյն եթէ չար է եղբայրասպանութիւն. ուսաւ հաւաստեաւ 'ի պատժոցն. վասն զի և մեք գիտեմք եթէ բարի է ողջախոհութիւն և տաղտկալի հիւանդութիւն և նախ քան զփորձն. այլ և յաւէտ ևս յորժամ 'ի հիւանդութիւնս անկանիցիմք, զերկաքանչիւրոցն զզանազանութիւնս գտանեմք: Նոյնա-

1 Պակասին տողք 3:

ընաւ և Ադամ գիտէր եթէ բարի է հնազանդութիւն և չար անհնազանդութիւնն. բայց յետոյ և յայտնագոյն ևս ուսաւ, յորժամ 'ի փայտէն ճաշակելով արտաքս անկաւ 'ի դրախտէն և յերանութենէն եւ: Եւ յորժամ ընդ պատուհասիւք անկաւ յա̃յ, որ արգելցէն ճաշակել 'ի փայտէն, պատուհասն զնա յայտնապէս խրատեաց փորձիւն՝ որքան չար է անհնազանդելն ա̃յ և հնազանդելն բարի. յաղագս այնորիկ գիտութեան բարւոյ և չարի փայտն կոչի:

Եւ ընդէ՞ր եթէ նոյն ինքն բնութիւն փայտին գիտութիւն չունէր բարւոյ և չարի, այլ 'ի պատուհասէն որ յաղագս անհնազանդութեան փայտիւն յայտնագոյն զայն ուսաւ մարդն, գիտութեան բարւոյ և չարի փայտ կոչի: Զի սովորութիւն է այս գրոց, և յորժամ ինչ լինին 'ի տեղիս և 'ի ժամանակս, յիրացն կոչեն և զտեղիս և զժամն: Եւ քաջայայտ ձեզ լինիցի ասացեալս, օրինակօք զայս յայտ արարից: Իսահակ ջրհորս երբեմն փորեաց, և զջրհորն զայն դրացիքն ձեռնարկեցին ապականել, և անդուստ լինէր թշուառութիւն, և կոչեաց զջրհորն՝ թշնամութիւն. իբրև ոչ եթէ ջրհորն էր նորա թշնամի, այլ զի յաղագս նորա թշնամութիւն եղև. Նոյնպէս և փայտն գիտութեան բարւոյ և չարի, իբրև ոչ եթէ նա ինքն ունէր զգիտութիւնն, այլ զի նովաւ յանդիմանութիւն եղև բարւոյ և չարի: Դարձեալ փորեաց ջրհոր Աբրահամ, և խարդախեաց Աբիմելէք. խմբեցան և լուծին զթշնամութիւնն, և երդմունս ետուն միմեանց և կոչեցին զջրհորն զայն՝ ջրհոր երդման. ոչ որպէս թէ ջրհորն երդուաւ, այլ առ ջրհորին երդումն եղև: Տեսանե՞ս զիարդ յիրացն անուն զանուանեն:

Եւ դարձեալ վասն զի հարկաւոր է յոլով օրինակս 'ի մէջ ածել զի յայտնագոյն լինիցի ասացեալն: Եւ ետես հրեշտակս դիպեալս ինքեան և բանակ ա̃յ, և կոչեաց զտեղին՝ բանակ. ոչ եթէ տեղին բանակ էր, այլ սակայն տեղին կոչեցաւ բանակ՝ զի անդ ետես զբանակն: Տեսանե՞ս զիարդ 'ի պատահմանէ իրացն որ 'ի տեղւոջն էր՝ անուանեաց զտեղին: Այնպէս և փայտ բարւոյ և չարի[1], և կրթութիւն անհնազանդութեան

1 Պակասին տողք 3:

և հնազանդութեան ։ Եւ դարձեալ ասէ զա̃ծ Յակոբ որպէս կարողութիւն է մարդոյ տեսանել, և կոչեաց զանուն տեղւոյն՝ տեսութիւն ա̃յ. ընդէր. վասն զի տեսի, ասէ, զա̃ծ ։ Եւ սակայն ոչ եթէ տեղին տեսութիւն ա̃յ էր, այլ յիրացն պատահեցելոց 'ի տեղւոջն անուանակոչութիւն եղև ։ Տեսանես 'ի ձեռն որքանեաց ցուցաւ եթէ սովորութիւն է գրոց դիպուածոյն որք 'ի տեղիս՝ զնոյն իսկ զտեղին կոչել ։ Զնոյն զայս և առ ժամանակն առնել սովոր են ։

Բայց զի մի աշխատ զձեզ արարից, բեր զբանս փոփոխեսցուք 'ի տխրագունիցն 'ի հրճուելին. վասն զի տաժանեցան միտք ձեր 'ի նրբագոյն յիմաստս անդր դեգերելով, յաղագս որոյ հանգուցանել զձեզ է բարւոք, ծանծաղագոյն և զուարճալի իմաստիւք կերակրել ։

Արդ երթիցուք այսուհետև առ փրկական խաչին փայտ ։ Քանզի նա զամենայն գժնդակութիւնս եղծ. զի քան զոր մարդն հանդերձ բազում համարձակութե̃ կատարեաց զամենայն իւր չարեացն, առաւելագոյն և մեծ Քրիստոս 'ի ներքս եմոյծ զբարիսն ։ Եւ յաղագս այսորիկ ասէ Պաւղոս. "Ուր առաւելան մեղքն, յաւէտ ևս յաճախեցին շնորհքն". այս է մեծագոյն պարգևն քան զմեղսն ։ Վասն որոյ և դարձեալ ասէ. "Ոչ որպէս յանցանքն, նոյնպէս և շնորհքն". զի ոչ որքան մեղաւ մարդն, այնքան շնորհեաց ա̃ծ. և ոչ որքան տուգանքն, այնքան շնորհքն. ոչ որքան նուաբեկութիւնն, այնքան օգուտն. այլ յոլովագոյնք են բարիքն քան զչարիքն, և յոյժ իրաւացի ։ Քանզի չարիսն ծառայ 'ի ներքս եմոյծ և նուաղունք էին. իսկ զբարիսն տէրն շնորհեաց, յաղագս որոյ և յոգունք էին. վասն այսորիկ ասէ. "Ոչ որպէս սխալանքն, նոյնպէս և շնորհքն". և ապա 'ի վերայ ածէ զզանազանութիւնն. "Զի դատաստանն 'ի միոջէն, ասէ, 'ի դատապարտութիւն, բայց շնորհքն 'ի բազմաց յանցուածոցն յարդարութիւն" ։ Յայտ է ասացեալս, վասն որոյ հարկ է զլուծմունս 'ի վերայ բերել ։ Դատաստանն՝ այս է պատուհասն, պատիժքն...[1] այսոքիկ արքայութեանն արժանիք, ասա ինձ ։ Տեսանես զի հաւատոցն աչօք հայէր, ոչ զերևելիս քննէր ։

1 [illegible] 60 ։

նովին մարմնովն զոր ինչ գործեաց եթէ բարի և եթէ չար»: Ո՞չ լսես նմա որ ասէն դարձեալ. «Պարտ է ապականացուիս այսուիկ զգենուլ զանապականութիւն և մահկանացուիս այսուիկ զգենուլ զանմահութիւն»: Մահկանացուի, որում, հոգւո՞յ եթէ մարմնոյ. վասն զի հոգին բնութեամբ անմահ է, և մարմին բնութեամբ մահկանացու: Այլ բազում ինչ կոտորէն յայտնէ. սակայն և 'ի նոցունց իսկ 'ի մնացուածոցն զազգական զատուցելոցն յանդիմանեսցուք:

Եմուտ, ասէն, 'ի դրախտն աւազակն: Եւ զի՞նչ է այս. միթէ այնոքի՞կ իցեն բարիքն զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և սիրտ մարդոյ ընկալաւ[1]. քանզի յաղագս նորին զայսքան աւուրս խօսիմք: Արդ ո՞րպէս եառ զբարիսն աւազակն. քանզի ոչ 'ի դրախտն խոստանայ մուծանել զմեզ ած, այլ 'ի նոյն ինքն յերկին. և ոչ արքայութիւն դրախտին, այլ արքայութիւն երկնից քարոզեաց. վասն զի «Սկսաւ, ասէ, քարոզել և ասել՝ ապաշխարեցէք զի մերձեցաւ ոչ արքայութիւն դրախտին, այլ արքայութիւն երկնից»[2]: Եւ 'ի դրախտն եմոյծ զաւազակն, ոչ ևս ետ նմա զբարիսն:

Բայց և այլ իմն առ այսոքիւք ասեմ: Դրախտ աստանօր ոչ զդրախտն ասաց, այլ անուամբ դրախտին զարքայութիւնն անուանեաց: Վասն զի ընդ աւազակին խօսէր ընդ առն որոյ ոչ ինչ էր լուեալ զբարձրագոյն վարդապետութիւնս, և ոչ ինչ գիտէր յաղագս մարգարէութեան, այլ զամենայն ժամանակս յանապատս դեգերեալ և սպանութիւնս գործեալ, և ոչ երբեք յառեալ յեկեղեցի և ոչ ճաշակեալ յածային լսելութենէն, ոչ գիտէր զինչ արդեօք իցէ արքայութի երկնից, վասն այսորիկ ասէր. «Այսօր ընդ իս իցես 'ի դրախտին». ծանօթագունիւ և սովորական անուամբ դրախտին զերկնից արքայութիւնն նմա զեկուցանէր:

Եղիցին այդոքիկ, և կոչեսցի անուամբ դրախտին արքայութիւն երկնից, և յաղագս նորա խօսեսցի ած ընդ նմա. ընդունիմ: Ապա ուրեմն եմուտ, ասէն, յարքայութիւնն երկնից: Ուստի յայտ է. որոյ ասացն «Այսօր ընդ իս իցես 'ի դրախտին»: Եւ եթէ բռնաւորագոյն

1 Պակասին տողք 2:

2 Պակասին տողք 27:

է լուծումն այս, զյայտնագոյնսն 'ի վերայ ածցուք։ Ո՞ր է այս. ասաց Քրիստոս. «Որ ոչ հաւատայ յորդի, արդէն իսկ դատապարտեցաւ»։ Եւ սակայն ոչ յարութիւն և ոչ դատաստան, ոչ ևս պատիժք և տանջանք. և զխո՞րդ, ասեն, դատապարտեալ է. 'ի մեղացն։ Եւ դարձեալ. «Որ հաւատայ, ասէ, յորդի, փոխեցաւ 'ի մահուանէ 'ի կեանս». և ոչ ասաց փոխեսցի, այլ արդէն փոխեցաւ. և այս դարձեալ յուղղութենէն, և նա 'ի մեղացն։ Որպէս նա դատապարտեցաւ չև ևս դատեցեալ, և նա փոփոխեցաւ 'ի կեանսն չև ևս փոփոխեալ, և առ նա յուղղութենէն և առ միւսն ևս 'ի մեղաց որպէս եղելոցն խօսի, նոյնպէս և ընդ աւազակին խօսեցաւ։ Զի և բժիշկք յորժամ տեսանեն զոք անյուսացեալ, ասեն թէ արդէն վախճանեցաւ և մեռեալ է. և սակայն տակաւին ևս զշունչն 'ի նմա տեսանեն։ Իսկ որպէս նա վստահութիւն ինչ ոչ ունէր ապրանաց[1] 'ի բժշկացն մեռեալ համարեցաւ, նոյնպէս և աւազակն զի զերծեալ էր յամենայն վտանգէ դառնալոյ 'ի կորուստ, մտանէր յերկինս։ Նոյնպէս և Ադամ լուաւ՝ եթէ «Յաւուր յորում ուտիցէք 'ի փայտէդ, մահու մեռանիցիք»։ Եւ ապա 'ի նմին աւուր մեռա՞ւ. և ոչ երբէք, այլ եկաց ամս ինն հարիւր ամ զկնի աւուրն այնորիկ։ Եւ զխո՞րդ ասէր եթէ 'ի նմին աւուր մեռանիցիք. հրամանաւ և ոչ փորձիւ։ Նոյնպէս և աւազակն յերկինս եմուտ։ Եւ լուր զինչ ասէ Պաւղոս, յայտնելով եթէ ոչ ոք ոչ առ զաւրեացն ևս հատուցումն, քանզի յաղագս մարգարէիցն և արդարոցն խօսելով 'ի վերայ էած. «Ըստ հաւատոց մեռան սոքա ամենեքեան, ոչ ևս ընկալեալ զաւետիսն. այլ 'ի հեռաստ զայնոսիկ տեսանելով ողջունեցին, զի յաղագս մեր նախահոգացեալ, զի մի առանց մեր կատարեսցին»։ Զայս ընկալարուք և յիշեցէք։ . . .[2]

1 Հետազօտք [illegible] . . . [illegible] 'ի յուռեէն։ 4է [illegible] [illegible]. [illegible]

2 Պակասի վերջին մասն տողք 15։

Հայեցարուք, քանզի զԹագաւորական գիր ընթեռ-
նլով մարդիկ բովանդակ ժողովեն տեսարան. եւս առա-
ւել մեք ոչ զմարդկան, այլ զայ օրէնս հանդերձեալ
եմք ընթեռնուլ, ընդունուցանել պարտիմք զմիտս և
հայել 'ի յասացեալս:

Գիտեմք զի բամբասեն ոմանք զօրինադիրն, և զօ-
րէնսն ասեն պատճառք լեալ յանցանաց: Արդ առ նո-
սա հարկաւոր նախ առաջին կալ և ցուցանել վասն նո-
ցուն իրաց, եթէ ոչ ատելով զմարդն և ոչ ծանրացու-
ցանել կամելով բնութեանս մերում, այլ սիրելով և
խնամելով զօրէնսն ետ: Այլ զի 'ի մարտակցութիւն մեզ
ետ, լուր զինչ ասէ Եսայի. «Զի զօրէնս յօգնակա-
նութիւն ետ»: Իսկ որ ատեայն՝ ոչ օգնէ: Դարձեալ
ասէ մարգարէն. «Ճրագ ոտից իմոց են օրէնք քո և
լոյս շաւղաց իմոց»: Որ ատէն՝ ոչ լուծանէ զխաւարն
ճրագաւ, և ոչ առաջնորդէ լուսով մոլորելոյն: Դար-
ձեալ Սողոմոն. «Ճրագ է պատուիրան օրինացն». և
լոյս կենաց և յանդիմանութիւն և խրատ: Նա ոչ
օգնականութի միայն է ոչ խրատ եւեթ, այլ և կեանք.
և այսոքիկ ոչ են ատեցողի և ոչ կորուսանել կամողի,
այլ որ զձեռն կարկառէ և յարուցանէ: Յաղագս այսո-
րիկ և Պաւղոս առ Հրեայսն յերկարելով, եցոյց որքան
շահ 'ի ներքս մուծին օրէնքն, և եթէ հանգիստ՝ այլ
ոչ ծանրութիւն բնութեան մերում են՝ ասէր, եթէ
«Հրեայ անուանիս և հանգուցեալ ես յօրէնսն»: Տե-
սանես զի և ոչ ծանրացուցանելոյ վասն զօրէնսն ետ Ած:

Ախորժես ուսանել՝ թէ և պատուելոյ սակս. մանա-
ւանդ զի և այսոքիկ բաւական էին ցուցանել զպատիւն
և զխնամակալութիւնն, բայց սակայն և յայլոցն ես 'ի
վկայութեց զայն զայս արասցուք յայտնի: «Գովեա Ե-
րուսաղէմ զտէր. գովեա զԱծ քո, Սիոն: Զի զօրացոյց
զնիգս դրանց քոց. օրհնեաց զորդիս քո 'ի քեզ: Որ եդ
զսահմանս քո 'ի խաղաղութի, և ճարպով ցորենոյ լցոյց
զքեզ»: Այս ապա ասելով և զոր 'ի ձեռն այլոց ստա-
ցուածոց զբարեգործութիւն լեալ յԱյ, 'ի վերայ էած
զլաւագոյնն և զմեծ այսպէս ասելով. «Որ պատմեաց
զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զիրաւունս Իս-
րայէլի: Ոչ արար այսպէս ամենայն ազգի, և զդատաս-
տանս իւր ոչ յայտնեաց նոցա»: Տեսանես որքան

թուեաց զպարիսն։ Զամրութիւն քաղաքացն, քանզի ասէ «զօրացոյց զնիգս դրանց քոց». զվճարումն 'ի պատերազմէն, «եդ, ասէ, զսահմանս քո 'ի խաղաղութիւն». զառաւելութիւն հարկաւորացն, «և զճարպ ցորենոյ, ասէ, լցոյց 'ի քեզ»։ Այլ սակայն քան զամենայն զայնոսիկ՝ զօրինաւորութիւն պատուականն երևեցոյց։ Իսկ զի քան զգուշութիւն և զխաղաղութիւն և զվճարումն 'ի պատերազմաց և զքաջորդութիւն և զկարևորացն զառատութիւն՝ յաւէտ մեծագոյն պարգև էր զօրէնսն առնուլ և զարդարութիւն այ ուսանել, քան զամենեսեան յետոյ դնելով իբրև զգլուխ և զկատ բարեացն՝ 'ի վերայ եած ասելով. «Ոչ արար ամենայն ազգաց տէր այսպէս»։ Որպէս։ Իսկ համայն յառատութիւնս և յայլս ամենեսեան համարեալս յոլովք բազում անգամ վայելեցին. բայց ոչ յաղագս յառաջասացելոցն խօսիմ, ասէ, այլ վասն օրինացն, զի ոչ արար այսպէս ամենայն ազգի. սորին աղագաւ 'ի վերայ եած. «Իսկ զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա»։ Տեսանես քան զոմ զհամարեալ բարիսն մեծագոյն զօրէնսն։ Զսոյն և Երեմիաս երևեցոյց. քանզի որ 'ի գերութեանն էին, ողբալով ասէր. «Զի է զի յերկրի թշնամեաց ես, զաղբիւր իմաստութեանն թողեր». զօրէնսն ասէ։ Զի զոր օրինակ աղբիւր յոլով առուս արձակէ ամենայն ուստեք, նոյնպէս և օրէնքն յոքունս ամենայն ուստեք արձակելով պատուիրանս ոռոգանեն զմեր զանձինս։

Իսկ ապա ցուցանելով զընտրութիւն պատուոյն որ 'ի ձեռն օրինացն եղև՝ ասէր. «Ոչ լսելի եղև 'ի Քանան այս իմաստութիւն, և ոչ երևեցան 'ի Թեման, և ոչ որդիք Ագարայ վաճառականք և խնդրողք ծանեան զճանապարհս նորա»։ Իսկ ցուցանելով թէ հոգևոր ոմն է և ածային, «Ո՞ ել, ասէ, յերկինս և իջոյց զնա»։ Իսկ ապա 'ի վերայ եած. «Սա ած մեր. ոչ համարեսցի ոք առ սա, եգիտ զամենայն ճանապարհս հանճարոյ, ետ զնա Յակոբայ ծառայի իւրում և Իսրայէլի սիրեցելոյ իւրում»։ Յաղագս այսորիկ և Դաւիթ ասէր. «Ոչ այսպէս արար ամենայն ազգի, և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա»։ Զսոյն և Պաւղոս զեկուցանելով ասէր. «Զինչ է առաւել Հրէին, և կամ զինչ օգուտ 'ի թլփատութենէն»։ Յաւէտ ըստ ամենայն օ-

Digitized by Google

րինակի. նախ առաջին զի հաւատացան բանիցն իմ̃յ ։ Տեսանե՞ս զիարդ և առ մեկնեաց՝ զոչ արարն այսպէս ամենայն ազգի, և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա ։ Քանզի եթէ առաւել հրէին, այս է՝ նոքա միայն յայլոց մարդկանէ պատուեցան որովք զգրաւր օրինացն, ոչ ուրեմն ծանրացուցանելով զմեր բնութիւն՝ այլ պատուելով եւ զօրէնսն ա̃ծ ։

Եւ ոչ զօրէնսն միայն տալով պատուեաց, այլ և 'ի ձեռն ինքեան տալոյն. և այս մեծ տեսակ է պատուոյ, ոչ ընձեռել ևեթ զբարիսն, այլ և ինքեամբ տալ ։ Եւ զի մեծ է այս պարգև, լուր Պաւղոսի որ ասէ, և զայս ցուցանէ, քանզի տեսանէր զհրեայսն ամբարտաւանեալս, որովք մարգարէքն առ նոսա եկին, 'ի վայր զիջուցանէ, եթէ 'ի մեծագոյն պատիւս մեք վայելեցաք ոչ 'ի ձեռն ծառայից, այլ 'ի ձեռն տեառն վարդապետութեանցն զխրատեալք, այսպէս իմն ասէ եբրայեցւոցն գրելով. “Բազմամասնապէս և բազմօրինակաբար կանխաւ ա̃ծ ընդ հարս մեր խօսեցաւ, 'ի կատարածի աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ որդւովն”. և դարձեալ այլուր. “Ոչ միայն, այլ և պարծիմք եւս յա̃ծ 'ի ձեռն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով զհաշտութիւնն ընկալաք”։ Տեսանե՞ս զնա ոչ 'ի հաշտութիւնն միայն պարծեցեալս, այլ և 'ի ձեռն Քրիստոսի առեալ զհաշտութիւնն ։ Եւ դարձեալ զյարութիւնն պարկեշտացուցանելով. “Ինքնին տէրն իջցէ յերկնէ”։ Տեսանե՞ս և անդ 'ի ձեռն տեառն զամենայն լեալ, նոյնպէս և աստ ոչ 'ի ձեռն ծառայի ուրուք և հրեշտակի, այլ ինքն ինքեամբ պատուիրեաց Ադամայ. երկուք պատուովք զմարդն պատուեաց, և տալով զօրէնսն, և 'ի ձեռն ինքեան տալոյն ։ Եւ զիարդ գլորեցաւ նա. յաղագս իւրոյ պղերգութեանն ։ Ցուցանեն զայս որ ընկալան զօրէնսն և ոչ զայթակղեցին, այլ և առաւել եւս քան զհրամայեալսն արարին ։

Բայց զի տեսանեմ զժամս փութացեալ, զայս քան 'ի միւս եւս խօսսն յապաղեմ. դուք առ այժմ զառացեալսդ պահեցէք և յիշեցէք, և ոչ զլուեալսն հայցեցէք, և զայսոսիկ յեկեղեցւոջ և 'ի հրապարակի և 'ի տան վարժեսցի իւրաքանչիւր ոք. զի ոչ ինչ է հեշտ քան զա̃ծային լսելութիւնս ։ Եւ լուր զինչ ասէ յաղագս այ-

Digitized by Google

սորին մարգարէն. "Ո՞րքան զի քաղցր են քիմաց իմոց բանք քո քան զմեղր և զխորիսխ բերանոյ իմոյ":

Արդ զայս խորիսխ ամբարիցէք 'ի վերայ սեղանոյն, զի զամենայն զնա լցցէ հոգևորականաւն: Ո՞չ տեսանիցէք զպարգևամոլիկ[1] մարդիկ զիարդ զկնի կերակրոյն քնարերգողս և քնարս 'ի ներքս մուծանեն, տեսարան զկրեանց տունսն առնեն նոքա. և դու արա զտուն քո երկին, և արասցես ոչ զորմն փոփոխելով, այլ զնոյն ինքն զերկնից տէրն 'ի սեղան քո կոչելով: Ո՞չ ամաչէ զայնպիսին ընթրել ա՞ծ. քանզի ուր հոգևոր վարդապետութիւն, անդ և ողջախոհութիւն և պարկեշտութիւն և հեզութիւն. ուր բնաւ օր այր և կին և մանկունք, համականութիւն և սիրելութիւն, և առաքինութեանն կապանօք կացեալ իցեն, անդ 'ի մէջ է Քս: Քանզի ոչ ոսկեղէն ձեղուն խնդրէ, ոչ պատուականութիւն սեանց և ոչ զգեղեցկութիւն կճոյ. այլ զոգւոյն գեղեցկութիւն և զմտաց զբարեկերպութիւն և զսեղան արդարութեամբ լցեալ որ զողորմութեան պտուղ ունիցի: Իսկ եթէ տեսցէ զայնպիսի սեղան, վաղվաղակի հաղորդի ժողովոյն, մերձ լինի. վասն զի ինքն է որ ասացն, "Քաղցեալ զիս տեսիք և կերակրեցէք": Արդ յորժամ լսիցես 'ի խոնարհաւստ զաղքատին զբարբառ, և 'ի սեղանոյն որ առաջի կայ տացես կարօտելոյն, ըզտէրն կոչեցեր 'ի ձեռն ծառային առ սեղանն քո, և զամենայն զնա օրհնութեամբ լցեր, յաղագս պատճառի պտղոյն մեծապէս լցուցանել քեզ զշտեմարանսն բազում բարեօք կաղմեցեր:

Այլ ա՞ծ որ տայ հաց 'ի կերակուր և սերմն սերմանողի, բազմացուսցէ զպտուղ ձեր և աճեցուսցէ զարդիւնս արդարութեան ձերոյ յամենայնի՝ ձեզ զշնորհսն իւր ընձեռելով, և արժանաւորս արասցէ արքայութեան երկնից: Որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր համանգերձ սրբով հոգւովն յաւիտեանս. ամէն:

1 Այլազգէս յօրինակին. յայնն ձևս, մեծարան:

## ԵՐԿՆԱՌԱՔՈՒՄՆ ԵՐԿՐՈՐԴ ԿԻՒՐԱԿԷԻՆ ԱՌԱՋՈՒԿԱՆ *

Պատարեցէք զպահոց նաւարկութիւն, և 'ի նաւահանգիստն այ՟ շնորհօքն պատուհասիւ ժամանեսցուք։ Որպէս մի յաղագս այսորիկ պղերգասցուք ի նաւահանգստէն զրկեսցուք, այլ առաւել աղաղակաւ փութասցուք մտանել։ Զի և նաւուղիղք յորժամ զնաւամատոյցն նաւ զեկոլ քեռանցն, զառագաստն 'ի վեր ամփոփելով, 'ի մերձաւոր նաւահանգստին հանդերձեալ մտածանեն, 'ի տագնապի և 'ի հողմ փոքրկեն, մի գուցէ յետ երկայնութեան ճառացն սա մերձ ուրեք փշրեսցեն զնաւն, և անօգուտ կորուսանիցեն զամենայն վաստակս։ Նոյնպէս և մեզ եղբարք պարտ և արժան է և 'ի վտանգի կենաց, մի գուցէ 'ի կատարածի աշխատութեանցն 'ի հաւատացելոց վտանգս կոցն անկանիցիմք. յաղագս որոյ և յերկարել պարտ է այժմ զգոյշ լինել։ Որպէս և ընթացողքն առնեն. յորժամ տեսանեն մերձ 'ի յաղթանակն լինել, յայնժամ առաւել ձգեն զընթացսն. նոյնպէս և մշակք զկնի բազմաջանիցն յորժամ յաղագս պտղոյ մերձին, զմարմին յաւելու կանգնեն և զարթուցանեն զպարտեանն զգործարաթիւնս։ Նոյնպէս և մեք այժմ արասցուք. զի նաւուղղացն նաւահանգիստն և ընթացողաց յաղթանակին և մշակացն պտղոյ, նոյնպէս և մեզ մերձաւոր եօթներեակս, զլուխ բարեաց մերոց և յաղագս պտղոյ մերոյ։

Վասն որոյ և մեծ կոչեմք զնա, նորա ոչ եթէ մեծագոյն ինչ ունի զերկայնութիւն քան զայլ ամենայն աւուրքս այսորիկ, քանզի են և այլք ևս մեծագոյնք, և ոչ զի յոլովք են թուով, զոր այլոցն են ամենեքեան. այլ վասն զի մեծամեծ ուղղութիւնք մեզ 'ի սմա եղեն 'ի տեսանել. Վասն զի յայսմ 'ի մեծ եօթներեակի բազմաժամանակեայ բանսութիւն սատանայի լուծաւ, մահ չիջաւ, հզօրն կապեցաւ, գործիքն նորա յափշտակեցան, մեղք 'ի բաց բարձան, նզովքն լուծան, դրախտն բա-

* Ցայն բնագիրն ձեռագրիս վերնագրեալ է զձեռագ զայս . Ի մեծ շաբաթն՝ քնէ էր աղօթս մեծ հինգշաբթի . և 'ի բանն « Օրհնեա անձն իմ զՏէր » . և 'ի բանաքաղութիւն որ 'ի գործս առաքելոցն ։

ցաւ, երկին գնալի եղև, մարդիկ ընդ հրեշտակս խառ-
նեցան, միջնորմն 'ի բաց բարձաւ, խաղաղութեանն ամ
խաղաղութիւն արար վերնոց ընդ երկրայինս։ Վասն
այսորիկ մեծ կոչի եօթներեակն. և որպէս նոյն ինքն է
գլուխ այլոց եօթներեկաց, նոյնպէս և սորա գլուխ շա-
բաթս մեծ։ Յաղագս այսորիկ 'ի սմա յոլովք զփոյթն
երկարեն. ոմանք զպահսն աճեցուցանեն և ոմանք զաս-
տուածային հսկումն, այլք առատ ողորմութիւնս առ-
նեն 'ի բարի գործսն փութով, և յերկարեալ 'ի մեզ
մեծութեամբ զբարեգործութիւն ոչ լեալ վկայեն։ Զի
զոր օրինակ զՂազարոս յարոյց Քրիստոս, ընդ առաջ
ելանէին նմա ամենայն երուսաղէմացիքն, և առ բազ-
մութիւնսն վկայէին եթէ յարոյց զմեռեալն, և փոյթ
հանդիպեցելոցն էր սքանչելեացն ցոյցք, նոյնպէս և
այժմ փոյթ յաղագս մեծի եօթներեկի այսորիկ է մե-
ծութիւն ուղղութեանցն որ 'ի սմա ցուցանի նշանք։
Զի ոչ 'ի միջի քաղաքէ ելանեմք հանդիպել Քրիս-
տոսի այսօր, և ոչ յԵրուսաղէմէ միայն, այլ յամենայն
աշխարհէ բիւր մարդիկ ամենայն ուստեք ժողովք ելա-
նեն դիպել Քրիստոսի, ոչ ոստս արմաւենեաց առնլով
և շարժելով, այլ ողորմութիւն և մարդասիրութիւն,
առաքինութիւն և պահս, աղօթս և տքնութիւնս և
զամենայն երկիւղածութիւնս ընծայելով տեառն։

Եւ ոչ մեք միայն պատուեմք զեօթներեակս զայս,
այլ և թագաւորք աշխարհի որ առ մեզս են՝ ոչ դուզ-
նաքեայ ինչ պատուեն զնա, դադարկութիւն ամենե-
ցուն ընձեռելով որք զհասարակ քաղաքաց գործեն զիրս,
զի յայնմ պարապման վայելեսցեն զաւուրս զայսոսիկ,
և յամենայն հոգևոր սպասաւորութիս հայելով։ Վասն
այսորիկ և զատենից դրունս փակեն. դադարկացին,
ասեն, ամենայն հակառակութիւնք, և կռուոյ և տան-
ջանաց տեսակք. հանգիցեն սուղ ինչ և դահճացն ձեռք.
հասարակաց ուղղութիւն եղև 'ի տեառնէ, եղիցի և 'ի
մէջ ծառայիցս բարի ինչ։ Եւ ոչ այսու միայն պատուովք
պատուեսցեն, այլ և միւս ևս ոչ ինչ նուազ քան զսա.
թագաւորական գիր առաքելով՝ ասէր որք 'ի կապարան-
սըն բնակեն, արձակեցէք 'ի կապանացն։ Զի զոր օրի-
նակ տէրն մեր 'ի դժոխս զըմբռնեալսն ամենեսեան 'ի
մահուանէ ազատեաց և ելոյծ, նոյնպէս և ծառայքն

ըստ իւրեանց կարողութեան ընծայելով՝ տէրունական մարդասիրութեանն նմանեն. արժանիս 'ի զգալի կապարանացն, վասն զի յիմանալեացն ոչ կարեն։

Զայս եօթներեակ և մեք պատուեմք. և փոխանակ արմաւենեացն եւ ես ընդ ձեզ զվարդապետութեանս բան առաջի արկանելով, զերկուս խերևէշս արկանեմք որպէս զայլքն զայն։ Ելին նոքա յայնժամ ոստս արմաւենեաց ունելով, աղաղակէին և ասէին. "Ովսաննա 'ի բարձունս. օրհնեալ որ եկեալդ յանուն տեառն"։ Եղաք և մեք փոխանակ ոստոց արմաւենեաց, յօժարութիւն զուարձացեալ ցուցանելով, աղաղակեսցուք և մեք և ասասցուք որպէս և այսօր սաղմոսեմքն. "Գովեա անձն իմ զտէր. գովեցից զտէր 'ի կեանս իմ"։ Եւ այն բան Դաւթայ էր և այս. մանաւանդ թէ ոչ այն Դաւթայ և ոչ այս, այլ երկոքին հոգւոյն շնորհացն. քանզի խօսեցաւ մարգարէն, բայց շարժեաց մխիթարիչն զմարգարէին զանձն. վասն այնորիկ ասէ. "Լեզու իմ եղէգն դպրի արագագրի"։ Զի զոր օրինակ եղէգն ոչ ինքեամբ շարժի և յինքենէ գրէ, այլ որ իշխեն շարժել զնա ձեռքն, նոյնպէս և լեզու մարգարէին ոչ յինքենէ խօսէր, այլ յոյ շնորհէն։ Եւ ընդէր ոչ ասաց արդեօք պարզաբար՝ լեզու իմ իբրև գծրիչ դպրի, այլ եղէգն դպրի արագագրի. զի ուսցիս եթէ Հոգւոյ իմաստութիւն է, յաղագս որոյ և յոլով դիւրութիւն և բազում ընթացք։ Բանզի մարդիկ յինքեանց խօսելով յարմարեցուցանեն, խորհին, յամեն և բազում ժամանակ ծախեն։ Իսկ անդ զի իբրև յաղբերէ զբանն բխէր[1] և ոչ էր արգել ուստեք, այլ զընթացս լեզուին յաղթէր մտացն 'ի վերայ հասուցն, վասն այնորիկ ասէր. "Լեզու իմ գրիչ դպրի արագագրի"։ Ի վեր բըխէր 'ի ներքուստ զաղբիւրն հանդերձ բազում առատութեամբ, ասէ. յաղագս որոյ յոլով է երագութիւն։ Ոչ խորհելոյ մեզ և ոչ աշխատութեան և կամ կրթութեան պէտք են։ Բայց տեսցուք զինչ ասէ. "Գովեա անձն իմ զտէր"։

Զայս Դաւիթ ասաց յայնժամ, զսոյն և մեք զկնի Դաւթայ սաղմոսեցաք այսօր. զի թէպէտ և ոչ մարմնով մերձ էր, այլ հոգւով մերձ է։ Եւ զի մերձ են ար-

1 Պակասէր յօրինակին բխէր . . . [illegible] . յաւելաւ 'ի յունէն։

դարքն առ մեզ և ընդ մեզ սաղմոսեն, լուր զինչ ասէր Աբրահամ ընչեղին. քանզի ասացեալ նորա “Առաքեա զՂազարոս զի եղբարքն իմ ուսեալ զգժոխոյն իրս ուղղեսցեն զինքեանս”, ասէ ցնա. “Ունին զՄովսէս և զմարգարէսն”: Եւ սակայն Մովսէս և մարգարէքն վաղ մեռան. այլ թէպէտ և վախճանեցան մարմնով, այլ 'ի ձեռն գրոց ունէին զնոսա: Քանզի եթէ պատկեր ոք անշունչ կանգնեսցէ որդւոյ և կամ սիրելոյ, վարկանի մերձ գոլ զգնացեալն և 'ի ձեռն անշունչ պատկերին զնա տեսանէ, ևս առաւել մեք 'ի ձեռն աստուածային գրոց 'ի սրբոցն վայելեմք 'ի բնակցութիս, ոչ զմարմնոց նոցա՝ այլ զհոգւոյն պատկերս առնլով. վասն զի 'ի նոցանէ ասացեալքն հոգւոց նոցա են կերպարանք:

Ախորժեա ուսանել եթէ կենդանիք են արդարքն: Ոչ ոք զմեռեալ վկայ կոչէ. իսկ ած վկայս զնոսա կոչեաց իւրում ածութեանն, և նախ առաջին զԴաւիթ, զի քեզ ուսուսցէ եթէ կեայ: Քանզի Հրեայքն յերկուանային յաղագս նորա, ասէր ցնոսա. “Զի՞նչ ձեզ թուի վասն Քրիստոսի, ո՞յր որդի է. ասեն ցնա Դաւթայ: Ասէ ցնոսա. զիա՞րդ Դաւիթ հոգւովն տէր կոչէ զնա. ասաց տէր տեառն իմում՝ նիստ ընդ աջմէ իմմէ”: Տեսե՞ր զիարդ կեայ Դաւիթ. քանզի եթէ ոչ կեայր, ոչ արդեօք կոչէր զնա վկայ ածութեան իւրում: Եւ ոչ ասաց զիարդ Դաւիթ հոգւովն տէր զնա կոչեաց, այլ տէր կոչէ. զի ուսուսցէ թէ մերձ է տակաւին 'ի ձեռն գրոցն և խօսի:

Սաղմոսեաց երբեմն Դաւիթ, սաղմոսեմք և մեք ընդ Դաւթայ այսօր. նա քնար ունելով յանշունչ ներդից, և եկեղեցի քնար ունի 'ի շնչաւոր ներդից: Լեզուք մեր աղիք քնարի են, զանազանաբար արձակել զհնչումն և զձայնակից բարեպաշտութիւն: Քանզի կանայք և արք, ծերք և մանկունք զանազանեալք են ըստ բնութե և ըստ հասակի, այլ ոչ որոշեալք ըստ օրհներգութեանն բանի. զի զիւրաքանչիւր ուրուք զձայն հոգին խառնելով զմի նուագերգութիւն գործէ, որպէս և ինքն յայտնեաց Դաւիթ զամենայն զհասակս զերկոցուն զբնութիւնն առ ձայնս առ այս կոչելով և ասելով. “Ամենայն շունչ գովեսցէ զտէր: Գովեա անձն իմ զտէր”:

Ընդէ՞ր արդեօք զմարմինն եթող, ե՞ր աղաղաւ ոչ ինչ առ մարմինն խօսի. բաժանեա՞ց արդեօք զկենդանին յերկուս։ Այլ ոչ երբէք. այլ զարուեստաւորն յառաջագոյն ընդդատուցանէ։ Այլ զի ոչ որոշեաց զմարմինն 'ի հոգւոյն, լուր զինչ ասէ այլուր. "Աստուած ած իմ, եւ առ քեզ առաւօտ առնեմ. ծարաւեաց առ քեզ անձն իմ, քանիպատիկ քեզ և մարմին իմ"։ Այլ և յօրհնութիւնսն ցոյց ինձ զմարմինն կոչեցեալ։ Ասէ. "Օրհնեա անձն իմ զտէր, և ամենայն փոր իմ զանուն սուրբ նորա"։ Տեսէ՞ր զմարմինն հաւասարեալ, տեսէ՞ր հաղորդեալ ձայնակցութեանն։ Զինչ իցէ արդեօք "և ամենայն փոր իմ զանուն սուրբ նորա"։ Զջիլս ասէ, զոսկերս, զերակս, զշնչերակս և զամենայն որ 'ի ներքս մասունք են։

Այլ զխորհ կարեն 'ի ներքսայքս մեր զած բարեբանել, ձայն ոչ ունելով և ոչ լեզու և ոչ բերան. քանզի հոգի կարէ, խոկ 'ի ներքսայքն զխորհ կարեն. ոչ ձայն և ոչ բերան և ոչ լեզու ունելով զխորհ կարասցեն ներքսայքս մեր բարեբանել զած։ Որպէս "երկինք պատմեն զփառս այ"։ Զոր օրինակ երկինք ոչ լեզու ունին, ոչ բերան, ոչ շրթունս. այլ գեղեցկութեամբ դիտաց սքանչացուցանելով զտեսողսն առաքեն զարմանալեօքն զբարեբանութիւնն յարարիչն իւրեանց, Նոյնպէս և ներքսայքս մեր, եթէ անցանիցես ընդ ամենայն բանիւ. եթէ տեսցես զզանազանութիւնն, եթէ տեսցես զորոշմունս արարչութեանն գործոյ, զօրութեանն, միաբանութեն, ստեղծոյն, դիրութեանն, թուոյն, յարմարութեանն, զխորհրդարեանեան բանն զայն խօսիցիս. "Որքա՛ն զի մեծացան գործք քո տէր. զամենայն իմաստութեամբ արարեր"։ Տեսէ՞ր զխորհ օրհնեն 'ի ներքսայքս զած առանց ձայնի և բերանոյ և լեզուաց։

"Օրհնեա անձն իմ զտէր"։ Ընդէ՞ր արդեօք ընդ հոգւոյն խօսիցի։ Զի մի 'ի լեզուոյն խօսել՝ նա բանդագուշեացի ուրեք, զոր բազում անգամ կրեմք յաղօթսն. զի յերկոցունց կողմանց ձայնակցութիւն իցէ։ Վասնզի յորժամ աղօթելով ոչ լսիցես բանիցն քոց, զխորհ ած լուիցէ պաղատանացդ։ Յորժամ միտքն ասիցեն "օրհնեա անձն իմ զտէր", փոյթ ասեն՝ 'ի ներքուստ խորոց սրտէն բերիցեն պաղատանսն. զի և Պաւ-

ղոս ասէ. « Սաղմոսեմ հոգւով, սաղմոսեմ և մտօք »։ Նուագքինի երաժշտական ոմն է հոգւոյն, արուեստաւոր է. գործի է մարմինն, զքնարի կամ զփողոյ կամ զտաւղի տեղի ունելով։ Այլ սակայն երաժշտականքն ոչ յարաժամ ընդ գործիսն են. այլ երբեմն առնուն զնոսա և երբեմն 'ի բաց դնեն. զի և ոչ միշտ նոցա նուագերգութեն ժամանակ է. յաղագս որոյ և ոչ մշտնջենաւորապէս զգործիսն 'ի ձեռն առնուն։ Իսկ քեզ կամելով ինձ վարդապետել, եթէ յարաժամ պարտիս զնա օրհնել և բարեբանել, միաւորեաց ընդ արուեստաւորին զգործին մշտնջենաւորապէս։

Այլ զի յարաժամ գովել է պարտ և արժան, լուր զինչ ասէ Պաւղոս. « Անընդհատ աղօթեցէք, յամենայնի գոհացարուք »։ Այլ զի անընդհատ պարտ է աղօթել, անընդհատ է և գործին ընդ արուեստաւորին։ « Գովեա անձն իմ զտէր »։ Յառաջագոյն միով լեզուաւն զայս ասէր Դաւիթ. իսկ այժմ յորժամ վախճանեցաւ, բիւր լեզուօք զայս բարբառի, ոչ միայն առ մեզ, այլ և ամենայն աշխարհի։ Տեսե՞ր զի ոչ մեռաւ, այլ կեայ. քանզի ո՞րպէս արդեօք մեռաւ, որ այսքան լեզու ունի և այսքանեօք բերանօք բարբառի։ Մեծ գովութիւն է արդարեւ. մաքրէ զմեր զանձն, և յոլով 'ի մեզ ամբարէ զերկիւղածութիւնն։

Կամիս ուսանել որքան է ո̃յ օրհնութեանն զօրութիւն։ Օրհնելով երեք մանկունքն այսպէս շիջուցին 'ի Բաբելոն զհնոցն. մանաւանդ եթէ ոչ շիջուցին, այլ որ յաւէտ սքանչելագոյն էր՝ զեօրբօքեալ զհնոցն իբրև զկաւ կոխեցին ոտիւքն։ Նյս օրհնութիւն 'ի կապարանն մտեալ առ Պաւղոսիւ զկապանսն եղոյծ, զդրունսն եբաց, զհիմունս բանտին շարժեաց, 'ի բազում հիացման զկապանապահն կացոյց։ « Ի մէջ գիշերին, ասէ, օրհնէին Պաւղոս և Շիղաս »։ Այլ ապա զինչ եղև։ Օ՛ ինչ. նոր և հրաշափառագոյն. ամենեցուն կապանքն լուծան, կապեալքն զկապեալսն լուծին. և սակայն կապանաց բնութիւն է զհաւաստեաւ կապեալսն ունել և ընդ ձեռամբ առնել։ Իսկ այժմ կապանապահն արձակեալ առ ոտսն անկաւ կապելոյն Պաւղոսի. քանզի վարապար կապանաց բնութիւն է ունել զկապեալսն. բայց կապանաց որ յաղագս Քրիստոսի այնքան է զօրութիւն,

Digitized by Google

մինչ զի զարձակեալսն ընդ ձեռամբ առնէ ։ Ի ներքին բանտին էարկ զնոսա , և 'ի ներքս լեալք զարտաքին դը-րունսն բացին ․ զոտս նոցա պնդեաց 'ի կոճեղ , և ոտք նոցա կապեալք զայլոց զձեռս արձակեցին ։ Եւ արդ , ասէ , անկաւ առ ոտս նոցա բանտապահն զարհուրեալ դողալով և երկնչելով ։ Զի՞նչ արդեօք եղև ․ ո՞չ դու կապեցեր , ո՞չ դու 'ի զգուշութեան ունէիր , ո՞չ դու 'ի ներքին բանտին արկեր ։ Այո , ասէ , այլ ոչ զոք երբէք այսպիսի կապեցի ։ Եւ զի՞ զարմանաս , ով մարդ , եթէ զկապարանն եբաց որ և զերկինս բանալ էառ իշխանութիւն ․ քանզի “ Զորս կապեսջիք , ասէ , յերկրի , եղիցին կապեալք յերկինս ․ և զորս արձակեսջիք յերկրի , եղիցին արձակեալք յերկինս ,, ։ Զմեղացն եղծ զկապանսն , զի՞ սքանչանաս եթէ զերկաթոյն զկապանս լուծանիցէ ․ զդիւացն եղծ զկապանս , զոգիս կապեալս ազատեաց , զի՞ հիանաս եթէ զկապելոցն շղթայսն եղծ ։ Եւ տես զկրկին սքանչելիսն , եղծ դարձեալ և կապեաց ․ եղծ զնոցա կապանս , և կապեաց զսիրտսն ․ քանզի արձակեալք էին և ոչ գիտէին ․ եբաց և փակեաց ․ եբաց զկապարանին ըզդուրս , և փակեաց զաչս կապելոցն , զի մի՛ զգասցեն զդըրացն բացումն , զի մի՛ համարձակութեամբ վարելով փախստեամբ 'ի բաց վազեսցեն ։ Տեսե՞ր զկապողն և զարձակողն , որ բանայր և փակէր ։

Յաղագս այնորիկ և գիշերի եղև այն , զի առանց ամբոխի իրքն լինիցին և առանց ամենայն խռովութեան ․ վասն զի ոչ ինչ 'ի ցոյց և 'ի պատուասիրութիւն առնէին առաքեալքն ։ Անկաւ առ ոտս նոցա բանտապետն ։ Եւ զի՞նչ Պաւղոս ։ Տեսե՞ր զնորա սքանչելիսն , տեսե՞ր զնորա զհրաշափառագոյնսն ․ տես զնորա զխնամակալութիւնն , տես և զմարդասիրութիւնն ։ “ Գոչեաց , ասէ , և ասաց ․ մի՛ ինչ առներ քեզ չար , քանզի ամենեքեան աստ եմք ,, ։ Որ կապեացն զնա դառնութեամբ , ոչ ներեաց տեսանել[1] դառնապէս , ոչ եղև ոխակալ ։ “ Ամենեքեան , ասէ , աստ եմք ,, ։ Տես զանհպարտութիւնն ․ ոչ ասաց՝ ես զայդ հրաշալիս արարի , այլ զի՞նչ ․ “ Ամենեքեան աստ եմք ,, ։ Ընդ կապեալսն թուեաց զինքն առաքեալն ։ Ետես զնա , սքանչացաւ ընդ լեալսն , հիացաւ ընդ զարմանալիսն , գոհացաւ զՔս ։

1 Յոյնն ձեռանել ։

Արժանաւոր արդարեւ բազում խնամակալութեան և մարդասիրութեան էր բանտապահն ։ Ոչ կարծեաց խարդախութիւնս ինչ զլեալսն . և ուստի ոչ կարծեաց խարդախութիւն զլեալսն ։ Լուաւ զնոցա օրհնել զԱծ . բազում կախարդս ընկալաւ. քանզի բանտապահ էր . այլ ոչ ոք 'ի նոցանէ երբէք այնպիսի ինչ արար , ոչ եղծ զկապանս և ոչ եցոյց խնամակալութիւն ինչ այնպիսի ։ Քանզի ընտրեաց կապել Պաւղոս , որում իշխանութիւն էր փախչել զի զնա ազատեսցէ 'ի վախճանէն ։ Ինքըս վաղեաց՝ սուր 'ի ձեռսն ունելով և ջահ . քանզի կամէր սատանայ սպանմամբն յառաջագոյն յափշտակել զնա քան զապաշխարութիւն . այլ ընդագոյն ձայնիւ զփրկութիւն նորա անձինն արագագոյնս շահեցաւ Պաւղոս ։ Վասն որոյ ոչ վայրապար ինչ կոչեաց , այլ մեծ ձայնիւ ասելով “ Ամենեքեան աստ եմք „ ։ Սքանչացաւ ընդ խնամակալութիւնն բանտապահն , անկաւ առ ոտս կապելոցն արձակեալն , և զինչ ասէր . “ Տեարք , զի՞նչ պարտ է առնել զի ապրեցայց „ ։ Դու կապեցեր , և դու 'ի տարակուսանս ես . դու ընդեցեր զոտս 'ի կոճեղն , և դու հայցես տեղի ապաշաւանաց և փրկութեան ։ Տեսե՞ր զջերմութիւնն , տեսե՞ր զփոյթն ։ Ոչ յապաղեաց , իբրև արձակեցաւ յերկեղէն . ոչ մոռացաւ զբարեգործութիւնն , այլ վաղվաղակի 'ի փըրկութիւն անձինն ընթացաւ ։ Խաւար էր և մէջ գիշերի , և ոչ ասաց խորհեսցուք տեսցուք , տիւ լիցի . այլ վաղվաղակի 'ի խորհրդածութիւնս եկն ։ Մեծ ոմն է այրս այս , գերազանցէ քան զմարդկային բնութիւնս . տեսի զնորա զօրութիւնն , տեսի զնորա զմարդասիրութիւնն ։ Բիւր չարիս յինէն կրեաց . ընդ վերջինսն էր , զիս կապողս 'ի ձեռն առնլով կարէր ըմբռնել . ոչ միայն ոչ ինչ արար , այլ և հանդերձեալ խողխողել իմ զանձն իմ , և զսուրն անցուցանել ընդ փողս իմ՝ արգել ։ Յիբաւի ասէ . “ Տեարք , զի՞նչ պարտ է առնել ինձ զի փըրկեցայց „ ։

Զի ոչ միայն սքանչելիք առաքելոցն ձգէին զհաւատացեալսն , այլ և նախ քան զզարմանալիսն վարք նոցա ։ Վասն այսորիկ ասէ . “ Պայծառասցի լոյս ձեր առաջի մարդկան , զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զհայր ձեր յերկինս „ ։ Տեսե՞ր զջերմու-

թիւնն բանաստեղծին, տես և զՊաւղոսի ջերմեռանդութիւն. ոչ յապաղեաց, այլ 'ի կապանս էր և 'ի կոճեղ և 'ի վէրս, վաղվաղակի զնա ուսոյց և ընդ նմա զբանտանն զամենայն. և զկնի հոգևոր աւազանին, յետ հոգևոր սեղանոյն եդ նմա առաջի և սեղան մարմնական: Այս ընդէ՞ր արդեօք շարժեաց զկապանաւորսն. ընդոստուցանել զբանտապանն կամէր առ 'ի տեսութիւն եղելոցն: Լոյծ զգալի կապանս կապելոցն, զի լուծցէ զիմանալի կապանս բանտապանին[1]:

Տես որքան է օրհնութեանն զօրութիւն, որքան զօրէ գովութիւն, որքան կարեն աղօթք: Մինչ մեծ է աղօթից զօրութիւն, այլ մանաւանդ 'ի մերձակայ ժամանակիս. քանզի հանդերձ պահօք լեալ աղօթք, զօրագոյնս առնեն զպաղատանսն: Այժմ աղջախառնութի մնաց յաւէտ է առ մեզ. այլ զարթուցեալ են մեր խորհուրդք, և զվերինսն զամենայն տեսանէ հոգի: Վասն այսորիկ միշտ ընդ պահոց զաղօթսն ընկերցեցին գիրք: Ուրդ և կամ երբ: "Մի զրկէք զմիմեանս, ասէ, բայց եթէ ինչ 'ի միաբանութենէ, զի պարապիցէք պահոց և աղօթից". և դարձեալ այլուր. "Ազգդ այդ ոչ ելանէ, եթէ ոչ աղօթիւք և պահօք". և դարձեալ այլուր. "Աղօթելով, ասէ, և պահելով 'ի վերայ եդ նոցա ձեռս":

Տես ամենայն ուրեք ընդ պահօցն և զաղօթսն. և վասն զի յայնժամ վայելչագոյն և քաղցրահաճոյ 'ի քնարէն առաքին 'ի նուագերգութիւնն, մինչ ոչ են գիջացեալ նեարդքն առաւելասատութեամբ և արբեցութ̃ լուծեալ. այլ քաղցրալիցն խորհուրդ, ընդոստուցեալ միտք, զարթուցեալ հոգի: Այսպէս մերձենալ առ ած̃, և խօսել պարտ և արժան է միայն ընդ միայնում: Ապա զի եթէ սիրելեաց ինչ ունելով կարևոր իրս ասել՝ առանձինն առնելով զնոսա աղաչեմք, որչափ ևս առաւել առ ած̃ զայս առնել պատշաճ է, մտանելով 'ի շտեմարանս ամենայն հանդարտութեամբ. և ամենայն իրօք զխոկեսցուք բովանդակին, յաղագս որոյ օգտակարագոյն մեզ զխնդրուածսն առնեմք:

Մեծ բարի են աղօթք յորժամ հանդերձ գոհացո-

1 Գործոց առաք. 16:

ղական մտօք և սթափեցելովք լինիցիմ։ Այլ զիա՞րդ լինիցի գոհացող. եթէ խրատիցեմք զանձինս ոչ միայն առնլով, այլ և վրիպելովն գոհանայցեմք զնյ։ Քանզի երբեմն տայ ած և երբեմն ոչ տայ. զերկոսին պիտանացու առնէ, որպէս զի թէ առցես և եթէ ոչ առցես, առեր՝ ոչ առնլովն. եթէ դիպեսցիս և եթէ վրիպեսցիս, պատահես վրիպելովն։ Վասն զի երբեմն ոչ առնուլն քան զառնուլն օգտակարագոյն լինի։ Այլ եթէ ոչ էր մեզ բազում անգամ ոչ առնուլն լաւագոյն, ամենայն իրօք արդեօք ընձեռէր միշտ. իսկ օգտակարացն ոչ հանդիպել լաւագոյն լինի պատահումն։ Յաղագս այսորիկ և յապաղէ ոմանց մեզ բազում անգամ, ոչ կամելով զյերկարելն մեզ, այլ զի յամրութք տալոյն՝ զմշտնջենաւոր պարապումն մեր իմաստնացուսցէ։ Վասն զի բազում անգամ առնլով զոր ինչ խնդրեմքն, յետ առնլոյն լուծանեմք զաղօթիցն փոյթ. կամելով նա յերկարել զպաղատանսն և զհայցուածս մեր արթնութեամբ, յերկարէ զտուրսն և յապաղէ։ Որպէս և մանկասէր հարքն առնեն զյոլովութիւն մանկանցն և որք առ մանկական խաղալիկսն ընթանան. բազում անգամ խոստանան ընձեռել տուրս մեծամեծս և ունին յինքեանս. յաղագս այսորիկ երբեմն յապաղեն և երբեմըն բոլորովին իսկ ոչ տան։ Քանզի է երբեք զի զվնասակար զխնդրուածսն հայցեմք. իսկ որ զօգտակարագոյնսն մեր գիտէ ած, ոչ հաւանի աղօթիցն մերոց. զօգուտն մեր անգիտանալով մերով անօրինէ մեզ։ Այլ զինչ զարմանալի եթէ մեք ոչ լինիցիմք լսելի, որ և Պաւղոսի նոյն եղև. քանզի և նա յոլովակի հայցեաց և բազում անգամ վրիպեաց. և ոչ միայն ոչ դժուարացաւ, այլ և գոհացաւ. և յաղագս այսորիկ ասէ. "Երիցս զտէր աղաչեցի,,։ Պաւղոս երիցսն բազում ասէ։ Այլ եթէ բազում անգամ Պաւղոս հայցելով ոչ էառ, զիա՞րդ եղև յոչ առնուլ. զի ոչ միայն ոչ տագնապեցաւ, այլ և պարծի ևս յաղագս ոչ առնլոյն։ Քանզի ասելովն "յաղագս այսորիկ երիցս զտէր աղաչեցի, և ասէ ցիս. բաւական են քեզ շնորհքն իմ, քանզի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի,,, 'ի վերայ էած. "Ախորժելով պարծիմ 'ի տկարութիւնս իմ,,։

Տեսե՞ր զբարեմտութիւն ծառային. հայցեաց 'ի տկա-

բութենէն ապատանալ, և ոչ հաւանեցաւ ա͞ծ. և Պաւղոս ոչ միայն ոչ զչարեցաւ, այլ և պարծի ևս տկարութեամբն: Նոյնպէս և մեք պատրաստեսցուք զմեր անձինս. եթէ տացէ և եթէ ոչ տացէ ա͞ծ զոր ինչ հայցիցեմք, յաղագս երկոցուն շնորհս կալցուք[1] զա͞յ, քանզի զերկոսին մեզ օգտակարագոյնս առնէ: Զի եթէ տալոյն տէր է, և երբ տալոյն և զինչ տալոյն և ոչ տալոյն: Ոչ գիտես դու զօգտակարագոյնսն, որպէս նա հաւաստեաւ գիտէ: Բազում անգամ խնդրես վնասակարս և զեղծս հայցուածս. իսկ որ առաւել քոյոյ փրկութեանդ խնամողն է, ոչ 'ի հայցուածսն հայի, այլ նախ քան զայնոսիկ զօգուտն քո ամենայն իրօք գիտէ: Քանզի եթէ ըստ մարմնոյ հարք ոչ զամենայն զոր ինչ հայցեն մանկունքն՝ ընձեռեն, իբրև ոչ եթէ արհամարհեն զնոսա, այլ զի յաւէտ խնամեն, ևս առաւել ա͞ծ որ յոյժ սիրէն, և առաւել քան զամենեսեան զօգուտն մեր գիտելով զնոյն առնէ:

Արդ պարապեսցուք աղօթից յարաժամ, մի' 'ի տուընջեան ևեթ, այլ և 'ի գիշերի: Լուր զինչ ասէ մարգարէս այս. "Ի մէջ գիշերի յառնէի խոստովան առնել առ քեզ վասն իրաւանց արդարութեան քոյ": Այս թագաւոր և այն հոգս զօրաց և քաղաքաց և ազգաց, զանօրէնութիւնն ընձեռելով, խաղաղութեան հոգտանելով, զպատերազմունս լուծանելով, զանձառելի իրացն հոյլս տեսանէր միշտ առ ինքեան կացեալս, և ոչ դուզնաքեայ ինչ յապահովլումն ունէր, ոչ միայն ընդ տիւն՝ այլ և զգիշերսն ևս յաւելոյր յաղօթսն: Տեսե՞ր զթագաւորն որ յայնքան 'ի փափկութեան կեայր, որ այնքան ունէր հոգս, որ այնքանեօք իրօք էր պաշարեալ, և ոչ 'ի գիշերն դադարէր, այլ ընդ այնոսիկ որ 'ի լերինն միայնացեալք են՝ հաւաստեաւ զաղօթսն կատարէր. որո՞ւմ թողութեան, ասա ինձ, հանդիպեսցուք մեք բազում յապահովլութեամբ կեալով, և զառանձնակ և զառանց իրաց վարս ընտրելով. ոչ զամենայն գիշերսն քունեմք, այլ և ոչ 'ի տուընջեան հանդերձ պատշաճ արթնութեամբ զօրինաւոր աղօթսն կատարեմք:

Մեծ զէն են աղօթքն, մեծ զարդք են պաղատանք,

1. Գտանէր յօրինակին շնորհս կալցուք զա͞յ. յաւելեալ 'ի լուսանցն:

Digitized by Google

ամրութիւն և նաւահանգիստ և անկողոպտելի գանձ թարեաց: Զի զմարդիկ աղաչելով, և ծախից յոլովից կարօտանամք և ծառայական փաղաքշանաց և բազում հնարից և իրաց: Քանզի եթէ ուղղորդ առ այնոսիկ որք տեարքն են տալոյ զշնորհսն՝ խօսիցիմք, հարկաւոր է յառաջագոյն զսպասաւորս և զգաւառապետս նոցա և զվերակացուս ընչից և ամենայն իրօք ողոքել, և յայնժամ կարել 'ի նոցանէ զհայցուածսն առնուլ: Այց առ Տյ ոչ այսպէս 'ի ձեռն այլոց աղաչել, այլ մեր իսկ անձամբքս հաւանի տալ զշնորհսն: Եւ աստ ոչ ինչ առնելով է ինչ շահել. իսկ 'ի մարդկանն և յերկոսեան բազում անգամ վնասիմք:

Եւ արդ զի մեծ է շահն, և առաւել դիւրագոյն յԱյ հայցելն, մի արհամարհեսցուք զաղօթսն: Քանզի յայնժամ առաւել ընդ քեզ հաշտի, յայնժամ քեզ մանաւանդ տայ զոր ինչ խնդրեսն, յորժամ դու 'ի ձեռն քո մաղթեսցես, յորժամ մաքուր ընձեռեսցես զմիտս, յորժամ արթուն զխորհուրդս, յորժամ ոչ վայրապար ինչ խնդրեսցես որպէս առնեն յոլովք. լեզու նոցա խօսի զբանս աղօթիցն, բայց հոգին բազում ուրեք 'ի տունս և 'ի գաւիթս և 'ի ճանապարհս շուրջ թափառի: Այսօրիկ ամենեքեան սատանայի մեքենայք են. վասն զի գիտէ եթէ յայնմ ժամանակի կարեմք թողութեան մեղաց հանդիպել, կամելով զաղօթիցն մերոց նաւահանգիստ ապականել, 'ի նմին ժամանակի մերձ կայ առ մեզ՝ ընդդէմ հարկանելով զմեր զմիտս աստացուածովքըն, մինչ զի տուժեալք առաւել քան օգտեալք՝ 'ի բաց գնասցուք:

Արդ զայս գիտելով, ով մարդ, յորժամ մերձենաս առ Այծ, զմտաւ ած առ ո մօտիս. և բաւական է քեզ յարթնութիւն արժանահաւատ որ[1] հանդերձեալ է տալ զշնորհսն: Հայեա յերկին և իմա առ ով քո բանդ իցէ. քանզի եթէ ընդ մարդս ոք կամելով խօսել, որ սուղ ինչ քան զնա իցէ գերազանցեալ մարդկային պատուովք, թէպէտ և քան զամենեսեան յոյլ է, ամենայն իրօք զինքն ընդօստուցանէ և զարթնուլ հրամայէ անձինն. եւս առաւել զմտաւ ածցուք մեք եթէ ընդ հրեշ-

1 Յօրինակին գրեալ էր որ խօսին հանդերձեալ է ու փառ:

տանկաց անէրն խոտխեք, բաւական 'ի զգուշութիւն պատ-
ճառս զայնցանէ ասացաք։

Այլ եթէ պարտ է և մեզ ևս ինչ հնարս ասել որով կարիցեմք 'ի ծառայութենէն յայնմանէ փախչել, զայս ասասցուք։ Բազում անգամ կատարելով զաղօթսն, ոչ ինչ լսելով զոր ինչ ասասցուքն, երթեալ գնասցեք. եթէ խնամնասցեք զայս, վաղվաղակի զնոյն վերստին ասասցուք. և եթէ զնոյն կրկնեսցուք դարձեալ, և երկիցս անգամ և կամ չորիցս զնոյն ասասցուք, և ոչ յառաջնագոյն 'ի բաց կացցուք յաղօթելոյն, մինչև զամենայն պաղատանսն հանդերձ արթուն մտօք և զգուշացեալ խորհրդովք հեղուցումք առաջի նր։ Այլ եթէ զգայցէ ասանկաց եթէ ոչ նախ 'ի բաց կամք մինչև հանդերձ փութով և արթուն խորհրդովք զայն ասիցեմք, 'ի բաց կաց դարձանակայն, զխոսելով եթէ ոչ ինչ առաւել ընթեռնուլ 'ի զրժանացն, քան եթէ բազում անգամ հարկ անել մեզ վերստին զնոյն աղօթս ասել։ Բազում վերս անկանիք 'ի տունջեան, երգաոք, յընտանեաց, յօտարաց, 'ի հրապարակի, 'ի տան, յամեկաց իրացն, 'ի զօրականաց, 'ի զրացեաց։ Այնմ վերաց ամենեցուն զեղ 'ի վերայ դիցուք 'ի ժամանակի աղօթիցն. քանզի կարող է նա եթէ հանդերձ արթուն խորհրդովք և բարեբեալ անձամբ և ջերմ մտօք մերձենայցեմք առ նա և զթողութիւն հայցեմք, ամենայն սխալանացն ընձեռէ մեզ թողութիւն։ Որում վայել ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք Հօր հանդերձ սբբով Հոգւոյն յաւիտեանս. ամէն։

## ԸՆԴԴԷՄ ԱՐԲԵՑՈՒԹԵԱՆ ՅԱՌԱՋՆՈՐԴԷ ՔԱՐՈԶ ԳԻՆԵՏԵՂՑԵԼՈՅ[1]

Ի բաց եղաք զպահոցն բեռն, այլ մի 'ի բաց մերժեսցուք զպահոցն շահս. զի հնար և զբեռն դնել և զպտուղն հնձել. Ո՞չ աշխատութիւն հանդիսիցն, բայց մի անցցէ փոյթ ուղղութեանցն. հեռացեալ գնացքն

1 Յոյնն պակասի։

պահքն, այլ մնասցէ երկիւղածութիւնն. մանաւանդ թէ և ոչ պահքն գնասցին: Այլ մի՛ երկնչիք. զի զայսոսիկ ասելով ոչ այլ քառասներեակ ձեզ քարոզեմ, այլ զնոյն ձեզ զառաքինութիւն պատուիրեմք. անցին պահք մարմնականք, այլ ոչ անցին պահք հոգևորք. սա լաւագոյն է քան զնա, և նա յաղագս սորա եղև: Որպէս յորժամ պահէիք ասէաք ձեզ՝ թէ է պահելոյն ոչ պահել, նոյնպէս և այժմ յորժամ ոչ պահէք՝ ասեմք ձեզ թէ է և ոչ պահելով պահել: Ո՞չ երբեք արդեօք առակ ինչ լեալ թուիցի ասացեալս. այլ և զլուծումն 'ի վերայ ածից խնդրոյդ:

Զի՞նչ իցէ պահելոյն ոչ պահել. յորժամ ոք 'ի կերակրոյն 'ի բաց կայցէ և 'ի մեղացն ոչ հեռանայցէ: Զի՞նչ իցէ ոչ պահելոյն պահել. յորժամ ոք 'ի կերակուրսն վայելիցէ և 'ի մեղս ոչ հպիցի: Այսպիսի լաւագոյն քան զայն պահսն են. և ոչ լաւագոյնք միայն, այլ և թեթևք. յայն սակս զհիւանդութիւնս մարմնականս յոլովք բաղբաղէն, զգժնդակ մարմնառումն: Ո-սով լցեալս, ասեն, առանց լուանալոյ ոչ հանդուրժեմ. ջրմպութիւնն զիս ապականէ. քանջար ուտել ոչ կարեմ: Յոլովս այսպիսիս լսէի յայնժամ 'ի բազմաց ասացեալս. իսկ յայսմ պահս ոչ ինչ է յայսցանէ ասել: Վայելեա 'ի բաղանիս, հաղորդեցիր սեղանոյ, չափաւոր գինեաւ վարեսցիս. և եթէ միս կամիցիս ճաշակել, ոչ ոք է որ արգելու. յամենայնի վայելեա 'ի մարմնական կերակուրս, միայն 'ի մեղացն 'ի բաց կաց:

Տեսե՞ր զիարդ քան զամենեսեան այս պահք դիւրագոյնք. ոչ զմարմնոյ տկարութիւնս պատճառել. մաքրութիւնք հոգւոյն են ուղղութիւնքս: Ապա հնար ոչ ըմպելով գինի արբենալ, և ըմպելով գինի ողջախոհ լինել: Այս զի է առանց գինւոյ արբեցութիւն, լուր մարգարէին որ ասէ. «Վայ որ արբեալդ ես և ոչ գինեաւ»: Այս զիա՞րդ իցէ առանց գինւոյ արբենալ. յորժամ ընդ անապակ ախտն խառնիցէ զբարեպարիշտ խորհուրդս: Ապա հնար և ըմպելով գինի ոչ արբենալ. եթէ[1] չէր այնպէս, ոչ արդեօք զայն հրամայէր Պաւղոս գրելով Տիմոթեայ այնպէս. «Գինեաւ սակաւու վարեցիր յա-

1 Գրչագիրք յօրինակքն էին չէր այնպէս. յաւելու 'ի յունէն:

զայս սատանայական հիւանդութեանց,,: Քանզի առաւե-
լութիւն ոչ այլ ինչ է, բայց եթէ առատութիւն կամ 'ի բնա-
կան մտացն, խոստովանութիւն խորհրդոցն, անխայթութիւն մը-
տացն, աղքատութիւն իմաստութեան: Զայս ոչ մի-
այն առաւելութիւն գինւոյ ասէ, այլ և առաւելութիւն
'ի բարկութենէ և անարժան ցանկութեանց: Զոր օ-
րինակ զգիրծն ասէ տգիտութիւնն, ասէ և աշխատու-
թիւնն, ասէ և տրտմութիւն, ասենն և մեղքն ապա-
կանեալք, և զանազանեն պատճառքն, այլ մի է ախտն.
նոյնպէս և յայտնի ասէ գինեաց առաւելութիւն, ա-
սէ և ցանկութիւն, ասէ և տրտմութիւն, ասէ և
անպիտանութիւն, և պատճառքն են զանազանեալք; բայց
հիւանդութիւն և ախտն մի է:

Ի բաց կացցուք յառաւելութենէն. ոչ ասեմ 'ի բաց
կացցուք 'ի գինւոյ, այլ հեռացեալք յառաւելութենէ.
ոչ գինին ասէ զառաւելութիւնն, այլ անչափութիւնն.
արարած է գինի. իսկ գինի արարած ոչ ինչ ասէ չար, այլ
յօժարամտութիւնն չար՝ ասէ զառաւելութիւնն: Այս
զի է և այլ ազգ առաւելոյ և ոչ գինեաւ միայն, ըստ
զինչ ասէն Պաւղոս. "Մի՛ արբենայք գինեաւ,,, ցու-
ցանելով եթէ է և այլ ազգ առաւելութեան: "Մի՛ ար-
բենայք գինեաւ յորում պակշոտութիւն է,,. զբանն է-
րոպէս դուզնաքեայ բանիւ զամենայն զառաւելութեանն
զամբաստանութիւն ասաց:

Զինչ է "Մի՛ արբենայք գինեաւ յորում է պակշո-
տութիւն,,: Պակշոտեալ մանկունս զայնոսիկ կոչէ
որք զհայրենիս ժառանգութիւնն ընդունելով, և զամե-
նայն յանկարծակի արտաքս մսխեցեն, և ոչ խորհելով
ում պարտ և արժան իցէ տալ և երբ տալ, այլ վայրա-
պար և հանդերձս և ոսկի և արծաթ և զամենայն զհայ-
րենիս ընչեղութիւնն բաշխեն բոզից և խաղացելոց: Նո-
յնպէս է առաւելութիւն. իբրև պակշոտեալ իմն որ ըմ-
բռնելով զմիտս առաւելոյ՝ գերէ զամենայն զխոր-
հուրդն, և զամենայն զբնութիւն իմաստութեանն ա-
ռանց խորհելոյ և առանց իրիք սատարութեան 'ի վերայ
ծախելով հարկ առնէ: Որ արբենայն, ոչ գիտէ զոր ասէն
պատաշաճ իցէ և զոր լաւ. այլ յարափամ անողութ է
բերան նորա, նիգ ոչ կայ 'ի վերայ և ոչ պահապան շրթ-
թանց: Արբեալն ոչ գիտէ անօրինել զբանս իւր 'ի դա-

տատանի, ոչ գիտէ ամբառնալ զփարթամութիւն մտացն. ոչ գիտէ զոմն ամբառնալ և զոմն ծախել, այլ ամենայն այն անծախք[1] և արտաքս ճանապարհք։ Կամաւոր սատակումն է արբեցութիւնն, մատնումն խորհրդոցն. արբեցութիւն ծիծաղելի թշուառութիւն, ապականելի հիւանդութիւն, դև անբժշկելի, դժնդակագոյն խելագարութիւն։

Կամիս ուսանել զիարդ արբեալն քան զդիւահարն ևս չար է։ Դիւահարին ողորմիմք, և զնա ատեմք. նմա ախտակից լինիմք, և սմա բարկանամք և զայրանամք։ Ընդէ՞ր արդեօք. վասն զի այն դրժութիւն, և այս ախտ յուլութիւն. այն դաւաճանութիւն թշնամւոյն, և այս դրժութիւն խորհրդոց. և զնոյն իսկ զդիւահարին իրս չարչարի արբեալն, նմանապէս դանդաղի, նոյնպէս թմբրի, այնպէս շրջէ զաչիսն, նոյնպէս անկեալ կայ 'ի վերայ երկրի. նա փրփուր 'ի բերանոյն արձակիցէ, և սա լորձ նեխեալ ժահահոտութեամբ անըմբերելեացեալ. բարեկամաց թախիծ այնպիսին, թշնամեաց ծաղր, ծառայից արհամարհելի, կնոջ անվայելուչ, ամենեցուն բեռն, քան զնոյն իսկ զանասունս անասնագոյն. անասունքն այնքան ըմպեն որքան ծարաւիքն են, և պիտոյիքն զփափաքումն դադարեցուցանեն. բայց նա անարգելութեամբն զանց առնէ զցանկութեամբն, և լինի քան զանբանսն անբանագոյն։ Իսկ այն ևս դժնդակագոյն, զի այնքան չար ախտի լցեալ և այնպիսի թշուառութեամբ, ոչ ինչ բամբասանքը լեալ կարծին. այլ յընչեղացն սեղանս հակառակութիւն է, և հանդէս յաղագս անամօթութեանն լինի նոցա, և առ իրերաց ևս մրցեն ով առաւել զինքն ծանակիցէ, հակառակին ընդ միմեանս ով առաւել ընձեռիցէ ծաղր, ով յաւէտ լուծանիցէ զջիլս, ով մանաւանդ կործանիցէ զզօրութիւնն, ով զհասարակաց Տէրն բարկացուցանիցէ յաճախապէս. և է տեսանել ասպարէզ սատանայական և հակառակութիւն։ Արբեալն հիքագոյն է քան զմեռեալն. նա անզգայ անկեալ կայ, առ բարի իրս և առ չարս անգործ. իսկ սա 'ի բարեացն գործ կապեալ է շղթայիւք արբեցութեանն, և միայն 'ի չարեացն գործ է պատրաստագոյն,

1 Ցոյնծ 'ի ծախման և 'ի կորստեան երթեան ։

և իբրև 'ի գերեզմանի զոգին 'ի մարմինն թաղելով մեռեալ կրէ զմարմինն ։ Տեսե՞ր զկարգ քան զգլխաւորն է թշուառագոյն ։

Ախորժեա՛ թէ որ քան զամենայն մեծ և թշուառագոյն է՝ ասացից. արբեալ մարդ յարքայութենէն երկնից ոչ կարէ մտանել ։ Ո՞վ զայս ասէ. Պաւղոս. «Մի՛ խաբիք, ոչ պոռնիկք, ոչ շունք, ոչ գողք, ոչ աւելատացուք, ոչ արբեցողք, ոչ իգացեալք, ոչ արուագէտք, ոչ լուտացողք, ոչ յափշտակողք զարքայութիւնն ա՟յ ոչ ժառանգեն» ։ Լուա՞ր յոր պար կարգեաց զնա. ընդ պոռնկացեալս և ընդ կռապաշտս, ընդ շնացողս և ընդ հայհոյողս, ընդ ագահս և ընդ յափշտակողս ։ Եւ զինչ, ասէ, արբեալն և կռապաշտն նո՞յն իցեն ։ Մի՛ ինձ զայդ ասեր, ով մարդ. օրէնս ընթերցայ ա՟ծայինս, յինէն զհամարն մի պահանջեր. զՊաւղոս հարց, և նա պատասխանի տայ քեզ. եթէ նոյն իցէ և եթէ ոչ նոյն ընդ տանջանացն, ոչ ունիմ ասել. այլ զի նմանապէս իբրև զկռապաշտս յարքայութենէն երկնից արտաքս անկանի, յայտ զօրանամ ասել ։ Եւ արդ այսոցիկ խոստովանելոց զինչ ես յինէն համարս չափոյ մեղացն պահանջեսցես. յորժամ արտաքոյ կայցէ արքայութեանն, յորժամ ամայի լիցի 'ի փրկութենէն, յորժամ 'ի տանջանս առաքի, զի՞ ևս ինձ չափ մեղացն և լծակս և կշիռս առաջի դնես ։

Գժնդակ է արբեցութիւն ։ Ոչ առ ձեզ ասեմ, մի՛ լիցի. քանզի ամենայն իրօք հաւանեալ եմ եթէ մաքուր էք միտք ձեր 'ի ցաւոցն և յախտէն յայնմանէ. և նշանակ առողջութեան՝ աստ դեգերանքդ հանդերձ փութով ժողովոյդ, արթուն լսելութեանդ. ոչ ոք գինեաւ արբեալ՝ կարէ փափագել ա՟ծային բանիցն ։ «Մի՛ արբենայք գինեաւ յորում է պակշոտութիւն, այլ լցարուք հոգւով». այս արբեցութիւն բարի է ։ Լցո զքո զանձինդ հոգւով, զի մի՛ խելագարեսցիս արբեցութ՟բն. յառաջագոյն ըմբռնեա զմիտս և զխորհուրդս, զի մի՛ գտցէ տեղի չար և անամօթ ախտն այն ։ Վասն այնորիկ ոչ ասաց՝ ընկալարուք զհոգին, այլ լցարուք հոգւովն. մինչև 'ի վեր զմիտս իբրև զբաժակ հոգւով լցցես, զի մի՛ ինչ 'ի վերայ արկանել կարիցէ այնուհետև բանսարկուն. ոչ վայրապար ինչ պարտ է ընդունել ըղ-

հոգին, այլ լնուլ հոգւովն սաղմոսիւք և օրհնութեամբք երգովք հոգևորօք, որով լցայքդ այսօր. վասն այսորիկ համարձակիմ յաղագս ողջախոհութեան ձերոյ։

Եւ մեզ զբաժակն բարի արբեցութեան, և բաժակ արբեցութեան՝ որ զողջախոհութի առնէ և ոչ լքումն. բաժակն հոգևոր, բաժակն փրկական, բաժակն տէրունեան արեանն. նա ոչ առնէ արբեցութիւն, նա ոչ լուծանէ զոյժն, այլ զարթուցանէ զզօրութիւնն. նա ոչ լքուցանէ զջիղսն, այլ պնդէ զնոսա. նա արթնութիւն առնէ, նա պատկառելի հրեշտակաց, ահաւոր դիւաց, պատուական մարդկան, փափաքելի տեառն։ Տես զիարդ ասէ Դաւիթ յաղագս հոգևոր բաժակին այնորիկ որ ՚ի սեղանս յայս կայ. «Պատրաստեցեր առաջի իմ սեղան յանդիման նեղչաց իմոց։ Պարարեցեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո արբուցանէ զիս իբրև զօրաւոր»։ Տեսե՞ր զամենայն զխորհրդածութեանս զյարմարութի, սեղան և իւղ և բաժակ. «Բաժակ քո իբրև զօրաւոր արբուցանէ զիս»։ Եւ զի մի՛ լսելով զարբեցութեանն անուն, վաղվաղակի երկիցես և վարկանիցիս տկարութեան գոլ արարող, ՚ի վերայ եած՝ եթէ զօրաւոր է և հզօր։ Նորօրինակ է արբեցութեանս ոյժ, ամբարէ, հզօր առնէ և զօրաւոր, վասն զի հոսեցաւ ՚ի հոգևոր վիմէն. ոչ է խոտորումն խորհրդոց, այլ յաւելուած հոգևորական խորհրդոց։

Այսու արբեցութեամբ արբեսցուք, ՚ի նմանէ ՚ի բաց լիցուք՝ զի մի՛ ամաչեցուսցուք[1] զմերձաւոր զտօնս. քանզի այս տօնս ոչ յերկրի միայն է, այլ և յերկինս։ Այսօր յերկրի խնդութիւն, այսօր ուրախութի յերկինս. քանզի եթէ միոյ մեղաւորի դառնալ՝ խնդութիւն լինի յերկրի և յերկինս, ևս առաւել ամենայն աշխարհ յափշտակեալ ՚ի ձեռաց սատանայի՝ ցնծութիւն է յերկինս։ Այժմ հրձուին հրեշտակք, այժմ բերկրին հրեշտակապետք, այժմ սերովբէք և քերովբէք ընդ մեզ տօնեն զմերձաւոր տօնս. ոչ ինչ ամաչեն ընդ ծառայակիցս, այլ ուրախակից են մերոց բարեաց։ Քանզի թէպէտ և մեր է շնորհն որ ՚ի տեառնէ, այլ հաւասար և նոցա հեշտութի։ Եւ զի՞նչ ես ասեմ զծառայակիցսն,

1 Ցօրինակին ամաչեցուսցուք զմերձաւորս տօնս։

Digitized by Google

Ինքն տէրն մեր ոչ ամաչէ ընդ մեզ տօնակից լինել. և զինչ պիտոյ է ասել՝ ոչ ամաչէ, այլ և բաղձայ ևս ընդ մեզ տօնել: Այս ուստի է այս յայտ. Ինքն ասաց. «Փափագելով ցանկացայ զտօնս զայս ուտել ընդ ձեզ». և եթէ զտօնս ընդ մեզ ցանկացաւ տօնել, քաջայայտ է թէ և զյարութիւնն:

Այս արդ յորժամ հրեշտակք և հրեշտակապետք բերկրեցին և ամենայն երկնային զօրքն, և Ինքն հրեշտակացն տէր ընդ մեզ տօնակից լինի, զինչ ևս նուազեսցէ այսուհետև մեզ 'ի բարեկրութիւնսն բան. մի որ աղքատ լիցի տխրեալ յաղագս աղքատութեան, քանզի տօնս այս հոգևոր է. մի որ ձոխ ամբարտաւանեսցէ յաղագս ընչեղութեանն, վասն զի ոչ յընչից անտի հեշտալի տօնս յայս ընծայել կարասցէ: Զի յարտաքին և յաշխարհական տօնսն ուր յոլով է անապական և սեղան լցեալ, ուր արբեցութիւն և շատակերութիւն, ուր արբեցութիւն և ծաղր, ուր ամենայն սատանայական առականքն, յիրաւի աղքատն տխուր և ընչեղն զուարճացեալ. ընդէ՞ր արդեօք. վասն զի մինն փարթամագոյն զնէ զսեղանն և յաւէտ վայելէ 'ի փափկութիւնսն. իսկ աղքատն արգելեալ լինի աղքատութեամբն: Բայց աստ ոչ ինչ այնպիսի. մի սեղան զնի ձոխին և աղքատին. եթէ ընչեղ ես՝ ոչ ինչ յաւելու, և եթէ աղքատ ես՝ ոչ ինչ նուազ 'ի հաւասարութենէն առաջի կայցէ, քանզի ածային է շնորհն: Ամէն իսկ թագաւորին որ զթագն ունի և զծիրանին է զգեցեալ, որում ամենայն երկրի իշխանութիւն ընձեռեալ է, այնմ թագաւորի՝ և աղքատին որ յաղագս ողորմութեան նստիցի, մի սեղան մերձ կայ: Այս են տէրունական պարգևքն. ոչ պատուաւորաց բաշխէ զհաւասարութիւնն, այլ յօժարութեան և մտաց:

Նոյնին համարձակութեամբ և թագաւորն և աղքատն առ սեղանս առ այս գան հանդերձ նոյին պատուով, 'ի բաղում անգամ թերևս աղքատն յոլով պատուով. ընդէ՞ր արդեօք. վասն զի թագաւորն բիւր իրօք պատանդեալ է և բիւր յալէկոծութեան բազում ուստեք մխրրմճի[1]. և յոլով ստոյկի ընդ մեղս. իսկ աղքատն

1 Այսպէս յօրինակին:

կարեւորաց կերակրոցն միայն հոգայ, եւ որ առանց իրաց եւ խաղաղական ընտրէ զկեանսն իբրեւ 'ի նաւահանգստի նստելով, բազում համարձակութեամբ 'ի սեղանս յայս մերձենայ: Դարձեալ 'ի տօնս յարտաքինս աղքատն 'ի տրտմութեան է եւ ընչեղն յուրախութեան, ոչ յաղագս սեղանոյն միայն, այլ եւ հանդերձիցն. քանզի զոր յաղագս սեղանոյն ախտանան, նմին եւ հանդերձից աղագաւ համբերեն: Յորժամ տեսանէ զփարթամն բազմապատիկ զգեցեալ պատմուճան, հիանայ, եղկելի յամենայն իրս զինքն ասէ. իսկ աստ եւ այն դժուարութիք 'ի բաց բարձեալ լինին, վասն զի յամենեսին է հանդերձ փրկական աւազանն. զի "Որք 'ի Քրիստոս մկըրտեցարուք, ասէ, զՔրիստոս զգեցայք":

Մի համաչեցուսցուք զտօնս զայս արբեցութեամբ. ըղձոխս եւ զաղքատս, զծառայս եւ զտեարս նմանապէս պատուեաց. այլ երախտահատոյց լիցուք բարեգործին յաղագս 'ի մեզ լաւաբարութեան նորա. եւ հատուցումն բարի՝ է առաքինութիւնն եւ անձն արթուն: Այս տօն եւ կացուրդ ոչ ընչից ծախուց կարօտանայ, այլ յօժարութեան եւ մտաց բարեաց. այսպիկ են ախք. ոչ ինչ մարմնական աստ վաճառի, այլ լսելութիւնս ձայնին բանից, աղօթք հարց, բարեբանութիւն քահանայից, համակամութիւն եւ խաղաղութիւն եւ ձայնակցութի՟, հոգեւոր պարգեւն, հոգեւոր եւ վարձն:

Տօնեսցուք զտօնս զայս յորում յարեաւ Քրիստոս. վասն զի յարեաւ Յիսուս եւ զաշխարհ ընդ ինքեան յարոյց. ինքն յարեաւ զմահու կապանս խզելով, եւ զմեզ յարոյց զմեղացն շղթայս լուծանելով: Մեղաւ Ադամ եւ մեռաւ: Նոր եւ հրաշափառագոյն է այս. նա մեղաւ եւ մեռաւ, սա ոչ մեղաւ եւ մեռաւ: Ընդէ՞ր արդեօք. զի որ մեղաւն եւ մեռաւ, յաղագս ոչ մեղուցելոյն եւ մեռելոյն կարասցէ 'ի մահու բռնութենէ զերծանել: Այսպէս եւ յաղագս ընչիցն լինի. թերեւս պարտական ոք իցէ եւ ոչ ունելով հատուցանել՝ ըմբռնի. եւ այլ ոք որ ոչ ինչ պարտիցի, կարող է ընձեռել, հատուցանելով լուծանէ զպարտականն: Նոյնպէս եւ Ադամայ եղեւ. պարտական էր Ադամ եւ ըմբռնեալ 'ի սատանայէ, այլ ոչ ունէր հատուցանել. ոչ ինչ էր պարտական Քրիստոս եւ ոչ ըմբռնեալ 'ի սատանայէ, բայց զի կարող էր հատուցա-



Digitized by Google

նել զպարտն, եկն և հատոյց զմահ յաղագս ըմբռնե֊
ցելոյն 'ի սատանայէ, զի զնա արձակեսցէ։

Տեսէ՞ր զյարութեանն զուղղութիւնս. կրկին մահու
մեռաք մեք, այս ուրեմն կրկնակի յուսացուք և զյա֊
րութիւնն. նա միակի մեռաւ, վասն այնորիկ զմի յա֊
րութիւն յարեաւ։ Իսկ զիա՞րդ է, ես ասեմ. մեռաք Ա֊
դամաւ հոգւով և մարմնով, մեռաւ և մեղօք և բնութե՛։
«Յաւուր յորում ուտիցէք 'ի փայտէդ, մահու մեռա֊
նիցիք»։ Իսկ սակայն ոչ 'ի նմին աւուր մեռաւ¹, բայց
բնութեամբն յետոյ. դժնդակագոյն է մեղօքն մեռա֊
նել. այն մահ հոգւոյ էր, և այս մահ մարմնոյ։ Բայց
յորժամ լսիցես մահ հոգւոյ, մի կարծիցես զոգին մե֊
ռեալ, վասն զի անմահ է. մահ հոգւոյ՝ մեղք հոգւոյ և
պատիժք. յաղագս այսորիկ և Քրիստոս ասէ. «Մի՛
երկնչիք որք զմարմինն սպանանեն և զոգին ոչ կարեն
սպանանել. այլ երկերուք առաւել որ զհոգին և զմար֊
մինն կարէ 'ի գեհենի կորուսանել». կորուսեալն կայ
ուրեմն, բայց արտաքոյ դիմաց կորուսողին է։

Այլ որպէս ասէին, 'ի մեզ կրկնակի է մահն. այս
ուրեմն և կրկնակի յարութեանն լինել պարտ և արժան
է. իսկ 'ի Քրիստոսի միակ է մահն, քանզի ոչ մե֊
ղաւ Քրիստոս. բայց զի և նոյն ինքն միակի մահն
յաղագս մեր, զի ոչ ինչ էր պարտաւոր մահուն այնմ.
քանզի ոչ էր համարապարտ մեղացն, յաղագս այնորիկ
և ոչ մահու. այլ վասն այնորիկ նա յարեաւ յարութի
'ի միակի մահուանէն, և մեք կրկնապատիկ մեռեալքս
կրկին զմահն՝ կրկնապատիկ և զյարութիւնն յառնեմք։
Զմինն յարեաք առ այժմ 'ի մեղացն, քանզի ընդ նմա
թաղեցաք մկրտութեամբն և ընդ նմին յարեաք 'ի ձեռն
մկրտութեանն. մի այս է յարութիւն՝ 'ի բաց մերժումն
'ի մեղաց. երկրորդ յարութիւն այլ՝ յարութիւն մարմ֊
նոյ։ Նա զմեծն, վստահացիր և յաղագս նուազին. սա
առաւել մեծագոյն է քան զնա, վասն զի յաւէտ մեծ է
'ի մեղացն ազատ լինել, քան եթէ զմարմինն տեսանել
յարուցեալ։ Վասն այնորիկ անկաւ մարմինն, զի մե֊
ղաւ. և սկիզբն անկելոյ մեղք էին, սկիզբն յառնելոյ 'ի
բաց մերժումն 'ի մեղաց։ Յարեաք զմեծ յարութիւնն՝

¹ Յայնն մտաւ բնութեանն, այլ մեղօք մտաւ. այն մահ։

զչար մահ մեղացն ընկենլով 'ի բաց, մերկացեալ զհին պատմուճանն. մի այսուհետև յաղագս նուագին անյու-սասցուք: Զայս յարութիւն մեք կանխաւ յարեաք յոր-ժամ մկրտեալքն եղաք, և ոյք մկրտութեան երեկորն արժանի եղաք գեղեցիկ տնկոյս այսմիկ: Նախ քան զե-րէկ Քրիստոս խաչեցաւ, այլ յարեաւ զանցեալ գի-շերս. նոյնպէս և սոքա նախ քան զերէկ 'ի մեղացն ըմ-բռնեալք էին, այլ այժմ յարեան. նա մարմնով մեռաւ և մարմնով յարեաւ, սոքա մեղօք էին մեռեալք և 'ի մեղաց ազատեալք յարեան:

Երկիր 'ի գարնանային ժամանակի վարդս և շուշանս և զայլ ամենայն ծաղիկս մեզ տայ. իսկ ջուրք քան զեր-կիր վայելչագունեղ տուրս մեզ եցոյց: Եւ մի սքանչա-նար եթէ 'ի ջրոց բուսան ծաղիկքս. զի և ոչ երկիր ըստ իւրում բնութեան, այլ ըստ հրամանի տեառն բող-բոջս արտաքս ընծիւղէ: Ընծեռեաց և 'ի սկզբանն ջրոց բնութիւն կենդանի շարժունս. քանզի "Հանցեն, ասէ, ջուրք սողուն շնչոց կենդանեաց". և հրամանն գործ եղև, և անշունչ բնութիւնն այն շնչաւոր կենդանիս արտաքս եբեր: Նոյնպէս և այժմ հանցեն ջուրք ոչ սո-ղուն շնչոց կենդանեաց, այլ հոգևոր շնորհս: Հանին յայնժամ ձկունս անբանս և անձայնս. հանին և այժմ ձկունս հոգևորս և բանաւորս, ձկունս յառաքելոցն որ-սացեալս. քանզի "Եկայք, ասէ, և արարից զձեզ որ-սորդս մարդկան". զայս որս ասէր: Եւ որ է արդարև որսոյս օրինակ. վասն զի ձկնորսքն 'ի ջրոյն արտաքս հա-նեն, և մեք 'ի ջուր արկանեմք և այնպէս որսամք:

Եր երբեմն և առ Հրէայս աւազան. ուսիր զինչ կա-րէր աւազանն, զի ուսանիցիս զհրէական աղքատութիւն և զճոխութիւն եկեղեցւոյ: Աւազան ջրոյ էր, և իջա-նելով հրեշտակն շարժէր և խռովեցուցանէր զջուրսն. և ապա զկնի յուզման ջրոյն մտանէր մի ոք 'ի հիւան-դացն և բժշկեալ լինէր, և վաղվաղակի սպառեալ լի-նէր շնորհն. ոչ յաղագս աղքատութեան տուողին, այլ վասն տկարութեան ընդունողացն: Իջանէր հրեշտակն յաւազանն և խռովեցուցանէր զջուրսն, և մի ոք բժշ-կեալ լինէր. էջ հրեշտակաց տէրն 'ի Յորդանէս, և յուզեաց և զաշխարհ ամենայն բժշկեաց: Վասն այսո-րիկ անդ զկնի առաջնոյն երկրորդն իջանելով ոչ ընդու-

նէր զբժշկութիւնն, քանզի Հրէիցն տուեալ լինէր շը-
նորհն տկարացն, աղքատացն. իսկ աստ յետ առաջնոյն
զերկրորդն, յետ երկրորդին զերրորդն, յետ երրորդին
զչորրորդն. եթէ զտասներորդն և եթէ զքսաներորդն
և եթէ զհարիւրերորդն և եթէ զբիւրն և եթէ զաշ-
խարհ ամենայն արկանիցես յաւազանն, ոչ ծախի շը-
նորհքն, ոչ վատնի պարգևն, ոչ աղտեղի ջուրն. նոր է
մաքրութեանս օրինակ: Քանզի և ոչ մարմնական իսկ
է. զի զմարմնականսն յորժամ յոլովագոյնս լուանայ-
ցեն ջուրքն, յաւէտ զաղտն ընդունին. իսկ աստ որքան
բազումս լուանայ, այնքան մաքրագոյն լինի:

Տեսե՞ր զմեծութիւն պարգևիս. պահեա զմեծութի
պարգևիս, ով մարդ: Ահ է քեզ իշխանութիւն անզա-
նազանաբար կեալ. օրէնս դիր քեզ հանդերձ հաստա-
տութեամբ յամենայն իրս. հանդէս և մարտ է[1] կեանքս
այս, և որ հանդիսանայն՝ ամենայնի ժուժկալէ:

Ցուցից քեզ օրինակ առաքինի և զգուշագոյն ող-
ջութեան. որք անզանազանաբար գոլ կարծին, ծնանին
զմեղս, որպէս հանցուք զայն ՚ի մտաց. քանզի իրացն
ոմանք են մեղք և ոմանք ոչ մեղք, այլ մեղացն պատճառ
և սկիզբն. որպիսի ինչ՝ ծաղր ոչ են բնութեամբ մեղք, և
լինին մեղք յաճախապէս յառաջ բերեալք. քանզի ՚ի
ծաղուէ կատականք և ՚ի կատականացն զազրաբանութիւնք,
՚ի զազրաբանութենէ գարշելիք և յիրացն գարշելեաց պա-
տիժք և տանջանք. ՚ի բաց բարձ կանխաւ զարմատն, զի
բարձցես բովանդակ զախտն. քանզի եթէ զանորոշե-
լին պահեսցուք, ոչ երբէք յարգելեալն անկցուք: Նոյն-
պէս զկանայս տեսանել անզանազան գոլ թուի բազ-
մաց. այլ յայնմանէ անարգել ցանկութիւն ծնանի, և
՚ի ցանկութենէն պոռնկութիւն, և ՚ի պոռնկութենէն
պատիժք և տանջանք: Նոյնպէս և փափկանալն ոչ ինչ
դժնդակ գոլ կարծի. այլ անդուստ արբեցութիւն, և
բիւր չարիք յարբեցութենէն: Ի բաց բարձցուք ամե-
նայն ուստեք զսկզբունս մեղացն:

Յաղագս այսորիկ յաճախապէս վայելէք ՚ի վարդա-
պետութիւնս հանապազօր. վասն այնորիկ եօթն ա-
ւուրս ՚ի կարգի ժողով կատարեմք՝ զհոգևոր սեղանս
ձեզ մերձ դնելով, առնել ձեզ վայելել յա̄ծայլին բանս,

1 Պակասէր յօրինակին է կեանքս այս. յաւելաւ ՚ի յունէն:

մարզելով զձեզ համապազոր, զինեմք հակառակ սատանայի. քանզի այժմ առաւել զայրացեալ է. զի որքան մեծ է պարգևս, այնքան մեծ է և պատերազմն: Զի եթէ տեսանելով 'ի դրախտին ոչ հանդարտեաց, յերկին տեսանելով զմարդ ժուժկալեսցէ, ասա ինձ. զայրացուցեր զգազանն, այլ մի երկնչիր. մեծ զօրութի̃ առեր զսուսերն որեալ, նովաւ խոցեա զօձն: Վասն այնորիկ ա̃ծ ներեաց նմա հակառակ զայրանալ ընդդէմ քո, զի նովին փորձիւ իրացն ուսցիս զզօրութեանդ քո զոյժ: Եւ զոր օրինակ քաջ մանկամարդ զաղտեղեալ ոք և զջղատեալ զմեծ զանդարման առեալ՝ մարզելով և վարժելով 'ի քաջասնութիւն ածիցէ, ոչ թողու դադարել այնուհետև, այլ 'ի հանդէսն իջանել հրամայէ, զի նմա ուսուսցէ 'ի ձեռն փորձի իրին որքան ինչ ամբարեաց 'ի նորա զօրութիւնն, նոյնպէս և Քրիստոս արար. կամէր և զթշնամին ևս 'ի միջոյ 'ի բաց առնել. այլ զի դու ուսցիս զշնորհին գերազանցութիւն, զհոգևոր զօրութեանն զմեծութիւն զոր առեր 'ի մկրտութեանն, թողու զնա մրցել ընդ քեզ, զի յոլով քեզ զպսակացն զպատճառս պատրաստեսցէ և ընծեռեսցէ: Յաղագս այսորիկ եօթն աւուրս 'ի կարգի վայելեք 'ի վարդապետութիւնս, զի հաւաստեաւ ուսանիցիք զմարտն: Եւ այլ ազգ ևս, հարսանիք հոգևորք են լեալքս, և հարսանեացն մինչև յեօթն աւուրս առագաստքն կան մնան. վասն այսորիկ և մեք յեօթն աւուրս զձեզ խրատեցաք աստ յա̃ծային առագաստս կալ մնալ: Բայց անդ յետ եօթն աւուր լուծանի. իսկ աստ եթէ ախորժեսցես՝ յարաժամ յա̃ծայինս կայցես մնասցես յառագաստս: Եւ յարտաքին հարսանիսն հարսն յետ առաջին ամսոյն և կամ երկրորդին ոչ է նոյնպէս ցանկալի փեսային. բայց աստ ոչ այնպէս, այլ որքան ժամանակն յառաջանայ, նոյնքան և ջերմագոյն սէր փեսային լինի, այնքան հարազատագոյն յարմարումն, այնքան հոգևորագոյն միաբանութիւնն, եթէ արթունք իցեմք: Դարձեալ 'ի մարմնականսն յետ մանկութեանն ծերութիւն. իսկ աստ ծերութեանն մանկութիւն, և մանկութիւն ուր կատարած ոչ երբէք ունի եթէ կալեսցուք. Մեծ է[1] շնորհն, այլ առաւել ևս մեծագոյն

1 Պակասէր յօրին. Մեծ է . . . եթէ կամեսցուք. յաւելեալ 'ի յունէն:

եղիցի եթէ կամեսցուք. զի և Պաւղոս մեծ էր յորժամ մկրտեցաւն, այլ առաւել ևս մեծագոյն զկնի այնորիկ եղև. յորժամ քարոզէր, տագնապեցուցանէր զդևս, ապա 'ի դրախտն յափշտակեցաւ, յերրորդ երկինս ել։ Որպէս զի իշխանութիւն է և մեզ եթէ ախորժեսցուք աճեցուցանել զառեալ շնորհսն մեզ 'ի ձեռն մկրտութեանն. քանզի աճէ և փայլէ գործովք բարեօք, և պայծառագոյն մեզ ընձեռէ զլոյսն։ Իսկ եթէ այսպէս լինիցի, բազում համարձակութեամբ 'ի փեսայարանսն մտանիցեմք ընդ փեսային, և յառաջակայ բարիսն արքայութեան նորա վայելեսցեմք։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք Հօր համերձ սուրբ Հոգւովն յաւիտեանս. ամէն։

## ՅԱՌ ՀԱՆԴԵՐՁԵԱԼՍՆ ԼՈՒՍԱՒՈՐԻԼ, ԵՒ ԸՆԴԷՐ ԱՒԱԶԱՆՆ՝ ՎԵՐՍՏԻՆ ԾՆՆԴԵԱՆ ԵՒ ԹՈՂՈՒԹԵԱՆ ԱՍԻ, ԵՒ ԹԷ ՎՏԱՆԳԱՒՈՐ Է ՈՉ ՍՈՒՏ ՄԻԱՅՆ ԵՐԴՆՈՒԼ, ԱՅԼ ԵՒ ԵՐԴՆՈՒԼՆ, ԹԷՊԷՏ ԵՒ ԱՐԴԱՐ ԵՐԴՆՈՒԹԻՒՆՔ

Որքա՜ն զի ցանկալի և փափագելի է մեզ նորոց եղբարցս մերոց ասէր։ Եղբայրասէրս զձեզ և նախ քան զերկուտասան արդէն կոչեմ, և յառաջ քան զծնունդն զազգակցութիւնն առ մեզ ցուցանեմ։ Քանզի գիտեմ հաւատացեալ, գիտեմ յորքան պատիւ հանդերձեալ էք գալ և զորպիսի իշխանութիւն հանդերձեալ էք առնուլ. նախ քան զիշխանութիւնն սովորեցէք մերձեցուցանել 'ի ձեռն առաքինութեան զգաստութեամբ 'ի նոցա ամբարելով առ հանդերձեալսն։ Նոյն և ես առնեմ այժմ. զի ոչ 'ի սոսկ ինչ իշխանութիւն հանդերձեալ էք գալ, այլ 'ի նոյն ինքն յարքայութիւն. մանաւանդ թէ յարքայութիւն ոչ 'ի վայրապար, այլ յերկնից արքայութիւն։

Վասն այսորիկ զձեզ աղաչեմ և պաղատիմ զի յիշեսջիք զիս յորժամ գայցէք յարքայութիւնն՝ յայն. և զոր ինչ Յովսէփն ասէր տակառապետին, „Յիշեա զիս յորժամ բարի լինիցի քեզ", զնոյն և ես ասեմ ձեզ այժմ, յիշեցէք զիս յորժամ ձեզ բարի լինիցի։

Ոչ երազոց զայս հատուցումն խնդրեմ որպէս նա, զի ոչ անուրջս եկի լուծանել ձեզ, այլ զերկնից զիրս պատմել և աւետիս բերել բարեաց այնպիսեաց զորս ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ոչ 'ի սիրտ մարդոյ ել՝ այնուքիկ են զորս պատրաստեաց ած սիրելեաց իւրոց։ Յովսէփ ասէր ցտակառապետն ցայն. "Երեք եւս աւուրք, և կացուսցէ զքեզ փարաւոն 'ի տակառապետութեանն քում"։ Բայց ես ոչ ասեմ երեք եւս աւուրք, և 'ի տակառապետութիւն ածեալ լինիք թագաւորի. այլ երեսուն եւս օր, և կացուսցէ զձեզ ոչ եւս փարաւոն, այլ երկնից թագաւորն 'ի վերին գաւառին, յաղագս Երուսաղէմ, 'ի քաղաքին որ յերկինսն է։ Եւ նա ասէր եթէ "Տացես զբաժակն 'ի ձեռն փարաւոնի". իսկ ես ոչ ասեմ եթէ տացես զբաժակն 'ի ձեռն թագաւորի, այլ եթէ ինքն թագաւորն 'ի ձեռս ձեր տացէ զահաւոր բաժակն զլցեալն բազում զօրութեամբ, և քան զամենայն արարածս է պատուականագոյն։ Իւրաքանչիւր ոք 'ի նուիրեցելոցն գիտէ զբաժակին այնորիկ զօժ. գիտասջիք և դուք սուղ ինչ յետոյ։

Արդ յիշեցէք զիս յորժամ գայցէք յարքայութիւն յայն, յորժամ զթագաւորական զպատմուճանն առնուցուք, յորժամ զծիրանիսն զգենուցուք որ տէրունեան արեամբն է ներկեալ, յորժամ զթագն ընդունիցիք 'ի գլուխ, որ քան զճառագայթս արեգական առաւել ես պայծառութիւն ունելով՝ ամենայն ուստեք առաքէ յինքենէ զլոյսն։ Քանզի այսոքիկ են փեսային պարգևք, մեծագոյնք քան զմեր արժանաւորութիւն, այլ արժանաւոր է նորա մարդասիրութեանն։ Յաղագս այսորիկ ձեզ աստուստ արդէն և նախ քան զմծայինն զայն երանեմ. և ոչ միայն երանեմ, այլ և գովեմ զբարեմտութիւնն. զի ոչ իբրև զպղերգս 'ի մարդկանէ 'ի վերջին շունչն 'ի լուսաւորութիւնս եկիք, այլ արդէն իսկ աստուստ իբրև ծառայք բարեմիտք հանդերձ ամենայն սիրով հնազանդել տեառնն պատրաստեցայք, զպարանոցս ոգւոց ձերոց հանդերձ յոլով հեզութեամբ և յօժարամտութեամբ ընդ լծովն այ եդիք և ընկալայք զքաղցր զլուծն, առէք և զբեռնն զթեթև։

Քանզի թէպէտ և շնորհն զոյգ՝ ձեզ և որք 'ի վախճանի 'ի խորհուրդն գան՝ է, այլ յօժարամտութեանն

իրք ոչ զուգահաւասարք, և ոչ պատրաստութի՜ւ իւրացն։ Նոքա 'ի մահիճս առնուն, իսկ դուք 'ի գոգ եկեղեցւոյ, որ է հասարակաց ամենեցուն մեր մայր. նոքա ողբալով և արտասուելով, դուք զուարճացեալք և բերկրեալք. նոքա հառաչելով, և դուք գոհանալով. նոքա յոլով իմն ծանրագլխեալք ջերմամբ, իսկ դուք յաւէտ լցեալք հոգևոր հեշտութեամբն։ Վասն որոյ աստ ամենայն ձայնակից պարգևին, և անդ բովանդակ հակառակ շնորհին. քանզի ողբ և սուգ որք ուսուցանենն զնոսա, և մանկունքն շուրջ կան արտասուելով և բարեկամք տըխուրք, ծառայք սգով լցեալք, և բոլոր ձև տանն ձմեռնային իմն աղջամղջին աւուրց նմանի։ Իսկ եթէ զնորին իսկ զանկելոյն զմիտսն քննայցես, տրտմագոյն ևս քան զայսոսիկ գտցես։ Զի զոր օրինակ հողմք բազումք ընդդէմ իրերաց շնչելով ամբոխին և 'ի յոլով մասունս բըխորսն կոտորատեն, նոյնպէս և խորհուրդքն յայնժամ պաշարեալք այնու դժնդակութեամբք յաշխատեցելոյն յոգիսն անկանին, 'ի բազում հոգս զնորա խորհուրդսն բաժանեն։ Յորժամ տեսանէ զմանկունսն, և զորբութիւն նոցա զմտաւ ածէ. յորժամ հայիցի 'ի կինն, և զայրութիւնն յիշէ. յորժամ տեսանիցէ զծառայսն, և զամայութիւնն զտանն[1] գիտէ զսպասաւորութեանն. յորժամ յինքն եկեալ և զմերձաւոր կեանս իւր յիշէ՝ երգիծանի, զյոլով տրտմութեան զամպ ընդունի։ Այսպիսի է անձն հանդերձելոցն 'ի խորհուրդն գալ։ Իսկ ապա 'ի մէջ ամբոխի և խռովութեանն այնորիկ մտանէ 'ի ներքս քահանայն՝ քան զնոյն ինքն զտապն ահաւորագոյն, և քան զմահն որ հիւանդին են յարմարագոյնք։ Ոչ ինչ երկրորդ նա երևի քան զբժշկին զձայն, որ 'ի բաց հրաժարեցուցանէ զնորա կեանսն, նորա յուսահատութիւնն մեծագոյն ևս թուի. քահանային մըտանելն մահու նշանակիչ կարծի որ յաւիտենական կենացն է պատճառ։

Բայց ոչ ևս մեծագոյն լեառն 'ի վերայ եդի զչարեացն. քանզի 'ի միջոցի բարեկամացն ամբոխի և 'ի պատրաստելն՝ բազում անգամ թողլով զմարմինն 'ի բաց վազէ հոգին։ Զյոլովս և 'ի մերձաւորացն չճանաչէ, ոչ ձայն

1 Յօրինակին գրչագրին. եղաւ բառս յաւելին։

լսի, և ոչ պատասխանի տալ կարէ զբանսն զայնոսիկ, որովք զերանելի զզուանութիւնն առ հասարակաց ամենեցուն տէրն դնել վայել է. այլ իբրև զփայտ անձայն կամ իբրև զքարն. որ լուսաւորին հանդերձեալ իցէ, առաջի կայ 'ի մեռելոց ոչ ինչ զանազանեալ, զինչ 'ի խորհուրդն գալ է օգուտ յայնքան անզգայութեան:

Քանզի որ յանձայնն և յահաւոր խորհուրդն յայն հանդերձեալ են մերձենալ, զարթնուլ պարտ և արժան է և սթափ լինել, և յամենայն աշխարհական հոգոց մաքուր, և յոլով ողջախոհութեամբ լցեալ և բազում յօժարամտութեամբ, զամենայն օտարոտի օրէնս խորհրդոցն արտաքս սահմանել 'ի մտացն, և բոլոր ուստեք յօրինել զտունն, որպէս զի զնոյն ինքն զԹագաւորն հանդերձեալ իցէ ընդունել:

Այսոքիկ են ձերոց մտաց պատրաստութիւնք, այսպիսի խորհուրդք 'ի ձեզ, սոյն ձերոյ անձին յօժարութիւն: Արժանաւոր հատուցումն այսպիսի առաքինի բարուց համբերեցէք յոյ առնուլ, որ և ձերոց ընծայիցդ յաղթէ որ զհնազանդութիւն ցուցանէք առ նա: Բայց զի վայել է և ծառայակցացս մեզ ձեր ծառայակցացդ բերել ընծայ ինչ, և զայս 'ի մէնջ մատուսցուք. մանաւանդ թէ ոչ մեր ինչ, այլ և այս տէրունական է. «Վն զի զինչ ունիս, ասէ, զոր ոչ առեր. և եթէ առեր, զի՞ պարծիս իբրև զոչ առեալ»:

Արդ ախորժելի յառաջագոյն քան զամենայն ասել, ընդէ՞ր արդեօք զանց առնելով հարքն մեր զբովանդակ տարեաւն՝ յայսմ ժամանակի զխորհրդածութիւնն լինել մանկանց եկեղեցւոյ օրինադրեցին, և էր աղագաւ յետ մերոյ վարդապետութեան բոկացուցանելով և մերկացուցանելով առանց պատմուճանաց և առանց կօշկաց մերկս միայն առ երդմնեցուցչացն ձայնս առաքել: Վասն զի ոչ վայրապար և ոչ մնոտի զձեռն զայն և զժամ մեզ նոքա տպաւորեցին. այլ ունին այսոքիկ երկոքեան խորհրդական իմն բան և անճառելի. և զայս ձեզ կամէի ասել այժմ: Բայց զի տեսանեմ զձեզ այլ իմն 'ի հարկաւորութիւնս Ճեպեալ. քանզի կարևոր է ասել զինչ արդեօք իցէ մկրտութիւն, և ընդէր 'ի կենցաղս մեր եմուտ, և որքան ընծայէ մեզ զբարիսն: Իսկ եթէ ախորժէք, նախ առաջին յաղագս անուանս մաքրութեան

խորհրդականիս այսորիկ խօսեսցուք. զի ոչ է մի անուն, այլ և յոգունք և ամենապատիկք ։

Մաքրութիւն այս կոչի, ուստի դարձեալ ծննդեան. «Քանզի փրկեաց զմեզ, ասէ, աւազանաւ վերստին ծննդեանն և թափմամբ հոգւոյն իւրոյ»։ Կոչի և լուսաւորութիւն. և զայս ինքն Պաւղոս դարձեալ նոյնպէս կոչեաց. «Յիշեցէք զառաջինսն յորս լուսաւորեալք բազում վտանգից համբերեցէք չարչարանացն». և դարձեալ. «Անկարութիւն է մի անգամ լուսաւորեցելոցն, որք ճաշակեցին յերկնաւոր պարգևէն և հաղորդք եղեն հոգւոյն սրբոյ՝ անկանելով, դարձեալ նորոգել յապաշաւան»։ Կոչի և մկրտութիւն. «Որք ՚ի Քրիստոս մկրտեցարուք, զՔրիստոս զգեցայք»։ Կոչի և թաղումն. «Քանզի ընդ նմա թաղեցաք ՚ի ձեռն մկրտութեան ՚ի մահն»։ Կոչի և թլփատութիւն. «Որով թլփատեցարուք, ասէ, զանձեռագործ թլփատութիւն մերկանալով զանդամս մարմնոյ մեղացն»։ Կոչի խաչ. «Քանզի հին մարդն մեր խաչակից եղև, զի ընկլցի մարմին մեղացն»։ Են և այլ ևս յոլովագոյն անուանք քան զայս. բայց զի մի զբովանդակ ժամանակս յանուանս շնորհին ծախիցեմք, բեր յառաջին անունն եկեալք՝ և զնորա զնշանաւորութիւնն ասելով դադարեցուսցուք զբանս. առ այժմ վերագոյն փոքր ինչ զվարդապետութիւնս ընձեռեսցուք ։

Եւ աւազան հասարակ ամենայն մարդկան որ բաղանեօքն լինի, որ զմարմնոյն զաղտ սովորեաց լուանալ։ Էր և հրէական աւազան պարկեշտագոյն քան զայս, բայց քան զշնորհիս յաւէտ խոնարհագոյն, զի և նա զմարմնական զաղտ մաքրէր. բայց ոչ վայրապար զմարմնական, այլ և ՚ի տկարացեալ խիղճ մտացն մերձենայր։ Սան զի են յոլովք իրաց որք բնութեամբ ոչ են անմաքուրք, և խղճիւ տկար մտացն անմաքուրք լինին։ Եւ զոր օրինակ մանկանցն՝ պատկերք և այլ ամենայն խաղք բնութեամբ ոչ են ահաւորք, այլ մանկանցն թուի յաղագս տկար բնութեանն, նոյնպէս յայսոսիկ զորս ասացիք. որպիսի ինչ ՚ի մեռեալ մարմինն հպել բնութեամբ ոչ է անմաքուր, իսկ յորժամ տկարն խղճիւ մտօքն բուռն հարկանիցէ, անմաքուր առնէ զմերձեցեալն։ Եւ զի ոչ բնութեամբ անմաքուր է իրն, ինքն որ զայսոսիկ հրա-

թեանց զարդարութիւն լեալ տեսանիցէ ոք: Այոքնիկ ա̃ծային պարգևս մարդասիրութիւն՝ առանց քրտանց առնելոյ արդարութե̃ն: Քանզի եթէ թագաւորի թուղթ տկար ինչ գիրք եղեալ, զերուր ամբաստանութե̃ պարտականս արձակէ ազատս, և զայլս և 'ի մեծապատիւ առաքէ, ևս առաւել ա̃ծային ակնարկութիւնն ամենազօրն յամենայն չարեաց 'ի բաց ազատեսցէ և յոլով մեզ շնորհեսցէ զարդարութիւն և բազում համարձակութեամբ լցուսցէ: Եւ զոր օրինակ փայլակն ինչ փոքր 'ի յանբաւ խորս անկեալ ապականի և աներևելի լինի 'ի յոլով ջուրսն ընկղմեալ, նոյնպէս և ամենայն մարդկային չարութիւն յորժամ յաւազանս աստուածային աղբերացն անկանիցին, քան զայն փայլակն արագագոյն ևս ընկղմի և աներևելի լինի:

Եւ ընդէ՞ր եթէ զամենայն մեղսն, ասէ, թողու մեզ աւազանն, ոչ աւազան թողութեան մեղաց կոչի և ոչ աւազան մաքրութե̃, այլ աւազան վերստին ծննդեան: Վասն զի ոչ վայրապար մաքրէ զմեզ 'ի յանցանաց, այլ այնպիսի իբրև թէ վերստին ծնեալք լինիմք. զի և վերստին իսկ զմեզ առնէ և յօրինէ, ոչ դարձեալ յերկրէ ստեղծանելով, այլ յայլմէ 'ի տարերէ և ջրոյ բնութեան գործելով: Եւ ոչ վայրապար ջնջէ զանօթն, այլ բովանդակ զնա դարձեալ վերստին ձուլէ. քանզի ջընջեալն թէպէտ և հաւաստեաւ մաքրեսցի, ունի 'ի հին հետոցն և զաղտեղութեանն բերէ զնշխարս. իսկ որ 'ի ձուլարանն անկանի, և բոցովն նորանայ, զամենայն աղտեղութիւնսն 'ի բաց դնէ, և զնոյն ընդ նոր արարեալսն 'ի հնոցէն յառաջ եկեալ զճառագայթս արձակէ: Արդ որպէս զպատկեր ինչ ոսկեղէն յոլով ժամանակաւ ծխով և փոշւով և ժանգով աղտեղեալ՝ առեալ ուրուք ձուլելով մաքրագոյնս մեզ և փայլատակունս արձակեալ ցուցանիցէ, նոյնպէս և զբնութիւնս մեր զժանգոտեալ մեղացն ժանգով և բազում ծուխ ընկալեալ 'ի սխալանացն և զգեղեցկութիւնն կորուսեալ զոր 'ի սկզբանն 'ի նմա եդ, առեալ վերստին ձուլեաց՝ իբրև 'ի ձուլարան ինչ ընկենլով 'ի ջուրսն, և զհոգւոյն շնորհսն 'ի վերայ արձակելով՝ նոր լեալսն եցոյց, մինչև ընդ նմին իսկ զճառագայթս արեգակնայինս այնուհետև կարել բազում համարձակութեամբ հակառակել և պայծառա-

գոյն երևել, և զհին մարդն խորտակեաց և նոր պատրաստեաց պայծառագոյն քան զառաջինն :

Նոյն զայս խորտակումն և զխորհրդական մաքրութիւն մեզ ցուցանելով մարգարէն կանխաւ ասէր. "Իբրև զանօթ բրտի փշրեսցես զնոսա": Նոյն զի որ յաղագս այսորիկ է քան մեզ, վերագոյնն յայտնապէս ցուցանէ. "Որդի իմ ես, ասէ, ես այսօր ծնայ զքեզ. խնդրեա յինէն և տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն և կալուածս քեզ զծագս երկրի": Տեսե՞ր զկարգ որ 'ի հեթանոսաց եկեղեցին էր յիշեաց, և ամենայն ուրեք կարգեալ[1] զՔրիստոսի թագաւորութիւն ասաց. ապա ասէ. "Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ". ոչ ծանու, այլ զօրաւորաւ "Իբրև զանօթ բրտի փշրեսցես": Ահա և խորհրդական[2] աւազանն պարունակի. քանզի ոչ ասաց վայրապար անօթ խեցեղէն, այլ անօթ բրտի: Հայեցարուք. խեցեղէն անօթք փշրեալք ոչ առնուն զկազմութիւնն, յաղագս որոյ 'ի հրոյն լինի 'ի նոսա միանգամ տպաւորութիւն. իսկ անօթք բրտի ոչ խեցեղէնքն այլ կաւեղէնք, ուստի և անդրէն դարձուցեալք, առ վերստին ձեռն ձգեալ արուեստաւորին իմաստութեամբ :

Զի յորժամ անբժշկելի թշուառութիւնս խօսի, ոչ անօթ բրտի ասէ, այլ անօթս խեցեղէնս. յորժամ կամէր ուսուցանել մարգարէն Հրէից եթէ թշուառութեան անբժշկելւոյ մատնեաց զքաղաքն, հրամայեաց առնուլ կուժ խեցեղէն և խորտակել առաջի բազմութեան ամենայնի և ասել, "Այնպէս կործիցէ քաղաքս և խորտակեսցի". իսկ յորժամ ախորժէր քաղցրագոյն յոյս նոցա երկարել, 'ի բրտարանն իջուցանէր զմարգարէն, և ոչ ցուցանէր նմա խեցեղէն անօթ, այլ անօթ կաւեղէն 'ի ձեռն բրտի լեալ և 'ի վայր անկեալ, և 'ի վերայ ածէ ասելով. "Եթէ բրուտն այդ զանօթ զապականեալ վերստին առնու և յօրինէ դարձեալ, ո՞չ առաւել և ես կարացից զ'ի վայր անկեալսն զձեզ վերստին ուղղել". ոչ զկաւեղէնս միայն լեալ ուղղել աւազանաւ վերստին ծննդեանն, այլ և զհոգւոյն ընկալեալս զօրութիւնս և զկործանեալսն՝ ճշմարիտ ապաշխարութեամբ յառաջինսն հանել :

1 Յոյն. կարդալ. եղաւ ըստ յունին :     2 Յօրինակին խորհական :

Բայց ոչ է ժամանակ ձեզ յաղագս ապաշխարանաց լսել բանս, մանաւանդ թէ և մի խոկ երբեք լիցի ժամանակ դեղոցն, այլ միշտ կալ մեզ՝ զգեղեցկութիւնն և զպայծառութիւն զոր հանդերձեալ էք առնուլ այժմ՝ անպատրաստ ապահել: Ներ և յաղագս առաքինութեանն ձեզ խօսեցուք սուղ ինչ. քանզի կրթարանին անվըտանգաւոր է ըմբշացն գլորումն, և զի առ ընտանիս է մեզումն, և որ զնոյն զհնարս տանին մարմնոյ նոցա վարդապետքն: Բայց յորժամ հանդիսին ժամանակ լինի, յորժամ բանայցէ ասպարէզն, յորժամ տեսարանն 'ի վեր անդ նստցի, յորժամ նահատակացն մերձեսցի, հարկաւոր լինի այնուհետև կամ ծուլանալով անկանել և հանդերձ բազում ամօթով 'ի բաց երթալ գընալ, և կամ փութացեալք պսակացն և յաղթանակացն հանդիպել:

Այնպէս և ձեզ առ ուրբս այս կրթարանի ուսմանն նմանեսցին. վարժից և հրահանգից դիցուք զմիտս յայսմ հետէ արդէն իսկ յաղթող լինել զիւրն այնմ: Քանզի ընդ նոսա հանդերձեալ եմք մարտնչել, ուսցուք այսուհետև զմեքենայս նորա արդէն ուստի է զօրաւոր, ուստի դիւրաւ զմեզ զրժել կարէ. զի հանդիսին մերձ եղելոյ մի օտարոտի ինչ չար կրեսցուք, և մի ամենախնեալք լիցուք՝ նոր զհնարսն տեսանելով. այլ արդէն իսկ 'ի մէջ մեր վարժեալք և զխորդախութիւն ուսեալք, հանդերձ համարձակութեամբ բուռն հարցուք զմարտէն նորա:

Ամենայն ուրեք զմեզ խարդախել սովորեաց, բայց մանաւանդ լեզուաւ և բերանով. զի ոչ ինչ է այնպէս պատեհագոյն գործի նմա 'ի խաբէութիւն և 'ի կորուստ մեր, իբրև զանարգել լեզու և զանդուռն բերան: Նոյն մեզ յաճախագոյն կործանումն, անտի դժնդակութի: Եւ զդիւրագայթակղութիւնն որ լեզուաւն լինի, յայտնելով իմն ասէր. «Յոլովք անկան սրով, և ոչ որպէս որք անկան վասն լեզուի»: Եւ զդժնդակագոյն կործանումն յայտնելով դարձեալ ինքն այսպէս ասէ. «Գլորումն յերկրէ լիցի, քան եթէ գլորումն 'ի լեզուոյ»: Եւ զոր ասէն այս է, լաւ ագոյն է անկանել և խորտակել մարմնով քան եթէ բան ինչ այնպիսի արտաքս հանել որ զանձն մեր կորուսանէ: Եւ ոչ ասէ անկումն միայն, այլ և պատուիրէ յորնագոյն առնել խնամ, զի մի ընկ-

ճեսցիս, այսպէս իմն ասելով. «Ա՛րա բերանոյ քում դուռն և նիգ»։ ոչ զի դուռն և նիգս պատրաստիցեմք, այլ զի հանդերձ բազում զգուշութեամբ առ անփայելչագոյն բանան զլեզուն փակիցեմք։ Նաև դարձեալ այլուր ցուցանելով եթէ հանդերձ մերով փութով և նախ քան զմերն 'ի վերուստ կարօտանամք օգնականութեան, որպէս զի զասացուածն զայն արգելուցուս 'ի ներքս, առ ած զձեռսն 'ի վեր ձգելով մարգարէն ասէ. «Համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի։ Դի՛ր տէր պահպանութիւն բերանոյ իմոյ և դուռն ամուր շուրջ զշրթամբք իմովք»։ և որ զօրագոյնս և դարձեալ պատուիրէ ինքն. «Ո՞ տացէ պահպանութիւն բերանոյ իմոյ և 'ի վերայ շրթանց իմոց կնիք ամենագործ»։ Տեսանե՞ս զի իւրաքանչիւր երկնչէր 'ի կործանմանէն յայնմանէ, աղաչելով և խորհրդակից լինելով աղօթելն յաճախապէս զլեզուն պահել։

Նաև ընդէր, ասեն, եթէ այնպէս բերէ մեզ զսատակումն գործիս այս, եդ 'ի մեզ զսա 'ի սկզբանն ած։ Վասն զի և յոլովս ունի զօգտակարութիւն. և եթէ զգուշանայցեմք՝ օգտակարութիւն ևեթ լինի, սատակումն և ոչ մի ինչ։ Նաև լուր զինչ ասէ որ զառաջինսն զայնոսիկ ասաց. «Ի ձեռին լեզուոյ կեանք և մահ»։ Նաև Քրիստոս զնոյն զայս յայտնէ ասելով. «Ի բանից քոց արդարասցիս և 'ի բանից քոց դատապարտեսցիս»։ քանզի 'ի միջի կայ լեզուն, և առ երկաքանչիւր վարի դու ես տէր։ Նոյնպէս սուր 'ի մէջ կայ. եթէ հակառակ պատերազմացն վարեսցիս, փրկական լինի գործի քեզ եղև. ապա եթէ ընդդէմ քեզ զհարուածն մղեսցես, ոչ երկաթի բնութիւն, այլ քո անօրէնութիւն լինի սպանմանն պատճառ։ Նոյնպէս և յաղագս լեզուոյ զմտաւ ածցուք. սուր է 'ի մէջ կացեալ, արա զնա հակառակ մեղացն քոց յամբաստանութիւն, և մի ընդդէմ եղբօրն զվէրն մղեսցես։ Վասն այնորիկ կրկնակի պարսպաւ շուրջ պարսպեաց զնա ած՝ ատամանցն ցանկով և շրթանցն պարսպաւ, զի մի դիւրաւ և առանց հարցաքննելոյ արտաքս փախիցէ անպատշաճ բանքն մեր։ Արդ սանձեա զնա։ Այլ ոչ ներէ և ողջախոհացս, ատամանցն իբրև դահճաց ումանց մատնելով զնորա մարմինն՝ հրամայեաց և խածանել. քանզի լաւագոյն է նմա

խածանիլ այժմ ատամամբք 'ի մեղանչելն, քան եթէ հայցել յայնժամ կաթ ջրոյ, և տապակեալ ոչ պատահել մարդասիրութեան: Յոլովս և այլ մեղանչել սովորեաց լուտալով, հայհոյելով, գարշելի բանս յառաջ բերելով, զրպարտելով, երդնլով և սուտ երդնլով:

Բայց զի մի զամենայն համօրէն[1] ձեզ ասելով պատանդիցեմ զձեր զմիտսդ, մի օրէնս առ ժամն ձեզ դնելով որ յաղագս երդման է պահպանութիւն, զայն յառաջագոյն ասելով և հուշակեցուցանելով եթէ ոչ փախչիցիք յերդմանէ, ոչ ասեմ 'ի սուտ երդմանց ևեթ, այլ և յերդմանցն որ յաղագս արդարութեանն լինի եթէ ոչ փախչիցիք, ոչ ևս յաղագս այլոց պատճառի ընդ ձեզ խօսեսցուք: Քանզի յիմարութիւն է եթէ որ գրոց են վարդապետք ոչ յառաջագոյն ընձեռել մանկանցն զուսումն մինչև զառաջինն քաջ գիտիցեն կառուցեալ զյիշատակն, իսկ մեզ զառաջինն զուսումնն ոչ կարացեալ ասել հաստատեալ՝ այլ դարձեալ առաջին արկանել, քանզի ոչ այլ ինչ է այս, այլ 'ի կարասծակ արկանել ջուր: Արդ զի մի զմեզ ըմբերանիցէք, յաճախապէս արարէք իրիդ փոյթ: Քանզի դժնդակագոյնք են այն մեղք և յոյժ չար, և առաւել դժնդակք զի ոչ թուեցան դժնդակ. և վասն այսորիկ 'ի նոցանէ երկեայց, զի ոչ ոք 'ի նոցանէ երկեաւ. յաղագս այսորիկ անբժշկելի հիւանդութիւն, զի և ոչ հիւանդութիւն իսկ թուեցաւ գոլ: Այլ իբրև խօսել ինչ վայրապար որ ոչ ունիցի բամբասանս, նոյնպէս և ոչ այնոքիկ մեղադրութիւն ինչ լինել կարծին, և հանդերձ բազում համարձակութեամբ անօրէնութիւնն յանդգնեալ լինի. և եթէ ոք մեղադրէ, վաղվաղակի ծաղր զհետ երթայ և կատականք բազումք, ոչ որք բամբասեն յաղագս երդմանցն, այլ և որք ուղղեալ յախտէն կամիցին: Վասն այսորիկ յաճախագոյն յաղագս նոցա յերկարեմ զբանս, քանզի որ 'ի խորոջն արմատն է՝ 'ի վեր գլխել ախորժեմ և զբազմաժամանակեայ զչարն լուծանել. ոչ ասեմ զյոգներդմնութիւնն միայն, այլ և զնոյն իսկ զբարի երդմունսն կարճել պատուիրեմ:

Այլ այս անուն, ասեն, երդնու, այր հեզ և 'ի քա-

1 Յօրինուածքն համօրէ:

հանայութիւն կատարեալ, բազում ողջախոհութեամբ և երկիւղիւ կեալ: Մ՞ի ինչ զնա հեղ ասիցես և ողջախոհ և կատարեալ 'ի քահանայութեանն. այլ եթէ կամիս, դիր զՊետրոս զնա կամ զՊաւղոս կամ զհրեշտակ յերկնից իջեալ. զի և ոչ այնպէս 'ի բաց գնամ 'ի պատուականութենէ դիմացն: Զի ոչ ծառայական ինչ օրէնս, այլ թագաւորականս ընթեռնում յաղագս երդմանցն ես. յորժամ թագաւորի ինչ իրք ընթերցեալ լինին, ամենայն ծառայիցն պատիւ դադարեացէ: Եթէ ունիս ինչ ասել եթէ Քրիստոս երդնուլ հրամայեաց, եթէ Քրիստոս ոչ պատուհասէ լեալ, զայն ցոյց և հաւանիմ: Ապա եթէ այնքան փութով արգել և այնպիսի նախախնամութիւն յաղագս իրացն առնէ, մինչ զի ընդ չարս կացուցանել որ երդնուն, “ քանզի աւելին քան զայս, ասէ, 'ի սատանայէ է „, զի՞նչ և ինձ կամ զայս անուն և կամ զայն ածես 'ի մէջ: Զի ոչ յուլութ՟ ծառայակցացն բերէ քեզ ա՟ծ զվճիռն զայն, այլ 'ի հրամանէ իւրոց օրինացն: Հրամայեցի, ասէ, պարտ և արժան էր հաւանել, և ոչ զայս անուն առաջի արկանել, ոչ զայլոցն զչար խուզել: Զի մեծն Դաւիթ մեղաւ յանցանս դժնդակս, անվտա՟նգ արդեօք մեզ յաղագս այսորիկ մեղքն լիցին, ասա ինձ: Այլ վասն նորին զգուշանալ է պարտ և արժան, և ընդ ուղղութիւնս սրբոցն նախանձել. ապա եթէ ծուլութիւնս ուրեք և կամ օրէնս ինչ առաջի դնես, հանդերձ բազում փութով 'ի բաց փախչիմ: Քանզի ոչ ընդ ծառայակիցս մեր բանս է, առ տէրն եղիցի, և նմա զվարսն տացուք զամենայն կենաց մերոց: Արդ առ այն ատեան պատրաստեսցուք. զի թէպէտ և բիւր անգամ ազանչելի ոք իցէ և մեծ, և զօրինօքն զայնոքիւք զանց առնէ, տացէ ամենայն իրօք զհաստատեալ պատուհասն: Ոչ միայն պարտ և արժան է դժնդակագոյն ցուցանել զմեղսն, այլ և որպէս ազատեալ լիցուք՝ խորհրդակից լինել: Ունիս կին, ունիս ծառայս և մանկունս, բարեկամս, ազգայինս և դրացիս, ամենեցուն նոցա յաղագս այնոցիկ հրամայեաց զպահպանութիւնն: Չար է սովորութիւն և դժնդակ գայթակղութիւն և դժուարապահելի, և ակամայս բազում անգամ զմեզ և ոչ գիտացեալս արկանէ յախտն: Որքան գիտիցես զսովորութեանն զօրութիւն, այնքան

'ի չար սովորութենէն ազատանալ ձեպեցիր, և առ միւս ևս պիտանացու զախտն փոփոխեա։ Զի զոր օրինակ այժմ փութացեալ և որ պահէն և որ հոգայ և խորհի՝ կարէ յոլովակի ընկճել նա, նոյնպէս եթէ 'ի բարի սովորութիւնն զքեզ փոփոխեսցես ոչ երդնուլ, և ոչ ակամայ յուլանալով անկանել կարասցես երբեք կալ յերդման 'ի կործանումն։ Մեծ է արդարեւ սովորութիւն և զնութեանն ունի զօրութիւն։ Որդ զի մի աշխատեսցուք, 'ի մերձաւորացն զայն շնորհ խնդրեա՛ց, զի խորհրդակից լինիցին և պատուիրեսցեն մի երդնուլ և զմեղանեալսն յանդիմանեսցեն. քանզի 'ի նոցանէ քեզ լեալ պահպանութիւնն՝ և նոցա լինի խորհրդակցութի և պատուիրան յուղղութիւն։ Զի որ բամբասէ զայլ յաղագս երդմանց, ոչ դիւրավ ինքն 'ի նոյն վիհ անկանի. և ոչ իսկ է դուզնաքեայ վիհ յոքներդմնութիւնն, ոչ յորժամ փոքունց ինչ, այլ յորժամ վասն մեծամեծ իրաց լինիցի։ Իսկ մեք և յաղագս բանջարոյ երդնումք և վասն երկուց դանգաց յամառելով և ծառայի բարկացեալ սպառնալով։ Զած ամենայն ուրեք կոչեմք վկայ. զմարդ ոք ազատ որ 'ի սակ պատուականութեան իցէ, թերևս ոչ համարձակէիր կոչել այնպիսեաց իրաց վկայ, եթէ յանդգնէիր՝ պատուհասէիր յաղագս թշնամանացն. իսկ զերկնից թագաւորն, զհրեշտակաց տէրն վասն կերակրոյ և ընչից և յաղագս դուզնաքեայ իրաց խօսելով ձգես 'ի վկայութի, և զիա՞րդ այս ներելի։

Իսկ որպէս վճարումն մեզ 'ի չար սովորութենէն լինիցի. զպահպանումն որպէս ասացի, շուրջ կացուցանելով, ասացեալ ինչ ժամանակ սահմանեսցուք անձանց առ յուղղութիւնն. տուգանս 'ի վերայ դիցուք, եթէ նախ քան զժամանակին անցանել ոչ ուղղիցեմք զայն։ Իսկ որքան ձեզ ժամանակն բաւականասցի։ Ես կարծեմ յոյժ արթուն եղելոց և սթափելոց և որք յաղագս իւրեանց փրկութեանն տքնիցին, առաւել քան[1] զտասն օր կարօտանալ, որպէս զի ամենևին 'ի բաց վճարել 'ի չար սովորութենէ երդմանցն։ Նա եթէ զաւուրս ինչ երևեսցուք երդնուլ, դատաստան 'ի վերայ

1 Յօրինակին եղեալ էր այսօր 'փոխանակ բառիցդ քան զտասն օր. եդաւ ըստ յունին։

մեր դիցուք և մեծ պատիժս և տուգանս սահմանեալս յաղագս զանցանելոյն։ Նա զինչ են տուգանքն։ Ո՛չ այն ոչ են սահմանեալ, այլ զձեզ անձամբ տեսանել կամեցող։

Ո՛ր եթէ այսպէս զմեր խրատ անօրինեցէք, ոչ միայն յերդմանցն, այլ և որ յաղագս այլոց նուազագոյն ժամանակս սահմանելով և դատապարտելով զանձինս դըժնդակ պատուհասիւք՝ եթէ երբէք անկցուք յայնպիսի խօս, մերժուցուք առ անէծս մեր եղիցուք և 'ի հրոյ գեհեննոյն արժանաւոր լիցուք և հանդերձ համարձակութե̄ կացցուք առաջի բեմին Քրիստոսի. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութե̄ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ՅԱՌԱՋՆՈՒՄ ԱՒՈՒՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆՆ ԽՕՍԵԼՈՎ ՅԱՂԱԳՍ ԵՐԴՄԱՆՑՆ ԶԱՅՍ ԱՄԱՑ Ի ՆՈՑՆ ՊԱՏՃԱՌ ԴԱՐՁԵԱԼ, ՈՒՍՈՒՑԱՆԵԼՈՎ ԵԹԷ ՈՉ ԵՐԴՆՈՒԼՆ ՄԻԱՅՆ, ԱՅԼ ԵՒ ՃՇՄԱՐԻՏ ԵՐԴՆԼՈՎ ՊԱՏԻԺՍ ՈՒՆԻՄՔ. ԵՒ ԵԹԷ ԱՊՇԵԼԱՊԷՍ ՔՐԻՍՏՈՍ ՅԵՐԲՈՐԴՈՒՄ ԱՒՈՒՐՆ ՅԱՐԵԱՒ *

Հալածիցէ՞ք արդեօք 'ի բաց 'ի բերանոց ձերոց զչար երդմանցն սովորութի̄։ Վասնզի ոչ մոռացայց յաղագս որոյ խօսեցայ ես առ ձեզ, և ոչ վասն որոյ դուքն ինձ խոստացայք. պատճառս այսորիկ աղաչեմ զի ես խօսեցայ և դուք խոստացայք, ոչ բանից, այլ գործութեամբ պատուիրելոյն, մեծագոյն է այս խոստումն քան որ 'ի ձեռն բանիցն է։ Ո՛չ թէ որ բանիւ խոստանայ, բազում անգամ լեզուովն հաւանի. իսկ որ գործէ զատուցեալսն, ոգւովն առնէ զհաւանութիւնն։ Ջնջեցէ՞ք արդեօք զլեզուսդ ձեր 'ի չար աղանդոյն, փախուցէ՞ք արդեօք զժանտ ախտն 'ի քահանայական գաւառէդ. ես կարծեմ եթէ ջնջեցէք։ Վասնզի զմեծ թագաւորն հանդերձեալ էք ընդունել, և 'ի յոյժ վարդապետութիւնս և 'ի հոգևորս վարժեցէք յիմաստութիւն հարցս. և ժամանակ բազում

* Թէպէտ և յոյն բնագիր այսր ճառի կորուսեալ իցէ, այլ հարազատութիւն նորա և անուն իսկ յայտ է զի զոր խոստացաւն 'ի նախընթացին յէջ 137 առնել յաղագս պատճառի որոշման ժամանակի մկրտութեան և այլոց կարևոր գիտելեաց, կատարէ 'ի սմա յէջ 149։

և տուեալ առհմանն 'ի կատարածն այսուհետև եհաս, և դուք դիւրերատանակք և հաւանողք։ Վասնզի հաւանեալք միշտ առաջնորդաց ձերոց և հպատակեք յայդ ամենայն, կարծեմ վստահանալով թէ ուղղիցէք զարնաւն ։

Բայց ոչ ախորժեմ յերկուանալով կաղակարծել, այլ գիտել հաւաստեաւ. քանզի յորդորագոյնս այնպէս զխորհրդական բանիցս բուռն հարկանէի, զհոգս յաղագս երդմանցն 'ի բաց գնելով, և հանդերձ բազում համարձակութեամբ ձեզ առաջնորդէի՝ առ սարսափելի խորհրդածութիւնս այս մտածանել յանմոռանելիսն, ցուցանել զորբութիւն որբութեանցն և որ ինչ անդ ամենայն, ոչ սափոր ունի մանանայ ունելով, այլ մարմին տէրունական զհացն երկնային. ցուցանէի ձեզ ոչ տապանակ փայտեղէն՝ քարեայ տախտակս ունելով և օրէնս, այլ մարմին անարատ և սուրբ, որ զնոյն ինքն ունի զօրէնսդիրն. ցուցանէի արդեօք 'ի ներքս ոչ անարատ ոչխար. զենեալ, այլ զգառն այ զենեալ զենումն խորհրդական, յորմէ և ինքեանք իսկ հրեշտակքն դողան տեսանելով. ցուցանէի արդեօք ձեզ ոչ զԱհարոն 'ի ներքս մտեալ հանդերձ ոսկեհուռն պատմուճանաւ, այլ զմիածինն մտեալ, զնախնեակս մերոյ բնութեանն ունելով, նմին հօրն ցուցանել զմեծութիւն ուղղութե. “Վասնզի ոչ եթէ 'ի ձեռագործ սրբութիւնս եմուտ Քրիստոս յօրինակս ճշմարտութեանն„, այլ 'ի նոյն ինքն յերկինս այժմ երևեալ երեսացն այ։ Նոյն վարագոյր ոչ այնպէս որպէս ունէր հրէական տաճարն, այլ յաւէտ առաւել։ Եւ լուր որպիսի զինչ է այս վարագոյր, զի ուսցիս որպիսի էր անդ սրբութիւն սրբութեանն, և որպիսի է աստ։ Վասնզի “ունիմք, ասէ, բազում համարձակութիւն 'ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի վարագուրաւ, այս է մարմնով իւրով„։ Տեսե՞ր զիարդ այս քան զայն վարագոյր առաւել է։

Յայս խորհրդածութիւնս ախորժէի այսօր առաջնորդել ձեզ. բայց զինչ կրեցից, ոչ ներեն ինձ երդմանցն հոգք, հալեն զիմ անձն։ Եւ գիտեմ զի բազումք ստգըտանեն զառաւելութիւն ասացելոցս, լսելով եթէ մաշեմ զիմ անձն. վասն զի փոքր ինչ կարծեն զմեղսն ։

Բայց յաղագս դորին իսկ առաւել ողբամ, զի այլ յանցանք են մեծամեծք և թուին դժնդակք, սպանութիւն և շնութիւն. և են չարք և կարծին չարք. իսկ երդումն է դժնդակ, բայց ոչ թուի գոլ չար։ Յաղագս այսորիկ ողբամ, եւ զարհուրիմ ՚ի մեղացն. քանզի այսոքիկ են սատանայական խարդախութեանն՝ ծածկաբար ՚ի ներքս ածել զմեղսն, և որպէս սովորական կերակրով զմահացուն, նոյնպէս ՚ի կարծիս մարդկան ծածկեաց զերդումն։ Իսկ արդ զինչ. յերդմանս զամենայն վարդապետութիւնս ծախեցեմք. և ոչ երբէք. վասն զի և կարծեմ գոլ զժամանս յօրինեալս։ Զոր օրինակ սերմանողքն որ ելին սերմանել, ոչ ամենայն սերմն ՚ի փուշ անկաւ և ոչ բովանդակ յապառաժ, այլ յոլով և ՚ի բարի երկիր սերմանեցան, նոյնպէս և անկարողութիւն է նորին վարդապետութեանն եղելոյ յայսքան ՚ի բազմութիւնս և ոչ բնաւ լինել պտուղս։ Իսկ արդ զի յոլովք ուղղեցին և ոչ ամենեքեան, բաժանեսցուք և մեք զբանս։ Արժան և արժան է ոչ յարմարեցելոցն և ոչ ամենեքին իսկ լսել խորհրդական բանիցս. բայց զի մի դժրեսցին նոքա, շնորհեսցուք յուղղեցելոցն յառաքինութիւնս. քանզի յոյժ լաւագոյն է շնորհել նոցա յաղագս փութացելոցն, քան եթէ զառաքինիսն զրկել վասն պղերգացն։

Յիշել կամիմ զպարտսն ձեր զոր յառաջնում խօսսն խոստացայ և ոչ ընձեռեցի, առ կարևորս ձեպեցուցանելով զմեզ բանին։ Իսկ զինչ են պարտքն այն։ Խնդրէի առ ձեզ՝ ընդէ՞ր արդեօք հարքն մեր զամենայն ընդտարւոյն ժամանակաւ զանց առնելով, յայսմ ժամանակի օրինադրեցին զձեր զանձինս ածել ՚ի խորհուրդս յայս, և եթէ ոչ վայրապար և ոչ սնոտի ժամանակիս յայսմ պահպանութիւն եղև, քանզի միշտ է նոյն շնորհ և ոչ երբէք խափանի. վասն զի ա̃ծային է շնորհ, ունի իմն խորհրդական և պահպանութիւն։ Իսկ ընդէ՞ր այժմ օրինադրեցին զտօնս զայս հարքն։ Այժմ մեր թագաւորն յաղթեաց պատերազմի որ առ բարբարոսն էր, վասն զի բարբարոսք են և քան զբարբարոսս վայրենիք ամենայն դևք. այժմ զմեղսն եղոյծ, այժմ զմահ շիջոյց և զսատանայ հնազանդեցոյց և զգերեալսն էառ, այժմ զյաղթանակին զայնորիկ զյիշատակս տօնեմք ընդմերձակայ զօրս. յաղագս այնորիկ օրինադրեցին հարքն

Digitized by Google

զթագաւորական պարգևս բաշխել. քանզի այս է յաղթականացն օրէնք: Նոյնպէս և արտաքին թագաւորք առնեն, զօրաւոր յաղթանակացն յոլով պատուով պատուեն. այլ այն պատիւք անպատուութ̃ք են: Քանզի որ պատիւ են աւետարանք և որք 'ի աւետարանին գործք և խօսք. ոչ ամենայն ամօթով լինել և բազում ծաղու. բայց այս պատիւ պատուոյն մեծապարգևութ̃եց արժանաւոր է:

Յաղագս այսորիկ օրինադրեցին, զի քեզ յիշեցուցեն 'ի ձեռն ժամանակիս զյաղթութիւնս, զի 'ի յաղթանակս լեալ ունիք պայծառ հանդերձս զգենլով մրցանակացն 'ի պատիւ թագաւորին. և ոչ վասն այսորիկ միայն, այլ զի և ժամանակիս հաղորդիցիք տեառն: Խաչեցաւ, ասէ, 'ի փայտին, խաչեցիր և դու 'ի ձեռն մկրտութեան. վասն զի խաչն է մկրտութիւն և մահ, մահ մեղացն, և խաչն հնոյ մարդոյն: Եւ լուր զինչ ասէն Պաւղոս; զիարդ զերկոսեան ասէ յաղագս մկրտութեան, զի մահ մեղացն է և խաչ. "Եթէ անգիտանայք զի որք 'ի Քրիստոս մկրտեցայք, 'ի մահ նորա մկրտեցայք". և դարձեալ. "Հին մարդն մեր խաչակից եղև, զի խափանեսցէ զմարմինն մեղացն": Եւ զի մի լսելով զմահ և զխաչ զարհուրեսցիս, 'ի վերայ եած՝ թէ մեղացն է մահ և խաչ:

Տեսեր զիարդ խաչն մկրտութիւն է. ուսիր զի և ըզխաչն մկրտութիւն կոչեաց Քրիստոս. զի փոխ առեալ քեզ և երախտիս առնելով զանուանսն զմկրտութիւնն քո կոչեաց խաչ, և զխաչն զիւր կոչէ մկրտութիւն: Եւ ո՞ւր է այս, ասէ. "Մկրտութիւն ունիմ մկրտել", զոր դուք ոչ գիտէք: Եւ ուստի՞ յայտ է թէ յաղագս խաչին ասէր: Մերձեցան առ նա որդիքն Զեբեդեայ, մանաւանդ եթէ մայր որդւոցն Զեբեդեայ, աղաչելով եթէ "Ասա զի նստցին մի յաջմէ և մի յահեկէ": Ո՛չ է խնդիրս այս, թէպէտ և առանց այցելութեան էր: Եւ զի՞նչ Քրիստոս. "Կարէ՞ք զբաժակն ըմպել զոր ես հանդերձեալ եմ ըմպել, և զմկրտութիւնն զոր ես մկրտիմ մկրտիցիք": Տեսանե՞ս զի մկրտութիւն ըզխաչն քո կոչեաց: Եւ ուստի՞ է այս յայտ. "Կարէ՞ք, ասէ, զբաժակն ըմպել զոր ես հանդերձեալ եմ ըմպել": Բաժակ զչարչարանսն ասէ, յաղագս որոյ և ա-

սէր. «Հայր եթէ կարողութիւն է, անցցէ բաժակս այս յինէն»։

Տեսէ՞ր զիարդ զմկրտութիւն խաչ կոչեաց. և կոչեաց այնպէս, ոչ զի ինքն մաքրեալ լինէր. քանզի որպէս ար-դեօք որ մեղս ոչ արար և ոչ նենգութիւն էր 'ի բերան նորա. այլ վասն զի արեամբն որ հոսեցաւ անտի՝ զա-մենայն աշխարհ մաքրեաց։ Յաղագս այսորիկ և Պօղոս ասէ. «Տնկակիցք եղեաք նմանութեան մահու նո-րա մկրտութեամբ»։ Ոչ ասաց մահուն, այլ նմանու-թեանն մահու նորա. քանզի մահ է և այն և այս, այլ ոչ նորին իրի. վասն զի նա մարմնոյ մահ, և սա մեղաց, յաղագս այսորիկ նմանութեան մահու։

Այլ արդ զինչ, մեռանիցիմք միայն ընդ տեառն և 'ի տիրականսն հաղորդիցիմք. մանաւանդ զի և ոչ այն իսկ է տիրական հաղորդել տէրունեան մահուն։ Աւասիկ փոքր ինչ ներքոյ, և ուսուցեալ 'ի վայելչութիւնսն հա-ղորդելոյ։ «Զի եթէ մեռաք ընդ նմա, ասէ, հաւա-տամք թէ և կեցցուք ընդ նմա»։ վասն զի միանգամայն թաղումն և յարութիւն 'ի մկրտութիւնն. 'ի նմին ժա-մանակի թաղու 'ի խոնարհ զհին մարդն, և առնու զնորն և յառնէ, որպէս յարեաւ Քրիստոս փառօք հօր։ Տե-սանե՞ս զիարդ դարձեալ յարութիւն ասէ։

Բայց ընդէ՞ր արդեօք մեր յարութիւնս և թաղումն և մարմին 'ի նմին ժամանակի. վասն զի միանգամայն թաղիմք և յառնեմք, իսկ տէրունականն յամեաց զի յերրորդում աւուրն յարեաւ։ Բայց ընդէ՞ր մեր յա-րութիւնն յանկարծակի, և տեառն յամրագոյն. զի ու-սցես եթէ ոչ յաղագս տկարութեան էր յամրութիւնն. քանզի որ զծառայն յարուցանել կարէ 'ի միում վայր-կենի, եւս առաւել զինքն կարէր յարուցանել։ Այլ վասն է՞ր յամրութիւնն, ընդէ՞ր յերրորդում աւուր. զի յա-մելով 'ի մահուն և հեղգութեամբն՝ առաւել յերկա-նալոյ յարութեանն ցոյցք լինիցին։ Զի եթէ այնքան ցոյցք յարութեանն եղեն, և այժմ են ոմանք մարդիկ որ ասեն՝ եթէ առ աչօք չարչարեցաւ, եթէ ոչ էր լեալ այնքան յամրութիւնն՝ զինչ արդեօք ոչ ասէին նոքա։ Զի ոչ բանիւ յարութեանն միայն կամեցաւ սատա-նայ զրժել, այլ և հաւատով մահուն. վասն զի գիտէր հաւաստեաւ եթէ նոր դեղ աշխարհի՝ փրկական մահն

էր. և արտաքս հանել 'ի հաւատոյն յայնմանէ զմար-դիկ փութայր, զի 'ի բաց բառնայցէ զփրկութիւնն. յա-ղագս այնորիկ յամէր տէրն 'ի յարութեանն.

Այլ մերձեցեալ Հրէայքն ասէին՝ տուր մեզ զխնդրս զի պահեսցուք զգերեզմանն: Ո՛վ լրբութեանն. ե-տե՞ս երբէք, ով հրէայ, զմեռեալ ընդ պահպանութեամբ. զի եթէ հաւատար այլոց իցէ մեռեալդ և լոկ մարդ խա-չեցեալդ, վասն էր օտար և անկարծելի առնես զերդ, ընդէ՞ր զարհուրիս և դողաս և պահպանես հաւաքեալ: Բայց տակայն և ոչ զայն արգել ա՟ծ. այլ ներեաց պա-հել, " զի 'ի գործս ձեռաց իւրոց կապեսցի մեղաւորն ": Արդ ասէին՝ տուր մեզ զզինուորս, զի մի գողասցին ա-շակերտքն իւր զնա և ասիցեն թէ յարեաւ: Այլ դիպե-ցաւ հակառակ նմին. առին զզինուորսն, զի մի 'ի յա-ռնելն նորա ասիցեն թէ աշակերտքն նորա գողացան զնա և ոչ յարեաւ: Այլ որք հակառակ վկայութեանն հնա-րեցան, 'ի վկայութիւն յարութեանն եղև. զխափա-նիչս յարութեանն իւրոյ վկայս արար յարութեանն Ք՟ս, զի 'ի բաց հատցէ զպատասխանիս նոցա յաւուր յայն-միկ: Արդ եթէ ընդէր 'ի ժամանակիս յայսմիկ խոր-հրդածել հրամայեցին հայրքն, բաւականապէս ինձ թուի զոր 'ի ձեռն ասացելոցս ձեզ յանդիման կացուցաք:

Կամիմ և միւս ևս պարտս ձեզ ընձեռել, եթէ ոչ 'ի ձանձրութեանս իցէք աշխատեալ, և ասել եթէ էր աղա-գաւ մերկս և բոկս զձեզ աստուստ առ երդմնեցուցչացն ձայնս առաքեմք: Ո՞չ է և աստ նոյն պատճառ դարձեալ էր. և վասն զի պատերազմի յաղթեաց թագաւորն, և զերիս էառ. և զի այս է զերեացն ձև, լուր Հրէից զինչ ասէր ա՟ծ. " Որ օրինակ գնաց ծառայ իմ Եսայի մերկ և բոկ, նոյնպէս գնասցեն որդիքն Իսրայելի մերկք և բոկք 'ի գերութիւն ". Արդ ախորժելով այժմ յի-շեցուցանել կամիմ [1] ձեզ զառաջին բռնաւորութիւնն սատանայի. ձևովդ առաքէ զքեզ առ 'ի յիշատակ չա-րագործութեանն հնոյ: Վասն այդորիկ ոչ բոկք և ոչ մերկք միայն կայցաք, այլ և զձեռս յետս կողմանէ ունելով. զի և այդպիսի խոստովանեսցի ա՟յ տէրութիւն, առ որ այժմ մերձեցաք, աւար էք և 'ի կապանս ամե-

[1] Օրինակին պակասէր կամիմ:

տութիւն և անմաքրութիւն: Յուր զխարդ զնոցա բնութիւնն Դաւիթ ասէր. “Իբրև զբեռն ծանր ծանրացաւ 'ի վերայ իմ. նեխեցան և փտեցան վէրք իմ„: Մ՝եք արտաքս պեղեմք զժահահոտութիւն և ամբարեմք զնոյն հոգևոր. իսկ երդմնեցուցիչքն 'ի ձեռն ահաւորութեան ջուր խուզեն, մի՛ գուցէ գազան, մի՛ օձ, մի՛ կարիճ, մի՛ իժ: Քանզի զկնի զահաւոր զձայնն զայն լսելոյ, թէպէտ և չար է գազանն՝ վտանգի, ոչ թաքչի և ոչ որջանայ, այլ 'ի վեր գայ և փախչի, թէպէտ և ոչ կամի:

Ախորժէի և միւս իմն ասել զոր ոչ խոստացայ, և հարկաւոր է ասել: Ընդէ՞ր մեք հաւատացեալք և ոչ նուիրեալքդ երախայք. քանզի վատթար է, արդարև ծիծաղելի՝ պատիւ ընդունելով և ոչ զանուն պատուոյն գիտել: Զինչ կրեցից. 'ի վերայ կացին ինձ դարձեալ երդմնչացն հողք, և զյամրութիւնս կոչէ և զբանս ձգէ առ ինքն: Վասն այսորիկ զայս 'ի յառաջիկայ բանսն յապաղեմք. յերդմանցն 'ի սովորութենէ դարձցուք այժմ:

Դժնդակ է երդումն, ով սիրելիք, դժնեայ և վնասակար դեղ, սատակիչ անձանց, չար վէր, ծածկեալ կեղ, անյայտ ուտիչ, գաղտաբար զթոյնն յոգին արկանէ, նետ սատանայական, տէգ հրացեալ, սուր երկսայրի, սուսեր սրեալ, մեղք աններելիք, չարութիւն որ վճարումն ինչ ոչ ունի, վիհ խորին, գահավիժութիւն խիստ, որոգայթ զօրաւոր, վարմ ձգեալ, կապանք՝ լուծումն ոչ կարելով ընդունել, խեղդարկութիւն անելանելի: Բաւական իցեն այսոքիկ. և հաւատացէք եթէ դժնդակ է երդումն և քան զամենայն մեղս չար. հաւանեցարուք աղաչեմ, և եթէ ոք անհաւանի՝ զցոյցն արդէն իսկ ընձեռնեմ: Զի որով և ոչ մի ոք 'ի մեղացն վարի, զայն սխալանս նա ունի. քանզի զայլով պատուիրանաւն զանցանելով 'ի բաց վճարեալ լինիմք 'ի պատժոյն, իսկ զերդումն բազում անգամ պահելով և զանցանելով նմանապէս պատժիմք:

Թերևս ոչ իմացայք զասացեալսդ. հարկաւոր է յայտնագոյնս զնոյն դարձեալ ասել: Բազում անգամ երդուաւ ոք գործել իրս անօրէնս, և անկաւ յանլուծանելի խեղդն. հարկաւոր լինի այնուհետև կամ պահելով զերդումն անօրինել, և կամ ոչ պահելով զնա 'ի սուտ երդմնութիւնն անկանել: Եւ լինի յերկոցունց

կողմանց պահպանութիւն, յերկոցունց կողմանց մահ անհրաժարելի, եթէ պահեն զպատուիրանն և եթէ ոչ պահեն: Իցէ՞ ինչ արդեօք սատակիչ քան զյանցանող զայդ, յորժամ եթէ պահիցէ և եթէ ոչ պահիցէ:

Եւ զի ուսցիս թէ այս այսպէս է, և բազում անգամ անցանելով զերդմամբն միայն՝ այլ պահելով զերդումն՝ պատուհասից զնոքեանս համարապահս արարին, ես ձեզ պատմութիւն այսպիսի ասացից: Հերովդէս զծննդեանն օր երբեմն կատարէր. և զօր յորում ծնաւ՝ կամելով առնել պայծառագոյն, 'ի ներքս եած զդուստր Թագուհւոյն կաքաւել, ոչ գիտելով եթէ մանաւանդ ամաչեցուցանէր զնա. քանզի պարտ և արժան էր գոհանալ զմարդասիրէն ա̃յ, զի զոչէն զնա արար, զի զհոգին ետ, զի զնա 'ի ներքս եած 'ի պարկեշտ ստացուածոցս յայսց 'ի տեսարան, և տեսող արար գեղեցիկ արարչութեանս այսմիկ և սքանչելեացս. պատշաճագոյն էր օրհնութեամբք և գովութեամբք 'ի տէրն պատուել զօրն. իսկ նա անպատուութեամբք ապատուեաց: Ա՞ զի զինչ քան զկաքաւելն է անպատուականագոյն: Յայնմ աւուր կաքաւեաց դուստր Հերովդիադայ:

Լուարուք արք և կանայք որք այնպիսի կաքաւանօք և այնպիսի երգովք զձայն ձեր պատուէք. ոչ փոքր չարիք են այնոքիկ, թէպէտ և թուի անզանազանելի գոլ. յաղագս այնորիկ են մեծամեծ չարիք, զի կարծի անորոշելի գոլ, և ոչ 'ի յոլով նախախնամութիւնան վայելէ. քանզի մեծ հիւանդութիւն՝ նախախնամութեան դիպելով չիջանի, իսկ որ փոքրն թուի լեալ՝ յաղագս նորին արհամարհեալ լինելով մեծ լինի: Զինչ ասես, 'ի տուն հաւատացելոց իշխէ՞ ոք կաքաւիչս մուծանել. և ո՞չ զարհուրիմ դուցէ հուր 'ի վերուստ անկեալ բոցակիզեսցէ զամենայն: Զայս և առ կանայս ասեմ զի զարս ողջախոհացուսցին, և յայսպիսի հեշտութեանց 'ի բաց տարցին: Յայնմ աւուր ահաւոր կաքաւեաց դուստրն Թագուհւոյն: Օրհնեալ է ա̃ծ, յորքան ողջախոհութիւն զկեանս մեր փոփոխեաց: Լուարուք, հաւատացեալք, առ որպիսի փեսայ մերձենայք, որ զկեանս մեր զանամօթացեալ այսպիսի պատկառանօք և ողջախոհութեամբ և պարկեշտութեամբ կազմեաց. զի զօր ինչ Թագաւորք յայնժամ ոչ պատկառէին առնել, այժմ և ոչ վատթար աղախինն ոք ախորժեսցէ համբերել:

Կաքաւեաց յայնժամ նա, զկնի կաքաւելոյն միւս ևս մեղս դժնդակագոյնս գործեաց. քանզի հաւանեցոյց զանմիտն զայն խոստանալ հանդերձ երդմամբ տալ նմա զոր ինչ և խնդրեսցէ: Այսպէս և զյիմարս երդումն առնէ. զոր ինչ խնդրիցէ, վայրապար երդուաւ տալ: Եւ զինչ ևս, զգլուխ նորա իսկ խնդրել զինչ կարօտանայր, կամ եթէ զթագաւորութիւնն զամենայն: Այլ ոչ ինչ յայսցանէ նա զմտաւ եած. քանզի 'ի վերայ կայր սատանայ զորոգայթն զօրաւոր առնելով. և յորմէ հետէ զերդումն կատարէր և դնէր զորոգայթն և զվարմն ձգէր ամենայն ուստեք, յայնժամ 'ի վերայ ածէր զհայցուածն զայն, զի անխափանելի լինիցի ըմբռնումն: "Տուր ինձ, ասէ, 'ի վերայ սկտեղ զգլուխ Յովհաննու մկրտչի,,: Անամօթ է խնդիրն և անմիտ տուրքն և վնասակար. երկոցուն այնոցիկ երդումն էր պատճառք: Եւ զինչ ևս պարտ էր առնել: Յիշեցէք արդեօք զի ասացին ևս եթէ և պահելով զպատուիրանն և զանցանելով՝ նմանապէս պատժիմք. տալ պարտ և արժան էր զգլուխն մարգարէին, այլ անըմբերելի էին պատուհասքըն. և ոչ տալ, ընդունէր զսուտ երդմանցն բամբասանսն: Տեսե՞ր զկարգ յերկաքանչիւրոց կողմանց է գահավիժութիւն: "Տուր ինձ, ասէ, 'ի վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու մկրտչի,,: Ո՜վ պիղծ խնդրոյն. և սակայն հաւանեցոյց և կարծեաց ըմբերանել զա̃ծայլն զլեզուն զայն, այլ և նա մինչև ցայժմ գոչէ. քանզի համապազօր յամենայն եկեղեցւոջ լսէք 'ի Յովհաննու աւետարանին աղաղակելով և ասելով "Ոչ է արժան քեզ ունել զկին Փիլիպպոսի եղբօր քո,,: Եհատ զգլուխն, այլ ոչ եհատ զձայնն. կարկեաց զլեզուն, այլ ոչ պապանձեցոյց զյանդիմանութիւնն: Տեսէք զինչ առնէ երդումն, զմարգարէին հատանէ զգլուխն: Տեսե՞ր և զպատրանսն, երկիր 'ի սատակմանէն. տեսե՞ր զորոգայթն, մի՛ անկանիր:

Այլ հարկաւոր է այսուհետև խնայել, զի մի՛ խորին լինիցի հատուցումն. հարկաւոր է այսուհետև դադարեցուցանել զձեռն և զերկաթ արեամբ շաղախեալ և զբանս յերդմնահարութենէն 'ի լռութիւն հանգուցանել: Զայս յիշեսջիք և ոչ երբեք մեղանչիցէք՝ թէ և կատարելով զերդումն և ոչ կատարելով նմանապէս

տանջինք։ Ո՞ւր են այժմ որք ասէին թէ իրաւացի երդումն. քանզի ո՞ւր խիկ են արդար, յորժամ օրինազանցութիւն է. ո՞ւր իրաւացի, յորժամ Ած արգելու և դուառնես։ Բայց ներեցէք այսուհետև պատել[1] մեզ ըղվերոյ. քանզի և պատանն վտանգաւոր[2] իմն է։ Գժընդակ է և սուտ երդնլոյն պատուհասք և նախ քան զվարդապետութիւնս մեր, այլ և դժնդակագոյն յետ վարդապետութեանս այսորիկ. քանզի եթէ ոչ էր եկեալ և խօսեցեալ ընդ նոսա, ասէ, մեղ ինչ ոչ ունէին. բայց այժմ պատճառս ինչ ունին յաղագս մեղացն իւրեանց։

Զայս և առ ձեզ ասել, թէ և ոչ մի պատասխանիք ձեզ այսուհետև դիպեսցի։ Այժմ մկրտութիւն, թէ և սուտերդմնութիւն գոցէ և եթէ զիրաւացի երդնուլն, եթէ պոռնկութիւն, եթէ շնութիւն, եթէ զամենայն չարութիւն, 'ի բաց ընկենու և մաքրէ հանդերձ բազում հաւատութեամբ։ Լիցի ձեզ և յառաջիկայսն զմաքրութիւնն զայն պահել, յամենայն աղտոյ 'ի բաց վճարեալք, և մեզ կարել համարձակութեան իմիք հաղորդել աղօթիւք ձերովք. քանզի իշխանութի՛ է ձեզ և յաղագս վարդապետաց աղօթել այսուհետև, զի յետ սուղ ինչ մեզ յերկնից հանդերձեալ էք երևել, և քան զաստեղս պայծառագոյն ևս փայլել։ Լիցի աղօթիւք ձերովք հաղորդել ամենեցուն մեզ համարձակութեամբ առաջի բեմին Քրիստոսի. ընդ որում փառք հօր հանդերձ սրբով հոգւովն յաւիտեանս. ամէն։

## ԽՐԱՏ ԱՌ ՈՐՍ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ ԷԻՆ ՄԿՐՏԵԼ. ԵՒ ՎԱՍՆ ԿԱՆԱՆՑ ՈՐ ԱՒԵԼՈՐԴ ԶԱՐԴՈՒՔ ԶԱՐԴԱՐԷՆ ԶԻՆՔԵԱՆՍ, ԵՒ ՎԱՍՆ ՆՇԱՆԻ ՊԱՏԿԵՐԱՑ ԱՅԼԱԶԳԵԱՑ ՈՐ ԿԱՊԵՆ Ի ՁԵՌՍ ԻՒՐԵԱՆՑ ԵՒ ՅՈՏՍ ԿԱՄ Ի ԳԼՈՒԽՍ, ԵՒ ԶԻ ՕՏԱՐ Է ԱՅՍ Ի ՀԱՒԱՏԱՑԵԼՈՑ ՔՐԻՍՏՈՍԻ

Զյառաջագոյն ասացեալսն սիրոյ ձերում, այժմ նախ մերձ եղէ զպատուղն խնդրել 'ի ձէնջ. զի ոչ թէ վասն այսորիկ ասեմ թէ լուիցէք միայն, այլ զի յիշեսջիք հանապազ զասացեալսն, և զնոյն հանդերձ զօր-

1 Ցօրինակին պատմել։ 2 Ցօրինակին վտաւոր։

ծովք տայցեք մեզ ցուցումն. մանաւանդ ոչ եթէ մեզ միայն, այլ նմա որ զանձառելին մնաց մերոյ քննել ։ Սան որոյ և հնչումն առի, զի յամենեցունց մեր 'ի միտս հնչեսցէ բանն ։ Եւ մի սքանչանայք եթէ զկնի տասն աւուր եղելոյ ձեզ եկաք խնդրել զսերմանցն զպը-տուղ. քանզի կարողութիւն է և 'ի միում աւուր ընդ արկանել սերմանցն և զհասկն առնուլ. ոչ եթէ յիւ-մէ զօրութենէն միայն, այլ յոյ հրամանացն կարողա-նայ ։ Յայսպիսի ջանս կոչեաց զձեզ, զի որչափ և ընդու-նեցայք զաստուածային, և գործովք կատարեսջիք[1] ։ Օ այս առեմ առ 'ի խրատել և 'ի խարհրդակից լինել ձեզ, զի մի երբեք անդէտ լինիջիք. այլ մինչ աստ եմք, քաղցր ունելով զյոյս, զառաջինան մեր քննեսցուք, և փութաս-ցուք 'ի բրաբիոնն՝ զհետ երթալ վերին կոչմանն ։ Ա-րասցուք արդեօք և զայս, ըստ անուան մերում և այս մեծի պարգևացս քննեսցուք. քանզի անդէտ լինել մե-ծագոյն իշխանութեանս՝ ծուլագոյն առնէ զպատուողն. իսկ որք իմանանն՝ գոհացողս կացուցանէ և փոյթ գոր-ծէ ։ Իսկ այլք այսպէս և գարշելի մօք այնչափ վայելեն յոյ պատիւն, որ ոչ և զանունն անգամ ճանաչեն ։ Եւ զինչ առեմ զայսմ պարգևացս. եթէ առ հասարակ զազգի մերոյ իմասցուք զանուն, մեծ առցուք առ 'ի յա-ռաքինութիւնս վարդապետութիւն և մխիթարութի ։ Իսկ մարդ է անունս այս, և մի արտաքուստ մեք զա սահմանեսցուք, այլ որպէս և ածային գիրն հրամայեաց ։

Օ ինչ արդեօք իցէ մարդն ոչ թէ որ ձեռս և ոտս մարդոյ ունիցի, և ոչ զի բանաւոր է, այլ որ բարեպաշ-տութեամբ և առաքինութեամբ և առ ած համարձա-կութեամբ ճգնի ։ Լուր արդ վասն Յոբայ զինչ ասէ. "Այր, ասէ, մարդ ոմն բնակեալ յԱւսիտ երկրի" ։ Ոչ զնա յայտմանէ գրէ յարտաքին սահմանաց, և ոչ դարձեալ թէ ունէր ոտս ձեռս և լայն եղնգունս, այլ զիմանալի բարեպաշտութիւնս եդեալ ասէ. "Արդար ճշմարիտ ածապաշտ, զատեալ և մեկնեալ յամենայն իրաց չարաց", ցուցանելով թէ այս է մարդ. և որպէս միւս գիր ասէ. "Երկիր 'ի տեառնէ և պահեա զպա-տուիրանս նորա, զի այս է ամենայն մարդ" ։

1 Գակառուխն ասողք 9 ։

Եւ եթէ մարդն անուն այսչափ յառաքինութիւս մխիթարութիւն ունի, բազում մանաւանդ հաւատովքն[1], Վասն այսորիկ կոչիս հաւատացեալ, զի հաւատասցես յԱծ, և հաւատովն 'ի նմանէ առցես զարդարութիւն, զսրբութիւն, զորդեգրութիւն, զարքայութիւն ն̃ոյ, զամենայն պարգևս հոգևորս վստահութեամբ: Եւ այս ամենայն քեզ 'ի նմանէ առաջի եղեալ, ողորմութիւն, անյիշաչարութիւն, աղօթք, զգաստութիւն և զայլ ամենայն առաքինութիւնս: Եւ զինչ ասիցեմ ողորմութիւն. թէ և բաժակ մի ցուրտ ջուր տայցես, և զայս ստուգութեամբ պահեսցէ, և յայնմ աւուր հանդերձ բազում առաւելութեամբ տացէ քեզ: Եւ այս իսկ է զարմանալի, զի ոչ միայն պահէ զբարիսն, այլ և բազմապատիկ յաւելու 'ի տալն:

Զնոյն և քեզ հրամայեաց ըստ զօրութեան քում աճեցուցանել զոր հաւատացարն. առեր սրբութիւն՝ բազմացո, և զարդարութիւն զոր 'ի մկրտութենէն պայծառագոյն գործեա, և զշնորհսն փայլատակեա յոգիդ. որպէս և Պաւղոսն արար, աշխատութեամբ և ջանիւ և յօժարութեամբ աճեցոյց զամենայն բարութիւնսն զոր և էառ: Եւ դու զգոյշ լեր գթութեանն ն̃ոյ, զի ոչ զամենայնն աստ ետ քեզ և ոչ յամենայնէ զատոյց, այլ է զոր ետ և է զոր խոստացաւ: Եւ ընդէ՞ր արդեօք ոչ զամենայնն աստ ետ. զի ցուցցես զհաւատս քո յանուն նորա. զի զոր ոչ ետ, միայն հաւատասցես խոստմանն նորա: Աստ որում և ոչ եթող անդ զամենայն, այլ ետ զշնորհս հոգւոյն և զարդարութիւն, զի այսու պարգևօք թեթևացուսցէ զցաւս քո և 'ի հանդերձեալսն բարի յուսով հաստատեսցէ:

Վասն որոյ և նոր 'ի մկրտութենէ հանդերձեալ ես կոչել. զի նոր քեզ լոյս ծագեսցէ միշտ, որ եթէ կամեսցիս, ոչ երբէք շիջանի: Այս լոյս՝ եթէ կամիմք և եթէ ոչ՝ եկեսցէ գիշեր. իսկ լոյսն այն խաւար ոչ ետես.“ Զի լոյսն, ասէ, 'ի խաւարի անդ լուսաւորէ, և խաւար ոչ եղև նմա հասու„: Ոչ այսպէս աշխարհ պայծառանայ յորժամ ընդունի զծագումն արեգական, որպէս հոգիք մեր ընկալեալք զշնորհս 'ի հոգւոյն սրբոյ լուսաւորին և

1 Իմա հաւատացեալն:

պայծառանան ։ Նու զի ուսանիցիս ստուգապէս զխրատդ
բնութիւն, յորժամ եկեսցէ գիշեր, բազում անգամ
չուան տեսեալ՝ օձ կարծեմք, և տերև շարժեալ՝ իբր 'ի
թշնամւոյ փախչիմք. իսկ յորժամ օր ծագէ՝ ոչ այս-
պէս, այլ ամենայն զոր ինչ և է՝ այն երևեսցի ։ Զնոյն
և տեսանեմք յոգիս մեր երևեալ. յորժամ շնորհք հո-
գւոյն սրբոյ եկեսցէ, զխաւարն հալածէ 'ի մտաց մե-
րոց, և ուսանիմք զխրացն ստուգութիւն, և լինիցի մեզ
հեշտ և դիւրին՝ որ յառաջագոյնն ահեղ էր. ոչ 'ի մա-
հուանէ երկնչիմք, գիտելով ստուգիւ յայսմ 'ի սուրբ
խորհրդոյս զի ոչ է մահն մահ, այլ քուն և ննջումն առ-
ժամանակեայ. ոչ աղքատութիւն ինչ իցէ, ոչ ցաւք և
ոչ այլ ինչ յայսցանէ, վստահացեալք զի յառաւելա-
գոյն կեանս երթիցեմք, յանարատ և յանապական զա-
տուցեալք յայսմ ամենայնէ տառամաննեաց չարութենս ։

Մ՛ի այսուհետև յանցաւորս կացցուք մնասցուք, մի
վասն փափկութեան սեղանոյ, մի վասն բազմակատար
հանդերձից. քանզի ունիս հանդերձս պայծառս և լու-
սաւորս, ունիս սեղանս հոգևորականս, ունիս փառս վեր-
նականս, քանզի ա̃մ ինչ Ք̃ս լինիցի քեզ և սեղան և
հանդերձ և տուն և գլուխ և արմատ ։ «Որք 'ի Քրիստոս
մկրտեցայք, զՔրիստոս զգեցեալ էք» ։ Ահա զիարդ եղև
քեզ հանդերձ ։ Կամիս գիտել թէ որպէս լինիցի քեզ
սեղան. «Որ ուտէ զմարմին իմ, ասէ, նա կեցցէ վասն
իմ» ։ Լինի քեզ և տուն. «Որ ուտէ զմարմին իմ և
ըմպէ զարիւն իմ, նա յիս բնակեսցէ և ես 'ի նմա» ։
Լինի քեզ և արմատ. «Ես եմ որթն, ասէ, և դուք
ուռ» ։ Լինի և եղբայր և փեսայ և բարեկամ. «Ասա-
ցէք եղբարց իմոց» ասէ. և «Ոչ կոչեցից զձեզ ծա-
ռայս, այլ բարեկամս»[1]. և թէ «Ահաւասիկ ես և ման-
կունք իմ զոր ետ ինձ ա̃ծ»[2] ։

Զայս ամենայն գիտելով, եղբարք, հաստուսցուք պար-
գևս բարի գործողին մեր՝ հաճելի ձգնութիւն, ծանի-
ցուք զպատարագն որ 'ի վերայ մեր զմեծութիւն. իմա
եթէ զինչ ընկալաւ ձեռնդ, և մի երբէք ընդունիր հար-
կանել զոք, և մի ձգեսցես 'ի կոշառս պատուել զդա,
ամաչեա 'ի վերայ մեղաց. տես զպատիւ ձեռինդ, և մա-

1 Պակասին տողք 4 ։ 2 Պակասին տողք 6 ։

թենէ եւ մի կանխեր դարձեալ անդրէն զկնի մկրտու-թեանս ։ Վասնզի մկրտութիւնս զառաջագոյն մեղսն ջնջէ, իսկ զառողջութիւնն դու ինքնին ուղղեսցես. զի յորժամ տարցին զքեզ յօծումն, փայլեսցես թագաւորական պատկերաւն, եւ մի այլ երբեք առցես վէրս եւ սպիս յոր տուաւ քեզ յայ գեղեցկութիւն ։

Յամոքեցո արդ զբարկութիւն, շիջո զտրտմութիւն. եթէ ոք քեզ մեղանչիցէ կամ զքեզ անարգիցէ, արտասուեա վասն նորա եւ մի խռովեսցիս, ցաւակից լեր եւ մի բարկասցիս, եւ մի ասասցես եթէ 'ի հոգի իմ գործեաց անիրաւութիւն. զի ոչ ոք մեղանչել կարէ հոգւոյ եւ յոչինչ իրս, եթէ մեք ոչ մեղանչեմք ։ Այլ թէ որպէս՝ ես ասացից ։ Որ ոք զգոյս քո, ոչ եթէ 'ի հոգիդ մեղաւ, այլ յինչս. եթէ իցէ եւ լինիցիս ոխակալ, դու մեղար 'ի հոգիդ քո, այլ ընչիցն ապականութիւն ոչ ինչ վնաս գործեաց, մանաւանդ թէ օգտեաց իսկ. այս եթէ դու զբարկութիւն ոչ թողեր, տալոց ես անդ ըզպարտաւորութիւն յիշաչարութեանն ։ Բամբասեաց զքեզ ոք եւ անարգեաց, ոչ ինչ մեղաւ հոգւոյդ քում, այլ եւ ոչ մարմնոյդ. իսկ դու եթէ ընդդիմադարձեալ բամբասեցեր եւ անարգեցեր, նմա դու ոչ արարեր վընաս, այլ կորուսեր զհոգիդ քո ։ Այլ զայս ամենեցուն ձեզ պարտ է իմանալ՝ եթէ քրիստոնէի եւ հաւատացելոյ հոգւոյ ոչ ոք է որ մեղանչել կարէ, եւ ոչ ինքն սատանայ ։

Այլ ոչ միայն այս է սքանչելի զի այլում անձեռնարկելի արարեալ է զմեզ ած եւ 'ի խորհրդածութենէ անըմբռնելի, այլ զի եւ յառաքինութեան գործս աջողակս պատրաստեալ է զմեզ. եւ արգել ինչ ոչ է եթէ կամիցիմք, եթէ աղքատ իցեմք, եթէ տկար մարմնով, եթէ անպիտան 'ի մարդկանէ, եթէ աննշանք 'ի հանդէսս, եթէ ծառայք ։ Վասնզի ոչ աղքատութիւնն, ոչ հիւանդութիւն, ոչ մարմնոյ տկարութիւն, ոչ ծառայութիւն եւ ոչ այլ ինչ այսպիսի խափան լինի երբէք ։ Այլ զինչ ասեմ աղքատ կամ ծառայ կամ աննշան. թէ եւ 'ի բանտի իցես, եւ ոչ այն երբէք արգել ինչ լինիցի քեզ առ 'ի յառաքինութիւնս ։ Այլ թէ զիարդ՝ լուր ։

Տրտմեցոյց ոք զքեզ եւ բարկացոյց, թող նմա զբարկութիւնն. մի թէ յայս՝ կապանք կամ աղքատութիւն կամ անպիտանութիւն արգել լինիցի ։ Այլ զինչ ասեմ

արգել․ նա և օգնէ իսկ և գործակից լինի առ 'ի ցամա-քեցուցանել զթախանձ սրտին։ Տեսեր զայլ ոք 'ի բարի կայեանս, մի՛ զչարիցիս, և սաստ դարձեալ ոչ արգել լինիցի քեզ աղքատութիւն։ Դարձեալ յորժամ պարտ իցէ քեզ յազօթս կալ և հսկել, զուարթամիտ լեր և այնպէս առնիցես։ Հեզ և հանդարտ կամիցիս լինել, միշտ զամենայն զգաստութիւն և զպարկեշտութիւն ած զմտաւ, և ոչ այսպէս խնդրէ արտաքոյ օգնականութիւն։ Այլ այս մանաւանդ բարձր առաքինութիւնս ոչ մեծութեան, ոչ զօրութեան, ոչ փառաց և ոչ այլ ինչ յայսցանէ ունիցի կարիս, բայց միայն ոգի մաքուր և սուրբ, այլ առաւել ոչ խնդրէ։

Տես արդ զշնորհացս առատութիւն և զոր 'ի սմանէ լինիցի քեզ․ եթէ հաշմ ոտիւք ոք իցէ, եթէ հատեալ ձեռօք, եթէ կոյր աչօք, եթէ ախտաժէտ մարմնով, եթէ 'ի յետին տկարութիւնս և 'ի հիւանդութիւնս անկեալ իցէ, ոչ ինչ յայսցանէ զպարգևական շնորհս արգելուցու․ հոգի միայն խնդրէ սրբասէր լի հաւատով, որ յօժարութեամբ ընդունի։

Յարտաքին զինուորութիւնս զմարմնոյ չափ զտեսակ և զանձին բարեձև զհասակ և զքաջութիւն քննեն և խնդրեն որք հանդերձեալ են ածել զնոսա 'ի զինուորութիւն։ Այլ ոչ միայն այս է պիտոյ, այլ և ազատութիւն խնդրի, քանզի զծառայս արտաքսեն յայսմանէ․ իսկ երկնաւոր թագաւորն ոչ ինչ յայսցանէ խնդրէ, այլ և զծառայս ընդունի և խառնէ յիւր զինուորութիւնսն զծերս և զախտաժէտս, զկաղս և զկոյրս և զամենայն որ հաշմ է մարմնով, և ոչ ամաչէ․ զի՞նչ քան զայս մարդասիրութիւն լինիցի և քաղցրութիւն։ Նա զոր 'ի մէնջ պարտ է լինել՝ զայն խնդրէ․ իսկ նոքա՝ զոր ոչ է 'ի մէնջ։ Բարձրահասակ և ցած ոչ է 'ի մէնջ, ծերածեր և մանուկ և կին և այլ այսպիսիք․ իսկ խոնարհ և հանդարտ կամ ընդունական և որ 'ի սոսա մերձ է՝ մերոյ բնութեանս է։ Այլ զայս միայն խնդրէ 'ի մէնջ ա̃ծ, որոյ մեք եմք տեարք, և մանաւանդ յիրաւի իսկ․ զի ոչ եթէ յիւր պէտս ինչ, այլ վասն մեր բարեգործութեան կոչէ 'ի շնորհսն, իսկ թագաւորք վասն իրեանց սպասաւորութեան․ նոքա 'ի պատերազմ մտանեն սպառազինեալք զզայական, իսկ այս մարտ հոգևո-

րական ։ Որ հանդերձեալն է 'ի տեսական ժողովն յայն ածիլ, ոչ նախ զնա 'ի պատերազմ կարգեն՝ մինչև քարոզ կարգայցեն և առաջի ամենեցուն աչաց ածիցեն գովելով թէ մի ոք զնա անգոսնիցէ ․ և ոչ է այս հոգևոր, այլ մարմնական է մարտն, վասն որոյ և ազնիւ ըստ ազգի խնդրեն ։ Իսկ այս ոչ է այսպէս, այլ նորին հակառակն ․ ոչ է մարտնչել ձեռօք յորժամ 'ի պատերազմ մտանիցեմք, այլ իմաստասիրութեամբ հոգւոյ և մտաց առաքինութեամբ այլ ազգ յօրինի քան զոր անդ զօրապետք առնեն ․ ոչ այնպէս ածէ զոք և ասէ, այլ ըզհակառակն գոչէ մեծապէս՝ եթէ ամենայն մարդիկ և դևք հանդերձ սատանայիւ կայցեն դիմա ոսոխ, ոչ հանից զդա և ոչ պիղծ վարկայց, այլ յոսոխաց այսոց զատուցեալ և 'ի չարեաց ազատեալ՝ այսպէս ածից 'ի պատերազմ ։ Ընդ զօրավար ոչ գործ վճարէ ընդ պատերազմողսն առ 'ի յաղթութիւն, այլ կացցէ 'ի միջին մեւոյն ․ իսկ աստ զօրապետս բարեպաշտութեան մարտակից լինիցի և օգնական, և մօտակից մարտնչելով ընդ սատանայի ։

Ոչ այս միայն է սքանչելի զի թողու զմեղս մեր, այլ զի և ծածկէ ևս և ոչ յայտնէ և 'ի լոյս ածէ, և ոչ հարկէ զոք գալ 'ի մէջ հանդիսի և ասել զյանցանս, այլ ինքեան միայն պատասխանի առնել հրամայէ և առ նա խոստովանել ։ Իսկ արտաքին դատաւորք թէ զոք ըմբռնիցեն կողոպտիչ աւազակ կամ տնահատ և խնդրեն 'ի նմանէ ասել զյանցանս և թողուլ նմա զտանջանս, ամենայն յօժարութեամբ ընդունէր զայս, 'ի յօժարութիւն փրկութեան հայելով և զամօթն արհամարհելով ․ իսկ աստ ոչ է այսպէս, այլ թողու նախ զյանցանս և ոչ առաջի մարդկան հրապարակել ․ այլ զայս խնդրէ միայն, զի թողութիւն առցէ ։ Տեսեր զմեծութիւն պարգևիս ։ Ո խո՞րդ ոչ իցէ այս զարշելի, նա 'ի բարեգործելն մեզ դիւրաւ բաւական համարի զոր 'ի մէնջ վկայութիւնն միայն ․ մեք 'ի հաշտ առնել զնա զայլս խնդրեմք վկայք առ 'ի ցոյցս առնելով սքանչանալ ։

Արդ նմա միայնոյ զգաստասիրութիւն ցուցցուք և զոր 'ի մէնջ զամենայնն ։ Եւ նախ քան զայլ գնացս վարուց զլեզուս մեր սանձեսցուք 'ի բազմախօսութենէ ․ զի " որ հանապազ բարբառի, ոչ ճողոպրի 'ի մեղաց ",։ Եթէ կա-

միջին օգտակար ինչ ասել, բայց զշրթունս․ ապա թէ ոչ կարի յօգուտ իցէ բանն՝ լռեա։ Ի նստել և 'ի գործել ձեռօք քո՝ սաղմոսեա․ այլ եթէ ոչ կարիցես բերանովդ պաշտել, 'ի միտսդ արասցես զպաշտօնն․ մեծ խօսակից են մեզ պաշտամունք սաղմոսաց, և աստ անվտանգս ապրեցուցանէ զհոգիս մեր։ Այլ նոցա է այս, ասեն, որք 'ի վանս նստիցեն։ Այլ չէ այդպէս․ ոչ եթէ տեղին իցէ աջողակ, այլ օրինակ ստուգութեան հոգւոյն և բարուցն համեստութիւն և բարեմտութիւնն բերէ զայս։ Պաւղոս յարուեստանոցս զարուեստն առնելով, այլ յիւրոց առաքինութեանցն ոչ վնասեցաւ։

Մի դու այսուհետև ասիցես՝ զիա՞րդ կարիցեմ այսպէս իմաստասիրել ձեռարուեստ գոլով և աղքատ․ քանզի մեծութիւն է խափանիչ գործոց բարեաց, իսկ աղքատութիւն մեզ է 'ի պարկեշտութիւն յաջողակ․ որպէս զի մեծութիւն որ ոչ 'ի միտ առնուցու, արգել և խափան լինի։ Յորժամ զաւրկութիւն պարտ է թողուլ, յորժամ չիջուցանել զչարութիւն և զնախանձ, յորժամ արտաքսել զորտմտութիւն, յորժամ ազօթս մատուցանել, յորժամ 'ի հանդարտութիւն և 'ի հեզութիւն ածել, և 'ի զգաստութիւն և 'ի սէր փոխարկել, իսկ աղքատութիւնն ոչ լինի արգել, այլ և պատճառ այսմ ամենայնի․ զի ոչ արծաթոյ աստ պէտք են, այլ ուղիղ վարուց և բարի բարուց ցուցանելոյ։ Այլ ողորմութիւնս առնելոյ պէտք են ընչից․ սակայն և աս յաղքատութեան առաւելապէս պայծառանայ․ զի և որ զերկու լումայսն ած 'ի գանձանակն, քան զամենայն մարդիկ աղքատ էր, և ամենեցուն գեր 'ի վերոյ եղև։

Այսուհետև մի զմեծութիւն հարստութեան մեծ կարծեսցուք, և մի զոսկի քան զկաւ մեծարգոյ ինչ վարկցուք․ քանզի նիւթոց պատիւ ոչ 'ի բնութենէ իւրեանց, այլ 'ի մերոց մտաց է։ Իսկ եթէ քննեսցէ ոք, երկաթ քան զոսկի կարևոր է․ քանզի 'ի կենցաղոյս պէտս ոսկի ոչ լինի մեզ 'ի տեղի երկաթոյ, այլ երկաթ բազում և ազգի ազգի պէտս գործոյ կազմէ մեզ և բիւրս արուեստից առ 'ի գիտել կատարէ։ Եւ զինչ ասեմք զոսկւոյ և զերկաթոյ առ իրեարս զննութիւնս․ քան զեաղմացին քարինս՝ 'ի քարանց լոկոց ունիմք զպէտս․ յայնց ականց ոչ երբէք լինի մեզ օգուտ, իսկ յայսցա-

րիստս և զամենայն զարդս զոսկեղէնս, լոկ և գծուծ զգեցայք ձորձս, և մոխիր 'ի վերայ սփռեալ և առ դուրս դատաւորին հոլանեալ՝ այսպէս դատապարտողաց երևէիք: Իսկ յորժամ յայսմ դատաստանի ոսկի և մարգարիտ և զանազան զգեստք մասնէ և բազում չարիս յաւելու[1], ապա մանաւանդ յանկաշառ և յահեղական վճռին լինիցի այս: Զի՞նչ ունիցիս ասել, ասա ինձ, յորժամ Թագաւորն կոչէ զքեզ վասն այսր մարգարտի և ոսկւոյ, և ածէ 'ի մէջ զաղքատս որք սովովք ապականեալք են, որոց պարտ էր զհասարակն տալ կամ զէթ սակաւորդս բաշխել նոցա: Արդ ասեմ և զայս, թէ և հանապազ գոյր վայելեալ յայսմիկ, սակայն 'ի մահու 'ի բաց կամք. իսկ առաքինութիւնք լի է ամենայն զգուշութեամբք, և փոփոխումն և անկումն ոչ ունի. այլ աստ զմեզ զգուշութեամբ պահէ և անդ մեծակից լինի:

Կամիս ստանալ մարգարիտս և մեծութիւն որ ոչ երբէք անցանէ. զարդ քո զամենայն մերկայիր և տուր 'ի ձեռս Քրիստոսի աղքատաց. նա պահէ քեզ զամենայն մեծութիւնս, և յորժամ յարուցանէ զմարմին քո՝ յայնժամ առաւել տացէ քեզ մեծութիւն և զարդ և մեծագին համդերձս բազում պայծառութեամբ, մինչ զի անցաւորս այս գծուծ և այսպն երևեսցի. իմա զքոյին հաճոյական խորհուրդս և մի սխալեսցիս: Վան էր ստանաս զզարդս զայս. ապաքէն զի չուանամանք և որգլնձագործք և որք 'ի փողոցս նստիցին տեսցեն և զքանչացեն: Ո՛չ ամաչես և պատկառես նոցա ցուցանել, և զորս անարժան համարիս 'ի խօսս՝ վասն նոցա զայս ամենայն առնես. և որչափ ծաղր այսպն լիցէ ցոյցս այս: Ա՛ծ զմտաւ և յիշեա զձայնն զայն զոր ասացեր յօրն մկրտութեան. Հրաժարեմ 'ի սատանայէ, և որ 'ի կարգին է: Քանզի միշտ խաղալութիւնք և ամբոխ հոգւոյդ է զարդ մարգարտին և հրապարակ սատանայի: Տուեր ոսկի, ոչ զի զմարմինդ կապեսցես, այլ զի զաղքատս զգեցուսցես և կերակրեսցես: Հանապազ ասասցես՝ եթէ հրաժարեմ 'ի քէն սատանայ. այս ձայն եղիցի քեզ պահապան վեհագոյն, եթէ գործովք ցուցանիցես զնոյն:

Զայս և ձեզ որ խորհրդածեալդ էք գալ 'ի մկրտու-

1 Պօղոսին տողք 2:

թիւն՝ արժան է ասել. այս ձայն պայման է առ տէրն քո: Եւ որպէս մեք յորժամ ծառայս կամիցիմք գնել, նոցա որք 'ի ծառայութիւն համդերձեալ են՝ հարցանեմք եթէ զօրանայք ծառայել և կալ 'ի կամս մեր, այսպէս և Քրիստոս առնէ. յորժամ 'ի ծառայութիւն համդերձի անձել զքեզ և առ իւր առնուլ, նախ հարցանէ եթէ կամաւ քո կարե՞ս զպոռնութիւն թողուլ և զխստութիւն և զժլխութիւն. և զայս ուխտիւ առնու 'ի քէն, ոչ եթէ լոկ իւրում կարեաց է տէրութիւն նորա: Եւ զգուշ լեր ա̅յ մարդասիրութեանն. մեք նախ քան զտալ զգինն՝ հարցանեմք ընդ որս գնել կամիցիմք, յորժամ յանձն առցեն կամաւ զոր հարցանեմք՝ ապա տամք զգինն. իսկ Ք̅ս ոչ այսպէս, այլ գին տուեալ վասն մեր ամենեցուն զպատուական արիւնն իւր, «Գնոց գնեցայք», ասէ, և ոչ այսպէս զմեզ ակամայ հարկէ ծառայել նմա. եթէ ոչ առնուցուս, ասէ, շնորհս յինէն և ոչ զանձն քո կամիցիս դրել տէրունական, ոչ հարկեմ և ոչ նեղեմ: Եւ մեք մանաւանդ ոչ կամիմք չար ծառայ գնել. և եթէ գնեմք չար, ոչ կամօք գնեմք և այսպէս տամք զգինն. իսկ Քրիստոս գիտէ զամենայն, անպիտան ծառայս գնէ և անօրէնս, և այնպիսի ծառայի այնքան զօրաւոր գինս տայ. և մանաւանդ բազում առաւելութեամբ, զորոյ զմեծութիւն՝ ոչ բանիւ և ոչ մտօք ոք կարասցէ գիտել, ոչ եթէ զերկիր տայ և զծով, այլ որ 'ի վեր է քան զամենայն զանձն իւր ետ, և այսպէս գնեաց զմեզ արեամբն իւրով:[1] Եւ զկնի այսր ամենայնի ոչ վկայս մեզ և ոչ ձեռագիր խնդրեաց, այլ բաւականացաւ նուազ ձայնիւ զոր ասեմք յօժարութեամբ մտաց մերոց՝ հրաժարեմք 'ի քէն սատանայ, և առնումք այսու զամենայն: Որդեօք զայս հանապազ ասասցուք՝ հրաժարեմք 'ի քէն սատանայ. զայս կտակ ուխտի տալոց եմք անդ:

1 Յաւելու օրինակն մեր զհատուածս զայս, որ չիք 'ի յոյնն. Եւ առաքեալ նա արարեալ, զի խոնարհեցաւ յերկինից որ էնն էակից հօր, և էառ մարմին ծառայի ըստ բնութեան մարդկան. զմարմինն տէրացոյց և զհոգին մեր խառնեցաւ տէր մարմնովն իւրով, և զծառայս ազատեաց. իսկ Տէր և Տէր, ամն ընդ բնութեան խառնեցաւ և ամն անչարժելի մնաց 'ի կրելն զչարչարանս չարչարելեան: Այսպէս էր Գին ծառայից որ զարհուրեցուցանէ զնոզոն. այսպէս գնեաց զմեզ:

Արդ հրապարակ սատանայական է տեսիլ հանդիսի և կառավարութիւն և ամենայն մեղաց տեսակ, այլ և խորումնաւուրց, յորոց յամենեցունց պարտ է ձեզ հրաժարել ։ Բազում անգամ եկեսցէ ոք 'ի տուն իւր և տեսանէ մարդ օտար, անտես կամ կրօնաւոր [1], ասէ անդէն՝ եթէ այս եղև ինձ սկիզբն չարեաց ։ Այս է հրապարակ սատանայի և հրապոյրք կորստեան. քանզի ոչ եթէ հանդիպումն մարդոյ չար առնէ զօրն, այլ որ 'ի մեզս կայ ։ Յորժամ ելանես 'ի տանէ քումմէ, 'ի մի ինչ իրաց պահեսցես զքեզ, զի մի հանդիպեսցի քեզ մեղք. այս է որ գայթակղեցուցանէ զքեզ, և առանց այսր և ոչ սատանայ կարող է վնաս առնել քեզ ։ Զինչ ասիցես. մարդ տեսանես և նախատես և խորես և զատանայական զվէրս ոչ տեսանես թէ որպէս պատերազմի ընդ քեզ, որում չես ինչ մեղանչական. և դու զիա՞րդ կացուցանես քեզ թշնամի զեղբայրն, վասն որոյ և ոչ մի ինչ ունիս պատճառս իրաւանց ։ Արդ ա՛ծ զթշնամին սիրել հրամայեաց, դու և զոր ո՛չն է մեղանչական քեզ՝ թշնամի անուանես, և ոչ իմանաս եթէ որչափ ծաղր իցէ այս և որչափ ամօթ., մանաւանդ թէ որչափ վտանգ ։

Ասեմ և այլ ծաղրական քան զայս. և ընդ ձեր ամաչեմ և պատկառիմ, այլ հարկիմ ասել վասն ձերոյ փրկութեան ։ Եթէ հանդիպի կոյս, ասեն, եղև օրն առանց գործոյ. ապա եթէ պոռնիկ հանդիպի, աջողակ է, ասեն, և ընդունելի և լցեալ բազում ճոխութեամբ ։ Այլ մի, աղաչեմ, վասն այսր ծածկեցէք զերեսս ձեր և յերկիր խոնարհեցարուք. բայց մի այժմ բանիւք միայն, այլ և գործովք ցուցանիջիք ։ Տես առ թէ որպէս սատանայ թագուցեալ է զնենգութիւն իւր, զի 'ի բղգատութենէ դառնամք, և ուստի կորուստ է՝ այնմ հանդիպմամբ ։ Մի՛թէ ո՞չ լուար 'ի Քրիստոսէ զի ասէ. “Որ հայի 'ի կին մարդ առ 'ի ցանկանալոյ նմա, անդէն շնացաւ ընդ նմա 'ի սրտի իւրում„ ։

Եւ տեսանեմ զոմանս ոչ դարձեալ յայսմ գործոյ. ըստ այսմ քննութեան խորհի սատանայ այլ ճանապարհաւ ածել զմեզ 'ի մեղս ։ Կանայք յերկուս մերձեալ՝ զդահեկան զԱղեքսանդրի զմակեդոնացւոյ կամ զպղրամ

1 Յոյնն կոչ ։

'ի գլուխս և յատս կապէն ։ Ա՞յս են յոյք մեր, ասա ինձ, որ զկնի խաչին և մահուն տէրունական՝ 'ի հելլենացի թագաւորին պատկեր ունիմք զայս փրկութեան ։ Ո՞չ գիտես թէ որչափ ուղղեաց խաչն Քրիստոսի, ըզմահ քակեաց, զմեղս ջնջեաց, զդժոխս աւարեաց, զԵդեմ եբաց, զսատանայի զօրութիւնն եղծ, և մարմնոյ առողջութեան ո՞չ է արժանահաւատալի. զտիեզերս ամենայն յարոյց, և դու 'ի նա ո՞չ համարձակիս, և որո՞ւմ արժանի իցես ասա ինձ ։ Ոչ եթէ կապես միայն, այլ և երգով 'ի նա մերձեալ՝ զգրայլիգայ[1] արքեալ և խայտառակեալ մածցես 'ի տուն քո ։ Եւ ոչ ամաչես և ոչ պատկառիս, յետ այսչափ խնամատարութեան յայս մերձենաս 'ի չարաչար պատրանս սատանայի ։ Իսկ յորժամ եկեալ խրատեմք զնոսա, ակն ունին պատասխանել. ասեն. քրիստոնեայ է կինն որ զայս երգէ. և թէ չէ այլ ինչ երգել, բայց միայն զանունն ա̃յ ։ Վասն որոյ մանաւանդ ատեմ զայս և զաձնամ 'ի նոցանէ՝ որ զանուն ա̃յ յանարգանս խառնեցին, որ ասեն թէ քրիստոնեայ է և զհելլենացւոցն ցուցանէ. նա և դևք զանունն ա̃յ բարբառին, այլ սակայն դևք են, և այսպէս ասէին ընդ Քրիստոս. "Գիտեմք զքեզ ով ես սուրբդ ա̃յ". այլ սակայն ըմբերանեաց զնոսա ։

Վասն որոյ աղաչեմ, 'ի պատրանացս յայսցանէ մեքրեցարուք, և որպէս զգաւազան զխաչս զայս ունելով ։ Եւ որպէս ոչ է պարտ առանց կօշկի և հանդերձի ելանել 'ի փողոցս, այնպէս և առանց բանիս այսմիկ մի երբէք ելանէք արտաքս. այլ յորժամ հանդերձեալ ես ելանել ընդ սեամս դրան քո, նախ զայս բարբառեա զբանս. հրաժարեմ 'ի քէն սատանայ, և որ զկնի այսորիկ, և դասեալ եմ ընդ Քրիստոսին և խոստովանիմ միաբանեալ ընդ նմա ։ Եւ մի երբէք առանց ձայնիս այսորիկ ելցես. սա եղիցի քեզ գաւազան, այս զէն, այս աշտարակ անյաղթելի ։ Այսու բանիւս և զխաչն նկարագրեա 'ի վերայ պարանոցի քում և պատկերի քում ։ Այլ ոչ եթէ մարդկան միայն հանդիպելս անճիտս, այլ թէ և նա ինքն սատանայ հանդիպեսցի քեզ՝ ոչ կա-

1 Ցունական ձայնիւ վարեալ Թարգմանչին, փոխանակ ասելոյ զպատուհասս ։

այլ և սոցա ամենեցուն պիտանացու. աղաչեմ զհասարակաց ամենեցուն մեր տէրն յերկայն ծերութիւն Իսահակայ զկեանս քո հասուցանել. վասն զի այս ինձ և սոցա քան զցօղ երկնի պատուականագոյն և հարկաւոր է։

Բայց ժամ է այսուհետև արդ դնել զսեղանն։ Եւ զի՞նչ են այսօրիկ. նշխարք յառաջագոյն ասացելոցն ձերում սիրոյդ։ Վասն զի դեռ ևս տակաւին որ յաղագս սատանայի բանն էր շարժեալ, յառաջագոյն զերկոսս զաւուրս խօսեցաք, զոր առաւօտուց առ 'ի խորհուրդ ածեալն ասացաք, յորժամ յաղագս հրաժարելոյ և հեռանալոյ խօսեցաք ընդ նոսա։ Զայս առնեմք իբրև ոչ եթէ հեշտալի ինչ մեզ որ յաղագս սատանայի բան իցէ, այլ զի զգուշագոյն մեզ վասն սատանայի վարդապետութիւնն լինի։ Քանզի թշնամի է և պատերազմող. մեծ ամրութիւն է զթշնամեացն գիտել յայտնապէս։ Ասացաք յառաջագոյն եթէ բռնութեամբ ունի և ոչ հարստութեամբ, ոչ հարկաւորէ և ոչ բռնադատէ զոք. քանզի եթէ այս էր, զամենեսեան արդեօք էր կորուսեալ. և այսոցիկ առակ ածաք զխոզսն, յորս ոչ կարացին յանդգնել դեւքն նախ քան զհրամանսն տեառըն, զանդեայսն Յոբայ և զհօտսն. զի և ոչ զնոսա յանդըգնեցաւ ապականել սատանայ մինչ 'ի վերուստ զհրամանն էառ։ Արդ մի զայս նախ առաջին ուսաք եթէ բռնութեամբ մեզ ոչ տիրէ և ոչ հարկաւորութեամբ։ Երկրորդ զկնի այնոցիկ յաւելի եթէ և խաբէութեամբ ունելով և ոչ այնպէս յարաժամ յաղթող լինի. և դարձեալ զնոյն ինքն զմեծին զՅոբ՝ որում հակառակ բիւր մեքենայս շարժեաց՝ և ոչ այնպէս հերքեաց, այլ և պարտեալ ևս 'ի բաց գնաց։

Միւս ևս խնդիր նուազ այլ է այսուհետև։ Եւ որ իցէ այս։ Զի թէպէտ և ոչ բռնութեամբ տիրէ, ասէ, այլ պատրանօք, և այնպէս լաւագոյն էր զնա ապականել. քանզի թէպէտ և յաղթեաց Յոբ, այլ խաբեցաւ Ադամ և մոլորեցաւ. և եթէ բարձեալ էր 'ի միջոյ միանգամայն, ոչ Ադամ ընկճէր երբեք. իսկ այժմ կալով մնալով յաղթի 'ի միջէ ումեքէ և հերքէ զբազումս. յոլովք և յաղթեն նմա, այլ բիւրուց և նա յաղթէ և պատրէ. եթէ 'ի բաց էր բարձեալ զնա 'ի միջոյ, ոչ արդեօք և ոչ բիւրքն կորնչէին։

Նա արդ զի՞նչ առ այս ասասցուք. եթէ յաւէտ պատուականագոյնք են քան զյաղթահարեալն յաղթողքըն, թէպէտ և ունինք յոգունք և կէսք սակաւք իցեն. քանզի "Լաւ է մի որ առնէ զկամս տեառն քան զբիւր անօրէնս": Երկրորդ անգամ եթէ 'ի բաց բարձեալ էր զդիմամարտն այն որ յաղթողն լինելոց էր, դրժեալ լինէր յաղօթս նոցա: Քանզի եթէ թողցես կալ մնալ հակառակամարտին, պղերգացեալքն ոչ յաղագս առաքինեացն, այլ վասն իւրեանց ծուլութեանն դրժեն. և եթէ 'ի բաց բառնաս զհակառակորդն, առաքինիքն յաղագս ծուլացելոցն վնասին, զի և ոչ ևս արդեօք զիւրեանց ցուցանէին զօրութի՛ւն, և ոչ պսակացն հանդիպէին:

Թերևս ոչ արդեօք իմացայք զասացեալս. հարկաւոր է այսուհետև յայտնագոյն ասել դարձեալ: Եղիցի մի ոք ընդդիմամարտ, լիցին և երկուք ըմբիշք ընդ նմա մրցել հանդերձեալք, և այն ըմբիշք երկոքեան յորովայնամոլութենէ եղիցին ապականեալք, պղերգք և տկարք և անջիլք. այլ ոք ուրեմն փոյթ, քաջառողջ, 'ի հանդիսարանին վարժեալ, բազում կրթութեամբք զամենայն զմարտին որ 'ի նահատակութիւնն է ցուցանելով: Արդ եթէ 'ի բաց բառնաս զընդդիմամարտն, զո՞ ոք 'ի նոցանէ թշնամանիցես. արդեօք զպղե՞րգն և զխամն, եթէ զփոյթն և որ այնքան աշխատեցաւն. քաջայայտ է եթէ զփոյթն. քանզի մինն յաղագս ծուլելոյն զրկեցաւ 'ի բաց բարձեալ ընդդիմամարտին. իսկ պղերգքն ոչ ևս վասն առաքինւոյն վնասեցան ինչ, այլ յիւրեանց իսկ ծուլութենէ 'ի վայր կործանեցան:

Նոյնպէս և մեք ևս լուծումն խնդրոյս այսմ, զի ուսցիս եթէ ոչ սատանայ, այլ իւրաքանչիւր ուրուք ծուլութիւն ամենայն ուրեք ընկճէ զոչ զգուշացեալսն: Կայցէ սատանայ յոյժ չար, չար ոչ բնութբ, այլ յօժարութեամբ և բարուք. և զի ոչ է չար բնութեամբ սատանայ, 'ի նոցուն իսկ յանուանցն ուսիր. քանզի բանսարկու յաղագս 'ի մէջ արկանելոյ ասի, արկանէ բանս ըզմարդոյ առ Ած. "Ոչ, ասէ, ձրի պաշտէ զքեզ Յոբ. այլ առաքեա զձեռն քո և մերձեցո յորս ունին, եթէ ոչ 'ի դէմս զքեզ օրհնեսցէ". Եարկ դարձեալ բանս առ մարդն յոբ. "Հուր անկաւ յերկնէ և եկեր, ասէ, զոչխարսն": Փութացաւ զնա հաւանեցուցանել թէ 'ի

վերուստ յերկնից պատերազմն այն 'ի վերայ հոսեցաւ, և ընդդիմացուցանէր զծառայն տեառն և զտէրն ծառայն. մանաւանդ եթէ ոչ ընդդէմ ամբոխեաց, այլ յանդգնեցաւ միայն և ոչ զօրեաց. զի յորժամ տեսանիցես զայլ ոք ծառայ ընդդիմացեալ տեառն՝ զԱդամ, և հաւատացեալ նմին իսկ նորա բանսարկութեան՝ ուսցիս եթէ ոչ յիւրմէ 'ի զօրութենէն, այլ 'ի նորա պղերգութենէ և 'ի ծուլութենէ ոյժ էառ : Արդ բանսարկու յաղագս այսորիկ ասի. իսկ բանս արկանել և ոչ արկանել, ոչ բնութեան է, այլ իրք լեալք և ոչ լեալք. և այսոքիկ ոչ զէութեան ունին զկարգ և ոչ զգոյութեանն : Գիտեմ զի յոլովից դժուարըմբռնելի է բանս այս յաղագս գոյութեան և զխպուածոյ. բայց են ոմանք որ և նրբագոյնս լսել կարեն, յաղագս որոյ և մեք ըն-բանս զայս ասացաք :

Ախորժէ՞ք և 'ի միւս եւս անուն եկից, և տեսանիցէք զնա ոչ գոյութեան և ոչ բնութեան է, այլ յօժարութեան : Չար [1] կոչի. և չարութիւն ոչ բնութեան է, այլ յօժարութեանն. զի երբեմն և նա լինի և երբեմն 'ի բաց լինի : Իսկ մի ինձ զայն առիցես եթէ 'ի նմա յարաժամ կայ մնայ. զի և 'ի նմա ոչ 'ի սկզբանն, այլ զկնի այնորիկ եղև, յաղագս որոյ և ապստամբ ասի. և բազում մարդիկ չարք լեալք, միայն նա ըստ գերազանցութեան ասի չար : Իսկ ընդէ՞ր արդեօք այնպէս կոչի. զի ոչ ինչ 'ի մէնջ զրկեալ, ոչ մեծ և ոչ փոքր մեղադրութիւն ունելով, տեսանելով պատուեալ, վաղվաղակի յաչաղեաց զնա 'ի բարիսն : Իսկ արդ քան զայն դժնդակագոյն չարութիւն զի՞նչ այլ լիցի, յորժամ թշնամի և պատերազմող և ոչ մի ունիցի իրաւացի պատճառ :

Ի բաց կացցէ այնուհետև բանսարկուն. և ածեալ անցուսցուք 'ի մէջ զարարածս, զի մի կարծեսցես եթէ սատանայ մեզ պատճառ չարեաց է թէ կամեսցուք ըզգուշանալ. զի ուսցիս եթէ տկարն յօժարութեամբն և յուլացեալն և պղերգն՝ և առանց սատանայի կործանի և 'ի վիհ բազում անգամ զինքն արկանէ : Բանսարկուն չար է, գիտեմ ես, և խոստովանեալ է այս յամե-

1 Հատուածդ պակասէր յօրինակէն Չար կոչի .. յօժարութեանն. յաւելաւ 'ի յունէն :

նեցուն. այլ հաւատեաւ հայեցարուք յայս յոր հան-
դերձեալս եմ ասել այժմ. զի ոչ վայրապար ինչ է այս,
յաղագս որոյ յոլովից բազում անգամ լինելին բանք, և
վասն որոյ յաւէտ կռիւ և պատերազմ ոչ հաւատացե-
լոց առ անհաւատս, այլ հաւատացելոց առ հաւատա-
ցեալս. վասն զի այս է ցաւովք լի:

Արդ բանսարկուն խոստովանեալ է յամենեցունց
թէ չար է որպէս և ասացի. զի՞նչ յաղագս ստացուա-
ծոյս ասասցուք գեղեցկիս և սքանչելեացս այսորիկ. մի՞ ար-
դեօք արարած չար իցէ. և ո՞ այնպէս պիղծ, ո՞ այնպէս
անզգայ և խելագարեալ, մինչ զի ամբաստան լինիցի զա-
րարածոյս. և զի՞նչ յաղագս սորա ասեմք, քանզի ոչ է
չար, այլ բարի, և ա̃յ իմաստասիրութեանն և զօրու-
թեանն և մարդասիրութեանն է գործ: Լուր զիարդ
ընդ նմա մարգարէն սքանչանայ ասելով. "Որքա՛ն թէ
մեծացան գործք քո, Տէր. զամենայն իմաստութեամբ
արարեր": Ոչ ըստ իւրաքանչիւր ոք էանց, այլ տեղի
ետ անհասանելի իմաստութեանն ա̃յ: Նա զի պիտանա-
ցու զսա և այնպէս գեղեցիկ և մեծ արար, լուր այլում
ումեմն որ ասէ թէ "Ի մեծութեան 'ի գեղեցկութե̃
ստացուածոցս հաւասարապէս արարիչն տեսանի": Լուր
և Պաւղոսի որ ասէն. "Քանզի անտեսանելիքն ա̃յ ստա-
ցուածով աշխարհիս արարածոց իմացեալ լինի": Զիւ-
րաքանչիւր ոք 'ի սոցանէ զեկոյց 'ի ձեռն որոց ասացն՝
թէ սա մեզ յա̃ծգիտութիւն առաջնորդէ, զի և սա
իսկ առնէ մեզ ճանաչել զտէրն:

Նա արդ զի՞նչ. եթէ տեսանիցեմք զգեղեցիկս և ըզ-
հրաշալի զայս՝ լեալ ամբարշտութեան պատճառս յո-
լովից, բաղբաղիցեմք ինչ զսա. և ոչ երբեք, այլ զնո-
սա՝ որ ոչ վարին 'ի պատշաճ դեղովս: Նա ո՞ւր ամբա-
րշտութեան պատճառ է սա՝ որ ոչ առաջնորդէ մեզ
յա̃ծգիտութիւն: "Խաւարեցան, ասէ, խորհրդովք
իւրեանց իմաստասէրքն, և ամբարշտեալք պաշտեցին
զստացուածս քան եթէ զստացիչն": Ոչ ուրեք սատա-
նայ անդանօր, այլ արարածս միայն 'ի մէջ առաջի կայ
վարդապետարան ա̃ծութեանն: Նա զի՞արդ ամբարշտու-
թեան եղև պատճառ. ոչ յաղագս իւրոյ բնութեան,
այլ վասն պղերգութեանն զի [1] անփոյթք եղեն: Նա արդ

1 Պակասէր յօրինակին զի անփոյթք եղեն, յաւելաւ 'ի յունէն:

կարաց ։ Տեսանե՞ս զի տկարն ամենայն ուստեք վնասի, և զօրաւորն բոլոր ուստեք օգտի. ամենայն ուրեք յօժարութիւնն է պատճառ, բոլոր ուրեք բարքն տէր ։

Վասն զի սատանայ, եթէ կամիս ուսանել, և պիտանացու իսկ է մեզ, յորժամ 'ի պատճառ նորա վարիմք, և մեծապէս զմեզ օգտէ, և շահիմք ոչ դուզնաքեայ ինչ ։ Եւ զայս ցուցաք 'ի Յոբայ, պարտ է և 'ի Պաւղոսէ ուսանել. քանզի յաղագս պոռնկացելոյն ածելով այսպէս ասէ. "Մատնեցէք զայնպիսին սատանայի 'ի սատակումն մարմնոյ, զի ոգին ապրեսցի ,, ։ Ահա և փրկութեան պատճառք սատանայ եղև. այլ ոչ իրովք բարուքն, այլ յաղագս արուեստին առաքելոյն ։ Զի զոր օրինակ բժիշկք իժս առնլով և զսատակող անդամն 'ի նոցանէ 'ի բաց հատանելով՝ զդեղանականսն [1] կազմեն դեղս, նոյնպէս և Պաւղոս արար, որքան ինչ պիտանացու էր 'ի տանջանացն պահանջմանէ, 'ի բաց եհատ 'ի սատանայէ, և զայլն եթող ։ Զի ուսցիս եթէ ոչ սատանայ փրկութեան էր պատճառ, այլ կորուսանել զմարդն ձեպէր և կլանէր, իսկ առաքեալն 'ի ձեռն իւրոյ իմաստասիրութեանն զժանտախտականն եհատ, լուր յերկրորդումն թղթին զինչ ասէ յաղագս պոռնկացելոյն. "Հաստատեցէք 'ի նա զսէրն, մի գուցէ առաւել տրտմութեամբ ընկղմիցի նա, և զրկիցիմք 'ի սատանայէ ,,. կանխաւ յափշտակեսցուք, ասէ, 'ի կոկորդէ գազանին զմարդն ։ Իբրև դահճաւ բազում անգամ վարեցաւ սատանայիւ առաքեալն. իսկ դահիճքն տանջեն զյանցաւորսն, ոչ որքան կեալ կամին, այլ որքան դատաւորքն հրամայեն. քանզի այն են դահճացն օրէնք, ըստ ակնարկելոյ դատաւորին տանջել ։

Տեսե՞ր յորպիսի արժանաւորութիւն ել Պաւղոս, որ մարմին էր զգեցեալ, անմարմնոցն իբրև դահճաւ վարեցաւ. Թէպէտ և հասարակաց տէրն ասէ սատանայի յաղագս Յոբայ պատուիրելով այսպէս. "Մերձեսցիս 'ի մարմին նորա. բայց 'ի հոգի նորա մի հպեսցիս ,,, սահմանս նմա տալով և չափս չարչարանաց, զի մի յանդուգն գազանն անամօթաբար 'ի վերայ յարձակիցի. զնոյն և առաքեալ առնէ, մատնելով նմա զպոռնկեալն՝ ասէ. "Ի սատակումն մարմնոյ ,,. այս է՝ յոգին մի մեր-

1 Իմա Թերիակէս. զի 'ի յոյնն 'ի գազան բառէ կազմեալ է ։

ձենար ։ Տեսեր զիշխանութիւն ծառային . արդ մի այսուհետև երկնչիցիս 'ի սատանայէ , թէպէտ և անմարմին է . այլ ընդդիմացաւ , և ոչ ոք քան զընդդիմակացն տկարագոյն է , թէպէտ և ոչ մարմին զգեցեալ է . որպէս և ոչ ոք զօրաւորագոյն , քան որ եթէ 'ի համարձակութեանն վայելէ , թէպէտ և մարմին ունիցի ։

Այս ամենայն ասացան ինձ այժմ ոչ զի զսատանայ 'ի բամբասանացն 'ի բաց մերժիցեմ , այլ զի ազատեցից զձեզ 'ի պղերգութենէ . վասն զի յոյժ իսկ ախորժէր նա զմեր յանցանացն յինքն ձգել զպատճառն , զի յուսովքն այնոքիւք կերակրեսցի , և զամենայն տեսակ չարութեանն 'ի վերայ բերելով՝ յաւէտ աճեցուցանեմք հակառակս մեզ զտանջանսն , և ոչ միում թողութեան հանդիպիցիմք՝ փոխադրելով 'ի նա զպատճառն , որպէս և ոչ Եւա դիպեցաւ ։ Բայց մի զայն ասասցուք , այլ ծանիցուք զանձինս . գիտասցուք զմեղսն , զի այսպէս և զդեղն 'ի վերայ դնել կարասցուք . քանզի որ զցաւն անգիտանայ , և ոչ զմի ինչ առնէ հիւանդութեն խնամակալութիւն ։

Մեղաք բազում անգամ , գիտեմ և ես , քանզի ամենեքեան ընդ սպառնալեօք եմք . այլ ոչ եմք զրկեալ 'ի թողութենէ , և ոչ արտաքս անկաք յապաշաւանաց . վասն զի դեռ ևս տակաւին 'ի հանդիսարանի եմք և 'ի նահատակութիւնս ապաշխարութեան կեամք ։ Ո՞ւր ես , և 'ի վերջին ճանապարհ երթեալ հասեր . մի կարծեր և մի այնպէս արտաքս ընկեցեալ զքեզ , այլ զմտաւ ած զաւազակն 'ի խաչին ազատեալ . զի՞նչ քան զժամն զայն դուզնաքեայ յորում պսակեցաւ . և սակայն բաւական եղեն նմա 'ի փրկութիւնն ։ Մանուկ ես . մի վստահանար , մի կարծեր հասարակաց ինչ ունել դաշինս . քանզի օր տեառն իբրև զգող գիշերի այնպէս գայ ։ Յաղագս այնորիկ անյայտ մեզ արար զկատարածն , զի յայտնի արասցուք զփոյթն և զնախախնամութիւնն ։ Ո՞չ տեսանես տարաժամն հանապազօր յափշտակեալս . յաղագս որոյ և պատուիրէ ոմն ասելով . " Մի՛ կալ մնալ դառնալ առ տէրն , և մի յապաղեր օր յօր . մի գուցէ առ մեղս[1] քո սատակիցես ,, ։ Ո՞րն զայն պատուիրան

1 Այդ է հարազատ բան Սիրա. նմանաձայնութենէ յունականին քայ Ե . 8 . իսկ յօրինակիս եղեալն չփոթեալ թարգմանչին այդպէս "որդէս Վեղս տուգանիցես", թերևս 'ի ընթերցեալ իցէ ։

կայցի, և մանուկն զայս խրատ: Ո՛չ 'ի զգուշութեա՛ն իցես, ընչե՞ղ իցես և զուարճացեա՛լ փարթամութեամբ, և ո՛չ ինչ քեզ լինիցի դժնդակութիւն, լուր զինչ ասէ Պաւղոս. "Յորժամ ասիցեն խաղաղութիւն և ամրութիւն, յայնժամ յանկարծակի նոցա 'ի վերայ գայ սատակումն": Բազում փոփոխմամբ լցեալ են իրքն. ոչ եմք տեարք վախճանին, լինուք տեարք առաքինութեն. մարդասէր է տէրն մեր:

Կամիք ասացից և զապաշխարութեան ճանապարհն. յոլովք ոմանք են և ազգի ազգի և բազմազան, և ամենեքեան յերկին տանին: Նախ առաջին ապաշխարութեան ճանապարհ՝ յանցանացն ստգտանք. քանզի "Ասա դու զմեղս քո յառաջագոյն, զի արդարասցիս". յաղագս որոյ և մարգարէն ասէ. "Ասացի՝ ես պատմեցից զանօրէնութիւնս իմ տեառն, և դու 'ի բաց բարձցես զամբարշտութիւնս սրտի իմոյ": Եւ դու բամբասեա զմեղսն, բաւական է այն տեառն 'ի պատասխանիս. քանզի որ ստգտանէ զմեղսն, դանդաղկոտ լինի 'ի նոյնս դարձեալ անկանել. շարժեա 'ի ներքուստ զոստին զխիղճ մտացն, զի մի անդ ամբաստան ունիցիս: Մի ճանապարհ ապաշխարութեան բարի այս է, և միւս ևս քան զայս ոչ ինչ նուազ, ոչ ոխակալ լինել թշնամեացն, տևել բարկութեան, թողուլ ծառայակցացն զսխալանսն. վասն զի այնպէս թողցի և մեզ 'ի տէրն լեալք: Նա երկրորդ յանցանացն մաքրութիւն. վասն զի "Եթէ թողուցուք պարտականաց ձերոց, և հայրն ձեր երկնային թողցէ ձեզ":

Ախորժեա ուսանել և զերրորդ ճանապարհ ապաշխարութեան. աղօթք եռացեալ 'ի հաւատոյ և 'ի խորին սրտէ զայն առնեն: Ոչ տեսեր զայրին որ զանամօթ զդատաւորն յինքն դարձոյց. իսկ դու ընդունելի տէր ունիս, հանդարտ և մարդասէր. նա հակառակ թշնամեացն խնդրէր. դու ոչ հակառակ թշնամեացն խնդրես, այլ յաղագս քո անձին փրկութեան: Եւ եթէ զչորրորդն կամիցիս ուսանել, զողորմութիւնն ասեմ, քանզի յոլով զօրութիւն ունի նա և անճառելի. զի և Նաբուգոդոնոսորայ որ յամենայն տեսակս չարութեան եհաս, ասէ Դանիէլ. "Խորհուրդ իմ հաճոյ քեզ լիցի. զմեղս քո ողորմութեամբ քաւեա և զանօրէնու-

թիւնս քո գթովք տնանկաց»։ Ո՞ինչ վնիցի զոյգ այնմ մարդասիրութեան. յետ բիւր մեղանացն, զնոր այնքան անօրէնութեան պատմէ[1] և հաշտի ընդդիմախօսողաձին, եթէ մարդասէր առ ծառայակիցն իւր լինիցի ոք, յէ նուաստանայցէ և խոնարհամտեսցէ ոչ ինչ նուազ 'քան զառաքելոյն փառնէ զմեղացն քաւութիւն. և վկայ մաքսաւորն, որ զուղղութիւնս ինչ ոչ ունէր առնել, փոխանակ ամենայնի զխոնարհութիւն ընծայէր, և զծանր բեռն մեղացն 'ի բաց դնէր։

Այս հինգ ճանապարհ ապաշխարութեան ցուցանէ առաջին զյանցանացն ստգտանս, երկրորդ թողութիւն ամենեցուն զմեղանս, երրորդ զաղօթիցն, չորրորդ զողորմութեան, հինգերորդ զխոնարհութեան։ Արդ մի՛ դատարկանար, այլ ընդ ամենեսեան ընդ այսոսիկ հանապազօր ճանապարհորդեսցես. զի և դիւրինք են ճանապարհքն, և ոչ ունիս պատճառել զաղքատութիւն. այլ թէպէտ և քան զամենեսեան աղքատ իցես. և զարտասուս թափել, և նուաստանալ կարասցես և աղօթել յարաժամ և ստգտանել զմեղսն, և ուրեք խափան աղքատութիւնն չլինի. և զինչ ասեմ ասա, զի և ոչ յայնմ ճանապարհի ապաշխարութեանն՝ յորժամ զինչ ծախեսցէ, ողորմութիւնն ասեմ, զի և ոչ անդ խափան է ինչ մեզ յողորմութեան աղքատութիւնն։ Այս յայտնեսցեն զայս երկու լումայքն արկեալք։

Ուսեալք այսուհետև զբժշկութիւն, մեք վիրաւորք յաճախապէս 'ի վերայ դիցուք զդեղս զայս, զի 'ի ճշմարիտ առողջութիւնն վերստին եկեսցուք, և 'ի քահանայական ատեանս վայելեսցուք համարձակութեամբ, և հանդերձ փառօք պատահեսցուք թագաւորին փառաց Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ սուրբ հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն.

1 Իմա և խոստովանութ ըստ յոյն ձայնին։

թեամբ կեցեալ և զամենայն զչարութիւն ցուցեալ, և բամբասիցէ զոյն զնախախնամութիւնն և ասիցէ՝ եթէ բախտի և ձախաստղրին հարկաւորութեան և դիւացն բանաւորութեան զմեր բնութիւնս մատնեաց, և ամենայն ուստեք զպատճառս յղփացեալ 'ի բաց տանիցի յարարիչն, և յայնմ ամենայնի 'ի նախախնամողն փոփոխեալ բերիցէ, կարկեաց զնորա բերանն, մի բան՝ այլ գործ ցուցանելով զծառայակիցս որ առաքինութեամբ և հեզութեամբ կեցցէ: Ոչ են պէտք երկայն բանից, և ոչ է պիտոյ. պատրաստել ստեղծուած ինչ. և կամ մտածութիւնս, ուր 'ի ձեռն գործոց ցուցանել լինի: Նմա՝ թէ և դու ծառայ և նա, և դու մարդ և նա, 'ի նմին աշխարհի բնակիս, ընդ նովին երկնաւ, նովին կերակրով կերակրիս. ընդէ՞ր դու 'ի չարութեան և նա յառաքինութեան:

Վասն այնորիկ իսկ և մեծ եթող զչարսն ընդ բարիսն խառն լինել, և ոչ այլ երկիր ետ չարացն, և ոչ յայլում աշխարհի զբարիսն բնակեցոյց. այլ խառնեաց զսա ընդ նոսա, յաւէտ պիտանացու իմն գործելով: Զի բարիքն ընտիրք երևեսցին 'ի մէջ խափանողացն զգաստ ուղղակի կելով, և 'ի չարութիւն ձգեալքն առաքինութեան խնամ տանէին: «Ընդէր պարտ է, ասէ, հերձուածողք լինել 'ի ձեզ, զի ընտիրքն երևելի լինիցին 'ի ձեզ»: Նա ուրեմն և վասն այսորիկ չարացն ներեաց 'ի մէջ բարեացն լինել, զի նոքա առաւել պայծառասցին:

Տեսանե՞ս զշահն որքան է. բայց ոչ 'ի չարացն է օգուտն, այլ 'ի բարեացն քաջարութենէ: Վասն այսորիկ և ընդ Նոյ զարմանամք, ոչ զի արդար էր և ոչ զի կատարեալ միայն, այլ զի յազգին յայնմիկ 'ի խառնեցելումն և 'ի չարի ազգ պահեաց զառաքինութիւնն, յորժամ ոչ զոք ունէր օրինակ առաքինութեանն; յորժամ ամենեքեան 'ի չարութիւն զնա ձգէին: Ոչ ամենեցուն նոցա ընդդէմ եկաց, որպէս ոք ուղեգնաց յալով բազմութեամբ բերեալ լինէր յարձակմամբ զհակառակն նոցա գնալով ճանապարհ: Վասն որոյ և ոչ վարդապետաբար ասաց «Նոյ այր արդար կատարեալ», այլ յաւել «յազգին իւրում» 'ի խառնակեցելում. և 'ի բաց հրաժարեցելում, յորժամ և ոչ մի շահ էր առաքինութեանն: Որք բարեացն 'ի չարացն այս է շահ: Այսն-

Յաղագս այնորիկ, որպէս յառաջն ասացի, ընդ միմեանս ներեաց կեալ ամ մարդկան, և մանաւանդ զբարիսն ընդ չարսն, զի և զնոսա յիւրեանց առաքինութիւնս փոփոխեսցեն։ Լուր զինչ ասէր աշակերտացն Քրիստոս. «Նմանեցաւ արքայութիւն երկնից կնոջ, որոյ առեալ խմոր թագոյց յերիս գրիւս ալեր»։ Որպէս զի զխմորոյն զօրութիւն ունին արդարքն, զի առ ինքեանց նմանութիւն զչարն փոփոխեսցեն։ Այլ սակաւք են արդարքն. զի և խմոր փոքր է. այլ ոչ ինչ սղութիւն վնասէ զզանգուածն, քանզի սակաւն այն զամենայն զալիւրն յինքն դարձուցանէ 'ի ձեռն եղելոյ յինքեան զօրութեան։ Նոյնպէս և զօրութիւն արդարոցն ոչ քանակութեամբ թուոյ, այլ հոգւոյն շնորհաւ զօրն ունին։ Երկոտասանք էին առաքեալքն, տեսնե՞ս զիարդ փոքր էր խմորն. աշխարհ ամենայն յանհաւատութեան, տեսնե՞ս որքան է զանգուածն։ Այլ նոքա երկոտասանքն զամենայն աշխարհ առ ինքեանս դարձուցին։ Խմոր և զանգուած նորին բնութեան են, այլ ոչ նորին զօրութեան։ Յաղագս այսորիկ եթող 'ի մէջ արդարոց զչարսն. զի զոր օրինակ նորին բնութեան են արդարոցն, նոյնպէս և նորին յօժարութեանն լինիցին։

Զայս յիշեցէք, այսուհետեւ ըմբերանեցէք զհեղգացեալսն զլցծան զդանդաղկոտսն զվեհերոտսն յառաքինութեանն աշխատութիւնս, որք զհասարակաց տեառնեն ամբաստանեն։ «Մեղար, ասէ, լռեաց». մի զնէր 'ի վերայ զերկրորդ մեղսն չարագոյնս։ Ոչ այնքան չար է մեղանչելն, որքան յետ մեղանչանացն զտեառնեն չարախօսել։ Ծանիր զպատճառս մեղացն, և ոչ զայլ ոք գտցես, բայց զքեզ զյանցուցեալդ։ Ամենայն ուրեք բարւոյ յօժարութեան պէտք են։ Ցուցի ձեզ զորս ոչ սոսկ խորհրդովք, այլ 'ի ծառայակցացն որք 'ի նմին աշխարհի կեցին. նոյնին օրինակաւ և դուք վարեսջիք։ Նոյնպէս և հասարակաց մեր տէրն դատի։ Ուսարուք զցոյց օրինակիս այսորիկ, և ոչ ոք զձեզ կարասցէ խաբել։

Պոռնի՞կ ոք, ցոյց նմա զմիւս ևս ոք պարկեշտ. ագահէ՞ ոք և յափշտակէ, ցոյց նմա որ զողորմութիւնսն ընձեռէ. յաչաղանօ՞ք ոք կեայ և նախանձու, ցոյց նմա որ մաքուր է յախտէն. 'ի սրտմտութենէ՞ ոք ըմբռնեալ, որ իմաստասիրութեամբն կեայ՝ 'ի մէջ ածէք։ Բան-

զի ոչ է պարտ և արժան 'ի հին պատմութիւնս և եթ ընթեռնուլ, այլ և 'ի մերձակայիցս առնուլ զօրինակն. զի և այսօր ա՜յ շնորհաւն ոչ սակաւք են քան զառաջինսն ուղղութիւնք: Անհաւատ է և սուտ վարկանի զգիրսն, ո՛չ հաւատայ եթէ Յոբ այնպիսի էր, ցոյց նմա զայլ ոք մարդ՝ որ արդարոյն կենացն է նախանձաւոր:

Այսպէս և տէրն զմեզ դատի. ծառայակիցս կացուցանէ ընդ ծառայակիցսն, և ոչ յիւրմէն բերէ 'ի դատաստանէն զվճիռն, զի մի ոք սկանիցի դարձեալ, որպէս և այն որ զտաղանդամն հաւատաց, և փոխանակ տաղանդին զամբարտաւանութիւնն մատոյց, "Եթէ խիստ ես": Պարտ էր հառաչել զի ոչ կրկնապատիկ արար զտաղանդն, այլ դժնդակագոյնս ևս զմեղսն գործեաց, զամբաստանութիւնն հակառակ տեառնն 'ի վերայ դնելով իւրոյ անգործութեանն: Եւ զինչ ասէր. "Գիտէի զքեզ եթէ խիստ ես": Ով թշուառական և հէք և չարաբարոյ և դանդաղկոտ, պարտ էր զքում մէ վատութենէդ ամբաստան լինել, և 'ի բաց բառնալ ինչ յառաջին մեղանացն. իսկ 'ի տէրն զամբաստանութի՛ն բերելով, փոխանակ տաղանդին զյանցանսդ կրկնապատիկ արարեր:

Վասն այսորիկ ա՜ծ ծառայս և ծառայս կացուցանէ, զի սոքա՝ զնոսա դատիցեն, և նոքա 'ի սոցանէ դատապարտեալք՝ ոչ ունիցին այնուհետև ամբաստանել: Յաղագս այսորիկ ասէ. "Գայ որդի մարդոյ փառօք հօր իւրոյ": Տեսէ՞ր զփառացն զանփոփոխութիւն. ոչ ասաց նմանութեան փառօք հօր, այլ նոյնովք փառօք հօր. փառք որդւոյ, փառք հօր իւրոյ, փառք հոգւոյն. "և ժողովեսցէ զազգս ամենայն": Ահաւոր է ատեանն, ահաւոր մեղաւորացն և յանցաւորացն. բայց որք գիտեն ինչ զինքեանց ուղղութիւնս, հաշտ և փափագելի: "Եւ կացուսցէ զոչխարսն յաջմէ և զայծսն 'ի ձախմէ իւրմէ": Եւ սոքա և նոքա մարդիկ, ընդէ՞ր սոքա ոչխարք և նոքա ուլք: Ոչ զի զայլայլութիւն բնութեանն, այլ զայլայլութիւն յօժարութեանն ուսցիս: Ընդէ՞ր որք ոչ ետուն զողորմութի՛ ուլք: Վասն զի անպտուղ է կենդանին, ոչ 'ի ծննդոյն և ոչ 'ի մազոյն 'ի ներքս բերել կարէ ստացողացն, ամենայն ուստեք ամայի յայնպիսի բերոց յաղագս հասակին տարաժամութեանն: Վասն այսորիկ

որք և ոչ մի ինչ պտուղ ողորմութեան չբերին, կոչեաց ուլս: Իսկ որ յաջմէն էին՝ ոչխարք. ՚ի նոցանէ յոլով շահս ՚ի յարարար բնութենէն, ՚ի ծննդոյն, ՚ի կաթնէն: Այլ զինչ ասէ առ նոսա. «Քաղցեալ զիս տեսէք և կերակրեցէք, մերկ և զգեցուցէք, օտար և ժողովեցէք»: Դարձեալ առ այլսն զհակառակն. և սակայն նոյն մարդիկ և սոքա և նոքա, նոյն յաղթանակք երկաքանչիւրոյն առաջի կային ուղղութեանցն: Ինքն առ սոսա և առ նոսա եկն հանդերձ նովին մերկութեամբ, և առ սոսա և առ նոսա հանդերձ նովին քաղցիւ, և օտար նմանապէս. ամենայն հաւասար սոցա և նոցա, և զիա՞րդ կատարածն ոչ հաւասարակ: Վասն զի յօժարութիւնն ոչ թողացոյց, քանզի այն միայն զորոշումն արար: Յաղագս այնորիկ նոքա ՚ի գեհեն, և սոքա յարքայութիւն:

Որդ եթէ սատանայ նոցա յանցանացն էր պատճառ, ոչ արդեօք այլոց յանցուցելոց զայլս հանդերձեալ էր չարչարել: Տեսե՞ր ատ և զմեղուցեալսն և զուղղութե՞ արարողսն. տեսե՞ր զիարդ տեսանել զծառայակիցսն պապանձեցան: Ներքեզ և յայլ կողմն զառակ բանիս ածցուք:

Այս էին, ասէ, տասն: Դարձեալ ասա որք ուղղեցինն, դարձեալ և յանցուցեալքն, զի յանդիման իրերաց և զնոցա սխալանսն տեսցես, և զնոցա զուղղութիւնսն. վասն զի համեմատութիւն[1] յայտնագոյն զայն առնէ: Այլ սոքա կոյսք և նոքա, և սոքա հինգ և նոքա. փեսային ծնայքն ամենեքեան: Այլ զիա՞րդ ոմանք մաքրին և կէսք ոչ մաքրին: Ոչ ի կէսքն անմտագոյնք էին, և ոմանք մտադատէրք և հէզք: Տեսե՞ր դարձեալ զյօժարութիւն կատարածին պատճառեալ, և ոչ զսատանայ. տեսե՞ր յանդիման մեծամեծաց զզգաստասունն և ՚ի նմանութենէն բերեալ զվճիռն. ծառայակիցք զծառայակիցսն դատեն:

Ասացի ցուցից և յանմանանիցն լեալ զհամեմատութիւնն. վասն զի լինի և յանմանանիցն, որպէս զի զատապարտութիւնն յայտնագոյն լիցի: «Որք նինուէացիք, ասէ, յարիցեն և դատապարտեսցեն զազգս զայս»: Եւ ես նման դատեցայքն: Քանզի ասինք բարբարոսք

1 Ցորենինքն գրեալ էր համառօտաբանեալն. եղաւ ըստ յունին:

և ոմանք Հրեայք. կէսք որ 'ի մարգարէական վարդապետութիւնս վայելեցին, և կէսք որ ոչ երբէք հաւատարեցին նմային լսելութեանն: Եւ ոչ այս միայն է զանազանութիւնն, այլ զի անդր ծառայն չոգաւ, և այր ինքն տէրն. և նա երթեալ կործանումն քարոզեաց, իսկ սա զարքայութիւն երկնից աւետարանեաց: Որո՞ց արդեօք իրաւացի էր առաւել հաւատալ. բարբարոսա՞ցն և անմտացն և որոց ոչ երբէք էր հաղորդեալ նմային վարդապետութեանն, եթէ որք յառաջն 'ի հասակէն մարգարէական գրովք էին սնեալք: Ամենեցուն քաջայայտ է եթէ յաւէտ Հրէիցն: Այլ և հակառակ նմին սոքա անհաւատացին տեառնն որ զարքայութիւնն քարոզեաց, և նոքա հաւատացին ծառայակցին զկործանումն պատմողի. զի մեծապէս և նոցա հեզութիւնն և սոցա չարաբարութիւնն երևեսցի:

Մ՞ի դև ինչ, մի՞ սատանայ ինչ, մի՞ բախտ, մի՞ ճակատագիր. ո՞չ իւրաքանչիւր ոք ինքեան չարութեան և առաքինութեան պատճառ եղև. զի եթէ նոքա ոչ էին հանդերձեալք պատժապարտք լինել, ոչ արդեօք ասէր "դատապարտեսցեն զազգս զայս". ոչ արդեօք և թագուհւոյն հարաւոյ դատապարտել զՀրէայսն ասէր: Զի ոչ յօգունք միայն գլխովս դատին ցանկժամ, այլ թերևս մի մարդ զբովանդակ բազմութիւնն. յորժամ որոյ հնար էր յաւէտ մոլորել՝ երևեսցին մնացեալքն առանց խաբէութեան, և որոց ամենայն օրինակաւ յաղթող լինել պատշաճ էր՝ պարտեալք գտանեցին: Եւ վասն այսորիկ զԱդամ և զՅոբ յիշեցաք, հարկաւոր է դարձեալ վերստին երթալ 'ի նոյն ճառ, որպէս զի զնշխար բանին ընձեռիցեմք:

Ընդ Ադամայ լոկ բանիւք մարտեաւ, ընդ Յոբայ 'ի ձեռն իրաց. վասն զի զմինն յամենայն ընչեղութենէն մերկացոյց և 'ի մանկանցն զրկեաց, և 'ի միւսմէն ոչ փոքր ինչ և մեծ 'ի բաց եառ: Մանաւանդ եթէ զնոյն իսկ զբանն քննեսցուք և զզրժանացն զօրինակս: "Մատուցեալ, ասէ, օձն ասաց կնոջն. զի՞ է զի ասաց ձեզ՝ մի ուտիցէք յամենայն փայտէ որ է 'ի դրախտիդ": Աստ օձ, և անդ կին առ Յոբայ: Նախ[1] առաջին յոյժ հանդիպե-

1 [illegible]

Սուտ՛ հաւատացեր, ով կին, բանսարկուին. զինչ տեսեր բարի. ո՞չ էր բաւական արժանի հաւատալոյ օրինադրին, զի նա ած ստեղծիչ և արարիչ, և դա բանսարկու և թշնամի: Այլ ասեմ՝ թշնամի. օձ լոկ զդա կարծեցեր գոլ: Օ օձն, ասա ինձ, այդքան զուգախառնութեան արժանաւոր առնել էր պատշաճ, մինչ զի և զտէրունեան խրատն պատմել դմա:

Տեսանես զի կարողութիւն էր գիտել զխաբէութին, այլ ոչ կամեցաւ կինն: Այլ սակայն ած բաւականս եառ զբարեգործութեանն իւրոյ ցոյցս, և 'ի ձեռն գործոց զխնամակալութիւնն եցոյց: Քանզի յոչինչ ստեղծ ըզմարդն և զոգին փչեաց և ըստ կերպարանի արար, իշխան 'ի վերայ ամենեցուն երկրայնոցս կացոյց զնա և օգնական շնորհեաց, զդրախտն տնկեաց և զպէտս այլոց ծառոցն հրամայեաց, 'ի մինն միայն ասաց ոչ մերձենալ և յայնմանէ վայելչապէս արգել: Իսկ բանսարկուն գործով ոչ սուղ ինչ և ոչ մեծ եցոյց բարի, այլ լոկ բանիւք հպարտացոյց զկինն, և շնչեալ զնոստի յոյսն այնպէս խաբեաց: Այլ սակայն քան զած զբանսարկուն արժանի հաւատալոյ գոլ կարծեաց, և քան զոր 'ի ձեռն գործոցն եցոյց զբարեմտութիւն. որ զսոսկ բանսն մատոյց ևեթ, այլ և ոչ ինչ, հաւատաց կինն: Տեսանես զիարդ յանմտութենէ միայն և 'ի ծուլութենէ, այլ ոչ 'ի բռնութէ խաբէութին եղև: Այլ զի ուսանիցիս զայս յայտնագոյն, լուր զիարդ գիրք ամբաստանեն զկնոջէն:

Քանզի ոչ ասացին եթէ պարտեալ, այլ տեսեալ զփայտն զի գեղեցիկ էր՝ եկեր: Որպէս զի անարգել տեսանելեացն են բամբասանքն, և ոչ խաբէութեանն միայն որ էր 'ի սատանայէ. քանզի յիւրմէ ցանկութենէն յաղթեցաւ, և ոչ 'ի չարութենէ դիւին: Յաղագս այնորիկ և ոչ 'ի թողութեանն վայելեաց. այլ ասացեալ եթէ “ օձն խաբեաց զիս ,,, և այնպէս զվերջին դատաստանն եառ. զի 'ի նմա էր ոչ անկանելն:

Այլ զի ուսանիցիս յայտնագոյն զայս, բեր 'ի Յովբ զբանն ածցուք, 'ի յաղթեցելոյն 'ի զօրացելոյն, 'ի պարտեցելոյն 'ի յաղթողն. զի այնպէս առաւել մեզ տացէ զյօժարութիւն ընդդէմ ամբառնալ զձեռս բանսարկուին: Ընդ օձն էր որ պատրէր, և զօրացաւ. և աստ կին, և ոչ կարաց. և սակայն կինն յոյժ հաւատարիմ-

գոյն քան զնա ։ Եւ Յովբ յետ կորստեան ընչիցն, զկնի մահուան մանկանցն և յետ տապալաւանցն մերկանալոյ մերձենայր մեքենայիւքն ։ Բայց անդ և ոչ մի ինչ յայտնի էր, ոչ մանկունք մեռան, ոչ կորոյս զինչս Ադամ, և ոչ 'ի վերայ աղբոյ նստէր, այլ 'ի դրախտին փափկութեան բնակէր և 'ի ծառս յամենավայելուչս վայելէր, յաղբիւրս և 'ի գետս և յայլ ամենայն ընդարձակութիւնս. ոչ ուրեք աշխատութիւն, ոչ ցաւք, ոչ տրտմութիւնք, ոչ հոգք, ոչ թշնամանք, ոչ լուտանք և ոչ բնաւ չարիքն որք վտանգեցին զՅովբ ։ Եւ սակայն ոչ ուրեք յայտնի եղելոց անկաւ և կործանեցաւ ։ Ո՞չ քաջայայտ է եթէ յաղագս պղերգութեանն ։ Որպէս և միւսն ևս ամենեցուն այսոցիկ 'ի վերայ կացելոց և ծանրացելոց եկաց մնաց առաքինաբար և ոչ անկաւ. ո՞չ և աստ յայտ է զի և սա վասն արթնութեան անձին ։

Արդ յերկաքանչիւր կողմանց, ով սիրելի, մեծ պըտուղ շահեսցիս ։ Եւ փախուցեալ յԱդամայ նախանձուէն՝ տեսանելով որչափ 'ի յուլութենէն ծնան չարիք ։ Նախանձեցիր ընդ Յովբայ երկիւղածութիւնն, ուսանելով որքան 'ի փութոյն բազմանին բարիք ։ Յամենայն ժամ զայն զննեա դու, և ամենայն ցաւոց և խռովութեանց բաւական մխիթարութիւն ընկալցիս ։ Քանզի իբրև 'ի հասարակաց տեսարանի յաշխարհիս կացեալ երանելի առաքինութեն ընդ ամենեսին խօսի 'ի ձեռն համդիպելոց ախտիցն նմա՝ ամենայն առաքինապէս ժուժկալել որք 'ի վերայ անկանիցին, և ոչ ումեք տեղի տալ եկելոց դժնդակութեանցն ։ Քանզի ոչ է, և ոչ իսկ է, և ոչ մի մարդկային ախտ՝ որ ոչ կարիցէ մխիթարութիւն ընդունել անտի. զի որ յամենայն աշխարհի սփռուեալ են չարչարանքն, այսօրիկ միանգամայն եկեալք 'ի միասին տագնապեցին զնա ։ Արդ զինչ արդեօք լինիցի թողութիւն, որ ոչ կարիցէ զմասն 'ի վերայ եկելոցն յայնցանէ դժնդակութեանցն հանդերձ գոհութեամբ ընդունել, յորժամ նա ոչ զմասն միայն, այլ զի բովանդակ իսկ երևի զամենայն զմարդկան զչարիս ընկալեալ ։

Եւ զի մի՛ ստգտանիցես զգերազանցութի՛ բանիս, բեր զիւրաքանչիւր ոք զ'ի վերայ եկեալսն նմա զխոցմունսն [1]

1 Ցորենակերն զխոտաճաշակն. յայն վէրս, չարչարանք ։

զպատուիկ ածցուք 'ի վերայ։ Եւ եթէ ախորժես, որ քան զամենայն անըմբերելի թուի գոլ, նախ առաջին 'ի մէջ բերցուք՝ զաղքատութիւնն ասեմ և որ 'ի նմանէ են ցաւքն. վասն զի զայս ամենայն ուրեք ամենայն մարդ ողբայ։ Եւ ո՞ աղքատագոյն քան զՅովբ եղև, որ քան և որք 'ի բաղանիսն ընկեցեալ են և 'ի հնոցի իմն վառանջէն և պարզաբար քան զամենայն իսկ մարդիկ աղքատագոյն էր։ Վասն զի սոքա գոնէ հանդերձս ունին պատառոտունս. իսկ նա մերկ նստէր, և հանդերձ ունէր միայն որ 'ի բնութենէ մարմնոյս է զգեստ դժնդակ փտութեամբ, և զայն ամենայն ուստեք ապականեաց բանսարկուն։ Եւ դարձեալ այս աղքատք գոնէ ընդ յարկաւ են նախադրայն 'ի բաղանիսն, գոնէ խոտով ծածկին. բայց նա արտաքոյ միշտ օթագայեալ կատարէր, և ոչ զոսկ ինչ յարկի մխիթարութիւն ունելով. և որ մեծագոյնն ևս է, զի սոքա յոլով ինչ զնմանեանց գիտեն զչարութիւն։ Բայց զի զայս ըստ իւրաքանչիւր ումեք պատահելոյն նմա զմտաւ ածելով՝ մեծամեծ նմա ըզցաւսն առնէր և առաւելագոյն զտարակուսանսն գործէր՝ և ոչ զպատճառս եղելոցն գիտէր։

Արդ սոքա որպէս ասացի, յոլովս ինչ ունին զնմանեանս բամբասել. և ոչ է փոքր այս 'ի մխիթարութիւն՝ 'ի թըշուառութեանն գիտել զնմանեանս յիրաւի պատժեալ։ Բայց նա և յայսմ մխիթարութենէ զրկեալ էր, և վարս ցուցանելով առաքինութեամբ լի՝ ընդ վերջին յանդգնեալսն համբերէր չարեաց։ Սոքա որ առ մեզ են աղքատքս, 'ի վերուստ 'ի սկզբանն կրթեցան 'ի թշուառութիւնսն. իսկ նա առանց հրահանգելոյ կրեաց զաղքատութիւնն, յանկարծակի ընկալեալ 'ի փարթամութենէն զփոփոխումն։ Զի որ օրինակ զպատճառն գիտել զեղելոցն մեծ է մխիթարութիւն, նոյնպէս ոչ ինչ նըւազ քան զայն որ կրթեալն է յաղքատութիւն 'ի սկըզբանն՝ աղքատութեանն տանել. յորոց յերկոցունց արդարն այն էր զրկեալ, և ոչ այնպէս անկանէր։

Տեսանե՞ր զնա 'ի վերջին եկեալ յաղքատութիւն, զնի որոյ այլ ոչ ևս է գտանել։ Զի քան զմերկն և որ ոչ ունիցի յարկ ո՞ արդեօք լինիցի աղքատագոյն։ Մանաւանդ թէ և ոչ յամենայն յատակին վայելէր տէր. զի ոչ 'ի վերայ հողոյ, այլ յաղբեոյ վերայ նստէր։ Արդ

յորժամ տեսանիցես զքեզ յաղքատութեան լեալ, զմտաւ ած զարդարոյն զկիրս, և վաղվաղակի կանգնեսցես, և զամենայն խորհուրդս տրտմութեան 'ի բաց մղեսցես։ Մի այս է թշուառութիւն, որ բովանդակ 'ի միասին յաւիտենից պատճառք լինէին, թուին մարդկան։

Միւս ևս զկնի այնորիկ, մանաւանդ եթէ նախ քան զայն՝ վէրք։ Ո՞ ոք այնպէս ախտացաւ երբեք. ո՞ այնպիսում հիւանդութեան համբերեաց. ո՞ զայնպիսի հարուածս ընկալաւ, կամ զայլ ոք ետես ընկալեալ։ Ոչ ոք է։ Առ սակաւ սակաւ նորա մարմինն խորշեալ լինէր, և աղբերս որդանց ամենայն ուստեք բղխէր յանդամոցն, և մշտնջենաւոր էր հոտումն այն, յոլով ժահահոտութիւն իմ ուստեք, և մարմինն առ փոքր փոքր ծախեալ, և այնպիսի ապականութեամբ վատնեալ, մինչ զի անախորժելի զկերակուրն առնէր, և սով օտար իմն և անկարծելի էր, զի և ոչ 'ի տուեալ կերակուրսն կարէր վայելել։ “Նեխութիւն, ասէ, տեսանեմ զկերակուր իմ„։

Արդ յորժամ 'ի հիւանդութիւնս անկանիցիս, ով մարդ, յիշեաց զմարմինն զայն և զանդամսն սուրբս. քանզի սուրբք էին և մաքուրք, և այսքան ունէին վէրս։ Եւ եթէ 'ի պատերազմ ուրեք առաքիցիս, և անդ անիրաւապէս առանց մեղ իրիք պատճառի պրկեալ 'ի փայտի քերեսցեն զկողսդ, մի ինչ թշնամանս վարկանիցես զիրսն, և մի ցաւոցն տեղի տայցես՝ զսուրբն զայն զմտաւ ածելով։

Այլ բաւական ունէր, ասեն, նա զմխիթարութիւն և զախտափանս, գիտելով եթէ ա̃ծ զայն 'ի վերայ նորա ածէր։ Յաւէտ այնոքիկ խռովեցուցանէին և ամբոխէին զնա, զի զարդարն ա̃ծ և որ ամենեւին էր 'ի նմանէ սպասաւորութիւն ընկալեալ՝ կարծէր պատերազմել, և պատճառս ինչ իրաւացի գտանել եղելոցն ոչ ունէր։ Իսկ յորժամ ուսաւ յետոյ զպատճառսն, տես որքան երկիւղածութիւն եցոյց։ Քանզի յորժամ ասաց նմա ա̃ծ, “Այլ ազգ զիս կարծես խօսել, բայց զի արդ երևեսցիս„, հիացեալ ասէր. “Ձեռն եդից 'ի վերայ բերանոյ իմոյ. միանգամ խօսեցայ, և յերկրորդումն ոչ յաւելից„. և դարձեալ. “Մինչև 'ի լուր ականջաց լսէի զքեզ յառաջագոյն. իսկ այժմ ակն իմ ետես ըզ-

քեզ։ Յաղագս որոյ վատթարեցի զանձն իմ և հալեցայ. վարկանիմ զիս հող և մոխիր„։

Արդ եթէ բաւական զայն 'ի մխիթարութիւն կարծիցես, կարես և դու զնոյն մխիթարութի՛ ունել։ Վասն զի թէպէտ և ոչ յաղագս քո կրեցես 'ի դժնդակութեանցն, այլ 'ի մարդկան չարութենէ, գոհասցիս, և ոչ ինչ հայհոյեսցես որ կարողն է խափանել, և թողացուցանէ յաղագս զքեզ փորձելոյ, որպէս թէ յաղագս քո չարչարեալ պսակիս. նոյնպէս և դու նոցին վարձուց դիպեսցիս. զի որք 'ի մարդկանէն եկին 'ի վերայ քո թըշուառութիւնքն՝ առաքինաբար ժուժկալեցեր, և որ կարէրն զայն 'ի քէն արգելուլ և ոչ կամեցաւ՝ գոհացար զնմանէ։ Ահա աղքատութիւն և հիւանդութիւն, և երկոքին հանդերձ վերջին սաստկութեամբ տեսեր 'ի վերայ եկեալս արդարոյն։

Կամիս ցուցից քեզ և որ 'ի բնութենէն է պատերազմն, որ և քան զնոյն սաստիկսն առաւելագոյն եղաւ յառաքինւոյն վերայ։ Տասն որդի կորոյս, զտասնեսեան յանկարծակի, 'ի նմին ծաղկի հասակին զտասնեսեան, որք յոլով առաքինութիւնս ցուցանէին, և ոչ 'ի հասարակաց բնութեանս օրինօք, այլ բռնաւոր և ողորմելի մահու։ Ո՞վ ունիցի այնպիսի թշուառութիւնս ասել։ Ոչ և ոչ մի մի։ Արդ յորժամ կորուսանիցես որդի և դուստր 'ի միասին, 'ի վեր ընթա առ արդարն այն, և ամենայն իրօք յոլով մխիթարութիւն գտցես քեզ։

Նա այս դժնդակութիւնք միայն դիպեցան արդարոյն արդեօք։ Այլ և բարեկամացն լքանել և մատնել, այպնումն և լուտանք, խաղ առնել և ծաղր։ Նա յամենեցունց կատականս ընդունել ո՞ւր արդեօք էր համբերելի. քանզի ոչ այնպէս թշուառութեանցն բնութիւնք, որպէս 'ի նոսին իսկ 'ի վտանգսն խոցոտել սովորեցին զմեր անձինս։ Այլ և յոլովք իսկ բազում ուստեք 'ի վերայ կային և լուտային զնա, և տեսանէս զնա ընդ այն դժուարեալ և ողբալով ասէր. "Արդ և դուք ևս 'ի վերայ ելէք իմ„. և անողորմ զնոսա կոչէր և ասէր՝ եթէ "Ուրացան զիս մերձաւորք իմ, և ծառայք իմ հակառակ խօսէին ինձ, և զորդիս հարճից իմոց կոչէի, և նոքա 'ի բաց փախչէին։ Բայց այլք, ասէ, թքանէին յիս, և զրոյց ամենեցուն եղէ. և նոյն ինքն, ասէ, պատմու-

ճանս իմ գարշեցոյց զիս,,: Այսոքիկ և ոչ լսել ժուժալի է, թող թէ 'ի ձեռն իւրացն ունիցի համբերել ես:

Աղքատութիւնն վերջին, հիւանդութիւնն անըմբերելի որ և անկարծելի, մանկանցն կորուստ այնքանեաց և այնպիսեաց և այնու օրինակաւ, թշնամանք և լուտանք և կատականք յամենայն մարդկանէ: Ոմանք կատակէին և այլք թշնամանէին, կէսք արհամարհէին, ոչ թշնամիք միայն, այլ և բարեկամք. ոչ բարեկամք եթէ, այլ և ստրուկք. ոչ միայն այպնէին և լուտային, այլ և գարշէին. և ոչ յերկուս և յերիս և 'ի տասն աւուրս, այլ 'ի բազում ամիսս. որ և նմա միայնում դիպեցաւ, զի և ոչ 'ի գիշերոյն ինչ ունէր մխիթարութիւն, այլ քան զտունջենային դժնդակութեանցն յաւելուածս մեծամեծս էին գիշերային երկիւղալից երազք: Եւ զի չար ես 'ի քունն համբերէր վտանգից, լուր զինչ ասէր. «Ընդէ՞ր զիս զարհուրեցուցանես երազովք, և անրջովք զիս պակուցանես,,: Ո՞վ ոք երկաթի մարդ և անդամանդեայ որ այսքան դժնդակութեանց համբերեաց. քանզի եթէ մի ոք էր՝ ըստ ինքեան անժուժալի էր, զմտաւ ած թէ միանգամայն այնքան եկեալ 'ի միասին՝ որքան յարուցանէին մրրիկս: Բայց սակայն նա ամենայնի այնմ համբերեաց, և յամենայնի որ ինչ դիպեցան նմա իրքն՝ ոչ ինչ մեղաւ:

Եւ եղիցին այսուհետև նորա չարչարանքն դեղ մերոց չարեացն, և դժնդակ աղէկծութիւնն այն մերոց վշտացս նաւահանգիստ. և յիւրաքանչիւր ումեք 'ի դիպուածսն մեր զմտաւ ածցուք զսուրբն, տեսանելով զմի մարմին որ զամենայն աշխարհի ընկալաւ զչարիս առաքինապէս, մեք 'ի մասնաւորսն կացցուք մնասցուք: Եւ իբրև առ մայր ոք բարեգութ որ ամենայն ուստեք զձեռս կարկառեալ և զմանուկն զարհուրեալս ընդունիցի և սփոփիցէ, այնպէս առ գիրսն առ այսս ապաւինեսցուք. և որ քան զամենայն յերկարագոյնն է մեզ տեսանել ամենեցուն բաւական առնլով զմխիթարութիւն, այնպէս երթեալ գնասցեմք:

Ապա եթէ ասիցես, նա Յոբն էր և վասն այնորիկ համբերեաց, ես ոչ եմ իբրև զնա, մեծագոյնս ես ասես ինձ զքո ամբաստանութիւն և զարդարոյն գովութիւն. քանզի յայտ իրաւացի էր քեզ համբերել,

րիկ. մանաւանդ եթէ յառաջագոյն ցուցաք յաղագս դորին և յանձայլն գրոց. զի մի՛ ինչ կարծիցէք եթէ մեր իցեն ասացեալքս, զՊաւղոս ձեզ վկայ ածից: Եւ զինչ ասէ նա զըոհիցն. «Որոց արիւնն 'ի սրբութիւն սրբութեցն մտանէր, նոցին մարմինքն այրեցեալ լինէին արտաքոյ բանակին»: Յաղագս այնորիկ և Յի՛ս զի սրբեսցէ զժողովուրդն, արտաքոյ դրանն չարչարեցաւ: Արդ ելցուք առ նա այսուհետև արտաքոյ բանակին՝ բերելով զնախատինս Քրիստոսի: Հրամայեաց Պաւղոս և ասաց՝ ելցուք առ նա. հնազանդեցաք և ելաք: Արտաքոյ վասն այնորիկ ժողովիմք:

Բայց ընդէ՞ր 'ի վկայարանիս յայսմիկ և ոչ յայլում, քանզի ո՞չ շնորհաւ յիւրաքանչիւր կողմանց քաղաքս մեր նշխարօք սրբոցն պարսպեալ է: Արդ ընդէ՞ր արդեօք այսր և ոչ յայլ վկայարան ժողովեն զմեզ հարքն: Աստ մեռելոց ամենեցուն բազմութիւն կայ. և զի այսօր առ մեռեալս էջ Յիսուս, յաղագս նորին և այս տեղի քնարան անուանի. զի ուսցիս եթէ վախճանեալք որ աստ կան՝ ոչ մեռան, այլ 'ի քուն են: Վասն զի նախ քան զգալուստն Քրիստոսի, մահ՝ մահ կոչեցեալ էր. «Յորում աւուր ուտիցէք 'ի փայտէդ, մահու մեռանջիք». և դարձեալ. «Անձն որ մեղիցէ, նոյն և մեռցի». և «Մա՛հ մեղաւորաց չար է». և «Պատուական է առաջի տեառն մահ սրբոց իւրոց». և «Մա՛հ առն հանգիստ»: Ոչ մահ միայն, այլ և դժոխք կոչեցեալ լինէին. «Բացցեն, ասէ, դժոխք զանձինս իւրեանց». և «Սակայն ած փրկեսցէ զանձն իմ 'ի ձեռաց դժոխոց յորժամ ընդունիցի զիս». և դարձեալ Յակոբ. «Իջուցանիցէք զծերութիւնս իմ հանդերձ տրտմութեամբ 'ի դժոխս»:

Այս անուանս ունէին վախճանք մեր յառաջագոյն: Բայց յորժամ հասեալ եկն Քրիստոս, ոչ ևս կոչի մահ, այլ քուն և հանգիստ. զի և Քրիստոս ասէ. «Ղազարոս բարեկամն մեր ննջեաց». և ոչ ասաց մեռաւ. և սակայն մեռեալ էր: Եւ զի ուսցիս եթէ անուն օտար էր քնոյն, լուեալ, ասէ, աշակերտացն անհանճարեցան և ասացին. «Թէ ննջեաց, կեցցէ»: Այնպէս ոչ գիտէին զինչ էր ասացեալն: Եւ դարձեալ Պաւղոս. «Ապա որ ննջեցեալքն 'ի Քրիստոս կորեան արդեօք».

առ նոսա զայս ասէր. և դարձեալ այլուր. «Մեք կենդանիքս ոչ ժամանեսցուք ննջեցելոցն», յաղագս մեռելոցն ասելով։ Նա դարձեալ այլուր. «Նոքա որ 'ի քուն եսդ»։ Նա զի ուսցիս եթէ յաղագս մեռելոցն ասէ, 'ի վերայ էած. «Նա կանգնեցիր 'ի մեռելոց»։ Տեսեր ամենայն ուրեք քուն կոչեցեալ զմահ. յաղագս այսորիկ և տեղիս այս քնարան անուանեցաւ։ Պիտանացու է մեզ անունս այս և յոլով իմաստասիրութեամբ լի։

Արդ յորժամ բերիցես այսր զմեռեալն, մի կոծեսցես զնա. քանզի ոչ 'ի մահ, այլ 'ի քուն ածես զնա. բաւական լիցի քեզ անուն տեղւոյն 'ի մխիթարութիւն թշուառութեանն։ Ուսիր ուր ածես. 'ի քնարան։ Նա երբ. յետ մահուանն Քրիստոսի, յորժամ ջիլք հատան մահու. որպէս զի 'ի տեղւոյս և 'ի ժամանակէս բազում պտուղս մխիթարութեան կարես շահել։ Մանաւանդ առ կանայս բանս այս մեր յերկարեսցի, վասն զի ախտակից[1] իմն է ազգդ այդ, և առ թշուառութիւնս[2] դիւրանկիւնելի. այլ բաւական ունին դեղ բաղձանաց զտեղւոյս անուն։ Վասն այսորիկ այսր ժողովիմք այսօր։

Քանզի այսօր 'ի դժոխս շրջեցաւ տէրն մեր. այսօր զպղնձի զդրունսն խորտակեաց. այսօր զնիգս երկաթիս փշրեաց։ Լուր հաւաստեաւ զասացեալսն. ոչ ասաց՝ եբաց զդրունսն պղնձիս, այլ խորտակեաց զդրունսն պղնձիս. զի անպիտան լիցի կապարանն։ Ոչ 'ի բաց եբարձ զնիգսն, այլ փշրեաց, զի տկար լիցի պահպանութիւնն. քանզի ոչ դուռն և ոչ նիգ, թէպէտ և մնասցէ ոք՝ ոչ արգելեալ լինի։ Նա յորժամ Քրիստոս խորտակէ, ո՞վ այլ ոք այնուհետև ուղղել կարասցէ. վասն զի զոր տէր ա͞ծ խոտորեցուսցէ, ո՞վ ուղղեսցէ այնուհետև։ Զի և թագաւորք յորժամ հանդերձեալ լիցեն արձակել ըզ-կապեալս, առաքելով թուղթս, ոչ այնպէս առնեն, այլ թողուն և զդրունսն և զբանտն, յայտնելով եթէ մնանել անդրէն դարձեալ հարկաւոր է, կամ արձակելոցն և կամ այլոց ումանց փոխանակ նոցա։

Իսկ Քրիստոս ոչ այնպէս, այլ ցուցանել կամելով եթէ վախճան ունի մահ, խորտակեաց զնորա զդրունսն

1 Յերից օրինակ. մին ախտաւոր է։ դիւրաւ անկանի. Թերևս առ անձ-
2 Օրինակ. մի առ ցանկութիւնս խոնարհեալ։

պղնձիս ։ Եւ պղնձիս անուանեաց իբրեւ ոչ եթէ 'ի պղըն-
ձոյ էին դրունքն , այլ զխստութիւնն անվանելի , եւ զաա-
տամնայի եւ զմահու զբռնութիւնն յայտնելով ։ Եւ զի
ուսցիս եթէ պղինձ եւ երկաթ զխստութիւնն եւ զան-
տեղիտալըն յայտ առնեն , լուր զինչ ասէ առ ոմն խիստ .
“ Ջիլք քո երկաթիք եւ ճակատ քո պղնձի ” ։ Ոչ իբ-
րեւ թէ ջիլ ունէր երկաթի եւ կամ ճակատ պղնձի , այլ
վասն զի անամօթ դէմս ունէր անկակղանալի եւ լիրբ ։
Խորժէ՞ս ուսանել զիարդ էր անամօթ եւ անկակղա-
նալի ։ Յայնքան ժամանակի ոչ ոք զնա հաւանեցոյց՝ թո-
ղուլ եւ ոչ զմի ոք յըմբռնեցելոցն , մինչեւ ինքն հրեշտա-
կաց տէրն իջեալ հարկ արար ։ Նախ առաջին կապեաց
զզօրաւորն , եւ ապա զկարասի նորա յափշտակեաց . յա-
ղագս որոյ 'ի վերայ ածէ . “ Գանձս խաւարինս անտե-
սանելիս բացից ” ։ Դարձեալ վասն դժոխոց բանս ։

Եւ զի՞նչ իցեն խաւարայինքն անտեսանելիք ։ Ոչ է
մի ասացեալն , այլ կրկնապատիկ իմացեալ լինի . քան-
զի է խաւարային վայր , այլ տեսանել ոք թէրեւս կա-
րիցէ ճրագի կամ լուսոյ տանելով անդր . այլ դժոխոց
տեղին աղջամղջին է եւ անվայելուչ , եւ ոչ երբէք զլու-
սոյ բնութիւն ընկալաւ . վասն այնորիկ խաւարինս ան-
տեսանելիս ասէ . մինչեւ էջ ինքն արդարութեան արե-
գակն , այն որ լուսաւորեաց եւ զդժոխս արար երկինս .
քանզի ուր Քրիստոս , անդ երկին ։ Գանձս խաւա-
րայինս ։ Ե՞ր աղագաւ գանձս կոչէ զդժոխս . բազում
ընչեղութի՛ւն ամբարեալ էր անդր մարդկային բնութե̃
եւ ա̃յ . յաղագս որոյ եւ ասէն . “ Որ ճոխանայն յաճե-
նեսեան եւ որ 'ի վերայ ամենեցուն որ կոչեն զնա ” ։ Ո՛ւ
զոր օրինակ թագաւոր ոք՝ աւազակապետ գտանելով որ
ընթանայ 'ի քաղաքս , յափշտակէ ամենայն ուստեք եւ
յայլս ծածկէ , անդր ամբարելով զընչեղութիւնն , կա-
պելով զաւազակապետն չարչարանաց մատնէ եւ զգանձս
նորա փոփոխէ 'ի թագաւորական շտեմարանս , նոյնպէս
եւ Քրիստոս արար . կապեաց զաւազակապետն եւ զկա-
պանապահն սատանայ , միանգամայն եւ զմահ , եւ զըն-
չեղութիւնն զամենայն՝ զմարդկան ազգ ասեմ՝ փոփո-
խեաց 'ի տէրունական 'ի շտեմարանն ։ Յաղագս այսո-
րիկ եւ Պաւղոս գոչէ ասելով՝ թէ “ Փրկեաց զմեզ յիշ-
խանութենէ խաւարի եւ փոփոխեաց յարքայութիւն

որդւոյն իւրոյ սիրելւոյ ,,: Եւ այն է հրաշալի, զի ինքն թագաւորն 'ի վերայ եկաց, թէպէտ և թագաւոր է: Որ ոչ ոք արդեօք 'ի թագաւորաց արժանի արար եր-բէք, այլ 'ի ձեռն սպասաւորաց արձակեն զկապեալսն: Բայց աստ ոչ այնպէս, այլ ինքն թագաւորն եկն առ կապեալսն. ոչ ամաչեաց 'ի կապարանէն և ոչ 'ի կապե-լոցն. քանզի զոր ստեղծն, 'ի նոցանէ ամաչել ոչ էր հան-դերձեալ. և խորտակեաց զպղունսն, փշրեաց զնիգսն, 'ի վերայ եկաց դժոխոց, անապատ զպահպանութիւնն զամենայն արար, և զկապանապահն առեալ կապեաց. այսպէս առ մեզ ել: Բնութիւնն գերեալ լինէր, հզօրն կապեալ. մահ ինքն ընկենոյր զզէնն, մերկ առ ոտս թա-գաւորին ընթանայր: Տեսե՞ր զհրաշալի յաղթութիւնն:

Ասացից քեզ և այլ ևս սքանչելագոյն. ուսիր զօրէնս յաղթութեանն, և յայնժամ առաւել հիացիս. զի ո-րովք յաղթեաց սատանայ, 'ի ձեռն նոցին պարտեաց զնա Քրիստոս, և զնոյն զնորա զէնսն առնլով՝ այնուքիւք նմա հերքեաց: Եւ զի՞նչ, լուր: Կոյս և փայտ և մահ՝ պար-տութեանն մերոյ էր նշանակ. կոյս էր Եւա, ոչ ևս գի-տէր զայր: Փայտ էր ծառն, և մահ պատուհաս Ադա-մայ: Այլ ահա դարձեալ կոյս և փայտ և մահ՝ յաղթու-թեան նշանակք. փոխանակ Եւայի՝ Մարիամ. փոխա-նակ փայտին գիտութեան բարւոյ և չարի՝ փայտ խա-չին, և փոխանակ մահուն Ադամայ՝ մահն Քրիստոսի: Տեսե՞ր որովք յաղթեաց, 'ի ձեռն նոցին և ինքն պար-տեցաւ: Ծառովն յաղթեաց սատանայ Ադամայ. խա-չիւն կոխեաց Քրիստոս զսատանայ: Փայտ՝ մին առա-քէր 'ի դժոխս, միւսն և զերթեալսն անտի վերստին կոչէր. դարձեալ փայտ՝ մին զգերեալսն մերկ ծածկէր, իսկ միւսն զյաղթողն մերկ բևեռեալ 'ի բարձրաւանդա-կին ամենեցուն ցուցանէր: Մահ՝ մին և որ զկնի նորա դատապարտէր, և միւսն և նախ քան զնա լեալսն փոփո-խէր: "Ո՞ խօսեսցի զզօրութիւնս տեառն ,,: Ի մահուա-նէ եղեաք անմահք: Այս խաչին ուղղութիւնք:

Ոչ էին արժանաւորք մեզ զէնքն, ոչ կացաք 'ի պա-տերազմին, ոչ ընկալաք վէրս. և ոչ տեսաք զմարտն, և զյաղթութիւն առաք: Նահատակութիւնքն տեառն, և պսակքն մեր. վասն զի և մեր է յաղթութիւնն, այլ հոչակեսցուք իբրև զինուորս զյաղթական երգն. ամե-

նեքեան այսօր ասասցուք օրհնելով զտէրն. “Ընկլաւ մահ յաղթութեն. ո՞ւր են դժոխք խայթոցք քո”: Զայս մեզ խաչն յօրինեաց: Խաչ հակառակ դիւաց, յաղթութիւն ընդդէմ մեղաց, սուսեր սուր որով զօձն խոցեաց Քրիստոս: Խաչ հօր կամք, և միածնին փառք, և հոգւոյն ցնծութիւն: Խաչն հրեշտակաց զարդ, եկեղեցւոյ ամրութիւն, պարծանք Պաւղոսի, սրբոց պարիսպ, լոյս ամենայն աշխարհի: Զի զոր օրինակ 'ի խաւարաւ ծածկեալ տան ջահ ոք լուցանիցէ, և ուղղորդ կանգնելով զամենայն տունն լուսաւորէ, նոյնպէս և Քրիստոս զամենայն զմութ յերկրէ 'ի բաց վարեաց. և զոր օրինակ ջահ 'ի վերայ գլխոյն գերագոյն զլոյսն ունի, նոյնպէս և խաչն 'ի վերայ գլխոյն զարեգակն արդարութեան ունէր, որ պայծառացուցանէր: Զնա տեսանելով բնաւեալ աշխարհ սարսեաց և շարժեցաւ երկիր. պատառեցան վէմք, և ոչ պատառեցան հրէական զգայութիւնքն. ցելաւ վարագոյրն, և ոչ ցելաւ չարաձայնութիւն[1] նոցա:

Մինչ ընդէ՞ր պատառեցաւ վարագոյրն. զտէրն տեսանելով խաչեցեալ: Որ ախորժեսցէ, ասէ, կոխեսցէ զսրբութիւն սրբութեանցն. այսուհետև զի՞նչ օգուտ է ինձ, այնպիսի պատարագք արտաքոյ ընծայեցան. զի՞նչ շահ ինձ 'ի կտակէն, որ օգուտ յօրինացն. մնասի և ընդվայր զնոսա խրատեցի այսքան ժամանակ: Զայս և մարգարէն գոչէր ասելով. “Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք, և ժողովուրդք խորհեցան 'ի նմանիս”: Լըւան եթէ “Իբրև զչխար 'ի սպանումն եկն, և իբրև զորոջ առաջի կտրողի”: Մինչ կրթեալ յայնքան ժամանակս 'ի մարգարէութեն, 'ի մերձենալ իրին՝ յանժամ անհաւատացին: Տեսե՞ր զիարդ խօսեցան ընդունայն: Յաղագս այնորիկ պատառեցաւ տաճարին վարագոյրն, զյաւիտենական ամայութիւնն յայտնելով որ զկնի այնոցիկ լինելոց էր:

Զնա 'ի խաչին բևեռեալ, տեսցուք երեկորին զենեալ և սպանեալ զգառն հանդերձ պատուով, արդ մերձեցուք այսուհետև հանդերձ ամենայն պաղատանօք և ահիւ: Ո՞չ տեսէք զհրեշտակն զիարդ մերձ կայ-

1 Երկու օր. չար յա[illegible]:

են ունայն գերեզմանին․ այլ վասն զի բոլորովին ընկալաւ զմարմինն տէրունական, յորում որոշեն և տեղւոյն զպատիւն։ Հրեշտակք որք գերազանց են քան զմեր բնութիւնս, համբերձ այնքան պատկառանօք և երկիւղիւ մերձ կային գերեզմանին․ իսկ մեք ոչ յունայն գերեզման համբերձեալ եմք մերձենալ, այլ 'ի նոյն ինքն 'ի սեղանն որ զգառնն ունի, ամբոխիւ և խռովութեամբ մատչիցիմք․ և ո՞ր մեզ լինիցի այնուհետև ներումն թողութեան։

Ոչ վայրապար զայս ասեմ, այլ զի զյոլովս տեսանեմ յերեկորինս յայսմ ամբոխեալս և բարբառեալս, 'ի վերայ իրերաց կալով և վազելով լուտան, և մանաւանդ պատիժս ինքեանց քան եթէ փրկութիւն առթեն, այսր աղագաւ պատուիրեմ զձանս զայսոսիկ։ Զանզի յորժամ կայ առաջի սեղանոյն քահանայն, զձեռս յերկինս ձգելով կոչէ զհոգին սուրբ, և աղաչէ մերձ գալ և միաւորիլ ընդ առաջիկայսին, բազում հեզութիւն, յոլով լռութիւն, յաւէտ բարեկարգութիւն․ յորժամ տայ զշնորհս հոգին, յորժամ իջանէ, յորժամ միաւորի ընդ առաջիկայսին, յորժամ տեսանես զոչխարն զենեալ և կատարեալ, յայնժամ ամբոխ, յայնժամ խռովութիւն և հակառակութիւն, յայնժամ զթշնամանս 'ի ներքս ածես, ասա ինձ, և զխա՞րդ կարասցես 'ի զենմանս վայելել համբերձ խռովութեամբ 'ի սեղանս յայս հպելով։ Ոչ է բաւական մեզ զի համբերձ մեղօք մերձենամք, այլ և ոչ 'ի նմին իսկ 'ի ժամու շահիցն ժուժկալեմք առանց սխալանաց, այլ զմիմեանս խածատեմք և աքացեմք։

Ընդէ՞ր ձեպիս, ով մարդ, վասն է՞ր փութաս զոչխարն տեսանելով զենեալ։ Զանզի եթէ զբովանդակ գիշերն էր զենումն զայս տեսանել, ունէի՞ն արդեօք յագումն իրքն, ասա ինձ․ զբովանդակ զօրն ժուժկալեցեր և ըղջոլով մասն գիշերոյն, և զայնքան աշխատութիւնս 'ի միում վայրկենի մատնե՞ս։ Օմուաւ ած զինչ է առաջիկայս, և ուստի էառ զպատճառն զենումնս։ Ի փրկութենէ քումմէ․ զենաւ յաղագս քո, և դու լքանես զնա զենեալ տեսանելով։ “Ուր անկած է, ասէ, անդ և արծուիք„։ Իսկ մեք և ոչ արծուիք, այլ իբրև շունք մերձենամք․ այսքան 'ի մեզ անամօթութիւն, այսքան հա-

կատակութիւն։ Նմա զինչ է սոսկ հեղեալն. արիւն որ զձեռագիր քոյ մեղացն ջնջեաց. արիւն որ զանձն քո մաքրեաց, որ զաղտն լուաց, որ զպետութիւնս և զիշխանութիւնս խոյտառակեաց համարձակութեամբ նըշաւակելով 'ի խաչին։

Իսկ զինչ է՝ խայտառակեաց 'ի խաչին համարձակութեամբ, նշաւակեաց 'ի խաչին։ Յոլով քաջութիւն, ասէ, ունի զյաղթութեանն օրինակ. քանզի աւար կախեալ է 'ի բարձրութենէ 'ի վերայ խաչին։ Զի զոր օրինակ թագաւոր քաջ՝ դժնդակ պատերազմի յաղթելով, ըզզրահս և զվահան և զզէն զապստամբին և զզինուորացն զպատերազմեցելոցն 'ի վերայ բարձու փայտի 'ի տեղւոջ յաղթութեան դնիցէ, նոյնպէս և Քրիստոս պատերազմին յաղթելով որ ընդ սատանայի էր, և զամենայն զէնս նորա, զմահ, զանէծս, զմեղս կախեաց 'ի վերայ բարձրութեան խաչին իբրև յաղթանակի ուրումն, զի ամենեքեան զյաղթանակն տեսանիցեն, վերին զօրութիւնքն որ յերկինսն են, 'ի խոնարհ մարդիկ 'ի վերայ երկրի, ներքին իսկ չար դևքն հերքեալք։

Իսկ արդ զի յայսքան պարգևս վայելեցաք, զանձինս ըստ կարողութեան արժանաւորս արասցուք գործեցելոց բարեացն մեզ, զի և արքայութեանն երկնից դիպեսցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր համանգերձ սուրբով հոգւովն յաւիտեանս. ամէն։

Ի ԽԱՉԵԼՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ

Այսօր տէրն մեր 'ի խաչին, և մեք տօնս առնեմք. զի ուսցիս եթէ խաչն տօն է և ժողով հոգևորական։ Քանզի յառաջն խաչ՝ անուն էր դատապարտութեան; իսկ այժմ իրք պատուական եղև. յառաջ նշան էր դատապարտութեան, իսկ այժմ գործ փրկութեան։ Նա իսկ ամենայն բարեաց եղև մեզ պատճառ. նա զմեզ 'ի մոլորութենէ հրաժարեցոյց, նա որք 'ի խաւարի նստէին՝ լուսաւորեաց. նա զմեզ զթշնամիս ընդ այն հաշտեցոյց; զօտարս ընտանեցոյց, զհեռաւորս մերձաւորս արար։ Նա է

թշնամութէ կործանումն, խաղաղութէ զգուշուն և բիւր բարեաց գանձ: Վասն այնորիկ ոչ մոլորիմք յանապատի, զի զճանապարհն ճշմարտութեան ծանեաք. ոչ ևս այսուհետև արքունական փողոցացն արտաքոյ գտանիցիմք, քանզի զգուռն մտին գտաք. ոչ երկնչիմք 'ի հրամուխ նետից սատանայի, քանզի զաղբիւրն գտաք: Վասն այնորիկ չեմք յայրութեան, զի զփեսայն ընկալաք. ոչ երկնչիմք 'ի գայլոյն, զի զհովիւն քաջ ունիմք. "Ես եմ, ասէ, հովիւն քաջ": Վասն այնորիկ ոչ երկնչիմք 'ի բռնաւորէն, զի հուպ եմք առ արքայն. վասն այնորիկ տօն ուրախութեան առնեմք, և խաչին յիշատակ կատարեմք:

Այսպէս և Պաւղոս վասն խաչին հրամայեաց առնել տօն. "Արասցուք մեք, ասէ, զտօնս զայս մի 'ի խմորս հինս, այլ յանխմոր սրբութեան և ճշմարտութէ". նա և զպատճառն ևս յաւել և ասաց՝ եթէ "Զատիկ մեր զենաւ Քրիստոս": Տեսանե՞ս զի վասն խաչին առնեմք տօնս, զի 'ի խաչին զենաւ Քրիստոս. քանզի ուր պատարագ է, անդ թողութի մեղաց. և ուր թողութի մեղաց, անդ հաշտութիւն տէրունական, տօն և ուրախութիւն: "Զատիկ վասն մեր զենաւ Քս̃": Իսկ ո՞ւր զենաւ, ասա ինձ. 'ի վերայ բարձրութեան խաչին: Նոր էր սեղան պատարագին այնորիկ, քանզի և պատարագն նոր էր և զարմանալի: Նա ինքն պատարագ էր և քահանայ, պատարագ ըստ մարմնոյ և քահանայ ըստ հոգւոյ. ինքն մատուցանէր և ինքն ընդունէր, մատուցանէր ըստ հոգւոյ և մատչէր ըստ մարմնոյ: Իսկ լուր եթէ որպէս զերկոսին զայս Պաւղոս եցոյց. "Զի ա̃մ քահանայապետ որ 'ի մարդկանէ լինին, վասն մարդկան գլուխ կան նոքա առ ա̃ծ. վասն այնորիկ հարկ է նմա զի ինքն ինչ մատուսցէ. ահաւանիկ նա մատուցանէ զինքն". և այլուր ասէ՝ թէ "Քրիստոս մի անգամ մատոյց զանձն իւր պատարագ, զի զբազմաց մեղս բարձցէ. իսկ երկրորդ անգամ առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ որք ակն ունիցին նմա 'ի փրկութիւն": Ահանիկ անդ մատուցաւ՝ ուր ինքն զինքն մատուցանէր: Տեսե՞ր որպէս պատարագ և քահանայ և սեղան եղև խաչն:

Իսկ ընդէ՞ր, ասեն, 'ի տաճարին ոչ մատեաւ պատարագն, այլ արտաքոյ քան զքաղաքն և զպարիսպն. զի

կատարեսցի այն որ ասացաւն՝ թէ «Ընդ անօրէնս համարեցաւ»։ Ընդէ՞ր 'ի վերայ բարձու 'ի ներքոյ երկնից զենաւ և ոչ ընդ յարկաւ. զի զօդոյն զմնութիւն սրբեսցէ. վասն այնորիկ 'ի բարձունս և ոչ ընդ յարկաւ, այլ ընդ յարկաւ երկնից։ Սրբէր օդն 'ի բարձր տեղւոջն ուր զենոյր որոջն. սրբէր երկիրն, ծորէր իջանէր արիւնն 'ի կողիցն 'ի վերայ նորա։ Վասն այնորիկ ոչ 'ի հրէական տաճարին, զի մի՛ փողացեալ թագուցեն զզենումնն Հրէայքն, և մի՛ առեալ կարծիցեն թէ վասն ազգին այնորիկ միայն մատոյց զպատարագն։ Վասն այնորիկ արտաքոյ քան զքաղաքն և զպարիսպն, զի իմասցիս եթէ տիեզերական է և ամենայն երկրի է պատարագն, զի իմասցիս եթէ միաբան ամենեցուն է սրբութիւնն, ոչ եթէ մասնական իբրև որպէս Հրէիցն։ Զի Հրէիցն վասն այնորիկ հրամայեաց ած զամենայն երկիր թողուլ և 'ի միում տեղւոջ մատուցանել պատարագ և յաղօթս կալ, քանզի յայնժամ ամենայն երկիր աղտեղեալ էր 'ի ծխոյ և 'ի ճենճեր և յայլ ամենայն պղծութեանց որ 'ի զոհիցն հեթանոսաց 'ի վերայ երկրի մատչէր։ Իսկ մեզ այսուհետև Քրիստոս իբրև եկն, զամենայն երկիր սրբեաց, և ամենայն երկիր աղօթանոց եղև։ Վասն այնորիկ և Պաւղոս համարձակագոյնս պատուիրէ և ասէ, այսուհետև առանց երկիւղի յաղօթս կալ ամենայն ուրեք. «Կամիմ, ասէ, եթէ յաղօթս կայցեն ամենայն ուրեք, համբարձցեն զսուրբ ձեռս»։ Տեսէ՞ր զիարդ սրբեցան ամենայն երկիր։ Վասն այնորիկ ամենայն ուրեք համբառնալ զսուրբ ձեռս պատուէր տայ, զի ամենայն երկիր սուրբ եղև, սրբագոյն քան զսրբութիւնսն որ 'ի ներքս էին. զի անդ անասուն ոչխար մատչէր անբան, իսկ աստ հոգևորական. զի որչափ մեծ է պատարագն, այնչափ առաւել է սրբութիւն։ Վասն այնորիկ և տօն առի խաչին։

Կամիս տեսանել և զմիւս ևս զնորա կարգ ուղղութեանն։ Զի դրախտն հինգ հազար ամ աւելի փակեալ և աղխեալ էր, այսօր մեզ եբաց զնա. և միւս ևս զի զաւազակն 'ի ներքս եմոյծ։ Այսօր պարգևեաց մեզ առաջին գաւառն. այսօր բարձրացոյց և եհան զմեզ 'ի հայրենի քաղաքն, և զմնական տունն շնորհեաց ամենայն բնութեան մարդկան։ «Այսօր ընդ իս եղիջիր,

ասէ, յաղէն դրախտին,,: Ա՛ա զինչ ասիցես արդեօք. 'ի խաչ ելեալ և բևեռեալ ես, և զդրախտն խոստանաս: Այո, ասէ, զի 'ի խաչին զզօրութիւն իմ գիտասցես: Քանզի իրքն սքանչականք էին, և մի հայեսցիս 'ի տեսիլ խաչին, այլ զզօրութիւն խաչելոյն իմասցիս 'ի խաչին. զի զարմանք այն են, որ մանաւանդ զզօրութիւն նորա ցուցանեն: Քանզի ոչ եթէ մեռեալս յարուցանէր, ոչ ծովու և հողմոց սաստէր, և ոչ զդևս հանէր, այլ 'ի խաչ ելանէր և ընդ խաչին բևեռէր, թշնամանէր և ընդ երեսս թքեալ լինէր, այպանէր և թամբասեալ լինէր:

Եւ երբև զայս ամենայն կատարէր, զզօրութիւն մըտաց աւազակին փոխէր, զի յերկուց կողմանց զնորա զօրութիւնն գիտասցես. զարհուրեցուցեալ զամենայն արարածս, զվէմս պատառեալ, և որ քան զվէմս ևս անզգայագոյն էր՝ ձգէր առ ինքն և պատուէր. "Այսօր, ասէ, ընդ իս եղիջիր յաղէն դրախտին,,, յորժամ քերոբէքն փակեալ պահէին զդրախտն. քանզի նա և քերովբէիցն իսկ տէր է: Որոյ հրոյ շուրջ պատէր, ասէ. այլ նա և գեհենին բոցոյ և կենաց և մահու իշխան է: Եւ ոչ թագաւոր ոք երբէք յանձն առնու զայնպիսի ինչ ընկեր զծառայ իւր և պատուակից ընդ իւր առնուլ և 'ի քաղաք մտանել. իսկ Քրիստոս զայս առնէր և 'ի մեծ գաւառն արքունական ընդ իւր զաւազակն մուծանէր, ոչ զի կոխան արասցէ զդրախտն և կամ անարգիցէ ոտիւք աւազակին, այլ զի առաւել ևս պատուեսցէ զդրախտն: Իսկ արդ այնպիսի ունելով տէր, զի այսպէս[1] արասցէ՝ որ և զաւազակն արժանի առնէ վայելել 'ի դրախտն, և զմաքսաւորս և զպոռնիկս տանի յարքայութիւնն երկնից, որ զմաքսաւորս և զպոռնիկս այնպէս յարգէ և արժանացուցանէ այնմ պատուոյ և պարգևաց: Քանզի և ընդ բժիշկն յայնժամ առաւել զարմանամք յորժամ տեսանեմք զմարդ կարեվէր և անհնարին ցաւօք բժշկեալ 'ի նմանէ և ածեալ հասուցեալ յառողջութիւն, նոյնպէս և ընդ ա̃ծ զարմանալ յիրաւի է յորժամ զվէրս անբժշկականս առողջացուսցէ, յորժամ զմաքսաւորս և զպոռնիկս յայնպիսի առողջու-

1 Օրինակ մի 'ի հնոց օրինակաց այս կայէ:

սաւորէր և աձէր գիմագարձեալ կամաց նոցա։ Թշնամանէր զնա միւս աւազակն։ Տեսանես զերկոսին 'ի խաչին, զերկոսեան 'ի բարս աւազակութեան, երկոքեան 'ի չարութեան, այլ ոչ երկոքին 'ի նմին անդէն. քանզի մինն վարքայութիւնն ժառանգէր, իսկ միւսն 'ի գեհենն առաքիւր։ Նոյնպէս և երէկ աշակերտն և աշակերտքն, Յուդաս և երկոտասանքն. այլ նոքա ասէին, "Ո՞ւր կամիս զի պատրաստեսցուք քեզ զզատիկն", իսկ նա 'ի մատնելն պատրաստէր և ասէր. "Զի՞նչ կամիք տալ ինձ և ես մատնեցից զնա ձեզ"։ Եւ նոքա 'ի սպաս պաշտաման և յա͞ծային խորհուրդն պատրաստէին, և նա 'ի մատնելն փութայր։ Նոյնպէս և այսօր աւազակ և աւազակ, մին թշնամանէր և միւսն երկիր պագանէր, մին հայհոյէր և միւսն ևս փառաւորէր և ասէր. "Ո՞չ երկնչիս դու յա͞յ"։

Տեսանես զխոստովանութիւն աւազակին, հայիս և ընդ համարձակութիւնն 'ի խաչին, տեսանես զիմաստութիւն 'ի խոշտանգանան և զգաստութիւն 'ի տանջանսն։ Զի և յիւր միտս էր և զգաստ էր, պրկեալ 'ի բեւեռացն անտի, ո՞վ ընդ այս ոչ զարմասցի։ Իսկ նա ոչ միայն 'ի միտս իւր էր, այլ և զիւրն թողեալ՝ ընդ այլոց հոգաբարձէր, և վարդապետ լեալ 'ի խաչին գտանէր, սաստէր և ասէր. "Ո՞չ երկնչիս դու յա͞յ"։ Մի՛ հայիր, ասէ, 'ի ներքին դատաստանս. զի այլ դատաւոր է, ասէ, անտես և անմատոյց, որոյ անաչառ է դատաստանն։ Մի՛ ընդ այդ հայիր որ 'ի խոնարհ դատեցաւ. զի վերինն չէ այդպիսի։ Զի յայս 'ի ներքնում դատաստանիս արդարք բազում դատապարտին, և անիրաւք զերծանին և փրծանին, և վնասակարք խնայլին և անպարտքն տանջին։ Զի կամաց և ակամայ բազում անգամ մեղանչեն դատաւորք, կամ թէ անգիտակք արդարութեանն և խաբեալք, և կամ թէ գիտակք և յընչից և 'ի կաշառաց յաղթեալք՝ բազում անգամ զարդարութիւնն ընդ անիրաւութեանն փոխանակեն։ Իսկ անդ 'ի վեր ոչ ինչ այնպիսի է. զի ա͞ծ դատաւոր արդար, և դատաստանք նորա որպէս զլոյս ծագեսցեն, ուր ոչ գոյ խաւար և անգիտութիւն։ Զի մի ասիցէ թէ դատեցաւ անդ 'ի խոնարհ և պարտաւորեցաւ, ածեալ հանէ զնա 'ի վերին դատաստանն, յիշեցուցանէ նմա զերկիւղ ահագին բե-

մին. միայն, ասէ, անդ 'ի վեր հայեաց և ոչ դատապարտիս 'ի վերին դատաւորէն և ոչ ընդ մահապարտեալսն պարտաւորիս, այլ ընկալցիս զվերին կարգեալ դատաստանն։

Տեսե՞ր զխոստովանութիւն աւազակին, հայեցա՞ր ընդ միտս և ընդ վարդապետութիւն նորա, յանկարծակի 'ի խաչէն յերկինս համբարձեալ։ Որչափ ըմբերանէր զնա և ասէր. "Ո՞չ զիտես զի 'ի նմին պատժի եմք„. 'ի նըմին, այսինքն 'ի տանջանս. զի որովք զնայն թշնամանես, ո՞չ ապաքէն զանձն քո անարգես։ Որպէս զի որ 'ի մեղս իցէ և զայլս բամբասիցէ, ո՞չ յառաջ քան զնա զինքն պարտաւորէ. նոյնպէս և որ 'ի խեղութեան որ իցէ և զայլս խեղութեամբ թշնամանիցէ, ո՞չ յառաջ քան զայլս նախ զինքն թշնամանէ։ "Ո՞չ 'ի նմին դատաստանի եմք„։ Առաքելական օրէնս ընթեռնուլ նմա, աւետարանական բանս ասէր ընդ նմա. "Մի դատիք, զի մի դատապարտեսջիք„։ "Զի 'ի նմին դատաստանի եմք„։ Զինչ գործ գործես, ով աւազակ. զայդպիսիս պատասխանի տալով հաւասար առնես զնա աւազակին։ Ոչ, ասէ, այդպէս. այլ յուղղութիւն կամիմ ածել զնա։ Ասէ այնուհետև զկարծիսն, որ սորին զհետ գայ։

Եւ զի մի վասն հաղորդական տանջանացն՝ խնայցես թէ և մեղացն հաղորդս արար զնա, անդէն իսկ վաղվաղակի ուղղէ զնա և ասէ. "Մեք յիրաւի, ասէ, ըստ արժանեացն զոր գործեցաք և կրեցաք„։ Տեսանե՞ս զխոստովանութիւն կատարեալ. տեսե՞ր զիարդ մերկացաւ զմեղսն 'ի խաչին։ "Ասա դու նախ, ասէ, զմեղս քո զի արդարասցիս„։ Ոչ ոք էր որ յորդորէր, և ոչ ոք այն որ բռնադատէր. այլ ինքն զինքն նշաւակէր և ասէր՝ թէ "Մեք յիրաւի և ըստ արժան զոր արարաքն՝ և կրեսցուք, և սա այնպիսի ինչ ոչ գործեաց չար„. և յետ այնորիկ ասէր. "Յիշեա զիս տէր յարքայութե քում„։ Ոչ համարձակէր յառաջ ասել՝ յիշեա զիս յարքայութեան քում, մինչև 'ի ձեռն խոստովանութեանն 'ի բաց ընկենոյր զմեղացն բեռնն։ Տեսանե՞ս որպիսի է խոստովանութիւնն։ Խոստովան լինէր և զդրախտն բանայր. խոստովանեաց և հրաման առ համարձակութեան, յաւազակութենէ զարքայութիւնն խնդրէր։

Տեսանե՞ս որչափ բարեաց պատճառ եղեւ մեզ խաչն։ Զարքայութենէն յիշեցուցանէր։ Զի՞նչ տեսանէր արդեօք այնպիսի ինչ 'ի նմա. բեւեռք և խաչին տեսիլ։ Նա աւանիկ, ասէ, թէ խաչն արքայութեան է նշանակ. վասն այսորիկ կոչեմ զնա արքայ, քանզի զնա տեսանեմ 'ի խաչ ելեալ. և թագաւորի փառք այն են յորժամ 'ի վերայ զօրաց իւրոց մեռանիցի։ Նա իսկ ասէր՝ եթէ “Հովիւ քաջ զանձն իւր դնէ 'ի վերայ ոչխարաց իւրոց„։ Վասն այնորիկ կոչեմ զնա արքայ. “Յիշեա զիս յարքայութեան քում„։

Տեսանե՞ս զի արքայութեանն նշանակ կոչի խաչն։ Կամի՞ս ուսանել և այլուստ ևս զնոյն։ Ոչ եթող զնա յերկրի, այլ ընդ իւր վերացոյց յերկինս։ Նաւ արդ ուստի՞ յայտ իցէ այս։ Զի ընդ նմա գալոց է յերկրորդ և 'ի փառաւորական գալստեանն. զի ուսցիս եթէ որպէս վայելուչ է խաչն, վասն որոյ և փառս զնա կոչէ։

Բայց միտ դիցուք եթէ զիարդ խաչիւն գայցէ. հարկ է այսուհետեւ զայս հանդիսիւ ցուցանել։ “Եթէ ասիցեն, ասէ, թէ ահա յշտեմարանս է Քրիստոս, կամ թէ ահա յանապատի, մի երթայցէք անդր„։ Վասն երկրորդ փառաւորական գալստեան նորա ասեմք, վասն սուտ քրիստոսացն, վասն սուտ մարգարէիցն, վասն նեռինն. զի մի ոք վրիպեալ 'ի նորա բուռն անկցի։ Քանզի յառաջ քան զՔրիստոս նեռն գալոց է, և մի ոք յորժամ զհովիւն խնդրիցէ՝ գայլոյ 'ի բուռն անկանիցի, վասն այսորիկ ասեմ քեզ զնշան հովուին գալստեան։ Վասն զի առաջին գալուստ նորա 'ի ծածուկ էր, մի կարծիցես թէ և միւսն այնպիսի լինիցի, զայս նշան ետ։ Զի այն բազմաց անյայտ էր, և յիրաւի, քանզի եկն խնդրել զկորուսեալն. իսկ անդ ոչ այնպէս, այլ որպէս կամ զիա՞րդ՝ ասէ. “Որպէս ծագէ փայլակն յարեւելից և երեւի մինչև 'ի մուտս արեւու, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ„։ Յանկարծ վաղվաղակի երեւեսցի ամենեցուն, և ոչ ոք կարօտ լիցի հարցանել եթէ աստ իցէ Քրիստոսն կամ անդ։ Որպէս ճառագայթի արեգականն ոչ կարօտիմք հարցանել թէ երբ ծագիցէ, նոյնպէս 'ի լինել դատաստանի նորա ոչ կարօտիմք հարցանել թէ եկն Քրիստոս։ Բայց խնդիր այս է թէ խաչիւն գայցէ. և մի մեք մոռասցուք զխոստումն։ Բայց

լուր այսուհետև ըստ կարգի։ Յայնժամ, ասէ։ Ե՞րբ. "Յորժամ գայցէ, ասէ, արեգակն խաւարեսցի և լուսինն մի տացէ զլոյս իւր"։ Որչափ առաւել պայծառագոյն է լոյսն այն, զի և զպայծառական աստեղս ծածկեսցէ։ "Յայնժամ, ասէ, աստեղք թօթափեսցին, և յայնժամ յայտնեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս"։ Տեսե՞ր զփառս նշանին, այսինքն զխաչին։ Որ արեգակն խաւարի և լուսինն չտայ զլոյս իւր, և նա երևի և լուսաւորէ, յայտ է եթէ քան զլուսին լուսաւոր է և քան զարեգակն պայծառ։ Եւ իբրև թագաւոր ոք որ կամիցի 'ի քաղաք մտանել, գունդք զօրաց յառաջանան, դրօշակիրքն և նշանաւորքն՝ որ բարձեալ ունին 'ի վերայ ուսոց իւրեանց՝ նշանակեն զմուտ նորա, նոյնպէս և 'ի գալստեան տեառն յերկնից յառաջանան գունդք հրեշտակացն և հրեշտակապետացն, բարձեալ բերեն զնշանն 'ի վերայ ուսոց իւրեանց և զարքունական գալուստն մեզ պատմեն։ "Յայնժամ շարժեսցին ամենայն զօրութիւնք երկնից"։ Զայս վասն հրեշտակացն ասէ. դողումն կալցի զնոսա յայնժամ, և երկիւղ յոյժ։ Վասն էր արդեօք կարգեսցի դատաստանն այն, ասա ինձ. քանզի ամենայն մարդկային բնութիւնս դատելոց են և առաջի կալոց ահաւոր բեմին։ Եւ վասն է՞ր արդեօք դողասցեն հրեշտակք և կամ սարսիցեն, քանզի ոչ եթէ նոքա դատել գտանին։ Այլ որպէս առաջի իշխանի միոյ և սաստիկ դատաւորի ոչ եթէ որ յանցաւորքն միայն իցեն՝ կայցեն առաջի դողալով, այլ և որք 'ի սպասաւոր պաշտօնէից են և զանձին բիծ ինչ չգիտիցեն՝ սարսեալ և դողացեալ լինին վասն ահի դատաւորին, նոյնպէս և յայնժամ կարգ բնութեանս մերոյ մտեալ 'ի դատաստան՝ և նոքա որ ոչ զանձին վնաս ինչ գիտիցեն հրեշտակք՝ զարհուրին և դողան վասն առաւել երկիւղական դատաւորին։

Այլ ընդէ՞ր յայնժամ խաչն գայցէ, և ընդէ՞ր նովաւ երևի. զի ուսցին զիւրեանց անմտութիւնն զլացողք խաչահանունքն, վասն այնորիկ զնա նշան անամօթ լրբութեան նոցա ցուցանէ, և վասն այնորիկ զնա ընդ իւր բերէ։ Զոր մարգարէն որ ասէ. "Յայնժամ կոծեսցին ազգք երկրի", առ 'ի տեսանել զդատախազն և ճանաչել զյանցանս իւրեանց։ Եւ զի դարձեալ զարմանս

Digitized by Google

եթէ զխաչն ընդ իւր բերիցէ. նա և զվէրսն ևս ցուցանէ. «Յայնժամ, ասէ, տեսցեն զոր խոցեցինն»։ Եւ որպէս առ Թովմայիւն արար, և կամէր զթերահաւատութիւն աշակերտին յանդիմանել, վասն այնորիկ ցուցանէր նմա զտեղիս բևեռացն և զվէրսն և ասէր «Արկ զձեռս քո և տես եթէ ոգի ոսկր և մարմին ոչ ունի», այնպէս և յայնժամ ցուցանէ նոցա զխաչն և զվէրսն, և ցուցանէ թէ այն է նա որ 'ի խաչն ել։

Եւ ոչ եթէ խաչիւն միայն, այլ և 'ի նմին ժամէ խաչին զանչափ մարդասիրութիւն նորա պարտ է գիտել։ Յորժամ 'ի խաչին բևեռեալ էր, և ծաղր և այպն առնէին և ընդ երեսս թքանէին, ասէր. «Հայր, թող սոցա զի ոչ գիտեն զինչ գործեն»։ Խաչեալն 'ի վերայ խաչահանուացն աղօթս առնէր. իսկ նոքա հակառակ նորա ասէին. «Եթէ որդի ես այ̃, էջ 'ի խաչէդ»։ Եւ վասն այնորիկ ոչ իջանէր, զի որդի այ̃ էր. վասն այնորիկ զի խաչեցի վասն մեր։ «Էջ 'ի խաչէ այտի, ասէին, և հաւատասցուք 'ի քեզ»։ Այդ բարուրք են և պատճառք թերահաւատութեան։ Այլ քան զիջանելն 'ի խաչէն մեծ ինչ գործեաց. քան զիջանելն 'ի խաչէն մեծ էր 'ի գերեզմանէն յառնելն, որոյ վէմն 'ի դուռն կայր. քան զիջանելն 'ի խաչէ անտի առաւել մեծ էր զմեռեալն զպատեալն զՂազար չորեքօրեայ կապանօքն հանել 'ի գերեզմանէն։ Նոքա ասէին. «Եթէ որդի ես այ̃, փրկեա զանձն քո». իսկ նա զամենայն ինչ առնէր, զի զթշնամիս իւր ապրեցուսցէ. «Թող, ասէ, սոցա ըզմեղս, զի ոչ գիտեն զինչ գործեն»։ Եւ ապա զի՞նչ, եթո՞ղ նոցա զմեղս եթէ ոչ։ Եթէ զղջացեալ և ապաշխարեալ էին....[1]

Նման լեր տեառն քում խաչելոյ, որ վասն խաչահանուացն զհայր իւր աղաչէր։ Եւ զիա՞րդ, ասէ, կարիցեմ նմանել տեառն իմում։ Եթէ կամեսցիս, կարասցես. զի եթէ անհնար էր, զիա՞րդ ասէր եթէ «Ուսարուք յինէն զի հեզ եմ և խոնարհ հոգւով». եթէ անհնար էր նմանել, ոչ կարէր ասել Պաւղոս՝ եթէ «Նմանողք լերուք ինձ, որպէս և ես Քրիստոսի»։ Արդ ոչ կարասցես նմանել տեառն քում, նման լեր ծառայ-

1 Ղուկասին տուն 16։

ակցէն, զՍտեփաննոսէ ասեմ զառաքելոյ. զի նա տեառն իւրում նմանեաց: Զի որպէս Քրիստոս մինչ 'ի մէջ խաչահանուացն էր, թողոյր զխաչն, չառնէր ինչ փոյթ զանձնէ իւրմէ, այլ վասն խաչահանուացն աղաչէր ըզ-Հայր, նոյնպէս և ծառայն 'ի մէջ քարկոծչացն էր և քարակոշկոճ յամենեցունց լինէր և ընդունէր յամենեցունց զծիգս քարանցն և զցաւս վիրացն որ 'ի նոցանէ նմա լինէր և ասէր. "Տէր, մի համարիր սոցա զայս մեղս"[1]: Եւ զի գիտասցես եթէ յօժարութեամբ և փութով կայ յաղօթս, ոչ եթէ ընդ վայր յոտն կայր և կամ կրկնեալ խոնարհէր, դնէր ծունր և ասէր, այլ բազում զղջմամբ և բազում գթով:

Կամիցես ցուցից քեզ և այլ միւս ծառայակից նորին որ առաւել ևս չարչարանս կրէր քան զնա. Պաւղոս ասէր. "Ի Հրէից հնգիցս չարչարեցայ, մի անգամ քարկոծ եղէ, երիցս նաւակոծ եղէ, զտիւ և զգիշեր յանդունդս տառապեցայ". և միւսանգամ ասէր. "Ուխտիւք խնդրէի ես ինքնին նզով լինել 'ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց և ազգատոհմի իմոյ ըստ մարմնոյ":

Կամիս և զայլ ոք գիտել ոչ 'ի նորոց, այլ 'ի հին կտակարանաց[2]: Հեզն և հանդարտն Մովսէս քարկոծեալ 'ի Հրէից անտի, բազում անգամ անարգեալ և թշնամանեալ, ասէր. "Եթէ թողուս սոցա զմեղս՝ թող. ապա թէ ոչ՝ և զիս ջնջեա 'ի դպրութենէն զոր գրեցեր": Տեսանես աւանիկ զայլոց փրկութիւն նախ քան զիւրն խնդրէր յայ: Ոչ ինչ յանցեար, և զի կամիս հաղորդել հարուածոց նորա: Զի ոչ ինչ զգամ իմոյ անդորրութեանս յորժամ զայլս տեսանեմ չարչարեալ: Բաւական է մեզ յառակ օրինակի[3]: Քրիստոս ասէր. "Հայր թող սոցա զի ոչ գիտեն զինչ գործեն". և Ստեփաննոս ասէր. "Տէր, մի համարիր սոցա զայս մեղս". և Պաւղոս ասէր. "Ուխտիւք խնդրէի ես ինքնին նզով լինել 'ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց և ազգատոհմի իմոյ ըստ մարմնոյ". և Մովսէս ասէր. "Եթէ թողուս սոցա զմեղս՝ թող. ապա թէ ոչ՝ և զիս ջնջեա 'ի դպրութենէն յորում գրեցեր":

Որպիսի արդեօք թողութեան արժանի լինիցի այն-

1 Գակասին տողք 4: 2 տողք 5: 3 տողք 24:

Օ՜ ի որ ոչն վստահանայն 'ի յառնել և վարկս տալ ընդ աստի գործեցելոց իրացս, այլ մինչ 'ի մերձակայ կենցաղս զմեր իրս կալ մնալ կարծիցէ, և յաղագս այլոյ ինչ ոչ լինել, առաւել ոչ տանի առաքինութեան խնամ: Նման զի որպէս արդեօք՝ որ և ոչ մի ինչ հատուցումն յուսոյ յինքեան կալ առաջի աշխատութեանցն յուսայ, զհա՞րդ և 'ի չարեացն 'ի բաց կացցէ, որ ոչ ինչ վստահանայ անկանել ընդ տանջանօք փոխանակ չարաչար գործեցելոցն 'ի նմանէ. այլ մատնելով զինքն անառակ ցանկութեանց՝ յամ տեսակ չարութեան երթայ:

Իսկ որ վասն հանդերձեալ դատաստանին զինքն առնիցէ ընդ երկիւղիւ, և զահաւոր դատաստանն առաջի աչաց իւրոց ունիցի և զանհրաժարելի համարումն և զանփախչելի վճիռսն, ամենայն իրօք հնարիցի ողջախոհութեան և ցածութեան համբերել և այլոց առաքինութեանց, յանարգելութենէ և յանդգնութենէ և յայլ ամենայն չարեաց փախչելով. այլ և զամբաստանեալս ըստ նախախնամութեանն՝ բազում համարձակութեամբ ըմբերանել կարասցէ:

Օ՜ ի յորժամ տեսանեն ոմանք զհեզսն և զողջախոհսն և որք արդարութեամբն կեան՝ խեղդեալք յաղքատութենէ և տարժանեալք և ոչ միում ումեք պատահեալ վերակացութեան 'ի մարդկանէ, իսկ որք կախարդութեամբ և բազում այլովք չարեօք լցեալք՝ ձոխութեամբ թաթաւուչք, փափկանան պայծառ պատմուճան զգենլով, հոյլք ծառայից զհետ երթան, և բազում զօրութեամբ հրաշալիք են, վայելեն 'ի թագաւորաց յաճախապէս ստացեալ զհամարձակութիւնն, և ապա յաղագս այնոցիկ յոլովք ամբաստանեն զայ վերակացութենէն առելով. Ո՞ւր են այս իրք նախախնամութեան, ո՞ւր արդար դատաստանն. ողջախոհն և հեզն 'ի չարչարանս, անարգեալն և ապականեալն 'ի բարիս. սա սքանչացեալ լինի, և նա արհամարհի. սա վայելէ 'ի կերակուրս բազումս, նա յաղքատութեան և 'ի վերջին չարիս է:

Իսկ որ յաղագս յարութեան իմաստասիրել գիտէ, դիւրաւ զհայհոյութիւնն արգելցէ, և որք առ այնոսիկ դժուարին՝ ասէ. դադարեցէք հակառակ արարչին ձերոյ զլեզուսդ սրել. զի ոչ մինչ 'ի մերձակայ կենցաղս

մեր իրք կան մնան, այլ 'ի միւս ևս կեանս ձեռնիք 'ի յաւէտ երկայնագոյնս և որ մանաւանդ սպառուած ոչ ունին, և անդ ամենայն իրօք աղքատն այն՝ որ հանդերձ արդարութեամբ եկաց, փոխանակ այնպիսի աշխատութեանց տացէ հատուցումն, իսկ անարգելն և կախարդն յաղագս չարութեանցն և տարաժամ փափկութեանցն տացէ դատաստան։

Արդ մի վասն մերձաւորացս միայն վարկցուք զնախախնամութիւնն այ, այլ և վասն հանդերձելոցն։ Մերձակայս՝ հանդէս և մարտ և ասպարէզ է, իսկ հանդերձեալքն՝ յաղթանակք և պսակք և մրցանակք։ Եւ զոր օրինակ ըմբշին 'ի հանդիսին քրտամբք և փոշւով և տապով բազմաւ, աշխատութեամբք և տաժանմամբք մըրցել է պարտ և արժան, նոյնպէս և արդարոյն աստ յոլովից համբերել վայել է և զամենայն ընդունել առաքինաբար, վասն զի հանդերձեալ է պայծառապէս առնուլ զպսակն անդ։

Ապա եթէ չարացն բարւոքութիւնք ամբոխեսցեն զմանս, և յաղագս այնոցիկ դարձեալ զմտաւ ածցեն զայն՝ զի զոր օրինակ աւազակք և գերեզմանակրկիտք և այրասպանք և չարք որք 'ի ծովու նաւեն, նախ քան 'ի յատեան գալ՝ 'ի յոլով փափկութիւնս վայելեն, ինքեանց շահ զօտարացն թշուառութիւնս առնելով, և զանիրաւ ընչեղութիւնն ստանալով հանապազօր արբենան, իսկ յորժամ ընդ դատաւորին վճռաւ լինին՝ փոխանակ ամենեցուն այնոցիկ դատաստան, նոյնպէս և նոքա որք զլեզուն կնեն և զթշնամանաց[1] սեղանն մերձ դնեն ինքեանց և զյօնսն 'ի վեր պրկելով՝ հարթուցանեն զմարդիկ 'ի հրապարակին և զաղքատսն քարշեն, յորժամ միածին որդին այ եկեսցէ հանդերձ հրեշտակօք իւրովք, և 'ի վերայ բեմի նստիցի և զաշխարհ ամենայն մերկ 'ի մէջ ածիցէ, և ամպացեալք յամենայն պաճուճանաց 'ի ներքս մտցեն, ոչ զոք օգնական և ոչ առ այնոցիկ վերակացու ունելով՝ առանց ամենայն թողութեան 'ի հրեղէն գեհն երթիցեն։

Արդ մի այսուհետև զայնպիսին երանեսցես, այլ արտասուեաց յաղագս հանդերձելոց պատուհասին, և

1 Յոյնն սեպարէան։

մի՛ զարդարն աւաղեսցես վասն աստ աղքատութեանն, այլ երանեաց հանդերձելոց բարեացն ճոխութեանն աղագաւ, և որ յաղագս յարութեն բան է՝ 'ի քո միտսդ արմատասցի. զի եթէ բարի իցես, ընտրելագոյն ևս լինիցիս հանդերձելոյն յուսոյ սակս՝ մեծագոյն յորդորումն առնելով. և եթէ անարգել ոք իցես, ահիւ հանդերձելոյն տանջանաց 'ի չարութենէն ողջախոհագոյն ևս ըզքեզ կազմեսցես:

Յաղագս այսորիկ և Պաւղոս յաճախապէս քարոզէ որ յաղագս յարութեն բանն է, որպէս և այսօր լուայք զգոչելն նորա և ասել. «Քանզի գիտեմք զի եթէ երկրաւոր տաճար շինուածոյս մերոյ քակտեսցի, տաճար յայ ունիմք անձեռագործ յաւիտենական յերկինս»: Մանաւանդ եթէ վերագոյն զբանս 'ի մէջ ածցուք և տեսցուք ուստի ձեռնարկեսցի որ յաղագս յարութեան բանս: Զի ոչ վայրապար և ոչ որպէս դէպ եղև՝ զայս վարդապետութիւն շարժէր, այլ միանգամայն ցուցանել կամելով զհանդերձելոյն և զնահատակս բարեպաշտութեանն զօրացուցանել: Վասն զի այժմ յաղագս այ շնորհին 'ի բազում խաղաղութեան վայելեմք. զի և թագաւոր բարեպաշտութեամբ կեայ, և իշխանք զճըշմարտութիւն ծանեան. ռամիկք, քաղաքք և ազգք 'ի մոլորութենէ 'ի բաց վճարեալք՝ Քրիստոսի ամենեքեան երկրպագեն:

Բայց 'ի սկզբան քարոզութեանն այն ինչ սերման բարեպաշտութեանն անկելոյ՝ յոլով էր պատերազմն, զանազան և ազգի ազգի: Իշխանք և թագաւորք, ընտանիք և ազգակիցք և ամենեքեան ընդ հաւատացեալս մարտնչէին, և 'ի նմին իսկ 'ի բնութենէս պատերազմ յառաջ գայր. հայր զորդի մատնէր և զդուստր մայր և ծառայ զտէր: Զի ոչ քաղաքք միայն և գեօղք, այլ և տունք բազում անգամ ընդդէմ իւրեանց բաժանէին, և քան զամենայն ազգային մարտն դժնդակագոյն էր որ յայնժամ ունէր խռովութիւնն. զի և ինչք յափըշտակեալ լինէին, և ազատութիւն մատնեալ, և յաղագս նոցին իսկ կենացն վտանգ 'ի վերայ կախեալ էր, ոչ բարբարոսաց յարուցելոց 'ի վերայ մեր, այլ նոքին կարծեցեալքն վերակացուքն և իշխանք քան զամենայն պատերազմողս դժնդակագոյնք՝ իշխեցելոցն 'ի վերայ

յառնելն ։ Եւ զայս Պաւղոս յայտնելով ասէր՝ եթէ "Յոլով ձգանց համբերելով չարչարեցայք, երբեմն թշնամանօք և նեղութեամբ տեսարան լեալք, և երբեմն հաղորդք եղէք որք այսպէս շրջեցաքս. քանզի և կապանաց իմոց չարչարակիցք եղէք, և զյափշտակութիւն ստացուածոց ձերոց խնդութեամբ ընկալայք"։ Եւ գաղատացւոցն ասէր. "Այնքան չարչարեցայք զուր, եթէ իցէ սնոտի"։ Եւ թեսաղոնիկեցւոցն և փիլիպեցւոցն և ամենեցուն պարզաբար որոց առաքէր թուղթս, յոլովագոյնս այսպիսիս վկայէր։

Եւ ոչ այն միայն էր դժնդակագոյն զի բազում պատերազմ շարժեալ լինէր և մշտնջենաւոր, այլ զի և 'ի նոյն իսկ 'ի հաւատացելոյն դէպ լինէր գայթակղութիւն ինչ լինել՝ հերք և հակառակութիւնք և նախանձք։ Եւ զայս Պաւղոսի յայտ արարեալ ասէր. "Արտաքոյ մարտք և 'ի ներքոյ երկիւղ"։ Եւ այս քան զայն պատերազմ դժնդակագոյն էր և իշխեցելոյն և վարդապետացն. ոչ այնպէս 'ի թշնամեացն 'ի վերայ յարձակմանէ երկնչէր Պաւղոս, որպէս 'ի ներքոյ կործանմանէն և յընտանեացն անօրէնութենէ։ Քանզի մի ոք պոռնկեցաւ 'ի կորնթացւոցն, և զամենայն ժամանակն զայն կատարեաց ողբալով, և զաղխն իւր հնձէր և երկիցս կականէր զնոյն։

Զինչ ոչ նուաղագոյն քան զասացեալս ոչ յաճախապէս 'ի վերայ բերէր՝ հաւատացելոյն զօրէնսն ասէ, զհրամանացն բնութիւն յոլով քրտամբք և աշխատութեամբք լի։ Վասն զի ոչ դիւրին և յարմարեալ էր ճանապարհն յոր զնոսա ածէին առաքեալքն, այլ խոշոր իմն և դժուարուղղելի, և իմաստասիրութեամբ և արթուն եղելոյ կարօտեալ անձին և զգուշացելոյ ամենայն ուստեք. յաղագս որոյ Քրիստոս նեղ և անձուկ զնա կոչեաց։ Վասն զի ոչ էր պարտ և արժան ընդարձակութեամբ կեալ, որպէս առ հեթանոսսն գարշութեամբ և արբեցութեամբ և շատկերութեամբ և փափկութեամբ և բազմապաճոյճ լինելով. այլ վայել էր և 'ի ցանկութեանց փախչել և զորամոլութիւն սանձել և 'ի վատթար ցանկութեանցն 'ի բաց դառնալ և զինչսն արհամարհել և անտես առնել, զփառսն կոխել, և քան զնախանձ և զյաչաղանս վեր 'ի վերոյ լինել։ Այոքէկ որ-

քան ընձեռեն աշխատութիւնս, զիտեն որք համապա-
զօր ընդ նոսա մաքառին։

Օ՜ ինչ քան զվատթար ցանկութիւնն դժնդակա-
գոյն, ասա ինձ, որ իբրև զշուն կատաղեալ յաճախա-
պէս 'ի վերայ մեր վազէ և հանապազօր զմեզ խածնէ, և կարօտանայ յարաժամ արթնութեան անձին։ Օ՜ ինչ և քան զչքաւորութիւն քաղցրագոյն, և 'ի զրկողէն վրէժ չառնուլ, բարեգործել զտրտմեցուցանողսն և օրհնել զուրացողսն, և ոչ բան դառն հանել երբէք արտաքս. և զողջախոհութիւն ոչ մինչև 'ի գործսն միայն, այլ մինչև 'ի խորհուրդսն 'ի նոսին ցուցանել պարտ և արժան է։ Օ՜ի ոչ 'ի պագշոտեալ գործոցն ևեթ, այլ և 'ի դիմացն յայնպիսեաց փախչել է 'ի բաց կալ, մի ինչ վայելել տեսանելեօքս գեղեցկադէմ կանանց. որպէս զի և փոխանակ տեսութեանցն այնոցիկ զվերջին զատաստանն համդերձեալ խցեմք ընդունել։ Իսկ զի բազում է պատերազմ յարտաքնոցն, յոլով երկիւղ և 'ի ներքուստ, յաճախ և աշխատութիւն յառաքինութեանցն գործս։

Էր և միւս ևս չորրորդ՝ անհմտութիւն համդերձելոցն, անզխտանալ զմեծ համդէսն զայն. քանզի ոչ 'ի նախահարց զբարեպաշտութիւն փոխանորդեալ առին առաքեալքն, այլ որք 'ի թուլութեան և 'ի փափկութե և յարբեցութեան և 'ի վատթարութեան և 'ի պակշատութեան էին սնեալք։ Ոչ սուղ ինչ և այս դժուարութիւն նահատակութեանցն էր, ոչ 'ի վերուստ և ոչ 'ի նախահարցն խրատեալք զինուորութիւնն զայն, այլ այն ինչ նոր առաջին 'ի համդէսն յայնպիսիկ արձակեալ զնոսա։

Իսկ յորժամ այսպէս էր դժնդակութիւն նահատակեցելոցն, յայնժամ մխիթարէ զնոսա զաշխատութիւնն յաճախագէս, և որ յաղագս յարութեան բանն է՝ շարժէր. և ոչ այսու միայն յորդորէ և շարժէ զմիտսն, այլ և պատմութեամբ իւրոց չարչարանաց. յաղագս որոյ նախ քան զամենայն 'ի յարութեանն բանս՝ զիւր չարչարանսն պատմէր ասելով այսպէս. "Յամենայնի նեղեալք, այլ ոչ վհատեալք. տարակուսեալք, այլ ոչ անյուսացեալք. հալածեալք, այլ ոչ լքեալք. գայթակղեալք, այլ ոչ կորուսեալք"։ Իսկ զհանապազորդեան

մահուն ասէ, զի իբրև կենդանւոյն իմն մեռեալ շրջէին, 'ի մահ մատնեալք հանապազօր. և յորժամ որ յարութեան բանս էր՝ շարժէր. «Քանզի հաւատամք, ասէր, թէ որ յարոյց զտէր Յիսուս 'ի մեռելոց, և ըզմեզ 'ի ձեռն Յիսուսի յարուսցէ և մերձ կացուսցէ ձեօք հանդերձ. յաղագս որոյ ոչ վհատիմք՝ մեծ մխիթարութիւն ունելով 'ի նահատակութիւնսն զհանդերձելոցն յոյս»:

Եւ ոչ ասաց առ նոսա՝ վասն որոյ մի՛ վհատիք, այլ թէ «յաղագս որոյ ոչ վհատիմք». ցուցանելով զինքն 'ի մշտնջենաւոր նահատակութիւնսն լեալ: Քանզի յոլիմպիական հանդէսն ըմբիշն 'ի ներքս մտցէ, իսկ մանկամարզն 'ի հեռուստ նստելով՝ բանիւքն 'ի ներքս տանի զօգնականութիւնն, այնքան միայն առնելով խնամակալութիւն մարտուցելումն՝ որքան խօսելով օգնել. բայց մերձ կալ և զձեռացն կռուակցութիւն ոչ յորդորէն օրէնքն նմա: Իսկ 'ի բարեպաշտութեան գործոցն ոչ այսպէս, այլ միանգամայն և մանկամարզ և ըմբիշ. վասն այնորիկ և ոչ արտաքոյ ուրեք մրցարանին նստելով, այլ 'ի նոյին իսկ մտեալ 'ի նահատակութիւնսն մարզէ, որք հանդերձ նովաւ նահատակին ասելով «Յաղագս որոյ ոչ վհատիմք»: Եւ ոչ ասաց՝ վասն որոյ ոչ վհատիմ, այլ «յաղագս որոյ ոչ վհատիմք», գովութեամբք զնոսա կանգնել կամելով: Զի «թէպէտ և արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն նորանայ օր ըստ օրէ»:

Տես զհոգևոր իմաստութիւնն. յորդորեաց զնոսա որովք չարչարեալն լինէր՝ ասելով. «Յամենայնի նեղեալք, այլ ոչ վհատեալք»: Յորդորեաց և յարութեամբն Քրիստոսի ասելով՝ թէ «Որ յարոյցն զՅիսուս, և ըզմեզ յարուսցէ»: Միւս ևս այլ մխիթարութեան օրինակ շարժէր այնուհետև: Վասն զի յոլովք 'ի մարդկանէ կարծամիտք ոմանք էին և տկարք և տաղտկոտք. թէ և հաւանեալք էին յաղագս յարութեան, յերկայնութենէ ժամանակին վհատեալք՝ տաղտկան և անկանին, այլ իմն նոցա օրինակ յարութեան ընձեռէ վարձ և հատուցումն: Եւ զինչ է այն. «Թէպէտ և արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն նորանայ օր ըստ օրէ». արտաքին մարդ զմարմինն կոչելով, և ներքին մարդ զոգին ասելով:

Եւ զոր ասէն այսպիսի է. նախ քան զյառնելն և յա-

ռաջ քան զվայելելն 'ի հանդերձեալ փառսն՝ աստ արդէն փոխանակ աշխատութեանցն ոչ սուղ ինչ առեր ըղհատուցումն, նովին՝ նեղեցելոյ անձամբն նորանալ, պարկեշտագոյնք լինելով և երկիւղածք, զրկանաց համբերել յերկարագոյնս, հաստատունք և զօրաւորք: Ո՛ր օրինակ այնոքիկ որք զմարմնական նահատակութիւնն մրցին նախ քան զպսակսն և զյաղթանակսն, 'ի նմին իսկ 'ի հրահանգիցն և 'ի կռուոյն մեծ առնուն զվարձսն, զի առողջագոյնս և զօրաւորս զիւրեանց զմարմինսն 'ի ձեռն կրթութեանն կազմելով՝ յամենայն ախտից 'ի բաց փախչին, նոյնպէս և 'ի նահատակութիւնս առաքինութեան նախ քան զորդւոյն մ̃յ գալ և յառաջ քան զհատուցումն մեզ առնուլ՝ մեծ աստուստ զպտղոյն վարձս շահիմք, զանձինս մեր իմաստասիրագոյնս յարմարելով:

Քանզի որք յոլովակի նաւեն ընդ ծով և բիւրուց ալէկոծութեանց համբերեն և ընդ բազում զազանս մարտնչին և յոքունց ձմեռնային բքոցն համբերեն, նախ քան զվաճառականութեանն շահս՝ ոչ փոքր ինչ 'ի հեռի ուղեգնացութենէն շահին զպտուղս, համարձակեալքն և իշխեալքն 'ի խորսն մտանել, հեշտ ախորժակօքն ընդ խորսն անցանելով առնել զուղեգնացութիւն: Նոյնպէս և 'ի մերձակայ կեանս որ բազում նեղութեանց համբերէ յաղագս Քրիստոսի և յոլով դժնդակութիւնք չարչարի, նախ քան զարքայութիւնն երկնից մեծամեծ վարձս առնու՝ համարձակութիւն առ ա̃ծ ստանալով. անդուստ այնուհետև և բարձրագոյն զիւր անձն ունի, մինչ զի զամենայն դժնդակութիւնսն ծաղր առնել: Նաև զի յայտնագոյն ասացեալս լինիցի, առակաւ զսա կամիմ երևելի առնել:

Այն ինքն Պաւղոս բիւր դժնդակութեանց համբերելով՝ ոչ սուղ ինչ և աստէն էառ զհատուցումն ծաղր և այպն առնելով զըռնաւորսն, ընդդէմ կալով մոլելոցն, անտես առնէր զչարչարանսն. առ երկաթս և առ խորս և առ գահավիժութիւնս և առ 'ի վերայ յարուցեալ խռովութիւն և դրժանս և առ ամենայն իսկ դժնդակութիւնս անզարհուրելի կայր մնայր. որում զինչ արդեօք լինիցի հաւասար: Քանզի զանվարժսն և որոց ոչ ինչ դէպ եղև կրել դժնդակութիւնս, որ ինչ և պատահէ՝ ամբոխել սովորեաց. մանաւանդ ոչ և նոքին իրքն

Digitized by Google

միայն, այլ և սոսկ վստահութիւն. և զինչ ասեմ սոսկ վստահութիւն, հոլանիքն զարհուրեցուցանեն զերկչոտն և զանկիրթսն: Իսկ որ յամենայնէն մերկանայ և այնպէս մնանէ, թէ և բիւր ինչ չարչարիցի, քան զամենայն այնուհետև գեր 'ի վերոյ է:

Ոչ փոքր է և այս պսակ, և ոչ որպէս դէպ իցէ վարձ, յորժամ ոչ ինչ զնա 'ի մարդկայնոցս կարէ տրտմեցուցանել. յորժամ որ այլոցն ահաւոր՝ այն դիւրաւ արհամարհելի նմա լինիցի. յորժամ յորոց այլքն սոսկան և պակչին, նա հանդերձեալ իցէ զայն ծաղր առնել 'ի ձեռն գերազանցեալ համբերութեանն: Քանզի եթէ զմարմին երանեմք, որ կարէ զցուրտ և զտօթ առանց տրտմութեան բերել և զսով և զկարօտութիւն և զուղեգնացութիւն և զայլ տաժանմունս, ևս առաւել զոգւոյն երանել պարտ և արժան է, որ զօրէ կարողապէս և առաքինաբար զամենայն դժնդակութեանցն ընդունել զարկածս, և պահել անծառայելի յարաժամ զիւր ըղձորհուրդն: Այնպիսին քան զթագաւորսն է թագաւորագոյն. վասն զի զնոսա և սպասաւորքն և սիրելիք և թշնամիք բազում անգամ կարող լինելով անիրաւել՝ դաւաճանեն և չարագործեն. բայց որ զայնպիսի զանձն ունի, որպէս ասացի այժմ, ոչ թագաւոր, ոչ սպասաւոր, ոչ ծառայ, ոչ բարեկամ, ոչ թշնամի և ոչ ինքն բանսարկուն վնասել կարասցէ: Քանզի որպէս արդեօք որ հրահանգեցաւն՝ ոչ ինչ 'ի կարծեցելոցն 'ի դժնդակութեանցն զօլ վտանգ:

Այնպիսի էր երանելին Պաւղոս, և յաղագս այնորիկ ասէր. "Ո՞ զմեզ որոշեսցէ 'ի սիրոյն Քրիստոսի. նեղութիւն, եթէ անձկութիւն, եթէ սով, եթէ մերկութիւն, եթէ հալածումն, եթէ սուր. որպէս և գրեալ է՝ եթէ վասն քո մեռանիմք զօրըր օր. վարկաք իբրև ոչխարք 'ի սպանդ. այլ յայնոսիկ յամենեսեան առաւել յաղթեմք 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի որ սիրեացն զմեզ": Զնոյն և աստ զեկուցանելով ասէր. "Թէպէտ և արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն նորանայ օր ըստ օրէ": Տկարագոյն մարմինս լինի, ասէ, այլ կարողագոյն և զօրաւոր հոգին, մանաւանդ և թեւաւոր:

Եւ զոր օրինակ զհնուոր ծանուխս ունելով զղէնս,

թեպէտ և յոժ քաջ ոք իցէ և պատերազմող, ոչ ևս կարէ լինել ընդդիմամարտայն ահաւոր. զինուցն ծանրութեամբ, ուժգին արագութեամբ և մարմնոյն զօրութեամբ և պատերազմողայն հմտութեամբ վատթարանայ: Ապա եթէ թեթևագոյն առնուցու և դիւրընձեռելիս, զօրէն ամենայն թռչնոց 'ի վերայ յարձակի ընդդիմակացն: Այնպէս և որ զմարմին իւր ոչ արբեցութեամբ և ոչ հանգստեամբ և ոչ փափկութեամբ պարարէ, այլ պահօք և աղօթիւք և յոլով նեղութեանց համբերութեամբ՝ թեթևագոյն և անօսր կազմելով, իբրև զթռչուն իմն 'ի վերուստ իջեալ՝ այնպէս հանդերձ բազում յարձակմամբ 'ի դիւացն բանակս անկանելով՝ դիւրաւ 'ի վայր բերէ զընդդիմակայ զօրութիւնսն և ընդ ձեռամբ առնէ: Այնպէս և Պաւղոս յոլով վէրս առնլով, և 'ի կապարան անկեալ և 'ի փայտի կապեալ, զմարմինն տկարագոյն ունէր ցաւոլքն ճնշեալ, բայց զոգին զօրաւոր և քաջալինդ. և այնպէս հզօր, մինչ զի կապեալն ձայնիւ սասանեցոյց զհիմունս կապարանին, և զբանտապահն արձակ կապեալն յառ իւր եած, և զդրունս փակեալս եբաց:

Եւ փոքր ինչ մխիթարութիւն ետ մեզ Պաւղոս և նախ քան զյարութիւնն լաւագոյն մեզ լինել և իմաստասէրս 'ի փորձութիւնս. վասն այսորիկ ասէ. "Նեղութիւնք զհամբերութիւն գործեն և համբերութիւն զընտրութիւն և ընտրութիւն զյոյս, իսկ յոյս ոչ ամաչեցուցանէ": Եւ դարձեալ այլ ոմն ասէ. "Այր անփորձ անընտիր է, և անընտիրն և ոչ միոյ բանի արժանաւոր": Որպէս զի և ոչ փոքր ինչ պտուղս շահիմք 'ի նեղութենէն նախ քան զյարութիւնն, զանձն ընտիր ունելով և ողջախոհ և յամենայն երկչոտութենէ 'ի բաց վճարեալ: Յաղագս այսորիկ ասէ՝ թէ "Արտաքին մարդս մեր ապականի, այլ ներքինն նորանայ", զանօրէնութիւն զամենայն արտաքս վարելով և զվատթար ցանկութիւնսն շիջուցանելով, քան զընչասիրութիւնս և զփառասիրութիւնս և քան զամենայն միանգամայն զապականեալ խորհուրդսն գեր 'ի վերոյ հանդիպեալ: Զի զոր օրինակ անձն որ յընդարձակութէ վայելէ և 'ի դատարկութեան՝ դիւրաւ յախտից յայնցանէ վատնի, նոյնպէս և որ յաղագս բարեպաշտութեն

միշտ անպարապ լինի և ոչ երբէք պարապումն առնէ ի-
մանալ վասն 'ի մարտն հոգւոյ, և յամենայնէ յայն-
մանէ վճարեալ լինի: Վասն այնորիկ ասէ՝ թէ "նո-
րանայ օր քան զօր":

Եւ դարձեալ մխիթարելով զանձինս վտանգեալս 'ի
դժնդակութիւնս որ 'ի վերայ գան, և ոչ գիտէն իմա-
տասիրել 'ի ձեռն հանդերձեալ յուսոյն, զնոսա յարու-
ցանելով այսպէս ասէր. "Քանզի առժամայն թեթև
նեղութեանս մերոյ զառաւելութիւն յաւիտենական
ծանր փառացն գործէ 'ի մեզ, ոչ գիտելով մեր զտեսա-
նելիս, այլ զանտեսանելիսն. զի երևելիքս առ ժամա-
նակ մի են, իսկ ոչ տեսանելիքն յաւիտենականք": Որ
ասէն այսպիսի է. մանաւանդ ևս աստ հանճարեղս առ-
նելով զանձինս մեր և իմաստասիրագոյնս, և զկնի այ-
նոցիկ բիւր մեզ առթէ զհանդերձեալ բարիսն, ոչ զու-
գամէտ աշխատութեանցն, այլ առաւել քան զմարտն
և ըստ քանակութեան և ըստ որպիսութեան: Եւ զայ-
նոսիկ զերկոսեան և զգերազանցութիւն յայտնէ և զվը-
տանգսն, և զախտիցն առնէ համեմատութիւն, և ընդ-
դիմադրութիւն ժամանակեիցս և յաւիտենականին, որ
թեթևագոյնս է՝ զծանրութիւն, և նեղութեան՝ ըզ-
փառսն: Քանզի նեղութիւնն, ասէ, առժամանակեայ
է և թեթև. իսկ հանգիստն, մանաւանդ թէ ոչ ասաց
հանգիստ՝ այլ փառս, որ յաւէտ մեծագոյն է քան ըզ-
հանգիստն, յաւիտենականք և մշտնջենաւորք և մեծք:
Քանզի ծանրութիւն աստ՝ ոչ որ աշխատութեամբ և
ծանրաբեռն է՝ ասէ, այլ զբազմակատարն և զպատուա-
կանն ըստ յոլովից սովորութեանն՝ որք զբազմապատիկն
ծանրապատիւ կոչել սովորեցին: Յորժամ ասէ ծան-
րութիւն փառաց, զմեծութիւնն ասէ:

Արդ մի զայդ միայն վարկանիր, ասէ, զի տանջիդ և
հալածիդ, այլ և զպսակն և զհատուցումն. վասն զի
յոլով մեծագոյնք և պայծառք քան զմերձակայս են նո-
քա, և վախճան ոչ ունին և ոչ սպառուած: Այլ այ-
սոքիկ, ասէ, հմտութեամբ են, բայց նոքա յուսով. և
սոքա երևին, իսկ նոքա ոչ երևին: Այլ եթէ զօրա-
ւոր իցես, աներևոյթքն քեզ քան զերևելիսն են յայտ-
նագոյնք, և զնոսա մանաւանդ քան եթէ զսոսա կարես
տեսանել. վասն զի այսոքիկ անցանեն, իսկ նոքա մնան:

Digitized by Google

Յաղագս որոյ 'ի վերայ եած ասելով. “Ոչ դիտեմք զտեսանելիսս, այլ զանտեսանելիսն. զի երևելիքս առժամանակեայք են, և յաւիտենականքն աներևոյթք„:

Եւ եթէ ասես, զիա՞րդ կարացից զաներևոյթսն տեսանել և զմերձակայս ոչ տեսանել, 'ի կենցաղականացս յայսցանէ 'ի հաւատ զքեզ ածել հնարիմ: Զի և ոչ յաշխարհի իրացս զժամանակեայսս զայս տեսցէ ոք դիւրաւ, եթէ ոչ զաներևոյթն նախ քան զերևելիսս տեսանիցէ: Որպիսի ինչ ասեմ. վաճառական համբերէ ձմեռնային մրրկաց և ալէկոծութեանց 'ի վերայ յարուցելոց, նաւաբեկութեանց և բիւր այլոց դժուարութեանց. այլ վայելէ յընչեղութեանն յետ մրրկացն, զբեռն ամբարելով յոլով գործէ զշահն: Այլ սակայն ձմեռունքն յառաջագոյն, և ամբարքն յետոյ. և ալէկոծութիւնքն և խորքն երևին յելանելն 'ի նաւահանգստէն, բայց շահք ոչ երևին, քանզի տակաւին յուսով է: Այլ սակայն եթէ ոչ առանձինն առ աներևոյթն առ այն հայէր, և ոչ մերձակայն 'ի ձեռին լինէր. զի և ոչ յուսով ձեռնարկէր 'ի մերձակայն և յերևելին:

Նոյնպէս և մշակ լծէ եզինս և արօր ձգէ և ակօս պատառէ և սերմն յերկիր ընկենու և զամենայն զօր ունի ծախէ, և ցրտոյ և սառամանեաց և անձրևաց և այլոց ամենեցուն համբերէ յոլով աշխատութեանց. և զկնի այնպիսի վաստակոց վստահանայ վարսաւորեալս տեսանել զանդաստանն և լի զկալն: Այլ և աստանօր նախ առաջին էր աշխատութիւնն, և զկնի վարձն անյայտ և աներևելի, իսկ աշխատութիւնն յայտնի և երևելի. և նա յուսով, բայց սա 'ի ձեռս: Այլ սակայն և նա եթէ ոչ յառաջագոյն յաներևոյթն հայեսցի՝ յանյայտն և յանտեսանելին մարմնաւոր աչօք, ոչ միայն ոչ լծեսցէ եզինս և ոչ արօր ձգեսցէ և ոչ սերմն 'ի վայր ընկեսցէ, այլ և ոչ շարժեսցի իսկ երբէք 'ի տանէն 'ի գործն յայն:

Եւ արդ որպէս ոչ իցէ արդեօք յիմարութիւն 'ի կենցաղական յիրս նախ քան զերևելիսս զաներևոյթսն տեսանել, և նախ քան զվարձսն համբերել աշխատութեանցն, և յառաջագոյն զդժուարինսն զամենայն ընդունել վստահանայ երբեմն որ 'ի նոցանէ լինի շահն, յաներևելեացն յուսով յորդորեալ՝ այնպէս բուռն հարկանէ զերևելեացն, իսկ յածայինսն յերկուանալ և ան-

հատանել, և նախ քան զաշխատութիւնն ոչ հաւա-
տալ հատուցմանց, և քան զերկրագործսն և զնաւա-
վարսն կարծանիմ երևել. զի ոչ միայն ըստ այսմ քան
զնոսա երևեսցուք վատթարք յերկուանալով 'ի հան-
դերձեալսն, այլ և ըստ միտումն եւս ոչ ինչ նուազ քան
զնոսին:

Այլ որ է այն. զի սոքա ոչ յոք յաղագս վախճանին
հանդերձեալ լինելոյ, և սակայն և ոչ այնպէս 'ի պա-
կասցեն 'ի բաց կան. ոչ արժանի հաւատալոյ ունին երաշ-
խաւոր և ոչ նմանեալ զոք: Նման զի մշակ բազում ան-
գամ՝ յետ սերմանն ընկենլոյ և դարմանելոյ զերկիրն և
վաստակաւորեալ սնուցանելոյ զանդաստանսն, կարկուտ կամ
ժանգոյ կամ մարախոյ և կամ այլոյ իրիք այնպիսեաց
'ի վերայ եկեալ հարուած՝ արտաքս անկաւ յաշխատու-
թեանցն հատուցմանէ, և զկնի յոլով քրտանց ունայն
ձեռօք 'ի տուն դառնայ: Այլ վաճառական դարձեալ
յետ բազում խողոց լցեալ ածէ զնաւն առ նմին իսկ
բերան նաւահանգստին. բազում անգամ անկանելով
'ի վերայ հողմք՝ առ մերձ ուրեք 'ի խորտակել զնաւն,
աշխատութեանքն եղանէ ապրեցուցանելով զմարմինն
մերկ: Այլ պատերազմող իսկ յամենայն 'ի կենցաղական-
սըն յոլովից բազում անգամ 'ի վախճանին թշուառու-
թեանց պայմանեաց հանդիպել դիպի լինի:

Բայց 'ի նահատակութիւնսն ոչ է այս. այլ հարկա-
ւոր է ամենայն իրօք որ հանդիսանայն և սերմանէն ըղ-
ձարեպաշտութիւնն, բազում աշխատութիւնս ընդու-
նելով հանդիպել կատարածին: Ոչ ի ոչ օդոյ անհար-
թութեանց և ոչ հողմոց մրրկելոց զաշխատութեանցն
հատուցմանն հրաւիրէ՝ ած, այլ յերկինս ամբարի 'ի
շտեմարանս փառաց: Նման այսորիկ և Պաւղոս ասէր՝
թէ "Նեղութիւն զհամբերութիւն գործէ, և համբե-
րութիւն զընտրութիւն, և ընտրութիւն զյոյս, իսկ յոյս
ոչ ամաչեցուցանէ":

Որով մի այսուհետև ասիցես՝ թէ աներևոյթք են
հանդերձեալքն. քանզի եթէ ախորժեցես հաւատալ
հարցաքննել, քան զոր 'ի ձեռաց է՝ յայտ երևելա-
գոյնք են: Այլ զոյն զայս դարձեալ ցուցանելով մեզ
Պաւղոս, զնոսա յաւիտենականս կոչէ և զսոսա ժամա-
նակեայս, ժամանակէ իւն զապականութիւն նոցա յայտ-

նելով։ Վասն զի նախ քան զերեւելն Թռչին եւ 'ի բաց ընթանան, եւ յառաջ քան զկալ մնալ արագընթաց լինի նոցա փոփոխումն, անհաւատալի է տեսացուածն։ Լու-զայն յընչեղութիւն եւ 'ի փառս եւ 'ի զօրութիւնս եւ 'ի մարմնոց գեղեցկակազմութիւնս, նոյն եւ յուժեղութիւն եւ յամենայն պարզաբար յաշխարհականս պատահեալս տեսցէ ոք արդեօք։

Վասն այսորիկ եւ մարգարէն կատակելով զփափկացեալսն եւ որ յինչսն մոլեալք են եւ յայլ ամենայն երեւելիսս իբրեւ կայունս, ասէ. "Վարկան զայն, եւ ոչ իբրեւ փախստական"։ Զի զոր օրինակ զստուերն ոչ գոյ ումեք բուռն հարկանել, նոյնպէս եւ ոչ զկենցաղական իրացս. այլ ոմանք 'ի վախճանին քակտին, եւ կէսք նախ քան զկատարածն քան զամենայն ուղխս որպէս ցնդին։

Բայց հանդերձեալքն ոչ այսպէս. ոչ զխանեն զփոփոխումն, ոչ ընդունին զխոտորումն, ոչ ճանաչեն զծերութիւն, ոչ ընդունին զայլայլութիւն. այլ առոյգական միշտ եւ 'ի նմին իսկ 'ի քաջավայելչութեան կան մնան։ Որպէս զի թէ աներեւոյթ եւ անյայտ իցէ ասել եւ անհաւաստի՝ զմերձակայ զիրսն, որք ոչ կանխեան ընդ տեսցողսն, այլ փոփոխեն զտեսարսն, եւ հանապազօր յայսցանէ 'ի միւսն են փոփոխեալք վազեն, եւ դարձեալ 'ի նոցանէ յայլ ոմն։

Զայս ամենայն յայտնելով մեզ Պաւղոս՝ այսր աղագաւ զմերձակայս ժամանակեայս, եւ զհանդերձեալսըն յաւիտենականս կոչելով, որ յաղագս յարութեան բանին է՝ դարձեալ շարժէ այսպէս. "Գիտեմք զի եթէ երկրային տաճար մերոյ խորանիս քակեսցի, շինուած տաճարի ունիմք յԱյ անձեռագործ յաւիտենական յերկինս"։ Տես դարձեալ եւ աստ զիարդ բանիւքն վարի տիրաբար, եւ 'ի ձեռն նորին անուանցն երեւեցուցանէ զմտացն զօրութիւն։ Քանզի ոչ վայրապար խորանն զմարմինս կոչեաց, այլ առժամանակեայ զմերձաւոր կեանս մեզ եցոյց, եւ 'ի լաւագոյն փոփոխումն յայտնելով պայծառապէս ասէ. Ընդէր հառաչեմս եւ արտասուեմս, սիրելիք, վասն զի հարկանիմ եւ հալածիմ եւ 'ի կապարան արկանիմ։ Զի ոչ ապաստ զմնանաւոր չարչարանս զայս. պարտէիր աղօթել բովանդակ

իսկ մարմնոյդ լուծումն լինել․ մանաւանդ եթէ ոչ վայրապար մարմնոյ, այլ որ 'ի մարմնի են ապականութիւնք։

Այլ զի ցուցցէ եթէ մանաւանդ որ չարչարանօքս այսոքիկ ոչ միայն զմեզ տրտմեցուցանել ոչ պատրաստին, այլ և զուարճացուցանել ևս, ցուցանէ՝ թէ ընդհանրական և կատարեալ 'ի բաց բարձումն գործ աղօթիցն մերց՝ է 'ի ձեռն մահուան լուծմանն, այսպէս ասելով․ "Վասն զի յայսմ հառաչեմք զի զբնակութիւնն մեր որ յերկնից է՝ զգենուլ ցանկամք"։ Տաճար խորանի՝ կամ ըզմարմինն 'ի ձեռն երկոցունց անուանցն կոչէ, կամ տաճար խորանի զտունս յորս բնակեմք, զքաղաքս, զձմերանոցս կենցաղոյս։ Այլ ոչ պարզաբար ասաց՝ գիտեմ, այլ գիտեմք․ և զլսողացն մերձ առնելով զբանս, ոչ յաղագս երկրաւորական[1] իրաց խօսիմ, ասէ, և ոչ վասն անգիտութեանց, այլ յաղագս որոց արդէն իսկ զհաւատն ընկալայք՝ 'ի Քրիստոսի յարութենէն հաստատելով․ վասն այնորիկ և խորանս ասէ որ աստէն իցէ, և բանիւ տիրաբար վարի․ Ոչ ասաց 'ի բաց բարձաւ և ապականեցաւ, այլ քակեցաւ, ցուցանելով եթէ քակի, զի պայծառագոյն կանգնեսցի և լուսաւորագոյն։

Այլ ապա իբրև աշխատութեանց և հանդիսից արար զհամեմատութիւնն յորպիսութենէն, 'ի ժամանակէն, նմանապէս և աստ առնէ․ որ անկանի՝ զմարմինն խորան կոչէ, և որ յառնէն՝ տաճար, այլ յաւիտենական, այլ երկնային․ և 'ի ժամանակէն և 'ի տեղւոյն ցուցանէ զգերազանցութիւնն․ քանզի սա երկրային, և նա երկնային։ Այլ այժմ մարմնոյ կարօտանայ և բնակութեան յաղագս ապականութեան մարմնոյ, իսկ յայնժամ ինքն անդամ լինելոյ մարմնոյն և բնակութիւն, ոչ ևս կարօտեալ յարկի և ծածկութից տանց, փոխանակ ամենայնի բաւական լեալ նոցա անապականութիւնն։

Այլ ցուցանելով զառաւելութիւն զառաջիկայից բարեացն ասէ․ "Յայսմ հեծեմք"։ Այլ ոչ ասաց՝ հեծեմ, այլ հաւասար առնէ զկամսն, "քանզի յայսոսիկ հեծեմք", կամելով զնոսա յիւր խնամատարութիւնն ձգել և իւրում դատողութեանն առնել հաղորդս։ "Վասն զի յայսոսիկ հեծեմք, զի բնակութեանն մերոյ որ յեր-

1 Պակասէր յերկրորդն օրինակն Էջմիածնական․ յաւելաւ 'ի յունէն։

Digitized by Google

կինս է՝ բաղձամք ,,: Ոչ պարզաբար ասաց զգենուլ, այլ՝ 'ի վերայ զգենուլ. "միայն եթէ զգեցեալք՝ ոչ մերկ գտանիցիմք ,,: Ուստի ինձ անյայտ դոլ ասացեալն. բայց լինի յայտնագոյն 'ի ձեռն որ 'ի կարգի 'ի վերայ ածեալն է:

"Քանզի որ եմք 'ի խորանիս՝ ծանրացեալք հեծեմք, զի ոչ կամիմք մերկանալ, այլ զգենուլ ,,: Կտանօր որք զմարմնոյն բնութիւն բամբասեն և ամբաստանեն զմերմէ մարմնոյս լինելն, կարևոր վէր ետ: Վասն զի ասէ՝ թէ հեծեմք և մերկանալ չկամիմք. զի մի՛ կարծիցես եթէ իբրև 'ի չարէ փախչիցի 'ի մարմնոյն և 'ի դժնդակ ումեքէ 'ի պատճառէ, 'ի թշնամեայ և 'ի պատերազմողէ, լուր զիարդ ուղղէ զապարատանութիւնն: Նախ առաջին՝ ասելով եթէ "հեծեմք, զի զննակութիւնն մեր որ յերկինս է՝ 'ի վերայ զգենուլ փափագեմք ,,. քանզի որ զգեցեալն լինի, այնմ յորում էն՝ այլ ինչ զգեցեալ լինի: Նաև ապա ասելովն "հեծեմք ծանրացեալք յաղագս ոչ կամելոյ մերկանալ, այլ 'ի վերայ զգենուլ ,,: Նաև զոր ասէն այսպիսի է. ոչ զմարմինս 'ի բաց դնել ախորժեմ, ասէ, այլ զապականութիւնն. ոչ զմարմինն, այլ զմահն: Այլ է մարմին և այլ մահ և այլ ապականութիւն. ոչ մարմին ապականութիւն է, և ոչ ապականութիւն մարմին. ապականացու է մարմին, այլ ոչ ապականութիւն մարմին. և մահկանացու է մարմին, այլ ոչ մահ մարմին: Քանզի մարմին գործ եղև այ̃, իսկ ապականութիւն և մահ 'ի մեղաց 'ի ներքս մտին: Արդ զօտարոտին 'ի բաց մերկանալ կամիմ, ասէ, և ոչ զընտանին. և օտարոտի է ոչ մարմինն, այլ ապականութիւնն: Նաև յաղագս այսորիկ ասէ. "Ոչ ախորժեմք մերկանալ ,, զանապականութիւն: Միջակ է մարմինս ապականութեան և անապականութեան. մերկանայ զապականութիւն, և զգենու զանապականութիւն. 'ի բաց ընկենու զոր եառ 'ի մեղացն, և ստանայ զոր ետ այ̃ շնորհն:

Նաև զի ուսցիս եթէ զմերկանալն ոչ յաղագս մարմնոյ ասէ, այլ վասն ապականութեան և մահու, լուր վաղվաղակի 'ի վերայ ածեցելոյն: Քանզի ասելով "ոչ կամիմք մերկանալ, այլ 'ի վերայ զգենուլ ,,, ոչ ասաց՝ զի ընկլցի մարմին 'ի մարմնոյ, այլ եթէ "զի ընկլցի մահկանացուս 'ի կենացն ,,. այս է զի ապականեսցի, զի կորիցէ. որպէս զի զկորուստն ոչ մարմնոյ ասէ, այլ մահու

և ապականութեան ։ Վասն զի 'ի վերայ գալով կեանքն ոչ զմարմին ապականեն և ծախեն, այլ զածեալն 'ի վերայ նորա զապականութիւն և զմահ ։ Ապա ուրեմն և հեծութիւնն ոչ յաղագս մարմնոյ, այլ վասն 'ի վերայ կացելոյ ապականութեանն է ։ Քանզի մարմին ծանր է և բեռնաւոր և դժուարաբեռն․ ոչ յաղագս իւրոյ բնութեանն, այլ վասն զկնի եղելոյ 'ի նմա մահուն․ ոչ զի մարմին է, այլ զի ապականացուն է ։ Այսքան է նորա բարետոհմութիւն, մինչ զի և 'ի նմին իսկ յապականութենէն զպատիւն զիւր ցուցանէ ։ Վասն զի հովանիք առաքելոյն զանմարմին զօրութիւնս 'ի բաց հալածէին, և փոշին և աճիւն նոցա յաղթող լինէր դիւացն, և հանդերձքն որ 'ի մարմինս նոցա մերձեցեալք էին՝ զհիւանդութիւնս 'ի բաց բառնային և առողջութիւն 'ի վերայ ածէին ։

Մի՛ ինչ ինձ խօսք և մաղձ ասիցես և քիրտն և աղտ և զայլ ինչ զոր բամբասողքն մարմնոյ խօսին․ զի ոչ մարմնոյ բնութիւն էր այս, այլ զկնի եղելոյ ապականութեանն ։ Ապա եթէ կամիցիս ուսանել զնորա զառաքինութիւն, զմտաւ ած զանդամոցն ամենեցուն զստեղծուածս, զձևս, զզօրութիւնս, զառ իրեար ձայնակցութիւնն և զամենայն բարի օրինօք իմաստասիրեալս ամենեցուն զքաղաքակցութիւնս ընկալեալ, և հաւաստեաւ տեսցես զանդամոցն առ միմեանս զյարմարութիւն ։

Իսկ եթէ 'ի վեր և 'ի վայր ընդ սոյնս անցանելով զապականութիւն նորա և զախտսն յերկարեսցես, և ոչ առատանօր տարակուսիմ 'ի պատասխանիսն ։ Զի ոչ միայն և ոչ մի ինչ վնաս չեղև աստուստ, այլ և յոլով շահ ազգի մարդկան․ և յայտ աստի է, զի սուրբք ամենայն հանդերձ կենօքս զհրեշտակական առաքինութիս ցուցին, և ոչ մի ինչ նոցա վնաս անտի եղև յառաքինութեան յընթացսն ։ Իսկ որ յամբարշտութիւն հայէին, ոչ սուղ ինչ խափանումն ընկալան զմարմնոյն ապականութիւն՝ ոչ յերկարաձգագոյնս ինչ երթալ իրեանց անօրէնութեամբն ։

Քանզի եթէ զապականացուս զայս և զչարչարելի զմարմինս զգեցեալք յոլովք 'ի մարդկանէ զանձութիւնն երկուութացան, և յաղագս այնպիսի իմն կարծիս ընելոյ մեքենայց յօգունս հնարեցան իրս, եթէ ոչ չարչա-

բելի ունելին մարմին և ապականացու որ յանդիմանէր զնոցա տկարութիւնն, զո՞ արդեօք ոչ մոլորեցուցանէին յանմտացն։ Արդ յորժամ ամբարշտութեանն, որ է վերջին սահման չարութեան, խափանիչ երևի լեալն, և որքոյն ընձեռէ զօգնոյն արութիւն ցուցանել, որո՞ւմ թողութեան արդեօք հանդիպեսցին որք բամբասեն և չարահամբաւեն զնա։ Զի և ոչ զայն ունիս ասել ինչ յաղագս նորա, այլ թէ և ա̃ծգիտութեանն մեզ պատճառք նա եղև։ Քանզի եթէ անտեսանելիքն ա̃յ 'ի ստացուածոյ աշխարհիս արարածովք իմացեալ տեսանին, և հաւատ 'ի լսելոյ, քաջայայտ է թէ աչօք և ականջօք պաշտպանեալ հոգի զարարիչն իւր ծանեաւ զա̃ծ։ Այլ յաղագս այսորիկ Պաւղոս գոչէ ասելով. "Ոչ կամիմ զնա մերկանալ, այլ 'ի վերայ նորա զգենուլ զանմահութիւնն"։

Այլ մի ասեր՝ զիա՞րդ կարողութիւն է դարձեալ յառնել այսմ մարմնոյ և լինել անապական։ Զի յորժամ ա̃յ զօրութիւնն գործեսցէ, զիարդն մերձ մի կացցէ։ Այլ զինչ ասեմ զա̃յ, զքեզ ինքն գործօնեայ արար յարութեանն, երբեմն սերմանեօքն և երբեմն արուեստիւքն և երբեմն հալական նիւթովքն։ Քանզի և սերմն եթէ ոչ յառաջագոյն մեռցի և նեխեսցի և ապականեսցի, ոչ ծնանի զհասկն։ Արդ որպէս տեսանես անդ զհատն ապականեալ և լուծեալ և ոչ յերկուանաս յաղագս յարութեանն, այլ ցոյցս քեզ առնես յայտնագոյնս, զի եթէ կայ մնայ ոչ ապականեալ՝ ոչ յառնէ երբէք, նոյնպէս զմտաւ ած և յաղագս քո մարմնոյդ. յորժամ տեսանես զապականութիւնն, յայնժամ հանդերձիս յաղագս յարութեանն խոստովանիլ։ Ահա զի մահ ոչ այլ ինչ է, այլ յապականութենէ այսուհետև 'ի բաց բարձումն. ոչ զմարմնոյն աղարտումն, այլ զապականութիւն նորա ծախէ մահն։

Զայս և 'ի հալական նիւթն տեսանել պատահէ. քանզի ապակեգործն իմն հող առեալ յայսմանէ հնագոյնքն և 'ի ձուլարան արկանելով ապակի գործեն. և աւազ և այլ իմն նիւթ խառնելով՝ ապակի մաքուր առնեն։ Այլ արդ որպէս է հրոյն զօրութիւն, նոյնպէս և ա̃յ շնորհն ոչ կարիցէ առնել, ասա ինձ. և ո՞ զայս յանդգնեսցի ասել և որոյ որպէս զէտ եղև ունել միտս։

Digitized by Google

ես որ փութացայս և այնքան ձգնեցայ՝ յառնել, և հեթանոսն և ամբարիշտն և որ կռոցն երկիր պագանէր և զՔրիստոս անգիտանայր, և նա յառնէ նմանապէս և 'ի նմին պատիւ վայելէ. զի մի՛ զայս ասելով ամբոխեսցիս, լուր զինչ ասէ. "Եթէ զգեցեալք, ասէ, զանապականութիւն և զանմահութիւն, ոչ մերկք գտանիցիմք": Եւ զիմրդ է հնար, ասէ, զգենուլ զանապականութիւն և զանմահութիւն, և մերկ գտանել: Յորժամ 'ի փառացն գտանիցիմք ամօթլիք, և 'ի համարձակութենէն որ առ ած՝ զրկեալք: Քանզի և մարմինք մեղաւորացն անապականք յառնեն և անմահք, այլ պատիւն այն նոցա թոշակ տանջանաց լինի և պատժոց. զի անապականք յարուցեալք՝ յամենայն ժամ այրին. վասն զի անշէջ հուրն այնպիսեաց մարմնոց կարօտանայ, որ ոչ երբէք ծախեսցին: Եւ վասն այնորիկ ասէ եթէ "զգեցեալք ոչ մերկք գտանիցիմք": Քանզի ոչ այս միայն է խնդրելի զի յառնիցեմք և զգենուցումք զանմահութիւնն, այլ զի յարուցեալք և զգեցեալք զանմահութիւնն՝ ոչ մերկք գտանիցիմք 'ի փառացն և 'ի համարձակութենէն որ առ ած է, զի մի՛ հրոյն մատնիցիմք: Վասն այսորիկ ասէ՝ թէ "զգեցեալք ոչ մերկք գտանիցիմք":

Եւ ապա դարձեալ արժանի հաւատոյ առնելով յաղագս յարութեանն զբանն, ասէ թէ հանդերձեալ է խոնարհել մահկանացուն 'ի կենացն, 'ի վերայ եած. "Որ գործեաց զմեզ 'ի սոյն յայս՝ ած է, որ ետ զառհաւատչեայ հոգւոյն": Ի սկզբանն, ասէ, վասն այսորիկ զմարդն ստեղծ, ոչ զի կորիցէ, այլ զի յանապականութիւնն ճանապարհորդեսցէ: Որպէս զի և յայնժամ մահուն լինել թողացոյց, և հանդերձ այսպիսի ինն կամօք ներեաց, զի ողջախոհացեալ և տանջանօքն լաւագոյն լեալ՝ կարասցէ դարձեալ առ անմահութիւնն ածել վերստին:

Եւ 'ի սկզբանն առ այ այս խորհուրդք և կամք էին զօրացեալ, և հանդերձ այսպիսի վճռաւ զառաջինն զըմարդն ստեղծ. զայս մեզ վաղվաղակի և 'ի նոցունց իսկ զեկոյց յառաջին ճանապարհացն: Քանզի եթէ ոչ էր կամեցեալ զդրունս յարութեանն մեզ բանալ, ոչ արդեօք թողոյր զԱբէլ՝ որ զամենայն առաքինութիւնս

եցոյց և սիրելի նորա եղև՝ կրել ինչ չարչարանս։ Իսկ
այժմ ցուցանելով եթէ առ այլ իմն կեանս Ճանապար-
հորդեմք, և այլ իմն յաւիտեանս ամբարեալ է արդա-
րոցն, որ ունի զհատուցմունսն և զպսակսն զառաքինւոյս,
զառաքինին լեալ արդարին ոչ առնլով աստէն զվարձն զո-
րոց աշխատեցաւն, այլ ներեաց երթալ, գոչելով ամե-
նեցուն որովք չարչարեցաւն, և ասելով՝ եթէ զկնի աս-
տի կենացս է իմն հատուցումն և վարձ և փոխարու-
թիւն։ Յաղագս նորին և զԵնովք փոխադրեաց և զԵ-
ղիա յափշտակեաց, զեկուցանելով մեզ որ յաղագս
յարութեան են կարծիք։

Բաւական էր 'ի հաւանութիւն և արարողին զօրու-
թիւն. իսկ եթէ տկարագոյն ոք իցէ, և կամեսցի այլ
ինչ ցոյցս առնուլ և գրաւական հանդերձեալ յարու-
թեանն, և զայն հանդերձ յոլով առատութեամբ ետ
ա̄ծ՝ զհոգւոյն շնորհս առանց մախանաց յաճախապէս
եհեղ 'ի մեզ։ Վասն այնորիկ և Պաւղոս առնելով ար-
ժանի հաւատալոյ յարութեանն աղագաւ բան 'ի Քրիս-
տոսի յարութենէն՝ յո̄յ լեալ զգործեցեալն, 'ի վերայ
ածէ և զայս զերրորդն ասելով՝ թէ և գրաւական ետ
մեզ, ոչ ընչից, ոչ ոսկւոյ և արծաթոյ, այլ զգրաւական
հոգւոյն։ Եւ գրաւական մասն է ամենայնի հաւատն։
Որպէս և 'ի վաճառս որ զգրաւական ընդունի և յա-
ղագս ամենայնի վստահանայ՝ այնուհետև և հաւատայ,
նոյնպէս և դու առնլով գրաւական, զհոգւոյն շնորհս ա-
սեմ, մի ևս յերկուացիր յաղագս յառաջիկայ բա-
րեացն։ Քանզի որ զմեռեալս յարոյց, զկոյրս բժշկեաց,
զդևս հալածեաց, զբորոտս սրբեաց, յախտից ուղ-
ղեաց, որ զմահ եղծ, որ այսքան և այսպիսի կարացա-
նել 'ի չարչարելն և 'ի մահկանացու մարմնի, որո՞ւմ թա-
ղութեան հանդիպեսցի յերկուացեալն յաղագս յա-
րութեան։ Քանզի եթէ մինչ ոչ ևս ժամանակ յարու-
թեանն մերձ լեալ էր, այլ տակաւին ևս հանդէպքն 'ի
ներքս կային՝ այնքան սպասս քեզ հատոյց ա̄ծ, զմտաւ
ած որքան արդեօք 'ի ժամանակի յաղթանակացն տա-
ցէ քեզ բարիս։

Ապա եթէ ոք ասիցէ, այլ ոչ տեսանեմք այժմ ըղ-
լեալ նշանսն զայնոսիկ և ոչ մեք այնքան ունիմք զօրու-
թիւն, զայն ասեմք՝ թէ ոչ ինչ զանազանի և այժմ յա-

ռաջագոյն եղելոյն։ Եւ զի յառաջագոյն յառաքելոցն եղև, վկայեն ամենայն ուրեք եկեղեցիք յաշխարհի, յաղագս որոյ զօրք և ազինք և քաղաքք ընթանային առ տգէտսն և ձկնորսսն։ Ոչ արդեօք զաշխարհ ունէին առանց ուսման տգէտքն և աղքատք և աղկաղկքն և տըկարքն, թէ ոչ 'ի վերուստ զնշանացն զօգնականութիւն ունէին։ Բայց սակայն և ոչ դու ամայի եղեր 'ի հոգւոյն շնորհէ, այլ յոլով տակաւին մնայ և այժմ պարգևին այնորիկ նշանակ, զորս թուեցից՝ յաւէտ ևս մեծագոյն և սքանչելի։ Քանզի ոչ է հաւասար զմարմին վախճանեալ յարուցանել, և զանձն մեռեալ մեղօք 'ի բաց ազատել 'ի կորստենէ յայսմանէ՝ որ 'ի ձեռն մկրտութեան լինի. ոչ է զուգահաւասար զհիւանդութիւնս կորուսանել զմարմնոյ, և զմեղացն բեռն խորասոյզ առնել. ոչ է զսգ զմարմին տապացեալ ողջացուցանել, և զոգի ըղխաւարեալ լուսաւորել։ Զի եթէ ոչ էր գրաւական հոգւոյն շնորհի, և այժմ ոչ ևս արդեօք հաստատեալ կայր մկրտութիւնն, ոչ լինէր թողութիւն մեղաց, ոչ արդեօք արդարութիւն և սրբութիւն, ոչ արդեօք զորդեգրութիւն ընդունէաք, ոչ 'ի խորհուրդս վայելէաք, մարմնոյն և արեան խորհրդական ոչ արդեօք լինէր հոգւոյն շնորհ. ոչ քահանայս ունէաք, և ոչ էր իսկ կարողութիւն ձեռնադրութեան այսմիկ լինել առանց շնորհին տնկելոյ 'ի մեզ։ Եւ այլ յոլովս ունիցի որ թերևս զհոգւոյն շնորհի նշանակս ասել։ Որպէս զի և դու զգրաւական հոգւոյն ունիս, և զմեռելութիւն հոգւոյդ 'ի բաց եդիր և զկուրութիւն խորհրդոց, և զանմաքուր կեանս մերկացար։

Արդ մի այսուհետև յերկուասցուք յաղագս հանդերձելոյն այսպիսի գրաւականս առնլոյ. այլ ամենայն ուստեք որ յաղագս յարութեան բանն է՝ հաւաքեսցուք, և վասն արժանաւորս աւանդութեանցն այնոցիկ ցուցցուք, զի և անախտ բարեացն հանդիպեսցուք՝ որ ըստ բան գերազանցէ և ըստ միտս մարդկային՝ անճառ խոստմանցն պարգևք։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Digitized by Google

Ի ՍՈՒՐԲՆ ՄԵԼԻՏՈՍ ԱՆՏԻՈՔԱՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ Ի ԲԱԶՄՈՒԹԻՒՆ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ, ՈՐՔ ԵԿԻՆ ՄԻԱՍԻՆ ՏՕՆԵԼ ԶՕՐ ԿԱՏԱՐՄԱՆ ՆՈՐԱ, ՈՐ Է ՅԱՄՍԵԱՆ ՓԵՏՐՈՒԱՐԻ ԺԴ.

Ընդ ամենայն ուրեք ծաղկազարդեալս զուարճացուցանեմ զանձն 'իմ, և զամենայն քաղաքս աստ եկեալ տեսանեմ, և ոչ ունիմ եթէ զո՞վ երանեմ յառաջագոյն ; զսուրբն Մելիտոս. որ այսքան և այսչափ զկնի մահուան իւրոյ վայելէ պատուոյ, եթէ զսէրդ ձեր որ այսչափ զկնի վախճանին նորա յաղագս հովուապետին ձերոյ ցուցանէք բարեկամութիւն : Երանի նմա իսկ, որ այդքան զօրացաւ թողուլ առ ձեզ ամենեսեան սէր գթութեան. երանելի էք և դուք, զի ընկալայք այդպիսի սիրով զանուամբն նորա, և անխոնջ պահելով մնացիք առ նա : Երանելի ահաւասիկ նմա իսկ հինգ ամ. անցեալ է յորմէ հետէ առ իւր փափագելին Յիսուս երթեալ գնաց հայրապետն ձեր, և իբրև թէ երէկ կամ եռանդ զնա տեսեալ էք մնացեալ կենդանի, այնպէս ջերմեռանդն գթալի սիրով ընդառաջեցիք նմա :

Առաւել այսորիկ ցանկալի նա իսկ, զի այսպիսի ծնաւ որդիս. անձկալի էք և դուք, զի այնպիսի ժառանգեցիք հայր : Ազնուական է արմատն և սքանչելի. բայց և պտուղն արժանի է արմատոյն : Եւ զոր օրինակ արմատ ծառոյ ծածկեալ 'ի ծոց երկրի՝ ինքն ոչ երևի արմատն, իսկ 'ի ձեռն պտղոյն ցուցանէ զքաջաբերութիւն զօրութեան իւրոյ, այնպէս օրինակ և երանելին Մելիտոս 'ի պահարանի յայսմիկ ծածկեալ կայ. նա ինքն մեզ մարմնական աչաց ոչ երևի ; իսկ 'ի ձեռն ձեր զպտուղն ցուցանէ և զզօրութիւն շնորհաց իւրոց : Ուստի և մեք լռեմք, բաւական է միայն. տեսանել այս՝ զի առաւելագէս և առածառագոյն զոչէ քան զխող զջերմագոյն ձեր ջան և ըղփոյթող զեռանդեամբ և զսիրոյն Մելիտոսի զորդեսիրութիւնն :

Ո՛չ է այնպէս բորբոքէ զմիտս ձեր ջերմութիւն սիրոյ նորա առ տենչանս նորա, որպէս զի 'ի դոյզն և 'ի սոսկ անուանն ջերմանայք և յարուցեալ լինիք յիշելով զանունն

նորա։ Սակս այսորիկ և ես այժմ ոչ վայրապար, այլ յարմարագոյն և ձեպեալ և յաճախապէս զանունդ զայդ 'ի բանս ճառից իմոց յարմարեմ. և զոր օրինակ որ հիւսէ պսակ ոսկեղէն, և ապա 'ի ներքս շարէ մարգարիտ և ականս պատուականս, և նոքօք պայծառագոյն առնէ զպսակն, սոյնպէս և ես իսկ զգովասանութեան պսակն հիւսեմ երանելւոյ գլխոյն այսօր, և իբրև պատուական մարգարիտ իմն և ակն մեծագին զանուն նորա յաճախապէս 'ի բանս իմ երկուեցուցանեմ, ամէն ունելով զի տենչալի և պայծառագոյն կազմեցից զպսակ նորա զգովասանութիւնս։ Զի այսպէս օրէնք են սիրողաց և այսպէս է սովորութիւն, մինչ զի և սակաւ անուանմանն զգիրկս արկանեն ցանկացողքն և ջեռեալ լինին առ անուանն, որպէս և դուք իսկ բաղձացայք 'ի վերայ անուան երանելւոյս այս։

Ի սկզբանէ յորժամ մտեալ 'ի քաղաքս ընդունեցայք, իւրաքանչիւր ոք որդւոյ իւրում զանուն նորա կոչէր, և 'ի ձեռն անուանն իւրաքանչիւր ոք զնա 'ի տուն իւր մտանել վարկանէր[1], և մարք մանկանցն զանց առնէին զանուամբք հարց իւրեանց, զհաւուց և զնախնեաց, և զանուն զերանելւոյն Մելիտոսի դնէին ծննդոց իւրեանց որդեկաց։ Քանզի յաղթէր բնութեանն երկիւղածութեանն բաղձանք, և նորածնելոցն այնուհետև ոչ եթէ զբնական[2] գորով գթոյ միայն ունէին առ նոսա ծնողքն, այլ և վասն այնր անուանն գթոյ փափագելի էր բնականայն։ Քանզի զանունն զայն ազգի զարդ և տանց հաստատութիւն և կոչեցելոց փրկութիւն և փափագանացն սփոփումն համարէին։ Զոր օրինակ բազումք ոյք 'ի խաւարի նստիցին և լուցեալ ջահ 'ի մէջ ածիցեն, և բազումքն լուցեալ զպատրոյս իւրեանց և տանի իւրաքանչիւր ոք 'ի տուն իւր, սոյնպէս և անուանն այն իբրև գլխոյ իմն 'ի նմանէ անկեալ 'ի քաղաքս յայս՝ իւրաքանչիւր ոք որպէս ջահ վառեալ զանուն երանելւոյն տանէր 'ի տուն իւր, և իբրև զգանձանակ բարեպատեհ բարութեանց այնպէս զանուանակցութիւն դնէին յանձինս իւրեանց։ Այս էր երկիւղածութեան վարդապետութիւն եղեալ, յաճախապէս հարկաւորեալ յա-

1 Միւսն վարկանէր։

2 Այսպէս յետինքն օրինակն։

նուանէն յայնմանէ՝ յիշելով և զսուրբն զայն ունելով
'ի մտի. քանզի յանագորոյն ախտից փախուցանող և
պատսպարան բարի խորհրդոց ունելով զանունն: Նոյն-
քան բազում եղև այս, մինչ զի ամենայն ուրեք և
'ի մուտս և 'ի փողոցս և յագարակս և 'ի Ճանապարհս,
զի ամենայն ուստեք շրջահնչեալ ունիցիք զանուն սրբոյն:
Նա ոչ եթէ միայն առ անունն կրեցիք զայս, այլ և
առ օրինակ և նշան մարմնոյ նորա. զի զոր վասն անուանն
արարէք, զնոյն և վասն պատկերի նորա արարէք: Բան-
զի 'ի ցուպս և 'ի մատանիս և 'ի սեամս և յորմս առա-
գաստի և 'ի սենեակս և ամենայն ուրեք զսուրբ պատ-
կեր նորա նկարեցին բազումք. որպէս զի ոչ միայն լսել
անուան սրբոյն, այլ և տեսութիւնն տայր տեսանել
զօրինակ մարմնոյ նորա, և կրկին իմն ունէին սփոփումն
յաղագս գնալոյ նորա և հեռանալոյ 'ի նոցանէ: Բան-
զի 'ի մտանելն նորա 'ի քաղաքս, ելին արտաքս թշնա-
միքն Ճշմարտութեան՝ վաղվաղակի հալածելով զնա. և
ած թոյլ ետ, ըստ որում և զառաքինութիւն նորա և
զարիութիւնն ձեզ ցուցանել կամէր: Բանզի եմուտ
'ի քաղաքս զոր օրինակ և Մովսէս յԵգիպտոս. 'ի հեր-
ձուածոց մոլորութենէ ազատեաց զքաղաքս, և զփտեալ
անդամն որ էր անբժշկելի՝ 'ի յայլ մարմնոյն հատեալ
'ի բաց ընկէց, և անարատ ամբողջ զառողջութիւն 'ի
վերայ եած բազմութեան ժողովրդեան եկեղեցեացս:

Իսկ թշնամիք Ճշմարտութեանն ուղղութեանն ոչ
ներեցին. զթագաւորն յայնժամ շարժեցին, և արտա-
քոյ հանին զնա 'ի քաղաքէս. ակն ունէին եթէ յաղ-
թեցաք Ճշմարտութեանն, և եթէ յետս դարձուցաք
զեղեալ ուղղութիւնսն: Նա եղև նոցա հակառակ այն
որում ակն ունէին. և առաւել երևեցաւ նախանձդ
ձեր, և նորայն պայծառացաւ և փայլատակեաց ցոյցք
վարդապետութեանն և իմաստութեանն: Նորայն զի և
ոչ այնպէս բովանդակ զերեսուն օր կարաց հաստատել
զձեզ և հիմնաւորել 'ի նախանձ հաւատոյ, և անդէն
զկնի այնորիկ բիւր հարուածս առեալ և անսասանելի
կացեալ 'ի վարդապետութիւնն յայն. իսկ ձեր ջերմու-
թիւնդ երևեցաւ, զի ոչ բովանդակ զերեսուն օրն ըն-
կալայք տուգապէս զսերմանս բանին զոր 'ի նմանէ ար-
կաւ առ ձեզ, և այնպէս 'ի խորս մտաց ձերոց հատէք

ակօսս, և ևս անդր առաքեցէք զարմատն, և այնուհե-
տև ոչ մի ինչ երկեայք 'ի վերայ եկելոց փորձանացն:

Արժան իսկ է և ոչ զայնու զանց առնել զոր յաղագս հալածանացն անցք անցին: Յորժամ իշխան քաղաքին զկառսն վարէր, և եմուտ 'ի մէջ փողոցին նստեալ 'ի վերայ, և եկեալ նստեալ նա մօտ 'ի սուրբն, և իբրև զտաղատարափս քարինքն գային 'ի վերայ գլխոյ իշխանին, զի ոչ ներէին զորոշէլն 'ի քաղաքէս, այլ կամէին զի 'ի կենացս յայսցանէ 'ի բաց անկանիցին քան եթէ 'ի վարդապետէն որոշեալ լինիցին, զինչ տպա յայնժամ արար երանելին: Տեսանելով զձգումն քարանցն, 'ի վերայ արկեալ զձորձս իւր և թագուցանէր զգլուխ իշխանին 'ի հարուածոց քարանցն. ըստ որում 'ի միասին ընդ հանդարտութիւնն առաւել ամաչէին թշնամիքն, և զաշակերտսն իւր խրատէր և ուսուցանէր թէ յաղագս զրկողաց անյիշաչար լինել պարտ է. և ոչ եթէ նոցա միայն չար առնել ոչ է պարտ, բայց և այլ վտանգից եկելոց 'ի վերայ նոցա պահապան լինել դէպ և պատշաճ է և 'ի բաց հարկանել հանդերձ բազում ճեպով:

Ո՞վ որ ոչ սոսկացաւ յայնժամ որ զքաղաքին տեսանէին զխռովական զգութն, և զվարդապետին զծայրական իմաստութիւնն և զհանդարտութիւնն և զհեզութիւնն, և ոչ զարմանայր. քանզի և էր իսկ զարմանալի զինչ յայնժամ անցք անցին: Հովիւն հալածեցաւ, և ոչխարքն ոչ ցրուեցան. նաւուղիղն արտաքսեցաւ 'ի նաւէն, և կուրն ոչ ընկղմեցաւ. մշակն հալածեցաւ յայգւոյն, և այգին առաւելապէս պտղաբերէր: Վասն զի որ ընդ միմեանս կապեալ լինէին սիրով և խաղաղեալք, ոչ 'ի վերայ եկելումն փորձանաց և ոչ 'ի վերայ յառնել վտանգից և ոչ յերկարութիւն ճանապարհի և ոչ բազմութիւն ամաց և ոչ այլ ինչ կարաց շարժել զձեզ 'ի միաւորութենէ երանելի հօտապետին: Ո ի նա վասն այնր հալածեցաւ 'ի քաղաքէս, զի հեռացի յիւրոց որդեկացն. իսկ նա դէպ եղև լինել հակառակ այդորիկ: Մանաւանդ առաւել պնդակազմեաց զձեզ 'ի պնդութիւն սիրոյ, և զամենայն քաղաքս առեալ ընդ ինքեան գնաց 'ի Հայս:

Արդ մարմին նորա 'ի գաւառն յայն հաստատէր, և միտք և խորհուրդք նորա որպէս թևօք իմիք թեթևա-

ցեալ չնորհօք հոգւոյն սրբոյ, համապատ և յարաժամ առ ձեզ անդի առնոյր, և զամենայն ժողովս զայս մերաբերէք 'ի գործով գԹոյ աղեացն իւրոց։ Այսու յայնժամ և դուք հանդիպեցայք. Նստելով ձեզ առ, և 'ի քաղաքիս շրջէիք, և սիրով հոգւոյն զօրհանապազ 'ի հայաստան Թուուցեալ լինէիք, և զսուրբ զկերպարանսն տեսանելով, և զքաղցրաձայն և զերանելի զձայնն լսելով այնպէս զաստուածայինս անդրէն։ Այսմ այսր պատճառի Թող. եւ ած վաղվաղակի հալածական լինել 'ի քաղաքէս յայսմանէ, որպէս յառաջագոյն ասացի, զի զձեր հաստատուն հաւատս ցուցցէ Թշնամեացն որք մարտընչէին ընդ ձեզ, և զնորա զհանճարեղ զվարդապետուԹիւնն. և այս յայտ անդուստ եղև։

Նաև զինչ առաջին հալածելոյն անդրէն դարձեալ, ոչ եԹէ երեսուն օր միայն, բայց և ամիսք և ամի և երկուս և այլ աւելի ևս շրջեցաւ։ Վասնզի շատ և բազմական եռանք ցուցք յաղագս հաւատոց հաստատուԹեան, եւ ձեզ ած առանց երկիւղի վայելել անդրէն հարցն ձերով. քանզի մեծապէս փափկուԹիւն է վայելել այն սուրբ և հրաշափառ կերպարանացն։ Որ ոչ միայն ուսուցանելովն և պատմելով, բայց և տեսուԹիւն բազմական էր զամենայն առաքինուԹիւնս վարդապետուԹեան ածել 'ի յոգիս տեսողացն։ Այլ 'ի գալն նորա ամենայն քաղաքս 'ի Ճանապարհն դիմէին. ոմանք մերձ գային և յաւէտ մերձենային և զձեռսն համբուրէին և զձայնն լսէին, և այլքն 'ի բազմուԹեանցն արգելեալ լինէին, միայն հեռագոյն տեսանէին զնա, և իբրև Թէ բազմական 'ի տեսուԹենէն ընկալեալ էին զօրհնուԹիւնս, և զայն ոչ սուղ ինչ համարէին քան զայնոսիկ որ մերձ էին նմա, և այնպէս հաւատարմացեալ լի ուրախուԹեամբ դառնային 'ի քաղաքս։

Այլ որպէս յաղագս առաքելոցն եղև, նոյնպէս և յայնժամ եղև։ Որ օրինակ 'ի ժամանակս առաքելոցն այնոքիկ որ ոչ կարէին մերձ լինել նոցա, 'ի ստուերս նոցա տարածէին զհիւանդս, զի Թէպէտ և հեռագոյն մերձենային՝ զնոյն զշնորհս ձգէին յանձինս իւրեանց, զնոյն որպէս նոքա որ 'ի մարմինս նոցա մերձենային և այնպէս դառնային առողջացեալ, նոյնպէս և յայնժամ որք ոչ կարէին առաջի մատչել, իբրև զփառս հոգևորս առա-

քելով 'ի սուրբ գագաթանէն յախմանէ և առ այնոսիկ որք հեռագոյնքն էին, այնպէս լինէր նոցա իմացութի̃, որպէս զի ամենայն օրհնութեամբ 'ի տեսութենէն միայն լցեալ այնպէս երթային։

Իսկ յորժամ կամ եղև ամենեցունցն ա̃յ կոչել զնա այսուհետև 'ի մերձակայ կենացս և դասել զնա 'ի դասս հրեշտակաց։ ոչ վայրապար ինչ եղև, այլ նախ կոչէր զնա գիրն և նամակ Թագաւորին, զի ա̃ծ շարժէր զԹագաւորն։ Կոչեաց զնա ոչ 'ի մօտաւորս կամ 'ի մերձաւոր կայս ուրեք, այլ 'ի Թրակացւոցն աշխարհի, զի և գաղատացիք և բիւթանացիք և կիլիկեցիք և կապպադովկացիք և որք 'ի Թրակացւոն մերձ բնակեալ էին ուսցին զբարութիւնս մեր. զի յամենայն երկրէ եպիսկոպոսունք իբրև զնախատիպ պատկեր տեսանէին զբարութիւն նորա, և օրինակս հաստատունս ըստ առաջին սպասաւորութեանն 'ի նմանէ առնուին, նա և կարգս կանոնաց որպէս պարտ է տնօրինել եկեղեցեաց, և օգնականութի̃ ունելով զնոյայն հաստատուն և ստուգապէս։

Նա արդ վասն մեծ ահաւոր քաղաքին և վասն նախագահութեան Թագաւորին բազումք յոլով ուստեք 'ի տիեզերաց անդր հեղեալ գային յայնժամ։ Իսկ եկեղեցեաց եպիսկոպոսունք որք երկար ժամանակաւ 'ի ծփանաց 'ի բաց ելեալ էին յիշխանութե̃ եկեղեցեաց, առին խաղաղութիւն և հանդարտութիւն. քանզի նամակ Թագաւորին անդ կոչէր զամենեսին։ Յայնժամ այսուհետև սա անդ նախ գոլով երթեալ։ Նա զոր օրինակ յաղագս երից մանկանցն եղև, յորժամ հանդերձեալ էին վերաբերող լինել ամենայն տիեզերաց և առնուլ պսակս, շիջուցանել զզօրութիւն հրոյ հնոցին, կոխել զհպարտութի̃ բռնաւորին, և զամենայն զկերպս ամբարշտութեան յանդիմանել, յայնժամ 'ի տիեզերաց յամենայնէ Թատերս նստեալ նոցա. զի յամենայն երկրէ սատրապք և զօրագլուխք և զօրապետք և գաւառապետք կոչեցեալ էին վասն այլ պատճառանաց, և եղեն տեսողք նահատակացն այնոցիկ։ Այնպէս և յայնժամ դէպ եղև լինել, որով պայծառագոյն լինէր տեսիլ երանելւոյն. վասն այլ պատճառանաց կոչեցան եպիսկոպոսունք, որք զամենայն եկեղեցիս տիեզերաց տնտեսէին, և 'ի գալն նոցա տեսին զսուրբն զայն։ Իսկ յոր-

բորբոքի կարօտն, և փափագումն ուժգին լինի յոգին նոցա. իսկ իբրև ժամանակ մի անցանէ, թուլանայ և ընդ նմին փարատի ուժգին վիշտն և անձուկ յիշատակին: Իսկ այսր երանելւոյ այսմ ընդդէմ եղև. կարի յոյժ տխրութիւնն 'ի բաց հալածեցաւ, բայց յիշատակն ոչ նուազեաց ընդ տխրութեանն, այլ կարի յոյժ աճէ օր ըստ օրէ: Եւ վկայք դուք էք որ զկնի այսքան ժամանակի զոր օրինակ մեղու շուրջ զխորսխովն թռուցեալ պատի, նոյնպէս և դուք շուրջանակի պատեցայք զմարմնով երանելւոյն Մելիտոսի: Եւ պատճառ՝ ոչ եթէ բնական գութն որ առ նա էր, այլ իրաւունք ուղիղ խորհըրդոյ նորա. վասն այսորիկ ոչ չիջաւ մահուանքն և նուազեաց ժամանակօք, այլ աճէ և 'ի մեծագոյնս առաւելու, ոչ եթէ ձեզ տեսողացդ միայն, այլ և այնոցիկ որ ոչ են տեսեալ: Եւ այս է զքանչելի, զի որք կըրսերք էին 'ի կենդանութեան նորա և անգէտք տեսութեան նորա, նոքա առաւել բորբոքէին 'ի տենչանս փափագման նորա: Դուք իսկ երկիցունք առաւելուք 'ի վերայ այնոցիկ որ ոչ տեսեալ էին զնա, այսու պատճառաւ զի ընդ նմա շրջեցայք և զբանս նորա գքաղցունս լուայք և վայելեցիք 'ի նորա միաւորութենն: Իսկ այնք որ ոչ էին տեսեալ զնա, առաւելուն քան զձեզ. զի քան զձեզ որ տեսեալդ էք, ոչ նուազ վասն նորա երևեցուցին զգութ և զտենչանս:

Արդ աղօթեսցուք համօրէն մեք ամենեքեան, իշխանք և իշխեցեալք, արք և կանայք, ծերք և տղայք, ծառայք և ազատք, և զերանելին զՄելիտոս հաղորդս արասցուք աղօթից մերոց. քանզի այժմ առաւել գոյ նմա համարձակութիւն առ տէր և ևս ջերմաջերմ գութ զոր ունի առ մեզ, զի արժանի արասցէ զմեզ զամենեսեան. զի որպէս աստ մերձ եմք 'ի մարմին նորա, նոյնպէս և անդ կարող լիցուք լինել մերձ 'ի յաւիտենական յարկս նորա, և հասանել բարութեանցն խոստացելոց մեզ որ կայ և մնայ: Որոց լիցի մեզ ամենեցուն արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր և սուրբ հոգւոյն վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Digitized by Google

ՆԵՐԲՈՂԵԱՆ ԱՍԱՑԵԱԼ Ի ՍՈՒՐԲՆ ԻԳՆԱՏԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍՆ ԱՆՏԻՈՔԱՅ, ՈՐ ՎԿԱՅԵԱՑ Ի ՀՌՈՄ ՔԱՂԱՔԻ, ԵՒ ԶԿՆԻ ՎԿԱՅՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՅՆ ՆՇԽԱՐՔ ՆՈՐԻՆ ՇՆՈՐՀԵՑԱՒ ԱՆՏԻՈՔԱՑԻՈՑ ՔԱՂԱՔԻՆ

Պատուասէր կոչնատեարքն ստէպ բազմախորտիկս և զանազանս պատրաստեն սեղանս, որպէս զի զինքեանց առատաձեռս ցուցցեն, և այլ ևս վասն զի պարկեշտութեամբ կազմեալ սեղանոյն 'ի բազմակատար պէտս ըզ-հիւրասիրութիւնն սրտիւքն երևեցուցանեն։ Նոյնպէս և շնորհք հոգւոյն սրբոյ զինքեան զօրութիւնն ցուցանելով պարգևէ մեզ, և բազում ուրախութիւնս վասն սիրողացն այս ուսուցանելով յայտնէ մեզ, և ցուցանէ զինքեանց զմարտիրոսաց ջանս առաջի մեր սեղան։

Նախ երիտասարդ աղջիկն այն կոյս սուրբ և երանուհի վկայն Պեղագիա բազմահիւրասիրութեամբն կերակրեաց զմեզ. և դարձեալ այսօր երանելիս այս և առաքելական վկայս Իգնատիոս զնորին տօնս ընկալաւ։ Եւ այլ և այլ են ըստ պատկերին նկարագրի, բայց մի է սեղանն. ըստ մարտին փոփոխեալ են 'ի միմեանց, բայց մի է պսակն. պէսպէս են պատերազմունքն, բայց մի է բրաբիոնն։

Յառաջքին պատերազմունս վասն զի մարմնական էր որ առնու զխոցուածս սուսերի, յիրաւի արանց միայն պատշաճեցաւ. իսկ այս հոգևոր պատերազմս ոչ է այսպէս, այլ հասարակաց ամենեցուն պատշաճեցաւ, և կանանցի բնութեան բացաւ ասպարէզս, և համօրէն ազգիս մերոյ եղաւ օրէնս և հրապարակս։ Ոչ արանց միայն 'ի սմին պնդակազմեալ, զի մի երբէք որ զանկար բնութիւն կնոջ անուցին՝ փախիցեն, և ըստ պարագրեալ գեղջս պատկերաց պատճառիցեն 'ի մահու։ Վասն որոյ ոչ միայն կանայք քաջալերեցին, զի մի զարանց ազգս յամօթ արասցեն, այլ յայտնանէ յերկոցունց բազումք են որք քարոզեցան առ մեզ պսակեալք. և զի ուսանիցես եթէ ըստ այսմ գործոյ 'ի Քրիստոս Յիսուս ոչ արուի և ոչ իգի բնութիւն և ոչ տկարութիւն մարմնոյ և ոչ չափ հասակի և ոչ այլ ինչ յայտնանէ կարող է ար-

Digitized by Google

գել լինել այնոցիկ որք բարեպաշտութեամբ ընթանան 'ի Ճանապարհս բարի, եթէ յօժարութեամբ և արիաբար և իմաստնական արթնութեամբ և ահիւ ջերմութեամբ և հրացեալ արմատով հոգիք մեր հաստատեալք են: Վասն որոյ աղջկունք և կանայք, արք և երիտասարդք, ծերք և տղայք, ծառայք և ազատք և ամենայն արժանաւորութիւնք և ամենայն հասակք և համօրէն բնութիւնս մեր յայսմ պատերազմի պնդակազմեալ յայնցանէ ոչ երբէք յաղթահարեցան, այլ արիաբար մարտեան և յաղթեցին:

Արդ ժամ է այսմ առ 'ի պատմել զերանելւոյս այսորիկ զուղղութիւնն. այլ խռովեալ միտք իմ և զարհուրեալ յոյժ առ 'ի գիտել զինչ ասացից՝ զառաջինն թէ զերկրորդն թէ զերրորդն, այսչափ բխեալ մեզ բանիւք բազմութիւն բարեբանութեան սուրբս այս ըստ օրինակի գետոց գնացից. վասն այսորիկ տոչորիմ նմանող լինել առ 'ի պատմել: Որ 'ի բուրաստանս ծաղկոցաց երթիցէ և տեսանէ անդ զբազմութիւն վարդից, ևս առաւել զմանուշակի և զշուշանի զանչափութիւն և զայլոց ծաղկանց զբազմութիւն պէսպէս և բազմատեսակ, տկարանայ 'ի կարծիս մտաց ընտրութեան ո՛ր առաջինն իցէ կամ ո՛ր երկրորդն. իւրաքանչիւր գեղեցկութիւն ծաղկանցն ծածկէ զաչացն տեսութիւն: Նոյնպէս և մեք 'ի հոգևորական յայս դրախտ Իգնատիոսի ուղղութեանցս մտեալ՝ ոչ եթէ 'ի ծաղկանց բազմութիւն հայել, այլ զպտուղս հոգւոյն սրբոյ պէսպէս և բազմադիմի տեսանեմք 'ի հոգի սորա, ուստի զարհուրեալք ոչ լինիմք հասու թէ ո՛ր յառաջագոյն դիցուք զմիտս զիւրաքանչիւր տեսութեան բանալ զկերպ և նայել յիւրաքանչիւրոցն վայելչութիւնս, այլ յափշտակէ նախ զտեսութիւնս աչաց մերոց հոգւոյս:

Թուի ինձ առաջակաց առ 'ի մէնջ եկեղեցիս, յորում արիաբար այսպիսի ստոյգ օրինադրութեամբ հաստատեաց կարգս, զայսոսիկ ասաց: Որպէս և Քրիստոս յառաջ կամաւ իւրով հրամայեաց զմեծագոյն սահմանս և զկարգ վերատեսչութեան, այսպէս զբարի արարչին հրամանս սա ինքն քահանայ վկայս՝ իւրով գործով եցոյց մեզ: Եւ զՔրիստոսի ասացեալն լուեալ՝ եթէ “ Հովիւ քաջ զանձն իւր դնէ 'ի վերայ ոչխարաց

խորոց», տուրքս այս քաղցրանալապէս զանձն իւր եդ վասն հօտից իւրոց, և զօրութեամբ նմանակից եղև առաքելոցն, հարազատ դասաւորութեամբ ըմբռնեաց զհոգևորական աթոռն: Արդ զի շքեղեցաւ ընդ նոսա յամենայն տեղիս, և անպատմելի և պատմելի հետոց նոցա հաղորդ եղև, յիրաւի ասեմք ունել զնոցին վարսն և լեալ նոցին փառացն արժանի: Ահա դարձեալ եհաս ժամանակն խնդրել զզօրութիւն սրբոյս, և զանձն որ մերձ է առ մեզ և վերատեսուչ ամենայնի, և ջերմեռանդ զաստուածայինն հարցմունս տեսանեմք, և որպէս տեսանելի պատուեսցուք զանտեսանելին վկայս: Իսկ յետ այսպիսի կարգաց հեշտաւ զմարմինն իւր 'ի բաց դնելով, որպէս որ զհանդերձ զի մերկանայցէ:

Արդ զինչ յառաջագոյն ասասցուք, զառաքելականն զվերակացուութիւնն որ քարոզեաց և եցոյց յամենայնի; եթէ զմերձաւոր կենացս զարհամարհութիւնն, եթէ զստուգութիւն առաքինութեանն և զոր անօրէնութեամբ առաջնորդեաց եկեղեցեաց: Ո՞ր յառաջ օրհնաբանեսցուք, զվկայութեանն հանդէս, եթէ զառաքելութեանն, եթէ զեպիսկոպոսութեանն. քանզի երրորդ հիւսեալ պսակս շնորհիւ հոգւոյն սրբոյ և այսպէս կապեցաւ 'ի նորին գլուխն, մանաւանդ և բազմահիւսակս: Ոչ եթէ զպսակս զայսոսիկ զիւրաքանչիւրն ստուգութեամբ զննեսցէ ոք և շօշափեսցէ, զատանէ անդ և այլ պսակս բխեալ 'ի մէջ:

Արդ եթէ կամիցիք, յառաջագոյն զեպիսկոպոսութեանն կշռեմք բանիւ յառաջ բերցուք, որ թուի թէ մի է պսակն: Արդ այսուհետև քննեսցուք զբանս, և տեսանիցէք աստ երկուս և երիս և առաւել ևս յայսմիկ լինել մեզ խնացումն շնորհաց: Ոչ եթէ միայն այսչափ առաջնորդութեան արժանի եղեալ սուրբ և զարմանալի այրս այս, այլ և 'ի սրբոցն յայնցանէ յայս ընկիզլն ձեռնարկէր, և ձեռք երանելի առաքելոցն 'ի սուրբ գլուխ սորա մերձեալ էին. որ չէ փոքր բարեբանութե բանս այս, բայց առաւել 'ի վերուստ հանդիպեցաւ շնորհաց: Ոչ եթէ միայն տեղի ետ առատապէս յինքեան գալ շնորհաց հոգւոյն սրբոյ, այլ մանաւանդ մարդկային բնութեանս ըստ ամենայն առաքինութեան 'ի նոյն վըկայեալ: Իսկ թէ որպէս է՝ ես ասացից: Որ Տէրս գը-

բեալ երբեմն Պաւղոս․ յորժամ զՊաւղոս ասացից, և զՊետրոս ասեմ և զՅովհաննէս և զՅակոբոս և զա-մենայն դասս առաքելոցն։ Որպէս 'ի քնարի բազում լարք իցեն՝ բայց մի են ձայնակցութեամբ, սոյնպէս և դասք առաքելոցն ըստ նմանութեան պատկերաց բաժա-նեալ են 'ի միմեանց, բայց մի է վարդապետութիւնն, զի և մի իսկ է հնարագիտութիւն շնորհաց հոգւոյն սըր-բոյ որ եռացուցանէ զհոգիս սրբոցն․ վասն որոյ Պաւ-ղոս յայտնապէս ասէ․ "Եթէ ես և եթէ նոքա այս-պէս քարոզեցաք„։ Որպէս գրեաց առ Տիտոս և ե-ցոյց եթէ զի՛ ոք արասցէ եպիսկոպոս․ "Պարտ է, ասէ, եպիսկոպոսին անարատ լինել որպէս այ տնտեսի, մի յանդուգն, մի բարկացող, մի թշնամանող, մի հարկա-նող, մի զօշաքաղ․ այլ հիւրասէր, բարեսէր, ցած, ար-դար, սուրբ, ժուժկալ․ վերակացու լինել հաւատարիմ բանին վարդապետութեան, զի կարող իցէ և զայլս մը-խիթարել ողջամիտ վարդապետութեամբն և զհակա-ռակորդսն կշտամբել„։ Նա այսմ բանի և առ Տիմո-թէոս ասաց․ "Եթէ ոք Եպիսկոպոսութեան ցանկայ, բարիոք գործոյ ցանկայ․ պարտ է եպիսկոպոսին անա-րատ լինել, միոյ կնոջ այր, հեզ, ցած, պարկեշտ, հիւ-րասէր, ուսուցիչ, մի թշնամանող, մի հարկանող, այլ հանդարտ, մի կռուող, մի արծաթասէր„։ Տեսանես թէ որչափ ստուգութեամբ առաքինութիւնք խնդրին յեպիսկոպոսէ։ Որպէս կենդանագիր իմաստուն ազգի ազգի դեղօք վայելչապէս ընդ միմեանս խառնելով կազ-միցէ զգեղեցկութիւն արքայական պատկերի օրինակա-կենդանագրեալ և ամենայն ստուգութեամբ նմանա-կերպ յօրինեալ պատկեր և ամենեքեան յայնմ պատ-կերէ ստուգիւ զնմանն գրեն կենդանագրեալ 'ի նա-խատպէն, այսպէս և երանելին Պաւղոս իբրև զթագա-ւորական պատկեր գրէ և զնմանութիւն նորա պատրաս-տէ պէսպէս առաքինութեան դեղօք խառնեալ, նշանա-կեաց մեզ զկերպարան առաքինութեան և եպիսկոպո-սութեան, զի իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ յայնմ յա-ռաջին պատկեր առաքինութեան հայել՝ այնիւ ստու-գութեամբ զամենայն կրօնս յինքեանց հաստատեսցեն։

Ինձ այսպէս թուի եթէ զայս ամենայն երանելին Իգ-նատիոս ստուգութեամբ սիրեալ ունէր յանձին իւ-

Digitized by Google

րում անարատապէս անպակաս և անթերի, ոչ յանդուգն, ոչ բարկացող, ոչ թշնամանող, ոչ հարկանող, ոչ կռուող, անարծաթասէր, սուրբ, ժուժկալ, վերակացու ըստ բանին վարդապետութեան հաւատոյն, հեզ, ցած, պարկեշտ, հանդերձ այլ ա͞մ առաքինութեամբք զոր Պաւղոս ուսուցանէ։ Եւ ուստի յայտ լիցի այս ամենայն. յայնցանէ որ ասացաւ 'ի նոցունց, զի և նոքին իսկ էին որ ձեռնադրեցին. զի այսպէս խրատէին զայլսն և փորձելով առնէին զորս հանդերձեալն էին յայսմ յառաջադրութեան յաթոռս հանել։ Արդ եթէ ոչ էին տեսեալ զայս ամենայն առաքինութիւն 'ի սիրտ այսմ վկայի տնկեալ, ոչ էին յայսմ ձեռնարկութիւն սկսեալ. քանզի գիտելով ստուգապէս թէ որչափ կայր վտանգ որք դիւրաւ և ըստ հանդիպման զայնասիկ առնէին գալ 'ի ձեռնադրութիւն։ Եւ զայս յայտնեաց դարձեալ Պաւղոս առ Տիմոթէոս գրելով. «Ձեռն վաղվաղակի, ասէ, յումեք վերայ մի դնիցես և մի լինիցիս հաղորդ մեղաց օտարաց»։ Օ՜ ի՞նչ ասես, ով Պաւղոս. այլք մեղան, և ես լինիմ հաղորդ դատապարտութեան և տանջանաց։ Այո, ասէ, քանզի չարի զիշխանութիւն տայցես. որպէս ուրուք չարացեալ խռովութեամբ՝ պատճառ է որ 'ի ձեռին սուր սրեալ զի գործեսցէ զապականութիւն որ խռովեալն է՝ նա է պատճառ մահուն որ ըզսուրն ընձեռեաց, սոյնպէս մարդոյ որ չար է կենօք իւրովք, որ զայս իշխանութիւն նմա տացէ՝ զամենայն մեղաց զհուրն այնորիկ և զհամարձակութիւնն 'ի գլուխ իւր կուտեսցէ. զի զարմատն դիցէ յամենայն տեղիս, այսինքն պատճառ բուսանելոյն է որ տնկեացն։ Տեսանե՞ս թէ որպէս կրկին առ մեզ երևեցաւ պսակ եպիսկոպոսութեան, պայծառագոյն արարեալ սկիզբն և որք ձեռնադրեցին զսա յայս իշխանութիւն, զամենայն առաքինութիւն ցուցանելով վկայք եղեն։

Կամի՞ք զի և այլ առաքինութիւն յայտնեսցուք ձեզ՝ պսակ յայսմ 'ի սրբոյ բխեալ. քննեսցուք զժամանակն յորում նախ այսմ սկիզբն եղև։ Ոչ է նման այժմ սպասաւորել եկեղեցեաց և յայնմ ժամանակի, որպէս չէ նման յօրինուած և հրահանգ ճանապարհաց այժմ որպէս յառաջագոյնն. զի չէ պիտոյ դիւրել զդժուարութիւն ճանապարհին, հատանել զլերինս և զվէմս և

զարգելը ամենայն և պատրաստել 'ի բարի, և ոչ կարօտանալ հանդերձ բազում ճանապարհորդօք ճանապարհորդեալ ընդ գազանօք լցեալ տեղիս որք ոչ երբէք ընդունէին ճանապարհորդ։ Բայց այժմ շնորհօքն ա̃յ չէ ինչ մի դայթակղութիւն եպիսկոպոսաց, այլ խաղաղութիւն և օգնականութիւն յամենայն կողմանց, և համգիստ ընդունին ամենեքեան ըստ բանին բարեպաշտութեան որ տարածեալ է 'ի ծագս աշխարհի, և որք 'ի թագաւորութեան են՝ 'ի մէնջ ուսեալ զհաւատս՝ պահեն ստուգութեամբ։ Յայնմ ժամանակի չէր այսպէս. այլ ուր և տեսանէր ոք, յամենայնի պատերազմունս և մեքենայս և վտանգս. իշխանք և թագաւորք և ժողովուրդք, քաղաքք և ազգք, ծանօթականք և օտարք ըզհաւատացեալսն հալածել և նեղել խորհէին։ Եւ ոչ եթէ միայն այս էր վտանգ, այլ և որք զհաւատսն ունէին բազումք որք 'ի տկարութիւնս անկեալ էին՝ խընդրէին զգթութիւն. և բազումք թէ և կանգուն էին, ոչ էր այլ ուստեք խնամոց։ Իսկ ըստ արտաքին պատերազմաց ոչ պակասէր տրտմութիւն վարդապետաց, այլ մանաւանդ յաւելոյր բազում և առաւել. և որք էին յարտաքին պատերազմունս, բազում և առաւել փափագումն ունելով յինքեանս վասն յուսոյն և խոստման վարձուցն՝ և այնու մխիթարէին։ Վասն որոյ և առաքեալքն յորժամ դարձան յատենէն անտի, խնդային զի ապտակեցան 'ի նոցանէ. ըստ որում և Պաւղոս գոչելով ասէ. “Ուրախ եմ ընդ չարչարանս իմ և պարծիմ 'ի նեղութիւնս որ վասն Քրիստոսի„։ Եւ զի ինքեանց և եղբարցն վէրք ոչ տային թոյլ նոցա առնուլ հանգիստ, այլ որպէս վիմս ծանունս 'ի գլուխս անձանց նոցա կապեալ ստէպ 'ի դանդաղանս արկանէին։ Լուր զխարդ ասէր Պաւղոս. “Ուրախ եմ 'ի չարչարանս„. և թէ “Ո՞ հիւանդանայ և ես ոչ հիւանդանամ„. և դարձեալ ասէ. “Երկնչիմ զի մի երբէք եկից և ոչ որպէս կամիմ գտից զձեզ, և ես գտանիմ ձեզ որպէս և դուք ոչ կամիցիք„. և թէ “Եկուն առնիցէ զիս ա̃ծ և սուգ առնուցում վասն բազմաց 'ի ձեզ մեղուցելոց և ոչ ապաշխարելոց 'ի վերայ պոռնկութեան և պղծութեան զոր գործեցին„։ Եւ զխարդ, արտասուօք հանապազ տեսանիս և միշտ ողբաս վասն ընտա-

նեաց և սոսկաս և դողաս վասն ամենայն հաւատացելոց։ Այս, ասէ։ Որպէս ընդ նաւապետս զարմանամք ոչ յորժամ ծովն լռեալ կայցէ և երևին կղզիք՝ կարիցէ զնաւեալսն ապրեցուցանել, այլ յորժամ խռովութիւնք լինի և բարձրանայ ալիք ծովուն, և նոցին 'ի խորն մտանելով և բազում մրրիկ պատեալ զնաւեալսն ներքոյ և արտաքոյ, և յայնժամ ուղղեսցէ զնաւն բազում պատրաստութեամբ. այսպէս և որ յայնժամ վերակացութեամբ ձեռնարկէին յեկեղեցիս, ընդ որ պարտ է սոսկալ և զարմանալ մեծաւ առաւելութեամբ քան որք այժմ սպասաւորեն, յորժամ բազում էր պատերազմ ներքոյ և արտաքոյ, յորժամ տակաւին մատաղ էր բոյս հաւատոյս իբր զնորածին տղայս, յորժամ շատ և բազմապատիկ խնդրիւր եկեղեցեաց բարեխնամութիւն, և իմաստնական հոգոց պիտոյ էր զհանդերձեալսն միայն դնել յոգիս իւրեանց։

Ձի և ճշմարտապէս ուսանիցիք թէ որչափ պսակաց էին արժանաւորք որք յայնժամ զեկեղեցիս վստահացեալ էին, և թէ որչափ ցաւս և վտանգս կայր առաջի և նոցա համբերութեամբ ընկալեալ զամենայն կային առաջոյ, ես զՔրիստոսին բերեմ վկայութիւն, և զոր 'ի մէնջ ասացեալս է՝ մի 'ի մէնջ համարել զայս, այլ զմիտս ձեր 'ի լուր այսոցիկ պնդեցէք։ Նստեա զբազումս առ ինքն գալով, 'ի ձեռն առաքելոցն կամեցաւ ցուցանել նոցա թէ քան զնոսա առաւել գործեցին մարգարէքն, ասէ. "Այլք վաստակեցին, և դուք 'ի վաստակս նոցա մտէք"։ Նա զի՞նչ առաւել գործեցին մարգարէքն քան զառաքեալսն։ Այլ քանզի կանխագոյն նոքա ըզբանս բարեպաշտութե՟ սերմանեցին, և զանձինս մարդկան որք առանց ուսման էին ամենեքին՝ 'ի ճշմարտութի՟ սովորեցուցին։ Վասն զի չէ հաւասար զկնի բազում վարդապետաց զհետ գալ և ուսուցանել, և յառաջագոյն արկանել զսերմ բանին։ Քանզի զխորհրդական իրս լսել և ընթեռնուլ բազում անգամ և սովորութիւն լինել՝ բազմաց առնել ընդունական, և ոչ տաղտկալի, այլ հեշտ թուեսցի. իսկ զառաջինն լսել՝ ըզմիտս լսողացն զարհուրեցուցանէ որք ունկն դնիցեն, և բազում վտանգս հասուցանէ ուսուցանողացն։ Այսպէս եղև յԱթէնս, 'ի մտանելն Պաւղոսի անդ՝ զարհուրե-

ցոյց զլատոյն, ըստ որում դարձուցեալ զբանն տրտնջէին և ասէին. «Օտար իւր բերես 'ի լսելիս մեր», զոր չէք մեր լուեալ: Բայց այժմ ոչ է բազում վաստակք և գործք, այլ եկեղեցիս առաջնորդութիւն պարգևէ, որք ապաստաւորեն նմա: Իմացջի՞ք թէ զիարդ կամ որպէս երկիցս և երիցս և բազմապատիկ էին ցաւք և նեղութիւնք և պատերազմունք և ահ ստէպ ստէպ գալով 'ի վերայ: Եւ չէ և չէ իսկ պարտ դադարեցուցանել զբանս դժուարանաց, կամ ասել զամենայն զոր համբերէին սուրբքն յայնժամ:

Յաւելից և զչորրորդ պսակն որ յեպիսկոպոսաց մեւաւ մեզ: Եւ զիա՞րդ. զի յիւրոց հայրենեաց կամեցաւ գալ առ մեզ: Քանզի ցուազին սրտիւ յեօթնհարիւր և յիննից առաջակաց եղեալ սմա, և ապա այսչափ քաղաքի ձեռն արկեալ և ժողովրդեան իշխել երբև քան բիւրուց՝ որչափ յառաքինութիւն և յիմաստութիւն ցանկ լինել այսպիսի առն: Որպէս և 'ի զինուորութիւնս թագաւորական գնդի ոչ բազմաց իցէ վերակացու լինել, այլ մանաւանդ որ յոյժ իմաստունքն են 'ի զօրապետաց՝ նոքա ձեռնարկեն զօրացն այնոցիկ, այսպէս է և 'ի քաղաքս տեսանել, որ վերագոյն են մօտք քան ըզբազումս 'ի մարդկանէ և հաճելի իշխանս՝ նոցա վստահասցեն քաղաքք: Արդ քան զայսոսիկ այլ բազմապատիկ էր քաղաքիս տեսչութիւն 'ի բանն այ̃, զոր և գործովք իւրեանց երևեցուցին: Որ ամենայն աշխարհաց վարդապետն էր Պետրոս, որ իշխանն էր բանալ և փակել զերկինս, որ զամենայն ասել և առնել հրաման էառ, նա բազում ժամանակս աստ կալ ախորժեաց. այս նմանեւ[1] փոխանակ ամ̃ աշխարհի է քաղաքս մեր:

Արդ ածեալ յիշեցի զՊետրոս, և հինգերորդ յայսմանէ տեսի պսակս հիւսեալս. այսինքն է զի զկնի նորա ընկալաւ սկիզբն այսմ աթոռոյ: Որպէս ոք զմեծ վէմ առցէ 'ի հիմանէ տան, և այլ վէմ փոխանակ նորա փութայ արկանել 'ի տեղւոջն, եթէ ոչ հանդերձեալ է շարժել զամենայն շինուածն և հնացեալ աւերի գործ և հին շինուածոյն, այսպէս և Պետրոս հանդերձեալ էր յայսմ կենաց հեռանալ՝ զայլ ոմն փոխանակ Պետ-

1 Իմա. որպէս արդարև :

լռելի վարդապետս 'ի փոխարկութիւն մատոյց շնորհքն, զի նման նմա կացցէ 'ի շինուածի նորա, և մի յետ փոխադրութեան հաւատոյն առաքելոյն՝ ցած և հնացեալ և փլեալ գտանիցի շինուածն։

Նախ հինգ առաջարք պակա, 'ի մեծութենէ յառաջաւորութեան, յիշխանութենէ ձեռնադրութեան, 'ի դժուարութենէ ժամանակին, 'ի չափու մեծի քաղաքիս և յառաքինութենէ որ տուաւ նմա վերատեսչութիւն։ Այս ամենայն հիւսեցան, զոր պարտ է վերջերորդ և եօթներորդ ասել և ևս առաւել. քան զայս. բայց զի մի զամենայն տանիս իբրև զնորին վարուց և վասն երջանկութեանն արիական ջանոց կատարեսցուք զբանս և անկցուք 'ի պատմելոյ զվկայութիւն սորա, թէր պայտ հետև 'ի սորին ձգնութիւնս ածցուք զբանս։

Ծաղածեցաւ երբեմն յայնմ ժամանակի պատերազմ չար ընդդէմ եկեղեցւոյ, և բռնաւորք չարաչարք ընդ երկիր սփռեցան, և 'ի մէջ յաղթութեանց ամենեսեան 'ի հրապարակաց և 'ի փողոցաց անտի զայնոսիկ որք 'ի խաչէութենէ անտի փոփոխեալք էին և 'ի Ճշմարտութիւն ընթացեալքն, որ 'ի դիւական պաշտամանցն 'ի զատ կացին և զՃշմարիտն Աստուած Ճանաչէին և որդւոյ նորա միածնի երկիր պագանէին, վասն որոյ ընդ համբերական պըատկս նոցա պարտ է զարմանալ և պատուել, ըստ որում տանջեալ լինէին և բիւր հալածանօք վէրս և հարուածս ընկալեալ ամենեքեան որք զհաւատս ուղղափառութեան խոստովանէին, մանաւանդ և ս բազմապատիկ որք առաջի եկեղեցւոյ կայինքմնոց հանուր բարկացեալ էին, չարագործ բռնաւորքն սոքա վասն նոցա կատարէր վտանգս, զայսոսիկ խորհելով. ակնկալեալ ասէ. եթէ զհովիւսն կառավարեալ ընկեցից, զհօտն դիւրաւ յաղթահարել կարողացայց։ Նա որ հաստատեալն զայս իմաստութիւն իմաստնոց, յամենայն 'ի գործս նոցա կամեցաւ ցուցանել թէ մարդիկ են և օգնականք խորուժ եկեղեցւոյ, այլ ինքն իսկ է որ յօրինէ զամենայն. ուստի որ ամենայն հօտից հօտապետ է, նոցա որք հաւատան Ճշմարտութեամբ յանուն նորա՝ տեղի ետ այսմ լինել, զի յորժամ յաղթութեանն զնոսա՝ 'ի բարեպաշտութենէ ոչ պակասէին և ոչ շիջանէին 'ի քաջութենէ բանին, մանաւանդ ևս առաւել յորդէին.

Digitized by Google

զի այսու ուսցի վասն գործոց նոցա ինքն իսկ բանսար-
կուն և որք այսու սպասաւորք էին ամենեքեան նորա՝
զի ոչ էր 'ի մարդկանէ առ 'ի մէնջ օգնականութիւնն,
այլ 'ի վերուստ յերկնից ունելով զարմատն և զպատ-
ճառն զառ 'ի մէնջ վարդապետութեան, և ինձ է որ
ընդ ամենեսեան շրջի և համօրէն զեկեղեցիս ժողովէ,
և ընդ ինձ մարտնչել ոչ իցէ երբէք յաղթել:

Իսկ չարագործ բանսարկուն ոչ միայն զայնսիկ յա-
րոյց, բայց և այլ չարիս նիւթեաց որ ոչ էր պակաս քան
զայս. ոչ եթէ 'ի քաղաքս միայն ուր հաստատեալ էին
եպիսկոպոսք՝ կափել զնոսա, այլ և այլովք իրօք պատե-
րազմ սկսեալ արար, զի որք իբրև յանապատի էին
պարկեշտութեամբ ամրացեալ, ամենայն ուստեք ժա-
մանակ գտաւ առնուլ փութացաւ զի այնու տկարագոյնս
գործեսցէ զատանելովն զոր բազում ջանիւք 'ի բարի
ճանապարհ ելեալ յուսացան սուրբքն, զոր և առ երա-
նելիս այս գործեաց յետ ամենահնար տանջանացն:

Զի յայսմ քաղաքէս մերմէ առ 'ի Հռոմ հրաւի-
րեաց զսա՝ հեռագոյն գործել նմա զընթացս ճանապար-
հին. խորհէր զի երկարութեամբ ճանապարհին և բազ-
մութեամբ աւուրցն զխմաստութիւն նորա 'ի բաց ըն-
կենուլ ակն ունէր. ոչ գիտէր եթէ ճանապարհակից
ունէր զՔրիստոս կցորդեալ յայնչափ ճանապարհոր-
դութիւնսն, որով մանաւանդ հզօրագոյն լինէր, և աս-
տուածային զօրութիւնքն որ էր ընդ նմա՝ առաւել պար-
գևէր զցուցումն սքանչելեացն. քանզի զեկեղեցիսն 'ի
ճանապարհի իւրում բազմապատիկ հաստատէր և ու-
սուցանէր: Այլ քաղաքք բազումք ընդ առաջ ելեալ առ
'ի յընդունել զճգնազգեացն, և բազում պատուովք և
անուշահոտ խնկօք պատուէին զմուտ սրբոյն և նովին
սիրով սրբոյն յուղարկաւորք լինէին, և մեծաւ ջանիւ
ցանկային աղօթից և աղաչանաց նորին արժանի լինել:
Այլ այսմ բարեաց ամենեքեան հանդիպեցան և ընկա-
լան զմխիթարութիւն շնորհաց, տեսեալ զսուրբն այն-
չափ յօժարութեամբ ընթանալով 'ի մահ. և յիրաւի
իսկ, քանզի փութայր 'ի կոչումն արքայութեանն երկ-
նից: Այլ այսու գործովք ուսանէին հանդերձ նորին
քաջալերական յօժարութեամբն և պայծառութեամբն,
զի ոչ էր մահ յոր ընթանայր, այլ հեռաւորութիւն

Digitized by Google

յաստեացս և փոխադրութիւն առ 'ի յերկինս ելա-
նել ։ Եւ զայս ուսուցանէր բանիւ յամենայն քաղաքս՝
ընդ որ անցանէր՝ հանդերձ գործովք ։

Պէտք եղև լինել այսմ և 'ի հրէաստանի յորժամ
զՊաւղոս կապեցին և առաքեցին 'ի Հռոմ. ակն ունէին
զնա 'ի մահ արձակել, իսկ նա որոց անդ բնակեալ էին
և Հրէիցն վարդապետ առաքեցաւ, նոյն իսկ և Իգնա-
տիոսի եղև ։ Ոչ եթէ որոց 'ի Հռոմ բնակեալ էին մի-
այն, այլ և որք էին 'ի քաղաքս բազումս շուրջանակի՝
երևեցաւ վարդապետ սքանչելի. ուսուցանէր արհամար-
հել զայս կենցաղս և ոչ մերձենալ 'ի տեսանելիս, ըզ-
հանդերձեալսն պատմէր և յերկինս փութացուցեալ
ձեպէր զամենեսեան ։ Զայս և առաւել քան զայս վասն
գործոց նոցին խրատէր և ուսուցանէր. որպէս զարե-
գակն յարևելից ելանէր և ընթանայր յարևմուտս, մա-
նաւանդ և քան զարեգակն պայծառագոյն էր սա ։ Զի
նա 'ի վերին օդս ընթանայ՝ զզգալեացս բերելով զլոյս,
իսկ Իգնատիոս 'ի խոնարհ փայլեաց իմանալի լուսով
վարդապետութեամբն, 'ի հոգիս բազմաց ծագեաց ըզ-
լոյս փառաց անվախճան կենացն ։ Արեգակն յարևմուտս
երթալով թագուցանէ զնշոյլս իւր և եկեսցէ գիշեր.
իսկ սուրբս այս յարևմտից կողմանս եկեալ առաւել
պայծառագոյն փայլմամբ ծագեցաւ. զի որք 'ի Ճանա-
պարհի հանդիպեցան նմա, բարեգործեցան մեծապէս.
և յորժամ 'ի քաղաքն եմուտ, զմեծագին իմաստութիւն
անդ ուսուցանելով հաստատեաց զնոսա ։ Վասն որոյ և
մեծ տեղի ետ անդ զկեանս իւր կատարել, զի 'ի սորին
կատարմանն վարդապետութիւն բարեպաշտութեանն
եղիցի ամենեցուն որոց բնակեալ էին 'ի Հռոմ քաղաքի ։

Դուք այժմ, ով Անտիոքացիք, ոչ միոյ ուսման ունելով
կարիս, զի ոչ ունիմք թերութի հաւատոյ, այլ յայնժամ
'ի Հռոմ բնակեալ էին բազմութի ամբարշտաց, որոց ա-
ռաւելապէս խնդրելի էր փրկութի ։ Սա որում և Պաւ-
ղոս և Պետրոս և որք զկնի նոցա ամենեքեան անդ կա-
տարեցան. վասն զի արեամբ կռոցն պղծեալ էր քա-
ղաքն, սոցին արեամբն սրբեցաւ ։ Եւ այլ ազգ ևս, զի
զյարութիւնն խաչեցելոյն Քրիստոսի հանդերձ գոր-
ծովք շնորհէին և ուսուցանէին և հաւանեցուցանէին
զբնակիչսն Հռոմայ՝ եթէ ոչ էին հանդերձ այսչափ փա-

փառաւորմամբ զկեանս զայս արհամարհեալ, եթէ ոչ էին
զմխիթարանս առեալ 'ի յայս համարձակութենէն, քանզի
առ Քրիստոս որ խաչեցաւն՝ հանդերձեալ էին ելանել
և զնա յերկինս տեսանել:

Մեծ էր այս և սքանչելի յաղթութեանն ցուցումն. զի
որ սպանանն Քրիստոս, այսչափ յետ մահուն իւրոյ ե-
ցոյց զզօրութիւնս, որպէս զի կենդանի մարդկան սպառ-
ցէ զհայրենիս զտունն զախորժելի և զազգականս և բնութիւն
զայս կեանս անտես առնել վասն առ 'ի նա խոստովա-
նութեանն. իսկ զպատուհաս և զնեղութիւնս զմահունս
և զմահ փոխանակ այսց կենաց բարի համարէին: Այս
ամենայն ոչ է վասն մեռելոյ, այլ յարուցելոյ և կեն-
դանւոյն սքանչելիքս այս: Եւ զինչ իցէ այսմ պատ-
ճառ, զի յորժամ կենդանին էր՝ ամենեքեան որք ընդ
նմա էին առաքեալքն՝ 'ի յահէ տկարացեալք եղեն, և
յորժամ մատնեցին զվարդապետեանն՝ փախեան ամենե-
քեան. իսկ յորժամ մեռաւն, ոչ միայն Պետրոս և
Պաւղոս, այլ և Իգնատիոս որ ոչ էր տեսեալ զնա և
ոչ էր լեալ ընդ նմա բնակցութեամբ, այսչափ վասն նո-
րա յօժարութիւն եցոյց, որ և զանձն իւր 'ի մահ մատ-
նեաց վասն նորա: Զայս իմանային ամենայն բնակիչքն
համակեցուցող՝ թէ մեծ եւս առաւել անդ վախճանել սրբոցն:
Այս է պատճառն և յայսմ օրինակէ վախճանելոյս փոր-
ձիմ և զայս ցուցանել:

Զի ոչ եթէ աշտարակաց պարսպացն 'ի խորխորատս ու-
րեք և ոչ յանկիւնս դատաւորութեան զդատապարտու-
թեան զվճիռ ընկալաւ զմահու, այլ 'ի մէջ քաղաքին:
Եւ տեսանէին զնա ամենեքեան և զօրինակ համբերու-
թեան վկայքն և զզարմանացն 'ի նա թողլոյ. զի յաչս ա-
մենայնի կացոյց զյաղթութիւն ընդդէմ սատանայի, և
զտեսանողսն զամենեսեան նախանձորդս առնէր իւրում
ջանուցն: Ոչ եթէ միայն մեռանէր երանելին այս, այլ
հանդերձ բազում փափագմամբ մեռանէր. ոչ եթէ որ-
պէս 'ի կենաց հանդերձեալ էր բաժանել, այլ թէ 'ի
կեանս առաւելագոյնս և հոգևորականս հրաւիրեալ
այսպէս համարձակութեամբ հայէր 'ի գազանսն:

Եւ ուստի յայտ եղև այս: Ի բանիցն յորժամ հան-
դերձեալ էր մեռանել՝ ասացաւ: Լուեալ էր զի այս օ-
րինակ տանջանաց նմա մնայր, "Եւ ժամանեաց զաղա-

նաց աղացեալ լինիմ,, ասէ ։ Սրի այսպէս էին առա-
ցեալքն, որք թէպէտ և չարչարէին բուռ առասցելոյն, մե-
ծաւ փափագմամբ ընդունէին զչարչարանսն. և այնպէս
ինչը յօժարութեան նոցա, յորժամ բազում և չարա-
չար լինէին եղեալքն, զոր այժմ և առ սա ինքն հա-
սեալ տեսաք ։ Ոչ է ոչ մահուամբ միայն, այլ և յօ-
ժարական յանձնառութեամբ փութայր նմանել առաքե-
լոցն. բայց զի արդարակեաց զնոսա՝ ուրախութեամբ ըն-
կալան, կամէր և սա ինքն նոցին ուրախութեամբ հա-
մեմատ լինել առաքելոցն. վասն որոյ խնդալով ասէր
համբերել զազանացն, և զղծնողակ և զխիստ ժանիս
նոցա ընդունիմ և քաղցր համարէր ։ Նա այս յիրաւի իսկ
զի բանաւորն 'ի զեհենն հրաւիրէր, իսկ բերանն այնմ
գազանաց յաղթայութիւնն առաքէին. քանզի նոքօք կա-
տարեաց զկեանս իւր, և այսպէս ել յերկինս և գտա-
ցաւ ընդ պսակեալսն ։

Եւ այս ամենայն տնօրէնութեամբն նոյ եղև, որ և
դարձեալ առ մեզ եկեր զկեանսն և 'ի քաղաքս բաժա-
նեաց զերջանիկ նորա զնշխարհսն ։ Նոքա զհաստումն արեանն
ընկալան, և դուք, ով անտիոքացիք, նորա սուրբ ոսկե-
րօքն պատուեցայք. դուք առէք հանգիստ վերատես-
չութեամբն, և նոքա հանգեան նահատակութեամբն.
տեսին նոքա զնա պատերազմեալ և յաղթեալ թշնա-
մեոյն և պսակեալ 'ի վերուստ, և դուք հանապազ զե-
րանելիս այս ընդ ձեզ ունիք. պակաս ամօք զնա ա̃ծ 'ի
ձէնջ հեռացոյց, և դարձեալ բազում փառօք շնորհեաց
զնա ձեզ ։ Նա որպէս ոմն փոխ ինչ առեալ յումեքէ և
դարձեալ բազում յաւելուածով հատուցէ, նոյնպէս
և ա̃ծ զպատուական գանձս զայս դոյզն ամօք 'ի ձէնջ
առեալ և քաղաքին այնմիկ ցուցանելով՝ դարձեալ զնա
հանդերձ բազում պայծառութեամբ պարգևեաց ձեզ ։
Առաքեցէք եպիսկոպոս, և ընկալայք վկայ. առաքեցէք
հանդերձ աղօթիւք, և ընկալայք հանդերձ պսակօք. ոչ
եթէ դուք երկոքեանդ միայն, այլ և ամենայն քաղաք
որ 'ի միջի ձերում ։ Ո խորդ և զօրհ օրհնական. քան-
զի գայլին և մերձենալին ամենեքեան բնակել և տեսա-
նել զնշխարս սրբոյն ։ Ով թէ որչափ պտղաբերեաց ըզ-
փափագումն ամենեցուն և զփոյթ, կամ որչափ ցնծալ
և որչափ գոհաբանութիւն յամենայն կողմանց մատու-

ցանել պատկերս այսմիկ ։ Որպէս[1] նահատակ քաջ 'ի մարտի յաղթեալ, նոյնպէս և զսուրբս զայս իւրաքանչիւր քաղաք 'ի Հռոմէ բարձեալ յուսոյ բերին մինչև 'ի քաղաքս յայս, և օրհնէին զա̃ծ նուագաւ և ծաղր առնէին զսատանայ որ յիւրում մարտին յաղթեցաւ ։ Իսկ յայնմհետէ մինչև ցայսօր զքաղաքս մեր մեծացոյց ․ զի որպէս գանձանակ որ հանապազ ամենայն աւուր լնու՝ ոչ ունի զպակասութիւն, այսպէս և երանելիս այս Իգնատիոս զօրս առ նա համարձակութեամբ զայլն օրհնիլ 'ի նմանէ ։

Իսկ մեք ոչ եթէ այսօր միայն, այլ զամենայն աւուրս առ սա ընթանամք և զպտուղս հոգևորս առնումք 'ի սմանէ[2] ։ Վասն որոյ աղաչեմք զձեզ, եղբարք, եթէ ոք 'ի տրտմութեան իցէ կամ 'ի հիւանդութեան կամ 'ի փորձութեան կամ յայլ ինչ երկրաւորական նեղութիւնս կամ 'ի մեղս դժուարինս, հանդերձ հաւատովք աստ եկեսցէ և զայնոսիկ զամենայն 'ի բաց դիցէ և տեսանիցէ զսուրբս զայս[3], որով հանդիպեսցի անշարժ բարութեանցն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր, որ է օրհնեալ յաւիտեանս ։

## Ի ՊԵՏՐՈՍ ԵՒ Ի ՀԵՂԻԱՍ

**Սակաւք են այսօր առ մեզ եկեալքս ․ և զի՞նչ արդեօք իցէ պատճառ ։ Յիշատակ վկայից կատարեմք ։ Այլ հեռաւորութիւն ճանապարհին 'ի պղերգութիւն էարկ ․ մանաւանդ եթէ ոչ հեռաւորութիւն ճանապարհին, այլ ծուլութիւն զնոսա խափանեաց ․ Զի զոր օրինակ զփոյթն և որոց զարթուցեալ են յօժարութիւնքն՝ ոչ ինչ կարէ խափանել, նոյնպէս և զյոյլս և զընկողմանեալս ամենայն ինչ կարէ խափանել ։ Վկայքն զիւրեանց զարիւնս յաղագս ճշմարտութեանն հեղին, դու և ո՞չ զդուզնաքեայ ճանապարհս արհամարհել կարես ։ Սոքա զգլուխն եղին յաղագս Քրիստոսի,**

1 Հատուածդ Որպէս . . . օրհնիլ 'ի նմանէ զեղչեալ է կիսով չափ ։

2 Պակասին տողք 14 ։

3 Պակասին տողք 25 ։

Digitized by Google

դու և ո՛չ արտաքոյ քաղաքիս հանդիպել ախորժես յաղագս տեառն։ Տէրն յաղագս քո մեռաւ, և դու յաղագս քո ինքեան դանդաղիս։ Յիշատակ վկայից, և դու պղերգանաս և ընկողմնեալ կաս։ Պարտ և արժան էր քեզ գալ և տեսանել զատանեայ պարտեալ և զվկայսն յաղթօղս և զնոյն փառաւորեալ և զեկեղեցի պսակեալ։

Այլ պատճառք իմն է նոցա. մեղաւոր եմ, ասէ, և ոչ կարեմ պատահել անդ։ Նոյն ինքն զայդ մեղաւոր ասես գոլ, դորին աղագաւ եկեսցես, զի մի արտաքս անկցիս յարդարութենէ։ Ո՞ք է 'ի մարդկանէ առանց մեղաց, ասա ինձ։ Վասն այդորիկ պատարագ և եկեղեցի, յաղագս դորին աղօթք և պահք. վասն զի յոլովք են վէրք անձինդ, և դեղքն այնոցիկ գտանին, և ըստ իւրաքանչիւր վիրաց անձին յարմարագոյն դեղ պատրաստեցաւ։ Ունիս եկեղեցի պատարագ կատարեալ, զպաղատանս հարցն, զհոգւոյն սրբոյ զվերակացութի՛ն, զվեկայիցն զյիշատակս, զժողովս սուրբս և զայլ ամենայն նոցին հաւասար, որք կարեն զքեզ 'ի մեղացն վերստին կոչել յարդարութիւն։ Ոչ պատահեցեր յաղօթս վըկայիցն, զո՞ր ունիցիս զթողութիւն ասա ինձ։ Ոչ ինչ 'ի դժնդակացն 'ի մէջ, և դու խափանիս յոր 'ի միաբանութենէ առ վկայս։

Բայց թերևս հոգք կենցաղականք զքեզ արգելուն։ Եւս մեծագոյն մեղադրութիւն. զփոքր ժամանակն ոչ ետուր 'ի փոխ այ, զի առնուիր զբովանդակ օրն։ Մեղաւոր եմ, ասէ, և ոչ կարեմ։ Վասն զի մեղաւոր ես, դորին աղագաւ մուտ 'ի ներքս։ Եթէ ո՛չ գիտես զի և նոքին իսկ որք սեղանոյն են սպասաւորք՝ ընդ մեղս են բևեռեալք. մարմին են զգեցեալ, և ընդ արեան շաղեալք, ոսկերօք կապեալք։ Եւ մեք իսկ որք յաթոռս նստիմք և վարդապետեմք, ընդ մեղս զանգեալ եմք. այլ ոչ յուսահատիմք յայ մարդասիրութենէն, և ոչ անմարդութիւն ինչ 'ի մեզ մերձեցուցանեմք. ամենեքեան մարդիկ եմք 'ի նոցունց տարերց ստեղծեալք, և ոչ հրաժարեմք 'ի վարդապետութենէն՝ 'ի խորս այ մարդասիրութեանն հայելով։ Եւ դուք մեղուցեալք, եթէ մտանէք, ոչ այնքան մեղադրութիւն, վասն զի ընդ վարդապետօք էք. մեք որքան առաւել եմք պատուօք, այնքան յաւէտ և մեղադրութեամբ. քանզի այլ է ուսո-



Digitized by Google

զինն մեղանչել, և այլ վարդապետին։ Այլ սակայն ոչ հրաժարեմք յայսմանէ, և ոչ պատճառանօք խոնարհութեան 'ի պղերգութիւն անկանիմք։

Այլ այս ըստ ա՟յ նախախնամութեանն եղև՝ նոցին իսկ քահանայիցն ընդ մեղօք անկանել։ Ուր, զիարդ վարդապետք և քահանայք եթէ ոչ մեղանչէին, և ոչ 'ի ներքոյ անկեալ կային ախտից կենցաղոյս, որպիսի ոք մարդիկ հանդերձեալ էին լինել առ այլս առանց ներելոյ։ Վասն այնորիկ զնոսին իսկ զքահանայսն կարեաց ծառայեալս պատրաստեաց և զիշխանսն, զի որով ինքեանք ախտանան, թողութիւն ընձեռեսցեն այլոց։ Այլ միշտ այնպէս դարմանեաց ա՟ծ, ոչ միայն այժմ, այլ և 'ի հնումն. և որոց հանդերձեալ էր հաւատալ զժողովուրդն և զեկեղեցին, նոցա ներեաց ընդ մեղօք անկանել, զի յիւրեանց յանցանացն մարդասիրագոյնք լինիցին առ այլս։ Զի եթէ ոչ մեղանչէին նոքա, և ոչ իսկ միով իւիք ունէին տալ թողութիւն մեղուցելոցն. այլ անմարդութեամբ վարելով՝ զամենեսեան հնձէին յեկեղեցւոյն։

Այլ զի այսոքիկ այսօրինակ, և ոչ կեղակարծելով[1] ինչ խօսիմ, բեր 'ի նմին իսկ 'ի տեսութենէն հաւանեցուցուք զձեզ։ Պետրոս հանդերձեալ էր հաւատալ զփականս եկեղեցւոյ, մանաւանդ թէ հաւատացաւ իսկ ըզփականս երկնից. հանդերձեալ էր հաւատալ և զկիրս ժողովրդեանն։ Այլ զի՞նչ նմա տէրն. "Զոր կապեսցես յերկրի՝ եղիցի կապեալ յերկինս, և զոր արձակեսցես յերկրի՝ եղիցի արձակեալ յերկինս"։ Լինելոց էր Պետրոս անընդել և խիստ. եթէ ունէր և զանմեղութիւն, զո՞ր թողութիւն գտանէին 'ի նմանէ վարդապետեալքն։ Վասն այնորիկ հնարեցան ա՟ծային շնորհքն ընդ մեղօք իւիք անկանել Պետրոսի, զի որով ինքն ախտացաւ, մարդասիրագոյն լիցի առ այլսն։ Այլ տես ընդ որո՞վք մեղօք ներեաց անկանել առաջնոյ հարցն գլխոյն առաքելոց, անշարժ հիմանն և անյողդողդելի վիմին, առաջնորդին եկեղեցւոյ, անկառուելի նաւահանգստին, անդրդուելի աշտարակին։ Պետրոս՝ այն որ ասէր ցՔրիստոս. "Եթէ դէպք լինիցին ինձ ընդ քեզ մեռանել, ոչ

1 Միւսն կողակարծելով։

թողից զքեզ„: Պետրոս՝ որ ամենայն յայտնութեամբն զճշմարիտն խոստովանեաց, „Դու ես որդի այ կենդանւոյ„, նա եկեալ 'ի գիշերին յայնմիկ յորում մատնեցաւ Քրիստոս, և կացեալ մերձ առ խարուկին ջեռնոյր, աղջիկ մի մատուցեալ ասէր ցնա՝ եթէ „Դու երէկ ընդ առնդ ընդ այդմիկ էիր„. և Պետրոս ասէր. „Ոչ գիտեմ զայրդ զայդ„: Ով Պետրոս, ո՞յդ է զոր խոստանայիրն. ոչ թագաւոր, ոչ տանջանարան և ոչ ինչ յայնպիսեացն տեսեր, այլ փայրապար զփոքր աղջկան զբանս լսելով և յուրացութին խոստորեցար: Ուրանա՞ս, Պետրոս. ուրաշեցար մինչ չև տանջանարանք, մինչ չև չարչարանք, ոչ վէրք, ոչ սրտմտութիւնք, ոչ իշխանք, ոչ սուրք սրեալք և ոչ հրաման առաջի կացեալ, ոչ թագաւորաց սպառնալիք, ոչ մահ սպառնացեալ, ոչ բանդք և ատեանք, ոչ ծով, ոչ այլ ինչ յայսպիսեաց, և արդէն ուրացա՞ր. „Ոչ գիտեմ զայրդ զայդ„: Դարձեալ աղջիկն նմա. „Եւ դու երէկ ընդ առնդ ընդ այդմ էիր„: Իսկ նա ասէ. „Ոչ գիտեմ զայրդ զայդ„: Ո՞վ է որ ասէդ ցքեզ՝ զի ուրանաս: Ոչ ոք 'ի կարևորացն, այլ կին. մանաւանդ թէ ոչ կին, այլ դռնապան 'ի բաց ընկեցիկ[1], գերի և ոչ միոյ բանի արժանաւոր. դա հարցանէ, և դու ուրանաս: Ո՛վ նոր իրացն. աղջիկն զՊետրոսն զայն. մի բող մատուցեալ զՊետրոսի զհաւատն ամբոխեաց: Պետրոս սիւն առաջնկայցն ոչ հանդուրժեաց սպառնալեաց աղջկանն. այլ խօսեցաւ միայն, և նա դղրդեցաւ. բան աղջկան մերձեցաւ, և սիւնն շարժեցաւ, առաջամարտիկն դղրդեցաւ: Օ՜վ տեսեր, ով Պետրոս, զի ուրանաս: Օ աղջիկ վատթար և զդռնապան: Ի գմանէ տագնապեալ ուրացար: Եւ սակայն դարձեալ երիցս, „Եւ դու երէկ ընդ առնդ ընդ այդմ էիր„. և նա ուրացաւ երիցս անգամ: Եւ այնպէս հայեցաւ 'ի նա այնուհետև Քրիստոս 'ի յիշատակս ածել ասացելոց: Եւ նորա իմացեալ սկսաւ լալ և ապաշխարել յաղագս մեղացն: Սակայն մարդասէրն ած եթող նմա զմեղսն, վասն զի գիտաց եթէ մարդկային իրս կրեաց:

Բայց զոր ասէին, յաղագս այնորիկ խնամակալութիւն եղև այնպէս և Պետրոսի թողացաւ մեղանչել,

1 [illegible]

վասն զի հանդերձեալ էր հաւատալ ժողովուրդ բազում, զի մի ապառում իցէ անմեղ լինելումն, և առանց թողութեան առ իւր եղբարսն լինիցի։ Ընկալ ընդ մեղօք, զի զմտաւ ածելով զիւր յանցանսն՝ զառեալն թողութիւնն ներեսցէ այլոյն մարդասիրութեան աղագաւ. զի ըստ ա՟յ նախախնամութեանն յարմարեալ, որպէս զի և նա թողցէ զմեղսն որ հանդերձեալ իցէ զեկեղեցին հաւատալ. սիւնն եկեղեցեայ, նաւահանգիստն հաւատոց, Պետրոս վարդապետն աշխարհի թողացաւ մեղանչել, զի նորա թողութիւնն պատճառք այլոց մարդասիրութեանն լինիցի։

Այսոքիկ ինձ վասն էր ասացան։ Եւ է և մեք քահանայքս որ յաթոռս նստիցեմք, մեղօք եմք կապեալք։ Եւ նորին աղագաւ ոչ հրեշտակ ոք հաւատացաւ զքահանայութիւնն, ոչ հրեշտակապետք. վասն զի անմեղք են, զի մի զմեղուցեալս ժողովրդեանն բոցակէզ առնիցեն. այլ մարդ ՚ի մարդկանէ հաւատացաւ զաթոռս զայս, որ և ինքն մեղօք և ցանկութեամբք է կապեալ. զի յորժամ առնուցու ոք յանցաւոր, յիւրմէ ՚ի սխալանացն մարդասիրագոյն լինիցի առ նա։ Քանզի եթէ հրեշտակ էր քահանայն և ըմբռնէր զոք պոռնկացեալ, վաղվաղակի սատակէր զնա, զի ինքն ընդ ախտիւն ընդ այնու ոչ է անկեալ։ Եւ եթէ առեալ էր զիշխանութիւն հրեշտակին՝ ոչ ուսուցանէր, այլ դարձեալ ՚ի բաց բարձեալ լինէր նա ոչ գոլն այնպիսի։ Վասն այնորիկ մարդ նստի, զի գիտելով զյանցանսն և զփորձ առնելով ներեսցէ յանցուցելոցն, և ոչ շարժեսցի որոմութ̃ե և դատարկասցի[1] եկեղեցի։

Այլ ընդէր[2] մինչև ՚ի Պետրոս համառօտեսցի այն պատճառն. յայնոսիկ և սուղ ինչ բանիւ յայլ ոք ելանեմ ՚ի դիմացն։ Տեր ինձ ՚ի մէջ ածից և զԵղիաս զմարգարէն զայն, զերկրայինն զհրեշտակն և զերկնայինն զմարդն. որ յերկրի գնայր, և ՚ի նոսին իսկ թռեաւ ՚ի կամարն երկնից. որ ջրոյն շտեմարանապետ էր, որոյ լեզուն գանձարան եղև ջրոյն և փականք երկնից. աղքատն և ձոխն, տղէտն և իմաստասէրն. աղքատ, վասն զի մեծագոյն իմաստասիրութիւն ստացաւ. և փարթամ,

1 Դատկասէր տոփարչասոցի. և զէնի 2 Այլ ընդէր. յաւելեալ ՚ի յունէն։

զի զամպս երկնից 'ի լեզուի իւրում ունէր ։ Այլ նա խիստ առ յանցաւորսն եղև այնքան, մինչ զի աղօթել՝ անձրև ոչ տալ յերկիր ։ Այլ զինչ ասէր. «Կենդանի է տէր թէ լիցի անձրև, եթէ ոչ բերանով իմով» ։ Օ՜ ինչ առնես, ով Հեղիաս, զինչ հրամայես. և աղաչես ըզտէրն և կատարէ զքո բանն. «Կենդանի է տէր եթէ լիցի անձրև, եթէ ոչ բերանով իմով» ։

Ո՞ւր իցեն հերձուածողքն որք ասեն եթէ որդի աղօթէ ։ Թշուառականք և անամօթք ։ Հեղիաս հրամայէ, ծառայն հրաման տայ, և տէրն աղաչէ՞. և ո՞չ որպէս Եղիայի շնորհէք նմա զպատիւն. ո՞չ ախորժէք որպէս ծառային նոյնպէս և տեառնն զուգամասնութիւն ընծայել ։ Ոչ աղօթեաց և ոչ պաղատեցաւ, այլ բան ճշմարտութեան ասաց և զերկին փակեաց, ոչ աղօթելով Հեղիաս ։ Այլ զինչ ասէր. գիտեմ զտէրն եթէ լսէ ինձ, քանզի յաղագս նախանձու առնեմ ։ Ով նոր իրայն. տեսէ՞ր զտէրն բարեմտութեամբ 'ի ծառայէն յաղթեալ. զի Հեղիաս յաւէտ 'ի նախանձուէ զայն առնէր ։ Տեսանէր զվատթարութիւնն լեալս. տեսանէր զչարութիւնն հանդերձ բազում համարձակութեամբ օրինաւորեալ ։ Գիշեր ունէր զաշխարհ ամենայն, և ամենեքեան սխալէին. բովանդակ աշխարհի էր նաւաբեկութիւնն, ոչ ջրոյ, այլ պակշոտութեան. ողջախոհութիւն 'ի բաց խլեալ էր, և անարգելութիւն առոգանայր[1]. առաքինութիւն հալածական լինէր ։ Բլուրք և լերինք և անտառք և օդք զարշանային, արեգակն ճենճերօք լցեալ լինէր, երկիր պղծեալ լինէր, և արարածք ամենայն զարշանային 'ի կռապաշտութենէն ։ Իբրև 'ի գիշերի գնային ամենեքեան՝ ոչ ինչ հայելով յարարածս. քար տեսանէին, և իբրև ա̃յ երկիր պագանէին. զփայտն նմին նման կարծէին ։ Գիշեր անձուկ էր. զարարածս տեսանէին, և իբրև արարչի երկիր պագանէին ։

Հեղիաս միայն էր որ ունէր զճրագ առաքինութեան, իբրև 'ի վերայ գագաթան լերին յիմաստասիրութեան նստելով ունէր զճրագն. և ոչ ինչ օգտէր հրամանաւն, զի 'ի ժամանակին զնոսա կործանեալս տեսանէր ։ Ո-

1 Միւսն առոգանայր և զեխք պոռնկացեալք ։

լէր , տատանէր , ողւայր , բանս խօսէր՝ ոչ ոք լսէր , աղաչէր՝ ոչ ոք անսայր ։ Ի նախանձուէն այնուհետև զնրստուցանել[1] զնոսա կամէր և 'ի խրատել . զի գոնէ այնպէս սովոր խորշեալք , զամենեցուն զարարիչն ծանիցեն ։ Այլ զինչ ասէր . "Կենդանի է տէր եթէ եղիցի անձրև , եթէ ոչ բերանով իմով" ։

Այլ բան մարգարէին , և օդ ապականեցաւ . երկին պղնձի եղև ; ոչ զբնութիւնն փոփոխելով , այլ զօրութիւնն սանձեցաւ . վաղվաղակի զտարերս փոփոխեաց ։ Ընկաւ բան մարգարէին իբրև զբոց հրոյ 'ի ծագ երկրի , և ամենայն ինչ արագ արագ չորանայր և ապականեալ լինէր ։ Տեսանէր այնուհետև զգալարի ցամաքեալ , ըղծառս և զտունկս պտղաւորս և անպտուղս 'ի դաշտս 'ի ծովեզերս յանկարծակի գօսացեալս , և զամենայն զկենդանիս 'ի հասակի խամրեալս . ողբումն մանկանց , կականումն տղայոց և բազում յուսահատութիւն ։ Մի բան էր մարգարէին , և տես որքան գործեաց . ամենեքեան մեռանէին , գազանք , անասունք , արք , կանայք , մանկունք , կենդանիք , թռչունք ամենայն . իբրև համաշխարհական նաւաբեկութիւն իմն լինէր , և թշուառութիւն զամենայն երկիր ըմբռնէր ։ Ոչ ոք զերծանէր , այլ ամենեքեան երաշտութեամբ մեռանէին . տունկք և ծառք գօսանային . աղբերք և լիճք և գետք և ամենայն միանգամայն կորնչէր ։ Համաշխարհական նաւաբեկութիւն ըմբռնէր զերկիր , ոչ ջրով , այլ երաշտութեամբ ։ Կապէր զերկին , և տեսանէր այնուհետև զբնութիւնն ամենայն ամփոփեալ . և ամենեքեան մեռանէին ծարաւք բարկութեամբն և կորնչէին ։

Այս ոչ ինչ էր փոյթ Եղիայի յաղագս ուրուք , վասն զի[2] արբեալք ամենեքեան էին խնդրողքն բոլորեքեան տարաժամ հասակաւ ։ Ո՛ ինչ առնես . որպէս թէ երիտասարդքն յանցեան , ընդէ՞ր տղայքն խրատին . եղիցի եթէ մարդիկդ մեղան , ընդէ՞ր և անասունքդ ընդ նոսին մեռանէին . ա՞յդքան անգթութիւն ես զգեցեալ ։ Ոչ ինչ քեզ փոյթ յաղագս մարդկան . ոչ կին ունիս և ոչ որդիս և ոչ փոյթ ինչ առնես կորուսելոց ։ Այս զինչ

1 Միւսն ընդոսփուցանել :

2 Յոյնն վասն զի նախանձու որբեալ էր . նմին իրի ամենեքեան տարաժամ հասակաւ կորնչէին :

նել զծառայն իւր, չարեացն պատճառ զնա ցուցանել, և բարեացն զինքն ա՟ծ, այլ եկաց մնաց ծառայն պաղատանաց: Եւ ոչ այնպէս անսայր, այլ խստութեամբ իմն վարելով գնայր զճանապարհն զանգթութիւն զգեցեալ, ոչ ինչ յաղագս ուրուք փոյթ առնէր, որպէս յառաջագոյն ասացի, նախանձու արբեալ:

Ընդէ՞ր ապարասանես, ով Հեղիաս. ընդէ՞ր այդքան զգեցեալ ես զանմարդութիւն: Վերեւ սուղ ինչ, և յանդիմանեցիս դու ընդ մեղօք լեալ: Յաղագս յանցանաց բնակչացդ զերաշտութիւն կոչեցեր, զերկին փակեցեր, զընթացս բնութեանն արգելեր, և ո՞չ պաղատել յաղագս եղելոցդ ախորժես: Յետ ոչ բազում ինչ ժամանակի յանդիմանեցիս և դու ընդ պատճառանօք մեղաց, և մարդասիրութեանն տեառն հանդիպելով՝ մարդասիրագոյն լիցիս առ ծառայակիցսն:

Այսօր ինձ յաղագս նոցին այսոցիկ է անցանել ընդ բանս, եթէ ընդէր ոչ հրեշտակ քահանայ եղև, այլ մարդ, զի մի յանմեղէն սատակեալ լիցին մեղաւորք: Զի եթէ հրեշտակ էր, որ ոչ մեղանչէր, սատակէր զյանցուցեալսն. նորին աղագաւ մարդ, զի ներեսցէ՝ յիւրոց կարեացն տեղեկացեալ՝ հոմանզգեացն: Եւ ՚ի մէջ ածի, եթէ մեծամեծացն որոց հանդերձեալն էր ժողովուրդ բազում հաւատալ, թողացոյց անկանել ընդ մեղօք, և զկնի այնոցիկ թողութիւն նոցա ընձեռեաց. զի որով ինքեանք խրատեցան, մարդասիրագոյնք լինիցին: Եւ Պետրոսի ընդ այնպիսի յանցանօք լինել անսայ և մեղանչել, և ապաշխարանօք ջնջել զմեղս՝ ա՟յ մարդասիրութեանն էր: Եւ ապա եկայք յԵղիաս և ընկալայք զխորս նորա ուղղութեանցն, եթէ ա՟ծ կամէր մարդասիրել և ախորժէր տալ անձրև, այլ հայցէր զպաղատանս ծառային:

Եւ ապա զի՞նչ ես: Անց Եղիաս ընդ բովանդակ ճանապարհն և չոգաւ ՚ի Սարեփթայ սիդոնացւոց, ետես անդ կին մի որ քաղէր փայտ: Բայց սակայն տես զԵղիայի մարդասիրութիւնն և զիմաստասիրութիւնն, հայեաց դարձեալ և ՚ի նորա հաւատն. և այլ միւս ես ընկալայք զնորա խորս առաքինութեանն: Ոչ ասաց ցա՟ծ՝ ո՞ւր զիս առաքես և այսքան վտանգից ընձեռես համբերել. առ այրին ընթանալ առաքեցեր զիս ՚ի վերջին սո-

վին։ Միթէ ո՛չ իցեն արք փարթամք, որ կարող են զաղքատութիւն իմ մխիթարել. այլ ընդ այսքան երկիր գնացեալ, այրւոյն համդիպեցայց, նմին իսկ թշուառութեանցն. զի ոչ միայն այրի, այլ և աղքատ։ Օմտաւ ած զխարդ ոչ ինչ յայսպխեաց ասաց. վասն զի վստահ էր յիւր տէրն՝ յանկարելւոյն առնել զկարողութիւն։ Զօգաւ 'ի Սարեփթայ սիդոնացւոյ, և ահա այրին քաղէր փայտ։ Օ՜ ի ես գնաս, ով Հեղիաս, զի ես հայիս ընդ այրին. տեսնէր զնախադուռն աղքատութեա՛ն, տեսեր զձանապարհ տնանկութեան. մի ինչ հարցաներ զխորութենէ չափաւորութեանն, մի հարցաներ զաղկաղկութենէն։ Ո՞ւր մտանես, Հեղիաս. տեսանես զնա փայտաքաղ, և կերակո՞ւր հայցես 'ի դմանէ։ Բայց սակայն ունելով զրաւական զբանն տեառն, երթայր խօսել ընդ այրւոյն։ Եւ զի՞նչ ասէր. "Տուր ինձ սակաւ ինչ ջուր զի արբից"։

Տեսե՞ր զիմաստութիւնն Եղիայի. ոչ արագ արագ 'ի զօրաւորն դիմեաց, այլ յանարգագոյնն. ոչ ասաց՝ տուր ինձ հաց, այլ տուր ջուր։ Նախ առաջին հայցէր զջուրն, նկատելով զի եթէ բաւական իցէ զջուրն ընձեռել, կարող լիցի և հաց ևս տալ։ "Տուր ինձ, ասէ, ջուր սակաւ ինչ"։ Եւ երթեալ այրւոյն բերէր նմա։ Եւ արբ Հեղիաս, և այնպէս համարձակեալ "Տո՛ւր ինձ, ասէ, պատառ հացի և կերայց"։ Իսկ նա ասէ. "Կենդանի է տէր, եթէ կայցէ իմ, բայց ափով ալեւր 'ի սափորի և սուղ ինչ ձէթ 'ի կամխոսակի, զոր արարից և կերիցուք ես և մանկունք իմ և մեռցուք"։ Եւ զի՞նչ Հեղիաս. "Երթ, ասէ, և արա ինձ միայնում նկան և կերայց, և ապա արասցես մանկանցն քոց և կերիցեն"։ Օ՜ ինչ առնես, ով Հեղիաս. եղիցի եթէ հաց կամիս, ընդէ՞ր միայն հայցես. ո՞չ թողուս գոհանալ զի ընդ մանկունսն կերիցես. դու կամիս ուտել, և զքաղցութիւն մանկանցն հեղձուցանե՞լ 'ի սովոյ։ Այլ բարեգործել, ասէ, ախորժեմ զնոսա. վասն զի գիտեմ զառատութիւն տեառն իմոյ։

Բայց սակայն այրին ոչ ինչ յայսպխեաց էած զմտաւ անարժանագոյն. ոչ ասաց՝ դու ես որ զսովս արկեր, և նշխարօ՞ք սովոյս կամիս կերակրիլ։ Եւ ոչ ասաց՝ զայսքան աշխարհ թողեր, առ իս եկիր սովով ապակա-

ւէ. “Ոչ էր, այլ դու և տուն հօր քո”: Այլ յորժամ 'ի [illegible]նատէր, և չոգաւ առ նա յխնամակալն և ասէ. “Տէր իմ, էջ. Թագաւորն յայտնի ունի քեզ”: Այլ զինչ նման Հեղիաս. “Եթէ այր ա̄յ եմ ես, իջցէ հուր յերկնից և կերիցէ զքեզ և զյիսունսն քո”: Այլ ապա յորժամ եկն 'ի խորհուրդ աղօթիցն, և ածին զքուրմս անօթոյն Բահաղու, և ասէ ցնոսա. “Ընտրեցէք դուք բազմաց առանձին, և ես միայն. և դիք 'ի վերայ փայտ և [illegible] մի, և հուր մի դնիցէք. և ես արարից նոյնպէս. և կարդացէք զանուն ա̄յ ձերոյ, և ես զանուն ա̄յ իմոյ. և [illegible] ա̄ծ որ լսիցէ հրով նա է ա̄ծ ճշմարիտ”: Այլ առաջին քուրմք անօթոյն Բահաղու սկսան և սկըսան կոչել. և էր յոլով աղօթից եղելոց՝ և ոչ ոք էր որ լսէր, կատակեաց զնոքօք և ասէ. “Աղաղակեցէք բարբառեցարուք մեծամեծս, մի գուցէ 'ի քուն իցէ աստուածն ձեր”. վասն զի ոչ գոյր ձայն և ոչ լսելութիւն: Այլ յորժամ եհաս վեցերորդ ժամն, ասէ. “Ի բաց կացէք զի ես աղօթեցից: Արար սեղան և ասէ, բերէք ջուր և հեղէք շուրջ զսեղանովն, և ասէ. կրկնեցէք և երեքկնեցէք”: Բայց տես զի և զայն ընդէր առնէր Հեղիաս: Այսպէս զի առաւելութիւն է մեծութեանն՝ նմանեցուցանել զնոր իւր ճշմարտութեանն. որպէս ասենն բազմ կարծէք, յառաջագոյն ժամանելով զաղատանս կոչեն բոցք, որպէս զի մի լինչ ունիցին նորա թշնամանել զնոսա.

Այլ առաջոյն Հեղիաս և յայտնաշխիթմատոսիրէ խմն: Ոչինչ: Այս համբերժեալ եմ ասել, տեսող ես եղէ. 'ի բազմաց քրմացն ծակք էն 'ի ներքոյ սեղանոյն, և դուռ անցայր է 'ի սարբել. իջանէին անդր մեղրութեն զարծանեայք, և ընդ ծակսն ընդ այն 'ի ներքուստ ըղհուրն տուեալք փառէին 'ի զոհսն, մինչ զի բազմութեն մեղրել և կարծել երկնայինն զալ զհուրն. Ոչ մի և Հեղիաս պիտոյիւր ինչ թուեսցի առնել, և զի ոչ իցեն ծակքն՝ յանդիմանեսցէ ջուրն, աժմարժելով զմոլորութիւնն յանդիմանել, առնէր զսեղանն, աղօթէր և ասէր. “Տէր ա̄ծ, լուր ինձ հրով այսօր, լուր ինձ ջրով”: Տեսէ՞ք զերեսանակայնն ատարեցս: Այլ ահա 'ի կոչելն նորա՝ փանդփազակի էջ հուր յերկնից և եկեր զզոհն: Այլ զինչ ասէր ցթագաւորն. “Այլ զքուրմս անօթոյ.

Digitized by Google

և սատանիկեայ զղջման,,: Նոյն առեալ սատանիկեայ զնոսա չորեքհարիւր և յիսուն այր զքուրմսն Բահաղու:

Յետ զայնց Յեզաբէլ կինն Աքաաբու և առաքէր առ Եղիաս ասելով. "Որպէս արասցեն ինձ աստուածքն և այսպէս յաւելցեն, եթէ ոչ վաղիւ եղից զանձն քո իբրև զմի 'ի սպանելոցն,,: Նոյն զի՞նչ Եղիաս որ այսպիսի և այսքան: Ուր ինձ դիտաւորութիւն ցուցանել եթէ ընդ մեղօք անկաւ: Նախ զմեղսն, ոչ սակս ըննելով արդարոյն, այլ քեզ զպատճառս փրկութեան հնարիմ. զի յորժամ տեսցես զնոսա յանցուցեալս, մի յուսահատեսցիս 'ի քէն, այլ յոյս մարդասիրութեան ապաւինեսցիս. յորժամ մեղիցես, առաւել եւս յուսասցես 'ի փրկութիւնն: "Որպէս արասցեն ինձ աստուածքն իմ և այսպէս յաւելցեն, եթէ ոչ վաղիւ եղից զանձն քո իբրև զմի 'ի վախճանելոցն,,:

Լուաւ Եղիաս և փախեաւ ճանապարհ աւուրց քառասուն: Ով յերկարաձգութիւն բանիս, ով երկիւղին զերազանցութիւն: Ո՛չ զնոյն բան լուաւ, և քառասուն աւուր ճանապարհ գնալով փախեաւ. ոչ զմի օր կամ զերկուս կամ զերիս. այլ բան խօսքն եհաս 'ի մարգարէն, և ոչ գիտէր զինչ գործէր, այնքան փախստականն երթալով: Ո՞րչ եղև քեզ, ով Եղիաս. դու ես որ զերկինս փակեցեր և զանձրև սանձեցեր, որ-օրոց հրամայեցեր և զհուր կոչեցեր, որ խողխողեցեր զքուրմսն, որ ասացեր Աքաաբու "Դու ես որ խռովեցուցանես զԻսրայէլ և տուն հօր քո,,, որ ասացեր "Կենդանի է Տէր եթէ եղիցի անձրև 'ի վերայ երկրի, բայց եթէ բերանով իմով,,, որ զտուն այրւոյ հնձանն և որդւոյն սատարեր. որ օդոցն հրամայեցեր, և զբոցն բանիւդ ընկալ փախեա՞ր, և մի կին զքեզ զարհ առնէ: Տեսէք զգլխաւորս քաղաքաց 'ի կնոջէ 'ի վայր անկեալ. Պետրոս յաղախնէն զարհուրեցաւ, և սա յԵզաբէլէ. ընդ նովին մեղօք անկեալ երկոքեան: Նոյն փախեաւ Եղիաս ճանապարհ աւուրս քառասուն: Ո՞ւր է նախանձն քո յորժամ ասէիր՝ Կենդանի է Տէր եթէ լիցի անձրև, եթէ ոչ բերանով իմով. յորժամ զԱքաաբ թագաւոր յանդիմանէիր, յորժամ զհուրն կոչէիր. այնքան արարեր սքանչելիս, և միոյ բանի կնոջ ոչ համբերեցեր. յորժամ ոչ աղօթէիր զքո տէրն աղաչել, զի տացէ անձրև

'ի վերայ երկրի ։ Ո՛անզի ասէր ցքեզ՝ դու աղաչեաց զիս ։ Կարէր և առանց քո ընձեռել, բայց ոչ կամեցաւ ։ զի որպէս չարեացն եղեր առիթ, նոյնպէս և բարեացն ։ Գործեցեր գործ լի անգթութեամբ ։ այլ ած գիտէր զի որպէս ամենեցուն նա է արարիչ և ստեղծող, նոյնպէս և բոլորեցուն խնամ տանի ։ կամէր զքո զանմարդութիդ սանձահարել, և դու կացեր մնացեր 'ի նմին ։ Ասէր ցքեզ ։ Ես գիտեմ զթշուառութիւնն զլեալ, գիտեմ զողբումն զմորց ։ Այլ սակայն յոլով ապարասանութիս ունէիր իբրև զանմեղ, այժմ ցուցցիս և դու ընդ մեղօք անկեալ, ներելով այդոցիկ ած ։ զի յորոց ինքն մարդասիրութեան դիպեցի, և առ այլս մի անմարդի լիցի, այլ մարդասէր[1] ։

Նմուտ բանն 'ի մարգարէն իբրև սաստիկ հիւսիսի ։ Ո՞ւր են, ով Եղիաս, համարձակութեանն այնորիկ իրք, ո՞ւր բերանն ահաւոր, ո՞ւր լեզուն երասանակակալ տարերց, գանձ անձրևաց ։ Այլ սակայն որպէս յառաջագոյն ասացաք, զայս առնէր յաղագս շնորհին զօրանալոյ ։ վասն որոյ և յանդիմանի յայյ ։ Տեսէ՞ր զկարգ ընդ փոքր մեղօք ներեցաւ անկանել, զի զբովանդակ մարդասիրութեանն պատմուճան զգեցցի ։ Խրատեցար այսուհետև, ով Եղիաս, լեր մարդասէր իբրև զտէրն քո ։

Տեսէ՞ր զկարգ ընդ սուղ յանցանօք թողացոյց անկանել սեանցն այնոցիկ և աշտարակաց, զի մի նոցա անմեղացելոց՝ զամենեսեան յեկեղեցւոյ 'ի բաց հատանիցեն ։ Զի յորժամ տեսանիցեն զօք սխալեալ և կամիցին անգթութիւն ինչ ցուցանել յաղագս ինքեանց, յիշեսցեն զմտաւ ածելով զիւրեանց զմեղսն, և զնոյն մարդասիրութիւնն ընձեռեսցեն նոցա որոց ինքեանք դիպեցան ։

Զայս ասացաք ոչ զարդարոցն ամբաստանելով, այլ ձեզ ճանապարհ փրկութեան պատրաստելով ։ զի յորժամ յանցանիցէք, մի յուսահատիցէք 'ի փրկութենէն ձերմէ ։ Նայցաք զնոցա նախ առաջին զառաքինութիւնսն, և ապա 'ի ներքս ածաք զդուզնաքեայ սխալանսն ։ Զի եթէ մեղաւոր իցես՝ մի լքցիս յեկեղեցւոյ, և եթէ արդար՝ և այնպէս մի վերջասցիս, զի բնակից ունիցիս քեզ զգլոցն ծանօթութիւնն, և յիշեսցես

1 Պակասին տողք 43 ։

տուաւել պիտանացուք գտանին. վասն զի ոչ մարմնոյն քաջապնդութիւն, այլ հաւատոյն ողջ խնդրի։

Այսպիսի էր Աբրահամ թուլացեալ մարմնովն, այլ քաջապինդ և հզօրագեղ պնդութեամբ հաւատոյն. ծեր էր, և 'ի վերջին աւուրութեանն ընդ բնութեանն մարտընչէր և զյաղթանակ մարտին մեծապէս հաստատէր. ծեր էր, այլ քաջապնդագոյն քան զերկաթ և քան զադամանդ կարծրագոյն։ Նա յորժամ էր 'ի մանկութեն, ոչ ինչ այնպիսի կազմեաց. իսկ յորժամ զանց արար ժամանակ հասակին, յայնժամ զմրցանակ յաղթութեանն կանգնեաց. 'ի վերջին աւուրութեան էր, այլ խափան ինչ աւուրութիւնն ոչ եղև։ Յաղագս որոյ և ա̃ծ գիտելով զքաջապնդութիւն նորա, երևէր նմա։ Նա զինչ ասէր. “Ել յերկրէ քումմէ և յազգականութենէ քումմէ և 'ի տանէ հօր քո, և եկ յերկիր զոր ցուցից քեզ”։ Հնազանդեցաւ Աբրահամ. թէպէտ և ծեր էր այնուհետև և տկար մարմնով, ոչ ասաց՝ ո՛ւր երթամ 'ի վերջին ծերութեանս, մօտ լքանեմ թողում զտուն հօր իմոյ, զերկիր յորում ծնայ, ուր յղփութիւն ընչից և պայծառութիւն ծնողաց, ուր սնացուածք բազմապատիկք և բարեկամաց բարաւորութիւն։ Տրտմէր առ մերձակայն, բայց ոչ հրաժարէր[1] հնազանդել։ Նա որ աքանչելին էր, ոչ ասաց նմա՝ յոր տեղի, այլ անորոշ անուամբ մերկացոյց զնորա յօժարութիւնն։ Քանզի եթէ էր ասացեալ նմա՝ եթէ յերկիր զքեզ ունիմ տանել որ բխէ զկաթն և զմեղր, զտանէր Աբրահամ ոչ ձայնի ա̃յ հնազանդեալ, այլ երկիր քան զերկիր ընտրեալ։

Արդ եւ Աբրահամ ոչ գիտելով ուր երթայր։ Տեսէ՞ք ալիս պանծացեալս յուղղութիւն. այսօրիկ են ասացի մեր իրք. ոչ անկարութիւն[2] ծերութեան զնա 'ի վայր կործանէ, ոչ ժամանակ թարշամեցուցանէ. քանզի ոչ 'ի մարմնի է աւուրութիւն, այլ յոգւոջ. յաղագս որոյ անծերանալի է։ Անցեալ գնաց Աբրահամ ոչ ինչ առնլով 'ի պատրաստականացն, այլ տակաւին 'ի տաղաւարս բնակէր. ոչ անհաւատեաց և ոչ հոգացաւ, վասն զի ունի զբաւական արժանի հաւատոյ զկոչողին ձայն։

1 Դանդաղէր յօրինակին հնգերրորդ յաւելեալ 'ի յանէն։

2 Ցօրինակին ընկերութիւնն. եղաւոր յանէն։

Նա ինքն առանց ծննդոց, և ոչ ունէր մանուկ. այլ և ոչ Սառա կենդանա. և էառ աւետեօք որդի զԻսահակ: Յորժամ բնութիւնն հրաժարեաց, յայնժամ շնորհն պարգևեցաւ: Հայեաց յԱբրահամու իմաստութիւնն այնուհետև, և տես զալեացն զզգօլութիւն, տես զծերոյն զզօրութիւն. էառ արժանի հաւատոյն վարձ ընդ հնազանդութեանն, այլ ոչ գիտէր զայն. զի եթէ էր գիտացեալ, ոչ ինչ արժանի հաւատոյ առնէր: Նա զի ուսցիս եթէ ոչ յաղագս այնորիկ հնազանդեցաւ, տես զկարգ և զնա հրամայեալ սպանանել՝ ոչ անհաւանէր, այլ զհնութիւնն 'ի բաց ընկենոյր և զծածախրութիւնն ողջունէր. գութքն 'ի վայր անկանէին, և 'ի կոչողէն ոչ կայր 'ի բաց:

Նա զինչ առնէ ած. "Աբրահամ, առ դու զորդին քո զԻսահակ զոր սիրես, և զդա հան ինձ ողջակէզ 'ի միոյ լերանց զոր քեզ ասացից,,. և ոչ զլեառնն նմա յայտնեաց, այլ անորոշ անուամբ լերինն յաւէտ 'ի հոգս զնա էարկ: Նայց սակայն յայնցանէ և ոչ մի ինչ զԱբրահամ ոչ ամբոխեաց, մանաւանդ թէ և խռովեցոյց իսկ. վասն զի մշտանայր իբրև զմարդ, այլ ոչ փտանգեալ լինէր մեղօքն. ալեկոծեալ լինէր իբրև զհայր, և ոչ ընկղմէր իբրև զծառաէր. գութքն խարշէին, այլ հաւատն յաղթէր: Ո՞ր ինչ ինձ ասէր եթէ ոչ փտանգեցաւ Աբրահամ. զմտաւ ած զկարգ բորբոքեալ լինէր գթովք վառեալ:

Տես զիմաստասիրութիւնն Աբրահամու, և ոչ Սառայի ասէր. վասն զի երկնչէր մի գուցէ խափանիցէ ըղկատարումն խորհրդոյն: Զի եթէ էր ասացեալ, իրաւացի էր նմա դժուարել և ասել՝ ո՞ւր տանիս զորդին իմ զոր անկարծելի առի, զոր ըստ աւետեաց ընկալայ, զոր փոխանակ հիւրասիրութեանն առի, զոր 'ի վերջին ծերութեանս շնորհեաց ինձ ած, ո՞ւր զդա տանիս, ո՞ւր զդա առնուս. ոչ ոք քեզ երևեցաւ. զիա՞րդ ած քեզ երևէր և խնդրէր զորդին զոր անյուսաբար ետ ինձ. ինքն շնորհեաց և ինքն առնու. և եթէ առնլոյ տագաւ ետ զդա, լաւագոյն էր ոչ տալ. քանզի ոչ է այնքան ցաւ ոչ ունելն, քան առնուլն և կորուսանելն:

Զմտաւ ած զՍառա բորբոքեալ և տապացեալ և 'ի բնութենէն վարանեալ, և զարգանդն նորա զայրացեալ

և զաղխն այլայլեալս. վասն զի ցաւակիցք էին կանայք յայնպիսի իրս: Զի որքան կնասք էին և ցաւակցագոյնք, հանդերձեալ էր բանադատել զԱբրահամ, և խափանեալ լինէր պատարագն և խորհուրդն անկատար: Զինչ արդեօք ոչ առնէր Սառա յաղագս յափշտակելոյ զորդին իւր, զի անգործ արասցէ զլեալն. զի որ անյուսաբար զորդին էառ, հանդերձեալ էր խողխողել. և որ 'ի նմին ինքն 'ի ծերութեանն պարգևեալ նմա՝ 'ի զենմունս երթայր. հօրն ձեռք զմանկապատանութիւնն հանդերձեալ էին գործել: Ոչ ևս ժուժայր այնմ Սառա, այլ սաստիկ մարտ առնէր ընդ Աբրահամու. և 'ի լինել կռուոյն, հարկաւոր էր դարանակալութեան իմիք զհետ երթալ. և յերթալն զհետ դարանակալութեան, խափանումն խորհրդոյն լինէր:

Այլ ոչ ասէր Աբրահամ կնոջն, զի մի հակառակութիւն լինիցի. և զի մի 'ի լինել հակառակութեանն՝ 'ի կռիւ եկեսցեն իրքն. և մի 'ի մարտ եկելոյ իրացն՝ 'ի բաժանումն յաղագս որդւոյն դիմեսցեն. և՛ի բաժանումն դիմելով յամեսցին պատուիրանքն. զի մի 'ի յամել պատուիրանին՝ իրքն յապաղեսցին. և զի մի 'ի յապաղել իրացն՝ անկատար 'ի խորհուրդն լինիցի:

Բայց իմաստասէր Աբրահամ ըմբիշն և ընդ բնութեն մարտնչէր և ընդ գութսն կռուէր և հակառակ բնական իրացն զինէր. ոչ վայրապար լռէր, այլ զհրամանին այ զկերպարան աւետեաց ընդունէր, և վաղվաղակի առնոյր զորդին: Ախորժելով դեգերիմ 'ի բանս: “Առ դու զորդիդ քո զսիրելի զոր սիրես զԻսահակ, և հան զնա 'ի միոյ լերին զոր ասացից քեզ„: Ո՛վ անուանցն որք զհուրն բորբոքէին: Եւ առեալ Աբրահամու զԻսահակ և զէշն և զերկուս պատանիսն անցեալ գնաց, և ժամանեալ 'ի տեղի ինչ ասէր ցպատանիսն. “Նստարուք դուք աստ, և ես և պատանեակս երթիցուք մինչև ցանդր և դարձեալ եկեսցուք առ ձեզ„: Ակամայ մարգարէացաւ Աբրահամ, ածային շնորհին նմա զօրավիգն լեալ: Խողխողել զորդիդ քո երթաս, և ասես դառնամք առ ձեզ: Որովք կամէր թաքուցանել 'ի պատանեացն, նովիմբ մարգարէացաւ. եդ զփայտն 'ի վերայ ուսոց Իսահակայ, և առեալ հուր ելանէր 'ի լեառնն:

Եւ զինչ ասէր Իսահակ ցհայրն. “Հայր. և նա ա-

սէ՝ զի՞ որդեակ։ Ահա հուր և ահա փայտ, ո՞ւր է ոչխար ՚ի բոլորապտուղն,,։ Ահա և երկրորդ մարգարէութիւն. ոչ կարեմ այնպէս զբանիւքս զանց առնել, և ոչ թո-ղուլ զլեալըն։ Զմտաւ ած զանուանս որք հանդերձեալ էին յիւրացն ամայանալ. նա զսա հայր և սա զնա որդի, և առ ժամն միայն էին անուանքն, վասն զի հանդեր-ձեալք էին մերկանալ։ Զմտաւ ած զինչ չարչարանս ընդունէր Աբրահամ կոչեցեալ հայր ՚ի Աստուծոյ զոր պատրաստեալն էր զենուլ. հայր, ասէ։ Զինչ ոչ խորտակեցան անդամքն, զիա՞րդ ոչ անտացան միտքն լսելով յորդւոյն՝ հայր։

Այլ սակայն եհան և կապեաց զԻսահակ, և եդ զսուրն աջոյ ձեռամբն զի զենցէ զորդին իւր. Ո՜վ աջոյն հակառակ որդւոյն զլինեցելոյ. ոչ ունիմ զիարդ բանիւ յանդիման կացուցից զլեալն։ Որպէս ոչ ընդարմացաւ ձեռնն, զիա՞րդ ոչ անկաւ սուրն ՚ի ձեռանէն, զիա՞րդ ոչ լուծաւ բոլորովին և լքաւ, ո՞րպէս բաւականացաւ եղև կալ և տեսանել զԻսահակ կապեալ, զիա՞րդ ոչ մնաց յան-կարծակի մեռեալ, ո՞րպէս ջիղքն նորա պատառոտեցին, զիա՞րդ կամքն եղեն նմա բաւականք. ոչ ունիմ զիարդ բանիւ յանդիման կացուցից զլեալսն։

Որք միանգամ հարք էք կամ մարք, եկայք ձեռն կալ-կառեցէք, օգնեցէք բանիս. վասն զի ակարանամ յիրսս, և ներեցէք ինձ. այլ դուք մարտակիցք լինիք։ Զինչ կամ մեծ որդիս ունիք և գառունք. և յորժամ մի ոք ՚ի նոցանէ հիւանդանայցէ, շուրջ զայ հայրն զմահճօքն՝ համբուրելով զոտսն զձեռսն զաչսն, զերեսս արկանելով, զտիւն գիշեր վարկանի և զլոյսն խաւար, ոչ տարերքն փո-փոխելով, այլ տրտմութիւն դժուարեալ ոչ զուարճա-նայ յայլմն. անկողինք կակուղք պատրաստեալք, բժիշկք մերձ նարին, բազում սպասաւորութիւն հիւանդին, և խորշի բովանդակ հայրն։ Եթէ յղփութիւն ինչ իցէ ստացուածոց, հրաժարէ ՚ի նմանէ. և եթէ բիւր հոգ ունիցի, զամենեսին հալածէ ՚ի բաց. ոչ կարէ սթափել ՚ի տրտմութեանն որբեցութենէ. ՚ի տխրանացն լու-ծանին բոլոր անդամքն, և ամենայն աշխարհ անբաւակ-լի է նորա չարեացն։ Նմանապէս և մայրն հերարձակ շրջի կոծելով և սապանալով վասնգի բոլորովին, հայ-ցէ զօրութիւն զի բաժանեսցէ զցաւն, մնաւ.ամուդ զի

Digitized by Google

զբովանդակն իսկ ընկալցի զի հիւանդացեալ մանուկն ազատեսցի յախտէն. ոչ ինչ նմա մերձաւոր կենցաղս, ոչ ինչ և հանդերձեալն, այլ քան զամենեսեան զայնոսիկ պատուականագոյն վարկանի զնա: Ես ունիմ զխարդ յանդիման կացուցից զախտն. ներեսջիք ինձ, զախտս բնութեանն բանիւ կամիմ յանդիման կացուցանել:

Զմտաւ ած զԱբրահամ որ զայսոսիկ կրէր և իմաստասիրէր. կոխէր զբնութիւնն, և պատուիրանն քան զգութս աղեացն զօրաւորագոյն լինէր: Աշտանայր, որպէս յառաջագոյնն ասացի, իբրև զմարդ, և իմաստասիրէր իբրև զա̃ծասէր. և լինէր տեսանել զԻսահակ կենդանի վկայ, մեռեալ և ոչ մեռեալ: Քանզի որքան յօժարութեամբն էր՝ մեռաւ, և որքան ա̃յ մարդասիրութեամբն՝ ոչ մեռաւ. կերպարան այն տեառնն և պատկեր. կերպարան՝ զի եկեսցէ ճշմարտութիւնն. ստուեր էր այն՝ զի եկեսցէ ստուգութիւնն[1]: Նա միածին և սա միածին. նա 'ի վերայ ուսոյ զփայտն, և Քրիստոս 'ի վերայ ուսոց զխաչն. նա ոչ ինչ մեղուցեալ հանդերձեցաւ մեռանել, և որդին ա̃ծ ոչ ինչ մեղուցեալ խաչեցաւ. նա զենաւ և ոչ զենաւ, և միածին որդին ա̃յ սպանաւ մեռաւ և ոչ մեռաւ: Քանզի որքան 'ի յօժարութեանն էր մեռաւ, և որքան 'ի յելս իրացն ոչ մեռաւ. որդին ա̃յ 'ի մարմնի մեռաւ, այլ ա̃ծութիւնն առանց չարչարելոյ մնաց:

Միշտ ա̃ծ յորժամ հանդերձեալ իցէ իրս մեծս և անհաւատալիս գործել 'ի մարդիկ, յառաջագոյն ժամանէ և զստուերն նորա կենդանագրէ. զի յորժամ եկեսցէ ճշմարտութիւնն, մի՛ ցնորեսցին յաղագս նորա, և զի կերպարանաւն մի՛ անհաւատեսցին: Որպէս ինչ ասեմ, հանդերձեալ էր կոյսն ծնանել, և անհաւատալի է իրն. զխարդ կոյսն ծնանէր, արտաքոյ[2] բնութեան էր լեալն, անյարմարագոյն բնութեանս ծնունդն. ո՞ յաւիտենից ետես կուսի ծնանել: Եւ զի մի՛ յոքն անհաւատութիւն դիմեսցեն Հրեայքն, կանխաւ ժամանէ և նախատպէ 'ի Սառա զճշմարտութիւնն: Զի յորժամ տարակուսեսցին թէ զխարդ կոյս ծնանի, յիշե-

1 Գաղատացին տողք 55:

2 Յօրինակին գրեալ էր անտաւ- եղաւ ըստ յոյնին:

լով ասասցեն՝ եթէ զիա՞րդ Ադամ ծնաւ. մանաւանդ եթէ զնոյն զայն բան յիշեսցեն՝ զիա՞րդ երկիր կոյս էր և ծնաւ. արօրադրեալ ոչ էր, որ երկրագործէր զնա՝ ոչ ոք էր, անձրև ոչ եկն 'ի վերայ, բանջարք ոչ բուսան, ակօսք 'ի նմա ոչ պատառեցան, սոսկ էր, զսերմանցն սփռումն ոչ ընկալաւ, ցօղ ոչ զուարճացոյց զնա։

Արդ ասա ինձ զիա՞րդ կոյսն զբիւր ազգս ծաղկանց բուսոյց. ոչ ունիս մեկնել, այլ ասես՝ որպէս կամեցաւ ած։ Զնոյն օրինակ և յաղագս կուսին յորժամ տարակուսիս, ուսիր մի քննել յորժամ ած գործէ, մի հարցաներ ըստ բնութեանն յորժամ բնութեանն արուեստաւորն գործիցէ։ Ասաց՝ ընձիւղեսցէ երկիր, և վաղվաղակի եմուտ բանն յորովայն երկրի և ընդոստոյց զնորա զերկունսն, և արագ արագ կոյսն ծնանէր։ Ո՞ր բան էր որ յառաջ եկն, և բիւր ազգս ծաղկանց բուսոյց, և երկիր առնոյր զբեր զարդն բանին։ Եւ լինէր վաղվաղակի 'ի տեսանել զերկիր զուարճացեալ, զթուչուն, զտղուն, զջրայինս, զցամաքայինս, զեղտիւրս, զծաղիկս, զծառս, զորթ, զձիթենի, զբիւր ազգս ծառոց զկանուխս զանագանս, 'ի դաշտս, 'ի ծովեզերս, 'ի լճեզերս, մերձ 'ի գետս, առ աղբերս, 'ի դաշտայինս, 'ի լեռնայինս։ Ո՞ր բան էր որ գործէր, և երկիր զբեր քաջավայելչութիւնն առնոյր։ Մեկնեաց ինձ, ով հրեայ, զայս. այլ ոչ ունիս։ Տեսանես որպէս մոլորութիւն յինքենէ ընկճի։

Հայեաց հաւատեաւ, որպէս ասացի, եթէ յորժամ հանդերձեալ է ած առնել իրս ինչ որ թուիցին մարդկան անհաւատալի, կանխաւ զօրինակն և զստուերն զեկուցանէ, զի մի յանկարծակի եկեալ ճշմարտութիւնն յանհաւատութիւն զնոսա արկցէ։ Պարտ և արժան էր որդւոյն այ գալ և մկրտել զմարդկան ազգ, զհին մարդն հեղձուցանել և զնոր մարդն նորացուցանել, զմեղս հեղձուցանել և զօրհնութիւնս 'ի վերայ ածել, զնզովսն տապականել և զարդարութիւնսն շնորհել և զմարդիկ հրեշտակս առնել. զչնացողն հանդերձեալ էր առնուլ և որդի առնել, որպէս և արարն, զոչ արժանի երկրիս պատրաստեալ էր առնուլ և արժանաւոր երկնի առնել։

Եւ զի այս սքանչելիք մեծամեծք էին և անհաւատալիք յոլովից, զիա՞րդ նոյն բնութիւն զմի մարդն հեղձուցանէր և զմիւսն արդարացուցանէր, զմեղսն ապա-

Digitized by Google

կամնէր և զարդարութիւն վերստին ածէր 'ի վերայ, զի մի ասիցեն հրեայք առաքեալք են քրիստոնէից իրք, զիարդ կարողութիւն է նմին ջրոյ զմիննն հեղձուցանել և զմիւսն կենագործել. մի է ջուր, և զիարդ կարէ երկուս զօրութիւնս առնել։ Եւ զինչ կանխաւ առնէր Տէր, զի լրութիւն հրէիցն յանդիմանեսցի։ Որդիքն Իսրայէլի վշտամայլին յԵգիպտոս ընդ գործ և ընդ աղիւս բևեռեալք և ընդ այլ տարժամմունս. գոչէին ողբալով և ասելով. ո՞ զմեզ փրկեսցէ 'ի ծառայութենէ եգիպտացւոցս, կորեաք սատակեցաք 'ի չար գործս։

Եւ ապա զինչ. լուաւ նոցա Տէր և առաքէր զՄովսէս, նշանօք և զարմանալեօք զնա զինեալ։ Իսկ Մովսէս բերելով հականակ փարաւոնի զտանջանս, բանակս չար մարախոյ 'ի վերայ եած, ջորեկին հրամայեաց և եկն, զջուր յարիւն փոխոխեաց, խաղաւարտս արար եռալ 'ի մարդկան և 'ի չորքոտանիս։ Եւ յորժամ զկնի հարուածոցն այնոցիկ ոչ ետ տեղի 'ի փարաւոն, մահ 'ի վերայ անդրանկացն ածէր Տէր։ Եւ զի կարճառօտեցից զբանս, վասն զի պարտ և արժան է համառօտել, զի մի շաղեալք 'ի նմին ոչ կարասցուք կատարել զպատճառն, ելին յԵգիպտոսէ և եկին մերձ 'ի ծովն։

Զինէր զհետ նոցա փարաւոն հանդերձ յոլովութբ կառօք և ձիովք. և յորժամ տեսանէր Իսրայէլ զբանակն երկնչէր։ Կային յեզր ծովուն։ Եւ ասէր Տէր զՄովսէս. «Զի գոչես առ իս». և սակայն ոչ ինչ ասէր Մովսէս։ Այլ Տէր եմ, ասէր, ոչ 'ի շրթանցն լսեմ, այլ որ 'ի սրտին՝ ճանաչեմ. զի ուսցիս եթէ ոչ յաղաղակելն են աղօթք, այլ 'ի կամսն. «Զի գոչես առ իս»։ Շրթունք նորա չխօսէին, բայց սիրտն գոչէր. քանզի աղօթք 'ի բարի կամացն խնդրին, այլ ոչ յուժգին աղաղակելն։ «Զի գոչես առ իս». զգաւազանդ որ 'ի ձեռին քում ձգեա 'ի վերայ ջրոյդ, և անց դու և ամենայն Իսրայէլ։ Ձգեաց Մովսէս զգաւազանն որ 'ի ձեռին իւրում, և եհար զջուրն, և անկարգաբար բերումն ջրոցն ցամաքեցաւ և զիւր բնութիւնն մոռացաւ։ Քանզի այսպիսի են տարերք, յորժամ ակնարկեսցէ Տէր, նոքա զիւրեանց բնութիւնն մոռանան և զզօրութիւնն սանձեն։ Զի իբրև աղախին ոք բարեմիտ ծովն՝ ըզ-տեառն ծառայն տեսանելով, հաւանէր և հնազանդէր.

չեկեալք դարձեալ մեծք էին և անհաւատարիմք, չարաբարոյ անձանց հրէիցն կանխաւ նշանակէր ած և յառաջագոյն առակաւորէր ոչխարաւն: Քանզի զեգիպտացւոցն զանդրանիկս հանդերձեալ էր կորուսանել, զի մի ընդ նոսա սատակեսցին և յիսրայէլացւոցն, վասն զի խառնակեալ էին ոմանք եգիպտացւոցն ընդ ուստերս որդւոցն Իսրայելի. և առաւ զինչ առնէր: Ասէր Մովսէս. մի գուցէ սատակիչ հրեշտակն ընդ նոսա սատակեսցէ և զորդւոցն Իսրայելի զանդրանիկս: Իսկ զինչ առնա ած. "Պատուիրեա որդւոցն Իսրայելի, և առցեն ոչխար անարատ արու տարևոր ըստ ազգակցութեան իւրեանց. և եթէ ոչ լիցին բաւական, ասէ, դրացի զդրացի կոչեսցէ և ազգակից զազգայինն, և այնպէս առնուցուն զոչխարն, ոչխար անարատ արու տարևոր. և զենէք, ասէ, ըստ ազգակցութեանն և ըստ տանց հայրենեաց. զմիսն կերիջիք հրով խորովեալ, և մի ինչ 'ի նոցանէ թողուցուք, և զարիւնն շաղախեսջիք 'ի վերայ սեմոցն. և կերիջիք այսպէս. գօտիս ունելով ընդ մէջս ձեր և կօշիկ յոտս և ցուպք ձեզ 'ի ձեռս ձերում և ճրագունք ձեր լուցեալք":

Ահա նոր իրք. յոտսն կալով կերիջիք, ընդէ՞ր արդեօք. ուղեգնացի ձև էր: Մէջք ձեր գօտեաւ. և այս ճանապարհորդի ձև: Ցուպք 'ի ձեռս ձեր. և այս ձև ուղեգնացի: Ճրագունք լուցեալք. ընդէ՞ր. վասն զի երեկոյ ժամանեաց: Վասն էր այնպէս ուտէին իբրև զուղեգնացս. ընդէ՞ր, նա ասացից. յաղագս օրինակին և ճշմարտութեանն: Վասն զի բազում անգամ հարաւ Փարաւոն և ոչ արձակեաց զնոսա: Ասէր ցնոսա Մովսէս. հարկանիս այսօր և արձակէ. հարկանէր և ոչ արձակէր. և դարձեալ տանջէր և ոչ արձակէր. Բիւր անգամ, և ոչ արձակեաց: Ի տասներորդումն հանդերձեալ էր արձակել, զճանապարհորդաց ասէր առնուլ զձև. զի յետ ուտելոյն ոչ է ձեր հաղորդութիւն ինչ ընդ եգիպտացիսն: Որդ առէք, ասէր, ոչխար անարատ արու տարևոր, և զենէք զնա և օծէք արեամբն նորա զսեամս ձեր. զի 'ի գալ հրեշտակին, թէպէտ և յաղագս ձեր ոչ խնայեսցէ: Իսկ այնուքիկ ոչ յաղագս հրեշտակին լինէր, այլ վասն արեանն որ զիսն փրկեաց: Քանզի որպէս ոչ արդեօք հրեշտակն զընտրողութիւն եգիպտա-

ցւոցն եւ Հրէիցն ճանաչէր. որ զանդրանիկն զխոսաց, զեգիպտացին եւ զեբրայեցին ճանաչել ոչ կարէր:

Արդ յորժամ թշնամանիցէ զքեզ եւ ասիցէ՝ յարինն յուսաս, եւ դու ասա ցնա. ոչ ամաչես, լիրբ. դու արեամբ ոչխարի փրկեցար, եւ ես արեամբ տեառն ոչ փրկիցիմ: Հրեայքն ուտելով ճեպելին ելանել յԵգիպտոսէ, եւ քրիստոնեայ ուտելով փութասցի 'ի բաց վճարել յաշխարհէս. վասն զի եւ Պաւղոս այսպէս քեզ հրամայէ. “Զգեցարուք զսպառազինութիւն ա՛ծ. զգեցարուք զզրահսն արդարութեան. զգեցուցէք զոտս 'ի պատրաստութի աւետարանին խաղաղութեան”: Խոչիկք եւ անդ եւ աստ: Մովսէս ուղեգնացաց եւ Պաւղոս իբրեւ զինուորաց. նոքա յերկրէ յերկիր, վասն այնորիկ ճանապարհորդք. իսկ ես յերկրէ յերկինս, սորին աղագաւ զինուոր: Վասն զի զճանապարհն իմ աւազակք ունին, դեւք ինձ պատահեն. յաղագս այնորիկ ունիմ զհամարձակութիւնն մերկացեալ, նորին աղագաւ ըզզրահսն արդարութեան, վասն նորին եւ զգօտին ճշմարտութեան: Քանզի ոչ եմ ուղեգնաց միայն, այլ եւ զինուոր. “Նեղ եւ անձուկ է ճանապարհն որ տանի 'ի կեանս”:

Արդ տես զիարդ ձեւացուցանէ Պաւղոս, եւ որպէս ձեւացուցանէ Մովսէս, զիարդ զգալիս եւ որպէս զհոգեւորսն, զիարդ զնոյնս ասէ: Փութասցուք այսուհետեւ Աբրահամու նմանել, զի եւ հանդիպեսցուք 'ի նորա գոգն շնորհօք եւ մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

## ԱՌ ՈՐՍ ԹՈՂՈՒՆ ԶԺՈՂՈՎՆ. ԵՒ ՅԱՂԱԳՍ ՈՉ ԶԱՆՑ ԱՌՆԵԼՈՅ ԶՎԵՐԱԳԻՐ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԳՐՈՑ, ԵՒ Ի ԳԻՐ ՄԵՀԵՆԻՆ, ԵՒ Ի ՆՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԵԱԼՍՆ

**Ոչինչ այս. որքան յառաջէ՛ մեր տօնս, այնքան եւ ժողովն նուազ լինի: Բայց մի տրտմեսցուք մեք որ մերձս եմք. նուազ լինիմք բազմութեամբ, սակայն թուով, ոչ սուղ ցանկութեամբք: Նուազ լինիմք. զի ընտրեալքն երեւելիք լինիցին 'ի ձեզ, եւ ուսանիցեմք ոյք սովորութե. եւ ոյք բաղձանօք ոճայլին բանից գան այսր, ոյք ցանկու-**

թեամբ տարեորական տօնին, և ոյք փափագանօք հոգևորական ատենութեանս: Ամենայն քաղաքս էր աստ յառաջնում կիւրակէին ի յարկ, ալեաց նմանեալ լինէր բազմութիւնն որք երթային և գային. բայց ինձ քան զամենայն յոլովութիւն ցանկալի է ձեր խաղաղութիւնդ, ինձ քան զամբոխ և զխռովութիւնն զայն պատուականագոյն է ձեր հանդարտութիւնդ: Յայնժամ մարդիկ մերձ եկեալ թուէր, իսկ այժմ միտս երկիւղածութեամբ լցեալս:

Եւ եթէ ոք զժողովս զայս սակաւամարդ և զյոլովս յաղքատաց խմբեալս, և զայն ժողովս բազմամարդ և զյաւէտ 'ի ճոխացն հաւաքեալս, եթէ զերկոսին զժողովս զայսոսիկ իբրև լծակցաւ կշռոց կամեսցի ոք կշռել, գտցէ միտեալ զսա. քանզի թէպէտ և նուազ է թուով, այլ պատուականագոյն է յօժարութեամբ: Նոյնպէս և 'ի կշիռս լինի. եթէ ոք տասն սատեր ոսկւոյ առնլով 'ի միում նժարի դնիցէ, և 'ի միւսումն ևս նժարի հարիւր պղնձի, հարիւր պղնձիքն յինքեան հակեն զլծակսն, բայց տասն ոսկի սատէրքն բնութեամբն զերազանցագոյն յոլովագոյն ևս ձգեն, ծանրագոյնք և պատուականք են ըստ բնութեան բանի. որպէս զի և սակաւ թուով քան զյոլովսն պատուականագոյն լեալ և կարևոր:

Բայց զի ձեզ օրինակս 'ի սովորական իրացս բերեմ. պարտ է և արժան է զնոյն ինքն զՏյ զկամսն յաղագս այնոցիկ 'ի մէջ բերելով երևեցուցանել: Զի՞նչ ասէ. "Լաւ է մի որ առնէ զկամս տեառն, քան զբիւր անօրէնս". քանզի է բազում անգամ մի մարդ պատուականագոյն քան զբիւր: Եւ զի՞նչ ասեմ է մի մարդ յոլովակի որ արժէ զաշխարհ. մանաւանդ եթէ ոչ միայն զաշխարհ արժէ, այլ կարևորագոյն ևս քան զաշխարհ և պատուականագոյն. և զայնորիկ զվկայութի՛ 'ի Պաւղոսի բանիցն բերեմ: Քանզի զմարդիկ յիշեաց զաղքատս, զհալածականս, զթափառականս և զչարչարեալս, այսպէս ասէ. "Շրջեցան մաշկօք, մորթովք այծից, կարօտեալք, նեղեալք, վտանգեալք, զորս ոչ արժէ աշխարհ": Զի՞նչ ասես. զկարօտեալսն և զհալածեալսն և որք ոչ ունէին գաւառս, զնոսա ո՞չ արժէ աշխարհ. ո՞չ տեսանես որքան որոց ընդդէմ կացուցեր:

Տեսանեմ, ասէ, կարի քաջ. և զորին աղագաւ ա-

սեմ եթէ ոչ արժէ աշխարհս զնոսա։ Վասնզի զդահեկանացն զայնոցիկ զանուութիւնս գիտեմ յայտնապէս. զերկիր և զծով և զթագաւորս և զիշխանս և զամենայն միանգամայն զանուութիւնս մարդկան, և երկուս կամ երիս աղքատս այնպիսիս ընդդէմ կշռելով վստահանալով ասեմ՝ թէ աղքատքն միայն 'ի բաց։ Հողածնեալք լինին 'ի գաւառէ, այլ ունին գաւառ զվերինն Երուսաղէմ. աղքատութեամբ շրջէին, այլ ձոխք էին բարեպաշտութեամբ. մարդկան էին թշնամիք, այլ Աստուծոյ բարեկամք։ Եւ ո՞յք էին սոքա։ Հեղիան եւ Եղիսէոս և առաքեալքն որ իբրև զնոսա։ Եւ մի ինձ զայս ասես թէ և ոչ կարեւոր կերակրոյք յղփանայինն. այլ զի բերանն Եղիայի զերկինս փակեաց և եբաց, և մաշկեակ նորա զՅորդանան անդրէն դարձոյց։

Զայնոսիկ զմտաւ ածեմ, հրճուիմ և վստահիմ. զուարճանամ յաղագս ձեր որ մերձ էք, և վստահիմ վասն նոցա որք ոչ են մօտ. ցաւեմ յոյժ և երկնչիմ և խորտակիմ և տրտմիմ։ Վասնզի ով որ և որ յոյժ անզգա իցէ՝ ոչ վստահիցի, զյորովս տեսանելով 'ի սատանայի փորձն վայելողս։ Եւ սակայն եթէ հաւատար վայելէին, և ոչ մի էր մեզ ներունն թողութեան և ոչ պատասխանիք. իսկ յորժամ և գանհէ զմեզ, պակասեալ է ամենայն բան մեր։ Վասնզի հանապազօր կոչէ և ոչ ոք զանդաղի; ոչ ոք խոսէ, ոչ ոք զանպատուութիւն զիբացն պատճառէ, այլ իբրև գօտեպինդք և արձակեալք յամենայն հոգւոյ այնպէս ընթանան ամենեքեան. ոչ ծերոյն յալեաց պատկառէ, ոչ մանուկն տեսանէ զբոց բնութեանն և զցանկութեանն, ոչ ձոխն զպատիւն իւր ամաչեցուցանել վարկանի. իսկ եթէ յեկեղեցի գալ լինիցի, իբրև 'ի բարձրութենէ իմեքէ և 'ի պատուոյ անկանել այնպէս դանդաղի, և զկնի այնորիկ փքայ իբրև ոչ իմն շնորհելով. և 'ի տեսարանսն փութայ ուր պակշոտութեանն են տեսութիւնք և լսելութիւնք, և ոչ կարծէ ամաչեցուցանել զինքն, ոչ զձոխութիւնն իւր և ոչ զքաջատոհմութիւնն։

Կամէի գիտել ուր են այժմ որք յաւուրն յայնմիկ զմեզ խածանէին. քանզի վստահ էր նոցա մերձաւորութիւնն. ախորժէի գիտել զինչ գործիցեն, յինչ քան յայտաքիկ հարկաւորագոյնս պարապիցեն. անզգարապար

թիւն և ոչ մի, բայց անկարգաւորութիւն միայն. և զինչ զնմանի քան զայս մոլեկանագոյն։ Ո՞ր աղագաւ մեծամեծս խորհիս, ով մարդ, և կարծես մեծ ինչ գոր-ծել եթէ մերձ եկեալ այսր լուիցես յաղագս փրկութե-քո անձինդ. վասն էր և յո՞ր սակս. վասն ընչեղութեա՞ն, յաղագս մեծագին հանդերձից. և ո՞չ ամփիցես զմտաւ ե-թէ որդանցն են այն նիւթքն և բարբարոս մարդկան գիւտք. զի և բազք նմա վարին, և իզացեալք և գե-բեղջամանիկքիկոց և ատաղձք։ Ո՞րանիկ զարդարութեան ընչեղութիւն, և թերևս իջցես յընդունայն ամբար-տաւանութենէդ, դիտես զանութեանն ակարութիւն. հող և մոխիր ես, գաղտաղ և փոշի, ծուխ և ստուեր, խոտ և ծաղիկ խոտոյ։ Բայց իբրև բնութեամբ կենակից ես և մեծամեծս խորհիս. և զինչ քան զայս ծիծա-ղելի իցէ։

Բայլ բազում մարդկան իշխես. և զինչ յայնմանէ օգուտ, յաղագս մարդկան իշխես և յախտից գերեալ ես և ծառայ։ Որ օրինակ եթէ 'ի տան սարկաց նեղի-ցէ և վէրս առնուցու, և արտաքս ելեալ 'ի հրապարակս մեծամեծս խորհիցի այլոց իշխանութեանց. հարկանէ զքեզ անառակութիւնն, վիրաւորէ պատկառութիւնն, ամենայն ախտից ծառայ ես և մեծամեծս խորհիս, վասն զի հանապազեաց իշխես։ Այլ երանի թէ նոցա իշ-խեսցես և նոցին էիր զուգապատիւ։

Ոչ զմարմութիւն ինչ չարախօսելով զայս ասեմ, այլ որք չարաչար փարթամութեանցն վարին. զի ոչ ընչե-ղութիւնն է չար եթէ 'ի պատշաճ իւր նովաւ վարի-ցիմք, այլ ապերասանութիւնն և ամբարհաւաճութիւն։ Եթէ չար է ընչեղութիւնն, ոչ էր արդեօք Յոբ ար-դար, անարատ, ճշմարիտ և աստուածապաշտ. եթէ չար էր փարթամութիւնն, ոչ արդեօք ամենեքեան աղքատք երթայ 'ի գոգն Աբրահամու, որ ունէր երեքհարիւր և ութևտասն ընդոծինս։ Արդ ոչ եւս փարթամութիւն՝ այլ անօրէն նորա պէտքն են չար. և զոր օրինակ յա-ռաջագոյն յաղագս արբեցութեան խօսելով ոչ զգինի բամբասեցի, քանզի ամենայն ստացուածք բարի է և ոչ ինչ խոտան հանդերձ գոհութեամբ ճաշակեալ, նոյն-պէս և այժմ ոչ զընչաւէտսն ստգտանեմ և ոչ զինչսն բամբասիցեմ, այլ զչարաչար վարեցեալսն նոքօք յաբբ-

Digitized by Google

բերեն, և ոչ այլ ինչ 'ի պէտս նոյնպիսիս ձեռնարկել ներեն. այլ է նոցա դատարկութիւն շղթայ, և սակայն ոչ հակառակ ինչ ասեն: Իսկ ես այնպիսի ինչ ոչ ասեմ, ոչ զեօթն օր դատարկանալ և ոչ տասն. այլ զերկուս ժամն միայն փոխ տուր ինձ յաւուրն, և զայլսն դու կալցիս, և ոչ զայն ինչ զժամն 'ի ներքս բերեմ: Մանաւանդ թէ ոչ ինձ տաս զխոյն զերկուս ժամն, այլ քեզ ինքեան. զի մխիթարութիւն ինչ աղօթից զհարցն ընկալցիս, զի օրհնութեամբ լցեալ գնասցես աստի, զի ամենայն ուստեք ամրացեալ երթիցես, զի հոգևոր ըղձէնն առցես, անմարտնչելի լիցիս և անըմբռնելի 'ի սատանայէ:

Ո՛ ինչ հրաշալի, ասա ինձ, քան թէ աստ դեգերել. և եթէ զբովանդակ օրն աստ պարտ էր լինել, զի՞նչ պարկեշտագոյն և ամրագոյն քան զայն, ուր այսքան եղբարք, այսքան հարք, ուր հոգին սուրբ, ուր Յիսուս 'ի մէջ և հայրն Յիսուսի. զի՞նչ այլ քան զայս խնդրեսցես, զո՞ր ժողովարան, զո՞ր խորհրդարան, որպիսի՞ ժողով: Այսքան բարիք 'ի սեղանի, լսելութիւնս 'ի յընդունելութիւնս, և դու յա՞յլս դեգերեալ հայիս. և զո՞ր արդեօք ունիցիս ներումն թողութեան:

Ո՛չ այս ոչ զի դուք լսիցէք՝ ասեմ, քանզի և ոչ պէտք իսկ ունիք դեղոյս այսոցիկ՝ դուք որ գործով ընկալայք զառողջութեանն հնազանդութիւն, որք 'ի ձեռն փութոյ 'ի փափագանս վայելեցէք. այլ ասացի առ ձեզ, զի լսիցեն նոքա 'ի ձէնջ: Մի ասէք եթէ վայրապար բամբասեաց զոչ եկեալսն այսր, այլ զամենայն իսկ վերստին նոցա պատմեսջիք զբանս. յիշեցուսջիք զ[illegible]րեայսն, յիշեցուսջիք նոցա զկենցաղական իրս, ասասջիք որքան փոյթ յաղագս աշխարհական իրաց ցուցանեն, ասասջիք որքան լաւագոյն է ժողովս, Ճառեսջիք որքան վարձս յարմարի այսր ժողովելոցս: Քանզի եթէ բամբասեաց ևեթ ասիցէք, և եթէ ոչ ասիցէք թէ որպէս ստգտի, զպատմութիւնն ընդոստուցանէք և զվէրսն գործէք, բայց զդեղն 'ի վերայ ոչ դնէք. իսկ եթէ ուսուցանիցէք թէ ոչ իբրև զթշնամի չարախօսեցի, այլ իբրև զբարեկամ վտանգեցայ, հաւանեցուցանէք զնոսա՝ եթէ վեհագոյն են հարուածք բարեկամաց քան եթէ զկամակոր համբոյրս թշնամեաց. և կալցեն հանդերձ յո-

լով չարախօսութեանց զաստուածայնոյն. քանզի ոչ 'ի բանս, այլ 'ի միտս առողջին հայրին։ Նմանապէս բժշկեցէք զեղջերս ձեր. Մեք փրկութեան պարտականք եմք ձեզ մերձ եկեղեցւոյ, և դուք ոչ եկեղեցւոյ այսր։ Մեք կարեմք առ նոսա մերձենալ մեք. Հալածեալք առ նոսա 'ի ձեռն ձեր և մերում վարդապետութեանս. կամիմք զի մեզ լիցի առ նոսա ձեր սէրդ. արասջիք մերում բանիցս ձերովք լեզուօք անցանել 'ի լսելիս նոցա։

Մինչ թէ բաւականապէս ասացի յաղագս մնացելոցն 'ի ժողովոցս, և ոչ ինչ պիտոյ յաւելեալս յաւելուլ։ Պարտ հնար. և այլ ասել. այլ զի մի զամենայն ժամս յայն ծախիցեմք զնոսա ստգտանելով, և զձեզ ոչ ինչ օգտելով զեկեղեցւոյդ այսր, բեր և ձեզ առաջի դիցուք օտար կերակուր։ Յայս ասեմ, ոչ ըստ Հոգևորական սեղանոյն, այլ ըստ ձերում լսելեացդ։

Խօսեցայք ընդ ձեզ յառաքելական բանից յարանում աւուրս և յաւետարանական՝ յորժամ յաղագս Յուդայի խօսեցաք. խօսեցաք և ընդ ձեզ 'ի մարգարէականաց. այսօր կամիմ 'ի գործոց առաքելոց ասել. վասն այնորիկ առնացի կերակուր օտար։ Եւ օտար, վասն զի կարգի ոչ այժմ գրեալ է. և օտար, վասն զի թուի թէ անընտել իցեն ձեր լսելիքդ յայսպիսի լսելութիս։ Յոլովից գիրքս այս և ոչ ծանօթ իսկ են. բազմաց թուի յայտնի, և դարձեալ անյայտ առնի. և լինի ոմանց անծանօթութիւն, և ոմանց գիտութիւնն։ և պղերգութիւնն պատճառք։ Որով զի և անծանօթքն ուսցին, և որք կարծեն յայտնապէս գիտել՝ թէ յոյժ խորին միտս ունի, հարկաւոր է զերկոցունց զծուլութիւնն ուղղել այսօր։

Նայց պարտ և արժան է յառաջագոյն ուսանել, և զգիրս զայս գրեաց. քանզի այս է առաքինի խնդրոյ կարգաւորութիւնն, նախ առաջին զգիրողն գիտել, մարդ ոք իցէ արդեօք, թէ ոչ. եթէ մարդ, ստուգապահագոյնք. քանզի "Մի զոք կոչէք, ասէ, ձեզ վարդապետ 'ի վերայ երկրի"։ զի եթէ ոչ, ընկալցուք. զի 'ի վեր անդ է վարդապետութիւնն մեր. և այսորիկ պատիւք են անտարբերս այսորիկ մի ինչ 'ի մարդկանէ ուսանել, այլ յայն 'ի ձեռն մարդկան։ Պարտ է այսուհետև քննել զգիրս ով գրեաց, և երբ գրեաց, և յաղագս որոյ, և էր աղագաւ 'ի սմին օրինադրեցաւ զգիրս զայս ընթեռ-

նուլ․ քանզի թուի ինձ թէ ոչ միշտ լսիցէք 'ի տարւոջ ընթերցեալ զգիրս զայսոսիկ։

Եւ զայս պիտանացու է գիտել․ զի այսոցիկ խնդրել պատշաճ է ընդէր զայս վերագիր ունիցի՝ "Գործք առաքելոց"։ Զի և ոչ զվերագրօքն վարկպարազի պիտոյ է զանց առնել, և ոչ վաղվաղակի 'ի նոյն ինքն մտանել 'ի գիրսն․ այլ յառաջագոյն տեսանել զանուն գրոցն։ Զի զոր օրինակ 'ի մեզ գլուխն ծանօթագոյն առնէ զայլ մարմինն, և դէմքն գեր 'ի վերոյ կացեալ երևելի զնա գործեն, նոյնպէս և վերագրութիւնն դերագոյն քան զանկուածն կալով 'ի վերայ ճակատուն՝ երևելի մեզ առնեն զգիրսն։ Ո՞չ տեսանէք և 'ի թագաւորական պատկերսն, զի 'ի վեր անդ կայ պատկերն, և զթագաւորն ունի գրեալ․ իսկ 'ի խոնարհ 'ի խարսխին գրեալ են թագաւորին նահատակութիւնք, յաղթութիւնք, իրաց ուղղութիւնք։ Նոյնպէս և 'ի գիրսն է տեսանել․ գրեալ է թագաւորական պատկերն 'ի վերայ, և 'ի ստորև գրեալ լինի յաղթութիւնն, առաքինութիւնն, ուղղութիւնք ամենայն։ Նոյնպէս և ըղթուղթն յորժամ ընդունիմք՝ առնեմք․ ոչ վաղվաղակի լուծանեմք զկապն և ոչ ճեպով զ'ի ներքս գրեալսն ընթեռնումք․ այլ նախ առաջին յարտաքին վերագրութիւնսն յառիմք, և անդուստ ուսանիմք զառաքողն, և թէ պարտ իցէ ընդունել։ Եւ արդ ո՞չ իցէ արդեօք յիմարութիւն յաշխարհական այսքան վարիլ փութով, ոչ խռովիլ և ոչ ամբոխիլ, և ըստ կարգի յիւրաքանչիւրսը երթալ․ իսկ աստ գթել և վաղվաղակի 'ի վերայ ընթանալ 'ի սկզբանն։ Կամի՞ք ուսանել որքան է վերագրութեանն ուժ, որքան զօրութիւն, որչափ ամբարեալ կայցեն գանձք 'ի վերագրութիւնս գրոցն․ լուարուք, զի մի՛ արհամարհիցէք զվերագրութիւն ա̃ծային գրոցն։

Եմուտ երբեմն յԱթէնս Պաւղոս․ 'ի սմին յայսմ 'ի գիրսն է գրեալ պատմութիւնն․ եգիտ 'ի քաղաքին ոչ ա̃ծային գիրս, այլ բագին հաստատեալ մեհեան կռոցն․ եգիտ զվերագիրն որ ունէր այսպէս, "Անծանօթին ա̃յ"․ և ոչ զանց արար, այլ 'ի վերագրէ բագնին զբագինն կործանեաց։ Պաւղոս սուրբ որ զհոգւոյն շնորհս ունէր՝ ոչ զանց արար զբագնին վերագրութ̃ն, և դու զվերագրէ գրոցն զա՞նց առնես․ նա ոչ ենթող զոր

գրեցին աթենացիքն կռապարիշտք, և դու զոր գրեաց հոգին ո՛չ կարծես հարկաւոր լեալ. և զո՞ր թողութիւն ունիցիս: Բայց տեսցուք որքան շահ 'ի վերագրէն է: Յորժամ տեսանիցես վերագիր 'ի բագնի գծեալ, որ այնքան ընձեռեաց զօրութիւն, ուսցիս եթէ ևս առաւել վերագիր ա՟ծային գրոց զայն առնել կարեն: Եմուտ 'ի քաղաքն, եգիտ բագին յորում էր գրեալ "Անծանօթին ա՟յ": Զինչ պարտ և արժան էր առնել: Հեթանոսք էին ամենեքեան, ամբարիշտք բոլորեքեան. զինչ պարտ էր առնել: Յաւետարանն՞ խօսել, այլ ծաղր առնէին. իսկ 'ի մարգարէի՞ց և յօրինաց գրոց, այլ ոչ հաւատային:

Եւ ապա զինչ արար. 'ի բագինն ընթացաւ և զինուք պատերազմողացն զնոսին ըմբռնեաց: Եւ այս է զոր ասէրն. "Եղէ ընդ ամենայնի ա՟մ, ընդ Հրէայսն իբրև զՀրէայ, ընդ անօրէնս իբրև զանօրէն": Ետես զբագինն, ետես զվերագիրն, ամբարձաւ հոգւովն: Քանզի այնպիսի է հոգւոյն շնորհ, ամենայն ուստեք առնէ շահել փութացելոցն 'ի նա. այսպիսի է հոգևորական զէնք. "Քանզի գերեւմք, ասէ, զամենայն միտս 'ի հնազանդութիւն Քրիստոսի": Ետես զբագինն և ոչ երկեաւ, այլ փոփոխեաց զնոցա միտսն. և զոր օրինակ 'ի պատերազմի զօրավար տեսանելով զինուոր 'ի կարգի պատերազմողացն քաջ և մեծ, և ունելով զվարսիցն զգլխաւորն 'ի յիւր դասն փոխեսցէ և պատրաստեսցէ յաղագս ինքեան պատերազմել, նոյնպէս և Պաւղոս արար. իբրև 'ի մարտի պատերազմողացն զվերագիրն գըտանելով 'ի բագնին գրեալ, յիւր դասն փոփոխեաց, զի Պաւղոսիւ ընդ աթենացիսն կռուիցի, այլ ոչ աթենացւովքն զՊաւղոս ընկենուցու: Սուսեր աթենացւոցն սուր պատերազմողացն վերագիրն այն. այլ նորին սուսերաւ զպատերազմողացն զգլուխն եհատ: Ոչ էր այնպէս հրաշալի, եթէ իւրովք զինուք էր ըմբռնեալ զնոսա, քանզի այն ըստ կարգի բանի իմն երևէր. բայց նոր և հրաշափառագոյն այն լինի, յորժամ զպատերազմողաց զզէնս՝ նոցին մեքենայիցն 'ի վերայ բերելով կործանիցէ, յորժամ զսուրն զոր հակառակ մեզ բարձեալ ունիցին՝ այն նոցա զկարեւոր վէրն 'ի վերայ ածիցէ:

Տեսան զի այս իսկ հոգւոյն զօրութիւն է. այսպէս և

Դաւիթ արար երբեմն, եւ մերկ 'ի զինուցն, զի երեւեսցի մերկ այ շնորհն: Մի՛ ինչ, ասէ, մարդկային լիցի յորժամ ած յաղագս մեր պատերազմի: Եւ մերկ 'ի զինուց և կործանեաց զաշտարակն զայն: Իսկ ապա զի ոչ ունէր զէն, յափշտակելով զնորին զԳողիաթու ըղսուսերն, եհատ զգլուխ բարբարոսին. նոյնպէս և Պաւղոս արար վերնագրով այնուիկ: Իսկ զի յայտնագոյն լիցի և յաղթութեանն օրինակ, և զօրութիւն վերնագրին ասացից ձեզ: Եգիտ բագին մի յորում գրեալ էր «Անծանօթի այ»: Իսկ ո՛վ էր անծանօթ ած. այլ Քրիստոս որ 'ի նոցանէ անծանօթ ած: Տեսանես զիարդ հանճարով փոփոխեաց առ ինքն զիմաստն. տեսանես որպէս գերեաց զվերնագիրն, ոչ 'ի չարիս գրողացն, այլ 'ի փրկութիւն նոցա և 'ի նախախնամութի: Իսկ զի՞նչ, աթենացիքն արդեօք յաղագս Քրիստոսի՞ գրեցին զայն: Ոչ եմ. եթէ վասն Քրիստոսի գրեալ էր աթենացւոցն, ոչ էր այնպէս սքանչելի. այլ այն է՝ զի նոքա այլ աղգ գրեցին, իսկ սա այլաղգաբար փոփոխեաց:

Բայց նախ առաջին հարկաւոր է ասել էր աղագաւ աթենացիքն գրեցին «Անծանօթի այ»: Յո՞ր սակս գրեցաւ: Բազում աստուածս ունէին նոքա, մանաւանդ թէ յոլով դեւս. վասն զի «ամ աստուածք հեթանոսաց դեք են». դաւառականս և օտարս որպէս և զմարդիկ: Տեսանէք որքան ծաղր էին իրքն: Եթէ ած իցէ, ոչ ևս օտար. քանզի ամենայն աշխարհի տէր է: Զայնոսիկ զոմանս 'ի հարցն առեալ ունէին և զոմանս 'ի մերձաւոր ազգացն, որպիսի ինչ 'ի սկիւթացւոցն յեգիպտացւոցն 'ի թրակացւոցն. և եթէ արտաքին ուսմանցն հըմուտք էիք, զայնոսիկ զամենայն պատմութիւնս ընթեռնուլ ձեզ: Իսկ զի ոչ 'ի սկզբանն զամենայն ընկալան, այլ փոքր փոքր 'ի ներքս մտին 'ի նոսա, ոմանք առ հարբքն և ոմանք առ հաւուն և կեսքն առ նոցա իսկ դարուն խմբեալք ասէին: Զոր օրինակ զնոսա անգիտանայաք, և զկնի ընդունելով ծանեաք զնոսա, նոյնպէս 'ի դէպ է անգիտանալ զոք որ իցէ ած. և մեք ոչ ճանաչեմք, և սպասաւորութիւն նորա զանխլանայ 'ի մէնջ: Իսկ ապա զի՞նչ. զի մի՛ լինիցի այն, շինեցին բագին և գրեցին «Անծանօթի այ», այսպիսի իմն ասելով վերագրաւն. եթէ իցէ ոք ած այլ՝ որ ոչ ծանօթ իցէ մեզ, և նմա սպաս

տարցուք։ Տես զգերազանցութիւն կրկնադիւութեն[1]․ յաղագս որոյ և Պաւղոս սաստելով ասէր․ «Ըստ ամենայնի կրկնադեւս տեսանեմ զձեզ»։ Զի ոչ ծանօթ դեւս պաշտէք, այլ և որք ոչ են ձեզ ծանօթ։ Արդ նոքա յաղագս այսորիկ գրեցին «Անծանօթի այ»․ իսկ Պաւղոս մեկնեաց նոցա։ Յաղագս այլոյ առէին, բայց Պաւղոս փոփոխեաց 'ի Քրիստոս, գերելով զիմաստսն ըստ ինքեան կացոյց 'ի դասուն իւրում։ «Զոր դուք անգիտութեամբ պաշտէք զնա, ես զնոյն պատմեմ ձեզ»․ քանզի անծանօթ ոչ այլ ոք էր, բայց Քրիստոս։

Եւ տես զհոգևոր հանճարն․ հանդերձեալք էին ստգտանել զնա՝ եթէ օտարացուցիչ իմն ազանդ բերես 'ի լսելիս մեր, թէ նորաձև իմն ասես, ած զոր ոչ գիտեմք՝ 'ի ներքս բերես։ Կամելով ազատանալ յայնպիսի կարծեաց նորաձևութեանն, և ցուցանել թէ ոչ զօտար ոք քարոզէ զած, այլ զոր կանխաւ առեալ նոցա սպասաւորութեամբ պատուէին, 'ի վերայ եած և ասէ․ «Զոր դուք անծանօթաբար պաշտէք, ես զնա աւետարանեմ ձեզ»։ Դուք, ասէ, յառաջագոյն ընկալայք․ կանխաւ ժամանեաց սպասաւորութիւնն ձեր քան զիմ քարոզութիւնս։ Մի ինչ զիս բամբասէք այսուհետև եթէ օտար ած 'ի ներքս բերեմ․ վասն զի զնա աւետարանեմ, որում դուքն անգիտութեամբ ծառայէք․ թէպէտ և ոչ արժանաւոր օրինակաւ, սակայն ըսպաս տանիք․ քանզի ոչ եթէ յայդպիսի մեհեանս շինի Քրիստոս, այլ 'ի բազլին հոգևոր կենդանի․ բայց և յայդմանէ զձեզ յայտնեալ հանել կարեմ։ Այպէս և 'ի հնումն Հրէայքն սպաս տանէին․ այլ 'ի բաց կացին 'ի մարմնական սպասաւորութենէն և եկին 'ի հոգևորականն հաւատացեալքն ամենեքեան։

Տեսե՞ր զիմաստութիւն Պաւղոսի, տեսե՞ր զհանճարն, տեսե՞ր զիարդ զնոսա որսացաւ ոչ աւետարանաւ, ոչ մարգարէիւք և ոչ հոգևոր բանիւք, այլ վերագրօքն։ Մի զանց առներ այսուհետև, սիրելի, զվերագրովք ածային բանիցն․ եթէ արթուն իցես և հսկեսցես, և յոտարացն գտցես պիտանացու․ ապա եթէ պղերգ ոք և յողն ան-

1 Յոյնն ունի δεισιδαιμονία, δεισιδαίμω, որ է երկիւղածութիւն 'ի դեւս, սնապաշտութիւն․ հայ թարգմանիչն թուի ընթերցեալ διισδαιμονία, διισδαίμων, փոխեալ է 'ի կրկնադիւութիւն, կրկնադեւ։

կեալ, և ոչ 'ի գրոյն լինի քեզ առաւել ինչ ։ Ո՛ որ օրինակ որ գիտէն շահել՝ ամենայն ուստեք շահի, նոյնպէս և որ ոչն գիտէ շահել՝ թէպէտ և գանձ գտանէ, ունայն 'ի բաց գնայ ։

Ախորժէք թէ ասեմ ձեզ և այլ ինչ այսպիսի ձեռնարկութիւն, և որպէս այլ ումն այլովք մտօք խօսեցաւ, իսկ աւետարանիչն առ ինքն դարձոյց զասացելոցն զօրութիւն ։ Հայեցարուք զի ուսանիցիք, զի և նա գերեաց զիմաստսն 'ի հնազանդութիւն Քրիստոսի. զի ուսանիցիք թէ և զայլոցն գերել կարեմք, եւ առաւել 'ի մերումն շահիցեմք և ձոխանայցեմք ։ Կայիափաս քահանայապետ էր տարւոյն այնորիկ, և այն 'ի Հրէիցն չարութենէ եղև. ամենեցունցանէին զքահանայութեանն պատիւ, և վաճառականս առնելով զքահանայապետսն. բայց յառաջագոյն ոչ էր այնպէս, այլ վախճանն միայն լուծանէր 'ի քահանայութենէն զքահանայն. իսկ յայնժամ և կենդանիքն լուծեալ լինէին 'ի պատուոյն ։ Քահանայապետ էր տարւոյն այնորիկ. զինէր զՀրէայն հակառակ Քրիստոսի և ասէր՝ եթէ պարտ է նմա մեռանել, բամբասել ինչ ոչ ունէր, յաչաղանօք ծնկեալ էր. այնպիսիք էին նախանձք բարեգործութեանցն, այնպիսի փոխարէնս հատուցանէին, և զպատճառսն ուսուցանելով զզրժանացն ասէր. "Լաւ է թէ մի մարդ մեռցի, և մի բոլոր ազգս կորիցէ ,, ։ Ո՛ այս բանի զօրութի տես զիարդ ընդ մեզ եղև. զի ուսցիս եթէ բանն էր քահանային, իսկ իմաստքն կարացին լինել հոգևորք. "Լաւ է թէ մի մարդ մեռցի, և մի ամենայն ազգս կորիցէ ։ Ո՛ այս ոչ ասաց յինքենէ, ասէ, այլ զի քահանայապետ էր տարւոյն այնորիկ, մարգարէացաւ ,, յաղագս Ք̃նի մեռանել ոչ միայն վասն Հրէիցն, այլ և յաղագս բոլոր ազգացն. վասն այնորիկ ասէր. "Լաւ է թէ մի մարդ մեռցի, և մի բոլոր ազգս կորիցէ ,, ։ Տեսեր զա̃ծային զօրութիւնն զիարդ զլեզու թշնամեացն հարկեցուցանէ յաղագս ճշմարտութեանն խօսել ։

Արդ զի մի զանց առնիցեմք զվերագրաւ ա̃ծային գրոց, բաւականապէս այսոքիկ ասացան, եթէ յիշիցէք. կամէի ասել եթէ ով գրեաց զգիրս, և երբ և ուր աղագաւ գրեցաւ ։ Այլ առ այժմ զայս ընկալջուք. զայն եթէ ա̃ծ կամեսցի, յառաջակայսն ամենայն իրօք յայտնեցից ձեզ ։

Մխորժելի այսուհետև առ նոր լուսաւորեալսն զբանս ածել. նոր լուսաւորեալս ասեմ, որք ոչ միայն նախ քան զերկուս կամ քան զերիս, այլ և յառաջ որք ոչ քան զտասն աւուրս լուսաւորեցան, այլ և որք նախ քան ըզտարի և յառաջ քան զյոլով ժամանակս. քանզի և զնոսա այսպէս պարտ և արժան է կոչել: Որք բազում փոյթ ցուցանեն յաղագս իւրեանց անձանց, իշխանութիւն է և զնոսա զկնի տասն ամի նոր լուսաւորեալս կոչել, թէ զնորութիւնն որ 'ի լուսաւորութենէ անբիծ պահիցեն. քանզի ոչ ժամանակ զոք առնէ նոր լուսաւորեալ. կարողութիւն է և զկնի երկուց աւուրց կորուսանել զպատիւ անուանն' որ ոչ զգուշանայ:

Եւ այսմ ձեզ օրինակ ասացից, զիարդ նոր լուսաւորեալ ոմն էր և վաղվաղակի կորոյս զկնի երկուց աւուրց և զշնորհ նոր լուսաւորութեանն և զպատիւ: Այնմ զօրինակն, զի տեսանելով զկործանումն' զգուշանայցէք ձերում փրկութեանն. վասն զի ոչ միայն հաստատուն կացելոցն, այլ ընկղմեցելոցն զձեզ պարտ և արժան է ուղղել և բժշկել: Սիմոն մոգ փոփոխեցաւ, ասէ. Որպէս տեսեալ ժուժկալէր առ Փիլիպպոսի' տեսանելով զնշանս. այլ զկնի սակաւ ինչ աւուրց վաղվաղակի չոգաւ վերըստին յիւր առաջին չարութիւնն դառնալ: Ոչ ինչ այնուհետև նոր լուսաւորեցելումն ասէր Պետրոս. "Ի դառնութիւն մաղձոյ և 'ի կապանս անիրաւութեան տեսանեմ զքեզ լեալ. վասն որոյ աղաչեա զտէր, թերևս թողցի քեզ չարութիւնդ այդ". ոչ ևս երևեալ 'ի հանդէսն, և վաղվաղակի կործանեցաւ ընկեալն 'ի կործանումն: Արդ զոր օրինակ գոյ հնար յետ երկուց աւուրց ընկենուլ և կորուսանել զանուն նոր լուսաւորութեանն և զշնորհն, նոյնպէս և զկնի տասն ամի և կամ քսան և մինչև 'ի վերջին օրն է կորուսանել զպայծառ և զպարկեշտ զանունս զայս և զիրս: Եւ այսոցիկ վկայէ Պաւղոս, 'ի ծերութեանն մեծապէս պայծառացեալ. վասն զի մանկութիւնն այն ոչ 'ի բնութենէ եղև, և 'ի ծերութիւն ոչ ըստ բնութեան ընթացից գայ, այլ երկոքեան յօժարամտութեանն լինին տէարք. և յօժարամտութեանն մեք եմք տեարք, և 'ի ծերանալն և կալ մնալ մանուկ 'ի մեզ լինել:

Քանզի մարմնոյ թէպէտ և ձեռլիցի և զմնաւ հնա-

բիցի և ոչ ոք տոչկիցէ զմարմինն, և եթէ առնիցէ 'ի տան կալ մնալ, և եթէ ոչ լկիցէ աշխատութեամբք զնա և յոլով գործովք ամենայն իրօք, ըստ բնութեանն օրինաց ժամանէ նմա ծերութիւնն։ Բայց հոգւոյն ոչ այսպէս. այլ եթէ ոչ մաշեսցես զնա, և ոչ լկեսցես կենցաղական տաժանմամբք և աշխարհական հոգովք, կայ մնայ միշտ պայծառ նորութեամբն փայլեալ։ Ո՞չ տեսանէք զաստեղս երկնից զայնոսիկ որ յերկինս են. վեց հազար ամ է այսուհետև զի երևին մեզ, և ոչ ոք 'ի նոցանէ մղտագոյն եղև։ Արդ եթէ ուր բնութիւնն[1] է այնպէս պայծառ եկաց մնաց լոյսն, ուր յօժարամտութիւն իցէ ո՞չ առաւել ևս մնասցէ այնպիսի որպէս 'ի սկզբանն փայլեաց. մանաւանդ եթէ ախորժեսցուք, ոչ այնպիսի ևեթ կայ մնայ, այլ և պայծառագոյն ևս լինի, մինչ զի և ընդ նմին իսկ ընդ Ճառագայթս արեգականն կարէ հակառակել։

Կամէի ուսանել զիարդ իշխանութիւն է զկնի ժամանակի լինել նոր լուսաւորեալ. լուր զինչ ասէ Պաւղոս առ մարդիկն որ նախ քան զյոլով ժամանակս լուսաւորեցան. “Յորս երևեսջիք իբրև լուսաւորք յաշխարհի, զբանն կենդանութեան ունելով 'ի պարծանս ինձ„։ Մերկացայք զհին և զպատառուն հանդերձսն և օծայք հոգևոր իւղովն, ազատք եղէք ամենեքեան. մի ոք այսուհետև յառաջին ծառայութիւնն երթիցէ վերստին։ Պատերազմ է մերձակայս և հանդէս. ոչ ոք ծառայ նահատակի, ոչ ոք ստրուկ զինուորի. այլ և եթէ ըմբռնիցի ծառայ, հանդերձ տանջանօք արտաքս ելանէ յայսմ ընտիր զինուորացս։

Եւ ոչ միայն 'ի զինուորականսն է այս, այլ և յոլոմպիական հանդէսսն նոյն այս սովորութիւն ունի. քանզի յետ երեսուն աւուրց աստ տանէին զնոսա, շուրջ ըզքաղաքաւն շրջեցուցանէին, և 'ի նստել ամենայն տեսողացն գոչէ քարոզն՝ մի՞ ոք սորա ոսոխ իցէ. որպէս զի զնա 'ի բաց լուծցէ 'ի ծառայութեան կարծեաց, և այնպէս 'ի հանդէսն մտանէին։ Արդ եթէ սատանայ ոչ ընդունիցի զծառայս յիւր հանդէսն, զիա՞րդ դու ծառայ լինելով մեղացն յանդգնիս 'ի նահատակութիւն. Քրիս-

1 Ցորենակին բնաւորութիւնն. եղաւ ըստ յաւելին։

տուտի գալ։ Ընդ քարոզն բարբառոյ՝ մինչ է սուտ որ իցէ տորա. իսկ առա Քրիստոս ոչ այնպէս աղաղակէ, այլ թէպէտ և ամենեքեան ստուգ իցեն նորա նախ քան զմկրտութիւնն, սակայն ես ընդունիմ զնա, և եղծանելով զծառայութեանն իւր՝ առնեմ ազատ և 'ի հանդէսն մուծանեմ։

Տեսե՞ր զմարդասիրութիւն նահատակադրին. ոչ խնդրէ զառաջինսն, այլ յետ այնորիկ զուղղութիւնսն պահանջէ։ Ոչ առայ էիր, բիւր ստախ ունէիր, զխիղճ, զմեղանս, զդևս զամենայն. ոչ որ 'ի նոցանէ, ասէ, հակառակ քո շարժեաց զիս, և ոչ զմտաւ ածի եթէ արժանաւոր լինիցիս նահատակութեանց իմոց. ընկալայց զքեզ 'ի մրցարանն ոչ յաղագս քո արժանաւորութեան, այլ վասն իմոյ մարդասիրութեան. Մտ այսուհետև 'ի նմին, և նահատակեցիր եթէ ընթանալ դեռ լինիցի և եթէ մրցել և եթէ բռնամարտիկ լինել. մի անյայտաբար[1] և մի վայրապար և մի մնոտի։ Լուր զինչ ասար Պաւղոս. վաղվաղակի յաւազանէն ելանելով՝ անդէն արագ արագ 'ի մկրտութենէն նահատակելով քարոզէր՝ թէ նա է Քրիստոս որդի Այ, և շփոթէր զՀրեայսն անդէն 'ի սկզբանն։

Բայց թերևս ոչ կարասցես դու քարոզել, և ոչ ունիցիս վարդապետական բան. վարդապետեա զործովք զառաքինութեանն իւր պայծառ վարուք. քանզի "փայլեսցէ լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն ըզբարի գործս ձեր և փառաւորեսցեն զՀայր ձեր յերկինս"։ Ո՞չ կարես վտանգել զՀրեայսն ձայնիւ. շփոթեա զնոսա առաքինութեամբ, ամբոխեա զհեթանոսս փոփոխմամբ. զի յորժամ տեսանիցեն որ նախ քան զայդ պակշոտեալ և չար էիր, զծոյլն և զապականեալդ 'ի յանկարծակի փոփոխեալ, և զկնի փոփոխմանն ցուցանել զառաքինութիւնն, շփոթեսցին և ասասցեն որպէս և զկուրէն երբեմն ասէին Հրեայքն՝ նա՞ է, ոչ է նա։ Տագնապելոց բանք էին այսորիկ, յերկուանալ յաղագս ծանօթին, ամբոխելն առ իրերաց ընդունայն, ոչ հաւատալ և ոչ աչաց իւրեանց։ Ի բաց ընկեց նա ըզմարմնական կուրութիւնն, 'ի բաց ընկեցես դու և զհո-

1 Յօրինակին յայտաբար. եղաւ ըստ յունին։

դեռ՝ կուրութենէ. Հայեցաւ նա յարեգակնն յայս, Հայեսցիս և դու յարեգակն արդարութեան. Ծանեար զանէրն. արժանի ծանօթութեանն այսուհետև գործեսցուք, որ և արքայութեանն երկնից հանդիպեսցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք Հօր հանդերձ սրբով Հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## Ի ՎԵՐՆԱԳԻՐ ԳՈՐԾՈՑ ԱՌԱՔԵԼՈՑՆ. ԵՒ ԵԹԷ ՊԱՏՈՒԵԱԿԱՆԱԳՈՅՆ ԷՆ ԱՌԱՔԻՆԻ ՎԱՐՔ ՔԱՆ ԶՆՇԱՆՍ ԵՒ ԶՍՔԱՆՉԵԼԻՍ ԱՌՆԵԼ ԵՒ ՈՒՆԵԼ. ԵՒ Ի՞Ւ ԶԱՆԱԶԱՆԻՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԻՒՆՔ Ի ՆՇԱՆԱՑ

Յետ բազում ժամանակի առ մայրս մեր դարձեալ վերստին եկաք, առ ցանկալիս և բաղձալի ամենեցուն եկեղեցիս, առ մայր մեր և եկեղեցեաց ամենեցուն. մայր է[1] մեծ եկեղեցին, բայց սա և նորա է մայր: Ոչ միայն զի աւուրբք երիցագոյն է, այլ զի և յառաքելական ձեռաց հիմնեցաւ. յաղագս այսորիկ յոլովակի կործանեալ յոքնակի կանգնեցաւ, և աւերեալ յաղագս անուանն Քրիստոսի՝ դարձեալ ուղղեցաւ զօրութեամբն Քրիստոսի. քանզի ոչ առաքելական ձեռքն ևեթ հիմնեցուցին զնա, այլ և տէրն առաքելոց պատուեաց զսա՝ նոր և հրաշափառագոյն հրամանաւ պարսպի օրինակաւ: Ոչ ի ոչ այսպէս փայտս և քարինս շինեաց զպարիսպն, և ոչ փոս արտաքուստ շուրջ զործեաց, և ոչ խոչս ցցեաց և աշտարակս կանգնեաց և այնպէս զսա ամրացոյց, այլ երկուս բանս միայնս սոսկ խօսեցաւ, և այնոքիկ բաւական եղեն սմա փոխանակ պարսպի և աշտարակի և փոսոյ և ամենայն ամրութեան:

Իսկ ո՞ր բանք իցեն արդեօք այնոքիկ որ այսքան ունին զօրութիւն: «Ի վերայ վիմիդ այդորիկ, ասէ, շինեցից զեկեղեցի իմ. և դրունք դժոխոց մի՛ զօրեսցեն առ նա»: Այս պարիսպ, այս պատնէշ, այս ամրութիւն, այս նաւահանգիստ և ապաւէն: Դու ինձ աստանօր զպարըսպին զանվթարութիւնն տես. զի ոչ ասաց եթէ մարդ-

1 Հատուածդ. Մայր է . . . և նորա է մայր չիք յայժմու յոյնն:

կան դրժանք միայն ոչ հերքիցեն նոսա, այլ և ոչ նոյն ինքն մեքենայքն դժոխոց: «Դրունք, ասէ, դժոխոց ոչ պարտեսցեն զնա»: Այլ զինչ իցէ արդեօք դրունք դժոխոց. ինձ թուի եթէ անյայտ է ասացեալն. ուսցուք զինչ է դուռն քաղաքին, և այնպէս ուսցուք զինչ է դուռն դժոխոց: Դուռն քաղաքին է 'ի ներքս ճանապարհ որ 'ի քաղաքս ածէ. ապա ուրեմն և դուռն դժոխոց է վտանգ որ 'ի դժոխս տանի:

Այլ զոր ասէն այսպիսի է. եթէ այնպիսիք տագնապք 'ի սաստիկ պատառեսցին և անկցին որ 'ի նոյն դժոխս զձեզ ընկենուլ, անդողդողելի եկեղեցի կացցէ մնասցէ: Որ կարող է ոչ թողուլ զփորձ առնուլ նմա դժնդակութեանցն, և ընդէ՞ր արդեօք ներեաց: Ով մեծագոյն է քան արգելուլ զփորձութիւնն՝ թողացուցանել գալ 'ի վերայ փորձութեանցն, և ոչ մնալ դժնդակագոյն ինչ չարչարանս ածել 'ի վերայ եկեղեցւոյ. զի ընտրագոյն զնա գործեսցէ, ներէ գալ փորձութեանց. քանզի «նեղութիւն զհամբերութիւն գործէ, իսկ համբերութիւն զհաճոյութիւն»: Ով զզօրութիւն իւր յալով կամակարութեամբ ցուցցէ, 'ի նոցունն իսկ 'ի դրացն մահու յոլովակի յափշտակեաց զնա. վասն այնորիկ և ալէկոծութեանցն անսասանս լինել, և ընկղմել նաւին ոչ անսասաց: Որպէս և ընդ նաւուղիղսն զարմանամք. ոչ յորժամ առանց մրրկաց նաւիցէ, և ոչ յորժամ յետևս կողմանէ ունելով զհողմն առաջնորդեցուցանիցէ զնաւն, այլ յորժամ 'ի տատանակել ծովուն և յալեացն ամբոխել և 'ի ձմեռայնոյն մրրկել զօրաւոր հողմոցն բռնութեան հակառակ կարգիցէ, և 'ի միջոցէ ձմեռայնոյն յափշտակիցէ զնաւն: Այնպէս և Քրիստոս արար. իբրև զնաւ 'ի ծովու զեկեղեցի յաշխարհի նաւելով ընթեալ եթող. ոչ եհան զալէկոծութիւնսն, այլ յափշտակեաց 'ի մրրկացն. ոչ զնաւորդս զծովն, այլ ամրացոյց զնաւն. և 'ի յառնել ամենայն ուստեք բազմաց իբրև ալէկածութեանց զայրացելոց, մարտնչելով ընդ նմա այսոցն չարութեան իբրև ընդ դժնդակ հողմոց, և ամենայն ուստեք ամբոխելով ձմեռայնոյն, բազում խաղաղութիւն եկեղեցւոյ արար. և հրաշալի այն է՝ զի ոչ միայն ձմեռն ոչ ընկղմեաց զնաւն, այլ և մեղկեաց ևս զձմեռն նաւն:

Բանզի հալածանք յոլովակի ոչ միայն ոչ ընկղմեցին զեկեղեցի, այլ քան եւս յեկեղեցւոյ: Օ՛ խարդ եւ որո՛մն օրինակաւ եւ ուստի՞: Ի հրամանէն յայնմանէ զոր ասացն "Դրունք դժոխոց ոչ հերքեսցեն նմա,,: Որքան աշխատեցան հեթանոսք զի զնմին զայս լուծցեն, զի անտիրական արասցեն զհրամանն, եւ ոչ կարացին լուծանել. վասն զի ա̃յ էր հրամանն: Եւ զոր օրինակ աշտարակ անդամանդեայ քարանց հաստատեալ եւ երկաթեաւ կապեալ հաւաստեաւ պատերազմողքն ամենայն ուստեք մարտնչելով՝ ոչ զշինուածն յողդողդեն եւ ոչ զյարմարութիւնն լուծանեն, այլ 'ի բաց գնան՝ աշտարակին ոչ ինչ վնասելով եւ ոչ չար ինչ առնելով, զիւրեանց զօրութիւնն 'ի վայր կործանեն, նոյնպէս եւ բանն այն իբրեւ աշտարակ իմն բարձր 'ի մէջ աշխարհի ամրութեամբ պարսպեցաւ, հեթանոսք ամենայն ուրեք մարտնչելով ընդ նմա՝ հզօրագոյն երեւեցուցին, եւ յիւրեանց ուժոյն լքանելով այնպէս սատակեցան:

Օ՛ ինչ ոչ հնարեցան հակառակ հրամանին այնմիկ. գունդս պատրաստէին, զէնս շարժէին, թագաւորք զինեալք լինէին, ամբոխ 'ի վերայ յառնէր, քաղաքք զայրանային, դատաւորք բարկանային, ամ̃ տանջանաց տեսակ իմացեալ լինէր, եւ ոչ մի ինչ մնացեալ լինէր պատժոց օրինակ, հուր եւ երկաթ եւ գազանաց ժանիք, վախք եւ ընկղմութ̃իք եւ վիհք, փայտ եւ անիւ, խաչ եւ հնոց, եւ ամ̃ որ երբէք ուրեք երեւեցաւ տանջանարանք՝ բովանդակք 'ի մէջ բերեալ լինէր. սպառնալեաց ծանրութիւն անըմբերելի, պատուոց[1] խոստմունք անձառք. որպէս զի այնու օրինակաւ զարհուրեցուցանել, եւ միւսովն մեղկել եւ պատրել: Եւ մի ինչ ոչ խաբէութեան եւ ոչ բռնութեան մնացեալ լինիւր տեսակ. զի եւ հարք զմանկունս մատնէին, եւ որդիք 'ի հարց անծանօթանային. մարք զերկունս մոռանային, եւ բնութ̃ես օրէնք խոտորեալք լինէին: Բայց սակայն հիմունք եկեղեցւոյ եւ ոչ այնպէս սասանեցան. այլ 'ի ձեռն ազգակցութեանն այնորիկ պատերազմին գայր, եւ 'ի պարիսպ նորա ոչ մերձենայր յաղագս բանին այնորիկ ասացելոյ՝ թէ "Դրունք դժոխոց ոչ յաղթեսցեն նմա,,:

Եւ մի՛ ասեր եթէ բան էր, այլ ա̃յ բանն. զի եւ զեր-

1 Յօրինակին պատժոց. եղաւ բառ յաւելին:

կին բանիւ հաստատեցաւ տն, և զերկիր բանիւ հիմնեցոյց՝ զխոնաւ զայս և զծանր բնութիւն 'ի վերայ կակուղ և հաստատուն բնութեանն բերեալ արար, և զծով զանբերելի՝ որ այնքան ունի աղէկոծութիւն տկար պարսպաւ ամենայն ուստեք աւազաւ պարսպեաց 'ի ձեռն բանի: Արդ որ բանիւ զերկինս հաստատեաց, զերկիր հիմնեցոյց, զծով շուրջ պարսպեաց, զի՞ հրաշանաս եթէ որ քան զերկինս և զերկիր և զծով պատուականագոյն է զեկեղեցի՝ բանիւն այնուիկ պարսպեաց:

Այլ արդ զի այսպէս շինուածս անսասանելի և պարիսպս անկործանելի՝ տեսցուք զիարդ արկին հիմունս առաքեալքն, քանի ինչ 'ի խոր փորեցին, որպէս զի. անշարժ լինիցի շինուածն: Ոչ փորեցին խոր, և ոչ կարօտացան այսպիսի ինչ աշխատութեան. վասն զի հին գտին հիմն և սկզբնական զմարգարէսն: Որպէս օրինակ այր ոք հանդերձեալ տաճար մեծ շինել, յորժամ գտանիցէ հիմն հին հզօր և անխախտելի՝ ոչ յողդողդէ զհիմն և ոչ շարժէ զքարինսն, այլ թողու կալ միալ անշարժս, և այնպէս 'ի վերայ առնէ զնոր և զամենայն շինուածն, նոյնպէս և առաքեալքն հանդերձեալք շինել զայս մեծ շինուած՝ որ ամենայն երկրի հաստատեալ է եկեղեցի, ոչ փորեցին խոր, այլ գտանելով զհին զհիմն զմարգարէիցն՝ ոչ խախտեցին և ոչ դրդուեցին զշինուածն և զմարգարէութիւնն, այլ թողլով զնա կալ միալ անշարժ՝ այնպէս 'ի վերայ եդին զիւրեանց վարդապետութիւնն զնորս զայս եկեղեցւոյ հաւատ:

Այլ զի ուսցիս եթէ ոչ շարժեցին զհին հիմն, այլ 'ի վերայ նորա շինեցին, լուր նմին իսկ իմաստուն ճարտարապետին Պաւղոսի, որ ասէ մեզ զշինուածոյն հաստատութիւն. քանզի նա ինքն է իմաստուն ճարտարապետ, "Իբրև իմաստուն ճարտարապետի հիմն եդի": Բայց տեսցուք զիարդ եդ զնոյն ինքն զհիմն. 'ի վերայ, ասէ, այլոց հնոց հիման մարգարէիցն: Ուստի՞ այդ յայտ է, ասա. "Ոչ եւ էք օտարք, այլ քաղաքակիցք սրբոց, շինեալք 'ի վերայ հիման մարգարէից և առաքելոց": Տեսե՞ր հիմն, և հիմն զմինն մարգարէիցն 'ի ներքոյ և զմիւսն առաքելոց դէր 'ի վերայ քան զնա: Այլ այս է զարմանք [1] զի ոչ վաղվաղակի զկնի մարգարէիցն առա-

1 Յօրինակին հրաման. յայնն հրաշալի:

քեալքն, այլ յոլով ժամանակ եղեւ 'ի միջի։ Ընդէ՞ր ար-
դեօք. զի եւ հմուտ շինողք այսպէս առնեն. յորժամ
արկանեն զհիմն, ոչ վաղվաղակի 'ի վերայ դնեն զշի-
նուածն, զի մի՛ կակուղ եւ առժամայն լեալ հիմանն գործ՝
տկարացի զորմոցն ծանրութիւն տանել. յաղագս այ-
սորիկ թողուն բազում ժամանակս խրել քարանցն. իսկ
յորժամ տեսանեն հաստատեալ պնդեալս, յայնժամ
'ի վերայ դնեն եւ զորմոցն ծանրութիւն։ Նոյնպէս եւ
Քրիստոս արար. ներեաց հաստանալ հիման մարգա-
րէիցն, 'ի լսողացն յանձինս լինել հաստատուն վարդա-
պետութե՛ն. եւ յորժամ ետես քաջապինդ զշինուածն,
յորժամ արմատացեալ զաւանդսն քահանայական,
որպէս զի կարասցեն զծանրութիւնս նորոյ իմաստասի-
րութեանս բերել, յայնժամ յղեաց զառաքեալսն՝ 'ի
վերայ հիման մարգարէիցն զորմս եկեղեցւոյն յարու-
ցանել։ Յաղագս այսորիկ ոչ ասաց շինեալք 'ի վերայ
հիման մարգարէիցն, այլ 'ի վերայ շինեալք. քանզի 'ի
վերայ շինեցան։

Բայց տեսցուք զիարդ շինեցան. եւ ուստի՞ գիտա-
ցուք։ Ուստի՞ այլ ուստեք. 'ի գրոց գործոց առաքելոցն,
յաղագս որոյ եւ յառաջին աւուրսն ընդ ձեզ խօսեցաք։
Թուի թէ եւ սակաւ ինչ պարտս ձեզ անտի պարտիմք,
զոր հարկ է հատուցանել այսօր։ Իսկ զի՞նչ իցեն պարտ-
քըն. զնոյն ինքն զդոյն վերագիր մեկնել ձեպիմք. քան-
զի ոչ սոսկ ինչ է եւ անյայտ, որպէս յոլովք կարծեն,
այլ պէտս ունիմք հարցաքննութեան։ Իսկ զի՞նչ է վե-
րագիր գրոցն. «Գործք առաքելոց»։ Ո՞չ թուի յայտ-
նի գոլ. ո՞չ կարծի ծանօթ եւ երեւելի ամենեցուն։ Բայց
եթէ զհետ գայցէք ասացելոցս, տեսջիք որքան են խորք
վերագրոյս այսորիկ։

Քանզի ընդէ՞ր ոչ ասաց՝ սքանչելիք առաքելոցն. հի՞մ
ոչ գրեաց՝ նշանք առաքելոց, զօրութիւնք եւ հրաշք ա-
ռաքելոց, այլ գործք առաքելոց։ Զի եւ ոչ նոյն են
գործք եւ զարմանալիք, եւ ոչ նոյն գործք եւ հրաշք եւ զօ-
րութիւնք. այլ յաւէտ զանազանութիւնք այսոցիկ եր-
կոցունց։ Գործք են ինքեանց փութոյն ուղղութիւն.
իսկ նշանք՝ ա̃ծային պարգեւին շնորհք։ Տեսէ՞ր որքան է
միջոց գործոց եւ նշանաց. գործք են մարդկային քրտանց
աւարտք, նշանք են այ̃ մարդասիրութեանն յայտնու-

տեմ զձեզ որ գործէքդ զանօրէնութիւն,,։ Եթէ ոչ գիտես զգոսա, զիա՞րդ գիտես եթէ գործեն զանօրէնութիւն. զի ուսցիս եթէ «ոչն գիտեմ զձեզ,, ոչ է անծանօթութեան, այլ ատելութեան և 'ի բաց դառնալոյ։ «Ոչ գիտեմ զձեզ,,. Ե՞ր աղագաւ, ասա ինձ. «զի անուամբ քով զդևս հանաք,,։ Յաղագս այդորիկ զձեզ ատեմ և 'ի բաց դառնամ, ասէ, զի և ոչ պարգևօքն լաւագոյնք եղէք, զի այնքան վայելեցէք 'ի պատիւն և մնացէք 'ի չարիսն. «երթայք յինէն, ոչ գիտեմ զձեզ,,։

Բայց ընդէ՞ր իսկ անարժանք յառաջագոյն ընդունէին զշնորհսն, և տպականեալքն կենօք նշանս ցուցանէին և յածայլին պարգևսն վայելէին, և զեղեցիկ առաքինութեանն խնամ ոչ տանէին։ Վայելէին յաղագս ա̃յ մարդասիրութեանն, ոչ վասն իւրեանց արժանաւորութեանն. վասն զի պարտ և արժան է ա̃մ ուրեք սերմանել զբարեպաշտութեանն բան, սկիզբն և նախաճանապարհ հաւատոյն էր։ Որ օրինակ երկրագործ ոք քաջ նորատունկ ծառ 'ի խորշ երկրի այն ինչ տնկելով, մինչդեռ մատաղն է՝ բազում խնամակալութեան արժանաւոր առնէ, ամենայն ուստեք ամրացուցանելով պարսպէ քարամբք, փշովք՝ զի մի 'ի հողմոց աղաւաղեսցի և մի 'ի պաճարաց վանեսցի և մի յայլ իմեքէ դժրանաց և 'ի վնասուէ. իսկ յորժամ տեսցէ արմատացեալ և 'ի վեր ընթացեալ, 'ի բաց առնու զպարիսպն, զի բաւական է այնուհետև ծառն ինքեան իսկ ոչ ինչ կրել այնպիսի չարչարանս։ Նոյնպիսի իմն յաղագս հաւատոյս եղև. յորժամ նորատունկ էր և մատաղ, յորժամ այն ինչ 'ի մարդկան յոգիս էր տնկեալ, յոլով խնամակալութեան արժանաւոր լինէր ամենայն ուստեք. իսկ իբրև հաստատեցաւ, 'ի բարձրագոյնն ընթացաւ, յորժամ զամենայն ելից, 'ի բաց եբարձ այնուհետև զպարիսպն և զամրութիւնն։ Յաղագս այնորիկ 'ի սկզբանն և անարժանիցն շնորհք տուեալ լինէին, վասն զի պէտս ունէր մատաղութիւն հաւատոյն այսպիսում օգնականութեան. իսկ այժմ և ոչ արժանաւորացն տուեալ լինին, զի զօրութիւն հաւատոյս ոչ ևս այնմ մարտակցութեան կարօտանայ։

Եւ զի ուսցիս եթէ ոչ ստէին նոքա, այլ ճշմարտապէս նշանս առնէին, և անարժանից մարդկան շնորհք

տուեալ լինէին. զի առ աղօթելովք և յայլ իմն յօրինեացն, պատկառելով յետ պարգևէն նոցա 'ի բաց մղեացեն զչարութիւնն: Յուդաս որ յերկոտասանիցն՝ յամենեցուն խոստովանի զի նշանս առնէր և դևս հանէր և մեռեալս յարուցանէր և բորոտս սրբէր. այլ՝ սակայն արտաքս անկաւ յարքայութենէն երկնից, և ոչ կարացին զերծուցանել զնա նշանքն, վասն զի աւազակ և գող և տեառն մատնիչ եղև:

Արդ զի նշանք ոչ կարեն ապրեցուցանել առանց բարի առաքինութեան և մաքուր կենաց, և հաւատեա յայտնանէ ցուցաւ. իսկ առաքինութիւն ոչ ունելով զնշանացն մխիթարութիւն և ոչ մարդակից առնելով զնա, այլ ինքն ըստ ինքեան երևեալ գործեաց մտանել յարքայութիւնն երկնից, լուր նմին իսկ Քրիստոսի որ ասէ. "Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք ըզպատրաստեալ ձեզ զարքայութիւնն 'ի սկզբանէ աշխարհի". Էր վասն. զի մեռեալս յարուցին և զբորոտս մաքրեցին, զի զդևս հալածեցին. ոչ. իսկ էր աղագաւ. Քաղցեալ զիս տեսէք և կերակրեցէք, ծարաւի և արբուցէք, մերկ և զգեցուցէք, օտար և ժողովեցէք. ոչ ուրեք հրաշալիք, այլ ամենայն ուրեք առաքինութիւնք: Ուր օրինակ անդ ամենայն ուրեք նշանք և վաղվաղակի պատիժք, վասն զի մերկք էին զգանձելեօք յառաքինութենէն, նոյնպէս և աստ ընդ ուրեք առաքինութիւնք և ոչ ուրեք հրաշալիք և արագ արագ փրկութիւն. վասն զի կարէ քաջ առաքինութիւն և ըստ ինքեան ապրեցուցանել զստացողն իւր: Յաղագս այսորիկ երանելին այս զգանձելի և առաքինին Պաւղոս այսպէս գրեաց զգիրս "Գործք առաքելոց", և ոչ զարմանալիք առաքելոցն. և սակայն նշանս արարին: Այլ այնորիկ ժամանակաւ եղեն և անցին. իսկ այսորիկ 'ի բովանդակ ժամանակի ամենեցուն երևելի է պատշաճ որք ապրելոյ հանդերձեալ են:

Եւ զի ոչ առ նշանս, այլ առ գործս առաքելոցն է նախանձ մեր, յաղագս այնորիկ գրեաց զգիրս այսպէս: Ո՛չ ի մի ասիցեն պղերդքն, յորժամ փոխանակ մերձ կոչեցեալք 'ի նմանութիւն առաքելոցն և ասիցեմք՝ նմանող լեր Պետրոսի, նախանձեաց ընդ Պաւղոսի, լեր իբրև Յովհաննէս, զհետ երթ Յակոբայ. զի մի ասիցեն՝ ոչ

զօրեմք, ոչ կարեմք. նոքա մեռեալս յարուցին, նոքա բորոտս մաքրեցին, ըմբերանելով զանամօթ պատասխանիս մեր, լռեա, ասէ, և կարկեցիր, ոչ զարմանալեք, այլ առաքինութիւն մածանէ յարքայութիւնն երկնից։

Նախանձեա այսուհետև ընդ առաքինութիւն առաքելոցն, և ոչ ինչ ունիցիս նուազ քան զառաքեալսն. քանզի ոչ նշանս առաքեալս արարին, այլ վարքն մաքուրք։ Եւ զի ուսցիս թէ ոչ սքանչելիքն՝ այլ առաքինութիւնքն արար առաքեալս, և այս է ծանօթութիւն առաքելական պատկերին և կերպարանի աշակերտացն, լուր Քրիստոսի որ զայս յայտնէ մեզ. քանզի տպաւորելով զաշակերտացն զպատկերս և ցուցանելով զինչ իցէ արդեօք առաքելական ծանօթութիւնն՝ այսպէս ասէր. "Այսու ծանիցեն ամենեքեան եթէ աշակերտք իմ էք"։ Յայսմ, յորում. 'ի սքանչելիս առնել, 'ի ըզմեռեալս յարուցանել. ոչ, ասէ. այլ յորում. "Յայսմ ծանիցեն ամենեքեան եթէ սիրեցէք զիրեարս"։ Իսկ սէր ոչ հրաշալեացն, այլ առաքինութեանն է. քանզի "լրումն օրինաց սէր է"։ Տեսե՞ր զծանօթութիւն աշակերտացն, տեսե՞ր զպատկերն առաքելական, տեսե՞ր զկերպարանն, տեսե՞ր զօրինակն. մի՛ ինչ առաւել խընդրեր, քանզի տէրն յայտնեաց եթէ սէր տպաւորէ զաշակերտսն. եթէ ունիս զսէրն, եղեր առաքեալ և առաջին առաքելոցն։

Ախորժե՞ս այլուստ զայս ուսանել, Պետրոսի ասելովն "Պետրէ, սիրե՞ս զիս առաւել քան զդոսա"։ Այսմ զուգահաւասար ինչ ոչ գոյ 'ի հանդիպել արքայութեն երկնից յորժամ զՔրիստոս երևեսցուք սիրել, որպէս սիրելն իցէ պարտ և արժան։ Եւ զինչ արդեօք իցէ այս, կամ զինչ առնելով կարիցեմ սիրել յաճախագոյն քան զառաքեալսն. արդեօք զմեռեալս յարուցանելով կամ այլ հրաշալիս ցուցանելով. ոչ երբէք։ Այլ զինչ առնելով. նմին իսկ սիրեցելոյն լուիցուք. "Եթէ սիրես զիս առաւել քան զդոսա, արածեա զոչխարս իմ"։ Ահա և աստանօր առաքինութիւն հաճոյանայ. խնամակալուն լինել, ցաւակից լինել, վերակացու, ոչ զինքեան խնդրել, այլ զայլն ամենայն զոր հովուին պարտ իցէ ունել. այսոքիկ ամենայն առաքինութեանն և ուղղութեց, ոչ սքանչելեաց, ոչ նշանաց։ Այլ նոքա, ասեն, յա-

ղագս այդորիկ այնպիսիք եղեն։ Ոչ վասն հրաշալեացն, այլ յաղագս առաքինութեանն, և անտի յաւէտ պայծառացան. վասն այնորիկ ասէ ցնոսա. փայլեսցէ լոյս ձեր առաջի մարդկան. ոչ զի տեսցեն մարդիկ զհրաշս, այլ զգեղեցիկ գործս ձեր, և փառաւորեսցեն զհայրն ձեր որ յերկինսն է։ Տեսանե՞ս ամենայն ուրեք զառաքինութիւնն պայծառացեալ, զգեղեցիկ վարս զարմացեալ։

Կամի՞ս ցուցից քեզ և զնոյն ինքն զՊետրոս զայս ըզգլուխ առաքելոցս, և առաքինութիւնս ցուցեալ մեծապէս, և սքանչելիս արարեալ գերազանցագոյնս քան ըզմարդկային բնութիւնս, և երկոքեան մերձ առ միմեանս կացեալ քեզ՝ զարմանալիքն և առաքինութիւնքն, և յառաքինութենէն մանաւանդ քան թէ 'ի նշանացն պատուեալ, լուր նմին իսկ՝ պատմութեանն. "Պետրոս և Յովհաննէս ելանէին 'ի տաճարն յիններորդ ժամու աղօթիցն,,։ Ո՞ւր զանց առնէր վայրապար զպատմութե՟դ. այլ վաղվաղակի 'ի վերայ կաց յառաջաբանիդ և ուսիր զիարդ էր միշտ սէր և ձայնակցութիւն և համակամութիւն, և որպէս ամենայն ուրեք հաւասարէին նոքա իրերաց, և կապեալք կապանօք ա՟ծային սիրոյն զամենայն գործէին 'ի սեղան և յաղօթս և 'ի գնացս և յայլում բոլորի առ միմեանս երևէին։

Իսկ եթէ սիւնքն այնոքիկ որ բազում համարձակութիւն ունէին առ ա՟ծ, իրերաց օգնականութեան կարօտացեալ լինէին և միմեանց մարտակցութեամբ յօրինէին զիրսն, որչափ ևս առաւել մեք տկարքս և թշուառականքս և ոչ միում բանի արժանաւորք՝ միմեանց օգնականութեան կարօտասցուք։ "Եղբայր յեղբօրէ օգնեալ, իբրև զքաղաք ամուր,,. և դարձեալ. "Ահա զինչ գեղեցիկ կամ վայելուչ, այլ բնակել եղբարցն 'ի միասին,,։ Այդորիկ աղագաւ Պետրոս և Յովհաննէս 'ի միասին էին և զՅիսուս ունէին 'ի մէջ. վասն զի "Ուր իցեն, ասէ, երկուք ժողովեալ յանուն իմ, անդ եմ և ես 'ի մէջ նոցա,,։ Տեսանե՞ս որքան է 'ի միասին լինել. ոչ վայրապար էին 'ի միասին, վասն զի և այժմ ամենեքին 'ի միասին եմք, այլ 'ի միասին լինել պարտ և արժան է կապանօք սիրոյն, գթով յօժարութեամբն. և զոր օրինակ մարմինք մեր այժմ մօտ են յիրեարս և ընդդեն 'ի միասին, նոյնպէս և զսիրտ 'ի միասին ընդդել է պատշաճ։

Պետրոս և Յովհաննէս ելանէին, ասէ, 'ի տաճարն։ Ո՞ր աղագաւ այսուհետև ելանէք 'ի տաճարն աղօթել. վարագոյրն պատառեցաւ, սուրբք սրբոցն բարձան, ընդ նմին և 'ի միում վայրի երկրպագութիւնն. Պաւղոս բարբառի ասելով. "Յամենայն տեղւոջ ամբառնալ ըզսուրբ ձեռս"։ Ընդէ՞ր նոքա 'ի տաճարն ընթանայցեն աղօթել. դարձեալ 'ի տկարութիւնն հրէական չոգան. ոչ, մի՛ լիցի։ Այլ զիջանեն ըստ տկարացն՝ զայն բան ըլով զՊաւղոսի զոր ասէն. "Եղէ ընդ Հրէայսն իբրև զՀրեայ". զիջանեն ընդ տկարսն, զի մի՛ իցեն միայն որկորքն այնոքիկ։

Իսկ այլ ազգ ևս, անդր ժողովեալ էին ամենայն քաղաքն։ Արդ զոր օրինակ քաջ ձկնորսք յայն խորշս գետոյն երթան ուր ամենայն ձկունքն ժողովլին, զի հանդերձ դիւրութեամբ դիպեսցին որսոյն, նոյնպէս և առաքեալքն հոգևոր ձկնորսքն յայն խորշս ճեպէին յորում ամենայն քաղաքն հաւաքեալ լինէր, զի անդ զաւետարանական ուռկանն պարզելով բազում դիւրութբ դիպեսցին որսոյն։ Զայս առնելով նմանէին վարդապետին. քանզի և Քրիստոս ասէր. "Հանապազօր ընդ ձեզ էի 'ի տաճարին"։ Իսկ ընդէ՞ր 'ի տաճարին. զի որք 'ի տաճարին իցեն՝ ըմբռնեսցէ. նոյնպէս և սոքա երթային 'ի պատճառս աղօթելոյ, այլ զվարդապետութիւնն հանդերձեալ էին սերմանել անդ։ Ի տաճարն աղօթել երթային. պահեա զժամ աղօթիցն զիններորդն, և ոչ մի ժամ աղօթից առ նոսա խոտեալ ինչ լինէր։ Սակայն ասացի ձեզ յօգնակի յաղագս ժամուն այնորիկ՝ թէ 'ի նմա դրախտն բացաւ և աւազակն եմուտ, 'ի նմա նզովքն բարձան, 'ի նմա զենումն աշխարհի պատարագեցաւ, 'ի նմա խաւար լուծաւ, 'ի նմա լոյս պայծառացաւ զգալի և իմանալի։ Յիններորդ ժամու, յորժամ այլք 'ի ճաշոյ և յարբեցութենէ ննջեն 'ի քուն խորին, յայնժամ նոքա սթափք և յարուցեալ յոլով բաղձանօք եռացեալք յաղօթս ճեպէին։

Իսկ եթէ նոքա յաղօթից կարօտանային և պաղատանաց այնպէս յերկարաձգեալ մաղթանաց և աղօթից այնպիսեաց հաւաստեաց, որ այնքան ունէին համարձակութիւն, և ոչ ինչ գիտէին զչարութիւնն իւրեանց, զի՞նչ արասցուք մեք բիւր չարեօք լցեալքս, և ոչ զնեմք

'ի վերայ զաղօթիցն դեղ։ Մեծ զէն են պաղատանք։ Ախորժես ուսանել թէ զիարդ մեծ զէն են աղօթքն. զվերակացութեամբն աղքատաց զանց առնէին առաքեալքն, զի յաւէտ պարապումն յաղօթսն ունիցին։ «Կացուցէք, ասէ, 'ի ձէնջ արս եօթն վկայեալ, և մեք աղօթից և սպասաւորութեան բանին պարապեսցուք»։

Բայց զոր ասէի՝ մի՛ արտաքս անկցուք 'ի պատճառէն՝ եթէ համանգամայն Պետրոս գործ եցոյց և սքանչելիս արար, և 'ի գործոյն առաւել գոլի։ Ելին 'ի տաճարն աղօթել, և ահա կաղ յորովայնէ մօր իւրոյ բարձեալ կայր առ դրան տաճարին։ Ի նմին իսկ յերկանց հաւատութիւն բնութեանն էր, և մեծագոյն քան զբժշկական[1] արուեստն հիւանդութիւնն. զի մեծապէս ցուցցէ Քրիստոսի շնորհն։ Այն կաղ անկեալ կայր առ դրան տաճարին. ակնանելով զնոսա 'ի մտանելն՝ հայէր 'ի նոսա ողորմութիւն հայցելով առնուլ 'ի նոցանէ։ Իսկ զի՞նչ Պետրոս. «Հայեաց 'ի մեզ»։ Բաւական էր 'ի դիմացն ցոյցք անստացուածութեանն. ոչ ինչ էին պէտք բանի և ոչ պատասխանւոյ և ոչ վարդապետութեան. զգեստք ցուցանէին քեզ զանստացուածութիւնն։ Այս բովանդակ առաքելական ուղղութեանն է, զի զայնոսիկ ասիցես աղքատս, զի մի՛ յարմարիցես զաղքատութիւնն, զի ասիցես նմա՝ թէ ոչ ունիմ ոսկի և արծաթ, համբերեաց և ակնացես մեծագոյն ընչեղութիւն։ «Արծաթ, ասէ, ոչ գոյ իմ. բայց զոր ունիմս զայս քեզ տամ. յանուն Յիսուսի Քրիստոսի արի և գնա»։ Տեսե՞ր զաղքատութիւնն և զընչեղութիւնն. աղքատութիւն ընչից և փարթամութիւն շնորհաց. ոչ ելոյծ զաղքատութիւն ընչիցն, այլ ուղղեաց զաղքատութիւն բնութեան։

Տես զհեզութիւն Պետրոսի. «Հայեաց 'ի մեզ»։ Ոչ թշնամանեաց, ոչ լուտացաւ, ոչ ընդդէմ եհար որ յոլովակի առնեմք մեք այնոցիկ որք դիպին 'ի մեզ իբրև պարտս իմն 'ի նոցանէ պահանջելով՝ գործ հրամայեմք նոցա, և եթէ 'ի քուն են՝ բամբասեմք։ Մինթէ յայնոսիկ կարգեցար, ով մարդ. ոչ հրամայեաց քեզ ըզդատարկութիւնն ստգտանել, այլ զաղքատութիւնն ուղղել. ոչ արար զքեզ ոսոխ չարութեան, այլ բժիշկս

1 Ցոլենակին պտականութեան. Եղաւ ըստ յունին։

իւրաքանչիւր ումեք որ 'ի վիշտսն եղեն. ոչ զի թշնամանեսցես զհեղգութիւնն, այլ զի օժանդակեսցես անկելոց. ոչ զի մեղադրեսցես զպարտսն, այլ լուծցես զոխն: Իսկ մեք զհակառակն առնեմք. թողեալ զտալով ընչիցն մխիթարութիւն զմերձ եկեալսն, խարխարեմք զվէրսն՝ զբամբասանս 'ի վերայ ածելով: Բայց ոչ և Պետրոս այնպէս, այլ խօսի. քանզի «Խոնարհեցո, ասէ, յաղքատս զունկն քո և պատասխանի արա նմա հանդարտագոյն խաղաղութեամբ»: «Ոսկի և արծաթ ոչ գոյ իմ. բայց զոր ունիմս զայս քեզ տամ. յանուն Յիսուսի Քրիստոսի արի և գնա»: Երկու են աստ, առաքինութիւնք և նշանք. առաքինութիւն՝ «արծաթ և ոսկի ոչ գոյ իմ». քանզի առաքինութեանն է արհամարհել զիրս, 'ի բաց ընկենուլ զինչս, քամահել զմերձաւորութիւնս. իսկ նշանք՝ յարուցանել զկաղն, ուղղել զանդամսն հաշմեալս: Նա առաքինութիւն և զարմանալիք:

Ընդանօր տեսցուք այսուհետև 'ի Պետրոս զի պարծի: Ո՛չ ինչ ասաց, եթէ սքանչելիս արարաք. և սակայն էր արարեալ յայնժամ զարմանալիս. բայց ոչ ասաց զայս, այլ զինչ. «Ահաւասիկ մեք թողաք զամենայն և եկաք զկնի քո»: Տեսե՞ր զառաքինութիւնս սքանչացեալս և զանստացուածութիւնն գովեալ. տեսե՞ր զառաքինութիւնն, միանգամայն և զսքանչելիսն և զվարսն պսակեալս: Նա ապա զինչ Քրիստոս. զայն ընկալաւ և յարգեաց. քանզի ասեմ ձեզ, ասէ, եթէ դուք որ թողէք զտունս և զայլն ամենայն: Ոչ ասաց որք յարուցիք մեռեալս. այլ դուք որ թողէք զինչս ձեր, նստջիք յերկոտասան աթոռս. և ամենայն ոք որ թողցէ զստացուածս իւր, 'ի նմին պատուի վայելեսցէ:

Ոչ կարես յարուցանել կաղ որպէս Պետրոս. այլ կարես առնել իբրև զՊետրոս՝ արծաթ և ոսկի ոչ ունիմ: Իսկ եթէ զայս ասես, մերձ լինիս 'ի Պետրոս. յաւէտ եթէ ոչ առնիցես, այլ առնիցես: Ոչ կարես զգօսացեալ ձեռն բժշկել. այլ կարես զքո ձեռնդ գօսացեալ յանմարդութենէ՝ ձգել մարդասիրութեամբ. վասն զի «Մի՛ լիցի, ասէ, կարկառեալ յառնուլ, և տալ կարկամեալ»: Տեսանե՞ս զի ոչ գօսութիւն կարկամէր զձեռն. ձգեա այսուհետև զդա մարդասիրութեամբ և ողոր-

մութեամբ։ Ո՛չ զօրես հանել դեւ. այլ արտաքս հան զմեղսն, եւ մեծամեծ վարձս ընկալցիս։ Տեսե՞ր զիարդ ամենայն ուրեք առաքինութիւն եւ ուղղութիւն յանձնախագոյն գովութիւն ունի եւ առատագոյն հատուցումն քան զնշանսն։

Եթէ ախորժես, եւ այլուստ զայս ցուցցուք. մերձեցան առ նա եօթանասուն աշակերտքն եւ ուրախանալով ասացին. «Տէր, յանուն քո դեւք մեզ հնազանդեցին։ Եւ նա ասէ ցնոսա. մի՛ բերկրիք՝ եթէ դեւք հնազանդեցին ձեզ, այլ զուարճացարուք զի անուանք ձեր գրեցան յերկինս»։ Տեսանե՞ս ամենայն ուրեք առաքինութիւն հրաշացեալ։

Ածե՛ր այսուհետեւ միաբանեսցուք զասացեալս վերստին։ «Յայսմ ծանիցեն ամենեքեան եթէ աշակերտք իմ էք, զի սիրեցէք զմիմեանս»։ Ահա յառաքինութենէն եւ ոչ 'ի նշանացն է ծանօթութիւն աշակերտս լինելոյ։ «Պետրոս, սիրե՞ս զիս առաւել քան զդոսա. հովուեա ոչխարաց իմոց»։ Ահա եւ միւս եւս ծանօթութիւն, եւ այս դարձեալ յառաքինութենէն։ Երրորդ ծանօթութիւն. «Մի՛ ցնծայք եթէ դեւք ձեզ հնազանդին, այլ խնդացէք զի անուանք ձեր գրեալ են յերկինս». եւ այս դարձեալ առաքինութեանն ուղղութի։ Նաեւ եւ զչորրորդ օրինակն այսուիկ ուսանել. «Փայլեսցէ, ասէ, լոյս ձեր առաջի մարդկան, զի տեսցեն ըզգործս ձեր բարիս եւ փառաւորեսցեն զհայրն ձեր յերկինս». եւ աստանօր աւասիկ գործք երեւին։ Եւ յորժամ ասէ դարձեալ «Որ ոք եթող զտուն կամ զեղբարս կամ զքորս, հարիւրապատիկ ընկալցի եւ զկեանս յաւիտենականս ժառանգեսցէ», զառաքինութիւն գովէ եւ զհատուցանի վարս։

Տեսանե՞ս ծանօթացեալս զաշակերտսն սիրելով զմիմեանս, եւ առաւել քան զառաքեալսն սիրել զՔրիստոս հովուելով եղբարցն երեւի, եւ որք աղօթիւն զուարճանալ՝ ոչ զդեւս հանելով, այլ 'ի յերկինս գրեցեալ հրամայեաց ուրախ լինել, եւ որք զնա փառաւորեն՝ այսպիսի գործովք ցուցեալք. որք կենացն հանդերձելոցն եւ հարիւրապատիկ զայնուրիկ ընկալան, յաղագս զմերձաւորսն արհամարհելոյ զկեցեալն ապաքինեն։ Նոցա ամենեցուն նմանեսցուք, եւ կարեմք աշակերտս լինել. եւ որք սիրեսցեն

Digitized by Google

զՔրիստոս՝ ընդ այնոսիկ համարեալ լինիս և յերկինս գրիս, և փառաւորել զքեզ և 'ի յաւիտենական կեանսն վայելել. և ոչ ինչ լինի քեզ խափան առ 'ի պատահել ամենայն բարեաց, ոչ նշանս ևեթ առնելով՝ զասացեալ զառաքինութիւնն ունիցիս:

Զի և զնոյն իսկ զանունդ զայդ զՊետրոս ոչ 'ի նշանաց և 'ի հրաշից էառ, այլ 'ի նախանձուէ և 'ի հարազատ սիրոյ. ոչ վասն զի մեռեալ յարոյց և ոչ զկաղ բժշկեաց՝ այնպէս կոչեցաւ, այլ վասն զի հաւատ և հարազատ խոստովանութիւն եցոյց՝ զանունս զայս ժառանգեաց. «Դու ես վէմ և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»: Տեսե՞ր. ոչ զի աքանչելիս արար՝ այլ զի ասաց «Դու ես Քրիստոսն որդի այ կենդանւոյ»: Տեսանե՞ս զի և նոյն ինքն Պետրոս կոչիլ ոչ 'ի զարմանալեացն, այլ 'ի ջերմ նախանձուէն էառ սկիզբն:

Բայց զի զՊետրոս յիշեցի, եմուտ յիս և միւսոյ ևս Պետրոսի յիշատակ՝ համարակաց հօրս և վարդապետի. որ զնորա ունելով զառաքինութիւն, ժառանգեաց զնորին աթոռ: Քանզի է մի և այս գերազանցութիւն մերոյ քաղաքիս, զի զգլուխ առաքելոցն ընկալաւ վարդապետ 'ի սկզբանն. վասն զի պատշաճ և արժանի իսկ էր որ նախ քան զամենայն աշխարհ քրիստոնէութեամբ պսակեցաւ, զառաջին առաքելոցն առնուլ հովիւ. բայց առնլով զնա վարդապետ, ոչ իսպառ ընկալաք, այլ ընձեռեցաք թագաւորականին Հռովմայ. մանաւանդ թէ իսպառ իսկ ընկալաք. զմարմինն Պետրոսի ոչ ունելով, զհաւատն նորա ունիմք. զոր օրինակ զհաւատն սորոյն Պետրոսի ունելով, զնոյն ինքն զՊետրոս ունիմք: Այնպէս և 'ի նորա նախանձն հայելով, զնա համարիմք տեսանել. զի և զՅովհաննէս Հեղիաս կոչեաց Քրիստոս, ոչ եթէ Հեղիաս էր Յովհաննէս, այլ զի ոգւով և զօրութեամբ Եղիայի եկն՝ Հեղիաս ասացաւ: Այնպէս և սա, վասն զի 'ի դաւանութիւն և 'ի հաւատն Քրիստոսի մերձ եղեալ՝ յիրաւի և անուան նորին արժանաւոր եղև. քանզի առաքինութեանն ազգակցութիւն և զհաւասարութիւն անուանն առնէ:

Աղօթեցուք ամենեքեան 'ի Պետրոսի ծերութիւնն սմա հասանել, զի և առաքեալն 'ի ծերութեանն ըղկեանս վախճանեաց. «Յորժամ ծերասցիս, ասէ, յայն-

ժամ զօտի ածիցեն քեզ և տարցին ուր ոչ կամեսցիս ,, ։ Խնդրեսցուք և սմա երկայն ալեւորութիւն, զի սորա երկարութիւնծերութեան զմեր մանկութիւնս մանաւանդ հոգևոր յօրինեալ առնէ, որ լցի միշտ յառաջութեան պահիլ աղօթիւք այնորիկ և այսք Պետրոսի, շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր համանգերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## Ի ՍԱԿԱՒՈՒԹԻՒՆ ԺՈՂՈՎԵՑԵԼՈՑՆ ԵՒ ՅԱՄՐՈՒԹԻՒՆ ՔԱՂԱՔԻ ԿԱԶՄԵԼՈՅՆ, ԵՒ ԶԻ ՕԳՏԱԿԱՐԱԳՈՅՆ Է ՋԿՆԻ ՅԱՄՐՈՒԹԵԱՆ

Որդեօք այսուքիկ ներելի, արդեօք այսուքիկ համբերելի. հանապազօր մեր ժողովս 'ի նուազութիւն ամփոփի. և լի է քաղաքս մարդկամբ, ունայն է եկեղեցիս 'ի մարդկանէ. լցեալ հրապարակք և տեսարանք և ձեմարանք, անապատ տունս. մանաւանդ թէ պարտ և արժան իսկ էր զճշմարիտն ասել, անապատ է քաղաքս 'ի մարդկանէ և լի է եկեղեցիս մարդկամբ։ Քանզի մարդիկ ոչ որ 'ի հրապարակին՝ է պարտ կոչել, այլ որ յեկեղեցւոջս էք զձեզ. ոչ զնոսա զպղերգսն, այլ զձեզ զփութացեալսդ. ոչ զնոսա որք 'ի յաշխարհականսն բերանաբացեալք են, այլ զձեզ որք զհոգևորսն քան զաշխարհականսն նախապատիւ արարէք։ Զի ոչ որ զմարմին մարդոյ և զձայն ունիցի՝ մարդ իցէ, այլ որ զհոգի մարդոյ և զսէր ունիցի՝ նա է մարդ։ Եւ մարդկայինն անձին ոչ ինչ այնպիսի է նշանակ՝ որպէս սիրելն զա̃ծայինն բանս. որպէս և ոչ այնպէս անասնականն և անբան անձին օրինակ և նշանակ է՝ իբրև արհամարհել զնոյն զբանսն ։

Սամբ ուսանել զի որք զա̃ծայինն լսելութիւնս արհամարհեն, և զմարդութիւն իսկ 'ի ձեռն արհամարհանացն այնոցիկ կորուսանեն և 'ի քաջատոհմութենէս յայսմանէ արտաքս անկանին. ոչ զիմ բանս ասեմ ձեզ, այլ զմարգարէական աստուածն պատմեմ՝ որ զիմ բանս հաստատէ. զի տեսջիք որք ոչ ա̃ծայինն բանիցն փափաքեն, և ոչ մարդ լինել կարեն. զի տեսանիցէք եթէ անապատ է ձեր քաղաքս 'ի մարդկանէ ։ Մեծաձայնն

Digitized by Google

Եսայիաս. Հրաշափառաբար երեւմանց տեսողն, որ ըղձովքէն արժանի եղև տեսանել մեծութեան 'ի մարմնի էր, որ զծնողհրգակին նաւապետութիւնն զայն լուաւ, նա 'ի քաղաքն Հրէից 'ի մայրաքաղաքն մտեալ 'ի բազմամարդն Երուսաղէմ աստեմ, 'ի մէջ հրապարակին կալով, և ամենայն բազմութիւնն շուրջ զնովաւ կային, կամելով ցուցանել թէ որ ոչն լսէ մարգարէական բանիցն ոչ է մարդ, գոչէր ասելով. "Եկի և ոչ գոյր մարդ. կոչեցի և ոչ ոք էր որ լսէր": Եւ զի ոչ յաղագս ամայութեանն մերձաւորացն, այլ վասն պղերգութեան լսողացն զայն ասէր, ասելովն "Եկի և ոչ գոյր մարդ, կոչեցի և ոչ ոք էր որ լսէր" 'ի վերայ եդաւ. որպէս զի մերձ էին ունանք, այլ ոչ հաւանեալ մտաւորք, զի մարգարէին ոչ լսէին. յաղագս այնորիկ զի եկն և ոչ գոյր մարդ, կոչեաց և ոչ ոք էր որ լսէր, առ տարերս դարձուցանէր և ասէր. "Լուր երկին և ունկն դիր": Եւս, ասէ, առ մարդիկ տաղկեցայ որ միտս ունին. այլ զի ոչ բան և ոչ զգայութիւն ունին, վասն այդորիկ որք ոչն ունին զգայութիւն՝ ընդ տարերս խօսիմ, 'ի բանմտասանս՝ որք զգայութեամբն են պատուեալ և ոչ վարին պատուովն": Այնպէս և միւս մարգարէն ասէ Երեմիաս. զի և նա 'ի մէջ բազմութեան Հրէիցն կալով 'ի նմին քաղաքի, որպէս ոչ ումեք մերձ եղելոյ այնպէս բարբառէր. "Ընդ որում խօսեցայց և վկայեցից. անթլփատք են ականջք իւրեանց և ոչ կարեն լսել[1]":

Արդ եթէ զորս հրաշն էին վասն զի ոչ հայէին հանդերձ փութով 'ի բանսն՝ և ոչ մարդիկ ասացին զոլ մարգարէքն, զինչ արդեօք ասասցուք մեք յաղագս որոց ոչ միայն ոչ լսեն, այլ և ոչ մերձենալ 'ի քահանայական դրունսն հանդուրժեն. որք մոլորեալք են արտաքոյ մծայլին հօտիս այսորիկ, հեռիք 'ի մայրենի տանէս յայսմանէ՝ 'ի փողոցս և 'ի հրապարակս իբրև անառակք և ծոյլ մանկունս դեգերին. Օ՜ի և նոքա լքանելով զՀայրենի զտունն արտաքոյ թափառին մանկան խաղկոք զօրոր օրն զբօսանան. յաղագս այնորիկ և յաղատութենէն և 'ի կենացն յաւիտենակի արտաքս անկանին այնպիսի մանկունքն: Քանզի մատնին 'ի մարդե-

1 Գալատացին տողք 11:

լուծացն և յաւազակաց ձեռս, և մահու պատժեալս բազում՝ անգամ յաղագս ծուլութեանն ընդունելին։ Ընդ-նելով զնոսա 'ի բաց կապտեն զանկի զգեստն, կամ 'ի հասանս գետոց հեղձուցանեն, և կամ յարժամ մարդասիրագոյնս մինչ վասն նոցա խորհիցեն, յօտար գաւառ տանելով զազատականն վաճառեն։ Նոյն և սոքա կրեն. վասն զի հեռի 'ի հայրենի տանէս և 'ի նորա գնացիցս մեղօրին, պատահեն բերանոց հերձուածողացն և լեզուաց ճշմարտութեան թշնամեացն. և սոքա խրթե մարդելոյք առնելով զնոսա նոքա, և զանկին զարդ հաւատոյ 'ի բաց կողոպտելով հեղձուցանեն, վաղվաղակի ոչ 'ի գետ ընկենլով, այլ 'ի պղտոր անհաւատութեան խուրեանց յաղանդոյն ընկղմելով։

Բայց ձեր է այսուհետև նախապահութիւն առնել եղբարցն այնոցիկ փրկութեան՝ ածել զնոսա առ մեզ, եթէ ամբոխիցեն և եթէ ստահակիցեն յամառական ստահակութեամբ և պղերգական կամօք. այլ դուք յարդարեցէք զանհաւատարմութիւն նոցա անձանցն. զինի է՝ որպէս զի լինիցին նոքա մարդիկ։ Որ օրինակ որ[1] փուշ և բանջարս ընդ անտառուն ճարակեսցեն՝ ոչ առնեն մարդիկ զօլ, նոյնպէս և որ զմարդկայինն և որ զյանկարգոյն մարդկան անձինն առեալ զկերակուրն՝ որ յանծայլին զանիցն է, և յաշխարհական խումբս և յանթառակցութիւցեալս զարշութեամբ նմանեցին և զանօրէնութեանց բանս ճարակեսցեն, ոչ երբեք առնեն մարդիկ լեալ։ Մարդ բառ մեզ ոչ միայն որ զհացն ուտէ, այլ որ նախ քան զկերակուրն զայն 'ի հոգևոր բանիցն ճաշակիցէ՝ այնուհետև է։ Եւ զի նա է մարդ, լուր Մովսիսի որ ասէ՝ եթէ «Ոչ հացիւ միայն կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ 'ի բերանոյ այ»։ Որպէս զի կարենալ է մարդկանց մերոց կերակուր, մինն նուաղ և միայն լաւագոյն. և յաղագս այսորիկ յաւէտ խնամակալեցէք, զի և զօգտին կերակրել, և մի անտես առնելով զնա հաշեցէք ատելով։

Ձեր է այսուհետև առնել մեզ զքաղաքս ըն մարդկամք. բայց վասն զի այժմ անապատ է 'ի մարդկանէ մեծս այս և բազմամարդ, և խրատեցի է գաւառս զայս-

1 Գանկատեր յօրինակին Զոր օրինակ որ. յաւելու 'ի յունէն։

պիսի հանգամանս 'ի ներքս բերել, և զեղբարսն ձեր ձգել։ Եւ զիա՞րդ զնոսա ձգիցէք արդեօք. եթէ առ-տուստ ցնոսա տանիցէք ինչ։ Զի և 'ի սեղան յայնժամ հաւանիմք վայելել, ոչ յորժամ գոլեմքն միայն զսե-ղանն, այլ և յորժամ 'ի կերակրոց նորա որ արտաքոյն են մնացեալ՝ ունիցիմք ինչ ընձեռեալ։ Զայս և դուք արարէք այժմ, և յերկուց մի ամենայն իրօք լինիցի. կամ հաւանեցուցանէք զնոսա առ մեզ գալ, և կամ ե-թէ կացցեն մնասցեն 'ի նմին յամառութեան՝ ձերովք լեզուովքդ կերակրեսցին, մանաւանդ եթէ եկեսցեն այսր։ Քանզի ոչ ախորժեսցեն 'ի չնորհաց կերակրել. այլ զի զայնոսիկ առնէք և արարէք և առնիցէք, յայժ մտահանամք, և հաւատամ զի և ես յաճախակի զայս պատուիրելով ոչ նուաղեմ. և դուք լցեալ էք ամենայն գիտութեամբ, կարող էք և զիրեարս խրատել։

Ժամ է այսուհետև առաջի ձեր դնել զսեղանս մեր զանարգս զայս և զաղքատ. որ թէպէտ և յոլով աշխա-տութեամբ լի է, սակայն ունի անոյշ կերակուր զձեր լսողացդ զյօժարութիւն և զփափաքումն. քանզի հեշ-տալի զսեղանն ոչ միայն կերակրոցն պատուականութիւն առնէ, այլ և կոչեցելոցն ցանկութիւն։ Որպէս պայ-ծառ սեղան անարգ երևի, յորժամ ոչ քաղցեալ կա-մօք առ նա մերձեսցին կոչեցեալքն. նոյնպէս և վա-թարն բազմապատիկ ցուցանի, յորժամ քաղցեալս ըն-դունիցի զկերողսն. որպէս եթէ ոք և այլ ազգ զմտա-ածիցէ եթէ ոչ բնութեամբ կերակրոյն, այլ բաղձա-նօք կերողացն բազմապատիւ սեղանն լինիցի՝ այսպիսի իմն ասէ. "Յանձն յագեալ խորսխօք խաղայ, և ան-ձին կարօտելոյ՝ դառն քաղցր լինի, քաղցր երևի"։ Ոչ բնութիւն առաջի եդելոցն փոփոխի, այլ փափաքումն կերողացն գողանայ զզայութիւն։ Եւ եթէ դառն քաղցր երևի յաղագս ցանկութեան կոչելոյն, որչափ ևս առա-ւել նուազս այս բազմապատիկ երևեսցի։ Վասն որոյ թէպէտ և մեք վերջին աղքատութեամբ կեցցեմք, սա-կայն պատուասէր ճաշատուացն նմանեմք, ըստ իւրա-քանչիւր ժողովելոց կոչեմք զձեզ 'ի մեր սեղանս, և առ-նեմք զայս ոչ 'ի մեր ընտանի ճոխութիւնս վստահանա-լով, այլ 'ի ձեր լսելութիւնդ համարձակիմք։

Արդ զկերակրին զպարտսն զամենայն հատուցաք ձեզ,

Digitized by Google

զվերագիրն առեալ զառաքելական գործոցն. կարգաւոր է այսուհետև բուռն հարկանելով զսկիզբն գործոց առնելով ձեզ զինչ արդեօք է. «Առաջին բանն զոր արարի յաղագս ամենեցուն, ով Աստուածասէր, զորոց սկսաւ Յս առնել և ուսուցանել». այլ Պաւղոս ոչ նորէ մեզ յարմարութեամբ վարիլ կարգիս այսորիկ, առ ինքն և յիւր ուղղութիւնսն զմեր լեզուս կոչելով: Քանզի բաղձամ զնա 'ի Դամասկոս տանելով տեսանել, ոչ երկաթի կապանօք կապեալ, այլ տէրունեան ձայնիւն. փափաքեմ տեսանել որսացեալ զայն ձուկն զմեծ, որ զամենայն զծովն ամբոխէր և բիւր աշխուժութիւն ընդդէմ եկեղեցւոյ յարուցանէր. ցանկամ զնա տեսանել որսացեալ ոչ կարթիւ, այլ տէրունական բանիւն:

Ար զոր օրինակ ձկնորսք 'ի վերայ բարձր վիմին նստելով զեղէգն 'ի վեր համբառնալով 'ի բարձրաւանդակէ զկարթն ընկենուն 'ի խոր, նոյնպէս և Քրիստոս տէր մեր որ եցոյց զհոգևոր ձկնորսութիւն՝ իբրև 'ի բարձրաւանդակ վիմի յերկնից նստելով, զօրէն կարթի ըզձայն արձակեաց 'ի վերուստ ասելով. «Սաւուղ Սաւուղ, ընդէ՞ր զիս հալածես», այնպէս որսացաւ զձուկն զայն զմեծ. և որպէս 'ի ձկանն յայնմ եղև զոր որսացաւ Պետրոս ըստ հրամանին տեառն, այնպիսի իմն և աստ դիպեցաւ. և զի այս ձուկն գտաւ ստատեր ունելով 'ի բերան, ստատեր անարատ. վասն զի ունէր նախանձ, այլ ոչ գիտութեամբ: Եւ յաղագս այնորիկ գիտութիւն շնորհելով նմա ա̄ծ՝ փորձ և ընտիր արար ըզզահեկանն: Եւ որպէս որսացեալ ձկանցն ընդ, նոյնպէս և աստ եղև. զոր օրինակ նոքա 'ի վեր ձգեալք 'ի խորոյն վազվազակի կուրանան, այնպէս և սա ըմբռնելով զկարթն և 'ի վեր ձգեալ առաջ կուրացաւ. այլ այն կուրութիւն զամենայն աշխարհ տեսանող արար: Զայս ամենայն տեսանել բաղձամ:

Քանզի եթէ բարբարոսական պատերազմ ձեզ 'ի վերայ հասանէր և 'ի մարտին պատերազմողքն բիւր վտանգս ընձեռէին, և ապա զօրավար բարբարոսացն որ բիւր մեքենայիւք մարտնչէր և զամենայն զմեր իրս շփոթէր և յոլով տագնապօք իսկ զքաղաքն ունէր, սպառնայր և զնոյն ինքն զքաղաքն կործանել, և ծառայութիւն մեզ 'ի վերայ յարուցանել խոստանայր, յանկարծակի 'ի թա-

զաւորէն մերմէ կապեալ գերի 'ի քաղաքս մեր մնա-նէր, ոչ ամենեքեան հանդերձ կանամբք և մանկամբք 'ի տեսութիւնն այն ընթանային։ Նոյն զի և այժմ պա-տերազմ խմբեցաւ Հրէից, որք զամենայն ամբոխեն և շփոթեն և յոլով մեքենայս 'ի վերայ բերեն եկեղեցւոյ ամբոխութեան. և գլուխ է պատերազմողացն Պաւղոս որ քան զամենեսեան առնէր մեծամեծս և խօսէր, և զա-մենայն տագնապեցուցանէր և խաղէր, կապեալ ևէր մեր Յիսուս Քրիստոս Թագաւորն, կապեալ և գերի 'ի ներքս էած՝ որ զմնալս շփոթէր, ելցուք այսուհետև ամենեքեան 'ի տեսութիւնն յայն, զի տեսանիցեմք զնա գերի ածեալ։

Զի և հրեշտակք յայնժամ 'ի յերկնից տեսանե-լով զնա կապեալ 'ի ներքս ածեալ՝ խայտային, ոչ միայն զի զկապեալն տեսանէին, այլ զի իմանային որքանս մար-դիկ հանդերձեալ էր 'ի կապանաց արձակել՝ հրճուէին. ոչ զի զձեռանէ ածեալ տեսանէին, այլ զի զմտաւ ա-ծէին որքան հանդերձեալ էր նա յերկրէ 'ի յերկինս օժանդակելով հանել։ Նորին աղագաւ զուարճանային, ոչ զի զկուրացեալն տեսանէին, այլ զի գիտէին թէ որ-քան հանդերձեալ էր 'ի խաւարէ արտաքս հանել. քան-զի երթ, առէ, 'ի հեթանոսս, և ազատեսցես զնոսա 'ի խաւարէ, և փոփոխեսցես յարքայութիւն սիրելւոյն իմոյ։

Վասն. այսորիկ զառաջաբանն թողլով 'ի մէջ հառա-նել ձեռնիմք. քանզի Պաւղոս և Պաւղոսի ցանկութիւն հարկ առար մեզ վազել զայսպիսի վազս։ Ներեցէք, մանաւանդ թէ մի՛ ներեցէք, այլ նախանձեցարուք ընդ այսպիսի սէր։ Զի որ 'ի գարշելի ցանկութիւնս ան-կեալ կայցէ, յիրաւի թողութիւն հայցէ. իսկ որ այն-պիսի ումեք ցանկայ, որձնեացի սիրոյն, և զյոլովս ա-րասցէ հաւասարորդս փափաքանացն, և բիւր սիրակիցս պատրաստեսցէ իւր։ Զի եթէ էր 'ի ձեռնադարձս 'ի գնալ և գործով յառաջանալ, զառաջինն առելով և 'ի միջինսն ժամանել, ոչ արգելոք զսկիզբն թողեալ վաղ-վաղակի 'ի միջոցն գայաք. վասն զի հարցն օրէնքն հրա-մայեն զկնի յիսնակին 'ի բաց դնել զգլուխ զայս, և 'ի կատարածի առնես այսորիկ՝ վախճանի և գրոցս այսորիկ ընթերցուած, երկեայ մի գուցէ յառաջաբանին դե-գերելով մեք և յերկարելով՝ զանց առնիցէ զմեօք պատ-

Digitized by Google

մութեանն յարմարութիւն: Յաղագս այսորիկ զընթացս 'ի սկզբանն 'ի միջոցս ձեռակելով առնումք, բուռն հարկանելով զսկզբան պատմութենէս. և իբրև զգլուխ յետուստ կազմանէ ունիմք զառաջաբան պատմութեանս լուծանել, և կալ մնալ ձեզ 'ի սկզբանն ճանապարհիդ: Վասնզի պատմութեան գլուխ սկսանելով, վստահանամ այսուհետև ընդ ամենայն իսկ անցանել, թէպէտ և տօնս անցցէ: Եւ որ զմեզ տարաժամութեամբ կարասցէ սողոսանել. հարկաւորութիւն կարգես 'ի բամբասանաց տարաժամութեան ազատեսցէ զմեզ. վասն այնորիկ յառաջաբանէն 'ի մէջս ընթացաք: Զի ոչ ճանապարհաւ գնալ առ Պաւղոս գալ, այլ զանց առնէին զմերով լեզուաւ գիրքս և զգրութս փակէին, 'ի նմին իսկ 'ի յառաջաբանէս արարից յայտ, թէպէտ և արդէն իսկ եղև երևելի:

Զի եթէ զմերազիրն միայն ձեզ ընթեռնլով և առնելով՝ կէս տօնիս էանց, եթէ 'ի խօսս նորին իսկ զդոցն յառաջաբանէն սկիզբն առնիցեմք և զբանն ընդարձակելով ձեռնարկիցեմք, որքան ժամանակս ծախիցեմք մինչև ժամանեսցուք 'ի Պաւղոսի պատմութիւն. մանաւանդ եթէ 'ի նմին իսկ յառաջաբանէն յայտնի առնել ձեզ հարկեցայց զայս: „Զառաջին բանն արարի վասն ամենեցուն, ով Աստուածասէր„: Վասնզի ինչ կարծէք աստանօր խնդիրս: Նախ առաջին էր յիշեցուցանել, և հիմ աղագաւ զառաջին գիրսն. Երկրորդ ընդէ՞ր բան կոչէ և ոչ աւետարան. և սակայն Պաւղոս զնա աւետարան կոչէ այսպէս ասելով. „Որոյ գովութիւնն յաւետարանին յամենայն եկեղեցիսն„. յաղագս Ղուկայ ասէ. Երրորդ վասն է՞ր ասէ „յաղագս ամենայնի զոր արար Քրիստոս„: Վասնզի եթէ Յովհաննէս սիրելին Քրիստոսի որ այնքան վայելեաց համարձակութիւնս, որ 'ի վերայ սուրբ լանջացն նորա արժանի եղև անկանել, որ անդուստ ընկալաւ զաղբիւրս հոգւոյն, ոչ իշխեաց զայս ասել, այլ այնքան վարի զզուշութեամբ ասել. „Զի եթէ զամենայն զոր արար Յիսուս՝ գրեալ էր, կարծեմ թէ և ոչ աշխարհս տանէր զգրեալ գիրսն„, զիա՞րդ իշխեաց ասել եթէ զառաջին բանն զոր արարի յաղագս ամենեցուն, ով Աստուածասէր, զոր արար Յիսուս. ինչ արդեօք ձեզ թուիցի խնդրելիս այս: Եւ անդ

պատճառք. չարախօսութիւն ոչ է, որ յառաջագոյն չար է և զկնի լինիցի պիտանացու. այլ յառաջագոյն փոյթ լինելով, զկնի եթէ փոփոխեսցի 'ի չարութիւն. վասն զի 'ի վախճանէն միշտ ամենայն իրօք դատելոց լինելոյ: Զի և նաւուղիղք եթէ 'ի բուն նաւաբեկութեանց զերծանին, և յորժամ կամիցին 'ի նաւահանգիստն դիմել հանդերձ բեռամբք լցեալ՝ զնաւն խորտակիցեն, ոչ ասեմք բարւոք գործունեայս՝ ծածկելով զանցեալսն ամենայն վախճանաւն. և ընդ էրէք դարձեալ թէ բուռն անգամ յառաջագոյն պատուհասեսցին, և յորժամ յաղագս պատկառանս բերէ մրցումն և զօրասցին, ոչ զրկեսցէ 'ի գովութեանցն որ 'ի յաղթութեան յաղագս առաւելոց իւրոցն: Որպէս և Պաւղոսի առաքեալք, քանզի և նա բուռն նաւաբեկութեանց համբերեաց. բայց յորժամ 'ի նաւահանգիստն կամէր մտանել, լցեալ բեռամբ 'ի ներքս էած զնաւն: Նոյնպէս զոր օրինակ Յուդաս ոչ ինչ օգտեցաւ որ յառաջագոյն աշակերտն էր և յետոյ մատնիչ եղև, նոյնպէս և սա ոչ ինչ վնասեցաւ յառաջ հալածելովն և զկնի այնորիկ եղև աւետարանիչ:

Պարծութիւնք են այսորիկ Պաւղոսի. ոչ զի կործանեաց զեկեղեցի, այլ զի ինքն դարձեալ շինեաց. և ոչ զի հալածեաց զնոսա, այլ զի յորդորելով զնոյն ինքն դարձեալ աճեցոյց. ոչ վասն զի պատերազմեցաւ ընդ առաքելոցն, այլ զի մրցեցաւ ընդ առաքելոցն յառաջագոյն՝ առաւել քան զնոսա աշխատեցաւ զկնի. և ոչ զի ոգեաց զհօտն, այլ յետոյ պաշտպանեաց նմա: Զի ինչ քան զայս հրաշափառագոյն լինիցի որդւոյ: Ո՞չ գայլն լինէր հովիւ. որ զարիւն ոչխարացն ըմպէր, ոչ նուաղեաց զարիւնն հեղուլ յաղագս ոչխարացն փրկութեան: Մխրճեաց ուսանել զիարդ զարիւն ոչխարացն էարբ, որպէս շաղախեալ յարեանն էր լեզու նորա. "Իսկ Սաւղոս, ասէ, տակաւին փքայր սպառնալեօք և սպանմամբ աշակերտացն տեառն": Այլ նոյն որ սպառնալեօք և սպանութեամբ ամբարտաւանէր և զարիւն սրբոցն հեղոյր, լուր զիարդ զարիւնն եհեղ յաղագս սրբոցն. "Զի ըստ մարդոյ, ասէ, գազանամարտեցայ յԵփեսոս". և դարձեալ. "Հանապազօր մեռանիմ". և դարձեալ. "Համարեցաք որպէս զոչխար 'ի սպանումն": Նա զայս ասէր որ մերձն կայր յորժամ

հեղեալ լինէր արիւնն Ստեփաննոսի, և հաճոյակից էր սպանմանն նորա։ Տեսե՞ր զկարգ գայլն հովիւ եղև։

Մի՛ այսուհետև ամաչեցէք՝ լսելով եթէ յառաջագոյն հալածիչ էր և հայհոյիչ և լուտացող. տեսե՞ր զիարդ մեծագոյնն նմա զգովութիւնն արար առաջին չարախօսութիւնն։ Ո՞չ ասէի ձեզ յառաջին ժողովն՝ թէ որ նախ քան զխաչն եղեն նշանք, զկնի խաչին մեծագոյնք ևս եղեն. ո՞չ ցուցի ձեզ 'ի նշանացն և 'ի բարեմութ̃է աշակերտացն. և զիա՞րդ յառաջագոյն Քրիստոս հրամայելով յարուցանէր զմեռեալս, իսկ յետոյ և հովանի ծառայից նորա զնոյն առնէր. զիա՞րդ յայնժամ ինքն սքանչելագործէր, զկնի ծառայք նորա անուամբ նորին վերացեալ մեծամեծ ևս առնէին. ո՞չ ասացի ձեզ յաղագս թշնամեացն՝ զիա՞րդ զրդուեցոյց զնոցա զխռութ̃ին, որպէս կալան զաշխարհ ամենայն, զիա՞րդ մեծամեծ նշանք զկնի խաչին էին քան յառաջագոյն քան զխաչն. եղբայր նորին և սա է՝ որ այսօր 'ի ներքս եմուտ բանն։

Վասն զի զի՞նչ քան զՊաւղոս մեծագոյն նշանք եղև. կենդանի զնա Պետրոս ուրացաւ. իսկ մեռեալ Պաւղոս դաւանեցաւ, և մեռեալս յարոյց։ Այլ քան զբուր նշանս ևս առաւելագոյն էր զՊաւղոսի բարոն գիտել և 'ի բաց բառնալ. վասն զի անդ բնութիւնս յարմարեալ լինէր, և ոչ ինչ հակառակ կայր հրամանատուին. իսկ աստ յօժարամտութիւնն էր հաւանելոյ և ոչ հաւանելոյ տէր. ուստի յաւէտ զօրութիւն քան զյառնելն ցուցանի։ Վասն զի քան զբնութիւնն ուղղել՝ մեծագոյն և վեհագոյն ուրեմն քան զայլ ամենայն նշանս եղև Պաւղոսի հնազանդելն Քրիստոսի զկնի խաչին և գերեզմանին. զի և նորին իսկ աղագաւ ներեաց Քրիստոս զամենայն թշնամութ̃ին ցուցանել, և յայնժամ կոչեաց որպէս անբամբաս արասցէ զզօրութեանն իւրոյ զցոյց և զվարդապետութեանն բանս։

Քանզի Պետրոս յաղագս նորա ասելով՝ թերևս կարծեցեալ լինէր, որում էր ինչ ոք արդեօք յանամօթիցն ասել. զլքացելոցն ասեմ, զի և անդ յայտնագոյն ևս է ցոյցքն։ Եւ յիրաւի իսկ զնա ուրացաւ հանդերձ երդմամբ. այլ սակայն զնոյն զնա խոստովանելով զկնի, և զանձն իւր 'ի վերայ նորա եդ։ Արդ եթէ ոչ էր յարուցեալ, ոչ արդեօք զկենդանին ուրանալով՝ յետոյ յա-

զնոյն ։ Օ՛ր ոչ միայն փոփոխեաց զնա , այլ զի և այնպէս փոփոխեաց , այնպէս ընտանի արար , այնպէս ձգեաց 'ի բարեմտութիւնն իւր , մինչ զի զամենայն իսկ նմա ընձեռեաց ․ քանզի “ Ա՛նօթ ընտրութեան է ինձ նա՝ բառնալ զանուն իմ առաջի հեթանոսաց և թագաւորաց ” ․ և առաւել քան զառաքեալսն հաւանեցոյց զամենեսեան վաստակել յաղագս եկեղեցւոյ որ յառաջագոյն 'ի նմանէ պատերազմեալ լինէր ։

Կամիս ուսանել զիարդ զնա փոփոխեաց , որպէս ընտանեցոյց , զիա՛րդ զնա ձգեաց , որպէս յառաջին սիրելեան համարեցաւ ․ ոչ ումեք այնքան 'ի մարդկանէ վստահացաւ տալ զանձառելիսն , որքան Պաւղոսի ։ Եւ ուստի՞ է այս յայտ ․ “ Լուայ բանս անճառս , ասէ , զոր ոչ է արժան մարդոյ խօսել ” ։ Տեսե՞ր զԹշնամին զպատերազմօղն որքան բարեմտութիւն եցոյց ․ յաղագս այնորիկ հարկաւոր էր և զառաջին վարսն նորա ասել , վասն զի զնոյ զօրութիւնն և զմարդասիրութիւն ցուցանէն մեզ ։ Զմարդասիրութիւն՝ զի կամեցաւ որ այնքան չարիս գործեաց՝ փրկել և առ ինքն ձգել , և զզօրութիւնն՝ զի անխորժելով զօրեաց ․ և զՊաւղոսի զանձն այնորիկ ցուցանէն մեզ՝ եթէ ոչ ինչ յաղագս ստահակութեան առնէր , և ոչ մարդկային կարեօք ըմբռնեալ իբրև զ-րեայսն ․ այլ նախանձու ջեռեալ՝ և ոչ զուղղակի , այլ սակայն նախանձու , զոր և ինքն գոչելով ասէր՝ թէ “ Վասն այնորիկ ողորմութեան դիպեցայ , զի անգիտանալով արարի և անհաւատութեամբ ” ․ և ընդ նոյ մարդասիրութիւնն հիանալով ասէր ․ “ Զի յիս նախ առաջին ցուցցէ զամենայն երկայնմտութիւն յօրինակ հանդերձելոցն հաւատալ 'ի նա 'ի կեանսն յաւիտենականս ” ․ և այլուր դարձեալ ասէր՝ եթէ “ Զգործ զօրութեան նորա զոր մանաւանդ եցոյց 'ի մեզ հաւատացելալս ” ։

Տեսե՞ր զիարդ զմարդասիրութիւնն ցուցին նոյ և զզօրութիւնն և զիւրոյ բարուցն զխոնարհութիւն առաջին վարքն Պաւղոսի ։ Զնոյն և գաղատացւոցն գրելով 'ի վկայութիւն էած ․ զի ոչ մարդով փոփոխեցաւ , այլ աստուածային զօրութեամբն ։ “ Եթէ մարդկան հաճոյ լինէի , ասէ , Քրիստոսի ծառայ ոչ արդեօք էի ” ։ Եւ ուստի՞ է յայտ եթէ ոչ մարդկան հաճոյ լինելով՝ 'ի քաղաքութիւնն փոփոխեցաւ ․ “ Լուայք , ասէ , զիմ գնա-



Digitized by Google

նացին որ երբեմն 'ի հրէութեանն, զի ըստ աւանդութեան հալածէի զեկեղեցին և կործանէի զնա „: Եւ արդեօք եթէ մարդկան հանդերձեալ էր հաճոյ լինել, փոփոխեալ էր 'ի հաւատն: Վասն այսորիկ և պատիւ ունէր 'ի Հրէիցն, և 'ի բազում իշխանութեան վայելէր և նախագահութեան էր արժանաւոր. ոչ արդեօք 'ի վտանգաւոր կեանսն գայր առաքելոցն որ հայհոյութեամբ լինէին և թշնամութեամբ. որպէս զի այն յանկարծակի փոփոխումն և այլայլութիւն թողլով զՀրէիցն պատիւն, զառանց պատերազմի կեանսն փոփոխել ընդ առաքելոցն կենաց՝ որ բիւր մահունս ունէր, մեծ եղեն ցոյց՝ ոչ յաղագս մարդկային ինչ պատճառանաց փոխեցաւ Պաւղոս: Վասն այսորիկ և մեք ախորժեցաք զառաջին վարսն նորա 'ի մէջ ածել և ցուցանել զնորա հրացեալ նախանձն հակառակ եկեղեցւոյ. զի յորժամ տեսցես զյաւէտ յօժարութիւնն յաղագս եկեղեցւոյ, սքանչասցիս ընդ արարիչն ամենեցուն և փոփոխիչն ա̄ծ: Նորին աղագաւ և աշակերտն Պաւղոսի զառաջին մեզ հաւաստեաւ կազմեաց և յոլով յայտնութեամբ, այսպէս ասելով. " Իսկ Սաւղոս տակաւին փքայր սպառնալով և սպանմամբ աշակերտացն „:

Կամէի ես սկսանել զյառաջաբանն այսօր, ախորժէի արկանել զիս 'ի սկիզբն միայն պատմութեանն. այլ զմտաւ ածի որքան վաղվաղակի մեզ շարժեալ լինէին խնդդիրքն. զՍաւղոս զանունս զայս 'ի թուղթս այլ իմն անուն տեսանեմք գրեալ. " Պաւղոս ծառայ Յ̄ի Քրիստոսի կոչեցեալ առաքեալ, և Սոսթենէս. Պաւղոս կոչեցեալ առաքեալ. Ահա ես Պաւղոս ասեմ ձեզ „. այժմ ախորժելով Պաւղոս և ամենայն ուրեք Պաւղոս կոչի: Ընդէ՞ր արդեօք Սաւղոս և զկնի այնորիկ Պաւղոս կոչեցաւ: Եւ է լոկ խնդիրս, քանզի 'ի Պետրոս ընթանայ. զի նա յառաջագոյն Սիմոն էր կոչեցեալ, և զկնի այնորիկ անուանեցաւ Կեփաս. և որդիքն Զեբեդեայ Յակոբոս և Յովհաննէս՝ որդիք որոտման փոփոխեալ անուանեցան: Եւ ոչ 'ի նորումն միայն, այլ և 'ի հնումն գտանեմք զԱբրահամ յառաջ Աբրամ ասացեալ, և զկնի Աբրահամ. և Յակոբ նախ Յակոբ էր կոչեցեալ, և յետ այնորիկ Իսրայէլ. և Սառա յառաջագոյն Սարա ասացեալ լինէր, և ապա Սառա. և բա-

Digitized by Google

զում խնդիրս ընձեռէ մեզ անուանցս փոխադրութիւն, զոր երկեայ մի գուցէ բազում հոսանս գետոց յանկարծակի արձակելով հեղձուցից զվարդապետութեւս բան։

Օ՜ն զոր օրինակ զերկիր որ խոնաւութիւն ունի, ուր և փորեսցէ ոք՝ աղբիւրս ամենայն ուստեք բղխեն, նոյնպէս և յանդաստանի ա̃ծային գրոց ուր և փորեսցես՝ գետս ելեալս տեսցես ամենայն ուստեք. զամենեսեան զայսոսիկ զուղխս թողուլ այսօր ոչ սուղ ինչ հարկաւոր է։ Յաղագս որոյ թողլով զմեր հոսանս, արձակեմ զձեր սէրդ առ ա̃ծային աղբիւրն նախաթուոցս այսոցիկ և վարդապետաց ՚ի մաքուրս յայս և յըմպելի և ՚ի քաղցր ջուր, որ ՚ի նմին խոկ գայ յիմանալի վիմէն։ Պատրաստեսցուք այսուհետև զմիտս մեր յընդունելութիւն վարդապետութեանս և արբցուք զհոգևոր ջուրն. լիցի մեզ աղբիւր ջրոյ խաղացելոյ ՚ի կեանս յաւիտենականս. որում լիցի մեզ հանդիպել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք հօր հանդերձ սուրբ հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՅԱՂԱԳՍ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ, ԵՒ Ի ԲԱՆՍ ԱՌԱՔԵԼՈՅՆ «ԵԹԷ ՊԱՏՃԱՌԱՆՕՔ ԵՒ ԵԹԷ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՄԲ ՔՐԻՍՏՈՍ ՔԱՐՈԶԻ»

Զփարիսեցին և զմաքսաւորն յիշեցաք յառաջագոյն, և երկուս կառս բանիւ լծեալ յառաքինութենէ և ՚ի չարութենէ զիւրաքանչիւր ոք ցուցաք որքան ՚ի խոնարհութենէն շահ և որքան յամբարտաւանութենէն վնաս։ Մին արդարութիւն էր զգեցեալ, և զպահս և զտասանորդս ոչ պակասեցոյց. և միւսն ընդ անօրէնութեան ընկեցեալ յառաջագոյն ժամանեաց քան զփարիսեցւոյն ընթացութիւնն, թէպէտ և զերասանակակալն ունէր վատթարագոյն։ Քանզի զինչ քան զմաքսաւորն է վատթարագոյն. այլ սակայն զի խոնարհեցոյց զիւր զանձն և մեղաւոր զինքն կոչեաց, գերազանցեաց քան զփարիսեցին՝ որ զպահսն ասէր ունել և զտասանորդս և յամենայն չարութենէ ՚ի բաց վճարումն։ Ընդէ՞ր արդեօք. զի թէպէտ և յաւելաստացութենէ և ՚ի

յափշտակութեանն էր արդար, այլ դժնդակն չարչարաց ամենեցուն զամբարտաւանութիւնն և զապարձակութիւնն ունէր արտաքսեցելոյ յոգւոյն։ Յաղագս այսորիկ և Պաւղոս առաքեալն ասէ. «Իւրաքանչիւր ոք զգործ իւր փորձեսցէ, և յայնժամ առ յինքն միայն զպարծանսն կալցի և մի յընկերին»։ Իսկ նա ընդ ամենայն երկիր անցանելով եկաց ՚ի մէջ, և քան զամենայն մարդիկ զինքն առնէր լաւագոյն. որ թէպէտ և քան զտասն միայն և կամ քան զհինգ և կամ քան զերկուս և կամ զմի զինքն առաւել դնէր, և ոչ այն էր ներելի. իսկ որ այժմ ոչ միայն առաւել եդ քան զաշխարհ, այլ և ամբարտաւանեաց ևս զամենեցունց, յաղագս այսորիկ վերջացաւ յընթացսն։ Իսկ զոր օրինակ նաւ որ ՚ի բիւրս ձկնենային մրրկաց փախուցեալ և ապա ՚ի նմին խեկ ՚ի բերան նաւահանգստին յանձաւէ ուրեք խորտակեալ ՚ի զամենայն որ ՚ի նմա կայցէ գանձն կորուսանէ, նոյնպէս և փարիսեցին այն վտանգից պահոցն համբերեաց և այլոցն ամենեցուն առաքինութեանց, այլ զի զլեզուն ոչ արգել, ՚ի նմին ՚ի նաւահանգստին ընդ նաւաբեկութեանցն անկաւ։ Այսն զի յաղօթիցն յորոց շահել էր պարտ և արժան, այնքան վնասեալ ՚ի բաց գնալ ոչ այլ ինչ էր, քան եթէ նաւաբեկութիւն ընդունել։

Զայսոսիկ գիտելով, սիրելիք, թէպէտ և ՚ի նոյն ինքն ՚ի գագաթն առաքինութեան ՚ի վեր ելանիցեմք, քան զամենեսեան զանձինս վերջինս վարկցուք, ուսեալք զի և ՚ի նոցունց իսկ յերկնից ամբարտաւանութիւնն կարէ ՚ի վայր ընկենուլ զոչ զգուշացեալսն, և ՚ի նմին ՚ի խորոց մեղացն ՚ի վեր հանել ՚ի բարձրանալ փոքր խոնարհութիւնն որ զինքն նուաստացուցանել գիտէ։ Նա առաւելին քան զփարիսեցին զմաքսաւորն կացոյց. իսկ միւսն ևս՝ զբարձրամտութիւնն առեալ և զամբարտաւանութիւն՝ անմարմնական զօրութեանցն յաղթեաց բանսարկուին։ Խոնարհութիւն և իւրոց մեղացն ծանօթութիւն ՚ի դրախտն զաւազակն եմոյծ նախ քան զառաքեալսն։ Իսկ եթէ որք զիւրեանց զմեղսն խոստովանին՝ այնքան ինքեանց անդորրեն զհամարձակութիւն, որք յոլով զանձանց գիտիցեն զբարիս և նուաստացուցանեն զանձինս իւրեանց՝ որքան պսակաց ոչ հանդիպեսցին։ Զի եթէ յորժամ մեղք զգեցեալ իցեն ըն-

Digitized by Google

խոնարհութիւն՝ և այնպէս դիւրաւ ընթանայ, մինչ զի զարդարութեամբն որ զամբարտաւանութին ունի՝ յառաջէ և գերազանցէ, իսկ եթէ ընդ արդարութեանն զնա միաւորեսցես՝ ո՛ր ոչ հասանիցէ, ընդ ո՛ր երկինս ոչ անցանիցէ, և առ նմին ինքն կայցէ առ ամենեցունն այ աթոռոյն 'ի մէջ հրեշտակացն հանդերձ բազում համարձակութեամբ: Դարձեալ եթէ ընդ արդարութեան ամբարտաւանութիւն ընկեսցի, իւրով սաստկացեալ ծանրութեամբն 'ի վայր ձգել զնորա համարձակութին զօրէ. և եթէ ընդ մեղացն ևս իցէ շաղեալ, որքան 'ի վայր արկանել կարիցէ 'ի գեհեանն որք ունինն զնա:

Օ այսուհետև ասեմ ոչ զի անփոյթ առնիցեմք զարդարութենէ, այլ զի փախչիցիմք յամբարհաւաճութենէն. ոչ զի մեղիցուք, այլ զի չափաւորեսցուք զանձինս: Վասն զի հիմն է մերոյ իմաստասիրութեանս խոնարհութին. թէպէտ և բիւր 'ի վերայ շինեսցես եթէ ողորմութիւն, եթէ աղօթք, եթէ պահս, եթէ զամենայն առաքինութիւնս, և նա ոչ իցէ 'ի ստորև անկեալ, ամենայն մնոտի և ընդունայն գտանի, և կործանի դիւրաւ ըստ այնմ շինուածոյ որ 'ի վերայ աւազոյն ունէր զհիմնն: Քանզի ոչ ինչ է և ոչ մի 'ի մերոց ուղղութեանցն որ ոչ նմա կարօտանայ, և ոչ ինչ է որ առանց նորա կալ կարէ. այլ եթէ զպարկեշտութիւն ասիցես, եթէ զկուսութի, եթէ զընչից արհամարհանս, և եթէ զինչ և իցէ, ամենայն անմաքուր պիղծ և գարշելի է՝ խոնարհութեանն 'ի բաց եղելոյ: Արդ ամենայն ուրեք զնա մերձ առցուք բանիւք և իրօք և խորհրդովք, և հանդերձ նովաւ զամենայն շինեսցուք:

Այլ յաղագս խոնարհամտութեան բաւական ասացաւ, թէպէտ և ոչ արժանաւոր նորա ուղղութեանցն, զի և ոչ ոք իսկ ըստ արժանաւորութեանն գովել զնա կարասցէ, այլ առ իմաստութիւն ձերոյ սիրոյդ ասացի: Վասն զի քաջ գիտեմ զի և 'ի սակաւուց ասացելոցն հա՛նդերձ յոլով փութով զնա ձգէք: Բայց զի հարկաւոր է և զառաքելական ձայն զայսր աւուր ընթերցեալն, որ բազմաց ընձեռել կարծէին պղերգութեան պատճառս, առնել երևելի և յայտնի, զի մի՛ ցուրտ ինչ պատասխանիս փրկութեան անտի շահեսցին լսելեանց ուղղութեան, բեր և զայն ասացուած 'ի մէջ ածցուք. "Ի-

թէ պատճառանօք և եթէ ճշմարտութեամբ Քրիստոս քարոզի,,: Զայս յոլովք յեղանակեցին վայրապար, և որպէս դէպ է՝ ոչ զյառաջադոյնսն և ոչ որ ըզկնին է ընթեռնլով, այլ 'ի յարմարութենէ այլոց անդամոցն 'ի բաց հատանեն, 'ի սատակումն իւրեանց անձանց յուլացելոցն առաջի արկանեն: Վասն զի յանդգնին զնոսա յառողջ հաւատոյն արտաքս հանել, և ապա տեսանել զարհուրեալս և դողացեալս, եթէ ոչ է առանց վտանգի զայն առնել. և կամելով զերկիւղն նորա լուծանել՝ զառաքելական զասացուածս զայս 'ի մէջ ածեն ասելով. "Եթէ պատճառանօք, եթէ ճշմարտութ̃բ, միայն Քրիստոս քարոզեսցի,,: Այլ քարոզի և յաւէտ միշտ սորա և նորա. քանզի ասելն քարոզեսցի՝ օրինադրի է, իսկ ասելն քարոզի՝ զհանդիպեալն պատմէ: Եւ զի ոչ օրինադրէ Պաւղոս հերձուածս ինչ լինել, այլ 'ի բաց տանի զամենեսեան որք հայինն յայսպիսի իրս, լուր զինչ ասէն. "Եթէ ոք ձեզ աւետարանեսցէ քան զոր առէքն, նզովեալ լիցի եթէ ես, եթէ հրեշտակ յերկնից,,: Ոչ արդեօք նզովէր զինքն և ըզհրեշտակն, եթէ զիրսն անվտանգս գիտէր: Դարձեալ, "Նախանձեցուցանեմ զձեզ այ̃նախանձուն, ասէ. քանզի յարմարեցի զձեզ առն միում կոյս սուրբ մերձ կացուցանել Քրիստոսի. բայց երկնչիմ մի գուցէ որպէս օձն զԵւա խաբեաց, այնպէս ապականիցին միտք 'ի պարզամտութենէն որ 'ի Քրիստոս է,,: Ահա և զպարզամտութիւնն եդ, և զթողութիւնն ոչ ետ. քանզի եթէ էր թողութիւն, վտանգ ինչ ոչ էր. և եթէ վտանգ ոչ էր, ոչ արդեօք երկնչէր Պաւղոս. և Քրիստոս ոչ զորոմն հրամայէր այրել, եթէ իրքն անզանազանք էին յայտնիկ և յայն, այլ հայել ամենեսեան պարզաբար:

Զինչ արդեօք իցէ ասացեալն: Փոքր ինչ 'ի վերագոյնն զպատմութիւնն ձեզ պատմել ախորժեմ, եթէ պարտ իցէ գիտել յորպիսի իրս էր Պաւղոս յորժամ զայս առաքէր: Յինչ իրս էր յայնժամ. 'ի կապարանի և 'ի շղթայս և 'ի վիշտս անըմբերելիս: Եւ ուստի՞ այս յայտ. 'ի նմին ինքն 'ի թղթոյն, վասն զի վերագոյն քան զայս ասէ. "Գիտել ձեզ կամիմ, եղբարք, զի որ ինչ իմ իրք են, մանաւանդ 'ի յառաջադիմութիւն աւետարանին եկին. մինչ զի կապանացս իմոց երևելի լինել 'ի

Քրիստոս 'ի բովանդակ արքունիսն և յայլս ամենեսին և առ բազում եղբարս, որք վստահանան կապանօքս իմովք առաւելապէս աներկիւղ զբանն խօսել „ :

Ներոն էր որ զնա 'ի բանտ էարկ: Զի որպէս աւազակ 'ի տուն մտեալ 'ի քունելն ամենեցուն զբոլորեսեան կողոպտէ, և յորժամ ճրագ ոք լուցանիցէ, և զճրագն անցուցանէ, զի համդերձ համարձակութեամբ առնուլ և յափշտակել կարիցէ, նոյնպէս և Ներոն յայնժամ իբրև աւազակ ոք և զորմահատ 'ի քունելն ամենեցուն խոր իմն և անզգալի քուն, զբոլորեսեան յափշտակէր, զամուսնութի խախտելով, զտունս կործանէր՝ զամենայն տեսակ չարութեան ցուցանելով. իսկ յորժամ Պաւղոս զճրագն ելոյց յամենայն աշխարհի զվարդապետութեանն բան, և յանդիմանէր զնորա չարութիւնն, փութայր զքարոզութիւնն շիջուցանել և զվարդապետութիւնն 'ի բաց բառնալ, զի համդերձ իշխանութեամբ ինքն զամենայն առնել կարիցէ, և կապեալ զսուրբն զայն էարկ 'ի բանտ: Յայնժամ զայս գրեաց երանելին Պաւղոս:

Ո՞ արդեօք ոչ սքանչանայցէ, ո՞ ոչ զարմասցի ընդ առաքինին և ընդ երկնաբերձ անձնն. կապեալ և բանտարգեալ յայնքան հեռաստանէ փիլիպեցւոցն առաքէր: Գիտէք որքան ինչ է հեռաւորութիւն մակեդոնացւոցն 'ի Հռովմայ: Այլ ոչ երկայնութիւն ճանապարհին, ոչ ժամանակի յոլովութիւն, ոչ իրաց նեղութիւն, ոչ վտանգ և 'ի վերայ իրերաց դժնդակութիւնքն, և ոչ այլ ինչ զսէրն և զյիշատակն արտաքս մերժեաց զաշակերտացն. այլ ունէր զնոսա զամենեսեան 'ի մտի. և ոչ այնպէս ձեռքն նորա շղթայիւքն կապեալ էին, որպէս ընդ գութս աշակերտացն հոգին կապեալ և բևեռեալ էր. որպէս և զայս յայտնելով 'ի յառաջաբանի թղթին ասէր. „Յաղագս ունելոյ ինձ զձեզ 'ի սրտի իմում 'ի կապանս իմ, և 'ի պատասխանիս և 'ի հաստատութեան աւետարանին „: Եւ որպէս թագաւոր յաթոռն ելանելով ընդ առաւօտն և նստեալ 'ի թագաւորական ապարանսն՝ բերէր թուղթս ամենայն ուստեք ընդունի, նոյնպէս և նա իբրև 'ի թագաւորական ապարանսն 'ի կապարանին նստեալ՝ յաւէտ յաճախութեամբ ընդունէր և առաքէր թուղթս որ ամենայն ուստեք ազինք նո-

րա իմաստութեանն զիւրեանց անձանց զիրս զեկուցանէին. և այնքան առաւել ևս զի և ոչ առանց հոգոց ինչ քան զթագաւորսն անօրինէր, որքան և մեծագոյն ևս զիշխանութիւն էր հաւատացեալ։

Ո՛ ի ոչ եթէ զհռովմայեցւոց գաւառն միայն յարմարէր, այլ և զբարբարոսս զամենեսեան. զերկիր և զծով բերեալ 'ի նորա ձեռս եդ ա̃ծ։ Իսկ զայս յայտնելով հռովմայեցւոցն ասէր. «Ոչ կամիմ զձեզ անգիտանալ, եղբարք, զի բազում անգամ յօժարեցի գալ առ ձեզ, և խափանեցայ մինչև ցայժմ. զի պտուղ ինչ գտից 'ի ձեզ որպէս և յայլ հեթանոսս. քանզի հելլենացւոց և բարբարոսաց, իմաստնոց և անմտից պարտապան եմ»։ Արդ հանապազօր հոգայր, զինչ կորնթացիք, զինչ մակեդոնացիք, որպէս փիլիպեցիք, զիարդ կապադովկացիք, որպէս գաղատացիք, որպէս ասիացիք, զիարդ որք 'ի Պոնտոս բնակեալ են, զիարդ ամենայն մարդիկ։ Այլ սակայն թէպէտ զերկիր ամենայն 'ի ձեռն առեալ էր, ոչ յաղագս բովանդակ հեթանոսաց միայն հոգայր, այլ և վասն միոյ մարդոյ։ Իսկ երբեմն յաղագս Ոնեսիմեայ թուղթ առաքէր, երբեմն որ առ կորնթացիսն պոռնկեալն էր. զի ոչ զանգիտէր եթէ մի է որ մեղաւն և կարօտ էր վերակացութեանն, այլ թէ մարդ, մարդ՝ պատուականագոյն ա̃յ կենդանի, յաղագս որոյ և ոչ 'ի միածինն հայր խնայեաց։

Քանզի մի ինձ ասիցես եթէ ծառայ էր այս անուն և աւազակ և գող և բիւր չարեօք լցեալ, և եթէ աղքատ 'ի բաց ընկեցեալ և անարգ և ոչ միոյ բանի արժանաւոր. այլ զմտաւ ած զի և յաղագս նորա Քրիստոս մեռաւ. և բաւական է քեզ այս յամենայն նախախնամութեանն պատճառս։ Ո՛ մտաւ ած որպիսի ոք նմա լինել իցէ պարտ և արժան զոր այնքան Քրիստոս պատուեաց, մինչ զի և ոչ յարեանն իւր խնայեաց։ Ո՛ ի և ոչ թագաւոր ոք եթէ յօժարէր յաղագս ուրուք զենուլ զինքն՝ խնդրէաք որդեօք այլ ինչ ցոյց մեծ քան զայն լինել և արժանաւոր փութոյ 'ի թագաւորութ̃ն. ես ոչ կարծեմ. վասն զի բաւական էր վախճանն ցուցանել զվախճանեցելոյն յաղագս նորա զսէրն։ Իսկ այժմ ոչ մարդ, ոչ հրեշտակ, ոչ հրեշտակապետ, այլ ինքն երկնից տէրն, ինքն միածին որդին ա̃յ մարմին զգենլով

Digitized by Google

ետ զինքն յաղագս մեր։ Եւ ոչ զամենայն արասցուք եւ
հնարեսցուք, որպէս զի յայսքան պատիւ զբոլոր մար-
դիկ վայելել արասցուք մերով նախահօրութեամբն։
Եւ զո՞ր ընկալցուք զպատասխանիս, զո՞ր թողութիւն։
Զայս եւ Պաւղոս ցուցանել ասէր․ «Մի կերակրովդ
քով զնա կորուսանէր յաղագս որոյ Քրիստոս մե-
ռաւ»։ Զի որք արհամարհեն զեղբարս եւ իբր զոր-
կարս անտես առնել կամին, պատկառեցուցանէր եւ 'ի
փոյթ ածէր, եւ հաւանեցուցանէր խնամ տանել ընկե-
րին, փոխանակ ամենայնի զտեառնն մահ առաջի դնէր։

Արդ նստելով 'ի կապարանին՝ փիլիպեցւոյն առաքէր
այնքան 'ի հեռաստանէ։ Քանզի այնպիսի է ա̃յ սէրն․
ոչ յումեքէ 'ի մարդկայնոց իրացն խզի, 'ի վերուստ 'ի
յերկնից ունելով զարմատ։ Եւ զինչ ասէր․ «Գիտել
ձեզ կամիմ, եղբարք»։ Տեսե՞ր զխոնարհամտութիւն
վարդապետին յաղագս աշակերտացն․ լուր եւ զհօգս ա-
շակերտացն յաղագս վարդապետին, զի տեսցես եթէ
այն էր որ առնէր զնոսա զօրաւորս եւ անկռուելիս կա-
պել ընդ միմեանս։ Քանզի եթէ «եղբայր յեղբօրէ
օգնեալ իբրեւ զքաղաք ամուր», եւս առաւել այնքան
կապեալք սիրոյն կապանօք՝ զամենայն անդրէն դարձու-
ցանէին զչար դիւին զդրժանս։ Եւ զի Պաւղոս կապեալ
էր ընդ աշակերտսն, եւ ոչ ցուցանելոյ ինչ պէտք են զայն
մեզ եւ ոչ մի բանի, զի եւ կապեալ յաղագս նոցա հո-
գայր եւ հանապազօր վասն նոցա մեռանէր։

Նոյն զի եւ աշակերտքն ընդ Պաւղոսի հաստատեալ
էին կապեալք, ոչ արք միայն, այլ եւ կանայք, լուր զինչ
ասէր յաղագս Փիբեայ քեռ սպասաւորի եկեղեցւոյն
կենքրացւոց․ «Զի ընդունիջիք զդա 'ի տէր արժանա-
ւորապէս սրբոց․ մերձ կացջիք դմա յոր ինչ իրս ձեզ
պէտս ունիցի, որ օգնական եղեւ յոլովից եւ ինձ ին-
քեան»։ Բայց աստանօր մինչեւ ցվերակացութիւնն վը-
կայեաց զնորա զփոյթն։ Իսկ Պրիսկիղա եւ Ակիւղաս
եւ 'ի մահ յաղագս Պաւղոսի դիմեցին․ եւ վասն նոցա
գրէ այսպէս ասելով․ «Ողջունեն զձեզ Ակիւղաս եւ
Պրիսկիղա, որք յաղագս անձին իմոյ զիւրեանց պարա-
նոցն եդին»։ Եւ յաղագս միւսոյ ուրումն դարձեալ
նոյնն գրելով ասէր՝ եթէ «Մերձեցաւ մինչեւ 'ի մահ
նահատակեալ հոգւով, զի զձեր նուաղութիւնն լցցէ

Digitized by Google

առնելով անցեալ գնայեր. Թերեւս արդեօք մեռեալս յարուցեր և սքանչացան ընդ քեզ. Թերեւս բորոտս սըրբեցեր և հիացան ամենեքեան. դե՞ս արդեօք հալածեցեր: Ոչ ինչ յայդցանէ, ասէ: Այլ զի՞նչ եղեւ յառաջադիմութիւն աւետարանին: "Մինչ զի և կապանացս իմոց յայտնի լինել ՚ի Քրիստոս յամենայն արքունիս և առ այլս ամենեսեան,,: Զինչ ասես, այդ է յառաջադիմութիւն, այդ աճումն, այդ ամբարձումն քարոզութեան, զի ամենեքեան ուսան եթէ կապեալ ես: Այո, ասէ: Լուր ՚ի կարգին, զի ուսցիս եթէ կապանքն ոչ միայն խափան ոչ եղեն, այլ և պատճառք եւս առաւել համարձակութեան. "Մինչ զի յոլովք յեղբարց ՚ի տէր համարձակեցան կապանօքս իմովք, առաւել եւս վստահանալով աներկիւղ զբանն խօսել,,:

Զինչ ասես, ով Պաւղոս. ոչ արհաւիրս արկին կապանքդ, այլ համարձակութիւն. ոչ երկիւղ, այլ փափագումն. ոչ ունին ասացեալքս զկարգ: Գիտեմ և ես. զի և ըստ մարդկային իրաց կարգաւորութեան այսմիկ ոչ զիպեցան, ասէ, այլ գեր ՚ի վերոյ քան զընութիւն են լեալքս և ածայնին[1] շնորհացն գործ: Վասն այնորիկ որ այլոցն զարհուրել առնէր, այս նմա զքաջալերութիւն ընձեռէր: Վասն զի զզօրավար եթէ առցէ ոք և ՚ի բանտ արգելցէ, առնէ երեւելի, զի այնուհետեւ ՚ի փախուստ դարձուցանէ զզօրականսն ամենեսեան. և զհովիւ եթէ ՚ի հօտէն ՚ի բաց հալածէ, հանդերձ բազում իշխանութեամբ վարէ զոչխարսն: Բայց ոչ առ Պաւղոսի այսպիսի իրս, այլ հակառակ նմին ամենայն: Զօրավարն կապեալ էր, և զօրականքն ամենեքեան յօժարամիտք լինէին, և հանդերձ բազում համարձակութեամբ ընդդէմ վազէին. զհովիւն բանտարգել առնէին, և զոչխարսն ոչ վարէին և ոչ ցրուէին:

Ո՞ ետես ո՞ լուաւ եթէ ՚ի վարդապետացն դժնդակութիւնս առաւել եւս զմխիթարութիւն առնուցուն աշակերտքն: Զի՞նչ ոչ արդեօք երկեան, որպէս ոչ զարհուրեցան, զի՞նչ ոչ ասացին Պաւղոսի "Բժիշկ, բժշկեա զքեզ,,. ՚ի բաց վճարեա զանձն ՚ի վտանգիցն, յայնժամ ապա և մեզ զեխուր բարիոք աւանդեսցես:

1 Ցուցեալս ՚ի յունէն ածայնին շնորհացն գործ: Վասն այնորիկ. յօրինակին գրեալ էր միայն ած:

նացն որ երբեմն 'ի հրէութեանն, զի ըստ աւանդութեան հալածէր զեկեղեցին և կործանէր զնա „ ։ Եւ արդեօք եթէ մարդկան հանդերձեալ էր հաճոյ լինել, փոփոխեալ էր 'ի հաւատն ։ Սան այսորիկ և պատիւ ունէր 'ի Հրէից, և 'ի բազում իշխանութեան վայելէր և նախագահութեան էր արժանաւոր . ոչ արդեօք 'ի վտանգաւոր կեանսն գայր առաքելոյն որ հայհոյութեամբ լի էին և թշնամութեամբ . որպէս զի այն յանկարծակի փոփոխումն և այլայլութիւն թողլով զՀրէից պատիւն, զառանց պատերազմի կեանսն փոփոխել ընդ առաքելոյն կենաց՝ որ բիւր մահունս ունէր, մեծ եղեն ցոյց՝ ոչ յաղագս մարդկային ինչ պատճառանաց փոխեցաւ Պաւղոս ։ Սան այսորիկ և մեք ախորժեցաք զառաջին վարսն նորա 'ի մէջ ածել և ցուցանել զնորա հրացեալ նախանձն հակառակ եկեղեցւոյ . զի յորժամ տեսցես զյաւէտ յօժարութիւնն յաղագս եկեղեցւոյ, զքանչասցիս ընդ արարիչն ամենեցուն և փոփոխիչն ած ։ Նորին աղագաւ և աշակերտն Պաւղոսի զառաջին մեզ հաւաստեաւ կազմեաց և յոլով յայտնութեամբ, այսպէս ասելով . “ Իսկ Սաւղոս տակաւին փքայր սպառնալով և սպանմամբ աշակերտացն „ ։

Կամէի ես սկսանել զյառաջաբանն այսօր, ախորժէի արկանել զիս 'ի սկիզբն միայն պատմութեանն . այլ զմտաւ ածի որքան վաղվաղակի մեզ շարժեալ լինէին խնդիրքն . զՍաւղոս զանուանս զայս 'ի թուղթս այլ իմն անուն տեսանեմք գրեալ . “ Պաւղոս ծառայ Յսի Քրիստոսի կոչեցեալ առաքեալ, և Սոսթենէս . Պաւղոս կոչեցեալ առաքեալ . Ահա ես Պաւղոս ասեմ ձեզ „ . այժմ ախորժելով Պաւղոս և ամենայն ուրեք Պաւղոս կոչի ։ Ընդէ՞ր արդեօք Սաւղոս և զկնի այնորիկ Պաւղոս կոչեցաւ ։ Եւ է լոկ խնդիրս, քանզի 'ի Պետրոս ընթանայ . զի նա յառաջագոյն Սիմոն էր կոչեցեալ, և զկնի այնորիկ անուանեցաւ Կեփաս . և որդիքն Զեբեդեայ Յակոբոս և Յովհաննէս՝ որդիք որոտման փոփոխեալ անուանեցան ։ Եւ ոչ 'ի նորումն միայն, այլ և 'ի հնումն գտանեմք զԱբրահամ յառաջ Աբրամ ասացեալ, և զկնի Աբրահամ . և Յակոբ նախ Յակոբ էր կոչեցեալ, և յետ այնորիկ Իսրայէլ . և Սառա յառաջագոյն Սարա ասացեալ լինէր, և ապա Սառա . և բա-

զում խնդիրս ընձեռէ մեզ անուանցս փոխադրութիւն, զոր երկեայ մի գուցէ բազում հասանս գետոց յանկարծակի արձակելով հեղձուցից զվարդապետութեան բան։

Զի զոր օրինակ զերկիր որ խոնաւութիւն ունի, ուր և փորեսցէ ոք՝ աղբիւրք ամենայն ուստեք բղխեն, նոյնպէս և յանդաստանի ծծայլին գրոց ուր և փորեսցես՝ գետս ելեալս տեսցես ամենայն ուստեք. զամենեսեան զայսոսիկ զուղխս թողուլ այսօր ոչ սուղ ինչ հարկաւոր է։ Յաղագս որոյ թողլով զմեր հասանս, արձակեմ զձեր սերդ առ ծծայլին աղբիւրն նախաթուացս այսոցիկ և վարդապետաց 'ի մաքուրս յայս և յըմպելի և 'ի քաղցր ջուր, որ 'ի նմին խոկ գայ յիմանալի վիմէն։ Պատրաստեսցուք այսուհետև զմիտս մեր յընդունելութիւն վարդապետութեանս և արբցուք զհոգևոր ջուրն. լիցի մեզ աղբիւր ջրոյ խաղացելոյ 'ի կեանս յաւիտենականս. որում լիցի մեզ հանդիպել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք հօր հանդերձ սուրբ հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՅԱՂԱԳՍ ԽՈՆԱՐՀՈՒԹԵԱՆ, ԵՒ Ի ԲԱՆՍ ԱՌԱՔԵԼՈՅՆ «ԵԹԷ ՊԱՏՃԱՌԱՆՕՔ ԵՒ ԵԹԷ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՄԲ ՔՐԻՍՏՈՍ ՔԱՐՈԶԻ»

Զփարթամացեալսն և զմեծատունսն յիշեցաք յառաջագոյն, և երկուս կամս բանիւ ընծայեալ յառաքինութենէ և 'ի չարութենէ զիւրաքանչիւր ոք ցուցաք որքան 'ի խոնարհութենէն շահ և որքան յամբարտաւանութենէն վնաս։ Մ՚ին առաքինութիւն էր զգեցեալ, և զպահս և զտասանորդս ոչ պակասեցոյց. և միւսն ընդ անիրաւութիւն ընծայեցեալ յառաջագոյն ժամանեաց քան զփարիսեցւոյն ընծայութիւնն, թէպէտ և զբազմամեղականն ունէր վատթարագոյն։ Ասա՛ինձ զի՞նչ քան զմաքսաւորն է վատթարագոյն. այլ սակայն զի խոստովանեաց զիւր զանձինն և մեղաւոր զինքն կոչեաց, գերազանցեաց քան զփարիսեցին՝ որ զպահսն ասէր ունել և զտասանորդս և յամենայն չարութենէ 'ի բաց վճարումն։ Ընդէ՞ր արդեօք. զի թէպէտ և յաւելստացութենէն և 'ի

խոնարհութիւն՝ և այնպէս դիւրաւ ընթանայ, մինչ զի զարդարութեամբն որ զամբարտաւանութիւն ունի՝ յառաջէ և գերազանցէ, իսկ եթէ ընդ արդարութեանն զնա միաւորեսցես՝ ո՞ւր ոչ հասանիցէ, ընդ ո՞ր երկինս ոչ անցանիցէ, և առ նմին ինքն կայցէ առ ամենեցունն ա̃յ աթոռոյն 'ի մէջ հրեշտակացն հանդերձ բազում համարձակութեամբ: Պարծեալ եթէ ընդ արդարութեան ամբարտաւանութիւն լծակցեսցի, իւրով սաստկացեալ ծանրութեամբն 'ի վայր ձգել զնորա համարձակութիւն զօրէ. և եթէ ընդ մեղացն ևս իցէ շաղեալ, ո՞րքան 'ի վայր արկանել կարիցէ 'ի գեհեանն որք ունիցին զնա:

Զայսոսիկ ասեմ ոչ զի անփոյթ առնիցեմք զարդարութենէ, այլ զի փախիցեմք յամբարհաւաճութենէն. ոչ զի մեղիցուք, այլ զի չափաւորեսցուք զանձինս: Վասն զի հիմն է մերոյ իմաստասիրութեանս խոնարհութիւն. թէպէտ և բիւր 'ի վերայ շինեսցես եթէ ողորմութիւն, եթէ աղօթք, եթէ պահս, եթէ զամենայն առաքինութիւնս, և նա ոչ իցէ 'ի ստորև անկեալ, ամենայն սնոտի և ընդունայն գտանի, և կործանի դիւրաւ ըստ այնմ շինուածոյ որ 'ի վերայ աւազոյն ունէր զհիմն: Քանզի ոչ ինչ է և ոչ մի 'ի մերոց ուղղութեանցն որ ոչ նմա կարօտանայ, և ոչ ինչ է որ առանց նորա կալ կարէ. այլ եթէ զպարկեշտութիւն ասիցես, եթէ զկուսութի̃, եթէ զընչից արհամարհանս, և եթէ զինչ և իցէ, ամենայն անմաքուր պիղծ և գարշելի է՝ խոնարհութեանն 'ի բաց եղելոյ: Արդ ամենայն ուրեք զնա մերձ առցուք բանիւք և իրօք և խորհրդովք, և հանդերձ նովաւ զամենայն շինեսցուք:

Այլ յաղագս խոնարհամտութեան բաւական ասացաւ; թէպէտ և ոչ արժանաւոր նորա ուղղութեանցն, զի և ոչ ոք իսկ ըստ արժանաւորութեանն գովել զնա կարասցէ, այլ առ իմաստութիւն ձերոյ սիրոյդ ասացի: Վասն զի քաջ գիտեմ զի և 'ի սակաւուց ասացելոցն հանդերձ յոլով փութով զնա ձգէք: Բայց զի հարկաւոր է և զառաքելական ճառն զայսր աւուր ընթերցեալն, որ բազմաց ընձեռել կարծէին պղերգութեան պատճառս, առնել երևելի և յայտնի, զի մի՛ ցուրտ ինչ պատասխանիս փրկութեան անտի շահեսցին իւրեանց ուղղութեան, բեր և զայն ասացուած 'ի մէջ ածցուք. “Ի-

Digitized by Google

թէ պատճառանօք և եթէ ճշմարտութեամբ Քրիստոս քարոզի„ ։ Զայս յոլովք· յեղանակեցին վայրապար, և որպէս դէպ է՝ ոչ զյառաջագոյնսն և ոչ որ ըզկնինն է ընթեռնլով, այլ 'ի յարմարութենէ այլոց անդամոցն 'ի բաց հատանեն, 'ի սատակումն իւրեանց անձանց յուլացելոցն առաջի արկանեն ։ Վասն զի յանդգնին զնոսա յառողջ հաւատոյն արտաքս հանել, և ապա տեսանել զարհուրեալս և դողացեալս, եթէ ոչ է առանց վտանգի զայն առնել. և կամելով զերկիւղն նոցա լուծանել՝ զառաքելական զասացուածս զայս 'ի մէջ ածեն ասելով. "Եթէ պատճառանօք, եթէ ճշմարտութ՟բ, միայն Քրիստոս քարոզեսցի„ ։ Այլ քարոզի և յաւէտ միշտ սորա և նորա. քանզի ասելն քարոզեսցի՝ օրինադրի է, իսկ ասելն քարոզի՝ զհանդիպեալն պատմէ ։ Այլ զի ոչ օրինադրէ Պաւղոս հերձուածս ինչ լինել, այլ 'ի բաց տանի զամենեսեան ուք հայինն յայսպիսի իրս, լուր զինչ ասէ. "Եթէ ոք ձեզ աւետարանեսցէ քան զոր առէքն, նզովեալ լիցի եթէ ես, եթէ հրեշտակ յերկնից„ ։ Ոչ արդեօք նզովէր զինքն և զհրեշտակն, եթէ զիրսն անվտանգս գիտէր ։ Դարձեալ, "Նախանձեցուցանեմ զձեզ ա՟յ նախանձուն, ասէ. քանզի յարմարեցի զձեզ առն միում կոյս սուրբ մերձ կացուցանել Քրիստոսի. բայց երկնչիմ մի գուցէ որպէս օձն զԵւա խաբեաց, այնպէս ապականիցին միտք 'ի պարզամտութենէն որ 'ի Քրիստոս է„ ։ Ահա և զպարզամտութիւնն եդ, և զթողութիւնն ոչ ետ. քանզի եթէ էր թողութիւն, վտանգ ինչ ոչ էր. և եթէ վտանգ ոչ էր, ոչ արդեօք երկնչէր Պաւղոս. և Քրիստոս ոչ զորոմնն հրամայէր այրել, եթէ իրքն անզանազանք էին յայսոսիկ և յայն, այլ հայել ամենեսեան պարզաբար ։

Զինչ արդեօք իցէ ասացեալն ։ Փոքր ինչ 'ի վերագոյնն զպատմութիւնն ձեզ պատմել ախորժեմ, եթէ պարտ իցէ գիտել յորպիսի իրս էր Պաւղոս յորժամ զայս առաքէր ։ Յինչ իրս էր յայնժամ. 'ի կապարանի և 'ի շղթայս և 'ի վիշտս անըմբերելիս ։ Այս ուստի՞ այս յայտ. 'ի նմին իսկ 'ի թղթոյն, վասն զի վերագոյն քան զայս ասէ. "Գիտել ձեզ կամիմ, եղբարք, զի որ ինչ իմ իրք են, մանաւանդ 'ի յառաջադիմութիւն աւետարանին եկին. մինչ զի կապանացս իմոց երևելի լինել 'ի

Digitized by Google

Քրիստոս 'ի բովանդակ արքունիսն և յայլս ամենեսին և առ բազում եղբարս, որք վստահանան կապանօքս իմովք առաւելապէս աներկիւղ զբանն խօսել,,:

Ներոնն էր որ զնա 'ի բանտ էարկ: Զի որպէս աւազակ 'ի տուն մտեալ 'ի քունելն ամենեցուն զբոլորեսեան կողոպտէ, և յորժամ ճրագ ոք լուցանիցէ, և զճրագն անցուցանէ, զի համդերձ համարձակութեամբ առնուլ և յափշտակել կարիցէ, նոյնպէս և Ներոնն յայնժամ իբրև աւազակ ոք և զօրմնահատ 'ի քունելն ամենեցուն խոր լինի և անզգայլի քուն, զբոլորեսեան յափշտակէր, զամուսնութի խախտելով, զտունս կործանէր՝ զամենայն տեսակ չարութեան ցուցանելով. իսկ յորժամ Պաւղոս զճրագն ելոյց յամենայն աշխարհի զվարդապետութեանն բան, և յանդիմանէր զնորա չարութիւնն, փութացաւ զքարոզութիւնն շիջուցանել և զվարդապետութիւնն 'ի բաց բառնալ, զի համդերձ իշխանութեամբ ինքն զամենայն առնել կարիցէ, և կապեալ զսուրբն զայն էարկ 'ի բանտ: Յայնժամ զայս գրեաց երանելին Պաւղոս:

Ո՞րպէս ոչ սքանչանայցէ, ո՞ ոչ զարմասցի ընդ առաքինին և ընդ երկնաբերձ անձինն. կապեալ և բանտարգեալ յայնքան հեռաստանէ փիլիպեցւոցն առաքէր: Գիտէք որքան ինչ է հեռաւորութիւն մակեդոնացւոցն 'ի Հռովմայ: Այլ ոչ երկայնութիւն ճանապարհին, ոչ ժամանակի յոլովութիւն, ոչ իւրոց նեղութիւն, ոչ վըտանգ և 'ի վերայ իւրեայց դժնդակութիւնքն, և ոչ այլ ինչ զսէրն և զյիշատակն արտաքս մերժեաց զաշակերտացն. այլ ունէր զնոսա զամենեսեան 'ի մտի. և ոչ այնպէս ձեռքն նորա շղթայիւքն կապեալ էին, որպէս ընդ գութս աշակերտացն հոգին կապեալ և բևեռեալ էր. որպէս և զայս յայտնելով 'ի յառաջաբանի թղթին ասէր. «Յաղագս ունելոյ ինձ զձեզ 'ի սրտի իմում 'ի կապանս իմ, և 'ի պատասխանիս և 'ի հաստատութեան աւետարանին,,: Եւ որպէս թագաւոր յաթոռն ելանելով ընդ առաւօտն և նստեալ 'ի թագաւորական ապարանսն՝ բիւր թուղթս ամենայն ուստեք ընդունի, նոյնպէս և նա իբրև 'ի թագաւորական ապարանսն 'ի կապարանին նստեալ՝ յաւէտ յաճախութեամբ ընդունէր և առաքէր թուղթս որ ամենայն ուստեք աղինք նո-

րս իմաստութեանն զիւրեանց անձանց զիրս զեկուցանէին. և այնքան առաւել ևս զի և ոչ առանց հոգոց ինչ քան զթագաւորսն մտօրինէր, որքան և մեծագոյն ևս զիշխանութիւն էր հաւատացեալ:

Զի ոչ եթէ զհռովմայեցւոց գաւառն միայն յարմարէր, այլ և զբարբարոսս զամենեսեան. զերկիր և զծով բերեալ 'ի նորա ձեռս եդ ա̃ծ: Եւ զայս յայտնելով հռովմայեցւոցն ասէր. "Ոչ կամիմ զձեզ անգիտանալ, եղբարք, զի բազում անգամ յօժարեցի գալ առ ձեզ, և խափանեցայ մինչև ցայժմ. զի պտուղ ինչ գտից 'ի ձեզ որպէս և յայլ հեթանոսս. քանզի հելլենացւոց և բարբարոսաց, իմաստնոց և անմտից պարտապան եմ": Արդ համապազօր հոգայր, զինչ կորնթացիք, զինչ մակեդոնացիք, որպէս փիլիպեցիք, զիարդ կապադովկացիք, որպէս գաղատացիք, որպէս ասիացիք, զիարդ որք 'ի Պոնտոս բնակեալ են, զիարդ ամենայն մարդիկ: Այլ սակայն թէպէտ զերկիր ամենայն 'ի ձեռն առեալ էր, ոչ յաղագս բովանդակ հեթանոսաց միայն հոգայր, այլ և վասն միոյ մարդոյ: Եւ երբեմն յաղագս Ոնեսիմեայ թուղթ առաքէր, երբեմն որ առ կորնթացիսն պոռնկեալն էր. զի ոչ զանգիտէր եթէ մի է որ մեղաւն և կարօտ էր վերակացութեանն, այլ թէ մարդ, մարդ՝ պատուականագոյն ա̃յ կենդանի, յաղագս որոյ և ոչ 'ի միածինն հայր խնայեաց:

Քանզի մի ինձ ասիցես եթէ ծառայ էր այս անուն և աւազակ և գող և բիւր չարեօք լցեալ, և եթէ աղքատ 'ի բաց ընկեցեալ և անարգ և ոչ միոյ բանի արժանաւոր. այլ զմտաւ ած զի և յաղագս նորա Քրիստոս մեռաւ. և բաւական է քեզ այս յամենայն նախխնամութեանն պատճառս: Զմտաւ ած որպիսի ոք նմա լինել իցէ պարտ և արժան զոր այնքան Քրիստոս պատուեաց, մինչ զի և ոչ յարիւնն իւր խնայեաց: Զի և ոչ թագաւոր ոք եթէ յօժարէր յաղագս ուրուք զենուլ զինքն՝ խնդրէաք արդեօք այլ ինչ ցոյց մեծ քան զայն լինել և արժանաւոր փութոյ 'ի թագաւորութե̃ն. ես ոչ կարծեմ. վասն զի բաւական էր վախճանն ցուցանել զվախճանեցելոյն յաղագս նորա զսէրն: Իսկ այժմ ոչ մարդ, ոչ հրեշտակ, ոչ հրեշտակապետ, այլ ինքն երկնից տէրն, ինքն միածին որդին ա̃յ մարմին զգենլով

Digitized by Google

եւ զինքն յաղագս մեր։ Եւ ո՞չ զամենայն արտասուք և հնարեսցուք, որպէս զի յայսքան պատիւս զալոր մարդիկ վայելել արտասուք մերով նախահօրութեամբն։ Եւ զո՞ր ընկալցուք զպատասխանիս, զո՞ր թողութիւն։ Զայս և Պաւղոս ցուցանել ասէր. “Մի՛ կերակրովն քով զնա կորուսանէր յաղագս որոյ Քրիստոս մեռաւ„։ Զի որք արհամարհեն զեղբարս և թէ զօրկարս անտես առնել կամիցին, պատկառեցուցանէր և 'ի փոյթ ածէր, և հաւանեցուցանէր խնամ տանել ընկերին, փոխանակ ամենայնի զտեառնն մահ առաջի դնէր։

Արդ նստելով 'ի կապարանին՝ միլիթեցւոցն առաքէր այնքան 'ի հեռաստանէ։ Քանզի այնպիսի է ո՞յ սէրն. ոչ յուշեքէ 'ի մարդկայնոց իրացն խզի, 'ի վերուստ 'ի յերկնից ունելով զարմատն։ Եւ զինչ ասէր. “Գիտել ձեզ կամիմ, եղբարք„։ Տեսէ՞ր զնախախնամութիւն վարդապետին յաղագս աշակերտացն. լուր և զհոգս աշակերտացն յաղագս վարդապետին, զի տեսցես եթէ այն էր որ առնէր զնոսա զօրաւորս և անկառուելիս կապել ընդ միմեանս։ Քանզի եթէ “եղբայր յեղբօրէ օգնեալ իբրև զքաղաք ամուր„, ևս առաւել այնքան կապեալք սիրոյն կապանօք՝ զամենայն անդրէն դարձուցանէին զչար դիւին զգրժանս։ Եւ զի Պաւղոս կապեալ էր ընդ աշակերտսն, և ոչ ցուցանելոյ ինչ պէտք էին զայն մեզ և ոչ մի բանի, զի և կապեալ յաղագս նոցա հոգայր և համապազօր վասն նոցա մեռանէր։

Այլ զի և աշակերտքն ընդ Պաւղոսի հաւաստեաւ էին կապեալք, ոչ արք միայն, այլ և կանայք, լուր զինչ ասէր յաղագս Փիբեայ քեռ սպասաւորի եկեղեցւոյն Կենքրացւոց. “Զի ընդունիցիք զդա 'ի տէր արժանաւորապէս սրբոց. մերձ կացջիք դմա յոր ինչ իրս ձեզ պէտս ունիցի, որ օգնական եղև յոլովից և ինձ ինքեան„։ Բայց աստանօր մինչև ցվերակացութիւնն վըկայեաց զնորա զփոյթն։ Իսկ Պրիսկիղա և Ակիւղաս և 'ի մահ յաղագս Պաւղոսի դիմեցին. և վասն նոցա գրէ այսպէս ասելով. “Ողջունեն զձեզ Ակիւղաս և Պրիսկիղա, որք յաղագս անձին իմոյ զիւրեանց պարանոցսն եդին„։ Եւ յաղագս միւսոյ ուրումն դարձեալ նոյին գրելով ասէր՝ եթէ “Մերձեցաւ մինչև 'ի մահ նահատակեալ հոգւով, զի զձեր նուազութիւնն լցցէ

առ իս սպասաւորութեամբն,,: Տեսէ՛ր զկարգ սիրելին զվարդապետին, որպէս նախ քան զիւրեանց անձանց զնորա հանգիստն դիտէին. յաղագս այնորիկ ոչ ոք եղենոցա յաղթող յայնժամ:

Զայս ասեմ ոչ զի լուիցուք միայն, այլ զի և նմանեսցուք. և ոչ առ իշխեցեալսդ եւեթ, այլ և առ իշխանս մեզ բանս յերկարի. զի և աշակերտքն յոլով վասն վարդապետացն խնամակալութիւնս ցուցանիցեն, և վարդապետքն զնոյն զՊաւղոսի սէրն՝ առ որս ընդ նոքօքն իցեն՝ ունիցին. և ոչ առ մերձաւորսն միայն, այլ և առ որս 'ի բացեայն են: Զի և Պաւղոս իբրև 'ի միում տան բնակեալ յաշխարհի ամենայնի՝ այնպէս վասն ամենեցուն փրկութեան հոգայր, և զիւր զամենայն իրս թողեալ, զկապանս, զվէրս, զնեղութիւնս, զվտանգս, դիտէր և հարցանէր համապազօր զկարգ աշակերտացն իրք ունիցին. և 'ի բազում անգամ յաղագս այնորիկ եւեթ առաքէր երբեմն զՏիմոթէոս և երբեմն զՏիւքիկոս. և յաղագս նորա ասէր, "Զի ծանեայ վասն ձեր և մխիթարեսցէ զսիրտս ձեր,,. իսկ յաղագս Տիմոթեայ, "Առաքեցի զդա առ ձեզ ոչ ևս ունելով ժոյժ, մի գուցէ փորձեաց զձեզ փորձիչն,,: Եւ զՏիտոս դարձեալ այլուր, և զմիւս ոմն այլ ուրեմն: Վասն զի ինքն կապանացն հարկաւորութեամբ բազում անգամ 'ի միում տեղւոջ ըմբռնեալ՝ առ նոսա երթալ զթավքն ոչ կարէր, 'ի ձեռն աշակերտաց մերձ լինէր 'ի նոսա:

Արդ և յայնժամ 'ի կապանս էր և գրէր փիլիպեցւոցն՝ եթէ "Ծանուցանել ձեզ կամիմ, եղբարք,,: Զաշակերտսն եղբարս կոչէր. վասն զի այնպիսի սէր զամենայն անհարթութիւն 'ի բաց հանէ, և զգերազանցութիւն և զպատիւ ոչ գիտէ. այլ թէպէտ և քան զամենեսեան բարձրագոյն իցէ՝ առ ամենեսեան զիջանէ նուաստանալովն, որպէս և Պաւղոս առնէր. Բայց լուիցուք զինչ կամի ծանուցանել նոցա. "Զի իմ իրք, ասէ, յաւէտ 'ի յառաջադիմութիւն աւետարանին եկին,,: Զխարդ, ասա ինձ, և որով օրինակաւ. 'ի կապանացդ արդեօք արձակեցար. 'ի բաց եդիր զշղթայսդ և հանդերձ համարձակութեամբ քարոզես 'ի քաղաքիդ. և յեկեղեցի մտեալ յոլով և յաճախագոյն բանս յերկարեցեր յաղագս հաւատոյն և բազում աշակերտս

առնելով անցեալ գնայեր. Թերևս արդեօք մեռեալս յարուցեր և սքանչացան ընդ քեզ. Թերևս բորոտս սրբեցեր և հիացան ամենեքեան. դե՞ս արդեօք հալածեցեր: Ոչ ինչ յայդցանէ, ասէ: Այլ զի՞արդ եղև յառաջադիմութիւն աւետարանին: "Մինչ զի և կապանացս իմոց յայտնի լինել ՚ի Քրիստոս յամենայն ապարանիս և առ այլս ամենեսեան": Զինչ ասես, ա՞յդ է յառաջադիմութիւն, ա՞յդ աճումն, ա՞յդ ամբարձումն քարոզութեան, զի ամենեքեան ուսան եթէ կապեալ ես: Այո, ասէ: Լուր ՚ի կարգին, զի ուսցիս եթէ կապանքն ոչ միայն խափան ոչ եղեն, այլ և պատճառք ես առաւել համարձակութեան. "Մինչ զի յոլովք յեղբարց ՚ի տէր համարձակեցան կապանօքս իմովք, առաւել ևս վստահանալով աներկիւղ զբանն խօսել":

Զինչ ասես, ով Պաւղոս. ոչ արհաւիրս արկին կապանքդ, այլ համարձակութիւն. ոչ երկիւղ, այլ փափագումն. ոչ ունէին ասացեալքս զկարգ: Գիտեմ և ես. զի և ըստ մարդկային իրաց կարգաւորութեան այսմիկ ոչ դիպեցան, ասէ, այլ գեր ՚ի վերոյ քան զբնութիւն են լեալքս և ա̃ծայինն[1] շնորհացն գործ: Վասն այնորիկ որ այլոցն զարհուրել առնէր, այս նմա զքաջալերութիւն ընծայէր: Վասն զի զզօրավար եթէ տացէ ոք և ՚ի բանտ արգելցէ, առնէ երևելի, զի այնուհետև ՚ի փախուստ դարձուցանէ զզօրականսն ամենեսեան. և զհովիւ եթէ ՚ի հօտէն ՚ի բաց հալածէ, հանդերձ բազում իշխանութեամբ վարէ զոչխարսն: Բայց ոչ առ Պաւղոսի այսպիսի իրս, այլ հակառակ նմին ամենայն: Զօրավարն կապեալ էր, և զօրականքն ամենեքեան յօժարամիտք լինէին, և հանդերձ բազում համարձակութեամբ ընդդէմ վազէին. զհովիւն բանտարգել առնէին, և զոչխարսն ոչ վարէին և ոչ ցրուէին:

Ո՞ ետես ո՞ լուաւ եթէ ՚ի վարդապետացն դժնդակութիւնս առաւել ևս զմխիթարութիւն առնուցուն աշակերտքն: Զիա՞րդ ոչ արդեօք երկեան, ո՞րպէս ոչ զարհուրեցան, զիա՞րդ ոչ ասացին Պաւղոսի "Բժիշկ, բժշկեաց զքեզ". ՚ի բաց մերժեա զանձն ՚ի վտանգիցն, յայնժամ ապա և մեզ զլուր բարիոք աւանդեսցես:

1 Յաւելեալ ՚ի յունէն ա̃ծային շնորհացն գործ: Վասն այնորիկ. յօրինակին դրեալ էր միայն ա̃ծ:

Digitized by Google

Արդ յայնժամ մինչդեռ յայնպիսի իրս էր, ոմանք 'ի թշնամեացն Պաւղոսի կամելով զպատերազմն բորբոքել դժնդակագոյն և մեծ, զքռնաւորին առ նա առնել զթշնամութիւնն պատճառէին, և նոքա քարոզել զուղիղ և զառողջ հաւատն յաղագս զվարդապետութիւնն մեծապէս աճեցուցանելոյ։ Այլ զայն առնէին ոչ զհաւատն ներմանել ախորժելով. այլ զի ուսեալ Ներոնի եթէ քարոզութիւնն աճի և աւանդութիւնն ամբառնայ, վաղվաղակի զՊաւղոս 'ի վէհ արկանիցէ։

Այլ էին երկու վարդապետութիւնք յայնժամ, Պաւղոսի աշակերտացն և թշնամեացն նորա, ոմանց ճշմարտութիւն քարոզողաց, և կիսոյն հակառակութեամբ և առ Պաւղոսի ատելութեան։ Այլ զայս յայտնելով ասէր. «Ոմանք նախանձու և քինու զՔրիստոս քարոզեն», երևեցուցանելով զթշնամիսն. «և ոմանք բնտրութեամբ», վասն իւրոց աշակերտացն ասէր։ Այլ դարձեալ վասն նոցա. «Ոմանք հեստութեամբ», թշնամիքն՝ ոչ սրբութեամբ և ոչ ողջախոհութեամբ, «կարծելով նեղութիւնս յարուցանել 'ի վերայ կապանաց իմոց. և կէսք 'ի սիրոյ». դարձեալ զայս յաղագս եղբարց իւրոց. «գիտելով եթէ 'ի պատասխանիս աւետարանիս կամ։ Բայց սակայն զինչ. ամենայն օրինակաւ եթէ պատճառանօք և եթէ ճշմարտութբ Քրիստոս քարոզի»։ Որպէս զի մնասի և ընդունայն առ հերձուածն զայս բանս առնուք։

Բանզի որք յայնժամ զՔրիստոս քարոզէին, ոչ[1] աղանդ ապականեալ քարոզէին, այլ զառողջ և զուղիղ հաւատն. զի եթէ աղանդ ապականեալ քարոզէին և այլ ինչ քան զՊաւղոս, ոչ էր համարձակ մոլի[2] գտանել նոցա խորհուրդն։ Այլ զինչ խորհէին. 'ի յաճել հաւատոյն և 'ի բազում լինել աշակերտացն Պաւղոսի, 'ի մեծագոյն պատերազմ զՆերոն զարթուցանել. Իսկ եթէ այլ ինչ աղանդ քարոզէին, ոչ արդեօք յօգուտ առնէին զՊաւղոսի աշակերտսն. և ոչ առնելովն ոչ զայրացուցանէին զքռնաւորն։ Արդ ոչ զայն ասէ եթէ ապականեալ աղանդ 'ի ներքս մուծանէին, այլ եթէ պատ-

1 Պակասէր յօրինակին ոչ աղանդ ապականեալ քարոզէին. յաւելաւ 'ի լուսանցն։

2 Յօրինակին գրեալ էր մոլի. յորժամ ոչ լինէր նոցա զօր խօսէին։ Եւ զինչ խօսէին։

բեւր չարեօք իցեմք լի։ Քանզի առ մարդկան եթէ բազում անգամ իցեմք ընդդիմացեալք, յորժամ առաւօտուց և միջօրէին և ընդ երեկսն երևիցիմք տրտմեցելոցն առ մեզ խնդութեամբ դիմօք պատահելով՝ լուծանեմք զնոցա թշնամութիւն, յաւէտ ևս առ ա՟ծ լինի այս։

Բայց անարժան իցես, լեր արժանաւոր յերկարմամբ յաղօթմն։ Զի և անարժանին կարողութիւն է արժանաւոր լինել յամելովն, և մեք ինքեամբք առաւել քան եթէ ՚ի ձեռն այլոցն աղաչելով հաւանեցուցանեմք զա՟ծ, թէպէտ և զտուրսն բազում անգամ յամեցուցանէ, ոչ զմեզ տարակուսեցուցանել կամելով, և ոչ ունայն ձեռօք ՚ի բաց առաքել, այլ զի մեծագոյն ևս բարեաց պատճառ լինիցի մեզ, զերիս զայսոսիկ առակաւն որ այսօր մեզ ընթերցաւ՝ հնարեցայց առնել երևելիս։

Մերձեցաւ քանանացին առ տէրն յաղագս դստերն դիւահարի աղաչելով, և գոչէր, ասէ, հանդերձ մեծ ուժով. “Ողորմեաց ինձ, տէր, դուստր իմ չարաչար դիւահարի„։ Բայց այլազգի կին և բարբարոս և կրօնից իսրայէլացւոյն արտաքոյ։ Զինչ այլ. շուն և անարժան առնլոյ զհայցուածսն. քանզի “Ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց„։ Բայց սակայն դեգերելովն եղև արժանաւոր. զի ոչ միայն ՚ի մանկանցն քաջատոհմութիւն եած զնա շունն, այլ և հանդերձ յոլով գովութեամբ առաքեաց ասելով. “Ով կին, մեծ է քո հաւատդ„։ Ո՞ր ինչ այլ ցոյցս խնդրեսցես զմեծանձնութեան կնոջն։ Տեսե՞ր զկարգ յամելովն եղև արժանաւոր անարժան կինն։

Կամիս ուսանել եթէ ՚ի ձեռն մեր մանաւանդ, քան եթէ այլովք աղաչելով զնա հաւանեցուցանեմք։ Աղաղակէր քանանացին, և մատուցեալ աշակերտքն ասեն. “Արձակեա զնա զի աղաղակէ զհետ մեր„. և նոցա ասէր. “Ոչ ուրեք առաքեցայ, բայց առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի„։ Իսկ կնոջն յորժամ ինքն մերձեցաւ և եկաց մնաց աղաղակելով “Այո տէր, և շունք ուտեն ՚ի փշրանաց սեղանոյ տեառն իւրեանց„, յայնժամ զշնորհն ետ և ասաց. “Եղիցի քեզ որպէս և կամիս„։ Տեսե՞ր զկարգ. յորժամ նոքա աղաչէին, ընդդէմ հարկանէր. իսկ յորժամ կարօտեալն պարգևին գոչեաց, հաւանեցաւ։ Նոցա ասէ. “Ոչ առաքեցայ առ

ռք, բայց առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի”. և կնոջն, “Մեծ է հաւատդ, ասէ. եղիցի որպէս և կամիս”, և արձակեաց։ Ի սկզբանն և 'ի յառաջաբանի հարցուածոյն և ոչ պատասխանի տայր. իսկ յորժամ միանգամ և երկիցս և երիցս թախանձեաց, յայնժամ ետ զշնորհն. վախճանաւն զքեզ հաւանեցոյց եթէ յապաղէր զտուրսն, ոչ զի նմա ընդդէմ հարկանիցէ, այլ զի ամենեցուն մեզ ցուցանիցէ զհամբերութիւն կնոջն։ Քանզի եթէ նմա ընդդէմ հարկանել ախորժէր, թերևս և ոչ 'ի վախճանին տայր. և 'ի սկզբանն՝ ոչ արդեօք գիտէաք զզօրութիւն կնոջն։ “Արձակեա զնա, ասեն, զի աղաղակէ զհետ մեր”։ Դուք զձայնն, ասէ, լսէք. բայց ես զմիտսն տեսանեմ, գիտեմ զինչ հանդերձեալն է. ոչ կամիմ զծածկեալ գանձն նորա մնալ թողուլ 'ի գաղտնիս. այլ անսամ և լռեմ, զի զնա յայտնեցից և 'ի մէջ եդից և ամենեցուն արարից երևելի։

Արդ զայս ամենայն ուսեալք, թէպէտ և 'ի մեղս իցեմք, և առնուլ անարժանք, եթէ առանց վերակացուաց և ամօթոյ՝ մի՛ հրաժարեսցուք, գիտելով եթէ մեծ վերակացութիւն է ինքն ինքեամբ մերձենալ առ ա̃ծ հանդերձ բազում յօժարութեամբ։ Եթէ յամեցուցանիցէ և եթէ յապաղէ՝ մի՛ վհատեսցուք, ուսեալք զի յամրութիւնն և յապաղումն՝ խնամակալութեան և մարդասիրութեան է։ Եւ եթէ այսպէս հաւանեցուսցուք զանձինս և հանդերձ վշտացեալ անձամբ, ջերմ և զարթուցեալ մտօք, և այնպիսեօք որպէս և քանանացին աղաչեաց զնա՝ թախանձիցեմք, եթէ չունիք իցեմք և եթէ զինչ և իցէ գործեալ դժնդակութիւնս, զմեր չարիսն 'ի բաց մերժեմք, և այնքան ևս առնումք համարձակութիւն, մինչև այլոց վերակացու լինել. որպէս և քանանացին այն, զի ոչ միայն ինքն 'ի համարձակութիւնն վայելեաց և 'ի գովութիւնն, այլ և ըդդուստրն յանըմբերելի դժնդակութեանց կարաց յափրշտակել։ Ոչ է և ոչ մի ինչ քան զաղօթս ջերմս և հարազատս զօրաւորագոյն։ Սոքա և զմերձաւոր դժընդակութիւնս լուծանեն և յայնմ ժամանակի աղատեն 'ի տանջանաց։ Արդ զի և զմերձաւոր կեանս զխրութեամբ յօրինեսցուք և անդր համարձակութեամբ երթիցուք, բազում փոյթ և յօժարութիւն միշտ յա-

ղօթմն ցուցցուք. վասն զի այնպէս կարասցուք հանդի-պել առաջիկայ բարեացն: Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօքն Քրիստոսի ԱՅ մերոյ. որում փառք յաւիտեանս. ամէն:

### ՅԱՂԱԳՍ ՈՐ ՀՐԱՊԱՐԱԿԱԳՈՐԾ ԱՌՆԵԼՈՑ ԶՄԵՂՍ ԵՂԲԱՐՑ, ԵՒ ՈՐ ՀԱԿԱՌԱԿ ԱՂՕԹԵԼ ԹՇՆԱՄԵԱՑ

Երանեմ զձեր փոյթդ, սիրելիք, որով 'ի հայրենի տունս 'ի միասին ընթանայք. յայդ փութոյ և զառող-ջութիւն ձեր որ ըստ հոգւոյ է՝ ունիմ ուսանել: Քան-զի բժշկարան սքանչելի եկեղեցւոյս վարդապետաց է. բժշկարան ոչ մարմնոյ, այլ հոգւոյ. վասն զի հոգևոր իսկ է, ոչ զվէրս մարմնոյ, այլ զյանցանս մտաց ուղղէ. և մեղանացն այնոցիկ և վիրաց դեղ՝ բանն է: Այս դեղք ոչ բանջարոց որք յերկրէ, այլ 'ի բանից երկնայնոց խառ-նեալ են. զսա ոչ բժշկաց ձեռք, այլ մարգարէից լե-զուք յօրինեցին: Վասն այնորիկ բաւական է, ոչ բազ-մութեամբ ժամանակաց աղօտանալ, և ոչ զօրութեամբ հիւանդութեան յաղթիմանել: Քանզի բժշկացն դեղք զերկուսին զայսոսիկ զնուազութիւնս ունին. միանգամ նորքն են, կարօտանեն[1] զզօրութիւն իւրեանց. իսկ յոր-ժամ բազում ժամանակ անցցէ, իբրև ծերացեալ մար-մինք տկարագոյնք լինին. յաճախակի զնոսա և զժու-րութիւն հիւանդութեանց յաղթիմանէ, վասն զի մարդ-կայինք են. բայց ԱՅ դեղքն ոչ այսպէս, այլ և բա-զում ժամանակի եղելոց 'ի վերայ՝ զիւրեանց ոյժն զա-մենայն ունին:

Յորմէ հետէ եղև Մովսէս, յայնմ հետէ է սկիզբն գրոց. այնքանս բժշկեցին զմարդիկ, և զիւրեանց զօ-րութիւնն ոչ ընկեցին 'ի բաց, և ոչ ախտ ինչ յաղթող երբէք եղև նոցա: Ոչ այս դեղս ոչ է արծաթ տալ և առնուլ, այլ յօժարամտութիւն և հարազատ սէր ցու-ցանելով, զամենայն առեալ երթեալ գնայ. վասն այ-սորիկ ընչեղք և աղքատք նմանապէս 'ի բժշկութեանս յայսմ վայելեն: Քանզի ուր[2] հարկաւոր է ծախս տալ,

1 Օրին. պահ. ցուցանէին զզօրու-թիւն իւրեանց. յաւելու 'ի յունէն:

2 Պակասէր ուր. յաւելու 'ի յունէն:

փարթամք ընդունին զզօսութիւն. իսկ աղքատք բազում անգամ զրկեալ 'ի շահիցն 'ի բաց գնան, ոչ բաւական լինելով նորոգմանցն 'ի դեղոցն պատրաստութեան: Այց աստ վասն զի ոչ է արծաթ տալ, այլ զհաւատն ցուցանել և զյօժարամտութիւն. և այս է բժշկութեան վարձ: Ոմք և աղքատք նմանապէս հաղորդին յօգտութիւնս. մանաւանդ թէ ոչ զուգապէս հաւասարեն 'ի շահս, այլ յոլովակի առաւելագոյն վայելելով փարթամն[1] աղքատն 'ի բաց գնայ: Ընդէր արդեօք. վասն զի ընչեղն յոլով հոգովք ըմբռնեալ է, և ունի զամբարտաւանութիւնն, և ամբարհաւաճեալ 'ի ճոխութենէն տաղտկանայցէ, կենակից է և պղերգութեան, ոչ հանդերձ բազում ստուգութեամբ և ոչ յաւէտ փութով զդեղս ընկալութեան գրոց ընդունի: Իսկ աղքատն 'ի փափկութենէ և 'ի շատկերութենէ և 'ի յուլութենէ 'ի բաց մերժեալ, զամենայն ժամանակ 'ի ձեռացն գործ և յարդարութեանն յաշխատութիւն ծախէ, և յոլով խոնարհութիւնս անդուստ 'ի հոգին հաւաքէ, այլ և առողջ եւս և քաջողջ լինի, և հանդերձ յաճախութեամբ ընդունի զհաւատարութիւն ասացելոցն. ուստի յոլովապէս ընձեռելով զվարձն, բազմապատիկ շահելով զպտուղն անցեալ գնայ:

Ոչ ընչեղացն ամբաստան զայս ասեմ, և ոչ զաղքատս պարզաբար գովեմ. քանզի ոչ ընչեղութիւնն է չար, այլ չարաչարն վարել ընչիւքն. և ոչ աղքատութիւն բարւոք, այլ գեղեցիկն վարել աղքատութեամբն: Հանճեալ լինէր ընչեղն այն որ առ Ղազարուն էր, ոչ վասն զի փարթամն էր, այլ վասն զի վայրագ[2] և անողորմ: Գովեալ լինէր և աղքատն 'ի գոգն Աբրահամու, ոչ զի աղքատն էր, այլ զի հանդերձ գոհութեամբն աղքատութեանն տանէր:

Հայեցարուք հաւաստեաւ յայս բան. քանզի բաւական ձեզ ամբարել զիմաստասիրութիւնն կարէ, և զամենայն ապականեալ խորհուրդս արտաքս հանէ, ընձեռէ և յաղագս էիցս ուղիղ ունել դատողութիւն: Զիրացն ոմանք են բնութեամբ բարիք և ոմանք ընդդէմք, և կէսք ոչ բարիք և ոչ չարք, այլ զմիջին կարգն ունե-

1 Յօրինակին փարթամ:

2 Օրին. Գէորգ. եղաւ ըստ յունին:

լով. բարի է բնութեամբ բարեպաշտութիւն, բարի է առաքինութիւն, չար վատթարութիւն. իսկ ընչեղութիւն և աղքատութիւն ըստ ինքեանց ոչ այսոքիկ են և ոչ այնոքիկ, այլ յօժարութեամբ վարեցելոյն չար և կամ բարի լինի: Քանզի եթէ առ մարդասիրութիւնն վարեսցիս ընչեղութեամբ, եղև նա քեզ բարւոյ իրացն պատճառ. ապա եթէ յափշտակութիւնս և յաւելաստացութիւնս և 'ի թշնամանս, 'ի հակառակն դարձուցեր զպէտսն. բայց ոչ փարթամութիւնն է պատճառ, այլ որ 'ի թշնամանս փարթամութեամբն վարի: Նոյնպէս և յաղագս աղքատութեանն. եթէ առաքինաբար զնա ընկալցիս գոհանալով զտեառնէ, եղեն քեզ պսակի պատճառ իրքն. իսկ եթէ հայհոյեսցես այնոքիւք զարարիչն և բամբասեսցես զնորա նախախնամութիւնն, չարաչար դարձեալ նորա իրօքն վարեցար: Որպէս և անդ ոչ փարթամութիւնն աւելաստացութեանն էր պատճառ, այլ որ անիրաւապէս նովաւ վարեցաւ, նոյնպէս և աստ 'ի հայհոյութեանն ոչ զաղքատութիւնն բամբասեմք, այլ որ ոչն ախորժեաց ողջախոհաբար իրին տանել. քանզի ամենայն ուրեք գովութիւն և պարսաւանք բարուց և յօժարութեանց մերոց են: Բարի է ընչեղութիւն, բայց ոչ պարզաբար, այլ յորում ոչ են մեղք. և դարձեալ չար է աղքատութիւն, ոչ վայրապար, այլ 'ի բերանս ամբարշտաց, վասն զի դժուարի և հայհոյէ, զի զայրանայ և չարախօսէ զարարչէն:

Արդ մի այսուհետև բամբասեսցուք զընչեղութիւն և մի չարեսցուք վայրապար զաղքատութենէն, այլ որք ոչն կամիցին նոքօք վարել գեղեցկապէս: Քանզի այնոքիկ 'ի մէջ կան իրք: Բայց զոր ասէի, երթայց անդրէն վերստին յառաջին պատճառն՝ թէ ընչեղն և աղքատն հանդերձ նովին իշխանութեամբ և համարձակութեամբ որ աստէն դեղք վայելեն. բազում անգամ թերևս և հանդերձ յոյժ սաստկութեամբ աղքատն:

Եւ ոչ այս միայն է պարտականութիւն դեղոյն, զի զօգնիս բժշկէ, զի ոչ ժամանակաւն ապականի, զի ոչ 'ի հիւանդութենէն յաղթի, զի ձրի առաջի կայ շահ բժշկութեանն. այլ ունի և միւս իմն ոչ նուազագոյն քան զայսոսիկ զբարիս, զոր զեկեալսն 'ի բժշկարանս յայս ոչ հրապարակագոյժ առնեմք մեք: Քանզի որ

յարտաքին բժշկարանն երթան, զյոլովս ունին վիրացն իւրեանց տեսողս. և եթէ ոչ բանայցէ յառաջագոյն զվէրսն, ոչ դնէ բժիշկն 'ի վերայ զդեղն: Բայց աստ ոչ այնպէս. այլ բիւրս տեսանելով զախտացեալսն[1], զանխլաբար առնեմք զբժշկութիւն նոցա: Քանզի ոչ 'ի մէջ ածեմք զմեղուցեալսն, և ոչ հրապարակագոյժ առնեմք զնոցա յանցանսն. այլ հասարակաց ամենեցուն առաջի դնելով զվարդապետութիւնն, լողացն խղճի մտացն թողումք զիւրաքանչիւր ոք, զի յասացելոցս յարմարագոյն դեղ վիրին ընկալցի: Զի յառաջնոյ բան վարդապետութեանն 'ի լեզուէ ասողին ունելով ամբաստանութիւն չարութեան և գովութիւն առաքինութեան, բամբասանս վատութեան և գովութիւն ողջախոհութեան, պարսաւանս ամբարտաւանութեանն և գովութիւն ցածութեանն, իբրև բազմազան ինչ և ամենապատիկ դեղն 'ի բովանդակէն հաստատեալ. իսկ զօգտակարագոյնն և զպիտանացուն առնուլ ինքեան իւրաքանչիւր ումեք լսողացն է: Զի յառաջ բերեալ լինի յայտնապէս, և յիւրաքանչիւր ուրուք 'ի գիտակցութիւնս մտացն զանխլաբար նստիցի, և զինքեան բժշկութիւնն ընձեռէ, և նախ քան զհռչակեցուցանել զմեղս՝ զառողջութիւն բազում անգամ 'ի վերայ ածէ:

Լուայք երէկ զիարդ գովեցի զաղօթից զօրութիւն, և բամբասեցի որք հանդերձ ծուլութեամբ աղօթեն, ոչ զոք 'ի նոցանէն հրապարակագոյժ արարի: Եւ որք գիտէին զինքեանց զփոյթ, ընկալան գովութիւն պաղատանացն, և եղեն առաւել ևս փոյթք գովութ̄ն. իսկ որ զխիղճ պղերգութեանն գիտէին, ընկալան դարձեալ զպառնալիսն և զտաղտկութիւնն 'ի բաց եդին: Բայց ոչ զայնոսիկ և ոչ զսոսա գիտեմք, և անգիտութիւնս այս երկոցուն պիտանացու է: Զի կարգ, ես ասեմ: Յորժամ զգովութիւնս լսիցէ զաղօթից և գիտէ զիւր փոյթն եթէ յոլով վկայութիւն ունի[2] 'ի գովութեանց, յամբարտաւանութիւն գայթակղի. իսկ այժմ զանխլաբար ունելով զգովութիւնն, յամբարհաւաճութենէ 'ի բաց վճարեալ է:

1 Յօրինակին զախտաբեալսն. և- զաս բան յունէն:

2 Պակասէր յօրինակին ունի. յաւելաւ 'ի յունէն:

Digitized by Google

Պարծեալ որ գիտէ զիւր զծուլութիւնն, լռելով զամբաստանութիւնս զայս լինի լաւագոյն 'ի բամբասանացս յայսցանէ, զմարդ որք վկայ սպառնալեաց ոչ ունելով։ Նաև այս զնա ոչ դուզնաքեայ ինչ օգտէ. քանզի յաղագս երկնչելոյ 'ի բազմացն կարծեաց ցաղքան զանխլանալ կարծիցեմք, թէպէտ և չար իցեմք, փութամք լինել բարիք. իսկ յորժամ ամենեցուն լինի յայտնի և զմտաւորման կորուսանեմք զմխիթարութիւն, անամօթագոյն և առաւել պղերգք լինիցիմք։ Նաև իբրև վէրք մերկացեալք և 'ի ցուրտ օդ յաճախապէս գեգերեալ դժնդակագոյնք լինին, նոյնպէս[1] և հոգի մեղուցեալ եթէ առաջի բազմաց յանդիմանեսցի զոր մեղաւն՝ անամօթագոյն ևս լինի։

Նաև զի մի այն լինիցի, զանխլաբար բանս զքեզ բժշկէ։ Նաև զի ուսցիք եթէ զանխլացեալ այս վարդապետութիւն յոլով շահս ունի, լուարուք. ասէ Քրիստոս. "Եթէ մեղիցէ եղբայր քո, յանդիմանեա զնա" ոչ 'ի մէջ քո և բազմութեանն, այլ "'ի մէջ քո և նորա միայնոյ". անմեկայ եղիցի ամբաստանութիւնն, զի դիւրագոյն առ նմա փոփոխումն լինիցի։ Մեծ բարի է հաւատարապէս առ ամենեսեան առնել զխրատն և ոչ հռչակեցուցանել. բաւական լիցի գիտակցութիւն, շատասցի դատաւորն այն։ Ոչ այսպէս սպառնասցի որ մեղուցելոյն, որպէս խիղճ մտացն իւրոց. դատն սուր է նա, որ հաւատարեան խոկ գիտէ զյանցանսն։

Արդ մի ևս դիցես վէր 'ի վերայ վիրի հրապարակագոյժ առնելով զյանցուցեալս, այլ հասարակաց ընծեռէ խրատ։ Որպէս և մեք առնեմք այժմ, որպէս և Պաւղոս արար անմեկայ պատրաստելով որ առ Կորնթացիսն յանցուցեալն էր զամբաստանութիւնն. "Յաղագս այսորիկ, ասէր, եղբարք իմ, կերպարանեցի զայս յիս և յԱպաւղոս"։ Թէպէտ և ոչ նա և ոչ Ապաւղոս էին որք բաժանեցին զբազմութիւնն և զեկեղեցին յերկուս հատին, այլ սակայն ծածկեաց զամբաստանութիւնն, և իբրև կերպարանօք ոմամբք իւր և Պետրոսի և Ապաւղոսի անուամբքն զդատապարտելոյն գէմն ծածկեաց. իշխանութիւն նոցա տայր փոփոխումն ընդունել 'ի չա-

1 Գաւ. յօրին. Նոյնպէս . . . անամօթագոյն ևս լինի. չգոյս 'ի յունէն։

րութեանցն յայնմանէ։ Այս դարձեալ. «Մի՛թէ գուցէ 'ի գանձս իմ առ ձեզ խոնարհեցուցէ զիս Ած, և սգացայց զբազումս յառաջագոյն մեղուցելոց և ոչ ապաշխարելոց 'ի չարութեանցն և զոր գործեցին»։ Այս առաւելոր ոչ ընդա-ւորաբար առէ զխանդացելոյն, զի մի յայտնագոյն առնելով զամբաստանութիւնն՝ անամօթ առնիցէ զմեղուցեալսն անձինս։ Որպէս և մեք հանդերձ այսքան խնայելով զյանդիմանութիւնս առնեմք, նոյնպէս և դուք ամենայն փութով ընկալջիք զուղղութիւնն և հաւատեաւ յառաջեալ հայեցարուք։

Խօսեցայ երբեմն ընդ ձեզ յաղագս զգօութեան աղօթից. ցուցի զկարգ սատանայ յայնժամ զարթնանելով լինել, վասն զի չարագործ է։ Պնդէ զի մեծ շահ յաղօթիցն ժամուն լինի մեզ, յայնժամ առաւել խարդախէ զմեզ 'ի բաց մերժելով 'ի խոստովանութեանցն, զի անոյն ձեռօք 'ի տուն դարձցուք։ Այս զոր օրինակ յերկամեան յորժամ ոչ զպատրաստութիւնն և ոչ շուրջ զնովաւ են իրք թշնամանաբար անկցին առ հանդիպելոյն, զառավարոք 'ի բազմաստ զնոսա հալածեն, ապերյոն մերձ զաւ ողբալ և մարդասիրութեան պատահել, նոյնպէս և սատանայ յորժամ տեսանէ մերձ եկեալ առ զաստուածն՝ նմանեցեալ 'ի բաց հալածէ ոչ զաւազանաւ, այլ ծուլութեամբքն։ Վասնզի զիարդ խոկ յագենապէս՝ եթէ միայն մերձեսցին զզաստացեալք և զյանցանսն ասասցեն և ողբասցեն ջերմ հոգւով, բազում թողութիւն առնլով երթեալ գնասցեն։ Վասն զի մարդասէր է Ած. յաղագս այնորիկ յառաջագոյն ժամանէ և 'ի բաց տանի 'ի պաղատանացն զնոսա, զի մի ուրեք վասն որոյ պաղատին՝ դիպեսցեն։ Իսկ ապաւորք իշխանացն հանդերձ բռնութեամբ հալածեն զդիպեցելոյն. խորհեա ոչ բռնութեամբ և ոչ հարկ առնելով, այլ պատրելով զմեզ 'ի պղերգութիւն արկանէ. վասն որոյ և ոչ թողութեան ինչ արժանաւորք՝ կամաւ զմեզ զրկելով 'ի բարեացն։

Այս է մնաց և անձինս հանդերձ փութով աղօթքն, լցս անշէջ և յաւիտենականն. վասն այնորիկ բերք հեղեղս 'ի խորհուրդս 'ի միտս մեր յայնժամ արկանէ չարին. և զորս ոչ երբէք զմտաւ ածաք, զայնոսիկ ժողովելով 'ի ժամ աղօթիցն՝ 'ի վերայ հեղու անձանց մերոց։ Այս

զոր օրինակ հողմ յոլովակի ընդդէմ անկանելով չի-ջուցանէ զձրագի լոյսն վառեալ, նոյնպէս և սատանայ յորժամ տեսանէ զլոյս աղօթիցն 'ի մեզ բորբոքեալ, բիւր հոգովք սաստի և անտի ամբոխէ, ոչ յառաջագոյն 'ի բաց կայ մինչև շիջուցանէ զլոյսն։

Արդ որպէս որք զձրագունսն լուցանեն՝ առնեն, նոյն-պէս և մեք արասցուք։ Եւ զինչ նոքա առնեն։ Յոր-ժամ տեսանեն հողմն սաստիկ, մերձեցեալ զմատն 'ի վերայ ձրագի ծակոյ դնելով պարապեն զհողմոյն 'ի ներքս զմուտն։ Քանզի ցորքան արտաքուստ 'ի վերայ անկա-նի, հաւասարամարտ է կուին բոցոյն առ հողմն հան-դերձ համարձակութեամբ ձգելով պատրուգաւն զլոյն յինքն. ապա եթէ անկցի 'ի ներքս հողմն, յայնժամ յերկոցունց կողմանց անկանելով յաղթող լինի բոցոյն։ Նոյնպէս և աստ առ մեզ լինի. ցորքան ընդ մեզ արտա-քուստ մարտնչիցին, կարեմք ընդդէմ կալ. բայց յոր-ժամ բանայցեմք նմա զդրունս խորհրդոց և 'ի ներքս ընդունիցիմք զթշնամին, ոչ ևս կարեմք այնուհետև ոչ սուղ ինչ հակառակ կալ. այլ ամենայն ուստեք շիջու-ցանելով զմեր յիշատակ իբրև ձրագի՝ շիջուցեալ թո-ղու զբերանն բանս բերեալ մնոտիս։ Արդ որպէս նոքա զմատն 'ի վերայ դնեն ձրագին, նոյնպէս և մեք դիցուք զխորհուրդս 'ի վերայ մտաց մերոց և ծածկեսցուք ըզ-չար այսոյն զմուտս, զի մի շիջուսցէ զլոյս ոգւոց մերոց։

Յիշեցէ՛ք զերկոտեան զաւակս զայս զզինուորացն և զիշխանին և որ յաղագս ձրագիս է. քանզի վասն այ-նորիկ ասեմ ձեզ զաւակս յորս շրջիմք մեք, զի և աս-տի 'ի բաց գնացեալք և 'ի տան լինելով, որք 'ի ձեռս են իրքն՝ յիշատակ առնուցուք զասացելոցն։ Մեծ են զէնք աղօթք, մեծ ամրութիւն։

Նաւ՛յք երէկ զկարգ երեք մանկունքն կապեալք լու-ծին զհրոյ զօրութիւն, զկարգ մարտեան ընդ բոցոյն, որ-պէս եղեն յաղթողք հնոցին և զզօրութիւն տարերն պարտեցին։ Նաւարուք և այսօր զկարգ առաքինին և մեծն Իսահակ սմին իսկ յաղթող եղև մարմնոյս բնու-թեան, զամլութեան կապանս լուծելով. "Աղաչէր, ա-սէ, Իսահակ յաղագս Ռեբեկայ կնոջ իւրոյ,,։ Այ-սօքիկ ձեզ այսօր ընթերցեալք եղեն։ Երէկ յաղագս աղօթից բան, և այսօր դարձեալ ցոյց պաղատանաց։

Digitized by Google

Տեսէք զկարգ հոգւոյն շնորհ տնօրինեաց, ձայնակից երեկեան բանին եղև այսր աւուր ընթերցուածս. « Աղաչէր Իսահակ յաղագս Ռեբեկայ կնոջ իւրոյ, վասն զի ամուլ էր »:

Ա՛ի զայս նախ առաջին արժանաւոր է խնդրել էր աղագաւ ամուլ էր, սքանչելի վարուք և բազում ողջախոհութեամբք լցեալ՝ և նա և այրն: Ոչ ինչ ունիմք բուռն հարկանել զկենաց արդարոյն և ասել՝ մեղանաց գործ էր ամլութիւնն. և ոչ նա եւեթ էր ամուլ, այլ և մայրն Իսահակայ Սառա, քանզի ամուլ էր Սառա որ ծնաւն զնա. և ոչ մայրն նորա և կինն ամուլք էին միայն, այլ և կինն Յակոբայ Ռաքէլ: Զի՞նչ կամիցի արդեօք ամլոյն այնոցիկ պար. ամենեքեան արդարք, ամենեքեան յոյժ վկայեալք, ամենեքեան առաքինութեամբ կեցեալք: Քանզի վասն նոցա ասէր. « Ես եմ ա͞ծ Աբրահամու և ա͞ծ Իսահակայ և ա͞ծ Յակոբայ ». և Պաւղոս ասէ. « Յաղագս որոյ ոչ ամօթ համարի ա͞ծ՝ կոչել նոցա ա͞ծ »: Յոլով է գովութի͞ւ նոցա 'ի նորումս, յոքունս և 'ի հնումն, ամենայն ուստեք պայծառք և ընտիրք. և բոլորեքեան ամուլ կանայս ունէին, և անորդութեամբ բազում ժամանակս կատարեցին: Արդ յորժամ տեսանիցես այր և կին առաքինութ͞բ կեցեալս, յորժամ տեսցես ա͞ծասէր, սուրբ, բարեպաշտութեան խնամ տարեալս, մի կարծիցես մեղաց լեալ զանորդութիւնն հատուցումն: Քանզի բազումք են ա͞յ տնօրէնութեան բանք և մեզ անճառելիք, և յաղագս ամենեցուն գոհանալ պարտ և արժան է. միայն զայնոսիկ աւաղեսցուք որք չարութեամբն կեան, ոչ որ յոլով մանկունս ոչ իցէ ստացեալ: Բազում անգամ առնէ ա͞ծ օգտակարագոյնս, և մեք զպատճառն եղելոցն ոչ գիտեմք. վասն այսորիկ ամենայն ուրեք պարտ է զարմանալ ընդ նորա իմաստասիրութիւնն և փառաւորել զնորա զանբաւ մարդասիրութիւնն: Բայց այս բան 'ի սովորութի͞ զմեզ խրատել կարէ:

Պարտ և արժան է զպատճառն ասել յաղագս որոյ էին ամուլ կանայքն այնոքիկ: Եւ զի՞նչ է պատճառն: Զի յորժամ տեսցես զհասարակաց մեր տէրն զ'ի կուսէն ծնանելն, մի անհաւատասցես: Հրահանգեա, ասէ, զքո միտսդ արգանդով ամլոյն. զի յորժամ տեսցես ըզ-

Այլ գիտեմ ինձ զիմաստութիւն եղբարցն. ոչ զգերազանցութիւնն որ առ մեզ լինելութիւնն է՝ և ազգակցութիւնն զգերազանցութիւնն աղօտացոյց, այլ երկոքեանն ցուցեալք լինէին 'ի ձեռն ճմ̃ իրաց. և միայն բազմանդակ ունէր զմեզ, իսկ զմիւսն և փոփոխեալ որ առ մեզս է։ Այլ որպէս ասէի, եթէ յաղագս այնորիկ ամուլքն յառաջեցին, զի հաւատասցի կուսին ծնունդ, և զի նա առաջնորդեսցէ առ հաւատոյն պատմութիւնն և խոստմանն այնորիկ, լուր զինչ ասէ հրեշտակն. "Հոգին սուրբ եկեսցէ 'ի վերայ քո և զօրութիւն բարձրելոյն հովանաւորեսցէ քեզ". այնպէս, ասէ, ունիս ծնանել։ Մի հայիր յերկիր, մինչև յերկնից գայ զօրութիւն. հոգևոր է ծնունդն որ լինի, մի խնդրեր ինձ բնութիւնս և օրէնս և ամուսնութիւնս. այլ մեծագոյն քան զայս նոքա բանքն էին։

Ասացեք զի մի. այլ ընձեռեսցուք ձեզ ցոյցս։ Վասն ինձ պահես զիարդ ամուլն այն առաջնորդի 'ի հաւատս։ Վասն զի մեծ էր յայտնութիւնն քան զմիւս կուսին, լուր զիարդ և 'ի նուաստագոյն իմիք զանձն, 'ի ձեռն զգալեացն նմա առաջնորդելով. քանզի "Ահա, ասէ, և ազգայինն յղացաւ որդի 'ի ծերութեանն իւրում. և այս ամիս վեցերորդ է կոչեցելոյն ամուլ". Տես զամուլն և յաղագս կուսին։ Այլ եթէ ոչ, ընդէ՞ր իսկ նմա ասէր զծննդեան ամլոյն, ե՞ր պատգամա և "'ի ծերութեանն" ասէր զնմանէ, ընդէ՞ր 'ի վերայ ածէր "զկոչեցեալն ամուլ". 'ի ձեռն այսր ամենայնի 'ի մի ժողովէր նմա զյայտնութիւնն, զի հաւատասցէ աւետեացն. վասն նորին և զհասակն ասէր և զամլութիւն բնութեան. յաղագս նորին՝ ժամանակի յղութեանն եկաց մնայ։ Այլ ոչ 'ի սկզբանն նմա վաղվաղակի աւետարանեաց, այլ մնաց զի վեցամսեայ ժամանակն լինիցի երաշխաւոր, և առանց յերկուանալոյ յղութեանն ցոյց։

Այլ տես զարմանալ զիմաստութիւնն Գաբրիէլի. ոչ յիշեցոյց նմա զՍառա և ոչ զՌեբեկա և ոչ զՌաքէլ. թէպէտ և նոքա ամուլք էին և պտղաւորեալք[1] և զարչելիք լեալք, այլ հին պատմութիւնք էին։ Այլ քան զառաջինքն՝ նորք և առժամայնք և որ 'ի մերում դարու պա-

1 Ցորենակերն պտղաբերեալք. եղաւ ըստ յունին։

տաճէ լինել, մանաւանդ զմեզ 'ի հաւատ զարմանալեաց ածել սովորեցին. վասն այնորիկ թողլով զայնս յինքենէ իմանալ, նմա զազգակիցն զԵղիսաբեթ առաջի եդ, զի 'ի նմանէ առ իւր իսկ զծնունդն ածիցէ զսքանչելին զայն զպարկեշտագոյնն: Քանզի 'ի մէջ մերոց և տէրունական ծննդեանն աւելի էր, քան զմին նուաստագոյն և քան զմիւսն մեծագոյն. նուաստ քան զկուսին և մեծ քան զմերս: Յաղագս այսորիկ իբրև կամրջաւ իւիք 'ի մէջ Եղիսաբեթի որ զբնութեամբ երկունք էին՝ յառաւել քան զբնութիւնն ածէ զմիտս կուսին:

Կամէի և առաւել ևս ասել և այլ բանս վարդապետել՝ յաղագս որ ամուլք Հռեբեկա և Ռաքէլ էին. այլ ժամանակս ոչ անսայ, փութացուցանելով զբանս յաղօթիցն զօրութիւն: Քանզի վասն այնորիկ զայս ամենայն շարժեցաք, զի ուսանիցիմք եթէ որպէս զամլութիւնն կնոջն եղծ Իսահակ աղօթիւքն և պաղատանօք այնքանեաց ժամանակի. "Աղաչէր, ասէ, Իսահակ յաղագս Հռեբեկայ կնոջ իւրոյ, և լուաւ նմա ած": Եւ մի զի վաղվաղակի կայ եթէ աղաչէր և լուաւ, կարծիցես եթէ վաղվաղակի կարդաց առ ած և ձեպով լսելի եղև. քանզի յոլով ժամանակ ծախեաց 'ի պաղատանսն այդ: Եւ եթէ ախորժէք ուսանել քանի ինչ, ես ձեզ ստուգութեամբ զայն ասացից. քանի ամաց թիւ ծախեաց յաղաչանսն այդ: Եւ ուսանի է այս յայտ. 'ի նմին իսկ 'ի կարգէն: Քանզի կամելով գիրք զհաւատն և զհամբերութիւն և զիմաստութիւն ցուցանել զարդարոյն, և ոչ զժամանակն լռեաց, այլ և զայն յայտնի մեզ արար զանխլաբար, որպէս զի յարուցանիցէ ըզմեր պղերգութիւնս. և ոչ եթող լինել աներևելի: Լուր զիարդ զանխլաբար մեզ զժամանակն յայտնեաց: "Իսահակ էր, ասէ, քառասուն ամաց յորժամ էառ զՀռեբեկա դուստր Բաթուէլի ասորւոյ": Ուսար քանի ամաց էր յորժամ զկինն էառ. քառասուն, ասէ, ամաց էր յորժամ հարսանիքն եղև: Ուսցուք այսուհետև երբ եղև հայր, և քանի ամաց էր յորժամ ծնաւ զՅակոբ, և կարասցուք գիտել քանի ժամանակ եկաց մնաց ամուլ կինն, և զայն ժամանակս աղաչէր առ ած: Քանի ամաց էր յայնժամ յորժամ ծնաւ զՅակոբ. "Եւ, ասէ, Յակոբ ունելով աջովն զգարշապար եղբօր

իւրոյ. և վասն այնորիկ կոչեաց զանուն նորա Յակոբ, և զմիւսն ևս Եսաւ։ Իսահակ էր ամաց վաթսնից յորժամ ծնաւ նմա Հռեբեկա ;;։ Արդ եթէ յորժամ էած զկինն քառասուն ամաց էր, և յորժամ ծնաւն վաթսուն, քաջայայտ է թէ 'ի միջոցին ամուլ եկաց մնաց կինն, և զայն ամ ժամանակս աղաչէր առ ած Իսահակ։

Իսկ արդ ո՛չ ամաչիցեմք և սուզանիցիմք՝ զարդարն տեսանելով քսան ամ մնացեալ և ոչ 'ի բաց կացեալ, իսկ մեք թերևս յառաջնում խնդրելն և կամ յերկրորդումն հրաժարեմք. և սակայն նա բազում համարձակութիւն ունէր առ ած, բայց ոչ դժուարէր յաղագս յապաղանաց տալոյն, այլ եկաց մնաց ժուժկալելով. իսկ մեք բիւր մեղօք լցեալ, չար խղճի կենակիցք, և ոչ մի ինչ բարեմտութիւն առ տէրն ցուցանելով, եթէ ոչ նախ քան զաղաչելն լսիցեմք, անդրէն դառնամք դըժուարիմք, 'ի բաց կամք 'ի խնդրելոյն. վասն այնորիկ ունայն ձեռօք միշտ գնամք։ Ո՞ քան ամ յաղագս միոյ իրաց պաղատեցաւ առ ած որպէս արդարն այն. մանաւանդ եթէ ո՞ քան ամիս միայն։

Երէկ ասէի թէ յոլովք են որ հանդերձ աղերդութեամբ աղաչեն յօրանչելով և քօչքօտելով և ձկտելով. բայց այսօր և միւս ևս վնաս գտաք լեալ յաղօթս՝ սաստիկ քան զայն։ Քանզի բազումք 'ի բերանս զխնքեանս ընկենլով և ջերմ արտասուս հեղլով՝ դառնապէս 'ի ներքուստ հառաչեն, և զձեռս կարկառեն, և յոլով փոյթ ցուցանիցեն, ջերմութեամբ ախու և յօժարամտութեամբ հակառակ վարէն իւրեանց փրկութէն։ Զի ոչ յաղագս իւրեանց մեղացն պաղատին առ ած, և ոչ թողութիւն խնդրեն յանցանացն իւրեանց, այլ զփոյթն զայն զամենայն ընդդէմ թշնամեացն շարժեն. զայն առնեն որպէս թէ ոք սուր սրիցէ և ոչ հակառակ պատերազմացն վարիցի զնուն, այլ յիւրում պարանոցին ցցէ։ Այնպէս և նոքա ոչ յաղագս թողութեան իւրեանց մեղացն, այլ վասն փորձութեան թշնամեացն աղօթիւք վարին. որ է ընդդէմ յինքեանս զսուրն ցցել։

Իմացաւ և զայս չարն, զի ամենայն ուստեք զանձինս կորուսանիցեմք 'ի ձեռն աղերդութեանն և փութոյ։ Քանզի ոմանք յաղօթս դանդաղելով զայրացուցանեն զտէրն, արհամարհանս ածեալ յուլութեամբն. իսկ առ

փոյթ և զարթուցեալ. և զինչ լինիցի, ոչ կարեմ լուծանել զփոյթն, և ոչ 'ի դանդաղանս արկանել. յանօրէնութիւն փութանս վարիլ պատրաստեմ, քանզի ընդդէմ թշնամեացն աղօթել անօրէնութիւնն է: Յամենայն օրէնսն անցեալ գնաց ոչ ինչ շահելով 'ի փութոյն, այլ առաւել ևս մտաւուց հանճարելով քան զպղերգացեալն: Նայոքիկ են հնարք սատանայի, զամենայն պղերգութիւն և զամենայն նախին խակ փութանս կրթուանէ, յորժամ ոչ ըստ օրինացն լինիցի:

Նայլ և նոցին խակ բանից պաղատանացն պարտ և արժան է լսել, զի տեսանիցէք որքան ցի են անձթով, և զիարդ մանկական մտաց են բանք: Արդ խնդրես, ասեն, 'ի թշնամեացն իմոց. ցոյց նոցա թէ ամ ունիմ ես: Ոչ այնպէս ասանին, ով մարդ, եթէ ամ ունիցի՝ յորժամ զայրանամք և սրտմտիմք և դժուարիմք, այլ յորժամ հեզք և հանդարտք և ցածք լինիմք և աննոյն խոնարհութեամբ կրօնաւորիմք: Նոյնպէս և ամ ասաց. «Այսպէս լուսաւոր լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն ըզՀայրն ձեր որ յերկինսն է»: Ոչ զմտաւ ածես՝ թշնամանեք են զամ խնդրել հակառակ թշնամեացն: Եւ զիարդ իցեն, ասէ: Վասն զի նա ասաց «Աղօթեցէք յաղագս թշնամեաց ձերոց», և զամենայն զօրութիւնս զայն 'ի ներքս եմուծ:

Իսկ դու յորժամ զօրինադիրն աղաչես լուծանել զիւր օրէնսն և պատերազմ ընդդէմ օրինադրել ինքեան, և որ զքեզ արգել ընդդէմ թշնամեացն աղօթել՝ հայցես լսել քեզ հակառակ աղաչողի թշնամեացն, ոչ աղօթս զայն առնես և ոչ պաղատանս, այլ թշնամանես զօրինադիրն, և արբեցութեամբ յանդգնիս առ հանդերձեալն առալ քեզ բարի յաղօթիցն: Ոխիրդ կարողութիւն է աղաչողին լսելի լինել, ասա ինձ, յորժամ որ հանդերձեալն է լսել՝ բարկացուցանես: Ոյն տանելով 'ի վէհ զքո փրկութիւնն մերս և 'ի վախից արկանես զթշնամիս յանդիմանս արկանելով թագաւորին. քանզի թէպէտ և ոչ ձեռօք զայն առնես, այլ բանիւք գնա հարկանես: Զոր և ոչ ծառայակցացն առնել իշխէիր, համարձակեցար առաջի իշխանին զայն առնել, թէպէտ և բիւր ողորմութիւն իցէ քո արարեալ, 'ի մահ

վաղվաղակի ամենայն իրօք ածեալ լինիս ։ Իսկ արդ եթէ առաջի իշխանի ոչ համարձակիս զհամապատիւն թշնամանել, յանդիման ա՟յ առնելով զայն կատարես՝ ասա ինձ՝ ո՞չ սարսափիս և ո՞չ զարհուրիս 'ի ժամանակի աղօթիցն և պաղատանացն վայրենանալ այնպէս և գազանանալ և մեծամեծ չարութիւնս ցուցանել, քան թէ որ զհարիւր դահեկանն պահանջեաց ։ Իսկ զի նմա հաւասար թշնամանես, նախ իսկ պատմութեանն լուր ։

Բիւր տաղանդս պարտէր ումն, ասէ, տեառն, և ոչ ունելով հատուցանել՝ աղաչէր երկայնամտել, զի վաճառելով զկին իւր և զմանկունս՝ լուծանէ զպարտսն տէրունականս ։ Տեսանելով զնա ողբացեալ տեառն, ողորմեցաւ և զբիւր տաղանդն եթող նմա ։ Ելեալ գտանէր զայլ ծառայ որ պարտէր նմա հարիւր դահեկան․ խեղդելով պահանջէր հանդերձ բազում խակութեամբ և անմարդութ՟ե ։ Լուեալ զայն տեառն էարկ զնա 'ի կապարանն, և զոր յառաջագոյն եթող զպարտսն զբիւր տաղանդացն, եդ զայն դարձեալ 'ի վերայ նորա, և յաղագս 'ի ծառայակիցն խակութ՟ե ետ նմա զպատիժսն ։

Դու ինձ և զայն տես որքան չարաչարոյ և անզգայ եղեր հակառակ աղօթել թշնամեացն ։ Նա ոչ զտէրն աղաչէր պահանջել, այլ ինքն պահանջէր զհարիւր դահեկանն․ իսկ դու զտէրն 'ի պահանջումն յայն յանամօթ և յարգելեալ կոչես ։ Իսկ նա ոչ յանդիման տեառն, այլ արտաքոյ ուրեմն զծառայակիցն խեղդէր․ բայց դու 'ի նմին իսկ 'ի ժամու աղօթիցն առաջի թագաւորին կալով զայդ առնես ։ Իսկ արդ եթէ նա ոչ զտէրն աղաչեաց 'ի պահանջումն, և զկնի ելանելոյն զայն առնէր, և ոչ միում թողութեան ոչ դիպեցաւ, դու զտէրն յարգելեալ յայն 'ի պահանջումն յարուցանելով զո՞ր տանջանս ոչ տացես, ասա ինձ ։ Այլ պատուցեա՞լ են քո միտքդ յիշատակաւ թշնամութեանն և փքացեալ, և ընդոստուսիրտդ, և զորտմեցուցանեն յիշելով ոչ կարես զայտումն զնստուցանել զխորհրդոցն․ այլ հակառակ կարգեա այտմանն այնմիկ որ քոյ մեղացն յիշատակ և ընդհանդերձեալ տանջանացն զերկիւղ․ յիշեա քանի ինչ պարտական ես դու տեառն, և զի փոխանակ այնոցիկ ամենեցուն դատաստան պարտիս նմա, և զօրացի ամե-

նայն իրօք ո՟յ ահն քան զայն բարկութիւն. վասն զի և յաւէտ սաստկագոյն է սա քան զնորա իրն: Յիշեա զգեհենն և զտանջանսն և զպատիժսն ՚ի ժամու պատուհասից, և ոչ ՚ի միտ առնուլ կարասցես զթշնամիս: Խորտակեա զմիտս, նուաստացո զանձն, յիշատակօք քոց սխալանացն, և ոչ ինչ վտանգեսցէ զքեզ բարկութիւն: Բայց այն ամենայն են չարեացն պատճառք զի զայլոց զմեղսն հանդերձ բազում հաստատութեամբ խուզեմք, և զմերն յոլով պղերգութեամբ զանցուցանեմք. հակառակ նմին էր պարտ և արժան առնել զի զմեր չարիսն անմոռաց ունել, և զայլոցն ոչ երբէք ՚ի միտ առնուլ:

Եթէ զայս արասցուք, և զա՟ծ արասցուք հաշտ և յընկերացն դադարեսցուք անմահ բարկանալոյ, և թըշնամի ոչ երբէք ոչ զոք կալցուք. և եթէ ունիցիմք, վաղվաղակի զթշնամութիւնն լուծանիցեմք, և մերոց մեղացն արագ արագ ընկալցուք զթողութիւն: Զի զոր օրինակ ընկերին ոխակալ լինելով չթողացուցանէ զիւրոց մեղացն զտանջանսն լուծանել, նոյնպէս որ մաքուր է ՚ի բարկութենէ, մաքուր ՚ի յանցանացն լինի վաղվաղակի: Քանզի եթէ մեք չարք և սրտմտութեան ծառայեալք՝ յաղագս ո՟յ ՚ի բաց զամենայն ինչ որ առ մեզ է անտես առնիցեմք զյանցանսն, ևս առաւել մարդասէր և բարին և յա՟մ ախտից մաքուրն զանցուսցէ զմեր սխալանսն առ ընկերն բարեմտութեանն, և զմեր մեզ թողլով զհատուցումն մեզ ընձեռեսցէ: Որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԽՕՍՔ ՅԵՒՏՐՈՊԻՈՍ ԻՇԽԱՆ, ՈՐ ԵՂԵՒ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԱՊԱՒԻՆԵԱԼ ԵՂԵՒ ՅԵԿԵՂԵՑԻՆ

Միշտ, առաւել ևս այժմ, ՚ի դէպ է ժամանակ ասել. «Ունայնութիւն ունայնութեանց, ամենայնն ունայն է»: Ո՞ւր է այժմ պայծառութիւն իշխանութեան պատ-

մուճակին, ո՞ւր փայլակեալ ջահքն. ո՞ւր կայթումն և պարքն, և ոտքն արմաւենեաց և կացուրդքն. ո՞ւր սպաքըն և պաճուճքն. ո՞ւր քաղաքիս ամբոխքն և ծիծթագք բարեբանութեանն և 'ի տեսարանն փաղաքշանքն: Ամենայն այնոքիկ կորեան. և 'ի շնչել հողմոյն յանկարծակի՝ զտերեւն 'ի բաց թափեաց, և մերկս մեզ զծառն եթող, և 'ի նմին իսկ յարմատոյն շարժեալ. վասն զի այնպիսի իմն եղեն հողմոյն ալիածք, մինչ զի արմատաքի խլել սպառնացաւ և 'ի վեր կորզել և նորին զրդուեցելոյ ծառոյդ տերեւքն:

Ո՞ւր են այժմ առեղծական բարեկամքն. ո՞ւր դեմք փաղաքշանաց. ո՞ւր գինեըմբուքն և ընթրիքն և հացակցացն գովութիւնք և որ 'ի բոլոր յաւուրն հեղեալ լինէր անապակն և զանազան խրախճանացն արուեստք և զորութեանն սպասաւորք, որ զամենայն առ շնորհս առնէին և խօսէին: Կոչէր էր այն ամենայն և երազ, 'ի տունջեան լինել ապականեցաւ. ծաղիկ էր գարնանային, յանցանել գարնանայնոյն՝ ամենայն խամրեցաւ, ստուեր և անց, ծուխ և լուծաւ, պղպջակք էին և պայթեցին, սարդոստայն և պատառեցան: Յաղագս որոյ դարձեալ զհոգևոր զերգն զայն երգեսցուք յաճախապէս 'ի վերայ ասելով. "Ունայնութիւն ունայնութեանց, ամենայն ինչ ունայն է": Զայս ասացուած յորմս և 'ի հանդերձս, 'ի գաւեհս և 'ի տունս, յելս և 'ի մուտս, և նախ քան յամենայնի՝ յիւրաքանչիւր ուրուք 'ի միտս գրել պարտ և արժան է, և յամենայն ժամ զայս կըրթել: Վասն զի յոլով է խոյսն խաբէութիւն, և կերպարանքն և կեղծաւորութիւնն ճշմարտութիւն առ յոլովս թուի գոլ. զայս հանապազօր յընթրիս և 'ի ճաշս, 'ի ժողովս ասել իւրաքանչիւր ումեք մերձաւորին է պատշաճագոյն, և 'ի մերձաւորէն նմանապէս լսել՝ եթէ "Ունայնութիւն ունայնութեանց, ամենայնն ունայն է":

Ո՞չ ասէի քեզ յաճախապէս եթէ սրական է ընչեղութիւն, և դու ինձ ոչ անսայիր. ո՞չ ասէի քեզ եթէ չարաբարոյ ծառայ է, և դու ինձ ոչ ներէիր. ահա քեզ այժմ իրացդ փորձ եցոյց՝ եթէ ոչ սոսկ փախստական միայն, այլ և սպառապան՝ նա քեզ այժմ դողալ և զարհուրիլ պատրաստեաց: Ո՞չ ասէի քեզ յարաժամ, և սաստէիր ինձ զճշմարիտն ասողի: Նեէի՞ թէ զքեզ ես

յաւէտ սիրեմ քան զփաղաքուշսն, և ոչ ընդունէիր զբանս իմ զայնոսիկ՝ եթէ արժանի հաւատալոյ են վէրք բարեկամի քան զմոտադիւր համբոյրս թշնամեաց: Եթէ իմոց վիրացն էիր անսացեալ, ոչ արդեօք համբոյրքն նոցա զմահդ զայդ քեզ ծնանէին. վասն զի իմ վէրք զողջախոհութիւն գործեն, և նոցա համբոյրքն անբժշկելի հիւանդութիւնս պատրաստեն:

Ո՞ւր մատուակքն, ո՞ւր բարեպարիշտքն որք 'ի հրապարակս բիւր գովութիւն առ ամենեսեան շարամանէին. փախեան, ուրացան զքո զբարեկամութիւնն. զզուշութիւն ինքեանց՝ 'ի ձեռն քո անգիտութեան շահին, և ոչ մերձ լինել իշխեն: Բայց մեք ոչ այսպէս. և յայնժամ դժուարեալք 'ի յանդիմանութենէն ոչ 'ի բաց կացաք, և այժմ զանկեալդ բժշկեմք և ողոքեմք: Պատերազմեալս 'ի քէն եկեղեցի զգոգ տարածեալ ընկալաւ զքեզ, և խնամակալեալն 'ի քէն թէատրոն՝ յաղագս որոյ մեզ զայրանայիր՝ մատնեաց և կորոյս: Այլ սակայն ոչ դադարեցաք ասել՝ հի՞մ զայդ առնես, մոլորեցուցանես զքաղաքս և վախից 'ի վայր բերես. և զանց առնէիր զամենայնիւ: Ձիընթացքն որ զքո ընչեղութիւն վատնեցին, սուր քեզ սրեցին. բայց եկեղեցի որ 'ի քումմէ 'ի տարաժամ բարկութենէն վայելեաց, ամենայն ուրեք ընթանայ և յորոգայթիցն յափշտակել զքեզ ձեպի:

Զայս ասեմ, ոչ 'ի վերայ եղանեմ անկելոյդ և կործանելոյդ, այլ որք կանգ՝ զզուշագոյնս կամիմ առնել. ոչ խարխարեմ զվէրսն վիրաւորիդ, այլ որք ոչն են վիրաւորեալք՝ յառողջութեան պահել զգուշանամ. ոչ ընկղմեմ զմխրձեալն, այլ որք առանց մրրկաց նաւեն՝ խրատեմ զի մի լինիցին խորասոյզք: Իսկ զիա՞րդ այս լինիցի. եթէ փոփոխեսցին 'ի մարդկայնս մտաց և յիրաց: Վասն զի եթէ գիտէ զփոփոխումնն, ոչ եւս ընդունի զփոփոխումնն: Այլ սա զի ոչ յինքենէ և ոչ 'ի հարցն եղև լաւագոյն, դուք այսուհետև համոյք լեալ օգտեցարուք 'ի նորա թշուառութենէն: Ոչ ինչ քան ըզմարդկայինն իրս յանկարծակի է. յաղագս որոյ զինչ և ասիցէ ոք անուն վատթարութեան նոցա, նուազագոյն քան զճշմարտութիւն գտանի. եթէ ծուխ, եթէ ստուեր, եթէ խոտ, եթէ անուրջ, եթէ ծաղիկ գարնանային, և

ցւոյ։ Գոլին աղագաւ պարտ և արժան է փառաւորել զա̃ծ, զի եթող զդա իշխանել յայսպիսի հարկաւորութիւն, մինչ զի և զզօրութիւն եկեղեցւոյ և զմարդասիրութիւն ուսանել. զօրութիւն՝ յորոց այսքանեաց փոփոխմանց համբերեաց յաղագս պատերազմելոյն ընդ եկեղեցւոյ. և զմարդասիրութիւնն՝ զի զվահանն ՚ի բաց ընկեց, և ընդ թևովք իւրովք ընկալաւ զնա և յամենայն զգուշութեան կացոյց, ոչ ինչ ոխակալ լինելով յաղագս առաջնոյն և ոչ միոյ իրաց, այլ տարածեալ զգոգ մարդասիրութեանն՝ քան զամենայն յաղթութիւ երևելագոյն ցուցանէ զիւր զյաղթութիւնն։ Այս զհեթանոսս պատկառեցուցանէ. այս պայծառ զնորա դէմ ցուցանէ, զի զպատերազմողն գերի առնելով խնայէ, և ամենեցուն առաջի տեսանելով՝ միայն իբրև զմայր բարեգութ ՚ի ներքոյ վարագուրին իւրոյ կացոյց, և ընդդէմ թագաւորական բարկութեանն կալ և անըմբերելի ատելութեանն. այս սեղան, այս զարդ։

Որ զարդ, ասեն, հարկաւորութեան աւելաստացողիդ և յափշտակողիդ՝ զնեանց սեղանոյդ բուռն հարկանել։ Մի ասեր զայդ. վասն զի և պոռնիկն մերձեցաւ յոտս Քրիստոսի, յոյժ պիղծն և անմաքուրն. և ոչ ինչ էին բամբասանք Յիսուսի լեալքն, այլ սքանչելիք և օգնութիւնք մեծամեծք. վասն զի ոչ ինչ զմաքուրն վնասէր անմաքուրն, այլ զպիղծն՝ մաքուրն և անարատն ՚ի ձեռն մերձաւորութեանն մաքուր գործեաց։ Մի ոխակալ լինիր սմա, ով մարդ, ծառայ եմք խաչելոյն որ ասէր. «Թող դոցա զի ոչ գիտեն զինչ առնեն»։ Ոչ ի այսր փախստեամբդ զոր գրովք[1] և զանազան օրինակօք լռեաք, ՚ի ձեռն գործոց ուսաք զոր արարին, զօրէնսն ելոյծ նախ առաջին ինքն ՚ի ձեռն որոց չարչարեցաւն, և եղև աշխարհի տեսարան։ Լռութեամբ աստ արձակէ ձայն. մի առնէք նոյնպէս, զի մի զնոյնս կրիցէք։ Նա վարդապետ երևեցաւ ՚ի ձեռն թշուառութեանցն։

Մեծամեծ պայծառութիւն արձակէ յինքենէ սեղանս այժմ. մանաւանդ ահաւոր յայսցանէ երևեալ, զի զառիւծս կապեալ ունի, զի և թագաւորական պատկերին զարդ լինի, ոչ միայն յորժամ ՚ի վերայ աթո-

1 Յօրինակին գրովք.

ռոյն նորա զծիրանիսն զգեցեալ և թագաւորին եղեալ թագաւորն, այլ և յորժամ առ պատուանդան թագաւորին բարբարոսք զձեռս յետս կապեալ իցեն, և գլուխք 'ի վայր խոնարհեալք կայցեն:

Եւ զի յայժ հաւանական բանիւ վարիմ, դուք էք վկայք փութոյդ և 'ի միասին ընթանալոյ: Վասն զի պայծառ մեզ այսօր զտեսարանս և վայելուչ զժողովս գործեցէք. և որքան յանձայլն տօնին բազմութիւն տեսանէաք, այնքան այժմ զժողովս տեսանեմք: Սա այժմ լռութեամբ զամենեսեան կոչեաց, քան զփող պայծառագոյն 'ի ձեռն իւրացն արձակեաց ձայն: Այսք և հարսունք զառագաստս թողլով, կանայք և արք զգուեհս ունայնացուցանելով ամենեքեան այսր 'ի միասին ընթանայք, զի զմարդկային բնութիւնս տեսանիցէք յանդիմանեալ, և զկենցաղական իրացն զժամանակեայս մերկացեալ, և զպատնկաց դէմսն որ երէկ և եռանդ պայծառութեամբ փայլէին, այնպիսի բարեգործութեամբ յաւելատացութեանցն յայնցանէ քան զամենայն պառաւ խորշակարկամութիւնս ունելով զազրագոյն եղեալ, իբրև 'ի սպունգոյ ումեքէ փոխեալ, 'ի վերայ շփումն և զրախանքն[1] 'ի բաց մաքրեալք:

Այսքիկ են զժուարութեանն զօրութիւն, որ զպայծառս և զերևելիս քան զամենեսեան վատթարագոյն արար երևեալ: Այժմ թէ ընչեղ ոք մտանէ այսր, մեծապէս շահի. յայնքան 'ի գագաթանէ 'ի վայր անկեալ, որ շարժէր զաշխարհս ամենայն, և այժմ զօպեալ է՝ քան զնապաստակ և զգորտ երկչոտ ևս լեալ, և առանց կապանաց ընդ սիւնս բևեռեալ՝ փոխանակ շղթայի ահիւ շուրջ պնդեալ, զարհուրեալ և դողացեալ զնստուցանէ զայտուածն և քարշէ 'ի վայր զամբարձումն. խմաստասիրել քեզ պարտ առնէ յաղագս մարդկայնոցս. մեկնեացի[2] իրօք ուսեալ զոր գիրք ուսուցանեն մեզ: Օ՜ ի՞նչ արդեօք. թէ "Ամենայն մարմին խոտ է, և ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. ցամաքեցաւ խոտն և ծաղիկն թօթափեցաւ„. որպիսի ինչ, թէ "Իբրև

1 Այսպէս յօրինակին. Թերևս գրահանքն:

2 Ի յունականէն եդաք զհաստատուածս մեկնեցի. ուսուցանեն մեզ, որ խանգարեալ թուէր յօրինակին մերում. այսպէս ամենեցուն յետ բանից առնելոյ գրեալ զայսոսիկ իրօք ուսանիմք:

փոխանակ Թշնամանաց Թագաւորին, աղաղակելով 'ի վեր վազէին և զտէգան շարժելով զմահն յիշեցուցանէին, աղբերս արտասուաց արձակեալ այնուհետև և 'ի հանգարտագոյն աչաց իւրոց՝ յիշեցուցանէր զա̄ծային սեղանոյ յոր փախեաւ, և այնպէս զնստուցանէր զըրրամտութիւնն:

Այլ սակայն և մեք 'ի մէնջ յաւելցուք որոյ աղագաւ արժանաւոր է Թողութեան: Զի եթէ Թագաւորն Թշնամանեալ ոչ եղև ոխակալ, դուք ոչ ինչ այնպիսի կրելով՝ այդքան բարկութիւն ցուցանէք. և զիարդ 'ի լուծանել տեսարանիս այսորիկ 'ի խորհուրդն մերձենայցէք և զգոհացողականն զայն զոր հրամայիմք՝ ասել "Թող մեզ զպարտս մեր որպէս և մեք Թողումք պարտապանաց մերոց", որ և ոչ ինչ է ձեզ պարտական՝ պահանջէք դատաստան: Զրկեա՞ց մեծապէս և Թշնամանեաց, և ոչ մեք ընդդէմ ասեմք այժմ: Բայց ոչ է ատենի ժամանակ այժմ, այլ ողորմութեան և գթութեան և ներելոյ. ոչ վճիռ հատանելոյ և դատելոյ, այլ բարերարութեան և շնորհի:

Արդ մի ոք փքասցի և մի դժուարեսցի. այլ մանաւանդ աղաչեսցուք զմարդասէրն Ա̄ծ ընձեռել սահմանեալ ժամանակ և 'ի սպառնալեաց սպանմանէն յափշտակել, զի լուասցի սա 'ի յանցանաց իւրոց: Այլ առ հասարակ մերձեսցուք առ Թագաւորն յաղագս եկեղեցւոյս, վասն սեղանոյս՝ այր մի ա̄ծային սեղանոյս շնորհել աղաչեսցուք աստ. զի և նա զմեզ ընկալցի, և Ա̄ծ նախ քան զԹագաւորն գովեսցէ և մեծացուսցէ զմեզ՝ տալով զմարդասիրութեանն հատուցումն մեզ: Զի զոր օրինակ զանմարդիս և զխիստս 'ի բաց մերժէ, նոյնպէս և զմարդասէրն և զբարեգութն ընդունի: Այլ եթէ արդար իցէ, պայծառագոյն ևս սմա զպսակս յօրինէ. ապա եթէ մեղաւոր, հանդերձ Թողութեամբ զանց առնէ զյանցանօք առ ծառայակիցն ցաւակցութեամբ, զհատուցումն զայս նմա ընձեռելով. քանզի "Զողորմութի̄ կամիմ, ասէ, և ոչ զզոհս": Ամենայն ուրեք 'ի գիրս ըզսոյն զայս տեսանեմք հայցեալ. զայս և լուծումն մեղաց ասէ լինել:

Զնոյն և մեք այժմս սմա յողորմութիւն գործեսցուք, զի այնպէս զմեր յանցանսն լուծանիցեմք, և զե-

կեղեցին զարդարիցեմք, և Թագաւորն այնպէս մարդա-
սէր զմեզ գովեսցէ, որպէս և յառաջագոյնն ասացի, և
ամենայն բազմութիւնն գովեսցէ, և ծագք աշխարհի
ընդ մարդասիրութիւն և ընդ ցածութիւն քաղաքիս մե-
րոյ սքանչասցին, և ուսանելով ամենայն ուրեք յերկրի
զլեալն քարոզեսցեն զմեզ։ Եւ արդ զի այսքան վայե-
լեցաք 'ի բարիս, անկցուք առաջի, պաղատեսցուք. յա-
փշտակեսցուք 'ի վերայ կացելոց վտանգին զգերիս,
զփախստականս, զծառայս. զի և մեք հանդերձելոց բա-
րեացն հանդիպեսցուք 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր,
ընդ որում Հօր և Հոգւոյն սրբոյ փառք և պատիւ յա-
ւիտեանս յաւիտենից. ամէն։

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ ՅԵՒՏՐՈՊԻՈՍ ԻՇԽԱՆ։

Մարգաւէր մեզ ժողովս, և պայծառ մեզ տօնս է
այսօր. ծով աւելորդութեամբ լցեալ, այլ ոչ ամբոխեալ
'ի խռովութենէն։ Վասնզի եկեալ այսր մայրն խաղա-
ղութեան շնչեցանէ զամբոխս, զի լցցի ասացեալն յե-
րանելւոյն Պաւղոսի. "Մայր զՍիովն ասէ մարդ, և
մարդ ծնաւ 'ի նմա, և ինքն հիմնեցոյց զնա բարձրեալն"։
Բայց հայեցարուք յիս հաւատեաւ, զի պղերգագոյն
իմն է բանս. բաղայք զիս պաշարեն, որոտեալք. ահա
անկանիմ, և զինչ արարից։ Դուք և նաւուղիղք և ռեգք
պատրաստեալք, և ես անցեալ նստիմ 'ի վերայ երկո-
ցունց խելաց նաւուն, 'ի հին և 'ի նոր կտակարանաց, և
զեկօքն մերձենամք յամբոխսն, ոչ զեկօքս այսպիսիւք ե-
րեւելեօք, այլ խաչին բեւեռօք փայտին մարտնչելով ըզ-

* Ընդ երկբայականան Թերես դասելի էր առաջիկայ Ճառդ յաղագս անյար և անկցորդ հաստուածոյ նորա և իմաստից, եթէ չկայր 'ի միջի յոյն բնագիր նորա 'ի կարգի հարազատացն. սակայն և այնպէս Թերակատար մասամբ յունականին 'ի կիսոյ և անդր, և մնացորդ մասանցն ոչ Ճշգրիտ համաձայնութեամբն ընդ մերոյս կարծիս տայ անզերծ լինել 'ի համարձակութենէ օտար ձեռաց, կամ հաստուածոյ նորա ամանց վրիպակաւ Թէ յանդգնաբար շփոթեալ ընդ այլում Ճառի։ Մինչ այսու օրինակաւ շատացեալ առ ժամս, ստուգեսցի ժամանակաւ 'ի բազմութենէ օրինակաց որ հարազատն իցէ։

խաղաղութիւն ընձեռեմ։ Որդեակք իմ, զինչ արարից. երխտամութիւն ձեզ տամ, հաւատ, ողջախոհութիւն, փորձութիւն։ Եթէ կամիցիք հաւատովն համբերել, նմանողք լերուք Աբրահամու, որ ակնկալեալն էր հաստատ, և պտղովքն տացց։ Եթէ ախորժիցէք պարկեշտանալ, լերուք նմանողք Յովսեփու վաճառեցելումն յԵգիպտոս, և 'ի սմին հարշեալ զեգիպտացիսն պատուեաց։ Յարեաւ 'ի վերայ նորա եգիպտացի բազն աւելով «Բունեալ ընդ իս,» գարշելի բանիւ զարդարն ապականէր։ Բայց նա յայնժամ եգիպտացի կին, իսկ այժմ սա եգիպտացի այր։ Այլ ոչ նա ընկճեաց զնա, և ոչ սա կողոպտէ այժմ զեկեղեցիս. քանզի երևեցաւ և սպատին խոյ ողջախոհութեան, և բարբարոսին անարգելութեան։ Իսկ եթէ կամիք փորձանաց համբերել, նմանեցարուք Յոբայ որ պատերազմեալն լինէր և ծաղկեալ. պատերազմեալն զուարճանայր, և պատերազմողն խոցեալ լինէր։ Որդեակք իմ, աւազակ ոչ երթայ ուր աւազ և քար և եղէգն կայցեն, այլ ուր ոսկի և արծաթ և մարգարիտ. նոյնպէս և բանսարկուն ոչ երթայ ուր պանիկ և բոց, այլ ուր բարի անօթ։

Իսկ արդ զինչ. երէկ ինձ ասէիր հայր բարեմիտ, և այսօր չարաբարութեան 'ի վերայ արկանես. երէկ զիս երեքտասաներորդ առաքեալ, և այսօր Յուդաս յառաջ ընթացաւ. երէկ ընդ ապաստն խնամ նստէր, և այսօր իբրև զգազան 'ի բաց վարեաց։ Այլ թող նոցա զի ոչ գիտեն զինչ առնեն։ Կամիմ, որդեակք, սփռել զեղջուս իմ առ թագուհին. Յեզաբէլ ամբոխէ, և Եղիաս փախչի։ Եթէ արտաքս քան զսահմանս զիս մերժեն, Եղիայի նմանեմ. եթէ 'ի ծով զիս ընկենուն, ծառայակցին և մարգարէին Յովնանու. եթէ 'ի տիղմ, Երեմիայի. եթէ 'ի գուբ, Դանիէլի. եթէ քարկոծեն, Մովսէսի. եթէ սղոցեն, Եսայեայ. և երանի թէ փայտեղէն սղոցաւ միայն, զի 'ի խաչին ցանկութեան վայելէի։ Երկիր մարմնացեալ պատերազմի ընդ անմարմնականին. և որ հանապազ ընդ առն բնակեալ է, մարտնչի ընդ Քրիստոսի կնոջ. և որ հանապազ 'ի բաղանիս և 'ի լուալիս, պատերազմի ընդ մաքրոյն և ընդ լուացելումն։ Բայց սակայն և ինքն առանց առն նստցի, զի ընկենդանեացն առն կին այրի արար։ Լուր իսկ Եսայեայ

մարգարէին որ ասէ, և Եղիայի՝ որ բարի և անաչառ քան զամենայն սուրբս, նաև կուսութեանն, նուագարանն աշխարհի, ուրախութիւն խաղաղութեանն զինչ ասէր նուագերգելով. "Ի տարւոջն յորում մեռաւ Ոզիա արքայ, 'ի Ճակատն նորա էր բորոտութիւն„. զազրութիւն գունոյ անպատուութեանն լցաւ։ Եւ ո՞ զքեզ յորդորեաց զթագաւորն թշնամանել, ո՞ր սովորութիւն և կամ ո՞ր փառք քեզ։ Երանելին Դաւիթ մարգարէ երգելովն "Առաջի թագաւորաց խօսէի և ոչ ամաչէի„. Պաւղոս քարոզն խաղաղութեան, խորանակալն և քան զթագաւորս ձոխագոյն, "Եթէ մարդկան հաճոյ լինէի, ասէ, Քրիստոսի ծառայ ոչ ես արդեօք էի„։ Եւ արդ զի՞նչ արասցուք. ասացից և յաւելից ոչ դադարեցից. ինձ ոչ է դանդաղելի, և ձեզ զգուշալի։ Շարժեսցին մեր մարմինք և կացցեն հաստատուն մեր խորհուրդք։ Այս բանք ինձ ուղղութեանց են. բազում ինչ ձեզ թողացուցի, բայց զփորձութիւնն որ այսօր զխ պաշարէ՝ ոչ մոռացայց։

Կամիք ուսանել զփորձութեանս օրինակ։ Յորժամ մերձեցաւ բանսարկուն ընդ հրեշտակս յերկրպագութիւն տեառն մյ, 'ի նմին ժամու հարցանէր ցնա տծ. "Ուստի՞ եկիր, բանսարկու„։ Աստանօր ինձ զհերձուածողն զանդիսս, թէպէտ և անկանիմ, որք զվերինն խուզեն։ Իսկ արդ անգիտանա՞յր արդեօք տծ յայսմ վայրի. "Ուստի՞ եկիր„։ Ոչ անգիտանայր, այլ զնորա բարձն սահմանահարէր. վասն զի ասէր տծ. "Հայեցա՞ր մտօք քովք ընդ ծառայ իմ Յոբ, այր արդար և անարատ, ճշմարիտ տծապաշտ, հեռացեալ յամենայն չար իրաց. ոչ ոք է իբրև զնա 'ի վերայ երկրի„։ Տէրն գովէր, և ծառայն պսակեալ լինէր։ Եւ ընդէ՞ր արդեօք զնա մատնէս սատանայի։ Վասն զի ոչ գիտէն մարդիկ որպիսի նահատակ ունիմ. մատնեմ զնա անմաքրոյն, զի 'ի ձեռն պղծոյն գեղեցիկ անօթն երևեսցի։ Եւ զի՞նչ սատանայ պիղծն և զատութիւն ծնող բերանն. "Յառեաց զձեռն քո և մերձեցիր 'ի նա, թէ ոչ 'ի դէմս իսկ օրհնեսցէ զքեզ„։ Ով բանսարկու, միթէ և ա՞նդ դրախտ։

Մինչդեռ նա խօսէր, այլ հրեշտակ գայր բերելով զեղանցն կորստեան զոյժ. և 'ի նորա խօսելն՝ միւս ևս ոմն գալով, զամենայնի զկորստեանն. և դարձեալ այլ

ոմն ասէր՝ հուր էջ յերկնից յանկարծակի. և միւս ևս ոմն՝ եթէ տունն կործանեցաւ և եսպան զմանկունսն. և այլ հրեշտակ դարձեալ 'ի նորա խօսելն հասանէր աւելումն՝ ել և փախիր ձեպով: Բանսարկուն կործանել կամէր զնաւահանգիստն, բայց նորա խաղաղութիւնն յաղթէր խաւարին: Դու զի ուսանիցիք եթէ ոչ այլ ոք և այլ էր, այլ ինքն սատանայ ինքեամբ, զինչ ասէր. Եթէ ասացից նմա՝ ել, զարհուրի: Այլ մինչդեռ մին խօսէր, և միւսն 'ի վերայ զիրան բերէր, զի գոնէ վիրաւորեսցէ զնա:

Օ՜ ինչ և այս անօրէն թագուհի. ոչ մի անգամ ևեթ ասէ ինձ ել, այլ զմի մի առ ի առաքէ իշխանս, զատաւորս, զօրավարս և զայլ ամենայն մեծամեծս: Այլ ինձ ինչ զայսմանէ ոչ է փոյթ. զինչ ինձ անտի լինիցի. սարդ է և զսարդի ոստայն առաքէ: Օ՜ ինչ գործեաց Յովբ, անշարժ աշտարակն, նաւահանգիստն խաղաղութեան, բերանն հօր, փառքն որդւոց, ցնծութիւն հոգւոյն, փողն աշխարհի. որ զկաւեղէն լեզուն ունելով հոգևորացն էր քաղաքացի, մեղաւորաց մխիթարութիւն, ընչեղաց ամրութիւն, աղքատաց սփոփանք. «Տէր ետ և տէր էառ. որպէս տեառն թուեցաւ, նոյնպէս և եղև. եղիցի անուն տեառն օրհնեալ յաւիտեանս»: Հերովդիադաս կաքաւէ և զՅովհաննու գլուխն խնդրէ և բառնայ զգլուխն 'ի վերայ սկտեղաձև պնակի, և արիւնն Աբէլի գոչէր. Յեզաբէլ աղաղակէ: Որքան էին փառք մկրտչին: Եկաւ Յիսուս նշանագործել. բորոտք սրբեալ լինէին, կոյրք տեսանէին, տեաստեաք բժշկեալ լինէին, և յաղքերէն ծածկեալ լինէին աղէտք ախտիցն: Եկրաւ Հերովդէս խռովեալ՝ վայ եղուկ, Յովհաննէս յարեաւ: Ով լուր և անամօթ, կենդանի զնա թշնամանէիր, և 'ի մեռելոյն երկնչիս և զարհուրիս: Դու զինչ որդեակք. սատանայ ապականեցաւ կորեաւ: Ուր ընթացայց, յաղթէ ինձ արդարն. եթէ առ բարեկամմն նորա առաքինս, որք այժմ չարաչարն եկին 'ի ժողովս. եկն արտաքս Ճանապարհ գործել: Դու զինչ ևս, որդեակք. «Եղիցի անուն տեառն օրհնեալ»: Լաւագոյն էր արեգական շիջանել, և ոչ բանիցս այսոցիկ սպառումն լինել: Երկին և երկիր անցանէ, այլ բան տեառն մնայ յաւիտեան:

Digitized by Google

Այլ զի՞նչ սատանայ։ Ապականեցայ կորեայ. ո՞ր ըն-
թացայց, զի՞նչ արարից. եթէ առ հե՞ն զէնն իմ առ-
կինն, որով այժմ պատերազմի ընդ իմում եկեղեցւոյս.
'ի դրախտէն հանի, աւէ, և յաղթեցայ աշխատութիւն
ունիմ հանել։ Այս ոչ գիտէ անամօթն եթէ վէրքն
քան զարեգակն եւս պայծառացան։ Ոչ վէրքն, մի՛ լի-
ցի. այլ արդարոյն նահատակեցելոյ պայծառութիւնքն
երևեցան։ Այն կինն, խորագոյն չարն, որդն սողեալ,
բնակիչն դժոխոց, ստութեանն դուստր, Աղանդ հա-
նողն, պահապան դրախտին, պատերազմողն, սատակիչն,
վնաս խաղաղութեանն։ Այլ զի՞նչ. “Ասա բան ինչ առ
տէր և վախճանեցիր„։ Ով կին դու, ոչ ինչ չարչա-
րիս, և զնաւդ խորտակել պատրաստես. յորժամ առ
քեզ կային մնային կերպարք հանդերձք, ամանք տա-
րածեալք, ծառայք և աղախնայք, ուղտք և էշք, ո-
խարք և արջառք, թակոյկք և տաշտք, սկուտեղք զանա-
զանք, հանդերձք ազգի ազգիք, յայնժամ ոչ ասէիր՝
ասա բան ինչ և վախճանեցիր։

Այլ արդ “Եթէ զբարիսն 'ի ձեռանէ տեառն ընկա-
լաք, չարեացն ո՞չ համբերեսցուք„։ Այլ զի՞նչ չարիք
իսկ, ով կին. ոչ երկու ամք, ոչ երեք, ոչ չորք, ոչ հինգ,
ոչ տասն. սուղ է ժամանակ փորձութեանս, և որ համ-
բերէն 'ի սպառ՝ կեցցէ։ Ո՞ ինչ լինիցի, որդեակք. ահա
մերժիմ, և զձայնս իմ ոչ ես լուիցէք։ “Այլ եթէ
հրեշտակ յերկնից ձեզ աւետարանեսցէ քան զոր ըն-
կալայքն, նզովեալ լիցի„։ Թողից ինչ ձեզ, որդեակք,
փոքր իմաստութիւն։ Փորձութիւն ձեզ յորժամ ե-
կեսցէ՝ “եղիցի անուն տեառն օրհնեալ„։ Այլ զի՞նչ
Յոբ. նստէր 'ի վերայ աղբեաց. ոչ տանջր երկաթ և-
քերէր զթարախն, այլ խեցեաւ քերէր։ Այլ ընդէ՞ր խե-
ցեաւ. կաւով զկաւն շիջուցանէր։ Նեղութիւնք յոր-
ժամ գայցեն ձեզ, “եղիցի անուն տեառն օրհնեալ„։
Չարիք 'ի դժնդակ թագաւորութենէն, բաղայք պատ-
րաստեալք յանօրէն մարդկանէ յորժամ հասանիցեն
առ ձեզ, “եղիցի անուն տեառն օրհնեալ„։ Որպէս
և զփառս և զպատիւ յորժամ տայցէ Տծ, ասասջիք “ե-
ղիցի անուն տեառն օրհնեալ„. զի առաւել զգուշագոյնք
լինիջիք։ Բանալ և Յոբ մինչ փարթամն էր փառա-
բանէր, և յորժամ աղքատացաւն գոհանայր. ոչ ձո-

Digitized by Google

ցանսն խոստովանեալ զանօրէնութիւնն, վասն զի ասաց յԱբրահամ. «Զինչ արարեր զայս. ընդէ՞ր ասացեր եթէ քոյր իմ է, և սուղ ինչ նուաղ յանցեայս դա»: Բայց սա զինի անօրէնութեանն յամառեալ մնայ: Ով թշուառական և հէք, «Մեղար, դադարեաց», մի յաւելուր մեղս 'ի վերայ մեղաց: Եւ նա ելեալ՝ ընդէղութիւն ունէր բարբարոսական, իսկ եկեղեցին ունի ընչեղութիւն 'ի բարուցն՝ ուստի ողջախոհագոյն երևեցաւ: Տեսանէ՞ք զհնարս բարբարոսին: Ջանէր զհօվիւն, ընդէ՞ր և զհօտն պատուհասեցեր. որոշեցեր զնաւուղիղն, վասն է՞ր և զղեկն խորտակեցեր. 'ի բաց տարար զայգեգործն, հի՞մ զորթն խլեցեր, ընդէ՞ր բարբարոսական իրաց նմանեցար: Արարեր զամենայն, զի ուսցիս եթէ հօտ է աստ 'ի Քրիստոսէ հովուեալ: Արտաքոյ է հովիւն, և հօտն խնամեալ լինի. առաքելական բանն կատարէր, «Ոչ 'ի մերձաւորութեանն իմում միայն, այլ առաւել ևս այժմ 'ի հեռաւորութեանս համդերձ ահիւ և դողութեամբ զձեր փրկութիւն գործեցէք»:

Եւ զայս սպառնալով իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ որ բանաւորին սիրելի էր և բաղձալի: Յայտնեցաւ ոչ ինչ իշխեմք 'ի քաղաքիս, տուք զգա արտաքս: Եւ զիս արտաքս, զի ուսցիս զորդւոցդ իմոց զքաջատոհմութիւն, զզինուորացդ իմոց զզօրութիւն, զգինւոյն ոյժ, զթագացն զերևելութիւն, զոյ՞ իմոյ զնմանակալութիւնն, զսիրոյն մեծութիւն, զօգնականութեանն զօրութիւն, զգոհութեանն ծաղիկ, զյաղթութեանն յայտնութիւն և զպարտութեանն ծաղր: Ով նոր և հրաշափառագոյն իրացն. հովիւն արտաքոյ, և հօտն խայտայ. զօրավարն հեռի, և զինուորքն զինեալ: Ոչ ևս այնուհետև եկեղեցի միայն ունէր զզօրականսն, այլ և քաղաքն եկեղեցի եղև. քահանայքն զատապարտէին, և հերձուածողքն հայցէին: Նոյնպէս և առ Քրիստոսիւ. յորժամ հեռէ 'ի խաչին բևեռեցաւ, խոստովանեցաւ: Ով նոր և հրաշափառագոյն իրացն. քահանայքն սպանին, և մոգքն երկիր պագին:

Մի՛ ինչ սքանչացուցէ այս զեկեղեցի. զի եթէ ոչ այս էր լեալ, Ճոխութիւն ձեր ոչ լինէր երևելի: Որպէս և Յովբ արդար էր, այլ ոչ երևէր մինչև 'ի վէրսն և յորդունսն. այլ և պատասխանի առնէր նմա ամ

ասելով, “ Մարկանիս զիս այլ ազգ ինչ համարանել զքեզ, այլ զի՛ արդար երևեսցիս „ : Պատերազմեցան նոքա և յայտնեցին զզանձն. պատերազմեցան սո֊քա և պարտեցան: Զիա՞րդ պատերազմեցան, վա֊ղերրք. որպէս պարտեցան, աղօթիւք: “ Եթէ ոք ապ֊տակեսցէ զքեզ յաջ ծնօտ, դարձո նմա և զմիւսն „. և դու բիր բերես յեկեղեցի ածելով պատերազմ: Սէր խաղաղութիւն է ամենեցուն, անդ պատերազմի սկիզբն. և ոչ 'ի տեղւոջէն պատկառեցեր, հէք թշուառական. ոչ 'ի քահանայութեանն պատուոյ և ոչ յիշխանութենն մեծութենէ: Լուսարանն արեամբ լցաւ. ուր մեղացն է լուծումն, անդ արեան հեղումն: Լուսարանն արեանց եղև գերի. նոր պատերազմ: Թագաւոր 'ի ներքս մտա֊նէ, ընկենու զվահանն և զթագն արտաքոյ դնէ. դու 'ի ներքս մտեր ածելով բիր: Նա և զնշանակ թագաւո֊րութեանն արտաքոյ թողլով՝ 'ի ներքոյ լինի յարկացն. դու զատուցուած պատերազմի անդր մուծանես: Բայց սակայն զհարսնն ինչ ոչ վնասեցեր, քանզի կայ մնայ՝ զգեղեցկութիւնն իւր ցուցանելով: Տեսին հերձուա֊ծողք զնորա զգեղեցկութիւնն, տեսին հրեայքն և փո֊փոխեցան. տեսին զմեծ պայծառութիւնն զայն:

Ոչ զի յաղթեցէք միայն, այլ զի և այնպէս յաղթե֊ցէք, և զի իմ ոչ եղելոյ մերձ՝ յաղթեցէք: Եթէ մօտ էի լեալ, բաժանէի զյաղթութիւնն ընդ ձեզ. քա֊ջութիւնն երևեցաւ, այլ սակայն և այս իմ է գովու֊թիւն: Բաժանեմ ընդ ձեզ զյաղթութիւնն, զի այդ֊պէս զձեզ սնուցի, մինչ զի և հեռի լինելով հօրս՝ զձեր քաջութիւն ցուցէք: Զի զոր օրինակ քաջ ըմբիշք և 'ի բացեայ լինելով մանկամարզաց՝ զիւրեանց զօրու֊թիւնն ցուցանեն, նոյնպէս և բարեպաշտութիւն ձերոց հաւատոցդ և հեռի վարդապետս լինելով՝ զքաջառոհ֊մութիւն և զբարեզխմութիւն ցուցէք:

Եւ զինչ պէտք են բանից. քարինք գոչեն, որմք ձայն արձակեն: Արդ 'ի թագաւորական ապարանսն և լսես՝ ժողովուրդ կոստանդինուպօլսացի: Արդ յանապատս և յանշէնս. ամենայն ժողովուրդ զգօնութիւնդ զայդ զձեր գրէ: Ժողովուրդ որ ինչ ունի ոչ, այլ հաւատոց, ժողովուրդ զի հայրասէր է, ժողովուրդ զի վարդապե֊տասէր: Երանելի է քաղաքն ու յաղագս պատկերի և

տակեղէն ձեղուանց, այլ ձերով առաքինութեամբք, որ ընդդէմ փայլեայ աշխարհի, և կարացին այդպէս հրօ-բաղէս աղօթք ձեր յաղթել. և թերևս յիրաւի, քանզի համդերձ բարեբանութեամբ և արտասուօք աղօթեցէք: Նոքա նետս, և դուք արտասուս. նոքա բիրս, և դուք աղօթս. նոքա սրտմտութիւն, և դուք համբերութիւն: Հարանն ոչ մտանեցաւ, դու զինչ կամիս առնել. դուք աղօթէիք, և նոքա հալածէին: Ո՞ւր իցեն այժմ. մի՞ զէնս շարժեցաք, մի՞ աղեղունս լարեցաք, մի՞ նետս ձգեցաք. նոքա ինքեամբք փախեան, իբրև սար-դոստայնս պատառեցան, և մեք իբրև զվէմ կացաք մնացաք: Երանելի եմ ես յաղագս ձեր:

Գիտէի թէ որպիսի ունիցիմ զձախութիւնն. բայց այժմ յաւէտ հեռի եմ, և քաղաքդ փոփոխեալ լինի: Վասն միոյ մարդոյ խորք ժողովոյ քաղաքս լինէր: Արք և կանայք և մանկունք տարաժամ հասակօք, կանայք բառնալով զորդւոյն՝ արհամարհէին զալիս ծովուն. ոչ ծառայ զարհուրէր 'ի տեառնէ, ոչ ծեր տկարանայր 'ի հասակին, և ոչ կանայք 'ի բնական տկարութենէն: Եկեղեցի էր անդ, եկեղեցի և աստ, եկեղեցի ամենայն ուրեք յաղագս ձեր: Ես զթագուհին տարեալ առէք. քանզի ոչ թագուցանեմ զնորա նախանձն. ոչ զթագաւորութիւնն ողբեմ. զի թէպէտ և 'ի ներքս ծածկեալ է, այլ արտաքոյ երևի: Հանեալ լինէի և յայնժամ. պարտ է և զարտմականն ասել, զի ուսանիցէք զիարդ տարեալ լինէի յայնժամ, որպէս չոգայ. "Որք սերմանէին արտասուօք, և ցնծութեամբ հնձեսցեն. երթային երթային և լային, որ առեալ տանէին զսերմանս իւրեանց. գալով եկեսցեն բերկրանօք, որք բարձեալ բերիցեն զորայս իւրեանց":

Այս բանք եղեն իմք: Համդերձ արտասուօք յուղարկեցէք զիս, և ոչ յետ բազում ժամանակի՝ զկնի միոյ աւուր ամենայն լուծաւ: Ես զինչ ես. արևելք եղեն յաղագս ձեր, զի երևեսցի ձեր համբերութիւնն վասն իմ, զի և ա̃ծ ինքն 'ի սկզբանն եղյծ:

Առեալ ձեզ զօրինակն ամենայնի, անցի միայն ընդ խորան զեկեղեցին բառնալով. վասն զի սէր ոչ նեղի. աւերածութիւնք էին յոլովք, այլ խաղաղութիւն եղև. ոչ նեղեալ լինէր նաւն, և "ոչ դուք վտանգէիք": Տա-

րեալ լինէի, և զձեր իրս հոգայի. որոշեալ մարմնով, կապեալ էի ընդ ձեզ բարուք: Զա՟ծ աղաչէի յերթալն. նստէի միայն, և զձեր իրս հոգայի խորհելով յաղագս հեռանալոյն. յանկարծակի անցի արտաքոյ սահմանացն լեալ: Աստուածապաշտ թագուհին գիր առաքեաց յառաջնումն աւուրն. զնոյն իսկ ասացից ըզբանսն, վասն զի պարտ և արժան է զնորա բանսն ասել. Մի՛ կարծեսցի քո սրբութիւնդ եթէ գիտացի ինչ ՚ի գործելոյդ. անպարտ եմ ես յարենէ քումմէ, բայց չար մարդիկ և ապականեալք մտօք խաւարեցուցին. զայդոսիկ իմոց արտասուացս վկայէ ա՟ծ: Ո՛վ ա՟ծային իրք, որպիսի փութով հեղոյր զարտասուսն իւր. դաշինք լինէին նուէրք անձեռագործ ա՟յ նուիրելով զարտասուսն իւր և զխոստովանութիւն և զմեծ բարեմտութիւն, ոչ յաղագս քահանային միայն, այլ և վասն եկեղեցւոյն և յաղագս բազմութեանն պառակտելոյ: Բազում ինչ առաքէր ասելով. Յիշեմ զմկրտութիւնն. յիշեմ զի՚ի քո ձեռացդ իմ մանկունքս մկրտութեան դիպեցան: Զայսոսիկ թագուհին: Իսկ քահանայքն յաղագս սպանութեան զայս ասելով, որ և երբեմն սքանչելի եղև, ամենեքեան անգիտանային զտեղին յորում դադարեալ էի:

Եւ նա որպէս յաղագս իւրոյ որդւոյն դողալով ամենայն ուրեք շրջէր ոչ մարմնով, այլ զինուորս առաքելով: Զի ոչ յայն տեղի միայն առաքեաց, այլ և ամենայն ուրեք. զի մի նենգութեամբ սպանցի, ասէր, և մի բարձցի ՚ի միջոյ, և կորուսանիցեմք զորսն խնդրելի: Եւ շրջէին որսորդքն յամենայն տեղիս սփռելով, զի ըմբռնեալ տանիցեն ՚ի ձեռս նորա: Զթագաւորական ծընգացն բուռն եհար, հաղորդ զայլն առնելով կամացն իւրոց. որպէս Սառա զԱբրահամ, նոյնպէս և նա զայլն. Կորուսաք զքահանայն, ածցուք զնա վերստին. ոչ է մեզ և ոչ մի յոյս թագաւորութեանս, եթէ ոչ զնա դարձեալ առցուք: Թէպէտ և այլ ազգ հնարեցաւ յառաջագոյն ինձ, այլ ազգ հաւասարեաց, զկնի այնորիկ գործակցօք պաղատելով հայցէր, արտասուս հեղլով զա՟ծ աղաչէր և զգութն ցուցանէր ՚ի մեր կողմն բարեմտութեամբ հանդերձ, որովք զմեզ ընկալաւ, իբրև ստգտանելով իմն հանդերձեալ զիւր իրսն ընդ մեզ: Ըսէր և

ինքն, փութամ զի և ոչ զայն զբանս մոռացայց, գո-
վեմ զարեմութիւնս ձեր, գովեմ զհայր զեկեղե-
ցւոյս, զսնուցիչն որբոց, զցուպն աղքատաց. որքան ինչ
նմա փառք ո՛յ եղեն, և փառք սմին եկեղեցւոյս։ Ե-
րեկ առաքեաց առ իս զայս բանս ասելով. Աղօթք իմ
լցան. կատարեցան ուղղութիւնք. պակեցայ առաւել
քան եթէ թագաւս՝ ընդունելով զքահանայդ. եւտու
զգլուխդ մարմնոյն, զնաւուղիղդ նաւին, զփեսայդ հար-
սինն։

Թշնամիքն հնացողք ամաչեսցեն. եթէ կեամ՝ ուրա-
խութեամբ կեամ, և եթէ մեռանիմ՝ ոչ ևս փոյթ է
ինձ։ Տեսցի և զմարդասիրութիւն ուղղութեացն։ Զինչ
արարից, զինչ ձեզ հատուցից արժանաւոր փոխարէնս
շնորհիդ։ Արժանաւոր ինչ ոչ կարեմ, բայց զոր ունիմս
տամ։ Սիրեմ, պատրաստաբար ունիմ հեղուլ զիս յա-
ղագս ձերոյ փրկութեանդ։ Ո՛չ որ ունի այդպիսի որդիս
որպէս ես. ես քունեմ, և հաւկքն զուարձանան։ Ո՛չ
ինչ են ինձ պէտք աշխատութեանս. ես դադարեալ եմ,
և ոչխարքն գայլոցն յաղթողք լինէին[1]։ Իսկ յաղագս
այսոցիկ ամենեցուն ամենեքեան փառս առաքեսցուք հօր
և որդւոյ և հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս
յաւիտենից. ամէն։

### ՎՃԻՌ ՔԱՆԴԱՑԻ ԵՆՈՔՆ

Ոյժ են խաղաղութիւնք, այլ զձեր յօժարութիւն
փութոյն չկարաց արգելուլ. բազում են փորձութիւնք,
այլ զգութն ձեր ոչ մեղկեցին. Ո՛չ պարապ եկեղեցի
առ 'ի պատերազմել և յաղթել, առ 'ի մեռանել և չպար-
տել. զի որչափ այլք մարտնչին, նա առաւել ևս աճէ և
զօրանայ. զի թէպէտ և ալիքն կոծեն, նաւ մնայ անշարժ
կայ։ Ի առընթեան փորձութիւնք և 'ի գիշերի
առանձնութիւնք, տիւ ընդ գիշերոյ նախանձի. առն ժողովք
և աստ ժողովք. գիշերն զհրապարակն եկեղեցի արար.
յօժարութիւնն ձեր քան զհուր ջերմագոյն է. ոչ եք

1 Պակասին տողք 37։

կարօտ վարդապետութեան առ 'ի ցուցանել զփոյթն։ Ո՞վ ոչ զքանչասցի և կամ ո՞վ ոչ զարմասցի։ Ոչ եթէ միայն որ էինն նուաղեցան, այլ և որք չէինն ատ՝ յաւելան։ Այնպիսի ինչ են փորձութեանցն հանդէպք. որպէս և ցող 'ի յերկնը զի իջանէ և բուսուցանէ զսերմանիս, նոյնպէս և փորձութիւնքն յորժամ մտանեն 'ի մարդն, զարթուցանէ զյօժարութիւն . . . [1] մանկունս անտես առնել։

Երէկ մեզ Պաւղոս սեղան պատրաստեալ առաջի դնէր, և այսօր Մատթէոս. երէկ խորանակարն, և այսօր մաքսաւորն. երէկ հայհոյիչն, և այսօր քարոզիչն. երէկ հալածիչն, և այսօր վարդապետն։ Այլ հայհոյիչն ոչ կաց մնաց հայհոյիչ, այլ եղև առաքեալ. և յափշտակող ոչ մնաց ագահ, այլ եղև աւետարանիչ։ Նաև զառաջին բիծն, և յետ այսորիկ զառաքինութիւնսն. զի ուսցիս թէ որչափ է փոփոխմանն օգուտ, զի մի երբէք 'ի փրկութենէն քումմէ հրաժարեսցես։ Վարդապետքն մեր նախ 'ի մեղացն երևելիք էին, և յետ այնորիկ յարդարութենէն ընտրեցան, մաքսաւորն և հայհոյիչն, գլխաւորական չարք։ Զի՞նչ իցէ մաքսաւորութիւն. յափշտակութիւն օրինաւոր, բռնութիւն համարձակութեան, անխրատութիւն օրինաւոր ջատագով։ Իմացայք զոր ասացիս. օրէնք բժշկեն, բայց ապա և սպանողք լինին. ոչ եթէ թեթևացուցանեն միայն ըզցաւսն, այլ և սպանանեն։ Զի՞նչ է մաքսաւորութիւն. մեղք առանց ամօթոյ, յափշտակութիւն առանց պատճառանաց չար քան զաւազակն։ Զի և աւազակն թէպէտ և յափշտակէ, սակայն և ամաչէ. իսկ սա և լըբի ես յափշտակելոյն։

Այլ նա աւանիկ մաքսաւորն յանկարծակի աւետարանիչ լինէր։ Որպէս և կամ թէ որպիսի իրօք՝ լուր. « Անցանէր Յիսուս, ասէ, և ետես զՄատթէոս զի նըստէր 'ի մաքսաւորութեանն, և ասէր՝ եկ զկնի իմ»։ Ո՞վ բանի զօրութիւն. ընկենոյր զկարթն, և զգերին զնաւոր վառեալ ցուցանէր, և զկաւն ոսկի։ Կայր հպէր 'ի նա կարթն, և յառնէր վաղվաղակի երթայր զկնի նորա։ Ի խոր 'ի յանդունդս էր 'ի չարութեանն, և յան-

1 Թուղթ մի պակասի յօրինակէն՝ տողք 84։։

և ահա, ասէ, կին մի,,: Զարմանայ աւետարանագիրն՝ թէ ահա կին մի. զհին զէնն սատանայի ցուցանէ, որ 'ի դրախտէն փափկութեանց, ասէ, զիս եհան, մայր մեղաց, ակիզբն անօրէնութեանց. այս կին այն է որ զայս՝ այնր ծնունդ: Ով նոր իրք և զարմանալիք. Հրեայքն փախստական լինէին, և կինն զկնի երթայր: "Ահա կին մի, ասէ, 'ի սահմանաց անտի ելանէր և գայր, աղաչէր զնա և ասէր. տէր, որդի Դաւթի, ողորմեա ինձ,,: Քարոզիչ լինէր կինն, զա̃ծութիւնն և զտեսչութիւնն խոստովանէր. տէր՝ զա̃ծութիւնն կոչէր. որդի Դաւթի՝ զմարդկական տեսչութիւնն: Ողորմեաց ինձ, ասէ: Հայեաց ընդ իմաստնական անձնն. չգոյ յիս, ասէ, գործ բարի կենաց, ոչ ունիմ վարս ապաւինութեան, յողորմութիւն ապաւինիմ, յանցաւորաց նաւահանգիստն. յողորմութիւն յուսամ, յանփորձ յանքնին փրկութիւն:

Իսկ զինչ ետես այնպիսի չարեօք լի և անօրէնութ̃, զիա̃րդ իշխեաց մերձենալ առ նա: Դու տես զկնոջն զիմաստութիւնն. ոչ աղաչէր զՅակոբոս, ոչ աղաչէր զՅովհաննէս, ոչ անկանէր առաջի Պետրոսի. այլ հերձոյր անցանէր ընդ գունդն: Ոչ պիտոյ է ինձ, ասէ, միջնորդն, այլ առնում ինձ զապաշխարութիւնն ջատագով և առ նոյն աղբիւրն մերձենամ, և ասեմ թէ վասն այնորիկ էջ, վասն այնորիկ մարմին առ, զի ես ընդ նըմա խօսեցայց: Ով անչափ մարդասիրութիւն. անդ 'ի վեր քերովբէք դողան 'ի նմանէ, և աստ 'ի խոնարհ պոռնիկն ընդ նմա խօսէր: Ողորմեաց ինձ: Բան լոկ էր, և անչափ անդունդք փրկութեան էին: Ողորմեաց ինձ. վասն այնորիկ իջեր, վասն այնորիկ մարմին առեր, վասն այնորիկ եղեր իբրև զիս: Անդ 'ի վեր ահ և դողումն, և աստ 'ի խոնարհ համարձակութիւն: Ողորմեաց ինձ, չէ պիտոյ ինձ միջնորդ. ողորմեաց ինձ, զի ես ողորմութիւն խնդրեմ: Զինչ ցաւէ. "Դուստր իմ, ասէ, չարաչար մոլեգնի,,. բնութիւն տանջի, գութ վարժի, ելի բարեխօս դստերն իմոյ. ոչ առեալ կրէ ըզհիւանդութիւնս, այլ կրէ զհաւատս: Աստուած է, 'ի հեռաստանէ տեսանէ: "Դուստր իմ չարաչար մոլեգնի,,: Սուգ չար, խոցոտմունք բնութեանն զարգանդն պատառէր, ալիք շարժմանն 'ի գութն կային: Զինչ

արարից կամ յո՞ երթայց։ Նա ընդէ՞ր ոչ ասէր թէ ողորմեաց դատաւորին իմոյ, այլ ողորմեաց ինձ։ Նա, ասէ, 'ի տկարութեան ունի զախտն, չգիտէ զինչ ցաւէ նմա և ոչ զգայ ախտիցն. առատապատ վշտաց ունի զանցաւորութիւնն, առաւել ևս զանդգայութիւնն։ Ինձ ողորմեաց տեսողիս հանապազորդ չարեացն. բազմութիւն վշտաց ունիմ 'ի տան իմում. յո՞ անցից, յո՞ գնացից. յանապատ, այլ ոչ կարեմ թողուլ զնա միայն. այլ 'ի տան իմ, այլ զթշնամին 'ի ներքս գտանեմ, այլք 'ի նաւահանգստի, հրապարակ վշտաց եղև։ Զինչ զնա կոչեցից. մեռեա՞լ, այլ խօսէ. կենդանի՞, այլ չգիտէ զինչ գործէ. ոչ կարեմ գտանել անուն որ թարգմանեսցէ զախտն։ Ողորմեաց ինձ. զի թէ մեռեալ էր դուստրն իմ, ոչ այս անցք անցանէին ընդ իս, թաղէի 'ի ծոց երկրի զմարմինն, և ժամանակ 'ի վերայ անցեալ մոռանայի զսուգն և թեթևանայի 'ի վշտացն։ Իսկ այժմ մեռեալ հանապազորդ 'ի տան ունիմ, տեսիլ նշաւակ է ինձ, յաձախնեցուցանէ ինձ զվէրս և յաւելու ինձ ցաւս։ Որպէս կարիցեմ տեսանել զայս շրջեալ, զձեռս թիւրեալ, ըզգէսս արձակեալս, փրփրէ և կրճտէ, և զդահիճն չար 'ի ներքս ունի. և զի տանջի գիտեմ, և զվէրսն տեսանեմ, բայց տանջիչն չերևի, և լինիմ տեսող օտարի չարեաց, և լինիմ տեսող բնութեանս իմոյ որ զիս խոցոտէ. ողորմեաց ինձ։ Զարաչար են ախտս, ցաւք և երկիւղ, ցաւք բնութեանս և ահ դիւացն։ Մերձենալ չկարեմ և ոչ ունել. մղէ զիս ցաւս և մերժէ զիս ահս. ողորմեաց ինձ։

Այլ հայեաց ընդ կնոջն իմաստուն. ոչ չոգաւ առ կախարդս, ոչ կոչեաց զգէտս, ոչ գիր պահպանական ընդ անձն արկ և ոչ զհմայական կանայս 'ի վարձու առ՝ զայնս որք վարժեն 'ի դիւաց և լուծանեն զվէրսն. այլ թողեր զդիւացն արգասատեարսն[1], և գայր առ փրկիչն ոգւոց մերոց և ասէր. «Ողորմեաց ինձ, դուստր իմ չարաչար տանջի»։ Գիտէք ապաքէն և դուք որ որդւոց հարք լեալ էք՝ օգնեցէք բանիս իմոյ, և որ մարք էք՝ պատրաստեցայք, զի ոչ կարեմ թարգմանել զվիշտն որում

1 Այսպէս երկաթագիրն. այլ վարեալ թարգմանչին ἐργαστήριον ար. արգասատեարք, յունական ձայնիւ արուեստաւորաց կամ գործարան։

Digitized by Google

համբերէր կինն ։ Ողորմեաց ինձ, զի դուստր իմ չարա-
չար տանջի ։ Տեսէ՞ք զերկայնմտութիւն համբերութեա՛ն ։
Նա և ոչ բան մի տայր նմա պատասխանի ։ Աքանչելի
իրք. աղաչէր ժտէր, ողբայր զտառապանս, բազմացու-
ցանէր զողբսն, պատմէր զցաւսն. և մարդասէրն չտայր
պատասխանի ։ Բանն լռեալ կայր, կինն պաղատէր, և
բժիշկն զդեղն չդնէր վաղվաղակի ։ Օ՜ զինչ են իրքն,
զինչ են զարմանքն. այլոց ընդ առաջ ընթացեալ գաս,
և կինն որ զկնի փութացեալ գայր 'ի բաց հալածես ։
Իմա՛ց զբժշկին զիմաստութիւնն. "Նա և պատասխա-
նի ոչ տայր նմա" ։ Վասն է՞ր ոչ տայր. ոչ եթէ 'ի բանսն
հայէր, այլ զանհերևոյթ միտսն քննէր ։ Ոչ տայր նմա
պատասխանի ։

Իսկ ապա իբրև ոչ առնոյր վճիռ, մատեան աշակերտք
նորա և ասեն ցնա. "Արձակեա զկինդ, զի հանապազ
աղաղակէ զկնի մեր" ։ Իսկ ապա նա զինչ ասէր. դուք
արտաքին ձայնին միայն լսէք, իսկ ես զներքին խոր-
հուրդսն քննեմ. մեծ է բարբառ սրտին քան զաղաղակ
բերանոյն ։ Արձակեա զնա, զի աղաղակէ զկնի մեր ։ Իսկ
միւս աւետարանագիրն "առաջի մեր" ասէ ։ Ընդդէմ
միմեանց է ասացուածն, այլ ոչ ստեն և ոչ զմի. զերկո-
սեանն առնէր կինն ։ Նախ յառաջ զկնի աղաղակէր.
իսկ յորժամ չտայրն պատասխանի, առաջոյ կուսէ գայր
անցանէր, իբրև չուն լրբեալ լիզոյր զոտս տեառնն իւ-
րոյ ։ "Արձակեա, ասեն, զնա". տեսողս ժողովէր, հրա-
պարակս կուտէր. զմարդկեղէն ամօթն տեսանէին նոքա
և ասէին. իբրև զմեծ մարդասէր տուր փրկութիւն կը-
նոջն. արձակեա զնա, զի աղաղակէ զկնի մեր ։ Իսկ ա-
պա զինչ տայր պատասխանի Յիսուս առ այն. "Ոչ ա-
ռաքեցայ ես առ ոք. բայց միայն առ մոլորեալ ոչխարս
տանն Իսրայէլի" ։ Իսկ յորժամ առնէր պատասխանի,
ևս չար զայրացուցանէր զվէրսն. բժիշկ էր զի հատցէ,
ոչ զի բաժանեսցէ, այլ զի ամփոփեսցէ ։

Այլ աստ ունկնդիր լերուք ինձ մտադիւրութեամբ.
և պատրաստեցէք զմիտս ձեր. խնդիր է 'ի խոր, քննել
կամիմ ։ "Ոչ առաքեցայ ես առ ոք, բայց միայն առ ոչ-
խարս կորուսեալս տանն Իսրայէլի" ։ Ա՞յս է ամենայն.
վասն ա՞յսորիկ մարդ եղեր մարմին առեր, այնչափ տես-
չութիւնս գործեցեր, զի զմի միայն անկիւն երկրի ապ-

բեցուսցես, և զայլս կորուսեալս անտես արասցես. և այսպէս աշխարհք ա՟մ զրկեսցին, սկիւթացիք, թրակացիք, հնդիկք, մարք, կիլիկեցիք, Գամիրք, Ասորիք, փիւնիկեցիք և որչափ երկիր ՚ի ներքոյ երկնից և արեգական է։ Եւ վասն Հրէից միայն եկիր, և զհեթանոսս կորուսեալս անտե՞ս արասցես, և ոչ փոյթ արասցես վասն ծխոյն ձէնձերոյ, և անփոյթ արասցես վասն թշնամանողաց հօր քո և կռոցն երկրպագուաց և զգիւաց պատուիչս։ Ապա ընդէ՞ր ասիցէ նահապետն քո ըստ մարմնոյ՝ եթէ "Խնդրեա յինէն և տաց քեզ զհեթանոսս ՚ի ժառանգութիւն, և իշխանութիւն քեզ զամենայն ծագս երկրի". Նոյնպէս և Եսայի սրովբէից տեսող վկայէ և ասէ. "Եղիցի, ասէ, արմատն Յեսսեայ, որ կանգնելոց իցէ իշխան հեթանոսաց. ՚ի նա հեթանոսք յուսասցին". Իսկ Յակոբ ասէ. "Ոչ նուազեսցէ իշխան Յուդայ և մի պետ յերանաց նորա մինչև եկեսցէ այն որում պատրաստեալն իցէ, և նա է յոյս հեթանոսաց". և Մաղաքիաս ասէ՝ թէ "Ի ձեզ փակեսցին դրունք պղնձիք, և ոչ փոխեսցեն որ առաջի կայ նոցա. յարևելից մինչև ՚ի մուտս արևու անուն իմ փառաւորեալ է ՚ի հեթանոսս, և յամենայն տեղւոջ պատարագ մատչի անուն սուրբ պատարագ". Իսկ Դաւիթ. "Ամենայն ազգք, ծափս հարէք, աղաղակեցէք առ ա՟ծ ՚ի ձայն ցնծութեան. զի տէր բարձրեալ և ահաւոր, թագաւոր մեծ ՚ի վերայ ամենայն երկրի. համբարձաւ ա՟ծ օրհնութեամբ և տէր մեր ձայնիւ փողոյ". և միւսն ևս. "Ուրախ լերուք հեթանոսք ընդ ժողովրդեան նորա"։ Եւ յորժամ եկիր ոչ վաղվաղակի զմոգսն կոչեցեր, զգլխաւորականսն հեթանոսաց, զբանութիւնն սատանայի, զզօրութիւնն դիւաց։ Ո՞չ իջեր և մարգարէս կոչեցեր զնոսա։ Դու զմոգսն կոչես, և մարգարէքն վասն հեթանոսաց ասէին. յարուցեալ ՚ի գերեզմանէ ասես ցաշակերտսն "Երթայք աշակերտեցէք զամենայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ". և արդ կինն յորժամ եկեալ չուառական և տառապեալ վասն դստերն իւրոյ աղաչէր և զվիշտսն պաղատէր, յայնժամ ասես. "Ոչ առաքեցայ ես առ այլ, բայց միայն առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի"։ Եւ յորժամ հարիւրապետն մատչէր առաջի, ասէիր

Digitized by Google

“Ես եկից և բժշկեցից զնա”, յորժամ աւազակին՝ թէ “Այսօր ընդ իս իցես ՚ի դրախտին”, յորժամ անդամալուծին “Առ զմահիճս քո և երթ ՚ի տուն քո”, յորժամ Ղազարուն ասէիր “Ղազարէ, եկ արտաքս”, և ելանէր չորեքօրեայն արտաքս։ Զբորոտս սրբես, զմեռեալս յարուցանես, զանդամալոյծս հաստատես, զկոյրս բժշկես, զաւազակս փրկես, զպոռնիկն քան ըզկոյսն զգաստագոյն առնես, և նմա ինչ ոչ տաս պատասխանի։ Զի՞նչ էր նորա օրինակն. զի՞նչ իցեն զարմանքն և սքանչելիքն։

Հայեաց բարեքէրկ, զի ուսցիս զկնոջն քաղցրութիւնն և զտեառնն զխմաստութիւնն և զհոգաբարձութիւնն. զի գիտասցես զառ ՚ի յապայ օգուտն, զի ուսցիս զչառնուլն յանձն՝ մեծութիւն տուչութեան շնորհէր. զի յորժամ աղօթիւք խնդրեսցես և չառնուցուս, մի երբեք ձանձրանայցես և հեռասցիս։ Այլ հայեաց և ունկըն դիր սրտի-մտօք, զի յորժամ յեգիպտացւոց բանութենէն հրաժարեցին հարքն և ՚ի ձեռաց փարաւոնի ապրեցան, ընդ անապատն երթային և կամէին մտանել յերկիրն քանանացւոց ՚ի կռապաշտ մարդկանն և յամբարշտաց, առ երկրպագուսն քարանց, առ պաշտօնեայս ծառոց բագնում ամբարշտութեամբ լի, պատուէր տայր նոցա Տէր զայս օրէնս և ասէր. “Մի առնուլ յորդւոցն նոցա փեսայ և մի տալ զդստերս իւրեանց հարսունս նոցա, մի վաճառ առնել ընդ նոսա ոսկւով և մի հաղորդել ընդ նոսա սեղանով և մի միաբանել ընդ նոսա և մի ինչ յայնպիսի իրաց. զի ամբարիշտ է ազգն, տանիմ զքեզ անդր ժառանգ նոցա”։ Օրէնս տայր նոցա և ասէր. մի գնեսցես ՚ի նոցանէ և մի վաճառեսցես նոցա, մի կին առցես և մի վարձանս տայցես. այլ բնակեսջիր տեղօք մօտ առ նոսա, և կարգօք բաժանեալ լիջիր։ Մի ինչ հաղորդել քեզ ընդ նոսա, մի վաճառ առնել, մի գնել և մի գնոյ տալ, զի մի հարազատութիւն բարեկամութեն յամբարշտութե գլորումն պատրաստեսցէ. այլ թշնամի լիջիր ընդ նոսա։ Մի ինչ լիցի քո հաշիւ ընդ քանանացիսն. մի ոսկի ՚ի նոցանէն առցես և մի արծաթ և մի հանդերձ, մի զդուստր քո նոցա հաստատեսցես, և մի որդւոյ քում ՚ի նոցանէ կին առցես, այլ միայն առանձինն զատեալ և որոշեալ կեցցես. լեզու յազգս ունիս որով որոշել

կարիցես. և օրէնք տուան քեզ, վասն որոյ և օրէնք իսկ ցանգ կոչին. որպէս և այգւոյ շուրջ ցանգ ածեալ, այնպէս և Հրէից օրէնքն, զի մի անցեալ խառնակիցին ընդ քանանացիսն։ Քանզի ամբարիշտք էին խառնակ ապականութեամբ յօրէնս բնութեան. կուռս երկրպագուք՝ քարանց և փայտից, զա̃ծ թշնամանողք, որդւոց և դստերաց զոհիչք, հօր և մօր անարգիչք, յամենայն ինչ փախեալք, յամենայնի այլայլեալք 'ի դիւաց պաշտմանց. վասն այնորիկ շուրջ օրինօք պարսպեաց զնոսա իբրև ցանգով՝ որ ասէ, թէ "Այգի տնկեցի և ցանկով պարսպեցի„. օրինօքն, ոչ եթէ փշովք, այլ պատուիրանօք որով փակէր և որոշէր զնոսա։ Անարգք էին քանանացիքն և գարշելիք, ամբարիշտք և պիղծք, ժանտք և աղտեղիք. զի պատասխանի անգամ գարշէին նոցա տալ Հրեայքն որք զօրէնսն պահէին և կատարէին։ Քանզի և կինն այն 'ի քանանացւոց էր. "Եւ ահա կին մի, ասէ, 'ի սահմանացն նոցա ելեալ„ գայր և անկանէր առաջի Քրիստոսի, և Քրիստոս ասէր. "Ո՞վ ոք 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց„ եթէ անցեր երբեք ըստ օրէնսն։ Քանզի մարդ էր և զմարդկան հանդէս ցուցանէր։

Ունկնդիր լերուք բանիս զգուշութեամբ, թող անկից զոստայնս 'ի չափու։ Քանզի կինն քանանացի էր և 'ի սահմանացն նոցա, անդ էր կատաղութիւն և մոլեգնութիւն և ամբարշտութիւն, և բնութիւնք բանսարկուին և դիւաց մոլեգնութիւնք, և բնութիւնք խառնակութեան, և յանմտութիւն անասնական իջեալք, 'ի դիւաց կատաղութիւնս. վասն այնորիկ չհրամայէր նոցա մերձենալ 'ի քանանացիսն. վասն նորին իսկ և ցանգով փակէր զնոսա. իսկ իբրև եկն Քրիստոս ընդ մարդկան, առ զէն և վաղվաղակի թլփատեցաւ, պատարագ մատոյց, և զայլ ևս զամենայն ինչ արար և կատարեաց, քանզի կամէր լուծանել զօրէնսն, և զի մի ասիցեն՝ եթէ ոչ կարաց կատարել զնա՝ վասն այնորիկ եղծ զնա, նախ կատարեաց և ապա եղծ. զի մի կարծիցես եթէ չէր բաւական, աղաղակէր և ասէր՝ թէ "Ո՞վ 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց„։ Եւ վասն զի օրէնքն չհրամայէին մերձենալ առ քանանացիս, զի մի սկսցին մեղադիր լինել և ասել Հրեայքն՝ վասն այնորիկ ոչ հա-

ւատացաք 'ի քեզ, զի անօրէն ես և լուծեր զօրէնսն, յաշխարհն քանանացւոց մտեր և ընդ քանանացիսն խառնակեցար, յորում օրէնքն չհրամայէին խառնակել: Վասն այնորիկ ոչ տայր պատասխանի: Տես որպէս դատախազէ զօրինացն և ոչ խափանէ զփրկութիւն, զՀրէայս ըմբերանէր և զկինն սփոփէր: "Եւ պատասխանի ոչ տայր,,: Մի՞ ինչ պատճառէք, ասէ. ահա չխօսիմ, ահա չտամ պատասխանի. ահա նեղութիւն և զիմ հանդէս ոչ ցուցանեմ, ահա ընկղմումն և նաւավարս 'ի միջի ոչ ցածուցանեմ զալիս վասն ձերոյ զլացման, զի մի պատճառս ունիցիք: Ահա կինն զբազմութիւնս տեսողաց շուրջ առ իս ժողովեաց և չառնու պատասխանի, զի մի ասիցէք թէ յօժարէ 'ի քանանացիսն և անց զօրինօք, և զայն պատճառս դնիցէք առ 'ի չհաւատալ յիս: Վասն այնորիկ չտայր կնոջն պատասխանի, զի ձայն զլացման լինէր 'ի Հրէայսն:

Եւ զայն առնէր ոչ իբրև նմա այն վայելէր, այլ վասն նոցա խնամարհէր: Քանզի և յորժամ զբորոտն սրբէր՝ ասէր. "Երթ մատո զպատարագն քո զոր հրամայեաց Մովսէս,,: Աքանչելի իրք. դու սրբեցեր և առ օրէնսն Մովսիսի յղես: Այո, ասէ: Ընդէ՞ր. վասն Հրէիցն, ասէ, զի մի սկանդիցին մեղադիր լինել թէ անցի զօրինօքն: Օ խորգ. յորժամ բժշկէր զբորոտն՝ այլ ազգ ինչ բժշկէր. "Ահա, ասէ, բորոտ մի անկեալ առաջի նորա աղաչէր զնա և ասէր. տէր, եթէ կամիս, կարող ես զիս սրբել: Ձգեաց զձեռն իւր, հասոյց 'ի նա և ասէ. կամիմ, սրբեաց,,: Ըստ օրինացն չէր պարտ մերձենալ 'ի բորոտն: Օ ի յորժամ գայր զօրագլուխն՝ Նեեման ասորի առ Եղիսէ մարգարէ բորոտութեամբ լի, ասէ ցնա աշակերտն իւր. ահաւանիկ զօրագլուխն արտաքոյ կայ: "Երթ, ասէ, և ասա ցնա՝ թէ երթ լուա 'ի Յորդանան գետ,,. և արտաքս չիշխէր ելանել և տեսանել զբորոտն և մերձենալ 'ի մարմին նորա: Սրբէր Եղիսէ զբորոտն, վասն զի սրբելոց էր տէր մեր ըզբորոտութիւն և զմեզս, զի մի կարծիցեն Հրէայքն թէ նման Եղիսէի սրբէ, նա չիշխեաց մերձենալ, իսկ սա մերձեցաւ. "Կամիմ, ասէ, սրբեաց. և ձգեաց զձեռն իւր և մերձեցաւ 'ի բորոտն,,: Եւ ընդէ՞ր ձգեաց. զի զքեզ ուսուսցէ թէ ոչ է ծառայ ընդ իշխանութեամբ

օրինաց, այլ տէր և իշխան օրինացն։ Որպէս պահեաց զօրէնսն. “կամիմ, ասէ, սրբեաց. և վաղվաղակի սրբբեցաւ 'ի նմանէ բորոտութիւնն”։ Որպէս զի ոչ գտանէր զարագութիւն իրացն ասել աւետարանիչն, ասէ զվաղվաղակին յարելով. ոչ կարէ գտանել զբանն համդէպ փութոյն, և ոչ հրամանին զարագութիւնն։ Որպէս զիա՞րդ “վաղվաղակի”. ելանէր բանն և փախըստական լինէին ախտքն, մերժէր բորոտութիւնն և լինէր սուրբ բորոտն։ Վասն այսորիկ ասէր՝ թէ “Երթ ցոյց զքեզ քահանային, և մատո զպատարագն զոր հրամայեաց Մովսէս 'ի վկայութի՛ւն նոցա”։ Ո՞ւմ. Հրէիցն, զի մի՛ ասիցեն թէ անցի ըստ օրէնսն։ Ես բժշկեցի, ասէ, և ես հրամայեմ մատուցանել զպատարագն ըստ օրինացն, զի յայնմ աւուր յարուցեալ կայցէ բորոտն դատախազ զնոցանէ՝ թէ ինձ հրամայեաց ըստ օրինացն մատուցանել զպատարագն։ Քանզի բազում ինչ վասն Հրէիցն առնէր, նոյնպէս և անդ։

“Աղօթեաց ինձ, ասէ, զի դուստր իմ չարաչար մոլեգնի. և նա ոչ ինչ տայր պատասխանի։ Յառաջ մատուցեալ աշակերտքն նորա և ասէին ցնա. արձակեա զսա զի աղաղակէ զկնի մեր”։ Իսկ ապա նա զի՞նչ ասէր. “Ոչ առաքեցայ ես ուրեք, բայց առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի”։ Իսկ զի մի՛ ասիցեն՝ թէ զմեզ թողեր և այլոց չոգար, և վասն այնորիկ չհաւատացաք 'ի քեզ, ահաւասիկ 'ի հեթանոսաց գան առ իս և չընդունիմ և 'ի ձեզ փախստականս լեալ հալիմ. “Եկայք առ իս որ վաստակեալդ և ճգնեալք էք”. և չգային։ Ընդ այս այպնեալ զարմանայր մարգարէն. “Ժողովուրդ զոր ոչ ծանեայ, ծառայեաց ինձ և 'ի լուր ականջաց լուաւ ինձ։ Յայտնի եղէ որք զիս ոչն խնդրէին, գտայ որք զիս ոչն ճանաչէին”. ուստի և քանանացին։ “Արձակեա զնա զի աղաղակէ զկնի մեր”։ Տեսցուք զի՞ ասէ. “Ոչ առաքեցայ ես առ ոք, բայց միայն առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի”։ Ոչ միայն 'ի բաց մերժելոյ էին բանքն, և չասէր թէ 'ի բաց կաց, այլ եթէ ոչ ինչ ունիս հաղորդութիւն առ իս. ոչ եկի վասն քո, այլ վասն Հրէիցն եկի. “Ոչ առաքեցայ ես առ ոք, բայց միայն առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի”։

Իսկ կինն իբրև զայն լսէր, գայր անկանէր, երկիր պա-

Digitized by Google

գանէր և ասէր . " Տէր օգնեա ինձ ,, : Եւ նա ոչ տայր պատասխանի . այլ տես զպատասխանին . " Ոչ , ասէ , բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց ,, : Ո՛վ հոգաբարձութիւն բժշկին , յանձն չառնլով՝ զնա յինքն ամփոփէր . " Ոչ է բարւոք , ասէ , առնուլ զհաց մանկանց և արկանել շանց ,, : Զո՞ր մանկանց . զՀրէից : Այս Հրէից ամօթ էր . զի մանկունք յորջորջելով շունք կոչեցան , զորմէ և առաքեալ ասէ . " Տեսէք զշունսն , տեսէք զչար մշակսն . զգոյշ լերուք 'ի կրճատական սպարծանաց անտի ,, : Զի նոքա էին որ 'ի թլփատութենէն էին . իսկ հեթանոսք շունք կոչեցան , և եղեն որդիք : " Որդիք իմ , ասէ , զորս դարձեալ վերստին երկնեմ , մինչև նկարեսցի Քրիստոս 'ի ձեզ ,, : Գոլութիւնն՝ Հրէից յամբաստանութիւն է : " Ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց ,, : Եւ ապա կինն զինչ տայր պատասխանի . " Այո , ասէ , տէր ,, : Ո՛վ բռնութիւն կնոջ , ո՛վ յամառութիւն անձինն . բժիշկն ոչ ունի յանձին , և կինն ասէ՝ այո տէր : Ոչ էր լիրբ և անամօթ , այլ զփրկութիւնն կամէր ստանալ : " Ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց ,, : Եւ նա զինչ ասէր . այո տէր . շուն կոչես զիս , բայց ես զքեզ աղաչեմ . դու թշնամանես զիս , իսկ ես զքեզ փառաւորեմ : " Այո տէր , զի և շունք կերակրին 'ի փշրանաց սեղանոյ տեառն իւրեանց ,, : Ո՛ իմաստութիւն կնոջն . յառակէն իմանայր զբանն : Շուն կոչես զիս , իբրև զշուն կերակրեա զիս . ոչ հրաժարեմ 'ի թշնամանացդ , ընկալայց զկերակուր շանց . և ասէր իրս ինչ որ ըստ սովորութեանն լինէր : Դու զքո բանդ հաստատեա . շուն կոչեցեր զիս , տուր ինձ փշրանս . ջատագով եղեր խնդրոյն իմոյ՝ չունելով յանձին , գտնեա զոր առերդ յանձն՝ զայդ տուր : " Այո տէր , զի և շունք կերակրին 'ի փշրանաց սեղանոյ տեառն իւրեանց ,, :

Եւ ապա զինչ արդեօք , որ չունէրն յանձին , որ հալածէրն , որ վարատէրն , որ ասէրն թէ " ոչ է բարւոք առնուլ զհաց մանկանց և արկանել շանց ,, , որ ասէրն " ոչ առաքեցայ ես առ ոք , բայց առ ոչխարս կորուսեալս տանն Իսրայէլի ,, : " Ո՛վ կին դու ,, : Գովի՛չ վաղվաղակի լինիս , քարոզի՛չ նորա ցուցանիս . ո՞չ հալածէիր , ո՞չ 'ի բաց մերժէիր : Նման այնորիկ զայն առնէր իսկ . Զի եթէ 'ի

ողորմութիւն է, ամենայն ինչ դիւրին է։ Թէպէտ և արտաքոյ իցես, աղաղակեա և ասա՝ ողորմեաց ինձ. թէպէտ ոչ շարժիցես զշրթունս, այլ մտօք աղաղակեսջիր. քանզի և լուռ շրթանց լսէ ա̄ծ. ոչ խնդիր է տեղւոյ, այլ բարուց։

Քանզի և Երեմիա մինչդեռ 'ի գուբ տղմոյն կայր, զա̄ծ յինքն ձգէր. Դանիէլ 'ի գուբ առիւծուցն էր, և զա̄ծ ընդ իւր հաշտեցուցանէր. երեք մանկունք 'ի մէջ հնոցի հրոյն, և զա̄ծ յօգնականութիւն կոչէին. աւազակն 'ի խաչին, և ոչ խափանէր զնա խաչն, այլ բանայր՝ նմա զդրախտն. Յոբ յաղբեան կայր, և զա̄ծ 'ի քաւութիւն պատրաստէր։ Թէ 'ի բաղանիս իցես, յաղօթս կացջիր. տաճար ես ա̄յ, մի՛ խնդրեր տեղի. միայն զմիտս ուղիղս խնդրէ ա̄ծ։ Եթէ առաջի դատաւորի կայցես, աղօթս մատուսջիր։ Ծովն առաջի էր և զկնի եգիպտացիքն և Մովսէս 'ի մէջ նոցա. նեղ էր տեղի աղօթիցն, այլ լայն և ընդարձակ էին աղօթքն։ Զկնի անկեալ եգիպտացիքն զհետ երթային, և 'ի միջին աղօթքն, և Մովսէս չբարբառէր, և ասէր ցնա ա̄ծ. «Զի՞ աղաղակես առ իս». ոչ ինչ աղաղակէր, և նա ասէր՝ զի՞ աղաղակես. բերանովն չբարբառէր, բայց սրտիւն աղաղակէր։ Եւ դու յորժամ կայցես առաջի բռնաւոր և մոլեգին դատաւորին և կամ առաջի դահճաց, յաղօթս կաց առ ա̄ծ, և աղօթքն զալիս բարկութեանն ցածուցանեն։ Դատաւո՞րն առ քեզ դիմեալ, և դու առ ա̄ծ ապաստանեալ. իշխա՞նն հուպ առ քեզ, և դու առ տէրն քո կարդա։ Մի՞ թէ մարդ իցէ զի երթիցես տեղւոյ 'ի տեղի. ա̄ծ յամենայն ժամ մերձ է թէ կամիցիս կարդալ առ նա։ Զմարդոյ հարցանես թէ զի՞նչ գործէ, 'ի քուն կայ՝ ասեն. զի՞նչ առնէ, չպարապէ՝ ասեն. և որ սպասաւորն իցէ, չկամիցի տալ պատասխանի։ Իսկ առ ա̄ծ ոչ այնպէս. զի ուր և երթիցես և կարդայցես առ նա, վաղվաղակի լսէ քեզ. ոչ դուռն և ոչ բարապան և ոչ միջնորդ և ոչ սպասաւոր. ոչ կարես ինչ խափան գտանել առ 'ի նմանէ։ Բայց ասա միայն՝ ողորմեաց ինձ, և ա̄ծ մերձենայ առ քեզ. զի «Մինչչև ես աղաղակեալ իցէ քո առ իս, ասացից եթէ ահաւասիկ եմ»։ Ո՛վ բան լի ընտանութեամբ։ Ես տամ քեզ, ասէ, կատարել զաղօթսն, և առնուս վաղվաղակի զհատուցումն։

Նմանողք եղիցուք կնոջն քանանացւոյ որ ասէր՝ ողորմեաց ինձ, զի դուստր իմ՝ չարաչար մոլեգնի։ "Ով կին դու, մեծ են հաւատք քո. եղիցի քեզ որպէս և կամիցիս դու"։ Ո՞ւր իցեն հերետիկոսքն. միթէ ասա՞ց եթէ թող աղաչեցից զհայր կամ ողոքեցից զծնողն իմ. աղօ՞թք ինչ պիտոյ եղեն. ոչ։ Ընդէ՞ր. քանզի մեծ էին հաւատքն, մեծ էր ամանն և մեծ շնորհս ընկալաւ։ "Ով կին դու, մեծ են հաւատք քո"․ զի ոչ զմեռեալս յարուցանել տեսեր, ոչ զբորոտս սրբել, ոչ 'ի մարգարէից ուսեալ և ոչ յօրինաց տեղեկացեալ, ոչ զծով տեսեր սանձեալ. թշնամանեցար յինէն և անգոսնեցար. յուսահատ արարի զքեզ, և դու ոչ հեռացար, այլ կացեր և համբերեցեր։ "Ով կին դու, մեծ են հաւատք քո"։

Եւ արդ մուտ յեկեղեցի 'ի Պարսից, լուես զնմանէ զի ասէ՝ թէ ով կին դու, մեծ են հաւատք քո. նոյնպէս 'ի Գոթաց, 'ի բարբարոսաց, 'ի հնդկաց, 'ի Մաւրոսաց[1] և ընդ ամենայն աշխարհ որ 'ի ներքոյ արեգական են՝ ոչ ինչ այլ պատմեն, բայց զոր Քրիստոսն ասաց, և ոչ լուի բանն որ ասէ՝ թէ "Ով կին դու, մեծ են հաւատք քո. եղիցի քեզ որպէս և կամիս"։ Եւ ոչ ասաց՝ եթէ բժշկեսցի դուստրն քո, այլ թէ որպէս կամիս բժշկեա. լեր բժիշկ. քեզ տամ արկանել ձեռն 'ի դեղն, երթ դու դիր, "եղիցի քեզ որպէս և կամիս"․ կամքդ քո բժշկեսցեն զնա։ Քանանացի կինն կամօք բըժըշկէր, և որդին ա̃յ կամօք ո՞չ բժշկեսցէ։ "Եղիցի քեզ որպէս և կամիս"։ Ոչ հրամայէր կինն և ոչ սաստէր դիւին. այլ կամէր միայն, և կամք կնոջն բժշկէին և զցաւն հանէին։

Ո՞ւր իցեն այնք որք իշխեն ասել եթէ 'ի ձեռն աղօթից Քրիստոս կատարէր զայն. "Եղիցի քեզ որպէս և կամիս"։ Տես զզօրութիւն բանին թէ որպէս և զխարդ հօրն իւրոյ նմանէ. զի յորժամ զերկինս առնէր ա̃ծ, ասաց՝ եղիցի երկին, և եղև երկին. եղիցի երկիր, և եղև երկիր. և եղիցի արեգակն, և եղև արեգակն։ Հրամանաւ զօրութիւնն հաստատէր։ Եւ նա նոյնպէս ասէր. "Եղիցի քեզ որպէս և կամիս"․ մերձաւորութիւն բանին զմիաբանութիւն բնութեանն եցոյց։ "Եւ զի-

1 [illegible] կամ [illegible]։

նայնոցն տեսութիւն, այլ կարօտանայ օժանդակին իւրում: Արասցուք այսուհետեւ որպէս առնեն որ զԹագաւորական ապարանսն ցանկան տեսանել: Եւ զինչ առնեն նոքա. խնդրելով որք զբանալին դրացն ունիցին, եւ առ նա մերձեցեալք խօսին եւ աղաչեն, բազում անգամ արծաթ եւս ընծեռեն, որպէս զի տացէ նոցա ըզշնորհն: Մերձեսցուք եւ մեք առ մի ոք որ զերկնային դրունսն ունին, խօսեսցուք պաղատեսցուք, փոխանակ արծաթոյ յօժարութիւն ցուցցուք եւ ճշմարիտ սէր: Եւ եթէ զայն վարձ տացէ նա՝ զձեռանէ ունելով զմեզ ամենայն ուրեք շրջեցուսցանէ. ոչ ցուցանէ զապարանսն միայն, այլ զնոյն ինքն զԹագաւորն նստեալ եւ զզօրսն ամենայն մօտակայս նմա, զզօրապետսն մերձ եւ զբիւրաւոր զհրեշտակսն, զհազարս հրեշտակապետացն զամենայն մեզ ցուցանէ հաւատեաւ՝ որպէս մեզ տեսանել կարողութիւն է:

Եւ ո՞վ ոք է նա որ զայն մասն հաւատացաւ, ընդ որ ախորժեմքն մեք մտանել: Եսայիաս մեծաձայն քան զամենայն մարգարէս. ընդ նմա հարկ է այսուհետեւ խօսել: Այլ զհետ եկայք հանդարտ յարմարութեամբ եւ հանդերձ բազում հեզութեամբ գնալ. մի ոք հոգս ունելով աշխարհականս մտեսցի, մի ոք զբօսեալ եւ մի զարհուրեալ. այլ զայս ամենայն արտաքոյ դրացն դնելով բոլորեքումբք այնպէս մտցուք 'ի ներքս, որպէս յաւէտ խաղաղութեամբ է լի եւ անձայն խորհրդովք: Արդ հայեցարուք, վասն զի գրոց ընթերցումն երկնից է բացումն:

"Եւ եղեւ 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիաս Թագաւոր, տեսի զՏէր նստեալ յաթոռ բարձր եւ վերացելոյ,,: Տեսեր զբարեբարոյ ծառային զՏէր. վաղվաղակի զմեզ առ աթոռն Թագաւորական եմոյծ. ոչ ընդ հեռաւոր ճանապարհս յառաջագոյն ածելով, այլ միանգամայն զդրունսն բանալով դէմ յանդիման զԹագաւորն նստեալ եցոյց: "Եւ սերովբէք, ասէ, կային շուրջ զնովաւ, վեց թեւք միոյ եւ վեց թեւք միոյ. երկուքն ծածկէին զերեսս եւ երկուքն զոտս, եւ երկուքն թռուցեալ աղաղակէին ընկեր առ ընկեր եւ ասէին. սուրբ սուրբ սուրբ տէր սաբաւովթ,,: Ճշմարտապէս սուրբ է, որ այնպիսի խորհրդոց արժանի արար զբնութիւնս մեր, եւ

այնպիսի անճառելեաց արար զմեզ հաղորդս ։ Սարսուռ զիս առնու և դողումն 'ի մէջ երգոցն այնոցիկ ։ Այլ զինչ հրաշալիք, եթէ զկաւեղէնս և որ յերկրէ եմք, մինչ զի և զնոսին իսկ զզօրութիւնսն զայնս զվերին զհրեշտակացն միշտ մեծ հիացումն ունի ։ Վասն այնորիկ դարձուցանեն զդէմսն, և զթևսն փոխանակ պարսպի արկանեն յառաջի՝ ոչ հանդուրժելով բերել զճառագայթսն որ անտի արձակէին, թէպէտ և խոնարհութիւն էր երևելն ։

Այլ զխորհուրդ ոչ ժուժային ։ Ո՞րչափ զայդ ասես . ասա որք զանճառելի և զերանելի զբնութիւնն հարցաքննեն, որք յանխիզխելիսն յանդգնին ։ Սերովբէքն և ոչ զխոնարհութիւնն զայն կարացին տեսանել. մարդ համարձակիցէ՞ ինչ ասել, մանաւանդ զմտաւ ածել իշխեսցէ՞ զբնութիւնն զայն զմաքուր, և կամ կարիցէ՞ յայտնապէս և հաստատուն գիտել ։ Զարհուրեցէր երկինք, և հիացիր երկիր . մեծագոյն քան զայս է նոցա յանդգնութիւն . զի զոր յայնժամ ամբարշտէին նոքա, զնոյն և այժմ ամբարշտեն սոքա ։ Արարածոց երկիր պագանեն . և զոր նմանապէս զմտաւ ածեն սոքա այժմ, ոչ ոք 'ի մարդկանէ ոչ ասել և ոչ լսել յանդգնեցաւ ։ Զինչ ասես, նուաստութիւն էր երևելն այ՟ . առ խոնարհութեան ։ Այլ եթէ որ յոլով համարձակութի՛ւն ունէր առ ած՟ Դանիէլ, զհրեշտակն որ առ նա խոնարհեցաւ՝ ոչ հանդուրժեաց տեսանել, այլ գլորեցաւ և 'ի բերանս անկեալ կայր, և ամենայն յօդք մարմնոյ նորա 'ի դիմացն 'ի յայնմանէ էին լուծեալք, զի՞ զարմանաս եթէ սերովբէքն հիանային և ոչ կարէին զփառսն զայն տեսանել ։ Զի և ոչ այնքան 'ի Դանիէլէ է առ հրեշտակս միջոց՝ որքան յայ՟ առ զօրութիւնսն այնոսիկ ։ Բայց զի մի և մեք առաւելապէս 'ի հիացումնս յայսոսիկ դեգերելով 'ի թմբրութիւնս արկանիցեմք զձեր անձինսդ, բեր անդրէն 'ի սկզբան պատմութեանն դարձցուք՝ ծանծաղագոյն պատմութեամբքն առաջնորդելով ձեզ ։

“Այլ եղև 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիաս թագաւոր„ ։ Պարտ և արժան է յառաջագոյն խնդրել ընդէ՞ր արդեօք զժամանակն մեզ մարգարէս նշանակէ . զի ոչ վայրապար և ընդունայն զայս առնէ ։ Վասն զի մարգարէիցն բերանք այ՟ բերանք են, և այ՟ բերան ոչ վայ-

րապար ինչ ասէ ։ Մի՛ լուիցուք և մեք վարկպարազի ։ Զի եթէ որք զոսկին հանեն և ոչ զգուշանայցեն փոշին արհամարհեն, այլ յորժամ զոսկւոյն երակացրուան հարկանիցեն՝ գիտեն հաւաստեաւ զօձանսն, որչափ և ս մեզ 'ի գիրսն առնել զայս է արժան ։ Այլ սակայն յակեհանմն յոյժ դժուարալի խնդրելեացն է գիւտ. վասն զի և փոխուածն ոսկւոյն քան զլինելն ոսկի ոչ այլ ինչ է՝ բայց երկիր, և հաւաստութիւն բնութեանն գաղանայ զխնդրողացն դէմն. և սակայն ոչ այնպէս 'ի բաց կան նոքա, այլ զամենայն հաւաստութիւն ցուցանեն, և գիտեն ճշմարտապէս զինչ է երկիր, զինչ է ոսկի ։ Իսկ 'ի գիրս ոչ է այսպէս. զի և ոչ ընդ երկրի խառնակեալ կայ ոսկի, այլ մաքուր է ոսկին. "Արծաթ հրացեալ ընտրեալ յերկրէ,,: Այլ ոչ են ոսկեհանաց գործոց իմիք կարօտեալ գիրք, այլ զանձ պատրաստական ընձեռեն խնդրողացն զընչեղութիւն ։ Նաւական է 'ի վերայ կալն միայն և իմանալն, և զքարանցն վաղվաղակի տեսանեն զպայծառութիւնն ։

Այսոքիկ ինձ ոչ վայրապար ասացան, և ոչ վարկպարազի զբանս զայսոսիկ երկարեցի, այլ վասն զի են ոմանք 'ի մարդկանէ անպարուեստք՝ որք յորժամ զմծայլն գիրս 'ի ձեռն առնուն, և թիւս ժամանակաց 'ի կարգի կացեալս տեսանեն և անուանս, զանց առնեն վաղվաղակի. և որք սոսկանենն՝ ասեն ցնոսա, անուանք են և ոչ ինչ ունին պիտանացու ։ Զի՞նչ ասես. ա͞ծ խօսի, և դու ասես ո՞չ են պիտանացու ասացուածքս ։ Այլ եթէ զսոսկ վերագիր միայն տեսանիցես և ո՞չ 'ի վերայ անցեալ կայցես փութով, և որ 'ի ներքս գանձն կայցէ ո՞չ յուզիցես ։ Այլ զի՞նչ ասիցեմ ժամանակս և վերագրութիւնս և անուանս. ուսիր որքան զօրութիւն ունի և միոյ գրոյն յաւելուած, և դադարեցիր յարհամարհելոյ զբովանդակ անուանսն ։ Հայրապետն մեր Աբրահամ, վասն զի մեզ առաւել քան եթէ Հրէիցն յարմարի, նա Աբրամ կոչեցեալ էր յառաջագոյն. որ թարգմանեալ լինի անցանող, և զկնի այնորիկ Աբրահամ անուանեցաւ և հայր ամենայն ազգաց. և միոյ գրոյն յաւելուած այնքան արդարոյն զիշխանութիւն ընձեռեաց ։ Զոր օրինակ թագաւորք ոսկի տախտակս կարկառեն իշխանացն որք ընդ իւրեամբք են՝ զնշանակ իշխանու-

թեանն, նոյնպէս և ինձ արդարոյն այնմիկ յայնժամ նշանակ պատուոյն ետ զգլխոյն զայն։

Բայց յաղագս անուանցն յայլում ժամու. իսկ որքան շահ է զժամանակն խնայել և որչափ վնաս ոչ գիտելն՝ հարկաւոր է ասել. և նախ առաջին յաշխարհական իրացն յայտնապէս ցուցից ձեզ։ Կտակք գրեալք են որ յաղագս անուանութեան և վասն պարտուց և յաղագս այլոց վճռոց. եթէ ոչ զիշխանսն ժամանակն 'ի վերուստ ածնիցեն յառաջագոյն գրեալ՝ յամենայն 'ի զօրութէ իւրեանց ամայիք են։ Քանզի այս է նոցա ոյժ, այն որ զհակառակութիւնս 'ի բաց բառնայ և յատենից վճարէ և զթշնամիսն բարեկամ առնէ։ Յաղագս այսորիկ և գրելով զգլխոյն զայն, իբրև զճրագ 'ի վերայ աշտանակի՝ այնպէս 'ի վերայ ճակատու կտակին գրեն, զի երևեսցի ամենեցուն որ 'ի սորա գլուխ է. և եթէ զայն 'ի բաց բառնաս, ընդ նմին 'ի բաց բառնաս զլոյսն, և խաւար ամենայն և բազում խռովութեամբ լնու։ Նոյնպէս աղագաւ ամենայն տուրևառութիւնք և առ սիրելիս և առ թշնամիս և առ ծառայս՝ և եթէ գաւառապետս և տնօրէնս լինիցի, կարօտանայ այսմ զգուշութեան. և ամենայն ուրեք զամիս և զտարիս և զաւուրս 'ի սորա գրեմք։ Իսկ արդ եթէ յաշխարհականս այսքան է իրացն զօրութիւն, յա̃ծայինսն որչափ ևս առաւել մեծագոյն և պիտանացու. քանզի և զմարգարէութիւնս ցուցանէ մարգարէութիւն. զի և ոչ այլ ինչ է մարգարէութիւն, այլ հանդերձեալ իրացն նախաձայնութիւն։ Իսկ արդ որ զժամանակն անգիտանայ ասացելոց բանիցն և կամ պատահելոց իրացն, զիա՞րդ կարասցէ ցուցանել հակառակասիրին զմարգարէութեանն զարժանաւորութիւն։

Աստուստ մեզ և առ հեթանոսս հանդէպ և յաղթութիւնք՝ յորժամ երկրագործս զմերս երևեցուցանեմք քան զնոցայն. աստի մեզ և առ Հրեայս բազում ցոյցք յաղագս ճշմարտութեան են. առ Հրեայսն հէքս և թշուառականսն, որք յաղագս ժամանակաց անգիտութեան զմեծ սխալանսն յանցեան։ Քանզի եթէ էին լուեալ հայրապետին որ ասէր "Ոչ նուազեսցէ իշխան 'ի Յուդայ և ոչ առաջնորդ յերանաց նորա մինչև եկեսցէ յորում կայն մնայ", և պահեալ էր հաւա-

տեւու զգալստեանն ժամանակ, ոչ արդեօք հանդեր-
ձեալք էին անկանել 'ի Քրիստոսէ 'ի Նեռն ապաւի-
նելով : Որպէս և ինքն իսկ Քրիստոս ասաց յառաջա-
գոյն նոցա. « Եթէ ես եկի յանուն Հօր իմոյ և ոչ ըն-
կալայք զիս, եթէ այլ ոք եկեսցէ յանուն իւր՝ զնա ըն-
դունիցիք » : Տեսէ՞ք որքան յանցանք յանդիմանութենէ
ժամանակացն եղև : Արդ մի այսուհետև արհամարհեսջ-
ցես զայսքան օգտակարութիւնս : Զի զոր օրինակ սահ-
մանք և արձանք յանդաստանս վիճակացն ոչ ներեն խառ-
նակութիւն ընդունել, նոյնպէս և ժամանակք և տարիք ի-
րացն ոչ տան ընդ միմեանս ամբոխութիւն ունել. այլ որո-
շելով զնոսա յիրերաց՝ զպատշաճագոյն կարգն իւրա-
քանչիւր ումեք 'ի վերայ դնեն, և 'ի բազում ամբոխից
զմեզ 'ի բաց վճարեն :

Պարտ և արժան էր ասել ձեզ, ո՞ ոք էր Ոզիաս և երբ
թագաւորեաց և ում ումեք և որքան եղև նորա իշխա-
նութեան ժամանակ և զիարդ 'ի կենացն զրաւեցաւ :
Սակայն անդ արժանաւոր է ինձ լռել այսուհետև, վասն
զի հարկաւոր է յանբաւ խորս պատմութեանցն արկա-
նել զձեզ : Իսկ ոք ընդ այն խորս հանդերձեալ իցէն
անցանել, ոչ աշխատելոյ նաւավարացն՝ այլ առանց տար-
ժամման բուռն հարկանել պարտ է զճանապարհէն :
Այլ ազգաւ նաւահանգիստք և կղզիք ամենայն ու-
րեք 'ի ծովէն ընծիւղեալք, զի և նաւուղիղ և նաւա-
վարք հանգիցեն, մին զղեկոն 'ի բաց դնելով, և միւսն
զթևսն : Նման այսօրինակ ամենընդունակ տունք և օթե-
վանք բնաւ ուրեք 'ի ճանապարհսն խմացեալք եղեն, զի
բեռնակիրք և ամենայն ուղեգնացք անասունք յաշ-
խատութենէն դադարեսցեն. յաղագս նորին և վար-
դապետական բանի լռութիւն սահմանեցաւ, զի մի զմեզ
տաժանիցեմք յոլովագոյն ասացուածովք, և մի զձեզ
տաղտկացուցանեմք : Իսկ զայս ժամանակս գիտէ Սողո-
մոն այսպիսի իմն ասելով. « Ժամանակ է լռելոյ և ժա-
մանակ խօսելոյ » : Արդ եղիցի այսուհետև մեզ ժամա-
նակ լռութեան, զի ժամանակ լիցի խօսելոյ վարդա-
պետին : Քանզի մերքս նմանեցան գինւոյ զոր առժա-
մայն 'ի հնձանէ առնուն. իսկ սորայս նման է հին գի-
նւոյ և յաւէտ անուշի՝ որ առաւելապէս ընձեռէ զօրու-
թիւն և օգտակարութիւն ընդունողացն. և աւետարա-

Digitized by Google

պէս կարէ երևեցուցանել պայծառ, որպէս զի պարտ և արժան է քաղցելոց հանդիպել ոչք հանդերձեալն են ճաշակել անդ։

Արդ ո՞վ ոք է Ոզիաս և ո՞ր ղաւակ և ո՞ց թագաւոր և ո՞րքան թագաւորեաց և ո՞րքան ուղղութիւնս արար, ո՞րքան յանցեաւ և զի՞արդ 'ի կենաց զրկեցաւ։ Զայս ամենայն ասեմ ձեզ այժմ, մանաւանդ որքան կարողութիւն է ասել, զի մի՛ յոլովութեամբ հեղձուսցուք զյիշատակս ձեր՝ որ լինի և ճրագի հրոյ։ Քանզի եթէ սղապէս կաթեցուսցես պատրուգին զիւղն, բաւական ընձեռես հրոյն զկերակուրն. ապա եթէ յանկարծակի հեղցես, և զլեալ բոցն շիջուցանես։

Այս Ոզիաս թոռն էր Դաւթայ, թագաւոր հրէից. թագաւորեաց յիսուն և երկուս ամս։ Նա յառաջնումն քաջահաճոյ, բայց յետոյ անկաւ 'ի մեղս։ Մեծագոյն քան զիւր զարժանաւորութիւնն խորհելով, 'ի վերայ վազեաց քահանայական իշխանութեանն։ Այսքան չար է ամբարտաւանութիւն. քանզի հաւանեցուցանէ զիւրաքանչիւր ոք անծանօթանալ զինքն, և զկնի բազում աշխատութեան զամենայն առաքինութեանն զանձ ունայնացուցանէ։ Եւ այլ ամենայն չարիք 'ի պղերգանալն մերում յաղթել սովորեցին, բայց սա յուղղութիւնսն բուսանի. վասն զի ոչ ինչ այնպէս զհպարտութիւն ծնանել սովորեաց իբրև զբարի գիտակցութիւն, եթէ ոչ զգուշանայցեմք։ Յաղագս այսորիկ և Քրիստոս գիտելով եթէ զկնի ուղղութեանց մտանէ ախտն այն 'ի մեզ, աշակերտացն ասէր. "Յորժամ զամենայն ինչ առնիցէք, ասասջիք եթէ անպիտան ծառայք եմք"։ Յորժամ հանդերձեսցի մտանել 'ի ձեզ գազանն, յայնժամ 'ի ձեռն բանից փակեսջիք, ասէ, զդրունս ձեր 'ի դէմ նորա։ Եւ ոչ ասաց՝ յորժամ զամենայն առնիցէք, անպիտանք եղիջիք. այլ դուք ասասջիք՝ եթէ անպիտանք եմք։ Ասա մի զարհուրիր, զի ոչ 'ի քումմէ դատողութենէդ բերեմ 'ի վերայ զվճիռն ես. քանզի եթէ դու զքեզ անպիտան ասասցես, ես իբրև պիտանացու պսակեմ զքեզ։ Նոյնպէս և այլուր ասէ. "Ասա դու զմեղս քո յառաջագոյն, զի արդարասցիս"։ Յարտաքին ատեանն զկնի ամբարտաւանութեան մեղուցելոյն՝ մահ. իսկ յա՛ծային ատենին յետ ամբարտաւանութեան յան-

ցանուցն՝ պսակ : Վասն որոյ և Սողոմոն ասէ . «Մի՛ արդարացուցաներ զքեզ առաջի տեառն» : Բայց ոչ ումեք 'ի սոցանէ լուաւ Ոզիաս . այլ եմուտ 'ի տաճարն և խունկս ծխել կամեցաւ, և քահանային արգելլով ոչ անսայր : Եւ ապա զի՞նչ իմն . երևեցոյց 'ի ճակատ նորա բորոտութիւն, զկերպ դիմին յանդիմանելով և խրատելով, եթէ ա̃ծային իմն է տեառնն, և ոչ առ մարդ էր պատերազմ նորա : Եւ յաղագս Ոզիայ այսոքիկ :

Բայց բեր վերստին պատմութեանն լուիցուք . քանզի վասն այսորիկ և ես կանխաւ ժամանեալ սակաւուք պատմեցի ձեզ զդիպուածն զամենայն, զի յորժամ լուիցէք 'ի գրոց որք պատմենն՝ զհետ նորա երթայցէք հաւատեաւ : Այլ հայեցարուք . «Եւ արար, ասէ, Ոզիաս ուղղութիւն առաջի տեառն» : Մեծամեծք էին նորա առաքինութիւնք, յաղագս որոյ և վկայեաց նմա . զի ոչ միայն արար զուղղութիւնն, այլ և առաջի ա̃յ, ոչ 'ի ցոյցս մարդկան իբրև զայնոսիկ զհրեայն որ առաջի ողորմութեանն փողէին, և որք պահօք զերեսն ապականէին, և զաղօթսն 'ի ճանապարհակիցսն առնէին . քան զորս ոչ ոք լինի թշուառականագոյն, զի վաստակոյն համբերելով 'ի հատուցմանէն զրկին :

Զի՞նչ գործես, ով մարդ . ընկերա՞յն հանդերձեալ ես համարս տալ զգործոյն քոց, և զայլ ոմն կոչես վկայ իրացն քոց . զայլ ոմն ունիս դատաւոր, և զա՞յլ նստուցանես տեսող : Ո՞չ տեսանես զերաստանակակալսն՝ որք 'ի նստել քաղաքիս ամենայնի 'ի վեր անդ 'ի հակառակութիւնս ձիոյն, զամենայն զմտաւ զասպարիզին զանց առնեն, և անդ ճեպին զհակառակորդաւտիցն զկառս կործանել՝ յորում վայրի տեսանեն զթագաւորն նստեալ, և քան զամենայն դէմս զմիոյն զաչս արժանի հաւատալոյ վարկանին : Իսկ դու զհրեշտակաց թագաւորն քում ընթացիցդ նահատակագիր տեսանելով, զնա թողեալ 'ի ծառայակցա՞յն դէմս ապաւինիս : Դորին աղագաւ զկնի բնաւ մարտիցն անպտո՞ւղ անցեալ գնաս, յետ յոլով քրտանցն առանց յաղթանակի երթեալ առ նահատակագիրն : Բայց ոչ Ոզիաս այնպիսի ոք էր, այլ առաջի տեառն զուղղութիւնն առնէր :

Եւ զիա՞րդ այնպէս հանդերձ ստուգութեամբ առաքինացեալ, ընկճեցաւ և 'ի վայր անկաւ : Ընդ դոյն և

ես զարմանամ և տարակուսիմ, մանաւանդ եթէ ոչ է իսկ արժանի տարակուսանաց այնքան զի մարդ եր զիւրագթելլ 'ի մեղս և առ չարութիւնն երագամէտ։ Այլ ոչ այս եթէ է դժնդակ, այլ զի և զՃանապարհ զնեղ և զանձուկ Ճանապարհորդել հրաման առաք, որ յերկոցունց կողմանց ընթանեալ է գահավիժութեամբք։ Արդ յորժամ յօժարութեամբն դիւրութիւն և Ճանապարհին դժնդակութեան խմբեսցին 'ի միասին, մի՞ ինչ սքանչանար յաղագս յանցանացն։ Որ օրինակ 'ի տեսարանս որք ընդ չուանսն 'ի ներքուստ 'ի վեր ձգեալս ելանել և իջանել համարձակեալք են, եթէ փոքր ինչ թերատեսացեն՝ թիւրեալք անկանին 'ի վայր 'ի կաքաւարանն և կործանին, նոյնպէս և որք զՃանապարհս զայս[1] գնան, եթէ դուզնաքեայ ինչ պղերգասցին, 'ի վախճան անկանին։ Ոչ ի քան զայն չուան՝ Ճանապարհս այս նեղ է և ուղղորդ և յաւէտ զառ 'ի վեր և բարձրագոյն յոյժ, 'ի նոյն ինքն յանգի յերկինս. և յայնժամ մեզ լինի սխալելն առաւել գնացին, յորժամ 'ի վեհագոյնն և առ նոյն ինքն գագաթն հասանեմք. քանզի որք 'ի բարձրաւանդակին կան, սաստիկ է գողումն, և մի եթէ զգուշութեամբ մնացեալ լինի՝ ոչ յառել 'ի ստորև և ոչ զերկիր տեսանել. վասն զի դժնդակագոյն իսկ անդ ցնորն լինի։

Այս յաղագս այսորիկ յաճախապէս մեզ մարգարէն գոչէ ասելով. "Ի կատարածի մի ապականեր,,. զճուլացեալ զանձն մեր զապելով, և որ համարձեալն էր 'ի վայր անկանել՝ կալ մնալ և ժուժկալել, քանզի 'ի սկզբանն ոչ բազում մխիթարութեանց կարօտանամք։ Ինչէր արդեօք. զի ամենայն ով ոք է, թէպէտ և քան զբոլորեսեան ծուլագոյն իցէ, համարձակեալ զկրայն բուռն հարկանել, յոլով փոյթ 'ի նախաշաւիղն ցուցանէ առոյգութեամբ յօժարամտութեանցն և նոր տակաւին եւս զօրութեամբն. իսկ յորժամ ընդ բազում մասն Ճանապարհին անցանիցեմք և խամրին յօժարամտութիւնքն 'ի մեզ և զօրութիւնն աղօտանայ և 'ի վայր անկանել համարձիմք, յայնժամ մարգարէս մեզ 'ի դէպ ժամանակի մերձ կացեալ իբրև մահակ ինչ ըղբանս զայս կարկառէ ասելով. "Ի կատարածի մի ապա-

1 Ցուցելու երկաթագիր Ճառընտիրն և [illegible]։

կաներ,,. զի և սատանայ յայնժամ ուժգնագոյն մարտընչի։

Եւ զոր օրինակ որք 'ի ծովու նաւեն, ոչ յորժամ տեսանեն ընկղմիչքն ելեալս 'ի նաւահանգստէն զնաւն՝ յայնժամ 'ի վերայ յարձակին, վասն զի զինչ օգուտ նոցա ունայն ընկղմել զնաւն. այլ յորժամ անդրէն դարձեն լի զբեռն ունելով, յայնժամ զամենայն զմեքենայսն շարժեն 'ի վերայ։ Նոյնպէս և չար դեւն այն յորժամ տեսանէ յոլովս ժողովեալ, զպահս զաղօթս զողորմութիւնս զպարկեշտութիւնս, նա զամենայն առաքինութիւն, յորժամ տեսանէ լի զնաւն մեր բազմապատիկ բարեպաշտութեան քարամբք՝ յայնմ ժամանակի ամենայն ուստեք փորելով զգանձն, որպէս զի առ նմին իսկ բերան նաւահանգստին ընկղմիցէ, և մերկ առաքեսցէ այնուհետև 'ի նաւահանգիստն յայն. յաղագս այսորիկ մարգարէն պատուիրէ ասելով ամենեցուն. "Ի կատարածի մի ապականեր,,. զի և զկնի դարձեալ կործանմանն այնր դժուարակիչ վերստին կանգնումն լինիցի։ Քանզի "Որ երթայն 'ի խորս չարեաց, արհամարհէ,,։

Այլ և 'ի սկիզբն կործանեցելոցն թողութիւն առնեմք ամենեքեան յաղագս անհմտութեանն. իսկ որ յետ բազում ընթացից ընկճիցի, ոչ ոք դիւրով արժանի թողութեան վարկանի. պղերգութեան յայնժամ կործանումն լեալ թուիցի։ Եւ ոչ յայս միայն, այլ զի և բազումք են որ գայթակղին կործանմամբ նորա. որպէս զի և այսքիւք աններելի նորա մեղքն լինի։ Զայս գիտելով մարգարէին լուիցուք, և 'ի կատարած մի ապականեր։ Վասն այսորիկ և Եզեկիէլ գոչէ ասելով. "Եթէ լինիցի ոք արդար, և զկնի փոփոխեալ յանցանիցէ, ոչ յիշեսցին նմա արդարութիւնք իւր. 'ի մեղս իւրում մեռցի,,. զի և նա երկեաւ յաղագս կատարածին։ Եւ ոչ աստ միայն, այլ 'ի հակառակէն ցուցանէ յոլով զիրայն զօրութիւն լեալ։ "Եթէ լիցի ոք, ասէ, մեղաւոր, և ապա փոփոխեալ լիցի արդար, ոչ յիշեսցին մեղք իւր. արդարութեամբն իւրով կեցցէ,,։ Տեսանե՞ս և աստանօր յաւէտ կատարածին արարեալ նախախնամութի՛. զի մի արդարն վստահանալով յարդարութիւնն իւր և խոնարհեալ 'ի պղերգութիւնս կործանեսցի և կորիցէ,

երկեցուցանէ զնա կատարածաւն. և մի՛ մեղաւորն յուսահատեալ, 'ի յանցանսն յարաժամ մնասցէ և 'ի կործանմանն, կանգնէ զնա 'ի ձեռն կատարածին։ Յոլով մեղար, ասէ, մի՛ յուսահատիցիս. քանզի է վերստին Ճանապարհ, եթէ հակառակ սկզբանն ցուցցես զկատարածն։ Դարձեալ արդարոյն. յաճախ ուղղեցեր, այլ մի՛ վստահանար. քանզի գիտի և անկանել, եթէ ոչ մինչև խաղաղ զուգահաւասար զփոյթն ընկալցիս։ Տեսե՞ր զկարգ զմիոյն զծուլութիւնն և զմիւսոյն ևս զյուսահատութիւնն 'ի բաց եբարձ։

Բայց ոչ ումեք յայսցանէ լուաւ Ոզիաս, յաղագս որոյ վստահացեալ 'ի վայր անկաւ կործանումն դժնդակագոյն և անբժշկելի։ Զի և ոչ ամենայն գլորումն հաւասար մեզ զվէրն գործէ. այլ 'ի մեղանացն ոմանք ընդ բամբասանօք և եթ անկեալ կան, և ոմանք զվտանգաւոր տանջանս ընդունին։ Զի և որք ոչ անսային եղբարց 'ի հասարակաց ընթրիսն՝ Պաւղոս սաստելով ասէր այսպէս. "Զայս պատուիրելով ոչ գովեմ"։ Տեսանե՞ս մինչև 'ի բամբասանսն ձգեաց զմեղսն, և զպարսաւանսն ունելով պատուհաս։ Բայց և ոչ յորժամ յաղագս պոռնկութեան խօսի, նոյնպէս առնէ. այլ զիա՞րդ. "Եթէ ոք զտաճարն այ ապականէ, ապականէ զնա ած"։ Աստանօր ոչ պարսաւանք և ոչ սաստանք, այլ դժնդակագոյն պատիժք։

Գիտէ և Սողոմոն զմեղացն զանազանութիւն, զգողութիւն ընդ պոռնկութեան համեմատելով այսպէս իմն ասէ. "Ոչ ինչ զարմանք են եթէ ըմբռնեսցի ոք 'ի գողութեան. գողանայ զի զանձն իւր քաղցեալ լցուցէ. իսկ որ շնայն, առ պակասութեան մտացն կորուստ անձին իւրում պատրաստէ"։ Յանցանք են և այս և այն, այլ մին նուազ և միւսն մեծ. վասն զի մին ունել թուի յաղքատութենէն իմն պատճառ, իսկ միւսն և յամենայն պատասխանեաց զրկեալ։

Եւ նա ունի, ասեն, 'ի բնական ցանկութենէն զհարկաւորութիւնն։ Այլ ոչ ներէ նմա վիճակեալ կինն, 'ի վերայ կայ 'ի բաց բառնալով 'ի թողութենէն զնա։ Վասն այսորիկ ամուսնութիւն և օրինաւոր վայելումն, զի մի՛ ինչ յայսցանէ ունիցի ասել այրն. նորին աղագաւ օգնական նմա տուաւ կինն, զի զմոլեկան բնութիւ

ցածուցանէ և շիջուցանէ զցանկութեանն ախտածութի ։ Զի զոր օրինակ նաւուղիղ որ 'ի նաւահանգստին զործելով նաւաբեկութիւն՝ ոչ պատահէ թողութեան իմիք, նոյնպէս և մարդ յետ զգուշութեանն որ յամուսնութենէ, եթէ զայլոց գողանայցէ զամուսնութիւն կամ զկին որ հարցաքննելով տեսանիցէ, ոչ ևս զիւրի պատասխանեաց, ոչ առ մարդիկ և ոչ առ ած, թէպէտ և բիւր անգամ ասիցէ զընութեանն հեշտութիւն ։

Որ իսկ մանաւանդ լինի ցանկութիւն, ուր երկիւղ և ահ և վիշտք և վտանգութիւն այնքան չարեաց, ուր ատեանք և պատուհասք և դատաւորի սրտմտութիւն, սուր և գահիճք, վիհ և հալածումն. յորոց 'ի սաստկացն դողալ և զարհուրի այնպիսին, որմէն և քարանցն իբրև ձայնս արձակեալս. զամենեսեան տեսանէ և կեղակարծէ, 'ի ծառայից և 'ի դրացեաց, 'ի բարեկամաց և 'ի թշնամեաց, զամենեսեան գիտակս՝ որք ոչ ինչ գիտեն՝ վարկանի ։ Մանաւանդ եթէ կամիս և զայնուիկ 'ի բաց բառնալով՝ թէ և ոչ որք տեսանէ զյանդգնութիւնն, այլ ինքն միայն հանդերձ թշնամեցելով կնաւն բերէ իմն 'ի խղճէ մտացն դառն յանդիմանութիւն զօր ամենայն ուրեք կրէ ասին ։ Զոր օրինակ յինքենէ ոչ որ փախչի, նոյնպէս և ոչ 'ի դատաւորի այնր յանդիմանութենէ ։ Նորա ատեանն ոչ ընչիւք ապականի, ոչ փաղաքշանօք թուլանայ, քանզի ածային իմն է և յոյ 'ի մեր հոգիս հաստատեալ ։

Արդարև որ շնայն, պակասութեամբ մտօք իւրովք կորուստ անձին իւրում մթերէ ։ Բայց ոչ որ գողանայն, 'ի պատուհասէն ձաղողի. պահանջի դատաստան, այլ նուազագոյն. զի համեմատութիւնն այն ոչ 'ի հակառակ կարգամ մղեն զիրսն հաւասարեալս, այլ թողու զմեզ կալ մնալ 'ի քում տեղւոջն, և 'ի նոսա նուազութիւն մուծանէ և առաւելութիւն ։

Զուրի թէ ոչ իմացայք զասացեալս, հարկաւոր է այսուհետև յայտնագոյն ասել ։ Բարւոք է ամուսնութի, այլ լաւագոյն է կուսութիւն. և ոչ վասն զի լաւագոյն է կուսութիւն՝ յաղագս այնորիկ չար է ամուսնութիւն, այլ նուազագոյն է քան զնա, բարւոք է և ինքն ։ Նոյնպէս և աստ. չար է գողութիւն, այլ վատթարագոյն է շնութիւն. և ոչ վասն զի չարագոյն է շնութիւնն՝ բա-

ըւոք է գողութիւն, այլ փոքր քան զնա, չար է և ինքն: Տեսէ՞ր զմեղացն զանազանութի՞ւ: Տեսցուք այսուհետև զոր յանցանս սա մեղաւ:

Նախ, «բարձրացաւ սիրտն իւր»: Չար է վէրն, վասն զի ապարասանութիւն է. և ապարասանութիւն ամենայն չարեաց աղբիւր է: Եւ զի համառօտաբար ուսցիս զախտին զայնր զչարութի՞ւ, լուր. այլ մեղք 'ի մեր բնութիւն դառնան, իսկ ամբարտաւանութիւն զանմարմին զօրութիւն 'ի վայր ձգեաց 'ի վերուստ և ընկեաց. քանզի զսատանայ որ ոչն էր յառաջագոյն սատանայ լեալ, զնա սատանայ արար: Եւ եթէ զԵսայիաս ածցուք 'ի վկայութիւն՝ որ ասէ նոյնպէս յաղագս նորա, «Յերկինս ելից, եդեց նմանող բարձրելոյն». որք զայլաբանութիւնս ոչ հեշտութեամբ ընդունին, ապախտ առնեն զվկայութիւնն մեր: Իսկ եթէ զՊաւղոս մերձ կացուսցուք նմա ասոխ, ոչ ոք այնուհետև ինչ կարէ ասել ընդդէմ: Եւ զի՞նչ Պաւղոս, Տիմոթեայ գրելով եթէ որոյ արդ իսկ սկիզբն արարեալ իցէ քարոզութեանն՝ ոչ է պարտ և արժան 'ի մեծ եպիսկոպոսութեանն ածել յարժանաւորութիւն, այսպէս իմն ասէ. «Մի նորադարձ, զի մի հպարտացեալ 'ի դատաստան անկանիցի սատանայի», զի մի զնոյն մեղանչելով ընդ նմա՝ զնոյն ընդ նմա տանջեսցի:

Եւ ոչ աստի եւեթ յայտ է այս, այլ և յայնցանէ որ առ հնումն քան զամենայն մարդ եղելում խորհրդակից եղև չար դևն այն: Զի զոր օրինակ բարեացն է սովորութիւն զնոյն ընկերացն պատուիրել որով ինքեանք եղեն բարիք, նոյնպէս և չարաց սովորութի՞ է՝ զայն պամել մերձաւորացն՝ 'ի ձեռն որոց ինքեանք եղեն վատթարք: Ռանգի է մի և այս չարութեան նորա տեսակ, զի մխիթարութի՞ վարկանին իւրեանց տանջանացն զայլոց կորուստ: Եւ զի՞նչ խորհրդակից սատանայ լինէր Ադամայ. վեհագոյն քան զիւրոյ բնութեանն առնուլ զմտածութիւն, և 'ի զուգա̃ծութիւնն վստահանալ: Զի եթէ զնա յերկինէ այս ընկէց, եւս առաւել զսա 'ի դրախտէն արտաքս հանցէ: Յաղագս որոյ և Սողոմոն ասէ. «Աստուած ամբարտաւանից ընդդէմ կայցի». և ոչ ասաց թէ ա̃ծ զամբարտաւանս թողու կամ լքանէ և կամ յիւրմէ օգնականութ̃ն մերկացուցանէ, այլ հակառակ

կազի, ասէ․ և ոչ եթէ պատերազմի ինչ նման և կամ
կռուոյ պէտք են առ հպարտն․ վասն զի ո՞ քան զամբար-
տաւանն լցի տկարագոյն։ Զի որպէս որք զաչս կորու-
սանեն՝ ամենեցուն առաջի կան 'ի չարչարանս կրել,
նոյնպէս և ամբարհաւաճն զա՛ձ ոչ ճանաչելով․ քանզի
"Սկիզբն, ասէ, ամբարտաւանութե՝ ոչ գիտել զտէր„․
և մարդկան զիւրըմբռնելի է՝ 'ի լուսոյն յայնմանէ ար-
տաքս անկեալն։ Այլ եթէ զօրաւոր էր, ոչ արդեօք պա-
տերազմի պէտք էին ա̃յ առ նա․ քանզի որոյ կամքն բա-
ւական եղեն զամենայն 'ի մէջ ածել անցուցանել, ևս
առաւել 'ի սատակումն նորա էր բաւական։ Եւ էր ա-
ղագաւ, ասէ, հակառակ կազի․ զի զսաստկութի թըշ-
նամութեանն ցուցցէ որ առ ամբարտաւանն է։ Արդ
զի չար է վէր ամբարտաւանութեանն և յայտնանէ և
յայլուստ յոլով ուստեք է յայտ։

Եւ եթէ ախորժէք, զնոյն ինքն զպատճառն ուսցուք
յորմէ վէրն եղև։ Վասն զի սովորութիւն է գրոց յոր-
ժամ հանդերձեալ իցեն զումեքէ ամբաստանել, ոչ զսր-
խալանս նորա միայն ասեն, այլ և զպատճառս մեղացն
ուսուցանել մեզ։ Զայս առնեն՝ զառողջան զգուշա-
գոյնս կազմելով, զի մի՛ 'ի նոյնս անկանիցին։ Նոյնպէս և
բժիշկ առ հիւանդացեալսն մտանելով՝ նախ քան զախտ-
սըն զհիւանդութեանցն զաղբիւրս հետազօտեն, որպէս
զի 'ի վերուստ զչարն զնստուցանել կարասցեն․ քանզի
զարմատոյն զմնացելոյ որ զչառաւիղսն միայն կամի հա-
տանել, ոչ ինչ այլ՝ բայց եթէ մնավաստակէ։ Եւ մեր
գիրք զյանցանս և զպատճառս մեղացն ասացին։ Ամբաս-
տանելով նախ քան զջրհեղեղն եղելոյ յաղագս ոչ յոր-
մարական խառնակութեանցն, լուր զիարդ առնէ զպատ-
ճառսն․ "Տեսեալ որդւոցն ա̃յ զդստերս մարդկան զի
գեղեցիկք էին, առին զնոսա ինքեանց 'ի կանայս„։ Եւ
արդ զինչ, գեղեցկութիւնն է մեղացն պատճառք։ Մի՛
լիցի, քանզի ա̃յ իմաստութեանն է գործ․ իսկ ա̃յ գործ և
ոչ երբէք լինի չարութե պատճառք։ Այլ տեսանէ՞ն․
և ոչ այն։ Իսկ զինչ․ չարաչարն տեսանել, քանզի այս
ապականեալ յօժարութեանն է․ յաղագս այսորիկ և
ամն իմաստունն պատուիրէ ասելով․ "Մի՛ ուսանիր զայ-
լոյ գեղեցկութիւն„։ Ոչ ասաց մի՛ տեսաներ, վասն զի
պատահէ և 'ի դիպուածոյ իմն այս լինել․ այլ մի՛ ուսա-

նիր, ասէ, որ խնամով հայելն է և զննող տեսութիւն, որ հանդերձ դեգերմամբ պշնուլն է և որ յապականեալ յանձնէ և 'ի բաղձացելոց 'ի բաց բառնայ:

Իսկ զինչ վնաս, ասէ, յայնմանէ լինիցի: Յայնմանէ սիրելութիւն իբրև զհուր բորբոքի. զի զոր օրինակ հուր յորժամ զխոտոյ իմեքէ և կամ զցօղնոյ բուռն հարկանիցէ՝ ոչ կայ մնայ ժամանակ ինչ, այլ մերձեալ 'ի նիւթն պայծառագոյն զբոցն վառէ, նոյնպէս և հուր ցանկութեանս որ 'ի մեզ է, յորժամ 'ի ձեռն աչաց 'ի գեղեցկադէմ պատկեր և 'ի պայծառ մօտի, վաղվաղակի զատտողացն ընու զանձինս: Մի՛ հայեսցիս 'ի ժամանակեայ հեշտութիւնն որ 'ի տեսութենէ, այլ զյաւիտենական վտանգն զխոռեսջիր որ 'ի ցանկութենէն լինի: Քանզի մեծ զհարուածն գնելով յինքեան 'ի բաց վազէ յոլովակի. բայց 'ի վիրէն ոչ փախչի, այլ կայ և մնայ և կորուսանէ: Իսկ զոր օրինակ եղջերու տեսանելով նետ 'ի կարևոր տեղւոջ 'ի մարմնին, թէպէտ և փախչիցի յորսորդացն ձեռաց՝ ոչ ինչ օգտի այնուհետև, նոյնպէս և անձին ընկալեալ զնետ պակշոտեալ փափաքանացն և աւելադործ տեսութեանն, թէպէտ և զնոյն նետն թողլով անցեալ գնայ, սակայն ինքն ապականի և կորնչի, ամենայն ուրեք զպատերազմողն զհետ յարմարեալ ունելով:

Այլ որպէս ասէին, վասն զի ոչ յաղագս երկայնագոյն գովաբանութեանցն եղելոց թողլի է, թէ գիրք և զյանցանս և զպատճառս նոցունց ասել սովորեցին, լուր և աստ զինչ ասէ վասն Ոզիայ: Ոչ զի բարձրացաւ սիրտ նորա՝ զայս միայն մեզ վարդապետէ, այլ և ուստի համբարձումն յաւել: Իսկ ուստի՞ համբարձաւ. յորժամ հզօրացաւն, ասէ, համբարձաւ սիրտ նորա: Ոչ կարաց բերել զհզօրութեանն զմեծութիւն. այլ զոր օրինակ 'ի շատկերութենէ լինի այտումն, և յայտմանէ ծնանի տապ, և անտի բազում անգամ մահ, նոյնպէս և աստ 'ի յոլովութենէ իրացն շուրջ արկածից ապարասանութիւն եղև. զի որ մարմնոյ այտումն է, նոյն և հոգւոյ ամբարտաւանութիւն, և ապա յամբարհաւաճութենէն տենչանք՝ ոչ նման յանկագունից իրաց:

Զայս ոչ վայրապար յերկարեցաք, այլ զի մի երբեք նախանձելի լեալ կարծիցէք որք 'ի զօրութեանն

են, գիտելով որքան իրքն դիւրասխալելիք են. և զի մի երբէք որք յաղքատութեան և յանկակղութեան[1] են՝ թշուառական վարկանիցիք, իմանալով թէ առաւելագոյն անտի զգուշութիւն է: Յաղագս որոյ մարգարէն գոչէ ասելով. «Բարի է ինձ զի նուաստացուցեր զիս»: Տես որքան 'ի բարձրութենէն եղև չար. «Ամբարձաւ, ասէ, սիրտ նորա մինչև յապականել»: Եւ զինչ իցէ՝ մինչև յապականելն: Ի չար մտածութեանց ոմանք և ոչ ամենևին իսկ 'ի մեր անձինս ելանեն, եթէ յաճախապէս շուրջ ամրացուցանելով զմեզ զգուշացուցանիցեմք, և ոմանք ծնանին 'ի ներքս յարմարելով 'ի մեզ և բուսուցանելով. բայց եթէ յառաջագոյն ըմբռնեսցին հեղձնուն վաղվաղակի և 'ի վայր թաղին: Այլ ոմանք ծնանին և աճեն և առ չար գործս արտաքս ելանեն, և զամենայն զառողջութիւն զանձանց մերոց ապականեն, յորժամ 'ի բազում ծուլութեան լինիցիմք: Զայս ասէր նա, եթէ «Բարձրացաւ սիրտն Ոզիայ», և ոչ եկաց մնաց 'ի ներքս ապարասանութիւնն և ոչ շիջաւ, այլ արտաքս վաղեաց և 'ի չար գործն ելանելով զամենայն առաքինութիւնս նորա ապականեաց:

Արդ երանելի է որ ոչ իսկ բնաւին ընդունի զչար մըտածութիւնն, որպէս և մարգարէն ասէ. «Տէր, ոչ բարձրացաւ սիրտ իմ». ոչ ասաց բարձրացաւ և զնըրտուցի զնա, այլ և ոչ 'ի սկզբանն ամբարձաւ. այս է՝ անկօխ յարաժամ պահեցի զանձն իմ 'ի չարութենէն: Երանելի նա է. իսկ զկնի նորա, մտեալ 'ի ներքս զխորհուրդս վաղվաղակի 'ի բաց մղել, և ոչ ներել առաւելապէս յամել 'ի ներքս, զի մի զչար գործսն 'ի մեզ ճարակեսցեն: Եթէ մինչև ցայսքան յուլանայցեմք, է 'ի ձեռն ծայլին մարդասիրութեանն և այսմ պղերգութեան մխիթարութիւն, և յոլովք յանձառ բարութենէն յայնմանէ և 'ի մեծէ անպիտի վիրաց պատրաստեցէք դեղս:

Բայց բեր այսուհետև զբանս դադարեցուսցուք, զի մի յորժամ 'ի սկզբանն երկեաք՝ լինիցի այժմ, և յաճախութիւն ժանտացուցանէ զյիշատակս ձեր. յաղագս որոյ աւարտել զբանս հարկաւոր է: Այսպէս և մարքն

1 Երկաթագիր ճառընտիրն յողյողութեան:

առնեն, յորժամ միրգ ինչ կամ աղանդեր և կամ այլ ինչ նոյնպիսի 'ի մանկանցն գող արկանիցեն. զի մի 'ի ծուլութենէ մանկանցն անկցի ինչ 'ի տուելոցն նոցա, շուրջ զօպելով ամենայն ուստեք զպատմուճանն ընդ գօտեաւն հարկանեն զգուշութեամբ. զնոյն և մեք առնեմք, յերկարագոյն ձգելով զբանս՝ շուրջ ամփոփեմք և յիշողականի մտաց աւանդեմք: Լուայք զիարդ ոչ մեզ առ մարդկան ցոյցս պարտ և արժան է առնել, և որքան չար է ծուլութիւն, մինչ զի և որ զգուշութի՟ն է կեցեալ՝ դիւրաւ ընկձէ: Ծանեայք և որքան փութոյ կարօտեմք մեք, և յաւէտ 'ի նմին իսկ 'ի կենաց կատարածին, և զիարդ ոչ անյուսանալ փոփոխեցելումն, և ոչ վստահանալ որոյ զուղղութիւնն արարեալ իցէ և պղերգանալ: Ուսուցաք յաղագս զանազանութեան մեղացն ընդ ձեզ, յաղագս ոչ բերանաբաց լինելոյ 'ի պայծառ մարմինս, և որքան չար է յայնմանէ՝ ցուցաք: Որք վասն ամբարտաւանութեանն ձեզ ասացաւ՝ յիշեսջիք, և որք յաղագս չար խորհրդոցն:

Զայս պահելով երթիցուք 'ի տուն, մանաւանդ թէ զայս պահելով ընկալցուք և զկատարելոյ և զբարւոյ վարդապետին զպատուիրանն: Քանզի մերս որպէս մանկագունից իմն զվարդապետութիւն ունի, իսկ սորայս իբրև ծերացելոց մտօք զարդարէ. և մերքս նման են առուաց որ շաչմամբ բերեալ լինի, իսկ սորայս նմանեցաւ աղբերի՝ որ գետս արձակէ հանդերձ բազում հանդարտութեամբ, ձիթոյ գնացից առաւել նմանելով՝ քան եթէ ջրոյ: Ընկալցուք այսուհետև զջուրն, զի եղիցի մեզ աղբիւր ջրոյ խաղացելոյ 'ի կեանսն յաւիտենականս. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք Հօր հանդերձ սրբով Հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Digitized by Google

այլ զերասանակս իւրոյ փրկութեանն թողացուցանելով՝ անբան ախտիւք ամենայն ուրեք բերեալ լինի։ Եւ զոր օրինակ ձի խստերախ զսանձս 'ի բերանոյ արտաքս հանելով՝ զհեծեալն ընկենլով 'ի մկանայն յողն՝ քան զամենայն հողմ ուժգնագոյն լինի բերեալ, և պատահելոցն է անժուժալի՝ որք 'ի բաց փախչին ամենեքեան, ունել և ոչ մի ոք համարձակի, նոյնպէս և անձն զաստուածային երկիւղն արտաքս մղելով և զերասանակալն ընկենլով զխորհուրդ՝ յամենայն տեղիս չարութեան ընթանայ, մինչև 'ի կորստեան խորխորատն անկանի՝ գահավէժ առնելով զիւր փրկութիւն։ Յաղագս որոյ պարտ և արժան է յաճախապէս զնա ընդդէմ հարկանել, և իբրև սանձօք ոմամբք բարեպաշտութեանն մտածութեամբք զանբան յարձակումն անզգէն ըմպահակեցուցանել. զոր Ողիաս ոչ արար, այլ 'ի նոյն ինքն 'ի գերագոյնն քան զամենայն իշխանութիւն անօրինեցաւ։ Վասն զի և քահանայութիւնն քան զթագաւորութեանն իշխանութիւն մեծ է և նազելի։

Եւ մի ինձ զծիրանիսն ասիցես և մի զթագն և մի ըզպատմուճանն զոսկեղէնս. ամենայնն այն քան զզարնանայինն ծաղիկս վատթարագոյն է. քանզի "Ամենայն փառք մարդոյ, ասէ, իբրև զծաղիկ խոտոյ", թէպէտ և զնոյն ինքն ասիցես ինձ զթագաւորական փառսն։ Եւ մի զայն ասասցես. այլ եթէ ախորժես, զքահանային ու թագաւորին զզանազանութիւնն տեսանել՝ որ երկոցունց տուաւ զչափն իշխանութեանն հարցաքննեա, և յոյժ բարձրագոյն քան զթագաւորին տեսցես զքահանայն նստեալ։ Վասն զի թէպէտ և պայծառ մեզ երևեսցի թագաւորական աթոռն քարամբքն որ 'ի նմա կառուցեալ և որ շուրջ զնա ոսկին, այլ սակայն 'ի վերայ երկրի վիճակեցաւ տնօրինել, և առաւել ինչ ոչ ունի քան զայս իշխանութիւն. իսկ քահանայական աթոռն յերկինս է հաստատեալ և անդ որ են իրք՝ ապատաւորել հրամայեցաւ։ Եւ ո՞ զայս ասէ. ինքն որ երկնիցն է թագաւոր. "Զորս կապիցէք, ասէ, 'ի վերայ երկրի, եղիցին կապեալ յերկինս. և զոր արձակիցէք, եղիցին արձակեալ յերկինս"։ Զինչ այսմ պատուոյ զուգահաւասար լինիցի. յերկրէ զսկիզբն դատողութեան երկին առնու։ Վասն զի դատաւորն յերկրի

նատի, և տէր զհետ երթայ ծառայլին. և զօրս սա 'ի խո-
նարհ աստ դատի, զնոյն նա 'ի վեր հաստատէ: Իսկ 'ի
մէջ ա՟յ և մարդկայլին բնութեանս կայ քահանայն, զան-
տի պատուեան իջուցանէ առ մեզ, և զմեր պաղատանսն
հանէ անդր. բարկացեալ՝ զնա անդր հաւասար բնու-
թեանն հաշտեցուցանէ, և ընդդիմակացեալս զմեզ յա-
փշտակէ 'ի նորա ձեռացն: Յաղագս այսորիկ և զնոյն
ինքն զթագաւորական գլուխն ընդ քահանայլին ձեռօք
բերեալ եդ ա՟ծ, խրատելով զմեզ՝ եթէ սա քան զնա
մեծագոյն իշխանէ. վասն զի նուազն 'ի լաւագունից օրհ-
նի: Արդ որ յաղագս քահանայութեանն է և որքան
արժանաւորութիւնն մեծութեան, այլում ժամանակի.
առ այժմ տեսցուք զանիրաւութեանն սաստկութիւն
զթագաւորին, մանաւանդ եթէ զատահակլին:

Եմուտ 'ի տաճարն տեառն, և եմուտ, ասէ, Ազա-
րիաս քահանայ զկնի: Միթէ վայրապար ինչ արդեօք
ասէր եթէ մեծագոյն է քան զթագաւորն քահանայն.
զի ոչ երբե զթագաւոր ոք հանդերձեալ էր արտաքս
վարել, այլ երբե զստրուկ և զչարաբարոյ ծառայ այն-
պէս ինն հանդերձ սաստկութեամբ եմուտ զկնի երբե
զքաջ շուն 'ի վերայ յարձակեալ ժանտ գազանին, զի
զնա 'ի տէրունական տանէն արտաքս ածիցէ: Տեսեր
զանձն քահանայլին լցեալ բազում համարձակութեամբ
և բարձրագոյն իմաստութեամբ. ոչ հայեցաւ յիշխա-
նութեանն ծանրութիւն և ոչ զմտաւ էած եթէ որքան
ինչ իցէ զանձն որ ցանկութեամբ արբեալ է՝ արդե-
լուլ. ոչ լուաւ Սողոմոնի որ ասէն. "Սպառնացումն թա-
գաւորի նման է սրտմտութեան առիւծու". այլ 'ի ճըշ-
մարիտ թագաւորն երկնից հայեցաւ, և զբեմն զայն զմ-
տաւ էած և որ անդ պատուհասքն էն. այսպիսի խոր-
հրդովք զինքն ամրացուցանելով 'ի վերայ դիմեաց սաս-
հակին: Գիտէր, քաջ գիտէր եթէ սպառնացումն թա-
գաւորի նման է սրտմտութեան առիւծու այնորիկ՝ որք
յերկիր հայլին. բայց մարդ որ զերկլին տեսանէ, և պատ-
րաստէ զոգին իւր 'ի ներքս 'ի քահանայարանին կալ-
մեալ, և զա՟ծային օրէնս թշնամանեալ տեսանիցէ և ոչ
լինիցի վրէժխնդիր, քան զամենայն շուն վատթարա-
գոյն է: Վասն զի ոչ ինչ է տկար՝ քան որ զա՟յ օրէնսն
զանց առնէ, որպէս և ոչ ոք զօրաւոր՝ քան որ վրէժ-

Digitized by Google

խնդիր ամային օրինացն լինի. զի որ զմեղս առնէ, ծառայ է, թէպէտ և բիւր անգամ ունիցի 'ի գլուխ ըղթագն. իսկ որ զարդարութիւն գործէ, և քան զնոյն ինքն զթագաւորն է թագաւորագոյն, թէպէտ և քան զամենեսեան իցէ վերջին:

Զայսոսիկ ինքեան իմաստասիրելով առաքինին այն եմուտ զհետ թագաւորին: Ընդ նմա մտցուք և մեք, թէ ախորժէք, և տեսցուք զինչ ընդ թագաւորին խօսեսցի. քանզի իշխանութիւն է, և ոչ փոքր ինչ բան օգտակարութեան, յանդիմանեալ տեսանելով զթագաւորն: Նա զի՞նչ ասէր քահանայն. "Ոչ է իշխանութի՞ ծխել քեզ, Ոզիա, խունկ տեառն": Ոչ անուանեաց զնա թագաւոր և ոչ իշխանութեանն անուամբ կոչեաց, վասն զի յառաջագոյն զինքն արտաքս ընկեց 'ի պատուոյն: Տեսե՞ր զհամարձակութիւն քահանային, ուսիր այսուհետև զհեզութիւնն: Վասն զի ոչ համարձակութե՛ն միայն կարօտանամք յորժամ յանդիմանել հանդերձեալ իցեմք, այլ և հանդարտութեանն առաւել քան թէ համարձակութեանն. և ոչ յումեքէ 'ի մարդկանէ այնպէս 'ի բաց դառնան մեղուցեալքն՝ որպէս որ յանդիմանելն հանդերձեալ է. և բաղայս 'ի վերայ արկանել ցանկան, զի 'ի բաց վաղեսցեն և 'ի պատուհասէն փախիցեն. վասն այնորիկ պարտ և արժան է ունել զնոսա հեզութեամբ և ցածութեամբ: Քանզի ոչ միայն զձայն արձակելով այնպիսւոյն, այլ և երևելն ծանր է յանցուցելոցն. քանզի "Ծանր է մեզ, ասեն, տեսանել զնա": Այոր աղագաւ պատշաճ է յաւէտ հանդարտութիւն ցուցանել. վասն սորին և ձեզ բանս 'ի դէմս եած զմեղուցեալն և որ ուղղելն զնա կամէր: Վասն զի իմաստուն բժիշկք յորժամ հանդերձին զապականեալ անդամսն հատանել, և կամ քարինս որ 'ի գնացս ինչ խնուցուն՝ արտաքս ձգել, և կամ զայլ ինչ զբնութեան սխալանս ուղղել, ոչ յանկիւն ուրեք առնելով զաշխատելն զայն առնեն, այլ 'ի մէջ հրապարակի դնելով զնոսա, և տեսարան զանցաւորան մերձ կացուցանելով՝ այնպէս ածեն 'ի վերայ զհատումն: Զայն առնեն ոչ մարդկային թշուառութեանց յանդիման կամելով ցուցանել զնոսա, այլ զտեսողսն այլովք մարմնովքն խրատեն սաստկապէս իւրեանց առողջութեանն առնել նա-

Digitized by Google

խափինամանութիւն ։ Նոյնպէս և գիրք առնեն․ յորժամ զոք 'ի յանցուցելոյն առնուն, 'ի բարձր քարոզութեան վերայ զնա դնելով, ոչ 'ի մէջ գուեհից, այլ 'ի մէջ երկրի, և զաշխարհ շուրջ տեսողս կացուցանելով այնպէս զբժշկութիւնն ցուցանեն, խրատելով զմեզ զգուշագոյնս լինել մերում փրկութեան ։ Տեսցուք այսուհետև զիարդ ձեռնարկէ զնա քահանայն ուղղել ։

Յայնժամ ոչ ասաց՝ ով վատաշուէր և ամենապիղծ, զամենայն կործանեցեր և խառնակեցեր, 'ի վերջին ամբարշտութիւն վազեցեր ։ Եւ ոչ երկայնագոյն ձգեաց զչարախօսութեանս բանս, այլ զոր օրինակ ոք զվէրն հատանեն՝ համառօտաբար առնել զայն փութան, արագութեամբ հատմանն գողանան զցաւոցն զգայութիւն, նոյնպէս և նա սակաւաբանութեամբ զթագաւորին զայտումն հատանէր ։ Զի որպէս վիրացն սուր, նոյնպէս և մեղացն յանդիմանութիւն․ և զհեզութիւնն հանդերձ այլովքն 'ի ձեռն սակաւաբանութեանն մեզ ցուցանէ ։ Եւ եթէ ախորժես զհատումն բանիցն տեսանել, և ուր զերկաթն ծածկեաց, լուր․ "Ոչ է արժան, ասէ, քեզ ծխել խունկ տեառն, այլ քահանայից որդւոցն Ահարոնի սրբեցելոց" ։ Անդանօր ետ զվէրն ։ Զի խորդ, ես ասեմ ։ Ընդէ՞ր ոչ պարզաբար քահանայիցն, այլ յաւել զԱհարոնն ։ Այն քահանայ Ահարոն քահանայապետ եղև, և յանդգնել եղև 'ի ժամանակին յայնմիկ այսպիսի յանդգնութի․ քանզի Դաթան և Կորխ և Աբիրոն մերձ կացեալք հանդերձ այլովք ամամբք յանդգնեցան արտաքս հանել զնա յիշխանութենէն՝ ձեռնարկեցին ձգել․ այլ զոմանս երկիրն պատառեալ եկուլ, և զկէսն հուր 'ի վերուստ իջանելով տաչորեաց ։ Զայն պատմութիւն նմա յիշեցուցանել կամելով յիշատակեաց զԱհարոն՝ որ անիրաւեալն լինէր․ որպէս զի զկանխատաց զթշուառութիւնն զանցուցէ 'ի միտսն նորա ։ Բայց սակայն ոչ առաւել եղև, և ոչ 'ի քահանայէն, այլ յաղագս թագաւորին յանդգնութեան ։ Քանզի պարտ և արժան էր զովել զասացեալսն և շնորհ խոստովանել խորհրդակցին․ իսկ նա սրտմտեցաւ և զկատարածն գործեաց զժնդակագոյն ևս ։ Զի ոչ այնպէս են չար մեղքն, որպէս զկնի մեղանացն անամօթութիւն ։ Բայց ոչ Դաւիթ այսպիսի ոք․ այլ զիարդ․ զկնի ամբաստա-

նութեանն 'ի Նաթանայ եւ յաղագս Բերսաբեայ, «Մեղայ տեառն իմ» ասէ: Տեսե՞ր զխոստովան սրտին, տեսե՞ր զնուաստացեալ զանձն, տեսանե՞ս զիարդ եւ զղջրումն սրբոցն պիտանացու է: Եւ զոր օրինակ պայծառ մարմինքն 'ի հիւանդութիւնս յոլով գեղեցկութեան մեզ ցուցանէ նշմարանս, նոյնպէս եւ սրբոցն անձինք եւ 'ի նմին 'ի գլորմանն զիւրեանց առաքինութեանն նշանակ բերեն: Սակայն եւ 'ի մէջ թագաւորականացն բամբասեալ լինէր նա 'ի մարգարէէն յոլովից մեծ եղելոց, իսկ սա 'ի ներքս յանմոռանելիս առանց վկայութեան ունելով զյանդիմանութիւնն. այլ եւ ոչ այնպէս եբեր զպատուհասն:

Եւ արդ զինչ. անբժշկելի՞ մնաց: Եւ ոչ երբէք, յաղագս այ մարդասիրութեանն: Այլ որպէս լուսնոտին զոր աշակերտքն ոչ կարացին հանել զդեւն՝ Քրիստոս ասէ, «Բերէք ինձ այսր զայն», նոյնպէս եւ աստ քահանային ոչ զօրել՝ որ քան զամենայն դեւ դժնդակագոյն է ախտն՝ զմեղսն հանել, ինքն ած այնուհետեւ յաշխատէն ձեռնարկէր: Եւ զինչ առնէր. բորոտութիւն արձակէր 'ի ճակատ նորա. եւ արտաքս ելանէր այնուհետեւ, որպէս որք 'ի մահն ածեալք լինէին չուան 'ի վերայ բերանոյն ունելով՝ նշանակ դատապարտութեան վճիռ, նոյնպէս եւ նա զանպատուութեան նշանակ 'ի վերայ ճակատուն բերէր. ոչ դահճացն գնա ձգեալ, այլ նորին բորոտութեանն փոխանակ դահճաց զխիղճ մղելով: Եմուտ զքահանայութիւնն առնուլ, որ եւ զթագաւորութիւնն կորոյս. եմուտ լինել նաղելի, եւ եղեւ գարշելի: Վասն զի քան զամենայն ատմիկս անմաքրագոյն էր անպատուութեամբ. այսքան չար է ոչ կալ մնալ 'ի տուեալ չափսն մեզ յայ. եւ թէ պատուեմք զխոստթեամբք ո՞ զայս առնէ: Ո՞չ տեսանես զայս զծով զիարդ է բռնութեամբ անըմբռնելի, որքան կուտակի ալեօքն. այլ սակայն 'ի մեծ բարձրութիւն ամբոխեալ եւ ամբարձեալ, եւ հանդերձ յոլով բարկութեամբ յառաջ եկեալ, յորժամ եկեսցէ առ եդեալ նմա սահմանն յայ, զալէկոծութիւնս լուծանելով դարձեալ առ ինքն անդրէն դառնայ: Սակայն եւ քան զաւազն ոչ ինչ է տկարագոյն, բայց ոչ նա է որ արգելու, այլ եդօղին երկիւղն: Եւ եթէ ոչ ողջախոհացուցանէ զքեզ այս, օ-

րինակ Եղիաս եղև՝ այժմ խրատեսցէ զքեզ ասացեալն։
Վասն զի զբարկութիւնն տեսաք զնյ և զարժանաւոր հատուցումն, բեր և զմարդասիրութիւն նորա և զյաւէտ հեզութիւնն ցուցցուք։ Քանզի ոչ միայն որք յաղագս բարկութեան բանքս են՝ ցուցանել է պատշաճ, այլ և որք վասն քաղցրութեանն, զի մի յանյուսութիւնս արկանիցեմք զլսողսն՝ և մի 'ի ծուլութիւն։ Որպէս և Պաւղոս առնէր, յերկաքանչիւրոցն խառնէր զպատուիրանն՝ այսպէս ինն ասելով. "Տես զքաղցրութիւն և զսաստկութիւնն նյ",. զի և ահիւ և քաղցր յուսովքն կանգնեսցէ զանկեալսն։ Տեսե՞ր զհամբերութիւնն նյ, տեսե՞ր զքաղցրութիւնն։ Իսկ ուսանիցիմք ուր էր արժանի Եղիաս։ Որո՞ց էր արժանաւոր։ Միանգամայն և ըստ նախանձուն անցանելով տաճարին հանդերձ այնքան լրբութեամբ՝ բիւրուց շանդեաց և վերջին պատժոց և տանջանաց։ Քանզի եթէ առաջինքն այնպէս յանդգնեալք այնքան ետուն պատասխանի որք ընդ Դադանայ և Աբիրոնի և ընդ Կորխայն էին, ևս առաւել սա այնպէս պատիժս առնուլ էր պարտ, որ և ոչ թշուառութեամբքն ողջախոհացաւ։ Բայց ոչ արար այնպէս ա̃ծ, այլ նախ յառաջագոյն նմա բանս խօսեցաւ որք յաւէտ հեզութեամբ լի էին՝ 'ի ձեռն քահանայիցն. և զոր Քրիստոս պատուիրեաց մարդկան առնել յորժամ 'ի միմեանս մեղանչիցեն, զնոյն և ա̃ծ առ մարդն արար։ "Յորժամ, ասէ, մեղանչիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա զնա 'ի մէջ քո և նորա միայնոյ",։ Որպէս և զթագաւորն յանդիմանեաց ա̃ծ։ Իսկ Քրիստոս ասէ. "Թէ ոչ լուիցէ քեզ, եղիցի քեզ իբրև զհեթանոս և զմաքսաւորս",։ Բայց ա̃ծ գերազանցելով քան զմարդասիրութեան իւրոյ զօրէնսն՝ և ոչ այնպէս զնա 'ի բաց եհան. որ ոչն լուաւ և սպառնացաւ նմա՝ և ոչ մերժեաց, այլ դարձեալ մերձենայ և խրատէ օրինակաւ՝ որ ուղղութիւնս յոլովս ունէր՝ քան եթէ պատիժս. վասն զի ոչ շանթի արձակեաց 'ի վերուստ և ոչ բոցակիզեաց զանամօթ գլուխն, այլ բարութեամբքն խրատեաց։ Իսկ յաղագս Եղիայ այսքիկ։
Բայց ես միւս ևս յաւելլով դադարեցուցից զբանս։ Իսկ զի՞նչ է այս։ Զոր կանխաւ և 'ի սկզբանն խնդրեցաք, ընդէ՞ր յարտաքին իրս և 'ի մարգարէութիւնս ա-

մենքեան սովորեցին զԹագաւորացն կենաց ժամանակ յիշել, սա զայն Թողլով՝ զմահուն ժամանակ յիշէ զՈ-զիայ այսպէս ասելով. «Եւ եղև 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիաս»: Եւ սակայն հնար էր զԹագաւորու-Թեանն նորա ժամանակ ասել, որպէս սովորուԹիւն էր ամենայն մարգարէից. այլ ոչ արար զայն: Եւ էր ազա-գաւ ոչ արար: Օրէնք էին հինք զօրութեամբ քան ըղ-քաղաքն արտաքս վարելով, որպէս զի և որք 'ի քաղա-քի իցեն լաւագոյնք լինիցին, և նա ոչ ևս առաջի կայցէ կամողացն Թշնամանել՝ այսպն և կատականաց պատճառք. այլ արտաքոյ քաղաքի մնալով՝ առագաստ Թշուառու-Թեանն կալցի զամպյուԹիւնն: Այնոցիկ և Թագաւո-րին էր համբերել պարտ և արժան յետ բորոտուԹեն. բայց ոչ ժուժկալեաց որք 'ի քաղաքին էին յաղագս իշ-խանուԹեանն նորա պատկառեալք, այլ եկաց մնաց 'ի տան իւրում ծածկաբար: Եւ այն զայրացոյց զԱծ, նոյն և զմարգարէուԹիւնն խափանեաց. և որպէս առ Հե-ղեաւն եղև, բան պատուական էր, և ոչ էր տեսուԹի որ որոշէր:

Դու ինձ և աստանօր դիտեա զԱյ մարդասիրուԹին. ոչ կործանեաց զքաղաքն և ոչ կորոյս զբնակիչսն, այլ զոր ինչ առնեն բարեկամք առ համբարոյ բարեկամս, յորժամ ունին իրաւացի ինչ մեղադրուԹիւն՝ լռուԹբ նշանակեն, զնոյն և Ած առ ազգն այն արար՝ որ մեծա-մեծ տանջանաց և պատուհասից էր արժանաւոր: Ես, ասէ, արտաքս հանի զնա 'ի տաճարէն, իսկ դուք և ոչ 'ի քաղաքէդ. ես կապելով զնա բորոտուԹեամբն իբրև զատմիկ ոք մնայցի, դուք և ոչ այնպիսումն յաղԹող եղէք, և զդատապարտեալն յինէն ոչ անաացէք 'ի քա-ղաքէդ արտաքս հանել. զո՞րս ոք արդեօք Թագաւոր հեզ-ներեաց, եԹէ զհրամայեալն արտաքս ածել 'ի նմանէ՝ 'ի ներքս 'ի քաղաքին տեսանէր բնակեալ: Բայց ոչ այն-պիսի ինչ արար, քանզի Ած է և ոչ մարդ: Յորժամ վախճանեցաւ նա՝ պակասեալ ընդ կենաց նորա և որ առ նոսա բարկուԹիւնն էր, և զմարգարէուԹեանն զդը-րունս եբաց, և դարձեալ առ նոսա վերստին եկն:

Դու և յօրինակէ հաշտուԹեանն դիտեա զԱյ մար-դասիրուԹիւնն. քանզի եԹէ ոք քննէր զիրաւացի բանն, և ոչ յայնժամ հաշտել էր պարտ: Ընդէ՞ր արդեօք.

Արդ որովհետեւ եկաք հասաք 'ի թագաւորական քաղաքն Երուսաղէմ, առ աղատ մայրն մեր, ուր անդ են սերովբէքն եւ անդ են քերովբէքն, անդ են հազարք հրեշտակապետաց, անդ են բիւրք հրեշտակաց, անդ աթոռ արքունական՝ ուր ոչ կարէ մերձենալ պիղծ եւ կամ աղտեղի: Բանզի եւ յերկնաւոր խորհուրդն կամիմք մերձենալ պատմութեամբս, մի՛ ոք պիղծ եւ անարժան պատմուենս. մանաւանդ թէ իմ՛ պիղծ եւ աղտեղի 'ի բաց հեռասցի, եւ զչարութիւն եւ զաղտեղութի՟ արտաքս 'ի բաց ընկեցեալ՝ այսպէս 'ի ներքս մտցէ: Բանզի եւ այն որ հանդերձս աղտեղիս զգեցեալ էր, վասն սորին իրաց 'ի բաց հալածեցաւ 'ի հարսանեացն, եւ 'ի տէրունական առագաստէն մերժեաց հայրն փեսային. ոչ եթէ հանդերձս աղտեղիս ունէր, այլ նովին սովորութեամբ մեղացն համարձակեցաւ մտանել 'ի հարսանիսն: Եւ ոչ ինչ ասաց ցնա թէ ընդէ՞ր[1] ոչ ունիս պատմուճան հարսանեաց, այլ թէ իբրեւ ոչ ունէիր զպատմուճան հարսանեաց՝ ո՞րպէս մտեր այսր: Յանցս ճանապարհի կայիր, ասէ, մուրացիկ, ոչ ինչ ամօթ համարեցայ զքո մնանկութիւնդ, չզարշեցայ 'ի քումմէ աղտեղութե՟դ, այլ յայսմ վաստթարութենէ հրաժարեցուցի զքեզ եւ մուծի 'ի հարսանիս տէրունական եւ արժանի արարի զքեզ, ընթրեացն արքունականաց, 'ի վերադոյն պատիւ ձգեցի զքեզ՝ որ չար տանջանաց էիր արժանի. դու եւ երախտեօքն[2] ոչ եղեր յառաջադէմ, այլ կացեր մնացեր 'ի սովորական չարիսն. թշնամանեցեր զփեսայանուէրսն[3], անարգեցեր զփեսայն. 'ի բաց երթ այսուհետեւ, եւ հատոդ այնպիսի պատիժ անզգայութեան: Ո՛ մտաւ ածցէ այսուհետեւ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ, նոյնպէս զխոշտանգումն գիւցէ առաջի աչաց իւրոց, զի մի՛ զնոյն բարբառ լուիցէք. եւ զամենայն խորհուրդս՝ հոգեւորական վարդապետութեանն անարժանիս 'ի բաց մերժեալ՝ եւ ապա այսպէս 'ի տէրունական սեղանն հաղորդեսցի:

"Եւ եղեւ, ասէ, յամին յորում մեռաւ Ոզիա արքայ, տեսի զտէր նստեալ 'ի վերայ աթոռոյ վերացելոյ եւ ամբարձելոյ": Եթէ զկարգն ետես՝ ոչ գիտեմ. զոր ե-

1 Ընդէ՞ր ոչ ունիս պատմուճան հարսանեաց, այլ Թէ. յաւելան 'ի յունէն:

2 Միւսն. երախտեացն. եւ զկնի

3 Միւսն զփեսաւէրն:

տեսն՝ ասաց, իսկ եթէ որպէս՝ լուեալ. ընդունիմ զասացեալն, և չքննեմ զլուեալն. հայիմ ընդ յայտնեալսըն, և զծածկեալսն ոչ խուզեմ. վասն այնորիկ և ծածկեալ իսկ է։ Պատմուճանք ոսկեհուռն են պատմութ̃իք գրոց, առէջն ոսկի և թեզանն ոսկի. ոչ աղաւաղեմ իբրև զարդխատայն զունկն խմալք խորհրդովքս տկարութեան։ "Մի՛ փոխեր, ասէ, զսահմանն զոր հաստատեցին հարքն քո"։ Արդ եթէ զսահմանն փոխել չէ բարւոք, զիա՞րդ զոր ա̃ծ եդ՝ փոխեսցուք։ Կամիս ուսանել եթէ որպէս է տեսանել զա̃ծ, լեր և դու մարգարէ։ Եւ զիա՞րդ հնար է, ասէ, առն կանամբոյ և հայրորդոյ և հագաբարձու մնոզեան գոլով։ Ոչէ անհնար, զի և նոյն ինքն կին ունէր և երկուց որդւոց հայր էր, այլ ոչ ինչ այն խափանէր. քանզի ոչ ինչ արգել կամ կրճիմն է ամուսնութիւն ընդ երկինս համբառնալոյ. ապա եթէ վնաս և կամ խափան էր մեզ կին, ոչ 'ի սկզբանն արարեալ կոչէր զնա օգնական։

Բայց կամիմ ասել եթէ առ 'ի զինչ է նատէն ա̃յ. քանզի ոչ եթէ ա̃ծ նստի, զի այս կերպարանք մարմնականք են, իսկ ա̃ծութիւնն անմարմնական է։ Կամէի ասել եթէ զինչ արդեօք իցէ աթոռն ա̃յ. զի ոչ եթէ աթոռով սահմանեալ է ա̃ծ, քանզի անսահման և անպարագիր է ա̃ծութիւնն. այլ վասն այնորիկ երկնչիմ մի եթէ յայսմ զբաղեալ վարդապետութեանս՝ և յապաղեալ գտանիցիմ վասն պարտուցն։ Քանզի զամենեսեան տեսանեմ վասն սերովբէիցն բերանաբացս պըշուցեալս. և ոչ եթէ այսօր միայն, այլ և յառաջնմէ օրէ անտի՝ յորս խոստացայքն ասել. զի[1] որպէս բազմութիւն ջուրց զբաղում վայրս յորձանաձիգ յարձակմամբ հատանէ անցանէ, այսպէս բանն զամենայնիւ զմեր իմացուածովք և փութացեալ ընթանայ առ պատմութ̃իս։

"Եւ սերովբէք կային, ասէ, շուրջանակի զնովաւ"։

1 Հատուածդ մինչև ընթանայ առ պատմութիւնս չիմէթ էր յերեսին եւ օրինակին և ոչ ճշգրտիւ համաձայն յունականին. զոր եդաքդ՝ երկաթագիր օրինակի է ընթերցուած. իսկ յայլոց երկուցն մին ունի այսպէս զի որպէս և զբազմութիւն ծորդիան բազմութիւն յորձանեդ յորձանման հատանէ անցանէ բանն զամենայն զմեր բազմութիւնս. իսկ միւսն. զի որպէս և բազմութիւն ծորդիան զբազումս յորձանաձիգ յորձանման հատանէ անցանէ բանն զամենայն զմեր բազմութիւնս, զի խմացին և փութացեալ ընթանան առ պատմութիւնն։

Ահաւասիկ սերովբէքն, յորմէ հետէ փափաքէիք ամենեքեան տեսանել. տեսէք այժմ, և զկարօտութիւն փափագմանն լցէք. այլ մի՛ շփոթմամբ և մի՛ փոյթ մտօք, որպէս յելս և 'ի մուտս արքունեացն լինիցի: Եւ զի անդ յիրաւի են այդպիսի իրք, զի ոչ անսան միմեանց սպասաւորքն տեսանելով զմիմեանց երեսս. այլ մինչ չև տեսեալ զամենայն 'ի կարգի՝ ապա հարկ լինի միոյն ընդ միւսն անցանել. իսկ աստ չէ այդպէս, այլ հաստատեալ կացուցանէ ձեզ բանն զտեսիլն մինչև ամենայնն վճարեսցի ուշաւ և կար իցէ իմանալ:

«Եւ սերովբէք կային շուրջ զնովաւ»: Յառաջ քան զպատիւ բնութեանն՝ ուսոյց մեզ 'ի մերձաւորական տեղւոյն զպատիւ նոցա: Եւ ոչ եթէ նախ ասաց եթէ զինչ սերովբէն, այլ ասէ՝ անդ կային. զի այս պատիւ քան զայն լաւագոյն է: Եւ ոչ այնպէս ցուցանեն զմեծ զօրութիւնս սերովբէիցն, որպէս զհպաւորութիւնս զարքունական աթոռոյն: Եւ զպաշտաւորս զայսպիսի նշանաւորս պատուաւորս վարկանիմք զորս տեսանեմք հուպ և շուրջ առ թագաւորս ձիւնագոյն սպիտակամանօք կառաձիգ ջորւոյն արքունականաց. նոյնպէս և քան զայլ անմարմնական զօրութիւնսն նոքա 'ի վեր են որք մերձ են առ աթոռն: Վասն այնորիկ և մարգարէն եթող զասելն վասն բնութեան պատուոյն իւրեանց, նախ յառաջ մեզ պատմէ վասն պատուոյ տեղւոյն, գիտացեալ թէ առ մեծ զարդ է և պատիւ քան զայն և բնութեան նոցա գեղեցկութիւն, և այն են փառք և պատիւ, նա և ամենայն վստահութիւն շուրջ զաթոռովն երևեալ: Զի զայս և զհրեշտակացն է գիտել. քանզի և զնոսա կամեցաւ Քրիստոս ցուցանել մեծս և պատուականս. և ոչ ասաց թէ հրեշտակք իցեն՝ և լռեաց, այլ թէ «Եւ հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս հօր իմոյ որ յերկինսն է»: Զի որպէս անդ առ ա̃ծ քան զհրեշտակական պատիւն մեծ է տեսանել զերեսս հօր, նոյնպէս և քան զսերովբէից պատիւն մեծ է շուրջ զարքունական աթոռովն բնակել և 'ի մէջ իւրեանց ունել զնա: Արդ զայսպիսի պատիւ և քեզ դիւր է ստանալ եթէ կամեսցիս. քանզի ոչ եթէ 'ի սերովբէիցն միայն 'ի միջի է, այլ և 'ի մեր և 'ի նոցա եթէ կամեսցիս. «Զի ուր իցեն, ասէ, երկու կամ երեք ժողովեալ յա-

Digitized by Google

նուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա,,. և "Տէր մերձ է առ խոնարհս սրտիւք, և զհոգւով հեզս կեցուցանէ,,: Սոյն այսորիկ և Պաւղոս աղաղակէ ասելով. "Զվերինն խորհեցարուք, ուր Քրիստոսն է ընդ աջմէ Այ̃ նստեալ,,: Տեսանե՞ս որպէս զմեզ կարգեաց կացոյց ընդ սերովբէսն և մերձաւորս արար արքունական աթոռոյն:

Եւ դարձեալ ասէ, եթէ "Սեց թեւք միոյ,,: Եւ զինչ կամեսցին արդեօք նշանակել մեզ թեւքն, բայց եթէ զվերնականն և զբարձրականն և զթեթեւականն և զվաղվաղուկ բնութիւնն իւրեանց: Սոյն այնորիկ և Գաբրիէլ երագաթեւ թեւօք ամենից երեւէր. ոչ եթէ վախճանի[1] անմարմնական զօրութեանն էր այն, այլ զի ցուցցէ մարգարէին թէ 'ի բարձանց տեղեաց էջ, և ըդվերինն բնակութիւն եթող և եկն: Որդ զիարդ. կամէք և զթիւս թեւոցն լսել. վասն այնր ոչ ինչ կարօտ է առ 'ի մէնջ մեկնել, նա ինքն զինքն մեկնեաց բանն ըդպէտս նոցա մեզ ցուցանելով: Զի "Երկուքն, ասէ, ծածկէին զերեսս իւրեանց,,. որպէս և իւէք[2] պատրուակաւ կրկնակի ծածկեն զերեսս առ 'ի չհանդուրժել այնց փառաց պայծառագեղն[3] ճառագայթից. վասն որոյ և զասն ծածկեն վասն նորին երկիւղի: Ուստի և մեք սովոր եմք, յորժամ յերկիւղէ իմեքէ զարհուրեալ ըմբռնիմք, ամենայն կողմամբք զմարմինս ծածկեմք: Եւ զի՞ ասես եթէ զմարմին, ուր և ոգիքն զնոյն կիրս կրեն յերեւել ծայրական տեսլեան ինչ ազդելով զզօրութիւնն՝ ձգէ և 'ի ներքս 'ի խոր անկեալ ապաստանի, որպէս պարապաւ իւիք մարմնոյն յամենայն կողմանց ինքն առ ինքն խըծպի: Այլ մի ոք լուեալ զահ և զերկիւղ սարսափմանն, ծանր և դժուարին և տաղտուկ թուեսցի. քանզի յետ սարսափմանս այսորիկ և զիւրագոյն քաղցրութիւն և անհաս զուգեալ է և միաբանեալ:

"Եւ երկուքն, ասէ, թռչէին,,: Եւ այս նշան է իւրեանց հանապազ 'ի բարձունս թռնուլն և ոչ երբէք 'ի խոնարհ հայել: "Եւ աղաղակէին մի առ մի և ասէին սուրբ սուրբ սուրբ,,: Եւ բարբառն դարձեալ

1 Յոյն բնագիրն է πτερά ըն. հայ թարգմանչին թուի ընթերցեալ πέρας և փոխեալ 'ի վախճան:

2 Յօրինակն գրեալ էր իւէն. եգաւ ըստ յունին:

3 Օրինակ մի ճառագայթագեղ պայծառութեանն... յերեւելւոյն ծայրային:

մեծ օրինակ է մեզ սքանչելեաց. զի ոչ եթէ վայրապար ինչ օրհնէին, այլ աղաղակէին. և ոչ եթէ աղաղակաինչ ընդ վայր, այլ հանապազ զայս ասէին: Քանզի որ ինչ երևելի է մարմնոյ, թէպէտ և 'ի վեր քան զամենայն վայելչութիւնս է, յայնժամ միայն զարմացուցանել կարէ զմեզ, յորժամ 'ի տեսիլ երեսաց նորա պշուցեալ նկատեմք. իսկ յորժամ հայիցիմք և զնիցեմք աւելագոյն տեսլեամբ, սովորութեամբն զզարմանսն փոքրկացուցանեմք, և մեզ զկերպարանս մարմնոյն դրոշմեմք: Նման այսորիկ և պատկեր թագաւորական, որ այժմ եդեալ և կանգնեալ իցէ լուսաւոր և պայծառ և վայելուչ երանգօք և նկարուք, իբրև տեսանեմք՝ զարմանամք, և յետ միոյ կամ երկուց աւուրց ոչ այնքան: Իսկ զի ես ասեմ արքունական պատկեր, ուր և անդէն իսկ ճառագայթից արեգականն զնոյն կրեալ իմանամք, որ ոչ ինչ է այլ պայծառագոյն քան զնա: Այնպէս և ամենայն մարմնական տեսիլք սովորութեան փոքրկացուցանէ զզարմանսն. իսկ այ փառացն ոչ այնպէս, այլ ամենայն հանդէպ: Զի որչափ մտաւորին 'ի տեսիլ փառացն զօրութիւնքն, նոյնչափ առաւել ըսքանչելիքն և զարմանքն յաճախեն. վասն այսորիկ յորմէ հետէ եղեն մինչև ցայժմ տեսանելով զայն փառսն, ոչ երբէք դադարեցին հիացմամբ աղաղակել. այլ որպէս 'ի մեզ կիրս կրի սակաւժամանակեան անդ ընդդէմ տեսլեանս մերոյ որոտման փայլատակմանն, և այն հանապազ 'ի նոսա կիրս կրին, և անդադար իմն սքանչելեօքն փափագմամբ նուիրին: Զի ոչ եթէ միայն աղաղակէին, այլ և առ միմեանս զնոյն ասէին, որ յօժարութիւն[1] փութոյ զարմանալեաց է նշան: Զի 'ի թնդիւն որոտման և 'ի շարժումն երկրի ոչ միայն զարհուրիմք և 'ի վեր վազեմք, այլ և առ միմեանս աղաղակեմք: Զնոյն և սերովբէքն առնէին, և վասն այնորիկ ընկեր առ ընկեր աղաղակէին և ասէին սուրբ սբ սբ:

Իսկ արդ ծանեա՞յք արդեօք զբարբառս զայս, եթէ մեր է սրովբէիցն և մեր է քրովբէիցն վասն Քրիստոսի որ եբարձ 'ի միջոյ զկռիւն, և արար խաղաղութիւն յերկինս և յերկրի առնելով զերկոսին մի: Զի նախ

1 Այլպէս երկքին օրինակքն. իսկ յոյնն ասէ որ սաստիկ զարմանալեաց:

յերկինս միայն երգէր օրհնութիւնս այս. արժանի ա-
ռար և առ մեզ իջուցանել զերգս օրհնութեանս։ Նման
պատրիկ և մեծս այս քահանայապետ յորժամ առաջի
կայ սրբութեան սեղանոյն և զքանաւոր պաշտօնն մա-
տուցանէ և զանարիւն պատարագն, ոչ վայրապար ըզ-
մեզ 'ի փառաբանութիւնն հաղորդէ և կոչէ, այլ նախ
յառաջ զքրովբէսն ասէ և ապա զսրովբէսն յիշեցու-
ցանէ, և ապա ամենեցուն այսպէս հրամայէ տալ ըզ-
փառս զարհուրական[1] թարբառով, և զուգական վերին
գնդաւն յիշեցուցանէ, և զմեր միտս և զխորհուրդս
յերկրէ յերկինս փութայ համբառնալ։ Նա ոչ թէ մի-
այն աղաղակէ առ իւրաքանչիւր առ մեզ, և ասէ եթէ
ընդ սերովբէսն կաց, և ընդ նոսին զթևս համբարձ,
և ընդ նոսին շուրջ լեր զաթոռովն տէրունականաւ։ Նա-
զինչ մեծ է եթէ ընդ սերովբէսն կացցես. զի զայն որ
ոչ իշխեաց մերձենալ սերովբէն, զայն համարձակու-
թեամբ ետ քեզ ա̃ծ։

“Առաքեցաւ առ իս մի 'ի սրովբէիցն և ունէր 'ի ձե-
ռին կայծակն հրոյ, առեալ ունելեօք 'ի սեղանոյ անտի
եբեր մերձեցոյց 'ի բերան իմ„։ Քանզի այն սեղան
այսմ սեղանոյ է կերպարան և օրինակ, և այն հուր
այսմ հրոյ հոգևորի։ Բայց ոչ իշխեաց սերովբէն մեր-
ձենալ ձեռօք, այլ ունելեօք. իսկ դու ձեռամբ ունիս։
Իսկ եթէ զարժանն կարասցես իմանալ որ առաջի կայս,
զսրովբէիցն զմտաւ ածցես, զի այս առաւել է քան զայն.
ապա եթէ զք̃յ զմարդասիրութիւնն իմասցիս, որ ոչ և
առ տկարութիւնս ամօթ համարի իջանել խոնարհօք 'ի
վերայ այսր որ առաջի մեր կայ։ Զայս խորհեաց, ով
մարդ, և զառաւելութիւն պարգևացն զմտաւ ածելով
զարթիր երբեմն և հրաժարեա յերկրէ և համբարձիր
յերկինս։

Բայց ծանր է մարմին և 'ի խոնարհ բռնադատէ։
Բայց ահաւասիկ ընթացուցանեն պահք և թեթևա-
ցուցանեն և բարձրացուցանեն և ամբառնան զոգւոյն
թևս և թեթև առնեն զհոգւոյ և զմարմնոյ բեռինս,
թէպէտ և ծանրագոյն ես քան զկապար ածցեն զմար-
մինս։ Բայց պահոցն առ այժմ կացցէ մնասցէ վարդա-

1 Երկաթագիրքն ունի զարհուրական զհարբառն զանփոփոխական յիշեցուցանէ։

պետութիւն, և տեսչութիւն խորհրդոյն 'ի մէջ եկեղեցէ՝ վասն որոյ և պահքն իսկ են։ Զի որպէս ճակատամարտի կռուողական ողիմպիական մարտիկ կռուոյն պըսակն է վախճանն, նոյնպէս և պահոցն սուրբ պատարագն է կատարումն. ապա եթէ զայն ոչ ուղղեսցուք աւուրքն այնոքիւք, ընդ վայր և վայրապար աշխատ արարեալ զանձինս, առանց պսակի և առանց յաղթանակի յախոյանական տեղւոյ պահոցն լոկ գնասցուք։ Վասն այնորիկ և հարքն կարգեցին զասպարէզ պահոցն առ 'ի պէտս, զի սրբեսցին ժամանակաւ ապաշխարութեան. զտեսցուք և սրբեսցուք զանձինս, և այնպէս մերձեցուք առ սրբութիւնս։

Վասն այնորիկ և ես ահա աղաղակեմ և ասեմ և մեծաբարբառ բողոքեմ, աղերսեմ և աղաչեմ, մի խիղճ մտօք, մի նենգ խորհրդովք մերձենալ առ ահաւոր սեղանն. քանզի ոչ է այս օգուտ և ոչ միաբանութիւն թէպէտ և բիւր անգամ մերձեսցուք 'ի սրբութիւնս մարմնոյ նորա, այլ պատիժք և տանջանք և մահապարտութեան յաւելուածք։ Մի՛ այսուհետև մեղաւոր ոք հպեսցի. նանախ և զիս իսկ կարճեմ 'ի սեղանոյս. արդ մի ոք մեղաւոր մնացեալ հպեսցի։ Վասն այսորիկ ահա յառաջագոյն ասեմ, զի մի ոք յորժամ հասցէ արքունական ընթրիքն և մեծ երեկն՝ յայնժամ ասասցէ եթէ անպատրաստ եմ 'ի մտանել. և ապա արգելեալ ասասցես եթէ զայս յառաջագոյն արժան էր պատուիրել. զի թէ յառաջ զայս լուեալ էի, ապաքէն փոխէի յայսմանէ, ապաքէն զանձն սրբէի և ապա հպեալ մերձենայի։ Արդ զի մի ոք զայս պատճառս դիցէ, վասն այնորիկ արդէն իսկ բողոքեմ և աղերսեմ՝ բազում իրօք հանդիսացէք ապաշխարութեամբ։

Գիտեմ զի ամենեքին ընդ պատուհասիւ եմք, և ոչ ոք կարէ պարծել եթէ սուրբ իցէ սրտիւք. այլ ոչ այս միայն է դժուարին եթէ սիրտ սուրբ ոչ ունիմք, այլ թէ իբրև չունիցիմք սիրտ սուրբ, և ոչ որ կարողն է առնել սուրբ՝ մերձենայցեմք առ նա։ Զի կարէ՝ թէ կամի, և կամի լաւ ևս քան զմեզ. այլ ակն ունի փոքր մի պատճառու տալ 'ի մէնջ, զի վստահացեալ՝ զմեզ պսակեսցէ։ Ո՞ ոք քան զմաքսաւորն եղև մեղաւոր. այլ քանզի ասաց՝ եթէ թողութիւն արա ինձ մեղաւորիս, էջ արդարա-

Իսկ յորժամ կամիցիս մերձենալ առ սուրբ սեղանն, այնպէս զմտաւ ածջիր եթէ և Թագաւորն մերձ առ քեզ է. և արդարեւ հուպ իսկ է և զիւրաքանչիւր քննէ զսիրտս, թէ ոք փութով սրբութեամբ, թէ ոք պիղծ մտօք և խիղճ խորհրդովք, աղտեղի և զազիր գործովք եթէ գտանիցէ, զայնպիսին նախ յառաջ դատաստանի մտաց իւրոց տայ 'ի ձեռս: Ապա եթէ նախ առեալ խոշտանգիցէ 'ի ձեռն մտացն, լուացուցանիցէ և կազմիցէ, հայի դարձեալ առ նա. ապա եթէ առանց ուղղութեան կացցէ մնասցէ, հրամայէ այնուհետև մատնել յիւր ձեռս զանագորոյնն և զանմիտն: " Ահ և երկիւղ է անկանել 'ի ձեռս ա̃յ կենդանւոյ ": Գիտեմ եթէ կսկծեցուցանեն զձեզ բանքս. բայց զի՞նչ արարից. եթէ ոչ կսկծական եղից զդեղն, վէրքն ոչ բժշկին և սրբին. և եթէ զխիստն դիցուք, դուք ոչ կարէք հանդուրժել: Արդ վարան է ինձ ամենայն ուստեք. բայց սակայն այսուհետև հարկ է կարճել զճառս, քանզի բաւական է որ ասացաւս 'ի կարգ ուղղութեան հնազանդելոցն: Այլ զի մի միայն ձեզ, այլ և այլոց ևս լիցի յօգուտ, բեր այսուհետև երկրորդեսցուք զբանս:

Ասացաք վասն սերովբէիցն թէ որպիսի է պատիւ նոցա հուպ կալ առ աթոռոյն արքունականի, և եթէ մարդ զպատիւն զայն կարէ ստանալ: Ասացաք և վասն թևոցն և վասն անմատոյց փառացն ա̃յ, և զայն թէ խոնարհութեան և մարդասիրութեան է. յաւելաք և զպատճառս բարբառոյն և զմտնջենաւոր սքանչելեացն, և զխարդ անհանդիստ տեսլեամբքն զանդադար փառաբանութիս սրովբէիցն. յիշեցաք և թէ յորում տեղւոջ կարգեցաք, և կամ թէ ընդ ում զմեր տէրն փառաւորեցաք. վասն ապաշխարութեան յաւելաք զբանս. և կատարումն՝ թէ որչափ չար է 'ի սրբութիւնն մերձենալ խիղճ մտօք՝ զայն ցուցաք, և եթէ ոչ է հնար ապրել 'ի գեհենէն որք զայնպիսիսն գործեն: Զայս և կին յառնէ լուիցէ, և որդիք 'ի հօրէ, և ծառայ 'ի տեառնէ և դրացի 'ի դրացւոյ և սիրելի 'ի սիրելւոյ, և առաւել զայս 'ի թշնամիս պատմել, զի և նոցա փրկութեան եմք պարտապան: Զի եթէ զգլորեալ գրաստ նոցա յարուցանել հրամանն առաք, և զմոլորեալն դարձուցանել և առաջնորդել հրամայիմք, որչափ ևս առաւել զհոգի նո-

յայսմ 'ի ձկնորսութեան որսոյս պատահեացէ ։ Սան զի այն ձկունք յորժամ տեսանեն ընկեցեալ զգործիսն, վաղվաղակի 'ի բաց վազեն և արտաքս փախչին. իսկ դուք հակառակ նմին առնէք. յորժամ տեսանէք յարուցեալ և զվարդապետութեան ուռկանն սփռեալ, ոչ միայն ոչ 'ի բաց վազէք և ոչ արտաքս սրանայք, այլ 'ի ներքս ընթանայք՝ ամենայն ուստեք խմբեալք, զմերձաւորն իւրաքանչիւր ոք մղէ և նեղէ, յառաջագոյն ինքն ձեպի վազել և 'ի ներքս անկանել 'ի գործիսն ։ Յաղագս այսորիկ ոչ երբէք ունայն 'ի վեր ձգեցաք զուռկանն, ոչ վասն մերոյ հմտութեան, այլ յաղագս ձերոց փափագանացդ ։

Արդ բաւականապէս զձեզ և առաջն կերակրեաց որ փորձ և մաքուր ոսկի բղխեաց լեզուն, աղբերս մեղու ունելով 'ի բերան. մանաւանդ եթէ զամենայն մեղուծածկէ հեշտութիւն հոգևոր վարդապետութե՛ քաղցրութեամբ ։ Բայց զի ըստ յարմարական ձերոյ իմաստասիրութեանդ և ոչ զաղքատութեանս իմոյ և զտգիտութեան բանս անպատուէք, այլ սքանչանայք ընդ այն՝ որ յոլով ունի զառաւելութիւն, փափագէք և մերում անարգութեանս, յարեայց բազում յօժարութեամբ հատուցանել ձեզ զպարտսն, զոր յառաջագոյն խոստացայ և ոչ հատուցի. քանզի երկայնութիւն վարդապետութեանն արտաքս մերժեաց զմեզ 'ի կատար ածել ։ Եւ զինչ էին պարտքն այնոքիկ, հարկաւոր է յիշեցուցանել ձեզ զակիզբն փոխոյն, որպէս զի յայտնագոյն ձեզ 'ի պատճառէն լինիցի վարդապետութիւնն ։

Խնդրեցաք այժմ էր աղագաւ անյայտագոյն քան ըզնորս հին կտակարանքն. և թերևս յիշէք իսկ. և մի պատճառ առ վայր մի ասացէք զզազանութիւն լսողացն, և վկայ 'ի մէջ ածցուք զՊաւղոս որ ասէն եթէ "Ծածկոյթ ունին օրէնքն. և եթէ նոյն ծածկութիւն յընթերցուածին հին կտակարանացն կայ մնայ ոչ մերկացեալ, զի 'ի Քրիստոսի խափանի" ։ Ցուցցուք և եթէ զոր օրինակ Մովսէս ունէր պատրուակ օրինադրին, նոյնպէս և օրէնքն ունէին զանյայտութիւնն. բայց ոչ օրինադրին է մեղադրութիւնն և ոչ օրինացն ամբաստանութեան ծածկոյթ, այլ տկարութեան լսողացն ։ Զի ոչ յաղագս ինքեան ունէր Մովսէս զպատրուակն, այլ

վասն ոչ կարելոյ համբերել փառաց երեսաց նորա. և յորժամ դառնայր առ տէր, 'ի բաց բառնայր զպատրուակն: Նոյնպէս և օրէնքն վասն զի ոչ երբէք կարէին ուսանել զկատարեալ վարդապետութիւնն և զի խնատասխրութեամբ յաղագս Քրիստոսի և նորոյ կտակին, զի ամենայն գանձքն այնուքիկ 'ի հին կտակարանսն ամբարեալ կային և ծածկոյթ ունէին, զիջանելով բանոյն՝ մեզ պահէր զճոխութիւնն ամենայն, զի յորժամ եկեսցէ Քրիստոս և դարձցուք առ նա, 'ի բաց բարձցի պատրուակն: Տեսանէ՞ք յորքան 'ի պատիւ եած զմեզ Քրիստոսի գալուստն 'ի կարգն Մովսէսի հանելով:

Բայց թերևս ասիցէ ոք արդեօք. և վասն է՞ր իսկ ասացաւ յայնժամ, եթէ ոչ էր հանդերձեալ նոցա յայտնի լինել ասացեալն, յաղագս ո՞ր արդեօք, զի որ զկնի այնոցիկն իցեն՝ պիտանացու լինիցի: Մարգարէութեան արժանաւորութիւն է այս, ոչ յորժամ զմերձակայ իրս պատմեսցէ, այլ զհանդերձեալսն նախաձայնեսցէ. մարգարէութիւն է և յորժամ ծածուկս ինչ ասիցէ, և յետ պատահելոյ իրացն լինի յայտնի. և նախ քան զելս ոչ լինել բնաւին: Որպէս զի և յայնժամ ասացեալ լինէր գաղտնաբար և ոչ ուրեք էին հանդիպեալ իրքն, և յաղագս նորին անյայտագոյն էին ասացեալքն:

Եւ զի ուսանիցէք եթէ մարգարէութիւն թէպէտ և ոչ նախ քան զբազում ժամանակս ասիցի, և ծածկաբար ասի, անյայտ լինի, կալով մնալով դիպուածոյ իրացն, 'ի նոցունց յաշակերտացն զայս ձեզ արարից երևելի: “Քակեցէք զտաճարս զայս„ հրէից ասէր Քն: Վասն զի հալածէր որք վաճառականութեամբ զտաճարն թշնամանէին, ասէին նոքա. “Զի՞նչ նշան ցուցանես մեզ զի զայդ առնես„: Եւ առ այն ասէր. “Քակեցէք զտաճարս զայս, և յերիս աւուրս կանգնեմ զսա: Նա ասէր վասն տաճարի մարմնոյն„: Այս մարգարէութիւն իմն էր, քանզի չև ևս էր պատահեալ խաչին և ոչ քակումն տաճարին և ոչ երեքօրեայ յարութիւնն զոր ինքն արար: Եւ տես զիարդ զերկոսին հաւաստեաւ զեկոյց, զյանդգնութիւնն նոցա և զզօրութիւնն իւր. այլ սակայն ոչ գիտէին զասացեալսն: Եւ զհրէիցն անգիտանալ ոչ ինչ էր զարմանալի. այլ ասէ՝ թէ և ոչ աշակերտք նորա իմացան մինչև յարեաւ 'ի մեռելոց, և

Digitized by Google

յայնժամ հաւատային գրոյն և բանին զոր ասաց նոցա Յիսուս ։

Տեսանե՞ս զի և աշակերտքն կարօտանային զի 'ի ձեռն գիրուածոյ իրացն յայտնի լինիցի մարգարէութիւնն, յաղագս այնորիկ մեծագործութեն ինչ ոչ լինէին Հրեայք՝ ոչ իմանալ զմարգարէութիւնսն վասն Քրիստոսի նախ քան զՔրիստոսի գալուստն. քանզի գալուստն յայտնի համզերձեալ էր լինել և երևելի ։ Լուր նմին իսկ Քնի որ ասէն. «Եթէ ոչ էր եկեալ և խօսեցեալ ընդ նոսա, մեղս ոչ ունէին» ։ Ընդէ՞ր ոչ ունէին մեղս, եթէ մարգարէութիւնքն կանխաւ ասէին և յառաջագոյն զեկուցանէին ։ Այլ ոչ էին յայտնիք և ոչ երևելիք նախ քան զգալուստն ճառեցելոյն կանխաւ ։ Քանզի եթէ յայնժամ երևելիք էին նոցա և յայտնիք, քաջայայտ էր թէ և նախ քան զգալուստն նորա մեղս ունէին. արդ թէ մեղս ոչ ունէին, յայտնի է թէ յաղագս անյայտութեն և ծածուկ լինելոյ. զի և ոչ պահանջեալք լինէին յայնժամ 'ի Քրիստոս հաւատալ յառաջ քան զՔրիստոսի գալուստն ։ Իսկ ընդէ՞ր կանխաւ ասէր յայնժամ: Զի յորժամ գայցէ, անդուստ ունիցին զվարդապետսն որ 'ի ներքս ածիցեն զնոսա, և տեսանիցեն եթէ ոչ նորաձեւութիւնք ինչ էն ասացեալքն և ոչ առժամանի տնօրէնութիւն, այլ 'ի վերուստ այնուքիկ և կանուխ ժամանակաւ քարոզեալք. ոչ ինչ փոքր էր այս առ 'ի յընդունելոյ զհաւատն ։

Արդ մի այս է անյայտութեանն պատճառ, զոր յոլովս ցուցաք յառաջին խօսսն: և զի մի դարձեալ ըզձեզ խանդեցից զնոյն ասելով, հարկաւոր է յայսցանէ 'ի բաց կալ, և զմիւսն ևս ասել որ ոչն է անյայտ և անծանօթ, բայց դժուարագոյն ձեզ առնէ զհին կտակարանսն ։ Զի այլ է ոչ ինչ բոլորովին գիտել որ 'ի ներքսն կայցէ և տեսանել զծածկոյթսն 'ի վերայ, և այլ գտանել զասացեալսն, այլ հանդերձ աշխատութեամբ ։

Իսկ զինչ իցէ երկրորդ պատճառն յաղագս որոյ դըժուարագոյն հին կտակարանքն քան զնորս են ։ Ոչ գաւառային ձայնիւ ունիմք զհին կտակարանսն առ մեզ գրեալս, այլ յայլմէ լեզուէ յարմարեցաւ, և այլուստ ունիմք զնոսա ընթերցեալս մեք ։ Վասն զի եբրայեցւոց ձայնիւ 'ի սկզբանն գրեցան, իսկ մեք հելլենացւոց ձայ-

նիւ առաք. և յորժամ լեզուն թարգմանեսցի, յոլով ունի զդժուարութիւնն։ Նոյ զայս գիտեն որք բազում լեզուաց են հմուտք զի արդ ոչ է կարողութիւն զամենայն յայտնութիւն ձայնին յիւրում ընութեանն կացեալ՝ փոփոխել 'ի միւսն ևս թարգմանելով 'ի լեզուն։ Այս պատճառ դժուարուէ հնոց կտակարանացն եղև։

Վասն զի հարիւր ամաւ նախ քան զՔրիստոսի գալուստն առ Պտղոմեաւ թագաւորաւն եգիպտացւոց յելլադական լեզուն փոփոխեցան հին կտակարանքն կարևորապէս պիտանացու։ Զի ցրքեան ընդ միում ազգին ընդ եբրայեցւոցն խօսէր, կայր մնայր 'ի յեբրայեցւոց ձայնին. զի ոչ ոք յայնժամ հանդերձեալ էր հայել 'ի նոսա, այլոց մարդկան ազգք 'ի վերջին գազանութին վարեալք։ Իսկ յորժամ մերձեցաւ գալ Քի և զաշխարհ ամ առ ինքն կոչել, ոչ 'ի ձեռն առաքելոց միայն, այլ և 'ի ձեռն մարգարէիցն, զի և նոքա մեզ օժանդակեն 'ի հաւատոյն Քրիստոսի գիտութիւն, յայնժամ իբրև 'ի ներքս մուտս ոմանս և ճանապարհս զյառաջագոյն փակեալ մարգարէութիւնան լեզւոյն անյայտութեամբ՝ ամենայն ուստեք բանալ պատրաստեաց թարգմանութն. զի ամենեքեան որք 'ի հեթանոսացն ամենայն ուստեք 'ի ներքս մտեալ հանդերձ բազում դիւրութեամբ զճանապարհս զայս գնայցեն, և 'ի ձեռն սոցին կարիցեն առ թագաւոր մարգարէիցն գալ և երկիր պագանել միածնի որդւոյն նյ։ Յաղագս այսորիկ սուղ ինչ յառաջ քան զՔրիստոսի գալուստն թարգմանեցան ամենեքեան։

Այս եթէ էր կացեալ մնացեալ յեբրայական ձայնին միայն, և ասէր Դաւիթ "Խնդրեա յինէն և տաց քեզ զհեթանոսս 'ի ժառանգութիւն քեզ և կալուածս քեզ յամենայն ծագս երկրի„, ուստի հանդերձեալ էր գիտել զասացեալս ասորին և կամ գաղատացին, մակեդոնացին և կամ աթենացին, յանյայտութեան մնացեալ գրոցն։ Դարձեալ Եսայիաս գոչէ. "Իբրև զոչխար 'ի սպանումն եկն, և իբրև զանմռունչ առաջի կտրողի իւրոյ անձայն„. և դարձեալ. "Եղիցի արմատն Յեսսեայ, և որ կանգնելոցն է իշխան հեթանոսաց՝ 'ի նա հեթանոսք յուսասցին„. և դարձեալ. "Լցցի երկիր գիտելով զտէր իբրև ջուրք բազումք որք ծածկեսցեն զծովս„. և Դաւիթ դարձեալ ասէ. "Համբար-

ձայնէն զրկեցայ. վայրենիք և ընտանիք, ձեռասուն և անընդել կենդանիք կացին մնացին՝ ունելով վիճակեալ զկուրեանց ձայնն, եւ իշխանս նոցա անպատուիմ և արտաքս ընկեցայ 'ի պարգևացն այ: Զի՞նչ այսքան մեղացն արդեօք. ո՛չ էին ինձ բաւական առաջին տանջանքն: Ետ ինձ զդրախտն և եհան արտաքս 'ի նմանէ. կէի անտառապ կեանս և 'ի ցաւոց ազատ, դատապարտեաց զիս քրտամբք և աշխատութեամբք. առանց սերման և առանց արօրոյ զամենայն տայր ինձ երկիր, հրամայեաց նմա փուշ և տատասկ բուսուցանել, և մշտանգամ 'ի նոյն յերկիր դարձոյց զիս. մահու պատժեաց, զկանանցն ազգ էարկ ընդ երկամբք և ցաւովք: Ոչ էին բաւական այսոքիկ 'ի պատուհաս, այլ և 'ի ձայնէս եւս զիս արտաքս եհան և յայսմ պատուոյ զրկեաց, զի 'ի հոմանեղիցս և 'ի համազգեացս իբրև 'ի գազանաց 'ի բաց փախչիցիմ. ձայնս որոշելով պարսպէ զիս յընդունելութենէն:

Այլ հայեցարուք, յաղագս այդորիկ աճեցուցի զընդդիմադրութիւնն. զի յորժամ 'ի վերայ ածից զլուծումն, պայծառագոյն լինիցի յաղթութիւնն: Եթէ կամէր, ասէ, զիս արտաքս հանել յամենայնէ յայնմանէ, էր աղագաւ 'ի սկզբանն տայր ինձ զայն: Ախորժէ՞ք իսկ 'ի դմին յայդմանէ ածից զլուծումն 'ի վերայ, 'ի դմին իսկ 'ի սոսկ ընդդիմադրութենէդ: Վասնզի այնքան է այ իրաւանցն յղփութիւն, մինչ զի նոյն վիճողին ընդդիմաբանութիւն ոչ ինչ 'ի մէնջ առնլով բաւական է առ ամբաստանութեանն լուծումն:

Եթէ կամէր արտաքս հանել զիս յամենայնէ յայնմանէ, ընդէ՞ր 'ի սկզբանն ետ ինձ զայն: Եւ ես զդոյն ասեմ. եթէ ախորժէր հանել, էր աղագաւ տայր: Իբրև զի ախորժէր ոչ արտաքս ընկենուլ, յաղագս այնորիկ ետ քեզ 'ի սկզբանն: Եւ տպա զի՞նչ եղև: Ոչ ած եհան, այլ դու կորուսեր զտուեալսն: Ընդ նա զարմացիր յաղագս մարդասիրութեանն, և զքեզ բամբասեաց վասն պղերգութեանն, զի զպարգևն ոչ պահեցեր: Ոչ որ աւանդեացն՝ է պատճառ, այլ որ զաւանդն մատնեաց՝ բամբասանաց է պարտաւոր: Զի սիրէր և մարդասիրէր և կամէր երևեցուցանել՝ շնորհեաց և ետ, ոչ յումեքէ թախանձեալ և ոչ բռնադատեալ, ոչ ընդ ուղ-

Digitized by Google

ղութիւնս ինչ քո զարմանալով, և ոչ քո աշխատու-
թեանց հատուցումն տայր. այլ փաղփաղուկի զքեզ ըն-
տեղծեալ՝ յիշխանութիւնն յայն եած արագ արագ, զի
ցուցցէ եթէ ոչ փոխարէն ինչ տայր և կամ երախտիս
հատուցանէր զպարգեւն, այլ մերկ շնորհէր։ Իսկ եթէ
ոչ պահեցեր զտուեալն, զքեզ ինքն բամբասեա և մի
զտուող պարգեւին։ Այլ արդ զայս միայն ունիցիմ ար-
դեօք ասել յաղագս տեառնն. բաւական էր և այս պա-
տասխանի. այլ անբաւ նորա բարերարութիւնն և ան-
չափ մարդասիրութիւնն և այլ մեզ առատագոյն զկրա-
ւունսն ընձեռէ։ Զի ոչ զայս ևեթ ասեմ եթէ նա ետ
և դու կորուսեր. ազատ է և այսպէս 'ի մեղադրութենէ
տուողն, մանաւանդ թէ և մեծ սքանչանալոյ արժանա-
ւոր. զի կանխաւ գիտելով եթէ կորուսանես, ոչ զըր-
կեաց զքեզ 'ի պարգեւէն։

Բայց սակայն միւս ևս յաւէտ մեծագոյն քան զայս
ունիմ ասել։ Այլ զի՞նչ է այն. զի և յետ կորուսանելոյն
քոյ պղերգութեամբդ, դարձեալ ետ քեզ զկորուսեալն.
մանաւանդ եթէ ոչ զկորուսեալն միայն, այլ ևս մեծ
քան զայն. քանզի կորուսեր զդրախտն, և ետ քեզ զեր-
կինս։ Տեսանե՞ս զիարդ շահն մեծագոյն է քան զտու-
գանսն, և որպէս առաւել իցէ փարթամութիւնս քան
զկորուստն. ետ քեզ փոխանակ դրախտին զերկինս, զի
և զիւր մարդասիրութիւնն ցուցցէ և զսատանայ խոցես-
ցէ, ցուցանելով թէպէտ և բիւր անգամ զմարդկան ազգ
դրժիցէ, ոչ ինչ լինիցի նմա առաւել՝ որ միշտ 'ի մեծա-
գոյն պատիւ զմեզ հանելով։ Արդ կորուսեր զդրախտն,
և եբաց քեզ ած զերկինս. դատապարտեցար առժամա-
նակեայ աշխատութեամբն, և պատուեցար յաւիտենա-
կան կենօքն. հրամայեաց երկրի զփուշ և զտատասկ բու-
սուցանել, և բուսոյց քեզ անձնդ զպտուղ հոգւոյն։

Տես զո՞ր մարդասիրութիւնն որքան խոնարհեցաւ։
Այլ զի սովորութիւն է որք կորուսանեն ինչ յիւրեանց
ստացուածոց, թէպէտ և մեծ ինչ առնուցուն և բազմա-
պատիկ, և զկորուսեալն խնդրեն, ոչ հաւանին նախ քան
եթէ առնուցուն զայն։ Այլ արդ զի կորուսեր զդրախտն,
ոչ զերկինս միայն ետ քեզ, այլ և զդրախտն և զերկինս։
"Այսօր ընդ իս լինիս, ասէ, 'ի դրախտին". զի մի մե-
ծագունիցն յաւելուածով միայն, այլ և զկորուսեալն

վերստին ստանալով մխիթարեսցի վտանգեալ անձնն ։ Բայց եթէ բարւոք թուեսցի, 'ի նոյն ինքն եկեսցուք 'ի յառաջինկայն և տեսցուք զիարդ կորուսաք զառաջին զձայնն. զի ոչ սուղ ինչ է 'ի զգուշութեան բանէ պատմութիւնն. վասն զի որ ուսանի զօրինակ առաջնոյ կորստեանն, զգուշագոյն առ յապայն լինի ։

Հարկաւոր է ձեզ զամենայնն ասել, եթէ որպէս մի ձայն էր 'ի սկզբանն ամենեցուն, և 'ի բազումս յետոյ փոփոխեցան. և մինչև յերբ մի էր, և երբ փոփոխեցաւ 'ի յոլովս, և որպէս արդեօք նոյն ինքն առաջին խանգարեցաւ, և այլքն 'ի ներքս մտին յոգունք; և ընդէր խառնակեցան և յորմէ պատճառէ. և ապա յորում 'ի նոյանէ 'ի յոլովից ձայնից հին կատակարանքն կային. զի յաղագս այնր ամենայնի զայս շարժեցաք յառաջնումն արդեօք և 'ի սկզբնագունին, եթէ զինչ մտեալն ։ Բայց մի երկնչիք. թէպէտ և ոչ այսօր զամենայն կարասցուք ընձեռել, այլ ամենայն իրօք ձեզ հաստուսցուք զինի ։

Եւ ընդէ՞ր արդեօք ոչ հանդերձեալք զամենայն տալ զբովանդակ պարտուցն խոստմունս՝ ընթերցաք ձեզ, զի վստահանալով 'ի հատուցմանն՝ յարաժամ 'ի մտի զմեզ ունիցիք ։ Զի եթէ ոսկի ոք փոխ տայցէ ումեք և պարտական ունիցի փոխոյն, 'ի սեղան և 'ի տան և 'ի հրապարակի և 'ի մահիճս և ամ ուրեք զպարտականն իւր առաջի աչաց տեսանէ և յերազի 'ի նմին դեգերի. և որ ընչից է ցանկութիւն, և նա ընդ ինչսն փոխատուին առնէ միշտ դեգերեալ հոգւովն ։ Զի և մեք յուսով հատուցմանն շահեսցուք՝ յարաժամ 'ի ձերում միտս լինել, 'ի տան և 'ի հրապարակի և ուր և իցէ, յաղագս այսորիկ զպարտսն խոստացաք. ինձ զհաւատալ [illegible] զամենայն ոչ առնեմք, զի վստահութիւն յապաղմանն պատճառս 'ի ձեզ. յաղագս մերոյ յիշատակին թողուցումք ։

Մեծ ամբաւթիւն է մեզ ձերոյ սիրոյդ յիշատակ. մեծ բարի իրք առաւէն 'ի սէր վայելել յայսպիսի բազմութեան ։ Զի որ 'ի սէրն վայելէ, ամենայն իրօք և յաղօթսն վայելեսցէ ։ Եւ այս եթէ որքան իցէ բարի, յայտնանի է. Պաւղոս որ յերրորդ երկինս յափշտակեցաւ և զբանս զանճառելիս լուաւ, որ զամենայն զբնութեանս կարգս կարգեաց և յաղթութեան էր այնուհետև, կարօ-

տմնայր աղօթից աշակերտացն և ասէր. «Աղօթեցէք յաղագս իմ, զի փրկեսցայց յանհաւատից». և դարձեալ. «Աղօթեցէք զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ իմոյ»: Այլ ամենայն ուրեք ցուցանի նա և հայցեալ զաղօթս աշակերտացն և գոհացեալ զնոցանէ յետ առնլոյն: Զի մի՛ ոք ասիցէ թէ յաղագս խոնարհութե՟ ապաւինէր 'ի պաղատանս աշակերտացն, ցուցանէ զնոցա զօրութիւնն այսպէս ասելով յաղագս այ՟. «Որ յայնպիսի մահուանէ փրկեաց զմեզ և փրկեսցէ գործակից լինելով և ձերոց հայցուածոցդ յաղագս մեր. զի որ 'ի մեզ շնորհն է, յոլովից գոհասցի վասն ձեր»: Այլ արդ եթէ զՊաւղոս 'ի վտանգիցն զերծուցին բազմացն աղօթք, որչափ ևս առաւել պարտ և արժան է վստահանալ մեզ յայսմ վերակացութենէն շահել պտուղ:

Այլ զի առանձինն տկարք եմք, յորժամ ժողովիմք՝ զօրաւորք լինիմք, և միմեանց հաւանեցուցանեմք զա՟ծ բազմութեանն մարտակցութեամբ: Որպէս և թագաւոր բազում անգամ մատնելով զոք 'ի մահ, միսում ևեթ աղաչողի թերևս ոչ հաւանի յաղագս դատապարտեցելոյն. բայց 'ի բովանդակ քաղաքին յաղաղակելն՝ զոր 'ի վիհն կամէր արկանել՝ վասն յոլովութեան աղաչանացն դարձուցանէ 'ի դատապարտութենէն և վերըստին 'ի կեանս ածէ: Այնչափ է զօրութիւն բազմութե՟ պաղատանացն: Վասն այսորիկ և այսր ժողովիմք ամենեքեան, զի մեծապէս առ մեզ ձգիցեմք զա՟ծ. և զի առանձինն աղօթելով, որպէս յառաջագոյն ասացի՝ տկարք եմք, կապանօք սիրոյ հաւանեցուցանեմք զա՟ծ տալ մեզ զհայցուածն:

Զայս ոչ վայրապար ասեմ և ոչ յաղագս իմ միայն, այլ զի փութայցէք 'ի ժողովս, և զի մի՛ ոք ասիցէ՝ 'ի տան ո՞չ կարեմ աղօթել: Ոչ այնքան զօրութիւն ունին աղօթքն, որպէս յորժամ հանդերձ իւրովք անդամովք լինի, որպէս յորժամ բովանդակ մարմին եկեղեցւոյ միանգամայն առաքէ զպաղատանս միով ձայնիւ, յորժամ քահանայք մերձ իցեն և զաղօթս բազմութեանն 'ի վեր առաքեսցեն:

Ախորժե՞ս ուսանել զզօրութիւն աղօթիցն յեկեղեցւոջ լեալ: Կապեալ էր երբեմն Պետրոս և բազում շղթայիւք վարակեալ. պաղատանք յարաժամ յեկեղե-

ցուցն առ մեծ լինելին յաղագս նորա, և վաղվաղակի 'ի բաց վճարեցին զնա 'ի կապանէն։ Օ՜ն ինչ արդեօք զօրագոյն լինիցի քան զայնպիսի աղօթս, որք սեանց և աշտարակաց եկեղեցւոյն օգնեցին. քանզի Պաւղոս և Պետրոս աշտարակք էին եկեղեցւոյ, զմիոյն զկապանս լուծին աղօթք և զմիւսոյն զբերան բացին։

Եւ զի մի միայն 'ի համդիպեցելոյն որք համապազօր կատարին և բազմաց լինին աղօթքն յեկեղեցւոջ՝ զզօրութիւնն ցուցցուք, զնոյն ինքն զպաղատանս ձեզ յիշեցուցանեմք։ Քանզի եթէ ոք միում ումեք 'ի բազմաց 'ի ձէնջ հրամայէր առանձին աղօթս առնել յաղագս եպիսկոպոսի փրկութեան, հրաժարէր ոք 'ի ձէնջ հրաժարէր, որպէս թէ մեծ իցէ բեռն քան զիւր կարողութիւնն։ Եւ հասարակ ամենեքեան լսէք զարկաւագին որ զայս հրամայէ և ասէ. "Աղաչեսցուք յաղագս եպիսկոպոսին և ծերութեան և օգնականութեան, և զի ուղիղ համառօտեսցէ զբանն ճշմարտութեան, և վասն որ աստ և ամենայն ուրեք եկեղեցեաց,,։ Ոչ հրաժարել տայ 'ի հրամանէն, այլ համդերձ միաբանութեամբ առաքել 'ի վեր զաղօթսն։ Տեսէ՞ք զձերոյ ժողովրդ ըղզօրութիւն։ Գիտեն համաւրք խորհրդոյն զասացեալս. վասն զի աղօթք երախայիցն ոչ ևս հրամային յայսօսիկ, զի չև ևս ժամանեցին յայսպիսի համարձակութիւն. բայց ձեզ և յաղագս աշխարհի և վասն եկեղեցւոյ մինչև 'ի ծագս աշխարհի սփռեալ և յաղագս որք խնամ տանին նոցա եպիսկոպոսաց, ամենեցուն հրամայէ առնել զպաղատանսն, որ զայնոսիկն ապաստանէ և հնազանդի համդերձ յօժարութեամբ, գործով վկայելով եթէ մեծ է եկեղեցւոյ աղօթից զօրութիւն 'ի բազմութենէ միաբան 'ի վեր առաքեալ։

Բայց և յառաջիկայն երթիցուք վերստին եթէ մի ձայն էր յառաջագոյն։ Եւ ուստի՞ էր յայտ եթէ մի ձայն էր։ "Եւ էր, ասէ, ամենայն երկիր մի շուրթն,,։ Յայտ է ասացեալս. երկիր շուրթն ունիցի։ Եւ արդ զի՞նչ, յաղագս ո՞յր ասիցէ։ Ոչ վասն անշարժուն և անզգալւոյ երկրի ասէ, այլ հասարակ զամենայն մարդկան ազգն այսպէս կոչեաց, զընտանի իւրեանց բնութիւնն յիշեցուցանելով՝ 'ի մօրն յիշատակ էած ուստի եղենն։ Քանզի կրկին է այս կենդանի, յերկուց բնութեանց

Digitized by Google

մարդ հաստատեալ կայ՝ 'ի զգալւոյս և յիմանալւոյն, 'ի հոգւոյն ասեմ և 'ի մարմնոյ, երկնից և երկրի ազգակցութիւն ունելով: Ի ձեռն իմանալւոյ բնութեանն հաղորդութիւն ունել ընդ վերին զօրութիւնսն, և 'ի ձեռն զգալւոյս ընդ երկրայինն իրս միաւորեալ է. կապ իմն է հաւաստեաւ երկոցունց արարածոցս: Յորժամ գործիցէ ինչ այ̃ հաճոյ, հոգևոր ասի, և ոչ 'ի շնչոյս անուանի, այլ 'ի միւսմէն ևս մեծագունէն՝ հոգւոյն. զի և ոչ բաւական է մեզ շունչն յուղղութիւնս, և ոչ կարող իմանալ զասացեալսն. "Քանզի շնչաւոր մարդ ոչ ընդունի զհոգւոյն": Որպէս մարմնաւոր կոչէ որ մարմնոյ ծառայէ, նոյնպէս շնչաւոր կոչէ որք զիւրս հրամայեն մարդկային խորհրդոյ, և ոչ ընդունիցին զհոգւոյն զօրութիւն: Այլ որպէս ասէի՝ եթէ ուղղելով հոգևորք ասիմք, և յորժամ մեղանչեմք և գլորիմք և գործեմք ինչ անօրէն մերում քաջատոհմութեանս, 'ի վատթարութենէն զմեզ կոչէ՝ երկիր զմեզ անուանելով:

Արդ զի ևս աստ հանդերձեալ է զոմանց ամբաստանել զաշտարակին շինողաց յամբարհաւաճութիւն ամբարձելոցն, որք մեծագոյնք քան զիւրեանց արժանաւորութիւնն առին զմտածութիւնս, հանդերձեալ զնոցա զամբարտաւանութիւնն բամբասել, յաղագս այնորիկ յանարգութենէն զնոսա կոչեաց ասելով. "Եւ էր ամենայն երկիր շուրթն մի": Եւ զի ուսանիցեք եթէ այսպէս կոչէ զմեզ յորժամ յանցանիցեմք, զԱդամ յետ մեղանացն նոյնպէս կոչեաց ասելով. "Հող ես և 'ի հող երթիցես": Եւ սակայն ոչ էր հող միայն, այլ և զանմարմինն ունէր զոգի: Եւ էր աղագաւ հող կոչեաց զնա. վասն զի յանցեաւ: Զի յորժամ ստեղծ զնա, ոչ կոչեաց այսպէս. այլ զինչ. "Արասցուք մարդ ըստ մերում պատկերի և ըստ նմանութեան, և իշխեսցէ ձկանց ծովու և գազանաց երկրի, և եղիցի ահ նոցա և երկիւղ 'ի վերայ ամենայն երկրի":

Տեսանես որպիսի գահերիցութիւնք էին բնութեանս, որպիսի պատիւք, որպիսի գովութիւնք, այլ նախ քան զխալանսն. իսկ յետ յանցանացն այնուհետև, "Հող ես և 'ի հող երթիցես": Լուր և Մաղաքեայ որ զոյն զեկուցանէ, և ուսանիցես եթէ այ̃ 'ի ձեռն մարգարէին. "Ահա առաքեմ առ ձեզ զԵղիա Թեզբացի": և վասն

էր առաքելյն . “զի դարձուսցէ զսիրտ հօր առ որդի„ ։ Յաղագս զի հանդերձեալ էր զդատաստանն զահաւոր և զսարսափելի ՚ի վերայ հաստատանել, զի պատրաստեսցէ զնոսն զի մի առանց ուղղութեանց առեալ ՚ի համարս դատաւորն դատեսցի . այլ զի եկեալ նա՝ յառաջագոյն ասիցէ եթէ մերձ է ՚ի դուրս դալուստն , և ողջախոհագոյնս առնիցէ զմարդիկ . վասն զի նախ քան զյոլով ժամանակս ասացեալքն ՚ի դանդաղութիւն արկանել տողորեցին . նորացուցանէ այնուհետև զյիշատակն մեր , զայ մարգարէն այն ։

Բայց զի երկիր կոչին մեղուցեալքն , զայս նախ առաջին ցուցից ։ “Որպէս զի դարձուսցէ զսիրտ հօր առ որդի„ , ՚ի վերայ եդած . “Մի գուցէ եկեալ հարից զերկիր միանգամայն„ . և հարկանէ զյանցուցեալսն զորս երկիրն կոչէ ։ Դարձեալ այլուր յաղագս Քրիստոսի պատմելով մարգարէն այսպէս ասէր . “Եղիցի արդարութիւն ածեալ ընդ մէջ իւր , և ճշմարտութեամբ պնդեալ զկողս իւր„ . իբրև ոչ եթէ կողք և մէջք իցեն նոյ , վասն զի անմարմին է աստուածութիւնն , այլ զարդար վճռին և զաւանդ խաբելոյ դատաւորին դատաստան ՚ի ձեռն այսոցիկ մեզ երևեցուցանէ . և եթէ ոչ ուրեք զսպարտողք այնուհետև և ոչ զրժողք և ոչ ՚ի ձեռն ընչից ապականութիւն և ոչ անգիտութիւն իրաւանց տեղի ունիցի ։ Վասն զի յայտնիկ յատեանս և անպարտն տանջի և պարտաւորն ՚ի բաց փախչի , քանզի ապականեալ են ամենայն ուրեք իրաւունք . իսկ յորժամ արդար դատաւորն և անխաբելին եկեսցէ , որոյ արդարութիւն է ածեալ ընդ մէջ իւր և ճշմարտութե պատեալ զկողս իւր , իրաւանց ամենեքեան հաւասարահանդիպեսցին ։ “Եւ հարցէ , ասէ , զերկիր բանիւ բերանոյ իւրոյ„ ։ Եւ զի ուսցիս եթէ ոչ յաղագս երկրի ասէ՝ այլ վասն մեղաւորաց , ՚ի վերայ եդած . “Եւ հոգւով շրթանց սպանցէ զամբարիշտն„ ։ Տեսանե՞ս զի և աստանօր զմեղաւորսն կոչեաց երկիր ։

Արդ զայս գիտելով , յորժամ լուիցես եթէ ամենայն երկիր է շուրթն մի , զմարդկային բնութիւնն իմադարձեալ, վասն զի յիշեցուցանէ մեզ զմեծամեծ մեր անարգութիւնն . այլ և մեծ իսկ է զիւր տկարութիւնն գիտել ումեք և ճանաչել եթէ ուստի գոյացաւ ։ Նա-

Digitized by Google

ւական է այն վարդապետութիւն նուաստանալոյ ընութեանս 'ի մտածութիւնս . զամենայն միտս կարէ զնըստուցանել, և առնել խաղաղութիւն 'ի խորհուրդս ։ Յաղագս այնորիկ պատուիրէ մեզ ասելով. "Հայեաց 'ի քեզ,, զմտաւ ածելով զքո ընութիւնդ և զստեղծուածդ, և բաւական է քեզ այդ գիջանելոյ միշտ ։

Յաղագս այնորիկ արդարն այն Աբրահամ յորաժամ զայս խորհուրդ ունէր յինքեան և ոչ երբէք մեծամտէր ։ Ընդ Ած խօսեալ և յայնքան համարձակութեան վայելեալ և վկայեալ յառաքինութիւնսն ասէր . "Ես հող եմ և մոխիր,, ։ Եւ միւս մեզ դարձեալ կամելով զամբարտաւանեալ զմարդն զնստուցանել, ոչ երկայն բանիւ ինչ շարժէ, այլ յիշեցուցանէ նմա միայն զընութիւնն, և սպառնայ ուժգնապէս ասելով. "Զի ամբարտաւանիցէ հող և մոխիր,, ։ Մի որ յետ մահուն ինչ երևի ասիցես . զնստ զդա կենդանւոյն . ոչ զիտէ այժմ եթէ հող և մոխիր է ։ Տեսանէ զքաջավայելչութիւն մարմնոյն, տեսանէ զզօրութիւն, զսպասաւորութիւն փաղաքշացն, զձաշակեցն զհետ երթեալս ։ Հանդերձս զգեցեալս բազմապատիկս, մեծութիւն իշխանութեան ունի, ծանրագոյն երևոյթքն պատահէն և առնէն նմա մոռանալ զընութիւնն ։ Գիտեմք զի հող և մոխիր եմք ողջախոհքս . իսկ նա ոչ վստահանայ 'ի կատարածէն զցոյցն առնուլ, և ոչ գայ 'ի սահմանս և 'ի շիրիմս նախահարցն, այլ զմերձակայս եթէ տեսանէ, ոչ ինչ 'ի հանդերձելոյն զմտաւ ածէ . ուստի նմա արդէն իսկ ասասցուք՝ եթէ հող և մոխիր է ։

Աերեա ինձ, ասէ, և ուսուցից ոչ զայդ, այլ միւս ևս իմն յաւէտ վատթարագոյն, զի առցէ զդեղն ։ Քանզի ասելով "Զի հպարտանայ հող և մոխիր,,, 'ի վերայ եած՝ թէ "Եւ 'ի կենդանութեան իւրում արհամարհեալ է փորիւր,, ։ Թուի եթէ անպայտագոյն իցէ ասացեալս . ներքս ամուանէ որ ինչ կայ 'ի ներքս, զփորոտիսն ասէ՝ զորովայնն լցեալ աղբով և յոլով անմաքրութեամբ և ժահահոտութեամբ . ոչ յարախօսէ զընութենէս, այլ 'ի խոնարհութիւն ածէ՝ թէ "և 'ի կենդանութեան իւրում արհամարհեալ է,, ։ Տեսեր զվատթարութիւն և զգիւրաւ փաստ կրել ընութեանս . մի կար ինար աւուր վախճանին, զի ուսցիս զքո տկարու-

Ոչ 'ի քակումն ամբարտաւանութեանն եւեթ պատեհագոյն է հետազօտութիւն բնութեանս, այլ թէ և այլ ինչ ցանկութիւն վտանգիցէ, եթէ ընչից, եթէ մարմնոց յիմարութիւն և 'ի պակշոտութիւն կոչիցէ, պիտանացու է այս 'ի մխիթարութիւն ախտիցն: Յորժամ տեսանիցես կին գեղեցիկ պաճուճեալ, ունելով աչս գեղաղէշս, այտս փայլեալս, զոր ոչ ոք կարիցէ զգեղեցկութիւնն բերել 'ի վերայ դիմացն, բորբոքեսցէ զքո խորհուրդս և զցանկութիւնն աճեցուցանիցէ, զմտաւ ած զի հող է սքանչացեալն և մոխիր որ բորբոքէն, և դադարեսցէ կատաղեալ անձնդ: Մերկացո ըզմորթ դիմաց նորա բանիւ, և յայնժամ տեսցես զամենայն զգեղեցկադիմութեան[1] նորա զվատթարութիւն. մի կայցես մնայցես յերեւմանն միայն, այլ և որ ինչ 'ի ներքսն է՝ քննեաց խորհրդով, և ոչ այլ ինչ գտցես, բայց ոսկերս և ջիղս և երակս: Այլ թերեւս ոչ իցեն բաւական այսոքիկ. զմտաւ ած զնա այլայլեալ, պառաւեալ, հիւանդացեալ, կափուցեալ զաչսն և խորշոմեալ զայտսն և զամենայն ծաղիկն զայն թառամեալ, զմտաւ ած ընդ ինչ զարմանաս, և ամաչեա 'ի քումն ընտրողութենէ. ընդ կաւ սքանչանաս և ընդ մոխիր, փոշին զքեզ բորբոքէ և գաղաղն:

Ոչ ամբաստանելով զբնութենէս զայս ասեմ, քաւ լիցի. ոչ չարախօսեմ և ոչ անարգութեամբ բամբասեմ, այլ դեղս ախտացելոցն պատրաստեմ: Յաղագս այնորիկ ա̃ծ զնա պատրաստեաց անարգ այնպէս, զի և զիւր զօրութիւնն ցուցանիցէ և զխնամակալութիւնն առ մեզ ծանուսցէ, բնութեանս վատթարութե̃ 'ի նուաստութիւն ածելով, և զամենայն ցանկութիւն և զամբարտաւանութիւն մեր զիջուցանիցէ, զիմաստութիւնն զիւր ցուցանելով, զի և 'ի կաւ այնքան կարաց յօրանալ գեղեցկութիւն:

Որպէս զի յորժամ գործեմ զբնութիւնն, յայնժամ զարդարեմ զարուեստ արարչին: Ոչ է զոր օրինակ ընդ պատկերագործն յայնժամ առաւել զարմանամք՝ ոչ յորժամ յոսկւոյն գեղեցիկ մեզ ցուցանիցէ զպատկերն, այլ յորժամ 'ի կաւեղէն յառաջիկայ նիւ-

1 Միւս օրինակն գեղեցկադիմութեան:

թօղն յօրինեալ պատշաճագոյն զպատկերն գործոյն, նոյնպէս ընդ բաշխարուեստն ոճ զարմանալիք և փառաւորեալք, զի 'ի մոխրոյ և 'ի կաւոյ անբաւ գեղեցկութիւն և զանճառ իմաստութեան իւրոյ ցոյց 'ի մարմինս մեր ամբարեաց։ Եւ զայն ոչ 'ի մարմինս մեր միայն, այլ և յամենայն արարածս գործեաց. անտարգս բազում ուրեք ածելով 'ի մէջ զբնութիւնն՝ զիւրոյ զարուեստին զօրինակս յայտնապէս եդ 'ի նոսա, և ընդ բնութիւնս զյանդիմանութիւն տկարութեանն խառնեաց. զի յաղագս արուեստին և գեղեցկութեանն սքանչասցես ընդ արարիչն, և վասն անարգ բնութեանն ոչ երկիր պագանիցես եղելումն։

Պայծառ է արեգակն փայլելով, զամենայն աշխարհ լուսաւորէ, բայց 'ի գալ գիշերոյ պակասէ. և ոչ 'ի գիշերի միայն, այլ և 'ի տունջեան։ Քանզի այդր աղագաւ և 'ի տունջեան պակասէ, զի զարմանայցես յաղագս արուեստին ընդ արարիչն, և ոչ պագցես երկիր վասն տկարութեան եղելումն։ Տեսանե՞ս զերկինս զայս որպիսի մարմին է, զիարդ գեղեցիկ, որպէս պայծառ, և քան զմեր մարմինս լաւագոյն քան երեւմանն, այլ անշունչ է։ Տեսէ՞ր և զցոյց արուեստին և զտկարութեան յանդիմանութիւն։ Տեսանե՞ս զի և յերկոցունց քեզ ամրութիւն մերձ կայ. զի մի տարտամիցես զարարիչն իբրև զտկար՝ գեղեցիկս արար, և զի մի երկիր պագանիցես եղելոցն իբրև Այ՝ տկարս զնոսա արարեալ մասամբ իւիք արուեստագործեաց։

Զայսոսիկ յիշեցէք յարաժամ։ Քանզի յաղագս սորին զգլուխս զայս մեկնեմք, ոչ զի ուսանիցէք եւեթ ըզգլուխն, այլ զի և զբարսն ուղղեցէք. և եթէ ոչ այն լինիցի, աւելորդ զգլուխն ընթեռնումք, վայրապար մեկնեմք։ Զի զոր օրինակ ըմբիշ 'ի կռուարանն մտանելով օծեալ՝ վայելեսցէ 'ի ձեռաց մանկամարզին, եթէ 'ի հասանել հանդիսին մտանէ յանդիմանեսցէ զարուեստն զայն՝ ընդունայն եմուտ 'ի կռուարանն, նոյնպէս և այսր եկեալք ուսանելով զճարտն զամենայն և զմեքենայս սատանայի, եթէ 'ի գալ ժամանակի նահատակութեանն ընկճիցէք կամ գեղեցիկ դէմս տեսանելով, կամ ամբարտաւանութեամբ փքացեալք, կամ այլով իւիք չար խորհրդով ըմբռնեալք, մտօք այսր մտէք։

Digitized by Google

Արդ յիշեցէք զբանսն որ յաղագս բնութեան մե-րոյ, մանաւանդ ոչ որք ասեն ընդդէմ բնութեանս մե-րոյ, այլ հակառակ անարգել ցանկութեանցն. ոչ են բնութեանս բամբասանք ասացեալքս, այլ ցանկութե՛ն բժշկութիւն խօսքն։ Նովաւ շիջանի բարկութիւնն, այնպէս ցածնու ցանկութիւնն, նովքին 'ի վայր անկանի ամբարտաւանութիւնն։ "Եւ էր ամենայն երկիր շուրթն մի և ձայն մի ամենեցուն,,։ Ահա զոր խնդրեմքն եթէ ոչ յաղագս երկրի է բանս, այլ եթէ ամենայն մարդիկ մի ձայն ունէին՝ սովորութիւն է գրոց այսպէս կոչել ըզ-բանս, լեզու և շուրթն։

Կարևոր է և զայն դիտել յաղագս հերձուածողացն որք քննողք լինին արարչութեանն, և ասեն եթէ չար է մարմին։ Վասն զի զչար շարժմունս խորհրդոյն ան-դամոց մարմնոյն գիրք կոչեն, որպիսի ինչ ասեմ, "Սրե-ցին զլեզուս իւրեանց որպէս զօձի. լեզու իւրեանց սուր սրեալ,,, կարծեն ոմանք եթէ յաղագս լեզուաց ասա-ցեալ իցէ զայս։ Ոչ ասացեալ վասն լեզուոյ, մի լիցի. քանզի ո՞չ է գործ. այլ յաղագս սպանող բանից, որք սպանանեն զմարդիկ, 'ի վերայ արկանելով գժնդակա-գոյնք քան զսուր. "Լեզու իւրեանց սուր սրեալ,,, և դարձեալ, "Շրթամբք նենգաւորօք սրտէ 'ի սիրտ խօ-սեցան,,, ոչ վասն անդամոյ մարմնոյս ասէ, այլ յաղագս խղխայթեալ բանիցն։ Նոյնպէս և աստ "Եւ էր ամե-նայն երկիր շուրթն մի,,, ոչ զայն ուսուցանէ եթէ ա-մենայն մարդիկ մի շուրթն ունէին, այլ շուրթն զձայն կոչեաց։ Քանզի ասելով "Եւ ամենայն երկիր շուրթն մի,,, 'ի վերայ եդ "և ձայն մի ամենեցուն,,։ Նոյն-պէս և յորժամ ասիցէ "Գերեզման բացեալ կոկորդ իւրեանց,,, ոչ զկոկորդացն ամբաստան լինի, մի լիցի. այլ զբանիցն որք ելանեն անտի մեռեալ խօսիցն։ Վասն զի գերեզման է ընդունարան ոսկերաց և մարմնոց մե-ռելոց. այսպիսիք իմն են և բերանք չարախօսաց արար-ծին. նոյնպիսի բերան և զազրաբան խօսողաց մարդկան լուտակողացն, որք ժահահոտութիւնս և չար բանս յիւ-րեանց 'ի կոկորդոյն արտաքս հանեն։

Անուշահոտութեամբ զնա լցո, ով մարդ. զանձ ա-րա թագաւորական, և մի գերեզման սատանայական. և եթէ գերեզման իցէ, գոնէ փակեա, զի մի յառաջա-

ցի ժահահոտութիւնն: Զոր մտածութիւնս ունիս, մի յառաջ բերեր բանիւք. թող 'ի ներքս կալ մնալ, և վաղվաղակի հեղձնուն: Մարդիկ եմք, բազում յոլովակի խորհիմք վատթար և գարշելի խորհուրդս. այլ մի ներեսցուք բանիւք արտաքս ելանել մտածութեցն, զի ճնշեալք 'ի ներքս տկարագոյնք լինիցին և կորնչիցին: Զի զոր օրինակ գազանք ամենաչարք և անդեղք 'ի գուբ ընկեցեալք, թէ խցցես զծագն 'ի վերուստ՝ վաղվաղակի հեղձնուն, ապա թէ ելս ճանապարհի ինչ և յապահովանս ինչ ընձեռեսցես՝ յոլով տան նոցա մըխիթարութիւնս և ոչ թողուն կորնչել, նոյնպէս լինի և չար խորհրդոցն. յորժամ ծնանի 'ի ներքսն, եթէ փակեսցուք զնոցա զարտաքս ճանապարհն, վաղվաղակի ապականեսմք. ապա եթէ բանիւք զնոսա արտաքս բերիցեմք, զնոսա զօրաւորս գործեմք, յապահովանս ընձեռելոյ լեզուոյ, և 'ի վատթար գործոյն խորհուրդ վաղվաղակի գարշելի բանիւքն կրթեալ անկանիմք: Վասն այնորիկ և մարգարէն ոչ պարզաբար գերեզման կոչեաց, այլ գերեզման բացեալ, զոյն ինքն զայս ստգտանելով զոր ասացիս: Զի և ոչ միայն զինքն ամաչեցուցանէ որ զգարշելի բանսն խօսի, այլ և զմերձաւորսն և որք հուպ լինին 'ի նա՝ լնու յոլովութեամբ ժանտախտի: Եւ զոր օրինակ եթէ գերեզման բանայցեմք՝ ժանտախտիւ ըզքաղաք լնումք, նոյնպէս և գարշելի բանիւք համարձակութեամբ խօսեցեալք՝ զմերձաւորսն զամենայն չար ախտիւ լնուն: Յաղագս այսորիկ պարտ և արժան է դուռն և նիգ և սանձ 'ի վերայ դնել բերանոյ:

Արդ զի մի ձայն էր յայնժամ ամենեցուն, յայտնանէ մեզ ցուցաւ. հարկաւոր է այսուհետև ասել ընդէր յոլովք 'ի ներքս մտին: Այլ առ վայր մի զբարոյական բանն հրահանգեսցուք. խրատեսցուք զլեզու մեր սանձս ունել, և մի վայրապար զամենայն արտաքս բերել 'ի միտաց, մի չարախօսել զեղբարց, մի զմիմեանս խածանել և ուտել. զի քան զխածանողն զմարմինսն չարագոյնք են որք բանիւք զնոյն առնեն. նա ատամամբք խածանէ զմարմինն, և սա բանիւք խածանէ զոգին, խոցոտէ զմտածութիւնն և անբժշկելի առնէ զվէրն. յաղագս որոյ մեծամեծք կան մնան պատիժք և տանջանք, որքան դժնդակագոյնս 'ի ներքս դնեն զխոցումնն:

Եւ ոչ յաղագս այսորիկ միայն արտաքս անկանի 'ի թողութենէն որ չարախօսէն, այլ զի ոչ իրաւացի ինչ և ոչ անիրաւ ունի պատճառս ասել զչարութենէն իւրոյ։ Քանզի այլ ամենայն մեղք թէպէտ և անբանս ունին զպատճառս, այլ սակայն սուղ ինչ թուին թէ ունին. որպիսի ինչ, պոռնիկն զցանկութիւն լնու, գողն զաղքատութիւնն լուծանէ, այրասպանն զբարկութիւնն դադարեցուցանէ. իսկ որ չարախօսէն՝ և ոչ մի ինչ պատճառս ունի ասել։ Քանզի զորո՞ց ընչից զյղփութի ստանայցէ, որո՞վ իւիք յոլովագոյն առնիցէ զփարթամութիւն. ոչ այլ ինչ է, բայց յաչաղանաց պատճառ, ոչ իրաւացի և ոչ անիրաւ ունելով բաղայս. և յաղագս նորին զրկեալ է յամենայն թողութենէ։

Ախորժե՞ս չարախօսել, տամ քեզ պիտանացու պատճառս. կամի՞ս չարախօսել, ասա զմեղացն քոց չար. «Ասա նախ զանօրէնութիւնս քո զի արդարասցիս»։ Տեսե՞ր չարախօսութիւն որ ունի պսակ և գովութիւն և արդարութիւն։ Դարձեալ. «Արդարն ինքեան ոսոխ է 'ի յառաջաբանելն», ասէ։ Եւ սակայն եթէ արդար՝ զիա՞րդ չարախօս, և եթէ չարախօս՝ ո՞րպէս արդար։ Արդարն ոչ է չարախօսութեան պարտաւոր. այլ զի ուսցիս, թէպէտ և մեղաւոր ոք իցէ և չարախօսեսցէ զմեղացն՝ արդարն լինի, և յաղագս այսորիկ ասէ. «Արդարն ինքեան ոսոխ լինի 'ի յառաջաբանելն»։ Ցատեանն երկու կողմանք են, և որ զպատասխանին տան, մինն պարտականացն, և միւսն որ ոչ իցեն պարտաւոր. և առաջաբանելն ամբաստանողին տուեալ լինի, որ ոչն ինչ ունի պարտս։ Իսկ աստ ընդդէմ նմին. դու որ պարտաւորդ ես՝ յափշտակեաց զյառաջաբանելն, զի անպարտ լիցիս. մի կար մնար ոսոխին. թէպէտ և 'ի պարտաւորացն ես, այլ նախ քան 'ի նմանէ այնպիսի ինչ լսես՝ դու չարախօսեա զմեղացն։ Սուսեր է լեզու սրեալ. մի այլոց ածցուք 'ի վերայ զվէրսն, այլ զմեր միտութիւնն հատցուք։

Կամի՞ս ուսանել եթէ սովորութիւն է արդարոց ոչ զայլոց չարախօսել, այլ զինքեանց, լուր Պաւղոսի որ գոչէն. «Շնորհ ունիմ Քրիստոսի որ զօրացոյցն զիս, զի հաւատարիմ զիս համարեցաւ դնել զիս 'ի սպասաւորութիւնս, որ յառաջ հայհոյիչ և հալածիչ և թշնա-

մանող էի,,։ Տեսանե՞ս զիարդ զինքեանս ամբաստանէ ։ Եւ դարձեալ. "Քրիստոս եկն յաշխարհ զմեղաւորս փրկել, որոց առաջինն ես եմ,,։ Եւ դարձեալ այլուր. "Ոչ եմ բաւական, ասէ, թէ կոչեցայց առաքեալ, վասն զի հալածեցի զեկեղեցին Այ,,։ Տեսե՞ր զիարդ ամենայն ուրեք չար զինքեանս խօսի. քանզի գիտէ զամբաստանութեանս այսորիկ զշահ՝ թէ արդարութիւն գործէ ։ Եւ յորժամ ինքն ինքեան չարախօս լինելոյ են պէտք, անխնայաբար վարի ամբաստանութեամբ. իսկ յորժամ զայլս տեսանէ զայլոց չարիս դատել՝ տես որպիսի դժուարութեամբ հանդերձ զնոսա ըմբերանէ այսպէս ասելով. "Այսուհետև մի՛ նախ քան զժամանակն դատիք մինչև եկեսցէ տէր որ լուսաւոր առնէ զգաղտնիս խաւարի և յայտնէ զխորհուրդս սրտից,,։ Նմա պահեա զդատաստանն՝ որ զանձառելիս մնացն գիտէ. թէպէտ և հաւատաւ կարծիցես գիտել զմերձաւորին, սխալէ քո դատաստանդ. "Քանզի ո՞ գիտէ, ասէ, զմարդոյն՝ եթէ ոչ հոգի մարդոյն որ 'ի նմա է,,։ Քանզի 'ի մեղուցելոցն ապաշաւելով՝ քան զարեգակն պայծառագոյն փայլել ունին. քանզի 'ի մեծամեծացն և յերևելեացն զազադ են և գերեզմանք բուեալք գտցին։

Լուա՞ր զիարդ Պաւղոս չար զինքենէ խօսի հանդերձ սաստկութեամբ և գերազանցութեամբ զմեղացն՝ որոց ոչ հանդերձեալ էր համարս տալ՝ յաճախապէս յիշէր ։ Քանզի հայհոյիչ և հալածիչ և թշնամանող նախ քան զմկրտութիւնն էր, և զայն զյանցանս եղծ մկրտութիւնն. այլ սակայն յիշէ զնոսա իբրև ոչ եթէ բան ինչ հանդերձեալ էր յաղագս նոցա առնել, այլ զի ցուցցէ զԱյ մարդասիրութիւնն, թէ որպիսի ոք էր և զինչ արար. 'ի հալածչէ արար առաքեալ։

Եւ արդ եթէ նա զջնջեալ մեղսն յիշէ, ևս առաւել մեզ յետ մկրտութեան յիշել է պարտ և արժան ։ Քանզի զի՞նչ պատասխանիք իցեն մեզ և կամ ո՞ր թողութի, յորժամ նա և որոց ոչ է պարտական՝ յիշէ յաճախապէս, իսկ մեք և ընդ որոց հանդերձեալ եմք պատասխանիս տալ՝ և ոչ զայն յիշեցուցանեմք մեզ ինքեանց, այլ թողեալ զմերսն զայլոց չարիսն հարցափորձեմք ։ Լուր զիարդ և Մատթէոս առաջին կենացն իւրոց լինի չարախօս. մաքսաւոր զինքն կոչէ և ոչ ամաչէ զառաջին վարսն

տնուանել ։ Սման զի ոչ ինչ ունէին չարախօսել զնո-
քեանց յետ մկրտութեանն, զառաջինն յիշէին, խորատե-
լով զմեզ՝ այլոց չարեացն ոչ ինչ առնել բան, այլ զմե-
րոյն, և յաճախապէս շուրջ գալ ։

Քանզի ոչ է իսկ և ոչ ինչ այլ դեղ այնպիսի առ 'ի
մեղացն 'ի բաց բարձումն, որպէս յաճախակի նոցա յի-
շատակն և մշտնջենաւոր նոցա ամբաստանութիւն ։ Այս-
պէս մաքսաւորն զիւր չարիսն 'ի բաց կարաց դնել, զի
ասաց. «Քաւեա զիս զմեղաւորս»։ Այնպէս և փարի-
սեցին յամենայն արդարութենէն արտաքս անկաւ, զի
թողեալ զմտաւ ածել զիւր սխալմունս՝ զաշխարհս դա-
տապարտէր բանիւք. «Գոհանամ զի ոչ եմ իբրև զայլ
մարդիկ զյափշտակօղս և զաւելաստացս և ոչ իբրև
զայս մաքսաւոր»։ Նորին աղագաւ Պաւղոս պատուիրէ
ասելով. «Փորձեսցէ իւրաքանչիւր ոք զիւր գործն, և
յայնժամ յինքն միայն զպարծանս կալցի և մի յընկերն»։

Ախորժեմս ուսանել և 'ի հնումն որպէս արդարքն ամ-
բաստանեցին զինքեանս, լուր նոցա և ձայնակից լեր
բարբառոյ նոցա ։ Դաւիթ ասէր. «Անօրէնութիւնք
իմ բարձրացան քան զգլուխ իմ. իբրև զբեռն ծանր
ծանրացան 'ի վերայ իմ»։ և Եսայիաս գոչէր. «Ով
ինձ թշուառականիս, զի մարդ եմ և անմաքուր շրթունս
ունիմ»։ Երեք մանկունքն 'ի հնոցին զգնայլին. զմար-
մինս իւրեանց յաղագս այ մատնեցին, և ընդ վերջին
մեղաւորան զինքեանս թուէին՝ մեղաք անօրինեցաք ա-
սելով. և սակայն զի՞նչ պայծառագոյն քան զնոսա, զի՞նչ
մաքրագոյն. զի թէպէտ և էին մեզս ինչ արարեալ, զա-
մենայն 'ի բաց ջնջեաց բոցոյն այնր բնութիւն. բայց
ոչ յուղղութիւնսն իւրեանց հայէին, այլ զյանցանսն
զմտաւ ածէին ։ Այնպէս և Դանիէլ յետ գբոյ առիւ-
ծուցն, զկնի բիւր տանջանաց համբերելոյ, և նա զին-
քենէ չարախօսէր, և զընկերէ և ոչ ոք ։ Եւ ընդէ՞ր ար-
դեօք. զի որ զայլոցն խօսի չար՝ զայրացուցանէ զտէրն,
և որ զինքենէ ամբաստանէ՝ քաւէ զյանցանսն և հաշ-
տեցուցանէ զտէրն, զարդարն արդարագոյն ևս գործէ,
և զմեղաւորն յափշտակէ 'ի յանցանաց և թողութեան
արժանաւոր առնէ ։

Ո՛ այսուհետև խօսելով մի զայլոցն, այլ զմեր չարիսն հե-
տազօտեսցուք, փեռեկեսցուք զմեր զխիղճն. վերստին

ատացուք զկեանս մեր զամ, զխուրաքանչիւր ոք 'ի յանցանացն մերոց քննեսցուք ։ Եւ մի միայն մի խօսեսցուք չար, այլ և մի լուիցուք յայլոց խօսել զչարն, զի և ընդ այնր մեղադրութիւն կայ առաջի և մեծ պատուհաս. "Զլուր սնոտի, ասէ, մի ընկալցիս,, ։ Ոչ ասաց՝ սնոտի լուր մի հաւատայցես, այլ մի ընկալցիս զնա. խից զականջդ, պարսպեա զչարախօսութեանն զմուտս, յոյց եթէ քան զչարախօսեալն ոչ ինչ նուազ և դու թշնամի ես և պատերազմող չարախօսին ։ Նմանեաց մարգարէն որ այսպէս ասէր. "Որ խօսէր չար գաղտ զընկերէ իւրմէ, զայնպիսին 'ի բաց հալածէի,, ։ Ոչ ասաց եթէ ոչ հաւատայի, ոչ ընդունէի զասացեալսն, այլ 'ի բաց վարէի իբրև զթշնամի և զպատերազմող ։

Բայց են ոմանք որք ցուրտ մխիթարութեամբ զինքեանս մխիթարեն, միշտ այսպէս ասելով. տէր, մի կացուցաներ յիս զմեղս զայս, զի լուր բանիս պարտաւոր եմ ։ Զինչ պէտք պատասխանեաց, զինչ պէտք թողութեան այնորիկ. լուեաց և ազատիս 'ի մեղադրութենէն. մի ինչ ասեր, և մաքուր ես յերկիւղէն. ընդէ՞ր քեզ ինքեան իրս շահես յոյ և 'ի մարդկանէ ։ Ընդէ՞ր պարտաւոր զքեզ ինքն առնես բամբասանացն, յոյր սակս զեռան ծանր կապես. ո՞չ իցէ բաւական քեզ յաղագս քո չարեացն համարս տալ, այլ և այլ ևս չեզջակուտես զմեղսն. աւելորդ այն պատասխանի. ոչ զլուր բանն պարտիս, այլ զամբաստանութիւն բան պահանջիս ։ Քանզի եթէ լուեալ լռիցես, զլսելոյն ևեթ բան պարտիս. ապա եթէ լսելոյն յայլս բերիցես և այլում ճառիցես, ոչ լսելոյ բանին ես պարտաւոր, այլ չարախօսութեան. "Քանզի 'ի բանից քոց արդարասցիս, ասէ, և 'ի բանից քոց պարտաւորեսցիս,, ։

Զայսոսիկ ոչ յաղագս չարախօսելոյն երկուցեալ ասեմ և վկայեմ. քանզի նա զչարն լսելով՝ ոչ ինչ դըրժեցաւ և ոչ վնասեցաւ. այլ եթէ սուտք են ասացեալքն զնմանէ, և վարձս ևս մեծամեծս ընկալցի. իսկ եթէ ճշմարիտք, և ոչ այնպէս դրժի 'ի քումմէ չարախօսութենէն. զի ոչ եթէ 'ի քումմէ լուտանացն բերիցէ յայնժամ զվըճիռն 'ի վերայ նորա դատաւորն ։ Նա թէ պարտ և արժան իցէ աքանչելի ինչ ասել, և մեծագոյնս ևս շահի՝ առաքինաբար զհայհոյութիւնսն բերելով որպէս և մաք-

սուտոյն։ Իսկ որ չարն խօսի, եթէ ճշմարիտ և եթէ սուտ չար առիցէ զընկերէն, մեծապէս զրկի. և զի զըրպարտելովն կորնչի, և ոչ ցուցանելոյ ինչ պէտք են։ Նայց թէ և ճշմարիտ ասելով, ծանրագոյն առնէ ինքեան զատեանն՝[1] հաչակելով զընկերոյն թշուառութիւնս և գայթակղութեանն պատճառ լինելով. զոր թագուցանելն էր պարտ և արժան, յայտնէ ամենեցուն և քարոզէ զխայտառակ ընկերոյն։ Զի եթէ զմի ոք գայթակղեցուցանել անհրաժարելի տայցէ զպատիժն, որ զբիւրս գայթակղեցուցանէ չար ձայնիւն՝ որքան ոչ կրեսցէ պատուհաս. զի և փարիսեցին ոչ ստեաց, այլ ճշմարիտ ասաց՝ մաքսաւոր կոչելով զմաքսաւորն, այլ սակայն դատաստան եառ։

Զայս գիտելով, սիրելիք, փախիցուք 'ի չար խօսելոյ. զի ոչ ինչ դժնդակագոյն քան զայն և ոչ դիւրին մեղք։ Ընդէ՞ր. վասն զի քան զամենայն անօրէնութիւն երագապէս գործի, և վաղվաղակի յափշտակէ զոչ ըզգուշացեալսն։ Այլ մեղք և ժամանակի կարօտանան և ծախուց և պարապելոյ և գործակցաց, և բազում անգամ 'ի յամրութեան ժամանակին ընդ մէջ հատանին։ Որպիսի ինչ ասեմ. ցանկացաւ ոք սպանանել և ագահել, յոլով իրաց պէտք լինին նմա. և 'ի յամելն՝ բազում անգամ լուծանի սրտմտութիւնն և 'ի բաց կայ 'ի չար բարկութենէն, եղծ զապականեալ բարսն, ոչ յաւել զգործսն 'ի խորհուրդսն։ Իսկ 'ի չարն խօսել ոչ այսպէս. այլ եթէ ոչ իցեմք յոյժ արթունք, դիւրաւ յափշտակիմք. ոչ ժամանակի, ոչ յամելոյ, ոչ ծախուց և ոչ իրաց ումեք մեզ պէտք լինին առ չարն ասելոյ. այլ բաւական միայն ախորժելն լինի, և վաղվաղակի 'ի գործ ելանեն խորհուրդք. լեզու միայն է որ սպասաւոր լինի։

Եւ արդ զի սրամիտ է չարն, և դիւրաւ շուրջ զմեօք կան մեղքն, չար են տանջանքն և պատիժքն, և շահ և ոչ մի ինչ ոչ փոքր ինչ և ոչ մեծ, հանդերձ բազում հաւաստութեամբ փախիցուք յախտէն և զայլոցն շիջուսցուք զչարիս. մի հաչակեսցուք, այլ պատուիրեսցուք յանցուցելոցն որպէս և տէր հրամայեաց. "Եթէ մեղիցէ քեզ եղբայր քո, երթ յանդիմանեա զնա ա-

1 Յօրինակին զանգատն. եդաւ ըստ յունին։

ռաջի քո և նորա միայնոյ ,, ․ որպէս թէ առանց հրապարակագոյժ լինելոյ յանդիմանելովն դիւրագոյն արասցես զբժշկութիւնն ։ Մ՛ի խածցուք և մի կորիցուք զայլոցն վէրս ։ Մ՛ի նմանիցուք Ճանճոյ, այլ ընդ մեղուս նախանձեսցուք ․ քանզի Ճանճքն 'ի վէրս նստելով խածանեն, և մեղուքն 'ի վերայ ծաղկանցն թռչին ․ վասն այնորիկ մեղուք խորիսխ մածուցանեն, և Ճանճքն ցաւս 'ի վերայ ածեն մարմնոյն յորս նստին ․ և նոքա են գարշելիք, իսկ մեղուք ցանկալիք և փառաւորք ։

Արդ և մեք այսուհետև յաղբիւր առաքինութեան սրբոցն թռչել պատրաստեսցուք զանձինս՝ յաճախապէս զանուշահոտութիւն զանոր ուղղութեանցն ստանալով, և մի խածցուք զվէրս ընկերացն ․ այլ թէ տեսանեմք որք ունիցեն զայն, ըմբերանեսցուք, երկիւղիւ տանջանացն զնոսա պարսպելով, զազգակցութիւնն յիշեսցուք որ առ եղբարսն է ։ Իսկ եթէ ոչ ինչ յօգտանէ տայցեն տեղի, Ճանճս զնոսա կոչեսցուք ․ զի թշնամանք անուանս այսորիկ 'ի բաց արասցեն 'ի չար կրթութենէն զնոսա, և զի 'ի վատթար պարապմանէն յայնմանէ ազատեալք՝ զամենայն պարապումն 'ի քննութիւն մերոց չարեաց ծախեսցուք ։

Այսպէս զգուշեալքն կանգնեսցին, և մեղքն ոչ հրաչակեսցին ։ Ոչ զիւրեանց չարիսն զմտաւ ածեն յաճախապէս, դիւրաւ զայնոսիկ 'ի բաց դնեն յիշատակս յանցանացն, և առ այլ ևս գործոց դանդաղկոտք լինին ․ իսկ որք զառաքինութիւնս սրբոցն յաճախապէս դիտեն, մեծ նախանձ առնուն առ նոցա նմանութիւնս ․ զի 'ի ձեռն այսոցիկ ամենեցուն բովանդակ մարմին եկեղեցւոյ զմեզ ուղղեալ, կարասցուք հանդերձ լամբք[1] այսու յարքայութիւնն երկնից մտանել ։ Որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

1 Յօրինակին [illegible] ․ եղաւ ըստ յաւելին ։

ՃԱՌ Ի ԿԱՂԱՆԴԱՑՆ ՅԱՂԱԳՍ ԱՐԲԵՑՈՒԹԵԱՆ ԵՒ ՈՂՋԱԽՈՀՈՒԹԵԱՆ, ԵՒ Ի ՂԱԶԱՐՈՍ ԿԻՐ ՈՐ ԱՌ ՆՈՎԻՆ ԸՆԹԵՐՑԱՒ, ՈՐ Է ՅՈՒՇ ՀԵԹԱՆՈՍԱՑ *

Զերեկեան օրն տօն սատանայական՝ արարաք տօն հոգեոր. առ 'ի մէնջ զբանս ընկալարուք հանդերձ յոժով բարեմտութեամբ, և զյոգնագոյն մասն աւուրս սատ գագարեցէք, արբենալով արբեցութիւն որ չէ բազում ողջախոհութեան ընդ Պաւղոսի պարեցէք: Կրկնապատիկ ձեզ շահ եղև, զի յանառակ արբեցելոց պարուէն վճարեցայք, և հրճուանօք բերկրեցայք հոգևորօք, յաւէտ բարեկարգութիւն ունելով: Ճաշակեցէք 'ի խառնելեացն ոչ որ ապականացու ունի, այլ 'ի հոգեոր վարդապետութենէ լցեալ: Փող եղէք և քնար հոգւոյն. այլքն սատանայի պարէին, խոկ դուք նուագարանս և անօթս հոգևորս կազմեցէք զձեզ 'ի ձեռն սատ գեզերանացդ. ընձեռեցէք հոգւոյն նուագել զանձինս ձեր, և որ 'ի նմանէ շնորհքն են՝ շրջեցի 'ի ձեր խորհուրդս: Աստի և զամենայն յարմարանուացն հնչեցէք, որ ոչ զմարդիկ միայն, այլ զվերին զօրութիւնս հրճուեցոյց:

Արդ եթէ այսօր ընդդէմ արբեցութեան զլինեցուք զկեղծս, զպէճ և զհոմանուտ կեանս բամբասեցուք. մեղադրեցուք որք 'ի նմա զբոլոր օրն գեգերին, ոչ զի ամաչեցուսցուք զնոսա, այլ զի յամօթոյն ազատեսցուք զնոսա. և ոչ զի թշնամանեսցուք, այլ զի ուղղեսցուք. ոչ զի խայտառակեսցուք զնոսա, այլ զի 'ի բաց զերծուցուք յանառակ ծաղրանաց և 'ի սատանայի ձեռաց: Զանզի որ յարբեցութենէ զբոլոր օրն գեգերի, և փափկերութեան և շատակերութեան զինքն տայցէ, ընդ նմին եւս սատանայական բաղձութեամբն լնու: Նայց լցեալ լինէ անաւելութիւն 'ի մեղաց բանից: Եթէ կայցեն ձեռացեն 'ի նմին պատուհրանի և Թէ ոչ, ոչ այնպէս մեք 'ի բաց կացցուք 'ի նոցա խորհրդակցութենէն. զի և աղ֊

* Ընդարձակ ճառս 'ի յայտ բերգրին՝ քերթեալ է յօրինակին մերում աւելի քան զ300 տող յայլեայլ տեղիս յորս զանց առնեմք նշանակել:

բիւրք թէպէտ և ոչ ոք առնուցու ջուր 'ի նոցանէ՝ բըղխեն, և ջրհորք թէպէտ և ոչ ոք ըմպիցէ ջուր 'ի նոցանէ՝ զեղանին, և գետք թէպէտ և ոչ ոք ճաշակէ՝ ընթանան. պարտ և արժան է և աստղին թէպէտ և ոչ ոք հայիցի՝ զիւր զամենայն լնուլ:

Ոչ և օրէնք իսկ կան մեզ 'ի մարգարէիցն այ. որք զեան 'ի վարդապետութի ընկալաք, մի որ ինչ 'ի մէնջ է՝ երբէք նուազեցուցանել և մի լռել, եթէ լսէ ոք և եթէ ատունդանէ: Երեմիաս վասն զի յաւէտ սպառնայր հրէիցն, և զհանդերձեալ դժնդակութիւնն յառաջագոյն ձայնէր, և 'ի լսելեացն կատակեալ լինէր և զբոլոր օրն ծաղր կայր նոցա, խորհեցաւ երբեմն 'ի մարգարէութենէն յայնմանէ 'ի բաց կալ, մարդկային իմն ախտանալով զայպանումն, և զլուտանսն ոչ կարելով ընդունել, և ասէր. "Եղէ ծաղր զամենայն աւուրս. ոչ խօսեցայց և ոչ անուանեցից զանուն տեառն. և եղև յիս իբրև զհուր բորբոքեալ յոսկերս իմ, և լքայ ամենայն ուստեք, և ոչ կարէի համբերել": Եւ զոր ասէն այսպիսի ինչ է. ախորժէի, ասէ, 'ի բաց կալ 'ի մարգարէութենէն, վասն զի ոչ լսէին հրեայքն. և միանգամայն զայս խորհելով, իբրև զհուր յանդամս իմ անկաւ հոգւոյն զօրութիւն, և զամենայն զներքս բոցակիզէր և շրջէր ծախելով և փաղաղելով զոսկերս իմ, այնպէս մինչ զի ոչ կարել զբոցակիզութիւնն զայն բերել:

Արդ եթէ որ ծիծաղեալն լինէր և կատակեալ, յորժամ խորհեցաւ լռել՝ ընդ այնպիսի տանջանօք անկաւ, որքա՞մ թողութեան արժանի լինիցիմք մեք որ այնպիսի ինչ և ոչ երբէք կրեցաք, եթէ յաղագս ումանց պղերգութեանն կարճամտելով՝ 'ի վարդապետութենէս 'ի բաց կայցեմք որ առ նոսա է, և մանաւանդ յորժամ այսքան են որք հային 'ի բանս: Զայս ասեմ ոչ զիս ինքն մխիթարելով և սփոփելով. վասն զի հաւանեցուցի զիմ զանձնս ցորքան եմ կենդանի և կամք լիցին այ 'ի մերձակայ կեանս զիս յերկարել, զվարդապետութի զայսօրիկ լցից, եթէ հայեսցի ոք և եթէ ոչ հայեսցի՝ ես զհրամայեալսն առնեմ:

Ոչ և ձկնորս յոլովակի 'ի բովանդակ աւուրն զցանցսըն ունայն ձգելով, երեկորին հանդերձեալ 'ի բաց գնալ՝ բազում անգամ որ 'ի բոլոր աւուրն փախեաւ 'ի նմա-

նէ ձուկն՝ որսացեալ երթայ ։ Իսկ եթէ կամիմք յաղագս միշտ եղելոյ անհանդիպութեանն 'ի դատարկութեան կալ մնալ և յամենայն իրաց հեռանալ, բովանդակ կենցաղս մեր կորնչի. և ոչ միայն հոգևորքն, այլ և աշխարհականքս ամենայն սուզանին ։ Զի և երկրագործ եթէ կամեսցի յաղագս յոլովակի անհարթութեան օդոյն եղելոյ՝ 'ի մշակութենէն 'ի բաց վազել, սովու մեռանիմք ամենեքեան ։ Իսկ նաւուղիղ վասն յաճախապէս եղելոյ ձմերանայն փախչէր 'ի ծովէ, անմատուելի մեզ լինէին ծովքն և անպիտանք, և որ անտի կեանքն էին հեռանային ։ Գիտելով զայս ամենայն եթէ միանգամ կամ երկիցս և եթէ յոլովակի վրիպեսցեն, 'ի վախճանին դարձեալ զնմին գործոյ բուռն հարկանեն, և 'ի միում տարւոջ զընաւ ժամանակին զտուգանսն ապրեցուցանեն ։ Իսկ վաճառական յոլով նաւաբեկութեանց բազում անգամ համբերելով՝ ոչ 'ի բաց կայ 'ի նաւահանգստութենէն, այլ և զնաւն 'ի խոնարհ ձգէ, և նաւավարս 'ի վարձու ունի, և ինչս փոխ առնլով զնոցին իրացն բուռն հարկանէ, թէպէտ և հանդերձեալն անյայտ իցէ ։ Իսկ իւրաքանչիւր ոք յոր ինչ և մխիցին 'ի գործ, նոյնպէս առնել սովորեցին ։

Արդ եթէ մշակ և վաճառական այնքան փութով վարին յաշխարհական որոց անյայտ է առաջիկայն, մեք եթէ ասիցեմք և ոչ ոք լուիցէ և վաղվաղակի 'ի բաց հեռանայցեմք, զո՞ր ներումն թողութեան ունիցիմք այնուհետև, զի՞նչ պատասխանիս ։ Իսկ սակայն նոցա 'ի վրիպանսն ոչ ոք է որ զտուգանսն մխիթարէ ։ Իսկ մեք որ ասեմքս և խրատեմք, ոչ այնպէս. այլ թէ և արկանիցես զսերմն 'ի լուռն՝ և ոչ ընդունիցի, և ոչ զպտուղ հնազանդութեանն բերիցէ, դու զվարձ խորհրդականութեանն ընդունիս յԱյ, և այնքան առնուս հատուցումն 'ի սուընդանելն նորա՝ որքան ընդունէիր որ եթէ հնազանդեալ էր, զի զքոյն զամենայն լցեր ։ Հաւանեցուցանել զլսողն ոչ եմք պարտականք, այլ խորհրդակիցք և եթ լինել. վասն զի պատուիրելն մեր է, իսկ հաւանելն նոցա ։ Իսկ զոր օրինակ մեք եթէ ոչ պատուիրիցեմք, թէ և բիւր ինչ ուղղութիւնս առնիցեն նոքա, վարձն նոցին միայն առաջի կայ, բայց մեզ ինչ ոչ է շահ, զի ոչ եղեաք խորհրդակիցք խրատուն. նոյնպէս և

եթէ մեք խրատիցեմք և նոքա ոչ հայիցին, զամենայն զտանջանսն նոքա ընդունիցին, և մեզ ոչ ինչ լինիցին մեղադրութիւնք, այլ և յոլով ևս հատուցմունք վարձուց յա̃յ, զի զմերն զամենայն լցաք։ Արկանել եւեթ հրամայիմք զարծաթն 'ի սեղանաւորս. ասա և խրատեա։ Ոչ լուէ, ասէ։ Այլ դու զվարձն ունիս կատարելապէս. մի յառաջագոյն 'ի բաց կացցես, մինչև հաւանեցուսցես, մինչդեռ կենդանի ես. փոխանակ քեզ լիցի խորհրդակցութեանն հնազանդութիւն որ զխրատն ընդունի։

Սատանայ հակառակ փրկութեան մերոյ ընթանայ. ոչ ինչ ինքն շահի, այլ և մեծամեծ ևս վնասի 'ի փութոյն յայնմանէ. և սակայն այնքան ունի մոլութիւն, մինչ զի յոլովակի յանկարելի իրսն ձեռնարկել. և գերել կամի ոչ միայն զայնոսիկ զոր վստահանայն իւրք ընկճել և խոտորեցուցանել, այլ և զամենեսեան։ Ոչ 'ի բաց եկաց 'ի Յոբայ զամենայն շարժելով և համարելով կործանել զնա, և ոչ հրաժարէր ամենեւին չար գեն այն պիղծ և ամենագարշ. և այն զի ա̃յ այնքան յայտնէր զարդարոյն այնորիկ զառաքինութիւն։ Ո՞չ արդեօք ամաչիցեմք շառագունիցեմք, ասա ինձ, եթէ սատանայ ոչ հրաժարէ երբէք 'ի մերմէ կորստենէն, այլ միշտ յուսալով այնքան մարտնչի, իսկ մեք յեղբարցն փրկութենէ հրաժարիցեմք։ Եւ նմա նախ քան զփորձութիւնսն 'ի մարտէն 'ի բաց կալ էր պարտ և արժան. վասն զի ա̃յ վկայէր արդարոյն։ Եւ սակայն ոչ հեռացաւ, այլ 'ի բազում մոլութենէն որ հակառակ մեզ է, և զկնի ա̃յ վկայութեանն յուսացաւ յաղթել առաքինւոյն այնմիկ յայնժամ։ Բայց մեզ ոչ ինչ է որ յանյուսութիւն արկանէ, և սակայն 'ի բաց կամք։ Սատանայ ա̃յ խափանելովն ոչ հեռանայ 'ի մերմէ կռուոյն. դու 'ի բաց վազես զի ա̃յ զքեզ յորդորէ և առնէ յօգնականութիւն անկանելոյն։ Լուաւ սատանայ յա̃յ որ ասէր. "Այր արդար ճշմարիտ ա̃ծապաշտ, հեռացեալ յամենայն չարեաց". և եթէ ոչ ոք իբրև զնա 'ի վերայ երկրի. և զկնի այնքանեաց և այնպիսեաց դաւանութեանցն կայր մնայր ասելով՝ թերևս արդեօք յաճախութեամբ և մեծութեամբ 'ի վերայ ածելովք չարեօք կարասցիս նմա յաղթել, և զմեծ զաշտարակն զայն կործանեսցիս։

Զինչ լինիցի մեզ թողութիւն, որ պատասխանիք, եթէ այնքան չար դիւքն հակառակ մեզ վարեցեալ մոլորութեամբ՝ մեք և ոչ յոլով ինչ վասն փութոյ 'ի փրկութիւն եղբարց մերոց 'ի ներքս բերիցեմք, և այն զի ա̃ծ մեզ մարտակից և օգնական լինի: Յորժամ տեսանիցես խիստ և ստահակ զեղբայրն և ոչ հայիցի ասացելովքն, թերևս ժամանակաւ կարասցես հաւանեցուցանել: Որպէս և Պաւղոս հրամայեաց. "Ծառայի տեառն ոչ է պարտ և արժան կռուել. այլ հանդարտ լինել առ ամենեսեան, խրատել զհակառակամարտսն, թերևս տացէ երբէք նոցա ա̃ծ ապաշաւանս 'ի գիտութիւն ճշմարտութեան,,:

Ոչ տեսանէք զհարս զի բազում անգամ որդւոց նոցա 'ի բաց հրաժարեցելոց մերձ նստին արտասուեն, ողբան համբուրեն, որ ինչ իւրեանցն է զա̃մ 'ի ներքս բերեն մինչև 'ի վերջին շունչն: Զնոյն և դու յաղագս եղբարցն արա. թէպէտ և նոքա ողբալով և արտասուելով ոչ զհիւանդութիւնն 'ի բաց վարեն, և ոչ որ 'ի վերայ եկեալ է մահն՝ անդրէն դարձուցանել կարեն, բայց զանձն հրաժարեալ ժուժկալութեամբ և համբերելով և յամելով կարես բազում անգամ 'ի ձեռն ողբոցն 'ի վեր ձգել և կանգնել: Աղաւթեցեր և ոչ լռեա. արտասուեա և տես յոլովակի, հառաչեա սակաւ ինչ, զի պատկառելով 'ի քումմէ խնամակալութենէդ՝ դարձցի 'ի փրկութիւն:

Այլ զինչ պէտք են ասել յաղագս որոյ զկնի բազում խրատուցն վերստին ստանան զինքեանս: Զի և որք զանբժշկականսն ախտանան, ոչ 'ի բաց կալ է պարտ և արժան ծուլանալ, թէպէտ և յառաջագոյն գիտիցեմք յայտնապէս եթէ 'ի փոյթ մեր վայելելով ոչ ինչ առաւել շահիցեն: Այլ եթէ անհաւատալի ինչ ձեզ բանս այս թուեսցի, զորս Քրիստոսն արար և ասաց՝ այնմ հաւանեսցուք. մեք զհանդերձեալսն անգիտանամք. վասն որոյ ոչ յամառել կարեմք յաղագս լսողացն՝ եթէ հաւանեսցին և եթէ անհաւանիցին մերում ասացելոցն:

Բայց Քրիստոս զամենայն գիտելով յայտնապէս ոչ նուազեցոյց, թէպէտ և ոչ ոք լսէր ուղղել. նա մինչև 'ի վախճան գիտէր զՅուդաս թէ ոչ էր 'ի բաց կալոց 'ի մատնելոյն, և ոչ կամեաց խրատելով և պատուիրելով,

բարեգործութեամբք, սպառնալեօք, ամենայն օրինակաւ վարդապետութեամն խորշեցուցանել զնա ՚ի մատնիչն լինելոյ, և յաճախապէս ընդդէմ հարկանէր իբրև սանձօք ոմամբք։ Բանիւք զայն առնէր խրատելով ըզմեզ. զի թէպէտ և կանխաւ գիտիցեմք եթէ ոչ հաւանին եղբարքն, զամենայն որ առ ՚ի մէնջն է՝ լնուցումք, որպէս զի աւարտեալ լիցի մեզ խորհրդակցութե՛ն վարձ։

Եւ տես զիարդ յաճախապէս զնա իմաստութեամբ պատկառեցուցանէր. "Մի ոմն ՚ի ձէնջ մատնեսցէ զիս"։ և դարձեալ. "Ոչ յաղագս ամենեցուն ձեր ասեմ, ես գիտեմ զորս ընտրեցի, և մինդ ՚ի ձէնջ սատանայ է"։ Եւ ներէր զամենեսեան ՚ի տրտմութիւն անկանել. որպէս զի մի՛ յայտ յուցանիցէ զմատնիչն, և անամօթագոյն առնիցէ յանդիմանութեամն յայտնութեամբ։ Եւ զի յայլոց տրտմութիւն և երկիւղ արկլին ասացեալքն, որք ոչ ինչ գիտէին զինքեանց չարութիւն, լուր զիարդ իւրաքանչիւր ոք տագնապելով ասէր. "Տէր, միթէ ես եմ"։ Ոչ բանիւն միայն, այլ և իրօքն խրատէր զնա։ Զի և զիւր զմարդասիրութիւնն եցոյց բազում անգամ ամենայնիւ զբորոտս սրբելով, զդևս հալածելով, զհիւանդս բժշկելով, զանդամալոյծս պնդելով, զմեռեալս յարուցանելով. զամենեսեան բարեգործեաց, պատժեաց և ոչ զոք. յաճախապէս ասէր. "Ոչ եկի զի դատեցից զաշխարհ"։ Եւ զի մի՛ կարծիցէ Յուդաս թէ բարի միայն գիտէր գործել Քրիստոս, և զայնր իմն զմասն ուսուցանէր նմա, զոր եթէ և տանջել կարէ և պատժել զմեղուցեալսն։

Եւ տես զիարդ յայտնապէս այսոքիւք խրատեաց, որպէս նմա պատշաճ էր. ՚ի մարդկանէ և ոչ զոք պատժել և ոչ տանջել ներեաց. և՛ զի ուսցի զտանջողական զօրութիւն նորա աշակերտն։ Զի թէ էր պատժեալ, թուէր ընդդիմանալ ինքեան որ ասէրն՝ "Ոչ եկի զի դատեցից զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ"։ Դարձեալ եթէ ոչ էր տանջեալ զոք, առանց ուղղելոյ արդեօք կայր մնայր աշակերտն ոչ ուսուցանելով նորա ըզտանջողական զօրութիւնն։ Եւ ապա զի՞նչ լինիցի. զի և զաշակերտն զարհուրեցուցանիցէ, և մի՛ արհամարհեսցէ ՚ի հանդարտն լինել նորա, և ՚ի մարդկանէ մի՛ ոք հարցի և մի՛ ընդ տանջանօք և պատժովք անկցի, ՚ի թզե-

նուաջն ցուցանէ զզօրութիւնն Քրիստոս ասելով. «Մի՛ ևս եղիցի 'ի քեզ պտուղ». և սակ բանիւն գօսացոյց զնա: Որպէս ամենայն մարդկան վնաս մնացին. և նա զիւր զօրութիւնն ցուցանէր անկոյն կալեալ զպատիժսըն: Եւ աշակերտին թէ էր հայեցեալ, մեծապէս արգելոք 'ի պատժոցն յայնցանէ շահէր զմարդասիրութիւն. բայց սակայն և ոչ այնպէս ուղղեցաւ: Իսկ ած գիտելով ոչ զայն միայն՝ այլ և զկնի այնորիկ յոյժ մեծագոյն արար. յորժամ 'ի վերայ չոգան հանդերձ սրօք և բրօք, զամենեսեան զնոսա կուրացոյց. վասն զի ասէ «զո՞ խնդրէք», այնր յայտնութիւն էր զի ասացեալ էր Յուդայի յաճախապէս «զի՞նչ կամիք տալ ինձ զի մատնեցից զնա ձեզ». կամելով և զՀրեայսն հաւանեցուցանելով և զնա՝ եթէ կամօք գայր 'ի չարչարանս. ոչ նորա չարագործութիւնն կարաց յաղթել նմա. նոյն իսկ մատնիչն մինչդեռ ընդ ամենեսեան գայր, ասէ. «Զո՞ խնդրէք»: Որպէս ոչ գիտէր զոր հանդերձեալն էր մատնել: Զի կուրացոյց զաչս նորա. և ոչ զայս միայն, այլ և յոյն ևս ընկեաց նովին ձայնիւն:

Եւ զի ոչ այն հանդարտագոյնս ինչ արար զնոսա, և ոչ զպիղծն զայն 'ի մատնելոյն 'ի բաց կացոյց, տես զխարդ պատկառելով յանամօթին յանձն մերձենայր և խօսէր բանս, որ բաւական էր և զքարեղէն միտս կակղացուցանել: Զի յորժամ դիմեացն զնա համբուրել, զի՞նչ ասէր. «Յուդա, համբուրելո՞վ զորդի մարդոյ մատնես»: Եւ ոչ այնու ամաչէր 'ի մատնութենէ ձեռոյն: Զայնոսիկ ասէր մերձենալով և յիշեցուցանելով զառաջին ընդունելութիւնն: Եւ սակայն այնքան արար Քրիստոս և ասաց, ոչ ինչ եղև լաւագոյն նա. ոչ յաղագս խրատողին տկարութեան, այլ վասն իւրոյ չարութեանն. բայց Քրիստոս գիտելով զայն ամենայն յառաջագոյն, ոչ նուազեաց 'ի սկզբանէ մինչ 'ի կատարած որ ինչ յինքենէ էր զամենայն ցուցանել:

Զի մեք թէպէտ և գիտիցեմք, յաճախապէս ևս միշտ հեղգացեալս զեղբարսն մեր ուղղել պարտիմք, թէպէտ և ոչ ինչ 'ի խորհրդակցութենէն լինիցի շահ. Քանզի եթէ որ գիտէր զվախճանն այնպիսի լինելոյ յաղագս այնորիկ որ ոչն էր պտուղ շահելոյ 'ի նորա խրատուէն՝ այնքան վարեցաւ խնամակալութեամբ, որում

թողութեան արժանի լինիցիմք մեք յորժամ ոչ զելս իւրացն գիտելով այսպէս յաղագս եղբարցն փրկութեան հեղգայցեմք՝ եթէ առաջին և երկրորդ խորհրդակցութեամբքն զնոսա կրանեմք։ Թողումք զկնի առաքելոցն ամենեցուն, որ ըստ մեզ իցեն՝ զմտաւ ածցուք, զի հանապազօր ած ընդ մեզ խօսել 'ի ձեռն մարգարէից և առաքելոց յոյժ ստունգանեմք, և սակայն ոչ 'ի բաց կայ 'ի խօսելոյ և յաղաչելոյ միշտ զլացերասանակեալս և ովք ոչս հայիմք։ Իսկ գոչէ Պաւղոս ասելով. «Յաղագս Քրիստոսի պատգամաւորիմք, որպէս թէ այ աղաչելով 'ի ձեռն մեր, վասն Քրիստոսի հաշտեցարուք ընդ այ»։

Իսկ եթէ պարտ է զարմանալի ինչ ասել, ոչ այնքան գովութեանց է արժանաւոր որ գիտէն՝ եթէ ամենայն իրօք հաւանեցի ընդունող խորհրդակցութեանն, և խրատէ զնա որպէս յոլովակին ասիցէ և վրիպելով, և ոչ այնպէս 'ի բաց կայ։ Բայց զի պարտ և արժան է ոչ երբէք 'ի բաց կալ յանկելոցն, թէպէտ և կանխաւ գիտիցեմք թէ ոչ հաւանին, բաւականապէս ցուցաւ։ Պարտ է այսուհետև 'ի փափկացելոցն 'ի բամբասանս երթալ. զի մինչ դեռ կայ մնայ սրտմտութիւնս այս, և զվէր որբեցութեանն զոր յարբեցողացն հոգիս գործեաց սատանայ, տալ զդեղն 'ի վերայ դնելոյ պատշաճ։

Արէկ զՊաւղոս ցուցաք որ ասէրն. «Եթէ ուտիցէք, եթէ ըմպիցէք, եթէ զինչ և առնիցէք, զամենայն 'ի փառս այ արասջիք»։ Այսօր զՊաւղոս ցուցցուք ձեզ ոչ պատուիրելով միայն և խորհրդակից լինելով հեռանալ 'ի փափկութենէ, այլ զի պատժէ ևս և պատուհասէ որք փափկութեամբքն կեցցեն։ Քանզի ընչեղին և Ղազարու և երկոցուն պատմութիւնն միմեանց դիպեալ, ոչ այլ ինչ՝ բայց եթէ զայսցանէ. այլ մանաւանդ մի վարկպարագի զայս արասցուք։ «Այր ոմն էր մեծատուն որ զգենոյր ծիրանի և բեհեզ, զուարճանալով հանապազօր պայծառապէս. և աղքատ ոմն որոյ անունն էր Ղազարոս, անկեալ կայր առ դրունս նորա վիրաւորեալ, և փափաքեալ փշրանաց անկելոց 'ի սեղանոյ փարթամին. այլ և շունք ևս եկեալ լեզուին զվէրս նորա»։ Թէ էր աղագաւ առակօք խօսէր, և թէ ընդէր զանմանս յառակացն լուծանէր, և զինչ էր առակ և որ այսպիսիք իցեն, յայլ ժամանակ շտեմարանեսցուք զայսոսիկ, զի մի 'ի փութանալի բանէս հեռանայցեմք։

Digitized by Google

Բայց զայն առ այժմ ասասցուք, ո՛ յաւետարանչացն է որ զառակս զայս ասացեալ 'ի Քրիստոսէ գրեաց։ Ղուկաս է. Ղուկաս միայն. վասն զի զայս հարկաւոր է գիտել, զի յասացելոցն զամենայն չորեքեան ասացին և զոմանս առանձինն իւրաքանչիւր ոք։ Վասն էր արդեօք. զի և այլոցն մեզ հարկաւորք լիցին ընթերցուածքն, և զի միաբանութեանն ընտրութիւն երևեսցի։ Վասն զի թէ ամենեցուն բովանդակ էր ասացեալ, ոչ արդեօք համբերէր փութով զամենեցունն ընդունել ոք, բաւական լեալ մինն 'ի վարդապետել զամենն. և եթէ բազմեցունց զամենայն այլափոխեալ ասացեալ էր, ոչ ևս ձայնակցութեանն երևէր ընտրութիւն. յաղագս այսորիկ և հաւասարապէս ամենեքեան յոլովս գրեցին, և առանձինն իւրաքանչիւր ոք։

Զի՞նչ ասէ Քրիստոս։ Այր ոմն էր ընչեղ, և բազում չարութեան կենակից էր, և ոչ զմի 'ի թշուառութեանց զգայր, այլ ամենայն նման իբրև աղբերաց հոսեալ վճարէր։ Իսկ զի ոչ 'ի յանկարծեաց ինչ հանդիպէր նմա, ոչ արտաքութեան պատճառք և ոչ անհարթութեան կենաց, ինքն զայսոսիկ զեկոյց ասելով՝ թէ հանապազօր ուրախանայր։ Իսկ զի չարութեան էր կենակից, յայտնի է և 'ի վախճանէն զոր վիճակեցաւ, և նախ քան զկատարած յաղքատին անտես եղելոյ. զի ոչ նմա միայն որ 'ի դրանն էր, այլ և ոչ այլում ումեք ողորմէր, նմայն իսկ ինքն եցոյց։ Քանզի որ 'ի դրանն յորժամ ընկեցեալ լինէր, և առաւել աչաց զնա տեսանել հարկ լինէր, եթէ նմա ոչ ողորմեցաւ, յո՞վ ոք 'ի հանդերձելոցն խնամարհէր երբեք։

Բայց ոչ ինչ կրեաց այնպիսի, այլ և քան զայն որ ոչ յինչ երկնչէր և ոչ 'ի մարդկանէ պատկառէր՝ խիստ և անողորմ եղև։ Զի զնա այրւոյն համբերութիւնքն յաճախականք, թէպէտ և խակ էր և վայրենամիտ, սակայն զխոնարհն հաւանեցոյց և 'ի պատշաճագոյն խնամարհեցոյց. բայց զնա ոչ կարաց նուաստացուցանել յաղքատին օգնականութիւն։ Թէպէտ և ոչ զոյգ էին հայցուածքն, այլ սա յոյժ խոտացի և դիւրագոյն. վասն զի նա հակառակ թշնամեացն զնա թախանձէր, իսկ սա պաղատէր լուծանել զաղքն, և մի անտես լինելով կորնչել. նա թախանձէր աղաչելով, և սա հանապազօր երևէր լու-

Digitized by Google

թեամբ։ Յաւէտ այս բաւական է և առաւել կակղացուցանել. քանզի յորժամ թախանձիմք, յոլովակի զայրանամք. իսկ յորժամ զկարօտեալս օգնականութե տեսանեմք 'ի լռութեան կացեալ միշտ և ոչ գժտուարեալ, այլ երևեալս ևեթ մեզ, թէպէտ և քան զքարինս իցեմք անզգայագոյնք, 'ի ձեռն առաւելութենէ պատկառեալք խոնարհիմք 'ի նոսա։

Իսկ միւս ևս և այսօրիկ ոչ ինչ նուազ էր աստանօր. զի և նոյն դէմքն ողորմելի էին աղքատին, սովով և երկայն հիւանդութեամբ հարշեալ. այլ սակայն ոչ ինչ յայսցանէ զանընդելն զայն կակղացոյց։ Նախ առաջին չարութեան նորա խակութիւնն, առաւելութիւն անմարդութեանն զոր ունէր. վասն զի ոչ է հաւասար՝ որ աղքատութեամբն կեայ և պաղատիցի՝ ոչ օգնել նմա, և այն զի յայնպիսի փափկութիւն սխալէր, և զայս 'ի սովոյ մաշեալ անտես առնէր։ Դարձեալ և ոչ է զոյգ միանգամ կամ երկիցս տեսանել զաղքատն և զանց առնել, և հանապազօր տեսանելով և յողորմութիւն և 'ի մարդասիրութիւն ոչ ընդոստանել։ Այլ սակայն մին չարութեամբն կելով և անմարդութեամբ յամենայն բարեկեցութիւն վայելէր. իսկ արդարն և առաքինութեամբ էր լցեալ և 'ի վերջին վտանգսն էր։ Իսկ զի արդար էր Ղազարոս, աստանօր դարձեալ վախճանեցոյց և նախ քան զկատարածն աղքատութեանն համբերութիւն։ Ո՞չ թուեսցի ձեզ արդեօք զմերձակայ իրս տեսանել լցեալ ընչեղիս զշահսն զոր առանց մրրկաց ունէր ամբարեալ. այլ մի ինչ զարհուրիցիս, քանզի 'ի նաւաբեկութիւնն փութայր յաղագս ոչ կամելոյ դնել զբեռն հանդերձ երկիւղածութեամբ։

Ախորժե՞ս եթէ և միւս չարութիւն զնորա ասացից քեզ՝ զհանապազօր փափկանալն։ Ոչ և այն չարութիւն էր, ոչ այժմ ևեթ յորժամ այսքան պահանջիմք իմաստասիրութիւն, այլ և 'ի սկզբան 'ի հնումն յորժամ այսքանւոյ իմաստասիրութեան ցոյցք չէին։ Լուր զինչ յաղագս այսոցիկ ասէ մարգարէն. "Վայ որքան 'ի չար օրն, որ մերձենան և հպին 'ի շաբաթս ստութեան"։ Իսկ զինչ իցէ՝ որ հպին 'ի շաբաթս ստութեան։ Հրեայք կարծեն՝ թէ 'ի դատարկութիւն տրւեալ նոցա շաբաթն. բայց ոչ է այն այսմ պատճառք,

Digitized by Google

այլ զի յաշխարհականացն զինքեանս 'ի բաց տանելով՝ զպարապումն զամենայն 'ի հոգևորսն ծախելով գործիցեն։ Այլ զի ոչ անգործութեան է շաբաթն, այլ հոգևոր գործոց պատճառ, 'ի նոցուն իսկ յիրացն քաջայայտ է. քանզի քահանայն կրկին գործ 'ի յայնմ աւուր առնէր, համապազօր մեկնակ ընծայելով զզոհսն՝ կրկնակի պատարագել հրամայի այն օր։ Այլ եթէ պարզաբար անգործութիւն էր, նախ քան այլոց՝ քահանային պարտ և արժան էր դատարկանալ։ Այլ զի Հրեայքն յաշխարհական իրացն 'ի բաց մՃարեալք՝ 'ի հոգևորսն ոչ ինչ հայէին, յողջախոհութիւն և 'ի հեզութիւն և լսել ա̃ծային բանիցն, այլ հակառակն նմին առնէին, երգիծանէին կերակրովք, արբեցութ̃բք զեղխեալք փափկանային, լուր զկարդ զնոսա բամբասեաց մարգարէն։ Քանզի ասելով՝ "Որք մերձենան 'ի շաբաթս ստութեան", 'ի վերայ եդած. "Որք ննջեն 'ի փղոսկրեայ գահոյսն և փափկանան յանկողինս իւրեանց. ուտեն ուլս 'ի հօտից և որթս գիեացիկս յանդոց. ըմպեն պարզեալ գինի, և անուշ իւղովք օծանին":

Ընկալար զշաբաթն, զի 'ի չարութենէն ազատեսցես զանձն. և դու նովաւ առաւել ևս գործես։ Զինչ արդեօք լինիցի քան զզեղխութիւնն զայն վատթարագոյն՝ 'ի վերայ փղոսկրեայ մահճաց ննջել։ Այլ մեղք և հեշտութիւն ունին, որպէս ինչ արբեցութիւն և աւելասացութիւն. իսկ 'ի փղոսկրեայ մահիճս ննջել զո՞ր հեշտութիւն ունիցի, զինչ մխիթարութիւն. միթէ կամակ և քաղցր զքունն գործիցէ մահճացն գեղեցկութիւնն։ Ծանր և դժուարին են իրքն քան զամենայն. զի յորժամ զմտաւ ածիցես եթէ քո 'ի փղոսկրեայ մահիճս ննջելով՝ այլ ոք և ոչ զհացին վայելումն առատապէս ունիցի, ստգտանէ զքեզ 'ի խիղճ մտացդ, 'ի վերայ յառնելով տոտի լինի անհարթութեանն այնմիկ։ Այլ եթէ 'ի փղոսկրեայ մահիճս ննջել բամբասանք են, յորժամ և արծաթով ևս շուրջ իցեն զգեցեալք՝ զինչ ունիցիմք պատասխանիս։

Կամիս զմահճաց գեղեցկութիւն տեսանել. ես քեզ այժմ ցուցանեմ, ոչ զռամկի ուրուք և ոչ զզինուորի, այլ զԹագաւորական գահոյից զքաջավայելչութի̃։ Նեպէտ և պատուական իցես քան զամենայն ոք՝ քաջ գի-

տեմ, զի քան զթագաւորին գահոյս ոչ ախորժեցիս ունել վայելչագոյնս, և ես մեծագոյն այսմ, զի ոչ որոյ թագաւորի դէպ իցէ, այլ առաջնոյն և որ քան զամենայն վեհագոյնն էր, այլ մինչ ցայժմ ես երգեցեալ ամենայն ուրեք յաշխարհի՝ ցուցանեմք քեզ. զմահիճս զերանելւոյն զԴաւթայ ասեմ: Սքանչելիք են մահիճքն. ոչ արծաթով և ոչ ոսկւով, այլ արտասուօք և խոստովանութեամբ ամենայն ուստեք զարդարեալ. և զայսուիկ ինքն ասէ, այսպէս ինձ ձայնելով. “Լուացից զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացից„. զի իբրև զմարգարիտ արտասուք այնպիսիք պայծառանան ամենայն ուստեք:

Եւ դիտես ինձ զածասէր զանձն զայն, վասն զի 'ի տունջեան յոլով հոգք իշխանաց, զաստապետաց, ազանց, ռամկաց, զօրականաց, պատերազմողաց, խաղաղութեան, քաղաքական իրաց և որ ըստ նմանն էին, հեռաւորաց և մերձաւորաց, նեղէին զնա և 'ի բաց առնէին զպարապումն. յորում ամենեքեան 'ի ննջելն ծախեմք զժամն, նա 'ի խոստովանութիւնս և յաղօթս և յարտասուս անցուցանէր: Եւ զայն ոչ զմի գիշեր եւեթ առնէր և դադարեցուցանէր զարտասուսն, այլ զամենայն գիշերս զնոյն առնէր. քանզի “Լուացից զամենայն գիշեր զմահիճս իմ, և արտասուօք իմովք զանկողինս իմ թացից„, զյորդութիւն արտասուացն երևեցուցանէր և զանընդհատութիւն: Յորժամ ամենեքեան խաղաղանային և 'ի հանդարտութեան կային, միայն նա առ ած 'ի յայն ժամ պաղատէր, և մերձ լինէր անքուն ակն առ ողորմեալն և սգացեալ և որ զիւրն խոստովանէր զչարիսն: Այնպիսի մահիճս և դու պատրաստեա: Քանզի արծաթ շուրջ պատեալ՝ մարդկան նախանձ յարուցանէ և զամպարտութիւն 'ի վերուստ բորբոքէ. իսկ այնպիսի արտասուս որպէս զԴաւթին և զնոյն ինքն զգեհենին կարեն շիջուցանել զհուրն: Ախորժեա, և ես ցուցից քեզ զմահիճս զՅակոբեայն, որ զյատակն ունէր իւր անկողին և քար 'ի ներքոյ գլխոյն, յաղագս որոյ և զիմանալի զքարն ետես և զանդուխն զայնոսիկ, ընդ որս ելանէին և իջանէին հրեշտակքն:

Զայսպիսի զմահիճս զմտաւ ածցուք զի նոյնպիսիս տեսանիցեմք երազս: Ապա եթէ յարծաթեղէն մահիճսն

անկեալ կայցեմք, ոչ միայն և ոչ հեշտութեանն պտուղս շահիցեմք, այլ և տրտմութեանց ևս համբերեմք։ Քանզի յորժամ զմտաւ ածիցես թէ 'ի վերջին բքին 'ի մէջ գիշերի դու ննջես 'ի մահիճս, իսկ աղքատն 'ի վերայ ապառնի անկեալ կայցէ 'ի նախադրունս բաղանեացն ցօղնով շուրջ ծածկեալ, սառուցեալ 'ի բքոյն, վտանգեալ 'ի սովոյն, թէպէտ և քան զամենեսեան քարեղէն իցես' քաջ գիտեմ զի ստգտանես զքեզ ինքն. զի դու և առաւել քան զպէտսն փափկանաս, իսկ նա և ոչ 'ի պէտսն վայելեալ ունի։ Ոչ ոք, ասէ, զինուորեալ շահիցէ յաշխարհական իրս։

Զինուոր ես հոգևոր. զինուոր յայնպիսի մահիճս ոչ ննջէ 'ի փղոսկրեայ, այլ 'ի վերայ յատակի. ոչ օծանի իւղովք, քանզի բոզանոցայն և ապականելոցն է այնպիսի փոյթ, որք 'ի խաղս անդ սատակեն զոգիսն. բայց քեզ ոչ զիւղոյ հոտ, այլ զառաքինութեն պարտ և արժան է բուրել։ Ոչ ինչ քան զանձն զայն անմաքուր լինիցի, յորժամ մարմինն զայնպիսի ունիցի զանուշահոտութիւնս. քանզի 'ի ներքոյն ապականութե և անմաքրութե օրինակ' մարմնոյ և հանդերձիցն անուշահոտութիւն լինի։ Զի յորժամ մերձեցեալ սատանայ խորտակիցէ զհոգւոյն զօրութիւն և բաղում մխաւիւք լնու, յայնժամ և 'ի մարմնի նորին զապականութե զաղտ տպաւորէ։ Զոր օրինակ խլամբք և լորձամբք միշտ շաղախելով զհանդերձսն և զձեռսն և զդէմսն գարշեցուցանէ որ 'ի յուռնգացն յաճախապէս հոսի յինքեան շաղախելով, նոյնպէս և հոգի չար հոսանօքն այնպիսիք զվատթարութիւնն 'ի մարմինն իւր լնուգանի։ Իսկ զի որ առաքինի կարծիցի և պիտանացու ինչ որք զիւղոյն հոտ բուրեն յինքեանց։ Բուրեսցես զհոգևորական անուշահոտութիւնն քո անձինդ, զի և զքեզ և զմերձաւորսն քո յաւէտ օգտեսցես։

Զի ոչ ինչ և ոչ է չար քան զփափկութիւնն։ Լուր զինչ դարձեալ յաղագս նորա ասէ Մովսէս. "Գիրացաւ ստուարացաւ և անդուշեաց զսիրեցեալն"։ Եւ ոչ ասաց թէ 'ի բաց եկաց. այլ թէ անդուշեաց զսիրեցեալն, զխստաերախն լինել յայտնեաց մեզ։ Եւ դարձեալ այլուր. "Ուտելով և ըմպելով հայեաց 'ի քեզ"։ Զի այնպէս փափկութիւնն 'ի մոռացումն ածել սովորեաց։

Եւ դու այսուհետեւ եթէ նստիցիս 'ի սեղան, յիշեսցես զի զկնի ուտելոյն աղօթել պարտ է. այնպէս չափաւորապէս լցցես զորովայնդ, զի մի ծանրացեալ անկարասցիս ծունր կրկնել և առ Ած պաղատել: Ո՞չ տեսանէք զանասունսդ, զկնի մսրոյն գարմանոյ յագեցնացութիւն արկանեմք և բեռնակիրս առնեմք, և զիւրեանց սպասաւորութիւնն վճարեն. իսկ դու զկնի սեղանոյն առ ա̃մ գործ անպիտան և անպատեհագոյն լինիս, և զիա̃րդ ես իցես քան զնոյն զէշսն անպատուականագոյն: Վասն էր. զի յայնժամ մանաւանդ զուարթն լինել է պա̀րտ և արժան և հսկել, զի յետ սեղանոյն ժամ աղօթից է: Եւս որ գոհանայն՝ ոչ սխալակի, այլ սթափ և արթուն լինի: Ի սեղանոյն մի ես 'ի մահիճս, այլ յաղօթս երթիցուք, զի մի քան զանասունսն անբանագոյնք լինիցիմք:

Եւ գիտեմք զի բազումք ստգտանեն զասացեալս, որպէս նոր ինչ անկարելի սովորութիւնս 'ի ներքս ածիցեմք բանիւս: Մ՚եծապէս ես զչար սովորութիւնն բամբասեսցուք, որով և պաշարին: Եւ զի յետ կերակրելոյն և ըմպելոյն ոչ 'ի քուն և ոչ յանկողինս՝ այլ յաղօթս և յա̃ծայինս գրոց ընթերցուածս երթալ պարտ և արժան է, զայս առաւել յայտնագոյն եցոյց Քրիստոս. զի յետ անբաւ բազմութեանն կերակրոց յանապատին ոչ յանկողինս և ոչ 'ի քուն զնոսա արձակեաց, այլ յա̃ծային բանից լսելութիւն կոչեաց: Վասն զի ոչ զմայլեցուցանելով պատրաստեաց նոցա զորովայնսն և ոչ յարբեցութիւնս արկ, այլ լնլով զպէտսն՝ 'ի հոգևոր կերակուրն եած զնոսա: Նոյնպէս և մեք արասցուք, այնքան կերիցուք որքան կեալն միայն իցէ, ոչ որքան երգիծանել և ծանրանալ: Վասն զի ոչ յաղագս այսորիկ եղեաք և կեամք՝ զի կերիցուք և արբցուք, այլ վասն այնորիկ ուտեմք՝ զի կեցցուք: Ոչ կեալն յաղագս ուտելոյն, այլ կելոյն վասն եղև ուտելն 'ի սկզբանն. իսկ մեք որպէս թէ այնր աղագաւ եկեալ իցեմք յաշխարհ, այնպէս զբովանդակն յայն ծախեմք:

Բայց զի ուժգնագոյն լիցի փափկութեան ամբաստանութիւն, և յաւէտ ըմբռնեսցին որք նովաւն կեան, բեր դարձեալ զբանս 'ի Պաւղոս ածցուք: Վասն զի այնպէս յայտնագոյն մեզ բանն լինի և խորհրդակցու-

Digitized by Google

թիւնն, յորժամ ոչ բանիւք, այլ և իրօք տեսանիցեմք խրատեալս և պատժեալս որք շատակերութեանցն պարապէին: Ինչ եղև այն՝ քանզի շատութեան էր կենակից և հանապազօր փափկանայր զգենլով պաճուճապէս, դժնդակագոյն գործէր զտանջանսն, մեծ զհուրն բորբոքէր, և անմխիթարելի զգատապարտանն առնէր, և անմեռելի զպատիժսն: Իսկ աղքատն անկեալ կայր առ դրանն, և ոչ ինչ դժուարէր և ոչ հայհոյէր. ոչ ինչ այնպիսի ոչ ասաց և ոչ զմտաւ եած: Այլ ուստի է այս յայտ. 'ի տանելոյն զնա հրեշտակացն պաշտպանելով 'ի գոգն Աբրահամու և 'ի հանգստենէն: Այլ եթէ լռատացող ոք էր լեալ, ոչ այնպիսի պատիւս վայելէր:

Զի ամենայն աղքատութեանց՝ Ղազարու աղքատութիւնն 'ի յայն ժամ յաղթեաց, եցոյց առելոյն՝ թէ ոչ զփշրանսն ուտէր որ 'ի սեղանոյն անկանէին: Այլ զի հիւանդութիւնն 'ի նոյն ինքն 'ի չափն ժամանեալ էր աղքատութեանն, և զայս դարձեալ եցոյց առելոյն՝ եթէ շունք զնորա վէրսն լիզուին. այնպէս ախտացեալ, մինչ զի և ոչ դշունսն կարէր հալածել, այլ շնչաւոր մեռեալ կայր. 'ի գալն նոցա տեսանէր, բայց օգնել ինչ ինքեան ոչ կարէր. այնպէս լուծեալ էին անդամք նորա ծնգեալ հիւանդութեամբք, և այնպէս հաշեալ էր փորձութեամբք:

Տեսե՞ր զախտաժէտութիւն սորա. պատանդէր զնորա մարմինն: Երբե յայն իմն էր եկեալ, զի վկայեսցէ այլոց բարեացն՝ այնպէս 'ի դրանն ընկեցեալ կայր. այնքան ևեթ կեայր՝ որքան զգալ զիւր չարիսն միայն կարէր: Նաւահանգստին նաւաբեկութեանց համբերէր. մերձ էր աղեխուրն, և դժնդակ ծարաւով վշտանայր անձն:

Ասացից ինչ նորագոյնս առ այսոքիւք զչարն: Ոչ ունէր յայլ ոք հայել Ղազարոս: Վասն զի մեք թէպէտ և բիւր չարիս կրիցեմք, այլ ունիմք բաւական մխիթարութիւն 'ի նա հայելով և 'ի բազում սփոփանս վայելեմք. քանզի հաւասարորդս գտանել իւրեանց բարեացն և կամ չարեացն՝ յաւէտ բերէ վտանգելոցն զմխիթարութիւն: Իսկ նա ոչ զոք ունէր տեսանել, որ այնպէս ընդ նմին չարչարիցի:

Եւ միւս ևս ասել առ այսոքիւք, զի և ոչ յաղագս յառաքինութեանն խոստովանել կարէր, այլ յայսմ աշ-

խարհի զմերձակայ իւրն կարծէր փակեալ. վասն զի նախ քան զշնորհսն էր։ Եւ եթէ այժմ զկնի այսքան ածգի-տութեան քաղցրութեան յուսոյ, և որ կանն և մնան յանցաւորացն պատիժք անդ, և պատրաստեալ բարեացն որք ուղղէն զառաքինութիւն, այնպէս կարձամանելով ոմանք տաղտկալով անկեալ կան, զի և ոչ այնպիսի յուսով յորինեն զառաքինութիւն, զինչ կրել արդեօք պարտ էր նմա՝ որ յայսպիսի հաստատութենէ վրիպեալ էր։ Զի նա ոչ ինչ ուրեք այսպիսի իմանալ կարէր այլ մինչև 'ի մերձակայ աշխարհս, և ոչ 'ի ժամանակի յայնմիկ 'ի յաւիտենս ուրեք չոգաւ։

Այլ և միւս ևս առ այսոքիւք, զի և փառք նորա բամբասեալք լինէին 'ի մարդկանէ, և մանաւանդ յանմըտաց։ Քանզի սովորեցին բազումք ասել. սա եթէ այ սիրելի էր, ոչ արդեօք տեսանէր յայսքան յաղքատութեան և 'ի չարիս զսա։ Այսպիսի ինչ և Յովբայ և Պաւղոսի հանդիպէր։ Քանզի նմա ասէին. "Ո՞ի յոլովակի քեզ խօսեցեալ եղէն աշխատութեամբ. զզօրութիւն բանից ով կարասցէ բերել։ Զի եթէ դու մխթարեցեր զյոլովս, և ծնգաց տկարացելոց եդեր ոյժ, այժմ եկն քեզ ցաւք. իսկ արդ երկիւղդ քո ո՞չ է յանզգամութենէ"։ Եւ զոր ասենն այսպիսի է. եթէ էր ինչ 'ի քէն բարի գործեցեալ, ոչ արդեօք զայդ կրեիր զոր չարչարեցարդ, այլ զմեղանացն պատիժսն դատաստան, և զանօրէնութեանց։ Եւ այս էր որ առաւել խոցէր զՅովբ։ Եւ յաղագս Պաւղոսի բարբարոսքն զնոյն ասէին. վասն զի տեսին զքարբն կախեալ զձեռանէ նորա, ոչ ինչ ախորժելի յաղագս նորա կարծէին. այլ 'ի վերջին յանդգնելոցն 'ի չարիս զնմանէ զմտաւ ածէին։ Եւ յայտ էր յորոց ասէին. "Սմա որ 'ի ծովէն զերծաւ, ասէին, դատաստանն ոչ ներեաց կեալ"։ Զի ոչ վայրապար ինչ և այս զմեզ սովորեաց ամբոխել։ Այլ սակայն այնքանեաց եղելոց մրրկաց և 'ի վերայ միմեանց բերելոց ոչ ընկղմեցաւ նաւն. այլ իբրև 'ի նաւահանգրստի կացեալ, որպէս 'ի մշտնջենաւոր ցօղս վայելեալս այնպէս խնամատարէր։

Քանզի մի ինչ որ 'ի բազմապատիկ սեղանոյն և զկերպաս հանդերձն էր զգեցեալ և զարկայն դասս 'ի մէջ բերիցես, որք հարթուցանէին 'ի նմանէ 'ի հրապա-

րակս զմարդիկն. այլ յայտնեա ինձ զնորա զխիղճն, և տես զյոլովութիւնն 'ի ներքս զամբոխիցն մեղաց, ահաւորս հանապազորդեանս, զձմերայնոյն խաւարութիւն. իբրև յատենի զմիտսն յաթոռ ելանելով խիղճն իբրև զդատաւորս նստելով, զխորհուրդսն շուրջ ցուցանել իբրև զդահճիճն՝ պատրաստէ զմտածութիւնս, և բերէ յաղագս մեղանացն, և ապա բարբառի մեծապէս առանց ուրուք գիտելոյ. բայց զայսոսիկ որ յայն է խրատեալ, նմա միայն է տեսանել: Վասն զի շնացողն թէպէտ և բիւր անգամ իցէ ձոխ, և ոչ զոք ունիցի ասող, ոչ դադարէ զինքենէ ամբաստան լինել 'ի ներքս. և հեշտութիւնն է առժամայն, իսկ երկունքն մշտնջենաւորք: Այլ արդարքն դարձեալ թէ և բիւր ինչ կրիցեն դժընդակութիւնս, քաղցր յուսով աստ կերակրին, հեշտութիւնս ունելով զմաքրութիւնն և զանշարժ զհաստատութիւնն, և զկնի այսոցիկ իբրև 'ի բարիսն փոփոխին՝ որպէս և Ղազարոս:

Մ՞ի ինչ զայն ասեր ինձ թէ վիրաւորեալ էր, այլ զայն գիտեա զի քան զամենայն ոսկի պատուականագոյն 'ի ներքս ունէր զհոգին. մանաւանդ եթէ ոչ զհոգին միայն, այլ և զնոյն ինքն զմարմինն. քանզի առաքինութիւն մարմնոյ ոչ բազմամսութիւն և քաջողջութիւն է, այլ այնպիսեաց տանջանաց ժուժկալել: Զի ոչ եթէ որ 'ի մարմինն ոք վէրս ունիցի գարշելի իցէ, այլ որ 'ի յոգւոջն բիւր վէրս ունելով՝ և ոչ միում 'ի նոցանէ խնամակալութիւն առնիցէ, որպիսի էր ընչեղն այն 'ի ներքուստ վիրաւորեալ ամենայնիւ: Այլ զոր օրինակ զՂազարոսն լիզուին զվէրսն շունքն, նոյնպէս զնորա ըղմեղսն դևքն. որպէս սա սովեալ էր 'ի կերակրոյ, նոյնպէս նա սովեալ յամենայն առաքինութենէ երթեալ գնայր:

Արդ զայսոսիկ զամենայն գիտելով իմաստասիրեսցուք և մի ասասցուք, թէ սիրէր ա͞ծ զայս անուն՝ ոչ ներէր նմա աղքատ լինել: Զի և այն իսկ սիրոյ նշանակ է: «Քանզի զոր սիրէ տէր, խրատէ խոշտանգէ զամենայն որդի զոր ընդունի»: և դարձեալ. «Որդեակ, եթէ մերձեցայր ծառայել տեառն, պատրաստեա զանձն քո 'ի փորձութիւն. ուղղեա զսիրտ քո, ժուժկալեա»: Ի բաց հանցուք զայսոսիկ զկարծիս, զդիւական զբանս

զայսոսիկ. քանզի «Զաղրութիւն և յիմարաբանութիւն և խեղկատակութիւն մի՛ ելցէ ընդ բերանս ձեր»: Մ՚ի մեք զայսոսիկ ասասցուք. և եթէ զայլ ոք տեսանիցեմք որ այսպիսի ինչ խօսեսցի՝ ըմբերանեսցուք, սաստկապէս ընդդէմ կացցուք, կարկեսցուք զանամօթ լեզուն:

Եթէ զոք տեսանէիր, ասա ինձ, որ աւազակէր ՚ի ճանապարհս, դարանակալ լինէր անցաւորաց, յափշտակէր յագարակաց, յայրս ծածկէր զոսկի և զարծաթ թաղելով ՚ի ներքս, և հօտս անասնոց արգելոյր անդր, և հանդերձս և ծառայս բազում էր ստացեալ յանօրէնութենէն յայնմանէ, երանէի՞ր նմա արդեօք յաղագս հանդերձելոյ դատաստանին: Եւ սակայն ոչ ես էր ըմբռնեալ և ոչ ՚ի ձեռս ատենայի մատնեալ և ոչ ՚ի կապարանս անկեալ, ոչ ոսոխ ունէր և ոչ ընդ դատապարտութեամբ լինէր. այլ փափկանայր արբենայր, ՚ի բազում ճոխութեան վայելէր: Բայց սակայն ոչ յաղագս մերձակայից և երևելեացս երանեմք նմա, այլ յաղագս հանդերձելոցն և վտահացելոցն աւաղէաք զայնպիսին: Զնոյն վասն ընչեղացն և աւելատացուացն զմտաւ ած. աւազակք ոմանք են, ՚ի ճանապարհս դարանակալք լինին անցաւորաց, իբրև յայրս և ՚ի սորս յիւրեանց՝ ՚ի դարանս չարագործեն զայլոց ստացուածս: Մ՚ի այսուհետև երանեսցուք նոցա յաղագս մերձակայից, այլ եղկեսցուք վասն հանդերձելոցն, վասն ահաւոր դատաստանին այնորիկ, յաղագս անհրաժարելի տանջանացն: Զի և աւազակք յոլովակի փախեան ՚ի մարդկան ձեռաց. այլ սակայն զայնոսիկ գիտելով ոչ մեզ ինքեանց և ոչ թշնամեաց ևս ըղձանամք զնոցա ըղկեանսն և զնզովեալ չարութիւնն: Բայց առ ի՞յ ոչ է այնպիսի ինչ ասել. զի ոչ ոք փախիցէ ՚ի նորա հրամանէն, այլ ամենեքեան բոլորովին որ աւելատացութե՛ և յափշտակութեամբ կեան՝ ձգեն յինքեանս զնորա զանմահ դատաստանն զայն և որ ոչն առնի վախճան, զոր օրինակ և ընչեղն այն:

Զայս ամենայն հաւատեաւ գիտացեալք, մի՛ որոց ճոխութեամբ, այլ որք առաքինութեամբ կեան՝ երանեսցուք. և մի՛ որք յաղքատութեան, այլ որք ՚ի չարութեան են՝ եղկեսցուք. մի՛ զմերձակայս տեսցուք, այլ զհանդերձեալսն գիտասցուք. մի՛ զարտաքին զգեստն,

այլ զիւրաքանչիւր ուրուք զխիղճն և որ յուղղութեցն առաքինութիւն է և խնդութիւն՝ հետազօտեսցուք , նախանձեսցուք ընդ Պաւղոս ընչեղք և աղքատք ։ Զի ոչ միում և կամ երկուց և կամ երից միայն , այլ յոլովից և բազմաց նահատակութեանց համբերեաց , աղքատութեանն , հիւանդութեանն , ամայութեանն , վերակացուաց տանն , յորում կարէր չիջուցանել զայնպիսի չարիս՝ ամենեցուն այնոցիկ համբերելով . որ 'ի փափկութիւնս վայելէին՝ անտես լեալ զինքն 'ի նոցանէ տեսանէր . ոչ միայն 'ի փափկութիւնս վայելեալս և չարութեամբ կեցեալս , և ոչ ինչ կրեալ դժնդակագոյնս . այլ զի և ոչ յայլ ոք Պաւղոսն էր հայել , և ոչ յաղագս յարութեանն խնամատարել ։ Եւ զկնի ասացելոց վշտացս ամենեցուն՝ կարծիս ևս չարութեան ունէր 'ի բազմաց յաղագս թշուառութեանցն . և զի ոչ մինչև յերկուս և կամ յերիս աւուրս , այլ 'ի բովանդակ իսկ 'ի կեանսն իւրում զինքն յայնոսիկ՝ իսկ զընչեղն հակառակ սմին տեսանէր ։

Զինչ ունիցիմք պատասխանիս , զի նա այնքան 'ի միասին զամենայն դժնդակութիւնս հանդերձ այնպիսի առաւելութեամբ բերէր , իսկ մեք և ոչ զկէս այնոցիկ բառնամք ։ Քանզի ոչ ունիս ցուցանել և ոչ ասել զայլ ոք որ այսքան և այսպիսի կրեաց չարիս ։ Վասն այնորիկ և զնա 'ի մէջ եդ Քրիստոս , զի յոր կողմն և անկանիցիմք 'ի դժնդակութիւնս՝ տեսանելով զնորա առաւելութիւն լեալ բաւականապէս , 'ի նորա խնամատարութենէն ընդունիցիմք մխիթարութիւն և սփոփանս . քանզի հասարակաց ամենայն աշխարհի վարդապետ առաջի կայ որք դժնդակագոյնս ինչ չարչարիցին , յինքն ընձեռելով ամենեցուն հայել և ամենեցուն նոցա յաղթել իւրով գերազանցեալ չարեօքն ։ Յաղագս այսորիկ ամենեցուն գոհանալով զմարդասէրն ա̃յ , զպտուղ շահիցն 'ի պատմութենէն օգտեսցուք . յաճախապէս զնա 'ի ժողովարանսն և 'ի տան և 'ի գնեհս և յամենայն տեղիս զմըտաւ ածցուք . և հանդերձ բազում հաւասարութեամբ զամենայն որ յառաջէն յայնմանէ է՝ ուսցուք զճոխութիւնն . զի և ընդ մերձակայս առանց տրտմութեան անցանիցեմք ընդ դժնդակութիւնս , և հանդերձելոց հանդիպեսցուք բարեացն . որոց լիցի մեզ ամենեցուն արժա-

րումն յորժամ սա սովոյ և աղքատութեան, ամայու-
թեան և ախտաժէտութեան հանապազ էր կենակից
'ի տան ճոխի, և յամենեցուն անտես լեալ, և առ այլ
ոք որ այնպիսի ինչ կրեաց՝ ոչ ունէր հայել, այսպէս էր
և իմաստասիրել։

Յայսցանէ ուսցուք մի փարթամացն երանել և մի
զաղքատն ատել. մանաւանդ եթէ պարտ իցէ զճըշ-
մարիտն ասել, ոչ ճոխ է որոյ յոլովն է ստացեալ, այլ
որ ոչ բազմաց կարօտանայ. և զայս՝ սահման աղքատու-
թեան և ընչեղութեան պարտ և արժան է կարծել։ Ե-
թէ տեսանիցես զոք յոլովից ցանկացող, յամենայնէ զնա
նուազեալ կարծեա, թէպէտ և զընաւից է ստացեալ
զինչս. և եթէ տեսանիցես զոք ոչ յոլովից կարօտեալ,
քան զամենեսեան զնա ճոխագոյն վարկիր, թէպէտ և
ոչ ինչ իցէ ստացեալ. քանզի այնպէս բարուք մտաց է
չափել զինչսն, և զաղքատութիւն և զճոխութիւն հա-
մեմատել սովորեցաք։ Զոր օրինակ որ միշտ ծարա-
ւեալ է՝ ոչ առեմք առողջս և յառատութիւնս վայե-
լեալս, թէպէտ և առ գետս կամ աղբերս անցեալ նըս-
տիցի, վասն զի զինչ օգուտ իցէ նմա 'ի ջրոյն յղփու-
թենէ յորժամ ախտն անշիջանելի կայ մնայ, նոյնպէս
և յաղագս ընչեղութեանն զմտաւ ածցուք. որք միշտ
բաղձանն և ծարաւեն այլոց, մի երբէք կարծեսցուք ա-
ռողջս, և մի յառատութեան իմիք վայելեալ։ Քանզի
որ զիւր տենչանսն ոչ կարէ արգելուլ, այլ զամենեցուն
կամի ստանալ, զիա՞րդ այնպիսին իցէ 'ի քաջավայելչու-
թեան։ Իսկ որք իւրեանցն են բաւականացեալք, ժուժ-
կալեն յինքեանս՝ ոչ զհետելով զայլոց ստացուածս. թէ-
պէտ և քան զամենայն իցեն կարօտեալք, քան զբոլոր
ճոխագոյն պարտ և արժան է կարծել. զի որ ոչ այլոց
կարօտանայ, այլ զբաւականութիւն զմտաւ ածէ, քան
զամենեսեան ընչեղագոյն է։ Բայց 'ի յառաջիկայ պատ-
ճառն երթիցուք վերստին։

“Եղև, ասէ, մեռանել Ղազարու և տարեալ եղև
'ի հրեշտակաց„։ Աստանօր զչար ախտ հանել կամիմ
արտաքս 'ի ձերոց անձանց. վասն զի յոլովք 'ի տխմարացն
կարծեն զոգիսն որ բռնութեամբ մահու վախճանին՝
դևս լինել։ Ոչ է այս, ոչ է. զի ոչ ոգիք բռնութեամբք
վախճանելոյն դևք լինին, այլ ոգիք պղծոցն որք 'ի մեղսն

կան, ոչ զբնութիւնն իւրեանց փոփոխելով, այլ յօժարութեամբ չար կերպարանին: Զայս և Հրէիցն ասէր Քրիստոս. «Դուք որդիք սատանայի էք». իբրև ոչ եթէ 'ի բնութիւն նորա փոփոխեցան, այլ «զի զցանկութիւն հօրն ձերոյ կամիք առնել», ասէ. և դարձեալ. «Ծնունդք իժից, ո՞ եցոյց ձեզ փախչել 'ի հանդերձեալ դատաստանէն. արարէք այսուհետև պտուղ արժանի ապաշխարութեան. և մի վստահանայք ասել եթէ հայր ունիմք զԱբրահամ»: Վասն զի զազգակցութեան օրէն՝ յառաքինութենէ և 'ի չարութենէ գիտեն գիրք. և որում ումեք համապատիւ լինի, նորին որդի և եղբայր լեալ ասեն զնա գիրք:

Բայց էր աղագաւ սատանայ զչար աղանդս զայս եմոյծ: Զվկայիցն զփառս յանդգնեցաւ յողդողդել. վասն զի բռնաւորական մահու վախճանին նոքա՝ զայն արար, բայց ոչ կարաց. քանզի կան մնան զիւրեանց ըզպայծառութիւնն ունելով: Այլ իմն դժնդակագոյն քան զայս գործեաց. զկախարդս որք և սպասաւոր էին նորա, այսպիսի աղանդովք հաւանեցոյց: Յաղագս այսորիկ և Պաւղոս թէպէտ և ճշմարիտ էին՝ ըմբերանէր զնոսա, զի մի պատճառս առցեն 'ի ճշմարտութենէն և զստութիւն խառնիցեն, և դարձեալ արժանի հաւատալոյ լինիցին: Քանզի ասէին. «Արքս այսոքիկ ծառայք այ̃ բարձրելոյ են». բայց զի բազումք 'ի տգիտացն որոշել ոչ գիտեն որ 'ի դիւացն ասացեալ լինի, միանգամայն փակեալ նոցա հաւատալ: Քանզի 'ի յանպատուեցելոցն ես, ասէ, առանց համարձակութեան լռեա, կարկեցիր. ոչ է քո քարոզել, առաքելոցն է արժանաւորութիւնդ այդ: Զի՞ յափշտակես որ ոչ է քո. լռեա, անպատուեցիր: Նոյնպէս և Քս̃. ասէին ցնա դևքն. «Գիտեմք զքեզ ով ես», սաստէր յոլով ուժգնութեամբ, օրինադրելով մեզ՝ մի երբէք հաւանել մեզ թէ և առողջ ինչ ասիցեն: Զոր ուսեալք այսուհետև մի հաւանեսցուք ամենևին. այլ թէպէտ և ճշմարիտ ինչ բարբառիցեն, փախիցուք 'ի նոցանէ և 'ի բաց դարձցուք: Վասն զի զառողջ և զփրկական ուսմունս ոչ 'ի դիւաց, այլ յա̃ծային գրոց է ուսանել:

Եւ զի ոչ ոգի 'ի մարմնոյ ելանելով ընդ դիւացն բըռնութեամբ լինի, լուր զինչ ասէ Պաւղոս. «Որ մեռա-

նին, ասէ, դադարէ 'ի մեղաց,,. այս է ոչ ևս մեղան-
չել: Քանզի եթէ մինչդեռ 'ի մարմնի բնակեալ է հո-
գին՝ բռնութիւն ինչ 'ի վերայ ածել ոչ կարէ սատա-
նայ, քաջայայտ է թէ և ոչ որ 'ի բացն է գնացեալ: Իսկ
արդ[1] զիա՞րդ մեղանչեն, ասէ, եթէ բռնութիւն չկրի-
ցեն: Կամօք և ախորժակօք և զինքեանս մատնելով,
այլ ոչ 'ի հարկէ: Եւ զայսօրիկ յայտնեցին ամենեքեան
որք յաղթողք եղեն նորա մեքենայիցն. զի և Յոբայ
բիւրս հնարեցաւ, այլ ոչ կարաց հաւանեցուցանել
հայհոյութեան ինչ բան արտաքս արձակել: Ուստի և
յայտ է զի ոչ հաւանելոյ նորա խորհրդակցութեանն՝
մեք եմք տէարք, ընդ հարկաւ և բռնութեամբ և ոչ
ընդ միով իւիք անկանիմք ընդ նորա:

Ոչ յասացելոցս միայն, այլ և յառաջիկայէս քաջա-
յայտ է, զի 'ի մարմնոյ ոգիք ելանելով՝ ոչ ևս աստէն
դեգերին, այլ վաղվաղակի տարեալ լինին: Քանզի "ե-
ղև, ասէ, նմա մեռանել և տարաւ 'ի հրեշտակաց,,:
Ոչ արդարոցն միայն, այլ որք 'ի չարութեանն կեան՝
տարեալ լինին հոգիքն: Եւ այս դարձեալ 'ի միւսմէ ըն-
չեղէն յայտ է. քանզի յորժամ քաջաբերեցաւ ան-
դաստանն նորա, ասէր յինքեան. "Զինչ արարից, քա-
կեցից զշտեմարանս իմ և մեծագոյնս շինեցից,,: Ոչ
ինչ թշուառական քան զայնպիսի բանս: Արդարեւ ա-
ւերել զիւր շտեմարանն. վասն զի շտեմարանք անկողո-
պուտք ոչ որմք, այլ աղքատացն որովայնք են. իսկ նո-
րա թողեալ զայնոսիկ, 'ի յորմն զբաղնոյր: Եւ ապա
զինչ ասէ. "Անզգամ, այսօր պահանջեն զոգիդ քո 'ի
քէն,,: Աստի տարեալ 'ի հրեշտակացն, անդ խոշտան-
գիցեն. զոմանս իբրև զկապանաւոր արտաքս տանէին,
և այլոց իբրև պսակաւորաց սպասաւորք լինէին: Եւ զոր
օրինակ 'ի հանդիսարանին երբ բազում վէրս ոք առ-
նլով և արիւն շուրջ հոսիցի, զգլուխն պնդելով որք ա-
ռաջի հանդիսարանին կայցեն՝ ընդունին հանդերձ յո-
լով բարեհամբաւութեամբք, 'ի տուն տանին կայթե-
լով և գովելով, հռչակեն և զարմանան, նոյնպէս և Ղա-
զարոս տանէին երբեմն հրեշտակք. իսկ զմիւսոյն և զհո-
գի պահանջէին ահաւորք ոմանք զօրութիւնք ամենայն

1 Գաղատեր յօր. Իսկ արդ.. բռնութիւն չկրիցեն. յաւելու 'ի յունէն:

իրօք տապքեալք յաղագս նորին. քանզի ոչ ինքեամբ հոգի 'ի կեանս յայտնիկ երթեալ գնայ, այլ և ոչ կարողութիւն իսկ է: Քանզի եթէ քաղաքէ 'ի քաղաք փոփոխելով՝ առաջնորդի կարօտանամք, ևս առաւել հոգի 'ի մարմնոյ հանդերձեալ 'ի բաց կալ:

Վասն զի միշտ խոցոտէ զմեզ խիղճ մեղանացն, յաւէտ ևս յայնմ ժամու յորժամ հանդերձեալ եմք աստուստ երթալ 'ի հարցաքննութիւն անդր և ահաւոր ատեանն, յորժամ եթէ յափշտակեաց ոք, եթէ ագահեաց զուրուք, եթէ զրժեաց ումեք, եթէ թշնամի ուրուք եղև տարապարտ, և եթէ այլ ինչ դժնդակագոյնս գործեաց, ամենայն յանցանացն պար նորոգի, և առաջի աչացն կայ և զմիտսն խոցոտէ: Իսկ զոր օրինակ որք 'ի կապարանի բնակեն, միշտ 'ի տրտմութիւնս և 'ի վտանգս են, յաւէտ ևս յաւուրն յայնմիկ յորում հանդերձեալքն լինին արտաքս ելանել, և առ դատաւորին դրունս գալ և զդատաւորին ձայն 'ի ներքուստ լսելով պապանձեալք լինին ահիւն և քան զմեռեալս ոչ ինչ լաւագոյնք անկեալ կան, նոյնպէս և հոգի մանաւանդ 'ի նմին ժամու մեղացն երկնչէ և փղձկի, բայց ևս առաւելագոյն յորժամ աստուստ յափշտակեալ անդր հանդերձեալ իցէ երթալ:

Լուէ՞ք զայսոսիկ լսելով. ունիմ շնորհ ձերում լաւութեանդ յայսոսիկ, մանաւանդ եթէ գովութեդ. քանզի կայթումն և գովութիւն զիս պայծառագոյնս առնեն, իսկ լռութիւն ողջախոհագոյնս զձեզ գործէ: Գիտեմ զի տրտմեցուցանեն ասացեալքս, այլ սաստիկ և անճառ ունի զշահն: Ընչեղին այնորիկ եթէ զօք կալեալ էր որ զայսոսիկ նմա պատուիրէր, և ոչ փաղաքուշքն որ զամենայն զշնորհսն առնէին, խորհրդակից լինէին և 'ի փափկութիւնս ձգէին, և ոչ ևս արդեօք 'ի գեհենն յայն երթեալ լինէր, և ոչ զանըմբերելի ըղտանջանսն զայնոսիկ ընդունէր, և ոչ զանհրաժարելիսն յետոյ ապաշաւէր: Այլ վասն զի զառ 'ի շնորհսն առնել ամենեքեան խօսէին ընդ նմա, մատնեցին զնա հրոյն:

Երանի թէ էր միշտ և հանապազ զայսոսիկ իմաստասիրել և յաղագս գեհենին խօսել. քանզի "յամենայն 'ի բանս քո յիշեա զվախճան քո, և յաւիտեան ոչ մեղիցես". և դարձեալ. "Պատրաստեա յելս ձա-

նապարհաց քոց և պատրաստեցիր 'ի ճանապարհ ,,: Ե-
թէ զուրուք յափշտակեցեր, 'ի բաց տուր. առա որպէս
Զաքէոսն՝ եթէ տամ չորեքպատիկ զյափշտակեալսն:
Եթէ ուրուք եղեր թշնամի, հաշտեցիր նախ քան զպա-
տեանն. զամենայն աստէն լոյծ, զի առանց իրաց տեսա-
նես զդեմս զայն: Մինչդեռ աստ եմք, քաղցր յոյս ու-
նիմք յարութեանն. բայց յորժամ երթամք անդր,
տեարք այնուհետև ապաշխարանաց ոչ ևս եմք, և ոչ ըզ-
յանցանսն 'ի մէնջ լուանալոյ: Պարտ և արժան է պատ-
րաստել յաճախապէս զելս ճանապարհացն աստի, եթէ
երեկուն կամիցի կոչել զմեզ տէրն և եթէ վաղիւ, վասն
զի անյայտ է հանդերձեալն, զի 'ի նահատակութիւնս
մշտնջենաւորիցիմք առ ուղեգնացութիւնն այն քաջա-
վայելուչք. որպէս և այս Ղազարոս յարաժամ էր 'ի
համբերութեան և 'ի ժուժկալութեան, յաղագս որոյ
և այնպիսի պատուով տարեալ եղև:

Մեռաւ և ընչեղն և թաղեցաւ. նա կենդանւոյն թա-
ղեալ էր, զի իբրև 'ի գերեզմանի հոգին 'ի մարմինն իւր
էր թաղեալ, և իբրև զգերեզման բարձեալ կրէր զմար-
մինն. որ իբրև մոլորութեամբ իւիք արբեցութեամբ և
որովայնաժետութեամբն կայեալ՝ այնպէս անգործ զնա
և մեռեալ գործեաց: Բայց մի՛ վայրապար զանց առնի-
ցես զթաղմամբն. անդանօր խնձ զմնոտ ած զշուրջ ար-
ծաթով պատեալ զսեղանսն, զգահոյսն, զամղամսն,
զառտնին զգենլիսն, զիւղս անուշունսն, զխունկսն, զյո-
լով անապականսն, զփաղաքշոտսն, զպաստաւոր սորուկ-
սըն, զայլ ամենայն առ աչօք երևոյթսն, զշինջեալսն և
զխամրեալսն: Ամենայն ուրեք մոխիր, ընաւ ուրեք գա-
զախ և փոշի, սուգ և ողբումն և հառաչումն, օգնել
ինչ ոչ կարելով այնուհետև, և ոչ զգնացեալ ոգին վե-
րըստին անդրէն ածել:

Յայնժամ զօրութիւն ոսկւոյն անկեալ յանդիմա-
նեցաւ և բաղում ստացուածոցն. զի յայնպիսի սպա-
սաւորութենէ մերկ և միայն տարեալ լինէր, ոչ ինչ
աստի յաճախութենէս տանել կարելով ընդ ինքեան,
այլ ամայի անմերակացու. ոչ յօգնականացն, ոչ ոք 'ի
հպատակ սպասաւորացն մերձ լինէր և հրաժարեցուցա-
նէր 'ի տանջանացն և 'ի պատժոյն յայնցանէ. այլ հե-
ռացեալ և որոշեալ յամենեցուն՝ միայն ընդունէր զհա-

Digitized by Google

տուցումն, դժուարըմբերելի պատուհասիցն համբերե-
լով։ Ճշմարտապէս "ամենայն մարմին խոտ է, և ամե-
նայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. չորացաւ խո-
տըն և ծաղիկն թօթափեցաւ, բայց բան տեառն մնայ յա-
ւիտեան"։ Այն մահ և զամ զայնոսիկ շիջոյց. և իբրև
զգերի ոք առեալ տարաւ ՚ի վայր խոնարհեալ ամօթով
լի. առանց համարձակութեան, դողացեալ զարհուրեալ,
յամենայն ՚ի փափկութիւնս յայնոսիկ իբրև յերազի
վայելեալ։ Այլ ապա աղաչող Ճոխն աղքատին լինէր, և
նորա սեղանոյն կարօտանայր՝ որ և ուրեմն սովեալ էր
և առ բերանս շանցն անկեալ կայր։ Իրքն փոփոխեալ
լինէր, և ուսանէին ամենեքեան թէ զինչ ոք էր ընչեղն,
և ով ոք էր աղքատն. և զի Ղազարոս քան զամենե-
սեան Ճոխագոյն էր, և նա քան զբոլորեսեան անկաղկ։

Զոր օրինակ ՚ի խաղսն զկերպարանս թագաւորաց
և կամ զօրավարաց կամ զբժշկաց կամ զատենական
դպրաց կամ զիմաստակաց կամ զզինուորաց առնլով
մտանիցեն, և ոչ մի ոք յայնցանէ ինքեանք իցեն, նոյն-
պէս և ՚ի մերձակայ աշխարհիս աղքատութեան և փար-
թամութեան կերպարանս ունին ևեթ։ Զի որպէս ՚ի
տեսարանի նստելով եթէ տեսանիցես ոք ՚ի ստորեւն
խաղայցեն, զպատիւս թագաւորին երեսաց ունելով
ոչ երանես նմա և ոչ թագաւոր վարկանիս զնա և ոչ
ըղձանաս լինել այնպիսի ոք, այլ գիտելով զի ՚ի գռեհ-
կաց ոմն է, չուանաման կամ պղնձագործ կամ այլ ոք
այնպիսի, ոչ երանես յաղագս կերպարանին և զգես-
տուն, և ոչ յայնցանէ վեհացուցանես զնոցա քաղաքա-
կանութիւնն, այլ քամահես զնա յաղագս այլոց վատ-
թարութեանցն, նոյնպէս և աստ իբրև ՚ի տեսարանի
աշխարհի նստելով, և ՚ի խաղ զբօսեալս տեսանես, յոր-
ժամ զյոլով զՃոխս տեսանիցես՝ մի ճշմարտապէս փար-
թամս վարկցիս, այլ զընչեղացն ունելով զկերպարան։
Որպէս և նա ՚ի խաղսն զթագաւորի և կամ զզօրավա-
րի կերպարանս կեղծաւորէր, և ինքն թերևս ստրուկ
էր, և կամ որք թուզ կամ խաղող վաճառիցեն ՚ի հրա-
պարակսն, նոյնպէս և ընչեղն այն թերևս քան զա-
մենեսեան աղքատագոյն իցէ։ Այլ եթէ ՚ի բաց առ-
ցես զնորա կերպարանն, և զխիղճ մտացն յայտնեսցես
և ՚ի խորհուրդսն մտցես, յոլով գտցես անդ առոգու-

թիւն[1] աղքատութեան, և քան զամենայն մարդիկ անպատուականագոյն զնա։

Զի զոր օրինակ 'ի տեսարանս 'ի հասանել երեկոյին 'ի բաց գնան որք խմբեալքն նստէին, և արտաքս ելանելով՝ զձև կերպարանին 'ի բաց դնելով, որք թագաւորք և զօրավարք ամենեցուն թուեցան, երևին այնուհետև որպէս էնն, նոյնպէս և այժմ մահու մերձ եղելոյ, և տեսարանիս այսորիկ լուծանելոյ, զճոխութեան կերպարան և զաղքատութեան 'ի բաց դնելով ամենեքեան անդր երթեալք, 'ի գործոյն միայն երևին յայտնի՝ ովք ճշմարտապէս ընչեղք և ովք աղքատք, ովք պատուականք և ովք անփառք։

Բազում անգամ ովք աստ ընչեղք են, աղքատագոյն քան զամենեսեան գտանին անդ, որպէս և այս փարթամ։ Սա զի երեկոյ ժամանեաց, այս է մահ, և 'ի մերձաւոր տեսարանէն արտաքս ել 'ի կենացս, և զկերպարանն 'ի բաց եդ, երևեցաւ քան զամենեսեան աղքատագոյն. և այնքան չքաւոր, մինչ զի և ոչ կաթիլ մի ջրոյ գոլ տէր. այլ յաղագս այնորիկ ժտէր, և ոչ այնպէս դիպէր հայցուածոյն։ Զինչ քան զայն աղքատութի աղքատագոյն կայցէ արդեօք. "Ամբարձ, ասէ, զաչս իւր առ Աբրահամ և ասէ. ողորմեա ինձ և առաքեա զՂազարոս զի թացցէ զծագ մատին իւրոյ 'ի ջուր„։ Տեսանես որքան է նեղութի. մերձ էր առ նա և զանց առնէր, և 'ի հեռաստանէ այժմ աղաչէ զնա. զոր յոգնակի մոռանելով բարութիւնս վայելեալ, ոչ ումեք համբերեալ անկարծելեացն. վասն էր փոփոխիմ յառաքինութիւն։ Այս աղքատ բարեպաշտութեամբ և արդարութեամբ կելով՝ բիւր դժնդակութեամբ չարչարի։ Բայց զայսոսիկ յոլովք և այժմ ասեն։ Արդ արմատաքի 'ի բաց խլեսցեն զաղանդն, ցուցանէ նմա զի և չարութե տանջանք կան, և պատիւ և պսակք յաղագս բարեպաշտութեանն վաստակոց։

Բայց ոչ յաղագս այսորիկ միայն տեսանէր զնա, այլ զի զոր չարչարեցաւ աղքատն, զնոյն այժմ և ընչեղն կրեսցէ հանդերձ մեծ ևս դերազանցութեամբ։ Զի զոր օրինակ նմա դժնդակագոյն առնէր զտանջանսն՝ զինքն

1 Ցոյնն առաքինութեան աղքատութեան .

յաղքատութեան և զնա 'ի բարութե տեսանելն, նմա այժմ 'ի գեհենին կալ և տեսանել զՂազարու փափկութիւնն, ոչ 'ի բնութեանք պատժոցն եւեթ՝ այլ և յանդիմանադրութեամբն նորա պատուոյն անըմբերելի ունիցի զպատուհասն։ Եւ որպէս զԱդամ արտաքս հանելով 'ի դրախտէն՝ յանդիման դրախտին բնակեցոյց ած, զի յաճախապէս տեսչութիւն նորոգեսցէ զչարչարանան և հաստատագոյն նմա ընձեռեսցէ զանկանելոյն 'ի բարեացն զգայութիւն, նոյնպէս և զնա յանդիման Ղազարու բնակեցոյց, զի տեսցէ՝ և յորոց զինքն զըրկեաց։ Առաքեցի քեզ, ասէ, 'ի դուռն զՂազարոս զաղքատն, զի քեզ լիցի վարդապետ առաքինութեան և մարդասիրութեան պատճառ. անտես արարեր զշահն, ոչ ախորժեցեր արժանաւոր իրս 'ի կիր արկանել զփըրկութեանն պատճառ, վարեցիր այսուհետև այդպիսիք այնպէս 'ի մեծամեծ չարչարանաց և պատժոց. զպատճառն զայն ուսանիմք, զի ամենեքեան որ 'ի մէնջ զրկեն և զրժին, յանդիման երեսաց կալոց են։ Եւ սակայն սա զրկեալ լինէր յընչեղէն. ոչ զի զորա եառ ինչ փարթամն, այլ զի յիւրոցն ոչ ընձեռեաց։ Եւ արդ թէ որ յիւրմէն ոչ տայ՝ սոսկ ունի զոչ ողորմեալն 'ի նմանէ, ապա որ զայլոցն յափշտակեսցէ՝ որում պատահեսցէ, յորժամ ամենայն ուստեք շուրջ զնովաւ կացցեն զըրկեալքն 'ի նմանէ։ Զի և ոչ վկայութե իսկ անդ պէտք են, և ոչ ստախաց, ոչ ցուցանելոյ և ոչ նշանակաց. քանզի ահա մարդ և գործք իւր։ Այլ և նոյն իսկ ինքն ոչ տալն ընչեղից յընչից իւրոց յափշտակութիւն է։

Եւ թերևս ձեզ հրաշալի ինչ թուիցի ասացեալս. բայց մի ինչ զարմանայք, քանզի վկայութիւն ձեզ յաստուածային գրոց ընձեռեցից որ ասէ՝ թէ ոչ որ զայլոցն միայն յափշտակեաց, այլ և որք զիւրեանցն ոչ տան այլոց, և այն յափշտակութիւն և աւելաստացութիւն և զրկութիւն է. վասն զի բամբասելով զՀրեայսն ած 'ի ձեռն մարգարէին ասէր. "Բուսոյց երկիր զարմտիս իւր, և ոչ ընծայեցէք զտասանորդսն, այլ յափշտակութիւն աղքատաց 'ի տունս ձեր է"։ Վասն զի երախայրիսն, ասէ, զսովորական ոչ ընձեռեցէք՝ յափշտակեցէք զաղքատին։ Զայս ասէր ցուցանելով զի ընչեղք զաղքատացն ունին, թէպէտ և զհայրենի ընդունիցին զընչե-

ղութիւն, և ուստի և դէպ իցէ հաւաքեցէք զնոյն։ Այլ դարձեալ այլուր ասէ. «Մի հեռացուցանէք զերեսս աղքատին», որ զկանայն՝ զայլոց զկանայս. զայսուիկ առ յորժամ զայլոցն անձամբ ունիցիմք։ Եւ յորժամ ողորմութիւն ոչ ընձեռեսցուք, զուգահաւասար զերկոսս տանջիցիմք.

Տերունական են ինչքն. ուստի և ժողովեսցուք զնոսա. և նորին սպասու՝ քեզ յանձնազայն ունել ներեաց ա̃ծ, ոչ 'ի բարս և յարբեցութիւն և 'ի շուայտութիւն և 'ի բազմապատիկ հանդերձս և յայլ անձնայն 'ի թուլութիւնն ծախեսցես, այլ զի կարօտելոց զայնոսիկ բաշխեսցես։ Որ օրինակ ընդունակ որք զթագաւորականս զինչս անձամբ, և թողեալ որոց հրամայեաց բաշխել՝ յիւր 'ի ծուլութիւնն ծախիցէ, դատապարտեալ պահանջի և կորնչի, նոյնպէս և ընչեղն ընդունակ անձ է՝ որ յակամայ աղքատացն հաւաքին ինչքն, և կարգեցաւ զայնոսիկ բաշխել իւրում ծառայակցացն կարօտելոց. և եթէ աւելի քան զարժանաւորագէտն ծախեսցէ, անօղ է տաղոյ դատաստանին. քանզի ոչ ունի զիւր, այլ զծառայակցացն իւրոց։

Իմացեալ այսուհետև յայնոսիկ իբրև յօտարայ, զի ճշդի մեր։ Այլ զիւրս խնայեսցուք 'ի նոսա իբրև յօտարս. յորժամ ոչ յաւելորդ պէտս ծախիցեմք զնոյն, այլ յաղքատացն պէտս ծախիցեմք զայնոսիկ։ Ենթադրեա և ամենայնքն չափ իցես. և աւելի քան զարժանն ծախիցես, պարտուհաս ասելոց ես որ հաւատաց քեզ զնոյն։ Նայեսցիկ և 'ի մեծամեծ տունս ընչից, քանզի յորժամ զինքեանց շռայլաբանս ծառայից հաւատան. այլ սակայն որոց հաւատացելոցն լինին, նոքա պահեն զառանձն և ոչ վատնեն զոր հաւատացան. բայց յորժամ տեառնն հրամայեսցեն՝ բաշխել։ Նոյնպէս և դու արա. վասն զի առեր աւելի քան զայլսն և ընկալար, ոչ զի միայն ծախեսցես զայնոսիկ, այլ զի ընկերացն բարի տնտեսն լիցիս։

Պարտ և արժան էր և զայն զմտաւ ածել, հեմ արդեօք առ ոչ այլում. արդարոյ զՂազարոս, այլ 'ի գոգն Աբրահամու տեսանէր։ Մեծատուն էր Աբրահամ. զի յանդիմանութիւնն լինիցի նորա սատարատեցութեանն, այնր աղագաւ զնա ընդ նմա տեսանէր։ Այս և անցաւորաց սպառնալիք լինէր և յիւր տունն 'ի ներքս ձգէր. իսկ

Digitized by Google

սս և որ 'ի ներքս 'ի տանն էր անօտես առնէր, և այն֊քան ունելով զզգանձն և զփրկութեան պատուիրանս՝ զանց առնէր հանապազօր, և ոչ երբէք վարեցաւ 'ի պատշաճ իրս աղքատացն մխիթարութեան:

Բայց ոչ և հայրապետանն նոյնպէս, այլ հակառակ այնմ. զամենայն օր առաւօտի դրանն նստելով որպէս զանդաւորան զամենեսեան. և զոր օրինակ ձկնորս յանց արկանելով 'ի ծովն 'ի վեր ձգել զձուկն, համէ թերես երբէք ոսկի և մարգարիտ, նոյնպէս և նա ուռկանելով ըզմարդիկ՝ որսացաւ երբէք և զհրեշտակս. և հրաշալի այն էր զի ոչ գիտէր: Զոր և Պաւղոս քաջ գովելով ասէր. "Զհետ երթայք օտարասիրութեան, վասն զի 'ի ձեռն այնորիկ ոմանք զանխլաբար ընկալան զհրեշտակս,,: Պահպեցին ասէ՝ անգիտանալով. քանզի եթէ գիտութեամբ փոխս էր ընկալեալ հանդերձ այնպէս բարեմտութեամբ; ոչ ինչ մեծ էր և սքանչելի. այլ ամենայն գովութիւն՝ վասն զի ոչ գիտէր ոյք էին որ մերձ եկեալքն էին, և մարդիկ փոխս պարզաբար ուղեգնացս կարծելով՝ հանդերձ այնպիսի յօժարամտութեամբ 'ի ներքս կոչեաց:

Դու դու այսուհետև եթէ զոք երևելի և պայծառ ունիցիս, յոլով ցուցանելով զյօժարութիւնդ, սքանչելի ինչ ոչ ես. վասն զի պատուականութիւն օտարին և օտարականին հարկ առնէ յոլովակի զամենայն բարեմտութիւն ցուցանել: Այլ մեծ և հրաշալի յորժամ և զորս 'ի դէպ իցէ և զընկեցիկսն և զաղքատսն հանդերձ բազում բարեմտութեամբ ընդունիցիս: Վասն այսորիկ ասէ. "Որքան արարէք միում 'ի փոքրկանցս յայսցանէ 'ի հաւատացելոցս յիս՝ ինձ արարէք,,. և դարձեալ. "Եթէ ոք գայթակղեցուցէ զմի 'ի տղայոց յայսցանէ, լաւ էր նմա եթէ կախեալ էր երկանաքար զպարանոցէ նորա,,: Դու ամենայն ուրեք 'Քրիստոսի յոլով յաղագս փոքունց և տրպաց են բանք. զոր և Աբրահամ գիտելով ոչ հարցափորձեաց զեկեալսն ոյք իցեն և ուստի, որպէս և մեք այժմ, այլ պարզաբար զեկեալսն զամենեսեան ընդունէր: Վասն զի որ զբարեմտութիւնն ցուցանէ, ոչ է պարտ և զբարեկարգ վարս կենացն հետազօտել, այլ զաղքատութիւնն ուղղել և զպէտսն լնուլ: Նա ուրեմն պատասխանի աղքատն՝ զկարօտութիւնն զկերպն միայն յաղագս պիտոյիցն, և մի

ինչ առաւել պահանջեր զնա. այլ Թէպէտ և քան զամենեսեան իցէ չարագոյն և 'ի կարեւոր կերակրոյն տարակուսի, լուծցուք զնորա սովն: Այսպէս և Քրիստոս հրամայեաց. «Եղերուք, ասէ, նմանողք Հօրն ձերում որ յերկինս է, զի զարեգակն իւր ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց, և տեղէ անձրև յարդարս և յանիրաւս»:

Նաւահանգիստ է վտանգելոց ողորմածն. և նաւահանգիստ զամենայն որք 'ի նաւաբեկութիւնս անկեալ են՝ ընդունի և լուծանէ զվիշտսն, եթէ չարք և եթէ բարիք, եթէ ոյք և իցեն վտանգեալք, 'ի ներքս 'ի յիւր խորշսն ընդունի զամենեսեան: Այնպէս և դու տեսանելով յերկրի յաղքատութեան նաւաբեկութիս անկեալ մարդիկ, մի դատեսցիս և մի համարս պահանջեսցես, այլ լոյծ զթշուառութիւնն:

Ընդէ՞ր տագնապ նմա իրացն ընձեռես: Ի բաց աղատեա՛ց զքեզ ած յամենայն աւելորդ հարցաքննութենէ և 'ի բազում իրս խուզելոյ: Քանի՞ ինչ հանդերձեալ էին յոլովք ասել և դժուարել եթէ հրամայեալ էր յայ հաւատեալ զվարս կենացն և զգործն հետազօտել յառաջագոյն և ապա ողորմել. իսկ այժմ յայսմ ամենայնէ 'ի բաց եմք վճարեալ 'ի դժուարութենէ, ընդէ՞ր աւելորդ հոգս 'ի մեզ ձգիցեմք: Այլ է ատեան և այլ ողորմութիւն. ողորմութիւն յաղագս այնորիկ ասի, զի և անարժանեաց տայցեմք: Սորին աղագաւ և Պաւղոս ասէ. «Զբարիս արասցես առ ամենեսեան, յաւէտ ևս առաւել առ ընտանիսն հաւատոց»: Եթէ զանարժանսն քննեմք և հարցափորձեմք, և ոչ զարժանաւորսն երբէք դիւրաւ ընդունիցիմք. իսկ եթէ անարժանից ընձեռիցեմք, ամենայն իրօք և արժանաւորսն 'ի մեր դուռս եկեսցեն. որպէս և երանելոյն Աբրահամու եղև, որ ոչ հետազօտելով և խուզելով ընդունէր զեկեալսն, կարաց երբեմն և զհրեշտակս ընդունել:

Ընդ նմա այսուհետև և մեք նախանձեսցուք և ընդ Թոռին նորա Յովբայ: Քանզի և սա նախահօրն առատութեանն հանդերձ ամենայն հաւատութեամբ նմանեցաւ. յաղագս որոյ և ասէր. «Դուռն իմ բացեալ է ամենայն եկելոց»: Եւ ոչ ասաց եթէ այլում ումեք փակեցաւ, այլ ամենեցուն պարզաբար բանայր զդուռն: Այնպէս և մեք արասցուք, մի ինչ առաւելաբանելով ա-

աւեր ։ Բազում խորս իմաստից տեսանեմք մեզ աստանօր բացեալս․ յաղագս որոյ զամենայն ասացեալս մեզ հաւատեալ պահեսցուք, զայժմոյս և զկանխաւ խօսեցեալս ամենայն զգուշութեամբ ամփոփեսցուք, և առ որս հանդերձեալն եմք ասել՝ պատրաստագոյն զմեզ յօրինեսցուք ։ Եթէ կարողութիւն է ձեր, զամենայն իսկ յիշեսջիք․ ապա թէ ոչ կարիցէք բովանդակ զամենայն, աղաչեմ զայն յիշեսջիք յարաժամ, մի տալ 'ի յափշտակութիւն զմեր ինչսն, քանզի աղքատացն է, և զկեանսն նոցա կենացն լինի․ զի ոչ զմեր, այլ զնոցա ունիմք ։ Եւ եթէ այնպիսի գտանիցիմք, ամենայն իրօք ընձեռիցեմք զինչսն, զքաղցեալսն կերակրելով զՔրիստոս կերակրիցեմք, զի և աստ և անդ զյոլով շահս մթերելով կարասցուք հանդերձելոց բարեացն հանդիպել․ որոց լիցի ամենեցուն մեզ արժանի լինել շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի․ ընդ որում փառք Հօր հանդերձ սրբով Հոգւովն յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

## Ի ՂԱԶԱՐՈՍ (ՃԱՌ Գ.)

Ոչ ղուզնաքեայ ինչ օգտեաց Ղազարու առակն ընչեղս և զաղքատս, ոմանց զիւրաքերել զաղքատութիւն խրատելով, և ոմանց ոչ թողացուցանելով մեծամեծս ինչ խորհել յաղագս ընչեղութեանն․ այլ 'ի ձեռն նոցին իսկ գործոցն վարդապետէ, եթէ քան զամենեսեան աղորմելի է որ փափկութեամբ կեայ, և ոչ ինչ յաստուածոցն ումեք ընձեռեսցէ ։ Բեր և այսօր դարձեալ զնոյն պատճառէ բանն հարցուք․ զի և որք զառակին համեն յերկրէ, ուրանօր տեսանելով յոլովագոյն զոսկւոյն զօձանն՝ անդամօր բրեն․ դարձեալ ոչ 'ի բաց կան յառաջագոյն, մինչ զի զամենայն որ երևին՝ պեղեսցեն ։ Իջիցուք վերստին այսուհետև ուր յառաջնումն աւուրն թողաք զբանն, զի անդուստ զնա ածցուք ։

Այլ հնար և 'ի միում աւուր ձեզ զամենայն մեկնել զառակն զայն․ այլ ոչ որպէս յոլով ասացեալս 'ի բաց զնայք յայտնապէս ձեռնեալք, այլ որպէս զի հաւատեա

զասացեալսն ընդունիցիք և պահիցէք, և առնուցուք 'ի պահպանութենէն յայնմանէ զզգայութի̅ հոգևորական օգտից։ Զի և մայր բարեգութ յորժամ 'ի հաստատուն կերակուր կամիցի ածել զմանուկն, եթէ յանկարծակի արկանիցէ 'ի բերանն զջամբն՝ ոչ ինչ օգտէ, 'ի բաց պղպջակելով մանուկն զտուեալն, ցայտելով թանայ որ զլանջօքն է հանդերձն. իսկ եթէ հանդարտապէս աղեբար ընձեռիցէ, կլանէ զտուեալսն առանց տրտմութե̅։

Որդ զի մի և դուք զտուեալն 'ի բաց թքանիցէք, ոչ միանգամայն 'ի ձեզ խոնարհեցուցաք զվարդապետութեանս բաժակ, այլ 'ի բազում աւուրս զնա բաժանեցաք. և որ 'ի մէջ աւուրքն են՝ 'ի հանգիստ ձեզ ընծեռեցաք 'ի լսելութեանդ աշխատութէ̃, զի և սերմանեալն հաստատեսցի զգուշութեամբ 'ի միտս ձերոյ սրտիդ, և զորս հանդերձեալ եմք ասել՝ զօրաւոր և առոյգ անձամբ ընդունիցիք։ Յաղագս այսորիկ և զպատճառսն առաջիկայ ճառիս յոլովակի կանխաւ ասեմք նախ քան զբազում աւուրս, զի և որ 'ի մէջ աւուրքս են՝ զգիրսն առնլով, 'ի նոսա ընդ ամենայն ընթերցուածսն անցանիցէք և ուսանիցէք զինչ է որ ասացաւն և զինչ մնացեալն իցէ, դիւրուսմունս առնելով զձեր զմիտս առ լսողութիւնն զկնի այն ասացելոցն։

Եւ զայս միշտ աղաչեմ և յաղաչելոյ ոչ դադարիմ, զի մի աստ եւեթ յասացեալս հայիցիք, այլ և 'ի տան լինելով՝ ա̃ծայինն գրոց ընթերցուածոց յաճախապէս պարապեսջիք։ Զայսոսիկ և առանձինն լինելով ընդ ձեզ ոչ նուաղեցի միշտ երաշխաւոր լինել։ Քանզի մի ոք ասիցէ զցուրտ բանսն զայնոսիկ և զյոլով բամբասանաց արժանաւորս, եթէ ընդ ատեանս բևեռեալ եմ և զքաղաքի իրս գործեմ, կնոջ և մանկանց հոգ տանիմ, արուեստ ունիմ, տան վերակացու եմ, աշխարհական այր եմ, ոչ է ինձ զգիրս ընթեռնուլ, այլ այնոցիկ ոք հրաժարեցին և 'ի գլուխս լերանց երթալով ընդունիցին զվարս կենաց հանապազօր։

Զինչ ասես, ով մարդ, ո՞չ է գործ քո ընթեռնուլ վասն զի բիւրուք ես վարակեալ հոգով։ Քո է առաւել քան թէ նոցա. վասն զի ոչ այնպէս նոքա պէտս ունին առ ա̃ծայինն գրոց օգնականութիւն, որպէս դու որ 'ի միջոցի շրջիս։ Վասն զի միայնացեալքն 'ի գաւեհից և զորս

'ի հրապարակական ամբոխէ 'ի բաց վճարեալք զտաղաւարս յանապատի հարկանելով, և ոչ առ մի ոք հաղորդութիւն ունելին, այլ իմաստասիրեն համդերձ ցածութբ և հանդարտութբ 'ի խաղաղութեն յայնմիկ. իբրև 'ի նաւահանգստի նստելով 'ի բազում զգուշութե վայելեն. մեք իբրև 'ի մէջ խորոց ծովամնեալք հոծ և խիտ, միշտ և հանապազոր կարօտանամք գրոց մխիթարութե։

Նոքա հեռի 'ի կռուոյս անցեալ նստէին, յաղագս որոյ և ոչ յոլովս ընդունէին զվէրսն. դու յարաժամ 'ի մարտի կաս և յաճախս ընդունիս զվէրսն, որոյ և առաւելագոյն պէտք են քեզ դեղոց. զի և կին զայրացուցանէ և որդի տրտմեցուցանէ և ծառայ 'ի տրտմութիւն արկանէ և թշնամի դրժէ և սիրելի յաչաղէ և դրացի խարդախէ և զինուորակից խափանէ, բազում անգամ և դատաւոր սպառնայ և աղքատութի տխրեցուցանէ և ընտանեաց մահ սուգ գործէ և բարութիւն ամբարտաւանեցուցանէ և դժուարինք զնստուցանեն։ Յոլով են և բարկութեանն, առաւել և հոգոցն, բազում տխրանաց և տրտմութեանն, յաճախ քան նաւափառութեն և ամբարտաւանութեանն, պատճառք և կարիք ամենայն ուստեք զմեզ շուրջ պատանդեն, բիւր նետս 'ի բնաւ կողմանց բերեն. յաղագս որոյ գրոցն սպառազինութեան պէտք լինին յարաժամ։ Քանզի ծանիր, ասէ, զի 'ի մէջ որոգայթից շրջիս, և 'ի վերայ մարտկոցաց քաղաքի գնաս։ Ոչ և մարմնոյ իսկ ցանկութիւնք, որ 'ի միջոցին շրջին, հակառակ յառնեն, դէմք քաջավայելուչք և մարմին պայծառ 'ի ձեռն աչաց ընկենու 'ի վայր, և բանք զազիրք ընդ լսելիս մտեալ ամբոխեն յաճախապէս զխորհուրդս մեր, և երգ դեղգեղեալ զոգւոցն քաջապնդութիւն կակղացուցանեն։ Եւ զինչ ևս ասեմ զայնոսիկ, զի որ քան զամենեսեան տկարագոյն թուի գոլ՝ իւղոցն հոտ բուրելով 'ի բոլ կանանցն՝ յանցանելն առեալ գնայ գերի սոսկ պատահմամբն։

Եւ յոլովք են որ պաշարեն զմեր անձինս, և պէտք լինին մեզ ածային դեղոց. զի և զխեալ վէրսն բժշկեսցուք, և զոչ լեալսն՝ զհանդերձեալսն լինել՝ կանխաւ զնրտուսցուք, 'ի հեռուստ զսատանայի զնետսն շիջուսցուք և 'ի բաց մղեսցուք 'ի ձեռն յաճախապէս ընթերցուածոց գրոց։ Վասն զի ոչ է և ոչ իսկ հնար ումեք զեր-

ծանել՝ թէ ոչ յանձախապէս վայելեսցէ 'ի հոգևոր վայե-
լչութենէն։ Այլ սիրելի է և արդարև սիրելի է եթէ միշտ ճաշակեսցէ 'ի բժշկութենէս յայսմանէ, կարէաք թերևս ապրել. իսկ յորժամ հանապազորդ միրաւորիցէ, և 'ի բժշկութեան ոչ 'ի միում վայելեսցէ, որ փրկութեան յայս լինիցի։

Ո՞չ տեսանես զայգեգործն կամ երկրագործն և զաղ-
ծաթագործն որք լինին և իցէ արուեստն զամենայն զարուեստին զգործիս կատարելապէս ունիցին. և եթէ սով հարկ առնէ, եթէ աղքատութիւն բռնադատէ, ամենայնի ախորժեն համբերել յաւէտ՝ քան եթէ զարուեստին զգործի վաճառել և կերակրել։ Յօժարք քաղում փոխ առնուլ ախորժեն, և կերակրել զտունն և զմանկունսն՝ քան եթէ յարուեստին գործեաց զփոքրագոյն ինչ վաճառել. և թերևս յիրաւի, քանզի գիտեն եթէ 'ի բաց վաճառելով զայնոսիկ՝ անպիտան է նոցա արուեստն այնուհետև, և ամենայն շահիցն պատճառք բարձեալ լինին. իսկ եթէ այնոքիկ մնասցեն, կարողութիւն է և զառեալ փոխն ժամանակաւ երբեմն հատուցանել արուեստիւն անդանդաղապէս վարեսցեալ։ Նա եթէ ժամանեսցեն զնոսա այլոց վաճառել, և ոչ մի ինչ աղքատութեանն և սովոյն միսիթարութիւն այլ առաւել իմանալ կարեն։ Նոյնպէս և մեզ ունել 'ի միտի պարտ և արժան է. զի զոր օրինակ նոցա գործիք արուեստին են ուռն և սալ և կայծակայք, նոյնպէս և մեր գործիք արուեստին են առաքելական և մարգարէական գիրք և ամենայն ա̃ծաշունչ և օգտակար բանք։ Եւ որպէս նոքա զամենայն անօթս զոր առնուն ձուլելով ուղղանեն, նոյնպէս և մեք 'ի ձեռն գործեաց զանձինս մեր արատաւորեալս և զթիւրեալսն ուղղեսցուք և զհնացեալսն նորոգեսցուք։ Նոքա մինչ 'ի ձեռն ևեթ զիւրեանց արուեստն ցուցանեն, և ոչ կարեն զնիւթ անօթոցն[1] փոփոխել, և ոչ զարծաթն առնել ոսկի, այլ զձևաւորութիւնն միայն փոփոխելով զայնոցիկ յօրինեն. բայց դու ոչ այնպէս, այլ ունիս իմն առաւելագոյն քան զնոսա. զի և զփայտեայ անօթ ածելով, կարես առնել ոսկեղէն. և այստորիկ վկայէ Պաւղոս ասելով այսպէս. «Ի մեծ տան ոչ են անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք. այլ և փայ-

1 Այլապէս յօրինակին. յոյնն զնիւթ անօթոյն։

տեղէնք և քարեղէնք. և եթէ ոք զինքն մաքրեսցէ յայսցանէ, եղիցի անօթ 'ի պատիւ սրբեալ քաջ, պիտանացու յամենայն գործս բարիս պատրաստական,,:

Մ՛ի ծուլասցուք այսուհետև ստանալ զգիրս, զի մի 'ի կարևոր տեղւոջ զլերն ընկալցուք. մի զոսկի թաղեսցուք, այլ զանձեսցուք մեզ զհոգևոր գիրս: Ս՛ասն զի ոսկի յորժամ առաւելն լինի, յայնժամ առաւել զըրժէ զստացողն. իսկ գիրք ամբարեալք յաւէտ ընձեռէ ունողացն զօգնականութիւն: Օ՛ր զոր օրինակ ուրանոր կայցեն զէնք թագաւորականք, թէպէտ և չիցէ ոք որ վարեսցի նոքօք, յոլով անօրինեն 'ի ներքս բնակեցելոցն զպահպանութիւն, ոչ աւազակք և ոչ մահատուք և ոչ այլ ոք 'ի չարագործացն յանդգնի մտանել 'ի տունն, նոյնպէս և ուր իցեն հոգևոր գիրք, ամենայն սատանայական գործք անտի 'ի բաց վտարեալ լինին, և բնակչացն առաքինութե՛ բազում մխիթարութե՛ լինի:

Ա՛յլ և նոքին իսկ ըստ ինքեանց գրոցն դէմք դանդաղկոտ զմեզ առ մեղացն իրս գործեն: Ա՛ւ եթէ յանդըգնիմք ինչ 'ի հրաժարեալսն և անմաքուր զմեզ գործիցեմք, երթալով 'ի տուն, և զգիրսն տեսանելով մանաւանդ զմեզ դատապարտէ խիղճն, և 'ի նոյնպիսին անկանել դարձեալ՝ դանդաղկոտ լինիմք: Իսկ եթէ սրբութեամբ ինչ աւարտեմք իրս, առաւել ևս անտի առնումք զգուշութիւն. քանզի եթէ առնու ոք զաւետարանն 'ի ձեռն, անդէն վաղվաղակի յարմարէ զմիտսն զիւր, և տեսանելովն միայն զնա՝ յաշխարհականացն ամենեցուն 'ի բացկայ: Իսկ եթէ ընթերցումն ևս հաւաստութեամբ լինիցի իբրև 'ի ներքս 'ի քահանայականին ուրեմն հոգի կատարեալ, այնպէս մաքրի 'ի ձեռն գրեցելոցն այնոցիկ:

Ա՛ւ զինչ շահ, ասէ, եթէ ոչ գիտիցեմք որ անդն կայցէ: Մ՛անաւանդ եթէ և ոչ զգրեալսն գիտիցես, 'ի նմին իսկ յընթերցուածոյն յաւսով սրբութիւն լինի: Ա՛ւ այլ ապա ևս. անկարելի է զամենայն 'ի կարգին անգիտանալ. յաղագս այսորիկ և հոգւոյն շնորհ անօրինեաց մաքսաւորաց և ձկնորսաց և խորանագործաց և հովուաց տգիտաց և որ առանց գրոյ էին՝ նոցա յօրինել զգրեանն, զի մի ոք 'ի տգիտայն յայն ունիցի ապաւինել 'ի պատճառս, զի ամենեցուն դիւրիմանալի լինին

Digitized by Google

ասացեալքն, զի և ձեռնարուեստիկն և ծառայ և այրի կին և որ քան զամենայն մարդ անուսումնագոյն իցէ՝ շահեսցի ինչ և օգտեսցի 'ի լսելութենէն: Վասն զի ոչ 'ի մնափառութիւն որպէս արտաքնոցն, այլ 'ի փրկութիւն լսողացն ամենեցուն զայնոսիկ գրեցին՝ որք 'ի սկըզբան շնորհի հոգւոյն սրբոյ արժանաւորք եղեն:

Արտաքին իմաստասէրքն և ատենական դպիրքն և պատմագիրքն ոչ զհասարակաց օգուտն հայցեն, այլ որպէս ինքեանք միայն հռչակք երևեսցին՝ գիտեն. և եթէ պիտանացու ինչ ասասցեն, և զայն իբրև խաւարաօրինակաւ անյայտութեամբ ծածկեսցեն: Իսկ առաքեալքն և մարգարէքն զամենայննորին հակառակն արարին, երևելի և յայտնագոյն զբովանդակ զիւրեանց բանսն յանդիման կացուցին ամենեցուն, իբրև հասարակ ամենայն աշխարհի վարդապետք, զի իւրաքանչիւր ոք ինքեամբ ուսանել կարասցէ յընթերցուածոյն միայն զասացեալսն: Նա զայնոսիկ նախաձայնելով մարգարէն ասէր. “Եղիցին ամենեքեան ուսեալք յԱյ. և մի ասասցէ ոք իւրաքանչիւր ցընկերն իւր՝ եթէ ծանիր ըզտէր, զի ամենեքեան գիտասցեն զիս փոքունց մինչև 'ի մեծամեծս նոցա”. և Պաւղոս ասէ. “Եւ, եղբարք, եկեալ առ ձեզ, ոչ ըստ առաւելութեան բանի իմաստութեան պատմեցի ձեզ զխորհուրդն Այ”. և դարձեալ. “Բանն իմ և քարոզութիւնն ոչ հաւանական բանիւ մարդկային իմաստասիրութեամբ, այլ յայտնութեամբ հոգւոյն զօրութեան”. և դարձեալ. “Խօսիմք զիմաստութիւն, և ոչ զիշխանացն զյաւիտենից զայսորիկ զխափանելեացն”:

Զի՞նչ ոչ իցէ յայտնագոյն յաւետարանին. ամենայն իսկ ով ոք լսելով թէ երանի հեզոց, երանի ողորմածաց, երանի որ սուրբ է սրտիւ, վարդապետի՞ կարօտանայցէ զի ուսցի զասացեալսն: Այլ և նշանքն և ըսքանչելիքն և պատմութիւնք ամենեցուն ծանօթք են և յայտնիք: Պատճառք են այնոքիկ և բաղոյք և պղերգութեանն ծածկոյթք: Ոչ իմանաս զգրեալսն, և զիա՞րդ իսկ կարասցես իմանալ երբէք որ և ոչ վարկպարազի յառիս 'ի նոսա: Առ 'ի ձեռս գիրսն, ընթերցիր զպատմութիւնն զամենայն, և զծանօթագոյնսն 'ի մտի ունելով՝ ընդ անյայտսն և ընդ անգիտելիսն յոլովակի անց-

ցես։ Եւ եթէ ոչ կարասցես յաճախութեամբ ընթերցուածոցն գտանել զասացեալսն, երթիցես առ իմաստնագոյնսն առ վարդապետսն զեկուցանել յաղագս ասացուածոցն, յոլովագոյն ցուցցես զփոյթն։ Եւ եթէ տեսանիցէ զքեզ ա՟ծ այնքան վարեցեալ յօժարամտութ՟բ, ոչ անտես առնէ զքո զանգիտութիւնն, Ինքն յայտնեսցէ ամենայն իրօք։

Յիշեա զներքինին եթովպացւոց թագուհւոյն, որ այր բարբարոս էր և բիւր հոգովք պատանդեալ և ամենայն ուստեք յոլով իրօք շուրջ պաշարեալ, թէպէտ և ոչ գիտէր զոր ընթեռնոյր, սակայն ընթեռնոյր 'ի կառսն նստելով։ Եւ եթէ 'ի ճանապարհի այնքան փոյթ ցուցանէր, զմտաւ ած զինչ ոք էր 'ի տան դադարելով. զի եթէ 'ի ժամանակի ուղեգնացութեանն ոչ ներէր առանց ընթեռնլոյ կալ մնալ, եւս առաւել յորժամ 'ի տան նստէր. և եթէ ոչ գիտելով զոր ընթեռնոյրն ոչ 'ի բաց կայր յընթերցուածոցն, յաւէտ ևս զկնի ուսանելոյն։ Եւ զոր ընթեռնոյրն ոչ գիտէր, լուր զինչ ասէր նմա Փիլիպպոս. "Արդեօք գիտիցե՞ս զոր ընթեռնուդ"։ Եւ նորա զպատասխանի լուեալ ոչ շառագունեաց, ոչ ամաչեաց, այլ խոստովանեաց զանգիտութիւնն և ասէ. "Զիա՞րդ կարացից եթէ ոչ ոք ինձ առաջնորդեսցէ"։ Ոչ ևս ունելով առաջնորդ զոք ընթեռնոյր, յաղագս այնորիկ վաղվաղակի ընկալաւ զվարդապետն։ Բայց ոչ է մերձ այժմ Փիլիպպոս, այլ հոգին որ յորդորեաց զՓիլիպպոս՝ մերձ է։

Մի՛ արհամարհեսցուք զփրկութիւնն մեր, սիրելիք. "Ամենայն գիրք 'ի խրատ մեզ գրեցան, յորս վախճան յաւիտենից հասեալ է"։ Մեծ զգուշութիւն առ ոչ մեղանչելն են գրոց ընթերցուածք. մեծ գահավիժութիւն և խորին վիհ՝ գրոց անգիտութիւն. մեծ մատնութիւն փրկութեան՝ ոչ ինչ յաստուածայնոց օրինացն գիտել։ Այնորիկ և զհերձուածսն ծնան, նոքին և զապականեալ վարսն 'ի ներքս մուծին, այնոքիկ զգեր 'ի վերոյսն 'ի ստորև արարին։ Անհնարին է անպտուղ 'ի բաց գնալ ումեք որ յաճախապէս ընթեռնու, այլ վայելէ հանդերձ վերահայեցութեամբ։

Ահա մի առակս որքան մեզ օգտեսցէ, որքան լաւագոյն զմեր զանձինս գործեսցէ. վասն զի յոլովք, քաջ

գիտեմք, զբաւական օգտութիւնն լսելութեամբ առեալ կնացին։ Իսկ եթէ իցեն ոմանք որ ոչ այնքան շահեցան զպտուղն, այլ սակայն 'ի նմին աւուր յորում լուանն՝ լաւագոյնք եղեն ամենայն իրօք։ Եւ սուղ և 'ի միում աւուրն միայն 'ի մեղացն ապաշաւանս դեգերել՝ հայել 'ի վերին իմաստութիւնն, և ընձեռել յաշխարհական-նացս գոնէ սակաւ ինչ դադարումն հոգոցն։ Իսկ եթէ հանապազօր այսպիսի ժողով առնէաք, և ոչ վերջանայ-աք յաճախապէս 'ի լսելութենէս, գործեալ լինէր մեծ իմն և առաքինի բարի։

Ուր այսուհետև որ 'ի կարգին է դարձեալ ընձեռես-ցուք ձեզ։ Իսկ զինչ 'ի կարգին. Ասացեալ ընթերցին "Ա-ռաքեա զՂազարոս զի կաթեսցուսցէ ծայրիւ մատինն և զովացուսցէ զլեզու իմ„, լուր զինչ ասէ Աբրահամ. "Որդեակ, յիշեա զի առեր զբարիսն քո 'ի կեանսն քում, և Ղազարոս զչարչարանսն. և այժմ սա մխի-թարի, և դու վտանգիս։ Եւ 'ի վերայ այդոցիկ ամե-նեցուն վիհ մեծ է 'ի մէջ ձեր և մեր հաստատեալ. որ-պէս զի որք խորժեսցեն այտի անցանել առ մեզ՝ ոչ կարասցեն, և ոչ աստի այդր անցանել„։

Ծանունք են ասացեալքս և յոլով 'ի մեզ հեղլին ըղ-ցաւուն, գիտեմ և ես. այլ որքան խոցոտէ զիս խիղճն, այնքան օգտէ զմիտս խոցոտելոյն։ Քանզի եթէ անդ պարզերին ասացեալ լինին մեզ որպէս և ընթերցին, ճշմար-տապէս սուգ և ողբք և տրտմութիւնք, զի ապաշաւա-նաց ժամանակ ոչ ևս մնացեալ լինէր մեզ։ Բայց մինչ-դեռ աստ եմք զայսոսիկ լսեմք, ուր և զարթնուլ կարո-ղութիւն է և զմեղս 'ի բաց լուանալ և յաջն առանալ համարձակութիւն, և այլոց չար գիպուածովքն երկու-ցեալք փոփոխեսցուք, գոհանամք զմարդասիրէն այ՝ որ այլոց տանջանօք ընգոստուցանէ զմեր պղերգութիւնս և զարթուցանէ զմեզ 'ի քնոյ։ Յաղագս այսորիկ ասի՝ զի մի նոյնպիսի ինչ կրեսցուք։ Քանզի եթէ կամէր տանջել զմեզ, ոչ յառաջագոյն ասէր. այլ զի ոչ կամի արկանել զմեզ 'ի պատիժսն, վասն այնորիկ կանխաւ ասէ զպատուհասն, զի յօժարութեամբ զղջախոհացու-ցեալք՝ 'ի փորձէ իրացն փախիցուք։

Բայց ընդէ՞ր արդեօք ոչ ասաց՝ ընկալար զբարիսն քո, այլ առեր։ Յիշեք իսկ դուք, քաջ գիտեմ, զի աստա-

նոր խոր և անբաւ և մեծ իմաստք բացեալ լինին. քանզի առերն՝ զպարտս իմն ցուցանէ և յայտնի առնէ, զի որ առնուն՝ զպարտս առնուն։ Արդ եթէ պիղծ և խակ և անմարդի էր ընչեղն՝ էր աղագաւ ոչ ասաց նմա՝ թէ ընկալար զբարիսն քո, այլ առեր՝ իբրև զփոխ և զպարտս։ Զինչ աստանօր ուսանիցիմք. զի թէպէտ և պիղծք ոմանք իցեն և 'ի վերջին չարիսն վարեալք, բազում անգամ մի ինչ կամ երկուս կամ երիս գործեսցեն բարիս։

Եւ զի ոչ կարծելով զայս ասեմ այժմ, յայտ անտի է, ո՞ քան զդատաւորն զանիրաւութեան չար եղև, ո՞ անմարդագոյն և ամբարիշտ, որ ոչ յԱյ երկնչէր և ոչ 'ի մարդկանէ պատկառէր. այլ սակայն այնքան չարութեամբ կելով՝ գործեաց իմն բարի, որ յաճախակի թախանձէր զնա այրին՝ ողորմեցաւ նմա և հաւանեցաւ շնորհին և ետ զհայցուածն ընդդէմ դառնալով զրկողացն նորա։ Նոյնպէս դիպի պակշոտեալ ումեք լինել, այլ թերևս ողորմած. և կամ անմարդի, այլ պարկեշտ։ Եւ եթէ պակշոտեալ և խակ իցէ, այլ սակայն 'ի կեանս իւրում մի ինչ գործեաց բարի։ Զնոյն դարձեալ և յաղագս պիտանեացն պարտ է բազում անգամ զմտաւ ածել. զի որպէս վատթարքն գործեն ինչ պիտանացու երբեմն, նոյնպէս և փոյթքն յառաքինութիւն մեղանչեն յոլովակի. քանզի "Ո՞ պարծի սիրտ սուրբ ունել, կամ ո՞ համարձակեսցի մաքուր գոլ 'ի մեղաց"։

Արդ զի դէպ էր և ընչեղին՝ թէպէտ և 'ի վերջին չարութիւնս էր զեղխեալ՝ գործել ինչ մի բարի, և Ղազարոս թէպէտ և զծայրագոյն առաքինութիւնս ցուցանէր՝ մեղանչել փոքր ինչ, տեսանես զիարդ զերկոսեան զայնոսիկ զէկոյց հայրապետն ասելով՝ եթէ "Դու առեր զբարիսն քո, և Ղազարոս զչարիս"։ Եւ դու, ասէ, եթէ բարիս ինչ գործեցեր, և պարտ էր քեզ առնուլ վարձ, զամենայն զայն յայնմ աշխարհի առեր, փափկանալով ճոխանալով, 'ի քաջարութիւնս վայելեցեր և 'ի յոլով բարիս. և սա թէ չար ինչ գործեաց, զբովանդակն էառ, սովով աղքատութեամբ 'ի վերջին չարիս թշուառացաւ։ Եւ մերկ երկոքեան դուք այսր եկիք. սա 'ի մեղաց, և դու յարդարութենէ. վասն այնորիկ և սա մաքուր ունի զմխիթարութիւնս, և դու անփոփոխելի տանջանաց համբերես։

Յորժամ սուղ և փոքր ուղղութիւնք մեր իցեն, սաս-
տիկ և անճառելի մեղացն ծանրութիւնք, յայնժամ
աստէն 'ի բարիսն վայելեմք և ոչ ինչ կրեմք դժնդա-
կութիւնս, և այնոքիկ բարեացն հատուցմունք լինիցին,
ամայիք և մերկ ամենայնիւ երթեալ գնամք՝ զամենայն
աստէն առնլով: Որպէս և յորժամ մեծամեծք իցեն
ուղղութիւնքն յոքունք, նուազք և սակաւք յանցանքն,
կրեմք իմն դժնդակութիւնս. և զնոյն զփոքունսն զայ-
նոսիկ 'ի բաց դնելով՝ մաքուր և աւարտեալ անդ զբա-
րեաց գործոցն առնումք փոխարէն զհատուցումն: Արդ
յորժամ տեսանիցես զոք որ չարութեամբ կեցցէ և ոչ
ինչ աստ չարչարի դժնդակապէս, մի երանիցես, այլ ար-
տասուեա և ողբա վասն զի զամենայն անդ ընդունելոց
է զդժնդակութիւնս, որպէս և ընչեղն այն: Դարձեալ
յորժամ տեսանիցես զոք խնամ տարեալ առաքինու-
թեան և բիւր փորձութեանց համբերիցէ, երանեա՛ և
նախանձեա, զի յամենայն 'ի մեղաց այնպիսին աստէն
քաւի, և բազում համբերութեամբն վարձք անդ պատ-
րաստին նմա, զոր օրինակ և Ղազարու եղև:

Քանզի ոմանք 'ի մարդկանէ աստ միայն տանջեալ լի-
նին, և ոմանք աստ ինչ ոչ չարչարին՝ այլ զամենայն տան-
ջանս անդ առնուն այնպիսիքն; և կէսք և աստ և անդ
պատուհասին, ո՞ւմ երկոցունց 'ի նոցանէ երանիցեմք:
Նախ և առաջին, քաջ գիտեմք, աստ չարչարելոցն՝ որք
'ի բաց դնեն զմեղսն. երկրորդ զկնի նոցա դուք թերևս
արդեօք որք ոչ ինչ աստ պատժիցին, այլ անդ ամենայն
համբերեն խոշտանգմանացն. բայց ես ոչ այնպիսեացն,
այլ որք աստ և անդ պատուհասինն: Զի որ աստէն ըզ-
պատիժսն տայ, թեթևագոյնս զգայցէ անդ տանջանացն
համբերել, անհրաժարելի զդատաստանն առնէ. որպէս
և այս ընչեղս աստէն ոչ լուծանելով 'ի բաց զիւր զյան-
ցանսն, այնպէս դժնդակագոյն պատժեալ լինէր անդ,
մինչ զի և ոչ կաթի միոյ փոքրկան կարելով պատահել:

Եւ այնոքիկ ով ոք մեղանչեննն և ոչ ինչ աստէն կրեն
չարչարանս, յոյժ առաւելագոյն աւաղեմ զայնպիսիսն՝
որք հանդերձ ոչ ինչ ընդունելով պատուհաս աստէն,
և ընդարձակութեան և 'ի փափկութեան եւս վայելես-
ցեն: Զի զոր օրինակ որ ոչ աստէն դատաստան յան-
ցանացն տայ՝ վտանգաւոր անդ առնէ զպատիժսն, նոյն-

Digitized by Google

պէս և որք յոլով փափկութիւնս վայելեն և ընդարձակութեան և ճոխութեան, ամբարս և պատճառս տանջանաց մեծագոյն անդր մթերեն։ Քանզի յորժամ մեղանչեմք և պատուիմք յայ, նոյն ինքն այն յաւէտ մեծապէս զմեզ 'ի հուր արկանել կարէ. զի եթէ որ յերկայնմտութիւնն նորա միայն վայելէ և ոչ 'ի պատշաճ իւրս վարի, դժնդակագոյն ունի զպատուհասն. յորժամ հանդերձ երկայնմտութեամբն և խնամս ևս ունիցի մեծամեծս՝ և կացցէ և մնասցէ 'ի չարութիւնս, ո՞ զնա զերծուսցէ յայնց տանջանաց որ անդ լինին։

Եւ զի որք յերկայնմտութիւնսն աստ վայելեն՝ հաւաքեն բովանդակ ինքեանց անդր զչարն եթէ ոչ ապաշաւեսցեն, լուր զինչ ասէ Պաւղոս. "Զմտաւ ածցես զայս, ով մարդ, որ դատիս զայնոսիկ որք զայնպիսին գործեն, և առնես զնոյն, եթէ դու փախչելո՞ց իցես 'ի դատաստանէն այ։ Եթէ զառատութիւն քաղցրութե նորա արհամարհիցես, անգիտանա՞ս զի քաղցրութիւնն այ յապաշաւանս զքեզ ածէ. այլ ըստ խստութե քում և ըստ անզեղջ սրտիդ գանձես քեզ բարկութիւն յաւուրն բարկութեան յայտնութեան արդար դատաւորութեանն այ"։

Արդ յորժամ տեսանիցեմք զոմանս փարթամս և փափկացեալս, իւղովքն բուրեալս, յարբեցութեան երեկացեալս, 'ի զօրութեան և 'ի փառս, և 'ի բազում երևելի իրս և 'ի յամբարտաւանութիւնս և 'ի մեղս, և ոչ ինչ կրիցեն յաղագս այնոցիկ, յաւէտ զնոսա արտասուեսցուք և ողբասցուք, զի մեղանչեն և ոչ տանջին։ Որպէս եթէ զոք տեսանիցես ջրգողութեամբ և փայծաղնացաւութեամբ վտանգեալ, կամ թէ ապականագործ ինչ ունիցի ախտ և բիւր վէրս ամենայն ուստեք, և 'ի վերայ ամենեցուն այնոցիկ արբենայ և փափկանայ և զախտն սաստկագոյն գործէ, ոչ միայն ոչ սքանչանաս և ոչ երանես յաղագս փափկութեանն, այլ վասն նորին իսկ մանաւանդ եղկես, նոյնպէս և յաղագս ոգւոյն զմտաւ ած։ Յորժամ տեսանիցես զմարդ չարութեամբ կեցեալ և 'ի յոլով բարութիւնս վայելեալս և ոչ ինչ դժնդակագոյնս չարչարի, նորին իսկ այնորիկ աղագաւ յաւէտ ողբա, զի դժնդակագոյն և ապականացու ախտիւ պաշարեալ՝ զհիւանդութիւնն սաստկացուցանէ,

սաստկութեամբն և չուայտութեամբն չարագոյն ևս լինի։ Զի ոչ պատիժքն են չարք, այլ մեղքն են դժնդակք․ նոքա յոյժ 'ի բաց որոշեն, իսկ պատիժքն հանգուցանեն առ ած զմեզ և լուծանեն զպարտութիւնն։ Եւ ուստի՞ է այս յայտ․ լուր մարգարէին որ ասէ․ “Մխիթարեցէք մխիթարեցէք զժողովուրդ իմ քահանայքդ, խօսեցարուք 'ի սիրտ Երուսաղեմի, զի ընկալաւ 'ի ձեռանէ տեառն կրկին զյանցանս իւր„․ և դարձեալ․ “Տուր մեզ զխաղաղութիւն, զի զամենայն հատուցեր մեզ„։

Եւ զի ուսանիցիք եթէ ոմանք աստ և անդ տանջին, և կէսք աստ՝ և անդ ոչ, լուր զինչ ասէ Պաւղոս ամբաստան լինելով որք ոչ արժանաւորապէս հաղորդին խորհրդոցն։ Քանզի ասելով եթէ “Որ ուտէ և ըմպէ անարժանապէս զմարմինն Քրիստոսի՝ պարտական եղիցի մարմնոյ և արեանն տեառն„, 'ի վերայ եած վաղվաղակի․ “Վասն այնորիկ են 'ի ձեզ յոլով հիւանդք և ախտաժէտք և ննջեցեալք բազումք։ Եթէ զանձինս դատէաք, ոչ արդեօք դատապարտեալք լինէաք․ բայց և այժմ դատեալք, 'ի տեառնէ խրատիմք, զի մի ընդ աշխարհի դատապարտեալք լիցուք„։ Տեսանե՞ս զի աստէն տանջանքն յափշտակեն զմեզ յանտի պատուհասիցն․ և “Զպոռնկեալն մատնեցէք, ասէ, սատանայի 'ի սատակումն մարմնոյ, զի հոգին ապրեսցի յաւուրն տեառն մերոյ„։ Եւ 'ի Ղազարու այս յայտ է․ եթէ չար ինչ արար, աստէն լուանալով այնպէս չոգաւ անդ մաքուր։ Եւ յանդամալուծէն քաջայայտ է, որ երեսուն և ութ ամ ունէր զերկայնութիւն հիւանդութեանն, 'ի բաց եդ զմեղսն։ Եւ զի յաղագս մեղացն այնպէս անկեալ կայր, լուր զինչ ասէր Քրիստոս․ “Ահա ողջ եղեր, մի ևս մեղանչեր, զի մի չար ինչ քեզ լիցի„։ Արդ զի ոմանք աստ պատժին և զմեղսն 'ի բաց դնեն, յայտ յայսցանէ է։

Եւ զի ոմանք և աստ և անդ պատուհասին, յորժամ ոչ արժանի մեծութեան յանցանացն աստէն առնուցուն, լուր զինչ ասէ յաղագս սոդոմացւոցն Քրիստոս․ քանզի ասելով եթէ “Որ ոք ոչ ընդունիցի զձեզ, թօթափեսջիք զփոշի ոտից ձերոց„, 'ի վերայ եած ասելով․ “Հանդարտագոյն լիցի երկրին սոդոմայեցւոց և գոմորացւոց յաւուրն յայնմիկ քան քաղաքին այնմիկ„։

Գփուրազգոյն ասելով զայն յայտնեաց թէ և նորա պատ-ժին, այլ հանդարտապէս, վասն զի աստ ետուն դա-տաստան:

Այլ զի են ոմանք որք ոչ ինչ չարչարին դժնդակա-գոյն, անդ համբերեն ամենայն պատուհասից, յայտ-նեաց մեզ ընչեղս այս՝ անհրաժարելի ընդունել զպա-տիժն, և ոչ փոքր ինչ վայելէր 'ի մխիթարութիւնս յա-ղագս անդր ամբարելոյ զամենայն զպատուհասն իւր. Որ օրինակ մեղուցեալքն որոց ոչ ինչ անկանէին վտան-գաւոր չարչարանք 'ի վերայ՝ մեծագոյն ընդունելոյն անդ զտանջանսն, նոյնպէս և առաքինիքն որք յոլով աստէն կրեն զպատիժսն, 'ի բազում պատիւս վայելեն անդ. Այլ որպէս երկու մեղաւորք՝ եթէ մինն աստ տանջի և միւսն ոչ, երանելի է որ պատժին քան որ ոչն չարչարի. Նոյնպէս և արդարոց երկուց աստ՝ թէ մինն յոլովից և միւսն դուզնաքեաց համբերիցէ նեղութեանց, երանելի է որ առաւելագոյնսն համբերիցէ, վասն զի իւրաքան-չիւր ումեք հատուցանիցէ ըստ գործոց իւրոց:

Այլ արդ զինչ, ո՞չ իցեն ոմանք որք աստ և անդ 'ի զիւ-րութիւն վայելեսցեն. Անհնարին այդպիկ; ով մարդ, և մի յանկարծելեացն. քանզի ոչ է և ոչ իսկ է, որ աստ յընդարձակութեան և 'ի բարութեան վայելէ և յամե-նայնի յաջախապէս փափկանայ, և զվայրապար և զանո-տի կեանսն կեայ, 'ի պատիւ անդ վայելէ. Թէպէտ և ոչ վտանգիցէ աղքատութիւնն, այլ սակայն ցանկու-թիւնն շտապէ և 'ի նմանէ պաշարեալ լինի, և ոչ փոքր այնացիկ ցաւն. Թէպէտ և հիւանդութիւնն ոչ տագ-նապեցուցանէ, այլ տրտմութիւնն ոչ դուզնաքեայ վը-տանգ շուրջ արկանէ. Թէպէտ և փորձութիւնք ոչ գայ-ցեն 'ի վերայ նորա, այլ խորհուրդք չարք յաճախապէս 'ի վերայ յառնեն. Այլ ոչ դուզնաքեայ սանձահարել զմարմինն առ 'ի վատթար ցանկութիւնսն, զապարե-ցուցանել զնախանձութիւնն, զնստուցանել զամբար-տաւանութիւնն, 'ի փափկութենէն 'ի բաց կալ, 'ի խրա-տականութիւնս դեգերել. և որ ոչն այսպէս առնէ, ան-հնարին է այնպիսւոյն ապրել երբէք. Այլ զի փափկա-ցեալքն ոչ փրկին, լուր զինչ ասէ Պաւղոս. "Փափկա-ցեալն կենդանւոյն մեռեալ է". յաղագս կնոջ այրւոյ ասէր: Այլ եթէ վասն կնոջ այսպէս ասացաւ, առն ա-

ղագաւ զինչ ոչ ասիցի. և զի ոչ է հնար դիւրագոյն կալով ումեք՝ պատահել երկնայնոցն, և Քրիստոս զայս յայտ արար այսպէս ասելով. "Նեղ և անձուկ է ճանապարհն որ տանի 'ի կեանս, և սակաւք են որ մտանեն ընդ նա":

Դու զիարդ ասէ, "Լուծ իմ քաղցր է և բեռն իմ թեթև": Եթէ նեղ և անձուկ է ճանապարհն, զիարդ դարձեալ զնա թեթև և քաղցր ասէ: Մին յաղագս բնութեանն փորձութեց, և միւսն վասն յօժարամտութեանցն ձեռնամուխ եղելոցն. քանզի է անըմբռնելի իմն բնութեամբ որ լինի թեթև՝ յորժամ հանդերձ յօժարամտութեամբ ընդունիցիմք. որպէս և առաքեալքն տանջեալ դառնայքն հրճուելով, զի արժանիք եղեն յաղագս անուանն անպատուիլ: Դու սակայն բնութէ պատահացն նեղութիւն և ցաւս տալոց են տանել, այլ յօժարութիւն չարչարելոցն և բնութեան իրացն յաղթեաց. յաղագս այսորիկ և Պաւղոս ասէ. "Ամենեքին որ կամիցին բարեպաշտութեամբ կեալ 'ի Քրիստոս 'ի Յիսուս, հալածեսցին". թէպէտ և մարդ ոչ հալածէ, այլ սատանայ պատերազմի:

Դու յոլով պէտք են մեզ խնամատարութեան բազում ժուժկալութեամբ; զի աղօթիւք հսկիցեմք և արթնիցիմք, զի ստարացն ոչ ցանկանայցեմք, զի զոր ունիցիմքն կարօտելոց բաշխիցեմք, զի յամենայն փափկութենէ հեռացեալք հրաժարիցեմք՝ որ հանդերձիցն և կամ սեղանոյն, զի յաւելստացութենէն փախիցիմք; զի յարբեցութենէն և 'ի լուտալոյ և 'ի լեզուանութենէ ժուժկալիցեմք, զի մի աղաղակիցեմք. քանզի "Ամենայն դառնութիւն և սրտմտութիւն, բարկութիւն և աղաղակ և հայհոյութիւն բարձցի 'ի ձէնջ". զի մի զայրացանեսցեմք, զի մի կատակիցեմք: Եւ փոքր աշխատութիւն է այսոցիկ հաւատեաւ զպահպանութիւնն ցուցանել:

Դու զի ուսցիս որքան է խնամատարելն, և որպէս ոչ ունին իրքն հանգիստ, լուր զինչ ասէր Պաւղոս. "Ճնշեմ զմարմինն իմ և ծառայեցուցանեմ": Զայս ասելով զնկոյց զգուշութիւնն և յաւէտ զվաստակն, որոց հանդերձելոց հարկաւոր է որք ախորժեն յամենայնի դիւրերասանակ կազմել զմարմինն: Դու Քրիստոս ա-

շակերտացն ասէր. «Յաշխարհի նեղութիւն ունիցիք. այլ վստահացարուք, ես յաղթեցի աշխարհի»: Նեղութիւնք այսօրիկ զհանգիստն ձեզ առթեն: Հանգստարանք են մերձակայ կեանքս. 'ի հանգստարանին և 'ի նահատակութիւնն ոչ ոք կարէ վայելել 'ի հանգստեան որ պսակին հանդերձեալ է. որպէս թէ ոք կամիցի պըսակ ընդունել, զխիստ և զվտանգաւոր կեանս խնդրեսցէ, զի սուղ ինչ ժամանակ աստ աշխատեալ' 'ի մշտընջենաւոր պատիւս վայելեսցէ անդ:

Որքան 'ի վերայ անկանին տրտմութիւնք հանապազ, որպիսի իցէ անձն, մի՛ թախծեսցի, մի՛ դժուարեսցի, այլ մանաւանդ գոհասցի փառաւորեսցէ երկրպագցէ, որ ոչ թողացուցանէ փորձութեցն 'ի վերայ գալ: Որքան անախորժելիք[1] և նեղութիւնք իցեն, պարտ և արժան է նեղել զչար խորհուրդս և ոչ անսալ լեզուացն բարբառել ինչ անարժան. որպէս և երանելին Յովբ բուր չարչարանս ընդունելով եկաց մնաց գոհանալով զԱյ:

Բայց են ոմանք զի յոր ինչ և գայթակղեսցին և կամ յումեքէ թշնամիցին, 'ի յանդգնութիւն և 'ի գլխացաւութիւն կամ յայլ ինչ նոյնպիսի ցաւս' հայհոյեն, և ցաւոցն հիւանդութեանց ոչ համբերելով 'ի շահէն զրկլին: Ո՛ ինչ առնես, ով մարդ. զբարեգործն և զփըրկիչ, զվերակացուն և զխնամողն հայհոյե՞ս. ո՞չ զգաս 'ի գահավիժութիւնդ անկանել, և 'ի վերջին վիհ կորըստեան զքեզ ընկենլով: Մինթէ յորժամ հայհոյեսդ, թեթևագո՞յն ինչ զախտդ առնիցես. սաստկացուցանես ես զդա, և դժնդակագոյն զցաւսդ առնես: Բանզի յաղագս այդորիկ իսկ սաստկայ բուր դժնդակութիւնս 'ի վերայ աճէ զի յայն վիհ զքեզ իջուցանիցէ. և եթէ տեսանիցէ գիւրով զհայհոյութիւնն, աճեցուցանէ ըղցաւն և մեծագոյն առնէ, զի խոցոտեալ դարձեալ դըժուարասցիս. իսկ եթէ տեսանիցէ առաքինաբար բերելով, և որքան ցաւն սաստկանայցէ' այնքան առաւել գոհանայցես զԱյ, 'ի բաց կայ վաղվաղակի 'ի մնոտի և վայրապար դարանակալ լինելոյն այնուհետև: Իբրև զոր օրինակ շուն 'ի սեղան մերձ կացեալ, եթէ տեսանիցէ որ ուտէն' յաճախաբար նմա ընկենուցու 'ի կերակրոյն

[1] Թերևս անախորժելիք. յոյժն անախնդրելք:

որ 'ի վերայ սեղանոյն կայցէ, կայ մնայ անդէն յարա_ ժամ. ապա եթէ միանգամ և կամ երկիցս մօտ կա_ ցեալ ոչ ինչ առնու՝ 'ի բաց գնայ այնուհետև 'ի սնոտի դեգերմանացն հրաժարելով: Այնպէս և բանաւորկան յանձնախնդրս բերանաբացեալ կայ առ մեզ. եթէ ըն_ կեացես իբրև շուն բան հայհոյութեան, ընդունելով դարձեալ խորդալով: իսկ եթէ գոհացիս, խեղդես զնա սովով, և վաղվաղակի 'ի բաց մերժես և փախչել պատրաստես:

Բայց թերևս ոչ կարիցես 'ի լուռ կալ 'ի ցաւոցն խոցա_ տեալ, և ոչ ես արգելում 'ի բարբառելոյ. այլ փոխա_ նակ հայհոյութե գոհութի, և փոխանակ դժուարութե բարեբանութի: Խոստովանութիւն տեառն բարբառեա մեծաձայն աղաղակելով, և այնպէս զքո զախտն թե_ թևացո. 'ի բաց կալով սատանայի յաղագս գոհութեն՝ և Այ օգնականութիւնն մերձ լինի: Ապա եթէ հայհոյ_ ես, զԱյ մարտակցութիւնն 'ի բաց մերժես, և սատա_ կացոյն գործես հակառակ քեզ զսատանայ, և առաւել ևս զքեզ շաղես ընդ ցաւս: Իսկ եթէ գոհանաս, ըզ_ դժուարութիւնն 'ի բաց ացնես զչար դիւին, և զխնա_ մողին Այ զբժշկութիւնն ձգես առ քեզ:

Բայց թերևս 'ի սովորականս ինչ յարձակիցի լեզուդ և զչար ինչ բան բարբառեսցի: Այլ յորժամ դիմես_ ցէ, նախ քան զբան արտաքս հանել, խածջիր ատա_ մամբք զլեզուդ ուժգնապէս. օգտակարագոյն է արիւն հանել այժմ, քան եթէ յայնժամ կաթիլ միոյ տենչա_ լով ոչ կարիցես մխիթարութեանն հանդիպել. օգտա_ կարագոյն է զմս համբերել ժամանակեայ ցաւոցս, քան եթէ յաւէժ և անմահ տապակիցի անդ, որպէս ընչե_ ղին լեզու բարբառելով մխիթարութեան ոչ միում դի_ պեցաւ: Զթշնամիս քո սիրել հրամայեաց Տր, և դու 'ի սիրողէն քումմէ յԱյ 'ի բաց դառնաս: Զզրկողն օրհնել, զթշնամանողն բարեբանել. իսկ դու զբարե_ գործն և զվերակացուն չարախօսես ոչ ինչ զրկեալ: Մի_ թէ ոչ կարէր լուծանել զփորձութիւնն. այլ ներեաց զի ընտիր լինիցիս: Ահա, ասէ, 'ի վայր անկանիմ և կո_ րնչիմ. ոչ 'ի փորձութենէդ, այլ 'ի քումմէ յօժարա_ մտութենէդ: Զինչ դիւրագոյն է, ասա ինձ, հայհոյ_ ութիւն, եթէ գոհութիւն. ոչ մին և զլսողն թշնա_

միս քեզ և պատերազմողս առնէ և 'ի տրտմութիւն ըզքեզ արկանէ, զկնի այնորիկ և յոլովագոյն գործէ ըզցաւն. իսկ միւսն բիւր պտուղս քեզ և իմաստասիրութի և բիւր հրաշափառութիւնս յամենեցուն և մեծամեծ յո՜յս զհատուցմանն: Եւ արդ էր աղագաւ զօգտակարագոյնն և զդիւրինն և զախորժելին թողուլ, և զվնասակարն և զտրտմեցուցանողն և զհաշմեցուցանողն փոխանակ նոցա զհետ երթաս:

Եւ այլ ազգ ևս, եթէ նեղութիւն և աղքատութիւն և փորձութիւն պատճառք հայհոյութեան լինէին, բոլորեցուն որք յաղքատութեանն էին՝ պարտ և արժան էր հայհոյել: Իսկ այժմ վերջին աղքատութեամբքն կելով յոլովք՝ յարաժամ գոհանան. և այլք վայելեն 'ի փարթամութեան և 'ի փափկութեան, և ոչ նուազին երբէք 'ի հայհոյելոյ: Այսպէս ոչ իրացն բնութիւն, այլ մեր յօժարամտութիւնքն զայս և զայն գործեն: Յաղագս այսորիկ և զառակս զայս ընթերցաք, զի ուսցիս եթէ հայհոյելին ընչեղութիւն ինչ ոչ օգնէ, և որ զգուշանայն՝ և ոչ աղքատութիւնն վնասել կարէ: Եւ զինչ ասեմ աղքատութիւն. թէպէտ և բազմադակ իսկ միանգամայն խմբեսցին մարդկան չարիք հակառակ ա՟ծասիրի և իմաստասիրի անձինն, ոչ երբէք յանդիմանեսցեն և ոչ 'ի բաց կալ հաւանեցուցանեն յառաքինութենէ. և այսոցիկ վկայ Պաւղոս: Որպէս լքեցելոյն և մեղկեցելոյ ոչ փարթամութիւն և ոչ ողջութիւն, ոչ յարաժամ բարօրութիւն և ոչ այլ ինչ օգտել երբէք կարեն: Մի ասասցուք այսուհետև եթէ աղքատութի և հիւանդութի և վշտաց 'ի վերայ յարձակմունք հայհոյել հարկեցուցանեն. քանզի ոչ աղքատութիւն, այլ անմտութիւն. ոչ հիւանդութիւն, այլ արհամարհանք. ոչ վտանգից 'ի վերայ յարձակումն, այլ կենացն անփութութիւն 'ի հայհոյութիւն և յամենայն մեղս ածէ զոչ զգուշացեալսն:

Այլ ընդէ՞ր, ասեն, ոմանք աստ տանջին, և կէսք անդ, և ոչ աստ ամենեքեան: Ո՞ր վասն. եթէ այդպէս էին, բոլորեքեան կորնչէաք. վասն զի ամենեքեան պարտապարտ եմք: Բարձեալ եթէ ոչ որք աստէն տանջեալ լինէր, ծուլագոյնք թերևս յոլովք լինէին, և բազումք ասէին ոչ գոլ նախախնամութիւն. քանզի եթէ

այժմ անտանելով զբաղումն 'ի չարեացն պատժեալ՝ յաճախապէս այնպէս հայհոյեն, եթէ ոչ էր պէտ՝ զինչ արդեօք ասէին, յո՞ր վայր ոչ ելանէին չարութիւնքն. վասն այնորիկ ա՟ծ զամենս աստ տանջէ, զի պատժելով զնոսա 'ի չարեացն մերժիցէ և թեթևագոյն անդ արասցէ, և կամ կատարելապէս 'ի բաց ազատեսցէ 'ի նոցանէ. և որք չարութեամբն կեան՝ ողջախոհագոյնս ամենեւին զայնպիսին պատիժքն : Իսկ դարձեալ զկէսս ոչ տանջէ, զի եթէ հայեսցին յինքեանս՝ և երկիցեն, յա՟յ երկայնմտութենէն պատկառելով՝ 'ի յաստի տանջանացն մճարեսցին և յանտի պատուհասիցն. ապա եթէ կացցեն մնասցեն, ոչ ինչ յանոխակալութե՟ն ա՟յ օգտելով, այլ մեծագոյնս ընկալցին տանջանս յաղագս սաստկացեալ իւրեանց արհամարհանացն :

Իսկ եթէ ասիցէ ոք՝ եթէ որք տանջին զրկին, քանզի կարէին թերևս ապաշխարել, զայն ասասցուք. եթէ կանխաւ գիտէր ա՟ծ եթէ ապաշաւելոց էին նոքա, ոչ արդեօք պատժէր. քանզի եթէ զոր գիտէն եթէ առանց ուղղութեան կալոյ մնալոյ՝ սակայն ներէ՝ յաւէտ ևս զոր գիտէրն եթէ շահելոց ինչ են յերկայնմտութենէն՝ թողուլ արդեօք 'ի մերձակայ կեանս, որպէս զի վայելեսցեն սահմանեալ ժամանակաւ յապաշխարութեան՝ բայց այժմ յափշտակելով զնոսա՝ թեթևագոյն զանտի դատաստանն աստի տանջանօքն գործէ :

Իսկ հիմ ամենեցուն ոչ զայն առնիցէ չարեացն : Զի ահիւ այլոց տանջանացն որք մնասցենն՝ ողջախոհագոյնք լինիցին, զա՟յ երկայնմտութիւնն յարգելով և 'ի հեղութենէն պատկառելով 'ի բաց կայցեն 'ի չարութենէն : Ոչ ինչ յայսմանէ լինի, ասեն : Ոչ և ա՟ծ պատճառք այնուհետև, այլ նոցա պղերգութիւնն որք ոչն ախորժեն այնքան դեղովք ընդունել զբժշկութիւն՝ զորս զիւրեանց պատուհասն 'ի կիր արկանեն : Իսկ զի ուսցիս եթէ յաղագս այնորիկ զայս առնէ, խառնեաց երբեմն զարիւնն գալիլեացւոցն Պիղատոս ընդ զոհսն, և մատուցեալք պատմեցին նմա զայն, և ասէ. "Զինչ կարծէք, եթէ ա՞յն գալիլեացիք միայն էին մեղաւորք. ոչ, ասեմ ձեզ, այլ եթէ ոչ ապաշխարիցէք, և դուք զնոյն ընկալջիք,, : Դարձեալ այլք ոմանք ութ և տասանք թաղեցան ընդ աշտարակաւ ամամբ, և վասն նոցա զնոյն ասաց ասելով.

“Զի՞նչ կարծէք, եթէ այն գաղղեացիք միայն էին մեղաւորք. ոչ, ասեմ ձեզ„. եցոյց թէ և կենդանիքն նոցին համօրապարտք. ասելովն եթէ ոչ ապաշխարիցէք՝ և դուք զնոյն կրեսջիք, եցոյց զի և նոցա ներեաց յաղագս նոցա կրել պատուհաս, զի կենդանիքն այլոց դիպուածովք զարհուրեալք ապաշխարեսցեն։

Եւ արդ զի՞նչ ևս. զի ես լաւագոյն եղէց, նա տանջի։ Ոչ յաղագս այդորիկ, այլ պարտի վասն իւրոց յանցանացն։ Լինի դիպուածն և զգուշացելոցն փրկութեան պատճառք, որք երկիւղիւ պատուհասիցն փոյթ զխնքեանս առնեն։ Այսպէս և տեարք գործեն, զմի ոք 'ի ծառայիցն բազում անգամ տանջեն, և զայլսն ողջախոհագոյն աչիւն առնեն։ Արդ յորժամ տեսանիցես զոմանս 'ի նաւաբեկութիւնս անկեալս և կամ 'ի տան թաղեալս և կամ 'ի գետոց հեղձեալս կամ այլով իւիք օրինակաւ բռնութեան կենացն զրաւեալս, և զայլսն ես նոյնպիսի իբրև զնոսա և կամ ես չարագոյն մեղուցեալս, և ոչ ինչ դժնդակութիւնս ընկալեալ, մի ամբոխեսցիս ասելով՝ վասն է՞ր արդեօք զնոյն մեղանչելով, ոչ նոյնպէս չարչարեցան։ Այլ զայն զմտաւ ած, զի միումն ներեաց 'ի բաց կորնչել և մեռանել, հանդարտագոյնս կազմելով զնորա տանջանսն անդ՝ և կատարելապէս զնա 'ի բաց վճարելով. իսկ միւսումն ոչ ինչ ասաց այնպիսի չարչարանս կրել, զի նորա պատժովքն ողջախոհացեալ հեզագոյն լինիցի. ապա եթէ կայցէ մնասցէ 'ի նմին առանց մխիթարութեան՝ իւրով պղերգութեամբն շեղջակուտեսցէ զտանջանսն, և ած ոչ ինչ պատճառ լինի անրմերկելի պատժոցն։ Դարձեալ եթէ տեսանիցես զարդարն վտանգեալ և կամ ըստ առաջին ասացելոցն՝ մի թախծիցիս, զի և նմա պայծառագոյն զպսակն գործեն պատուհասքն և 'ի տանջանացն ազատեն. և ամենայն իսկ պատիժք եթէ զմեղաւորս խոշտանգիցեն՝ 'ի բաց հատանեն զմեղացն ծանրութիւնն, և եթէ զարդարս՝ պայծառագոյն զանձինս նոցա գործեն, և մեծամեծք շահ երկոցուն 'ի նեղութենէն ամբարին, եթէ գոհանալով և եթ տանիցիմք. քանզի խնդրելին այս է։

Վասն այնորիկ բիւր այսպիսեօք առակօք ածայլն գիրք են լցեալ, զարդարս և զչարս դժնդակապէս չարչարեալս մեզ ցուցանեն. զի եթէ արդար իցես և եթէ

մեղաւոր, ունելով զօրինակն՝ բերցես առաքինաբար։ Ոչ միայն չարչարեալ դժնդակապէս, այլ և դիւրութեամբ աջողեալս քեզ ցուցանեն զչարսն, զի մի նոցա աջողութեամբն ամբոխիցիս, ուսանելով 'ի յընչեղին այնորիկ 'ի պատահիցն որպիսի հուր զկնի այնոցիկ կայ մնայ նոցա եթէ ոչ փոփոխեսցին աստէն։ Նա ոչ իցէ և աստ և անդ 'ի հանգստեան վայելել, ոչ է. յաղագս այսորիկ աստ արդարք զտաժանելի կեանսն կեան։

Նա ընդէ՞ր, ասեն, Աբրահամ և այնքան կրեաց չարչարանս. ո՞չ 'ի գաւառէն արտաքս անկաւ. ո՞չ յընտանեացն ամենեցուն որոշեցաւ. ո՞չ յօտար երկրի սովս համբերեաց. ո՞չ իբրև զաւազակ յաճախապէս փոփոխեալ լինէր 'ի Բաբելոնէ 'ի Միջագետս, անտի 'ի Պաղեստինէ և անտի յԵգիպտոս։ Զի՞նչ ոք ասասցէ որ յաղագս կնոջն, որք 'ի բարբարոսաց պատերազմունք՝ սպանմունք՝ գերութիւնք ընտանի ազգայնոցն. բիւրք նոյնպիսիք այլք։ Նա յորժամ զորդին ընկալաւ, ո՞չ քան զամենեսեան համբերեաց դժուարին իրաց, զցանկալին իւր և զտենչալին ձեռօք իւրովք խողխողել հրամայեցաւ։ Բայց և նոյն ինքն զենեալն Իսահակ ո՞չ ամենայն ուստեք վարեալ լինէր 'ի սահմանակցացն, և 'ի կնոջէն զրկեալ որպէս և հայրն, և անորդի այնքան ժամանակս եկաց մնաց։ Զի՞նչ և Յակոբ 'ի տան նստեալն, ո՞չ քան զհաւն դժնդակագունից համբերեաց։ Նա զի մի զամ ասելով երկայնագոյն առնիցեմք զբանս, լուիցուք զինչ ասէր յաղագս բովանդակ կենացն իւրոց. "Սուղք և չարք աւուրք իմ, և ոչ ժամանեցին հարցն իմոց,,։ Նա ո՞ ոք զորդի 'ի թագաւորական աթոռ նստեալ և յայնքանս վայելեալ 'ի փառս՝ ոչ մոռանայցէ զանցեալ թշուառութիւնսն. բայց սակայն այնպէս էր ծնկեալ, մինչ զի ոչ և 'ի բարութիւնսն յայնոսիկ մոռանայր ըղլեալ դժնդակութիւնսն։ Զի՞նչ և Դաւիթ, ո՞րքան համբերեաց ողբերգութեանցն. ո՞չ զնոյնս յաղագս ինքեան բարբառի ասելով այսպէս. "Աւուրք ամաց մերոց եօթանասուն, և առաւելն քան զայսոսիկ՝ վաստակ և ցաւ,,։ Զի՞նչ և Երեմիաս. ո՞չ զօրն իւր նզովէր յաղագս իրերաց 'ի վերայ դժնդակութեցն։ Զի՞նչ Մովսէս. ո՞չ զնոյնս ասէր, "Սպան զիս եթէ այդպէս հանդերձեալ ես առնել,,։ Զի՞նչ և Եղիաս երկնաբերձ

անձն՝ որ զերկին փակեաց, ո՛չ զկնի յոլով սքանչելեացն ողբս կատարէր և ա̃յ ասէր. «Ի բաց առ զհոգի իմ յինէն, զի ոչ եմ ես լաւագոյն քան զհարս իմ»: Բայց զինչ եւս պէտք են աստ իւրաքանչիւր ուրուք նոցա բանիւ. զամենեսեան իսկ միանգամայն առնլով Պաւղոս ասաց. «Շրջեցան մաշկօք, այծից մորթովք, զըրկեալք նեղեալք չարչարեալք, զորս ոչ արժէ աշխարհ»:

Նա ամենայն իսկ հարկաւորութիւն է որ հանդերձեալն իցէ հաճոյ լինել ա̃յ և ընտիր և սուրբ, և ոչ ըղհանգստեան և զգէջ և զլցծ կենացն զհետ երթայ, այլ որ վտանգիւքն և դըժուարութեամբ բազմաւ լի է և քրտամբք. քանզի «Ոչ ոք պսակի, ասէ, թէ ոչ օրինօք նահատակեսցի»: և «Ամենայն որ նահատակի, ամենայնի ժուժկալէ և բանիւ և տեսութեամբ և ձայնիւ և լուտանօք և մնտոի համբաւօք և զազրաբանութեամբ»: Թէպէտ և փորձութիւն 'ի վերայ ոչ գայցէ, արտաքուստ ինքն զինքն կրթէ հանապազօր պահօք, խոստովանութեամբք, անարգ կերակրովք, պարզ սեղանաւ, 'ի բազմապատիկ ամենայն ուստեք 'ի բաց փախչելով. քան այլ ազգ ոչ է հնար հաճոյ լինել ա̃յ:

Ո՞ւր ոք ինձ զցուրտ բանն զայն ասասցէ, թէ և աստ այս անուն ունի և անդ: Անհնարին է այս ընչեղացն և փափկացելոցն և յանցաւորաց հանդիպել. բայց եթէ պարտ և արժան իցէ զայս ասել, յաղագս վշտացելոցն է ասելի՝ ոյք 'ի նեղութեանն են. զի և աստ ունին և անդ ունին 'ի հատուցմանն վայելել. և աստ յուսովքն այնոքիւք կերակրեալք՝ և ոչ առնուն զգայութիւն մերձակայ չարեացս վստահութե̃ հանդերձելոց բարեացն:

Այլ լուիցուք և որ 'ի կարգին: «Ի վերայ ամենեցուն այդոցիկ վիհ հաստատեալ է, ասէ, 'ի մէջ ձեր և մեր»: Յայսմանէ յայտ է, եթէ «Եղբայր ոչ փրկէ և ոչ փրկեսցէ մարդ, և ոչ տացէ ա̃յ զփրկանս իւր», եթէ հայր իցէ և եթէ որդի: Որդի կոչեաց Աբրահամ զընչեղն, և զհօր իրս ցուցանել ոչ կարաց. հայր կոչեաց զԱբրահամ փարթամն, և 'ի բարեմտութիւնն յորում պատշաճ էր վայելել որդւոյ՝ ոչ ըմբոշխնեաց. զի ուստի եթէ ոչ ազգակցութիւն, ոչ բարեկամութիւն և ոչ այլ իրք օգնել կարեն որ յիւրոց կենացն է մատնեալ:

Զայս առեալ զի զլսելս տեսանեմք որոց բազում անգամ պատուիրեմք զգուշանալ անձանց իւրեանց՝ արթուն լինել, պղերգանեան և 'ի ծաղր զխրատն արկանեն. դու ինձ, ասեն, վերակացու լինիս յաւուրն յայնմիկ. քաջալերին և ոչ ինչ երկնչին: Պարձեալ այլ ոմն՝ հայր վկայ ունիմ, ասէ. և միւս ևս ոմն՝ զնախահայր եպիսկոպոս. այլ ոմն՝ զընտանիսն առաջի արկանէ: Ցուրտ են բանքս այսքիկ. ոչ ինչ մեզ այլոց առաքինութիւնն օգնել կարէ: Յիշեա զկուսանսն որ հինգ կուսանացն ոչ եղուն յիւղոյն, այլ մտին 'ի հարսնարանն, և արտաքս արգելան այլքն: Մեծ բարիք են յիւր ուղղութեանն զյոյս փրկութեանն ունել, քանզի բարեկամ ոչ ոք և ոչ եղբայր այսմ մերձ կայ: Զի եթէ աստէն Երեմիայի ասէր "Մի աղաչեր վասն ժողովրդեանդ այդորիկ", աստ ուր տեղիք էին փոփոխումն ընդունելոյ, ևս առաւել անդ: Զի՞նչ ասես, հայր վկայ ունիս. նոյն այդ զքեզ առաւել դատապարտէ, յորժամ 'ի տանէ ունելով զառաքինութիւնն՝ անարժան զքեզ նախահօրն վարուցն արարեր: Այլ թերևս բարեկամ զոք ունիցիս սքանչելի և հրաշալի. և ոչ նա առ քեզ մերձ կացցէ յայնժամ:

Եւ զի՞նչ ասէ, "Արարէք ձեզ բարեկամս 'ի մամոնայէ անիրաւութեան, զի ընկալցին զձեզ յաւիտենական խորանսն": Ոչ բարեկամութիւնն աստանօր առաջակայ լինի, այլ ողորմութիւնն. քանզի եթէ բարեկամութիւնն միայն վերակացու լինէր, պարտ և արժան էր ասել՝ արարէք ձեզ բարեկամս. իսկ այժմ ցուցանելով եթէ ոչ բարեկամութիւնն վերակացու լինի, յաւել՝ 'ի մամոնայէ անիրաւութեանն: Եւ թերևս ասիցէ ոք. կարեմ և առանց մամոնայի առնել բարեկամս, և մտերմագոյն ևս քան զմամոնայիւն: Այլ զի ուսցիս եթէ ողորմութիւն է որ վերակացու լինի, և գործքն քո և ողորմութիւնն, և ոչ վայրապար 'ի սիրելութիւն սրբոցն, այլ 'ի բարեկամութիւնս որ 'ի մամոնայէ լինի՝ հաւանեցոյց զքեզ վստահանալ:

Զայս ամենայն տեսանելով, սիրելիք, հայեսցուք 'ի յանձինս հանդերձ ամենայն հաւաստութեամբ. եթէ չարչարիմք գոհասցուք, և եթէ 'ի բարութեան յերկարիցեմք զգուշասցուք, և այլոցն չարչարանօք խրատե-

ընծեռել ձեզ զպարտսն. այլ ոչ զգուշագոյն վարկայ զերանելեաւս զՆաբելաւ և որք սահմանակից սորը վեկայք են՝ զանց առնել զուղղութեամբն. վասն որոյ ըզպարտսն յերկարեցաք 'ի մերձակայ օրն, և զբովանդակ զպահանջումն բերցուք: Այսուհետև վասն զի հարց զբարբերանութին մեր հատուսցուք, ոչ որպէս արժանաւոր է նոցա՝ այլ ըստ մերում կարողութեան, ընծեռեսցուք և ձեզ ըստ պատմութե̃ զայսօրիկ զնշխարս: Բայց մի պարտաւորիցէք մինչև 'ի վախճանն ժամանեսցուք, անտի առնլով զբանն ուր թողաքն զնա յառաջնում աւուրն, զխաւար՝ արգելեալ զարդարս 'ի մեղաւորացն:

Քանզի ասացեալ ընչեղին՝ առաքեա զՂազարոս, պատասխանի տայր Աբրահամ. "Վիհ մեծ հաստատեալ է 'ի մէջ մեր և ձեր. որպէս զի որք կամիցինն անցանել՝ ոչ կարասցեն, և ոչ աստի այդր անցանել ոք": Իսկ ցուցաք յոլով ասացուածովք թէ որպէս զկնի մ̃յ մարդասիրութեանն՝ յիւր ուղղութիւնն զյոյս փրկութեանն պարտ և արժան է ունել, ոչ զհարս և զհաւս թուել, ոչ զազգայինս և զբարեկամս և զդրացիս. քանզի "Եղբայր ոչ փրկէ և ոչ փրկեսցէ մարդ". այլ որքան աղաչեսցեն և պաղատեսցեն որք հանդերձ մեղօքն աստի գնացին, զամենայն սնոտի և ընդունայն խօսին: Զի և կոյսքն աղաչեցին զհասակակիցսն յաղագս իւղոյ, և ոչ դիպեցան. և որ զտաղանդոյն զմինն թաղեաց, յոլով պատասխանիս ետ, այլ դատապարտեցաւ. դարձեալ և որք ոչ քաղցեալ զնա կերակրեցին և ոչ արբուցին զծարաւեալն, և նոքա կարծէին յանդիմանութին ապաւինել, ոչ թողութեան և ոչ պատասխանւոյ ինչ դիպեցան:

Այլ ումանք և ոչ ասել ինչ զօրեցին, որպէս այն որ զաղտեղի հանդերձն զգեցեալ էր. զի բամբասեալ լռէր: Իսկ ոչ նա միայն, այլ և միւս ևս այն որ ընկերին սխալ եղև և զհարիւր դահեկանն պահանջեաց, և ապա յաղագս այնորիկ 'ի տեառնէն մեղադրեալ վասն խստութեան և անմարդութեան, ոչ ինչ ունէր ասել: Աստի յայտ է թէ ոչ ոք անդ վերակացու լինի, եթէ ոչ ունիցի գործս բարիս. այլ եթէ աղաչիցեմք և պաղատիցեմք և եթէ լռիցեմք, նմանապէս 'ի վերայ մեր գալոց են տանջանքն և պատիժքն: Յուր զփարդ և սա

խնդրեաց երկուս խնդիրս յԱբրահամէ, և յերկոցունցն վրիպեաց. նախ առաջին յաղագս իւր զպաղատանս առնէր, «Առաքեա զՂազարոս», ասելով. և զնոյն ոչ ևս վասն իւր, այլ եղբարցն աղագաւ. բայց և ոչ զմինն էառ զխնդիրն. վասն զի առաջինն էր անկարելի, և երկրորդն աւելորդ յաղագս եղբարցն: Այլ սակայն նոցին իսկ բանիցն լուիցուք հանդերձ բազում փութով:

Զի եթէ իշխանք 'ի մէջ հրապարակի ածելով զդատապարտեալն, և զդահիճսն շուրջ կացուցանելով բերիցեն զպատժապարտսն, հանդերձ բազում յօժարութեամբ ընթանան ամենեքեան ցանկանալով լսել զինչ դատաւորն հարցանէ, և կամ զինչ դատապարտեալն պատասխանի առնէ. ևս առաւել աստ հաւաստեաւ լսել պարտ և արժան է զինչ դատապարտեալ ընչեղս այս աղաչէ ասելով, և զինչ դատաւորն պատասխանի տայ 'ի ձեռն Աբրահամու: Քանզի ոչ հայրապետն էր որ դատէր, թէպէտ և նա խօսէր. այլ զոր օրինակ յարտաքին յատեանս յայտնի յորժամ իցեն ոմանք պատժապարտք, աւազակք և մարդասպանք, հեռի 'ի դիմաց դատաւորին կան, զի և ոչ իսկ հրամայեն նոցա օրէնքն դատաւորին լսել զձայնն, հանդերձ այլովքն և այնոքիկ զնոսա անպատուեն, 'ի մէջ ումն սպասաւորէ հարցուածոց դատաւորին և պատասխանեաց դատեցելոյն, նոյնպէս և յայնժամ լինէր. ոչ զա՟յ խօսումն առ նա՝ լսէր դատապարտեալն, այլ 'ի մէջ էր Աբրահամ՝ 'ի դատաւորէն սպասաւորելով դատապարտելումն: Վասն զի ոչ յինքենէ խօսէր, այլ և զա՟ծային օրէնսն նմա և զ'ի վերուստ բերեալ զվճիռն ասէր. յաղագս որոյ սա և ոչ ընդդէմ ասել ինչ ունէր:

Հայեսցուք այսուհետև զգուշութեամբ հաւաստեաւ 'ի յասացեալսն: Քանզի մտադիւրութեամբ յերկարեմ յայսմ առակի, և զչորեակ օրն ունելով ոչ 'ի բաց կամ, վասն զի յոլով շահս 'ի պատմութենէս լեալս տեսանեմ ընչեղաց և աղքատաց, և յաղագս չարացն յաջողութեան և արդարոցն աղքատութեան և նեղութեան ամբոխելոյն: Վասն զի ոչ այլ ինչ այնպէս զյոլովս գայթակղեցուցանել՝ սովորեաց և խռովեցուցանել, որպէս փարթամք չարութեամբ կելով 'ի բազում բարութիւնս վայելելով. և արդարք առաքինութեամբք կեցեալք, 'ի

վերջին հաւածին յաղքատութիւնն և 'ի բևեռ յիրս՝ որ քան զաղքատութիւնն դժնդակագոյնք են ։

Բայց այս առակ բաւական է ընձեռել զգեղսն՝ զընչեղսն ողջախոհացուցանելով և զաղքատսն մխիթարելով. գնասս խրատէ զի մի մեծամեծս ինչ խորհիցին յորժամ չարք լեալք ոչ տայցեն ատէն զդատաստանն, որպէս զի դժնդակագոյնք համդիպելոց են անդ պատիժքն. և զսոսա մխիթարէ մի ինչ այլոց յաջողութեամբն տագնապել, և մի կարծել առ 'ի չնախախնամութենէ գոլ զմեր իրս յորժամ արդար աստ պատժի չարաչար, և չար և պիղծ այր միշտ 'ի յոլով բարութեան վայելէ. քանզի երկոքին ըստ արժանաւորութեանն առնլոց են անդ, մինն զպսակն ըստ համբերութեանն և ժուժկալութեանն, և միւսն զպատիժսն դժնդակ ։

Զայս առակս գրեցէք, աղքատք, յորմս տանց ձերոց. և եթէ ջնջեսցի 'ի մռայմանէ, ձեպեալ դարձեալ գրեցէք 'ի ձեռն վերպալին յաջողութեան ։ Մանաւանդ եթէ, ընչեղք, և յաճախապէս ընթերցարուք, և լինի ձեզ վարդապետարան և պատճառք ամենայն վարդապետութեան ։ Զի եթէ զայս յաւէրժապէս գրեալ ունիցիմք՝ ոչ խնդալից իրք 'ի մերձաւոր կեանս հպարտացուցանել զմեզ կարեն, և ոչ տրտմականքն նուաստացուցանել և կործանել ։ Այլ զոր օրինակ զկենդանագրութս յորմս գրեալ տեսանեմք զձիս և զաղքատս, և ոչ ընդ նմա նախանձիմք և ոչ զաղքատսն արհամարհեմք յաղագս ստուերին, այլ իրացն ճշմարտութիւն ոչ լինի տեսեալ, նոյնպէս ընչեղութեան և աղքատութեան և այլոցն ամենեցուն տրտմականացն և հրճուելեաց՝ զընութիւնն եթէ ուսանիցիմք, յիւրաքանչիւր ումեքէ 'ի նոցանէ եղելոցն անհարթութեանց 'ի բաց վճարիմք ։ Վասն զի քան զստուերս պատրողք են այսոքիկ. բայց զամբարձեալն և զառաքինին ոչ ինչ ոչ պայծառքն և փառաւորքն ամբարհաւաճեցուցանել, և ոչ նուաղքն և 'ի վայր անկեալքն զնստուցանել կարեն ։

Այժմ ժամ է մեզ այսուհետև և զբանսն լսել զընչեղին ։ “ Աղաչեմ զքեզ, ասէ, հայր „. այս է՝ պաղատիմ մաղթեմ. “ զի առաքեսցես 'ի տուն հօր իմոյ ըզՂազարոս. քանզի են իմ եղբարք հինգ, զի վկայեսցէ նոցա, զի մի եկեսցեն 'ի տեղի տանջանացս այսորիկ „ ։

Digitized by Google

Յորժամ զիւրմէ օգնականութենէն վրիպեաց՝ յաղագս այլոց առնէ զպաղատանս։ Տես զկարգ մարդասէր և ընտելեալ 'ի տանջանացն։ Որ զՂազարոս արհամարհէր յառաջագոյն, յաղագս այլոց հեռաւորաց հոգայ. որ զառաջի աչաց անկեալն զանց առնէր, զոր ոչն տեսանէր յիշէր, և համդերձ բազում փութով աղաչէ զի լիցի ինչ նոցա նախահոգութի յաղագս ազատելոյ որ ըմբռնելոցն էին զնոսա չարիքն, և աղաչէր երթալ Ղազարու 'ի տուն հօրն ուր հանդիստարան և ասպարէզ բացեալ էր առաքինութեան։ Նոքա տեսցեն զնա պատկեալ որք տեսին նահատակեալ. վկայք նորա աղքատութեանն և սովոյ և բիւր չարեաց, լիցին վկայք պատուոյ փառացն փոխամանն ամենայնի՝ զի յերկոցուն իրաց խրատեալք ուսցին՝ թէ ոչ մի ինչ 'ի մերձակայ աշխարհիս մեր իրք անցեալ կան, այնպէս պատրաստեսցին, մինչ զի կարելի տանջանացս յայսցանէ և 'ի պատժոցս փախչել։

Իսկ զինչ Աբրահամ. «Ունին զՄովսէս և զմարգարէսն», ասէ։ Ոչ դու այնպէս հոգաս յաղագս եղբարցն, որպէս արարիչն նոցա ա̃ծ. բիւրս 'ի վերայ նոցա կացոյց, վարդապետս՝ որք պատուիրեն, խորհրդակից լինին, խրատեն։ Իսկ զինչ դարձեալ նա. «Ոչ, ասէ, այլ թէ 'ի մեռելոց ոք երթիցէ, նմա հաւատասցեն»։ Այս են բազմաց բանք։ Ո՞ւր են այժմ որք ասենն՝ ո՞վ եկն անտի, ո՞վ 'ի մեռելոց յարեաւ, ո՞ ասաց զդժոխոցն իրս։ Բանիցս ոչ զայս 'ի յինքեան ասաց ընչեղն այն յորժամ փափկանայրն. քանզի ոչ վայրապար աղաչեաց յառնել ումեք 'ի մեռելոց։ Այլ զի գրոց լսելով արհամարհէր ծաղր առնէր, մի գուցէ, ասէ, նոյնպէս և նոքա վարկանիցին. իսկ եթէ ոք 'ի մեռելոց երթիցէ, ոչ ևս անհաւանեսցին նմա և ոչ ծաղր արասցեն, այլ մանաւանդ յառաջեալն հայեսցին։

Իսկ զինչ Աբրահամ. «Եթէ Մովսէսի և մարգարէիցն ոչ լսեն, և եթէ 'ի մեռելոց ոք երթիցէ՝ ոչ լուիցեն»։ Իսկ զի այս ճշմարիտ է, զի որ գրոցն ոչ լսէ, և ոչ եթէ 'ի մեռելոց ոք յառնէ՝ լսէ նմա, ցուցին Հրեայքն. վասն զի Մովսէսի ոչ լուան և ոչ մարգարէիցն, և ոչ զմեռեալսն տեսանելով յարուցեալս՝ հաւատացին. այլ երբեմն սպանանել զՂազարոս խնդրէին, և երբեմն 'ի վերայ առաքելոցն յարձակէին, և սակայն յոլովք յարեան մեռեալք 'ի ժամ խաչին։

Նա զի այլուստ ուսցին թէ արժանի հաւատալոյ է գրոց վարդապետութիւն քան զյարութիւն մեռելոց, զի մեռեալ ամենայն ծառայ է, իսկ զորս գիրքն խօսին՝ զայնս տէրն խօսեցաւ: Որպէս զի եթէ մեռեալ յարիցէ և եթէ հրեշտակ յերկնից իջցէ, քան զամենայն արժանի հաւատալոյ գիրք լիցին. զի որ հրեշտակացն է տէր, և մեռելոց և կենդանեաց, նա օրինադրեաց:

Նա զի աւելորդս հայցեն որք խնդրեն 'ի մեռելոց անտի գոլ, առ ասացելովքդ և 'ի մերձակայիցս է ցուցանել զատենիցս զայսոցիկ իրս: Գեհենն ոչ երևի անհաւատիցն. բայց հաւատացելոց քաջայայտ է և երևելի, այլ սակայն անհաւատիցն ոչ երևի: Համապազօր լսեմք թէ այս անուն տանջեցաւ, այս անուանն ստացուածք ամենայն 'ի բաց բարձան, միւս ոմն ընդ ոսկեհանսն գործէ, այլ ոմն հրով այրեցաւ, և միւս այլով օրինակաւ տանջանաց և պատժոց կորեաւ. և համայն զայսոսիկ լսելով անիրաւք և չարագործք և կախարդք ոչ ողջախոհանան: Նա զի՞նչ աւել, եթէ և ոչ անկանելով յայսպիսի իրս ողջախոհանան. յոլովք բազում անգամ ըմբռնեալ 'ի նմին, փախեան 'ի տանջանացն՝ փորելով զկապարանին զորմն 'ի բաց ձողոպրեալք. բայց դարձեալ 'ի նոյն իրս յանդգնեցան, և դժնդակագոյն ևս քան զայնս գործեցին: Ոչ ի քան զորս խնդրեմք 'ի մեռելոց լսել, քան զայն առաւել համապազօր զմեզ խրատեն:

Եթէ գիտէր ած եթէ մեռեալք յառնելով կենդանեացն օգտեն, ոչ արդեօք թողոյր և ոչ լքանէր զայն շահն. զամենայն ինչ մեզ օգտա հնարի գործել: Նա առանց այդոցիկ եթէ յաճախապէս հանդերձեալ էին յառնել մեռեալք և զանտի զամենայն պատմել մեզ, և այն դարձեալ ժամանակաւ արդեօք արհամարհեալ լինէր. և առ այդոքիկ չար ևս աղանդ 'ի ներքս մուծանէր սատանայ ընդ յոլով դիւրութեանն: Կամէր բազում անգամ կուռս ցուցանել, կամ պատրաստել զոմանս կեղծաւորել մեռեալս և թաղեալս ցուցանել, և դարձեալ որպէս թէ 'ի մեռելոց յարեաւ՝ և 'ի ձեռն նորա որքան ախորժէր հաւանեցուցանէր զպատահելոցն միտս: Քանզի եթէ այժմ ոչ ինչ այդպիսեաց եղելոց, անուրջք յոլովակի երևեալք կերպարանօք վախճանեցելոցն՝ զբազումս խաբեցին և ապականեցին, ևս առա-

Digitized by Google

ւել թէ այն լեալ էր և զօրացեալ 'ի մարդկան միտս. որպիսի ինչ թէ բազումք 'ի գնացելոցն դարձեալ վերըստին եկանէին, բիւր նենգութիւնս չար դեն այն կազմէր, և յոլով մոլորութիւնս յաշխարհ մուծանէր: Վասն այն արգելեալ փակեաց ած զպրունսն և ոչ թողացոյց ումեք 'ի գնացելոցն վերստին գալ և ասել զանտիսն, զի մի պատճառս առնլով յայնմանէ՝ նա զիւրսն զամենայն 'ի ներքս մուծանիցէ: Քանզի յորժամ մարգարէքն էին, սուտ մարգարէս յարոյց. և յորժամ առաքեալքն՝ սուտ առաքեալս. և յորժամ Քրիստոս՝ սուտ քրիստոս. և յորժամ առողջ աւանդութիւնքն 'ի ներքս մըտին, զապականեալն 'ի ներքս եած, զորոմն ամենայն ուստեք սերմանելով: Որպէս զի թէ և այն դիպեալ էր, և զայն ձեռնարկէր արդեօք կեղծաւորել 'ի ձեռն իւրոյ գործւոյն, ոչ զմեռեալս ճշմարտապէս յարուցանելով, այլ կախարդութեամբք իմն և խաբէութեամբք զտեսողացն զդէմս մոլորեցուցանել, և կամ զոմանս պատրաստելով՝ որպէս ժամանեալն ասացի՝ կեղծաւորել ըզվախճանն, զվերագոյնսն զամենայն 'ի սորա առնէր արդեօք և խառնակէր:

Այլ ած զայս ամենայն յառաջագոյն գիտելով 'ի բաց պարսպեաց զնորա խաբէութիւնն, և խնայելով 'ի մեզ ոչ ումեք թողացոյց գալ երբեք անտի և խօսել կենդանեացս յաղագս անտի իրաց. խրատելով զմեզ՝ քան զամենայն հաւատալեաց արժանի վարկանել զածային գիրս, որք յաւէտ քան զմեռելոցն յարութիւն յայտնագոյնս մեզ ցուցանեն զիրս: Զաշխարհ զամենայն դարձոյց, զմոլորութիւն խլեաց, զճշմարտութիւն եած, 'ի ձեռն ձկնորսաց և մաքսաւորաց արանց զայս ամենայն յօրինեաց, բաւական ցոյցս իւրոյ գալստեանն ընձեռելով մեզ:

Արդ մի այսուհետև մինչև 'ի մերձակայ կեանս զմեր իրս փակեալ կարծեսցուք. այլ հաւատամք թէ ամենայն իրօք դատաստան և հատուցումն է ամենայնի՝ որ աստ 'ի մէնջ գործիցին և լինիցին: Վասն զի այնպէս յայտնի և երևելի ամենեցուն է, մինչ զի Հրէից և հեթանոսաց և հերձուածողաց և ամենայն իսկ մարդոյ յաղագս այնորիկ ունել մտածութիւն: Զի թէպէտ և ոչ որպէս պատշաճ վասն յարութեանն իմաստասիրեն ամենեքեան, այլ սակայն յաղագս դատաստանին և տան-

ջանացն և անտի առեներցն ամենեքեան միաբան են՝ թէ է ինձ աստ եղեւլոցն հատուցումն անդ. և եթէ ոչ այս էր, էր աղագաւ զերկինս ձգեաց, զծով տարածեաց, այսքան նախախնամութիւն եցոյց, եթէ ոչ մինչ 'ի վախճան հանդերձեալ էր մեզ վերակացու լինել:

Ոչ տեսանես որքան կեցեալք առաքինութեամբ, և բիւր դժնդակութեամբ չարչարեալք հրաժարեցին. և այլք դարձեալ յոլով չարութիւն ցուցանելով՝ զայլոց յափշտակեցին զինչս, զայրիս և զորբս հարստահարեցին, 'ի ճոխութիւնս և 'ի փափկութիւնս և 'ի բիւր բարիս վայելելով զաւուրս անդ, և ոչ դուզնաքեայ ինչ կրեցին չարիս: Արդ ո՞ւր սոքա փոխանակ առաջին առաքինութեանն առնուլ զհատուցումն, և կամ այլքն ընդ չարութեանն տացեն զպատասխանս, եթէ մինչև 'ի մերձակայս ևեթ կայցեն մեր իրք: Եթէ է ա՟ծ, որպէս և է իսկ, արդարև ամենայն ոք որ ասէ. եթէ արդար, և սոցա և նոցա հատուցէ ըստ արժանաւորութեանն, և այսուհետև խոստովանին յամենեցունց: Եթէ հանդերձեալ իցէ սոցա և նոցա հատուցանել ըստ արժանաւորութեանն, աստ և ոչ ոք 'ի նոցանէ էառ, ոչ նա զչարութեանն տանջանս, և ոչ սա զառաքինութեան հատուցումն, քաջայայտ է թէ մնացեալ ոք ումն է ժամանակ՝ յորում զպատշաճագոյն հատուցմունս իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ ընկալցի:

Յո՞ր սակս և 'ի խորհուրդս մեր դատաւոր այնպիսի յաւիտենական արթուն և սթափ կայցոյց ա՟ծ, զխիղճն ասեմ. քանզի ոչ է և ոչ իսկ է և ոչ մի ոք դատաւոր 'ի մարդկանէ այնպէս արթուն իբրև զմեր խիղճն: Վասն զի արտաքին դատաւորքն և ընչիւք ապականին և փաղաքշանօք թողանան և յաղագս երկիւղի կեղծաւորին, և բազում այլ է որ ժանտացուցանէ զնոցա ուղիղ վճիռն. բայց խղճին ատեանն ոչ ումեք այդպիսեաց տեղի տալ գիտէ. այլ եթէ ինչս տացես և եթէ փաղաքշիցես և եթէ սպառնայցես և եթէ այլ ինչ գործիցես, զարդարութե՟ վճիռն բերէ ընդդէմ յանցուցելոց խորհրդոցն. և նոյն որ զմեղսն գործէ, ինքն զինքն դատապարտէ, թէպէտ և ոչ այլ ոք չարախօսէ:

Եւ ոչ մի անգամ և ոչ երկիցս, այլ յոլովակի և յարաժամ այնպէս առնելով կատարէ զկենցաղս. թէպէտ

և բազում ժամանակ անցցէ, ոչ երբէք մոռանայ զհետա-ւոյն։ Այլ 'ի լինել մեղացն և նախ քան զլինելն և զկնի լինելոյն դառն[1] դատախազ յառնէ մեզ, և նմանապէս զկնի լինելոյն. քանզի 'ի գործել զմեղսն հեշտութիւնքն արբեալք՝ ոչ այնպէս զգայցեմք. իսկ յորժամ լինին և առնու կատարումն, յայնժամ հեշտութեանցն ամենե-ցուն շրջելոց դառն ապաշաւանացն 'ի ներքս մտանեն խայթոցք, հակառակ երկանց կանանց։ Քանզի զնոսա նախ քան զծնանելն ուժգին ցաւք և երկունք տագնա-պեցուցանելով վտանգեն. իսկ զկնի ծնանելոյն հան-գիստ, ընդ մանկանն և ցաւքն արտաքս ելանեն։ Բայց աստ ոչ այնպէս. այլ մինչդեռ յղանամք և երկնեմք զա-պականեալ խորհուրդսն, զուարճանամք բերկրիմք. յոր-ժամ ծնանիմք զչար մանուկն զմեղսն, յայնժամ տե-սանելով զվէրս ծնելոցն վշտանամք, և յայնժամ կառ-րիմք քան 'ի կանանց երկանցն ևս զժնդակագոյնս։ Յա-ղագս որոյ աղաչեմ մանաւանդ իսկ մի ընդունել 'ի սկզբ-բանն զապականեալ ցանկութիւնն. ապա եթէ ընդու-նիցիմք, հեղձուսցուք 'ի ներքս զսերմն։

Եւ եթէ այնքան ծուլանայցեմք մինչ զի լինել գոր-ծօղ, սպանցուք զմեղսն դարձեալ 'ի ձեռն խոստովանու-թեան և արտասուաց որ 'ի մեղսն է։ Ոչ ինչ է այնպէս սատակիչ մեղացն իբրև զամբաստանութիւնս և զստգը-տանս։ Բամբասեցեր զմեղսն քո, 'ի բաց եդեր զբեան։ Եւ ո՞վ զայս ասէ. ինքն դատաւորն ա͞ծ. "Ասա դու ըզ-մեղս քո յառաջագոյն, զի արդարասցիս,,։ Վասն է՞ր աղագաւ ամաչես և շառագունես զյանցանս ասել, ասա ինձ. միթէ մարդո՞յ ասիցես որ թշնամանէ, միթէ ծա-ռայակցի՞ն խոստովանիս որ հաչակեցուցանէ։ Տեառն, խնամակալու մարդասիրին, բժշկին զվէրդ ցուցանես. և եթէ ոչ ասիցես միթէ ո՞չ գիտէ որ և նախ քան ըզ-գործելն գիտէր։ Արդ ընդէ՞ր ոչ ասես, միթէ 'ի քում մէ յամբաստանութէ՞ն ծանրագո՞յն ինչ լինիցին մեղքն. այլ մանաւանդ թեթևք և հանգարտագոյնք։ Վասն այնորիկ կամի քեզ ասել ոչ զի տանջեսցէ, այլ զի թող-ցէ. ոչ զի ուսցի որ գիտէն, այլ զի դու ուսցիս որքան պարտս քեզ թողու. արժէ քեզ ուսանել զմեծու-

1 Պակասէր յօր. դառն.. նմանապէս զկնի լինելոյն. լրացաւ 'ի յունէն։

բնական իմաստիցն արտաքս ընկենուլ և խորասոյզ առնել զՀոգին և առ ամենայն իրս անպիտանս գործել զգեղեցիկն։ Վասն այսորիկ ներող 'ի մեզ զխիղճ մտացն զյանդիմանութիւն եղեալ պատրաստեաց, քանզի յոյժ ապառումն է և քան զամենայն խայթոցս ուժգնագոյն զմեղուցեալսն սովորեաց ծակոտել։ Եւ ոչ յորժամ մեղանչեմքն մեք, այլ յորժամ այլքն յանցանիցեն, 'ի մեզ յառնէ սաստկապէս. քանզի պոռնիկն և շուն և գող ոչ միայն յորժամ ինքն բամբասի, այլ և յորժամ զայլս յայնպիսի իրս զյանդգնեալսն լսէ չարախօսեալս՝ զինքն վարկանի խոշտանգեալ յայլոց 'ի պատուհաս զիւրոյ մեղացն առնլով զյիշատակ. և պատժեալ լինի այլ ումն, բայց խոցոտի և նա որ ոչ ինչ պատուհասեցաւ՝ յորժամ զնոյն գործեալ է։ Զոր օրինակ և 'ի յուղղութիւնս այլք գովեալք և պսակեալք, որոյ զնոյն ուղղութիւնն է արարեալ՝ ընդ նոսա հրճուի և ցնծայ, որպէս թէ ինքն մանաւանդ՝ քան եթէ նոքա գովեցան։ Ո՞վ իցէ քան զմեղուցեալն թշուառագոյն, յորժամ յայլոց 'ի խոշտանգանս ինքն սարսափէ. և կենդանւոյն յառաքինութեանն երանելի, յորժամ յայլոցն գովութիւնս ուրախանայ և զուարճանայ՝ յիշատակ 'ի նոցա գովութիւնս առնլով զիւրոյ ուղղութեանցն։

Այսքիկ այ՟ իմաստութեանն գործ, այսքիկ մեծամեծ նորա նախախնամութեանն նշանակ. խարիսխ իմն է ա՟ծային խղճին սպառնացումն, որ ոչ ներէ մեզ 'ի կատարելապէս մեղացն 'ի խորս սուզանիլ. և ոչ 'ի նմին իսկ 'ի մեղացն ժամանակի միայն, այլ և զկնի բազում տարեաց շրջագայութեանց գիտէ մեզ յոլովակի յիշեցուցանել զմեղսն։ Եւ զայս 'ի նոցա իսկ 'ի գրոցն մերձ կացուցից յայտնապէս զցոյցսն։

Վաճառեցին երբեմն զՅովսէփ եղբարքն. մեղադրել ինչ ոչ ունելով, այլ զերազս տեսանէր՝ որ զհանդերձեալ փառսն նախաձայնէին։ "Տեսի, ասէ, զորայն ձեր զի երկիր պագանէին իմում որային"։ Եւ սակայն յաղագս այնորիկ պահել զնա էր պարտ և արժան, որ պսակ ամենայն տանն հանդերձեալ էր լինել և պայծառութիւն բովանդակ ազգին։ Այլ այնպիսիք են յաչաղանք, ընդ ընտանիսն 'ի բարիսն պատերազմել, և յաւէտ ախորժէ բիւր անգամ կրել զժնդակութիւնս յա-

չարկամն՝ քան եթէ զընկերն տեսանել քաջահաճոյ լեալ, թէպէտ և յինքն գալ համդերձեալ իցեն բարեփառութիւնքն. քան զո՞ ոք արդեօք թշուառագոյն լիցի։ Զոր նոքա կրեցին. տեսանելով զնա 'ի հեռուստ եկեալ կերակուր բերեալ՝ միմեանց ասէին. «Եկայք սպանցուք զնա և տեսցուք զինչ են անուրջք նորա»։ Իբրև յեղբօրէ ոչ պատկառեցեր և ոչ զբնութիւնն ծանեար, գոնէ 'ի նմին սեղանոյն պատկառել պարտ և արժան էր, և 'ի սպասաւորութեանն օրինակէ՝ զի 'ի կերակրել եկն զքեզ։

Բայց տես զկարգ և ակամայ մարգարէանան. «Եկայք, ասեն, սպանցուք զնա և տեսանեմք զինչ են նորա երազք»։ Քանզի եթէ ոչ էր խորհեցեալ նոցա և զնենգութիւնն զայն կատարեալ, ոչ արդեօք ճանաչէին զերազոցն զայնոցիկ զզօրութիւնն։ Զի ոչ ինչ էր հաւասար՝ ոչ ինչ չարչարանս կրելով յեգիպտացւոցն եղանել 'ի գահ, և 'ի ձեռն այնքանեաց խափանուածոց և արգելմանց զայնպիսի պայծառութենէ բուռն հարկանել։ Եթէ ոչ էր դաւաճանեալ նմա, ոչ արդեօք վաճառեալ լինէր և ոչ ցանկացեալ 'ի տիկնոջէն. եթէ ոչ էր տենչացեալ տիկնոջն նմա, ոչ անկեալ լինէր 'ի կապարանս և ոչ մեկնէր զերազն և ոչ պատահէր թագաւորութեան այնպիսում, ոչ գային նոքա 'ի գին ցորենոյն և երկիր պագանէին։ Որպէս զի յորժամ սպանին զնա, յայնժամ առաւել գիտացին զնորա զերազն։

Իսկ արդ զինչ. նոքա՞ առիթք համդերձելոց բարեացն նորա եղեն և երևելութեանն այնմիկ։ Իսկ ոչ երբէք. այլ նոքա մահու, տխրանաց և ծառայութեան և վերջին չարեաց խորհէին մատնել զնա. բայց մարդասէրն ած՝ դաւաճանողացն չարութեամբ 'ի վաճառեցելոյն և 'ի դրժեցելոյն 'ի քաջահաճութիւնս վարեցաւ։

Զի մի պատահման իրք և միջոց փոխման իրաց համդիպեալքն կարծեսցին, 'ի ձեռն նոցին հակառակացն և խափանողացն այնոցիկ յարմարէ զխափանեալսն ած, թշնամեօք նորա իբրև սպասաւորօք 'ի բարեփառութիւն նորա վարելով. զի ուսցիս եթէ զոր ինչ ած կամի՝ ոչ ոք քայքայէ, և զբարձր ձեռն նորա ոչ ոք անդրէն դարձուցանէ. զի յորժամ կրեսցես դաւաճանութիւնս յումեքէ՝ մի վհատիցիս, այլ տեսանել ունիս զի 'ի վախ-

ճանին քաղցր ամենայն դժուարութիւնն լինի, եթէ առաքինաբար ընկալցիս զվիպուածսն: Քանզի ահա և մախանք զթագաւորութիւնն ծնան, և յաչաղութեն թագ և աթոռ ընծայեաց, և նոքին իսկ դրժողքն մղեցին զնա 'ի մեծութիւն իշխանութեանն այնորիկ. և դրժեալն թագաւորեաց, իսկ դաւաճանողքն ծառայեցին. նա երկիր պագեալ, և նոքա երկիր պագանէին:

Արդ յորժամ 'ի վերայ միմեանց գայցեն դժնդակութիւնքն, մի ամբոխիցիս և մի զչարիցիս, այլ համբերեա վախճանին. քանզի ամենայն իրօք դիպեսցիս արժանաւոր այ մեծապարգևութեանն, միայն եթէ գոհանալով որ 'ի մէջ ժամանակին է անցուսցես: Զի և նա յետ երազոցն այնոցիկ 'ի վերջին չարիսն վտանգեցաւ. վաճառեցաւ յեղբարցն, 'ի տիկնոջէն դրժեցաւ, և դարձեալ 'ի կապարանն անկաւ, և ոչ երբէք ասաց յինքեան՝ զինչ են այսոքիկ, խաբէութիւնք երազոցն. արտաքս անկայ 'ի գաւառէն, զրկեցայ յազատութենէն, յաղագս այ ոչ անսացի տիկնոջն որ 'ի չնութիւն զիս կոչէր. և այսպէս ոչ օգնեաց ինձ և ոչ ձեռն ձգեաց, այլ եթող անկանել 'ի կապանս և 'ի խիստ և 'ի հոծ թըշուառութիւնս. զկնի գերոյն ծառայութիւնս, յետ ծառայութեան դրժութիւն, զկնի դրժութեանն զրպարտութիւն, յետ զրպարտութեանն կապանարան: Բայց ոչ ինչ յայսցանէ զնա ամբոխէր, այլ կայր մնայր յուսով վստահացեալ, և գիտէր եթէ ասացեալքն ոչ երբէք 'ի վայր անկանէին:

Կարէր ած և 'ի նմին աւուր զայնոսիկ նմա կատարել, այլ զի զիւր զօրութիւնն ցուցանէ և զհաւատ նորա ծառայութեանցն, թողու բազում ժամանակ 'ի մէջ անկանել և յոլով լինել խափանումն, զի և զնորա ուսցիս զզօրութիւնն՝ որ կատարէր զպատմեալսն յորժամ յանյուսութիւն անկանիցին իրքն, և զծառային տեսցես զհամբերութիւն և զհաւատ, և ոչ մի ինչ 'ի պատահեցելոցն 'ի մէջ բարի յուսոյն անկեալ: Այլ զոր ասէին՝ երթայց անդրէն:

Զնոսա սով իբրև զինու ոք զլխիվայր մղէր. և մեծ կացեալքն իշխանին Յովսէփայ կամէին գնել ցորեան, և նա ասէր. “Լրտեսք էք”: Զինչ արդեօք էր այս. կերակուր եկաք գնել, և յաղագս անձանց վտանգիմք. Յի-

րաւի. վասն զի և նա կերակուր եբեր ձեզ, և կենացն աղագաւ վշտացաւ. բայց նա ճշմարտութեամբ համբերեաց, իսկ դուք պատճառանօք չարչարիք. զի ոչ թշնամի էր, այլ զկերպարան էառ զթշնամւոյ:

Վասն զի չարք առ նմա եղեն և դժնդակաբարոյք, զԲենիամին ոչ տեսանելով ընդ նոսա երկեաւ վասն պատանեկին, մի գուցէ և նա զեղբօրն նորին կրեաց, հրամայէ զմի ոմն կապեալ և թողուլ անդրէն, և նոցա ամենեցուն առնուլ զցորեանն և երթալ, սպառնալով նոցա մահ՝ եթէ ոչ զեղբայրն իւրեանց ածիցեն: Եւ իբրև այս լինէր, և ասէր նոցա՝ թէ թողէք զոք աստէն և զեղբայրն ձեր ածէք, ապա եթէ ոչ՝ մեռանելոց էք, զի՞նչ նոքա միմեանց. «Այո, քանզի 'ի մեղս եմք յաղագս եղբօրն մերոյ որ աղաչէրն զմեզ»: Տեսէ՞ք՝ զկնի որքան ժամանակի զմեղանս զայն յիշէին, և հօրն ասէին. «Գազան չար եկեր զՅովսէփ»: Եւ 'ի նոյն իսկ 'ի Յովսէփ մերձ կացեալ, լսելով 'ի նոցանէ զմեղանս յանդիմանէր: Ո՞ր ինչ քան զայս հրաշափառագոյն լինի. ատեան առանց յանդիմանութեան լինէր, և պատասխանիք առանց ամբաստանութեան և յայտնութիւն թարց վկայից. ինքեանք որք զիրսն գործեցին, զանձինս յանդիմանէին, և զգաղտնի լեալսն հռչակեցուցանէին:

Ո՞վ հաւանեցոյց, ո՞վ հարկ արար 'ի մէջ բերել որ նախ քան զայն ժամանակ յանդգնութիւն էր լեալ. ո՞չ քաջայայտ է եթէ խիղճն որ յաճախապէս ամբոխէր, սպանեալն յայնժամ նստէր լռութեամբ դատելով զնոսա, և ոչ մի ինչ բերելով նոցա վճիռ պատուհասի, ինքեանք զդատապարտութեանն իւրեանց բերէին զվճիռ: Եւ նոքա զայս ասէին. իսկ մի ոմն պատասխանի առնէ ասելով. «Ո՞չ խօսեցայ ընդ ձեզ և ասացի՝ մի անիրաւէք 'ի պատանեակդ և մի ինչ առնէք դմա. ահա արիւն նորա խնդրի» ասէր: Եւ սակայն ոչ ինչ յաղագս սպանմանն և մահուան այնորիկ ասաց, այլ և ըզմիւս եւս զեղբայրն խնդրէր. բայց խղճին առեալ զժամանակն 'ի վերայ դիմեաց և տանջէր զնոցա խորհուրդսն, և առանց ուրուք հարկ առնելոյ զյանդգնութիւնն խոստովանել պատրաստէր: Նոյնպէս և մեք բազում անգամ ախտանամք զանցեալ զմեղսն, 'ի դժնդակութե՛ և 'ի խռովութի՛ս քննելով յիշեմք զառաջինն յանցանսն:

Digitized by Google

Արդ զայս ամենայն գիտելով յորժամ գործիցեմք ինչ չար, մի կացցուք մնասցուք թշուառութեանցն և խռովութեանցն և վշտացն. այլ համապազօր շարժեսցուք զատեան զնորա, և զպատուհասն հակառակ մեզ բերցուք, և հնարեսցուք ամենայն օրինակաւ զպատախանի տալ ա՟յ. մի երբէք մեք յաղագս յարութեան և դատաստանի յերկուասցուք, և մի յորժամ այլքն ասիցեն՝ ներեսցուք, այլ ամենայն իրօք 'ի ձեռն ասացելոցս զնոսա ըմբերանեսցուք: Ոչ որպէս թէ հանդերձեալ իցեմք անդ զպատուհաս ընդունել յանցանաց, այնպիսի ատեան ասէն 'ի մեզ հաստատեաց ա՟ծ. այլ և այս նորա մարդասիրութեանն է նշանակ: Վասն զի անդ հանդերձեալ է բան պահանջել 'ի մէնջ ընդ յանցանացն, կացոյց աստ անաչառ դատաւոր. զի աստէն յաղագս մեղացն դատելով զմեզ և ողջախոհ առնելով՝ յափշտակեսցէ 'ի հանդերձեալ դատաստանէն, զոր և Պաւղոս ասէ. "Եթէ զանձինս դատէաք, ոչ դատեալք լինէաք 'ի տեառնէ":

Արդ զի մի յայնժամ տանջիցիմք և մի յայնժամ պահանջիցիմք, իւրաքանչիւր ոք 'ի խիղճ մտացն իւրոյ մտցէ, և զվարսն իւր հարցափորձելով՝ ընդ ամենայն յանցանս իւր հաւաստեաւ անցցէ, և քամքասեսցէ զանձն իւր որ զայն գործեաց. տանջեսցէ զխորհուրդս, նեղեսցէ պատուհասեսցէ զիւր մեղսն և զմիտսն՝ դատաստան յինքենէ պահանջելով զմեղանացն 'ի ձեռն մեղադրանացն, 'ի ձեռն ապաշաւանաց, արտասուօք և խոստովանութեամբ. զի ամենայն օրինակաւ աստէն 'ի բաց դնելով զմեղսն բովանդակ՝ հանդերձ բազում համարձակութեամբ անդր երթիցուք. որոց լիցի մեզ ամենեցուն հանդիպել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր հանդերձ սրբով հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՅԱՄԱՑՈՒԱԾՍ ՊԱՒՂՈՍԻ ԹՂԹՈՅ ՆՆՋԵՑԵԼՈՑՆ « ՈՉ ԿԱՄԻՄ ՁԵԶ ԱՆԳԻՏԱՆԱԼ, ԵՂԲԱՐՔ, ՈՐՊԷՍ ԵՒ ԱՅԼՔՆ »:

Աւուրս չորս ծախեցաք որ քան զՂազարու առաւելն էր ձեզ պատմելով, եւ զգանձն պեղեցաք զոր գտաք 'ի վերատուրեալ մարմին ամփոփեալ. զանձ՝ որ ոչ ոսկի եւ արծաթ է եւ քարինս պատուականս, այլ խոնարհութիւն եւ արդարութիւն եւ համբերութիւն եւ ժուժկալութիւն բազում: Ոի զոր օրինակ զգալի գանձս այս պատահէ, զվերոյ երեւումն զի փոշի եւ քարինք ունին եւ երկիր խոշոր, բայց եթէ ոք զատորեսն բերեսցէ՝ բազում¹ փարթամութիւնս, նոյնպէս եւ Ղազարու գիւտեցաւ. 'ի վերոյ վէրք, եւ 'ի ներքոյ անճառ փարթամութիւնք. լուծեալ էր մարմինն, այլ առաքինի. եւ արթուն հոգին. եւ զառաքելական բանն զայն էր ուսանել յնեալ. ՙՙՈրքան արտաքին մարդս մեր ապականի, այնքան ներքինն նորոգի՚՚: Կայր հնար եւ այսօր 'ի նոյն առակէն եւ ընդ հերձուածողն կռուել, որ զհին կտակարանս հայհոյեն եւ զհայրապետացն չարախօսեն եւ հակառակ ամենեցուն արարչին նոյ զլեզուսն սրեն: Այլ զի մի անզգալի ձեզ բանն լինիցի, զայն հանդէս յայլ ժամանակ պահելով, բեր յայս պատճառ զբանս ածցուք. զի եւ սեղան միատեսակ լինելով անզգալի մեզ երեւի. իսկ եթէ զանազանք իցեն, յաճախապէս ընդունուցունէ զփափաքումն: Նաեւ 'ի լսելութիւնս այսորիկ յեցեն. առ երանելին Պաւղոս յետ երկար ժամանակի վերստին երթիցուք. վասն զի ձայն իսկ մեզ այսօր առաքելական տեղին ընթերցաւ, եւ երգակից է առաջինն ասացելոցն ընթերցեալս:

Լուայք Պաւղոսի այսօր որ գոչէր եւ ասէր յաղագս ննջեցելոցն. ՙՙԵղբարք, ոչ կամիմ զձեզ անգիտանալ, զի մի տրտմիցիք որպէս եւ այլքն որք ոչ ունիցին յոյս՚՚: Այն աւետարանական էր Ղազարուն, եւ այս առաքելական հնչումն, այլ մի է ձայնակցութիւնն. քանզի եւ յայնմ

1 Օրինակին պակասէր բազում փարթամութիւնս. յաւելաւ 'ի յոմանց:

Digitized by Google

առակէն յոքունս յաղագս յարութեանն և որք անդ ա-
տեանք են իմաստասիրեցաք, և այժմ 'ի նոյն պատճառ
դարձեալ բանս զմեզ էած: Որպէս զի թէպէտ և զա-
ռաքելական երկիրս բրիցեմք, այլ զնոյն դարձեալ և աստ
գտանիցեմք. զի և որ յայնժամ բանն էր ամենայն՝ այ-
սու փութայր խրատել զլսողսն, ոչ ինչ մեծապայծա-
ռութիւն զմերձակայ յաշխարհիս իրս վարկանել, այլ
յայլ իմն յառաջանալ յոյս, և զանտի զատեանն հա-
նապազօր զմտաւ ածել, զահաւոր զբեմն և զանխաբե-
լի զդատաւորն: Զայսոսիկ և Պաւղոս 'ի ձեռն ըն-
թերցուածոյն մեզ խորհրդակից լինի այսօր. այլ հայե-
ցարուք. “Յաղագս ննջեցելոցն ոչ կամիմ զձեզ անգի-
տանալ, եղբարք, զի մի տրտմիցիք որպէս և այլքն որք
ոչ ունին յոյս. քանզի եթէ հաւատամք եթէ Յիսուս
մեռաւ և յարեաւ, նոյնպէս և ա͞ծ զննջեցեալսն 'ի ձեռն
Յիսուսի ածցէ ընդ նմա”:

Զայս նախ առաջին աստանօր արժան է 'ի վերայ
կալով հարցափորձել, ընդէր արդեօք յորժամ յաղագս
Քրիստոսի խօսի՝ մահ կոչէ զնորա մահն, իսկ յորժամ
վասն մերոյ վախճանի՝ քուն զնա և ոչ մահ անուանէ:
Քանզի ոչ ասաց՝ յաղագս մեռելոցն. այլ զինչ. “յա-
ղագս ննջեցելոցն”. և դարձեալ. “նոյնպէս և ա͞ծ զննջե-
ցեալսն 'ի ձեռն Յիսուսի ածցէ ընդ նմա”. և ոչ ասաց՝
զմեռեալսն. և դարձեալ. “մեք կենդանիքս մնացեալք 'ի
գալստեանն տեառն, ոչ ժամանեմք ննջեցելոցն”: Եւ
ոչ անդանօր ասաց՝ մեռելոց, այլ երկիցս ասաց յիշելով
զնոսա, և երիցս անգամ քուն զնոցա մահն կոչեաց: Իսկ
յաղագս Քրիստոսի ոչ այսպէս. այլ զիա՞րդ. “Քան-
զի եթէ հաւատամք եթէ Յիսուս մեռաւ և յարեաւ”.
և ոչ ասաց՝ եթէ Քրիստոս ննջեաց, այլ մեռաւ: Ըն՞ր
աղագաւ զՔրիստոսին մահ կոչեաց, և զմերն քուն:
Զի ոչ վայրապար և ոչ որպէս 'ի դէպ իցէ այսպիսի
որոշմամբ բանիւք վարի, այլ մեծ իմն իմաստութ͞ի յօ-
րինէր. զՔրիստոսին մահ կոչեաց, զի զչարչարանսն հա-
ւաստարմացուսցէ. և զմերն քուն՝ զի զվտանգսն մխիթա-
րեսցէ: Քանզի ուրանօր յառաջեաց յարութ͞ին, վս-
տահանալով կոչէ մահ. իսկ ուր յուսով են իրքն, քուն
անուանէ, և 'ի ձեռն նորին անուան մխիթարէ զմեզ և
քաղցր յոյս 'ի մեզ ամբարէ. որ քուն էն՝ ամենայն ի-

րգք յառնել. քանզի և ոչ այն ինչ է մահ, այլ երկայնագոյն քուն։

Մ՚ի ինչ ինձ զայն ասեր, զի ոչ խօսի, ոչ լսէ և ոչ տեսանէ և ոչ զգայ վախճանեալն. զի ոչ որ ննջենն։ Նա եթէ պարտ է հրաշալի ասել ինչ, որ քուն էն՝ և հոգին իմն քուն է. իսկ վախճանելոցն ոչ այսպէս, այլ արթուն է հոգին։

Իսկ վախճանեալն, ասէ, փտի և անապականի փոքր և գաղաղ։ Նա զինչ այդ, սիրելի. յաղագս զորէն այդպրիկ խնդալ պարտ և արժան է. քանզի և որ հանդերձեալն է տուն շինել զխարխալեալն և զհին լեալն, արտաքս հանէ յառաջագոյն զընտանիսն և ապա քակէ զտունն և շինէ պայծառագոյն. և զարտաքս ելեալսն ոչ ոք տրտմեցուցանէ լեալն, այլ ուրախացուցանէ եւս առաւել. զի ոչ քակումն տեսանեն յոր հայինն, այլ ընհանդերձեալ շինութիւն երևութեան որ ոչն տեսանին։ Նոյնպէս և Տէր առնէ. կամելով քակել զմեր մարմինս որ բնակեալ է՛ ՚ի մեզ, զհոգիս արտաքս հանէ յառաջագոյն իբրև ՚ի տանէ իմեքէ, զի պայծառագոյնս շինելով հանդերձ յայլում փառօք դարձեալ ՚ի ներքս ածցէ։ Արդ մի պատուհետև ՚ի կործանումն հայեցուք, այլ ՚ի հանդերձեալ պայծառութիւնն։

Նա դարձեալ եթէ ոք ունիցի պղնձի պատկեր բազմաժամանակեայ ժանգով ապականեալ և բազումք յանդամոցն ջաղջախեալք, խորտակելով զնա ՚ի ձուլարանն արկանէ, և հաւատեաւ հանելով մինչև պայծառագոյն ընձեռէ։ Արդ որպէս ՚ի հալարանին խորտակումն ոչ խանգարումն՝ այլ նորոգումն է պատկերին այնմ, նոյնպէս և մերոց մարմնոցս մահ ոչ կորուստ ինչ է, այլ վերստին նորոգութիւն։ Յորժամ տեսանիցես այսուհետև ՚ի ձուլարանի ՚ի վայր ցնդեալ զմեր մարմին և ապականեալ, մի անդէն կացցես մինչ ՚ի տեսանելին եւեթ, այլ համբերեա վերստին ձուլելոյն. և մի չափով առաւելս սովորիկ բաւական տացես, այլ ՚ի պայծառագոյնն յառաջ անց բանիւ։ Քանզի պատկերագործ զպղինձն արկանելով ոչ ոսկեղէն և անմահ ընձեռէ և զմարմինն, այլ պղնձի գործէ. բայց Տէր ոչ այնպէս, այլ կաւեղէն և մահկանացու արկանելով զմարմինս՝ տայ ոսկեղէն և անմահ քեզ զպատկերն. վասն զի զապականա-

ցու մարմին ընդունելով երկիր դիւրածախ, անապական զնա և անվթարելի ընձեռէ ։

Մի այսուհետև հայեսցիս 'ի կափուցումն աչացն և որ անձայնն անկեալ կայ. այլ 'ի յարուցեալն և որ առնլոցն է զփառսն զանճառելիս և զսարսափելիս և զհրաշալիս, և 'ի մերձակայ դիմաց 'ի հանդերձեալ յոյսն փոփոխեա զխորհուրդսդ ։ Այլ զուլորութիւնն խնդրես, և յաղագս այնորիկ սգաս և ողբաս ։ Իսկ զիա՞րդ ոչ իցէ յիմարութիւն, թէ փեսայի զդուստր տալով, որոյ առեալ 'ի հեռի գաւառ անցեալ գնայր, և գեղեցիկ իրօք վարեսցին և գործովք՝ ոչ ինչ վարկանել դժնդակութիւն զլեալն, բարի իրացն համբաւով մխիթարիլ 'ի հեռաւորութեանն տրտմութենէ. իսկ աստ ոչ մարդոյ և ոչ ծառայակցի ուրուք, այլ նորին իսկ տեառն առնլով զպատշաճագոյնսն մորմոքել և ողբալ ։

Իսկ զիա՞րդ ոչ իցէ հնար, ասեն, վշտանալ որ մարդ իցէ ։ Իսկ ոչ ես զայդ ասեմ. ոչ զտրտմութիւնն, այլ զյերկարաձգեալ տխրութեանն իրս 'ի բաց բառնամ. քանզի տրտմելն բնութեա՛ն է, իսկ առաւել քան զչափն զայն առնել՝ մոլութեան և խելագարութեան և կանացի անձինն է ։ Ողբա արտասուեա՛, բայց մի՛ վհատիցիս մի՛ դժուարիցիս մի՛ զայրանայցես. այլ գոհասցիս զառողէն, զի զարդարեսցես զառեալն և կրկին պատիւ նմա առաքեսցես զպատանմն ։ Ապա եթէ դժուարեսցիս, և զնա թշնամանեսցես և զառողն նորա զայրացուցանես և զքեզ վնասես. իսկ եթէ գոհասցիս, զնա զարդարես և զառողն փառաւորես և զքեզ օգտես ։ Արտասուեա որպէս տէրն արտասուեաց զՂազարոս, չափս և օրինակս դնելով մեզ և սահման տրտմութեանն՝ ընդ որ անցանել ոչ է պարտ և արժան ։ Որպէս և Պաւղոս ասէ. “Յաղագս ննջեցելոցն ոչ կամիմ զձեզ անգիտանալ, զի մի՛ տրտմիցիք որպէս և այլքն որք ոչ ունին յոյս„ ։ Տրտմեցիր, ասէ, բայց մի՛ իբրև զհեթանոսս, որպէս անծանօթ լեալ յարութեանն իբրև անյոյս հանդերձելոց բարեացն ։

Ամաչեմ, հաւատացէք, և շառագունեմ, ընդ հրապարակս պարս կանանց տեսանելով անամօթացեալս, որք զհերս փետեն, զայտս կեղեքեն և զծղլիս կոծեն՝ յանդիման աչացն հեթանոսաց լեալ այն ։ Զինչ ոչ ասեն

նոքա, զոր բանս արդեօք ոչ խօսիցեն։ Որքա՛ն են որք յաղագս յարութեանն իմաստասիրեն. ամենեքին գեղեցիկ. ոչ յարմարին յաւանդութիւնս լեալքս. բանիւք եւեթ յաղագս յարութեանն ասեն, բայց իրօք զանգիտելոցն առնեն. եթէ վստահանային նոքա եթէ յարութիւն է, ոչ արդեօք զայս առնէին. եթէ հաւանեալք էին եթէ 'ի լաւագոյն կատարումն երթեալ գնայ, ոչ այսպէս արդեօք ողբային։ Զայս և յոլովագոյն քան զսոյն անհաւատքն խօսին զողբումն զայն լսելով։ Պատկառեսցուք այսուհետև և ողջախոհք լիցուք, և մի մեզ և տեսողացն այնքան վնաս գործեսցուք։

Վա՞սն էր իսկ արտասուես այդպէս զգնացեալն, ասա ինձ։ Եթէ չար էր, յաղագս դորին գոհանալ պարտ էր, զի 'ի բաց հատան նորա չարութեանն իրք. այլ եթէ բարի և հեզ, և վասն դորին խնդալ պարտ է, զի վաղվաղակի յափշտակեցաւ նա՝ քան եթէ 'ի չարութիւն ինչ փոփոխեսցէ զիմաստութիւնն. չոգաւ 'ի տեղին յորում զգուշութեամբ այսուհետև կայ մնայ, և փոփոխումն ինչ գործել ոչ եւս է։ Բայց թերևս մանուկ էր. և դորին աղագաւ փառաւորեա զընդունողն, զի վաղվաղակի զնա 'ի լաւագոյն կատարումն կոչեաց. իսկ ծերացեալ, և յայդր սակս գոհացիր և փառաւորեա զառողն։ Պատկառեա դարձեալ և 'ի ձևոյ եկելոցն, սաղմոսերգութիւնք և աղօթք և հարցն ժողովք և բազմութիւնք եղբարց այսքան. ոչ զի լայցես և ողբասցես և վհատիցիս, այլ զի գոհասցիս զառողէն։ Քանզի զոր օրինակ որք յիշխանութիւնն կոչին՝ յոլովք յուղարկեն, նոյնպէս և զսուրբսն գնացեալ աստի որք 'ի մեծամեծ պատիւս կոչին՝ հանդերձ յաւէտ բարեբանութեամբ յուղարկեն ամենեքեան։

Հանգիստ է մահ, 'ի քրտանց և 'ի հոգոց աշխարհականաց 'ի բաց վճարումն։ Յորժամ տեսանես զոք յընտանեացն գնացեալ աստի, մի դժուարեսցիս, այլ ապաշաւելով 'ի քեզ ինքն եկեսցես և զխիղճ մտացդ քննեսցես. դիտասջիր զի և քեզ սուղ ինչ յետոյ նոյն կայ մնայ։ Լեր ողջախոհագոյն և ընկալ զերկիւղ յայլոց վախճանէն, և զծուլութիւն զամենայն 'ի բաց հատմնաւ ած զյանցանսն, ուղղեա զմեղանսն, գեղեցիկ արա զփոփոխումն։ Քանզի այսոքիւք զանազանեցաք յան-

հաւատիցն, դատաստան այլ յաղագս գործոցն ունել:

Տեսանէ զերկին անհաւատն և երկիր պագանէ ա՟ծ կարծելով. տեսանէ զերկիր և սպաս տանի, և ընդ զգալիս ամենայն բերանաբաց է: Բայց մեք ոչ այնպէս. այլ տեսանեմք զերկին, և ընդ արարիչն նորա հրաշանամք. վասն զի ոչ զնա ա՟ծ, այլ գործ ա՟յ հաւատամք. տեսանեմք զարարածս ամենայն, և 'ի ձեռն նոցա առաջնորդիմք առ արարիչն: Տեսանէ զընչեղութիւնն նա, և սխրացեալ հիանայ. տեսանեմ զփարթամութիւնն ես, և ծաղր առնեմ: Տեսանէ զաղքատութիւնն նա, և սուկայ. տեսանեմ զաղքատութիւնն ես, և բերկրիմ. այլ ազգ ես տեսանեմ զիրս, և այլ ազգ նա: Այնպէս և յաղագս մահու առնեմք: Տեսանէ մեռեալ նա, և կարծէ մեռեալ զոլ. տեսանեմ մեռեալ ես, և քուն փոխանակ մահու տեսանեմ: Եւ որպէս գրոցն են իրք, նոքումբք աչօք տեսանեմք զայնոսիկ՝ գիտակք գրոց և որք անգիտանան զգիրս, բայց ոչ նովին մտօք. այլ որք ոչ գիտեն զգիրն, վայրապար կարծեն զտեսեալն. իսկ գիտակքն համդերձ յոլով արուեստիւ հաւաքեն որ 'ի նոսա կան միտքն: Այնպէս և յաղագս իրացն է. նոքումբք աչօք տեսանեմք զգիպուածս իրացն, բայց ոչ նոքումբք մտօք և բարուք: Արդ մի՛ այսուհետև որք յայլս ամենեսեան որոշեալ եմք 'ի նոցանէ, յաղագս մահու իրաց միաբանեսցուք ընդ նոսա:

Զմտաւ ած առ ո՛վ չոգաւ, ընկալ մխիթարութիւն. ուր Պաւղոս է և Պետրոս, ուր հրեշտակացն ամենայն պար: Իմա զիարդ յառնելոց է, համդերձ որպիսի փառօք և պայծառութեամբ: Զմտաւ ած զի սգալով և ողբալով և ոչ զլեալ ողբումն՝ կարես ուղղել, և զքեզ մեծապէս վնասես: Իմա ում նմանող լինիս զայն առնելով, և փախիր 'ի հաւասարութենէ մեղացն: Ո՞ւմ նմանիս և նախանձիս. ընդ անհաւատն որք ոչ ունին յոյս, որպէս և Պաւղոս ասաց. “Զի մի տրտմիցիք, որպէս և այլքն որք ոչ ունին յոյս”: Հայեաց և 'ի բանից հաւաստութիւնն. քանզի ոչ ասաց՝ որք ոչ ունին յոյս անդ դատաստանին, այլ և ոչ մի ինչ ունին յոյս, և ոչ եթէ ա՟ծ իսկ է գիտեն, և ոչ եթէ խնամ տանի մերձակայ իրացս, և ոչ եթէ զամենայն յա՟ծային իմն դատաստանէ: Որք զայս ոչ գիտեն և ոչ կարծեն, քան զա-

մեռեալն գաղափար անբանաւորացն են. օրէնս և դատաս-տանս և խրատուս և բովանդակ պարզաբար զգայական յիւրեանց անձանցն լսելս սահմանեն։ Քանզի որ ոչ վստահանայն հաւատոց ինչ տալ գործեցելոցն, յամե-նայն առաքինութենէ 'ի բաց հրաժարէ, զկնաւ զանխ-րատութիւն ընդունի։

Զայս զմիտս առեալ, զանմտութիւն և զխելագա-րութիւն հեթանոսացն խորհելով, փախիցուք 'ի նոցա միաբանութենէն։ Քանզի յաղագս այդորիկ և Պաւ-ղոս զնոսա յիշեաց, զանմտութիւն մտացն դիտելով յոր կործանեալն. զի 'ի նոցա միաբանութենէն օտարեսցիս, և առ քո բարեմտութիւնդ եկեսցես վերստին։ Իսկ ոչ առատանօր միայն, այլ յորդորակի և յանձնարարէ զնոյն առնէր երանելին Պաւղոս. զի յորժամ և 'ի մեղացն 'ի բաց հանել կամի, ցուցանէ ում հաղորդք 'ի ձեռն յան-ցանացն լինիցիմք, զի նմանութեանքն դիմացն խոցո-տեալք 'ի հաղորդութենէն փախիցուք։ Թեսաղոնիկե-ցւոցն գրելով այսպէս ասէր. «Իւրաքանչիւր ոք զիւր անօթն ստասցի պատուով և սրբութեամբ. մի ախտիւ ցանկութեան, որպէս և այլ հեթանոսք գնան ունայ-նութեամբ մտաց իւրեանց»։ Նոյնպէս և առատանօր. «Ոչ կամիմ զձեզ անգիտանալ յաղագս ննջեցելոցն, զի մի տրտմիցիք որպէս և այլքն՝ որք ոչ ունին յոյս»։ Նաև զի ոչ բնութիւն իրացն, այլ մեր յօժարութիւնն տրտ-մեցուցանել ստիպեաց զմեզ. ոչ մահ գնացելոցն, այլ տկարութիւն մնացելոցն։ Զի զհաւատացեալն և ոչ մի ինչ 'ի մերձաւորացս տրտմեցուցանել կարէ. այլ նաև քան զհանդերձեալ բարիսն և 'ի մտաւորս որոշի յան-հաւատից, ոչ փոքր ինչ բարիս առնլով 'ի Քրիստոսի խնամատարութենէն, և մեծապէս զայս պատուեր շահե-լով բարեմտութիւնս հաղորդեա և հրճուանս ունիցիս։ Յաղագս որոյ և Պաւղոս ասէ. «Խնդացէք 'ի տէր յա-մենայն ժամ. դարձեալ ասեմ՝ ուրախ լերուք»։ Որ-պէս զի և նախ քան զյարութիւնն ոչ փոքր և զայս հա-տուցումն ընկալայք՝ ոչ անկանել 'ի վայր և ոչ 'ի միջէ խմբել 'ի դիպելոց դժնդակութեանց, այլ հանդերձեալ յուսովն 'ի բազում մխիթարութիւնս վայելել։ Իսկ զոր օրինակ յերկնացունց կողմանց մեք շահիմք, նոյնպէս և անհաւատն յերկրացունց կողմանց վնասի տանջանօք, յա-

ղագս պատժոցն անհաւատութեանն, և թախծանօք 'ի մերձակայ իրս, վասն ոչ ինչ վստահանալոյ յետ այսուրիկ 'ի բարիս:

Արդ ոչ ես յաղագս յարութեանն միայն պարտիմք գոհանալ զա̃յ, այլ և վասն յուսոյ յարութեանն՝ որ զողբացեալ անձինս կարէ մխիթարել, և հաւանեցուցանել յաղագս գնացելոցն վստահանալ՝ որպէս թէ յառնելոց իցեն դարձեալ և ընդ մեզ լինելոց: Քանզի եթէ վշտանալ ինչ պարտ և արժան իցէ և սգալ, որք մեղօքն կեան՝ զնոսա ողբալ պարտիմք և լալ, այլ ոչ որք գնացինն աստի հանդերձ առաքինութեամբ: Որպէս և Պաւղոս առնէր. կորնթացւոյն առաքելովն ասէր. «Մի՛ գուցէ 'ի գալն իմում առ ձեզ նուաստացուսցէ զիս ա̃ծ և սգայցեմ զյոլովս»: Ոչ ասաց զմեռեալս, այլ զյառաջագոյն մեղուցեալսն և ոչ ապաշխարեալս յանմաքրութենէ և 'ի պղծութենէ զորս գործեցին. զայնպիսիսն պարտ է ողբալ: Նոյնպէս և այլ ոմն պատուիրէ ասելով. «Արտասուեա 'ի վերայ մեռելոյ, քանզի պակասեաց լոյս. լացջիր 'ի վերայ անմտի, վասն զի պակասեաց իմաստութիւնն»: Փոքր ինչ լացցես 'ի վերայ մեռելոյ, զի հանգեաւ. բայց յիմարին առաւել, քանզի մահ կեանքըն իւր են: Արդ եթէ որ յիմաստութենէն պակասեալ է՝ յարաժամ ողբալոյ արժանաւոր է, ես առաւել որ յարդարութենէն ամայի է և յա̃ծային լուսոյն արտաքս անկեալ. զայնպիսին սգասցուք մեք: Այս սուգ ունի իմն և շահ. քանզի յաճախապէս զնոսա սգալովն ուղղեմք. բայց յաղագս գնացելոցն անմիտ միանգամայն և վնասակար է: Մի՛ այսուհետև խոտորեցուցուք ըզկարգն, այլ զմեղսն միայն ողբասցուք. իսկ զայլն ամենայն եթէ աղքատութիւն իցէ կամ հիւանդութիւն կամ մահ տարաժամ եթէ դժուարութիւն եթէ զըրպարտութիւն եթէ զինչ և անկանիցին 'ի վերայ մարդկան չարիք՝ զամենայն առաքինաբար ընկալցուք. քանզի դժնդակութիւնքն այն բազում պսակաց պատճառք լինին եթէ արթունք իցեմք:

Իսկ զիա՞րդ է հնար, ասեն, որ մարդ իցէ՝ ոչ վշտանալ: Օհակառակ զորին ասեմ ես. զիա՞րդ որ մարդ է՝ վտանգի, բանիւ պատուեալ և խորհրդով և յաղագս հանդերձելոցն յուսով: Իսկ ո՞վ ոք ոչ ըմբռնեցաւ ախ-

տիւս այսուիկ ։ Յոբովք բազում անգամ և առ մեզ և
առ նախահարքըն մերովք. քանզի Յոբ 'ի բովանդակ
պարու որդւոցն երթալ՝ լուր զինչ ասէր. "Տէր ետ և
Տէր էառ. որպէս տեառն թուեցաւ, նոյնպէս և եղև" ։
Հրաշալիք են և պարզաբար լսել զայս. բայց եթէ հա-
ւաստեաւ հարցաքննեսցես զամենայն, յայնժամ մեծա-
գոյն ևս տեսցես զքանչելիսն ։ Ոչ զկէսն էառ սատա-
նայ և զկէսն եթող, և ոչ զյոլովս էառ և զսակաւն ե-
թող. այլ զբովանդակ զպտուղն կթեաց և զծառն ոչ
կարաց խորտակել. զամենայն 'ի վերայ եած զծովն հան-
դերձ ալէկոծութեամբ, և զնաւն ոչ կարաց ընկղմել.
զբոլոր զօրութիւնն թափեաց, բայց զաշտարակն ոչ կա-
րաց շարժել ։ Այլ կայր ամենայն ուստեք հարեալ և
անշարժ մնացեալ. տարափք բերեալ լինէին՝ նետքն, և
զնա ոչ խոցոտէին. մանաւանդ եթէ ցցեալք լինէին 'ի
նմա, և ոչ վիրաւորէին ։ Զմտաւ ած որպիսի ոք էր՝ այն-
քան մանկունս ետես կորուսեալս. զինչ ոչ էր բաւա-
կան յայնցանէ. ամենեքեան յափշտակեալ եղեն, բո-
լորեքեան յանկարծակի և 'ի միում աւուր 'ի նմին իսկ
'ի ծաղիկ հասակի բազում առաքինութիւնս ցուցանե-
լով՝ այնպիսի օրինակաւ տանջանաց լուծանել զկենցաղ.
յետ այնքանեաց վերջին վիրացն 'ի վերայ եկելոց բա-
րեգթոյն և ծնողի անձկալիքն գնացեալք ։ Քանզի յոր-
ժամ չար մանկունս կորուսանիցէ ոք, թէպէտ և կոր-
ծանի յախտէն, այլ ոչ հանդերձ սաստկութբ. վասն
զի չարութիւն գնացելոցն ոչ թողացուցանէ զվտանգն ։
Իսկ յորժամ առաքինիք իցեն, մնացական վէրն լինի,
անվախճան մեզ յիշատակն և անմխիթարելի չարն.
քանզի կրկին են խայթոցք, մին 'ի բնութենէն և միւսն
յառաքինութենէ գնացելոցն ։ Եւ զի առաքինիք էին՝
յայտ անտի էր, զի յոլովք նոցա առնէր խնամակալու-
թիւն հայրն, յարաժամ ընծայէր յաղագս նոցա, եր-
կնչելով վասն անյայտ մեղանաց. և քան զայս ոչ ինչ
էր նմա պատուականագոյն ։ Այս ոչ միայն զմանկանց
զառաքինութիւն ցուցանէ, այլ և զհօրն սիրելութիւն ։
Զի յորժամ հայր էր և այնպէս բարեգութ, որ ոչ
զբնութեանն սիրելութիւն ևեթ ցուցանէր, այլ և զեր-
կիւղածութեանն, և վախճանեալքն այնքան առաքինիք,
երեքպատիկ լինէր տրտմութեանն բորբոքումն ։ Դար-

ձեւալ յորժամ ըստ մասին յափշտակիցին, ունի իմն մխ-
թարութիւն ախտն, վասն զի մնացեալքն զգնացելոցն
զտխրութիւնս ծածկեն. իսկ յորժամ բովանդակ պարն
երթայցէ, յո՞ր կարասցէ հայել. բազմորդին յանկար-
ծակի անորդի եղև :

Զկնի այսորիկ է տեսանել դարձեալ և զհինգերորդ
վէրն : Զո՞ր. յանկարծակի զյափշտակումն զամենեցուն.
քանզի եթէ յերկս աւուրս կամ 'ի հինգ՝ զգնացեալսն
կանայք և որք միանգամ յանկագոյնք են՝ ամենեքեան
զայն յաւէտ քան զամենայն ողբան, զի ձեպով և յան-
կարծակի յափշտակեցան 'ի նոցա դիմաց վախճանեալ-
քըն, ևս առաւել արդեօք նա վշտանայր, զի ոչ յերկս
կամ յերկուս աւուրս և կամ 'ի միում զրկեցաւ : Վասն
զի ժամանակաւ կրթեալ դժնդակութիւնն, թէպէտ
և ծանրըմբերելի է, վստահութեամբն թեթև լինի և
դիւրագոյն. իսկ անյուսալի պատահումն, թէպէտ և
թեթև, անյուսութեամբն և յանկարծակի դիպուածովն
անըմբերելի լինի : Արդ յորժամ և ըստ ինքեան դժըն-
դակագոյն իցէ և առանց կասկածանաց պատահիցի՝ յա-
ւելուածս առնու 'ի նմա, զիա՞րդ անըմբերելի լինէր և
ըստ ամենայն բան գեր 'ի վերոյ անցանէր :

Կամիս և զվեցերորդ հարուածն լսել. 'ի նմին իսկ 'ի
հասակի ծաղկի զամենեսեան կորոյս : Գիտէք իսկ որ-
պէս տարաժամ մահք խածանեն և բազմազան առնեն
զսուգն. բայց անդ ոչ միայն տարաժամ էր, այլ բռնու-
թեամբ. որպէս զի և այս եօթներորդ վէր է լեալ : Վասն
զի ոչ եռեւս 'ի վերայ մահճացն վախճանեալս զնոսա և
զրաւեալս, այլ տամբ թաղեալս : Զմտաւ ած ով ոք էր
որ բերէր անդ զհողն կամ 'ի բաց հոլովէր զքարն, և ով
ոք երբեմն որ զանդամս մանկանցն ձգէր, տեսանէր զու-
րումն զձեռն որ զտաշտն ունէր, և զմիւսոյն ևս զաջն 'ի
վերայ պնակին կացեալ, և զնորին մարմնոյն զապակա-
նեալ զկերպարանն, զոսկորսն ջախեալ, զգլուխ խոր-
տակեալ, զաչս անյայտացեալս, զխելապատակն ցնդեալ
և զամենայն կերպարանսն միանգամայն ապականեալ,
և վիրացն զանազանութիւն ոչ թողացուցանէին հօրն
զանձկալւոյն դիմաց զկերպարանս ճանաչել : Եւ ո՞չ
փղձկիք զայս լսելով և արտասուէք :

Զմտաւ ածէք ով ոք էր նա որ զայսն տեսանէր.

Digitized by Google

քանզի եթէ մեք յետ այնչափ ժամանակի ոչ կարեմք առանց արտասուաց զողբերգութեանն զայն զլսելութի բերել, և այս զօտարաց զթշուառութիւնս, որպիսի՞ էր անվանելին[1] այն՝ տեսութեամբ անձամբ զամենայն՝ ոչ յօտարս[2], այլ յիւր չարիս իմաստասիրէր: Քանզի ոչ վհատեաց և ոչ ասաց՝ զի՞նչ են այս իրք, ա՞յս են սիրելութեանն իմոյ հատուցմունք. յաղագս ա՞յսորիկ սնաւոյց բանայի զտունս, զի գերեզման զսա մանկանցս լեալ տեսից. ա՞յսր աղագաւ զամենայն զառաքինութիւն ցուցի, զի այսպիսի մահու համբերիցեմք: Բայց ոչ ինչ յայսցանէ ոչ ասաց և ոչ զմտաւ էած, այլ ընդունէր զամենայն առաքինաբար, և զկնի այնքան խնամակալութեան նոցա զրկեալ: Զի զոր օրինակ ոք հմուտ պատկերագործ ոսկեղէն պատկերս ստեղծանելով հանդերձ յոլով հաւաստութեամբ յօրինէ, նոյնպէս և նա բազում հմտութեամբ զնոցա զոգիսն զարդարէր ստեղծանէր և կազմէր: Եւ որպէս մշակ ոք աշխատասէր զտունկ ինչ արմատանեաց և կամ ձիթենեաց ոռոգանելով պարապելով շուրջ ամրացուցանելով ամենայն օրինակաւ խնամակալութեամբ զգուշանայ, նոյնպէս և նա ոչ նուազէր իբրև զձիթենի իմն քաջապտուղ զիւրաքանչիւր ուրուք զոգի առաւել յառաքինութիւն և 'ի զարգացումն աճեցուցանէր: Այլ ետես արմատաքի խլեալ զտունկսն՝ չար այսոյն պատերազմաւ խլեալս և ազորմելի օրինակի վախճանեալն համբերեալս, և ոչ ինչ հայհոյութեան բան բարբառեցաւ, այլ և գոհացաւ ևս՝ տալով սատանայի վէրս:

Եւ եթէ ասիցես եթէ յոլով որդիս ունէր նա, այլ ոք թերևս միածին զոք կորուսանէ՝ և ոչ է հաւասար սուգն, գեղեցիկ ասես, և վկայեմ զի ոչ է զուգահաւասար սուգն, այլ յոյժ առաւել էր Յովբայն: Վասն զի ո՞ր շահ նմա 'ի բազմամարդութենէն. հզօրագոյն ևս նմա զթշուառութիւնն արար և զառն զցաւսն, 'ի յոլով մարմինս զվէրսն ընդունելով:

Եւ եթէ կամիս զմիւս ևս իմն տեսանել զայրն, որ միածին ունէր որդի և զնոյն և կամ յոլովագոյն ես ա-

1 Իմա ադամանդեայ :

2 Պակասէր յօրինակին ոչ յօտարս . յաւելաւ 'ի յունէն :

րութիւն եցոյց, յիշեա զՀայրապետն Աբրահամ` որ ոչ ետես զԻսահակ մեռեալ, այլ յաւէտ զառնագոյն և վտանգաւոր` ինքն զնա խողխողել հրամայեցաւ. և ոչ ընդդէմ եկաց հրամանին, ոչ դժուարեցաւ և ոչ խօսեցաւ այսպիսի ինչ՝ յաղագս այսորիկ հայր արարեր, զի մանկատպան գործիցես. լաւագոյն ոչ իսկ տալ 'ի սկըզբանն` քան եթէ տալով այս օրինակաւ. դարձեալ զսա 'ի բաց բառնալով ախորժես առնուլ, ընդէ՞ր ինձ հրամայես խողխողել և զաջս պղծել զիմ. ո՞չ յայս մանկանէ զաշխարհս ամենայն լցուցանել զարմիւքն խոստացար. զիա՞րդ զպտուղն տայցես զարմատն խլելով, կամ ո՞րպէս զաւակ խոստանայ` զորդիս սպանանել հրամայելով. ո՞ զայս ետես, ո՞ լուաւ. պատրեցայ և խաբեցայ:

Այլ ոչ ինչ յայսցանէ ոչ ասաց և ոչ զմտաւ էած և ոչ ընդդիմացաւ հրամանին. ոչ պահանջեաց համարս, այլ լռելով "Առ զորդիդ քո զսիրելի զոր սիրեցեր զԻսահակ, և հանցես զդա ինձ ողջակէզ 'ի վերայ միոյ լերանց զոր քեզ ասացից", հանդերձ այնքան յօժարութեամբ զհրամանն կատարէր, մինչ զի առաւել ևս քան զհրամայեալն առնէր: Քանզի և 'ի կնոջէն ծածկեաց, և զծառայս զանխուլ 'ի խոնարհ մնացեալ թողոյր, և միայն զընծայն առնլով ելանէր 'ի վեր. այնպէս ոչ ակամայ, այլ հանդերձ յօժարամտութեամբ զհրամայեալն գործէր:

Օ մտաւ ած որպիսի ոք էր, միայն ընդ միայնում խօսելով ընդ մանկանն` ոչ ուրուք մերձ եղելոյ, յորժամ յաւէտ զութքն ջեռնուին և սաստկագոյն սիրելութիւն լինէր, և այս ոչ 'ի միում և կամ յերկուս, այլ 'ի բազում աւուրս: Վասն զի եթէ ճեպով առնէր զհրամայեալն, հրաշալի և մեծ, և սակայն ոչ այնքան սքանչելի. որպէս յետ բազում աւուրց տանջեցեալ 'ի նա հոգին և կրթեալ, ոչ ինչ մարդկային ախտանալով առ մանուկն: Յաղագս այնորիկ և երկայնագոյն նմա զհանդիսարանն եդ ած և զասպարէզն յերկարեաց, զի հաւաստագոյն տեսցես զըմբիշն. վասն զի և էր իսկ ճըշմարտապէս մարտիկ, ոչ ընդ մարդկան մրցելով, այլ ընդ նմին իսկ ուժոյն բնութեանն:

Որ բան մերձ կացուցանել կարասցէ զզօրութիւնն. կապեաց զմանուկն և 'ի վերայ շերտիցն եդ, զսուրն էառ

և 'ի վերայ ածել զվէմն համբերձեալ էր։ Ո՜ խորհուրդ, ասա ինձ, և կամ որո՞վ օրինակաւ, ոչ ունիմ ասել. Ինքն միայն գիտէ որ զայն գործեաց. քան և ոչ մի յանդիմանն կացուցանել կարասցէ՝ զիարդ ոչ ընդարմացաւ ձեռն, զիարդ ոչ լքաւ ջլացն պնդութիւնն, որպէս ոչ ամբոխեցին զնա տենչալի մանկանն դէմք։ Արժան է առտանօր հիանալ և ընդ Իսահակայ. զի որպէս նա էր, նոյնպէս և սա հաւանէր հօրն. կապեալ և 'ի վէր հանեալ 'ի սեղանն, և ոչ ասաց ընդէ՞ր զայս առնես. այլ 'ի ներքոյ անկեալ կայր հայրենի ձեռինն։

Այլ էր միանգամայն տեսանել հայր և քահանայն զնոյն լեալ, և զոհ առանց արեան պատարագէր, ողջակէզ առանց հրոյ, մահու և յարութեան օրինակ 'ի վերայ սեղանոյն լինէր։ Վասն զի եղեն զորդին և ոչ եզեն. ոչ եսպան ձեռամբ, այլ եսպան յօժարութեամբ. զի Աստուած յաղագս այնորիկ հրամայեաց՝ ոչ արիւն ախորժելով տեսանել, այլ յօժարամտութիւն քեզ ցուցանել, և զնահատակն զայն 'ի մէջ ամենայն աշխարհի քարոզել, և խրատել զամենեսեան՝ որք զկնի այնորիկ Թէ և քան զմանկունս և զընութիւնս և զգոյս և քան զնոյն ինքն զանձն զԱստուծոյ հրամանին նախապատուել է պարտ և արժան։ Իջանէր 'ի խոնարհ կենդանի առնլով վկայ զԻսահակ։

Ո՞ր ընկալցուք Թողութիւն, ասա ինձ, որպիսի՞ պատասխանիս, եթէ առաքինիքն այնքիկ համբերձ այսպիսի յօժարամտութեամբ Աստուծոյ հաւանելին և յամենայնի նմա անսայլին, մեք դժուարիցեմք։ Քանզի մի ինձ զառագն ասէր և մի զանըմբերելի Թշուառութիւն. այլ զայն ինձ դիտեա, զի Թէպէտ և դժնդակագոյն էր, այլ գէր 'ի վերոյ եղև։ Նուաղեան էր հրամայեալն տագնապեցուցանել զնոցա զխորհուրդսն, 'ի տարակուսանս արկանել, զհաւատն գողանալ որ յանցեալսն էր։ Քանզի ծիլ ոք 'ի բազմաց ոչ արդեօք խաբէութիւն կարծէր զաւացեալսն՝ զոր յաղագս բազմութեանն նորա զաւակին խոստացաւ. այլ ոչ Աբրահամ։

Նոյնպէս և ընդ Յովբայ 'ի վերայ Թշուառութեացն իմաստասիրութիւնն ոչ ինչ նուազ յաղագս այնոցիկ ընդդիմամարտեալ պարտ և արժան է. զի յետ այնքան առաքինութեանցն, զկնի բարեմտութեանն, յետ ողոր-

Digitized by Google

մութեանն և մարդասիրութեանն, յետ ոչ ինչ զինքեան և ոչ զմանկանցն խիղճ չար գիտելոյ՝ այնպիսի սուգ ետես, այնպէս և նոր հրաշափառագոյն, և ոչ ինչ թշնամանաբար յանդգնեցաւ, ոչ ախտացաւ որպէս յոլովք, և ոչ անմտութիւն վարկաւ զառաքինութիւնն, ոչ չարաչար խորհեալ յանցեալ ժամանակի: Որպէս և յաղագս երկոցուն այսոցիկ մանաւանդ ընդ նոսա է պարտ զարմանալ զի ժուժկալեցին 'ի տրտմութիւնսն, և 'ի բարեպաշտութիւնսն ոչ ինչ վնասեցան: Բայց ոչ հրաշանալ ևեթ արժան է, այլ և նախանձել և նմանել առաքինութեանն: Եւ մի ոք ասասցէ՝ եթէ նոքա զարմանալիք ումանք էին: Սքանչելիք էին և մեծք. բայց մեք ևս առաւել քան զնոսա պահանջիմք իմաստասիրել որք 'ի հնումն հրահանգեցան ամենեքեան. քանզի "Եթէ ոչ առաւելուցու արդարութիւնն ձեր, ասէ, յոլովագոյն քան զդպրացն և զփարիսեցւոցն, ոչ մտանէք յարքայութիւնն երկնից":

Արդ ամենայն ուստեք ողջախոհացեալք, զայս հաւաքելով և որ յաղագս յարութեանն ձեզ ասացաւ և վասն որոցն այսոցիկ, յաճախապէս երգեսցուք յանձինս մեր, ոչ միայն 'ի ժամանակի սգոյն, այլ և յորժամ մաքուր պահիցեմք 'ի վշտացն: Յաղագս այսորիկ թէպէտ և ոչ ինչ էաք 'ի տրտմութեան, այժմ զայս բանս շարադրեցի. զի յորժամ անկանիցիմք յայնպիսի ինչ թշուառութիւն, յիշելով զասացեալս՝ բաւականապէս վայելեսցուք 'ի մխիթարութիւնն: Քանզի և զինուորք 'ի խաղաղութեան զպատերազմականացն իրս կրթին. զի յորժամ մարտն 'ի վերայ գայցէ և ժամանակն զհմտութիւնն պահանջիցէ, 'ի դէպ ժամու ցուցցեն զարուեստն զոր 'ի խաղաղութեան յարմարեցին:

Եւ մեք այսուհետև կառս և զէնս պատրաստեսցուք մեզ 'ի ժամանակի խաղաղութեան. զի եթէ երբէք պատերազմն 'ի վերայ հասցէ անբան ախտիցն կամ սգոյ կամ վտանգի կամ այլոյ իրիք նոյնպիսւոյ, զինեալք գեղեցկապէս և վառեալք ամենայն ուստեք՝ զչարին ըղմարտն հանդերձ յոլով հմտութեամբ 'ի բաց մղեսցուք. ուղիղ խորհրդովք, հրամանօք այ և օրինակօք բարեաց արանցն, և ամենայն օրինակաւ ամենայն ուստեք զմեզ պարսպեսցուք: Քանզի այնպէս կարասցուք և զմերձա

մի ժամանակեան տկարագոյն ևս քան զափղխոստայն անկեալ խախտէր, և ամենայն միանգամայն եղծանէր. դողումն և դղրդումն քաղաքիս, և ամենայն ուրուք զոտս արձակեալ՝ յեկեղեցիս փախստական լինէին: Իմացայք, զի թէ կամ լեալ էր այ զամենայն տապալել, զի՞ գործէաք արդեօք: Զայս ասեմ զի անձանձրոյթս և առանց հեղգանալոյ զձեր զմիտս հաստատեցից: Զի ած յառաջագոյն կանխեաց զշարժումնն, զի երկիւղիւն զամենայն ուրուք զմիտս հաստատեսցէ: Շարժեալ դղրդեաց, այլ ոչ կործանեաց. զի եթէ կամեցեալ էր գլորել, ոչ շարժէր. այլ քանզի ոչ կամէր, յառաջեցաւ իբրև քարոզիչ դղրդումնն առ 'ի պատմել ամենեցուն զբարկութիւնն, զի ահիւն և երկիւղիւն լաւագոյնք լիցուք, մերժեալ ընկեսցուք 'ի մէնջ գործոց իրօք զպատիժս պատուհասիցն:

Այնպէս և զբարբարոսական[1] ազգայն արար. "Երեք ևս աւուրք և Նինուէ կործանեսցի,,: Եւ ընդէ՞ր յառաջագոյն պատմես. քանզի ոչ կամիմ կործանել, ասէ: Եւ զի՞ ասես. զի մի՛ առնիցեմ զոր ասեմն: Յառաջագոյն գուշակ լիցի բանն, զի կարճեսցէ զգործն: "Երեք ևս աւուրք, ասէ, և Նինուէ կործանեսցի,,: Յայնժամ մարգարէն, և այժմ որմքս բարբառին[2] և աղաղակեն: Զայս ասեմ և յանելոյ ոչ դադարեցից առ աղքատս և առ մեծատունս. 'ի միտ առէք եթէ որպիսի՛ է բարկութիւնն այ, և կամ որպէս նմա ամենայն ինչ հնարաւոր և դիւրին է, և կարճեսցուք զմեզ երբեմն 'ի չար գործոցն: Շարժումնն 'ի վայրկեան ժամանակին ժամուն յահէ երկիւղին իւրաքանչիւր այր 'ի մտաց անկեալ լուծանէր, և զթոյս[3] սրտին շարժեալ տատանէր:

Իմացարուք և զմտաւ ածէք զահագին զօրն զայն, ոչ եթէ փոքրժամանակեան ինչ, այլ գետք հրեղէնք յորձեռանդք, սպառնմունքն բարկութեան, և բռնութիւն դատաստանին և ահաւոր բեմբն և անաչառ դատաստանն, և ամենայն ուրուք իւրաքանչիւր գործքն առաջի աչաց իւրոց կարգեալ կայցեն և ոչ ոք իցէ որ օգնեսցէ,

1 Ի մէջ օրինակաց երկուքն առ-բարբարոսական ազգին:

2 Օրինակ մի բաղբաղին:

3 Ցոյնն ըմբռնաց:

ոչ դրացի և ոչ մերձաւոր, ոչ ազգական և ոչ եղբայր, ոչ հայր և ոչ մայր, ոչ օտար և ոչ այլ ոք ուրեք, զի՞նչ արասցուք յայնժամ, ասա ինձ: Յաճախեցուցանեմ զահն, զի պատրաստեցից զփրկութիւնն. հատու քան զամենայն սուր երկսայրի յօրինեմ զվարդապետութիս, զի եթէ ոք 'ի մէնջ խղխայթեալ վէրս ունիցի՝ բժշկեսցի։

Ո՞չ հանապազ ասէի և այժմ ասեմ, մինչև ցայն ժամն լերուք անձանձրոյթք, և բևեռեցէք զձեզ ընդ երկիւղն: Յամենեսեան ասեմ, աւելի ևս հիւանդաց և աշխատելոց, և որքդ ոչ կամիք ունկնդիր լինել բանիս վարդապետութեան. մանաւանդ զի յերկուց կողմանց օգտակար է բանս, հիւանդին զի առողջասցի, և առողջին զի անցաւ մնասցէ: Մի՞նչև յե՞րբ ինչս ստացուածոց, մինչև յե՞րբ մեծութիւն, մինչև յե՞րբ անբարտաւանութիւք մեծամեծ շինուածոց, մինչև յե՞րբ տառապումն վասն անշնչական հիւթին: Ահա եկն եհաս շարժումն և դղրդումն, զի՞նչ օգտեցաւ մեծութի՞ն կամ վաստակք. երկոքեան անկեալ քակին, ստացողն ստացուածովքն հանդերձ կորնչէր, ապարանքն շինողաւն իւրով. հասարակաց գերեզման լինէր քաղաքս, գերեզման յանկարծակի, ոչ ձեռակերտ արուեստականաց, այլ օրհասականն պատրաստութիւն: Ո՞ւր են մեծութիւնքն կամ յափշտակութիւնքն, ո՞ւր են ագահութիւնքն. տեսանես զի քան զսարդխոստայն տկարագոյն ևս եղեն և մեղկագոյն:

Այլ ասիցէ ոմն, թէ զի՞նչ շահիցիս որ ասեսդ: Շահիմ թէ լուիցէ ոք, ես զիմն արարից. զի որ սերմանահանն է՝ սերմանէ: Ել, ասէ, սերմանահանն սերմանել, և ոմն անկաւ առ ճանապարհաւն, և ոմն անկաւ 'ի վերայ վիմի, և ոմն 'ի մէջ փշոցն, և ոմն յերկիր պարարտ. երրորդ մասն կորեաւ, և մի մասն ապրեցաւ: Եւ իբր կորեաւ արդեօք երրորդ մասն, վասն այնորիկ հրաժարեսցէ՞ յանդոյն. այլ քանզի մի մասն ապրեցաւ, ոչ դադարեաց 'ի մշակութենէն: Եւ այժմ անհնար է 'ի մէջ այսչափ բազմութեան սերմն այսպիսի սերմանել՝ թէ չբերիցէ զպտուղն և հատուցանիցէ զարմտիսն. զի թէպէտ մի և կամ ամենեքին չլսիցեն, սակայն կէս մի. թէպէտ և կէս մի ոչ, երրորդ մասն մի. թէպէտ և երրորդ մասն մի ոչ, գէթ տասներորդն, գոնեայ և մի

Digitized by Google

որ 'ի բազմութեն աստի լուիցէ . ոչ է փոքր և մի ոչխար ապրեցուցանել . քանզի և բարուք հովիւն այն զիննսուն և զինն ոչխարսն թողեալ՝ առ մի մոլորեալն ընթանայր ։

Ոչ անփոյթ առնեմ վասն միոյ մարդոյ, զի յարգական և կենդանական մարդն այ թէպէտ և ծառայ իցէ՝ չէ արհամարհելի . ոչ եթէ պատիւ ինչ խնդրէ, այլ առաքինութիւն . ոչ զծառայութիւն և ոչ զազատութի՛, այլ զանձն սուրբ ։ Մի՛ ասիցես եթէ մին մարդ է . թէպէտ և մին մարդ իցէ, վասն որոյ երկինք ձգեցան և երկիր հաստատեցաւ, արեգակն ծագեաց և լուսին ընթանայ և օդք սփռեցան և աղբիւրք բղխեցին և ծով ծաւալեցաւ, մարգարէք առաքեցան և օրէնք տուան . և պարտ է և զայս ես ասել ; վասն այնորիկ և միածին որդին այ մարդ եղև . որ տէրն էր՝ սպանաւ և զարիւնն իւր եհեղ վասն մարդոյ, և ես անփոյթ առնիցեմ և արհամարհիցեմ, և զիա՞րդ գտից թողութիւն ։ Ո՞չ լուեցէք թէ ընդ միոյ սամարացւոյ կնոջ այնչափ բանս վարդապետութեան խօսէր Քրիստոս և բիւր բանս ասէր . և ոչ եթէ վասն զի սամարացի էր՝ արհամարհէր, այլ վասն զի հոգևորական գանձ էր՝ ոչ անփոյթ առնէր . և ոչ վասն զի պոռնիկ էր՝ անտես առնէր, այլ վասն զի կամէր կեցուցանել՝ ոչ հեղգայր . հաւատ յոյժ ընդունէր, և վայելէր 'ի խնամսն ։

Ոչ լսեմ զայս յասելոյ, թէպէտ և չիցէ ոք լսող . բժիշկ եմ, դեղ դնեմ բժշկութեան . վարդապետ եմ, ուսուցանել հրամայեցայ . նա և ուրեմն ասէ՝ թէ "Դէտ կացուցի զքեզ 'ի վերայ տանդ Իսրայէլի ". Ոչ ինչ յառաջադէմ լինիցիմ, և զի՞ առ իս . այլ սակայն ինձ վարձք են ։ Իսկ զայս աւելի քան զչափն ասացի . անհնարին է յայսպիսի բազմութեան միջի չգալ ումեք 'ի կարգ ուղղութեան ։

Այլ այն բարուք են անմիտ լսողացն . եթէ լսեմ, ասէ, հանապազ և ոչ առնեմ, զի՞նչ օգուտ է ինձ ։ Թէպէտ և չառնիցես՝ լուր, լուր՝ զի և 'ի լսելոյն ինչ մի յօգուտ լինիցի . թէպէտ և չառնիցես, զբարսն փոխիցես . թէպէտ և չառնիցես, ամաչիցես վասն մեղացն . թէպէտ և չառնիցես՝, զանձն դատապարտիցես . չառնելն այն իսկ է որ զանձնէն դատախազ լինիցիս և խիղճ 'ի մտի դնիցես, ուստի՞ իցէ, ո՞չ պտուղ իմոց բանիցն իցէ ։

Digitized by Google

Յորժամ ասիցես թէ վայ ինձ՝ եղուկ ես, լուայ և չառնեմ, ասելն իսկ վայ ինձ՝ սկիզբն է փրկութեան, և եղուկ ես՝ գլուխ յառաջադիմութեան։ Մեղայ, զղջաց և ապաշխարեա, և լուծեր զմեղսն. «Ասա դու յառաջ զմեղսն քո, զի արդարասցիս»։ Յորժամ տրտմիցիս և սգայցես, գտցես զփրկութիւն, ոչ վասն ծննդական փրկութեանն, այլ վասն տեառնն մարդասիրութեն։ Զի եթէ կայցեն յումեք մեղք, չէ փոքր մխիթարութիւն զղջանալ և յոգւոց հանել։ «Տեսի, ասէ, զի 'ի սուգ եմուտ և տրտմեցաւ, և բժշկեցի զճանապարհս նորա»։ Ո՜վ անչափ մարդասիրութիւն և բարերարութիւն զոր ոչ ոք կարէ մեկնել. տրտմեցաւ, ասէ, և բժշկեցի զճանապարհս նորա։ Եւ զինչ մեծ իցէ զղջանալն. մեծ և ոչ ինչ, այլ ես պատճառս գտի։

Տեսէք որպէս 'ի փոքր ժամանակեան մի զամենեսեան ամփոփեաց և ժողովեաց այսր. հանապազ զերեկն զայն զմտաւ ածէք։ Քանզի բազումք ոմանք այլք վասն շարժմանն երկուցեալք էին, իսկ ես վասն իրաց շարժմանն։ Իմացայ՞ք զոր ասացիս. զի ոմանք զարհուրեալ էին թէ մի երբէք քաղաքս տապալեսցի և մեռանիցիմք. և ես զայս զմտաւ ածէի թէ վայ ինձ՝ տէրն մեր ուրեմն բարկացեալ իցէ։ Ոչ եթէ մեռանելն ինչ չար է, այլ չար այն է զարարիչն բարկացուցանել. քանզի ոչ վասն շարժմանն երկնչէի, այլ վասն իրաց շարժմանն. զի բարուրք շարժմանն՝ բարկութին այս, և ցասման պատճառք՝ մեղքն մեր։ Մի՛ երբէք երկնչիր 'ի տանջանացն, այլ երկիր 'ի մեղացն՝ որ մայրն է տանջանացն։ Շարժի և դողայ քաղաքս, այլ քո միտքդ մի շարժեսցին. քանզի և վասն մարմնական բնութեանս մերում ոչ վասն այնոցիկ որ բժշկինն տխատիմք և դողամք, այլ զայնոսիկ որ զանբժշկական ախտն ախտանան։ Զի որպէս են ցաւք և վէրք, նոյնպէս են և մեղք. և որպէս են հատումն և կտրումն և մեղք, նոյնպէս և տանջանք և հարուածք։

Իմացայ՞ք արդեօք զինչ ասացիս. միտ դիք, զի բանս ճարտարական իմաստութեան կամիմ ուսուցանել ձեզ։ Ընդէ՞ր[1] վասն տանջելոյն սգամք և տխրիմք, և ոչ վասն

1 Այսպէս բառս մեր. օրինակին՝ հատուածոյն յումեքն. իսկ այլք Ընդէր ոչ վասն տանջանացն սգամք և դողդրեմք, այլ վասն յանցանացն։

յանցականացն. զի ոչ այնչափ չար են տանջանքն, որքան չար են մեղքն. զի պատճառք տանջանացն մեղքն են: Զի որպէս եւ նեխեալ ինչ եւ փտեալ եւ հոտեալ վէրք եւ որդնալից թարախով 'ի վերայ մարմնոյ զանկեալ իցէ եւ տարածեալ, եւ նա անհոգ եւ անփոյթ լինիցի վասն խղխայթեալ վիրացն, եւ միւս եւս այլ ընկեր նորին նոյնպէս իցէ, եւ 'ի ձեռաց բժշկաց հոգաբարձութեամբ դարմանեալ այրելով եւ կտրելով եւ չարաչար դեղովք մատուցեալ բժշկիցի, զո՞ 'ի նոցանէ ասաս, ասա ինձ. որ հիւա՞նդն էր եւ առ բժշկութիւնն մերձեցաւ, թէ որ հիւանդն իցէ եւ չլինիցի հուպ առ բժշկութիւնն. ապաքէն որ հիւանդն իցէ եւ չբժշկիցի:

Նոյնօրինակ թուեսցին քեզ եւ երկու մեղաւորք, մինն 'ի պատիժս տանջանաց, եւ միւսն եւս ոչ: Մ՛ի ասիցես երբեք, թէ երանի նմա զի մեծատուն է, զորբս մերկացուցանէ, զայրիս բռնադատէ եւ երբեք ոչ հիւանդանայ, այլ յափշտակութեամբ յառաջադիմի, վայելէ 'ի պատուի, 'ի բազում զօրութեան, ոչ զմարդկան ինչ կիրս կրէ, հիւանդութեանց երբեք զնա չիք նուաճեալ, ընդ երկայնական կեանս մինչեւ ցծերութիւն եկեաց, գունդք որդւոցն շուրջ զնովաւ պատին, ծերութիւն պարարտութեան. զայնպիսին ողբա, զի ախտացաւ եւ չբժշկեցաւ: Որպէս թէ տեսանիցես ջրգողեալ զոք, կամ փայծաղնացաւ չարախտեան այտումն ուռոյց զմարմինն, եւ ոչ ընթացեալ վաղվաղակի առ բժիշկն, այլ ցուրտ ըմպելեօք եւ անդէպ ճաշակօք հանապազօր բազմապատիկ պատրաստեալ սեղան առաջի դնիցէ, յարբեցութեան եւ յանառակութեան սպասաւորեալ, ո՞չ յաճախեալ բազմացուցանիցէ զցաւսն. արդ երանի՞ տայցես այնպիսւոյն, եթէ չուառական համարիցիս: Ապա թէ միւս եւս ընկեր նորա զնոյն ախտս ախտանայցէ, եւ արկեալ զինքն 'ի ձեռս իմաստական բժշկաց եւ ընդունիցի չարաչար դեղս դառնութեան 'ի համբերութիւն ժուժկալութեան, առ ժամ մի յոյժ են ախտ ցաւոցն. բայց ապա զկնի նորին վաղվաղակի ծնանիին զառողջութիւն, եւ ո՞չ զսա երանիցես քան զմիւսն եւս: Այն յայտ իսկ է զի մինն հիւանդանայ եւ չբժշկի, եւ միւսն եւս հիւանդացեալ առողջանայ: Այլ աշխատութիւնք մեծ են, ասէ, 'ի բժշկութենէ անտի. եւ զի՞ առնէ քեզ այն, այլ վախճանն նոցա յօգուտ է:

Digitized by Google

Նոյնպէս և 'ի սմին իսկ աշխարհի 'ի մարմնոց աստի առ զբանն և տար 'ի ցաւսն հոգւոց, դարձեալ միւսանգամ 'ի մեղսն, և 'ի չարաչար դառնադեղ դեղոցն 'ի տանջանսն և 'ի դատաստանն այ. զի որպէս 'ի բժշկելն 'ի դառնադեղսն խարանք և կտրումն մարմնոյն, այսպէս և յայ տանջանքն: Որպէս և հուր բազում անգամ մերձենալովն այրէ և զձորակ ցաւոյն խափանէ, և երկաթ գործւոյն զփուտն և զթարախարգելն պատառէ և սրբէ, և առ ժամ մի վշտանայ ցաւօքն, և ապա յօգուտ և 'ի շահ լինի, նոյնպէս և տանջանքն և խրատ և սով և ախտք և որ ինչ նման նոցին երևին եթէ չար իցեն, փոխանակ երկաթոյն և հրոյն որ հալի յօգխոն՝ զձորակ ցաւոցն արգելցէ և լաւագոյն արասցէ:

Դարձեալ թուեսցին քեզ երկու պոռնիկք և նշանակիցեն բանիւ պատկերակերպ ինչ, մին մեծատուն և միւսն ևս աղքատ, ո՞վ ոք 'ի նոցանէ առաւել ևս յոյս փրկութեան գտանիցէ. յայտ է եթէ աղքատն: Մի այսուհետև ասիցես՝ թէ պոռնկի և մեծանայ, և վասն այնորիկ երանի տայցես նմա. այլ առաւել պարտ է քեզ գովել զայն թէ պոռնկէրն և աղքատանայր. իբր պոռնկէրն և սովէր. ստանայր իւր վարդապետ բռնաւոր զհամբերութիւն աղքատութեան: Յորժամ տեսանիցես զոք չար և անզգամ 'ի բերկրանս առատութեան, լաց և ողբա զայնպիսին. քանզի երկու չարք են՝ ցաւք, և առանց բժշկութեան: Իսկ զչարն 'ի տառապանս և 'ի տրտմութեան, բերկրեաց և մխիթարեաց, ոչ միայն վասն այնր զի լաւագոյն լինիցի, այլ զի զբազում մեղաց իւրոց ըզբեռն աստէն թեթևացուցանէ:

Ունկնդիր լերուք մտադիւրութեամբ բանիս զոր ասեմս. զի են ոմանք 'ի մարդկանէ որ աստ և անդր տանջելոց են. և են ոմանք որ աստ միայն և այլք անդ միայն: Ունկնդիր լերուք վարդապետութեանս և 'ի միտ առցես զբանս, զի բազում օկարութիւնս ախտից մերժեսցես 'ի մտաց քոց: Այլ թէ կամիցիք՝ նախնի ածցուք 'ի մէջ զայն՝ որ անդ միայն տանջիցի և աստ վայելեալ փափկանայցէ: Ունկնդիր լինիցին մեծատունք և աղքատք զոր ասեմս, քանզի երկոցունց յօգուտ է բանս վարդապետութեան: Եւ զի աստ և անդ բազում են որ տանջին, լուր Քրիստոսի որ ասէ՝ եթէ «Յոր քա-

զպէս կամ 'ի տուն մտանիցէք, հարցջիք թէ ով իցէ 'ի նմա արժանի, և անդ մնասջիք մինչև ելանիցէք անտի. և իբրև մտանիցէք 'ի տունն, ողջոյն տայջիք նմա և ասասջիք՝ խաղաղութիւն տանս այսմիկ: Եթէ իցէ տունն արժանի ողջունի, հանգիցէ ողջոյնն ձեր 'ի վերայ նորա. ապա թէ չիցէ արժանի ողջունին, ողջոյնն ձեր առ ձեզ դարձցի: Եւ որ ոչ ընդունիցին զձեզ և ոչ լուիցեն բանից ձերոց, յորժամ ելանիցէք արտաքոյ քաղաքին, թօթափեսջիք զփոշի ոտից ձերոց: Ամէն ասեմ ձեզ, դիւրագոյն լիցի երկրին սոդոմայեցւոց և գոմորացւոց յաւուրն դատաստանին քան քաղաքին այնմիկ»: Յայսմանէ իսկ յայտ է 'ի սոդոմացւոցն և 'ի գոմորացւոցն զի աստ դատեցան և անդ միւսանգամ դատելոց են. զի յորժամ ասէ՝ թէ դիւրագոյն լիցի երկրին սոդոմայեցւոց քան նոցա, յայտ ցուցանէ եթէ տանջին, այլ ոչ այնպէս որպէս նոքա:

Դարձեալ են ոմանք որ աստ միայն տանջին, որպէս որ պոռնկեցաւն. գրէր և առաքէր կորնթացւոցն երանելին Պաւղոս և ասէր այսպէս, թէ «Ամենևին ընդհէր լսի 'ի միջի ձերում պոռնկութիւն, որ ոչ և 'ի հեթանոսս այնպիսի չանուանի, իբրև ոք թէ զկին հօր իւրոյ ունիցի: Եւ դուք հպարտացեալ էք և ոչ լայցէք և սգացարուք, զի բարձցի 'ի միջոյ ձերմէ այն՝ որ զգործն զայն գործեաց: Այլ ես թէպէտ և մարմնով մեկուսի եմ 'ի ձէնջ, սակայն հոգւով մերձ եմ առ ձեզ, զայդ այդպէս դատեցայ որպէս 'ի ձերում միջի, այն որ զայն գործեաց՝ յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ժողովել ձեզ 'ի միասին և իմոյ հոգւոյս ընդ ձեզ՝ զօրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի մատնել զայնպիսին 'ի ձեռս սատանայի, զի ոգին ապրեսցի յաւուր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Ահաւասիկ սա աստ տանջի և անդ չտանջի:

Կամիմ ցուցանել և զայն որ աստ յղփացեալ փափկանայր, և անդ 'ի տանջանս էր: «Այր ոմն, ասէ, մեծատուն»: Թէպէտ և երագմտութեամբ յառաջանայցէք առ 'ի գիտել զպատմութիւնս, մնասջիք և մեկնութեան սորին. զի այս իսկ են ինձ 'ի պարծանս և ձեզ 'ի գովութիւն, զի մինչ չև ճառեալ է զառակն՝ դուք ընթացեալ մտօք՝ բանին հանդիպիք. վարդապետս պատ-

ըստուեաց զձեզ հանապազորդս բանիւն վարդապետու-
թեան. այլ և որ ընդ ձեզ այսր մինչ մնանիցին օտարք
և տգէտք, մի՛ անց և անց առնիցէք զնոքօք, այլ մեղ-
մով անսալ, զի և տխմարքն ևս իմացեալ խրատեսցին:
Քանզի և եկեղեցւոյ անդամք և մարմին են, գլուխ և
ակն և գարշապար ունի: Զի որպէս և 'ի գարշապարին
յանկարծ փուշ ինչ հարկանիցի, ականքն ձգեալ վե-
րուստ 'ի վայր խոնարհեսցին առ անդամս մարմնոյ իւրոյ,
և ոչ ածիցէ զմտաւ՝ որովհետև 'ի բարձրագոյն վայրի
եմ՝ արհամարհեմ զանդամն իմ. այլ խոնարհեալ ձգտի
և թողու զիւր բարձրութեան տեղին: Եւ զի՞նչ իցէ
յանդամոցն այլ ինչ կրտսերագոյն քան զգարշապարն,
և կամ քան զակնն գլխաւորական և պատուական. այլ
հաղորդութիւն անդամոցն զպատուականն առ անարգն
խոնարհեցոյց, և սէրն զամենայն ընդ միմեանս միաբա-
նեցոյց: Նոյնպէս և դու արասջիր. թէպէտ և երագա-
միտ և պատրաստական իցես առ 'ի լսել, թէ չունիցիս
զեղբայրն քո լծակից քեզ առ իմանալ, խոնարհեսցի
ակնն առ գարշապարն, վշտակից լինիցի տկարացեալ ան-
դամոյն իւրոյ, զի մի՛ քոյով երագութեամբն և նորա
մեղմութեամբն կարօտ լինիցի բանիս վարդապետու-
թեան. այլ դու հոգ կալ ոյ, մի՛ քոյով իմաստութեն
նմա կորուստ նիւթիցես: Մեծատո՞ւն իցես, ուրախ եմ
և ցնծամ ընդ այն. այլ միւսն ևս աղքատ է, մի՛ վասն
քո մեծութեանն կացցէ մնասցէ նա յաղքատութեանն.
տգէտ շփոթեալ միտս ունի, այլ խոնարհեաց առ նա և
հան 'ի նմանէ զփուշն անմտութեան:

Եւ ապա զի՞նչ ևս. էր ոմն, ասէ, մեծատուն, և հա-
նապազ ծիրանիս ագանէր, և սեղանն իւր լի էր ամե-
նայն բարեօք, թակոյկք լի գինւով, յուրախութեան
հանապազօր: Եւ այլ միւս ևս աղքատ ոմն, Ղազարոս
անուն էր նորա: Եւ ո՞ւր իցէ անուն մեծատանն. և ոչ
ուրեք չերևի, առանց անուան էր: Որչափ էր մեծու-
թիւնն, և անուն չգոյր իւր. որպիսի՛ իցէ մեծութիւնն
այն. ծառ լի տերևօք և 'ի պտղոյ նուազեալ. կաղնի բարձ-
րաձաղկ աճեցեալ որոյ ոչ գուցէ պտուղ. մարդ էր և
գործն չէր մարդոյ: Զի ուր մեծութիւն և յափշտա-
կութիւն իցէ, գայլ է. էր մեծատունն և գազան, զայն-
պիսին աւիւծ է տեսանել և ոչ մարդ, կորուսեալ զաղ-

տանն և տեսանել զնա ընկեցիկ. զի մի՛ երբէք առել կարիցէ՝ անցի և չտեսին աչք իմ: Յանցս ճանապարհի իւրոյ անկեալ դնէր մարգարիտն 'ի տղմին, և ոչ տեսանէր. բժիշկն առ դուրսն, և ոչ ողջանայր. նաւավարն 'ի նաւահանգստին, և նա ծփալից ընկղմէր. զկատակս բուծանէր, և զաղքատս չկերակրէր: Այլ եղև այս յայնժամ, լինի և ցայս ժամ ես: Վասն այնորիկ իսկ այն գրեցաւ, զի որ վերջինքս իցեն՝ 'ի գրոց անտի խրատեսցին, և մի՛ զայն կիր կրեսցեն զոր նայն կրեաց: Այլ անկեալ կայր առ դրանն աղքատն. աղքատ էր արտաքոյ, այլ մեծատուն էր 'ի ներքոյ. անկեալ դնէր 'ի ցաւս բորոտութեան մարմնոյ. զանձն արտաքոյ կուսէ փուշ ունէր, և 'ի ներքոյ մարգարտով լի: Այլ զինչ վնաս էր նորա 'ի հիւանդութենէ մարմնոյն, իբր ողջ էր հոգւովն:

Լուիցեն զայս աղքատք և մի՛ հաշուեսցին ինչ զաղքատութիւնն իւրեանց. լուիցեն և մեծատունք և փոփոխեսցեն զչար չարութեանն իւրեանց. Վասն այսորիկ նկարեալ են մեզ այս երկու պատկերանկերպք[1] և կան առաջի, մեծութեանն և աղքատութեանն, անողորմութեան և ժուժկալութեան, համբերութեան և ագահութեան: Յորժամ տեսանիցես զաղքատն հիւանդ և արհամարհեալ, մի՛ ատիցես եղուկ զնա. և յորժամ տեսանիցես զմեծատունն զարդարեալ և պանծացեալ, մի՛ տացես նմա երանի, այլ զմիտս առեալ ընթաց յառաջն. Թէ զքեզ 'ի հող արկեալ կշտամբեսցեն խորհուրդք մտաց քոց, ընթաց վազվաղեա հառ 'ի նաւահանգիստն. առ 'ի պատմութենէն մխիթարութիւն. զմտաւ ած զՂազարոսն զարհամարհեալն և զանգանեալն. իմաց զմեծատունն զբարեկեացն և վայելեալ 'ի փափկութեանն, մի՛ ինչ զքեզ աշխատ արասցես՝ որ յաշխարհի ինչ վարք վարես: Ոչ է հաստատուն և ուղիղ միտս ունիցիս, ոչ կարեն զքեզ ընկղմել ալիքն. և զիջանէ յանդունդս նաւն, թէ ընտրեալ որոշեսցես միօք զխրացն բնութիւն: Այլ մի՛ ասիցես եթէ նեղի մարմինս իմ. միտք քո մի՛ նեղեսցին և վնասիցեն: Ասասցես՝ այս ոմն մեծատուն է, անպիտան և չար. և զի՞ փոյթ իցէ քեզ: Ո՛չ արտաքուստ զմարդն, այլ 'ի ներքուստ փոր-

1 Օրինակ մի նկարանկերպք:

ձեա ։ Մի՛ տեսանիցես զծառ, զտերե՛ւն զննիցես, թէ զպտուղն ճաշակիցես. ապաքէն զպտուղն ։ Նոյնպէս և դու զմարդոյ. թէ տեսանիցես զմարդ, մի՛ արտաքոյ, այլ 'ի ներքոյ կողմանէ. զպտուղն ճաշակեսջիր, և մի՛ զտերեւն շօշափիցես՝ մի՛ երբեք վայրենի ձիթենի իցէ, և կարծիցես ընտանի իցէ. մի՛ երբեք գայլ իցէ, և կարծիցես թէ մարդ է ։ Մ՝ի զկերպարանս բնութեանն զննիցես, այլ զկամս բարուցն. մի՛ զդէմս, այլ զբարս. մի՛ ըզբարսն միայն, այլ քննեա և զգործն. թէ աղքատասէր իցէ՝ մարդ է, ապա եթէ 'ի պոռնկութեան բանդագուշեալ թաւալիցի՝ լոկ ծառ անպտուղ. ապա եթէ չարաբարոյ իցէ, առիւծ է գազանամիտ. թէ յափշտակող իցէ, գայլ է. թէ խորամանկ իցէ, իժ է ։ Ասա, թէ ես զմարդ խնդրեմ, և զի՞ ցուցեր ինձ զմարդ գազան ։ Ուսիր թէ զինչ են առաքինութիւնք մարդկան, և մի՛ չփոթիր և սասիր ։

Արդ անկեալ կայր Ղազարոս առ դրանն լի բորոտութեամբ սոխամահ, և շունք գային լիզուին զվէրս նորա ։ Շունքն քան զմարդն մարդասիրագոյն գտանէին, զվէրս նորա լիզուին և զթարախն 'ի բաց սրբէին ։ Նա անկեալ կայր իբրև զոսկի 'ի մէջ հնոցի, զուտ և սրբագոյն եւս լեալ. և ոչ ասէր որպէս բազումք յաղքատաց, ա՞յս տեսչութիւն ա̃յ իցէ, անփոյթ առնէ զմարդկանէ. ես յարդարութեան և աղքատ, և սա 'ի պղծութեան և մեծատուն ։ Ոչ զայսպիսի ինչ զմտաւ ածէր, այլ յա̃յ անչափ մարդասիրութիւնն թողոյր և ընկենոյր զհոգսն և նմա յանձն առնէր զինքն, երկայնամտէր և համբերութեամբ հանդխսէր, անկեալ դնէր մարմնով, և յարուցեալ ընթանայր մտօքն, և թռնոյր և վերանայր կամօք, զնպատակն յափշտակէր, չարեաց և բարեաց վկայն ։ Նա ոչ տանէր և ածէր զմտաւ՝ թէ սեղանաբոյծքն յառատութեան վայելեն, և ես և փշրանացն չլինիմ արժանի ։ Այլ զինչ առնէր. գոհանայր և փառաւորէր զա̃ծ ։

Եղև դէպ, ասէ, մեռանել երկոցունց. մեռաւ մեծատունն և թաղեցաւ. մեռանէր և Ղազարոս, և ոչ ասացից վասն նորա եթէ մեռաւ ։ Քանզի մեծատանն մահն՝ մահ և գերեզման էր. իսկ աղքատին մահն՝ հեռաւոր ուղիք են և լաւագոյն փոփոխումն իմն և 'ի տե-

ղւոյ նահատակութեան առ պարգևամն ընթացք, յանհուն անզնզալից ծովէն 'ի նաւահանգիստն, 'ի նահատակութենէ 'ի յաղթութիւն, 'ի քրտանց 'ի պսակ:

Զոգան երկոքեան անդ ուր Ճշմարիտքն են. քակեցաւ տեսիլն, և երևեցան դիմակք: Ոչ ի որպէս 'ի տեսլեան 'ի հասարակ աւուր վարագոյրք և առագաստք ձգին, և մտանեն 'ի ներքս բազումք և կեղծաւորին դիմակօք և 'ի դէմս իւրեանց երևեցուցանեն զնախնական առասպելսն և պատմեն զիրս հանդիսին. և ոմն լինի փիլիսոփայ, իբրու չիցէ փիլիսոփայ. և միւս ևս թագաւոր, իբրև չիցէ թագաւոր, այլ կերպարանս ունի վասն առ 'ի պատմել զգործ արուեստին. և միւսն ևս բժիշկ, որ և 'ի փայտն անգամ չմարթիցէ ձեռն արկանել, այլ հանդերձ բժշկի արկեալ զիւրև թէ արդարեւ իցէ. մինն ևս ծառայ իցէ, և ազատ երևի. ընկեր նորին վարդապետ, և բնաւ ամենևին զգրութիւն ոչ գիտէ. զի որ ինչ միանգամ կերպարանին, ոչ մի ինչ յայնցանէ Ճշմարիտ երևի, երևեալ բժիշկ՝ իբրու չիցէ, դարձեալ միւսանգամ փիլիսոփոս՝ և ունի հերս վարսալիցս գիսականս, և ցուցանի զինուոր՝ և հանդերձ զինուորի արկեալ զիւրեաւ: Ոչ ի եթէ խաբէ և պատրէ կերպարանակաւ դիմակաւն, այլ ոչ ստէ բնութեանն, քանզի փոխէ զՃշմարտութիւնն: Եւ մինչ շուրջ նստեալ պատեալք զնովաւ 'ի զբօսանս խաղուն՝ կամ 'ի միջի դիմակքն, ապա եթէ երեկն հասանիցէ, լուծցի և փարատեսցի տեսիլն և ամենեքեան հեռացեալ մեկնեսցին, անկանի նմանականն և խափանի դիմակն. և որ 'ի ներքոյ փիլիսոփոսն էր, արտաքոյ գտանի պղնձագործ: Բաւ 'ի բաց դիմակն, մեկնեցաւ խաբէութիւնն և յայտնեցաւ Ճշմարտութիւնն. և գտանի որ 'ի ներքս ազատն էր, արտաքոյ ծառայ. որպէս յառաջագոյն ասացի՝ եթէ 'ի ներքոյ խաբէութիւն էր, և առ 'ի մերձենալ երեկին փարատեցաւ տեսիլն, և իրքն կեղծաւորական ցուցանին մեծութիւն և աղքատութի, իշխան և ընդ իշխանութեամբ և այլ ինչ որ նման սմին: Իսկ ապա յորժամ երևեսցի օրն այն և եկեսցէ գիշերն այն ահագին, մանաւանդ առաւել տիւն, քանզի գիշերն մեղաւորաց է, իսկ տիւն արդարոց, յորժամ անցցեն կերպարանքն կեղծաւորութեան, յայնժամ քննեսցի իւրաքանչիւր ոք և գործքն իւր, և ոչ ոք իցէ և իշխա-

նութիւնն իւր, և ոչ ոք և պատիւն իւր, և ոչ ոք և զօրութիւնն իւր, այլ ինքն միայն և գործքն իւր, և իշխանն և թագաւորն և այրն և կինն, յայնժամ զխարուց համարս խնդրեսցէ 'ի մէնջ ա՟ծ և զգործոց բարեաց, ոչ զառաւել պատիւ և ոչ զաղքատութեան տընանկութիւն, ոչ զարհամարհումն բռնութեան:

Ինձ զգործսն ցոյց, ասէ. թէպէտ և ծառայ իցես, քան զազատն լաւագոյն գտանիցիս. և կամ կին՝ քան զայրն առաքինի: Յորժամ հեռացեալ մերժիցի դիմակն կեղծաւորութեան, յայնժամ յայտնեսցի մեծատունն և աղքատն: Եւ որպէս աստ յորժամ քակեալ մեկնեսցի տեսիլ բազմութեան ռամկին, և ոք 'ի մէնջ որ անդ նստէր՝ տեսանիցէ որ 'ի ներքս փիլիսոփան էր՝ արտաքոյ պղնձագործ և զարբին, զարմանայ և ասէ՝ թէ ո՞չ սա էր որ 'ի ներքս փիլիսոփան էր, և արտաքոյ տեսանեմ զարբին. ո՞չ սա 'ի ներքս թագաւոր էր, և արտաքոյ տեսանեմ իբրև զանարգ ոք. ո՞չ սա 'ի ներքս մեծատուն էր, և արտաքոյ աղքատ գտաւ: Սոյնպէս և անդ լինելոց է:

Վասն այնորիկ ոչ յերկարեմ զբանս, զի մի վարատեցից զմիտս լսողին բազմութեամբ պատմութեանցս. այլ յերկուս դէմս զտեսիլ կեղծաւորութեան ցուցանել կամիմ, երկուս դէմս եդեալ առաջի. և երկոքումբք առաջնորդեմ ձեզ առ Ճանապարհն և առ 'ի տալ պատճառս գիտակ լինելոյ. ընդարձակեցից զձեր միտս առ 'ի պատմել զմտաւորականսս, զի իւրաքանչիւր ոք ամենայն գիտասցէ զլաւութիւն իրացն:

Արդ երկու դէմք կերպարանաց էին այս, մինն ունէր զմեծատանն, և միւսն ևս զաղքատին. Ղազարուն էին դէմք աղքատին, և մեծատանն դէմք մեծատանց: Դէմք էին որ երևէին և ոչ ճշմարտութի՟ իրացն: Չոգան երկոքեին անդր մեծատունն և աղքատն: Առեալ ընդունէին զՂազարոս հրեշտակք. յետ շանցն հրեշտակք, յետ առ դրան մեծատանն գոգն Աբրահամու, յետ սովոյն լիութիւն անվախճան, յետ նեղութեանցն անդորրութիւնք անչափք: Եւ նմա զհետ մեծութե՟ն աղքատութիւն, զհետ լիութեան սեղանոյն նեղութիւն և տանջանք, զհետ ընդարձակութեանն վիշտ և ցաւք անժուժկալութեան: Եւ տես զինչ եղեն. չոգան անդր

երկրըեան, և լուծեալ քակտեցաւ ատեանն և յայտնե-ցան դիմակք և երևեցան այնուհետև երեսք ճշմար-տութեան:

Այլ ահաւոր զերկուսեանն, զմեծատունն 'ի տապ տա-պակի, և զՂազարոս 'ի գոգն Աբրահամու. բարեկեացն յղփացեալ փափկութեամբն ասէր ցնախահայրն Աբ-րահամ. ՙՙՈղորմեա ինձ, առաքեա զՂազարոս, զի թացցէ զմատն իւր և անցցէ զշրթամբք իմովք, զի տա-պակեալ այրիմ 'ի տապ տապակիս,,: Այլ զինչ ետ նմա Աբրահամ պատասխանի. ՙՙՈրդեակ, ասէ, դու ընկա-լար զբարիս 'ի կեանս քո, և Ղազարոս զչարիս իւր. և արդ սա աստ մխիթարի, և դու այդր տապակիս: Նայց ապա և վիհ մեծ է ընդ մեզ և ընդ ձեզ. թէպէտ և աստի ոք կամիցի առ ձեզ գալ՝ ոչ կարէ, և ոչ այտի ոք՝ թէ այսր կամիցի անցանել,,: Հայեցարուք և ունկնդիր լերուք, յօդուած է ձեզ բանս այս. զի թէպէտ և ահ յայժ արկանէ, այլ առաւել ևս օրհնէ և մեկնէ 'ի չա-ւոց. պատրաստեաց և լուր որ ասիս:

Այլ 'ի տանջանան մեծատունն; և հայեցեալ տեսա-նէր զՂազարոս. զարմանք էին իրքն: Նա զդրանն քում կայր ընկեցեալ հանապազօր, երկիցս և երիցս մտանէիր և ելանէիր և զնա ոչ տեսանէիր. և արդ յորժամ 'ի տապ տապակիդ ես, 'ի հեռաստանէ՞ տեսանես: Յոր-ժամ 'ի մեծութիւնն յղփացեալն էիր, յորժամ 'ի կամս էր տեսանելն՝ ոչ յօժարէիր տեսանել զնա, և արդ ընդէ՞ր այդչափ սրակն իցես. Ո՞չ առ դրանն քում կայր, որպէս զնա մօտ առ քեզ չտեսանէիր, և այսօր 'ի հեռաստանէ տեսանես, և միւս ևս այլ՝ զի վիհ մեծ ընդ մէջ է: Այլ զինչ ասէր ցնա. Թէ ՙՙՀայր Աբրահամ, ողորմեաց ինձ,,: Օ՜ն կոչես զնա հայր, որոյ ոչ նմանե-ցեր մարդասիրութեանն: Նա հայր կոչէր, և սա որ-դեակ յորջորջէր. յորջորջմունքն ազգականութեան էին, և օգնականութիւն ոչ ուրեք:

Այլ վասն այնորիկ իսկ ասէ զանունն, զի ուսցես ե-թէ ազգ և տոհմ ինչ ոչ օգնէ և ոչ ազատութիւն լա-ւութեան, ոչ նահապետացն քաջութիւնք, այլ բա-րուցն առաքինութիւնք: Մ՛ի ասեր ինձ՝ թէ հայր ու-նիմ հիւպատոս. զՊաւղոս առաքեալն թէ ունիցիս հայր և եղբայրս զմարտիրոսս, և եթէ դու չնմանիցես ինչ նո-

ցս վարուցն՝ ոչ ինչ լինի քեզ յօգուտ տոհմայինն ա-
նուանել, այլ առաւել վնաս և պարտաւորէ։ Այր
իմ, ասէ, ողորմած է։ Եւ քեզ զի՞նչ օգուտ իցէ անո-
ղորմածիդ. զի նորա մարդասիրութիւնն յաւելուած
դատապարտութեանց քոց չար բարուցդ լինիցին։ Զի՞նչ
ասէր Յովհաննէս մկրտիչն ցժողովուրդն Հրէից. "Ա-
րարէք պտուղ արժանի ապաշխարութեան. մի՛ ասիցէք
եթէ ունիմք հայր զԱբրահամ,,։ Ընտիր ունիս զնա-
հապետն. թէ նախանձեցար ընդ նմա՝ օգտեցար. ապա
թէ ոչ՝ դատապարտ քո լինին առաքինութիւնքն նորա,
զի 'ի քաղցր արմատոյ պտուղ դառն բերես։ Մի՛ եր-
բէք երանի տար առն՝ որ ունիցի ազգական արդար և
սուրբ, թէ ոչ իցէ նմանող նմա. և մի՛ երբէք թշնամա-
նիցես զմարդ՝ որոյ լեալ իցէ ազգն իւր անպիտան։ Ե-
թէ ունիցիս մայր սուրբ, չէ ինչ քեզ յօգուտ. նոյնպէս
և մայր անպիտան և յոռի չէ ինչ վնաս. զի որպէս նո-
րա առաքինութիւնքն չլինին ինչ քեզ յօգուտ՝ եթէ
ոչ նմանող նմին լինիցիս, նոյնպէս և չարութիւնք ան-
պիտանութեան չվնասիցեն ինչ զքեզ՝ թէ փոխիցես ըզ-
գործս չարութեան. այլ որպէս անդ մեծ է պատիժ
պատուհասին, զի յինքեանց ունին զառակ օրինակին և
ոչ եղեն համեմատք քաջութեանց առաքինութեանն,
նոյնպէս և աստ առաւելագոյն են գովութիւնքն, քան-
զի մայր ունէր պոռնիկ և ոչ նմանեաց պոռնկութեան
նորա, այլ 'ի դառն արմատոյ երևեցաւ պտուղ քաղցր։
Վասնզի ոչ նախահայեացն ինչ անուն քաջութեան օգ-
նէ, այլ բարքն լաւութեան խնդրին։ Ես զծառայն ազատ
կոչեմ, և տէր՝ որ 'ի նեղութեան վտանգին իցէ՝ թէ տե-
սից զուղիղ և զբարի զգործս նորա. ինձ և որ 'ի պա-
տուի փառացն են՝ անազատ երևին, թէ ծառայամիտք
իցեն։ Ո՞վ է ծառայ, թէ ոչ որ մեղս գործէ։ Զի այլ
ծառայութիւնք 'ի դիպական իրաց են, իսկ այս ծառայու-
թիւն ընտրական կամաց. քանզի և ծառայութիւն իսկ
'ի սկզբանէ աստի եմուտ։

Ոչ ոք է ծառայ 'ի նախնմէն. քանզի ած յորժամ
ստեղծ զմարդն, ոչ արար ծառայ և ազատ։ Այլ զԱ-
դամ միայն և զԵւա և զերկոսեան ազատս ստեղծ. և
ուստի իցէ ծառայութիւն։ Անց զչափ օրինացն, խոտո-
րեցաւ 'ի կարգէ բնութեան ազգ մարդկան, և գնաց ըզ-

հետ ցանկութեան և յաճախեաց 'ի գինջութիւնս : Եւ ած զջրհեղեղն՝ զհամաշխարհական բնութեանս մերոյ ընկղմումն, սահանք բացան և անդունդք բղխեցին, և ամենայն ինչ էր ջուր համատարած. և որ ինչ միանգամ էր 'ի վերայ երկրի, եղծանէր և ապականէր, երկիրս լինէր աներևոյթ. անդունդք անհուն 'ի ցասմանէ բարկութեանն Տն. և ամենայն ուրեք էին ալիք և սահանք, և լերինք և բարձունք և բարձրաւանդակք, այլ խորք ծածկէին զնոսա, երևէին անդունդք, և երկիր ամենայն սատակէր և կորուսանէր զազգն առհասարակ, և մնայր և ապրէր միայն իբրև զկայծակն մի՛ Նոյ յաղգես մեռմէ, կայծակն 'ի մէջ անդնդոց և ոչ շիջանէր, պտուղ մնայր յաղգես մեռմէ ինքն, կինն և որդիք իւր, և առնոյր ընդ իւր աղաւնիս և ագռաւս, գազանս, սողունս, թռչունս և որ այլ ինչ և յամենայն ազգաց մըտանէր 'ի ներքս, և բարձրացեալ վերանայր տապանն 'ի մէջ ալեացն կուտակելոց և ոչ ընկղմէր, քանզի ունէր նաւավար և ճարտարապետ զարարիչ և զկազմիչ իւր. զի ոչ եթէ տախտակամած տապանն պահէր զնոսա, այլ աջն Տն հզօր և սաստիկ և աներևոյթ :

Եւ տես զքանչելիսն Տն. յորժամ հեղեղատեցաւ երկիր և յորժամ սատակեցան չարագործքն և յորժամ հանդարտեցան վիշապքն, յայտնեցան գլուխք լերանց, էջ զետեղեցաւ տապանն, առաքէր զաղաւնին : Խորհուրդ էր գործն առ 'ի յապայ լինելոց օրինակ. եկեղեցւոյ օրինակ էր տապանն, և Նոյ Քրիստոսի, և աղաւնին սուրբ հոգւոյն, տերև ձիթենւոյն մարդասիրութեն Տն : Ընտանի ընդակեաց հաւն առաքէր, ելանէր գնայր 'ի տապանէն, այլ նա օրինակ էր, բայց սա ճշմարտութիւն : Զի որպէս տապանն 'ի մէջ խորոց անդնդոցն ապրեցուցանէր զորս ունէրն, նոյնպէս և եկեղեցի փրկէ զմոլորեալս ամենայն. քանզի տապանն զոր ընկալաւն՝ միայն ապրեցոյց, իսկ եկեղեցի աւելի ինչ գործէ և յաճախ յօրինէ : Տես զոր ասեմ. առ տապանն անասունս և պահեաց նոյնպէս անասունս. առնու եկեղեցի մարդս անասունս, և ոչ միայն պահէ և ապրեցուցանէ, այլ և փոխէ ևս 'ի գործս բարիս : Ընկալաւ տապանն ագռաւ, և արձակեաց նոյնպէս ագռաւ. առնու եկեղեցի ագռաւ, և արձակէ աղաւնի. առնու եկեղեցի գայլ, և արձա-

կէ[1] ոչխար։ Զի յորժամ գայցէ մտանիցէ այր մարդ յափշտակող կամ ագահ, և լնիցէ ձեռական և վարդապետական բարբառոյն, փոխէ զբարսն և փոխանակ գայլոյն ոչխար լինի. քանզի գայլն զայլս յափշտակէ, իսկ ոչխարն և զիւր ևս ասրն ընծայեցուցանէ։

Աչ ցածեաւ տապանն և բացան պատուհանքն. ելանէր Նոյ արտաքս ապրեալ 'ի հեղձական ալեացն, տեսանէր զերկիր քանդեալ և աւերեալ, տեսանէր զգերեզմանն պատրաստական, զսիկն, զտիղմն, զշիրիմն և զգիրս[2] մարդկան անդամակոյտ անկելոցն խառն և շփոթ ամենայնն, մարդոյ, ձիոյ և անասնոյ թաղեալ և ընկղմեալ զամենեսեան։ Տեսանէր զաղբն, տեսանէր զերկիր լի դառնութեամբ, հաշէր և մաշէր 'ի տրտմութենէն, ամենայն որ եղծեալ կորուսեալ, ոչ մարդ, ոչ ձի և ոչ այլ ինչ յանասնոց, բայց զերկինս և զերկիր տեսանէր միայն, 'ի տրտմութեան ըմբռնէր և պաշարեալ նեղէր 'ի վշտացն. ըմպէր գինի և անկանէր 'ի բուռն քնոյ, ըմպէր զի մոռասցի զցաւս տրտմութեան։ Այլ 'ի յորսայս 'ի վերայ ընկողնոյն, իբրև բժշկի զինքն 'ի ձեռս քնոյ մատնէր, զի մոռասցի զթախիծ տեսլեան. որում պարտ իսկ էր լինել, որում դուք իսկ հմուտ էք առն ծերոյ և արբեալ 'ի գինւոյ և ծանրացեալ 'ի քնոյ։ Պարտ է մեզ վասն արդարոյն ջատագովել՝ թէ ոչ էր այն անառակութիւն արբեցութեան և ոչ ախտ ցանկութեան, այլ երկոքումբք բժշկէր զցաւսն։ Զայս և Սողոմոն գրէ և ասէ, եթէ "Գինի սգաւորաց և արբեցութիւն որ 'ի տրտմութեան իցեն"։ Վասն այնորիկ և բազումք 'ի մարդկանէ, մանաւանդ 'ի բազում ծանօթից և 'ի դրացեաց, եթէ ուրուք որդի և կամ կին մեռանիցի, և քանզի բուռն են ախտքն և յաղթող են տրտմութիւնքն, և զօրութեամբ ըմբռնէ զյիշատակս մտացն, առեալ ոք զնա 'ի տուն տանիցի, սփոփիցէ և մխիթարեսցէ և արբուցանէ անապական գինի, և ստիպիցէ և կամիցի առնել ուրախութիւն, որով կարիցէ մխիթարել զցաւսն, զնոյն օրինակ և ծերունին այնժամ 'ի սուգ տրտմութեան վտանգեալ էր, և գինեաւն իբրև դեղով զհիւանդութիւնսն ցածուցանէր,

1 Երկաթագիրն ոչխար. 2 Երկու օր. զխր։

տիւն իւր ընդունի։ Միտ դիր զոր ասեմս. զի այլ ինչ է զոր առնուս, և այլ ընդունելն. քանզի ընդունի զայն ոք զոր յառաջ է ստացեալ, և առնու բազում անգամ զոր ոչն էր իւր ստացեալ։ Ընկալար, ասէ, զբարիսն քո և Ղազարոս զչարիս իւր։ Հասանիկ մեծատունն զբարիսն ընդունէր և Ղազարոս զչարիս իւր։ Եւ յամենայն մեզ վասն այնց ասացաւ որք աստէն յայսմ աշխարհի տանջեցին և ոչ յայնմ, վասն որք աստ յղփացեալ փափկանան և ոչ անդ։

Ուսարուք և դուք այսուհետև զոր ասեմս. «Ընկալար, ասէ, զբարիսն քո, և Ղազարոս զչարիս իւր»։ Ոչ ասաց թէ առեր, այլ ընկալար զանկսն[1] զպարտն, զհասն քո, և Ղազարոս զչարիս իւր։ Միտ դիր խնդրոյս, զշինուածս ՚ի կատարումն շինեմ։ Եւ մի ինչ շփոթիր ՚ի սկզբան առակիս. այլ յորժամ զայսպիսի ինչ ասիցեմ, կացջիք ննասջիք մեկնութեանս. կամիմ զձեզ եթէ սրամիտք[2] լինիք, և[3] մի ընդ վայր վեր ՚ի վերոյ անց և անց առնիցէք, այլ զի ՚ի խոր իջանիցէք ննեզէն գրոց, խոր ուր ոչ գոյ սասանումն խռովութեան, խոր որ քան զխաղաղութիւն զգուշագոյն. զի որչափ իջանիցես ՚ի խորն, յոյժ և առաւել զգուշութիւ գտցես։ Ո ի ոչ է սահմանալից[4] ձկանաբեկ ստահակութեան ջուրց, այլ մեղմական իմաստութեան գութ։

Ընկալար, ասէ, զբարիս քո ՚ի կեանս քում, և Ղազարոս զչարիս. և արդ աստ մխիթարի, և դու այդր տանջիս։ Խնդիր մեծ է այս. ասացի՝ թէ որ ընդունի, զպարտն հատուցման իւրոյ ընդունի. իսկ արդ եթէ Ղազարոս արդար էր, որպէս և էրն իսկ, եցոյց և ժամանակն և գոգն Աբրահամու, պսակն և նշան յաղթութեանն, հանգիստն և վայելումն և ժուժկալութիւնն. իսկ մեծատունն մեղաւոր և ամենաչար, ստամբակ և խիստ, փափկասէր, արբեցող, բազմախորտիկ կերպ կերպ[5] լիաբուղխ սեղանատպաս, յայնպիսի գիջութեան և ՚ի պոռնկութեան սնեալ։ Միտ դիր. պարտապան էին

1 Երկաթագիրն զանկ. այլ օր. զանկն։

2 Երկաթագիրն սրբամիտք։

3 Օրինակ մի և մի վեր ՚ի վայր անց և անց։

4 Օրինակ մի ստամբակաց ջրաբեկն։ իմաստութեան փորձ։

5 Օրինակ մի կերպ կերպ. նոր օրինակն կերպակերպ։

նմա էրքն. զինչ պարտէին. զվրէժխնդրութիւնն, ընդդանձանման, զցաւսն, ընդէր ոչ առէր թէ զայն առէր, այլ առէր՝ ընկալար զբարիս քո անդ. զկեանսն զայն առէր, և Ղազարոս զչարիս իւր:

Այլ անձինք կալ զմիտս քո, զի 'ի խոր կամիմ էջանել բանիս: Մխանգամայն ամենայն մարդիկ որ են ոմանք 'ի նոցանէ մեղաւորք են և ոմանք արդարք. և 'ի նոսա ընտրութիւն գտանի, ոմն արդար և միւսն ևս յաւելագոյն արդար, միւսն ևս համբարձեալ բարձրագոյն, և միւսն ևս առաւելագոյն քան զամենայն, որպէս փոստեղք զի են բազումք, և արեգակն և լուսին, նոյնպէս և յընտրութեան արդարոյն. զի "Այլ փառք են, ասէ, արեգականն և այլ փառք լուսնի և այլ փառք աստեղաց". զի ոմն առաւել է փառօք և միւսն ևս նուազ. և որպէս մարմինք երկնաւորք և մարմինք երկրաւորք, այլ մարմինք են երկնաւորաց և այլ երկրաւորաց. և որպէս 'ի տեսիլս մարմնոյ և ազգաց երևին, մինն եղջերու և միւսն ևս շուն, մինն ևս առիւծ, ոմն գազան, ոմն խոզ և միւսն ևս այլ իմն այնպիսի, նոյնպէս և յանցաւորութեանն մարդկան ընտրութիւն գտանի, ոմանք աղտեղք են և ոմանք մեղաւորք. այլ և յարդարսն առաջնորդք են, և 'ի մեղաւորսն յոյժ և անչափ. տես զի:

Ո՛վ ի թէպէտ և կարի ոք արդար գտանիցի՝ հասեալ յամենայն գլխաւորական վարսն, որպէս թէ հրաժարեալ իցէ յամենայն մեղաց, ոչ կարէ սուրբ և յստակ արդար լինել. թէպէտ և բիւր անգամ արդար իցէ, սակայն ապաքէն մարդ իցէ: "Ո՞վ պարծեսցի, ասէ, թէ սիրտ սուրբ է նորա, և կամ ո՞վ համարձակեսցի թէ անարատ իցէ 'ի մեղաց": Վասն այնորիկ հրամայեաց խոկ ասել 'ի ժամ աղօթիցն "Թող մեզ զպարտիս մեր". զի սովորական աղօթիւքն յիշեցուք թէ և մեք ընդ պատժովք մեղաց եմք: Եւ Պաւղոս առաքեալ ընտիր և տաճարն այ և բերանն Քրիստոսի, քնար հոգւոյն, վարդապետն աշխարհաց, որ ընդ ծով և ընդ ցամաք յածեալ շրջէր, որոյ զփուշ մեղացն խլեալ և զսերմն ածպաշտութեանն սերմանեալ, որ քան զթագաւորս հարըստագոյն էր և քան զմեծատունս հզօրագոյն, որ և քան զզինաւորս բռնագոյն, որ քան զիմաստունս իմաստնագոյն, որ և քան զճարտարսն ճարտարագոյն, որոյ ոչ ինչ

գոյր և զամենայն ինչ ունէր, որոյ ստուերն իւր զմահ լուծանէր և ձորձ[1] հանդերձին իւրոյ զհիւանդութիւնս փախստական առնէր, որ 'ի ծովուն նահատակէր և 'ի դրախտն յափշտակէր, որ զՔրիստոս քարոզէր, նա ասէր՝ թէ “Ոչ ինչ զանձին բիծ գիտեմ, այլ ոչ այսու արդարանամ, քանզի որ դատին զիս տէր է: Ո՞վ պարծեսցի եթէ սիրտ սուրբ է նորա, և կամ ո՞վ համարձակեսցի թէ անարատ իցէ 'ի մեղաց”:

Արդ անհնարին է մարդոյ ամենայնիւ թէ անմեղ իցէ: Զի եթէ ասիցեն՝ արդար և ողորմած է, աղքատասէր է, այլ ունի զինչ և է յանձին իւրում պակասութիւն, եթէ վայրապար թշնամանող իցէ, թէ փառասէր իցէ և կամ թէ այլ ինչ նման նմին, զի ոչ է պարապ զամենայն թուել մի ըստ միոջէ: Զի ոմն ողորմած է, այլ չէ զգաստ. թերևս և զգաստ իցէ, այլ ողորմած չէ. զի մին յայնմ առաքինանայ, և մինն ևս 'ի միւսումն անուանի լինի: Դու եթէ և իցէ ոք արդար և կայցէ 'ի նմա ամենայն ինչ բարի, և ամբարհաւաճութիւն վասն արդարութեանն, և խոտէ զիւր արդարութիւնն ամբարտաւանութեամբն: Փարիսեցին ո՞չ արդար էր, ո՞չ պահէր երկիցս 'ի շաբաթուն. և զի՞նչ ասէրն արդեօք. “Ոչ եմ, ասէ, իբրև զայլ որ յափշտակող ագահ”. թերևս և 'ի սուրբ մտացն յամբարտաւանութեանն հպարտացաւ, և որպէս ոչ վնասեցին նմա մեղքն՝ վնասեաց նմա ամբարտաւանութիւնն: Չէ արդ այսուհետև ամենայնիւ մարդ սուրբ: Զայս համարձակիմ և ասեմ, ոչ այնչափ չար ամենևին ոք իցէ՝ իբրու թէ չգտանիցի 'ի նմա գէթ փոքր մի բարի ինչ: Որպէս ոմն յափշտակող է և ագահ է և զրկող է, այլ թէ երբեք և տուրս ողորմութեան տուեալ իցէ, կամ զգաստ իցէ և կամ քաղցր բանիւք, կամ միոյ մարդոյ օգնական եղեալ իցէ, կամ արտասուեալ և կամ զղջացեալ իցէ. զի ոչ արդարն առանց մեղաց՝ ազատ է, և ոչ մեղաւորն յամենայն բարեաց լոկ և սոսկ գտանիցի: Ո՞վ է չար քան զԱքաաբ. յափշտակեաց զրկեաց և եսպան. այլ սակայն յորժամ լուաւ յոյժ և զղջացաւ, ասէր ա͞ծ ցԵղիա. “Տեսե՞ր որպէս զղջացաւ Աքաաբ առաջի երե-

1 Օրինակ մի ծուէնս:

տաց իմոց»: Տեսանե՞ս յորպիսի յանդունդս չարութեան գտանէր փոքր մի բարի: Զի՞նչ էր այլ չար քան զմատնողութիւնն Յուդայի մատնչի, որ գերեալ ըմբռնեալ էր յարծաթսիրութեանն. այլ սակայն փոքր մի և նա զղջանայր յետ այնորիկ. «Մեղայ, ասէ, զի մատնեցի զարիւն արդար»: Որպէս և ասէի յառաջ՝ թէ չէ ինչ չար բնութեամբ, թէ ոչ գոյ տեղի և բարւոյ: Զի ոչխար ոչ կարէ երբէք լինել վայրենի, քանզի բնութ̃ ընտանի է. և գայլ ոչ լինել ընտանի, քանզի բնութ̃ վայրենի է: Ոչ քակտին և խախտին օրէնք բնութեանն, այլ անշարժ կան և մնան: Բայց ոչ այնպէս մեք, զի ոչ ընդ բնութեամբ վտարանդեալ եմք, այլ ազատութ̃ կամաց պատուեալ եմք: Որպէս և ասէի իսկ թէ ոչ բարիոք է և արդար բնաւ ամենևին՝ թէ ոչ փոքր մի բիծ ինչ ունիցի. և ոչ չար այնչափ, որպէս թէ ոչ կայցէ փոքր բարի 'ի նմա: Բայց քանզի ամենեցունց փոխարէն և հատուցումն լինի, թէ սպանանիցէ ոք կամ պոռնկեսցի կամ ագահիցէ, ունիցէ և փոքր մի բարի ինչ, կայ և մնայ նմա հատուցումն բարւոյն, ոչ վասն չարեացն զոր արար առանց հատուցման լինի բարւոյն. և դարձեալ միւսանգամ թէ բիւր ինչ գործիցէ ոք բարի, ունիցէ և փոքր մի չար ինչ, կայ և մնայ նմա չարին հատուցումն: Զայս կալ, զայս պահեա պինդ և անշարժ, զի ոչ բարին է առանց մեղաց, և ոչ չարն առանց արդարութ̃:

Զայս երկրորդեմ դարձեալ, զի հաստատեսցիք և տնկեսցիք և յոյժ 'ի խոր արկցիք զտունկն: Քանզի են ինչ հոգք զոր արկանէ բանսարկուն բազում անգամ յանձինս ձեր, և կամի գերել զձեր զմիտս և ապականել և չընդունել զայս որ 'ի մէնջս ասի. վասն այսորիկ խորամուխ առնեմ զբանն: Զի թէ ասա իցես՝ զգուշութ̃ պահիցես, և եթէ արտաքս ելանիցես՝ չկարիցես կորուսանել: Իբրև քսակ մի ոսկւով լի կապիցեմ և կնքեմ, զի թէպէտ ես չիցեմ հուպ, գողն ոչ իշխիցէ մերձենալ. նոյնպէս և ես, սիրելիք, առնեմ յաճախ և անձանձրոյթ վարդապետութեամբս. կապեմ և կնքեմ և ներկանեմ զձեր զմիտս, զի կարասցիք քակել զձեզ 'ի ծուլութենէ, այլ գոչեցեալք բարբառեսցաք ասա զլաւթիւն քան արտաքոյ զամենոյն: Զի թէպէտ և այս ոմանց շատախօսութիւն ինչ կարծիցի, այլ հոգաբարձու-

թեան և սիրոյ է և գութ վարդապետութեան, զի մի անգոսնեսցի որ ասացաւս։

Զնոյնն ասել և երկրորդել ես ոչ ինչ զանգաղիմ, և ձեզ յօգուտ է։ Ուսուցանել կամիմ և ոչ վայրապար հանդիսեցուցանել. ոչ գոյ ապաւինեալ արդար առանց մեղաց, և ոչ մեղաւոր ոք յուսամ ոչ գոյ 'ի նմա բարի ինչ. այլ քանզի իւրաքանչիւր հատուցումն է, տես զինչ լինի։ Մեղաւորն ընդունի զհատուցումն բարեաց իւրոց զհանդէպ և զկշիռ հատուցմանն, թէ ունիցի և փոքր մի ինչ բարի. և արդարն զարդարութիւն իւրոյ առնու և նա կշիռ զհատուցմանն, թէպէտ և սակաւ ինչ գործեալ իցէ չար։ Իսկ ապա զի՞նչ լինիցի, զի՞նչ առնիցէ ած։ Իւրկուս կարգս որոշեաց և եդ զցաւս և զմեղս, զվարս առաքինութեան և զառ 'ի յապայ կեանսն յաւիտենականսն. զի եթէ իցէ ոք արդար և գործիցէ ինչ չար և հիւանդանայցէ ինչ աստէն յախտս հիւանդութեան և մաշնիցի 'ի ձեռս մեղաց, մի շփոթիցիս, այլ իմաց քեզէն և ասա՝ թէ սա արդար այր էր, այլ ուրեմն փոքր մի չար ինչ գործեալ իցէ և ընդունի աստէն զհատուցումն, զի մի անդ տանջիցի։ Դարձեալ թէ տեսանիցես զմեղաւորն յափշտակող, ագահ, բիւր ինչ յիրս չարագործ, և 'ի փառս և յուրախութեան կեցցէ, մի զայրացեալ կսկծեսցիս՝ թէ սա մեղաւոր է բիւր չարիս գործեալ, զի՞նչ սորա արարեալ իցէ ինչ մի բարի և ընկալեալ ունի զհատուցումն բարեաց. այլ զի մի անդ պահանջիցէ զվարձն իւր։ Վասն այնորիկ որ արդարն իցէ, թէպէտ և չար ինչ անցք անցանիցեն ընդ նա, զի աստէն իսկ թեթևացուսցէ զմեղս իւր, և անդ երթեալ հասանիցէ արդար և սուրբ։ Իսկ կամ եթէ մեղաւոր ոք իցէ և գլուխ չարեաց, և բազում ախտս առանց բըժշկութեան ախտանայցէ յափշտակելով և ագահելով, վասն այնորիկ վայելէ աստ 'ի բարեկեցութեան, զի մի անդ վարձս պահանջեսցէ։

Վասն այսորիկ իսկ և Աբրահամ ասէր՝ թէ 'ի Ղազարոս իցեն փոքր մի մեղք, և մեծատանն փոքր մի բարի, ասէր՝ թէ աստ մի ինչ խնդրեր, քանզի ընկալար զբարիս քո անդ, և Ղազարոս զչարիս իւր։ Ոչ իմացիս թէ ոչ ընդ վայրայմբայր[1] ինչ ասեմ, այլ այնպէս

1 Այսպէս երկաթագիրն. յայլս պակասի. յոյնն Ձայրապար։

որպէս և էն իսկ, լուր: Ընկալար, ասէ, զբարիս 'ի կեանս քում: Զո՞ր. արարե՞ր ինչ բարիս. ընկալար զմեծութիւնն քո, զառողջութիւնն, զփափկութիւն կենացն, զբռնութիւնն, զպատիւն. ոչ ինչ ոք պարտի քեզ, ընկալար զբարիս քո: Եւ ապա և Ղազարոս ո՛չ ինչ մեղաւ. և նա զչարիս իւր. յորժամ դու ընդունէիր զբարիսն, յայնժամ և Ղազարոս զչարիս իւր. վասն այսորիկ նա աստ մխիթարի, և դու այդր տանջիս:

Արդ յորժամ տեսանիցես զարդարն 'ի տանջանս, երանի տուր նմա և ասա. սա արդար է, թէպէտ և բիծ ինչ ունիցի մեղաց, փոքր մի աստէն ընկալեալ զհատուցումնն, և անդ հրաժարեալ սուրբ երթայ. ապա եթէ աւելի քան զմեղսն տանջիցի, յաւելուածք արդարութեան համարեալ լինին նմա: Քանզի հաշիւ և համար լինի անդ. և ասէ ա՟ծ ցարդարն՝ թէ այսչափ համար պարտիս ինձ: Արդ ա՟ծ հաւատաց նմա տասն դանգ, առնէ նմա ընդ այնր համար. թէ աղքատ իցէ, վաթսուն դանգ: Եւ ասէ ցնա ա՟ծ՝ եթէ զտասն դանգն հաշուիմ քեզ 'ի մեղս, և զյիսունն յարդարութիւն: Զի գիտասցես թէ զաւելիսն յարդարութիւն հաշուի, Յոբ արդար էր և անբիծ, ճշմարիտ, ա՟ծապաշտ, զատեալ մեկնեալ յամենայն գործոց չարեաց, տանջեցաւ մարմինն նորա աստ, զի անդ զվարձս հատուցմանն պահանջիցէ: Զինչ ասէր նմա ա՟ծ. "Արդ ոք քեզ թուեցի մարդ 'ի տանջել զքեզ, այլ զի արդար երևեսցիս": Նոյնպէս և մեք համբերեսցուք փորձանաց աստ, զի անդ 'ի տեառնէ ընկալցուք զհատուցումն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն և սուրբ հոգւոյն փառք յաւիտեանս. ամէն:

Digitized by Google

մերձն լինել՝ մեծ հոգս տանել հարկաւոր է հօտին, ոչ ուրուք եղելոյ որ պարսպէ զնոսա. և առ այսոսիկ հաւպ լինելոյ՝ բաժանի ընդ նոսա զփութոյն վարձս, և յոչ լինել մօտ՝ մերկ զնոսա ուղղութեանն թողու երևել։

Զայս և վարդապետն հեռի՝ ընդ ձեզ խօսի, և ուր իցէ այժմ՝ զձեզ և զձերդ տեսանէ ժողով. որպէս որ անդէն առ նմա զմերձակայսն՝ այնպէս զձեզ զհեռաւորսդ տեսանէ այժմ։ Գիտեմ զնորա զեռացեալ և զհրացեալ սէրն, զջերմն և զանձուձելին, զոր յոլով 'ի խորութեան մտօն արմատացեալ ունի, և հանդերձ բազում փութով բժշկէ. վասն զի գիտէ յայտնապէս՝ եթէ գլուխ այս է ամենայն բարեաց, արմատ և աղբիւր և մայր. և այսորիկ ոչ եղելոյ՝ յայլոցն մեզ օգուտ ոչ ինչ է։ Այս աշակերտացն պատկեր, կերպարան մեր ծառայիցն, ծանօթութիւն մեր առաքելոցն. «Յայսմ, ասէ, ծանիցեն ամենեքեան թէ իմ աշակերտք էք»։ Յորում, ասա. զմեռեալսն արդեօք յարուցանել, կամ զբորոտսն սրբել, կամ զդևս հալածել. ոչ. այլ զայնու ամենայնիւ զանց առնելով, «յայսմ, ասէ, ծանիցեն ամենեքեան եթէ իմ աշակերտք էք եթէ սիրիցէք զմիմեանս»։ Վասն զի այն վերին շնորհացն ևեթ է պարգև, իսկ այս մարդկային փութոյ ուղղութիւն։ Եւ առաքինութիւն ոչ այնպէս զ'ի վերուստ շնորհսն նկարագրել սովորեաց, որպէս զիւրոյ վաստակոցն զուղղութիւն. յաղագս որոյ ոչ 'ի նշանացն, այլ 'ի սիրոյ ճանաչել ասէ զիւր աշակերտսն Քրիստոս։ Զի սորա մերձ եղելոյ՝ և ոչ մի ինչ մասն իմաստութեան պակասէ 'ի ստացողէն, այլ զբովանդակն ունի ամենակատար և աւարտեալ զառաքինութիւնն. որպէս և հեռին լինելով՝ անապատ յամենայն բարեաց է։ Յաղագս այնորիկ և Պաւղոս ամբառնայ և բարձրացուցանէ բանիւ. մանաւանդ եթէ որքան և ասէ, ոչ երբէք յարժանաւորութիւն նորա հասանէ։ Զինչ արդեօք լինիցի նման հաւասար որ զմարգարէս 'ի միասին ունի և զօրէնսն զամենայն, և առանց նորա ոչ զհաւատ և ոչ զգիտութիւն և ոչ զլիւր ծանօթութիւն և ոչ զնոյն ինքն զվկայութիւն և ոչ զայլ ինչ 'ի ստացելոյն պահել կարասցէ։ «Քանզի եթէ մատնեցից, ասէ, զմարմինս իմ յայրումն, զի պարծեցայց, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ»։ Եւ

այլուր դարձեալ թէ քան զամենայն մեծ է, և զագաթն բարեաց, յայտնելով ասէր. «Եթէ մարգարէութիւնք իցեն խափանեսցին, եթէ լեզուք՝ լռեսցեն, եթէ գիտութիւն՝ խափանեսցի. բայց մնայ հաւատ, յոյս, սէր»։

Այլ ոչ զուգնաքեայ ինչ խնդիր, որ յաղագս որոյ է, 'ի ներքս եմուծ մեզ բանս մարգարէութեան խափանման. և 'ի լռել լեզուացն չար ինչ ոչ է, զի ժամանակեայք են շնորհքն այնոքիկ. զիւրեանց զպաշտօն ընձեռեն մեզ, և լռութեամբ վնասել զբանն և ոչ ինչ ոչ կարեն։ Քանզի ահա այժմ մարգարէութիւն ոչ է և ոչ լեզուացն շնորհ, և որ բարեպաշտութեանն է բան՝ ոչ ինչ խափանի. բայց գիտութեանն դադարել՝ այս է խնդրելին։ Քանզի ասացեալ «Եթէ մարգարէութիւնք իցեն խափանեսցին, եթէ լեզուք՝ լռեսցեն», 'ի վերայ եած «եթէ գիտութիւն խափանեսցի»։ Իսկ եթէ համդերձեալ իցէ գիտութիւնն դադարել, ոչ 'ի վեհագոյնն, այլ 'ի վատթարսն մեզ յառաջադրութիւն իրացն լինի. զի առանց նորա և զմարդն իսկ գոլ բոլորովին կորուսաք։ «Յայ, ասէ, երկիր և զպատուիրանս նորա պահեա, զի այս է ամենայն մարդ»։ Իսկ եթէ այս է մարդ, երկնչելն յայ 'ի գիտութենէն լինի. և եթէ գիտութիւն համդերձեալ իցէ խափանումն ընդունել, որպէս ասէն Պաւղոս, յայնժամ ամենեւին կորնչիմք՝ գիտութեանն ոչ եղելոյ, և ամենայն իրք մեր քայքային, և քան զանբանսն ոչ ինչ լաւագոյնք անկեալ կայցեմք, այլ և յաւէտ ևս վատթարագոյնք. վասն զի այսու առաւելեալ եմք քան զնոսա, որպէս և յայլսն յամենեսեան 'ի մարմնականսն՝ յաւէտ 'ի նոցանէ յաղթահարիմք։

Իսկ արդ զինչ իցէ զոր ասէն Պաւղոս և վասն որոյ «եթէ գիտութիւն՝ խափանեսցի»։ Ոչ վասն ամենակատարին, այլ յաղագս մասնաւորին զխափանումն զայն ասէ 'ի լաւագոյն Ճանապարհն յառաջանալ ասելով. որպէս զի մասնաւորին խափանեցելոյ՝ ոչ ևս իցէ մասնաւորական, այլ կատարեալ։ Զոր օրինակ հասակ մանկան խափանի, ոչ ապականեցելոյ հասակին, այլ և յայր կատարեալ ելանելոյ, նոյնպէս և յաղագս գիտութեանն լինի։ Սուղս այս, ասէ, ոչ ևս եղիցի փոքր 'ի լինել մեծին, այս է «խափանին»։ Եւ զայս որով 'ի կարգին է՝ յայտնագոյն մեզ յայտնեաց։ Զի լսելով եթէ խա-

փանի, մի՛ ամենեւին քակումն կարծիցես լեալ, այլ աճումն իմն եւ առ լաւագոյնն ամբարձումն. զի ասացեալ խափանի, 'ի վերայ եած. "Ի մասնէ գիտեմք եւ 'ի մասնէ մարգարէանամք. բայց յորժամ եկեսցէ կատարեալն, յայնժամ 'ի մասնէս խափանեսցի,,. որպէս զի ոչ եւս իցէ անկատար, այլ կատարեալ. ապա ուրեմն խափանումնն այն լրումն է եւ մեծագոյն վերադրութիւն։

Դիտեա ինձ զՊաւղոսի զհանճարն. ոչ ասաց մասն գիտեմք, այլ "'ի մասնէ գիտեմք,,. զմասինն մասն ունիմք։ Թուի թէ բաղձայք լսել թէ որքան մասն ունիմք եւ որքան մնացեալ է, եւ զո՞ր արդեօք զառաւե՞լն եթէ զնուազն ունիցիմք։ Արդ զի ուսցիս եթէ զնուազն ունիս, եւ ոչ պարզաբար զսուղն, այլ զհարիւրորդ կամ զբիւր մասն, լուր որ 'ի կարգին է. յաւէտ եւ զառաքելական զձայնն ձեզ ընթերցայց. առակ ինչ ասեմ որ կարէ ձեզ յանդիման կացուցանել, եւ յառակէն կարողութիւն է գիտել որքան մնացեալ է եւ որքան զոր ունիմք այժմ։ Որքան է միջոց հանդերձելոյ գիտութեան զոր տալոց է մեզ, եւ մերձաւորիս այժմու։ Որքան առն կատարելոյ առ ստնդիայ է միջոց, նոյնքան եւ հանդերձելոյ գիտութեան առ մերձակայսս է գերազանցութիւն։ Եւ զի այս ճշմարիտ է եւ այնքան է մեծագոյն, ինքն ասացէ Պաւղոս. քանզի ասելով եթէ 'ի մասնէ գիտեմք, եւ կամելով ցուցանել եթէ յորքան մասնէ, եւ եթէ դուզնաքեայ է այժմուս, 'ի վերայ եած. "Յորժամ էի տղայ, իբրեւ զտղայ խորհէի, իբրեւ զտղայ խօսէի, իբրեւ զտղայ իմանայի. իսկ յորժամ եղէ այր, զտղայութեն խափանեցի,,։ Օ տղայոց ունէին մերձակայքս զգիտութիւն, եւ առն կատարելում զհանդերձեալն հաւասարեցուցանէ։ Եւ յորժամ ասաց՝ տղայ էի, զստնդիայն եւ որ դեռ կաթամբն կերակրի եւ 'ի ստինս դեռ է՝ մեզ երեւեցոյց։ Եւ զի զնոսա գիրք ասէն տղայս՝ լուր սաղմոսին որ ասէ. "Տէր տէր մեր, զի՛ սքանչելի է անուն քո յամենայն երկրի։ Համբարձաւ մեծվայելչութիւն քո 'ի վերոյ քան զերկինս. 'ի բերանոյ մանկանց տղայոց ստնդիաց հաստատեցեր զօրհնութիւն,,։ Տեսանե՞ս, տղայ ամենայն ուրեք զստնդիայն ասէ։

Եւ ապա յառաջագոյն տեսանելով հոգւոյն զհանդերձելոյն արանց զանամօթութիւն, ոչ այնու առակաւ

միայն բաւականացաւ, այլ և երկրորդաւ և երրորդաւ զնոյն հաստատուն մեզ արար: Եւ որպէս Մովսէս առ Հրեայսն առաքեալ զերիցն նշանացն առնոյր զցոյցս, զի եթէ անհաւանեսցին առաջնումն՝ երկրորդի ձայնի լուիցեն, և եթէ զայն արհամարհեսցեն՝ յերրորդէն պատկառեալք ընկալցին զմարգարէն, նոյնպէս և սա երիս առակս դնէ. մի զմանկանցն ասէր՝ եթէ “Յորժամ էի տղայ, իբրև զտղայ իմանայի„. երկրորդ զհայելւոյն զառակ, քանզի ասացեալ՝ յորժամ էի տղայ, ՚ի վերայ եած. “Տեսանեմ այժմ հայելեաւ„: Ահա երկրորդ առակ մերձակայիս տկարութեան և անկատար գիտութեանն եղելոյ: Երրորդ դարձեալ “պատկուն„. վասն զի մանուկ տեսանէ յոլով ինչ, լսէ և խօսի. բայց հաստատուն և ոչ ինչ, ոչ տեսանէ, ոչ լսէ և ոչ խօսի, և խորհի ոչ ինչ յօդաւոր. նոյնպէս և ես գիտեմ բազում, այլ ոչ գիտեմ զնոցա զօրինակ. զի ամենայն ուրեք է ած՝ գիտեմ, և զի բանն է ամենայն ուրեք, բայց եթէ զիարդ՝ ոչ գիտեմ. զի անսկիզբն է և անեղ՝ գիտեմ, և եթէ որպէս՝ ոչ գիտեմ: Ոչ ընդունին խորհուրդքս գիտել զիարդ կարծեսցի էութիւն գոլ՝ որ ոչ յինքենէ և ոչ յայլմէ ումեքէ լեալ: Գիտեմ զի զորդին ծնաւ, և եթէ զիարդ՝ անգիտանամ. գիտեմ զի հոգին ՚ի նմանէ է, բայց եթէ որպէս ՚ի նմա՝ ոչ գիտեմ:

Ո՞ր իցեն որք ամենայն գիտութեանց հասու լեալ ասիցեն, որք ՚ի վիհս անգիտութեան են անկեալք: Զի որք ՚ի մերձակայիս ասեն ընկալեալ զամենայն, ՚ի հանդերձելումն զինքեանս ամայիս ամենեւին առնեն ՚ի գիտութենէն: Քանզի ես որ ասեմ եթէ ՚ի մասնէ գիտեմ, թէպէտ և ասացից թէ խափանի գիտութիւնս այս, առ վեհագոյնն և կատարելագոյնն ճանապարհորդեմ, խափանելով մասնաւորս և լինելով կատարելագոյնս. բայց նա որ ասէն ամենակատար և բովանդակ և աւարտեալ ունի զգիտութիւնն, և ապա խոստովանի խափանումն լինել ՚ի հանդերձելումն, անապատ զինքն երևեցուցանէ ՚ի գիտութենէ այսմ խափանեցելոյ և ՚ի միւսոյ եւս կատարելագունին ոչ ՚ի վերայ եղելոյ, եթէ այս իցէ ըստ նոցա կատարեալ:

Տեսանես զիարդ հակառակելումն ասա զամենայն ունել, ասա ոչ ինչ ունին և անգ յամենայնէ զինքեանս

արտաքս ընկենուն ։ Որչափ չար է ոչ կալ մնալ ՚ի ներքս ՚ի սահմանսն զոր ՚ի սկզբանն մեզ կարգեաց Այ ։ Որչափէս և Ադամ յուսով առաւել պատուոյն, և յորում էրն՝ արտաքս անկաւ ։ Այնպէս և արծաթասիրացն լինի․ յոլովս բազում անգամ յոգւոց բաղձալով՝ և ըղմերձակայսն կորուսին․ նմանապէս և նոքա փառասիրալով առ ունել զամենայն, և ՚ի մանկէն արտաքս անկան ։ Զնաղաքս որոց պատուիրեմ փախչել ՚ի նոցա մեղարութենէն․ քանզի վերջին մոլորութեան է յամառակէն գիտել զինչ է բնութիւնն Այ ։

Իսկ զի ուսցիս եթէ վերջին մոլորութեան է այս, ՚ի մարգարէիցն քեզ արարից երևելի ։ Վասնզի մարգարէքն ոչ միայն զինչ է բնութիւնն՝ անգիտացեալք երևեին, այլ և յաղագս իմաստութեանս այսորիկ որքան է արարածս՝ տարակուսին․ թէպէտ և ոչ բնութիւնն յիմաստութենէն, այլ իմաստութիւնն ՚ի բնութենէն ։ Իսկ յորժամ ոչ այնմ կարեն հաստ լինել մարգարէքն հաւաստեաւ, որքանիցս արդեօք մոլորութեան է զայն միւսքն զբնութիւնն կարծել կարող լինել յիւրեանց ՚ի խորհուրդսն ընդունել ։ Լուիցուք զինչ ասէ մարգարէն յաղագս այնորիկ․ "Սքանչելի եղև գիտութիւն քո յինէն"։ Յաւէտ եթէ վերագոյն զբանն ընթերցցուք․ "Խոստովան եղէց քեզ զի ահաւորապէս զարմանալի ես․ սքանչելի են գործք քո"․ և դարձեալ․ "Զարմանալի եղև գիտութիւն քո յինէն, զօրացաւ և ոչ հանդարտեմ նմա"։ Զինչ իցէ ահաւորապէսն ։ Նաղում ինչ է զոր զարմանալիք միայն, այլ ոչ հանդերձ բազում ահիւ․ որպիսի ինչ զսեանց գեղեցկութիւն, զորոց կենդանագրութիւն, զծաղիկ մարմնոյ․ տեսանելով սքանչանալիք դարձեալ և ընդ ծովու մեծութիւն, և ընդ անբաւ խորս յորժամ յանդունդս յառիցեմք, այլ հանդերձ երկիւղիւ ։ Որպիսի ինն և մարգարէն յանբաւութիւն և յանհասանելի անդունդս Այ իմաստութեան յառեալ և ցնորեալ հանդերձ բազում ահիւ ՚ի բաց գնաց գոչելով և ասելով․ "Խոստովան եղէց քեզ զի ահաւորապէս սքանչելի ես․ զարմանալի են գործք քո"․ և դարձեալ․ "Սքանչելի եղև գիտութիւն քո յինէն, հզօրացաւ և ոչ հանդարտեմ նմա"։ Վահանամ զքէն, ասէ, յաղագս այսորիկ, զի անհասանելի ունիմ տէր ։

Digitized by Google

Եւ յաղագս բնութեանն ասէ աստանօր, քանզի զայն՝ խոստովանել իբրև զանհասանելի՝ եթող. այլ վասն ամենայն ուրեք մերձ գոլոյ զա̃ծ զայս ասէր, ցուցանելով զի և ոչ զայն զայս գիտել՝ զիարդ ամենայն ուրեք հուպ է: Եւ զի յաղագս այնորիկ ասէր, լուր որ 'ի կարգին է. «Եթէ ելից յերկինս, դու անդ ես. թէ իջից 'ի դժոխս՝ մօտ»: Տեսանես զի ամենայն ուրեք է մերձ. բայց սակայն մարգարէն ոչ գիտէ, այլ ցնորի և տարակուսի և ամբոխի, 'ի միտ ևեթ զնա առեալ:

Զիա՞րդ ոչ վերջին մոլորութեան իցէ, որք այնքան հեռի են 'ի նմանէ՝ զնոյն ինքն զէութիւնն ա̃յ հարցաքննել: Թէպէտ և նոյն ինքն է մարգարէս որ ասէ «Զանյայտս և զծածկեալս իմաստութեամբ քով յայտնի եդեր ինձ», այլ համայն զանյայտս իմաստութեան նորա ուսեալ՝ յաղագս նորա ասէ թէ անբաւ է և անհասանելի: Քանզի «մեծ է տէր, ասէ, և մեծ է զօրութիւն նորա և իմաստութեան նորա ոչ գոյ թիւ». այս է ոչ գոյ ըմբռնումն: Զինչ ասես. իմաստութիւնն անհասանելի է մարգարէին, և բնութիւնն մեզ հասանելի: Իսկ արդ ո՞չ արդեօք երևելապէս այն մոլորութի̃ է: Մեծութիւն նորա ոչ բովանդակի, և զէութիւնն պարունակե՞ս: Զայս և Եսայիաս իմաստասիրելով ասէր. «Զազգականութիւն նորա ո՞ պատմեսցէ»: Ոչ ասաց՝ ո՞ պատմեաց, այլ ո՞ պատմեսցէ. և զհանդերձեալսն փակեաց: Եւ Դաւիթ ասէ. «Սքանչելի եղև գիտութիւն քո յինէն»: Բայց Եսայիաս ոչ յինէն միայն ասէր, այլ և յամենայն մարդկային բնութենէ 'ի բաց փակեցաւ պատմութիւնն այն:

Բայց տեսցուք մի գուցէ Պաւղոս գիտասցէ՝ որ 'ի մեծագոյն շնորհսն վայելեաց: Նա ինքն է որ ասէն. «Ի մասնէ գիտեմք և 'ի մասնէ մարգարէանամք»: Եւ ոչ աստանօր միայն, այլ և այլուր ոչ յաղագս բնութեանն, այլ յաղագս իմաստութեանն և նա խօսելով որ 'ի նախախնամութեանն երևեցաւ, ոչ ընդհանրականին վասն ասելով՝ որով հրեշտակաց և հրեշտակապետաց և վերին զօրութեանց նախախնամէ, այլ զայն մասն նախախնամութեան հարցաքննելով՝ որով նախահոգայ յերկրի տուեալ մարդկան, և զորին զայսորիկ դարձեալ զմասն ինչ. զի և ոչ զայս զբովանդակն քննէ որով ծագէ զարե-

՚զաւկն ; որով զօգիսն առնէ, ըստ որում զմարմինս ստեղծանէ, ըստ որում կերակրէ զմարդիկ 'ի վերայ երկրի, որով ունի զաշխարհ ; ըստ որում զտարեւորական կերակուրսն տայ. այլ զայս ամենայն թողեալ և սուղ ինչ զմասն նախախնամութեան նորա հարցաքննեալ, ըստ որում զՀրեայսն արտաքս մերժեաց և որք 'ի հեթանոսացն էին ընկալաւ, և 'ի սմին յայսմիկ փոքրիկ մասին իբրև 'ի մեծ և յանձաւ խորս ցնորեալ և անդունդս անհնարինս տեսեալ՝ 'ի բաց վազեաց վաղվաղակի և մեծապէս գոչեաց ասելով. "Ո՜վ խորք մեծութեան և իմաստութեան և գիտութեան այ, իբրև զի անքննելի են դատաստանք նորա". ոչ ասաց անհասանելի, այլ անքննելի. և եթէ քննութիւն ոչ ունի, եւս առաւել անհասանելի, անկարելի է մեզ. "և անհետազօտելի ճանապարհք նորա":

Արդ գիտես, հասանելի՞ իցէ, ասա ինձ: Իսկ զինչ ասեմ յաղագս ճանապարհացն. առաջիկայ յաղթանակն մեզ անհասանելի է, քանզի "Ակն ոչ ետես զայն և ունկն ոչ լուաւ և ոչ 'ի սիրտ մարդոյ ել զոր պատրաստեաց ած սիրելեաց իւրոց": Իսկ պարգևք նորա անհասանելիք. "Շնորհք այ, ասէ, 'ի վերայ անպատում պարգևացն նորա". և "Խաղաղութիւն նորա գերազանցէ քան զամենայն միտս": Ո ինչ ասես՝ դատաստանք անքննելիք, ճանապարհք անհետազօտելիք, խաղաղութիւնն գերազանց քան զամենայն միտս, պարգևն անպատմելի զոր պատրաստեաց սիրողաց իւրոց և ոչ ել 'ի սրտէ մարդոյ, ամենայնն անհասանելիք, և ինքն միայն հասանելի՞. և զո՞ր ոչ արդեօք ունիցի այս զմոլորութեան առաւելութիւն: Այլ զհերձուածողն և մի թողուք 'ի բաց գնալ. ասա՝ զինչ ասէ Պաւղոս. "Ի մասնէ գիտեմք". ոչ յաղագս էութեանն ասէ, այլ վասն տնօրէնութեանն, մանաւանդ՝ թէ և յաղագս տնօրէնութեանն էր մեզ բանն, յուէտ յաճախապէս համարձակութեամբ զյաղթութիւնն ընձեռէր. քանզի եթէ տնօրէնութիւնք նորա անհասանելիք, առաւել ևս ինքն: Իսկ զի աստ ոչ յաղագս տնօրէնութեանն ասէ, այլ վասն նորին իսկ այ, լուր որ 'ի կարգին է. Քանզի ասացեալ թէ "'ի մասնէ գիտեմք և 'ի մասնէ մարգարէանամք", 'ի վերայ էած "այժմ գիտեմք 'ի մասնէ, բայց

յայնժամ գիտացից որպէս ծանուցեալն եղէ ,,: Իսկ յումմէ՞ եղև ծանուցեալ, յա̃յ եթէ ՝ի տնօրէնութենէն: Քաջայայտ է թէ յա̃յ, զի զայն[1] ՝ի մասնէ գիտէր · և ՝ի մասնէ ասաց՝ ոչ եթէ զմասն ինչ զնորա բնութեանն գիտէր և զայլն անգիտանայր, վասն զի պարզ է ա̃ծ, այլ զի էր ա̃ծ՝ գիտէր, և եթէ զինչ է բնութիւնն՝ անգիտանայր · զի իմաստուն է գիտէր, բայց եթէ որքան իցէ իմաստուն՝ անգիտանայր · թէ[2] մեծ իցէ՝ ոչ անգիտանայր, և եթէ որքան իցէ մեծութիւնն՝ զայն ոչ գիտէր · զի ամենայն ուրեք մերձ է՝ գիտէր, բայց եթէ որպէս՝ ոչ գիտէր · և զի նախախնամէ և ունի բովանդակ զամենայն և բովանդակի ամենայն ուրեք՝ հանդերձ հաւատեաւ ոչ անգիտանայր, իսկ[3] թէ զիարդ զայն առնէր՝ անգիտանայր · և վասն այնորիկ ասէր · "Ի մասնէ գիտեմք և ՝ի մասնէ մարգարէանամք,,:

Բայց եթէ ախորժէք, զՊաւղոս թողցուք և զմարգարէսն · ելցուք յերկինս, թերևս անդ իցեն ոմանք՝ որք գիտիցեն զինչ է բնութիւնն ա̃յ · որք մանաւանդ թէպէտ և գոցեն գիտակք, ոչ ինչ է հաւասարութիւն առ մեզ · վասն զի յոլով է միջոց հրեշտակաց և մարդկան: Այլ սակայն զի խնամով ուսցիս թէ ոչ անդ ոք գիտէ ստացական զօրութիւնքն այն, լուիցուք հրեշտակացն: Զինչ, արդեօք յաղագս բնութեանն այնորիկ անդ խօսեսցին և առ ինքեանս խնդրեսցեն · և ոչ երբէք: Այլ զինչ · փառաւորեն, երկիր պագանեն, զյաղթական և զխորհրդական երգս յաւերժաբար առաքեն հանդերձ բազում սարսափմամբ: Կէսքն ասեն, "Փառք ՝ի բարձունս ա̃յ,, · իսկ սերովբէք "Սուրբ սուրբ սուրբ,, և զաչս ՝ի բաց դարձուցանեն, զի և ոչ խոնարհմանն ա̃յ հանդուրժել կարեն · և քերովբէքն "Օրհնեալ են փառք նորա ՝ի տեղւոջէ իւրմէ,,: Ոչ որպէս թէ տեղի ինչ իցէ շուրջ զա̃յ · մի՛ լիցի · այլ որպէս ասիցեմք մարդկաբար խօսեցեալք՝ ուրանօր և իցէ, և որպէս և իցէ · և եթէ զայս զգուշագոյն է զա̃յ ասել, զի մարդկային լեզու ունիմք: Տեսանես[4] թէ որքան է ՝ի վերագոյնն

1 Յօրինակին զայն ոչ ՝ի մասնէ գիտէր և ոչ ՝ի մասնէ ասաց · նշանակէ բառ յունին:

2 Գաղափար յօրինակին եթէ մեծ իցէ՝ ոչ անգիտանայր:

3 Իսկ թէ զիարդ զայն առնէր:

4 Տեսանես · յաւելան ՝ի յունէն:

թիւն ձեր ծանիցի ամենայն մարդկան ,,: Զ՛ինչ օգուտ է, ասէ, եթէ զսիրելիս ձեր սիրիցէք. եթէ փոխարիցեն նոցա բարեկամութիւնքն և առ հաղորդութիւն ամբարըշտութեանն ձգիցեն, թէպէտ և ծնողք իցեն՝ 'ի բաց վարեա, եթէ ակն է՝ փորեա: Զի "եթէ ակն գայթակղեցուցանէ զքեզ՝ հան զնա ,, , ոչ յաղագս մարմնոյ ասաց: Որպէս արդեօք. զի եթէ վասն մարմնոյ բնութեան ասէր, բամբասանքն յարարիչն երթեալ ելանէին: Այլ այլ ազգ ես, ոչ զմին փորել էր պարտ և արժան. զի եթէ ձախն մնացէ, նմանապէս գայթակղեցուցանէ զունողն: Այլ զի ուսցիս եթէ ոչ վասն ական բանն է, յաւել զաջն. զի թէպէտ իբրև զաջ ականն ունիցիս զոք սիրելի, և զնա 'ի բաց հան 'ի քումմէ սիրոյն եթէ զքեզ գայթակղեցուցանէ. զի՛նչ օգուտ է ունելն 'ի ժանտութիւն այլ մարմնոյդ:

Արդ որպէս ասացի, եթէ փոխարիցեն բարեկամութիւնքն, փախիցուք, 'ի բաց վարեսցուք. ապա եթէ ոչ ինչ զմեզ 'ի բարութեան բանէն զրկիցեն, ձգեսցուք և յանկուսցուք առ մեզ զնոսա. և եթէ ոչ զնա ինչ օգտեսցես և առ 'ի նմանէ ընդունեսցիս զնմանսն, շահես համամբըն 'ի նմանէ զկալ մնալն առանց խեղութեան: Այլ փախիր 'ի նոցա բարեկամութենէն. փախիր միայն, մի մարտնչիր և մի պատերազմիր. այսպէս և Պաւղոս պատուիրէ ասելով. "Եթէ կարողութիւն է 'ի ձէնջ, ընդ ամենայն մարդկան խաղաղութիւն արարէք ,,: Զնաւայ ես խաղաղութեանն նոյ: Նա զգեստ հանելով և գործելով բարիս, յորժամ դիւահար զնա կոչեցին, ոչ առաքեաց հուրս, ոչ սատակեաց զթշնամանողսն, ոչ պարեաց զլեզուն որ այնպէս անամօթ և չարաբարոյ էր. թէպէտ և զամենայն կարէր առնել, այլ ընդդէմ եհար զչարախօսութիւնն միայն ասելով. "Ես դև ոչ ունիմ, այլ պատուեմ զառաքիչն իմ ,,: Այլ յորժամ ծառայ քահանայապետին զնա եհար, զի՛նչ ասաց. "Թէ չար խօսեցայ՝ վկայեա յաղագս չարին, իսկ եթէ բարի՝ ընդէ՞ր զիս հարկանես ,,: Տէրն հրեշտակաց պատասխանի տայր և իրաւունս ցուցանէր ծառային. ոչ ինչ են պէտք երկայնագոյն բանից: Զայս բան յեղանակեա 'ի միտսդ, և յաճախագոյն զդոյն կրթեա և ասա. "Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա վասն չարին, իսկ եթէ բարի՝ ընդէ՞ր

զիս հարկանես,,: Եւ զմտաւ ած զատեանն և առ որ ասէրն և վասն էր. և եղիցի քեզ ամենայն իմն երգ յաւիտենական բանն այն, և կարասցես զամենայն զայրացմունս զնստուցանել: Զմտաւ ած զպատիւ թշնամանեցելոյն, զանարգութիւնս թշնամանողին, զգերազանցութիւն թշնամանողացն. քանզի ոչ լռեաց միայն, այլ և տանջեաց եւս. և ոչ եհար պարզաբար, այլ և ապտակեաց. և քան զայն հարուածս ոչ ինչ գոյ անարգագոյն: Բայց սակայն ամենայնի համբերեաց, զի մեծադիւրաբար ուսցիս դու ողջախոհանալ:

Զայսոսիկ մի միայն խմպատամիրեսցուք, այլ յորժամ և իցէ սոյա ժամանակ՝ յիշեսցուք: Դադարեցէք զբասացեալս, այլ գործով ցուցէք զգովութիւնն: Վասն զի և մարտիկն իսկ ի կռուարանին հրահանգի, զի ի հանդիսին ցուցցէ զկրթութեանն զօգտակարութիւն: Եւ դու այսուհետև զասաստ լսելութեանս՝ յորժամ ի վերայ եկեսցէ ժամանակ բարկութեանն, ցոյց զշահն, և զայս բան յաճախապէս ասա. «Եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա վասն չարին, ապա եթէ բարւոք՝ ընդէր զիս հարկանես,,: Զայս գրեա ի միտս. քանզի սորին աղագաւ և ես յոգնակի յիշեցուցանեմ ձեզ զբանս զայս, որպէս զի դիցին յոգւոյ ձերում տպաւորեալք ամենայն, զի անջինջ մնասցէ յիշատակն և յիշատակէն օգուտն: Վասն զի եթէ ունիցիմք գրեալ զբանս զայս յընդարձակութեան մտաց մերոց, ոչ այնպէս քարեղէն և չարաբարոյ և անզգայ իցեմք, մինչ զի անկանել երբէք ի բարկութիւն. զի փոխանակ սանձաց և ամենայն երասանակաց զլեզու մեր արտաքս քան զշաւիղն և զկրաւացին ելանել՝ կարասցեն արգելուլ բանքս այս, և ըղմիտս զայրացեալս զիջուցանել և առնել յաւերժաբար նուաստանալ և բոլորովին ի մեզ բնակեցուցանել զխաղաղութիւն, յորում լիցի ամենեցուն մեզ վայելել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ընդ որում փառք Հօր համանգերձ սուրբով Հոգւովն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Digitized by Google

ՅԱՌԱՋ ՔԱՆ ԶԲԱԶՄՈՒՄ ԱՒՈՒՐՑ ԱՌ ԱՆՆՄԱՆՍՆ ԱՍԱՑԵԱԼ, ԱՊԱ ԱՌ ՀՐԵԱՅՍ, ԵՒ ԱՊԱ ԴԱՐՁԵԱԼ ՅԱՂԱԳՍ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԵՒ ՎԿԱՅԻՑ ԵՂԵԿՈՑ ԲԱԶՄԱՑ, ԱՅԺՄ ԴԱՐՁԵԱԼ ԱՌ ԱՆՆՄԱՆՍՆ ՅԱՂԱԳՍ ԱՆՀԱՍԱՆԵԼԻՈՅՆ

Աներ այսու հետև առ անհաւատսն Աննմանսն մերկացուք. Թէպէտ և զայրանայցեն անհաւատք տացեալք, փախիցեն յիւրեանց, և ես փախիցիմ յանդոսանէս. Ի բաց կացցեն յանհաւատ մտացն, ’ի բաց կամ և ես ’ի թշնամանելի անուանէս: Ապա եթէ նոքա ’ի ձեռն գործոց զհաւատոյն անպատուել և զինքեանս ամաչեցուցանել ոչ պատկառեն, զի և դժուարին յաղագս մեր որ բանիւքս զնոսա բամբասեմք զորս նոքա գործովք ցուցանեն: Այլ զի յառաջագոյն յասպարէզ բանիցս այսոցիկ ելաք, որպէս և յիշէք իսկ, և զնմին զմարտէն բուռն հարաք, այլ որ առ Հրէայսն էր հանդէս՝ զմեզ վաղվաղակի ընկալաւ, և ոչ էր զգուշագոյն զմերով հիւանդ անդամօքն զանց առնել: Զի որք առ Աննմանսն են բանք՝ միշտ ժամանակ ունին. իսկ առ ախտացեալ եղբարսն մեր և որք զհրէականսն հիւանդանին, եթէ ոչ յառաջագոյն ժամանեալ վաղվաղակի յափշտակեսցուք ’ի հրէական տօնիցն, ոչ ինչ օգուտ մեզ այնուհետև լինէր ’ի խրատուէ մերոցն ’ի ժամանակի պահոցն եղելոյ: Այլ յետ առ նոսա հանդիսից դարձեալ ընկալաւ զմեզ գալուստ հոգևոր հարցն յոլով ուսուցք այսր հասելոց. և ոչ յանժամ ’ի դէպ էր ժամանակ անտեսեցուցանել նոցա զօրէն գեղջոց ոմանց ’ի հոգևոր ժողովս այս հասեցելոց զմեր զբանն յերկարել: Այլ զկնի նոցա գնալոյն՝ վկայիցն յիշատակք հանդիպեցան ’ի վերայ իրերաց յաձախապէս, և ոչ էր պարտ և արժան արհամարհել զնահատակացն զայնոցիկ զբարեբանութի:

Զայս ուսեմ և հաշուեմ զի մի կարծիցէք ’ի դանդաղմանէ իմեքէ և ’ի պղերգութէ լինել յապաղումն հանդիսիս այսորիկ առ նոսա: Նաև այժմ զի և առ Հրէայսն ’ի բաց մերժեցաք ’ի կռուոյն, և հարքն յիւրեանց գաւառսն անցեալ գնացին, և ’ի բարեբանութիւնս վկայ-

իցն բաւականապէս վայելեցաք, թէր այսուհետեւ զժամանակեայ երկունս ձերոյ լսելութեանդ լուծցուք. քանզի քաջ գիտեմ զի քան զիս զասողս ոչ ինչ նուազ իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ երկնէ յաղագս այնոցիկ լսելեանս: Այլ պատճառ է ձեր քրիստոսասէր քաղաքս 'ի վերուստ, և զհայրենին զայն փոխանորդեցէք դուք զժառանգութիւն, ոչ երբէք անտես առնել զբարեպաշտութեանն աւանդութիւնս աղարտելով:

Այլ ուստի՞ է այս յայտ: Իջին ոմանք 'ի Հրէաստանէ երբեմն առ նախահարբքն ձերովք պղտորելով զյստակ առաքելական վարդապետութեանն աւանդութիւնս. հրամայէին թլփատել և պահել զօրէնսն Մովսէսի, 'ի ներքս բերին լուծութեամբ զայն նորաձևութիւնս: Այլ որք յայնժամ 'ի քաղաքիս մերում բնակեալք, իբրև քաջք ոմանք շունք` տեսանելով զգայլսն 'ի վերայ յարձակեալս և զհօտն զամենայն ապականեալս, այնպէս 'ի վերայ վազեցին նոցա. ոչ նախ 'ի բաց կացին` հալածելով զնոսա ամենայն ուստեք և արտաքս վարելով, մինչև պատրաստեցին յառաքելոցն ամենայն ուրեք յաշխարհ առաքել վարդապետութիւն, պարսպել զնոսա, և որք զկնի նոցա ամենեցուն հաւատացելոցն գնոյն շահ ամբարել:

Արդ ուստի՞ իցէ մեզ սկսանել առ նոսա զբանս, աւաղի. ոչ այլ ուստեք, բայց եթէ յանհաւանութեանն ամբաստանութենէ: Վասն զի զամենայն ինչ առնեն և հնարին, որպէս զի արտաքս մերժեսցեն 'ի լսողացն մտաց զհաւատսն, քան զոր զինչ արգելք մեծագոյն ամբարշտութեան բամբասանք. Ո՛վ ի յորժամ մեծ հրամայէ ինչ հաւատալ, պարտ և արժան է ընդունել զասացեալսն և ոչ հարցաքննել յանդգնաբար: Որ կամեցի 'ի նոցանէ` կոչեսցէ զնա հաւատացեալ, կոչեսցէ և յիմար 'ի Քրիստոս. և ընդ այս դարձեալ իբրև ընդպատկ ցնծամք ընդ Պաւղոսի 'ի հասարակաց անուանս յայսմ. քանզի և նա ասէ. "Մեք յիմարք յաղագս Քրիստոսի": Զայն զամենայն իմաստութիւն այս յիմարութիւն իմաստնագոյն է. զի զոր ոչ կարաց գտանել արտաքինն իմաստութիւնն, այս որ բառ Քրիստոսի յիմարութիւնս է` ուղղեաց. սա զխաւար աշխարհի 'ի բաց հալածեաց. սա զլոյս գիտութեանն 'ի վերայ եած: Այլ

Digitized by Google

զինչ իցէ յիմարութիւն 'ի Քրիստոս. յորժամ զկա-
տաղեալ զխորհուրդս մեր 'ի պատշաճ ժամանակի ըն-
դաստուցանիցեմք. յորժամ անապատ և ունայն զմիտս
մեր յարտաքին խրատուցն առնիցեմք. յորժամ պարտ
իցէ զՔրիստոս ընդունել՝ պարապեալ և մաքուր առ 'ի
յընդունելութին ածային բանիցն յարմարիցեմք: Զի
յորժամ հրամայէ ինչ ած՝ զոր ոչ իցէ պարտ քննել,
հաւատով ընդունել պատշաճ է. զի յաղագս այնքա-
նեաց պատճառաց հետազօտելով պահանջել համարս
և զօրինակ խնդրել՝ յանդգնեցելոց և զվտանգս 'ի բաց
ընկենլոց անձին է: Եւ զայս դարձեալ 'ի նոցունց գրոց
յանդիման կացուցանել հանդիսացայց:

Զաքարիաս ամն էր սքանչելի և մեծ այր. քահա-
նայութեամբ պատուեալ յայ, զվերակացութիւն հա-
ւատացեալ ամենայն բազմութեանն: Այս Զաքա-
րիաս մտեալ 'ի սրբութիւն սրբութեանցն 'ի նոյն ինքն
յանմատանելիսն, զոր միայն յամենայն մարդկանէ նմա
ևեթ օրէն էր տեսանել: Նայեաց զկարգ բազմութեն
ամենայն զուգահաւասարէր և սպասաւորէր յաղագս բո-
վանդակ յոլովութեանն ընծայելով այ, և հաշտեցու-
ցանելով զտէրն ընդ ծառայսն: Իբրև միջնորդ ամն էր
այ և մարդկան, ետես հրեշտակ 'ի ներքս կացեալ. և զի
հիացուցին դէմքն զայրն, ասէր նմա. "Մի երկնչիր,
Զաքարիաս, լսելի եղեն աղօթք քո և ծնցիս որդի":
Եւ ո՞ր է այս յարմարութիւն. յաղագս ժողովրդեանն
աղաչէր, վասն մեղաց պաղատէր, թողութիւն խնդրէր
ծառայակցացն և ասէր. "Մի երկնչիր, լսելի եղեն ա-
ղօթք քո". և լսելի լինելոյն ցոյց առնէ. "Ծնցիս որ-
դի զՅովհաննէս": Այլ և յաւէտ օտարագոյն. վասն
զի յաղագս մեղաց ժողովրդեանն աղաչէր, և հանդեր-
ձեալ էր ծնանիլ որդի որ գոչելոց էր "Ահա գառն այ
որ բառնայ զմեղս աշխարհի", յիրաւի ասաց՝ լսելի ե-
ղեն աղօթք քո և ծնցիս որդի:

Եւ զինչ նա: Վասնզի խնդրելին այս է՝ եթէ քննել
զօրինակ ածային հրամանացն ներելի չէ, և եթէ զա-
սացեալն հաւատով ընդունել է պարտ և արժան: Հայե-
ցաւ 'ի հասակն իւր, յալիսն, 'ի մարմինն տկարացեալ.
հայեցաւ և յամլութիւն կնոջն և թերահաւատեաց,
զօրինակն խնդրեաց ուսանել և ասէր՝ ուստի ծանեայց

զայդ. զիա՞րդ, ասէ, լինիցի այդ. ահա ես ալեւորեցի և ծերացայ, և կին իմ անցեալ զաւուրբք. հասակ տարաժամ, բնութիւն անպիտան. զիա՞րդ ծնիցի քան պատմեալդ: Այս որ սերմանեան տկար, անդաստանն ան-ծնունդ: Բայց թերեւս թուիցի ոմանց թողութեան ար-ժանաւոր լինել զնորայն յարմարութիւն խնդրելով և կարծել իրաւացի ինչ առնել. այլ ոչ յայդ թուեցաւ ար-ժանաւոր լինել. և մանաւանդ յիրաւի: Զի յորժամ ած հրամայէ, խորհուրդս շարժել ոչ է պարտ և ար-ժան, ոչ զնորայն յարմարութիւն և ոչ զբնութեանն զ-հարկաւորութիւն առաջի արկանել և ոչ այլ ինչ յայս-պիսեացն. վասն զի քան զամենայն զայնասիկ գեր ՚ի վե-րոյ է հրամանին զօրութիւնն, և ոչ յիմեքէ ՚ի խափան-մանէ հասանի:

Զինչ առնես, ով այր. ած խոստանայ և դու ՚ի հա-սակ ապաստանիս և ծերութիւն առաջի արկանես. մի՞ զօրաւորագոյն իցէ ծերութիւնդ քան զխոստմունսն այ. մի՞ հզօրագոյն իցէ բնութիւնդ քան զարարիչ բնութեանդ: Ո՞չ գիտես զի զօրաւորք են գործք բանից նորա: Բան նորա զերկին հաստատեաց, բան նորա զարարած ՚ի յո-ընէից. նորա բանն զհրեշտակս արար, և դու յաղագս ծննդեանն յերկուանաս: Վասն այնորիկ զայրացաւ հրեշտակն և ոչ յաղագս քահանայութեանն ներեաց, այլ նորին իսկ աղագաւ պատուհասեցաւ մեծապէս. զի առաւել քան զայլս պատիւ ունէր բանի, և ՚ի հաւատս քան զայլսն առաւելագոյն լինել էր պարտ և արժան:

Այս զինչ էր օրինակ պատուհասին: "Ահա լիցիս լռեալ": Եղուդ քեզ, ասէ, ապաստաւորեաց բանից ան-հաւատութեան, դոյն ընկալջիր յանհաւատութենէդ զտանջանսդ, ահա լիցիս լռեալ ոչ խօսելով մինչև եղի-ցին այդոքիկ: Զմտաւ ած զմարդասիրութիւնն այ: Թերահաւատես յիս, ասէ, ընկալ այժմ զպատուհասդ. և յորժամ իրօք ընձեռեսցիս զպտուղն, յայնժամ լուծից զկարկութիւն. յորժամ ուսցիս եթէ յիրաւի պատժե-ցար, յայնժամ ՚ի բաց վճարեցից ՚ի պատուհասէդ:

Լուիցեն Անոմեանքն զիարդ բարկանայ ած ՚ի հար-ցաքննելն. Այլ եթէ նա թերահաւատեաց ՚ի մանկա-նացն ծնունդն պատժեցաւ, դու զանճառելին և զգե-րագոյնն հարցափորձելով զիա՞րդ փախիցես ՚ի պատու-

հաւէն, ասա ինձ։ Նա ոչ հրաժարեաց, այլ ուսանել կամեցաւ և ոչ դիպեցաւ թողութեան. դու դիտել բռնադատես զամենեցուն անտեսանելին և անհասանելին, զո՞ր ունիցիս զպատասխանիս, զո՞րս ոչ հաստատեսցես 'ի վերայ քեզ զպատիժսն։ Բայց որ յաղագս ծննդեանն են բանք՝ մնասցեն 'ի պատեհագոյն իւրեանց ժամանակին. այժմ ճանապարհաւ գնասցուք յառաջիկայ պատճառն զոր յառաջագոյն թողուք 'ընչխարս, զսատակիչ արմատն խլել. ձեռնարկելով զմայրն ամենայն չարեաց։

Ուստի՞ 'ի նոսա աղանդս այս բուսաւ. ո՞ր է արմատ ամենայն չարեաց։ Հաւատացէք, սարսուռ զիս առնու յորժամ հանդերձիմ զայս խօսել զոր խորհին նոքա 'ի միտս իւրեանց յարաժամ։ Եւ զի՞նչ իցէ արդեօք արմատ չարեացն այնոցիկ։ Յանդգնեցաւ մարդ՝ ասել եթէ զա՛ծ գիտէ որպէս նա ինքն զինքն գիտէ։ Եւ այս յանդիմանութեան ինչ կարօտանայցէ՞ ցուցանելոյ. ո՞չ էր բաւական միայն յառաջ բերումն բանիցդ ցուցանել զնոցա զամբարշտութիւնն։ Քանզի մոլորութիւն իմն է այս յայտնապէս, խելագարութիւն աններելի, նոր ամբարշտութեան օրինակ։ Ոչ ոք այսպիսի, ոչ ինչ ոչ երբէք ոչ 'ի միտ արկանել և ոչ լեզուաւն արտաքս բերել յանդգնեցաւ։ Ո մտաւ ած, թշուառական և հէք, ո՛ ես և զո՞ քննես. մարդ ես և զա՛ծ քննես. բաւական են մտածմունքդ սոսկ՝ ցուցանել զյիմարութեանդ գերազանցութիւն. մարդ հող և մոխիր, մարմին և արիւն, խոտ և ծաղիկ խոտոյ, ստուեր և ծուխ և ընդունայնութիւն, և քան զայս տկարագոյն ես։ Մի՞ ինչ կարծիցես եթէ չարախօսութիւն իցեն բնութեն՝ ասացեալքս. քանզի ոչ ես զայսոսիկ ասեմ, այլ մարգարէքն իմաստասիրեն. ոչ անպատուելով զմեր զազգս, այլ զիջուցանելով զանմտացն զամբարհաւաճութիւն. ոչ անպատուելով զմեր բնութիւնն, այլ նուաստացուցանելով զկատաղեցելոցն զհպարտութիւն։

Քանզի եթէ այսքան և այսպիսի ասացին նոքա, և տակայն երևեցան ոմանք որք սատանայի մեծաբանութեանն յաղթեցին. եթէ ոչ ինչ յայսցանէ ասացեալ էր, ո՞ւր արդեօք ոչ էին արտաքս յամբարտաւանութենէ վարեալք, ասա ինձ։ Ունին զդեղն 'ի վերայ կացեալ՝ և տակաւին այտումն, և ո՞ւր արդեօք ոչ ծանրու-

թեամբ և ամբարհաւաճութեամբ լինէին ուսուցեալք եթէ ոչ այնքան և այսպիսի էր նոցա երևեցուցանել։ Լուր զինչ ասէր արդար հայրապետն յաղագս իւր. "Բայց ես հող և մոխիր"։ Ընդ ա՜յ խօսէր և ոչ ամբառնայր զինքն համարձակութեամբ. այլ նոյն ինքն այն չափաւորէր զանձն՝ հաւանեցոյց զնա։ Սոքա որք և ոչ ստուերի նորա են արժանաւորք, քան զհրեշտակս մեծագոյնս զինքեանս կարծեն, որ է վերջին մոլորութեան ցոյցք։ Ո՜ծ, ասա ինձ, քննես, զանսկիզբն զանյաղթելին զանմարմինն զանապականն, որ ամենայն ուրեք է մերձ, որ քան զամենայն գերազանցէ։ Լուր զինչ իմաստասիրեն մարգարէքն յաղագս նորա և զարհուրեցուցանեն. "Ո հայի յերկիր և առնէ նմա դողալ"։ Հայի միայն և սասանեցուցանէ զայսպիսի և զայսքան երկիր։ "Որ մերձենայ 'ի լերինս և ծխին. որ սասանեցուցանէ զ'ի ներքոյ երկինս 'ի հիմանց, և սիւնք նորա սասանին. որ ապառնայ ծովու և ցամաքեցուցանէ զնա. որ ասէ անդնդոց անապատացիր"։ "Ով ետես և փախեաւ, և Յորդանան յետս դնաց։ Լերինք խայտացին իբրև զխոյս, և բլուրք որպէս գառինս մաքեաց"։ Ամենայն արարածք դողդղին զարհուրին դողան. բայց նոքա և եթ արհամարհեն անտես առնեն անարգեն զիբեանց զփրկութիւնն, ոչ ասեմ՝ զամենեցուն զտէրն։

Յառաջնումն զնոսա վերին զօրութեամբքն ողջախոհացուցաք, հրեշտակօքն, հրեշտակապետօքն, սերովբէիւքն, քերովբէիւքն, և այժմ զգալի արարածովքս, և ոչ յայսցանէ պատկառեն։ Ո՞չ տեսանես զայս զերկինս զիա՛րդ գեղեցիկ է, զիա՛րդ մեծ, ո՛րպէս պայծառ աստեղաց պարուք պատկեալ է. ո՛րքան ժամանակս տևեաց։ Քանզի հինգ հազար և աւելի ևս ամանակս եկաց մինոյն, և յոլովութիւն ժամանակին ոչ եած 'ի վերայ նորա ծերութիւն. այլ որպէս ոք զօրաւորագոյն իմն և զըւարճանալով զմարմինն ծաղկեալ ունիցի և յարբունս հասակի զգեղեցկութիւն, նոյնպէս և երկին որպէս 'ի սկզբանն վկճակեցաւ՝ զգեղեցկութիւնն պահեաց, և ոչ 'ի ժամանակէն եղև տկարագոյն։

Այլ զայս զգեղեցիկ զմեծ զպայծառ զտարածեալ զաւանակդ, յայսքան ժամանակս կացեալ մնացեալ, ա՜ծն այն զոր քննես, և ընդ քո խորհրդովք բովանդակութե-

արկանես, որպէս թէ ոք 'ի խաղ տաղաւար ինչ ունի-
ցէ՝ այնպէս համդերձ դիւրութեամբ գործեաց: Եւ զայս
յայտնելով Եսայի ասէր. «Որ կացոյց զերկինս որպէս
կամար և ձգեաց զնա իբրև զխորան 'ի վերայ երկրի»:
Բայց զերկիրն կամիցիս տեսանել. այլ և զառ իբրև զոչ-
ինչ արար: Զի վասն նորա ասէ. «Որ կացոյց զերկինս
որպէս կամար և ձգեաց զնա իբրև զխորան 'ի վերայ
երկրի»: Իսկ յաղագս սորա, «Որ ունի զոլորտս երկ-
րի, ո արար զերկիր իբրև զոչինչ»: Զայսպիսի և զայս-
քան: Զմտաւ ած զլերանց ծանրութիւն, զորքան ազգս,
զորքան բարձրութիւնս և զյոլովութիւնս տնկոց, զքա-
նի քաղաքս և զորքան շինուածոց մեծութիւնս, զորքան
չորքոտանեաց զգազանաց զսողնոց զամենապատիկ յոլո-
վութիւն 'ի վերայ մկանանց իւրոց բերէ:

Եւ սակայն զայսպիսիս և զայսքան այնպէս դիւրաւ
արար, մինչ զի մարգարէին և ոչ օրինակ ինչ դիւրու-
թեանն կարելով գտանել, ասէ՝ զերկիրս արար իբրև
զոչինչ: Վասն զի ոչ է բաւական մեծութիւն և գե-
ղեցկութիւն երևելեացս զարարչին յանդիման կացու-
ցանել զզօրութիւն, այլ յոյժ 'ի չափոյ մեծութենէ ու-
ժոյ արարչին պակասեալ գտանին այսոքիկ: Ամենայնի
այլոցն գտանեն օրինակ մարգարէքն խրատու ըստ զօ-
րութեան իւրեանց կարգալով յայտնել զինչ առաւել
մեզ յաղագս այ զօրութեանն: Եւ զինչ այն. ոչ մի-
այն 'ի մեծութիւն յաւելուլ յարարածս, այլ և զօ-
րինակ արարչութեանն ասել. զի յերկոցունց կողմանց՝
և 'ի մեծութենէ եղելոցս և 'յարարչութեանն դիւրու-
թենէ կարասցուք արժանաւոր ինչ ըստ մերում զօրու-
թեան մտածութիւնս առնուլ յաղագս այ զօրութեանն:

Արդ մի զմեծութիւնն միայն քններ զեղելոցս, այլ
և զդիւրութիւն արարողին. զի ոչ յաղագս երկրի և եթ
ցուցանի այս, այլ և 'ի նմին ինքն 'ի բնութեան մարդ-
կան, երբեմն ասելով, «Որ ունի զոլորտս երկրի և որք
բնակեալ են 'ի սմա իբրև զմարախ», և երբեմն «Ա-
մենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի 'ի դուլէ են առա-
ջի նորա»: Ո՛չ վայրապար զանց առներ զքանիս, տա-
րածեա զառաջեալն գեղեցկապէս և սփռեա: Զմտաւ
ած զամենայն հեթանոսս և զԱսորիս և զկիլիկեցիս և
զկապադովկացիս և որք յԵւքսինոն Պոնտոս բնակեալ

Digitized by Google

են, զԹրակացիս, զՄակեդոնացիս, որք յԵւրոպոյ են ա-մենեքեան, որք յԱթէնս բնակեալ են 'ի մերում գա-ւառիս, որք 'ի կղզիս զԲրետանացիս, զսարմատացիս, զՀնդիկս, որք 'ի Պարսից երկրէն բնակեալ են, զան-բաւ զազգսն զայն ամենայն զորոց և ոչ զանուանսն գի-տեմք: Այլ ամենեքեան այս ազգք իբրև զկաթիլ մի 'ի դուլէ են առաջի նորա: Քանե՞րորդ մասն ես դու՝ կա-թին այնորիկ, ասա ինձ, զի քննես զԱծ որում ամե-նայն հեթանոսք իբրև զկաթ մի 'ի դուլէ են. և զի՞նչ պարտ և արժան է ասել յաղագս երկնի և երկրի և ծո-վու և մարդկան բնութեան:

Ասցուք 'ի վերոյ քան զերկինս բանիւ և 'ի հրեշտակսն երթիցուք: Գիտէք ամենայն իրօք զայս զի անտարակոյս այսմ երևելւոյս մի հրեշտակ զուգահաւասար է, մանա-ւանդ թէ յոյժ պատուականագոյն: Քանզի եթէ ըզ-մարդ արդար ոչ արժէ աշխարհս, յաւէտ ևս ոչ արժէ-ցէ զհրեշտակ, զի յոյժ մեծագոյնք իցեն հրեշտակք քան զարդարս. այլ սակայն բիւրք բիւրոց են հրեշ-տակք 'ի վեր և հազարք հազարաց հրեշտակապետք, ա-թոռք, տէրութիւնք, պետութիւնք և իշխանութիւնք և անթիւ գունդք անմարմնոցն զօրութեանց և ցեղք ան-համարք: Եւ զայսօրիկ զամենայն զօրս հանգերձ այն-պիսի դիւրութեամբ արար, զոր և ոչ մի բան յանդի-ման կացուցանել կարասցէ. վասն զի բաւական եղև նո-րա կամելն առ ամենայն: Եւ զոր օրինակ առ մեզ ա-խորժակք ոչ ընձեռեն աշխատութիս, նոյնպէս և նմա գործելն զայնքանս և զայնպիսի զօրութիւնս: Եւ զայս մարգարէն երևեցուցանէ ասելով. «Զամենայն որքան կամեցաւ և արար տէր յերկինս և յերկրի»: Տեսա-նես, ոչ միայն առ արարչութիւն երկրի, այլ և առ գե-ղեցկութիւն վերին զօրութեանցն բաւական կա-մելն և եթ նորա:

Զայս լսելով ո՞չ ողբասցես զքեզ, ասա ինձ, և 'ի վայր թաղեսցիս յայդքան հպարտութիւն ամբարձեալդ: Զի զոր փառաւորել միայն և երկիր պագանել էր պարտ և արժան, զնա իբրև զմի ոք յանարգաց իւրոց հարցա-քննել հակառակես: Յաղագս այսորիկ և Պաւղոս բա-ղում իմաստութեամբ լցեալ տեսանելով զանհաւա-սարելի գերազանցութիւնն այ և զանարգութիւն մարդ-

կայլն բնութեանս, առ որս հետազօտեն զնորա զմնօրէնութիւնն, սաստելով և հանդերձ բաղում դժուարելով ուժգնապէս ասէր. "Ով մարդ, դու ո՞ ես որ պատասխանի տաս այ,,։ Ո՞ ես, զմտաւ ած նախ զառաջին զքո բնութիւնդ. զի ոչ ինչ է կարողութիւն անուն զըտանել որ յանդիման կացուցէ քեզ զքո անարգութիւնդ։

Բայց թերևս ասիցես, սուրբ եմ ազատութեամբ պատուեալ։ Պատուեցար ոչ զի վիճաբանեսցես ազատութեամբդ, այլ զի պատուելովդ 'ի հնազանդութիւն վարեսցիս պատուողին։ Պատուեաց զքեզ ած ոչ զի թըշնամանեսցես զնա, այլ զի փառաւորեսցես. և թշնամանի նա, յորժամ զբնութիւն նորա քննես։ Քանզի եթէ ոչ հետազօտել զխոստմունս նորա՝ փառաւորել է զնա, հարցաքննելն և խուզելն՝ ոչ զհրամանն միայն, այլ և զնոյն ինքն զհրամայողն անպատուել է։

Եւ զի ոչ հարցաքննել զխոստմունս նորա՝ փառաւորել զնա է, լուր Պաւղոսի որ ասէր վասն Աբրահամու և հնազանդութեան նորա և յամենայնի հաւատոյն. "Ետես, ասէ, զիւր մարմինն մեռեալ, և 'ի մեռելութիւն արգանդի Սառայի հայեցաւ. բայց աւետեացն այ ոչ երկմտեաց անհաւատութեամբ, այլ զօրացաւ հաւատովք,,։ Ամլութիւն և հասակն 'ի հրաժարումն արկանէին, և հաւատն 'ի քաղցր յոյսն յերկարէր։ "Այլ զօրացաւ հաւատովք, ետ փառս այ, և հաւանեցաւ եթէ որ խոստացաւն՝ կարող է առնել,,։ Տեսանե՞ս զի որ հաւանի, յաղագս որոյ ած խօսի, փառս տայ այ հաւատալովն նմա, և որ թերահաւատէ՝ զանպատուութի իւր դարձուցանէ 'ի գլուխ իւր։ "Դու ո՞ ես որ ընդդէմ պատասխանի տաս այ,,։

Եւ ապա կամելով ցուցանել զմիջոց մարդկան և այ՝ եցոյց ոչ որքան պարտ էր, այլ սակայն 'ի տուելոյ առակէն կարողութիւն է և մեծագոյն ևս զանազանութեան մտածութիւնս առնուլ։ Զինչ ասաց. "Միթէ ասիցէ՞ ստեղծուածն ցստեղծիչն թէ ընդէ՞ր զիս արարեր այսպէս. և կամ թէ ո՞չ ունիցի իշխանութիւն բրուտն կաւոյն 'ի նմին զանգուածոյ առնել անօթս՝ զոմն 'ի պատիւ և զոմն յանպատուութիւն,,։ Զինչ ասես, այնպէս պարտիցիմ 'ի ներքոյ կալ այ որպէս կաւն բրտին։ Այո, ասէ, այդքան է միջոց այ և մարդկան որքան կա-

ւոյ և բրտի. մանաւանդ թէ ոչ այնքան է միջոց, այլ և յաւէտ ևս առաւելագոյն: Քանզի կաւոյ և բրտի բնութիւն մի է որպէս 'ի Յոբայ ասացաւ. «Թող զբնակեալս 'ի տունս կաւեղէնս, յորմէ և մեք իսկ ինքեանք 'ի նմին կաւոյ եմք»: Իսկ եթէ լաւագոյն ինչ երևեսցի և քաջավայելուչ քան զնա, զանազանութիւնն ոչ յայլայլութենէ բնութեան, այլ իմաստութիւն արուեստաւորին արար զայս: Իսկ զի 'ի կաւոյ ոչ ինչ հեռի ես կացեալ, և եթէ անհաւատես՝ հաւանեցուցանեն զքեզ գերեզմանք և տապանք. զի երթալով 'ի դամբարանս յառաջագոյն հրաժարեցելոցն, գիտասցես զի այս այսպէս լինի: Արդ կաւոյ և բրտի ոչ ինչ է ընդ մէջ. բայց այ և մարդկան այնքան է միջոցն, որքան և ոչ բան յանդիման կացուցանել կարասցէ և ոչ միտք չափով տանել: Արդ որպէս նա զհետ երթայ ձևացն բրտին, և ուր կամի նա՝ ձգէ և շուրջ բերէ, նոյնպէս և դու ըստ նմանութեան կաւոյն անձայն լեր յորժամ ած ինչ տնօրինել կամիցի: Ոչ 'ի բաց բառնալով զմեր զիշխանութիւն և ժամանացուցանելով զայս ասէր Պաւղոս. մի՛ լիցի. այլ բազում մտադիւրութեամբ զյօժարութիւնն մեր պապանձեցուցանէր:

Իսկ եթէ ախորժէք, տեսցուք զայն զի՞նչ արդեօք կամեցան ուսանել նոքա, զի այնպէս սաստկագոյնս կարկեաց: Զբնութիւնն արդեօք քննէին. և ոչ երբէք. այլ յոյժ նուաստագոյն զանօրէնութիւնն խուզէին զայ. ընդէ՞ր այս անուն տանջի, և վասն է՞ր այս անուն ողորմութիւն ընդունի. է՞ր աղագաւ այս անուն ազատ է 'ի պատժոց, և միւսն 'ի դժնդակութիւնս. մին թողութե հանդիպեցաւ, և միւսն ոչ: Զայս և զայսպիսիս հարցաքննէին: Իսկ ուստի՞ է այս յայտ. 'ի վերագունիցն քան զայս: Քանզի ասելով «Ապա ուրեմն ում կամի ողորմի և ում կամի խստանայ: Ասես արդեօք ինձ, զի՞ ևս մեղադրէ զի ախորժակացն նորա ո՞ եկաց ընդդէմ», ապա զայն 'ի վերայ եած՝ թէ «դու ո՞վ ես մարդ, որ ընդդէմ պատասխանի տաս այ»: Արդ որք զանօրէնութիւնն հարցաքննէին և խուզէին, ըմբերանէր Պաւղոս. և ո՛չ զերանելի զբնութիւնն զայն որ զամենայն տնօրինէ՝ հետաքօտել ոչ վարկանիցիս արդեօք բնաւ շանդեաց արժանաւոր. և զիա՞րդ ոչ իցէ այս վերջին մոլորութեան:

Յուր մարգարէին որ ասէ, մանաւանդ թէ տայ 'ի ձեռն նորա. "Եթէ հայր եմ ես՝ ո՞ւր են փառք իմ, և եթէ տէր՝ ո՞ւր է պատիւն իմ,,. վասն զի որ երկնչին ոչ քննէ, այլ երկիր պագանէ, ոչ հետազօտէ, այլ բարեբանէ և փառաւորէ:

Ուսուցէն քեզ զայս և վերին զօրութիւնքն և երանելին Պաւղոս. զի ոչ եթէ այլոց զայս սաստէր, ինքն ոչ անկեալ կայր այսպէս: Յուր զինչ փիլիսոփեցուցն ասէր, ցուցանելով եթէ տկարին մանկաւորսն[1] ունի 'ի գիտութիւն. որպէս կորնթացւոցն գրելով ասէր. "Ի մասնէ գիտեմք,, և զառաւանդակէն ոչ ևս. այժմ բուռն հարաք, "Եղբարք, ես զիս ոչ համարիմ հասու լեալ,,: Զինչ յայտնագոյն քան զայս ձայն. քան զփող պայծառագոյն ես գոչեաց, զաշխարհս ամենայն խրատելով սիրել, գութ ունել առ տուողն չափով գիտութեանս, և ոչ կարծել եթէ զամենայն առեալ իցէ այժմ: Զինչ խօսիս, ասա ինձ. զՔրիստոս ունիս որ 'ի քեզ խօսի, և ասես՝ ես ոչ վարկանիմ զիս հասու լեալ: Յաղագս այդորիկ ասացի զի զՔրիստոս ունիմ յիս որ խօսի. նա ինձ զայս ուսոյց: Որպէս և սոքա եթէ ոչ բոլորովին ամայիք էին 'ի հոգւոյն օգնականութենէ, և զզօրութիւն նորա զամենայն ոչ էր մերժեալ յիւրեանց անձանց, ոչ արդեօք Պաւղոսի յասել՝ ոչ վարկանիմ ես զիս հասու լեալ՝ սոքա յամենայնի հասու լեալ կարծէին զինքեանս:

Եւ ուստի յայտ է, ասեն, թէ յաղագս հաւատոց զայս խօսեցաւ և գիտութեան և օրինաց, և ոչ վասն վարուց և առաքինութեան՝ եթէ անարգ զիս ինքն վարկանիմ վարուք և առաքինութեամբ: Զայս մանաւանդ յայտ արար ասելով. "Զնահատակութիւն բարի նահատակեցայ, զընթացսն կատարեցի, զհաւատսն պահեցի. այսուհետև առաջի կայ ինձ արդարութեան պսակն,,: Արդ որ զպսակն հանդերձեալ էր առնուլ և զընթացսն կատարեաց, ոչ արդեօք ասէր՝ ոչ վարկանիմ զիս ինքն հասու լեալ. այլ զգործելին և զոչ գործելին ոչ ումեք յելիցս 'ի մարդկանէ աներևոյթ, այլ ամենեցուն քաջայայտ է և ծանօթ բարբարոսաց և պարսկաց և ամենայն ազգի մարդկան:

1 Գրեալ էր մարմնաւորսն 'ի ձեռագիրսն. ուղղագրեալ ստացաւ 'ի յունէն:

Եւ զի յայտնագոյն ևս զոր ասեմ՝ արարից երևելապէս, զնոյին ինքն զճառին ընթեռնում զյարմարութի։ Քանզի ասելովն "Տեսէք զշունսն և զգուշացարուք 'ի չար մշակացն,,, և բազում ինչ խօսեցեալ յաղագս եկամուտ հրէական վարդապետութեանն 'ի պատեհագոյն ժամանակի, 'ի վերայ եած ասելով. "Այլ որ ինչ միանգամ էր ինձ շահ, զայս վարկանիմ տուգանս յաղագս Քրիստոսի. այլ և համարիմ իսկ զամենայն տոյժս, զի գտայց ոչ ունելով զարդարութիւն յօրինացն, այլ յԱյ արդարութենէն և 'ի ձեռն հաւատոյ Յիսուսի Քրիստոսի,,։ Եւ ապա ասէ յորմէ հաւատոյ. "Ճանաչել զնա և զզօրութիւն յարութեան նորա և զհաղորդութիւն չարչարանաց նորա,,։ Զ ինչ իցէ՝ զօրութիւն յարութեան նորա. լուր զինչ ասէ։ Յարութեն ցուցաւ օրինակ. քանզի յոլովք և նախ քան զնա յարեան բազում անգամ մեռեալք, բայց այնպէս և ոչ ոք։ Զի այլքն ամենեքեան յարուցեալք՝ դարձեալ յերկիր դառնային, և ժամանակ մի 'ի բաց վճարեալք 'ի մահուն բռնութենէ՝ ընդ նորա իշխանութեամբ դարձեալ անկեալք լինէին։ Իսկ մարմինն տէրունական յարուցեալ՝ ոչ յերկիր դարձաւ, այլ յերկինս ել. զամենայն զօրութիւն թշնամւոյն ելոյծ. ընդ ինքեան զաշխարհ ա̃մ յարոյց, և այժմ յարքունական աթոռ նստի։

Զայս ամենայն զմտաւ ածելով Պաւղոս և ցուցանելով եթէ զայսքան և զայս ամենայն սքանչելիս խորհուրդ և ոչ մի բան յանդիման կարասցէ կացուցանել, այլ հաւատով միայն կարողութիւն է ուսանել և առնել յայտնի, ասէ. "Հաւատով ճանաչել զզօրութիւն յարութեան նորա,,։ Եւ արդ եթէ զյարութիւնն ոչ է կարողութիւն խորհրդոց գտանել, ևս առաւել զծնունդն զվերին։ Վասն այնորիկ խօսելով Պաւղոս յաղագս խաչին և չարչարանացն ասէր, և զայն 'ի հաւատոյն զօրութիւն դարձոյց. և ապա զայս բանս ամենայն շարժելով և յառաջանալով ասէր. "Եղբարք, ես զիս ոչ համարիմ հասու լեալ,,։ Ոչ ասաց՝ ոչ համարիմ գիտացեալ, այլ հասու լեալ։ Յայտնեաց եթէ տակաւին ճանապարհի կայ հեռաւորագոյն, գայ և յառաջանայ, բայց զվախճանն զամենայնի ոչ էառ։ Զնոյն և այլոց պատուիրէ ասելով այսպէս. "Որք միանգամ

Digitized by Google

կատարեալքս եմք՝ զայս խորհեսցուք, և զոր այլ նոյնպէս խորհիցիմք՝ և զայն ձեզ Ա̃ծ յայտնեսցէ,,: Տեսանե՞ս զի ոչ յաղագս վարուց և առաքինութեան է բանն, այլ յաղագս վարդապետութեան և հաւատոյ. քանզի առաքինութիւնք և վարք յայտնութեան ինչ ոչ կարօտանան, այլ վարդապետութիւն և գիտութիւն: Նա և այլուր յայտնէր զայս՝ ասելով. "Եթէ ոք կարծիցէ գիտել ինչ, ոչ ևս գիտաց,,: Ոչ ասաց պարզաբար՝ ոչ գիտաց, այլ որպէս պարտ և արժան է գիտել. ունի զգիտութիւն, այլ ոչ զհաւաստին և զաւարտեալն: Նա զի ուսցիս եթէ այս է ճշմարիտ՝ ոչ ինչ յաղագս վերագունիցն խօսիցիմք, այլ թէ ախորժես՝ 'ի խոնարհ առ երևելի արարածս զբանս ածցուք:

Ո՞չ տեսանես զայս երկին, զի զկամարի զկերպարան ամբողջ պահէ. և գիտեմք զայս երկին ոչ 'ի խորհրդոց, այլ զի յա̃ծային գրոց ուսաք և զի 'ի նոցանէ լուաք. բայց թէ զինչ իցէ բնութիւնն՝ անգիտանամք: Այլ եթէ ոք բռնադատիցէ և յամառիցէ, ասասցէ զի՞նչ է բնութիւնն երկնի, սա՞ռն արդեօք պաղեալ, եթէ ամպ խտեալ, եթէ օդ թանձրացեալ: Այլ ոչ ոք ունի յայտնապէս ասել և ոչ ինչ: Նա արդ տակաւին արդեօք ցուցանելոյ ինչ կարօտանայցե՞մք, ասա ինձ, առ 'ի յուսանել զմոլութիւն որք զԱ̃ծ ասեն գիտել: Զերկնի զայսորիկ որ հանապազ երևի՝ զբնութիւնն ոչ ունին ասել, զաներևութին Ա̃յ հաւաստեաւ խոստանա՞ն զբնութիւն գիտել: Նա ո՞ իցէ այնքան անզգայ, մինչ զի ոչ վերջին մոլութիւն և բամբասանս ասիցէ զայն:

Յաղագս այսորիկ աղաչեմ զամենեսեան զձեզ, զի իբրև 'ի խելագարութիւնս անկեալս և 'ի դիւահարութիւնս՝ ըստ ձերում կարողութե̃ հնարեցարուք բժշկել հանդերձ ցածութեամբ և հեզութեամբ խօսելով: Վասն զի յամբարտաւանութենէ 'ի նոսա աղանդն այն ծնաւ, և յոլով է մտաց նոցա այտուցն. և որք միանգամ այտուցեալ են վէրք, ոչ 'ի վերայ դնելոյ ձեռին հանդուրժեն, և ոչ խոշոր շօշափման համբերեն. յաղագս այնորիկ իմաստուն բժիշկք կակուղ սպնգով զայնպիսի զվէրս զնստուցանեն: Նա արդ զի և 'ի նոցա հոգւոյն վէր է այտուցեալ, իբրև կակուղ սպնգով ախորժելի ջուր և ըմպելի այնպէս զասացեալսն զամենայն 'ի

վերայ արկանել հնարեցարուք, զնստուցանելով զայտումն և զամբարտաւանութիւն զամենայն քակտելով, եթէ թշնամանիցեն, եթէ աքացիցեն, եթէ թքանիցեն, եթէ զինչ և առնիցեն: Մի՛ թողցես զբժշկութի՛, ով սիրելի. զի որ զմարդ խելագարեալ բժշկեն, հարկաւոր է բազում այգպիսեացդ համբերել: Եւ սակայն ոչ այնպէս 'ի բաց կալ պարտ, այլ վասն նորին իսկ մանաւանդ զնոսա աւաղել և արտասուել, զի այնպէս է նոցա հիւանդութիւնն:

Զայս առ զօրաւորսն ասեմք որք դրժանս և ոչ մի կարիցեն 'ի նոցա ընդելութենէ ընդունել և ոչ վնաս. բայց որ տկարագոյն ոք իցէ՝ փախիցէ 'ի նոցա մերձաւորութենէ, 'ի բաց վազեսցէ 'ի ժողովոյն, որպէս զի մի բարեկամութեանն իրք վնասատու պատճառք լինիցին: Նոյնպէս և Պաւղոս առնէր. ինքն ընդ հիւանդացեալսն խօսէր և ասէր. "Եղէ ընդ Հրեայս իբրև զՀրեայ, ընդ անօրէնս իբրև զանօրէն": Իսկ զաշակերտսն որք տկարագոյնքն անկեալ կային՝ 'ի բաց մերժէր, պատուիրելով այսպէս և ուսուցանելով. "Ապականեն զբարս քաղցունս խօսք չարք". և դարձեալ. "Ելէք 'ի միջոյ նոցա և որոշեցարուք ասէ տէր": Վասնզի բժիշկ եթէ երթայցէ առ ախտացեալն, և զնա և զինքն օգտի. իսկ տկարն և զինքն և զհիւանդն վնասէ՝ խառնելով ընդ ախտաժէտին. զնա ոչ կարէ օգնել, և յինքն ձգելով 'ի հիւանդութենէն զվնասն: Եւ որպէս որք յաջողաւս հայելով ընդունին յինքեանս ձգել ինչ յախտէն նոցա, բառնմին և որք ընդ հայհոյիչսն հաղորդին՝ համբերեն, եթէ իցեն տկարք՝ բազում ամբարշտութե՛ նոցա մասն յինքեանս ընդունելով:

Եւ արդ զի մի մեծամեծս զանձինս վնասեսցուք, փախիցուք 'ի նոցա ընդելութենէն. աղաչեսցուք և աղօթեսցուք առ մարդասէրն ա̃ծ, որ կամի զի ամենայն մարդ կեցցէ և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցէ: Եւ զատեսցուք զնոսա 'ի մոլորութենէն և 'ի սատանայի որոգայթէն, վերստին ածելով 'ի գիտութեանն լոյս յա̃ծ և 'ի հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

կութեան ։ Զի զա՟ծ ոչ ոք ոչ անպատուելով վնասել կարէ և ոչ բարեբանելով պայծառագոյն երևեցուցանել. այլ կայ և մնայ միշտ յիւրում փառսն, ոչ բարեբանութեամբք աճեցեալ և ոչ նուաղեալ հայհոյութեամբք ։ Իսկ մարդիկ որք փառաւորեն զնա արժանապէս, յաւէտ եթէ ըստ արժանւոյն և ոչ ոք կարէ, այլ ըստ իւրեանց կարողութեանն, զփառաբանութեան զպտուղս ինքեանք օգտին, և որք հայհոյեն և անարգեն՝ զիւրեանց փրկութիւնն ժանտացուցանեն ։ Զի որ ձգէ քար 'ի բարձունս՝ յիւր գլուխն ձգէ, յաղագս հայհոյչացն ամն ասաց ։ Քանզի զոր օրինակ որ զքարն 'ի բարձունս ձգէ՝ զերկնի զմարմինն հատանել ոչ կարէ և ոչ 'ի բարձրութիւն նորա հասուցանել, և զվէրն ընդունի յիւր գագաթնն՝ անդրէն առ ձգողն իջեալ քարին, նոյնպէս և որ հայհոյէ զերանելի զբնութիւնն զայն, զնա ինչ վնասել երբէք ոչ կարէ՝ որ յոյժ մեծագոյնն է և բարձր՝ քան եթէ ընդունել զվնասն, այլ հակառակ իւրում անձինն սուր սրէ՝ չարաբարոյ առ բարեգործն լինելով ։

Արդ կոչեսցուք զնա զանճառելին զանբովանդակելին մտօք զա՟ծ, զանտեսանելին զանհասանելին, որ յաղթէ զօրութեան մարդկային լեզուացն և գերազանցէ քան զմահկանացու մտաց զըմբռնումն, զանհետազօտելին զանքննելին հրեշտակաց, զանտեսանելին սերովբէից, զանիմանալին քերովբէից, զաներևոյթն պետութեանց իշխանութեանց զօրութեանց, և պարզաբար ամենայն արարածոց. յորդւոյ միայնոյ և 'ի հոգւոյն ծանուցեալ ։

Գիտեմ զի ամբարտաւանութեան բամբասանս դնեն բանիս, վասն զի և վերին զօրութեանցն անհասանելի գոլ զնա ասացի ։ Այլ ես յոլովագոյն բամբասեմ զնոցա մոլորութիւնն և զամբարհաւաճութիւնն ։ Քանզի ամբարտաւանութիւնն ոչ ասելն է թէ քան զեղելոցս զամենեցուն զըմբռնումն գեր 'ի վերոյ է արարիչն, այլ ասելն՝ թէ որ վերին զօրութեանցն է անհասանելի, կարողութիւն է նոցա յերկիր անկելոցն և այնքան 'ի նոցանէ 'ի բացէ կացելոց՝ իւրեանց խորհրդոցն տկարութեամբ բովանդակել և պարունակել ։ Բայց ես եթէ ոչ ցուցից զայս, յիրաւի ընդ ամբարտաւանութեան մեղադրութեամբք անկայց. և դուք եթէ յետ ցուցանե-

լոյ վերին զօրութեանցն անհասանելի՝ յամառիցէք և
հակառակիցէք գիտել զնա, որքանեա՞ց վհից և որքա-
նեա՞ց վախից ոչ իցէք արժանաւորք. զի որ անմարմին
զօրութեանցն է անտեսանելի, հանդերձ հաւաստեաւ
գիտել խոստանայք:

Արդ բեր այսուհետև ՚ի նոյն ինքն ՚ի ցոյցն երթի-
ցուք, դարձեալ զբանն յաղօթսն դարձուցանելով. վասն
զի բազում անգամ աղօթից յարմարութիւն տայ մեզ
զխնդրոյն ցոյցս: Կարդամք առ նոյն ինքն "Թագաւորն
Թագաւորաց և տէր տերանց, որ միայն ունի զանմահու-
թիւն ՚ի լոյս բնակեալ յանմերձենալի, զոր ոչ ոք ետես
՚ի մարդկանէ և ոչ տեսանել կարող է, որում փառք և
զօրութիւն յաւիտենական. ամէն": Այս բանք ոչ իմ,
այլ Պաւղոսի են: Դու ինձ ուսիր զանձինն երկիւղա-
ծութիւն և զսէրն արմատացեալ. քանզի յիշելով զԱծ՝
ոչ նախ առաջին ներբեաց ՚ի յարմարութիւն վարդապե-
տութեանն եղանել, մինչև զպատշաճագոյն պարտն հա-
տոյց նմա՝ փառաբանութեամբ փակելով զբանն: Քան-
զի "եթէ յիշատակ արդարոց հանդերձ գովութեամբ",
ևս առաւել յիշելն զԱծ բարեհամբաւութեամբ:

Ընդ զոյն և ՚ի յառաջաբան թղթոցն. սկսանելով
զթուղթն բազում անգամ՝ յորժամ յիշէ զԱծ, ոչ նախ
՚ի վարդապետութիւնն յառաջանայ, մինչև տայ նմա
զպարտն փառաբանութե: Սուր, գաղատացւոցն գրե-
լով ասէր. "Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱյ
հօրէ մերմէ և ՚ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, որ ետ
զինքն յաղագս մեր, որպէս զի զերծուսցէ զմեզ ՚ի մեր-
ձակայ յաւիտենէս ՚ի չարէս ըստ կամացն Այ և հօր. ո-
րում փառք յաւիտեանս": Եւ արդ հօ՞ր միայն արդեօք
առնիցէ զայս, և Քրիստոսի ոչ նոյնպէս: Սուր զի և
միածնին զայս արար. քանզի ասելովն եթէ "Աղօթէի
նզով լինել ՚ի Քրիստոսէ յաղագս եղբարց մերոց և
ազգականաց ըստ մարմնոյ", ՚ի վերայ էած. "Որոց որ-
դեգրութիւն և կտակարանքն և աւետիքն. յորոց Քրիս-
տոս ըստ մարմնոյ, որ է ՚ի վերայ ամենեցուն Ած օրհ-
նեալ յաւիտեանս. ամէն": Որպէս հօր, նոյնպէս և
միածնին զփառաբանութիւնն նախ տալով, ապա ՚ի յար-
մարութիւն եկն բանին: Քանզի լուաւ յորդւոյ որ ա-
սէր. "Զի ամենեքեան պատուեսցեն զորդի որպէս պա-
տուեն զհայր":

Digitized by Google

Եւ զի ուսանիցէք եթէ այս աղօթք ընձեռեն մեզ զցոյցսն, բեր զնա 'ի մէջ ածցուք: "Թագաւորն Թագաւորաց, ասէ, և տէրն տերանց, որ միայն ունի զանմահութիւն 'ի լոյս բնակեալ յանմերձենալի,,: Նկատանօր կալով հարց ցհերձուածողն՝ զինչ իցէ արդեօք 'ի լոյս բնակեալ յանհպելի: Զի ուսցիս, զի եթէ տունն անմերձենալի է, որչափ ևս առաւել բնակեալն 'ի նմա ած: Զայս ասէր ոչ զի տեղի և տուն շուրջ զնով կարծիցես, այլ զի բազում մտադիւրութեամբ զանհասութիւն նորա ուսցիս. զի ոչ 'ի լոյս բնակեալ յանհասանելի ասաց, այլ յանհպելի, որ քան զանըմբռնելին յաւէտ մեծագոյն է: Վասն զի անհասանելի ասի, յորժամ քննեսցի և ոչ հասանիցի խնդրողացն զնա. իսկ անմատելի՝ որ և ոչ հարցաքննութեանն ներէ 'ի սկզբանն, յոր և ոչ մերձ ոք լինել կարասցէ: Որպիսի ինչ, անհասանելի ասին խորք՝ յորս ընկենլով զինքեանս լուղորդք և սաստկապէս բերեալք յանդունդս՝ զապառուծըն անկարանան գտանել: Իսկ անհպելի այն ասի, զորոյ և ոչ զսկիզբն խուզել է կարողութիւն և ոչ քննել:

Զի ինչ առ այսոսիկ ասիցես այլ: Մարդկան է, ասէ, անհասանելի, և ոչ հրեշտակաց և ոչ գեր 'ի վերոյ զօրութեանցն: Իսկ արդ դու հրեշտա՞կ իցես արդեօք, ասա ինձ, և 'ի պար անմարմնոց զօրութեանցն կատարիցիս. ո՞չ ապաքէն մարդ ես և նոյին բնութեան ընդ իս. թերևս զբնութիւնդ ևս մոռացար: Գիտցուք մարդկան եւեթ անմերձենալի. թէպէտ և այս ոչ կայ առաջի, և ոչ զայս ասաց Պաւղոս "'ի լոյս բնակեալ յանմատելի մարդկան,,: Սակայն եթէ ախորժէք, ըստ ներելոյ գիցուք, ո՞չ ապաքէն և դու մարդ ես: Եւ արդ զի՞նչ՝ հրեշտակաց անմերձենալի. մի՞ եթէ այս առ քեզ ինչ առ հակառակողդ իցէ և առ քննողդ, որ ասեսդ եթէ մարդկային բնութեան հասանելի է բնութիւնն այն:

Բայց զի ուսցիս եթէ ոչ ինձ եւեթ, այլ և նոցին զօրութեանցն անմատելի է, լուր Եսայեայ զինչ ասէր: Յորժամ ասեմ զԵսայիաս, զհոգւոյն բանս ասեմ, վասն զի մարգարէն զհոգւոյն զօրութիւնն բարբառէր: "Եւ եղև 'ի տարւոջն յորում մեռաւ Ոզիա թագաւոր, տեսի զտէր նստեալ 'ի վերայ աթոռոյ բարձու և ամբարձելոյ, և սերովբէք կային շուրջ զնովաւ, վեց

թևք միոյ և վեց թևք միւսոյ, երկուքն ծածկէին ըզ-
դէմս իւրեանց և երկուքն զոտս,,։ Ի՞ր աղագաւ, ասա
ինձ, ծածկէին զերեսս, առաջի արկանելով զթևսն.
վասն է՞ր այլոց իրիք, այլ զի ոչ համդուրժէին բերել որ
յաթոռոյն վաղէին փայլատակունք և զճառագայթսն
զայնսաիկ։ Եւ սակայն ոչ զնոյն ինքն զլոյսն զանապական
տեսանէին, և ոչ զվճիտ բնութիւնն. այլ նուաստու-
թիւն ինչ երևելին։ Եւ զինչ իցէ խոնարհումնն. յոր-
ժամ ոչ որպէս էն ա̄ծ՝ երևեսցի, այլ որպէս կարիցէ
տեսանիլ որ հայիցին՝ այնպիսի զինքն ցուցանիցէ չափե-
լով զտեսողացն զտկարութիւն զիմաց 'ի ցոյցսն։ Եւ զի
խոնարհումն էր, 'ի նոցուն 'ի բանիցն է յայտ. "Տե-
սի, ասէ, զտէր նստեալ,,. և ա̄ծ ոչ նստի, վասն զի
մարմնոյ է ձևանալդ այդ. և "'ի վերայ աթոռոյ,,։ Աս-
տուած աթոռով ոչ բովանդակի, վասն զի անպարունա-
կելի է ա̄ծութիւնն։ Եւ սակայն զնուաստութիւն չհան-
դուրժէին ընդունել, թէպէտ և մերձ էին կացեալք.
քանզի "քերովբէք կային, ասէ, շուրջ զնովաւ,,։ Մա-
նաւանդ նորին իսկ աղագաւ ոչ զօրէին տեսանել, զի
մերձաւորագոյնք էին։ Մօտաւորս ոչ տեղեաւ ասէ, այլ
ցուցանել կամելով հոգին սուրբ եթէ քան զմեր բնու-
թիւնս մերձաւորագոյն բնութիւն այն՝ և այնպէս ոչ
կարէին տեսանել զնա. "Եւ սերովբէք, ասէ, կային
շուրջ զնովաւ,,. ոչ դարձեալ տեղի զեկուցանելով, այլ
ըստ տեղւոյն մօտաւորագոյնս զնոսա յայտնելով։ Վասն
զի զանհասութիւնն ոչ այնպէս գիտեմք մեք որպէս այն
զօրութիւնք. որքան մաքրագոյնք, և իմաստունք և տե-
սանողագոյնք են քան զմարդկան բնութիւնս։ Զի զոր
օրինակ արեգակնային ճառագայթքն անմերձենալիք են,
և ոչ այնպէս գիտէ կոյրն որպէս տեսանողն, նոյնպէս և
զա̄յն անհասութիւն ոչ այնպէս մեք գիտեմք որպէս և
նոքա. զի որքան կուրի և տեսանողի է միջոցն, նոյնքան
նոցա և մեր զանազանութիւն։ Որպէս զի և մարգա-
րէին լսելով ասել "տեսի զտէր,,, մի կարծիցես եթէ
զբնութիւնն նորա ետես, այլ զնոյն ինքն զխոնարհումնն,
և զայն տկարագոյն քան զվերին զօրութիւնսն. զի ոչ
կարաց տեսանել զնա որպէս քերովբէքն։

Եւ զինչ ես ասացից յաղագս երանելւոյ բնութեան
այնորիկ, ուր և ոչ զհրեշտակաց բնութիւն կարողու-

թիւն է մարդկան համդերձ համարձակութեամբ տեսանել: Այլ զի ուսցիս եթէ ճշմարիտ է այս, զայր 'ի մէջ ածից զնոյ սիրելի, որ բազում համարձակութիւն ունէր իմաստութեամբ և արդարութեամբ և 'ի յոլով ուղղութիւնս վկայեալ՝ զսուրբն Դանիէլ. զի յորժամ ցուցից յինքեան տկարացեալ և լքեալ և յերկիր անկեալ 'ի հրեշտակին մերձաւորութենէ, մի ոք սխալանս և չար մտածութիւս զայս կրել կարասցէ. այլ ցուցեալ հոգւոյն նորա համարձակութիւնն, բնութեանն նորա տկարութիւն յանդիմանի: Արդ այս Դանիէլ պահեաց երիս եօթներեակս աւուրց. հաց ցանկութեան ոչ եկեր, և ոչ գինի և ոչ միս եմուտ 'ի բերան նորա, և ոչ իւղով օծաւ. և ապա ետես զտեսութիւնն զայն յորժամ պատեհագոյն էր անձն իւր առ այնպիսւոյ տեսութեան ընդունելութի, 'ի պահոցն թեթևագոյն և հոգևորագոյն լեալ: Այլ զի՞նչ ասէր. "Ամբարձի զաչս իմ և տեսի, և ահա այր զգեցեալ բադէն" այս է պատմուճան ծ̃ծայից, "և մէջն իւր պնդեալ ոսկւով ովփազեաւ և մարմինն թարսեաւ և դէմք իւր իբրև զտեսութիւն փայլատականց. աչք նորա իբրև ջահք հրոյ, բազուկք և կարթք իբրև տեսութիւն փայլող պղնձոյ, և ձայն բանից իւրոց իբրև զձայն բազմութեան: Այլ ես միայն տեսի զերևումն զայն. և որք ընդ իմն էին ոչ տեսին, այլ թմբրութիւն մեծ անկաւ 'ի վերայ նոցա, և փախեան զարհուրեալք. և ոչ մնաց յիս զօրութիւն, և փառք իմ յապականութիւն դարձան": Քաջավայելուչ երիտասարդն և երկիւղ գալստեան հրեշտակին իբրև ոք որ վախճանիցի՝ այնպէս զնա ևս յոլովագոյնս արկանելով զգեղնութիւնն 'ի վերայ և ծախելով զծաղիկ գեղեցկութեանն և վատնելով զվայելուչ գոյն ամենայն երևմանն, վասն այնորիկ ասէ. "Փոխեցաւ փառք իմ յապականութիւն": Զի զոր օրինակ երասանակալն զարհուրեցելոյ և զերասանակն 'ի բաց արձակելոյ զուլամբ՝ ձիքն ամենայն 'ի վայր բերեալ լինին և կառքն բոլորովին կործանին, նոյնպէս և յոգին հանդիպել սովորեաց, յորժամ յահէ իմեքէ և 'ի հիացմանէ միտքն պաշարիցին. չփոթեալ իբրև զերասանակս ումանս զիւր զօրութի՞ն ամփոփէ յերկաքանչիւրոցն զգայութեանց մարմնոյ, ամայիս թողու զանդամսն, և ա-

նապատացեալ նոքա 'ի զօրութենէ ունողին զնոսա՝ անկանին և ցնորին, զոր և Դանիէլ կրեաց յայնժամ։

Եւ զինչ ապա հրեշտակն։ Յարոյց զնա և ասէ. "Դանիէլ այր ցանկալի, իմա զբանս զայսոսիկ զոր ես խօսիմ առ քեզ, և կաց 'ի վերայ ոտից քոց, զի այժմ առաքեցայ առ քեզ,,։ Եւ նա յարուցեալ դողալով յոտն կաց։ Եւ սկսեալ դարձեալ խօսել ընդ նմա հրեշտակին և ասել՝ եթէ "Յօրէ յորմէ ետուր զսիրտ քո իմանալ առաջի այ, լսելի եղեն աղօթք քո, և ես եկի 'ի բանս քո,,, դարձեալ 'ի վայր անկաւ յերկիր որպէս և թալկացելոցն դիպի։ Զի զոր օրինակ նոքա յարուցեալք և յինքեանս եկեալք՝ հայեցին յունելն մերում զնոսա և 'ի սրսկել զերեսօք ջուր ցուրտ թալկանան դարձեալ 'ի մերում ձեռս, նոյնպէս և մարգարէն կրեաց։ Քանզի հոգին զարհուրեալ, և զգիտացն մերձաւորութիւն ոչ բերեալ զծառայակցին, և ոչ լուսոյն այնմիկ կարացեալ հանդուրժել՝ ամբոխեալ լինէր, իբրև 'ի շղթայէ իմեքէ 'ի կապանաց մարմնոյն զինքն 'ի բաց հատանել ձեպէր. այլ նա տակաւին ունէր։

Լուիցեն որք զհրեշտակացն տէրն հետազօտեն։ Դանիէլ՝ յորմէ պատկառեցին աչք առիւծուցն, Դանիէլ՝ որ գեր 'ի վերոյ քան զմարդկային մարմին զօրացեալ՝ ծառայակցին մերձաւորութեան ոչ համբերեաց, անշշունջ կայր. քանզի "Դալարեցաւ, ասէ, փորոտի իմ 'ի տեսութեան իմում, և շունչ ոչ մնաց յիս,,։ Սոքա որք այսքան հեռացեալք են յառաքինութենէ արդարոյն, զնոյն ինքն զէութիւնն խոստանան գիտել հանդերձ ամենայն հաւաստութեամբ. զվերնակայն և զառաջինն, որ զբիւր հրեշտակսն զայնոսիկ արար, յորոց զմինն տեսանել Դանիէլ ոչ կարաց։

Այլ ածցուք զբանս յերկրորդ պատճառն և ցուցցուք թէ և վերին զօրութեանցն անտեսանելի է ած, թէպէտ և նուաստանայցէ։ Ընդէ՞ր, ասա ինձ, զթեւսն առաջի արկանեն սերովբէքն։ Եւ ոչ վասն միոյ այլ իրիք, բայց յաղագս առաքելականին "ի լոյս բնակեալ յանմերձենալի,,, զոր գործովքն յառաջաձայնեն. և ոչ նոքա միայն, այլ և որ գեր 'ի վերոյքն են քան զնոսա քերովբէքն։ Քանզի սերովբէքն մերձ կան, իսկ քերովբէքն աթոռ են այ. իբրև ոչ եթէ աթոռոյ ինչ կարօ-

տանայ ա՛ծ, այլ զի զատաքինութիւն զօրութեանն ուս-
ցէ։ Նոյն և միւսում եւս մարգարէին որ յաղագս նո-
ցա խօսի. «Եւ եղև բան տեառն առ Եզեկիէլ որդի
Բուզեայ 'ի վերայ Քոբար գետոյ»։ Եւ սա մերձ առ
գետն Տիգրիս կայր յայնժամ։ Զի յորժամ կամիցի
հրաշափառագոյն հանդէս ցուցանել ծառայից իւրոց ա՛ծ,
արտաքոյ քան զքաղաքն հանէ զնոսա 'ի մաքուր տեղիս
յամբոխից. որպէս զի մի խելք մի երևելեօք և մի ոք լսե-
ցենն բախիցեն հոգիքն, այլ բովանդակ համարձակութ՟
վայելեսցեն և երևելեօքն պարապելով տեսցեն։
Եւ զինչ նա ետես։ «Ահա ամպ, ասէ, 'ի հիւսիսոյ
կայր, և ճառագայթք շուրջ և հուր փայլատակեալ, և
'ի մէջ նորա իբրև զտեսութի ոսնակալի և ճառագայթք
'ի նմա, և 'ի մէջ նոյին նմանութիւնք չորից կենդա-
նեաց։ Եւ այս տեսութիւն նոցա. նմանութիւն մար-
դոյ 'ի վերայ նոցա, և չորք երեսք միոյ և չորք թևք միոյ,
և բարձրութիւն էր նոցա, և ահաւորք էին. և թի-
կունք նոցա լի աչօք շուրջ չորեցունց. և նմանութիւն 'ի
վերայ գլխոց նոցա գերագոյն, և թևք իւրաքանչիւր ու-
րուք, երկուքն ծածկէին զմարմինս. և 'ի վերայ հաս-
տատութեանն իբրև տեսութիւն շափիղայ քարի. նմա-
նութիւն աթոռոյ 'ի վերայ նորա, և 'ի վերայ նմանու-
թեան աթոռոյ նմանութիւն իբրև տեսակ մարդոյ։ Եւ
տեսի իբրև զնմանութիւն ոսնակալի 'ի տեսութենէ մի-
ջոյն և 'ի վեր, և 'ի տեսութենէ միջոյն մինչև 'ի խո-
նարհ իբրև տեսութիւն հրոյ, և ճառագայթք նորա
իբրև տեսութիւն աղեղան յորժամ իցէ յամպս յա-
ւուր անձրևոյ»։ Եւ զկնի այսորիկ ամենայնի կամե-
լով ցուցանել եթէ ոչ մարգարէք և ոչ զօրութիւնքն
այնոքիկ յանապակ բնութիւնն մերձեցան՝ ասէ. «Այս
է տեսութիւն նմանութեան փառաց տեառն»։

Տեսեր և աստ զխոնարհումնն։ Այլ սակայն և այն
զօրութիւնք էին։ Ուստի՞ է յայտ. 'ի նոցունց անուանցն։
Զի զոր օրինակ հրեշտակ ասի զի յա՛յ առ մարդիկ ա-
ռաքի պատմող, և հրեշտակապետ զի հրեշտակացն իշ-
խէ, նոյնպէս և նոքա անուանս ունին՝ զիմաստութիւնն
իւրեանց և զմաքրութիւն մեզ յայտնելով։ Եւ որպէս
թևք զբարձրութիւն երևեցուցանեն զբնութեանն, զի
և Գաբրիէլ թռուցեալ երևէր, իբրև ոչ եթէ թևք

Digitized by Google

էին հրեշտակապետին, այլ զի ուսցիս եթէ 'ի բարձրագունից տեղեացն և գեր 'ի վերոյ գնացիցն առ մարդկային բնութիւնս գայր, նոյնպէս և նոցա ոչ այլ ինչ զեկուցանեն թեւքն: Եւ զոր օրինակ թեւքն զբնութեն բարձրութիւն յայտնեն, և ածուն զքոյ 'ի նոսա հանգչելն, և աչքն զտեսանողութիւն, և մերձն լինել յաթուն և յարաժամն զնա օրհնելն՝ զարթնութիւնն և զհսկումն, նոյնպէս և անուանքն՝ զոմանց զիմաստութիւնն և զկիսոյն զմաքրութիւնն յայտնեն: Քանզի զի՞նչ է քերովբէ. յաճախութիւն գիտութեան: Եւ զի՞նչ սերովբէն. բերան հրեղէն: Տեսե՞ր զկարգ զմաքրութիւն և զիմաստութիւնն անուանն յայտնեաց: Եւ արդ եթէ ուր յաճախութիւն գիտութեան է՝ և ոչ ըղխոնարհումն ոչ կարեն տեսանել համարձակութեամբ, ուր մասնաւոր գիտութիւնն իցէ, որպէս ասէն Պաւղոս, "Ի մասնէ գիտեմք և ընդ հայելի և առակաւ,,, որքա՜ն անբարտաւանութեան իցէ որ և ոչ նոցա է տեսանելի՝ զայն իւրեանց կարծեն ծանօթ և երևելի գոլ:

Եւ զի ոչ քերովբէիցն և ոչ սերովբէիցն միայն, այլ և ոչ իշխանութեանցն և ոչ պետութեանցն և ոչ այլում ումեք ստացական զօրութեանցն հասանելի է ած, և զայս կամէի ցուցանել այժմ. այլ աշխատեցան ձեր միտք ոչ յաճախութեամբ, այլ սարսափմամբ ասացելոցս: Վասն զի դողայ և զարհուրի անձն բազում անգամ 'ի գեր 'ի վերոյ տեսութիւնս դեգերելով: Յաղագս որոյ բեր զանձն յերկնայնոցն իջուսցուք 'ի խոնարհ, և սփոփեսցուք զզարհուրեալս 'ի սովորական մխիթարութիւնս ապաւինելով: Եւ զի՞նչ է այս. աղօթել յաղագս որք ախտացեալն են այնպէս, զի բժշկեսցին երբէք: Զի թէ որք 'ի կղզիս և յոսկեհանութեան են և 'ի խիստ ծառայութեան և որք 'ի դիւէ լլկեալք հրամայիմք զած մաղթել, յաղագս այնպիսեացն ևս առաւել. զի և դժնդակագոյն է քան զդիւին ամբարշտութիւն: Անի թաղութիւն մոլորութիւնն այն. բայց այն հիւանդութիւն յամենայն պատասխանեաց զրկեալ է:

Բայց զի յաղագս վտանգելոցն 'ի դիւէ յիշեցաք զաղօթսն, կամիմ ինչ և ընդ ձերում սիրոյդ խօսել, և զդժնդակ ախտ եկեղեցւոյս 'ի բաց հատանել. զի և մեծ

իսկ յիմարութիւն է եթէ զարտաքինն հանդերձ այսքան խնամով բժշկեմք, և զմեր անդամն արհամարհեսցուք։ Եւ զի՞նչ է ախտն։ Բազմութիւնս այս անճառելի 'ի միասին խմբեալքս այժմ, որք հանդերձ այսպէս հաստատութեամբ հային յասացեալքս, յահաւոր ժամուն յայնմ յորում բազում անգամ խնդրեցի տեսանել, և ոչ կարացի. և յոյժ հառաչեցի, զի 'ի ծառայակցին խօսել սաստիկ է փոյթն, և յերկարեալ յաւաջամտութեամբ զինքեանս մեղմով՝ մինչև 'ի վախճան կան մնան. իսկ Քրիստոս երևել հանդերձեալ 'ի վերայ ա̄ծային խորհրդոյն, ունայն և անապատ եկեղեցիս լինի։ Ո՞ւր այս թողութեան իցէ արժանաւոր. պղերգութեամբն այնու և զգօնութիւնն զոր 'ի փոյթ լսելութեանն առէք՝ կորուսանէք։ Քանզի ո՞ ոչ ատգտանիցէ և զձեզ և զմեզ յորժամ տեսանիցէ զպտուղ լսելութեանդ վաղվաղակի 'ի վայր թօթափեալ 'ի ձէնջ։ Զի թէ հանդերձ հաւաստութեամբ հայէիք յասացեալս, 'ի ձեռն գործոց արդեօք ցուցանէիք զփոյթն. իսկ վաղվաղակի լսելն և 'ի բաց վազել՝ նշանակէ ոչ ինչ ընդունել յասացելոյս և ոչ ամբարել 'ի միտս։ Զի թէ կային մնային ասացեալքն յոգիս, ամենայն իրօք 'ի ներքս զձեզ ունէին, և առ սարսափելւոյն բազում երկիւղածութեամբ զձեզ առաքէին։ Բայց այժմ իբրև քնարերգակի ումեք լսելով, այնպէս ամայիք յամենայն օգտից 'ի դադարել ասողին անցեալ գնայք։

Եւ զի՞նչ իցեն ցուրտ յոլովից պատասխանիքն։ Աղօթել, ասեն, և 'ի տան կարեմք. բայց խօսից լսել և վարդապետութեանն 'ի տունս ոչ է կարողութիւն։ Խաբես զքեզ, ով մարդ. աղօթել և 'ի տան է կարողութիւն, այլ աղօթել այնպէս որպէս յեկեղեցւոջս՝ անկարութիւն է, ուր գոչումն միահամուռ առ ա̄ծ առաքի։ Ոչ այնպէս լսէ յորժամ առանձինն զտէրն աղաչիցես, որպէս հանդերձ եղբարբքն քովք։ Աստ է իմն առաւելեալ. զի՞նչ. համակամութիւն և սիրոյն կապ և քահանայից աղօթք, կարող են տկարագունիցն օժանդակել և 'ի միասին ելանել 'ի վեր յերկինս։ Եւ այլ տգէտ ես, զի՞նչ օգուտ 'ի բանիցն լինիցի յորժամ աղօթքն ոչ իցեն լծակցեալք։ Նախ աղօթքն և ապա բան. այսպէս և առաքեալքն ասէին. "Մեք աղօթից և սպասաւո-

րութեան բանին պարապեսցուք„ ։ Նոյնպէս և Պաւ-
ղոս առնէր՝ յառաջաբանս թղթոցն աղօթելով, զի իբ-
րև ճրագի լոյս՝ նոյնպէս և աղօթիցն լոյս առաջնորդես-
ցէ բանին ։ Եթէ սովորեցուցես զքեզ աղօթել հա-
ւատով, ոչ ինչ կարօտասցիս ծառայակցացն վարդա-
պետութեան. քանզի ինքն Քրիստոս առանց առաջնոր-
դի ուրուք լուսաւորէ զքո միտս ։ Եւ եթէ աղօթք այս-
քան ունի զօրութիւն, ևս առաւել ընդ բազմութեանն.
վասն զի մեծ է նորա զօրութիւնն և առաւել համար-
ձակութիւնն յաւէտ քան եթէ 'ի տուն և առանձինն ։
Եւ ուստի՞ է այս յայտ ։ Նմին իսկ Պաւղոսի լուր որ ա-
սէն. "Որ յայնպիսի մահուանէ փրկեաց զմեզ, և ապ-
րեցուսցէ. քանզի յուսամք թէ տակաւին ևս փրկեսցէ
գործակցութեամբ աղօթից ձերոց յաղագս մեր. զի
որ 'ի մեզ շնորհն է՝ յոլովից 'ի դէմս բազմաց գոհա-
ցի վասն մեր„ ։ Նոյնպէս և Պետրոս 'ի կապարանէն
զերծաւ, "վասն զի աղօթք էին յեկեղեցւոյն վասն նո-
րա լեալ առ ա̃ծ„ ։ Եւ արդ եթէ Պետրոսի օգնեցին ե-
կեղեցւոյն աղօթք, և զսիւնն զայն հանին 'ի կապարա-
նէն, զիա՞րդ դու արհամարհեսցես զզօրութիւնն զայն,
ասա ինձ, և զո՞ր ընկալցիս թողութիւն ։ Լուր և նմին
իսկ ա̃յ որ ասէն՝ թէ հաւանի յորժամ բազմութիւնն
հանդերձ բարեմտութեամբ զնա աղաչիցէ ։ Ընդ Յովնա-
նու խօսեցեալ տնկով դդմենոյն, յորում ոչ ինչ աշխա-
տեցաւ և ոչ սնոյց զնա՝ ասէր. "Ես ո՞չ խնայեցից 'ի
Նինուէ քաղաք մեծ, յորում բնակեալ են առաւել քան
զերկոտասան բիւր արանց„ ։ Ոչ վայրապար զբազմու-
թիւնն առաջի արկանէր, այլ զի ուսցիս եթէ հանդերձ
ձայնակցութեամբ աղօթելն՝ մեծ զօրութիւն ունին ։
Զայս ձեզ և 'ի մարդկային պատմութենէ երևելի առ-
նել կամիմ ։

Նախ քան զտասն ամ ըմբռնեցան ոմանք յապստամ-
բաց որպէս և դուք գիտէք. և ապա մին որ 'ի զօրաւո-
րացն էր՝ պարտական ամբարտաւանութեանն երևեալ,
գայր 'ի բերան առնլով ածեալ լինէր 'ի մահուն ճանա-
պարհ, յայնժամ 'ի ձիընթացսն ամենայն քաղաքն ըն-
թանայր, և 'ի գործարանսն արգելուլին, և հասարակ ա-
մենայն բազմութիւնն երթեալ յափշտակէին 'ի թա-
գաւորական բարկութենէն զդատապարտեալն, որ և ոչ

միում թողութեան էր արժանաւոր։ Իսկ արդ եթէ զթագաւորի սրտմտութիւն լուծանել կամելով համ-գերձ կանամբք և մանկտեամբք ընթանայք ամենեքեան, որչափ ևս առաւել եթէ զերկնից թագաւորն հանդերձեալք հաշտեցուցանել, և յափշտակել 'ի բարկութենէ նորա ոչ զմի ոք որպէս յայնժամ և ոչ զերկուս և կամ զերիս և կամ զհարիւր, այլ զամենեսեան որ յաշխարհի են մեղաւորք, և զվտանգեալսն 'ի դիւէ ազատել 'ի բանսարկուին որոգայթից, արտաքոյ նստիք և ոչ ընթանայք ամենեքին 'ի միասին, զի ա̃ծ 'ի ձայնակցութենէ ձերմէ պատկառեալ՝ և նոցա թողցէ զպատուհասն և մերոց մեղացն ներեսցէ։ Եթէ 'ի հրապարակս դիպեսցիս 'ի ժամուն յայնմ, եթէ 'ի տան և եթէ յանհնարելի իրս, ո՞չ քան զամենայն առիւծ ուժգնագոյն ևս զամենայն կապանս խզեսցես և 'ի հասարակաց աղօթսն ընթանայցես։ Իսկ զո՞ր ընկալցիս փրկութեան յոյս, ասա ինձ, 'ի ժամուն յայնմ, սիրելի։ Ոչ մարդիկ միայն գոչեսցեն զսարսռալի զբարբառն, այլ և հրեշտակք անկանին առաջի տեառն, և հրեշտակապետք աղաչեն. ունին և զժամն իւրեանց մարտակից, զպատարագն օգնական։ Իսկ զոր օրինակ մարդիկ ոստս ձիթենեաց հատանելով շարժեն թագաւորաց, տնկովն ողորմութիւն և մարդասիրութի̃ նոցա յիշեցուցանեն, նոյնպէս և հրեշտակք յայնժամ փոխանակ ոստոյ ձիթենեաց զնոյն ինքն զտէրունական մարմինն առաջի դնեն, և աղաչեն զտէր յաղագս մարդկային բնութեանս մեծաբարբառ ասելով՝ եթէ վասն սորա պաղատիմք զորս դու ժամանեալ այնպէս սիրել արժանի արարեր, մինչ զի և զանձն քո տալ յաղագս սորա. վասն որոյ մեքս աղաչեմք, յաղագս որոց դու զարիւնդ քո հեղեր. սոցա աղագաւս պաղատիմք, յաղագս որոց դու զմարմինդ քո պատարագեցեր։ Վասն այնորիկ և զլկեալս 'ի դիւէ 'ի ժամուն յայնմիկ կացուցանէ սարկաւագն, և ձևով մարմնոյն առնել հրամայէ զպաղատանսն. քանզի աղօթել նոցա ընդ հասարակ ժողովելոցս եղբարցս ոչ է օրէն։ Յաղագս այնորիկ զնոսա կացուցանէ, զի ողորմեսցի նոցա և թշուառութեանն վասն և անձայնութեանն իւրեանց՝ համարձակութեամբն առ նոսա վերակացութիւնն վարեսցի։

Արդ զայս ամենայն իմացեալ ընթացուք 'ի ժամուն

ոչն գիտեն զինքեանս, և ոչ ախորժեն գիտել զչափ մարդկային բնութեանս, զտարաժամ հակառակութիւն լուծանել փութացեալք։ Յաղագս այնորիկ և բազում մտադիւրութեամբ ոչ զայ երևումն միայն, այլ և զհրեշտակին ցուցաք անըմբռնելի լինել արդարոյն այնմ, և զպատմութիւնն զամենայն ձեզ ընթերցաք. և յաճախապէս ցուցաք զերանելին զԴանիէլ դեղնեալ դողացեալ և քան զթալկացեալն ոչ ինչ լաւագոյն կալ մնալ՝ ոգւոյն ձեպեցելոյ խզել զմարմնոյն կապանս։ Օ ի զոր օրինակ աղաւնի ձեռնընդել և ընտանի 'ի տան ուրեք բնակելով, յորժամ ահ իմիք զգասցէ՝ զարհուրեալ 'ի ձեղունն թռչի, և ընդ պատուհանն արտաքս ճանապարհն հայցէ՝ յերկիւղէն 'ի բաց փախչել ցանկացեալ, նոյնպէս և ոգի երանելւոյն այնորիկ յայնժամ 'ի մարմնոյն ելանել ձեպէր և յարտաքս ամենևին փութայր. ելեալ էր արդեօք և 'ի բաց թռուցեալ և զմարմինն ամայի թողեալ, եթէ ոչ հրեշտակին բուռն հարկանելով վաղվաղակի զնմանէ՝ 'ի բաց էր վճարեալ յահէն և յիւր կայեանն վերստին դարձեալ ածեալ։ Յաղագս այնորիկ զայս ասացաք յայնժամ, զի ուսանելով որքան հրեշտակ քան զմարդ զանազանեալ, և ծառայակցին գերազանցութք ողջախոհացեալք, և հակառակ տեառնն 'ի մոլորութենէ 'ի բաց ազատեսցին։

Արդարև զհրեշտակն տեսանել ոչ հանդուրժեաց որ այնքան համարձակութի ունէր, և սոքա այսքան հեռացեալք 'ի նմանէ, ոչ զհրեշտակն, այլ զնոյն ինքն զհրեշտակաց տէրն քննեն. նա զառիւծուցն սրտմտութի վանեաց, մեք և ոչ աղուեսուց յաղթող կարեմք լինել. նա զվիշապն ընդ մէջ եհերձ, և քան զգազանին բնութիւն զօրաւոր գտաւ համարձակութբն զոր առ ած ունէր, մեք 'ի դուզնաքեայ սողնոց զարհուրիմք. նա զթագաւորն իբրև զառիւծ սրտմտեալ ցածոյց, և զՆաբուգոդոնոսորայ բարկութիւնն որ քան զհմ բոց սաստկագոյն էր՝ 'ի բարբարոսական զօրսն բերեալ 'ի մէջ երևելով զնոսոյց, և զխաւարեալն զամենայն լուսաւորեաց։ Այլ նա որ լուսաւորեացն՝ զհրեշտակն տեսանելով եկեալ առ ինքն, դժնդակ խաւարաւ պաշարեալ լինէր, զո՞ր արդեօք ընկալցին զպատասխանիս որք զերանելի բնութիւնն զայն հետազօտել ձեռնարկեն։

Բայց և ոչ յայսմ վայրի զբանն դադարեցուցաք
յայնժամ, այլ և յիմաստուն զօրութիւնսն 'ի վեր հա-
նաք զպատմութիւնն, ցուցաք զ'ի բաց դարձումն զա-
չացն, զառաջի արկանել թևոցն, զանընդհատ գոչումն,
զի 'ի ձեռն ամենեցուն հիացումն և երկիւղ երևեցու-
ցեն մեզ անմարմնական զօրութիւնքն այնոքիկ. զի այն-
քան են իմաստունք քան զմեզ, որքան և մերձաւորա-
գոյնք են յանձառելի և յերանելի բնութիւնն յայն,
նոյնպէս և յաւէտ քան զմեզ զանհասութիւն գիտեն.
վասն զի գերազանցութիւն իմաստութեանն առաւելու-
թիւն գործէ զերկիւղածութեանն։

Ասացաք ձեզ յայնժամ թէ զինչ է արդեօք անմեր-
ձենալին, և եթէ քան զանհասանելին յոյժ է մեծա-
գոյն. և պատճառն յաւելաք՝ եթէ անհասանելին յետ
քննութեանն անհասանելի երևի. իսկ անհպելին և ոչ
ընդ հետազօտութեամբ իսկ անկանի և ոչ զճանապար-
հին սկիզբն ընդունի, յորժամ և զխորոցն զառակ կա-
րօտացաք ածել։ Ասացաք եթէ ոչ ասաց 'ի լոյս անհպե-
լի, այլ 'ի լոյս բնակեալ յանմերձենալի. և եթէ տունն
անմերձենալի իցէ, ևս առաւել որ բնակեալն է 'նմ։
Զայս ասէր Պաւղոս ոչ զի ընդ տեղեաւ բովանդակես-
ցէ զնմ, այլ զի յոլովութեամբ շուրջ գալով զբանիւն՝
զանիմանալին և զանմերձենալին յանդիման կացուսցէ։
Ի մէջ ածեալ անցուցաք և զայլ զօրութիւնսն՝ զքե-
րովբէսն, և ցուցաք զիարդ 'ի վերայ նոցա է հաստա-
տութիւնն, զիարդ քարն սառնագոյն, որպէս նմանու-
թիւն աթոռոյ և տեսակ մարդոյ և բոցաձև և հուր և
աղեղն, և զկնի այնորիկ ամենայնի ասէր մարգարէն.
"Այս տեսութիւն նմանութեան է փառացն տեառն,,.
և ամենեքումբք այնոքիւք ցուցաք զնյ խոնարհումն, և
զնոյն զայն անըմբռնելի վերին զօրութեանցն։

Ոչ վայրապար զայս վերստին գլխաւորեմ. այլ զի
պարտս ձեզ զխոստմանցն զայնոցիկ պարտիմ, կամիմ
ուսանել հաւաստեաւ զինչ հատուցի և զինչ մնացեալ
իցէ։ Նյպէս և որ զփոխսն պարտին՝ առնեն, զմուր-
հակն բերելով յորում բանն ամենայն գրեալ է, և ո-
րոց պարտին՝ զփոխսն ցուցանելով զմնացեալն հատու-
ցանեն։ Նյ ես այժմ իբրև 'ի մուրհակ ինչ բացեալ
զյիշատակս մտաց իմոց, որպէս մատամբ իւիք բանիս

զտուեալսն ցուցից, ’ի մնացեալսն այսուհետև երթամ։ Եւ զինչ իցեն մնացեալքն. զորս ցուցանեմ եթէ ոչ իշխանութիւնք և ոչ տէրութիւնք և ոչ այլ ինչ որ ստացական զօրութիւն է՝ ունի զհաւաստի ա՟յ զհաստումն։ Քանզի և են իսկ զօրութիւնք և այլք զորոց և ոչ զանուանսն գիտեմք։

Զմտաւ ածէք զամբարտաւանութիւն հերձուածողացն. զծառայիցն և ոչ զանուանսն գիտեմք, և զտեառնն զնոյն ինքն զբնութիւնն հետազօտեն, հրեշտակք և հրեշտակապետք, աթոռք և տէրութիւնք, պետութիւնք և իշխանութիւնք։ Բայց ոչ այս զօրք միայն են յերկինս, այլ անբաւ ազգք և ցեղք անհամարք, զորս և ոչ մի բան յանդիման կացուցանել կարացէ։ Եւ ուստի՞ է այս յայտ եթէ առաւել քան զայսոսիկ իցեն զօրութիւնք զորոց և զանուանսն ոչ գիտեմք։ Որ զայն ասաց Պաւղոս, և զայս ասէ այսպէս յաղագս Քրիստոսի. “Նստոյց զնա գեր ’ի վերոյ քան զամենայն իշխանութիւնս և զպետութիւնս և զզօրութիւնս և քան զամենայն անուն անուանեալ ոչ միայն յաւիտենիս յայսմ, այլ և ’ի հանդերձելումն„։ Տեսանէ՞ք զի են ոմանք անուանք անդ որք հանդերձեալք են ծանօթք լինել, որ այժմ անյայտք են։ Վասն այսորիկ ասաց. “Ոչ միայն ’ի յաւիտենիս այսմ, այլ և ’ի հանդերձելումն„։ Եւ զինչ սքանչելի է եթէ զբնութեանն զհաւատոյ գիտութիւնն ոչ ունիցին. ոչ ինչ է մեծ զայս ցուցանել։

Զտնօրէնութեանն զյոլովս ոչ գիտեն վերին զօրութիւնքն, նոքին իսկ պետութիւնքն և իշխանութիւնք և տէրութիւնք. և զայս դարձեալ ’ի նոցունց յառաքելական բանից ցուցցուք։ Զի ոմանք զտնօրէնութիւն նորա ընդ մեզ ուսան, այլ և ’ի ձեռն մեր. “Քանզի այլոց ազգաց ոչ ծանուցաւ, ասէ, որպէս այժմ յայտնեցաւ առաքելոց նորա և մարգարէից, լինել հեթանոսաց ժառանգակից և մարմնակից և հաղորդս աւետեաց նորա„։ Հրէիցն էին տուեալ աւետիքն. “Աւետարանաւն, ասէ, որոյ ես Պաւղոս սպասաւոր„։

Եւ ուստի՞ է այս յայտ եթէ այժմ ուսան վերին զօրութիւնքն. քանզի ասացեալքն յաղագս մարդկան ասացան։ Արդ լուր. “Ինձ անարգիս քան զամենայն մարդկան տուաւ շնորհս այս աւետարանել հեթանո-

սաց զանքննելի մեծութիւնն Քրիստոսի»: Զինչ ի՞ցէ անքննելի. զոր ոչ է կարողութիւն հետազօտել: Լուիցեն զարմացեալ զիարդ խիտ և 'ի վերայ իրերաց հարկանէ 'ի նոսա զնետսն. քանզի եթէ առատութիւնն անքննելի է, զիա՞րդ որ զառատութիւնն պարգևէ՝ անքննելի չիցէ: «Եւ առ 'ի լուսաւորել, ասէ, զամենեսին եթէ զինչ է տնօրէնութիւն խորհրդոյն որ ծածկեալն է առ ած. զի ծանիցի այժմ իշխանութեանց և պետութեանց 'ի ձեռն եկեղեցւոյ բազմապատիկ իմաստութիւն այ»: Տեսանե՞ս որքան պատիւ մարդկային բնութեանս եղև, զի 'ի ձեռն մեր և ընդ մեզ վերին զօրութիւնքն ծանեան զանձառելի զԹագաւորն:

Եւ ուստի՞ է յայտ եթէ յաղագս երկնաւորացն այնոցիկ ասիցէ, քանզի իշխանութիւն և պետութիւն՝ և զդևս գիտէ կոչել ասելով. «Ոչ է մեզ մարտ ընդ արեան և մարմնոյ, այլ ընդ պետութիւնս և ընդ իշխանութիւնս և ընդ աշխարհակալս յաւիտենից այսորիկ». մի՞ գուցէ և աստ զայն ասիցէ եթէ դևք զայս գիտացին: Եւ ոչ երբեք. այլ յաղագս վերին զօրութեանցն. քանզի ասելով պետութեանց և իշխանութեանց, 'ի վերայ եած՝ և որ յերկինս են: Վասն որոյ և աշխարհակալս զնոսա ասէ, ցուցանելով եթէ անգնալի է նոցա յերկինս. և զապստամբութիւնն զամենայն 'ի մերձաւոր աշխարհիս միայն ցուցանեն: Տեսե՞ր զիարդ ընդ մեզ և 'ի ձեռն մեր ծանեան զայս:

Բայց 'ի պարտուցն հատուցումն այսուհետև զբանն ածցուք, ցուցանելով եթէ ոչ գիտեն զնորա զօրութիւն պետութիւնք և իշխանութիւնք: Եւ զայս ոչ ասէ Պաւղոս, ոչ Եսայիաս և ոչ Եզեկիէլ, այլ միւս ոմն անօթ սուրբ, ինքն որոտման որդին, սիրելին Քրիստոսի Յովհաննէս, որ 'ի վերայ լանջաց տեառն անկաւ և զածային աղբերսն անտի ընկալաւ: Եւ զինչ ասէ նա. «Զած ոչ ոք ետես 'ի մարդկանէ երբեք»: Ճշմարտապէս որոտման որդի, զի քան զփող պայծառագոյն արձակեաց զձայն, որ բաւական է զամենեսեան զհակառակորդս ամաչեցուցանել: Այլ տեսցուք և զընդդիմակն:

Զինչ ասես, ով Յովհաննէս, ասա ինձ. «Զած ոչ ոք երբեք ետես»: Եւ զինչ արասցուք զմարգարէսն, որք ասեն թէ տեսաք զած. քանզի Եսայի ասէ. «Տե-

սի զտէր նստեալ 'ի վերայ աԹոռոյ բարձու և վերամբարձելոյ,,. և Դանիէլ դարձեալ. "Տեսի մինչև աԹոռք եդան և հինաւուրցն նստաւ,,. և Միքիա. "Տեսի զտէր ա՟ծ Իսրայէլի նստեալ յաԹոռ իւրում,,. և միւս մարգարէ դարձեալ. "Տեսի զտէր զի կայր 'ի վերայ սեղանոյն, և ասէ ցիս՝ հար զհաշտարարդ,,: Եւ յոլով այսպէս է ժողովեալ վկայուԹիւնս: Եւ զի՞որդ Յովհաննէս ասէ՝ զա՟ծ ոչ ոք ետես երբէք: Օ՛ր ուսուցիս եԹէ զհաւաստին՝ որ է հասումնն՝ և զհաստատունն գիտուԹիւն ասէ: Քանզի ամենայն այնոքիկ խոնարհմունք էին, բայց զվՃիտ բնուԹիւն նորա ոչ ոք 'ի նոցանէ ետես. և յայտ 'ի զանազանապէսն զնա տեսանելոյն է: Վասն զի ա՟ծ պարզ է և առանց շարադրուԹեան և առանց ձևոյ. իսկ նոքա ամենեքեան ձևս տեսանէին ազգի ազգիս: Եւ զայս դարձեալ 'ի ձեռն միւսոյ մարգարէին երևեցուցանէ, հաւանեցուցանելով զնոսա եԹէ ոչ զհաւաստի բնուԹիւնն տեսին. "Ես տեսուԹիւնս յաճախեցի, և 'ի ձեռն մարգարէիցն նմանեցայ,,. ոչ զնոյն ինքն զբնուԹիւնն զիմ ցուցի, այլ, ասէ, նուաստացայ առ տեսողացն տկարուԹեան: Յովհաննէս ոչ յաղագս մարդկան ասէ՝ Թէ զա՟ծ ոչ ոք ետես երբէք. քանզի այս յայտ էր յասացելոցն յայնցանէ՝ 'ի մարգարէական ձայնիցն ասեմ, որ ասէ՝ եԹէ "ՏեսուԹիս յաճախեցի, և 'ի ձեռն մարգարէից նմանեցայ,,, և որ առ Մովսէսն եղև հրաժարումն. քանզի նա փափագելով տեսանել զնա աներևակի, ասաց ա՟ծ. "Ոչ ոք տեսցէ զերեսս իմ և կեցցէ,,: Որպէս զի այն էր մեզ յայտնի խոստովանեալ:

Արդ ոչ յաղագս մերոյ բնուԹեանն միայն ասէ, այլ և վասն վերին զօրուԹեանցն՝ զա՟ծ ոչ ոք ետես երբէք. սորին աղագաւ և զմիածինն 'ի ներքս ածէ ուսուցող վարդապետուԹեանս: Օ՛ր մի ոք առիցէ Թէ ուստի՞ է այս յայտ, 'ի վերայ եած. "Միածինն որ 'ի ծոց հօր նա պատմեաց,,. արժանի հաւատոց 'ի ներքս մուծանելով զուսմանն վկայուԹիւն և զվարդապետ: Սակայն Թէ և զՄովսէսին մեզ յայտնել կամէր, աւելորդ էր ասել Թէ միածինն պատմեաց: Այլ նախ քան զՅովհաննու ասելն որպէս 'ի միածնէն լսելով, յայտնի մեզ մարգարէն ասաց որպէս լուեալ յա՟յ. բայց զի նուաղագոյն քան

զյայն ժամու ասացեալսն հանդերձեալ էր մեզ յայտնել՝ թէ և ոչ վերին զօրութիւնքն զնա տեսին, յաղագս այնորիկ 'ի մէջ ածէ զմիածինն վարդապետ:

Տեսութիւն աստանօր զգիտութիւնն իմա: Քանզի ոչ բիբք և աչք և կոպք են անմարմնոյն զօրութեանց. այլ որ է 'ի մեզ տեսութիւն, այս 'ի նոսա գիտութիւն է: Որպէս զի յորժամ լուիցես՝ եթէ զա̄ծ ոչ ոք ետես երբէք, զայն իմա լսել՝ եթէ զա̄ծ ոչ ոք երբէք ծանեաւ հաստատութեամբ: Նաև վասն սերովբէիցն, յորժամ եթէ ծածկէին զաչսն և զդէմսն պարսպէին, և քերովբէքն դարձեալ զնոյն առնէին, մի աչս և մի բիբս կարծիցես, քանզի մարմնոյ են այս ձևք. այլ 'ի ձևան այսոցիկ զգիտութիւնն նոցա զեկուցանել հաւաստա մարգարէին: Այլ յորժամ ասիցէ զխոնարհումն ոյ տեսանել ոչ հանդուրժեցին, ոչ այլ ինչ ասէ, այլ եթէ ըզհաստատուն գիտութիւն նորա և զհաւատս 'ի հաստումն նորա ոչ կարացին բերել, և ոչ համարձակութեամբ հայել 'ի վճիտ և 'ի մաքուր բնութիւնն. այլ և ոչ 'ի նմին 'ի նուաստութեանն: Նաև անկատար տեսանելն՝ չճանաչելն է:

Վասն այսորիկ և աւետարանիչն գիտացեալ եթէ ոչ է մարդկային բնութեան զայն գիտել, և ոչ վերին զօրութեանցն հասանելի է ա̄ծ, զնոյն ինքն որ յաջմէ նորա նստի և զամենայն զայս հաստատուն գիտէ, ածէ 'ի մէջ ուսմանս այսմ վարդապետ: Նաև ոչ պարզաբար ասաց որդի. զի թէպէտ և զայս էր ասացեալ՝ բաւական էր պապանձեցուցանել զանամօթիցն զբերանս: Զի որպէս բազում օծեալք՝ և մի օծեալ, նոյնպէս և յոլով որդիք՝ և մի է որդի. յաւելուած բանին մասն զգերազանցութիւն բաւականապէս ցուցանէր զմիածնին: Բայց սակայն ոչ շատացաւ այնու. այլ ասելով՝ ոչ ոք զա̄ծ ետես երբէք, 'ի վերայ եդ. “Միածին որդին որ է 'ի ծոց հօր՝ նա պատմեաց„: Նախ ասաց միածին, և ապա որդի. վասն զի յոլովք անուանն հաղորդութեամբ հատանէն զնորա զփառսն՝ մի 'ի բազմաց զնա կարծելով, զի որդի անուն հասարակ է ամենեցուն. որ՞ է սեփական նորա և առանձին՝ և ոչ ումեք յանկարգոյն, եդ յառաջագոյն՝ զմիածինն. զի նոքա հաւատասցեն թէ և հասարակն այն ոչ է հասարակ, այլ առանձին և տի-

Digitized by Google

կեցելոյ 'ի հայրենի ծոց՝ յաղագս ա̃մի հաւատասցես և մի ինչ յերկուասցիս այնուհետև ։ Եւ եթէ յամառիցիս ոչ և ոչ անամօթանալ կամիցիս, և զյաւիտենականէն զայս ասեմ գոլ յայտնի։ Զի որպէս յայնմ բանէ որ առ Մովսէսն ասացաւ "Ես եմ որ էն,, զյաւիտենականն զեկոյց, նոյնպէս և այնու բանիւ ասացելով "Որ է 'ի ծոց հօր,, զմշտնջենաւոր գոլ 'ի ծոց հօր կացողութիւն է իմանալ։

Արդ զի ամենայն արարածոց անհասանելի է բնութիւնն ա̃յ, այնոքիւք ամենեքումբք ցուցաւ. մնացեալ է այսուհետև յայտնել՝ եթէ որդի և հոգին սուրբ միայն հանդերձ ամենայն հաւաստութ̃ք զնա գիտեն ։ Բայց զայս 'ի միւս ևս խօսսն յապաղեսցուք, զի մի յաճախութեամբ հեղձուսցուք զյիշատակս ասացելոցս, 'ի սովորական պատուիրանն դարձուսցուք զբանն ։ Եւ ո՞ր իցէ մեզ սովորական պատուիրանն ։ Զի աղօթս անընդհատս առնիցեմք արթուն մտօք և զուարթուն հոգւով. զի և յառաջնումն յաղագս այսոցիկ ասացեալ, տեսի պատրաստաբար հնազանդս զամենեսեան. և յիմարութիւն է զհեղգացեալսն բամբասել, և որք ուղղէնն ոչ գովել։ Արդ կամիմ գովել զձեզ այսօր, շնորհ ձեզ հատուցանել փոխանակ հնազանդութեանն ։ Եւ է շնորհս եթէ ուսուսցուք ձեզ ընդէր այն աղօթք լինին նախ քան զայլսըն, և զվտանգեալսն 'ի դիւէ որ չար մոլորութեամբն են ըմբռնեալք՝ մուծանել հրամայէ սարկաւագն յայնժամ, և խոնարհեցուցանէ զգլուխսն ։ Ե՞ր աղագաւ զայս առնէ ։

Չար շղթայք և դժնդակք՝ դիւացն զօրութիւն է, շղթայք քան զամենայն երկաթ հզօրագոյն ։ Արդ զոր օրինակ յորժամ դատաւորն յատեան հանդերձեալ է գալ և 'ի վերայ բարձրաւանդակ բեմի նստեալ, կապանապահքն որք 'ի կապանարանսն են բնակեալք զամենեսեան արտաքս ածեն 'ի տանէն, առաջի լարոցն և ատենին վարագուրաց նստուցանեն, խռուացեալ և աղտեղեալ վարսիւքն, պատառոտունս զգեցեալս, նոյնպէս և հարքն օրինադրեցին. Քրիստոս հանդերձեալ իբրև 'ի վերայ բարձու նստեալ 'ի բեմիս, և 'ի խորհրդեանս յայսմ երևեալ, զվտանգեալսն 'ի դիւէ իբրև զկապեալս ոմանս 'ի ներքս ածել. ոչ զի պատուհաս պահանջիցին

զլանցանացն որպէս կապեալքն այնոքիկ, ոչ զի 'ի տանջանս և 'ի պատիժս ընդունիցին, այլ զի 'ի բազմութեն և ամենայն քաղաքիս 'ի ներքս մերձ եղելոց 'ի հասարակս յաղագս նոցա պաղատանք լինիցին, ամենեքեան 'ի միասին 'ի հասարակաց տեառնէն յաղագս նոցա հայցելով, և ողորմել աղաչելով հանդերձ ուժգին գոչմամբ։

Արդ յայնժամ աղաչեալք, մանաւանդ եթէ ըստգտանէաք որք թողուլին զայսպիսի աղօթս և 'ի ժամուն յայնմ արտաքոյ դեգերէին. իսկ այժմ որ 'ի ներքս են՝ մեզադրել կամիմ, ոչ զկալ մնալ 'ի ներքս, այլ զի մնալով 'ի ներքս՝ քան որ արտաքոյ շրջին՝ ոչ ինչ լաւագոյնք. անկեալ կան յահաւոր ժամուն յայնմ ընդ իրեարս խօսին։ Զ ինչ առնես, ով մարդ. տեսանես այդքան կապեալս յեղբարցդ քոց մերձ կացեալս, և դու յաղագս ոչ ինչ օրինաւոր իրաց խօսիս. կամ եթէ դէմքդ միայն ո՞չ իցեն բաւական զարհուրեցուցանել զքեզ և յախտակցութիւն ածել։ Այլ եղբայր քո 'ի կապանս, և դու 'ի պղերգութեան. և զո՞ր ունիցիս թողութիւն, ասա ինձ, այսպէս անցաւակից լինելով, այսպէս անմարդի, այսպէս խակ։ Մի՛ գուցէ 'ի խօսելն քում և 'ի յուլանալ և 'ի տաղտկալ՝ դև ոք անտի վազելով պարապորդ և մաքրեալ գտանելով զքո անձնդ, մտանիցէ բազում համարձակութեամբ անդուռն զտունդ գտեալ։ Քանզի ո՞չ էր պարտ և արժան հասարակ ամենեցուն աղերս արտասուաց արձակել 'ի ժամուն յայնմ և թացեալս տեսանել զամենեցուն զաչս, ողբք և հառաչմունք լինել յամենայն եկեղեցւոջս։ Զի յետ հաղորդութեն խորհրդոցս, զկնի վայելման թողութեանս, յետ մերձենալոյս 'ի Քրիստոս զօրեաց գայլն այն յափշտակել 'ի հօտէս գառինս և ունի ընդ ինքեան. և դու տեսանելով զթշուառութիւնն ո՞չ արտասուես։ Եւ ո՞ւր այսոքիկ պատասխանեաց իցեն արժանաւորք։

Ո՞չ ախորժես ցաւակից լինել եղբօրն. գոչեաց յաղագս քո անձինդ, զարհուրեցիր և ընդոստիր։ Եթէ զդրացւոյն քո տեսանէիր զտուն հրդեհեալ, ասա ինձ, թէպէտ և քան զամենեսեան ոք պատերազմող էր դրացին, ո՞չ արդեօք ընթանայիր շիջուցանել զհրդեհն, զարհուրելով մի՛ գուցէ հուրն ճանապարհաւ գնալով՝ և ըզքումն նախադրացն բուռն հարկանիցէ։ Զնոյն և յա-

ղագս վտանգեցելոցն 'ի դիւէ զմտաւ ած. քանզի բոյ
խմն է և հրդեհ չար դիւացն զօրութիւն: Զգուշացիր
մի դուցէ և 'ի քում անձնդ ժամանիցէ ճանապարհաւ՝
գնալով դեռ. և յորժամ տեսանիցես մերձաւոր, հան-
դերձ բաղում ձեռամբ փախիր առ տէրն քո. զի տեսա-
նելով զքո ջերմութիւն և զընդոստուցեալ անձնդ, ան-
գնալի նոցա վարկցի այնուհետև զմիտսդ քո: Քան-
զի եթէ տեսանէ յօրանջեալ և ծուլացեալ, իբրև ա-
մայի օթեվան վաղվաղակի մտանէ. ապա եթէ պնդեալ
և զարթուցեալ և զնորուն զերկնից կախեալ, և ոչ ընդ-
դէմ հայել իշխեսցէ այնուհետև: Որպէս զի թէպէտ
զեղլարմն արհամարհիցես, այլ 'ի քո անձնդ խնայեա,
և զքո զոգւոյդ զմնւտս խից չար դիւին:

Ոչ ինչ այնպէս նմա զհակառակ մեզ ճանապարհն
պարսպեալ սովորեաց, որպէս աղօթք և պաղատանք ան-
հատք: Զի և նոյն ինքն հրամայել սարկաւագին ամե-
նեցուն և ասել “ուղղորդ կացցուք, բարւոք կացցուք”,
ոչ վայրապար և ընդունայն օրինադրեցաւ. այլ զի զվայր-
անկեալ խորհուրդսն մերստին ուղղեսցեմք, զի զքումնն
որ յաշխարհական իրաց լեալ է 'ի մեզ՝ արտաքս ընկես-
ցուք, ուղղորդ առաջի այ կանգնել կարիցեմք զմեր ան-
ձինս: Որ և բանն ձգէ յայս հրամայելով ուղղել, լուի-
ցուք Պաւղոսի որ նոյն օրինակ այսու բանիւ վարի. քան-
զի առ մարդիկ 'ի վայր անկեալս և դժնդակութեանցն
'ի վերայ եղելոց հրաժարեալս գրելով ասէր. “Զլքեալ
ձեռս և զլուծեալ ծունկս ուղղեցէք”: Զինչ արդեօք
ասեմք, մինթէ վասն ձեռաց և ծնկաց մարմնոյ ասէր. և
ոչ երբէք. զի ոչ ընդ սուրհանդակ մարդկան և ոչ ընդ
բռնամարտիկս խօսէր, այլ զխորհրդոցն զզօրութիւն որ
'ի ներքսն է կանգնեալ՝ բանիւքս այսոքիւք պատուիրէր:
Զմտաւ ած առ ո՞ մերձ կաս, ընդ ո՞ հանդերձեալ ես
կոչել զած. ընդ քերովբէսն: Նմա զպատուակիցսն քո.
բաւական են քեզ այսոքիկ յարթնութիւն, յորժամ
զմտաւ ածցես եթէ զմարմնն զգեցեալ և ընդ մոյ շա-
ղեալ՝ ընդ անմարմին զօրութիւնսն արժանի եղեր օրհ-
նել զհաստարակաց տէրն ամենեցուն:

Արդ մի ոք այսուհետև լքուցէ զյօժարութիւնն,
ամայնոցն հաղորդեսցի և խորհրդական երգոցն. մի ինչ
աշխարհական 'ի ժամուն յայնմ, այլ զամենայն զերկ-

նորա չարագործութեանն, և մի փափագումն ասա դեցերանացդ ձերոց լեալ՝ ընչիցն գողութեամբ աղաւաղեսցի: Զի և բանսարկուն զայդ պատրաստեաց, ոչ զի աղքատս զձեզ գործեսցէ, այլ զի ընչիցն կորստեամբ 'ի թախանձանս զձեզ արկանելով, 'ի բազում յօժարամտութենէդ որ 'ի լսելութիւնս՝ 'ի բաց տարցի: Զի և զՅոբ յամենայն ընչիցն մերկացոյց, ոչ զի աղքատ արասցէ զնա, այլ զի մերկացուսցէ 'ի բարեպաշտութենէն. քանզի փութալի է նմա ոչ յընչիցն զրկել զոք, զի գիտէ եթէ ոչ ինչ է այն, այլ զի ընչիցն կորստեամբ զանձն 'ի մեղս արկանիցէ. և եթէ ոչ զայն կարասցէ առնել, ոչ ինչ համարի յաղթեալ երբէք:

Արդ գիտելով զնորա զլարսն, սիրելի, յորժամ բարձցի 'ի քէն ոսկի 'ի ձեռն աւազակաց կամ թէ յայլմէ իմեքէ պատճառէ, փառաւորեա զտէրն և առաւել ես լինիս շահեալ, և կրկին տայցես նմա զվէրն, զի ոչ դըժուարացարն և զի գոհացարն: Քանզի եթէ տեսանէ եթէ նուաստացուցանէ զքեզ ընչիցն կորուստն և հաւանեցուցանէ զայնու դժուարել, ոչ երբէք 'ի բաց կասցէ զնոյն գործելով. ապա եթէ տեսանիցէ եթէ ոչ միայն ոչ հայհոյեցեր զարարիչն քո զԱծ, այլ և գոհացար ես զնմանէ 'ի վերայ իւրաքանչիւր ուրուք դիպեցելոց դժնդակութեանցն, 'ի բաց կասցէ զփորձութիւնս 'ի վերայ ածելոյ, գիտելով եթէ գոհացողութեան քեզ լինին պատճառք դժնդակութեանցն իւր, և պայծառագոյնս քեզ գործեսցէ զպսակն և առաւել ես զյաղթանակսն: Որպէս և Յոբայն եղև. վասն զի 'ի բաց բառնալով զնորա զինչսն և զմարմինն հարկանելով՝ եւես գոհացող լեալ, ոչ ես մերձենալ իշխեաց. այլ զվատթարն և զաններելի ընդունելով զպարտութիւն 'ի բաց գնաց, պայծառագոյն գործելով զայն նահատակն:

Արդ զայս և մեք իմացեալ, 'ի միջէ միայն երկիցուք՝ 'ի մեղաց. բայց զայլսն ամենայն առաքինաբար ընկալցուք, եթէ ընչիցն իցեն տուգանք, եթէ հիւանդութի մարմնոյ, եթէ խռովութիւնք իրաց, եթէ դըժութիք, եթէ զրպարտութիւնք, եթէ այլ ինչ այնպիսի 'ի վերայ ածիցէ դժնդակութիւնս. քանզի այսոցիկ բնութի ոչ միայն ոչ վնասէ զմեզ, այլ և մեծապէս օգտէ. եթէ համբերձ գոհութեամբ այսմ տանիցեմք, յոգունս մեզ

և պխտանացու և կամակ ։ Յաղագս այսորիկ և մեք չոր-
րորդ և հինգերորդ օր ունիմք այսուհետև յորմէ հետէ
յաղագս անհասանելւոյն առնեմք բանս, և ոչ այսօր
զնա աւարտել պատրաստեցաք ․ այլ զչափաւորութիւնն
ձերումդ սիրոյ դասելով, դարձեալ հանգուցանել զմիտս
ձեր զմտաւ ածաք ։ Իսկ ուր արդեօք յառաջնումն զբանն
թողաք, հարկաւոր է անտի դարձեալ առնուլ ․ վասն զի
մի իմն է վարդապետութեան յարմարութիւն ։

Ասէաք յայնժամ եթէ որոտմանն որդին ասաց՝ թէ
“Զած ոչ ոք ետես երբէք, բայց միածին որդին որ է
’ի ծոց հօր՝ նա պատմեաց„ ։ Այսօր հարկաւոր է ու-
սանել ուր զոյն զայս պատմեաց միածին որդին այ ։
“Պատասխանի ետ Հրէից և ասաց ․ իբր ոչ եթէ ըզ-
հայր ոք ետես, բայց որ էնն յայ՝ նա ետես զհայր„ ։
Տեսութիւն դարձեալ աստանօր զգիտութիւնն ասէ ․ և
ոչ ասաց պարզաբար՝ եթէ ոչ ոք ետես զհայր՝ և լռեաց,
զի մի ոք յաղագս մարդկան միայն զայս ասացեալ կար-
ծիցէ ․ այլ կամելով ցուցանել եթէ ոչ հրեշտակք, ոչ
հրեշտակապետք և ոչ վերին զօրութիւնքն, ’ի վերայ
ամենայնի զայս յայտ արար ․ քանզի ասացեալ “Իբրև
ոչ եթէ զհայր ոք ետես երբէք„, ’ի վերայ եած ․ “Բայց
որ էնն յայ, նա ետես զհայր„ ։ Զի թէ ասացեալ էր
պարզաբար զած ոչ ոք ետես, յոլովք ’ի լռողացն թեր-
ևս արդեօք յաղագս մերոյ բնութեանս ևեթ կարծէին
զասացեալսն ․ իսկ այժմ ասելովն ոչ ոք, յաւել՝ բայց
որդի, յաւելուած միածնին զամենայն արարածս ’ի բաց
փակեաց ։

Իսկ արդ զի՞նչ ասէ, թէ և զհօրն սուրբ ․ և ոչ եր-
բէք, զի ոչ արարածոց է նա մասն ․ և ոչ ոքն՝ այս առ
’ի յորոշումն արարածոցն միայնակ ։ Իսկ ոչ եթէ յա-
ղագս հօր ասիցէ՝ զորդի ’ի բաց մերժէ, և ոչ եթէ վասն
որդւոյ՝ զհոգին արտաքոյ հանէ ։ Իսկ զի այս այսպէս է,
աստուստ արդէն արարից երևելի ․ զի ոչ ոքն ոչ յանար-
գութիւն հոգւոյ, այլ առ ’ի զատուցումն արարածոց ա-
սացաւ, յաղագս սորին գիտութեանս այսորիկ զոր միայն
որդւոյն ասէ զոլ՝ լուիցուք, խօսելով Պաւղոս առ կորըն-
թացիսն ասէր ։ Իսկ զի՞նչ ասաց ․ “Ո՞վ ոք գիտէ զմար-
դոյն, եթէ ոչ հոգի մարդոյն որ ’ի նմայն է ․ նոյնպէս և
զայ ոչ ոք գիտէ, եթէ ոչ հոգին այ„ ։

Արդ որպէս աստ ոչ ոքն ասացեալ՝ ոչ արտաքս հանէ զորդին, նոյնպէս և 'ի Քրիստոսէ ոչ ոքն ասացեալ՝ ոչ 'ի բաց մերժէ զհոգին սուրբ ։ Աստի յայտ է եթէ ճըշմարիտ է ասացեալս ։ Զի եթէ ասէին եթէ "ոչ ոք ետես զհայր, եթէ ոչ որ յա՟յն է,, զհոգին արտաքս մերժէր, աւելորդ էր Պաւղոսի ասելն՝ եթէ որպէս մարդ զինքեան գիտէ, նոյնպէս և հոգին սուրբ զա՟յն ստուգապէս գիտէ ։ Նոյնպէս մի ասացուք, վասն զի զնոյն զօրութիւն ունի և զոյժ ։ Հայեաց. "Մի ա՟ծ, ասէ, հայր յորմէ ամենայն, և մի տէր Յիսուս որով ամենայն.,, ։ Արդ եթէ մին ասել զհայր՝ 'ի բաց հանէ զորդի յաստուածութենէն, և մի ասել տէր զորդի՝ 'ի բաց հանէ զհայր 'ի տէրութենէն. և սակայն ոչ[1] արտաքս հանէ 'ի տէրութենէն զհայր՝ մի ասել տէր Յիսուս. ապա և ոչ որդի արտաքս ելանէ յա՟ծութ՟էն ասելն մի ա՟ծ հայր ։ Արդ եթէ ասիցեն եթէ յաղագս այնորիկ ասացաւ մի ա՟ծ հայր, զի ա՟ծ է և որդի և ոչ այնպիսի ա՟ծ իբրև ըզհայր, յարմարի զայն ասել յորմէ նոքայն եղին զյաւելուածն. քանզի ոչ մեք ասեմք եթէ վասն այնորիկ ասացաւ մի տէր Յիսուս Քրիստոս, զի տէր է հայր՝ ոչ այնպիսի տէր իբրև զորդի ։ Եւ եթէ այս ամբարշտութիւն է, և ոչ առաջինն ունի բան ։ Այլ որպէս մի տէրն ոչ 'ի բաց մերժէ զհայր 'ի հաւաստի տէրութենէն, նոյնպէս և ոչ արտաքս հանէ զորդի 'ի ճշմարիտ և 'ի հարազատ ա՟ծութենէն, և ոչ հօր միայնոյ զայն ցուցանէ ։

Եւ զի ա՟ծ է որդի և այնպիսի ա՟ծ որպէս և հայր, բայց կայ մնայ և եթ որդի, 'ի նմին խնքն 'ի յաւելուածոյն է յայտ ։ Քանզի եթէ ա՟ծ անուն այս՝ հօր միայն էր և զայլ ինչ գոյացութիւն ոչ կարէր յայտնել մեզ, այլ միայն զանձին և զառաջինն զայն, որպէս և առանձին նորա և եթ էր ծանօթագոյն, աւելորդ հօրն յաւելուած կայր ։ Վասն զի բաւական էր նմա ասել ա՟ծ, և ճանաչէաք որպէս էր և ասացեալն. այլ զի ա՟ծդ անուն հասարակ է որդւոյ և հօր, և ասելովն մի ա՟ծ՝ ոչ յայտնէր թէ զումմէ ասէր Պաւղոս, յաղագս այնորիկ աւարտեցաւ հօրն յաւելուածովն. զի յայտնեսցէ թէ վասն առաջին էութեան և միածնին ասէ, որպէս ոչ բաւա-

1 Պակասէր յօրինէն. ոչ արտաքս . . . մի ա՟ծ հայր. յաւելեալ 'ի յաւելնէն ։

Digitized by Google

կամ եղելոյ ա̃ծ անուն զնա ցուցանելոյ. զի և հասարակ է անուն նորա առ որդիսն։

Քանզի անուանցն են ոմանք հասարակք և ոմանք առանձնականք. հասարակք զի զանայլայլելին ցուցանեն ըղբնութիւն, և առանձնականք զի զիւրաքանչիւր ուրուք նկարեսցեն զէութիւն։ Ասն զի հայր և որդի առանձին են իւրաքանչիւր բնութեան. իսկ ա̃ծ և տէր հասարակ։ Իսկ զի եդ հասարակ անուն զմի ա̃ծն, կարօտացաւ և առանձնականին, զի ծանուցէ զորմէ ասէն, որպէս զի մի՛ լիցի անկանել 'ի Սաբէլի մոլորութիւնն. և զի ոչ ա̃ծ անուն մեծագոյն է քան զտէր, և ոչ տէր նուաղագոյն քան զա̃ծ, յայտ անտի է։ Ի հնումն ամենայն ուրեք յաճախապէս հայր՝ տէր ասէ. "Տէր ա̃ծ քո տէր մի է,,. "Տեառն ա̃յ քում երկիր պագցես և զնա միայն պաշտեսցես,,. "Մեծ է տէր և մեծ զօրութիւն նորա, և իմաստութեան նորա ոչ գոյ թիւ,,. և դարձեալ. "Ծանիցեն զի անուն քո տէր է, և դու միայն բարձրեալ ես 'ի վերայ ամենայն երկրի,,։ Իսկ սակայն թէ նուաղ էր քան զա̃ծն և անարժան բնութեանն այնմ, ոչ էր պարտ ասել "Ծանիցեն զի անուն քո տէր,,։ Իսկ դարձեալ եթէ ա̃ծն մեծ էր քան զտէր և պանծալի, ոչ էր պարտ ըստ նոցա զնուաղն զորդի 'ի հօրէ եկեալ անուամբն հօր կոչել, եթէ միայն առանձին էր նորա։ Այլ ոչ է այս, ոչ է. զի և ոչ որդի քան զհայր նուաղագոյն է, և ոչ տէր անուն քան զա̃ծ վատթարագոյն է։ Յաղագս այսորիկ և վասն հօր և վասն որդւոյ անզանազանաբար վարին անուամբք այսոքիւք։

Արդ որպէս լուարուք զհայր տէր կոչեցեալ, բեր ցուցցուք և զորդի՛ ա̃ծ. "Ահա կոյս յղասցի և ծնցի որդի, և կոչեսցեն զանուն նորա Էմմանուէլ, որ թարգմանի ընդ մեզ ա̃ծ,,։ Տեսեր հօր՛ անուն տէր, և որդւոյ ա̃ծ անուն։ Զի որպէս անդ ասէ "Ծանիցեն զի անուն քո տէր է,,, նոյնպէս և աստ ասէ "Կոչեսջիք զանուն նորա Էմմանուէլ,,. և դարձեալ. "Մանուկ ծնաւ մեզ, որդի՛ տուաւ մեզ, և կոչի անուն նորա հրեշտակ մեծի խորհրդոյ ա̃ծ հզօր,,։ Դիտեա ինձ զմարգարէիցն զհանճար և զհոգևոր իմաստութիւնն. զի մի պարզաբար ասելով ա̃ծ՝ կարծեսցեն յաղագս հօր ասել, զանօրէնութիւնն զառաջինն յիշէ. զի ոչ հայր 'ի կուսէ ծնաւ և

ոչ մանուկ եղև ։ Այլ դարձեալ միւս ևս մարգարէ այս-
պէս իմն ասէր յաղագս նորա . “Սա ա՟ծ մեր , ոչ ոք այլ
համարեսցի ընդ նմա ”, 'ի վերայ եած . “Եգիտ զամե-
նայն ճանապարհս իմաստութեան , և ետ Յակոբայ ծա-
ռայի իւրում և Իսրայէլի սիրեցելոյ 'ի նմանէ . զկնի այ-
նորիկ 'ի վերայ երկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջե-
ցաւ ” ։ Այլ Պաւղոս . “Յորոց Քրիստոս ըստ մարմնոյ ,
որ է 'ի վերայ ամենեցուն ա՟ծ օրհնեալ յաւիտեանս ա-
մէն ” . և դարձեալ . “Ամենայն պոռնիկ կամ ագահ ոչ
ունի ժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսի և
ա՟յ ” . և դարձեալ . “Ի յայտնութ՟է մեծին ա՟յ և փրկ-
չին մերոյ Յիսուսի Քրիստոսի ” ։ Այլ Յովհաննէս նոյն-
պէս զնա կոչելով ասէր . “Ի սկզբանէ էր բանն , և բանն
էր առ ա՟ծ , և ա՟ծ էր բանն ” ։

Արդ , ասեն , այլ զայն ցոյց տուր ընդ հօր զնա միաբա-
նելով գիրք՝ տէր զնա կոչեն ։ Այլ ոչ զայս ևեթ ցուցա-
նեմ, այլ զի և տէր զհայր կոչեն , և տէր զորդի . և զի
ա՟ծ զհայր կոչեն և ա՟ծ զորդի , համանգամայն դնելով
զերկոսեան անուանսն ։ Այլ մի՛ իցէ զայս գտանել ։ Խօ-
սելով երբեմն ընդ Հրէայս Քրիստոս ասէր . “Զի՞նչ
թուի յաղագս Քրիստոսի . և նոքա ասէին ցնա՝ Դաւ-
թի որդի է . ասէ ցնոսա . և զիա՞րդ Դաւիթ տէր զնա
կոչէ ասելով , ասաց տէր տեառն իմում , նիստ ընդ աջմէ
իմմէ ” ։ Դա տէր և տէր ։ Ախորժե՞ս ուսանել թէ ուր
ա՟ծ և ա՟ծ կոչէ՝ զհայր և զորդի միանգամայն դնելով ,
լուր և մարգարէին Դաւթի և առաքելոյն Պաւղոսի ,
որք զայսոսիկ յայտնեն մեզ . “Աթոռ քո ա՟ծ յաւի-
տեանս յաւիտենից , գաւազան ուղղութեան գաւազան
արքայութեան քո ։ Սիրեցեր զարդարութիւն և ատե-
ցեր զանօրէնութիւն . վասն այսորիկ օծ զքեզ ա՟ծդ ա՟ծ
քո ” ։ Այլ Պաւղոս դարձեալ զվկայութիւս զայս 'ի մէջ
ածելով ասէ՝ եթէ “Առ հրեշտակսն ասէ , ո արար զհրեշ-
տակս իւր յոգիս . իսկ առ որդին , աթոռ քո ա՟ծ յաւի-
տեանս յաւիտենից ” ։

Այլ ընդէ՞ր , ասեն , զա՟ծ հայր կոչեաց և զորդի տէր ։
Ոչ վայրապար և ոչ ընդունայն ասա զայս արար . այլ
զի առ հեթանոսս էր բան նորա առ բազմաստուածու-
թեամբն ախտացեալս , զի մի՛ ասիցեն եթէ զմեզ բամ-
բասէ յոլովս ա՟ծս ասել և յօգունս տէրս , և ինքն ըմ-

բռնի ընդ բամբասանօքս այսոքիւք՝ ա̃ծս ասելով և ոչ ա̃ծ, յաղագս այսորիկ նուաստանալով առ նոցա տկարութիւնն՝ այլ անուանք կոչէ զորդին, որ զնոյն ունի զօրութիւն ։

Այլ զի այս ճշմարիտ է, վերստին ընթերցցուք զնոյն ինքն զտեղին և զխոսաջիք յայտնապէս, զի ոչ մեր են կարծիք ասացեալքս. “Յաղագս զոհից կռոցն գիտեմ զի ամենեքին գիտութիւն ունիք. գիտութիւն հպարտացուցանէ, բայց սէր շինէ ։ Այլ վասն կերակրոյ կռոցն զոհից գիտեմք զի ոչ ինչ կուռքդ են յաշխարհի. զի ոչ ոք է այլ ա̃ծ, բայց միայն„ ։ Տեսանես զի և առ նոսա յերկարելով զայս ասէր որք բազում ա̃ծս կարծէին. “Քանզի թէպէտ և իցեն ասացեալ ա̃ծք յոլովք և տեարք յոգունք, այլ մեզ մի է ա̃ծ հայր յորմէ ամենայն, և մի տէր Յիսուս Քրիստոս որով ամենայն„ ։ Որով աղագաւ և զմինն յաւել, զի մի զբազմաստուածութիւն 'ի ներքս ածեալ դարձեալ նոքա կարծիցեն. և մի ա̃ծ զհայր կոչեաց, ոչ արտաքս հանելով զորդի յա̃ծութենէն. նոյնպէս և մի տէր զորդի, ոչ ընկենլով զհայր 'ի տէրութենէն, այլ զնոցա տկարութիւնն ուղղէր, և ոչ մի ինչ պատճառս նոցա ախորժէր տալ. Այլ այս պատճառ եղև, ոչ յայտնապէս և ոչ երևելի, այլ աղօտաբար ինն և դուն ուրեք 'ի ձեռն մարգարէիցն ծանօթանալ Հրէիցն որդին ա̃յ ։ Վասն զի այն ինչ 'ի բազմաստուածութենէ մոլորութեանն 'ի բաց վճարեալք, եթէ դարձեալ ա̃ծ և ա̃ծ էր լուեալ՝ 'ի նոյն ախտ անկանէին ։ Յաղագս այսորիկ մարգարէքն 'ի վեր և 'ի վայր զնոյն ասէին եթէ “Մի է ա̃ծ, և բայց 'ի նմանէ ոչ ոք է„. ոչ զի զորդին անարգեսցեն, մի լիցի. այլ զնոցա տկարութիւնն բժշկել կամին և հաւանեցուցանել առ ժամանակ մի 'ի յոլով աստուածոցն և յոչէիցն կարծեաց ազատել ։

Արդ յորժամ լուիցես մի, և՝ ոչ ոք, և որք այսպիսիք են, մի նուաղեցուսցես զերրորդութեանն փառս, այլ զմիջոցս նորա առ աստուածս ուսիր բանիւքս այսոքիւք ։ Քանզի և այլուր ասէ. “Ո՞ գիտաց զմիտս տ̃ն„ ։ Այլ զի զայս ասէ ասա, ոչ զա̃ծ և զհոգին արտաքս հանէ 'ի գիտութենէն, յառաջագոյն ցուցաւ 'ի վերին ասացուածոցն յորժամ զվկայութիւնն 'ի մէջ ածաք որ

ասէն. «Քանզի ո՞ գիտէ զմարդոյն, եթէ ոչ հոգի մար-
դոյն որ ՚ի նմա. նոյնպէս և ոչ զԱ՟յն ոք գիտէ, եթէ ոչ
հոգին Ա՟յ». և դարձեալ այսպէս ասէ. «Ոչ ոք գիտէ
զՀայր, եթէ ոչ որդի»: Նմանապէս և աստ. «Իբրև
ոչ եթէ զՀայր ոք ետես, բայց որ էն յԱ՟յ՝ նա ետես զՀ-
այր». քանզի միանգամայն հանդերձ հաւասարեաւ զնա
գիտէ՝ ասէ, և զպատճառն յաւել վասն որոյ գիտէ: Այս
զինչ է պատճառն. ՚ի նմանէ գոլն. դարձեալ յայտնու-
թիւն՝ հաւասարեաւ զնա գիտելն. քանզի յաղագս այ-
նորիկ գիտէ զնա յայտնապէս, զի[1] ՚ի նմանէ է. և զի
՚ի նմանէ է անտի յայտ է, զի գիտէ զնա յայտնապէս:
Վասն զի բնութիւն զգերազանցեալ բնութիւնն ոչ կա-
րէ՝ քաջ գիտել, թէպէտ և սուղ ինչ իցէ միջոցն:

Իսկ զինչ ասէ յաղագս հրեշտակաց մարգարէն և
վասն մարդկային բնութեանս, զի սակաւ ինչ է զանա-
զանութիւն սորա և նորա ասելով. «Ո՞ ինչ է մարդ զի
յիշես զնա, կամ որդի մարդոյ թէ համարիս ինչ զնա.
փոքր կացուցեր զնա սուղ ինչ քան զհրեշտակս»: Նմա-
նապէս թէպէտ և դուզնաքեայ է միջոցն, այլ զի բոլո-
րովին իսկ ընդ մէջ է, ոչ գիտեմք հաւասարեաւ զհրեշ-
տակացն բնութիւն. թէպէտ և բիւր իմաստասիրեմք,
գտանել ոչ կարեմք:

Այլ զինչ ասեմ զհրեշտակաց, ուր և ոչ զնոյն ինքն
զհոգւոյս մերոյ զբնութիւն քաջ գիտեմք, մանաւանդ
թէ ոչ որպէս և իցէ: Այլ եթէ նոքա յամառիցեն գի-
տել, հարց զինչ արդեօք իցէ բնութիւն հոգւոյ, օ՞դ,
եթէ հողմ, եթէ շունչ, եթէ հուր: Բայց և ոչ ինչ
յայսցանէ ասի. վասն զի այսոքիկ ամենեքեան մարմինք
են, իսկ նա անմարմին: Այլ արդ զհրեշտակս ոչ գիտեն
և ոչ զիւրեանց ոգիս, և զամենեցուն զտէրն և զարա-
րիչն հակառակեն գիտել հաւասարեաւ. և զինչ քան
զայս անմտութիւն լինիցի վատթարագոյն:

Այլ զինչ ասեմ զբնութիւն հոգւոյն. թէ ո՞րպէս ՚ի
մերում մարմնի է՝ և ոչ զայն գոյ ասել: Քանզի զինչ
արդեօք ունիցի ոք ասել. յարանձնիցի՞ արդեօք ընդ մարմ-
նոյն մեծութեան: Բայց այս է անքննագոյն, վասն զի
մարմնոյ է առանձինն այս: Բազում անգամ ձեռաց և

1 Պակասէր յօրին. զի . . . զնա յայտնապէս. յաւելաւ ՚ի յոյնէն:

ատից հատելոյ՝ բովանդակն կայ մնայ և ոչ ծայրակատար լինի ընդ մարմնոյն խեղութեան ։ Բայց ոչ իցէ արդեօք 'ի բովանդակ մարմնի, այլ 'ի մասին ուրեք հաւաքեալ է ․ հարկաւոր է ուրեմն մեռեալ այլոց մասանցն գոլ, վասն զի անշունչն ամենայն իրօք մեռեալ է ։ Բայց և ոչ զայս է ասել ․ բայց զի 'ի մարմնիս մերում է գիտեմք, և եթէ որպէս իցէ ոչ գիտեմք ։ Վասն այսորիկ և զգիտութիւն սորա արգել մծ բազում մտադիւրութբ, ըմբերանելով զմեզ՝ կալ և մնալ 'ի խոնարհ հաւանեցուցանէ, և զմեր իրս մի ինչ քննել և մի հետազօտել ։

Բայց զի մի 'ի մտածութեանց ինչ մերոց զայս յարմարիցեմք, բեր դարձեալ 'ի գիրս զբանս ածցուք ․ « Որդի ոչ եթէ զհայր, ասէ, ետես ոք ․ բայց որ էն յԱյ, նա ետես զհայր » ։ Իսկ զինչ է այդ, ասեն, քանզի չև ևս նմա զհաւաստի գիտութիւնն այդ բան վկայեաց ․ այլ զի արարածքս ոչ գիտեն, յայտնեաց ասելովն՝ իբրև ոչ եթէ զհայր ոք ետես ․ և զի որդի զնա գիտէ, և զայս դարձեալ յայտնեաց յաւելլով՝ որ էն յԱյ, նա ետես զհայր ։ Բայց եթէ հաւաստեաւ զնա գիտէ և այնպէս որպէս ինքն զինքն, չև ևս ցուցաւ այն ։ Քանզի անհնար է, ասեն, ոչ արարածոցս զնա յայտնապէս գիտել, և ոչ որդւոյ, այլ քան զօրացածն քաջագոյն ․ բայց զհաւաստի գիտութիւնն և ոչ նմա ունել ։ Քանզի եթէ տեսանէ զնա որպէս և էն՝ զգիտելն ասաց ․ բայց եթէ զնա հաւաստեաւ ճանաչիցէ և այնպէս որպէս ինքն զինքն, զայն ոչ յայտնեաց ։

Արդ կամիք թէ և զայս 'ի գրոց հաւատարմացուսցուք և 'ի նմին իսկ 'ի Քրիստոսի ձայնէ ։ Լուիցուք զինչ ասէր առ Հրեայսն ․ « Որպէս գիտէ զիս հայր, գիտեմ և ես զհայր » ։ Զի՞նչ քան զայս գիտութիւն հաւաստագոյն կամիցիս արդեօք ։ Հարց զվիճողն ․ գիտէ՞ հաւաստեաւ հայր զորդի, և զամենայն զնորա ծանօթութիւնն ունի՞, և ո՞չ ինչ 'ի նմանէ զանխլանայ յորդւոյն, այլ աւարտեալ է գիտութիւնն ։ Այո, ասէ ։ Ապա ուրեմն և յորժամ լսիցես եթէ որդին այնպէս գիտէ զնա որպէս և նա զորդի, մի ինչ այլ խուզեր՝ այնպէս հանդերձ հաւաստութեամբ գիտութեն զոյգ եղելոյ ։ Բայց և այլուր զայս երևեցուցանելով ասէր ․ « Ոչ ոք ճանաչէ զորդի եթէ ոչ հայր, և ոչ զհայր ոք գիտէ եթէ ոչ

որդի, և ում կամիցի որդին յայտնել,,։ Յայտնէ, և ոչ որքան ինքն զինքն գիտէ, այլ որքան մեք տանիմք։ Վասն զի եթէ Պաւղոս զայս առնէ, ևս առաւել Քրիստոս. և նա ասէր իւրոց աշակերտացն. "Ոչ կարացի խօսել ընդ ձեզ իբրև ընդ հոգևորս, այլ իբրև ընդ մարմնաւորս. իբրև տղայոց 'ի Քրիստոս կաթն ձեզ արբուցի և ոչ կերակուր, զի ոչ ևս կարէիք,,։ Այլ կորնթացւոցն միայն, ասէն, ասաց։ Իսկ արդ զինչ եթէ ցուցցուք՝ զի և այլոց ումանց, զոր ոչ ոք 'ի մարդկանէ ուսաւ՝ գիտէր, անցեալ գնաց միայն յամենայն մարդկանէ գիտելով զայնոսիկ։ Իսկ մեր զայս է գտանել։ Որ կորընթացիսն 'ի թղթին. ինքն է որ ասէն՝ եթէ "Լուայ անճառելի բանս զոր ոչ է արժան մարդոյ խօսել,,։ Այլ սակայն և ինքն նա թէպէտ և լուաւ զանճառելի բանսն զորս ոչ է արժան մարդոյ խօսել, մանաւանդ ունէր զգիտութիւն, և յոլով 'ի հանդերձելոցն նուազեալ։ Վասն զի ինքն որ զայս ասաց, և զայն զեկոյց եթէ "Ի մասնէ գիտեմք և 'ի մասնէ մարգարէանամք։ Իսկ յորժամ տըղայն էի, իբրև զտղայ խօսէի, իբրև զտղայ խորհէի,,. և "Այժմ տեսանեմք իբրև ընդ հայելի օրինակաւ, իսկ յայնժամ դէմ յանդիման,,։

Որպէս զի յայտնանէ մեզ ամենայն խարդախութիւն նոցա յանդիմանի, զի յորժամ զնոյն ինքն զէութիւնն անգիտանան, ոչ զի է, այլ թէ զինչ է, վերջին մոլորութեան է անուն նմա դնել. և սակայն եթէ յայտնի էր և ծանօթ, և ոչ այնպէս զգուշագոյն էր մեզ 'ի մերոց անձանց անուն ինչ դնել տեառն բնութեանն։ Վասն զի եթէ Պաւղոս ստորին զօրութեանց ոչ իշխեաց անուն դնել, այլ ասելով եթէ "նստոյց զՔրիստոս 'ի վերոյ քան զամենայն իշխանութիւնս և զպետութիւնս և զզօրութիւնս և քան զամենայն անուն անուանեալ ոչ միայն 'ի յաւիտենիս յայսմ, այլ և 'ի հանդերձելումն,,, և ցուցեալ մեզ թէ են ումանք անուանք զօրութեանցն զորոց յայնժամ գիտասցուք, ոչ համարձակեցաւ ինքն փոխանակ նոցա դնել, և ոչ զնոյն ինքն զայն հարցաքննել, որո՞ւմ թողութեան արդեօք լինիցին արժանաւորք և կամ որո՞յ պատասխանեաց որք յաղագս տէրունական բնութեանն յանդգնին։ Յորժամ զնոյն ինքն զիւրեանց բնութիւնն անգիտանան, իբրև 'ի խե-

Digitized by Google

լագարաց 'ի նոցանէ 'ի բաց դառնալ է պարտ և արժան։ Զի անեղ է ա̃ծ՝ յայտ է. և զի այս է նորա բնութե̃ անուն, ոչ ոք մարգարէ ասաց, ոչ առաքեալ ոք զեկոյց, ոչ ոք աւետարանիչ. և մանաւանդ յիրաւի։ Զի որք զնոյն ինքն զբնութիւնն անգիտանային, զիա՞րդ զանուն նորա ասել համարձակեալք էին։

Իսկ զի՞նչ ասեմ յաղագս ա̃ծային գրոց, ուր այնքան է յիմարութիւնն ամբարտաւանութեան և անօրէնութեանն գերազանցութիւն, մինչ զի և ոչ 'ի Ճշմարտութենէն մոլորեալ հեթանոսք յանդգնեցան երբէք այնպիսի ինչ ասել. քանզի ոչ ոք 'ի նոցանէ համարձակեցաւ ա̃ծային բնութե̃ն սահման դնել և միով անուամբ բովանդակել զբնութիւնն։ Որք յաղագս մարմնոյ բնութեան իմաստասիրեն, և ոչ այնմ աւարտեալ սահման եդին, այլ աղօտ իմն պատմութիւնս և վերագրութիւն առաւել՝ քան եթէ սահման։ Այլ զի՞նչ լիցէ իմաստուն նոցա բան։ Ո՛չ գիտեմ ուրեմն, ասեն, զոր պաշտեմն։ Յաւէտ և ոչ պատասխանի տալ առ այնոսիկ է արժանաւոր, այսքան ցոյցք 'ի գրոց եղելոց՝ եթէ անկարութիւն է գիտել զի՞նչ է բնութիւն ա̃յ։

Բայց զի ոչ առ Թշնամութեան խօսիմք, այլ որպէս թէ զնոսա ուղղել, բեր ցուցցուք զի ոչ անգիտանալն զի՞նչ է բնութիւն, այլ հակառակ ասելն գիտել, և անգիտանալ զա̃ծ։ Ասա ինձ, եթէ երկու արք հակառակէին ընդ իրեարս գիտել զերկնի մեծութիւն, մինն ասէր՝ ոչ մարդկային ական հասու լինել նմա, իսկ միւսն յամառէր եթէ կարողութիւն է թզաւ ձեռին ընդ ամենայն ընդ նա չափելով անցանել, զո՞ արդեօք ասէիր գիտել զմեծութիւն երկնի. որ յամառէ՞րն գիտել քանի ինչ թիզ ունիցի, եթէ որ խոստովանէրն անգիտանալ։ Իսկ արդ եթէ երկնի՝ որ 'ի բաց հրաժարէր գիտել զմեծութիւն նորա՝ մանաւանդ նա է որ գիտէ զմեծութիւն նորա, յաղագս ա̃յ ո՞չ վարիցիմք նովին բարեպաշտութե̃։ Իսկ զիա՞րդ ոչ վերջին խելագարութի̃ է այս։

Իսկ արդ զի՞նչ այնքան պահանջիմք գիտելն եթէ է ա̃ծ և ոչ հետազօտելն զնորա զբնութիւն, լուր զի՞նչ ասէրն Պաւղոս. "Հաւատալ պարտ և արժան է որ մերձենայ առ ա̃ծ՝ եթէ է ա̃ծ"։ Իսկ դարձեալ մարգարէն բամբասելով զամբարշտութիւնս որումն, ոչ զայն մե-

ղաղրէ եթէ ոչ գիտէ զինչ է ած, այլ զի ոչ գիտէ թէ է ած. քանզի ասէ. “Ասաց անզգամն 'ի սրտի իւրում՝ ոչ է ած„: Արդ զոր օրինակ զնա ամբարիշտ առնէ՝ ոչ անգիտանալն զինչ է բնութիւնն այ, այլ անգիտանալն թէ է ած, նոյնպէս բաւական է առ բարեպաշտութիւն գիտելն եթէ է ած:

Այլ ունիս ինձ հրահանգեալ և միւս ևս բան: Ու զինչ իցէ այն: Ասացաւ, ասեն, հուր է ած: Արդ իցէ բնութեանն յանդիմանակացութիւն, ասա ինձ. և ո՞ այդմ ներեացէ որ և 'ի դրունս ածային գրոց իցէ երթեալ: Քանզի եղիցի և ըստ այդմ բանի և հուր ած, զի և այդպէս է գրեալ “ած մեր հուր ծախող է„. և դարձեալ “աղբիւր ջրոյ կենդանւոյ„: Բայց ոչ հողմ և աղբիւր և հուր միայն, այլ հոգի և սիք և միտք մարդկայինք և յոլովք քան զայն ևս անտեղագոյնք. զի և ոչ ընդ ամենայն անցանել է պարտ և արժան բանիւս, և ոչ մոլորութեանն նոցա նմանել: Քանզի հոգի բազում ինչ յայտնէ. և զմեր հոգին՝ որպէս և Պաւղոս ասէ “Մատնեցէք զայնպիսին սատանայի, զի ոգին ապրեսցի„. և հողմ՝ որպէս և մարգարէն ասէ “Հողւով բռնութեամբ քո սատակեսցես զնոսա„. կոչի և հոգեոր շնորհ այնպէս “Քանզի նոյն ինքն հոգին վկայէ հոգւոյս մերում„ ասէ. և դարձեալ “Աղօթեցից հոգւով, աղօթեցից և մտօք„. կոչի և բարկութիւն նոյնպէս, զի և Եսայի ասէ. “Ոչ դու էիր որ խորհէիր խիստ հոգւովք քովք սպանանել զնոսա„. կոչի և օգնականութիւն յայ հոգի. “Հոգի երեսաց մերոց տէր Քրիստոս„: Արդ այս ամենայն մեզ ած եղիցի ըստ նոցա, և ըստ այսքանեաց շաղեալ կայցէ:

Այլ զի մի բարբանջեսցուք՝ որ ոչ իցէ վիճաբանութեան կարօտեալ՝ 'ի մէջ ածելով, բեր աստանօր որ առ նոսա լուծցուք զբանս, յաղօթս զայս ամենայն դարձուցուք. զի որքան մեծապէս ամբարիշտ են, որք և առաւելագոյն յաղագս նոցա աղաչեսցուք և մաղթեսցուք 'ի բաց կալ երբէք նոցա 'ի մոլորութենէն: Քանզի այս է ընդունելի առաջի փրկչին մերոյ, որ զամենայն մարդ կամի զի կեցցէ և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցէ: Ապա մի նուաղեսցուք յաղագս նոցա պաղատանս առնել. վասն զի աղօթք մեծ զէն են, զանձ անապական,

Digitized by Google

առատ մեծութիւն, նաւահանգիստ առանց ալեկոծութեան[1], խաղաղութեան պատճառք և բիւր բարեաց արմատ, և աղբիւր և մայր են աղօթք, և քան զնոյն ինքն զարքայութիւնն զօրաւորագոյն ։

Բազում անգամ թերևս որ զթագն 'ի գլուխն ունիցի, տապացեալ և 'ի մահիճս անկեալ կալով ջերմանալով, մերձ կան սպասաւորքն, ծառայք, զօրականք. ոչ բժշկացն արուեստք, ոչ մերձաւորութիւն սիրելեացն, ոչ ծառայիցն սպասաւորութիւն, ոչ դեղոյն առատութիւն, ոչ բազմապատիկ պատրաստութիւնք, ոչ ընչիցն յղփութիւն և ոչ այլ ինչ 'ի մարդկայնոցս կարէ մխթարել զանկեալն յախտաժէտութիւն ։ Բայց եթէ ոք համարձակութիւն առնելով առ ած՝ մտցէ և բուռն հարցէ զմարմնոյն միայն, և մաքրապէս յաղագս նորա աղաչէ զաղօթսն, զամենայն զհիւանդութիւնս մարմնոյն 'ի բաց փախուցանէ ։ Իսկ զոր ոչ կարաց վճարել ճոխութիւնն և սպասաւորացն յոլովութիւնն և հմտութեանն հանճար, թագաւորին մեծութիւն, զայն զօրեաց միոյ աղքատի յոլովակի աղօթք ։

Աղօթս ասեմ ոչ զսակ զայս և զպղերգութեամբ լցեալս, այլ որ հանդերձ յերկարմամբն լինի և աշխատացեալ հոգւով, 'ի վեր ձգեալ մտօք ։ Քանզի այսքիկ են որ յերկինս ելանեն. և զոր օրինակ ջուրք ցորքան 'ի հարթ երկրի վերայ բերեալ լինին և յոլով ընդարձակութիւնս ծաւալեն՝ ոչ ամբառնան 'ի բարձրութիւն, իսկ յորժամ ձեռք առուածացն զնոսա 'ի սորև շուրջ սղմելով նեղեսցեն՝ ճնշեալք այնուհետև քան զամենայն նետ արագագոյն 'ի բարձունս ձգին, նոյնպէս և մարդկային միտք ցորքան 'ի բազում ընդարձակութիւնս վայելեն, 'ի վայր ցնդին և հեղանին. իսկ յորժամ իրացն ամբոխք շուրջ կացեալք, և խնարհ զնոսա պատանդեսցեն նեղեալ, գեղեցկապէս մաքուր և քաջալինդ 'ի բարձունս առաքեն զաղօթս ։ Իսկ զի ուսցիս եթէ այն աղօթք յաւէտ լսին որք հանդերձ նեղութեամբ լինին, լուր մարգարէին որ ասէ. "Առ տէր 'ի նեղութեան իմում կարդացի և լուաւ ինձ,, ։

1 [illegible]

Արդ ջեռուսցուք զխորհուրդսն, նեղեսցուք յիշատակօք զանձանց մերոց զմեղսն. նեղեսցուք ոչ զի տարակուսիցիմք, այլ զի լաւել լինել պատրաստեսցուք՝ զի արթունս արասցուք և ընդոստուցեալս և զնորին ինքն զերկնից բուռն հարեալ: Քանզի ոչ ինչ այնպէս փախուցանէ զպղերգութիւն և զտաղտկութիւն, որպէս վըտանգք և նեղութիւն, որք ամենայն ուստեք ժողովեն զմիտսն և յինքեանս դարձուցանեն: Եղեալ այսպէս, աղօթելով բազում հեշտութիւնս յետ աղօթիցն 'ի քո անձնդ մուծանել կարասցես: Եւ զոր օրինակ ամպոյն խտութիւն 'ի սկզբանն մթագոյն առնէ զօդն, իսկ յորժամ 'ի վերայ միմեանց յարձակիցէ զտարափսն 'ի բաց դնելով զանձրեւն ամենայն, խաղաղական և պայծառ գործէ զներքին տեղիսն, նոյնպէս և տրտմութիւնքն ցորքան 'ի ներքս ամփոփին, խաւարեցուցանեն զմեր միտս: Բայց յորժամ աղօթիւք և որք համդերձ նոքօք լինին արտասուքն՝ թափեսցեն և արտաքս ելցեն, յոքնագոյն 'ի ներքս յոգւոյն ամբարեն զպայծառութիւն օգնականութեանցն այ՝ իբրև ճառագայթք իմն 'ի միտս ծագեալ աղաչողին:

Այլ զի՞նչ իցէ արդեօք բազմաց ցուրտ բանն. ոչ ունիմ համարձակութիւն, ասեն, ամօթով լցեալ և ոչ բանալ զբերան իմ կարեմ: Սատանայական է այս երկիւղածութիւն, ծուլութեան այս ծածկոյթք. քանզի փակել զդրունս ճանապարհին որ առ այ է՝ կամի բանսարկուն: Ո՞չ ունիս համարձակութիւն. մեծ համարձակութիւն զնոյն ինքն զայդ կարծեաւ՝ զոչդ ունել համարձակութիւն. որպէս վերջին ամօթ և դատապարտութիւն է համարելն համարձակութիւն ունել: Թէ յոլով արդեօք ունէիր ուղղութիւնս, և ոչ զքո ինչ ինքեան զչարի խիղճ գիտէիր, և կարծէիր համարձակութիւն ունել, յամենայն աղօթիցն արտաքս էիր անկեալ: Եւ եթէ զբիւր յանցանացն բեռինս բերիցես 'ի խիղճ մտացդ, և զայդ ևեթ հաւանեցուսցես զքեզ ինքն եթէ քան զամենեսին վերջին ես, յոլով ունիցիս առ այ համարձակութիւն, թէպէտ և ոչ իցէ այն խոնարհութիւն մեղաւորին՝ կարծել զինքն մեղաւոր:

Զի խոնարհութիւն է յորժամ որ յոլով և մեծամեծս գիտելով զինքեան ուղղութիւնս, ոչ ինչ մեծա-

գոյնս յաղագս նոցա զմտաւ ածիցէ. յորժամ որ լիցէ իբրեւ զՊաւղոս եւ կարիցէ ասել "Ոչ ինչ գիտեմ զիմն", ասիցէ դարձեալ, "Յիսուս Քրիստոս եկն յաշխարհս զմեղաւորս փրկել, որոց առաջինն ես եմ": Այն է խոնարհութիւն որ'ի բարձրութենէ ուղղութեանցն նուաստացուցանէ զմիքն կամօք: Այլ սակայն ա͞ծ յաղագս իւրոյ անճառ մարդասիրութեանն ոչ զխոնարհամիտսն միայն, այլ եւ որք բարեմտութեամբ զխաղանս իւրեանց ասիցեն, յանդուցանէ եւ ընդունի եւ լինի քաւիչ որք այնպէսն անկեալ կայցեն:

Նաեւ զի ուսցիս եթէ որքան է բարի ոչ ինչ մեծամեծս յաղագս ինքեան ածել զմտաւ, կառս երկու արա բանիւ, եւ լծեա զարդարութիւն եւ զամբարտաւանութիւն, եւ զմեղս եւ զնուաստութիւն. եւ տեսցես զկառս մեղացն յառաջեալս քան զարդարութեանն, ոչ իւրով զօրութեամբ, այլ յաղագս իւրոյ լծակցի խոնարհութեան. եւ զմիւսն եւս դարձեալ վերջացեալ ոչ վասն տկարութեան արդարութեանն, այլ յաղագս ծանր եւ բեռնաւոր ամբարտաւանութեանն: Զի զոր օրինակ նուաստութիւն յաղագս իւրոյ բարձր գերազանցութեանն յաղթէ մեղացն ծանրութեան եւ ժամանէ առ ա͞ծ ելանել, նոյնպէս եւ ամբարհաւաճութի վասն յաւէտ ծանրութեան իւրոյ զօրանայ առ մեծութիւնն եւ առատագոյն արդարութեանն յաղթող լինի, եւ դիւրաւ զնա 'ի վայր ունի:

Նաեւ զի այս կառք թեթեւագոյնք քան զնա են, յիշեա զփարիսեցին եւ զմաքսաւորն: Լծեաց փարիսեցին զարդարութիւն եւ զամբարտաւանութիւն այսպէս ասելով. "Գոհանամ զքէն զի ոչ եմ իբրեւ զայլս 'ի մարդկանէ զյափշտակօղս եւ զյաւելաստացուս եւ իբրեւ զմաքսաւորս զայս": Ո՛վ մոլորութեանն, ոչ եղեւ բաւական նորա ամբարտաւանութեանն ամենայն մարդկան բնութիւն, այլ եւ մաքսաւորին որ մերձն կայր՝ 'ի վերայ վազեաց հանդերձ բազում անմտութբ: Իսկ նա զինչ. ոչ ընդդէմ հարկանէր զթշնամանսն եւ ոչ վշտանայր ընդ չար ախտաւորութիւնն, այլ ընդունէր զասացեալսն հանդերձ բարեմտութբ. եւ լինէր թշնամեացն նետն նմա դեղ եւ բժշկութի, եւ լուտանքն գովութիւն եւ չարախօսութիւքն պսակ: Այսքան է շահ ոչ դժուարելն ընդ ընկերացն

թշնամանսն և ոչ գազանանալ ընդ մերձաւորացն լուտանսն ։ Քանզի է և անտի մեծ ինչ շահել պտուղ և վեհագոյն բարի, որպէս և մաքսաւորին եղև, որ ընդունելով զթշնամանսն՝ 'ի բաց եդ զմեղսն, և ասացեալ քաւեա զիս զմեղաւորս, էջ արդարացեալ քան զնա. բանն յաղթեաց գործոյն, և խօսքն զօրաւոր քան զիրսն եղեն ։ Մին զարդարութիւն էր զգեցեալ և զպահս և զտասանորդս, և միւսն բանս սոսկ ասաց և զամենայն 'ի բաց եդ զյանցանսն. զի ոչ եթէ բանիցն ևեթ լսէր ա̃ծ, այլ և ընդ միտսն յորոց ելանէին նոքա՝ հայէր. խոնարհս գտանա տեսանելով և խորտակեալս, ողորմեցաւ և մարդասիրեաց ։

Զայս ասեմ, ոչ զի մեղիցուք. զի թէ մաքսաւորն՝ որ զվերջին չարեաց տեսակ ունէր՝ ոչ նուաստամտեաց ինչ, այլ բարեմտութեամբ միայն զյանցանսն ասաց, և որպէս ասացն խոստովանեաց, այնքան բարեմտութիւն ձգեաց յինքն յա̃յ, որքան որք մեծամեծս ուղղեցեն, և ոչ ինչ մեծամեծս վասն նոցա զմտաւ ածցեն, ընդունիցին զօգնականութիւն ։ Յաղագս այսորիկ աղաչեմ և պաղատիմ խոստովանել յաճախապէս ա̃յ ։ Զի ոչ 'ի տեսարան ածեմ զքեզ ծառայակցացն քոց, և ոչ յայտնել մարդկան հարկ առնեմ զխայտանսն. զչար խիղճն յայտնեա առաջի ա̃յ, և նմա ցոյց զվէրսն և 'ի նմանէ բժշկեղն հայցեա. ցոյց որ ոչն թշնամանէ, այլ բժշկէ. թէպէտ և լռիցես դու, գիտէ նա զամենայն ։ Բայց ասա զի շահեսցիս, ասա զի աստէն 'ի բաց դնելով երթիցես անդր մաքուր 'ի յանցանացն, և յանդիմանելի հրապարակագոյժն լինելոյ յայնմանէ 'ի բաց վճարեսցիս ։

Երեք մանկունքն 'ի հնոցին շրջէին, և զանձինս ետուն յաղագս տեառն խոստովանութեան. և սակայն զկնի այնքան և այնպիսի ուղղութեանց ասէին. "Ոչ է մեզ բանալ զբերանս, զի ամօթ և թշնամանք եղաք ծառայից քոց": Եւ զի՞ ևս բանայք զբերան ։ Զի ըղսոյն զայս ասիցեմք, ասեն, թէ ոչ է մեզ բանալ զբերան, և սովաւ զտէրն առ մեզ ձգեսցուք ։ Աղօթիցն զօրութիւն զհրոյն զօրութիւնն շիջոյց, զառիւծուցն սրտմտութիւն սանձեաց, զպատերազմունս ելոյծ, զմարտս դադարեցոյց, զձմեռնային մրրիկն 'ի բաց եբարձ, զդևս հալածեաց, զերկնից դրունս եբաց, զկապանս մահու

խղեաց, զհիւանդութիւնս փախստականս արար, զգըլժութիւնս անդրէն դարձոյց, զքաղաքս սասանեալս հաստատեաց, և զ'ի վերուստ բերեալ հարուածն և 'ի մարդկանէ զգրժութիւնս և զամենայն պարզ դժնդակութիւնս 'ի բաց եբարձ:

Աղօթս ասեմ դարձեալ ոչ որք վայրապար 'ի բերանս հարեալ կայցեն, այլ որ 'ի խորոց սրտէն 'ի վեր ելանեն: Զի զոր օրինակ ծառք որք միանգամ 'ի խորս առաքեն զարմատսն, թէպէտ և բիւր անգամ ընդունիցին զհողմոյն արկածսն՝ ոչ խլին, արմատօքն հաստատուն 'ի խորոյն շուրջ պնդեալ, նոյնպէս և աղօթքն 'ի ներքուստ 'ի խորութենէ մտացն առաքեալ՝ արմատանան զգուշաբար և 'ի բարձունս առաքին, և ոչ 'ի միջէ խորհրդոց արկածից խոտորին. յաղագս այսորիկ և մարգարէն ասէ. "Ի խորոց կարդացի առ քեզ տէր,,:

Զայս ասեմ ոչ զի գովիցէք միայն, այլ զի գովելովդ և գործ ցուցանիցէք: Զի թէ մարդկան ասել զիւր զթշուառութիւնս և զժամանեալ չարիսն ողբերգարկել՝ բերէ ինձ վտանգելոցն մխիթարութիւն որպէս սփոփանք իմն յասելոյն լեալ, եւ առաւել եթէ տեառն յայտնեսցես՝ որ եդ զիւր անձն յաղագս մեղաց մերոց, առցես ինչ սփոփանս և մխիթարութիւնս յոլովս: Արդ բազում անգամ ծանրացուցանէ որ առ նա լինին ողբքն, և զգալով անդրէն ընդդէմ հարկանէ յոլով անգամ և 'ի բաց մղէ. իսկ ած ոչ այսպէս, այլ և յանգուցանէ և առ ինքն ձգէ. և եթէ զբովանդակ զօրն մնասցես յայտնելով նմա զթշուառութիւնս, յայնժամ յաւէտ զքեզ սիրէ և հաւանի քոյ պաղատանաց: Իսկ զայս ինքն Քրիստոս յայտնելով ասէր. "Եկայք ամենեքեան վաստակեալքդ և բեռնաւորքդ, և ես զձեզ հանգուցից,,: Կոչէ, մի սուտնգամնեսցուք, ձգէ յինքն, մի փախիցուք. թէպէտ և բիւր մեղս ունիցիմք, և զայնպիսիսն կոչէ. քանզի "ոչ եկի, ասէ, կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն,,: Իսկ աստ զծանրաբեռնեալսն և զվտանգեալսն որք 'ի ծանրութենէ մեղաց են վտանգեալք՝ ասաց. ած մխիթարութեանց աստ և ած գթութեանց, վասն զի այն է միշտ գործ նորա, զվշտացեալսն և զնեղեալսն մխիթարել և սփոփել: Իսկ եթէ բիւր մեղս ունիցիմք, միայն տայցուք զանձինս, մի-

այն ընթացուք առ նա, մի 'ի բաց կացցուք, և նովին իսկ փորձիւն գիտասցուք զասացեալսն զճշմարտութիւնն, և ոչ ինչ զմեզ յէիցս տրտմեցուցանել կարիցէ։ Եթէ ունիցիմք յերկարեալս և հաստատս և զարթուցեալ զաղօթսն, զինչ և եկեսցէ 'ի վերայ, դիւրաւ նոքօք 'ի բաց դարձուցանեմք։ Եւ զինչ սքանչելիք եթէ զմարդկային խառնակութիւնս լուծանել գիտեն աղօթիցն զօրութիւնք, ուր զի և զմեղայն բնութիւն չնջուցանեն և ապականեն դիւրաւ։

Արդ զի հանդերձ դիւրութեամբ և ընդ մերձաւոր կեանս անցանիցեմք, և որքան գործեցաք զմեզս՝ 'ի բաց դնիցեմք, և համարձակութեամբ կայցեմք առաջի բեմին Քրիստոսի, զայս դեղ միանջենաւոր պատրաստեսցուք անձանց, յարտասուաց և 'ի փութոյն և 'ի ժուժկալութենէն ժողովելով զնա. և այնպէս յաւիտենականն վայելեսցուք յառողջութեան, և հանդերձելոց բարեացն հանդիպեսցուք, որոց լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր փառք միանգամայն հոգւոյն սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## Ի ՆՈՐՈՒՄՆ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԱՍԱՑԵԱԼ ԱՌ ԱՆՁՆԱՆՍ ԹԵՂԵԱՑ ԱՆՀԱՒԱՏԻՒԹԵԱՆ

Մի օր ընդ ձեզ խօսեցայ, և յօրէն յաւիտենականէ այնպէս զձեզ սիրեցի, որպէս թէ 'ի սկզբանն և 'ի վաղուց հետէ ձեր իցեմ մանկակից. այնպէս ընդ ձեզ կապեցայ սիրոյն կապանօք, որպէս թէ անբաւ ժամանակաւ 'ի ձերում ընդելութեան վայելեցի։ Այլ եղև՝ իբր ոչ եթէ ես բարեմիտ ոք և սիրող իցեմ, այլ զի բազմագութք և ցանկացողք մանաւանդ ամենեքեան դուք էք։ Քանզի ո՞ ոչ զուարճասցի և զարմասցի ընդ ձեր ջերմ նախանձդ և ընդ անկեղծաւոր սէրդ և որ առ վարդապետսն է բարեմտութիւնդ և առ միմեանս համարձակութիւն, որք ամենեքեան բաւական են և զքարեղէն զանձինս ձգել և յանկուցանել։ Յաղագս այսորիկ և

մեք քան զեկեղեցին զայն, յորում ծնաքն և սնաք և ուսաք, ոչ ինչ նուազ զձեզ սիրեմք. վասն զի քոյր է նա նորա, և գործով զազգակցութիւնն ցուցէք: Եւ եթէ երիցագոյն է ժամանակաւ նա, այլ ջերմագոյն ըստ հաւատոյն սա. բազում է ժողովն անդ և պայծառ տեսարանն, այլ մեծագոյն աստ համբերութիւնն և յոլով արութեանն հանդէս: Գայլք ամենայն ուստեք ոչխարաց շուրջ յողան, և հօտս ոչ վատնի. խռովութիւնք և մրրիկք ձմերայնոյ և ալէկոծութիւնք շուրջ կան միշտ զնծային նաւուս զայսու, և որք նաւենն ոչ ընկղմին. բոց հերձուածողաց ամբառնայ ամենայն ուստեք շրջանակելով, և որ 'ի մէջ են հնոցին՝ հոգևոր ցօղս վայելեն: Նմանապէս հրաշափառագոյն 'ի մասին 'ի քաղաքիս յայսմ զտնկեալ եկեղեցիս այս է տեսանել, որպէս թէ 'ի մէջ հնոցի զուարձացեալ ձիթենի, և սաղարթովք վարսաւորեալ և պտղովքն ծանրացեալ տեսանիցեմք:

Եւ արդ զի այնպէս բարեմիտք էք դուք և բիւր բարեաց արժանաւորք, բեր զխոստմունսն հանդերձ ամենայն շնորհիւ հատուսցուք: Քանզի յառաջագոյն ձեզ խոստացաք յորժամ վասն Գութայ և Գողիաթու զինուցն իմաստասիրեցաք առ ձեզ, ցուցանելով բանիւ որպէս մինն սպառազինութեամբ ոմամբ մեծապէս ամենայն ուստեք ամրացեալ, և միւսն մերկ յամենայն զինուցն յայնցանէ հաւատովն պարսպեալ էր, և միւսն վահանօք և զինուք, իսկ միւսն 'ի ներքուստ հոգւոյն շնորհիւ փայլէր, յաղագս այնորիկ մանուկն զզօրաւորն հեքեաց, մերկն զզինեալն ըմբռնեաց, հովիւն զզինուորն 'ի վայր ընկէց, հովուական քարի բնութիւնն զպատերազմողին բնութիւն խորտակեաց և սպականեաց: Արդ և մեք զքարն զայն առցուք 'ի ձեռին, զգլուխ անկեանն ասեմ զիմանալին. քանզի եթէ Պաւղոս իմաստասիրելով զիշխանութիւն յաղագս որ յանապատին էր վիմին, ամենայն ուրեք և ոչ զմեզ ոք բամբասեսցէ որք զքարն զայն ըստ նմին օրինակի առնումք: Զի զոր օրինակ առ Հրեայսն ոչ բնութիւն տեսանելի վիմին, այլ զօրութի իմանալւոյն զգետ արձակեաց զջրոցն այնոցիկ, նոյնպէս և առ Գութայ ոչ զգալի, այլ իմանալի քարն զբարբարոսական գլուխն ընկէց 'ի վայր: Այսպէս և մեք

յայնժամ խոստացաք ոչ 'ի մտածութեանց մերոց ասել. «Քանզի զէն զինուորութեան մերոյ ոչ է մարմնաւոր, այլ զօրաւոր յԱյ. զխորհուրդս քակեմք և զամենայն բարձրութիւն հպարտացեալ հակառակ գիտութեանն Այ»: Այլ 'ի կործանելն զնոսա ոչ հրամայիմք ամբարտաւանել. քակել՝ ոչ զինել յայնոսիկ ընկալաք հրաման. քանզի խորհուրդք մահկանացուաց երկչոտք ասեն: Զարհուրեալն թէպէտ և յամուր տեղւոջ իցէ, ոչ երբէք քաջալերի, այլ երկնչի և դողայ. նոյնպէս և որ խորհրդովքն է խոցեալ, թէպէտ և ճշմարիտ իցէ, հաւանութիւն և ոչ երբէք տայ անձին իւրում բաւական 'ի հաւատ:

Այլ արդ զի այսքան է խորհրդոյն ակարութիւն, բեր 'ի գլուխ առ ընդդիմակայն բունն հարցուք զկռուսս: Այլ ուստի՞ սկսանելի մեզ բանս. ուստի՞ արդեօք ախորժիցէք, 'ի նորո՞յս եթէ 'ի հնոյն: Զի ոչ միայն յառաքելական և յաւետարանական բանս, այլ և 'ի մարգարէիցն և յամենայն 'ի հնումն յոլով առատութեամբ պայծառացեալ է տեսանել զփառս միածնին: Յաղագս որոյ թուի ինձ ասել առ նոսա ստուգաբանել. զի ոչ միայն աստուստ առնեմք զբանս, այլ և զյոլով զայլ հերձուածողսն կործանեմք 'ի վայր, զՄարկիոնն, զՄանիքեցիսն, զՎաղենտինոսն և զՀրէիցն զամենայն հոյլս: Զի զոր օրինակ առ Դաւթաւ Գողիաթ անկաւ 'ի վայր և բանակն ամենայն փախեաւ, մահ միում մարմնոյն եղև և միում գլխոյն վէր, բայց փախուստն և երկիւղն հասարակ ամենայն բանակին, նոյնպէս և առ մեօք այժմ միոյ հերձուածոյն վիրաւորեցելոյ և յերկիր անկելոյ՝ հասարակ ամենեցուն լինի փախուստ:

Մանիքեցիքն և որք ընդ նոսա զնոյն ախտանան, ըզքարոզեալն Քրիստոս կարծեն ընդունել. զքարոզողսն զնա անպատուեն զմարգարէսն և զհայրապետսն: Իսկ Հրեայք դարձեալ հակառակ նմին զքարոզս նորա վարկանին ընդունել և պատուել զմարգարէսն ասեն, և ըզնոյն ինքն զօրէնսդիրն և զքարոզեալն 'ի նոցանէ անպատուեն: Արդ յորժամ Այ շնորհաւն ցուցանեմք յոլովս 'ի հնումն նախաձայնեալս զմիածնին փառս, զամենեսեան զայնոսիկ զածամարտ բերանսն կարասցուք ամաչեցուցանել և զհայհոյիչ լեզուս պապանձեցուցանել:

Քանզի յորժամ երեւեսցին քարոզել զՔրիստոս հին կտակարանքն, զինչ լինիցի մանիքեցւոցն և որք իբրեւ զնոսա են՝ պատասխանիք, որ անպատուեն զնախաձայնեալ հասարակաց ամենեցուն տէրն. որ թողութիւն և հրաժարումն Հրէիցն որք զաւետարանեալն 'ի մարգարէիցն ոչ ընդունին:

Եւ արդ զի այսքան է յաղթութեանս յղփութիւն, 'ի հին գիրս զբանս ածցուք, և որ նախ քան զամենեսեան զնոսա է՝ ընթերցցուք, զլինելութիւնն ասեմ և 'ի լինելութեանն 'ի նոյն ինքն 'ի գագաթն ելցուք: Զի և Քրիստոս ասէր. «Եթէ հաւատայիք Մովսէսի, հաւատայիք արդեօք և ինձ, զի յաղագս իմ գրեաց նա»: Եւ ուր գրեաց նա վասն նորա, զայս արդէն ցուցանել հանդիսացայց:

Յորժամ արարածս ամենայն բովանդակեցաւ, և զանազան աստեղացն պարու երկին պսակեցաւ, բազմապատիկ ծաղկօք հակառակ-զուարձանայր 'ի ներքուստ երկիր, լի էին լերանց գլուխք, լի դաշտք և ձորք և պարզաբար ամենայն երկրի վերերեւութիւնս տնկօք և ծառովք, խայտային հօտք, խայտային և անդեայք, և երգեցող հաւուցն պարզ իւրեանց բնական երաժշտականութիւնն ցուցանէր զօդոդ ընով, լի էին խորք ծովային կենդանեօք, լի աղբերք և լիճք և գետք որ 'ի նոսա ծնանին ամենեքեան, և ոչ էր անկատար, այլ ամենայն աւարտեալ. հայցէր մարմինն զգլուխն, քաղաքս զիշխանն, արարածս զթագաւորն, ասեմ զմարդն: Եւ հանդերձեալ զնա ստեղծանել՝ ասէր. «Արասցուք մարդ ըստ պատկերիս մերում և ըստ նմանութեան»: Ընդ ում խօսէր. քաջայայտ է թէ ընդ միածնին իւրում: Ոչ ասաց՝ արա, զի մի կարծեսցես ծառայական հրաման լինել զասացեալսն. այլ արասցուք՝ զի ձեւով խորհրդակցութեան բանիցն զհաւասարութիւն յայտնեսցէ:

Քանզի երբեմն ասի եթէ խորհրդակից ունի ած, և երբեմն եթէ ոչ ունի. ոչ գիրք ընդ ինքեանս մարտնչին, այլ զանձառելի բանն յայտնեն մեզ երկաքանչիւրովքն այնոքիւք: Յորժամ զանկարօտութիւնն նորա յանդիման կացուցանել կամին, ասեն նմա չունել խորհրդակից. իսկ յորժամ զհամապատուութիւն միածնին՝ խորհրդակից կոչեն զորդին հօր: Եւ զի ուսցիս եթէ այ-

Digitized by Google

սրբիկ են երկոքեան յորժամ խորհրդակից զորդի կոչեն մարգարէքն, իբրև ոչ եթէ հայր կարօտանայ խորհըրդակցութեան, այլ զի զմիածնին զպատիւ ուսցուք. և զի ոչ կարօտանայ խորհրդակցի, լուր դարձեալ Պաւղոսի որ ասէ. "Ո՜վ խորք մեծութեան և իմաստութեան և գիտութեանն այ. իբրև՛ զի անքննելիք են դատաստանք նորա և անհետազօտելի ճանապարհք նորա. քանզի ո՞ գիտաց զմիտս տեառն կամ ո՞ խորհրդակից եղև նմա,,: Որդ սա զանկարօտութի մեզ յանդիման կացոյց:

Իսկ Եսայի դարձեալ յաղագս միածնին այ խօսելով, այսպէս իմն ասէր. "Կամեցին եթէ հրկէզք լիեալ էին. զի մանուկ ծնաւ մեզ, որդի և տուաւ մեզ. և կոչի անուն նորա մեծի խորհրդոյ հրեշտակ, սքանչելի խորհրդակից,,: Եւ զիա՞րդ Պաւղոս ասէ. "Ո՞ գիտաց զմիտս տեառն և ո՞ խորհրդակից եղև նմա,,: Օ է և Պաւղոս, որպէս և յառաջագոյն ասացի, զանկարօտութիւնն հօր յանդիման կացուցանել ախորժէ. իսկ մարգարէս զհամապատուութիւն միածնին: Յաղագս որոյ և անդէն ոչ ասաց՝ արա, այլ արասցուք. քանզի արա՝ հրաման է առ ծառայ լեալ:

Եւ յայտ անտի է. մերձեցաւ երբեմն հարիւրապետն առ Յիսուս և ասէր. "Տէր, մանուկ իմ անկեալ կայ 'ի տան անդամալոյծ դժնդակապէս չարչարեալ,,: Եւ զի՞նչ Յիսուս. "Ես եկեալ բժշկեցից զնա,,: Հարիւրապետն ոչ համարձակեցաւ ձգել զբժիշկն 'ի տուն. բայց խնամակալն և մարդասէրն ինքն խոստացաւ երթալ անդր, զի պատճառս տացէ նոցա, և իրօքն զառաքինութիւնն իւր մեզ ցուցանիցէ: Քանզի գիտելով զօր ինչ հանդերձեալն էր ասել՝ խոստացաւ երթալ, զի ուսցիս զառաքինութիւն առնն: Եւ զի՞նչ ասէր. "Տէր, ոչ եմ բաւական եթէ ընդ յարկաւ իմով մտցես,,: Ոչ հիւանդութեանն և ախտաժէտութեանն կարէք զիւր զերկիւղածութիւնն մոռանալ նմա արարին, այլ և թշուառութիւնս ճանաչէր զտեառնն գերազանցութիւն. յաղագս որոյ և ասէր. "Ասա բանիւ և բժշկեսցի մանուկն իմ: քանզի և ես այր մի եմ ունելով ընդ ինև զինուորս. ասեմ սմա երթ և երթայ, և այլում եկ և գայ, և ծառայի իմում արա զայս և առնէ,,: Տեսանես զիարդ տեառն ընդ ծառայի է խօսել: Ասա ու-

ոչ լինի աթոռակից, այլ մերձ կայ: Արդ 'ի նստելոյն զհամապատուութիւնն և զիշխանութեանն զանազանազանութիւն ուսիր, վասն զի տիրական իշխանութեանն է. իսկ մերձն կալ՝ ծառայական և հնազանդեցելոյ: Լուր զինչ ասէն Դանիէլ. “Տեսանէի մինչև աթոռք եդան և Հինաւուրցն նստէր. բիւրք բիւրոց պաշտէին զնա և հազարք հազարաց մերձ կային 'ի նա”. և դարձեալ Եսայիաս. “Տեսի զտէր նստեալ 'ի վերայ աթոռոյ բարձու և ամբարձեցելոյ, և սրովբէք կային շուրջ զնովաւ”. և Միքիաս. “Տեսի զած Իսրայէլի նստեալ 'ի վերայ աթոռոյ իւրոյ, և ամենայն զօրք երկնից կային յաջմէ նորա և յահեկէ”: Տեսանես ամենայն ուստեք զվերին զօրութիւնսն շուրջ կացեալս զնովաւ, և զնա նստեալ: Արդ յորժամ տեսցես յաջմէ նստեալ, մի սպասաւորական և նուաստ գործակից զնա գոլ կարծիցես արժանապատուութեանն, այլ զտիրական և որ զիշխանութիւնն ունի: Յաղագս այսորիկ և Պաւղոս զերկոսեան զայսոսիկ բաժանէ ասելով այսպէս. “Առ հրեշտակսն ասէ. ո արար զհրեշտակս իւր հոգիս և ըզպաշտօնեայս իւր բոց հրոյ: Իսկ առ որդին ասէ. աթոռ քո ած յաւիտեանս յաւիտենից”: աթոռովն մեզ զթագաւորական իշխանութիւնն յայտնեաց: Եւ արդ զի ամենեքումբք այսոքիւք բանս մեզ եցոյց ոչ սպասաւորական արժանաւորութեանն զորդի, այլ տէրունեան, իբրև տեառն նմա երկիր պագցուք և իբրև զուգապատուի հօր. այսպէս և ինքն հրամայեաց ասելով. “Զի ամենեքեան, ասէ, պատուեսցեն զորդի, որպէս պատուեն զհայր”:

Ի ձեռն առաքինութեանցն և 'ի ձեռն գործոցն հաւատութեան յարմարեսցուք և միաւորեսցուք ընդ ուղղութեանցն աւանդութիւնս, զի մի կիսամասն մեզ՝ փըրկութեան իրք իցեն: Եւ զառաքինութեանն ստուգութիւն և զվարուցն ուղղութիւնս ոչ այլ ինչ այնպէս կարէ յարմարել, որպէս անընդհատ աստ դեգերումն և հանդերձ յօժարութեամբ լսելութիւն: Զի որպէս մարմնոյ կերակուր, նոյնպէս և հոգւոյ ածային բանիցն վարդապետութիւն. “Քանզի ոչ հացիւ միայն, ասէ, կեցցէ մարդ, այլ ամենայն բանիւ որ ելանէ 'ի բերանոյ ած”: Վասն այսորիկ և սով գիտէ գործել որոց ոչն հա-

'ի վերայ եղջէ քահանայական դրացն այնոցիկ և անկաս տեսցէ զժողովեալսն, և զնոյն ինքն լեալ յօժարամտութիւնն շիջուցանէ, ընդարմանայ և թախծի, և տաղտկագոյն լինելով 'ի բաց գնայ, և այնպէս առ փոքր փոքր ամենայն բնութիւնս առ մեզ մեղկի և պղերգագոյն լինի։ Իսկ եթէ տեսցէ ընթացեալ 'ի միասին և փոյթն և ամենայն ուստեք դիմեալս, այլոց փոյթ՝ և յոյժ հեղգացելումն և լքեցելումն յօժարամտութեան պատճառ լինի։ Քանզի եթէ քար ընդ քարի շփելով՝ բազում անգամ հուր արտաքս վարել պատրաստէ, և սակայն զինչ քան զքար ցրտագոյն և զինչ քան զհուր ջերմ, այլ սակայն բնութեանն յաղթէ յաճախութիւն շփմանն։ Իսկ եթէ քարի այնպէս հանդիպի, և առաւել անձանց յորժամ առ միմեանս դեգերեսցին և հոգևոր հրոյն ջեռնուցուն։

Ոչ լուայք զի առ նախահարքն մերովք երկոտասանք միայն էին, և ոչ նոքա ամենեքեան կացին մնացին, այլ մին 'ի նոցանէ կորեաւ Յուդաս, և էին մետասանք բոլորեքեան. այլ սակայն 'ի մետասանիցն յայնցանէ հարիւր և քսան եղեն, և 'ի հարիւր և քսանիցն երեք հազարք, և ապա զաշխարհ ամենայն լցին։ Իսկ պատճառն էր՝ ոչ երբէք զժողովն լքանել թողուլ, այլ միշտ էին ընդ միմեանս 'ի տաճարին հանապազօրեայք աղօթից և ընթերցուածոց պարապելով. յաղագս այնորիկ յաճախապէս լուցին զհուրն, վասն այնորիկ և ոչ երբէք լքան, այլ զաշխարհս ամենայն յինքեանս ձգեցին։

Նոցա նմանեսցուք և մեք։ Իսկ զիա՞րդ ոչ իցէ վերջին յիմարութիւն ոչ այնքան ցուցանել յաղագս եկեղեցւոյ զնախահոգութիւն որքան կանայք վասն դրացեաց իւրեանց. զի նոքա յորժամ տեսանեն կոյս զոք աղքատ և ամայի յամենայն օգնականութենէ լեալ, զիւրեանց զամենայն ինչ բերեն 'ի կարգի խնամակալուաց լինելով, և յոլովս տեսցէ ոք արդեօք անդ ամբոխս և հոյլս 'ի կուսին հարսանիս. ոմանք և ինչս բազում անգամ ընծայեն, և կէսք զմերձաւորութիւնն իւրեանց մարմնով. ոչ սուղ ինչ է և այն՝ քանզի լինի ծածկոյթ խաղաղութեան նոցա փոյթն, և զաղքատութիւնն թաքուցանեն իւրեանց յօժարութեամբն։

Սոյն և աստ արասցուք եկեղեցւոյս այսմ. ամենե-

քին ամենայն ուստեք ընթացուք 'ի միասին և ծածկեսցուք զսորա զաղքատութիւնս յաճախապէս այսր գալով ։ Գլուխ կնոջ է այր, և օգնական առն կին. արդ մի գլուխն առանց մարմնոյն ներեսցէ 'ի վերայ ելանել սուրբ սեմոցս այսոցիկ, և մի մարմինն առանց գլխոյն երևեսցի. այլ բովանդակ այսր մտցէ մարդն ունելով ընդ ինքեանս զմանկունս ։ Զի եթէ զծառ վայելուչ է տեսանել որ յերկրէ ունիցի նոր շառաւիղս բուսեալս, և առաւել զմարդ քաջավայելուչ է տեսանել և քան զամենայն ձիթենի քաջազուարճ՝ յարմատոյն իւրմէ զմանկունս իբրև զնորատունկ ունելով մերձ առ կացեալ. ոչ վայելուչ միայն, այլ և շահաւոր. զի որպէս յառաջագոյն ասացի՝ յոլով է առ վարձ ժողովելոյն ։ Քանզի և ընդ երկրագործ յայնժամ հրաշանամք, ոչ յորժամ զբազում անգամ անդաստան փորձեալ՝ դարմանիցէ, այլ յորժամ զանսերմն և զանարօրադրեալ երկիրն առնլով յոլով նախախնամութեան արժանի առնիցէ ։ Որպէս և Պաւղոս առնէր պատուասիրապէս աւետարանելով, ոչ ուր անուանեցաւ Քրիստոս ։

Ամին և մեք նմանեսցուք 'ի դէմս եկեղեցւոյս և յօգուտ մեր ։ Արդ հանապազ ընթասցուք այսր 'ի ժողովս ։ Եթէ ցանկութիւն բռնակիցէ, շիջուցանել դիւրաւ զայն կարես՝ տեսանելով միայն զտունս զայս. և եթէ բարկանայցես, հանդերձ դիւրութեամբ դադարեցուցանես զգազանն. և եթէ այլ ինչ ախտ պատանդիցէ, զամենայն ձմեռնային մրրիկսն կարասցես լուծանել, հանդարտութիւն գործելով և բազում խաղաղութիւն անձին ։ Յորում լիցի ամենեցուն մեզ վայելել արժանաւորութեամբ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## Ի ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐՈՒ

Այսօր 'ի մեռելոց յարուցեալ Ղազարու, 'ի բազում և 'ի զանազան վտանգից և վշտաց շնորհեաց մեզ

մխիթարութիւն մեկնութեան ։ Վասն զի ոչ գիտեմ եթէ որպէս ընթերցուածս այս եմոյծ ճառս զայթակղութեան Հրէից եւ հեթանոսաց ընդդիմաբանութիւն. ոչ եթէ 'ի ճշմարտութենէ, քաւ լիցի, այլ 'ի նոցա չարարուեստ մտաց ։ Բազումք 'ի հերձուածողաց ասեն՝ թէ չէ հաւասարակից որդի հօր . ընդէ՞ր . քանզի պիտոյ եղեւ Քրիստոսի աղաչել զհայր առ 'ի յարուցանել զՂազարոս . զի եթէ ոչ էր աղօթեալ, սակայն ոչ էր յարուցեալ զնա 'ի մեռելոց ։ Իսկ զիա՞րդ իցէ նա հաւասար այնմ որ աղօթէ առ այն որ ընդունի զպաղատանս . քանզի միոյն աղօթէ, եւ միւսն զյաղթութեան աղօթսն 'ի նմանէ ընդունի որում մատուցանէ զպաղատանսն ։

Գայթակղին որք ոչ ճանաչեն, մոլորին որք ոչ իմանան՝ եթէ խոնարհութեան էին իրքն եւ ոչ վասն տկարութեան աղօթքն ։ Ասա դու ցիս, ո՞ր է մեծագոյն, լուանա՞լ զոտս աշակերտացն, եթէ որ լուացեալն լինիցի ։ Այլ փրկիչն լուաց զոտս մատնչին Յուդայի, քանզի ընդ աշակերտսն էր . ապա զի՞նչ մեծագոյն է, Յուդա՞ քան զտէրն, վասն զի լուաց զոտս նորա . քաւ լիցի, 'ի բաց տար ։ Արդ ո՞ր է խոնարհագոյն, զո՞տս լուանալ, թէ աղօթել . յայտ է թէ զոտս լուանալ ։ Զի այն որ զխոնարհագոյնն ոչ հրաժարեաց առնել, զիա՞րդ զբարձրագոյնն հրաժարէր առնել ։ Այլ զայն ամենայն վասն տկարութե՛ այնոցիկ առնէր որ մերձն կային . եւ զի վասն տկարութեան Հրէիցն որ մերձն կային եղեւ, յառաջաբանն[1] յայտ առնէ ։

Այլ եւ Հրեայքն աստի առնուն զպատճառս ընդդիմաբանութեան եւ ասեն՝ թէ զիա՞րդ զնա ա՛ծ անուանեն քրիստոնեայքն որ զտեղին անգիտանայր . վասն զի ասաց փրկիչն ցՄարիամ եւ ցՄարթա քորքն Ղազարու՝ թէ "Ո՞ւր եդիք զնա" ։ Տեսնե՞ս, ասէ, տգիտութիւն որ զտեղին անգիտանայ . նա ա՛ծ է, ասէ, որ այդպէս տկարանայր ։

Այլ ես ասացից ցնոսա . ոչ էր այդպէս, այլ զդիմադրութիւն նոցա խորհէր յանդիմ առնել ։ Անգիտանա՞յր Քրիստոս զտեղին 'ի ձեռն այնմ իրացն որ ասաց՝ ո՞ւր եդիք զնա ։ Ո՞չ ապաքէն եւ հայր 'ի դրախտին շրջելով

1 Իմա՝ յառաջ երթալով բանին, յընթացս ճառին ։

խնդրէր զԱդամ և ասէր. «Ո՞ւր ես, Ադամ», ո՞ւր թաքուցեալ կաս։ Վասն է՞ր ոչ ասաց ա̃յ զտեղիսն յառաջագոյն Ադամ. և ասէր ա̃ծ՝ Ադամ, ո՞ւր ես։ Ապա զի՞նչ նա. «Լուայ զձայն գնալոյ քո 'ի դրախտի աստ և երկեայ, քանզի մերկ էի և թագեայ»։ Եթէ զայս անգիտութիւն կոչես, կոչեա ապա և զայն անգիտութիւն, վասն զի ասաց Քրիստոս ցՄարիամ և ցՄարթա՝ թէ ո՞ւր եդիք զնա։ Եւ եթէ զայն անգիտութիւն ասես, զի՞նչ ապա ասես յորժամ լսես ա̃յ խօսել ընդ Կայենի «Ո՞ւր է Աբէլ եղբայր քո»։ Ապա եթէ զայն անգիտութիւն կոչես, կոչեա և զայս։

Առցես և այլ ցոյցք քեզ յաղագս այդմ բանի յա̃ծ-ային գրոց։ Ասէ տէր ցԱբրահամ. «Աղաղակ սոդոմայեցւոցն ելին առ իս. և իջեալ տեսից թէ ըստ աղաղակի նոցա որ հասեալ է առ իս՝ վճարեսցե՞ն. ապա թէ ոչ՝ զի գիտացից»։ Այն որ գիտէր զամենայն նախ քան զլինելոցն, որ քննէ և հետազօտէ զսիրտս և զերիկամունս, որ գիտէր զամենայն խորհուրդս մարդկան, միթէ յանգիտութենէ՞ ասէր՝ եթէ իջեալ տեսից եթէ ըստ աղաղակի նոցա որ յիս հասանիցէ՝ վճարեսցե՞ն. ապա թէ ոչ՝ զի գիտացից։ Եւ եթէ այն անգիտութիւն է, ապա և այս անգիտանալի լիցի։ Այլ ոչ հայր ըստ հին կտակարանացն անգիտանայր, և ոչ որդի 'ի նորումն։ Զի՞նչ ապա «Իջեալ տեսից թէ ըստ աղաղակի նոցա որ յիս հասեալ իցէ՝ վճարեսցե՞ն. ապա թէ ոչ՝ զի գիտացից»։ Լուր, ասէ, եկն առ իս. այլ կամիմ անդրէն ստուգապէս իրօքդ այդուիկ առնուլ զգիտութիւն. ոչ եթէ ես անգիտանամ, այլ ուսուցանել կամիմ զմարդիկ զի ոչ վայրապար բանից հաւատալ, և ոչ եթէ որ ինչ չար վասն ընկերի իւրոյ՝ հաւատալ. այլ նախ քննել զնոսա, և 'ի ձեռն իրացն այնոցիկ առնուլ զգիտութի, և այնպէս ապա պարտ է հաւատալ։ Վասն որոյ և յայլում տեղւոջ ասէ. «Մի՛ հաւատար ամենայն բանից»։ զի ոչ այնպէս կործանէ զկեանս մարդկան, որպէս վաղվաղակի հաւատալ ումեք ասացելոց զայս ինչ կամ զայն։ Եւ մարգարէն Դաւիթ մարգարէացաւ և ասէ. «Որ խօսէր գաղտ զընկերէ իւրմէ, զնա բացէ 'ի բաց հալածէի»։

Տեսե՞ր եթէ ոչ եղև անգիտութիւն փրկչին՝ որ ասաց

այսպէս “ Ո՞ւր եդիք զնա ”. որպէս ոչ եղեւ հօր՝ որ ասաց թէ “ Ո՞ւր ես, Ադամ ”. կամ որպէս ասաց ցԿային՝ եթէ “ Ո՞ւր է Աբէլ եղբայր քո ”. կամ որ ասէր եթէ “ Իջեալ տեսից թէ ըստ աղաղակի նոցա որ յիս հասեալ է՝ վճարեսցեն. ապա թէ ոչ՝ զի գիտացից ”: Ո՞չ ապաքէն ժամ է այսուհետեւ պատերազմել ընդ նոսա՝ եթէ ոչ վասն տկարութեան աղօթէր Քրիստոս և յարոյց զՂազարոս, ոչ: Նոր ստուգութեամբ բազմաւ, աղաչեմ:

Մախճանեցաւ Ղազարոս, և Յիսուս ոչ էր յայնմ տեղւոջ, այլ 'ի Գալիլեա, և ասէր ցաշակերտսն իւր. “ Ղազարոս բարեկամն մեր ննջեաց ”: Եւ նոքա կարծէին եթէ վասն ննջելոյ քնոյ ասէ, ասեն ցնա. “ Տէր, եթէ ննջեալ, ապա ապրի ”: Եւ ասէ ցնոսա Յիսուս յայտնապէս. “ Ղազարոս բարեկամն մեր մեռաւ ”: Գայ այնուհետեւ 'ի Բեթանիա 'ի տեղին ուր Ղազարոս եդեալ կայր, և ել ընդ առաջ նորա քոյրն Ղազարու և ասէ. “ Տէր, եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ ”: Տկար էր կինն և ոչ գիտէր, զի թէպէտ և ոչ անդ մերձ էր Քրիստոս մարդեղութեամբն, այլ ա͞ծութեան իշխանութեամբն մերձ էր. բայց և մարմնոյն գալստեամբն ոչ լինելով անդ՝ ըստ զիջանելոյ վարդապետին կարծէր: Եւ վասն այնորիկ ասէր. “ Տէր, եթէ աստ լեալ էիր, ոչ էր մեռեալ եղբայրն իմ: Եւ արդ այժմ գիտեմ, ասէ, եթէ զոր ինչ խնդրեսցես յա͞յ, տայ քեզ ”: Եւ փրկիչն ըստ խնդրուածոց նորա առնէր զաղօթսն. քանզի ոչ կարիս ունէր աղօթելոյ, և այնպէս յարուցանէր զմեռեալն: Այլ յաղագս տկարութեան կնոջն առնէր զաղօթսն: Ասէ. “ Եթէ աստ լեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ. և արդ գիտեմ եթէ զոր ինչ խնդրեսցես դու յա͞յ, տայ քեզ ”: Այցելութեամբ խնդրեցեր, և ես հայցելութ͞բ տամ քեզ:

Ասա աղբիւր յորդաբուխ է և բղխէ. եթէ ոք մատուցանէ անօթս մեծ, արբցէ ջուր բազում. և եթէ փոքր մատուցանէ, արբցէ ջուր սակաւ: Ուստի խնդրուածոյ հայցեաց ել տուաւ նմա: Միւս այլ [illegible] ասաց. “ Նա [illegible] [illegible], և [illegible] [illegible] իմ. և ասէ ցնա. ըստ հաւատոց քոց եղիցի քեզ ”: Եւ այլ ումն՝ եթէ “ Ոչ եմ արժանի եթէ ընդ յարկաւ իմով

մտցես „ . և այլ ոմն ասաց՝ եթէ “Բժշկեա զորդին իմ. և ասէ ցնա՝ երթ, որդին քո կենդանի է „ ։ Բազմաց և բարուց մարդկանն բժշկութիւն մատուցանէր բժըշկողն ։ Այլ ոմն 'ի գաղտնի և 'ի ծածուկ մերձեցաւ 'ի քղանցս հանդերձից նորա, և 'ի ծածուկ պտղաբերեաց զբժշկութիւնն . և իւրաքանչիւր ոք որով իւիք հաւատայ, այնու և զբժշկութիւնն ընկալցի ։

Կինն այս ասէր . գիտեմ զոր ինչ խնդրեսցես յա̃յ, տայ քեզ ա̃ծ ։ Ոչ եթէ նա պէտս ունէր աղօթից, այլ ըստ տկարութեան կնոջն զիջանէր . զի ցուցցէ եթէ ոչ էր հակառակ ա̃յ, այլ զի զայն զոր ինքն առնէր, և հայր նոյն նման գործէր ։ Եւ ստեղծ յառաջագոյն զմարդն ա̃ծ և նոցա եղև ստեղծիչ . “Արասցուք, ասէ, մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան „ ։ Դարձեալ կամեցաւ զաւազակն 'ի դրախտն մուծանել, և ոչ ինչ պէտք եղեն նմա աղօթից . վաղվաղակի բան ասաց միայն, և եմոյծ զնա 'ի դրախտն, թէպէտ և զամենեսեան զկնի Ադամայ արգել 'ի մտանելոյ 'ի տեղի նորա ։ Զի հրաման ետ ա̃ծ բոցեղէն սերովբէիցն և քերովբէիցն պահել զճանապարհ դրախտին . այլ տիրաբար Քրիստոս բացեալ զճանապարհ դրախտին, և զաւազակն 'ի ներքս արկ . քանզի յաղագս աւազակութեանն արտասահմանեալ էր 'ի դրախտէն հայրն մեր Ադամ ։

Ով տէր, վասն միոյ յանցանաց միայն արտաքսեալ զնա, և զաւազակն 'ի ներքս ածեր . որ բիւրս բիւրուց բիւրապատիկ անօրէնութեան պարտապան էր, այդպէս միայն մեկին բանիւ վասն միոյ բանի դրախտին արարեր բնակիչ ։ Բայց և ոչ այն, ասէ, եղև առանց իմ զոր գործեաց հայր, և ոչ այս զոր ես գործեմ առանց հօր . “Զի ես 'ի հայր և հայր 'ի յիս „ ։

Եւ զի գիտասցես եթէ ոչ լինէր պէտս աղօթելոյ առ 'ի յարուցանել զմեռեալն, լուր զինչ ասէ յաղօթսն . “Գոհանամ զքէն, հայր, զի լուար ինձ „ ։ Զինչ իսկ ասաց, ո՞չ էր առ հայր նախ քան զասել զբանս զայս, և ասէ՝ թէ լուար . զինչ ասաց, ո՞չ էր խօսեալ նախ քան զձայնս զայս, և ասէր՝ թէ գոհանամ զքէն զի լուար ինձ ։ Եւ ընդէ՞ր վասն որոյ գիտէրն եղև . “Այլ վասն ժողովրդեանս որ շուրջ կան՝ առնեմ զայս, զի ծանիցեն եթէ դու առաքեցեր զիս „ ։ Միթէ վասն մեռելոյն ա-

ղաչեաց, միթէ հայցեաց զի յարուսցէ զՂազարոս, միթէ ասաց՝ Հայր, հրամայեա մահու զի հնազանդեսցի ինձ, միթէ ասաց՝ Հայր, հրամայեա դժոխոց զի մի աղխէ զգրուհս իւր, այլ տացէ յօժարութեամբ զմեռեալն: “Այլ վասն ժողովրդեանս, ասէ, որ շուրջ կան՝ առնեմ զայս, զի հաւատասցեն եթէ դու առաքեցեր„: Վասն զի ոչ եթէ եղեալն նշան միայն էր, այլ և խրատ որոց մերձն կային: Տեսե՞ր եթէ ոչ եղեն աղօթքն վասն մեռելոյն, այլ վասն անհաւատիցն որ մերձ էին. “զի հաւատասցեն, ասէ, թէ դու առաքեցեր զիս„:

Եւ զիա՞րդ ունիցիմք հաւատս եթէ նա առաքեաց ըզքեզ. միտ դիր ստուգութեամբ, աղաչեմ: Հաւասիկ, ասէ, խնամ տէրութեամբս կոչեմ զմեռեալս. ահաւասիկ խնամ իշխանութեամբս հրամայեմ մահու: Կոչեմ զհայր որ յերկինս է՝ Հայր. և եթէ ոչ էր Հայր իմ, տակայն խափանեալ էր զմեռելոյն յարութիւնն. և եթէ Հայր ոչ էր իմ Հայր, արգելեալ էր զմահ տալ զմեռեալն: Այլ զՀայր՝ Հայր կոչեմ, քանզի գիտեմ եթէ Հայր իմ է ճշմարտութեամբ: Կոչեմ զՀայր՝ Հայր, և կոչեմ զՂազարոս 'ի գերեզմանէ: Եթէ յառաջագոյն ոչ էր ճշմարիտ, և ոչ յայսմ լինիցի. ապա եթէ ճշմարիտ Հայր է Հայրն, լուիցէ մեռեալն առ 'ի վարդապետութիւն այնոցիկ որ մերձն կային:

Զինչ ապա ասէր. “Ղազարէ, արի եկ արտաքս„: Յորժամ եղև աղօթքն, ոչ յարեաւ մեռեալն. այլ յորժամ ասաց “Ղազարէ, եկ արտաքս„, ապա յայնժամ յարեաւ 'ի մեռելոց: Ո՛վ բռնութիւն մահու. ո՛վ բռնութիւն զօրութեան այնմ որ ըմբռնեալն էր զոգին: Աղօթք եղև, և ոչ արձակէր զմեռեալն: Ընդէ՞ր. քանզի ոչ առ հրաման. դահիճ էր աստանօր և ըմբռնեալ էր զհոգին. եթէ հրաման ոչ առնում, ասէ, ոչ արձակեմ. քանզի աղօթքն, ասէ, ոչ եղեն վասն իմ, այլ վասն թերահաւատիցն որ մերձն կային. եթէ ոչ առնում հրաման, ոչ արձակեմ զպարտապանն. կամ և մնամ ձայնին, զի արձակեցից զոգին: “Ղազարէ, եկ արտաքս„: Լուաւ հրամանացն և արձակեաց զոր ունէրն: Ամաչեսցեն հերձուածողք, քանզի եցոյց բանն եթէ ոչ վասն յարութեան մեռելոյն եղեն աղօթքն, այլ վասն տկարութեան լսողացն որ մերձն կային: “Ղա-

զարէ, եկ արտաքս,,: Վասն էր յանուանէ կոչէ զմե-ռեալն. զի մի յարձակել ձայնին յարիցեն մեռեալք ա-մենեքեան որ 'ի գերեզմանսն են. սակս այնորիկ յա-նուանէ կոչէր և ասէր՝ Ղազարէ, եկ արտաքս: Ո՜ քեզ միայն առ ժամս այս կոչեմ, զի 'ի ձեռն այսմ՝ աւուրս զհանդերձելոցն ցուցանեմ զյարութիւն. զի եթէ զայն որ 'ի դժոխսն էին՝ զարթուցի ես, և զտիեզերս յարու-ցանեմ: "Ես եմ յարութիւն և կեանք,,:

"Ղազարէ, եկ արտաքս: Եւ ել մեռեալն ոտիւքն կապելովք,,: Ո՛վ զարմանալւոյ սքանչելեացն. որ զհո-գին 'ի կապանաց մահու արձակեաց, որ խորտակեաց ըզ-դրունս դժոխոց, և փշրեաց զդրունս պղնձիս և զնիգս երկաթիս, և արձակեաց զհոգին 'ի կապանաց մահու, ո՞չ կարէր զոտսն արձակել: Եւ[1] կարի իսկ քաջ. այլ Հրէից առաջ հրաման լուծանել զկապանսն զոր նոքա յառաջագոյն պնդեցին և կապեցին. զի ճանաչիցեն ըզկը-նիք պատանաց իւրեանց, զի գիտելով իմասցին թէ Ղա-զարոս իցէ որ 'ի նոցանէն պատեցաւ, և Քրիստոս որ հաճութեամբ հօր եկեալ էր՝ ունի իշխանութիւն կե-նաց և մահու: Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն:

1 Պակասէր յօրինակին Եւ կարի իսկ քաջ... լուծանել զկապանսն. յա-ւելաւ 'ի յունէն:

# ԱՆԴՐԻԱԿԱՆ ՃԱՌՔ

## ՅԱՆԿՔ

Ա. Խօսք ասացեալ յԱնտիոք, երբեմն նոր քահանայ 'ի հէն եկեղեցին, 'ի բանն առաքելոյ առ Տիմոթէոս՝ եթէ «Սակաւ գինի խառնեսջիր վասն ստամոքսիդ և ստէպ հիւանդութեանցդ»: և որք դայթակղին վասն արդարոց վտանգելոցն, և մեղաւորացն 'ի բարիս վայելելոյ:

Բ. Խօսք ասացեալ յԱնտիոք, երբեմն նոր քահանայ 'ի հէն եկեղեցին, և վասն անդրեացն դարձուցանելոյ զպատկերս մեծի թագաւորին Թէոդոսի, և 'ի բանն առաքելոյ «Մեծատանց պատուիրեա յայսմ ժամանակի չհպարտանալ», և վասն աղքատութեան:

Գ. Յաղագս գնալոյ Փլաբիանոսի արքեպիսկոպոսի առ թագաւորն բարեխօսել վասն քաղաքին զի դարձուցին զանդրիանդքն: Եւ զի բարձրագոյն և մեծ է բուն ըզ քահանայութիւն քան զթագաւորութիւն: Եւ վասն պահոց պիտոյութեան օրինակաւ Նինուէացւոցն առ անաստուածսն: Եւ թէ բամբասանքն և չարախօսքն վնասակար է քան զմարմին եղբօրն ուտել: Եւ զի բազում պարտաւորք ազատեցան, և անպարտք պատուհասեցան:

Դ. Մխիթարութիւն առ ժողովուրդն, և վասն Ներողութեան և համբերութեան օրինակաւ Յոբայ և երից մանկանցն, և վասն 'ի բաց կալ հանապազ 'ի բանից երդմանն:

Ե. Դարձեալ առ ժողովուրդն զի քաջութեամբ տանիցին եկելոց սպառնալեաց օրինակաւ դրոց չափաւոր պատմութիւն Յոբայ և Նինուէացւոցն: Եւ զի քան 'ի մահուանէ 'ի մեղաց պարտ է երկնչել. և թէ ամենայն ջանիւ պարտ է փախչել յերդմանէ:

Զ. Թէ բարւոք է երկիւղ իշխանաց. և վասն դի-



Digitized by Google

պուածոյ ճանապարհին որոց հանդերձեալ են պատմել Թագաւորին. և Թէ որք անպարտ գոլով չարչարիցին և գոհանան զա̃յ, հաւատար են որ վասն ա̃յ չարչարեցին օրինակաւ 'ի գրոց վասն երդման:

Է. Թէ մահ և տրտմութիւն յաշխարհ մեղքն բերին, որ և բարձաւ Քրիստոսիւ: Եւ Թէ 'ի սկզբանէ արար ա̃ծ զերկին և զերկիր: Եւ Թէ ոչ միայն պատուէ զմեզ ա̃ծ, այլ և տանջէ ըստ նմանութեան բարութեանց:

Ը. Յաղագս գնալոյ տեառն ա̃յ 'ի դրախտի անդ ընդ երեկս, և վասն փախչելոյ յերդմանէ:

Թ. Գովութիւն գովասանական յաղագս ուղղելոյ ժողովրդեանն չերդնուլ: Եւ Թէ զկնի կերակրոյ պարտ է մնանել յեկեղեցին և ունկնդիր լինել բանիցն ա̃յ: Եւ ընդէր յետ բաղում ժամանակաց տուաւ գիր: Եւ յութեւտասն սաղմոսն Դաւթի: Եւ Թէ չէ պարտ երդնուլ:

Ժ. Թէ պարտ է յետ կերակրոյ ոչ հեռանալ յեկեղեցւոյ: Եւ բնախօսութիւն զաշխարհէ և զարարչութենէն ա̃յ. և բնաւ 'ի բաց կալ յերդմանէ.

ԺԱ. Գոհութիւն ա̃յ վասն փոխարկելոյ անկակալի չարեացն և յիշելոյ զնոյն. և արհամարհանաց մարմնոյ մերոյ և նորին ստեղծման. և ուղղելոյ զշաւիղս երդման:

ԺԲ. Դարձեալ գոհութիւն առ ա̃ծ վասն Թողութե̃ զոր առ Թագաւորն մեղան: Եւ վասն արարածոց և բնական օրինաց մարդոյն. և վասն երդման:

ԺԳ. Դարձեալ գոհութի̃ ա̃յ վասն ազատելոյ 'ի խռովութեանցն. և մարդոյն հրաշագործութեանց, և բնական օրինօք գիտութեան գործոց: Եւ սերտիւ ուղղել զերդումն:

ԺԴ. Վասն նոյն քաղաքին իրաց: Եւ զի ամենք յաճախեցին զհամբաւ ահին: Եւ խրատ վասն երդման և զանցանելոյ օրինակաւ պատմութեան Յեփթայէ, և 'ի Սաւուղայ:

ԺԵ. Դարձեալ վասն նորին քաղաքի: Եւ զի քաղցր է երկիւղ և ողբումն քան զծաղր: Եւ Թէ քան սպառնալ չար է յերդումն ածել զոք:

ԺԶ. Վասն համբաւոյ գալստեան իշխանացն, և երկիւղ 'ի քաղաքին և նորին մխիթարելոյ: Եւ 'ի կապանան Պաւղոսի, և վասն երդման:

ԺԷ. Վասն առաքելոյ իշխանացն 'ի Թագաւորէն քըն-

կանգնել 'ի վերայ բարձր սեան մերձ 'ի տաճար սրբուհւոյն Մարիամու Ածածնին, որպէս և մեծին Կոստանդիանոսի կայ կանգնեալ 'ի վերայ ծիրանի սեանն մօտ 'ի վաճառափողոցն Կոստանդինուպօլսի: Քանզի և այս սովորութիւն է առաջնոց թագաւորացն առ 'ի հաստատուն պահել այնուհետև զհնազանդութիւն տիեզերաց 'ի ներքոյ լծոյ թագաւորութեանն իւրեանց:

Արդ եբրև եհաս պատկեր թագաւորութեանն իւրոյ 'ի մեծն Անտիոք, և կանգնեցաւ 'ի տեղւոջն յորում և հրամայեցաւ, յայնժամ յետ աւուրց ինչ դէպ եղև կոմսի հազարապետի քաղաքին և եպարքոսին արտաքոյ լինել քաղաքին յաղագս իրիք ինչ զբօսանաց: Իսկ խառնիճաղանջ ռամիկ ամբոխ քաղաքին, որք ըստ սովորութեանն ժողովեալ էին յասպարէզ ձիընթացիցն յաւուր կաղանդացն, խորհուրդս անմիտս 'ի մէջ առեալ՝ քարածիգ եղեալ խորտակեցին զպատկեր թագաւորին և բաժանեցին զարծաթն 'ի մէջ իւրեանց: Իսկ 'ի դառնալ անդրէն կոմսին 'ի քաղաքն և տեսանել, բարկացաւ յոյժ 'ի վերայ գործելոց իրացն, և կալեալ զբազումս 'ի քաղաքացեացն եդ 'ի բանտի, և առ յաւարի զտունս նոցա. գրեաց և առ մեծն Թէոդոս թագաւորն և ծանոյց նմա զաղէտս իրացն որ գործեցան: Յայնժամ բարկացեալ թագաւորն ետ հրաման 'ի ձեռն գրոյ կոմսին և եպարքոսին խրատել զբազումս ձեռաց և ոտից հատմամբ և աչաց խաւարմամբ և աւարառութեամբ ընչից և տարասահմանութեամբ: Անդ էր տեսանել այնուհետև մէգ և մառախուղ և խաւար սգոյ և տրտմութեան զմայրաքաղաքաւն մածեալ:

Վասն որոյ և Յոհան ոսկիբերան, որ յայնժամ էր քահանայ մեծի եկեղեցւոյն, կոչեցեալ 'ի միայնակեցութենէ 'ի վարդապետութիւն ժողովրդեանն, խօսեցաւ զգիրս զայսոսիկ 'ի սուրբ քառասներորդսն ճառս քանանեմի 'ի դէմս հայրապետին և բազմութեանն բանս մխիթարականս: Նա և զեպիսկոպոսապետն Փլաբիոս յորդորէր դնել զանձն 'ի վերայ հօտին իւրոյ որ աւանդեցաւ նմա 'ի Քրիստոսէ, և նմանող լինել Մովսէսի գնալ առ թագաւորն և ասել, որպէս և նա ցԱծ. "Եթէ թողուս նոցա զմեղս թող, ապա թէ ոչ՝ և զիս ջնջեա 'ի դպրութենէդ յորում գրեցեր": Իսկ զժողո-

Digitized by Google

«Ձեռն վաղվաղակի յուրումք վերայ մի դնիցես, և մի լինիցիս հաղորդ մեղաց օտարաց»․ և որ շաղախեալ լինին յանօրէնութիւնս յայս, 'ի բաց կացցեն 'ի նոցանէ զվտանգս, ցուցանելով զի ընդ այլում յանցանաց այլք անկանին 'ի տանջանս յետ նոցին այնոցիկ․ վասն զի զիշխանութի՛ ձեռնադրութեանն 'ի չար ընկեցին: Եւ ապա դարձեալ ասէ․ «Սակաւ մի գինի խառնեսջիր վասն ստամոքսիդ և ստէպ հիւանդութեանց քոց»: Եւ վասն դատակարգութեան ծառայից և վասն արծաթսիրութե՛, նախանձու և վասն ճոխանալոյ, հեղգութեան և վասն այլոց բազմաց այսօր ցուցաւ մեզ: Եւ ընդ այս ամենայն անցանել բանիւ այժմ ոչ կարեմք, զինչ արդեօք խորհիցիք զասացեալսն զորս սկսանիմ այժմ պատմել սիրոյդ ձերում: Զի որպէս 'ի բուրաստան բազում և զանազան տեսանեմ ծաղիկս, վարդս և մանուշակս և շուշանս, այլ ընդ ամենեսեան պէսպէս սերմանեալ զառատագոյն պտուղ հոգւոյն սրբոյ 'ի մեզ լցեալ բազում անուշահոտութեամբ: Մանաւանդ ոչ եթէ բուրաստան միայն, այլ և դրախտ ամենապատիկ է ընթերցումն աստուածային գրոց․ ոչ եթէ միայն փոքր ինչ անուշահոտութիւն ունելով ծաղիկս այս, այլ և պտուղս, որով զհոգին կերակրել կարող է:

Զինչ այժմ կամիցիք յասացելոցն 'ի մէջ բերել այսօր: Կամիք զի որ թուին քան զամենայն հեշտագոյն հանդիպելոց այնմ հասու լինել բարեաց, զայս սկսանիմ ասել այժմ. ինձ այսպէս թուի, և ձեզ բարւոք հաղորդակից լինել: Զինչ արդեօք քան զայլս հեշտագոյն իցէ․ հեշտագոյն ասեմ, որ հանդիպողաց թուիցի հասու լինել բարեաց․ և թէ որպէս իցէ այս, ես ասացից․ «Գինի, ասէ, սակաւ խառնեսջիր վասն ստամոքսիդ և ստէպ հիւանդութեանց քոց»:

Ի՞եր արդեօք զամենայն զմեկնութիւն բանիս այսօրիկ ժողովեալ, ասասցուք զբանս զայս ոչ եթէ վասն պատուասիրութեան, և ոչ զասել բանիս կարող գոլով ձեզ պարգևել փութամ, այլ զի ոչ մեր իցէ ասելս, այլ շնորհաց հոգւոյն սրբոյ է փչումն այս․ իսկ մեք մանաւանդ զգանդաղութիւն զունկնդիր լսողաց զարթուցանեմք, և ցուցանեմք եթէ որպիսի գանձանակ իցէ բանք ա͞ծեղէն գրոց, և ոչ է առանց գայթակղութեան ան-

այսպէս զգուշաւոր պատրաստիւք որպէս թէ բազում խորօք ծածկեալ է բանս այս, և բազում ջան պիտոյ է 'ի լոյս ածել զխնդիրս զայս ։

Ոմանց այսպիսի բանս թուեցաւ ասել. մինթէ ոչ էր կարող իմանալ յանձնէ իւրմէ Տիմոթէոս թէ գինի խառնել պարտ է, այլ հնայր 'ի վարդապետէն իւրմէ ուսանել զայն ։ Զոր և վարդապետն ոչ եթէ միայն հրամայեաց, այլ և գրով հաստատեաց՝ որպէս յարձանս պղնձիս դրուագել հրամանաւ ։ Իսկ նա ոչ դժուարացաւ վասն այսպիսի առաքմանս 'ի հրապարակս գրել աշակերտին զայս ։ Զի ուսանիցիս եթէ ոչ միայն ոչ 'ի բաց եդիր առանց խնդրուածոց, այլ 'ի կարեաց ընդունական եղև. և այս ոչ եթէ 'ի Պաւղոսէ լիցէ միայն, այլ 'ի շնորհաց հոգւոյն սրբոյ, որ ոչ ցուցանելով միայն ասեմ, այլ և 'ի գրոց հաստատեալ. նա և զամենայն զոր ինչ հանդերձեալ էր առնել՝ հրամանաւ տալ նմա զայն այնմ հետևել, և առ յապա ցուցումն որք հետևելին 'ի պատուիրանս ոչ պակասութիւն ինքեանց վարկանելով զայս վասն կարողութեան և զօրանալոյ 'ի տկարութիւնս ։

Ընդէր տեղի ետ սա առն այսպիսի ունելով համարձակութիւն, որոյ ոսկերք և նշխարք զդևս հալածէր, յայսպիսի հիւանդութիւնս անկանել. և ոչ միայնակ 'ի հիւանդութիւնս, այլ բազում ցաւս ընդ միմեանս խառնեալ, որ ոչ տային նմա փոքր ինչ հանգիստ առնուլ ։ Եւ ուստի յայտ լիցէ այս. 'ի նմին բանիցն Պաւղոսի ։ Զի ոչ ասաց՝ վասն հիւանդութեան քո, այլ հիւանդութեանց քոց. և ոչ միայն հիւանդութեանց ասաց, այլ հանապազորդաց՝ եթէ "սակս հիւանդութեց քոց" ։

Արդ լուարուք որ ընդ երկար 'ի հիւանդութեան իցէք, և դժուարաւ հետևել տրտնջիցէք ։ Ոչ եթէ զայս միայն այժմ պարտ է խնդրել՝ որ 'ի հիւանդութիւնս հանապազորդ և 'ի ցաւս էր սուրբս այս, այլ և վստահութիւն հաստատութե առհասարակ ամենայն մարդկան զօրոց և զհոգ ունէր յանձին ։ Եւ եթէ մի յայնցանէ էր որ բնակեալ են 'ի գլուխս լերանց, հեռացեալ 'ի քաղաքաց և յանապատս և 'ի խուցս բնակեալ, անհոգ վարելով զկեանս իւր, ոչ էր անհնարին քննել զայս ։ Այլ նա որ 'ի մէջ երկրի բնակեալ էր, և այսչափ եկեղեցեաց ձեռնկալու եղեալ, և բոլորովին զհոգս

քաղաքաց Հոգւոյ, նա և զազգս և զաշխարհ ամենայն այնչափ փութապէս յօժարութեամբ ընթանայր, և 'ի բաց դնէր զնեղութիւն հիւանդութեանց, ընդ այս մանաւանդ պարտ է զարհուրել ամենեցուն և զարմանալ ընդ ժուժկալութիւն սրբոյն. զի ոչ վասն անձին իւրոյ խնդրէր զառողջութի՛, որպէս և այլ ժողովրդեանն։ Նայլ արիաբար զօրանայր, և հաճոյական ըստ զօրավարին տայր պատերազմ, ոչ ընդ հեթանոսս միայն, այլ և ընդդէմ դիւաց և ընդ նոյն ինքն ընդ բանսարկուն, որք բազում և յոյժ պատերազմօք ամենեքեան ընդդէմ յառնելով սասկացուցանէին։ Իսկ քաջ զինուորն յաղթական գոլով առ 'ի գերել զնոսա, և այնպէս կարողացաւ զօրութեամբ մինչև զխիւս բիւրուց բերեալ 'ի ճշմարտութիւն, և էր 'ի հիւանդութեան։ Նաև ոչ մի ինչ այլոց իրաց վնաս նմա 'ի հիւանդութենէն եղև, նա և բաւական իսկ էր այս միայն զհաւատացելոյն ծոյլս առնել։ Զի և զինուորք յորժամ տեսանեն զզօրավարն իւրեանց 'ի մահիճս անկեալ, ծուլանան և դանդաղին 'ի պատերազմունս, բազում մանաւանդ յիրաւի էր յայնժամ հաւատացելոյն զվարդապետն իւրեանց տեսանելով այնչափ նշանս առնել և հանապազ 'ի հիւանդութեան կալեալ, և ներգործէր մարմինն մարդկային ախտիւն։

Նաև ոչ միայն զայս, այլ և այլ ինչ բազում յայտնէր մեզ պատուէրս այս զոր ըստ կարողութեանն խնդրել պարտ է՝ վասն որոյ դարձեալ ոչ սա ինքն անձին իւրում և ոչ նորին վարդապետն այսպէս գոլով իւրում անձինն՝ ներգործէր զբժշկութիւն. այլ զմեռեալս յարուցեալ, զդևս հալածեալ, և զմահու զօրութիւն հանդերձ գերազանցութեամբ ըմբռնեալ, և զմի մարմին հիւանդացեալ ոչ բժշկեցին. իսկ յօտար մարմինս կենդանութեամբ և զկնի վախճանին այնչափ յարդարեալ էին զօրութիւնք, և զմի ստամոքս անկեալ 'ի ցաւս ոչ ողջացուցին։ Նա և այս իսկ է սքանչելի՝ ոչ ամաչել Պաւղոսի յետ այնչափ նշանաց փոքր բանիւ ցուցանէր առ Տիմոթէոս գրելով առ նա վասն գինւոյ ըմպելոյ ապաքինիչ բժշկութեան։ Նաև զի ոչ թէ գինի ըմպել զարշելի իցէ ըստ հարկի պիտոյից, քաւ լիցի. հերձուածողացն է պատուէրս այս։ Իսկ նա գիտէր զի ոչ էր վնաս և ոչ ամօթ, և ոչ նմա կար էր առանց նորին օգ-

հայհոյութիւնս տուռմին, այլ յայսմ ամենայնէ վեր-ամբարձեալք են։

Եւ ոչ լինէր ցանկող Տիմոթէոս բնութեամբ որդի հարազատ կոչել Պաւղոսի, որ է այժմ սքանչելի. զի որ ըստ մարմնոյ ազգականութեան ոչ էր ընդ նմա միաւորեալ՝ որդի սիրելի կոչէր զնա, ուստի յայտ իսկ է թէ ստուգութեամբ զկերպարանս նորին իմաստութեանն ունելով կեցուցանէր զամենեսեան։ Զի որպէս մատաղ որթ ընդ արջառոյ լծեալ այնպէս բերէր զլուծն զկնի Պաւղոսի և ոչ պակասէր վասն անկատար հասակին. և զայս նմա պատրաստեաց յօժարութիւն և հոգս վարդապետին իւրոյ։ Եւ դարձեալ Պաւղոս վկայեաց և ասէ այսպէս՝ եթէ "Մի ոք զդա արհամարհիցէ, զի զգործ տեառն գործէ որպէս և ես"։ Տեսանես թէ զկարգ անփոփոխելի վկայ է զնորա փութոյն։ Զի մի ոք կարծեսցէ թէ շնորհս առնելով ասէ զայս, զնոսին զլռողսն առնէ վկայս մանկանն առաքինութեան ասելով՝ եթէ "Զփորձ գիտէք դուք, զի որպէս որդի հօր ծառայեաց ընդ իս յաւետարանին"։

Այլ թէպէտ և յայնչափ բարձրութիւն ուղիղ գնացիւք ելեալ, սակայն ոչ այնու յուսով մեծամտեալ, այլ բարիոք ջանիւք կայր և հեզութեամբ, և ոչ թուլանայր որպէս և բազումք ոք ամիսս տասն կամ քսան պահելով կարծեն կատարել զամենայն։ Իսկ նա ոչ այսպէս խորհեցաւ և ոչ ած զմտաւ յինքեան եթէ զինչ պէտք են ինձ այժմ պահոց, հասի յայնչափ բարձրութիւնս, մեռուցի զմարմինս, զդեւս երկեցուցի, զսատանայ հալածեցի, մեռեալս յարուցի, զբորոտս սրբեցի, և ահագին դտայ ընդդիմակացաց այսոցն զօրութեանց. զինչ այժմ պէտք են ինձ պահոց և կալոյ աստ զգուշութե՞։ Յայսմ ամենայնէ ասաց և ոչ ինչ, այլ որպէս բիւր ուղղութեամբ լցեալ կայր, նոյնչափ մանաւանդ սոսկայր և դողայր. և զայս 'ի վարդապետէն իւրմէ ուսեալ էր զիմաստութիւն։

Զի նա որ մինչև յերրորդ երկինս համբարձաւ և 'ի դրախտն եմուտ և զանճառելի բանս լուաւ և այնքան խորհրդոց հաղորդակից եղև և ընդ ամենայն տիեզերս որպէս թևօք ընթանայր, գրեալ առաքէր առ կորնթացիսն ասելով. "Երկնչիմ գուցէ որ այլոց քարոզեցի, ես

ինքն անպիտան գտանիցիմ,,: Արդ եթէ Պաւղոս յետ այնր ամենայնի և այնչափ ուղղութեանց երկնչէր, որ և ասէր համարձակ թէ և "Աշխարհ ինձ 'ի խաչ ելեալ է և ես աշխարհի,,, յոյժ մանաւանդ մեզ պարտ է երկնչել, և այնքան մանաւանդ որչափ 'ի բազում ուղղութիւնս իցեմք:

Քանզի սատանայ յայնժամ խստագոյն լինի և գազանանայ առաւելապէս յորժամ տեսանէ զմեզ 'ի հոգս անձանց մերոց բարիոք տնօրինեալ զկենցաղս. յորժամ տեսանէ զբեան առաքինութեան ուղղել՝ բազում ունելով դժուարակրութիւնս, յայնժամ փութայ չարաչար գործել զնաւակոծութիւն: Իսկ զնուաստս և զհեղգս թէպէտ և ընդ ատս անկեալ 'ի վայր զարկուցանէ, ոչ այնչափ հասարակաց վնաս բերէ, որպէս զայն որ բարձրանայ 'ի գլուխ առաքինութեան և կայցէ բազում համարձակութեամբ և ծանիցեն զնա և ամենեցուն յայտնի լինի և սքանչասցի յամենեսեան, և ապա յորժամ փորձութիւն հասցէ՝ անկցի 'ի բարձրութենէն յայնմանէ, նորա անկումն մեծ վնաս գործեսցէ. զի ոչ եթէ ինքեամբ միայն անկաւ 'ի բարձանց, այլ և զբազումս որք տեսին զնա՝ դանդաղագոյնս արար: Իսկ որպէս 'ի մարմինս եթէ յայլոց անդամոց ինչ ապականի, ոչ է բազում վնաս. ապա եթէ յաչս կամ 'ի գլուխ լինիցի վնաս, ամենայն մարմինն անպիտանանայ, այսպէս և 'ի սուրբս է տեսանել: Որ 'ի մեծ ուղղութիւնս իցէ, և հեղգացեալ զլոյսն զայն շիջուցանէ, և աղտեղութիւնն լուցանի, յայնժամ բոլորովին ամենայն մարմնոյն անբերելի վնաս բերիցէ:

Զայս ամենայն զմտաւ ածեալ Տիմոթէի՝ յամենայն կողմանց զանձն ամրացուցանէր, դիտելով զի չար է մանկութիւն և կոխող բարեաց և սրբութեան հոլովիչ. զի որպէս հուր զանձն ուրուք շուրջանակի պատեալ հեշտութիւն՝ փութով այրեսցէ: Վասն այսորիկ առաւել խնդրէր իբրև սանձիւք արգելուլ զյարձակումն և յամենայն կողմանց զանձն իւր փակէր, մինչ զի շուրջանակի զբոցն բորբոքեալ շիջուցանել փութայր: Որպէս ձի որ դժուարասանձ իցէ և դժուարաւ ուղղի, բազում ջանիւ նկրտի մինչև զխայտալ երիվարին նուաճեսցէ և ուղիղ գնացիւք յառին կացուցանէ, սոյնպէս ուղիղ վա-

րուք զառնութիւն մարմնոյ տկարացուցանել, և մի տկարանալ հոգւոյ. սանձել զյարձակումն նորա, զի մի լիցի արգել ընթացից յերկինս հոգւոյ:

Իսկ յետ այսր ամենայնի կատարման մանաւանդ զնա ոք գովեսցէ, զի այսպէս տկարացեալ և յայսչափ հիւանդութեան ոչ հեղգայր յածայինն գործսն, այլ որպէս առողջ և անդադար մարմնով յամենայն տեղիս ընթանայր, երբեմն յԵփեսոս, երբեմն յԱքայիա և 'ի Կորնթոս, և եւս բազում անգամ 'ի Մակեդոնիա, հանապազ յերկրի և 'ի ծովու զկնի վարդապետին փայլէր, և յամենայն պատերազմունս հաղորդէր ընդ նմա 'ի միասին գոլ 'ի վտանգս և 'ի ձգունս, և զխստութի հոգւոյն ոչ վատթարեաց տկարութիւն մարմնոյն. այսչափ էր նախանձն առ ած, որ ցանկ զթեւս մարմնոյն յապաւէր: Զի որպէս մարմին գոլով ողջ 'ի բարի կեանս՝ շահ ինչ ոչ է յայնմանէ յորժամ հոգին անկեալ դիցի 'ի դանդաղմունս և 'ի վտանգս, այսպէս և տկարացելոյ չէ վնաս 'ի հիւանդութենէն՝ եթէ ոգիքն կայտառ և արի իցէ:

Թուեցաւ ոմանց խրատս այս և պատուէրս եթէ իշխանութիւն տուեալ է անյագ լինել յարբեցութիւն գինւոյ. այլ չէ այսպէս: Իսկ եթէ ոք ստուգութեամբ քննեսցէ զբանս զայս, մանաւանդ պահոց է հրաման պատուիրանիս: Իմա այժմ զիարդ ոչ յառաջմէն խորհեցաւ զայս Պաւղոս, այլ յորժամ ետես կանխեալ որոշեալ 'ի նմանէ զօրութեանն, յայնժամ հրամայեաց. և ոչ յայնժամ միայն, այլ յետ մեկնելոյն 'ի նմանէ: Իսկ ոչ ասաց լոկ՝ եթէ զինի խառնեսջիր, այլ եթէ սակաւ. որ ոչ Տիմոթեայ միայն էր այս խրատ և հրաման, այլ մանաւանդ մեզ է խնդրելի: Ըստ որում և գրով առաքեաց առ նա, որով մեզ սահման և չափ եդիր պիտոյից գինւոյ. այնչափ հրամայեաց մեզ ըմպել, որչափ կանգնիցէ զտկարութիւն մեր, և լինիցի տալ առողջութիւն մարմնոյ և մի ցաւս. զի սա քան զանչափ արբումն ջրոյ 'ի վնասել ոչ է պակաս, այլ եւս առաւելագոյն և չարաչար ցաւս մարմնոյ անչափութիւն գինւոյն ծնանի, և հոգւոյ յարուցանէ պատերազմ ախտից, և զծուխս աղտեղի խորհրդոց 'ի միտս մեր ժողովէ, և զզօրութիւն մարմնոյն տկարացուցանէ: Ոչ երբէք բնութիւն երկրի նեխեալ յառաւելութենէ ջուրց այնպէս փութով եղ-

Digitized by Google

ծանի, որպէս զօրութիւն մարմնոյ թուլանայ և զօսանայ որք հանապազ 'ի գինարբութեան յեցեալ կան:

Փախիցուք այսուհետև իւրաքանչիւր յանչափութենէ գինւոյ, և զզուարճութիւն նորա կորեսցուք 'ի մէնջ: Գինի տուաւ մեզ յԱստուծոյ ոչ յարբեցութիւն, այլ 'ի զուարթութիւն ուրախութեան, և ոչ 'ի հիւանդութիւն և 'ի ցաւս: “Գինի, ասէ, ուրախ առնէ զսիրտ մարդկան„. և դու առնես զնա պատճառ ծուլութեան: Օ՜ 'ի արբեցողաց ոչ միայն ծուլութիւն գործէ, այլ և զմիտսն խաւարեցուցանէ: Իսկ յորժամ չափաւոր ունիցիս զսեղանն, դեղ է նա ախորժական: Օ՜ ի այսու ընդունելութեամբ և 'ի հերձուածողաց զմեզ բաժանեսցուք որք այսպէս առնեն զԱստուծոյ արարածս: Եթէ կայր ինչ արգել գինւոյ, ոչ էր հրամայեալ Պաւղոս և ոչ էր ասացեալ՝ եթէ գինի սակաւ խառնեսջիր: Եւ այս ոչ եթէ 'ի հերձուածողս միայն իցէ, այլ եւ առաւել յեղբարս մեր. յորժամ տեսանիցեն զոմն արբեցութեամբ անառակեալ, թողուն զնա անդ տաչորեալ, և զոր յԱստուծոյ տուեալ մեզ պտուղ այսպէս առնեն, ասէ՝ մի իցէ գինի:

Եւ որս ասասցուք՝ թէ մի իցէ արբեցութիւն. զի գինի գործ է Աստուծոյ, և արբեցութիւն գործ է սատանայի. և ոչ եթէ գինի առնէ զարբեցութիւնն, այլ անառակութիւնն. մի յետս ընկենուր զԱստուծոյ հրաշագործութիւնն, այլ զստորոգութիւն և զչարութիւն ընկերի քում: Դու թողուս զմեղուցեալն տանջել և դարձեալ կանգնել, և զբարեգործն անարգես: Եւ մեք յորժամ լսեմք զայս յամանց ասել, խցցուք զբերանս նոցա. զի ոչ եթէ լուծումն, այլ անչափութիւն առնէ զարբեցութիւն. և արբեցութիւն արմատ է ամենայն չարեաց:

Գինի տուաւ մեզ յառողջութիւն տկարութեան մարմնոյ, և ոչ յեղծումն զօրութեան հոգւոյ. զի զմարմնոյ հիւանդութիւնս բարձցէ, և ոչ եթէ զհանգիստ հոգւոյ նուակծեսցէ, և մի անչափ յագեցմամբ զպարգևս Աստուծոյ մեծս պատճառս առնել անխրատից և անզգուշացելոց մարդկան: Օ՜ ինչ ողորմելի իցէ քան զարբեցողն, ասա ինձ. մեռեալ է կենդանւոյն, դև է յանդիման, հիւանդ՝ որոյ բժշկութիւն ոչ գոյ, գէշ է 'ի դիակունս, որոշեալ 'ի պատասխանւոյ սա շարժէ զաղջս մեր յանպիտանութիւն. ոչ եթէ յէութիւն ըստ բնութեան ի-

րոյ միայն իցէ արբեցողն այնպէս, կամ ծանօթից իւրոց, կամ 'ի գինետական հարկս ուր պիտոյ իցէ հաշիւգործոյ, այլ և յօտարաց 'ի պակաս տեսութենէ երևեսցի գարշելի, հոսեալ զաղտութեամբ ործայ և բանայ զբերանն իւր, և ձայնք նորա անվայելուչք, անոտես և վերջին աւարտեալ չար որոց ընդ նմա իցեն. և որ գլուխն է ամենայն չարեաց, անելանելի առնէ զերկինս որք արբեցութեամբ իցեն 'ի ցաւս յայս, և յաւիտենական բարեացն ոչ տայ թոյլ հանդիպել. զի որ այժմու կենօքս անառակութեամբ կացցեն յարբեցութիւնս և 'ի ստորին ցաւս և 'ի հիւանդութիւնս, անդ 'ի տանջանս կայ և մնայ անմեկնելի։

Արբեցաւք այսուհետև 'ի չար սովորութենէս յայսմանէ. լուիցուք զասացեալն Պաւղոսի եթէ "գինի սակաւ խառնեսջիր": Նա և զչափս զայս վասն տկարութե հրամայեաց. զի թէ չէր նեղեալ հիւանդութիւն զՏիմոթէոս, ոչ յայս ստիպէր զաշակերտն, և ոչ զպակաս խառնումն գինւոյն եղեալ էր չափ։ Զի թէպէտ տուաւ մեզ յԱյ կերակուր և ըմպելի, այլ ըստ ժամանակի և ըստ պիտոյից, և միշտ չափով ունել զյագեցումն. ոչ երբէք ելանել ըստ պէտս մեր, և ոչ թափուր և ունայն ինչ առնել։

Եւ քանզի ծանեաք զգութն Պաւղոսի և զառաքինութիւն աշակերտին ուսաք, բեր այսուհետև զմեկնութիւն հարցման խնդրոյ բանիս ժողովեսցուք։ Զինչ իցէ խնդիրն. հարկ է ասել դարձեալ, որ և սուղապէս երևեսցի մեկնութիւնն։ Վասն է՞ր այսպիսի սրբոյ որ այսչափ գործոց յօրինիչ էր, տեղի ետ ած անկանել 'ի հիւանդութիւնս, զոր ոչ ինքն և ոչ վարդապետն իւր կարացին բժշկել, այլ 'ի ձեռն գինւոյ ըմպելոյ խնդրէին զօգնականութիւն։ Խնդիրս այսպիսի էր. պարտ է և զմեկնութիւն սորա յառաջ բերել, և զի ոչ միայն յայսպիսի հիւանդութիւնս սուրբք ամենք անկեալ եղեն, այլ ևս բազումք անկան յաղքատութիւնս, 'ի սով, 'ի բանտ, 'ի տանջանս, 'ի փորձութիւնս, 'ի զրպարտութիւնս և յամենայն վտանգս անցաւոր կենցաղոյս՝ սուրբք մեծամեծք և սքանչելիք։ Եւ այնոքիկ որք կամին խնդրել զայս, կարողութիւն է տալ պատասխանի յորոց ասացեալքս են ստուգութեամբ և ճշմարտութեամբ։

«Քանզի և լսեմ խօսք ՚ի բազմաց ՚ի խոյզ և ՚ի խնդիր արկեալ զմի բանս զայս. ընդէ՞ր երբեմն այս անուն այր չափաւոր և հեզ յայլմէ անօրինէ և ՚ի չար մարդոյ զօր ամենայն ՚ի դատապարտութիւն մատնիցի և բիւր նեղութեան դիպեսցի, և տեղի տայ ած այնպէս լինել. հիմ զրպարտեցաւ այլ ոմն և մեռաւ յանիրաւութեան. և միւս ոմն սուրբ ընդէ՞ր խեղդեցաւ, և այլ ոմն կախեալ և ՚ի վախից անկեալ մեռաւ: Եւ զաազուամ ունիմք ՚ի սրբոց ասել ՚ի ժամանակս մեր և ՚ի ժամանակս հարց մերոց համբերեալ նեղութեան և պէսպէս և զանազան տրտմութեանց: Եւ զի մի հանապազ մեք զայսր պատճառ խուզեսցուք և կամ զարհուրեցուսցուք և կամ զայլոց գայթակղութիւնս անտես արասցուք, այս օր մեկնութեան բանիս զոր կամիմք ասել՝ միտ դիցուք հաւատեաւ իմանալ զզանազան չարչարանս սրբոց: Եւ ընդ ամենայն ուժ թուով ունիմ ասել զպատճառդ սիրոյդ ձերում: Վասն որոյ յիմաստս տեսութեանս այսորիկ ստուգութեամբ կալարուք զանձինս ձեր ամենեքեան, և գիտասջիք ամենեքեան զի ոչ մի թողութիւն է մեզ կամ պատասխանի վասն դիպելոյ նեղութեանց սրբոցն, և չիք պատճառս գտանել տրտմութեան և խռովութե և ոչ մի, եթէ կամիցիմք:

Առաջինն վասն այսորիկ թոյլ ետ ած անկանել սըրբոցն ՚ի չարչարանս, զի մի վաղվաղակի թուեսցի ումեք փոփոխել նոցա և բաժանել ՚ի մեծութենէ ուղղութեն: Երկրորդ զի մի համարեալ լիցի այլոցն ՚ի վեր քան զընութիւն մարդկան ունել նոցա, և աստուածս կարծիցեն զնոսա և ոչ մարդիկ: Երրորդ զի յայտնի երևեսցի ած զօրութիւնն նոքօք, որք ՚ի հիւանդութիւնս ՚ի չարչարանս և ՚ի բանտս անկեալ կային, և քարոզութիւն նոցա և բժշկութիւն առաւել յաճախէր: Չորրորդ զի այնչափ համբերութիւն նոցա ՚ի նեղութիւնս յայտնապէս ցուցանէ զսէրն որ ոչ վարձու ծառայէին ած, այլ այսչափ ցուցանէին գիտութիւն և վարուց քաջութի, զի յետ այնչափ չարեացն վասն նորա անուանն զվարսն ցուցանէին բարիոք: Հինգերորդ զի այնու հաստատութիւն յարութեան իմաստասիրեսցի. քանզի յորժամ տեսանիցես այր սուրբ և արդար և բազում առաքինութեամբ լցեալ և բիւր նեղութեան դիպեսցի,

և այսպէս երթիցէ յայժմու կենացս, զի և անձամբ նեղեալ իցէ, իմա դու ինձ մանաւանդ վասն յարութե̃ն։ Օ՛ի թէ մարդիկ որ վասն անձանց իւրեանց վաստակեցին՝ ոչ տան թոյլ առանց վարձուց և փոխարինաց գնալ, ապա մանաւանդ ա̃ծ որ այսչափ վասն նորա ցաւագնեցան՝ ոչ տայ թոյլ առանց պսակաց մնալ։ Ապա եթէ տայցէ թոյլ վաստակոց նոցա մերժել 'ի հատուցմանէ և վասն նոցա յայլ ժամանակ լինել յետ աստի վախճանելոյս, երբ զաստի կենացս առցեն զհատուցումն վաստակոց իւրեանց։ Վեցերորդ զի ամենեքեան որ 'ի փորձանս գայթակղութեան անկանիցին, բաւական ունիցին զմխիթարութիւն. զի յորժամ եկեսցէ 'ի վերայ նոցա չար ինչ, յիշեսցեն զ'ի վերայ եկեալ նեղութիւն սրբոցն, և ունիցին զմխիթարիչն յանձինս իւրեանց։ Եօթներորդ զի յորժամ աղաչեմք զձեզ նոցին առաքինութեանցն նմանել, ասելով իւրաքանչիւր ումեք 'ի ձէնջ՝ թէ նմանող լերուք Պաւղոսի և ցանկորդ Պետրոսի, մի կարծիցէք վասն նոցա թէ այլ բնութիւն զգեցեալ էին, և ծուլանայցէք նմանող լինել։ Ութերորդ զի յորժամ պարտ իցէ երանելիս վարկանել կամ թշուառականս, ուսանիմք թէ որո՛ց պարտ իցէ առնուլ զերանութիւնս, կամ ո՛յք իցեն թշուառականք և տրուպք։

Արդ պատճառ այսոքիկ են, և պարտ է զայս ամենայն 'ի գրոց առնել հաւատալի, և ցուցանել ստուգութեամբ զի ոչ մարդկեղէն միտք բաւական է այսոցիկ, այլ գրելոցն հրամանն որ զամենայն ասացեալ է։ Այսպէս և բանս ձեր արժանահաւատալի իցէ, և մանաւանդ հաստատուն յանձինս ձեր կացցէ։ Քանզի վասն խոնարհութեան և զչափ մարդկային ճանաչելոյ գայր վիշտք և նեղութիւնք սրբոցն, զի մի վասն վարուց իւրեանց ուղղութեանն և մի ընդ բազմապատիկ առաւել նշանս և արուեստս հպարտասցին, վասն որոյ տեղի տայր ա̃ծ լինել այսպէս, ըստ որում լսեմք 'ի Դաւթայ և 'ի Պաւղոսէ ասացեալ. մարգարէն ասէ. «Բարի է ինձ զի խոնարհ արարեր զիս, որպէս ուսայց զիրաւունս արդարութեան քո»։ Իսկ Պաւղոս յափշտակեցաւ մինչև յերրորդ երկինս. նոյն և 'ի դրախտն, ասէ, յափշտակեալ։ «Եւ զի մի, ասէ, առաւելութեամբ յայտնութեանցն

սատան կոփել զիս „ . և այսու զազգի ազգի փորձանսն եկեալ 'ի վերայ իւր յայտ արար և ասէ. "Վասն այսորիկ երիցս աղաչեցի զտէր զի 'ի բաց արասցէ՝ յինէն. և ասէ ցիս, շատ է քեզ զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի „ ։ Յայնժամ, ասէ, երևի զօրութիւն իմ յորժամ դուք 'ի տկարութեան իցէք, և վասն ձեր որք կարծեն զձեզ եթէ տկարք իցեն՝ առ նոսա բազմանայ քարոզութիւն ձեր, և յաճախեն նշանք յորժամ բիւրս առնուցուք վէրս և 'ի բանտ մտանիցեք։ Որպէս եղեն իսկ. 'ի բանտի գոլով՝ զբանտապետն կապեաց։ Հայեաց, 'ի կոճեղ պնդեալ էր ոտք նորա և երկաթի կապանք 'ի ձեռս նորա, և այնպէս շարժեաց զբանտն։ "Ի մէջ գիշերի, ասէ, Պաւղոս և Շիղա կային յաղօթս և օրհնէին զա͞ծ „ ։

Տեսանե՞ս թէ զիարդ և որպէս զօրութիւն նորա 'ի տկարութեան կատարի։ Եթէ էր Պաւղոս ընդարձակ և շարժեալ էր բանտն, ոչ էր այնպէս սքանչելիք. վասն այսորիկ ասէ՝ մնա կապեալ, և բանտդ շարժեսցի, զի առաւել երևեսցի զօրութիւն իմ վասն քո որ ըմբռնեալդ ես և կապեալդ։ "Իսկ ամենայն հիմունք, ասէ, բանտին շարժեցան „ ։ Այս ամենայն ըղնոյն, ինքն զբանտապետն զարհուրեցոյց, որ այսչափ 'ի նեղութեան էր, աղօթիւք միայն կարող եղև շարժել զհիմունսն, և եբաց զդուրս բանտին և արձակեաց զկապեալսն ամենայն։ Ոչ եթէ աստ միայն եղև այս, այլ և Պետրոսի և սոյն ինքն Պաւղոսի և առ այլ առաքեալսն յորժամ համապազորդ 'ի հալածանս անկանէին, ա͞ծային շնորհօքն միշտ լցեալ էին. և յորժամ տրտմութիւն հասանէր նոցա, յայնժամ մեծապէս զօրութիւն նորա քարոզէր։ Վասն այնորիկ ասէր. "Շատ էն քեզ շնորհք իմ, զի զօրութիւն իմ 'ի տկարութեան կատարի „ ։

Զի և առաւել ևս քան զմարդկային բնութիւնս լինէին կարծեցեալ 'ի բազմաց, եթէ ոչ տեսանէին զնոսա յայնպիսի չարչարանս, լուր այժմ թէ զիարդ այսպէս երկեաւ Պաւղոս և ասէ. "Զի եթէ կամիցիմ պարծել, ոչ եղէց անզգամ. այլ խնայեմ, գուցէ ոք համարիցի յիս ինչ աւելի քան զոր տեսանիցէ յիս կամ լսիցէ յինէն „ ։ Զինչ է զոր ասես. կարող եմ, ասէ,

բազում և առաւելագոյն առնել սքանչելիս, այլ ոչ կամիմ, զի մի երբեք 'ի մեծութե̃ նշանացն առաւել քան զմարդկային բնութիւնս կարծեսցեն վասն իմ: Ըստ որում և պետրոսեանքն յորժամ զկաղն կանգնեցին, և ամենեքեան զարմացմամբ առ նոսա ընթանային, արձակէին զնոսա և հաւանեցուցանէին զի ոչ յանձանց իւրեանց առնէին զայս, և ասէին. "Ընդ մեզ զի՞ հայիք, ոչ եթէ զօրութեամբ մերով արարաք զգնալ դորա": Եւ դարձեալ 'ի Լիւստրա արջառս զարդարէին և մատուցանէին զոհել Պաւղոսի և Բառնաբայ:

Տեսանե՞ս զբանսարկութիւն չարութիւնն. զոր տէր փութացաւ սրբել, յամբարշտութիւն արկանել. փութայր՝ հաւանեցուցանել զմարդիկ աստուածս պաշտել զնոսա. զոր և արար իսկ յառաջին ժամանակին, որով եղև ընկիզքն կռապաշտութեան, սոյն իրօք մանաւանդ արմատացոյց: Բազումք պատերազմունս մղեալ և յաղթութիւնս կացուցանել և քաղաքս շինել և այլ ինչ սոյնպիսիս, իսկ յորժամ 'ի նոցանէ օգտէին, 'ի բազմաց աստուածք կարծեցան, և տաճարք և բագինք պատուեցին զնոսա, և ամենայն հելլենական աստուածքն ըստ կարգի յայսպիսի մարդկանէ հաստատեցան:

Օ ի մի և 'ի սուրբս լինիցի այս, թող ետ ա̃ծ զնոսա հալածել և ստէպ ապտակել. զի 'ի մարմնական տկարութենէ տեսեալ և 'ի բազմութենէ փորձութեանցն՝ հաւանեսցին եթէ մարդիկ են որ այսպիսի սքանչելիս առնէին, և թէ ոչ յանձանց իւրեանց առնէին զայս, այլ յայտնապէս շնորհքն ներգործէր զամենայն 'ի ձեռն նոցա: Օ ի թէ մինչ զփոքր և զանկատար նշանս առնէին՝ և զնոսա աստուածս կարծէին, ապա եւս առաւել եթէ ոչ էր դիպեալ նոցա մարդկային ախտք, որք և զայնպիսի սքանչելիս գործէին զոր ոչ տեսեալ ոք երբեք և ոչ լուեալ: Սակայն և այնպէս տեսանէին զնոսա ապտակեալ, 'ի բանտի, 'ի հալածանս, 'ի վիշտս զօր ամենայն, եթէ ոչ էին անկեալ յայսպիսի մարդկային հալածանս, բազումք մանաւանդ յայսպիսի կարծիս յամբարտաւանութեանն գլորեալ էին: Երրորդ պատճառ 'ի վերայ որոցն չարեաց հասանելոյ այս է:

Չորրորդն՝ զի մի կարծեսցեն զսուրբսն այսու կենօքս միայն յուսացեալ 'ի տէր՝ ունել վարս բարիս և զա̃ծ

հաշտ առնել ։ Քանզի բազումք որք անառակութեամբ կեցին և 'ի բազմաց այնպէս կոչեցան, զբազում սուրբս որք յառաքինութեան վարս լաւլի եղեալ գովեցան, որք 'ի վիշտս գոլով բարի հոգովք միայն սոքա զնոսա այսն առնել սիրանին ։ Եւ ոչ միայն մարդիկ զայս առնեն, այլ և նոյն ինքն բանսարկուն զնոյն խորհէր ։ Վասն զի ետես զՅոբ բազում ստացուածովք յղփացեալ՝ և մեծութեամբ հռչակեալ. իսկ չար դեւն այն նախատել կամելով առաջի այ, ոչ ունելով այլ պատճառ թէ զինչ ասիցէ, ոչ յանձնէ իւրմէ տալ կարէր պատասխանի պարտաւորութեանն, ոչ վասն առաքինութեան արդարոյն հնարել ինչ կարէր մեղս, յայս յուսացաւ փութապէս 'ի պատասխանիս և ասէ այսպէս. "Միթէ ձրի պաշտէ Յոբ զտէր". այսինքն վարձու աղագաւ պաշտէ զքեզ, այսչափ ճոխութի 'ի քէն ընկալեալ ։ Ո ինչ ասէր ած. կամէր ցուցանել թէ ոչ սակս վարձու ծառայէին և հաշտ առնէին զնա սուրբքն, եբարձ 'ի նմանէ զամենայն մեծութիւն և զճոխութիւն, և ետ աղքատութիւն և թոյլ ետ անկանել 'ի չարաչար հիւանդութի ։ Եւ ապա յանդիմանեաց զնա որ ունայն զայս խորհեցաւ. ասէ. "Տակաւին առաւելապէս կայ յանմեղութեան. և դու ընդ վայր, ասէ, խօսեցար և ընդունայն զինչս նորա կորուսեր"։

Քանզի սորոց բաւական է այս առ 'ի փոխարէնս հատուցման հաշտ ունել զած և համարձակ լինել առ նա. Նա և սիրելեաց առ սիրելիս բաւական իցէ 'ի հատուցումն այս, և ոչ այլ առաւել խնդրեսցէ, և ոչ համարի այլ ինչ մեծ լինել քան զայս ։ Եւ եթէ 'ի մարդկանէ այսպիսի, որչափ ևս առաւել առ այ. զոր և ած կամեցաւ ցուցանել այնու, զի առաւել քան զինչ խնդրեաց սատանայ, ետ իւր ։ Օ ի նա այսպէս ասաց. "Առաքեա զձեռն քո և մերձեցիր առ նա"։ Իսկ ած ոչ այսպէս արար. այլ զինչ. 'ի ձեռս քո, ասէ, մատնեցից զնա ։ Որպէս և յարտաքին պատերազմունս որք ըզմարմինս սպանեն և կալեն 'ի մարտ, և զհանդերձս իւրեանց զզենուն թաթաւեալ ձիթով և 'ի զէն զարդարեալ են՝ ոչ այսպէս երևին զարմանալիք, որպէս յորժամ զայս 'ի բաց թօթափեալ մերկ մտանեն 'ի պատերազմն, յայնժամ մանաւանդ տեսողքն զարմանան

քան ընդ որս հոգան վասն անդամոց իւրեանց, զի յամենայն կողմանց հարկանի սրով, և ոչ միոյ անդամոյ կարող է պարսպել։ Նոյնպէս է և Յոբ. յորժամ ամենայն մեծութեամբ զարդարեալ էր, ոչ էր յայտնի բազմաց թէ որպիսի ոք էր. իսկ յորժամ զայս որպէս հանդերձ մերկացաւ Ձգնաւորն, և մերկամարտի նմանեալ 'ի բարեպաշտութեան պատերազմին, սոյն իսկ մերկ գոլով տեսեալ՝ զամենայն աշխարհ զարմացոյց. նա և հրեշտակաց տեսիլ եղեալ վասն համբերութեան անձին իւրոյ, որք և մեծ բարբառով գովէին զպսակեալն զայն։

Եւ դարձեալ ասեմ զոր յառաջագոյնն ասացի. ոչ այսպէս երևելի էր մարդկան յորժամ ամենայն զօրութեամբ և մեծութեամբ պայծառացեալ էր, որպէս յայնժամ յորմէ հետէ որպէս հանդերձ մերկացաւ և մերկ երևեցաւ սոսկալի տեսիլ 'ի մէջ արարածոց, ընդ որոյ համբերութիւն ամենեքեան հիացան առ հասարակ։ Եւ տես զի ոչ յառաջին մարտին և ոչ 'ի հիւանդութեանն զոր համբեր՝ որպէս ասացի՝ ոչ եհար զնա հարուածովք ա՟ծ, զի մի դարձեալ ասասցէ սատանայ՝ եթէ անխայեաց յարդարն, և ոչ որպէս պարտ էր՝ ած զփորձութիւնն 'ի վերայ նորա. վասն այնորիկ մատնեաց զնա 'ի ձեռն սատանայի, զընչիցն զկորուստ և զչխանութիւն մարմնոյ իւրոյ։ Աստահ եմ 'ի Ձգնաւորն իմ, վասն այսորիկ ոչ արգելում ածել 'ի վերայ նորա մարտս որչափ և կամիս։

Զոր օրինակ քաջամարտիկ ոք վստահ եղեալ յարուեստ և յոյժ մարմնոյ իւրոյ ոչ կամիցի մարտնչել ընդ մարտակիցս իւր, մանաւանդ և ոչ առանձինն միայն, այլ 'ի մէջ հրապարակի կամիցի հանդիպել զի պայծառագոյն երևեսցի յաղթութիւնն, այսպէս և ա՟ծ ետ սատանայի 'ի մէջ ածել զսուրբն, քանզի կարծէր թէ յետ այնչափ խորհրդոց ըմբռնեսցէ զնա ագահութեամբ և 'ի վերուստ յերկիր քարշեսցէ, և այնու պայծառագոյն լինիցի պսակն։ Զփորձեալ ոսկի որչափ և կամիցիս փորձեա, որչափ և կամիս տանջեա 'ի հուր, և ոչ գտանես առ նա աղտեղութիւն։

Ոչ եթէ այսու զայլմէ զօրութենէ ցուցանէ մեզ միայն, այլ և այլ մխիթարութիւն մատուցանէ։ Լուր զինչ ասէր Քրիստոս. "Երանի է ձեզ յորժամ նա-

խատեսցեն զձեզ և հալածեսցեն, և ասասցեն զամենայն բան չար զձէնջ սուտ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք զի վարձք ձեր բազում են յերկինս, զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին„ հարքն ձեր։ Եւ դարձեալ Պաւղոս յորժամ կամէր մխիթարել զմակեդոնացիսն, “Դուք, ասէ, նմանողք եղերուք, եղբարք, եկեղեցեաց այ որ են 'ի Հրէաստանի. զի այսպէս չարչարեցայք և դուք 'ի ձերոց ազգականաց որպէս և նոքայն 'ի Հրէից„։ Եւ առ Եբրայեցիսն դարձեալ այսպէս գրէր և աղաչէր վասն ամենայն արդարոցն որք 'ի հնոցի և 'ի գուբսն, որք յանապատս և 'ի լերինս և յայրս, որք 'ի սով և 'ի նեղութիւնս էին. զի այսու զանկեալսն որք հաղորդք եղեն չարչարանաց նոցա՝ մխիթարեսցէ։

Օր և վասն յարութեան մերոյ դարձեալ այսպէս ասէ Պաւղոս. “Եթէ այսու կենօքս միայն յուսացեալ եմք 'ի Քրիստոս, ողորմելի եմք քան զամենայն մարդիկ„։ Եւ զոր ասէս այս է. եթէ յանցաւոր կեանս բիւր նեղութեան դիպեցաք և այլ ոչ ունիմք յոյս կենաց, ոչ ոք լինի թշուառական քան զմեզ՝ եթէ կեանք մեր մինչև ցայս պատուիրեցաւ։ Եւ այս յայտնի 'ի բազմաց չարաց լինի. զի թէ ոչ ընդունի այ որպէս որք այսչափ յուսացեալ են 'ի չարս և վայելեն, և որք զանցաւոր զկեանս զամենայն 'ի փորձութիւնս և 'ի բիւր վտանգս մաշեցին, և ոչ առնուն բազում և առաւելապէս զփոխարէնս շնորհացն։ Ապա եթէ ոչ է ածել զմտաւ, բարիոք ասաց եթէ առաւելագոյն և պայծառացեալ պատրաստեալ կան մեզ անանց կեանքն որ հանդերձեալ են զբարեպաշտս պսակել և քարոզել. և այս է յայտնի սահման ամենայն աշխարհի։ Զի յորժամ տեսանիցես զարդարն նեղեալ չարչարեալ, 'ի հիւանդութիւնս և յաղքատութիւնս անկեալ, և յայլ բիւր նեղութիւնս և 'ի վիշտս հասեալ յանցաւոր կեանս յայս, ասա դու ցանձն քո եթէ ոչ էր յարութիւն և դատաստանք և հրաւունք, ոչ էր թոյլ տուեալ այ որք վասն անուան նորա հանդիպեալ եղեն բազում չարեաց՝ առանց փոխարինաց բարւոյ գնալ յայժմու կենացս. որպէս և ասացաւ իսկ՝ եթէ այլ է պատրաստեալ նոցա կեանք լաւագոյն քան զայս և առաւել բարձրագոյն քան

զանցաւորս։ Եւ եթէ ոչ էր այսպէս, ոչ էր թողեալ զչարագործս կեալ 'ի փափկութեան 'ի մեծութեան յառողջութեան անցաւոր կենացս, և արդարոց թոյլ տալ 'ի բազում չարչարանս և 'ի վիշտս կեալ. այլ այլ կեանք են պատրաստեալ յաւիտենականք ըստ իւրաքանչիւր արժանեաց, և հանդերձեալ է տալ այլ ազգ չարագործաց և այլ ազգ առաքինեաց որպէս և կամեցի, վասն որոյ աստէն համբերէ որք 'ի չարչարանս իցեն և 'ի նեղութեան, և որք 'ի փափկութեան և 'ի մեծութեան։

Ես և զայլ պատասխանս 'ի գրոց կամիմ ստուգել և հաստատել. և թէ որ իցէ, ես ասացից։ Աղաչեմ ըզձեզ զամենեսեան զի մի յայսմ հետէ վասն համբերական առաքինութեան սրբոյն ասիցէք եթէ նոքա այլ բնութիւն ունէին քան զմարդկան, ըստ որում և վասն մեծին Եղիայի է ասացեալ։ Զիարդ ասէ. «Եղիա մարդ էր չարչարակից մեզ»։ Տեսանե՞ս զի մարդն ասելով՝ հաղորդ չարչարանաց զնա ցուցանէ որպէս զմեզ։ Եւ այլուր՝ թէ «Եղեայր ձեր և հաւասարակից վշտաց ձերոց»։ Զի ուսանիցիս զպարտն թէ յիրաւի երանեցան նոքա, և զայս դարձեալ Պաւղոս խրատէ զմեզ և ասէ. «Եթէ պարծել ինչ պարտ իցէ, 'ի տկարութիւնս պարծեցայց»․ և դարձեալ ասէ. «Հաճեալ եմ ընդ տկարութիւնս, ընդ վիշտս, ընդ չարչարանս և ընդ նեղութիւնս վասն Քրիստոսի»․ և այլուր զնոյն տեսցես զասացեալսն Պաւղոսի, թէ «Մինչև ցայսօր ժամանակի և քաղցեաք և ծարաւեցաք և մերկ գնացաք և կափահարեցաք և անհանգիստ եղաք և աշխատեցաք ձեռօք մերովք»․ և թէ «Զոր սիրէ տէր, խրատէ տանջէ զամենայն որդի զոր ընդունի»։ Արիդք ասէ զայս, զի յայտ արասցէ՝ եթէ ոչ որոց նեղեալ իցէ յայժմու կեանս զայնպիսիսն ընդունի, այլ զնոսա որ նեղեալ են վասն այ և 'ի սգի անցուցեալ զաւուրս։ Զայնպիսիսն և մեք գովեսցուք և ցանկասցուք որոց առաքինութեամբ կեցին յայժմու կեանս, որք բարեպաշտութեամբն միայն հոգացան։ Այսպէս և մարգարէն Դաւիթ ասէ. «Աջ նոցա աջ է մեղաց. դստերք նոցա զարդարեալ և պաճուճեալ 'ի նմանութիւն տաճարի. շտեմարանք նոցա լի են և բխեն 'ի միմեանս. խաշինք նոցա բազմածինք են և բազմանան 'ի գնացս իւ-

րեանց, և անդեայք նոցա պարարտք են։ Ոչ գոյ խրամատութիւն ցանկոյ նոցա և ոչ աղաղակ 'ի հրապարակս նոցա։ Երանեցին ժողովրդեան որոց այս այսպէս է„։ Դու զինչ կամիցիս ասել. "Եւ երանի ժողովրդեան որոց տէր ա̃ծ է նոցա„. ոչ եթէ որք ընչիւք են մեծացեալք, այլ որք բարեպաշտութ̃ք են հաստատեալք։

Արդ եթէ կամիցիք զի 'ի սոյն յաւելից, ասացից և իններորդ պատճառ՝ զի նեղութիւնք և տրտմութիւնք ընտիր գործեն զհամբերողսն։ "Նեղութիւն, ասէ, ըզհամբերութի̃ գործէ, համբերութի̃ զհանդէս, հանդէս զյոյս, յոյս ոչ երբէք ամաչեցուցանէ„։ Տեսանե՞ս զի 'ի տրտմութիւնս փորձութեանց վասն հանդերձելոցն մերձ եդեալ եմք. և որք համբերեն 'ի փորձութիւնս, զնոսին բարի յուսով արասցէ, որք վասն հանդերձելոցն իցեն յաստի նեղութիւնս, և ոչ ունայն վարկցին զգաւոր տրտմութիւնս զայսոսիկ որք առ յոյս վասն յարութեան գրեցին մեզ, յայտ արարեալ զառաւելութիւն տանջեցելոցն։ Որպէս հուր, ասէ, փորձէ զոսկի, այսպէս և զմարդ ընտիր գործեն նեղութիւնք։

Եւ յաւասցեալս և տասներորդ պատճառ յաւելուլ, և այս սոյն իսկ է զոր բազում անգամ ասացի. զի որք ունիցիմք աղտեղութիւն ինչ, աստէն 'ի բաց մերկացուք։ Զայս և նախահայրն Աբրահամ առ մեծատունն ասէր. եթէ "Դու ընկալար զբարիսն քո, և Ղազարոս զչարչարանս 'ի կեանս իւրում, և աստ սա 'ի բարիս վայելէ„։ Ես առ այսու դարձեալ այլ պատճառ գտի. ո՞ր արդեօք իցէ, ես ասացից. զի զպսակն և զբարիսն մեզ առաստապէս մեծացուցանէ. քանզի որչափ վիշտք և նեղութիւնք և տրտմութի̃ք յաճախեն, այնքան յաւելուն և փոխարէնքն, մանաւանդ ես բազմապատիկ. "Բանզի չեն, ասէ, արժանի չարչարանք ժամանակիս հանդերձեալ փառացն որ յայտնելոցն է 'ի մեզ„։ Այսչափ պատճառս վասն չարչարանաց սրբոցն եղև ասել 'ի մէնջ։

Այսուհետև մի դժուարասցուք 'ի փորձութիւնս, մի լիցուք անզօրք և մի տրտմեալք, այլ զնոյայն առ 'ի խրատ և մեզ բերցուք յանձինս մեր, և այլոց զնոյն ուսուսցուք։ Եթէ տեսանիցես մարդ զոք յառաքինութեանս հիւսեալ կեանս իմաստութեամբ և հաճոյ լեալ այ̃, և դիպեսցի բազում նեղութեան, մի գայթակղեսցիս դու,

ով սիրելի։ Իսկ եթէ տեսանիցես զոք պատրաստեալ 'ի հոգեւորական գործս և հանդերձեալ զինքն գնալ 'ի հաճոյական վարս, և ապա 'ի վտանգս անկանիցի, դարձեալ մի զարհուրեսցիս։ Զի և զբազումս տեսի ես 'ի խնդիրս յայս. տեսաք, ասէ, զոմն 'ի մատրունս և 'ի մկայարանս ճեպեալ վասն աղքատաց ինչս բերելով, և անկեալ 'ի նաւակոծութիւն կորոյս զամենայնն. այլ ոմն զնոյն արարեալ դիպեցաւ աւազակաց, և հազիւ փըրկեաց զանձն իւր փախստեամբ յայնմ վայրէ մերկ։ Զինչ ասիցեմք առ այս. այլ թէ և ոչ 'ի միջէ յայսցանէ պարտ է զայթակղել։ Թէպէտ և 'ի նաւակոծութիւնս անկաւ, այլ ունի համբարեալ զպտուղ ողորմութեանն, զի զամենայն ինչ զիւր կատարեաց. քանզի բարձեալ զինչս իւր և 'ի ճանապարհին եղև նաւակոծութիւն, և այս ոչ յիւրմէ, այլ ակամայ։ Իսկ ընդէ՞ր, ասեն, և վասն է՞ր ետ թոյլ ա՟ծ լինել այսպէս. զի զնա ընտիր արասցէ։ Նոյն աղքատքն, ասեն, զրկեցան յիւրեանցայոցն։ Ոչ այսպէս խնամարկես դու աղքատացն որպէս արարիչ նոցա ա՟ծ. թէպէտ և յայնմանէ օտարացան, բայց յայլմէ կողմանէ կարող է պարգեւել նոցա պատճառս կենաց։

Մի՛ զնա պարտաւոր արասցուք եղելոցն, այլ մանաւանդ փառաւորեսցուք ըստ ամենայնի զարարիչն։ Զի ոչ եթէ միայն թոյլ տայ այսմ լինել, այլ յետ այսորիկ ոչ անտես առնէ զայնոսիկ որք հանդերձեալ էին անտի առնուլ մխիթարութի՟, և այլուստ պարգեւէ նոցա պատճառս կենաց, և զհամբերողսն յաղէկոծութիւնսն և 'ի վտանգսն ընտիրս երեւեցուցանէ, և բազմապատիկ պարգեւէ նոցա վարձս։ Զի ոչ թէ որք առնեն զողորմութի՟ այնպէս իցեն 'ի պարգեւսն, որպէս որք անկան 'ի յընչիցն իւրեանց և գոհանան զա՟յ. զի սոքա յոյժ առաւելեալ գտանին քան որ զտուրսն տան. զի քան զողորմութիւն տալ՝ մեծ այն իսկ է զայլոց յափշտակութիւն բերել քաջութեամբ. այս առաւել յաճախէ զպտուղն։

Իսկ զի ուսանիցիս թէ այս քան զայն առաւել է, յեկեղցն 'ի վերայ Յոբայ առնեմք զայս յայտնի։ Նա յորժամ ինչս ստացաւ, եբաց զդուռն իւր աղքատաց տալ առատաբար զամենայն. բայց ոչ այսպէս գտաւ պայծառացեալ յայնժամ, որպէս յորժամ լուաւ զանկումն

ընչից իւրոց և ոչ դժուարացաւ։ Ոչ այսպէս սքանչելի էր յորժամ՝ ի գեղմնէ հօտից իւրոց զմերկս զգեցուցանէր, որպէս յորժամ լուաւ եթէ հուր էջ և զամենայն հօտսն կիզեաց և գոհացաւ զԱյ։ Յայնժամ մարդասէր էր, այժմ եղև իմաստասէր. յայնժամ աղքատաց ողորմէր, իսկ այժմ աղքատացեալ գոհանայ զտեառնէ։ Եւ ոչ ասաց ցանձն իւր՝ եթէ զիա՞րդ իցէ այս, ամենայն հօտքն կիզեցան յորոց կերակրէին բիւրք աղքատաց. թէպէտ և ես անարժան էի ունել զձոխութիւն, սակայն վասն աղքատացն պարտ էր խնայել։ Այլ ոչ ասաց զայս և ոչ ած զմտաւ. քանզի գիտէր թէ զամենայն ինչ ՚ի բարիս տնօրինէ Ած։

Եւ զի ուսանիցիս զի առաւելագոյն հարուածն և խոց եդ սատանայի յորժամ յափշտակեցաւ և գոհացաւ՝ քան յորժամ՝ ի ստացուածոցն ողորմէր, իմա սիրելի, զի յորժամ ստացուածքն էին՝ յայնժամ կասկած ունէր՝ ի սատանայէ ասել ինչ զնմանէ. թէպէտ և սուտ էր, սակայն յանդգնէր ասել " Միթէ ձրի՞ պաշտէ Յոբ զտէր "։ Եւ յորժամ զայն ամենայն առ՝ ի նմանէ և յամենայնէ մերկացոյց զնա, յայնժամ փակեցաւ անամօթ բերան նորա և այլ ինչ ասել ոչ ունէր. քանզի յորժամ՝ ի մեծութեան էր, ամենեցուն ողորմած էր. և յորժամ յափշտակեցաւ, քաջութեամբ գոհութիւն բերէր, որ առաւել բազմապատիկ երևումն արդարոյն յայտնի էր։ Յայնժամ բազում էր հիւրասիրութիւն առ ամենեսեան, բայց այժմ մեծ զսէրն առ Ած եցոյց։

Եւ ես ոչ ըստ այսմ միայն և վասն նորա մերձ դնիմ ՚ի բանս. այլ երբեմն բազումք բազում ողորմութիւս առնեն, զայրիս կերակրեն, զորբս հանգուցանեն, զմերկս զգեցուցանեն, և ՚ի սոյն սպառեցին զամենայն ստացուածըս իւրեանց. ոմանց հրով այրեցաւ և կորուսին զամենայն, ոմանք ՚ի նաւաբեկութիւնս անկեալ, ոմանք ՚ի զրպարտութիւնս և յայսպիսի պատճառս փորձանաց. բազումք հանդերձ բազում ողորմութեամբ հասին ՚ի յետին աղքատութիւնս և ՚ի ցաւս և ՚ի հիւանդութիւս, և ոչ ընկալան յումեքէ օգնականութիւն և ոչ մի։ Եւ մեք այժմ ոչ ասեմք զոր բազումք բազում ինչ ասեն. բաւական է որ ասացաւս յայտնի առնել որ զայսպիսի խռովութիւնս արկանեն. զի ո՞վ ոք ոչ ետես յայսմանէ

զամենայն ։ Այս անուն, տուն, ողորմութիւնս արա_րեալ, և ապա կորոյս զգոյսն իւր զամենայն ։ Եւ այն ինչ իցէ եթէ զամենայնն կորոյս ։ Զի եթէ վասն կորստեանն գոհանայ զա՟յ, բազում առաւելութեամբ հանդիպի բա_րեացն ա՟յ. ոչ եթէ կրկնապատիկ որպէս Յոբն, այլ հարիւրապատիկ առցէ 'ի հանդերձեալ կեանսն ։ Եւ ա_մենեքեան որք աստ պատահիցեն չարեաց՝ այսպէս է, միայն թէ քաջութեամբ բերեն զամենայն, առաւել առցեն անդր, որպէս թէ անդր համբարեալ զամենայն զգանձսն ։ Քանզի բազում մեծութիւն կոչելով զնոսա 'ի ձեռն պատերազմի և մարտի փորձութեան, 'ի Ճոխու_թենէ յաղթութիւն եթող անկանել ա՟ծ ։

Եւ դու արդ եթէ հուր անկեալ յերկնից այրէ զտուն քո, ա՟ծ յիշեա զտունն Յոբայ, գոհացիր զտեառնէ՝ որ կարող էր արգելուլ և ոչ արգել. և այնչափ առցես վարձս որպէս թէ զամենայն եդեալ ես 'ի ձեռս աղքատաց ։ Այլ յաղքատութիւն անկար և 'ի սով և 'ի բազում վիշտս, ա՟ծ յիշեա զՂազարոսն. և եթէ ցաւօք և աղ_քատութեամբ և բիւր այլ այսպիսի տագնապ հասա_նիցէ եկեալ, և այս զկնի բազում առաքինութեան, ա՟ծ յիշեա զառաքելոյն որք 'ի սով և 'ի ծարաւ և 'ի մեր_կութիւնս էին, զմարգարէիցն, զհայրապետացն, զար_դարոցն. և գտանես զամենեսեան զնոսա ոչ 'ի մեծու_թենէ ոչ 'ի փափկութենէ, այլ յանձկութենէ և 'ի նե_ղութենէ հասեալ այնմ շնորհաց ։

Զայս լուարեա յանձին քում, գոհացիր զտեառնէ որ զքեզ 'ի մասինս յայսմիկ կացոյց, որ ոչ թէ ատէր զնոսա, այլ առաւել սիրէր՝ պայծառագոյն առնելով 'ի ձեռն այսպիսի չարչարանացս ։ Զիք մեծ բարի 'ի մեզ հանգոյն գոհութեան, որպէս ոչ ինչ վատթար քան ըզ_գայթակղութիւն ։ Մ՟ի սքանչանայցուք եթէ 'ի հոգևորա_կան գործս իցեմք և բազում նեղութեան դիպեսցուք ։ Զի որպէս աւազակք ոչ եթէ ուր խոտ իցէ և յարդ և եղէգն անդ երթիցեն, այլ ուր ոսկի և արծաթ՝ անդ հանապազ տքնին և փորեն և հատանեն, սոյնպէս և սա_տանայ այնոցիկ դնէ զորոգայթս իւր՝ որք 'ի հոգևորական գործս մերձեալ են ։ Ընդ բազում ջան և նախանձ է սատանայի, ուր առաքինութիւն և ողորմութիւն իցէ ։ Այլ գոյ մեզ զէն հզօր փրկութեան որ կարող է զա_

մենայն մեքենայս չարին հարկանել, զի ընդ այսր ամե-
նայնի գոհասցուք զԱյ։

Ասա ինձ, ով սիրելի, միթէ Հաբէլ ո՞չ զընտիրս հօ-
տին սկսաւ մատուցանել Այ, և յեղբայրական ձեռս
թոյլ ետ անկանել Աձ. ոչ եթէ ատէր զպատուողն, այլ
սիրէր յոյժ։ Մովսէս կամեցաւ օգնել ումեմն արհա-
մարհելոյ, և յետոյ վասն օգնականութեանն անկեալ
'ի հայրենեացն. և թոյլ ետ Աձ, զի ուսանիցէ զօրէոցն
զհամբերութիւնն։ Օ՛ի եթէ յառաջ իմացեալ էաք
եթէ որ ոչ անկանիցի 'ի վիշտս՝ այնպէսն մերձենայ 'ի
հոգեւորական գործս, ոչ այլ ինչ մեծ կամէաք առնել,
բայց առձեռն պատրաստ զայս իսկ ունէաք. այլ այժմ
մանաւանդ այս իսկ է սքանչելի, զի որք այնպիսի գործս
գործէին, նոքա զնեղութիւնս, զմահս և զբազում չար-
չարանս առաջի աչաց տեսանէին. սակայն և այսպէս ոչ
թողին զուղղութիւնսն։ Որպէս և երեք մանկունքն ա-
սէին. "Գոյ մեր Աձ յերկինս որ կարող է փրկել զ-
մեզ". և դարձեալ եթէ "Ծանիր, ով թագաւոր, զի
զաստուածս քո մեք ոչ պաշտեմք, և պատկերիդ ոսկւոյ
զոր կանգնեցեր երկիր ոչ պագանեմք"։

Եւ դու յորժամ կամիցիս վասն Այ բարիս գործել,
և նախ տեսանիցես բազում նեղութիւնս և բազում
վնասս և մահս, մի խռովեսջիր վասն եկելոցս այսոցիկ։
"Այսուհետեւ որդեակ, եթէ կամիցիս ծառայել տեառն,
պատրաստեա զանձն քո 'ի փորձութիւն"։ Ոչ ոք որ 'ի
պատերազմ մտանիցէ, առանց վիրաց ակն ունիցի զգե-
նուլ պսակ։ Եւ դու այժմ ընդդէմ սատանայի զա-
մենակալ թագաւորն ընկալեալ իցես, մի կնար զհետ
կենցաղոյս այսորիկ որ լի է փափկութեամբ և մեղկու-
թեամբ։ Ոչ եթէ աստէն իցէ հատուցումն և խոստ-
մունք, այլ 'ի հանդերձեալ յաւիտենին։ Յորժամ դու
ինքնին կամեսցիս բարի առնել և դիպեսցի քեզ չար,
կամ թէ զայլ ոք տեսանիցես յայսպիսի դիպուածս,
ցնծա և ուրախ լեր, քանզի եւս առաւելագոյն հատու-
ցումն լինի քեզ։ Դու մի անկանիցիս և մի լուծանիցես
զյօժարութիւն և մի ծուլանայցես, այլ մանաւանդ յա-
ւելցես 'ի բազմապատիկ յօժարութիւն. քանզի առա-
քեալքն յորժամ քարոզէին, ապտակեալք և հանա-
պազ 'ի բանտի արգելեալք՝ առաւել եւս աճեցուցանէին

զՃշմարտութիւն քարոզութեն։ Տես զՊաւղոս յայնմ բանտի և կապեալ 'ի շղթայս, բայց 'ի վարդապետութենէն ոչ լռէր. և 'ի դատաստանի կացեալ այսպէս առնէր, և 'ի նաւակոծութեան և 'ի ծփանս ծովու և բազում յայլ նեղութիւնս։

Եւ դու այնպիսեաց սրբոց լեր ցանկացող, ընկալ ըզգործս բարիս մինչև 'ի վախճան քո. և եթէ բիւր անգամ տեսանիցես զսատանայ մրցեալ առ 'ի հատանել զջան քո, մի երբէք 'ի բաց կայցես։ Դու այժմ ինչս բարձեալ տանիս կարօտելոց և անկանիս 'ի նաւաբեկութիւն. իսկ Պաւղոս որ քան զամենայն ինչս պատուականագոյն էր՝ բարձեալ զբանն Ճշմարտութեան տանէր 'ի Հռոմ, և անկեալ 'ի նաւակոծութիւն և բազում նեղութեան դիպեալ։ Այլ և զայս ինքնին նորա գրեալ ասէր. «Բազում անգամ կամեցայ գալ առ ձեզ, և խափանեաց զմեզ սատանայ»: և ած տեղի ետ սատանայի, այսպէս և 'ի բնութենէ կամաց զզօրութիւնն իւր յայտնեաց, և ցուցանէր որ բազում անգամ եղև արգել սատանայ, սակայն ոչ յայսմ քարոզութենէ պակասեցոյց զնա։ Վասն այսորիկ Պաւղոս գոհանայր զայ, գիտելով զի այսու իսկ ընտիր լինէր։ Եւ մեք որչափ և անկանիմք, այնչափ մերձենամք 'ի հոգևորական գործս։ Եւ զայս մի ասասցուք եթէ ընդէ՞ր տեղի ետ ած սատանայի լինել խափանիչ. վասն այնորիկ թոյլ ետ, զի առաւելեալ 'ի ջանս և բազում սէր ցուցանիցես։ Քանզի այս իսկ է սիրոյ նշանակ, մի իւիք իրօք 'ի բաց կալ յորմէ սիրոյ ակն ունիցի։ Այլ թոյլն և հեղգասիրտն յառաջնումն իսկ անկանի. իսկ ժուժկալն և զգաստն թէ և բազում անգամ անկանիցի, նոյնչափ առաւելապէս ցուցանէ զզօրութիւնն իւր առ ած, զի կատարեսցէ զամենայն գործս իւր, և յամենայնի գոհանայ. զոյն և մեք արասցուք։ Մեծ գանձանակ է գոհութիւնն և մեծ ստացուած, անանց բարի, զօրաւոր զէն. որպէս գայթակղութիւն առ-ոյս իցէ՝ յերկարէ զվնասս, և զոր կորուսանեմք՝ առաւելապէս իցէ կորուսեալ։ Կորուսե՞ր ինչս. եթէ գոհանայցես, շահեցար զհոգիդ, և առաւել ստացար ստացուածս յայ. ապա եթէ գայթակղեսցիս, կորուսեր նախ զփրկութի քո, զայն ոչ ստացար, և զքեզ ևս սպաներ։

Այլ յորժամ վասն գայթակղութեան բանս եղև

տու մեզ, մի՛ շնորհս յամենեցունց 'ի ձէնջ խնդրեմ. փոխանակ հայհոյութեանս այսորիկ և յանդիմանութե՟ս ինձ զայս արարէք, զի որք 'ի քաղաքիս մերում գայթակղին՝ իմաստացուսջիք: Եթէ լուիցես յումեքէ զաղտանի կամ 'ի մէջ փողոցի գայթակղեալ յայլ, մատիր առ նա, սաստեա. սակայն և վէրս ես գնել պարտ է: Իսկ եթէ ոչ խրատի և զղջանայ, ապտակեա զերեսս նորա, մանրեա զբերան նորա, սուրբ արա զձեռս քո վասն հարուածոյն: Եւ եթէ 'ի դատաստան մատնիցէ, զհետ երթիջիր նորա, ասա համարձակ՝ եթէ 'ի թագաւորն հրեշտակաց գայթակղեցայ: Զի եթէ յերկրաւոր թագաւոր էր գայթակղեալ՝ արժանի էր տանջանաց, մանաւանդ որ զբարերարն անարգեն: Համօրէն իցէ պարտաւորութիւնս, հրապարակ և ատեան իցեն մեղանքս:

Ուսցին զայս Հրեայք և հեթանոսք, զի փրկութիւն են քաղաքաց քրիստոնեայք և սիրողք և առաջնորդք և վարդապետք. որք իցեն 'ի չարիս և տանջանաց արժանի և հպարտացեալք են, 'ի միտ առցեն զի 'ի ծառայից այ՟ պարտ է երկնչել. քանզի թէ և կամեսցի ոք այսպիսի խօսել, 'ի միմեանս հայեսցին և յամենայն կողմանց պատրաստեսցին, նա և 'ի ստուերաց անգամ տագնապաւ դողասցին՝ մի՛ գուցէ քրիստոնեայ լուիցէ զայս, ընթասցի և ուժգին տանջեսցէ զմեզ:

Ո՞չ լուար եթէ զինչ գործեաց Յովհաննէս. եւս անիրաւ հարսանիս և բռնաւորութեամբ արհամարհեալ զօրէնս, և համարձակութեամբ ասէ 'ի մէջ հրապարակին. "Ոչ է արժան քեզ ունել զկին եղբօր քո": Այլ զքեզ ոչ ածեմ առաջի բռնաւորի, ոչ առաջի դատաւորի, և ոչ խօսել ինչ վասն անօրէն փեսայութեան և ոչ վասն անարգանաց ընկերի քո, այլ վասն որոյ 'ի տէրն գայթակղեցին, զգայթակղեալսն արժան է խրատել: Այս թէ ասէի քեզ՝ թագաւորի կամ դատաւորի անօրինելոյ ածել խրատ տանջանաց և առնել ուղղութիւն, յիրաւի խուսէիր ինչ. ո՞չ ապաքէն Յովհաննէս այսպէս արար. այսպիսիքս ոչ եթէ մեծագոյն ինչ իցեն քան զմեզ: Սակայն դու զնմանակիցս քո ուղղեա. թէ և պարտ իցէ քեզ մեռանել, մի՛ հեղգայցես իմաստացուցանել զեղբայր քո. այս իսկ է քեզ վկայութիւն, զի և Յովհաննէս ինքն վկայ իսկ է: Եւ ոչ եթէ զոհել

կսոց կամ երկիր պագանել հրամայեցաւ, այլ վասն ա-
նարգանաց ա̃ծային օրինացն ետ զգլուխ իւր. և դու 'ի
քէն այժմ ցոյց զՋան մինչև 'ի մահ վասն Ճշմարտու-
թեանն, և տէր ինքնին պատերազմի վասն քո։

Մ՝ի խնձ ասիցես զցուրտ բանս զայս՝ եթէ զինչ հոգ
է ինձ, ոչ եմ հաղորդ նմա։ Մ՝իայն ընդ սատանայի ոչ
ունիմք հաղորդութիւն; այլ[1] ընդ ամենայն մարդկան
բազում ունիմք հաղորդութիւն որք զնոյն և զմի բնու-
թիւն ունին զմեր։ Մ՝ի այժմ ասիցէք եթէ ոչ եմք հա-
ղորդ նոցա. սատանայական է ձայնս այս, և դիւական
անմարդութիւնս։ Ո՛չ յաւհետև զայս մի ասասջիք, այլ
որպէս վայել է եղբարց սէր ցուցջիք։ Ես այժմ զայս
հանդերձ ամենայն ստուգութեամբ խոստանամ, և ձեզ
ամենեցուն երաշխաւոր լինիմ. զի եթէ դուք ամենե-
քեան որ աստ իցէք՝ խորհիցիք բաշխել զփրկութիւն ո-
րոց բնակեալ են 'ի քաղաքիս, վաղվաղակի ամենայն
ինչ յաջողեսցի ձեզ։ Մ՛չ ապաքէն փոքր բաժին քաղա-
քիս աստ իցէք. փոքր ասացից վասն բազմամբոխ ժո-
ղովրդեանն, և գլուխ յաղագս բարեպաշտութեան։ Բաշ-
խեսցուք այժմ եղբարց մերոց զփրկութիւն. բաւական
է մի ոք որ ջերմագութ ցանկութիւն ունիցի՝ ուղղել
բոլորովին զամբոխն։ Իսկ ուր ոչ եթէ մի կամ երկու
կամ երիս միայն իցէ, այլ այսչափ բազմութիւն որ կա-
րող են զծոյլսն արթունս առնել, ապա ոչ յայլ ինչ
վնասուց, այլ 'ի մերմէ դանդաղմանէ է, և ոչ 'ի տկա-
րութենէ որք բազումք կորեան։

Ո խարդ ոչ է այս տաղտկալի, որ յորժամ տեսանեմք
վէճ և ընթանամք 'ի փողոցս և ոչ առնեմք հաշտ զկը-
Ճեալսն. և զինչ ասացից վէՃ. ուր եթէ տեսանիցեմք
էշ 'ի մօրատ անկեալ, ամենեքեան ձեռն տալ փութամք.
և զեղբարս 'ի նոյն տեսեալ՝ պղերգանամք։ Ոչ գայ-
թակղութիւն իցէ, բեռին բարկութեան ոչ ժուժկա-
լեաց, տագնապեալ անկաւ. մատիր յարտ զնա և բա-
նիւք և գործովք և աղօթանօք և խրատութեամբ. քանզի
այսպէս է դեղն։ Եթէ այսպէս յանձնէ մերմէ անօրի-
նեմք և յանձին ունիմք զդրացեաց մերոց զփրկութիւն,
վաղվաղակի նոքա զայսպիսի ուղղութիւնս վայելեն, և

1 Պակասէր յօրինակին այլ. . հաղորդութիւն. յաւելու 'ի յանձէն։

լինիցիմք կատարեալք և ցանկալիք․ և որ քան զամենայն բարձրագոյն իցէ, զյաւիտենականն ընկալցուք բարիս շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում փառք հօր համդերձ հոգւովն սրբով այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

## ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

**Խօսք ասացեալ յԱնտիոք երբեմն նոր քահանայ 'ի հին եկեղեցւոջն յաղագս եկեղեցւոյն պաշտօնակալութեանց յանխափանութենէ․ և վասն ընդդէմ զարձուցանելոյ զպատկերս մեծի Թագաւորին Թէոդոսի․ և՛ի բան առաքելոյ « Մեծատանց պատուիրել յայսմ ժամանակի զգոյշ լինել »․ և վասն ագահութեան ։**

Զինչ ասացից կամ զինչ խօսեցայց․ արտասուել զժամանակ ժամանակիս՝ ոչ բանից, ողբերգութեան՝ ոչ խօսից, զմեծութ[illegible]գոյս համարձակելոյ մեծութիւն ։ Այսպէս անբժշկելի է վէրս, այնպէս մեծ է հարուածս, ամենայն բժշկութեան բարձրագոյն է և կարօտ վերին օգնականութեանն ։ Այր յորժամ զամենայն կորիցէ, նստի տառապեալ 'ի վերայ աղբի․ լուեալ զայս բարեկամաց իւրոց՝ հեռուստ եկեալ նմա, և տեսեալ զնա 'ի բացեայ՝ պատառեցին զհանդերձս իւրեանց և 'ի մոխիր անկեալ մեծամեծս հառաչէին ։ Այժմ զնոյն պարտ է առնել ամենայն քաղաքացեացս և որ շուրջ իցեն զաւառ այսր և զեղեալս ողբալ բազում ողբերգութեամբ ։ Նա նստէր յայնժամ նստեալ կայր յաղբիս․ իսկ քաղաքս մեր անկեալ կայ 'ի մեծ որոգայթ ։ Որպէս յայնժամ սատանայ 'ի հօտս և 'ի խաշինս և 'ի տունս արդարոյն խաղացաւ, նոյնպէս և 'ի քաղաքս յայս յարձակեցաւ ։ Այլ Աստուած յայնժամ և այժմ տեղի ետ լինել․ անդ զի զարդարոյն պայծառագոյն արասցէ, այժմ զի զմեզ խոհեմագոյնս յօրինեսցէ ։

Տուք ինձ ողբալ զհասեալ իրս․ լռեցայք զաւուրս եօթն որպէս և սիրելիքն Յոբայ, տուք ինձ այսօր բանալ զբերան և զհամօրէն զսուգս զայս կոծել ։ Ով զգա-

ոտնակապիւք նստէին և հոգային՝ ո՞վ ածաւ, ո՞վ տանջեցաւ այսօր, զիա՞րդ կամ զի՞նչ օրինակաւ, և առաւել չարեօք զգածեալ՝ մինչև զայսպիսիս պատրաստութեամբ ուսանէին։ Այլ այնպէս քան զմեռեալս ողորմելիք 'ի կեանս կային, որք զօտարաց հասեալ նեղութիւնս կոծէին, և վասն փրկութեան անձանց դողային։ Որ 'ի մահ անկեալ է, ոչ դարձեալ 'ի մահուանէ երկնչի։

Զի թէպէտ ոք յայսմ յահէ և 'ի տագնապէ ազատեալ գոյր և կամէր 'ի փողոցս մտանել, 'ի տեսութենէ անվայելչութեանն փութով անդրէն մտանէր 'ի տուն իւր. քանզի հազիւ զմի ոք կամ երկուս առ ինքն տեսանէր, և տրտմութիւն զհետ բազմացն ընթանայր։ Զի որ յառաջ քան զսակաւ աւուրս էր գետագնաց բազմութիւն ժողովրդեանն, թագեաւ և ամենեքեան այնոքիկ այժմ աներևոյթ եղեն 'ի մէնջ։ Այլ որպէս յանտառի ծառոց բազմութիւն կտրեալ անվայելչանայ տեսութիւն նորա, և որպէս գլուխ գերծեալ անտեսականայ, այսպէս և գետինն քաղաքիս մերոյ պակասեալ 'ի մարդկանէ, զի որպէս սակաւ մանրիկ սերմ երևին, որով անվայելչացեալ բազում հեղու տեսողաց զմթացեալ տրտմութիւնս։ Այլ ոչ եթէ գետինս միայն, այլ և բնութիւնք օդոյ և նշոյլք արեգականն տխրեալ թուի ինձ այժմ, և լոյս խաւար երևի։ Ոչ եթէ տարերցս բնութիւն փոփոխելով, այլ աչաց մերոց պղտորեալ 'ի տխրութենէ ամպոց ոչ կարէ յստակ հայել, զի ոչ այսու դրութեամբ 'ի նշողիցն ընդունի զլոյսն։ Այս է զոր մարգարէն ողբալով ասէր. “Մտանիցէ նոցա արեգակն 'ի հիւսխոյ և խաւարեսցի օրն”։ Զայս ասաց ոչ եթէ աստեղն թագուցեալ, այլ տրտմութի հիւսխայլն ոչ ախորժէ տեսանել զլոյսն վասն մթութե երկանցն, որ և այժմ իսկ եղև. և ուր և տեսանէ ոք նշոյլ կամ 'ի գետնի կամ 'ի պարիսպս կամ 'ի սիւնս քաղաքիս, գիշեր կարծէ տեսանել և արշալուրշ մթացեալ։

Այսպէս ամենայն քաղաքս լի եղեալ տրտմութեամբ և լռութեամբ, ամենայնի լեալ անապատ, լցեալ անդոհութեամբ, և ցանկալին այն բազմութի չիջաւ խառվութեամբ. և որպէս թէ ամենեցուն մտանել յերկիր, այսպէս լռութիւն կալաւ զքաղաքս այժմ, և ամենեքեան քարանց նմանէին. լեզուք կապեալք խորագոյնք

որ առաւել տայ ունել զլռութիւն. և այսչափ լռութիւն որպէս երթեալք 'ի պատերազմ և ամենեքեան 'ի միասին 'ի հրոյ և 'ի սրոյ մաշեալք եղեն: Բարւոք է այժմ ասել զբանն մարգարէին. "Կոչեցէք զձայնարկուս և եկեսցեն, և առ իմաստուն կանայս առաքեցէք և ճչեսցեն և ստիպեսցեն և առցեն ողբս 'ի վերայ ձեր, և իջուսցեն աչք ձեր արտասուս և արտևանունք ձեր բղխեսցեն ջուր. Լերինք ընկալցին կոծս և բլուրք առցեն ողբս": Կոչեսցուք այժմ զարարածս ամենայն 'ի գթութիւն չարեաց մերոց: Քաղաքս այս մեծ և որ 'ի վերայ կանգնեալ կայ գլուխ ամենայնի, եթէ բարձցէ զնա 'ի միջոյ, տրտմեցուցանէ զարարածս. այժմ յանկարծակի 'ի տըրտմութեան եղեալ ամենեքեան, և ոչ գոյ օգնական: Ոչ եթէ որ անարգեցաւն նմանակից զոհն ունելով յերկրի, քանզի թագաւոր է և գլուխ երկրաւորացս ամենայն մարդկան: Վասն որոյ դիմեսցուք առ վերնական թագաւորն, զնա կոչեսցուք յօգնականութիւն: Եթէ ոչ 'ի վերուստ ընկալցուք զհաշտութիւն, ոչ եկեսցէ մեզ մխիթարութիւն և ոչ մի ընդ եղելոցս:

Արդ խորհեցայ աստ կատարել զբանս, զի ոչ խնդրեն անձինք նեղելոց յերկարել զբանս: Այլ որպէս ամպ որ ստէպ ստէպ ընթանայ 'ի վերայ ճառագայթից արեգականն, դարձուցանէ յետ զլոյս ամենայն, սոյնպէս և տխրութեանս ամպ 'ի վերոյ կացեալ յոգիս մեր՝ չտայ թոյլ հեշտաբար մտանել բանին 'ի սիրտս մեր, այլ հեղձուցանէ ունելով 'ի ներքս բազում նեղութիւնս: Եւ այս ոչ եթէ ասողացս միայն, այլ և լսողացդ լինիցի. զի որպէս յանձնէ ասողի ոչ տայ թոյլ հեշտաբար բանս 'ի ներքս բերել տրտմութիւնս, այսպէս և ոչ 'ի միտս լսողաց թոյլ տայ մտանել նորին զօրութեան: Ըստ որում և եբրայեցիքն որ 'ի կալոյ և յաղխսոյ տառապէին, թէպէտ և Մովսէս բազում անգամ ասէր վասն փըրկութեան նոցա՝ ոչ առնուին յանձն. տխրութիւն անմտանելի առնէր զբանն 'ի սիրտս նոցա և խցոյր զլսելիս նոցա:

Խորհեցայ և այժմ աստ յանգել զբանս. այլ դիտեմ զի ոչ ծածկէ ամպ զբնութիւն լուսոյ առ 'ի տես ճառագայթիցն, նա 'ի նմանէ հալածեսցի. զի յորժամ արեգակն ջերմագոյն անկանի՝ ցրէ զամպս, ընդ մէջ հատանէ զնա, բազում անգամ և յանկարծակի ծագեալ

նոցա 'ի բաց հանցուք. և այս խօսք յեկելոց չարեաց մէ-ցուցանէ զքաղաքս։

Ոչ եթէ տեսարան իցէ եկեղեցին, զի վասն վայելչութեան առա եկեսցուք այսր. այլ առս գալ պարտ է զի լուիցուք և օգտեսցուք և շահեսցուք ինչ բազում և մեծամեծս, և այնպէս գնասցուք տուն։ Ապա թէ ոչ 'ի զուր և ընդունայն մնասցուք առա, եթէ առաժամայն եղև լսելն և պակասեաց 'ի միտ առնել, և այնպէս երթիցուք անպտուղք և ունայնք և դատարկք յօգտութէ ասացելոցս։

Զինչ է ինձ օգուտ ունկնդրութիւնս այս, զինչ գովութիւնդ և աղաղակ. այս է ինձ գովութիւն՝ զօրծով ցուցանել 'ի ձեր զասացեալսս ամենայն։ Յայնժամ եմ եղէց ցանկալի և երանելի, ոչ եթէ յորժամ 'ի միտ առնուցուք, այլ յորժամ առնիցէք յաճախութե զոր լուայք 'ի մէնջ, և ուղղիցէք իւրաքանչիւր զգործս իւր և շինիցէք։ Այս զայս ոչ եթէ ձեր միայն առնիցեմք, քանզի իւրաքանչիւր եղելոցս յանցանողս՝ հասարակաց և անտիրինք եմք 'ի միասս քաղաքիս։ Արդ այլեւ ոչ իցէ զիտակ որ որ ինչ եղեն, սակայն քան զհամարձակողն պակաս ոչ է պարտ երկնչել. զարհուրեսցուք մի գուցէ առ ամենեսեան եկեսցէ բարկութիւն Թագաւորին։

Ոչ է բաւական առ 'ի պատասխանի առնել զայս եթէ ոչ էի մերձ, ոչ իմացայ և ոչ եմ հաղորդ։ Վասն այդորիկ զայս պատուհաս կրեա, ասէ, և հասա զյետնին զատապարտեան, եթէ ոչ էիր մերձ և ոչ արգելեր և ոչ անփայտերուչ իրաց միտ արարեր և ոչ թայթափեցար 'ի պատիւ Թագաւորին։ Այլ ոչ զտար 'ի համարձակողսն, զովեալ զայս և ընդունելի. այլ թէ ոչ զինեացեր զեզեալսն, այս արժանի իցէ դատապարտութեան։

Զայն բան և յետ լուիցուք յորժամ լսութեամբ բերեմք առ 'ի նա զանարգանս և զհայհոյութիւնս. զի և այն որ զքանքարն թաղեաց, ոչ թէ վասն անձին իւրում առնոյր դատաստան յայնժամ, քանզի բոլորովին հատոյց զարծաթն. այլ վասն զի ոչ բազմացոյց զնա արալ զայլս խորպտէր, ոչ արկ 'ի սեղանավաճառս զարծաթն, այսինքն ոչ խրատեաց, ոչ եղև խորհրդակից, ոչ ետ պատուէր և ոչ ուղղեաց զշրջածի իւր 'ի վկայել չարեացն, վասն որոյ առանց ամենայն ներելոյ ան-

կեալ յայնմ յանդերձանելի տանջանսն ։ Իսկ դուք թէպէտ և ոչ յառաջագոյն, սակայն և այժմ գործեցէք զուղղութիւնս զայս, և զա̃ծ անարգեալ մի՛ անտես առնիցէք ։ Արդ հաւատամ յաւէտ զի բաւական է եկեալ չորիքս այս, թէպէտ և ոչ իցէ ոք որ խրատէ, նա թէ և յոյժ անխմաստ ոք իցէ, արասցէ այսուհետև զի ծանիցէ զփրկութիւն իւր ։

Ժամ է մեզ այսուհետև զառ 'ի Պաւղոսէ զխրատն ձեզ առաջի դնել սեղան, զոր այսօր սկսանիմ զընթերցեալ զբանն 'ի մէջ բերելով զամենայն ։ Ո՛ր ինչ իցէ զոր այսօր ընթերցաք. "Մեծատանց 'ի կեանս յայս պատուէր տաջիր մի՛ հպարտանալ„ ։ Ասելով զմեծատանց 'ի կեանս յայս, ցուցանէ և զայլոց մեծատանց 'ի հանդերձեալ յաւիտենին. որպէս Ղազարոսն այն՝ անցաւոր կենօքս աղքատ, 'ի հանդերձեալն մեծատուն ոչ ոսկւով և ոչ արծաթով և ոչ այլովք ինչ ապականացու նիւթովք, այլ անճառելի այնմ բարութեամբ զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ ։ Այն իսկ է այժմ ճշմարիտ մեծութիւն և ճոխութիւն յորժամ անեղծանելի լինիցին բարութիւնքն, և ոչ միոյ պէտք իցեն մխիթարութեան ։ Այլ որ անտես առնէր զնա, ոչ էր մեծատուն այսպիսի, այլ քան զամենեսեան այնուհետև աղքատ և տնանկ. միոյ կաթի ջրոյ ցանկայր արժանի լինել, և ոչ եհաս ցանկութեանն, յայնպիսի վերջին աղքատութիւն անկեալ ։

Վասն այսորիկ զայնպիսիսն մեծատուն անցաւոր ժամանակիս կոչէ, զի յետ այժմու կենացս և մեծութիւնքն եղծանին և ծածկին. զի ոչ եթէ առցէ ընդ իւր զամենայն, և ոչ յառնիցէ ընդ նոսա ինչք իւրեանց զոր և ունիցին. այլ մանաւանդ նախ քան զվախճան թողցէ զամենայն, զոր և յայտնապէս ասէր մարգարէն. "Մի՛ յուսար 'ի մեծութիւնս անյայտս„ ։ Ոչ ինչ է այսպէս անհաւատ որպէս զմեծատունս. զի եթէ սպասաւորեալն անդերձ չիցէ, ծառայքն հաւատ ոչ ունին. թէպէտ և բիւր անգամ խրատս արկանես առաջի նորա, նոյն ինքն և զխրատն քարշելով տանիցի զհետ ։ Ի բազում նիգս և 'ի դրունս արգելլին զնա ստացողքն, և ծառայքն դնելով վերակացուս և պահապանս. և նա զծառայս իւր հաւանեցուցանէ զկնի իւր տանել զպահապանսն, և որպէս շղթայիւք քարշէ զնոսա ։

Digitized by Google

քաղաքաց յաղթելոց թէ և ընդ ամենայնսց գիտելեացի, ապա զխօրդ կարօտցէ գիտել թէ իմ իցէ. կամ զխօրդ այնպիսեաց ստացուածս ունիցի, զորոց զինչ ոչ ուսելոյդ համարիցի և ոչ զհանգիստ ամենուցն:

Այլ առ այսոքիւք ոչ զամենեսեան զատաւորէ Պղատոն, այլ որք լուիցեն՝ առ նոսա տկարութեան զինչ անէ, որպէս և Քրիստոս ասաց. Յորժամ եկեալ առ մեծատունն հարցանէր վասն կենաց իւրոց, ոչ անդէն ասաց՝ երթ վաճառեա զինչս քո. այլ զայս թողեալ զայլ օրէնս եցոյց նմա: Այլ ապա յորժամ նորա զնա աղաչելով ասէ "զինչ պակաս է ինձ", և ոչ յայնժամ պարզաբար ասաց՝ վաճառեա զինչս քո. այլ զինչ. "Եթէ կամիս կատարեալ լինել, երթ վաճառեա զինչս քո": Եւ կամիցիս, ասէ, քոյին յօժարութեամբդ լինել արարից ինչ ընչից քոց, ոչ ամենից զերեղ բռնութի: Այնպէս Պղատոն ոչ վասն աղքատութեան զմեծատունս յանդիմանէր, այլ վասն խնդրահութեան, ըստ տկարութեան լաղլաղն և որք յոյժ ծանուցեալքն են և չափաւոր յանձնարարութեանց, վաղվաղակի առնուլ փոփոխել նոցին և փոյթ ունելով զփոխարկութիւն մեծութեանն:

Արդ և ասաց մի բարձրանալ, եցոյց և զարուեստն որով կարիցեն խոնարհել: Ո՞ր իցէ արդեօք. բնութիւն մեծութեանն ուսուցիչ է նոցա, զի անպայման և անհաւատ իսկ է. վասն որոյ յայտնեաց՝ մի յուսալ 'ի մեծութիւն մեծաց: Ոչ ինչ արդեօք իցէ առաջի մեծութիւնն. ոչ բարձրում ստացուածոյք, այլ բարձրում որոց ազգատաց: Այս մեծատուն Աբրահամ, այլ ոչ արծաթասէր. ոչ հզօր և պատրաստէր տեղի թէ ծեր իցէ տուն իմ կամ ծեր ժողովեմ զստացուածս իմ: Ոչ յաւուելութեան ընչից փութայր, այլ յայս միշտ պատրաստ էր մի ուրեք իցէ աղքատ կամ օտար, մինչև կանգնէր զաղքատս և ընդունէր զօտարս: Ոչ ոսկեհուրան յօրինէր զձեղուսն, այլ յանտառէ բնակէր, և յայնպիսի խաղ բնակութեան հանգստեր զհրեշտակս առերևոյն. և այնպէս առածառաքոյն էր ժողովարան նորա, որ և ոչ 'ի հրեշտակաց ամաչէր բերելով առ ինքն յօթևանս. որք ոչ եթէ տուն պայծառ խնդրէին և վայելուչ, այլ հոգի առաքինի:

նելով շրջեալ խնդրէին թէ ուր թագուցեն զոսկին իւ-
րեանց, կամ առ ում և ուր դիցեն զգանձս իւրեանց ։
Զի՞ խնդրես զծառայակիցս քո, ով մարդ. Քրիստոս
պատրաստեալ կայ առ ընդունել և պահել զգանձս քո.
և ոչ եթէ պահէ միայն, այլ և բազմացուցանէ և հան-
դերձ բազում շահիւք տացէ քեզ ։ Քանզի մարդիկ որ
'ի պահեստ առնեն զգանձս, կարծելով թէ մեզ պար-
գեւս ինչ տայցեն առ 'ի պահել զոր ընկալան. իսկ Քրիս-
տոսին հակառակ է այսմ. որ ոչ եթէ տուողաց յաւանդ
վարկանի շնորհ, այլ ընդ աւանդոյն՝ յորժամ առնու 'ի
քէն զգանձս քո՝ քեզ ունի շնորհ ։

Արդ որո՞ւմ ներելոյ և թողութեան արժանի իցեմք,
յորժամ ոչ ընթանամք առ որ պահել կարող իցէն, և
մեզ շնորհս խնդրեմք զպահելն և վարձս բազումս և մե-
ծամեծս, տայցեմք պահողացն՝ այսինքն տկար մարդկան՝
որք և շնորհ պարծեսցին տալ վասն պահստեանն, և
զայն միայն տայցեն մեզ յետոյ զոր և առցեն, և մեք
մերոյն միայն ձեռնարկեմք զոր և տուաք ։ Օտար ես և
հեռի յայսմ վայրէ. ունիս հայրենիս յերկինս, զամե-
նայն ինչս քո անդ առաքեա, զի նախ քան վայելեալ
քեզ 'ի կեանսն յայն՝ աստ առցես զհատուցումն ։ Զի
որ քաղցրութեամբ շրջի յերկրի, և վասն հանդերձե-
լոցն յուսով համարձակի, զի ահա աստէն առ զճաշակս
արքայութեանն . . . և ունիցիս զա̃ծ սիրելի, որով քան
զամենեսեան զտանիցիս վերագոյն ստացեալ ։

Կամիցի՞ս մեծանալ, մի՛ խորհիր բարձրանալ. և այս
ոչ եթէ 'ի հանդերձեալսն միայն իցէ, այլ և աստէն
յայտնի է ։ Ոչ գոյ այնպէս նախանձ որպէս ընդ մար-
դոյ մեծանալ. իսկ յորժամ յամբարտաւանութի̃ գայ,
կրկին անգամ լինին տանջանքն, և չարագոյն յառնէ
քան զամենայն պատերազմն ։ Ապա եթէ կամիցիս 'ի չա-
փու ունել զմեծութիւնն, խոնարհութեամբ զբռնու-
թիւն նախանձու 'ի բաց հատցես, և հանդերձ պատ-
րաստութեամբ ունիցիս զոր և ունիս ։ Այս է բնութի̃
առաքինութեան, ոչ եթէ 'ի հանդերձելումն միայն մեզ
օգուտ բերէ, այլ և այժմ տայ մեզ հատուցումն ։

Մի՛ այսուհետև 'ի մեծութեան խորհիցիմք բարձրա-
նալ. զի եթէ 'ի հոգևորսն բարձրանալ լուծաւ և կո-
րեաւ ամենայն, որչափ մանաւանդ 'ի մարմնականս ։ Զա-

Digitized by Google

յոսկի և յարծաթ յուսացեալ է, այլ յԱ̃ծ որ տուող է ամենայն մեծութեան. ուստի մեծատուն է այնպիսին գաղտնի, և կանգուն կայցէ քան զաղքատն յայսմիկ։ Վասնզի զամենայն ինչ պարգևեալ է առատապէս 'ի վայելումն մեզ Ա̃ծ, որք յոյժ կարևոր են քան զամենայն ինչս։ Եւ ո՞յք են այսոքիկ. օդք, ջուր, հուր, արեգակն, և զայլ ամենայն զայսպիսիս։ Ոչ գոյ ասել եթէ մեծատունն առաւել վայելէ 'ի լոյս արեգականն և աղքատն սակաւ. ոչ է ասել եթէ առատագոյն են ըմփռեալ կամ ցօղեն օդք մեծատանց քան աղքատաց, այլ ամենայն հաւասար և հասարակաց է։ Վասնզի որ ինչ մեծ և կարևոր իցէ ամենեցուն և ունի հաստատուն ըզկեանս մեր, հասարակաց ետ Ա̃ծ. իսկ որ նուազ և փոքր իցէ, ոչ է հասարակաց՝ զինչս ասեմ։ Եւ թէ վասն էր՝ ես ասացից։ Ոչ է սորա պէտք առ հասարակ լինել. քանզի որք մեծատունք եղեն որք սովորեցան յագահութի՛ զչափաւորսն հեղձեալ և կորուսեալ էին. որպէս և այժմ ընչից բազում անգամ առնեն, մանաւանդ վասն այնր այսպէս առնէին։ Եւ դարձեալ եթէ հասարակաց էր զինչս տուեալ, և ամենեցուն միապէս էր եղեալ, բարձեալ էր զպատճառս ողորմութեան։ Զի եթէ առանց բարեաց ապրեաք, հասարակաց լեալ էր պատճառք կենաց մերոց։ Եւ դարձեալ զի ունիցիմք պակաս և պատճառս հաճոյականս, ոչ եղեն ինչք հասարակաց. քանզի յաղքատութենէ և 'ի մեծութենէ գտանեմք արքայութիւն։

Արար զքեզ Ա̃ծ մեծատուն, դու ընդէր առնես ըզքեզ աղքատ. վասն այսորիկ արար զքեզ մեծատուն, զի առնիցես ողորմութիւն, զի առատաբար բաշխմամբ աւեղծանիցես զմեղս քո։ Ետ քեզ ինչս Ա̃ծ, ոչ զի 'ի խոր թաքուսցես վասն կործանման քո, այլ զի արտաքս հեղուցուս վասն փրկութեան անձին քո։ Վասն այսորիկ ստացուածս անյայտ արար նոցա, զի որ վասն նոցին խռովութիւնք իցեն՝ այսու 'ի բաց կայցեն...։

Մի՛ այսուհետև կարծեսցուք մեծ ինչ բարի զմեծութիւն. մեծի բարութեան այն իսկ է՝ որ ոչ է ստացեալ ինչս, այլ ստացեալ է զահ և զերկիւղն Ա̃յ և զամենայն զգուշութիւն։ Հաւասիկ եթէ ոք արդար իցէ և ունիցի համարձակութիւն առ Ա̃ծ, թէպէտ և քան զամե-

նեսեան աղքատ իցէ, սակայն բաւական է լուծանել զամենայն հասեալ նեղութիս. բաւական է միայն զձեռսն տարածել յերկինս և աղաչել զնա, և անցուսցէ զամենայն տխրութեանս: Ահա այսչափ ոսկի եղեալ կայ, և առ 'ի փրկութիւն հասեալ չարեացս քան զկաւ անարգ է. և ոչ միայն 'ի նեղութիւնս յայս, այլ եթէ հիւանդութիւն իցէ կամ մահ կամ այլ ինչ այսպիսի, անդ յանդիմանեսցի ամենայն անկար զօրութիւն ընչից՝ ոչ ունելով և ոչ մի մխիթարութիւն:

Միայն այս է զոր ակն ունիցի ագահ լինելով մեծատանն քան զաղքատն, զի ամենայն աւուր վայելեսցէ 'ի բազմակատար յընթրիս: Այլ զփափաքումն կերակրոց և զհեշտալի սեղանս առաւել աղքատաց լինել պարտ է տեսանել, և սոցա ունելով զվայելումն քան զամենայն մեծատունս: Եւ մի զարմանայք և զքանչանայք ընդ ասացեալս. ես այժմ յիրաց աստի զգործս զայս ձեզ յանդիման ցուցանեմ, զոր և դուք ամենեքեան խոստովանեալ դաւանիցիք: Քանզի անուշութիւն կերակրոց ոչ է 'ի բնութենէ խորտկացն, այլ 'ի սովորական չափաւորութենէ կերողացն. զոր և ասեմ իսկ, եթէ ոք յետ քաղցոյ մերձեսցի 'ի սեղան և տեսանիցէ ազգի ազգի կերակրովք լցեալ և բիւր զանազան խորտիկս 'ի վերայ սեղանոյն, յոր և կերակուր մերձենայ յառաջագոյն, յայնմանէ ընու զորովայն իւր, և ոչ մնայ այլում առ 'ի պէտս սեղանոյն գալ ըստ կարգի, թէպէտ և քան զայլսն նուազագոյն իցէ կերակուրն: Իսկ որ ոչ ունի կարիս նախ մնալ քաղցոյ և ապա գալ 'ի սեղան զոր և մեծատունքն առնեն, սա թէ և կրկնապատիկ գտանիցէ զանազան խորտիկս, ոչ թուի ախորժելի կերակուրն, զի ստամոքս նորա ոչ է յարձակել կայտռելով:

Եւ զի ուսանիցիս թէ այս այսպէս ունիցի զօրինակ, վկայէք դուք ամենեքեան: Լսեմք և 'ի գրոց այսպէս. “Անձն յագեալ, ասէ, գարշի 'ի խորսխէ. այլ անձին կարօտելոյ դառն քաղցրագոյն թուի„: Ոչ ինչ քան ըղմեղու խորիսխ լինիցի քաղցր. սակայն ոչ քաղցելոցն ոչ է պիտոյ: Ոչ ինչ քան զդառն խոտելի. այլ կարօտելոցն քաղցր թուի: Աղքատք յետ քաղցոյն ապա գան 'ի գործ պիտոյից. իսկ մեծատունք ոչ մնան այսմ, այլ յամենայն ժամ առաջի գտանի կերակուրն և ոչ տայ

ուժգին առնուլ զքաղցն, ուստի ոչ ախորժելի և յօժարութեամբ վայելեն 'ի փափագումն քաղցոյն։

Նաև ոչ եթէ 'ի կերակուրն միայն իցէ այս, այլ և յըմպելիս նոյնպէս լինիցի. և որպէս անդ քաղցն նախ քան զընութիւնկերակրոյն զփափագումն զարթուցանէ, սոյնպէս և աստ ծարաւն զինչ և իցէ ըմպելին՝ անոյշ գործէ, թէ և ջուր լոկ իցէ։ Նաև զայս մարգարէն յայտնեալ ասէ՝ թէ "Ի վիմէ մեղր յագեցոյց 'ի նոսա„։ Նաև զայս ոչ երբէք 'ի գրոց ուսաք եթէ 'ի վիմէ մեղր եհան Մովսէս. ամենայն ուրեք 'ի գիրս գետս ասէ և վտակս և ցուրտ աղբիւրս։ Ապա յայտ է թէ պատճառ ունի ասացեալն, և ոչ երբէք ստեսցի գրեալն։ Քանզի ծարաւիք գոլով և յոյժ կարօտեալք և անկան 'ի ցուրտ աղբիւրս և զփափագումն իւրեանց յորքմանէն դադարեցուցանել կամէին, զջուրն զայն մեղր անուանեաց Դաւիթ. իբր ոչ եթէ բնութիւնք ջուրցն փոխեցան 'ի մեղր, այլ պասքումն ծարաւոյն մեղր երևեցոյց զջուրն զայն։ Ուսա՞ր թէ զիարդ և որպէս կարօտութիւն ըմպելոյն ըստ օրինակի կերակրոյն զծարաւն անուշեցոյց…։

Սոյնպէս և ըստ քնոյն լինի. եթէ տեսանիցես զոք 'ի գահոյս արծաթիս և յոյժ կակուղ անկողինս և խոր լռութիւն ընդ յարկաւ եղեալ և այլ ինչ այսպիսի, ոչ այնչափ քաղցր քուն և անոյշ կարասցես ունել, որչափ վաստակաւորն և աշխատեալն, որ զտիւն ամենայն աշխատեալ տքնի յոյժ. և յորժամ ննջէ, թէպէտ և 'ի գետնի անկանիցի և միայն ձեռն զգլխովն դնիցէ, սակայն քաղցր և անոյշ է քունն այն։ Նաև զայսր փորձ գոլով իմանամք, և նախ քան զգործս յայտ առնէ հրաման գրոյն. քանզի Սողոմոն որ աւելի 'ի վայելչութիւնս աշխարհիս շրջեցաւ, զսոյն պատուիրեալ ասէ. "Քաղցր քուն է ծառայի, թէ սակաւ և շատ կերիցէ„։

Նաև որ յագին մեծանալով, չէ նմա համարձակ 'ի քուն մտանել. քանզի ընդ միմեանս խառնեալ տքնութիւն և կարօտութիւն կերակրոց՝ ոմն զմորմենն չորացուցանէ, և եղջիւրացուցանէ զարտևանունսն և ոչ տայ թոյլ ծածկել աչաց. իսկ ոմն յերգան զշունչն նեղացուցանէ և խռովեցուցանէ և բազում բերէ տագնապս։ Նաև այսպէս վաստակելոց երբեմն այս իսկ է մխիթարութիւն, որպէս զի և խառն ընդ միմեանս եղեալ՝ կա-

ուէ զծառայն տքնեալ 'ի հանգստեան առնել։ Վասնզի զտիւն ամենայն աշխատեալ 'ի սպասաւորութիւն տերանց իւրեանց, տագնապեալք և նեղեալք, և ոչ փոքր մի առեալ հանգիստ, բաւական առին այսու զհատուցումն 'ի տքնութենէ փափաքմանն։ Նա և այս մարդասիրութեան գործ եղև, որ ոչ յաղագս ոսկւոյ և արծաթոյ է փափաքումն, այլ յաշխատութիւնս և 'ի ջանս և 'ի պէտս ամենայն իմաստութէ կալով գտին զհանգիստ։

Իսկ մեծատունք ոչ են այսպէս, այլ 'ի գահոյս անկեալ կալով բազում անգամ զգիշերն ամենայն հսկեալ 'ի հոգս և 'ի զբաղումն ցնորեալ՝ զայսմ ոչ վայելեն զփափաքումն։ Այլ աղքատն գադարեալ յաշխատութենէ աւուրն, ունելով վաստակաբեկ զմարմինն, նախ քան զննջելն յերկիր յափշտակէ զնա քուն անոյշ և քաղցր լի հանգստեամբ. ոչ փոքր ինչ է այս, և ընդ վաստակս արդարոյն ընդունի զվարձն։ Իսկ եթէ աղքատն բազում դեգերմամբ տքնիցի յուտել և յըմպել և 'ի հոգալ զընչից, ոչ էր այնուհետև մեկնել նոցա արժանաւորութէ իրիք 'ի մեծատանց. քանզի որո՞վ իւիք գտանիցի մեծատունն յառաջաբան երևեալ և բաժանել 'ի նմանէ...։

Մեծ ստացուած է աղքատութիւնն եթէ ոք համբերութեամբ և իմաստութեամբ բերէ զնա. գանձ է անկողոպտելի, գաւազան զօրաւոր, ստացուած անքակտելի, ժողովարան առանց խորհրդոյ և յուզման։ Այլ ունի, ասեն, ագահութիւն և աղքատն. եթէ այսպէս իցէ, ապա աւելի խորհեցաւ և աղքատն։ Այլ արհամարհի, ասեն, աղքատն և անարգի. բայց մեծատուն հաշի նախանձու։ Ոչ երբէք այնպիսի ջան հատանիցէ աղքատին որպէս մեծատանն. բազմապատիկ յամենայն կողմանց 'ի սատանայէ և յամենայն խորհրդոց առնու զնա, և ամենեցուն ծառայաբար փաղաքշիցի վասն բազմութեան ընչից իւրոց և աւելորդաց։ Իսկ աղքատն եթէ կայցէ յիմաստութեն, ոչ 'ի սատանայէ և ոչ յայլմէ իմիքէ յաղթի...։

Ո՞ ինչ իցէ քան զԵղիա աղքատագոյն, ասա ինձ. այլ վասն այսորիկ յաղթեաց ամենայն մեծատանց, քանզի այսպիսի աղքատ էր, և զայն աղքատութիւն 'ի մեծացեալ մտաց ընկալաւ, որով զամենայն ինչս մեծատանց անարգագոյն համարէր քան զմեծութիւն անձին

իւրոյ: Նա և ոչ զայսոսիկ զմտաւ ածել արժանի առնէր
իմաստութեան իւրոյ, վասն որոյ հանդիպեցաւ այնչափ
մեծ՝ որ ոչ զանցաւորս մեծ համարէր. ո՛չ ապաքէն ըզ-
մաշկեակն միայն ստացեալ էր: Նոյնպէս գիտակ էր ա-
նօրէնութեան անցաւորիս, որով զոսկի որպէս կաւ գա-
հից համարէր, և ոչ քան զգեստն զայն ստացաւ աւե-
լորդ ինչ: Վասն այսորիկ խնդրէր թագաւորն զաղքատն.
որ այնչափ ոսկւով լցեալ առ մի բերան հայէր՝ որ աւե-
լի քան զմաշկեակն ոչ ինչ ունէր. այնպէս մաշկեղէնն
քան զծիրանիսն պայծառագոյն էր, և այր արդարոյն
քան զգաւիթս թագաւորականս: Վասն որոյ և յեր-
կինս իսկ ելանէր, և 'ի վերանալն ոչ այլ ինչ թողեալ
աշակերտին իւրոյ, բայց միայն զմաշկեղէնն: Նոյն,
ասէ, հալածեցի զսատանայ. զայդ առ և այդու զօրա-
ցիր ընդդէմ թշնամւոյն, որ է զէն հզօր և աշտարակ
անվանելի և անթնդելի ժողովարան: Զոր իբրև զմեծ
ժառանգութիւն զմաշկեղէնն ընկալաւ Եղիսէէ. քան-
զի և էր իսկ ճշմարիտ մեծ ժառանգութիւն, պատուա-
կան քան զոսկի: Եւ եղև նա ինքն երկրորդ Եղիա. որ
'ի վերն եւ Եղիա, և որ 'ի խոնարհ՝ դարձեալ Եղիա:

Գիտեմ զի երանիցէք զարդարն զայն և փափագի-
ցէք իւրաքանչիւր ոք լինել իբրև զնա. այլ ես ցուցա-
նեմ ձեզ զի յոյժ առաւել քան զայն խորհրդականքս
ընկալեալ եմք: Քանզի Եղիա զմաշկեղէնն եթող ա-
շակերտին, իսկ որդին այ̃ համբարձեալ յերկինս՝ զմար-
մինն իւր եթող առ մեզ. Եղիա մերկացեալ զմաշկեակն
գնաց, իսկ Քրիստոս առ մեզ թողեալ և հանդերձ
մարմնովն համբարձեալ, որ ոչ անխայեաց հեղուլ զա-
րիւն իւր վասն մեր, և մարմնովն հանդերձ տուեալ մեզ
զարիւն իւր, և զերկուսին խառնեալ 'ի մեզ: Եւ մեք
այսուհետև զինչ խնայեսցուք զմերս առնել յաղագս
փրկութեան մերոյ: Յայս յոյս ապաւինեալ աղաչես-
ցուք զնա համապազ աղօթիւք և պաղատանօք և հան-
դերձ այլովք առաքինութ̃ք կեցցուք ամենայն ստու-
գութեամբ. զի փախիցուք 'ի հասեալ չարեացս և հան-
դիպեսցուք հանդերձեալ բարութեանցն, որ եղիցի ա-
մենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ
տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր
փառք հանդերձ հոգւովն սրբով այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից. ամէն:

Digitized by Google

մեք զոր ներել թողութեան պատասխանւոյ ունիցիմք , որ այսքան ժողովրդեան առաջնորդել ձեռն արկանեմք , և զտկարութիւն ամենեցուն ոչ բառնամք , և պատրաստ ոչ լինիմք 'ի չարչարել վասն որոյ ընդ ձեռամբ անկեալ կան ։ Քանզի նախահայրն Յակոբ կայր առաջի խաշանց և արածէր զանբան հօտն , և մարդոյ էր համբերձեալ տալ զհամար պարտուց , սակայն զգիշերս անքուն կատարէր , և զցուրտ և զտապ և զամենայն սառամանիս օդոց յինքն կրէր , զի մի կորիցէ 'ի հօտից անտի ․ որչափ ևս առաւել մեք որ ոչ եմք կացեալ հովիւ անբան հօտից' այլ բանաւոր և հոգևորական հօտի , և ոչ մարդոյ' այլ այ̃ համբերձեալ եմք կալ առաջի և տալ պատասխանի և զհամար պարտուցն , ոչ է պարտ մեզ ծուլանալ կամ դժուար համարել ըստ կարողութեան օգտել հօտից ․ ․ ․ ։

Քանզի և զայս ինքնին գիտէր զի ոչ միայն վասն միոյ քաղաքի էր բանս այս , այլ վասն ամենայն արևելից ․ զի քաղաքաց որ 'ի վերոյ քան զմեզ բնակեալ են , գլուխ և մայր է քաղաքս մեր ․ վասն որոյ և համբերէր ամենայն վտանգից , և ոչ կարացին զվարդապետն արգելուլ աստ պատճառքն զոր յառաջագոյն ասացի ։ Վասն այսորիկ յուսամ 'ի յոյս քաղցրութեան զի ոչ անտես առնէ ա̃ծ զայսչափ յօժարութիւնս և զջանս , և ոչ տայ թոյլ ամբաստանի իւրոյ գնալ առանց մեծի վաստակոյ ։ Գիտեմ զի թէ միայն երևեսցի վարդապետն մեր և տեսցէ զբարեպաշտ թագաւորն մեր , 'ի հայեցմանէն իւրոյ 'ի կարճոյ կարասցէ լուծանել զարտմտութիւն թագաւորին ․ քանզի սրբոց ոչ եթէ բանք նոցա միայն , այլ և երեսք նոցա լի է հոգևորական շնորհիւն ։

Ինքնին իսկ վարդապետն մեր լցեալ բազում իմաստութեամբ և հմուտ ա̃ծային օրինացն' այնպէս ասիցէ ցթագաւորն որպէս Մովսէս ցա̃ծ ․ “Եթէ թողուս ըզմեղս նոցա թող ․ ապա թէ ոչ' սատակեա և զիս ընդ նոսա ,, ։ Քանզի այսպիսի է գութ սրբոցն 'ի վերայ հոգևոր որդւոցն ․ քաղցրագոյն համարին զմահ քան 'ի բացեայ կեալ և ապրել ։ Առաջի դնէ և զժամանակ աւուրցն օգնական , և մատուցանէ բարեխօս զատիկն սուրբ զի յիշեսցէ զժամանակն յորում եթող Քրիստոս զմեղս ամենայն տիեզերաց , և աղաչեսցէ զնա լինել նմանող

այ, յիշեսցէ և զառակն զայն զկիր քանքարին և զհարիւր դահեկանին։ Գիտեմ և ես զհամարձակութիւն հօրն մերոյ, զի ոչ զանգիտէ զնա յայսմ առակես երկեցուցանել և ասել՝ գուցէ և դու, Թագաւոր, յայնմ աւուր լուիցես. "Չար ծառայ, զամենայն զպարտսն թողի քեզ, վասն զի աղաչեցեր զիս. ո՞չ էր պարտ և քեզ թողուլ քում ծառայակցին, որպէս և ես քեզ թողի"։

Համդերձ այսուիկ ուսուցանէ զի ոչ համօրէն քաղաքիս եղև մեղանքս այս, այլ մարդոց ումանց օտարաց անզգամաց և յանդգնելոց. որ թէպէտ և համարձակեցան յանօրէնութիւն, սակայն ոչ ինչ համարեցան կամ հոգս արարին. ըստ որում ոչ է արժան և իրաւ վասն սակաւ մարդկան անզգամաց զայնչափ քաղաք յափշտակել և զանպարտն մատնել 'ի պարտաւորութիւն. որ թէպէտ և ամենեքեան 'ի մեղս էին, բաւական էր այսչափ աւուրս կրել դատապարտութիւն, մաշել երկիւղիւ և յամենայն աւուր ակն ունել մեռանել, հալածեալք փախուցեալք՝ քան զպատժապարտս կան ողորմագոյնք, բարձեալ զարիւն 'ի վերայ ձեռաց իւրեանց՝ ոչ ունին վստահութիւն 'ի կեանս իւրեանց։ Բաւական են տանջանքս այս. մի՛ յառաջ եկեսցես խստագոյն բարկութեամբ, ով Թագաւոր, հաշտ արա քեզ զվերին դատաւորն վասն առ ծառայակիցս քո մարդասիրութե՛։ Իմացիր զմեծութիւն քաղաքին, զի ոչ վասն միոյ և երկուց և երից կամ տասն անձանց է մեզ այժմ պատրաստութիւնս, այլ վասն բիւրուց անմեղաց։ Եւ վասն զի գլուխ է ամենայն տիեզերաց հաւատացելոց քաղաքն այն, ուր յառաջագոյն երևեցան քրիստոնեայք, պատուեա զՔրիստոս, զգուշ լեր յորոց նախ քարոզեցին զփափագելի և զքաղցր անունն ամենայնի։ Զայս ամենայն քահանայապետն և առաւել քան զայն համդերձ մեծ համարձակութեամբ ասիցէ։

Լուեալ զայս Թագաւորն լինիցի մարդասէր և քաղցր, որպէս և է իսկ, մինչ զի յերկոցունցն քաղցրագոյն ունիցիմք զյոյս։ Մանաւանդ քան զհաւատով կալ վարդապետին և նախ քան զմարդասիրութիւն Թագաւորին՝ վստահ եմք յողորմութի՛ն այ. զի թէպէտ և Թագաւորն աղաչեալ 'ի քահանայապետէն և քահանայապետն կայ յաղաչանս, նա ինքնին մերձ կայցէ 'ի մի-

Պարսից միանգամայն զամենեսեան բառնալ հրամայեաց յերկրէ, և չէր ոք որ կարէր կալ առաջի բարկութե՟ն այնմիկ ։ Մերկացաւ կինն այն զպայծառագոյն պատմուճանն իւր և զգեցաւ քուրձ․ արկեալ 'ի վերայ մոխրոյ զանկողինս իւր, աղաչէր զմարդասէրն Ած գալ զկնի նորա առ թագաւորն, և այսպէս աղօթէր առ նա՝ զբանս զայս ասելով յաղօթելն իւրում․ Համարձակեցո զիս որ թագաւորդ ես թագաւորաց և տէր տերանց, և տուր ինձ բան դիւրին 'ի բերան որով գտանիցեմ զշնորհս առաջի թագաւորին ։

Զայս և վասն վարդապետին մերոյ աղաչեսցուք զԱծ ։ Քանզի կինն այն վասն Հրեիցն աղաչէր, և եղև կարող լուծանել զբարբարոսական տրտմութ՟ին․ իսկ վարդապետն մեր որ վասն այսպիսի քաղաքի և հանդերձ այսչափ եկեղեցեաւս կայ յաղաչանս, եւս առաւել զհեզ և զխոնարհ թագաւորն կարիցէ ածել 'ի հաւան ։ Զի եթէ որք առ Ած մեղուցեալք են՝ առեալ է իշխանութիւն արձակել, ապա մանաւանդ որ առ մարդիկ են մեղանչականք՝ կարող է զմեղսն կորուսանել և անյայտ առնել ։ Քանզի իշխան է և սոյն իսկ, պարկեշտ և պատկառելի քան զնորին իշխանութիւնն, և զթագաւորական գլուխն՝ ամենասուրբ Ածեղէն օրէնքն ընդ սորին ձեռամբ գալ հրամայեցին ։ Եւ յորժամ խնդրեսցէ լինել 'ի վերուստ ինչ բարի, թագաւորն առ քահանայն և ոչ քահանայն առ թագաւորն ապաւինեալ սովորեաց ։ Քանզի և ունի սա զէն զարդարութիւն և զօտի զճըշմարտութիւնն․ ունի և կօշիկս յոյժ պարկեշտագոյն՝ զպատրաստութիւն աւետարանին խաղաղութեան․ ունի և պսակ զփրկութիւն յուսոյ կապեալ 'ի վերայ գըլխոյ իւրոյ․ ունի և սուսեր ոչ եթէ յերկաթոյ, այլ 'ի հոգւոյն սրբոյ․ ուստի պայծառ և պատուական է սորա վասն ամենեցուն աղօթք, պատկառելի զէնն, մեծ համարձակութիւնն, առաւել զօրութիւնն ։ Որով կարող իսկ է իւրով մեծահոգութեամբն յառաջին ծանրութենէ մեղանացս և 'ի վերջին յամենայն պատուհասից առ Ած յուսովն և բազում համարձակութեամբն և պայծառ իմաստութեամբն փոխել զթագաւորին սրտմտութիւնն ։

Մեք այսուհետև մի անգէտ լիցուք վասն մերոյ փըր-

կութեան, այլ մաղթեսցուք աղաչեսցուք խնդրուածս արասցուք առ վերին Թագաւորն հանդերձ բաղում արտասուօք, ունելով մարտակից մեզ զաւուրս քառանորդացս: Զոր օրինակ յորժամ խռովութիւն ալեաց յուզի, 'ի խորս ծովուն արկանէ նաւապետն զնաւն, և որպէս սրբեսցէ զինուոր և կազմ յօրինեսցէ զսպառազինութիւնն իւր և պատրաստ առնէ զերիվար իւր 'ի պատերազմել, և որպէս երկրագործ 'ի ժամանակի հընձոց սրէ զմանգաղ իւր, և որպէս ճանապարհորդ որ վըստահ իցէ յընթացս ոտից իւրոց՝ մերձենայ գնայ ճանապարհ, սոյնպէս և մեք իբրև հնձողք ցորենոյ արիաբար հոգևոր պատուալքս երևեսցուք, իբրև զինուորք զէնս հոգևոր կազմեսցուք, իբրև վաստակաւորք մանգաղս սրեսցուք, իբրև նաւուղեալք 'ի խռովութենէ ալեաց զաղտեղեալ խորհուրդս թօթափեսցուք, իբրև ճանապարհորդք առ 'ի գնացս յերկինս մերձեսցուք, և իբրև ըմբիշք 'ի մարտս մերկասցուք. զի որ հաւատովք լի իցէ, նա իսկ է վաստակաւոր և նաւուղիղ և զինուոր և ըմբիշ և ճանապարհորդ: Վասն այսորիկ և Պաւղոս ասէ. “Ոչ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս”. և դարձեալ թէ “Առէք զսպառազինութիւն այ̃”: Տեսե՞ր զըմբիշն, տեսե՞ր զզինուորն: Եւ դու եթէ ըմբիշ իցես, պարտ է մերկ մնանել 'ի մարտն. եթէ զինուոր իցես, պարտ է սպառազինութեամբ կարգել 'ի դասս զինուորացն:

Զիա՞րդ, ասէ, կամ ո՞րպէս երկոցունցս կարէ լինել, մերկ լինել և ոչ մերկ, զգենուլ զէնս և ոչ զգենուլ: Զիարդ արդեօք, ես ասացից: Մերկացիր զվարս կենցաղոյս, և եղեր ըմբիշ. զգեցիր զէնս հոգևորականս, և եղեր զինուոր. մերկացո զանձն քո 'ի հոգոց կենցաղոյս, քանզի ժամանակ է մարտնչելոյ. զգեցիր զհոգևորական զէնն, զի պատերազմ հասեալ է մեզ ճակատ յարդարել ընդդէմ դիւաց: Վասն որոյ պարտ է մերկանալ, զի մի բռնարկութիւն ունիցիմք սատանայի յորժամ մարտնչիցի ընդ մեզ. սպառազինեսցուք շուրջանակի զանդամս մեր, զի մի առցուք վէրս 'ի պատերազմին ժամու:

Նեղեա վաստակօք զանձն քո, որով հատցես զարմատս փշոց, զի մի հեղձուսցէ զհասկս բարի պտղոյն.

սերմանեաւ զբանս բարեպաշտութեան և բուռն զգեղեցիկ զիմաստութեան զտունկն. աշխատասէր լեր սրտի մտօք, և եղէր վաստակաւոր հաճոյական, և ասիցէ ցքեզ Պաւղոս այսպէս. "Մշակին աշխատելոյ նախ պարտ է 'ի պտղոյն ճաշակել": Յայս և ինքն մխեալ յարուեստ գործոյ, վասն որոյ առ կորնթացիսն ասէ առաքելով. "Ես տնկեցի, Ապողոս ջուր ետ, այլ Ած աճեցոյց": Արեա զմանգաղ քո հանդերձ պահովք առ 'ի հատանել զհասկ չարեաց զոր աճեցուցեր աւելորդ կերակրօք. մերձեցիր 'ի ճանապարհորդութիւն որ յերկինս հանիցէ զքեզ. յանձուկ ճանապարհն մերձեա և երթ: Եւ զիա՞րդ արդեօք կարէ մերձենալ և գնալ: Ամբառնեա զանձն քո ածել 'ի ծառայութիւն ցայն վայր ուր հանդերձեալ ես գնալ զճանապարհն անձուկ, քանզի յայնմանէ արգել 'ի մեծ թանձրամարմնութենէ յաւելորդ կերակրոց: Ի բաց վարեա զալիս զաղտեղի մեծութիւնս. յաղթահարեա զծուփս չար խորհրդոց. ապրեցո զնաւդ 'ի խռովութենէ բազմահանճար գիտութե արուեստիւն, և եղեր նաւուղիղ:

Եւ այս ամենայնի պատճառք բանն Ած է որ ուսուցանէ զմեզ յաղագս պահոց. բանք ոչ եթէ զայս ասեմ զբազմօրեայ զպահոցս, այլ զստոյգ պահոցն. ոչ 'ի կերակրոց միայն, այլ նախ պարտ է զամենայն զմեզս 'ի բաց հատանել... յորմէ ուսանիմք թէ զիարդ կամ որով օրինակաւ պարտ է մտանել 'ի պահս: Քանզի պահեաց փարիսեցին պահս, այլ զկնի պահոցն իջանէր ունայն 'ի պտղոյ պահոցն. պահեցին և նինուէացիքն, և հանդիպեցան ողորմութեանն Այ. պահեցին և Հրեայքն, սակայն անընդունակ եղեալք և հայհոյեալք գնացին 'ի պահոց իւրեանց: Եւ արդ եթէ ոչ գիտեն զիարդ պարտ է պահել, այսչափ է վտանգ պահոցն, ուսցուք մեք այսուհետև զօրէնս պահոց, զի մի անյայտ ընթասցուք և մի զօդս կոծեսցուք և մի ստուերամարտութեամբ մըրցեսցուք:

Դեղ են ոգւոց պահք. սակայն դեղք թէ և բիւր օգուտս ունին, բազում անգամ անօգուտ լինին վասն անգիտութեան ցաւոցն. քանզի պարտ է և զժամն գնելոյ դեղոյն գիտել և զչափ նորին և զախորժակս մարմնոյն և զկիրս բնութեանն. և եթէ ոչ ըստ ախորժելոյ

ցաւոցն լինիցի, առաւել խստացուցանէ փոխանակ օգ-
տութեան։ Իսկ եթէ մարմնոյ բժշկութեան այսչափ ստուգութեամբ պարտ է ձեռն արկանել, որչափ ևս առաւել վասն ոգւոց մերոց ոչ հեղգալ. այլ ամենայն գիտութեամբ պարտ է քննել և բազում զգուշական ստուգութեամբ։

Տեսցուք այժմ թէ զիարդ պահեցին նինուէացիքն կամ թէ որպէս ազատեցան յայնմ բարկութէ՝։ "Մարդ, ասէ, և անասուն, ոչխար և արջառ մի ինչ ճաշակեսցեն"։ Ո՛չ ինչ խօսիս, ասա ինձ, և անասո՞ւնք պահեսցեն, երիվարք և ջորիք քո՞ւրձ զգենուցուն։ Այո, ասէ. զոր օրինակ 'ի մեռանել մեծատանն ոչ եթէ ծառայք միայն և աղախնայք սուգ առնուցուն, այլ և զերիվարս յառաջ բերեալ զգեցուցանեն և տան 'ի ձեռս երիվարաքածացն, և 'ի գերեզմանն զհետ երթալ հրամայեն՝ զմեծութիւն վշտին ցուցանելով, և ամենեցուն յայտնելով զանբաւ աղէտս ողորմագինս տարակուսանացն, այսպէս և քաղաքին այնմիկ հանդերձեալ կորնչել, և զընութիւն անասնոց քրձազգածս արարեալ արկին 'ի լուծս պահոց։ Քանզի ոչ էր անասնոց բանիւ ուսանել զբարկութիւն տեառն, զի ոչ ունէին միտս առ իմանալ, հանդերձ սովովն ուսանէին թէ ածահրաման էր նեղութիւնն. զի եթէ քաղաքս կործանեսցի, ասէ, ոչ եթէ մեզ բնակչացս միայն, այլ և անասնոց առ հասարակ լինիցի գերեզման. և սոքա, ասէ, հանդերձեալ են լինել հաղորդ որ գալոցն իցէ տանջանաց, լիցին հաղորդ և պահոցս։

Եւ այլ ազգ տեսցուք զոյն զոր և մարգարէքն առնէին. յորժամ տեսանէին թէ գալոց է բարկութիւն անհանդուրժելի յերկնից, և գիտէին որ հանդերձեալ էին տանջել, ոչ ունէին համարձակութիւն առ ած 'ի լաւութենէ մարդկանն, և ոչ մի ոք էր յառողջութեան, և պատասխանւոյ անգամ չէին արժանի, ոչ ունէին թէ զինչ գործեսցեն, և ոչ գտանէին պատսպարան դատապարտութեան՝ յանասունսն լինէին ապաւինեալք, և նոցին մահու գոչմամբն առնէին զաղաչանս առ ած; և այնու զնոցին զողորմելի և զբազմողբերգելի զկորուստ անցուցանէին։

Եւ փորձեալ այսու հաղորդ առնեմ զանասունս ընդ

մարդկան եկեալ վտանգիցն ։ Սով երբեմն եկեալ 'ի վերայ Հրէաստանի, և երաշտութիւն բազում կալաւ զերկիրն, և ամենեքեան մաշեալք եղեն յոյժ . և ոմն 'ի մարգարէիցն ասէր . "Խայտացին երինջք 'ի մսուրս իւրեանց, լացին դասակք անդեոց զի ոչ գոյր նոցա արօտ, և ամենայն խաշինք դաշտաց առ քեզ հայեցան, զի ցամաքեցան հոսանք ջուրց" . և յարգելմանէ ցօղոյ ողբայր չարաչար և ասէր . "Հուր վայրի և ցիռք անապատի 'ի քեզ հայեցան . զի հուր սատակեաց զգեղեցկութիւն անապատի և բոց ճարակեաց զամենայն փայտ ագարակի, և կուրացան աչք նոցա զի ոչ գոյր խոտ" ։ Ըստ այսմ դարձեալ լուաք Յովէլեայ որ ասէր . "Ելցէ փեսայ 'ի սենեկէ իւրմէ և հարսն յառագաստէ իւրմէ և տղայք ստնդիայք 'ի գրկաց" ։ Վասն էր, ասա ինձ, զանժամ հասակ տղայոյ կոչէ 'ի պաղատանս ։ Յաղագս այսորիկ և ըստ այսմ պատճառի . քանզի որ հասակաւ կատարեալք էին, ամենեքեան բարկացուցին և խռովեցուցին զԱծ, որք սակաւ 'ի մեղաց անխորշք են, ասէ, նոքա աղաչեսցեն զբարկացեալն ։

Բայց որպէս և ասացի իսկ, տեսցուք եթէ զինչ է որ ելոյծ զանդարձ բարկութիւն զայն ։ Միթէ միայն պահքն և քուրձն լուծին . ոչ է պարտ ասել զայս ։ Բայց զինչ . քանզի փոխադրեցան 'ի գործոց կենցաղոյս ։ Եւ ուստի յայտ է այս . 'ի մարգարէական բանից անտի, որ գիտակ էր բարկութեան Այ և նոցին պահոցն . այսինքն որ զփոխարկութիւնն ասաց, և զպատճառս հաշտութեան ուսուցանէ, ասելով այսպէս . "Եւ ետես Ած զգործս նոցա" ։ Զո՞ր գործ, զի պահեցին և քուրձ զգեցան . ոչ է այս, զի զայս ամենայն լռեալ ծածկեաց . այլ ասէ . "Դարձան իւրաքանչիւր ոք 'ի ճանապարհաց իւրեանց չարաց, և զղջացաւ Ած 'ի վերայ չարեացն զոր խօսեցաւ, և ոչ արար" ։ Տեսանես զի ոչ պահքն միայն վերացոյց զնեղութիւն, այլ փոխարկութիւն կենցաղոյս ։

Զայս ասեմք, ոչ եթէ անարգեմք զպահսն, քաւ լիցի . այլ զի առաւել պատուեմք ։ Պատիւ պահոց ոչ միայն 'ի պարարտ կերակրոց [illegible] է, այլ բաժանել յամենայն մեղաց . իսկ որ միայն 'ի կերակրոց միայն սահմանէ զպահսն, այնպիսին է մանաւանդ որ անարգէ զպահսն . Պահե՞ս պահես . ցոյց ինձ գործովք իւրովք ։ Որ գործովք,

ասէ. եթէ տեսանիցես զաղքատն, լեր ողորմած. եթէ տեսանիցես զթշնամին, լեր հաշտ. եթէ զսիրելին իւր տեսանես 'ի բարեհաճութիւն, մի՛ չարանար. եթէ տեսանիցես կին գեղեցիկ, զանց արա և 'ի բաց երթ:

Միթէ բերանո՞յ միայն իցէ պարտ պահել. այլ աչք և ականջք, ձեռք և ոտք և ամենայն անդամք մարմնոյ մերոյ պահեսցեն. ձեռք 'ի յափշտակութենէ և յագահութենէ սրբեսցին. իսկ ոտք արգելցին յանօրէնութեան տեղին ընթանալոյ. պահեսցին աչք և խրատեալք լիցին, գուցէ 'ի տեսիլ գեղոյ հայեսցին և զօտար գեղ զննեսցեն: Կերակուր աչաց՝ տեսութիւնն է. եթէ անօրէն իցէ տեսիլն, արգել և սրբեա 'ի պահսն. քանզի թէ օրինօք և զգուշութեամբ զարդարեցեր զպահսն, զամենայն փրկութիւն բերցէ ոգւոյդ քում: Իսկ եթէ 'ի կերակրոց և յըմպելեաց հեռանալով, և որ աչաց և ոտից և ձեռաց արգել իցէ՝ անխտիր մերձենայցես, յոյժ տգեղ է և գարշելի: Ո՞չ ուտես միս. և մի՛ կերիցես աչօք զանառակութիւնս: Պահիցեն և ականջք. պահք ականջաց ոչ հաճել և ոչ ընդունել զհայհոյութիւն և զլուր նանրութեան և մատնութեան. "Զլուր անիրաւութեան, ասէ, մի՛ ընդունիցիք„:

Պահիցէ և բերան 'ի բանից գարշելեաց և 'ի բամբասանաց: Զի՞նչ օգուտ իցէ յորժամ 'ի թռչնոց և 'ի ձկանց մեկնիմք, և զեղբարս մեր խածատիցեմք և ուտիցեմք: Որ չարախօսէ զընկերէ իւրմէ, եկեր զմիս եղբօր իւրոյ. վասն որոյ և Պաւղոս երկեւցոյց ասելով. "Ապա եթէ զմիմեանս խածատիցէք և ուտիցէք, զգոյշ լերուք գուցէ 'ի միմեանց սատակիցիք„: Ոչ արկեր զատամունս 'ի մարմինս, այլ արկեր յանձն քո զչար կասկածն և զնա վիրաւորեցեր, և բիւրս գործեցեր չարիս քեզ ինքն և այլոց բազմաց...:

Մի՛ ոք զայս ասիցէ ինձ, եթէ յայնժամ եմ չարախօս՝ յորժամ սուտ ասեմ. իսկ եթէ ճշմարիտ, ոչ է վնաս: Պարտական ես, թէպէտ և սուտ խօսիս՝ չար: Եւ քանզի փարիսեցին այն յիրաւի ասաց չար զմաքսաւորէն, այլ սակայն նմա այս ոչ եկաց առաջի: Ասա ինձ, է՞ր մաքսաւորն մաքսաւոր և մեղաւոր: Ամենայն իրօք յայտ է զի մաքսաւոր էր. բայց սակայն յորժամ զնմանէ խօսեցաւ չար, էջ, ասէ, փարիսեցին կորուսեալ զամենայն արդարութիւնս:

Կամիցիս ուղղել զեղբայրն. արտասուեա աղօթեա առ ած̃. մի՛ առանձինն և խրատեա, խորհրդակից լեր բարեաց, աղաչեա մխիթարեա՛ ՛ի զղջմանն. այսպէս և Պաւղոս ասէ. «Գուցէ յորժամ գայցեմ, նկուն արասցէ զիս ած̃ իմ առ ձեզ, և սուգ առնուցում վասն բազմաց յառաջագոյն մեղուցելոց և ոչ ապաշխարելոց ՛ի վերայ պղծութեան և պոռնկութեան և գիջութե̃ն զոր գործեցին»։ Նոյնպէս և դու սուգ առ և սէր ցոյց վասն մեղուցելոյն. հաւանեցո զնա զի վասն գթութե̃ և հոգս առնելոյ քննես զյանցանսն, և ոչ յանդիմանեալ խորհիցիս վասն յիշելոյ նմա զյանցանս իւր։ Իսկ եթէ լինիցի անառակ ՛ի չարիսն, կալ զոտս նորա և համբուրեա, և մի՛ այսպէս առնիցես՝ եթէ ճշմարիտ բժշկել կամիցիս։ Զսոյն և բժիշկք առնիցեն բազում անգամ յորժամ ՛ի դժուարին ցաւս տագնապիցին նեղեալքն առ դեղն. համբուրեն աղաչեն առ ՛ի հաւանել առնուլ զառողջութեանն դեղ։ Նոյնպէս դարձեալ պարտ է առնել և քեզ, ցուցանել քահանայն զվէրսն. այս իսկ է գթութիւն, այս է բարի խնամակալութիւն։

Ոչ միայն ոչ խօսել զչար, այլ և յորժամ լուիցէք ասել չար զումեքէ, աղաչեմ խնուլ զլսելիս ձեր, նման լինել մարգարէին որ ասէ. «Որ խօսէր գաղտ զընկերէ իւրմէ, զնա բացէ ՛ի բաց հալածէի»։ Նոյնպէս և դու ասասցես ցընկերն քո. եթէ գովել զոք կամիցիս կամ բարեբանութիւն մատուցանել, յորդորեմ զմիտ ականջաց իմոց և ընդունիմ զանուշահոտութիւնս. ապա թէ չար ինչ կամիցիս պատմել, խնուեմ զմիտ լսելեացս, զի ոչ եմ բաւական զաղբս գարշելիս ընդունել։ Զինչ օգուտ է ինձ կամ շահ ՛ի բանիցս յայսցանէ՝ իմանալ եթէ պոռնիկ իցէ ոմն. այլ և մեծագոյն լինի յայսմանէ վնաս։ Ասա դու ցնա. հոգասցուք զմերն. զի եթէ մեղուցեալն պարտաւոր է տանջանաց, մեք զո՞ր ունիցիմք տալ պատասխանի յորժամ զմերն ոչ ածեմք զմըտաւ, և զայլոցն այնպէս քննասիրեմք....։

Իսկ որպէս ոք որ զբարին պատմէ և գովէ զընկերն՝ սկիզբն առնէ սիրոյ, այսպէս և որ չարասէր իցէ՝ ՛ի մէջ արկանէ զթշնամութիւն և բիւր պատերազմաց սկիզբն և պատճառ լինի. զի ոչ երբէք յայլմէ պատճառէ ալ-ղերգ լինիմք առ մերոյին յանցանս, որպէս յորժամ զո-

տարացն բազմախոյզ 'ի քննին և յաւելագործութիւն ածեմք. զի ոչ ոք է որ չարախօսէ զօտարս և բազմաքննին լինի կենցաղոյն եթէ կարիցէ երբէք հոգալ վասն իւրոյ կենացն, զի զամենայն զփոյթ իւր և զջան վասն այլոց բազմաքննութեան կորուսանէ և մաշէ։ Հարկ է իւրաքանչիւր զիւրսն զամենայն պարզ ունել 'ի մտի և կալ և հոգալ. տիրապէս սէր այն իսկ է՝ զամենայն զհոգս և զփոյթ 'ի գործ արկանել վասն իւրոց յանցանացն և դատաստանաց, որով կարող լինիցի առաւելապէս գործել։ Ապա թէ հանապազ զայլոյս քննիցես, երբ իցէ ժամանակ զղջանալ քեզ 'ի չարեաց քոց։

Փախիցուք այսուհետև, սիրելիք, փախիցուք 'ի չարախօսութենէ միմեանց. ուսցուք զի սատանայական է այնպիսի մոլեգնութիւն, և 'ի նորին խորհրդոց է յայսօսիկ դարանակալութիւն.... Ի բաց ընկեսցուք 'ի բերանոյ մերոյ զամենայն չարախօսութիւնս. գիտասցուք զի թէ հող և մոխիր ուտիցեմք, ոչ ինչ օգտիմք 'ի յայնպիսի տարժանմանէ եթէ 'ի չարախօսութենէ ոչ զատցուք. զի "Ոչ որ մտանէ 'ի մարդ, ասէ, այն պղծէ զնա, այլ որ ելանէ 'ի բերանոյն„։ Ասա ինձ, եթէ չարժէր ոք մերձ առ քեզ զաղբս գարշելիս, ո՞չ ապաքէն բամբասէիր և անգոսնէիր զնա անարգանօք. զսոյն զայս և 'ի վերայ չարախօսաց արասցես։ Զի հոտ աղբոյ ոչ այնպէս զազրացուցանէ զհոտոտելիս և զքիմս 'ի յառնուլն զայն, որպէս զայլոց յանցանս հնչել և զանմաքուր վարս յայտնել։

Ի բաց կացցուք այսուհետև ամենեքեան 'ի չարախօսութենէ, 'ի գայթակղութենէ, 'ի բամբասանաց, և մի զեղբօրէ և մի զոք ինչ ասիցեմք չար։ Բազումք այժմ յայսմ խեռութեան արտաքս հոլովեն զչարախօսն, որպէս զի ծառայք 'ի վերայ տեառն իւրեանց յարուցեն զեզօս իւրեանց։ Իսկ թէ որքան է չարս այս, ուսիր յայսմ գործոյ յոր ըմբռնեալ եմք։ Ահա անարգեցաւ մարդ, և ամենեքեան երկնչիմք և դողամք թէ գուցէ յանարգողացն իցեմք, թէպէտ և ոչ եմք գիտակակից յայսպիսի մեղանս. և ա̃ծ զոր ամենայն և յամենայն ժամու անարգի 'ի մեծատանց և յաղքատաց, ոմք 'ի դիւրութեան իցեն և ոմք 'ի նեղութեան, ոմք դատեն և ոմք դատին, և ոչ ոք է որ 'ի խնդիր և 'ի քննին ելա-

նիցէ ։ Ստամ այսօրիկ թող եւ անարգել, զի 'ի վտանգէս որ վասն անարգանացն եղեւ, աստի ուսանիս զքոյ մարդասիրութիւնն ։ Եւ այս այժմ առաջին եւ միայն եղեւ, սակայն եւ ոչ աստի ակն ունիմք առնուլ քաւութիւն եւ ոչ պատասխանի տալ. եւ զԱստուած զօր ամենայն բարկացուցանեմք, եւ ոչ մի օր առ նա ունիմք դարձ, սակայն նա համբերէ առաւել ամենայն երկայնմտութեամբ ։

Տեսե՞ր զքոյ մարդասիրութիւնն թէ որչափ է.... ։ Առ նա բաւական է ասել զմեղսն եւ լուծանել զպարտաւորութիւնն. իսկ մարդկայինքս ամենայնի այսմիկ հակառակ է. քանզի մեղուցեալքն յայնժամ առաւել եւ մեծագոյն տանջին, յորժամ խոստովանին զմեղսն. որ եւ աստ այժմ եղեւ ։ Եւ տանջեցան ոմանք 'ի սրոյ, ոմանք 'ի հրոյ, ոմանք գազանաց մատնեցան եւ կորեան ։ Եւ այս ոչ եթէ արանց միայն, այլ եւ կանանց եւ տղայոց որ յոյժ մատաղ էին հասակաւ, որք ոչ էին յամբոխ փողոցացս, եւ ոչ նոցա որք որպէս 'ի խռովութենէ դիւաց վառեալք էին զայս առնէին միայն, որոց եւ տանջողքն ակն ունէին, այլ եւ չէր ոք որ ազատ էր 'ի հարկէս յայսմանէ, ոչ աղքատութիւնն եւ ոչ որք ոչ էին շարժել զկնի ամենեցուն յանցանքս այս, եւ ոչ որք խոստացեալ էին եթէ այսուհետեւ ոչ երբէք այլ համարձակիցիմք այսպէս, եւ ոչ այլ ինչ բոլորովին կարաց զնոսա փրկել. այլ յամենայն զղջմանէ զրկեալք 'ի կորուստ մատնեցան, եւ զինուորքն սպառազինուք զիւրաքանչիւր ոք զնոսա յառաջ մատուցանէին, պահ արկեալ զի մի ոք յափշտակիցէ զդատապարտեալսն. եւ մարք նոցա զկնի երթային հեռագոյն, տեսանէին զորդիս իւրեանց սրով հատեալք, եւ կոծել զաւակն ոչ համարձակէին. յաղթէր յոյժ ահ չարչարանացն, եւ ըմբռնէր երկիւղն զխորովագութ բնութիւնն ։ Եւ որպէս զնաւակոծեալսն տեսանեն ոմանք 'ի ցամաքէ անտի, երկնեն հոգալով եւ դողան եւ ազատել զընկղմեալսն ոչ կարեն, սոյնպէս եւ աստ եղեւ. զի որպէս յալեաց ծովու ափշեալ էին մարքն յերկիւղէ զինուորացն, եւ ոչ միայն մերձ գոլով ազատել զիւրեանց զդատապարտեալսն ոչ համարձակէին, այլ եւ արտասուել երկնչէին ։

Արդ իմացա՞ք այսու զքոյ մարդասիրութիւնն, զիարդ անբաւ իցէ, որպէս անփորձ, զիարդ 'ի վեր անցանէ քան

զամենայն բան ։ Արդ այժմ յայտնեաց զիւր բնութիւնն անարգեալն . քանզի 'ի լնուլ ամին դէպ եղև միոյ անարգանաց, և նա ոչ տեսութեամբ մօտ և ոչ լսելով, սակայն և ոչ մի ոք 'ի համարձակողացն հանդիպեցաւ թողութեան ։ Իսկ յաղագս այ ոչ գոյ ասել զայս . զի և այնչափ իսկ է 'ի մէջ մարդոյ և այ, զոր ոչ ոք բանիւ կարէ ցուցանել. և նա զօրհանապազ անարգի, և ինքնին մերձ տեսանէ զամենայն և լսէ, բայց ոչ 'ի վերուստ փայլատակունս առաքէ, և ոչ ծովու հրաման տայ անցանել 'ի վերայ երեսաց երկրի և ընկղմել զամենեսեան . այլ համբերէ և երկայնամիտ լինի և թողութի հրամայէ անարգողացն՝ եթէ միայն զղջանան և խոստովանին զի մի՛ երբէք արասցեն զնոյն ։ Առ որ ճշմարտապէս պարտ է աղաղակել և ասել . " Ո՞վ խօսեսցի զզօրութիւնս տեառն և լսելի արասցէ զամենայն օրհնութիւնս նորա ", ։

Բանիցս անգամ զպատկեր այ ոչ միայն 'ի հրապարակս մատուցեալ, այլ և կոխան արարեալ . քանզի դու յորժամ քարշեսցես զպարտաւորն, յորժամ մերկացուցանես, յորժամ ապտակես, զայ պատկերն կոխեցեր ։ Լուր այժմ զասացեալն 'ի Պաւղոսէ . " Առն մարդոյ, ասէ, ոչ է պարտ ծածկել զգլուխ, զի պատկեր և փառք այ է ", . և դարձեալ այ ասացեալ . " Արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան ", ։ Իսկ եթէ ասիցես դու եթէ մարդիկ ոչ են 'ի գոյութենէ այ, որպէս և չեն իսկ, նա և անդրիանդք պատկերացն ոչ էին 'ի գոյութենէ թագաւորին, այլ սակայն ետուն դատապարտութիւն համարձակողքն . զի թէպէտ և ոչ են բնութեամբ այսպիսի ոչ մարդիկ և ոչ պատկերք, սակայն պատկեր անուանեցան և կերպարան կոչեցան, և վասն դնելոյ անուանցս պարտ է պատուել զնոսա և ընդունել ։ Դու 'ի քէն սակաւ ոսկի կոխելով, զնոյն ինքն որոյ պատկեր է հարկանես և փշրես . նոյնպէս հաւատա և զայն . . . ։

Իսկ եթէ այսօր և ոչ մի ոք ոչ ետ դատապարտութիւն, և այսպէս թուի ոմանց ընդունելի և աջողակ լինել համարձակութիւնս այս, և զի ոչ ետուր դատաստան՝ կարծես ջնջել յանցանացն, և արհամարհես զինչ և գործես ։ Արդ 'ի միտ առ, ով սիրելի, զի որչափ առ-

և ասաց գնայցէք, յայնժամ մօտ կոչեաց իւրաքանչիւր որք զկին իւր և զորդիս և զծառայս և այսպէս ասացէ՝ եթէ հարկ եհաս հոգևորական այսօր, հարկ որ լուծանէ զմեզ 'ի կապանաց և փարատիչ և արձակիչ նեղութեանց, հարկ որ ոչ եթէ աղքատ առնէ, այլ յոյժ փարթամ զվճարողսն, ոչ ունել ընդ ոք թշնամութիւն, և ոչ խօսել զումեքէ չար, և ոչ երդնուլ բնաւ :

Ջանասցուք այսուհետև, մի հեղգասցուք, խորհեսցուք մինչև կատարեսցուք զհրամանն պատուիրանացս այսոցիկ. յամենայնի արիաբար մտուսցուք զփոյթ, և զմիմեանս սիրեսցուք, զմիմեանս ուղղեսցուք, զի մի պարտականս անդ երթիցուք, և ապա խնդրեսցուք փոխ առնուլ անդ առ վտանգին, գուցէ յիմար կուսանացն հանդիպիմք տանջանաց և անկանիցիմք յանմահ փրկութենէն : Արդ եթէ այսպիսի ուղղութիւնս արասցուք կենաց մերոց, աստ երաշխաւոր լինիմ ձեզ, և խոստանամ արձակիլ ձեզ յայսմ սգոյ և փարատիլ յայսմ նեղութենէ, և որ 'ի վեր է քան զամենայն՝ 'ի հանդերձեալ բարութիւնսն վայելիցէք... : Որոց լիցի ամենեցուն մեզ հանդիպիլ շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք. ամէն :

## ՃԱՌ ՉՈՐՐՈՐԴ

Մխիթարութիւն առ ժողովուրդն. և վասն ներողութեան և համբերութեան օրինակաւ Յոբայ և երից մանկանցն. և վասն 'ի բաց կալ հանապազ 'ի բանից երդմանէ :

Օրհնեալ է ա͞ծ որ մխիթարեաց զվտանգեալ անձինս ձեր և հաստատեաց զխռովեալ սիրտս ձեր. քանզի բաւական ընկալայք զմխիթարութիւն, ցուցանելով զջան վաստակոյս և զյօժարութիւն ունկնդրութեանս : Քանզի տրտմեալ ոգի և ծածկեալ ամպով տխրութե ոչ կարէ լսել բանից ասացելոցն. այլ զձեզ տեսանեմ հանդերձ բազում բարեձևութեամբ և ջանիւ յօժարութեամբ, 'ի միտ առեալ պատուհասն 'ի մէնջ և 'ի բաց թօթափեցէք զամենայն տրտմութիւնս, և զմտա-

զում աշխատութեամբ ժողովեաց, յայնժամ և աղօթեաց. իսկ հանապազ զի բազում չիթք անձրևաց իջանիցեն։ Իսկ անգէտ քաղաքացին յորժամ տեսանէ զամենայն եղեալն սքանչանայ, և սակայն ասիցէ ընդ միտս՝ զինչ գործէ այրս այս, զժողովեալն ցրէ. և ոչ միայն ցրէ, այլ և բազում ջանիւ խառնէ ընդ երկիր մինչ ոչ է հնար վերստին ժողովել. և ոչ միայն ընդ երկիր խառնէ, այլ և աղօթս առնէ լինել սաստիկ անձրևաց մինչև ապականեսցի ամենայն և լինիցին նեխ։ Նոյնպէս զորհուրբի յորժամ տեսանէ զհնչումն որոտմանց և զբերել կայծակմանց. իսկ երկրավաստակն ոչ այսպէս է, այլ մանաւանդ ուրախանայ ցնծալով 'ի տեսանել զգարունն. զի ոչ եթէ զհասեալն տեսանէ, այլ հնայ հանդերձելոյն. ոչ հայի յորոտմունսն, այլ խնդայ վասն վաստակոյն։

Նոյնպէս և մեք արասցուք, մի 'ի հասեալ տրտմութիւնս և յերկիւղս հայեսցուք, այլ որ յայսմանէ լինելոց է մեզ օգտութիւն եթէ զոսա կրեմք համբերութեամբ...։ Մի ծփեսցուք այսուհետև 'ի հասեալ պժուարութիւնս, այլ գոհութեամբ 'ի մեզ ընկալցուք. Զի թէ ունիցիմք մեղս 'ի տրտմութենէ, փութապէս ջնջին և լինի անյայտ. իսկ եթէ առաքինութիւն, աւելի փայլէ և պայծառանայ յայսմանէ. ապա թէ հանապազ ոչ տքնիս և կաս արթուն, մեծագոյն քան զամենայն վնաս գործէ քեզ. ոչ 'ի փորձանացն բնութենէ, այլ փորձեալքն 'ի ծուլութենէ զխորամանութիւն յինքեանս գործեալ յայտնին, քանզի 'ի դիւրութիւնս և 'ի հեշտութիւնս կամին վայելել։ Նայց դու մի խնդրեսցես հանգիստ և հեշտութիւն, այլ խնդրեա հոգի լցեալ ներողութեամբ և համբերութեամբ և 'ի սմին կարողացուցանել զքեզ. իսկ եթէ զայս ոչ ունիցիս, ոչ միայն 'ի փորձութեան, այլ թէ և 'ի դիւրութեան իջես, կորուսանէ և խորտակէ առաւելապէս։

Զի ոչ եթէ նեղութեանն է վնասումն՝ այլ դանդաղութիւն իմաստից մտացս մերոց դարձուցանէ զփրկութիւնն մեր, լուր այժմ զինչ ասէ Քրիստոս. "Ամենայն որ լսէ զբանս իմ զայսոսիկ և առնէ զսոսա, նմանեսցի առն իմաստնոյ որ շինեաց զտուն իւր 'ի վերայ վիմի. իջին անձրևք և խաղացին գետք, շնչեցին հողմք

և բախեցին զտունն և ոչ կործանեցաւ, քանզի 'ի վերայ վիմի հաստատեալ էր։ Եւ որ լսէ զբանս իմ զայսոսիկ և ոչ առնէ, նմանեսցի առն յիմարի որ շինեաց զտուն իւր 'ի վերայ աւազոյ. իջին անձրևք, յարեան գետք, շնչեցին հողմք և բախեցին զտունն և անկաւ, և էր կործանումն նորա մեծ յոյժ»։ Տեսանե՞ս զի ոչ փորձութեանցն է վնասումն, այլ որոց շինեցին ոչ զգաստութեամբ, այլ անմտութեամբ, այն իսկ արար զկործանումն։ Քանզի անձրևք անդ և աստ, անդ գետք և աստ, անդ վնասումն հողմոց և աստ նոյնպէս. նա շինեաց և սա. շէնն մի և փորձութիւնքն մի, այլ ոչ այսպէս և վախճանն, զի և ոչ նոյնպէս հիմունքն։ Քանզի որպէս ասացի, ոչ եթէ փորձութեանն բնութիւն, այլ ստացողին անմտութիւնն գործեաց զկործանումն, որոյ պարտ էր 'ի վերայ վիմի դնել զհիմն շինուածոյն, այլ ոչ այպէս կամեցաւ։

Արդ դու մի վասն տան համարիցիս զասացեալսն, քանզի վասն հոգւոյ են ամենայն բանքս այս որ մծեղէն բանիւքն զունկնդրութիւն գործովք ցուցանեն։ Որպէս շինեաց զանձն իւր երանելին Յոբ։ Իջին անձրևք. հուր, ասէ, էջ յերկնից և եկեր զամենայն հօտսն։ Յարեան գետք. ո՞յք. ստէպ և զկնի միմեանց զանազան հրեշտակք վշտացն, ոմանք յերիվարացն, ոմանք յանդւոցն, ոմանք յուղտուցն, և ևս որք ասացին զկորուստ որդեկաց իւրոց։ Շնչեցին հողմք, որ են դառն բանք կնոջն որ ասէր առն. «Խօսեա բան ինչ 'ի տէր և վախճանեաց»։ Բայց ոչ անկաւ տունն, և ոչ հոլովեցաւ հոգի նորա, և արդարն ոչ գայթակղեցաւ, այլ գոհացեալ ասէր այսպէս. «Տէր ետ և տէր առ. որպէս հաճոյ է տեառն, այնպէս եղիցի»։ Տեսանե՞ս զի ոչ բնութիւնք փորձութեանց, այլ դանդաղական ծուլութիւնք զկործանումն արասցեն։

Իսկ հոգի հզօր որչափ է հզօր, փորձութիւնք այլ հզօրագոյնս գործեն։ Ո՞վ ասէ զայս. նա որ համակ 'ի փորձութեան շրջէր երանելին Պաւղոս. ասէ. «Նեղութիւնք զհամբերութիւն գործեն, համբերութիւնն զհանդէս, հանդէս զյոյս»։ Որպէս ծառք 'ի գնացս հողմոց զօրաւոր և հաստատուն լինին և սաստիկ տարուբերեալ ոչ խլին, այլ 'ի վանել պատրաստք գոն, այսպէս և հոգիք

սուրբք և պարկեշտութեամբ կացեալ ոչ անկանէին 'ի ժողովել փորձութեանց, այլ առաւել զինքեանս 'ի համբերութեան կացուցանէին. որպէս և երանելին Յոբ զօր պայծառագոյն և փայլակնաձև արարին: Արդ այժմ մարդ էր որ բարկացաւ մեզ՝ նմանակից մեզ, և երկեաք յոյժ. իսկ նմա յայնժամ դև չար և գազան անհնարին էր որ բարկանայր, և ոչ միայն բարկանայր՝ այլ և շարժէր զամենայն մեքենայս իւր և մատուցանէր զամենայն հնարագիտութիւնս իւր, և ոչ այսպէս կարաց յանդիմանել զզօրութիւն արդարոյն....:

Զայս միշտ ընդ միմեանս ասասցուք, սիրելիք. վասն այսր ամենայնի մխիթարեսցուք բանիւքս: Եւ վկայք իսկ դուք էք և խնդացողք ձերոյին եղելոյդ՝ եթէ որչափ 'ի փորձանացն յայսցանէ ընկալայք շահս: Ամբարտաւանն այժմ եղև հեզ, յանդուգն հանդարտ, ծոյլն կայտառ. և որ ոչ երբէք յեկեղեցի մտանէր, այլ 'ի հրապարակս կալ բարի համարէր, այսօր փոյթ և բարի յեկեղեցի համարձակեցան լինել: Վասն այսորիկ տրտմիս, ասա ինձ, զի հանդերձ ահիւս զգաստ զքեզ արար ած, զի զքեզ 'ի տրտմութենէս յիմաստութիւն ած քոյին փրկութեան... և զքեզ որ մանաւանդ 'ի փորձանս համարիս կալ, խորհի շիջուցանել զջերմութիւնս զայս, այլ մնայ քոյին փրկութեան: Քանզի որպէս 'ի դիւրութէ տրտմութիւն, այսպէս և 'ի տրտմութենէ պարտ է ակն ունել դիւրութեան: Զի ոչ հանապազ ժամանակ ձմերայնոյ և ոչ հանապազ հունձք, ոչ համակ ալիք խռովութեան և ոչ միշտ խաղաղութիւն 'ի վերայ ծովու, ոչ յարակայ տիւ և ոչ միշտ գիշեր. սոյնպէս ոչ հանապազ տրտմութիւնք, այլ եղիցի և դիւրութիւն. միայն եթէ 'ի տրտմութեանս միշտ գոհասցուք զայ:

Քանզի և երեք մանկունքն 'ի հնոցին ածան, և ոչ այնպէս մոռացան զառաքինութի, և ոչ երկեցոյց զնոսա բոցն. այլ որպէս յառագաստի բազմեալք 'ի սաստիկ չարչարանս նեղութեան փութապէս 'ի պաշտել հրոյն զսուրբ ձեռս իւրեանց տարածանէին յաղօթս: Վասն որոյ պարիսպ եղև նոցա հուրն բորբոքեալ և բոցն պատմուճան և հնոցն աղբիւր. և կապեալս զնոսա առեալ՝ ետ արտաքս արձակեալս. առեալ մարմին մահկանացու, և որպէս զանմահս ընկալաւ. կապեաց զոտս նոցա բռ-

նաւորն, և կապեցին ատք նոցա զզօրութիւն հրոյն։ Ով սքանչելի զարմացմանս. բոցն զկապեալսն արձակեաց, և ինքն հուրն 'ի կապեղոցն կապեցաւ, փոխարկեալ իսկ զընութիւն հրոյն մանկանցն զզուշութիւնն։ Նաև դարձեալ զի բնութիւնն ոչ փոխարկեցաւ, այս են բազմազան սքանչելիք. մնայր բնութեամբն հուր, և ցուցանէր զզօրութիւն իւր. քանզի հուրն ոչ շիջանէր և ոչ զբորբոքումն խափանէր։

Նա և այս են զարմանք սքանչելեաց, զի ոչ 'ի մարմինս որբոցն միայն եղև, այլ և 'ի հանդերձս և 'ի կօշիկս նոցա. և որպէս առաքելոցն եղև, քանզի պատմուճանն Պաւղոսի զգեստս հալածէր և ստուերն Պետրոսի զմահ լուծանէր, սոյնպէս և աստ կօշիկք մանկանցն շիջուցին զզօրութիւն հրոյ....։ Նաև յորժամ մարմինք որբոցն խօսէին, հուրն շիջաւ. իսկ յորժամ 'ի կապանսն հատանեցաւ և խզեաց, ոչ շիջաւ. զկապանսն խզէր, և 'ի հերս որբոցն ոչ մերձենայր....։ Բռնաւորն կապեաց, և հուրն արձակեաց. զի ուսանիցիս զբարբարոսին բարկութիւնն և զհնոցին լսելութիւնն։ Իսկ ընդէ՞ր կապեաց յորժամ կամէր 'ի հուրն արկանել. զի այսուիկ մեծագոյն լինիցին սքանչելիքն և զարմանալի նշանն երևեսցի, զի մի կարծիցես եթէ առաջօք ինչ երևումն էր. եթէ ոչ էր հուրն հուր, ոչ հատանէր զկապանսն։ Նաև որ այլ ես մեծագոյն, ոչ զարտաքոյ նստեալ զինուորսն յափշտակէր. բայց անդ որ արտաքոյ նստէին՝ հուր եցոյց զզօրութիւնն, և որ 'ի ներքս՝ զլռողու̃ն իւր։

Նաև դու զզուշութեամբ միտ դիր ամենայնի թէ զիարդ սատանայ մարտնչի ընդ ծառայս ա̃յ, և 'ի ձեռն այնոցիկ քակի ամենայն զօրութիւն նորա, ոչ իւրովք կամօք, այլ ա̃յ իմաստութեամբն, որ բարի հնարիւք զնորա մեքենաւոր ներգործութիւնն 'ի նորին գլուխն դարձուցանէ, զոր և աստ իսկ տեսանեմք։ Յորժամ սատանայ հնչեաց 'ի բռնաւորն յայն, ոչ գրգռեաց զսիրտ նորա հատանել սրով զգլուխս նոցա կամ արկանել գազանաց կամ այլ այսպիսի օրինակաւ տանջել, այլ արկանել 'ի հուր, զի մի մնասցեն մարմինք որբոցն այնոցիկ. կամէր և զոսկերս նոցա անյայտ առնել, և զաճիւն նոցա ընդ մոխիր որթոյ խառնեալ։ Իսկ ա̃ծ տեղի ետ այսմ, զի բարձցէ զամբարշտութիւն նոցա. և թէ որ-

պէս՝ ես ասացից ։ Ի պարսիկս զՀուրն ած կարծէին. և բարբարոսքն որ բնակեալ էին յերկրին յայն, պատուէին զնա Հանդերձ բազում Հաճութեամբ, և մինչև ցայժմ իսկ. կամեցաւ ած այնուՀետև յարմարոյ Հատանել զամբարշտութեան պատճառն. Թոյլ ետ այսու օրինակաւ տանջել սրբոցն, և առաջի աչաց ամենայն ապըստամբացն ետ ծառայից իւրոց զյաղթութիւն, զի 'ի գործոց իւրեանց Հաւանեցուսցէ զնոսա թէ աստուածք նոցա ոչ միայն յայ, այլ և 'ի ծառայից նորա երկնչին յոյժ ։

Եւ դու միտ դիր վկայից յաղթութեան առ թշնամին, և թէ զիարդ Հակառակորդքն Հիւսէին զպսակն ։ "Եւ Հրաման ետ, ասէ, Նաբուգոդոնոսոր արքայ ժողովել զամենայն զօրավարս և զզօրագլուխս, զկուսակալս, զպետս և զառնուորս, զգործակալս և զամենայն իշխանս աշխարՀացն գալ 'ի նաւակատիս պատկերին զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր. և ժողովեցան ամենեքեան,, ։ Ժողովեաց թշնամին զտեսիլն, և զարձեալ ինքն և տեսողքն զարՀուրեալ գտան 'ի սքանչելեացն այ ։ Նոյն ինքն յարոյց զպատերազմ և զՀանդէսն. ոչ եթէ զինչ և պէտ Հարևանցի մարդկան տգիտաց, այլ պատուականաց և ընտրելոց ամենեցուն, զի արժանաՀաւատալի լինիցի վկայութիւնն բազմաց ։ Եկին կոչեցեալքն վասն այլում պատճառի, և տեսին այլ սքանչելիս, և գնացին զարՀուրեալք. եկին երկիր պագանել պատկերին, և այլն արարեալ զպատկերն գնացին ։

Բայց տես թէ ուր եղաւ ասպարէզս այս. ոչ 'ի քաղաքի և ոչ յեզեր ուրեք, այլ յայտնի յընդարձակ դաշտի բարձրացաւ տեսիլ արարածոյն. քանզի 'ի դաշտին Դուրայ արտաքոյ քաղաքին կանգնեաց զպատկերն, և քարոզ կարդայր զօրութեամբ և ասէր. "Ձեզ ասի ազգք և ազինք և լեզուք, յորժամ լսիցէք զձայն փողոյ, սրնգի, զթմբկի, զտաւղի, զերգոց միաբանութեանց և զամենայն ազգաց արուեստականաց, անկանիջիք և երկիր պագանիջիք պատկերին ոսկւոյ զոր արարի,,. այնպէս պարտ է, ասէ, անկանել և երկիր պագանել կռոցն. "և որ ոչ անկեալ երկիր պագանիցէ, 'ի նմին ժամու անկցի 'ի Հնոց Հրոյն բորբոքելոյ,, ։ Տեսանես թէ զիարդ չարաչար լինի մարտն, և որչափ Հրամանացն նեղութիւնք. այլ դու մի երկնչիր. զի որչափ յաւելու և աճեցուցա-

նէ զմեքենայս իւր Թշնամին, այնչափ մանաւանդ առաւելապէս զմանկանցն առաքինութիւն։

Վասն որոյ այնչափ երգք միաբանութեան, ընդ նմին և սաստկութիւն հրոյն բորբոքելոյ, զի ահ և երկիւղն բազմապատիկ զանձինս եկելոցն զարհուրեցուցանէր։ Խիստ էր խորհուրդն 'ի վերայ մարդկանն և դժուարախոհ, այլ և ամենայն արուեստք եղանակօք երգոցն միաձայնութեանց զոգիս լսողացն կակղացուցանէր, և մեծ զխորհուրդն տայր վարկանել։ Սոսկալի էր և երկեղական տեսիլ բոցոյն, և էր ահ և երկիւղ ամենեցուն. նախ հուրն բորբոքեալ, և զի աչօք բերէին զերկիւղն յանձինս իւրեանց։ Այլ այն ամենայն զարհական մանկունսն ոչ յանդիմանեաց....։

Եւ յորժամ ամենեքեան երկիր պագին և յաղթեցան, ապա 'ի մէջ մնացին զմանկունսն, զի պայծառագոյն լիցի յաղթութիւն նոցա. զի թէ միայն յայնչափ բազմութենէ ժողովոյն յաղթեալ բանաւորն և նոքա քարոզեալք էին, ոչ էին այնպիսի սքանչելիք, յորժամ ոչ էր ոք գայթակղեալ և սոքա առաջի կացեալ էին և քաջալերեալ։ Այլ այս է բարձրագոյն և զարմանալի, զի անկումն բազմութեանն ոչ երկեցոյց զնոսա, և ոչ ասացին զայն զոր բազումք բազում անգամ ասացին. եթէ նախ միայն մեք հանդերձեալ էաք երկիր պագանել պատկերին, յիրաւի պատժէաք. իսկ զկնի այսմ ամենայն բիւրուցս երկիր պագանել՝ ո՞վ է որ ոչ առնէ թողութիւն, կամ ո՞վ որ ոչ առնէ արժանի պատասխանւոյ։ Այլ ոչ ինչ յայսցանէ ասացին, և ոչ ըղմտաւ ածին ինչ այսպէս նոքա։

Մ՝իտ դիր աստանօր և մատնողաց նոցա չարագործութեանն, որպէս չար սովորութեամբ և դառնութեամբ իւրեանց բամբասէին զսուրբսն. «Են աստ արք Հրեայք զորս կացուցեր 'ի վերայ աշխարհիս Բաբելացւոց»։ Ոչ եթէ միայն յանդիման ազգացն յիշեցին զանուանս մանկանցն և զպատիւ իշխանութեան նոցա թողին, այլ որ առաւել բորբոքէր զբարկութիւն թագաւորին՝ զայն բերէին 'ի մէջ, եթէ զծառայսն զգերիսն զկորուսեալսն զորս կացուցեր իշխանս 'ի վերայ մեր, նոքա զայսչափ պատիւս անարգեցին և թշնամանեցին զպատուողդ։ Վասն այսորիկ ասէին. «Երբայեցիքն զոր կացուցեր

մինն սպանումն գործեաց, իսկ միւսն օրէնս գրեաց հո-
գեւորականս. ըստ որում մինն սուր և միւսն գրիչ կո-
չեցան ոչ ինքեանց բնութեամբ, այլ 'ի կամաց յոր սո-
վորեալ էին. քանզի բնութիւն լեզուի մի է, այլ գործքն
չէ մի: Դարձեալ վասն բերանոյ այսպէս ասէ. "Անէծք
և դառնութիւն և նենգութիւն 'ի բերան նորա". յայտ
արարեալ թէ 'ի կամաց ոմանք զբերանս իւրեանց թու-
նիւք և չարեօք են լցեալ. և նոքա ոչ այսպէս, այլ "Բե-
րան իմ խօսեսցի զիմաստութիւն և խորհուրդ սրտի
իմոյ զհանճար":

Իսկ զձեռաց՝ ոմանք, ասէ, ունին ձեռս լցեալ անօ-
րէնութեամբ; զորս անգոսնեալ ասէ. "Աջ նոցա աջ
է մեղաց, և ձեռք նոցա լի են արեամբ": Այլ և ինքն
ձեռս, որ ոչ այլ ինչ գործէր, բայց միայն յերկինս տա-
րածանէր կարդալ առ Ած. "Համբարձումն ձեռաց ի-
մոց, ասէ, պատարագ երեկոյին": Դարձեալ վասն սըր-
տի Ճշմարտութեամբ այսպէս ասէ. "Ի սիրտս իւր ժո-
ղովեաց զանօրէնութիւն, և սիրտ նոցա նանրեալք են":
Իսկ վասն իւրոյ անձինն ասէ. "Բխեաց սիրտ իմ ըզ-
պատգամս քո բարիս, և ասացից զգործս իմ թագա-
ւորի": Իսկ վասն ականջաց այսպէս տայ իմանալ, եթէ
ոմանք ունին լսելիք գազանային յանդուգն անզեղջ, և
'ի չարիս վարին նոքօք, ասէ. "Որպէս իժի և քարբի-
ջի խցեալ է զականջս իւր": Այլ ինքն լսելեօք ընդու-
նէր զԱծային զբանսն զկանխաւ յայտնեալսն. "Լսելի
արա ինձ զցնծութիւն և զուրախութի". և թէ "Բա-
ցից առակաւ զբերան իմ". և դարձեալ "Բացից զբե-
րան իմ յերգս օրհնութեան":

Զայս ամենայն իմացեալ յամենայն չարեաց պարըս-
պեսցուք զանձինս մեր, և այսպէս յանդիման լինի մեզ
բարութիւնն Այ: Արդ արասցուք զանդամս մեր զէն ար-
դարութեան Այ, և զաչս և զբերան, զձեռս և զոտս,
զսիրտ և զլեզու և զամենայն անդամս մեր խրատեսցուք
առաքինութեան ընդունելի լինել. և զասացեալսն սի-
րոյ ձերոյ զերկսն զայն զխրատ յիշեցէք, զոր աղաչե-
ցաք՝ մի ունել ոխս, և մի խօսել չար որոց տրտմեցու-
ցանեն զձեզ, և զչար սովորութիւն երդման 'ի բաց բար-
ձէք 'ի բերանոյ ձերմէ: Արդ վասն այլ երկուց պա-
տուիրանացդ յայլում ժամանակի պատմեմ ձեզ, զի 'ի

Digitized by Google

նութեան ունիցիմք զսոյն այսօրիկ, զի աստ և 'ի հան-դերձեալն ընկալցուք զաւրն շնորհօք և մարդասիրու-թեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր միանգամայն հանդերձ հոգւովն սրբով փառք յաւիտեանս. ամէն:

## ՃԱՌ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Դարձեալ առ ժողովուրդն զի քաղցրութեամբ ամփոփեսցեն եկեղեցւոյ պաշտօ-նէից ողջմտապէս 'ի վերայ չարաչար պատուհասութեան Յոբայ և Նինուէա-ցւոցն. և զի քան 'ի մահուանէ 'ի մեղաց պարտ է երկնչել. և թէ ամե-նայն ջանիւ պարտ է փախչել յերդմանէ:

Երեկ մանկանցն և զհնոցին բաբելացւոց պատ-մութեամբ չարչարութեան զհուրն պարտ իցէ մխի-թարել և աղաչել զսէր ձեր՝ երեկ ասացաք. Եւ տա-նել այսօր 'ի պատմութենէն Յոբայ և զվէրս արդա-րոյն և զաղբեւան յիշեսցուք, զայն աղբեւան որ պատուա-կանագոյն է և ամեփական քան զաթոռ թագաւորական. Քանզի 'ի թագաւորական աթոռոյ ոչ շահ եւս իցէ տե-սողացն. առժամանայն թուի վայելուչ, այլ մխիթարու-թիւն ոչ ունի: Իսկ զՅոբ տեսանելով յաղբեւան, ա-մենայն օգտութեամբ լնու և բազում իմաստասիրու-թեամբ: Վասն որոյ ընդ ծով ելեալ ջանան գան հեռա-գոյն 'ի ծագաց աշխարհի և փութան յերկիրն արաբա-ցւոց տեսանել զաղբեւան զայն, և տեսեալ երկիր պա-գանեն, և զվարս տառապանացն զայնմ պատահելոյ, և զա-րեանն ցնդուածն որ պատուականագոյն է քան զոսկի. քանզի ոչ այնպէս պայծառագոյն փայլեն ծիրանիքն որ-պէս մարմինն այն, ոչ թէ 'ի նարօտաներկաց, այլ յիւր-մէ արեանէն ներկեալ: Եւ վէրքն այն պատուականագոյն է քան զականս պատուականս. քանզի բնութիւնք ա-կանց և մարգարիտ ոչ ինչ օգտեն վշտացելոց, այլ այն վէրք մխիթարիչ է ամենայն տրտմութեան:

Եւ զի ուսանիցես թէ ճշմարիտ այսպէս է, եթէ կո-րուսանէ ոք որդի հարազատ և միածին, ցոյց նմա բազ-մութիւն մարգարտի, և ոչ մխիթարի տուպն և ոչ բժըշ-

կին երկունքն. իսկ յորժամ զվէրսն Յոբայ յիշեսցես, դիւրաւ փարատես զցաւս վշտացն ասելով այսպէս. ընդէր ողբաս, ով մարդ, դու կորուսեր մի որդի, և երանելին այն բողբոջն բաժանեցաւ 'ի դասուց որդւոց իւրոց, և դարձեալ մարմնով իւրով ընկալաւ խոցումն վիրաց սաստիկ յոյժ, և մերկ նստեալ 'ի վերայ աղբեաց՝ որդնալից եղեալ և որդունք գնային 'ի նմանէ: Եւ փոքր մի և բնաւին մաշեալ լինէր մարմին արդարոյն, արդարն, ճշմարիտն, ա̃ծապաշտն, խոտորեալն յամենայն չարեաց, որ զա̃ծ ունէր վկայ իւր առաքինութեանն: Յորժամ ասիցես զբանս զայս վշտացելոյն, զամենայն վիշտս սգոյն փարատեցեր և բարձեր զամենայն երկունսն. և յայնժամ երևեսցի վէրք արդարոյն պատուական քան զմեծագին մարգարիտս:

Կենդանագրեսցուք այսուհետև յանձինս մեր զըմբիշն զայն բարեպաշտութեան, և համարեսցուք եթէ տեսեալ եմք զաղբեան զայն և զարդարն նստեալ 'ի վերայ նորա, զկերպարանն ճշմարիտ, զգեղեցիկն քան զամենայն ոսկի պատկերաց, զորոյ զորպէսն ասել ոչ գիտեմ. և կարե՞մ գտանել նիւթ պատուական այնպիսի որ կարիցէ յաղթել ախտացեալ մարմնոյն այնմիկ. զի բազմաց որոց շուրջ հային, քան զամենայն նիւթս պատուական է բնութիւն այնր մարմնոյ, և վէրքն պայծառագոյն քան զնշոյլս արեգական. քանզի փայլումն արեգականս զմարմնոյ 'աչս լուսաւորէ, իսկ նորա տեսակ ըզմիտս ամենեցուն լուսաւորէ. այն տեսիլ միանգամայն զսատանայ կուրացոյց և անցեալ 'ի բաց գնաց և այլ ոչ ևս երևեցաւ յետ այնորիկ:

Դու ինքնին, սիրելի, յայսմանէ ուսիր եթէ որչափ իցեն շահք 'ի տրտմութեանց եթէ գոհութեամբ բերիցես: Յորժամ արդարն մեծանայր և էր 'ի դիւրութեան, արհամարհէր զնա սատանայ. թէպէտ և սուտ էր, սակայն գտանէր պատճառս ասելով. “Միթէ ձրի պաշտէ Յոբ զտէր„: Իսկ յորժամ մերկացոյց զնա և արար աղքատ, ոչ համարձակէր շշնջել ինչ: Յորժամ 'ի մեծութեան էր, խորխտայր մարտնչել ընդ նմա և գայթակղեցուցանել սպառնայր. իբրև աղքատացոյց, 'ի բաց գնաց: Յորժամ առողջ էր մարմնով, սատանայ համբառնայր զձեռս իւր. իսկ իբրև ելից վիրօք զան-

դամ արդարոյն, խոցեալ փախեաւ։ Տեսէ՞ր թէ որչափ վերագոյն է աղքատութիւն քան զմեծութիւն և հիւանդութիւն քան զառողջութիւն և փորձութիւն առաւել քան զդիւրութիւն, որք զուարթութեամբ ընդունին, և այնու պատուական և պայծառ արասցեն։

Ո՞վ ետես կամ ո՞վ լուաւ այսպիսի մարտ սքանչելի։ Յարտաքին պատերազմունս մրցողք յորժամ զընդդիմակացն զգլուխս հատանեն, յայնժամ յաղթողք երևեալ պսակին. իսկ աստ յորժամ եհար զմարմին արդարոյն ազգի ազգի վշտօք և թարախ վիրացն գնայր, յայնժամ յաղթահարեցաւ և գնաց՚ի բաց...։ Զի՞նչ եղև, ո՞վ սատանայ, վասն է՞ր արդեօք հեռացար. ո՞չ զոր կամեցար՝ ամենայն եղև, ո՞չ սատակեցեր զհօտս նորա, զխաշինս, զերամակս երիվարացն, զիշոց և զջորւոց, ո՞չ և զդաստ որդւոց նորա կորուսեր և զամենայն մարմինն հարմամբ խոցեցեր. արդ վասն է՞ր հեռացար ասա ինձ։ Վասն զի ամենայն որպէս կամեցայ՝ եղև, ասէ. և վասն որոյ լինելն կամեցայ ընդ որոյ մանաւանդ զամենայնն արարի՝ այն ոչ եղև, և ոչ գայթակղեցաւ արդարն. վասն այնորիկ զամենայն արարի; զի այս զոր կամեցայ՝ ելցէ ՚ի բերանոյ նորա։ Եւ այս իսկ ոչ եղև, յեղելոց վնասուցն և ՚ի կորստենէ որդւոցն և ՚ի վիրաց անդամոցն ինձ առաւելութիւն ոչ եղև. այլ քանզի խորհեցայ լինել, ինձ հակառակն եղև, և զիմ թշնամին պայծառագոյն և փայլակնաձև գործեցի։

Իմացայք արդեօք, ո՞վ սիրելիք, եթէ որչափ շահք ՚ի տրտմական փորձութեանց լինի։ Բարիոք է յորժամ ողջանդամ ոք իցէ. եւ առաւել սեփական լինի յորժամ հարկանի վիրօք ամենայն մարմինն եթէ գոհանայցէ. քանզի սպիտակն գեղեցիկ երևի, այլ յորժամ կարմրանայ՝ անբաւ առնու զվայելչութիւն գեղեցկութեանն...։ Ոչ այսպէս պայծառագոյն է արքայ նստեալ ՚ի վերայ աթոռոյ իւրոյ, որպէս արդարն այն մօտահաս էր և բարձրագոյն. զի զկնի թագաւորական աթոռոյն՝ մահաբեր վիշտքն, և զհետ այնմ աղբեացն՝ երկնից արքայութիւնն։

Զայս խորհեսցուք ամենեքեան և հանցուք ՚ի բաց զտխրութիւնս որ կալեալ է զանձինս մեր։ Եւ ես վասն այսորիկ առաջի դնեմ ձեզ զտոհմ արդարոյն ոչ զի զո-

մերցիս զասացեալս, այլ զի նմանօղք լինիցիք առաքինութեանն, և ուսանիցիք 'ի նորին գործոցն զի ոչ է չար մարդկան նեղութիւնք, այլ մեղքն միայն. ոչ աղքատութիւն, ոչ հիւանդութիւն, ոչ անարգանք, ոչ փորձանք, ոչ նախատինք, ոչ որ քան զամենայն չարիս վատթարագոյն է մահ: Անուանք միայն են այսոքիկ որք իմաստասիրեն զեղելոցն. անուանք իրաց ինչ և գործոց պատմութիւն. այլ Ճշմարիտ սուգ այն է որ գոհանայ զմեղս, և նա զոր անձն ոչ ունիցի՝ արտասուէ նմա:

Զի՞նչ ունիցի զժուարութիւն մահն, ասա ինձ. զի փոփոխեալ 'ի բարի նաւահանգիստն առաքէ զքեզ և յանխռովական կեանսն. թէպէտ և ոչ սպասանէ մահ, նա ինքն երթայ ըստ օրինաց բնութեանն, և ապա զի ո՞չ լուծանէ զմարմինն 'ի հոգւոյն. և եթէ այժմ ոչ լինիցի այս, փոքր մի յետոյ լինելոց է, վասն էր այժմ երկնչիցես: Զայս ասեմ ոչ եթէ անձն ունիմ վտանգից կամ տառապանաց իրաց, քաւ լիցի. այլ զի ամաչեսցեն որք 'ի մահուանէ երկնչին: Արդ ասա ինձ որք այժմ անձն ունիցին բարութեան զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ հասանէ՝ ուստի քո այսպիսի ցուցանէ քեզ հանգիստ, և դու լինիս ապերախտ և ծոյլ. և ոչ ծոյլ միայն, այլ և երկնչիս և սարսես:

Իսկ մրցանակ վատթար և զարշելի է այս որ դու վասն մահու երկնչիս, ուր Պաւղոս վասն այսչափ ասէր կենացս ասէ. «Աշխարհս այս հեծէ մինչև աստանօր. և մեք ինքն որ զպտուղ հոգւոյն ունիմք, անձամբ զանձինս մեր հեծեմք՝ որդեգրութեան ակն կալեալ փրկութեան մարմնոյ մերոյ»: Զայս ասաց՝ ոչ եթէ անպէտ լինելով այսմ կենացս ասէր, այլ 'ի հանդերձեալսն փափագէր: Սէ. Ճաշակեալ 'ի շնորհացն, առ զգարդեանն, վերացեալ մինչև յերրորդ երկինս, տեսեալ զփառսն զայն զանճառելի, տեսեալ զպայծառութիւն զայնր երանութեան, խնայեալ եմ եթէ յորոց փառաց ստորանկեալ եմ և կամ ասա. վասն այսորիկ հեծեմ:

Դու արդեօք ասա ինձ արդ. եթէ ոք մուծանէր ըզքեզ 'ի գաւիթ թագաւորական և ցուցանէր քեզ յամենայն կողմանց զփայլս զեղեցկութեան որմոցն և զայլ ամենայն զվայելչութիւն տաճարին, և ապա տանիցի զքեզ անտի և ածցէ 'ի խուղ աղքատի, և յետ սակաւ

Digitized by Google

ժամանակի խոստանայր տանել զքեզ անդրէն յարքու-նական զաւիթն յայն ուստի ելեր՝ վասն քեզ շնորհեալ զի հանապազ անդ բնակեսցես, ո՞չ քոյին կամօք դժուա-րանայիր և տագնապէիր ՚ի սակաւ աւուրսն յորս կայիր ՚ի խուղն աշխարհի։ Այնպէս խնայէիր վասն երկրի և երկ-նից, և հառաչեաս և հեծեաս ընդ Պաւղոսի ոչ վասն մա-հու, այլ յաղագս այսր կենաց։

Այլ աւելի ասեմք. տուր մեզ լինել որպէս Պաւղոս, և ոչ երկիցուք ՚ի մահուանէ։ Այլ ես ասացից. և ո՞վ իցէ որ արգելուցու զքեզ լինել իբրև զՊաւղոս, ո՞վ մարդ. ո՞չ ապաքէն աղքատ էր Պաւղոս, ո՞չ առանց դպ-րութեան էր։ Եթէ մեծատուն էր և ՚ի տոհմէ մեծա-մեծաց, ունէին առ նա աղքատք պատճառս և նախանձ թերևս, և պատճառէին զաղքատութիւնս իւրեանց. իսկ այժմ զայսցանէ չունիս ինչ ասել պատճառս. քան-զի ձեռնարուեստ էր երանելին այն, և հանապազ յիւ-րոց կերակրոցն կերակրէր։ Եւ դու անգամ յառաջ-նմէ կալեալ ես ՚ի հարց քոց զբարեպաշտութիւն, և ՚ի նախնի հաւատոյն սուրբ գրովք սնար և շրջեցար և յա-ռաջ եկիր. իսկ նա հայհոյիչ և հալածիչ և անարգող այսր ամենայնի, այլ և աւար հարկանէր զեկեղեցի. բայց սակայն յանկարծակի փոփոխեալ ՚ի բաց ընկեց զայն ամենայն առաւել անբաւ յօժարութեամբ, և գո-չելով ասէր. "Նմանողք ինձ եղերուք որպէս և ես Քրիս-տոսի,,։ Արդ նա Տն եղև նմանող, իսկ դու ընկերի քում ո՞չ նմանեսցես որ ՚ի սկզբանէ ՚ի բարեպաշտութեան կա-ցեալդ ես։

Ո՞չ գիտես եթէ որք ՚ի մեղս են, թէպէտ և կենդա-նիք իցեն, մեռեալ են. և որք յարդարութեան կեան, թէպէտ և մեռանին, կենդանիք են։ Եւ այս ոչ եթէ իմ է բանս, այլ զոր Քրիստոս հրամայեաց Մարթա-յի. ասէ՝ թէ "Որ հաւատայ յիս, թէպէտ և մեռա-նի, կենդանի է,,։ Մի՞թէ սոսկ բանք իցեն ասացեալքս։ Դու եթէ իցես քրիստոնեայ կամ հաւատաս ՚ի Քրիս-տոս, ցոյց ինձ զհաւատս հանդերձ գործովք։ Ո կարող ցուցից զհաւատս իմ հանդերձ գործովք։ Եթէ զմահ արհամարհիցես. քանզի թշնամեաց անհաւատից այ-սու ընդդէմ յաղթեսցես։ Նոքա յիրաւի երկնչին ՚ի մա-հուանէ, վասն զի ոչ ունին յոյս յարութեան. իսկ դու

որ ես բարձրագոյն Ճանապարհաւ գնաս և վասն այնր յուսոյ իմաստասիրես, ապա զխորդ գտանիցես Թողութիւն, յարութեան յոյս ունելով՝ իբրև զանհաւատս յարութեան երկնչիս 'ի մահուանէ։

Բայց ոչ 'ի մահուանէ երկնչիմ, ասէ, կամ 'ի մեռանելոյ, այլ 'ի չար մահուանէ՝ որ 'ի ձեռաց Թշնամեաց մեռանելն իցէ, անարգութեամբ և չարչարանօք, և սրով զգլուխ հատանելով։ Իսկ Յովհաննէս ոչ առաքէին չար մահուամբ մեռաւ՝ սրով զգլուխն հատեալ, և ամենայն սուրբ վկայքն ևս դժնդակ քան զնոյն մեռան. ոմանք սրով, ոմանք հրով կատարեցան 'ի կենաց իւրեանց, ոմանք 'ի ծով անկան, այլք 'ի վախից մղեցան և կերք 'ի ժանեաց գազանաց, և որ այնպիսիք են մեռան ամենեքեան։ Բայց ոչ է այսպէս մեռանելն չար, ով մարդ, տանջանօք և չարչարանօք, այլ որք 'ի մեղս մեռանին։ Լուր այժմ մարգարէին ըստ այսմ զիմաստասիրելն. "Մահ մեղաւորին, ասէ, չար է"։ Բայց որ զկնի այսմ վարուց գնալով անդ 'ի տանջանաց ազատ է և անհոգ. իսկ նա 'ի հալածանս պատժոց անկեալ յանմահս, ուր որդունքն Թիւնաբերք, հուրն անշէջ, խաւարն արտաքին, լալն և կրճել ատամանց, նեղութիւնքն և տրտմութիւնք և յաւիտենական դատապարտութիւն։

Յորժամ այս ամենայն կայ և մնայ մեղաւորաց, զինչ օգուտ իցէ կամ 'ի տան մեռանել կամ 'ի մահիճս վճարել զկեանս իւրեանց։ Իսկ արդարոցն այն իսկ է առաւել ցնծութիւն 'ի սրոյ մեռանել կամ 'ի հրոյ կամ 'ի ջրոյ՝ զկենցաղս զայս 'ի բաց եդեալ և գնալ 'ի հանդերձեալ յանմահ բարութիւնն. ապա Ճշմարիտ չար մահ մեղաւորին է։ Յայտնի էր մեծատանն մահ, այն որ զՂազարոս անտես առնէր. քանզի 'ի տան փափկանեցաւ և 'ի մահիճս, և իւրայոցն մատակաց եղեալ այնպէս վճարեաց զկեանս իւր և գնաց անդ։ Բայց զինչ պարգևէր 'ի տապ տապակին, և ոչ փոքր ինչ մխիթարութի կարաց գտանել անդ 'ի բարութեց այսմ անցաւոր կենցաղոյս։ Բայց Ղազարոս ոչ այսպէս, այլ 'ի նորին դրան անկեալ կայր, և գայլին շունք և լեզուին զվէրս նորա, մեռաւ դժնդակ մահուամբ. զինչ դժուարին է քան զսովամահ լինել. այլ երթեալ 'ի կեանսն յանն վայելեաց զյաւիտենական բարութիւնսն փափկանայր

Digitized by Google

'ի գոգն Աբրահամու։ Արդ զի՞նչ վնաս եղև նմա բռնութեամբ մեռանելն, կամ զի՞նչ օգուտ եղև մեծատանն մեռանելն առանց պատժոց։

Դարձեալ ասեմ՝ եթէ ոչ 'ի սաստիկ մեռանելոյ երկնչիմք, այլ յանիրաւ մահուանէ։ Ո՞ ինչ խօսիս, ով մարդ, ասա ինձ, յանիրաւ մահուանէ երկնչիս. և զիա՞րդ, կամիցիս յիրաւի մեռանել։ Եւ զի՞նչ իցէ թշուառական քան զայս զի ոչ անիրաւ մահու, այլ ըստ իրաւանց կամիցիս մեռանել. մանաւանդ պարտ է երկնչել 'ի մահուանէ յորժամ յիրաւի մեռանիմք, քանզի յայսմ անիրաւ մահուանէս ամենայն սրբոց հաղորդ գտանիմք...։

Կամի՞ք զի ասացից ձեզ, ով սիրելիք, եթէ յորժամ մահուանէ պարտ է երկնչել։ Ոչ է ազդեալ առ մեզ գութ արքայութեան և զարթուցեալ զմեզ փափագումն հանդերձելոցն. եթէ ոչ՝ անտես առնէաք զամենայն անցաւորս, որպէս և երանելին Պաւղոս դարձեալ առ հռոմայեցիսն ասէ եթէ "Ոչ են արժանի մահ և չարչարանք ժամանակիս հանդերձեալ փառացն որ յայտնելոցն է 'ի մեզ". և եթէ "Ոչ գիտեմք զերևելիս, այլ զաներևոյթսն"։ Այլ մեք ոչ երկնչիմք 'ի գեհենէն, վասն այնորիկ երկնչիմք 'ի մահուանէ. և ոչ եմք յանտի տանջանացն ազատեալք, ըստ որում փոխանակ 'ի մեղաց 'ի մահուանէ երկնչիմք. եթէ ըմբռնէր զանձինս մեր երկիւղն այն, ոչ արդեօք այսու վարուք շրջէաք։ Եւ զայս ոչ հեռագոյն ուստեք, այլ յայսմանէ յորոց եկեալ է 'ի վերայ մեր յաւուրս յայսոսիկ՝ փորձիւ առնել յայտ։

Եթէ վասն անչափ հարկաց եկեալ թագաւորական հրաման, և անզերծանելի կարծէաք 'ի հարկէ անտի հրամանին, ո՞չ ապաքէն ամենեքեան նեղեալ լինէաք և հակառակէաք, դժուարանայաք, ամբոխէաք սաստիկ, ասէաք ընդ միմեանս ամենեքեան. անմխիթար են կեանք մեր, քաղաքս աւերի, ոչ ոք կարիցէ զդէմ ունել բազմութեան հարկացս այսոցիկ։ Եւ ամենեքեան սպառէին որպէս 'ի կատարածի վշտաց։ Եւ այլ ևս դարձեալ և յորժամ եղև համարձակութիւնս, և ոմանք անարգ և բազմանախատք որ զօրէնս քակեցին և զպատկեր թագաւորին կոխեցին, վասն այսր գործոյ զամենեսեան արկին 'ի վիշտս, և ըստ այսմ զի բարկացուցաք

Digitized by Google

զԹագաւորն՝ երկնչեմք յոյժ, այժմ ոչ խոստանէ զմեզ առնուլ ընչից մերոց․ այլ փոխանակ այնր այլ ինչ լսեմք 'ի բազմաց, զի այսպէս ասացէ զամենայն զոյս մեր Թագաւորն, և բարիոք համօք 'ի բաց կամք յազատականաց և յընչից մերոց, միայն եԹէ խոստանայցէ ոչ կեցուցանել զանձինս մեր։

Որդ քան զզաւ երկիւղի մահու 'ի վերայ մեր խաղԹացեաց զմեզ առնուլ ընչիցն մերոց․ և յորժամ եղև համարձակուԹիւնս այս անօրէնուԹեանն և եհաս երկիւղ մահու, զերկուսն ընչիցն 'ի բաց մերժեաց․ արդ եԹէ այսպէս ըմբռնէր զմեզ երկիւղ գեհեննին, մահու երկիւղ ոչ զարհուրեցուցանէր զմեզ։ Ո՛ր որպէս բան մարմնոյ յորժամ երկրորդ և մեծ երկիւղք կայցեն 'ի վերայ՝ դիւրաւ միւսն ծածկի, այսպէս և այժմ եղև առ գեաք․ այսու էր մեռալ յանձինս մեր երկիւղ հանդերձեալ տանջանացն, բայց մարդկային երկիւղն Թագեալ զայն։ Իսկ եԹէ ոչ հանապազ և ընդ փոյԹ յիշեսցէ զգեհենն, ծաղր առնէ զվախճանն․ և այս ոչ եԹէ յայսմ վտանգէ միայն ազատէ, այլ 'ի յայնմ ահաւորէն հրոյն փրկէ զմեզ․ զի որ հանապազ երկնչի 'ի գեհենէն, ոչ երբէք անկանի 'ի հուր գեհենին, զի միշտ զգոյշ ահիւ կայցէ։

Ծուք առ ձեզ այժմ 'ի դէպ ժամանակի ասել․ "Եղբարք, մի՛ մանկունք լինիք մտօք, այլ 'ի չարեաց տղայացարուք"։ Ահանզի մանկունք տղայք յերեսաց[1] մարդկան երկնչին․ քանզի յորժամ բարձցեն զնոսա և հանդիպեսցին ջահաբարձի զի ունիցի ջահ լուցեալ, առանց պատրաստելոյ մեկնեն զձեռս իւրեանց 'ի բաց ձգագին․ և ուստի չէ պարտ խուսել յերեսաց՝ տղայոց, բայց որ ճշմարիտն է՝ ոչ երկնչին 'ի հրոյն։ Այնպէս և մեք 'ի մահուանէ իբրև յերեսաց երկնչիմք, որ դիւրագոյն է արհամարհել․ և 'ի մեղաց որ է ճշմարիտ և տարապարտելի երկիւղ, ոչ երկնչիմք։

Իսկ այսպիսի սովորուԹիւն ոչ եԹէ յիրացն բնուԹենէ է, այլ յանմտուԹենէ մերոյ։ Ո՛ր մահ երբէք ոչ ինչ է․ որպէս զհանդերձ ոչ մերկանայցէ, զի և մարմինս այս որպէս զհանդերձ ծածկեալ է զհոգի․ և

1 Իմա՝ դիմակ, նմանապէս և ջահի երկիւղ։

զայս փոքր մահուամբ 'ի բաց դնելով՝ պայծառագոյն դարձեալ առնուցումք։ Եւ ինչ է մահ, ճանապարհ է առժամանակեայ և քուն ընդ երկար քան զսովորականն։ Եթէ 'ի մահուանէ երկնչիս, երկիր և 'ի քնոյ. և եթէ ընդ փոխճանել ուրուք տրտմիս, ապա ապրամեաց և վասն կերակրոյ և ըմպելւոյ. զի որպէս այսոքիկ ըստ բնութեան են, նոյնպէս և մահ։ Արդ մի տրտմեցուցէ զքեզ բնութեանս կարիք, այլ տրտմեսցիս ընդ տխլութեան չարեաց. և մի զփոխճանեալն ողբասցես, այլ զախտաւորն որ մեղօք կեան։

Սամիք զի և այլ պատճառս առաջիկ ձեզ թէ ընդէր երկնչիմք 'ի մահուանէ։ Վասն զի ոչ կամք ստոյգ համարձակութեամբ, և ոչ ունիմք խորհուրդ անզբաղ 'ի բարիս. Եթէ այս ոչ էր, չէր ինչ որ զմեզ երկեցուցանէր, ոչ մահ, ոչ տուգանք ընչից, ոչ սպառնալիք և ոչ որ սոցին նման են. քանզի զայր առաքինի և սուրբ ոչ ինչ կարիցէ վնասել և ոչ 'ի բաց հանել զհոգւոյն բարի ցանկութիւնն։ Զինչ ինչ գործեսցէ ոք այնպիսի որ կարիցէ զայր զգօն արիական և պատրաստ տրտմեցուցանել. կորուսանէ՞ զինչսն, այլ նա յերկինս ունի զմեծութիւն. հանէ՞ 'ի հայրենեաց, նա զանձն առաքեալ 'ի վերին քաղաքն համարի. եդ 'ի կապանս, այլ որ ստոյգ կապանքն են՝ յայնմանէ արձակեալ է, և զարտաքին շղթայս բնաւ ոչ զգայ, նա զի խնդայ եւս. սպանանէ՞ զմարմինն, այլ գիտէ զի յարիցէ կանխաւ։ Իւ զոր օրինակ որ մտցէ ընդ ստուերի կամ հարկանէ զօդս և ոչ ինչ ազդիցէ, այլ յիւրմէ թանկցի 'ի զօրութենէն, նոյնպէս և որ ընդ արդարոյ մարտնչի, միայն ստուերամարտ լինի և ընդ իւր զօրութիւնն մարտնչի, իսկ յարդարն և ոչ մի վէր հասուցանել կարէ։

Հայր իմ, ասէ, լինել յարքայութեանն երկնից, և թէպէտ և այսօր եկեսցէ իմ տարաժամն, և ընդ այնր ցնծամ յոյժ, զի վաղվաղակի առաքեալ լինիմ 'ի ստոյգ բարութիւնսն յայն։ Այլ այս մանաւանդ է սուգ և տրտմութիւն զոր ողբամք և մեք, զի բազմութեամբ մեղօք կեամք, և անտի արքայութեան բարութեանց ոչ հանդիպիմք. Արդ դու այսուհետև թող անդր 'ի բաց ողբալ զմահ, և ողբա զյանցանս քո զի եղծանիցես զայն անձնայն. Այս է ստոյգ տրտմութիւն որ ոչ

հու և ոչ այլ ինչ յամենայնէ որ գայցէ 'ի վերայ մարդոյ տրտմութիւն՝ կարիցէ յարուցանել զղջ, բայց միայն զմեղս կորուսանէ և կործանել անյայտ գործէ, ապա բարիոք ասացաւ եթէ վասն այսր միայն եդաւ 'ի մեզ: Ո՛չ այսուհետև վասն ընչից, այլ վասն մեղաց վշտասցուք միայն. ասա բազում շահք են մեզ 'ի տրտմութենէ: Կորեա՞ն ինչք քո, մի՛ տխրիր, զի ոչ ինչ շահիս. մեղա՞ր, տրտմեաց յոյժ և անդէն օգտեցիր:

Տես արդ զիմաստութի՞ն այ. երկուս իրս ծնաւ մեղքն մեզ, տրտմութիւն և մահ. զի “Յաւուր յորում ուտիցէք, ասէ, մահու մեռանիցիք”. և դարձեալ ցկինն ասէ. “Տրտմութեամբ ծնցիս որդիս”: Ի յերկուց յայսցանէ զմեղսն քակեաց, և որդւոյն զմայրն թողուլ հրամայեաց: Զի զկնի տրտմութիւնն և մահ զմեղսն բարձցէ, յայտնի եղև այս 'ի վկայիցն. և դարձեալ զսոյն և Պաւղոս յայտնէ ասելով առ մեղուցեալսն. “Վասն այնորիկ են 'ի ձեզ հիւանդք և ախտաժէտք, և շատ եւս այն են որ ննջեցեալքն են”. և դարձեալ առնու և ասէ. “Եթէ զանձինս քննեաք, ապա ոչ դատապարտէաք. և եթէ դատիմք, 'ի տեառնէ խրատիմք զի մի ընդ աշխարհի դատապարտեսցուք”...:

Ոչ այսուհետև երկիցուք 'ի մահուանէ, այլ երկիցուք միայն 'ի մեղաց: Եւ զայս ասեմ ոչ եթէ չար ինչ ակն ունելով, քաւ լիցի. այլ կամիմ երկիւղած լինել ձեզ, զի այսպէս միշտ մնայցէք յօրէնսն Քրիստոսի լնուլ հանդերձ գործովք: “Եթէ ոք ոչ առցէ զխաչ իւր և եկեսցէ զկնի իմ, ասէ, չէ ինձ արժանի”: Զայս ասաց ոչ զի խաչափայտ 'ի վերայ ուսոց բարձցուք, այլ զի ըզմահ հանապազ կալցուք առաջի աչաց մերոց. որպէս և Պաւղոս ամենայն աւուր մեռանէր և այպն առնէր զմահու: Արդ և դու զինուոր զքեզ համարեա և հանապազ 'ի պատերազմի կացեալ. պատերազմող որ զմահու երկիւղ յինքեան ունիցի, ոչ երբէք մեծամեծ քաջութիւնս գործեսցէ ինչ. սոյնպէս և մարդ քրիստոնեայ որ 'ի վշտաց գայթակղութենէ երկնչի, ոչ երբէք ցուցանէ բարձր ինչ վարս առաքինութեան կամ սքանչելի. և առ այսպիսի թէպէտ և դիւրին իցէ, այլ ոչ կարէ բուռն հարկանել յանդուգն և մեծամիտ և անջան սովորեալն:

և համարձակել եթէ սուտ էր ասացեալն։ Բայց զօրէնն զոր յառաջնումն եա՟ծ 'ի ձեռն մարգարէին ասել ամենայն մարդկան, զայս պահեաց և յայնժամ։ Եւ զինչ էր օրէնն. "Վախճան խօսեցայց 'ի հեթանոսս, յազգս և 'ի թագաւորութիւնս՝ առնել արմատախիլ և կորուսանել զնոսա. և եղիցի եթէ զղջասցին 'ի չարեաց իւրեանց, զղջացայց և ես 'ի բարկութենէ զոր խօսեցայ առնել նոցա,,։ Օրէնս զայսոսիկ 'ի մտի հաստատուն պահեցէք, զի 'ի փոփոխելն ձեզ 'ի չարութենէ և 'ի բաց կալ 'ի պղծութենէ՝ փոխեսցի և Ա՟ծ 'ի բարկութենէ, որպէս և անդ իսկ զփոփոխեալն ապրեցոյց։

Գիտէր իսկ զբարբարոսացն զառաքինութիւնն, վասն այնորիկ ած անդ զմարգարէն. այսպէս և յայնժամ դղրդեցաւ քաղաքն 'ի լսել զձայն մարգարէին, բայց ոչ վնասեցաւ, այլ օգտեցաւ 'ի յահէ անտի. քանզի երկիւղն այն ծնաւ զփրկութիւն և սպառնալիքն ելոյծ ըզվիշտն, վճիռ կործանմանն կանգնեաց զկործանումն։ Ով սքանչելեացս և զարմանալի հրաշմանս. վճիռ սպառնալեաց մահու կեանս ծնաւ։ Վճիռ զկնի ելանելոյ՝ եղև առանց գործոյ, հակառակ արտաքին դատապարտութեանց. զի յայսմ 'ի դատաստանի յորժամ ելանէ վճիռ և 'ի մէջ գայցէ, զկատարումն առնու լինել վճռին. այլ յայնժամ՝ հակառակն եղև այսր ամենայնի, քանզի ինքնին իսկ վճիռն արար լինել առանց գործոյ։ Եթէ ոչ էր ելեալ վճիռն, ոչ էին լուեալ մեղաւորքն. և եթէ ոչ էին լուեալ, ոչ էին զղջացեալ, ոչ էին ազատեալ 'ի տանջանացն և ոչ էին վայելեալ 'ի սքանչելի փրկութիւնն յայն։

Եւ զիա՞րդ արդեօք չէ այս զարմանալի յորժամ դատաւորն դատապարտեսցէ, և դատապարտեալքն զվճիռ հրամանացն լուծանեն հանդերձ ապաշխարութեամբ։ Նոքա ոչ փախեան 'ի քաղաքէն, որպէս և մեքս այժմ առնեմք. այլ մնացին 'ի ներքս 'ի քաղաքին և կանգնեցին զնոյն։ Որոգայթ էր քաղաքն, և արարին զնա պարիսպ ամուր. ոչ 'ի բաց կացին իւրաքանչիւր ոք 'ի տանէ իւրմէ, որպէս և այժմ մեք. այլ 'ի բաց կացին իւրաքանչիւր ոք 'ի չար ճանապարհէ իւրմէ։ Մի՞թէ պարիսպ քաղաքի ծնանի՞ զփրկութիւն. այլ մեք եմք պատճառ հարուածոց, մեք եմք որ և զդեղն կազմեմք։ Սան

զփուշութեանն տուրս, և լուեալ և ուսեալ ես զբանս մարգարէիցն և առաքելոց, և հանդերձ այսոքիւք և վասն ընչից խրատեալ ես, բայց ոչ մինչ 'ի նոցին առաքինութիւնն և չափն հասանել հակառակիս։

Իսկ այնմ մարդկան մեծ էր առաքինութիւնն. բազում ես և առաւելութիւն մարդասիրութիւնն այ̃, և զայս 'ի մեծութենէ այնմ սպառնալեացս պարտ է խմանալ։ Քանզի ոչ յաւելոյր 'ի հրաման վճռին, եթէ զըղջանայք՝ խնայեմ 'ի ձեզ. և ոչ 'ի վճիռն սահման կարէին ածել. աճէր երկիւղն, և 'ի թանձրանալ երկիւղին՝ վաղվաղակի յապաշխարութիւն յաճախէին։

Իսկ մարգարէն պատկառեալ, զի նախ զլինելոցն գիտէր, և ամաչեցեալ զի ոչ առ զկատարումն որ 'ի նմանէ ասացաւ. այլ ած̃ ոչ ամաչէր, բայց միայն խնդրէր զփրկութիւն մարդկան և զիւր ծառայն ուղղէր։ Զի յորժամ նա 'ի նաւն եմուտ, յարոյց վաղվաղակի զալիս ծովուն. զի ուսանիցիս թէ ուր մեղք են, անդ և ձմեռն ալեաց. և ուր պատուիրանազանցութիւն, անդ և նաւաբեկութիւն։ Քաղաքն իսկ դողաց և շարժեցաւ վասն մեղաց նինուէացւոցն. դողաց և նաւն վասն պատուիրանազանց մարգարէին։

Իսկ նաւապետքն զՅովնան առին ընկեցին 'ի խորս ծովուն, և նաւն եկաց և ծովն դադարեաց. մեք ընկեացուք զյանցանս մեր, և կեցցէ քաղաքս առ հասարակ։ Ի փախստենէ օգտիք և ոչ ինչ. այս իսկ ընդ առաջ եղև Յովնանու, և ընդդէմ վնասեաց զգործս նորա։ Փախեաւ յերկիր յայլ և ոչ փախեաւ 'ի բարկութենէն, որով և զխռովութիւն ալեաց յարոյց 'ի ծովուն. և ոչ միայն ինքն չհանդիպեցաւ բարւոք փախստեամբն, այլ և որք զնա ընկալան 'ի նաւին՝ 'ի վախճան եկին վտանգի։ Զի յորժամ նստէր նա 'ի նաւին և նաւէր, նաւապետքն և նաւուղիղքն մերձ էին և ամենայն գործիարութեամբ պատրաստք յուղևորութիւն նաւուն, սակայն 'ի վերջ եկն կործանման։ Իսկ յորժամ 'ի խորս ծովուն ընկղմեցաւ և 'ի միտ առ զոր արարն, անդէն ըզյանցանսն հանդերձ տանջանօք 'ի բաց եդիր, և յայլ խորագոյն նաւ 'ի փոր կիտին՝ ոչ վտանգեցաւ, այլ բազում դիւրութեամբ վայելեալ աներկիւղ քան 'ի նաւին. զի ուսանիցիս՝ եթէ որք կեան մեղօք, նաւն ոչ ինչ

ասեն ։ Այնպէս և 'ի հոգւոց հիւանդութիւն պարտ է առնել. մերկ և զանգաղկոտ հոգի զբարկութիւն յարուցանէ. զախտս զայս մեծաւ ջանիւ խորտակեսցուք, և առաւել յայսմ ցուցցուք զփոխադրութիւն ։ Օգնական և մարտակից մեծ ունիմք զաւուրս քառասնորդաց. այսուհետև յեկելոց վտանգիցս դիցուք զանձինս մեր 'ի ներքոյ, և դիւրաւ խոկ և խոկ կարիցեմք հաւանեցուցանել զմեզ որչափ և կամիմք ։ Ահիւ և դողութեամբ և 'ի փափուկ կերակրոց յամենայնէ զատուցեալք կացցուք երկիւղիւն Տն, և դիւրաւ կարիցեմք իմաստնանալ, և հանդերձ բազում յօժարութեամբ ընդունիցիք զսերմանս առաքինութեան ։

Հաւանեցուսցուք և յայս ես զանձինս մեր փախչել յերդմանէ. նախ քան յայլ ինչ գործոց՝ առաւել այսմ առնիցէք փոխադրութիւն ։ Եւ զի յերէկն և յեռանդն վասն այսր միոյ պատճառի ասացի ձեզ, այլ և այսօր և վաղիւ և որ զկնի գալոց են աւուրք ոչ լռեցից ։ Եւ զի՞ ասեմ այսօր և վաղիւ. մինչև տեսից զձեզ յուղղութիւն եկեալ, ոչ դադարեցից. քանզի որ զպատուիրանս օրինացն պատմեն՝ պատկառել ոչ պարտին, ես առաւել մեզ՝ զոր հրամայեալն է մի՛ լինել պատուիրանազանց՝ ոչ է արժան ամաչել 'ի համապազ խրատ տալոյ յայսմանէ ։ Զի որ համապազ վասն միոյ անօրէն սովորութե յիշեսցէ, ոչ միայն որ ասէն, այլ և որք լսեն պարտական են ուղղելոյ. և ես ստէպ խնդրեմ վարդապետութեամբ վասն այսր միոյ սոսկ և դիւրին առ ուղղել իրիս ։ Զինչ իցէ դիւրագոյն քան զչերդնուլն. միայն սովորելն 'ի բաց կալ՝ բաւական է յուղղութիւն, ոչ է այս աշխատութիւն մարմնոյ և ոչ ծախք ընչից ։

Կամիս գիտել թէ զիարդ կարիցես առողջանալ յայսմ հիւանդութէ, կամ զիարդ զօրասցիս փոխարկել 'ի չար սովորութէդ. ես ուսուցանեմ թէ որով արուեստիւ. զոր եթէ արասցես, վերագոյն սխալանացն գտանիցիս ։ Արդ յորժամ տեսանիցես զքեզ ինքն կամ զայլ ոք յորդւոց կամ 'ի ծառայից կամ յաղախնաց կամ զկին խառնեալ 'ի չարս յայս, և համապազ պատուիրեալ ոչ ուղղիցեն, հրաման տուր նոցա տքնել առանց կերակրոյ և ըմպելեաց յընթրիս ։ Եւ յայսմիկ և զքեզ ինքն 'ի նոցա դատապարտութեանն կացո. դատապարտութիւն ասեմ՝

որ ոչ վտանգ, այլ շահս մատուցանէ. զի այսպէս իսկ են հոգևորքն, որ և շահս բերեն և փութապէս ուղղութիւն։ Վասնզի լեզու տանջեալ այսիւ հանապազ, թէպէտ և առ 'ի խրատ ոք ոչ ինչ յիշեսցէ, բաւական լինի այսու խրատել և 'ի սոյն առնուլ մխիթարութիւն. զի յորժամ 'ի ծարաւոյ յերկարանայ և 'ի քաղցոյ վտանգի, թէ և յոյժ անզգայ իցէ քան զամենայն ոք, խրատուն հանդերձ և բոլորովին օրն մեծութեամբ տանջանացս այսոցիկ զամենայն յիշեցուցանէ, և ոչ պիտոյանամք այլում խորհրդակցի և խրատտուի։

Արդ յաժմ գովէք զասացեալս, սակայն գործովք յայտ արարէք զգովեալն. ապա թէ ոչ՝ ոչ ինչ է շահ աստ նկրտելն։ Որպէս զմանուկ ոք հանապազ 'ի դպրոց առաքելով, և ոչ ինչ աւելի ուսանիցի. իսկ այս մեզ բաւական պատասխանի է միշտ անդ դեգերել մանկանն յանօգուտս. զի զինչ այլ մեծագոյն դատապարտութիւն, թէ և այս միայն իցէ որ զօր հանապազ անդ ընթանայ և ունայն առնէ զընթացսն։ Զայս և առ մեզ խորհեսցուք, ամենեցուն ասեմ. մի չափաւոր ժամանակ հանդիպիմք աստ, և պատուիրանս սոսկալիս ընդունիք 'ի մէնջ՝ ունելով յինքեանս շահս բազումս. եթէ դարձեալ այսպէս երթիցէքդ որպէս եկիքդ՝ ոչ ինչ ուղղելով 'ի ձերոցդ յանցմանց, զինչ օգուտ իցէ ապա գալուստն մեր աստ։

Վասնզի և ընչից բազմութիւն ոչ եթէ յայսմանէ լինիցի, այլ որ 'ի սմանէ յառաջ գայցէ։ Զոր և ասեմ իսկ. սերմանողն ոչ եթէ մինչ 'ի սերմանելն միայն փութայ, այլ զի և հնձեսցէ. և եթէ այս չէր, ապա վայրապար էր ցանելն, և 'ի հողն ունայն ցնդէր։ Նոյնպէս և վաճառականն ոչ եթէ միայն 'ի նաւելն փութայ, այլ զի և հանդերձ հեռի ճանապարհաւն բազմացուսցէ զըստացուածն. ապա թէ ոչ՝ վերջին աղքատութիւն և վնասակար ճանապարհ էր վաճառականին։ Զնոյն և առ մեզ խորհեսցուք. փութամք յեկեղեցիս ոչ միայն զի աստ եկեսցուք հանապազ, այլ զի շահեսցուք մեծ ինչ և հոգևորական շահս. ապա եթէ դատարկ լինիցի ընթացքն մեր և ունայն դարձեալ՝ ոչ ընդունիմք աստ, դատապարտութիւն է և փոյթն մեր. և ահա դիպաք վերջին տուգանաց։

Եւ գիտէր. յորժամ ասէր գնայցէք, խորհեցարուք
հարք ընդ որդիս, տեարք ընդ ծառայս, սիրելիք ընդ սի-
րելիս, զի զոր հրամայեցաւս կատարեցէք. և յորժամ
այորէն դառնայցէք և լուիցէք դարձեալ վասն այսմ
միոյ պատուիրանիս զոր երեկն լուայք՝ ի խորհրդակցութե̃
մերմէ՝ ոչ ամաչիցէք, այլ ուրախասջիք և ցնծասջիք, տե-
սակակից մեզ լինել՝ ի յայլ պատուիրանացն ուղղութ̃ի:

Զայս մի ասէ միայն խրատաւորեսցուք, զի չէ իսկ
բաւական ըստ ամենայնի սակաւ ժամանակաւ զխրատս
զայս յանդիման կացուցանել. այլ զի 'ի տան այր 'ի կնո-
ջէ լուիցէ և կին յառնէ, լինելով անտրտունջ և փու-
թալ հատանել 'ի կատարումն այս միոյ օրինացս. իսկ
որ յառաջ մատչի և ուղղիցէ, նախատի մնացեալն. զի
որ որոշեալն է և ոչ ուղղեալ, տեսանելով զառաջա-
մուտն ընթացս՝ յարուցանէ զինքն առաւել ջանիւ, և
վաղվաղակի և այլն մեզ յաջողեսցի: Դու հոգա վասն
մ̃յ, և նա ինքն զքոյինն խնամարկէ միշտ զկեանս:

Եւ զայն մի ասիցես ցիս, զինչ արարից եթէ 'ի բըռ-
նութենէ նեղութեան երդումն դիցէ ոք 'ի վերայ իմ,
կամ եթէ ոչ հաւատասցէ ինձ: Արդ ուր մ̃յ օրէնքն
լուծանի, նեղութիւն պարտ է յիշել. այլ մի լիցի նե-
ղութիւնն հրաժեշտ պատուիրանին, որ ոչ զա̃ծ անար-
գեալ է՝ հակառակել: Սա և այլ ևս հնարս ասացից
բառնալոյ զերդումն դիւրաւ և առանց նեղութեան. զի
որք 'ի տան իցեն որդիք և սիրելիք և ծառայք, եթէ 'ի
նոցանէ զսովորութիւնս զայս հատցես, ոչ պիտոյա-
նամ ես բազում աղաչանաց: Զի յորժամ 'ի միտսն
հաստատեսցի երկնչել, և բերանոյն խորհրդակից լինի
փախչել 'ի բազմապատիկ բանից երդմանց, թէպէտ և
բիւրապատիկ ոք նեղիցէ, սակայն ոչ կարիցէ ընկե-
նուլ 'ի բարի սովորութենէն: Այլ որպէս այժմ հան-
դերձ բազում աշխատութեամբ, ջանիւ և բիւրապա-
տիկ նեղութեամբ սպառնալեօք երկեցուցանել և խոր-
հըրդաբար խրատել՝ դժուարին հարկաւ կարացաք փո-
խադրել զձեզ 'ի սովորականէն, սոյնպէս և յայնժամ
եթէ բիւր փորձանս հասուսցէ ոք, ոչ կարիցէ զսովորա-
կան օրէնսն շարժել: Զի որպէս բաժակ մահու ոչ սպա-
նանէ առանց ըմպելոյ, և ոչ թէ նեղիցէ ոք ըմպել՝ արբ-
ցէն, այսպէս և երդումն լիցի:

Այլ մեր զայս ուզղել՝ մխիթարութիւն մեծ է, և առաջարկութիւնս առ 'ի յայլ առաքինութեանց մասունս մերձենալ . . . : Նմա այսպէս թուի եթէ կարող էք այսպէս լինել որպէս կամիմս, զի և 'ի բացակայից ուսուցք վասն ոչ կատարելոյ պատուիրանին մի՛ հայցէ ինձ անգամնել. այլ փոխանակ իմ յիշեցէք զբանս իմ յամենայն ժամ. եթէ առ սեղանոյ նստիցիք, յելանել և 'ի մտանել, զիս մօտ համարեցարուք յառն կացեալ, և զոր առս այժմ առեմ՝ զամենայն հնչեցուցեալ յականջս ձեր. և ուր վասն իմ խօսք լինիցի 'ի ձէնջ, փոխանակ ամենայնի զայս միայն յիշեցէք զպատուիրանս, և զայս վասն ձերոյին սիրոյ առուք ինձ փոխարէն հատուցումն: Եթէ տեսանիցեմ զձեզ . . . . . . . . *

(ՃԱՌ ՎԵՑԵՐՈՐԴ)

. . . . . . . . . . . . . . . . . . . . .

որդիք բժշկաց մինչև տեսցեն ցամաքեալ զախտն, բաղում առաւելութեամբ զնոյն վասն հոգւոյ պարտ է առնել. քանզի վէրք հոգւոյ տրտմութիւնք են, և պարտ է ստէպ առնուլ զբանս իմաստութեան: Այլ այսպէս մաքրէ զաղտ մարմնոյ ջերմ ջրոյ բնութիւն, որպէս զաղտ հոգւոյ ցամաքեցուցանէ և սրբէ յայտնապէս զօրութիւն բանից մխիթարութեան: Արդ ոչ է պէտք բաժակաց 'ի ձեռն բժշկաց. այլ փոխանակ բաժակաց զլեզուս մեր մատուցանեմք: Այլ հուր ոչ է պիտոյ աստ առ 'ի ջեռուցանել. այլ փոխանակ հրոյ ունիմք զշնորհս հոգւոյն սրբոյ: Արդ այսուհետև զի այսօր զայս գործեսցուք:

Իսկ եթէ մեք զմեզ ոչ մխիթարեմք, ապա ուստի այլ մխիթարութեան առիթ ունիցիմք: Դատաւորք երկեցուցանեն, ո՞չ ապաքէն քահանայք կան յաղաչանս. իշխանք սպառնայցեն, ո՞չ ապաքէն եկեղեցի մխիթարէ: Քանզի և առ աղայս փոքունս այսպէս լինիցի. վարդապետք զաղայս երկեցուցանեն և հարկանեն և արտասուալից առաքեն առ մարս իւրեանց. իսկ մարքն ընդունին և 'ի ծոցս իւրեանց առնուն, գիրկս ածեն, զարտա-

* Թուղթ անկեալ յօրինակէն Թերի մնայ վերջին հատուած այսր Ճառի և սկիզբն վեցերորդին:

Digitized by Google

սուրն սրբեն և համբուրեն, զզգայս անձանց նոցա հան-գուցանեն, հաւանեցուցանեն ասելով՝ եթէ բարիոք է նոցա երկիւղ վարդապետացն ։

Իսկ այժմ և ձեզ եհաս երկիւղ իշխանաց և ած 'ի տագնապ մեծ. այլ եկեղեցի որ է մայր մեր ամենեցուն՝ պարզէ զծոց իւր և մերձենալով ընդունի ձեռօք իւրովք. զոր հանապազ աղաչելով ասէ՝ եթէ բարիոք է երկիւղ իշխանաց, բարիոք է և ասա մխիթարիչ։ Նոյն մի եր-կիւղն ոչ տայ թոյլ 'ի դանդաղմանէ դիւրութեան հո-լովել. իսկ այս մխիթարիչս ոչ տայ թոյլ անկանել 'ի գանդաղանս. և յերկոցունցս ած զփրկութիւնն մեզ տնօրինէ։ Վասնզի և զիշխանս ինքնին սպառազինեաց 'ի տանջանս և յերկիւղ ապաշտաց, և զքահանայս ինք-նին ձեռնադրեաց զի բարեխօս լիցին վասն նեղելոց. և սոքա երկոքին ընդ միմեանս միաբանին հանդերձ օրի-նակաւն դրովք որ զայսցանէ ասէ գիտութիւն։

Իսկ եթէ իշխանք և զօրապետք գոլով կենդանիք բուռն, մարդիկ թեթեւամիտք և հպարտք և վէտք, 'ի սակաւ ժամանակի և 'ի թարթել ական այսչափ բա-ցին 'ի վերայ մեր պապակունս, եթէ ընաւին բարձեալ էր երկիւղ իշխանաց և դատաւորաց՝ ո՞ւր որ ոչ էր եկեալ այսպիսի խռովութիւն. թերևս 'ի խորոց քակեալ էին և առ հասարակ վեր 'ի վայր արարեալ էին զհիմունս քաղաքին, և միահաղոյն կորուսանէին զանձինս մեր։ Այլ եթէ զդատաւորաց զդատաստան քակես, կործա-նեցեր ապա և զամենայն կեանս մեր։ Որ օրինակ ե-թէ զղեկ նաւին և զուղղիչ 'ի բաց ընկենուցուս՝ զնաւն ընկղմեցեր, և զօրապետ զօրաց եթէ կալեալ տանի-ցիս՝ զամենայն զօրն մատնեցեր, սոյնպէս և քաղաքաց եթէ զիշխանս կորուսանես, քան զգազանս խիստ և ան-բան լինիմք 'ի կենցաղումս, զմիմեանս խածատեմք և ուտեմք, մեծատունն զաղքատն, հզօրն զտկարն, յան-դուգն զհանդարտն։

Բայց այժմ շնորհիւն այ ոչ է այսպէս, և "Իշխա-նաց՝ օրէնք ոչ է անկեալ". եթէ ոչ բազումք միշտ 'ի չարիս հայէին, և 'ի բազմաց բիւրապատիկ չարեաց լցեալ էր քաղաքս այս, եթէ չէր ահ սոցին, որպէս և Պաւ-ղոս ասէ. "Ոչ ուստեք իշխանութիւն է, եթէ ոչ յայ. և որ էնն, յայ կարգեալ են". Որպէս պահանգք փայ-

տեսայք տանց որմոց միափակք զքարինս պահեն, այն-
պէս և իշխանք 'ի քաղաքս. եթէ զայն քակեսցես, ըզ-
պարիսպն կործանեսցես, զի ինքնին խառնակեալ 'ի վայր անկցին։ Նյպ աշխարհի եթէ զիշխանս և որ 'ի նոցանէ երկիւղն է՝ բարձցես 'ի միջոյ, տունք և քաղաքք և ազգք ընդ միմեանս անկանիցին առ հասարակ յաներկիւղութենէ, և ոչ ոք յումեքէ ակնածէ կամ ունկնդիր լինիցի, և 'ի յահէ տանջանացն հաւանեսցին կամ լռեսցեն։

Արդ յուսահեալ (?), եղբարք, մի տխրեսջիք վասն երկիւղի իշխանաց զոր ունիմք. այլ մանաւանդ գոհացուք զԱյ, զի զդանդաղկոտ ոգիս մեր զարթոյց և զգաստ գործեաց։ Զինչ վնաս եղև, ասա ինձ, յայսմ տրտմագին հոգոցս. ո՞չ ապաքէն պարկեշտս արար զմեզ և համբերողս, կայտառ և փոյթ 'ի բանս տեառն։ Այժմ ոչ տեսանեմք զանառակ արբեցութիւն և զերգս դիւականս, այլ աղօթք հանապազ, աղաչանք և արտասուք և պատարագ օրհնութեան. և ծաղր անառակ և բանք զարշելիք և ամենայն հնչմունք չարեաց եղծաւ, և որպէս կին բարեզարդ և ազատ նմանեցաւ ամենայն քաղաքս մեր։ Տեսդ այսոսիկ տխրիս, ասա ինձ. ո՞չ ապաքէն պարտ էր ցնծալ և ուրախանալ և գոհանալ զԱյ, որ այնչափ սակաւամիտ վրնջմամբ բազում աւուրց երկիւղ գործեաց մեզ։

Այո, ասէ, բայց թէ մինչ յերկիւղն վտանգեալ էաք, բաւական էր և յիրաւի գործէաք զզգաստութիւնս. իսկ այժմ երկնչիմք մի երբէք եկեսցէ վտանգ և հասցուք 'ի վերջին կործանումն։ Այլ մի տրտմիք, եղբարք, Պաւղոս միխիթարեսցէ զձեզ ասելով. «Հաւատարիմ է Ած որ ոչ թողու զձեզ 'ի փորձութիւն առաւել քան զկար ձեր. այլ արասցէ ընդ փորձութեանն և զելսն, զի համբերել կարասջիք»։ և դարձեալ ինքն իսկ ասաց. «Ոչ թողից զձեզ և ոչ ընդ վայր հարից»։ Եթէ արդեամբք գործոյ խորհէր տանջել զմեզ ըստ այսմ փորձութեան, ոչ էր այսչափ աւուրս մնալ զմեզ յերկիւղ. յորժամ ոչ կամի տանջել, երկեցուցանէ. եթէ կամէր տանջել, առաւելորդ զերկիւղն և զսպառնալիսն։ Արդ այժմ բազմապատիկ չարաչար քան զմահ կենօք կացաք, այսչափ աւուրս երկնչել և դողալ անդադար և 'ի ստուերաց նոցա երկնչիմք, և ըստ Կայենի զխրտեցաք տանջանաց.

յորժամ էաք 'ի մէջ քնոյն, վաղս առնէաք 'ի ստէպ ստէպ տագնապել յափշտակութե՛ չարեաց մինչև բարկացուցաք զԱծ. իսկ այժմ ողորմեցաւ զի այսչափ համբերեցաք տանջանաց։ Զի և ոչ էր ըստ արժանի մեղաց մերոց հասեալ դատս, այլ բազում է Այ մարդասիրութիւնն։ Ոչ աստ միայն, այլ և յայլոց բազմադէմ չարեաց փրկել միշտ յուսալ պարտ է։

Նու արդ ևս ոչ պակաս գրաւական զքաղցր յոյսն ետ մեզ Ած. նախ քան զամենայն, զի որք զչար համբաւն մատուցանել հանդերձեալ էին, երթեալք աստ իբրև թևաւորք, և զմանկունս զօրացն յետոյ թողուլ կարծէին, ընդ մէջ աւասիկ իբր շաւիղ Ճանապարհի արարին. այլ նոցա այնչափ արգել և խափանումն եղև, մինչ զերիվարս թողուլ՝ հետևակք վարէին. ուստի և ամենայն նեղութեան արգել եղև յամել նոցա 'ի գնալ անդ։ Քանզի զքահանայապետն մեր և զամենեցունց զհայրն յարոյց աստի Ած և արար գնալ նմա և մերձենալ յաղաչանս յայս։ Ընկալաւ զնոսա արգելն 'ի մէջ Ճանապարհին, զի մի երբէք հասցեն և զհուրն բորբոքեսցեն, և զվարդապետին անընկալ և ունայն արասցեն զուղևորութիւն առ 'ի վառել զականջս թագաւորին չար բանիւք իբր հրկիզութեամբ։

Ապա յայտ իսկ է եթէ ոչ առանց Այ եղև արգել զինուորացն այնոցիկ Ճանապարհին. մարդիկ՝ որ զամենայն ժամանակս իւրեանց 'ի հեռագնացութեան էին շրջեալ, և այս իսկ ստէպ գործ էր նոցա մորակել զերիվարս, իսկ այժմ յայսմ կառագնացութեանս մանրեալք վերջին գտան և հեռի օտարացան, և եղև հակառակ Յունանու՝ զինչ նմայն դիպեցաւ։ Զնա զոր ոչ կամէր երթալ, տարաւ Ած. իսկ զսոսա որ կամէին գնալ, արգելով զարմանալի սքանչելեաց։ Նա որ ոչ կամէր քարոզել զկործանումն Նինուէացւոցն, ակամայ յարոյց զնա. իսկ զսոսա որ բազում արագութեամբ փութային քարոզել զանցումն քաղաքիս մերոյ, ակամայ խափանեաց. ըստ որում զնա ուղղեաց կէտիւն, և զսոսա խափանեաց երիվարօքն։ Տեսանես զիմաստութիւնն Այ. զի զորս գործով յուսացեալ էին կատարել զիւրաքանչիւր առաջարկութիւնս, խափանեցան երկոքեան. նա նաւու հանդերձ ակն ունէր թագչել յերեսաց տեառն, և նաւն

եղև բանտ նմա. սոքա երիվարքն համդերձ անձն ունէին տեսանել փութապէս զԹագաւորն, և եղեն երիվարքն արգել նոցա: Արդ ոչ սոքա երիվարքն և ոչ նմա նման, այլ խնամք աղօթութեանն մեր յամենայն կողմանց զամենեսեան իւրով անօրէնութեամբքն խափանեցուցանէ.

Այլ դու միտ դիր մեր գթութեանն զկարգ երկեցոյց և մխիթարեաց: Յայնժամ սուրբ յորում համարձակեցաւ անօրէնութիւնն այն, Թոյլ ետ նոցա գնալ. որպէս զի պատմեսցեն Թագաւորին զամենայն եղեալսն առա, փութապէս եկից, մեծապէս երկեցոյց զամենեսեան: Նակ յորժամ գնացին անցեալ երկուս և երիս աւուրս, ուստի ունայն համարէաք զգնալ հայրապետին մերոյ, որպէս Թէ հեռի գոյաք 'ի փրկութենէ, յայնժամ զերկիւղն ելած և մխիթարեաց. զի նոցա, որպէս ասացի, հաւին զմիջոցաւ Ճանապարհին, և ուր անտի 'ի մեզ գային նովին Ճանապարհաւ՝ գնացին չար հանդիպումն զամենայն մեզ պատմել պատրաստեաց. զի փոքր մի համգիստ առցուք. որպէս եղև իսկ, և 'ի բազում տագնապէ երկիւղին 'ի բաց կացաք մնածաւոր փոքր մի:

Զայս լուեալ, և արարողքն այսմ գործոյ միշտ երկիր պագանել իբրև հօր գթածի և զամենեսեան սիրողի, այժմ վասն մեր վերադարձեալ զամենայն անտեսանելի զօրութեամբն արգել զհրեշտակն չարի. ոչ միայն արգել, այլ գրեթէ այսպէս ասաց նոցա. ընդէ՞ր փութայք կամ զի՞ արագէք 'ի գնալ. քաղաք մի այսպիսի կործանե՞լ համարիք, միթէ աւետիս կամիք աւետաւանել Թագաւորին. մնացէք աստ մինչև զերջանիկն իմ պատրաստեմ որպէս բժիշկ Ճարտար հասանել, որպէս զի քան զփութալդ ձեր առաջամուտ լինիցի:

Արդ նախ քան զպատուիկ վէրս անօրէնութեանս այսչափ բարեխնամ աղօթութի եղև, և ս մանաւանդ զկնի զառնալոյս մեր, զկնի զղջմանս և երկիւղիս և արտասուաց և վէրս առնլոյ առաւելապէս ընդունիմք զդիւրութիւն: Զ Յունան յիրաւի առաքէր ած զի դարձուսցէ 'ի զղջումն զնոսա. դուք արդէն ահա զղջումն ցուցէք և առաւել զդարձն, այսուհետև մխիթարութեան ակն ունիցիք և ոչ քարոզի որ սպառնալիս ունիցի: Ըստ այսմ զամենեցուն զհայրն մեր յարոյց սաստի, Թէ և ունէր արգելու բազում. եթէ ոչ էր գթացեալ 'ի փրկութիւն

մեր, ոչ էր զհայրն մեր յօժարեցուցեալ. այլ թէ կա-
մեցեալ էր գնալ, սակայն արգելոյր:

Ունիմ իսկ ասել և զերրորդն որ կարող է զձեզ հաս-
տատուն յուսով առնել՝ զհաստատեալ տօնս, զի և որք չհա-
ւատայքդ՝ յայսմ ժամու հաւատասջիք ամենեքեան:
Քանզի ա̃ծասէր թագաւորն մեր առաւելապէս գիտէ
և պատուեաց զսա քան զամենեսեան որ նախ քան զինքն
բարեպաշտութեամբ թագաւորեալ էին: Յու զխաստա-
կարս կալեալ 'ի բանտի, յաւուրս յայս առաք հրաման
'ի պատիւ տօնիս, զի որք 'ի բանտի բնակեալ կան՝ զա-
մենեսեան փութապէս ազատել. յայսմ ժամանակի
քահանայապետն մեր երթեալ ընթեռնու զպատուի-
րանս առաջի թագաւորին, և յանձնէ իւրմէ յիշեցէ
զօրէնս և ասէ՝ եթէ դու ինքնին զքեզ աղաչեա, և որ-
պէս վայելէ քեզ՝ այնպէս նմանեցո զքեզ. յանձնէ քում
մէ ունիս զնշան մարդասիրութեան՝ յիրաւի ոչ ծառայի
առնել սպանութիւն, և զանիրաւութիւնս համբերեա
'ի գործել. զի որք տարակուսեալք են և դատապար-
տեալք և անյոյս 'ի կենաց՝ զտօնս զգեցեալ ազատեցեր,
և զանպարտսն և որք ոչ են համարձակ յիրս ինչ՝ դա-
տապարտեա, ասա ինձ ով թագաւոր, ամենակեցոյց այս
տօն մերձեալ: Մ՝ի իսպառ բարկանար և մի երբէք զան-
ցանէր դու ըստ պատուիրանս ըստ այս, զոր և ամենայն
քաղաքաց օրինօք ասացեալ ես. և ինձ այսպէս թուի՝
եթէ հնար էր և զգնացեալսն յարուցանէիր: Զայս
աղաչեմք ցուցանել զմարդասիրութիւն, այժմ է ժա-
մանակ այսմ բանից: Եւ այսպէս յաղթութիւն պատե-
րազմի պայծառագոյն առնէ զթագաւոր, որպէս արգե-
լուլն զսրտմտութիւն բարկութեան. զի անդ առ հասա-
րակ սպառազէն զինու զինուորացն է ուղղութիւնն, իսկ
աստ մերկ քոյին է յաղթութիւնս և ոչ զօք ունիցիս
բաժանորդ ընդ քեզ զփառս զայս իմաստութեան: Ըն-
կըրկեցեր զբարբարոսական պատերազմ, ընկրկեա՝ և
զսրտմտութիւն թագաւորական. լուիցեն ամենայն հե-
թանոսք և ասասցեն՝ թէ երկիւղն Քրիստոսի հզօր է
առ 'ի սանձահարել զամենայն իշխանութիւնս: Փառա-
ւորեա զա̃ծ քո, ով թագաւոր, թողլով ընկերաց քոց
զյանցանս, զի ես առաւել զքեզ փառաւորեսցէ աստ,
և յաւուրն դատաստանի հանդարտ և քաղցր ցուցանէ

քեզ զամենառատս աջս իւր՝ յերկրով զայսոսիկ զգոյնս մարդասիրութեանդ։ Զայսոսիկ և առաւել քան զնոյնս խօսեսցի առաջի Թագաւորին Հայրն մեր, և զձեզ զամենեսեան փրկեսցէ 'ի փորձ . . . . . . . . * ութեան ապաւինին, զի անդ փոխադրեալ՝ 'ի նաւակոծութիւն կենցաղոյս ոչ անկանին։

Զի իսկ և մեք ոչ այսպէս, այլ մերթ ընդ երկիր բեւեռեալ եմք, և յանցաւորս մտադիւր կամօք ուշ եդեալ ցնորիւք, և զհանդերձեալսն քաջ 'ի բաց մոռանամք 'ի ցաւագին և յաշխարհիկ կենցաղոյս։ Զինչ պատուիրեաց մեզ Տէր. մի բնաւ հոգալ զանցաւոր կենցաղս։ Ասա՛ զինչ շահ գործէ մեզ անցաւոր կենցաղս ցանկութեան։ Այսմիկ ուսանել վասն որոյ լիցի բարի անցաւոր կեանքս. զի հանդերձեալ կենացն պատճառ սա է մեզ, փոխանակ առատի պատերազմաց և իբր յասպարիզի ճգնութեանցս անդ զփառաց պսակն առնուցումք. ապա թէ զայս ոչ բերիցէ մեզ, քան զմահ բիւրապատիկ ողորմագին և ողբալի է։ Իսկ եթէ հանդերձիմք 'ի կենդանութեան հաճոյ լինել նմա, առաւել լաւագոյն է քան զգնայն . . . ։

Մ՛ի այսուհետև, մի զկենդանիս երանեսցուք և մի զմեռեալս ողբասցուք. այլ զորս մեղօքն են՝ եթէ կենդանիք իցեն և եթէ մեռեալք, կոծեսցուք անդադար. իսկ եթէ յարդարութեան իցեն, երանեսցուք յոր կողմ և հանդիպիցին։ Դու արդ իսկ մի է մահն քո և երկնչիս և դողաս. այլ Պաւղոս յամենայն օր մեռանէր և ոչ արտասուէր ընդ այնմ, այլ ուրախ էր և ցնծայր և ասէր. "Զամենայն ժամ զմահն Յիսուսի 'ի մարմնի մեր կրեսցուք", և անհոգ եմք։

Բայց ասա զի մի և սոսա անկցիս անգիտութեամբ. քանզի ոչ որ չարչարին վասն նմա՝ նոքա միայն հաճելիք են, այլ և որք անիրաւ չարչարին և բերեն քաջութեամբ և գոհութիւն մատուցանեն տեղի տուողին նմա, ոչ են պակաս քան զայնոսիկ որ վասն նմա չարչարին։ Քանզի երանելին Յոբ բազում և զանազան վէրս ընկալաւ, զոր սատանայ ունայն և սուտ և 'ի զուր խորհեցաւ. այլ երբև քաջութեամբ եբեր և գոհացաւ զտեղի տուողէն

* Թուի թէ երկու պակասին յօրինակին։

մոյ, քաղցրալից զգեցուս զպատմ.... Եթէ սպառնայցէ ոք քեզ մահ, ասասցես ընդ նմա. խրատեցայ յոյժ եթէ մի երկնչիցիք յայնցանէ որ սպանանեն զմարմին և զոգի ոչ կարեն սպանանել։ Իսկ եթէ սպառնայցեն հրապարակել կամ առնուլ զգոյս քո, ասասցես նմա. մերկ եկի յորովայնէ մօր իմոյ և մերկանդամ անդրէն դարձայց. ոչ բերաք ինչ յաշխարհս և ոչ տանել կարեմք։ Թէ և դու ոչ առցես, գայ մահն և առնու. եթէ դու ոչ սպանանիցես, բնութեանս օրէնք բերեն զվախճան։

Մի՛ք այսուհետև երկիցուք 'ի մահուանէ որ ըստ բնութեան օրինաց տանիցի զմեզ, այլ յայնցանէ որ 'ի չար կամաց մերոցն չարեօք եղեալ է՝ այն իսկ ծնանի զտանջանս։ Օ՜ն խորհեսցուք հանապազ, զի որ եկն մեզ՝ այնմ ակն ունել, և զի ոչ ամենեւին ուղղեցաք զկեանս մեր՝ հոգասցուք, և զի ոչ լուեցաք 'ի ցնորից՝ զայս և զկնի սորին կամեսցուք ողբասցուք. իսկ եթէ յանիրաւի գիտեսցի մեզ նեղութիւն յանցաւոր կեանս, համբերելով եղծանեմք զբազում յանցանս մեր։ Վասն այսորիկ մեծ բարի է աստ առնուլ զփոխարէնս մեղաց և ոչ անդ. քանզի մեծատունն ոչ ինչ աստ նեղութիւն կրեաց, վասն որոյ անդ պապակէր. և զի այս էր պատճառ՝ լուր զինչ՝ ասէր Աբրահամ. "Որդեակ, ընկալար դու զբարիս քո 'ի կեանս քո որպէս և Ղազարոս զչարիս իւր"։ Արդ Ղազարոս զբարին զկնի առաքինութեանն առնոյր. իսկ աստ դիպաւ բիւրապատիկ նեղութեան, ըստ որում հանգեաւ 'ի գոգ նախահօրն Աբրահամու։ Յայսմանէ յայտ է եթէ ուր առաքինութեամբ կեան և նեղութեամբ, կրկին ունին զշահ. սոյնպէս որ չարեօք կեան և ոչ զղջանան և փափկացեալ վայելեն, կրկին տանջելոց են։ "Հոգի խոնարհ անմէր դիւրահաւան է, իսկ հիւանդն բազում աղաչանաց կարօտանայ"։ Վասն որոյ աղաչեմ մի 'ի փախուստ 'ի փրկութենէ մերմէ ձեռնարկեսցուք, այլ փախիցուք 'ի մեղաց, հեռասցուք 'ի չար ճանապարհէ։ Եթէ յայսցանէ բացեալ եմք, և 'ի մէջ բիւրուց զկնուորաց անկեալ՝ ոչ ոք կարէ խոց դնել. ապա թէ յայնցանէ ոչ եմք հեռացեալ, թէ և 'ի գլուխս լերանց ելանիցեմք, և անդ բիւր պատերազմունս գտանեմք։

Յայսուհետև յիշեա[1] զերիս մանկտունս զայն կամ-

1 Զանազանք յօրինակին յիշէս. յաւելու 'ի յունէն։

խաւ. որք 'ի ներքսագոյն 'ի մէջ հրոյն ոչ դիւրաւ նեղութեան, և այնպէսիկ որք զնոսա արկին՝ արտաքոյ հնոցին նստեալք մաշեցան 'ի հրոյն։ Ո՜ ինչ քան զայս սքանչելի լիցի. զորս ունէր հնոցն՝ խլեաց զկապանսն. զի ուսանիցիս թէ ոչ տեղին, այլ հրացն յեղանակ բերէ զփրկութիւնս և զատանջանս։ Որք 'ի հուրն էին՝ փախեան 'ի հրոյն, և որ արտաքոյ՝ ընկղմեցան և ապականեցան։ Այն մարմինն էր սոցա և նոցա, այլ ոչ մի զգայարանս, վասն որոյ ոչ միապէս կրէին դիւրաւ։ Որպէս խառ թէ և արտաքոյ հանդիպի հրոյ, այրի վաղվաղակի. իսկ ոսկի թէպէտ և յաւէտ 'ի ներքս 'ի հուրն, առաւել պայծառանայ։

Ո՞ւր իցեն որք ասեն, տացէ թագաւորն զամենայն ինչս մեր, միայն զանձինս մեր ազատեսցէ։ Ասիր զինչ է մարմնոյ ազատութիւն. զի ոչ միայն որ զմարմինն ոչ տանջէ՝ ազատ առնէ զնա, այլ որ համարձակ յարդարութիւն կեցցէ։ Սոցին մանկանցս մարմինք ազատ ոչ էին և մատնեցան հնոցին, բայց զմեղացն ծառայութիւն 'ի բաց եղեալ կանխաւ՝ ոչ տիրեաց նոցա հուրն. զի այս միայն է ճշմարիտ ազատութիւն որ ոչ տանջի և ոչ երբէք կրէ նեղութիւն։ Դու յարժամ զմտաւ ածցես զհնոցն, յիշեա զգեհեն հրեղէն որ յայնմ յահեղ աւուրն. զի որպէս աստ իսկ զանմեղս յափշտակեաց և յամանց երկեաւ հուրն, նոյնպէս և գեհեն հրեղէն։ Եթէ ոք ունիցի փայտ խոտ եղէգն, այրէ զայնպիսիսն հուր. իսկ եթէ ոք ունիցի ոսկի արծաթ, զայնպիսիսն պայծառագոյն գործէ։

Սոյնպիսի զնիւթս ածցուք զմտաւ, և զհաւատալ չարիս բերցուք քաջութեամբ. գիտասցուք զի հաւատալ տառապանութիւնս յայնմ տանջանաց ազատէ զմեզ, եթէ կեամք իմաստութեամբ. և աստ ևս առաւել գործեացէ, ոչ եթէ զմեզ միայն, այլ և որ զմեզն ածիցեն՝ չահեցուսցուք, եթէ զուարթամիտ լինիցիմք։ Այսչափ է իմաստութեանն զօրութիւն, որպէս և առ բանսարկուն եղև յայնժամ։

Դարձեալ եթէ ոչ ինչ վնասեցան մանկունքն, լուր զիարդ փախեցաւ 'ի չարեացն. «Ծառայք ա͞յ բարձրելոյ, ելէք և եկայք» ասէ։ Ո՞չ ապաքէն առ սակաւ մի յառաջ ասէիր՝ թէ «Ո՞վ իցէ ա͞ծ, որ կարող իցէ փրկ-

կել զձեզ 'ի ձեռաց իմոց,,. զի՞նչ եղև արդ, ով բանաւոր, ուստի՞ է փոփոխումնդ. որ արտաքոյ էի՛ն՝ ապականեալ տեսեր, և զորս 'ի ներքս են՝ կոչես. ուստի՞ եկն քեզ այսպիսի իմաստութիւն: Տեսե՞ր զկարգ եղև փոխադրեալ թագաւորն. յորժամ ոչ էր զնոսա կալեալ՝ գայթակղեցաւ, իսկ յորժամ արկ զնոսա 'ի հնոցն՝ իմաստնացաւ: Վասն որոյ և ա̃ծ տեղի ետ լինել ամենայնի զոր և կամեցաւ բռնաւորն, զի յայտ առնիցէ թէ որք 'ի փառաց նորա պահպանեալք են՝ ոչ ոք իցէ կարող վնասել. զոր և Յոբայ արար, զայն և աստ գործեաց: Անդ թոյլ ետ սատանայի առ 'ի ցուցանել զամենայն զօրութիւն նորա. իսկ յորժամ թափեաց և դատարկացոյց զամենայն նետս իւր, և ոչ մնաց և ոչ մի չար խորհուրդ, յայնժամ 'ի պատերազմէ նորա մերացոյց զմեծին, զի պայծառ և առանց կարծեաց լինիցի յաղթութիւնն. զնոյն և աստ արար: Խորհեցաւ զքաղաքս նոցա այրել, և ոչ արգել. խորհեցաւ առնուլ գերութիւն, և ոչ գայթակղեցոյց. կամեցաւ կապել, և թոյլ ետ. 'ի հնոց հրամայեաց արկանել 'ի բորբոքեալ բոցոյն առաւել քան զչափ, և այսմ տեղի ետ: Յորժամ և ոչ մի ինչ հնարս մնաց բռնաւորին՝ այլ դատարկացոյց զամենայն զօրութիւնս իւր, և ապա երևեցոյց զզօրութիւնն իւր ա̃ծ և զմանկանցն զհամբերութիւն:

Տեսանե՞ս զի մինչ 'ի վախճան թոյլ ետ սրտմտութեանն, զի ցուցցէ՝ որք խորհեալ էին և վասն որոյ խորհուրդն էր՝ զիմաստութիւնն իւր և զբարի խնամս ողորմութեանն: Զոր յայսցանէ յերկոցունց յայնժամ իմացեալ բռնաւորն գոչէր և ասէր. “Ծառայք ա̃յ, ելէք և եկայք,,...: Զի՞նչ եղև, ով բռնաւոր, զի ծառայս ա̃յ զնոսա կոչես. ո՞չ ապաքէն քո էին ծառայք. Այլ քակեցին, ասէ, զթագաւորութիւն իմ, ցուցին հանդերձ գործովք զճշմարիտ ա̃ծն իւրեանց. եթէ մարդկան էին ծառայք, ոչ էր երկուցեալ հուրն 'ի նոցանէ և ոչ բարձեալ զզօրութիւն բոցոյն. 'ի ծառայից մարդկան և յայլոց ստեղծուածոց ոչ երկնչի և պատուէ: Վասն այսորիկ դարձեալ ասէ. “Օրհնեալ է ա̃ծ որ առաքեաց զհրեշտակ իւր և փրկեաց զծառայս իւր,,...: Այս ըստ ա̃յ զօրութեանն էր. ասա արդարև զառա-

քրիստոնէութիւն նոցա. «Որ յուսացան 'ի նա և արհամարհեցին զհրամանս թագաւորին և մատնեցին զանձինս իւրեանց, զի մի պաշտեսցեն զաստուածս օտարս»։

Արդ զինչ լինիցի օրինակ առաքինութեան նոցա։ Նա՝ նախ քան զայս յորժամ ասացին եթէ «զաստուածս քո մեք ոչ պաշտեմք և պատկերիդ երկիր ոչ պագանեմք», զհնոցն չարաչար վառեալ հրամայէր. իսկ այժմ իբրև 'ի գործոց իւրեանց զայս խրատեցին, ոչ միայն եթէ ոչ խռովեցաւ, այլ և գովեաց և սքանչացաւ, զի անլուր եղեն իրքեան։ Այսչափ բարիոք է առաքինութիւն, մինչ զայնոսիկ որ պատերազմողքն են՝ զօրացուցանէ և գովողս յօրինէ։ Յաղթեցին նոքա, և որ յաղթեցաւն՝ գոհանայր։ Եւ երկեցոյց զնոսա երեւումն հրոյն, քանզի մխիթարէր զնոսա յորում զոր ունէին առ Ած. ըստ որում որ Ածն էր արարածոց՝ երից մանկանցն կոչէր։ Եւ եթէ նախապատկերացք եղեն յիւրում անբութեան, այլ քանզի զամենայն տիեզերս փոխանակ ոչ արժէին զերիս մանկունսն՝ վասն որոյ գովէր զարհամարհողս իւր։ Այսչափ բանաւորք և թագաւորք և իշխանք բազմակայք հաւանեցան նմա, և երեք մանկունքն ոչ հաւանեցան նմա, այլ ծաղր արարին զանաւորութիւն նորա։ Սքանչացաւ զի ետես եթէ ոչ հակառակութեամբ, այլ իմաստութեամբ զայն գործեցին. ոչ ցաւագին վիրօք, այլ բարեպաշտութեամբ. ոչ եթէ բնական ամբարտաւանութեամբ, այլ նախանձու ճշմարտութեան։ Քանզի առաջին և մեծ բարի է յուսալն 'ի տէր, զոր և խուժադուժն այն վերագրեաց՝ եթէ «Յուսացան 'ի նա». զի ասա ոչ փախեան յառաջադրեալ տանջանացն։

Նոյն իսկ այժմ ասեմ, որպէս թէ ամենայն աշփորձութեանց շարժեսցին 'ի վերայ մեր, և օրսմունք թիւնք և բարկութիւնք թագաւորաց և նոցին խորհրդակցաց, մի երկիցուք, այլ միայն յԱծ պատկառեսցուք։ Նա և յայնժամ հնոցն վառեալ կայր. իսկ նոքա ծաղր առնէին, քանզի զմեղս կապեցին. և գիտէին իսկ որ թէպէտ և այրեսցին, ոչ լինէր նոցա վնաս, այլ անու շիջուցանէին զվերջինն որ կայ մնայ տանջանս։ Քանզի մեծագոյն տանջանք մեղացն իսկ են, թէպէտ և այժմ ոչ տանջիմք. որպէս մեծ քան զամենայն և բարձրա-

գոյն պատիւ և հանգիստ է որք կեան առաքինութեամբ, թէպէտ և սաստ տանջեսցին: Վասնզի մեղքն բաժանեն զմեզ յԱյ, որպէս և ինքն իսկ ասաց. "Մեղք ձեր որոշեն ընդ իս և ընդ ձեզ": Իսկ տանջանք ժողովեն զմեզ առ Այ. "Տուր մեզ, ասէ, խաղաղութիւն, զի ըստ ամենայն գործոց մերոց հատուցեր մեզ"....:

Որպէս ախտաժէտութիւն ինչ դժնդակ ոչ զի ունիցի միայն՝ չար է, այլ մանաւանդ յորժամ անբժշկելի իցէ, նոյնպէս և մեղք եթէ ոչ տանջեսցի, քան զիմ թշուառական է. և ևս քան զևս չարագոյն լինիցի, եթէ ոչ տանջեսցի և ոչ զխղեսցի նեղութեան: Զոր օրինակ որք 'ի փոքր ախտաժէտութիւն ունիցին, և յայնժամ յառատ սեղանս և 'ի հով ըմպելիս վայելեն և 'ի բազմակատար խորտիկս՝ առաւել են ողորմագին, զի 'ի փոքկութենէն ցաւքն աճեն, իսկ եթէ տառապի քաղցիւ և ծարաւով ըստ օրէնս բժշկաց՝ յոյս ունի փրկութեան, այսպէս և որք 'ի չարութիւնս կան, եթէ 'ի տանջանս անկանիցին, ունին քաղցր յոյս. ապա եթէ հանդերձ չարութեան յաւելուամբ և փափկութեամբ վայելեն, քան զայնոսիկ որ ըստ մարմնոյ ունին զախտաժէտութիւն՝ յոյժ և առաւել են ողորմելիք, և այնչափ առաւել որչափ ոգի քան զմարմին բարձրագոյն է:

Արդ եթէ տեսանիցես զոմանս 'ի մեղս և զկեանս 'ի նոցանէ 'ի սով հանապազ և 'ի բազում նեղութիւնս և զկեաս յարբեցութիւն և 'ի փափուկ որովայնամոլութիւնս հատեալք, յայնցանէ մանաւանդ զայնոսիկ երանելի որք 'ի նեղութեան են: Զի զլոց մեղաց հատանեն վիշտք և նեղութիւնք, և 'ի հանդերձեալ վճռին և յաւերժական դատաստանին յայնմիկ երթեալ ոչ փոքր մխիթարութիւն ընդունին. և որ բազում մեղօք իցեն, որչափ նեղութեան դիպին աստ՝ զմեղսն եղծանեն, և այսպէս անդր երթիցեն:

Արդ այսուհետև ժամ իսկ է մեզ անցանել առ 'ի խրատն փախչելոյ յերդմանէ, և զօրհանապազ ակն ունել մխիթարութեան, սատակել զերդմանն սովորութիւն զցուրտ և զանօգուտ ընդունելութիւնն: Եթէ զայս խնդրեմք, բազումք մեզ բերեալ օրինակ և այսպէս առնիցեն. իսկ եթէ ասիցեն՝ այս անուն և այն երդնուն ստէպ, ասասցուք ընդ նոսա՝ թէ և այնք ուղղեցին

չնորհաքն ա՜յ է, որ և այլոյն բերիցէ զվիշտն. բայց մե-ղաւորքն 'ի մեղաւորաց ոչ օգտիցին որք հաղորդ են յանցանաց. այլ որք՝ յուղղութեան են, այսու զմեղաւորսն զատապարտեն: Այս և որք զՔրիստոս ոչ կերակրեցին և ոչ արբուցին՝ բազումք իսկ էին, այլ մեմեանց ոչ օգտեցին. որպէս հինգ կուսանքն այն թէպէտ և 'ի խնդիր եղին՝ ոչ ինչ 'ի միմեանց շահեցան, այլ ինքեանք որ ուղղեցին և նոքա որ ոչ այսպէս՝ դատապարտեալք տանջեցան:

Փոխեսցուք այսուհետև 'ի մարմնչելոյ ընդ հոգիս մեր. մի յանկեալսն հայեսցուք, այլ յայնոսիկ որք յուղղութեան են, և փութասցուք յիշատակ առնել զհանեալ աւուրքս պահոց, և այսպէս երթիցեմք առաջի: Այս որպէս խոստումն ինչ արարեալ տանիս, կամ հանդերձ կամ ծառայ ազատել կամ անօթս պատուականս, յիշեմք առ միմեանս 'ի հասեալ ժամանակին՝ թէ զծառայն զայն և զհանդերձ խոստացաք տանիս և ժամանակ է կատարելոյ, նոյնպէս և զօրէնս զայս ուղղելով՝ առասցուք եթէ յաւուրս քառասնորդաց զչար սովորութիւնն զոր ունէաք վասն երդմանց, 'ի բաց ընկեցաք, քանզի սակաւ մի խրատ լուաք և դարձաք յայն մեղաց:

Այլ ասեն. դժուարաւ ուղղի այսպիսի սովորութիւն: Գիտեմ և ես, վասն այսորիկ ջանամ զձեզ յայլ բարիոք և 'ի շահաւէտ սովորութիւն ածել: Ո՛ր յորժամ ասիցես՝ դժուարին է 'ի բաց կալ յայսմ սովորութենէ, յայնժամ մանաւանդ փութա 'ի բաց կալ, և խնացիր ստուգապէս եթէ սովորեսցիս ոչ երդնուլ, չէ այնուհետև ումեք պէտք աղաչանաց: Ոչ ինչ դժուարին է չերդնուլն, այլ մանաւանդ հակառակն. և զիւրդ զքաղոր օրն կալ ծարաւի և նօթի և նուաղել: Նորին ասեա՝ եթէ քան զայն դիւրին է չերդնուլն. բայց սակայն եղև սովորութիւն յայսոսիկ կարող և հեշտ: Յորժամ պահքս հասանիցեն, թէ և բիւրապատիկ ոք նեղէ և հարկէ կամ 'ի գինի հաղորդել կամ յայլ կերակուրս զոր չէ արժան ճաշակել յաւուրս քառասնորդաց, թէ և մահ հասանիցէ՝ 'ի յարգելեալ կերակրոյ ոչ ոք ընդու ճաշակէ. և սակայն զսովորութիւն պարտէր առ սեղանոյն յիշել, բայց ընդելութեանն խնայեալ մեր զարժանն՝ քաջութեանք տանիմք ամենայն տառապանաց:

Նոյնպէս և վասն երդմանց եղիցի. որպէս 'ի կերակուրս որ թէպէտ և բիւր նեղութիւն ոք դիցէ 'ի վերայ մեր՝ մնամք և ունիմք զսովորականն, նոյնպէս և ըստ այսմ լինիցի, թէ և բիւր ոք աղաչիցէ, ոչ 'ի բաց կամք 'ի բարի սովորութենէս։

Որդ եթէ 'ի տուն երթիցես, զայս ամենայն ասա ցնոսա որք 'ի տանն իցեն. և որպէս բազումք բազում անգամ ելանեն 'ի բուրաստանէ՝ վարդ կամ մանուշակ կամ յայսպիսի ծաղկանց առցեն 'ի ձեռս և բերեն 'ի մատունս, և այլք ոստեղն 'ի ծառոց հատեալ հանդերձ պտղովն ելանեն, այլք 'ի բազմակատար ընթրեաց առեալ մասունս տանին 'ի տունս իւրեանց, այսպէս և դու երթալով ասա՝ տարցես խրատ կնոջ, որդւոց և ամենայն հարազատաց քոց։ Զի այս իսկ քան զբուրաստանս և զդրախտ և զանգան ընդունելի է խորհրդածութիւնս. այս վարդ ոչ երբէք թառամի, և պտուղս ոչ երբէք թարշամեալ անկանի, և խորտիկս ոչ երբէք ապականի. յայնցանէ ժամանակաւ է վայելումն, իսկ աստ հանապազ է օգուտն, ոչ զկնի ուղղութեանս, այլ 'ի նոյն յուղղութիւնս....։

Տուք ինձ այսուհետև պարծել ձեօք 'ի յանցաւոր կենցաղումս. յորժամ արդ վստահացեալ է զքանքարն՝ քննեսցէ, բաւական է ինձ վարձս վաստակոյս ձեր հաճոյ լինելդ. եթէ տեսից զձեզ պարկեշտութեամբ կեալ, առաւել ընկալայ զամենայն։ Արարէք այսուհետև զոր երբէկ խրատեցի, և այսօր ասեմ և յասելոյ ոչ դադարեմ. դատապարտութիւն սահմանեցէք որք երդնուն, դատապարտութիւն՝ որ շահ բերէ և ոչ տուգանս. պատրաստեցարուք այսուհետև զի 'ի հանդիսի ցուցանէք զուղղութիւնս։ Եւ ես իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ փորձեցից և զյարձակումն բանիս երկայն արարից, զի յերկարելովս գտից զուղղեալսն և որ ոչ այսպէս։ Իսկ եթէ լինիցի գտանել զոք յերդումն, զամենեսեան որք ուղղեցին՝ կացուցից առաջի նորա յայտնապէս, պարտաւորեալ զնա և յանդիմանեալ, որով վազվաղակի փախչիցին 'ի չար սովորութենէն։ Քանզի լաւագոյն է աստ լինել նախատ և ուղղել, քան յահեղ աւուրն յայն համօրէն ամենայն տիեզերաց առաջի ամօթով 'ի տանջանս մտանել վասն մեղաց որ 'ի ձեզ գտանի, թէպէտ և աստ

յամենեցունց տեսութենէ ծածուկ իցէ։ Այլ քաւ լիցի ունել 'ի ձէնջ փոխանակ բարի խրատուս անդ տարագիր լինել. այլ աղօթիւք սուրբ հարցն յամենայն մեղաց ուղղեսջուք և զուղղութեանն պտուղ ցուցջուք, զի առաւել հանդերձ բազում համարձակութեամբ երթիցուք և հանդերձեալ բարութեանցն հասցուք շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր փառք հանդերձ հոգւովն սրբով յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ԵԹՆԵՐՈՐԴ

Խօսք եթէ մահ և արատաւորութիւնք մեղքն բերին յաշխարհս, և նոքին գործեալ բարձցին մեղքն. և եթէ « Ի սկզբանէ արար Ած զերկինս և զերկիր ». և թէ ոչ միայն պատուէ զմեզ Ած, այլ և առնէ ըստ նմանութեան բարութեանց։

Բազում առաքինութեամբ երէկ իսկ յայտնեցայք սիրոյդ ձերում. և յայնմ բազմութենէ եթէ ոչ զամենայն ունել 'ի միտս ձեր կարող իցէք, զայն մանաւանդ զձեզ աղաչեմ յիշել՝ թէ տրտմութիւն զոր ետ մեզ Ած, ոչ վասն այլ ինչ իրաց, բայց միայն վասն մեղաց, և զայս յայտնեաց այսմ գործոյ փրկութիւն։ Իսկ եթէ 'ի զրկումն ընչից կամ 'ի հիւանդութիւնս կամ 'ի մահ կամ յայլ նեղութիւնս անկեալ՝ տրտմութեամբ տոչորիմք, ոչ միայն յայնմ տրտմութենէ ոչ պտղաբերէ մխիթարութիւն, այլ և ընդերկարէ եւս նեղութիւն. իսկ յորժամ վասն մեղաց տրտմիմք և տոչորիմք, 'ի բաց հատանեմք զբազմութիւն մեղաց և 'ի համարձակութի փոխիմք, թերևս բազում անգամ և մինչև իսպառ եղծանեմք զամենայն յանցանս։ Զայս յիշեցէք հանապազ դհանդէս, զի միայն 'ի վերայ մեղաց տուգ առեալ տրտմեսջուք, և ոչ վասն այլ ինչ իրաց. և զինչ այսորինակ դարձեալ՝ թէ զմահ և զտրտմութիւն մեղքն եբեր 'ի կենցաղս մեր, և յերկոցունցս յայտնանէ լուծանի դարձեալ։

Եւ զայս նախ առաջագոյն ցուցաք մի յայլ ինչ իրաց

բնաւ երկնչել, բայց միայն 'ի մեղաց և յանցանաց: Մի երկիցուք 'ի տանջանաց ուստի փախուստ է 'ի տանջանաց. որպէս երեք մանկունքն ոչ երկեան 'ի հնոցէն, որով փախեան իսկ 'ի բորբոքմանէն. այսպէս պարտ է լինել ծառայից ա̃յ: Եւ զի որք 'ի հնոցին կէին, տակաւին մահն ոչ էր մահացեալ, և դրունք պղնձիք ոչ էին խորտակեալ և քակեալ և ոչ նիգք երկաթիք, և ոչ այսպէս արիաբար համարձակեալք մարդիկ 'ի մեռանել, մեք զո՛ր պատասխանի ունիցիմք կամ զո՛ր ներումն թողութեան, որ այսչափ վայելեցաք բարութեանց և ոչ հասաք մինչ յայն 'ի նոցա առաքինութիւնն: Այժմ անուն միայն է մահու, իսկ յայլ գործոյ անարատ է. և ոչ այլ ինչ է մահ, բայց քուն և հեռաւորութիւն և փոխադրութիւն և հանգիստ և բարի նաւահանգիստ և փոխումն յամբոխից և ազատութիւն 'ի կենցաղական հոգոց:

Այլ զաղաչանաց զբանս աստէն լուծանեմ. քանզի այս հինգերորդ որ է զի աղաչել առաք զսէր ձեր, և կարծեմ ձանձրացեալ զամենայն լսողդ, և բաւական են ասացեալքս: Իսկ որ նուազ են միտք, թէ և առաւելումք 'ի նոյն ճառս, սակայն առաւել ինչ ոչ լինիցի: Կամ իսկ է մեզ 'ի գրոց վարդապետութիւն գտանալ պատմութեամբ. զի թէ վասն եկելոց վշտացս այսոցիկ ոչ ինչ յայտնեալ էաք, իբր զգազան ծանուցեալ էաք և ոչ մարդիկ. և դարձեալ թէ զամենայն վասն այսորիկ ասէաք, նեղսրտութիւն և կարճմտութիւն զմէնջ յիրաւի ոք ճանաչէր: Այժմ դիցուք զսիրտս մեր առ ա̃ծ, որ կարող է բանալ զմիտս մեր և հալածել 'ի ներքուստ զամենայն տրտմութիւնս: Արդ 'ի սովորական վարդապետութիւնն եկեսցուք այժմ. մանաւանդ զի և ամենայն իսկ պատմութիւն գրոց մխիթարութիւն է և մխիթարիչ. մինչ կարծեմ 'ի բաց կալ յաղաչանաց, դարձեալ 'ի նոյն պատճառս անկանիմք հանդերձ գրոց պատմութեամբ: Վասնզի և գիրք ամենայն մխիթարութիւն իսկ է որք 'ի միտ առնուն, յայնցանէ ձեզ յայտնի առնեմ. ոչ եթէ փորձիմ անցանել ընդ թիւս գրոց խնդրել բանս մխիթարութեան, այլ զի առուգապէս խոստմանն ցուցումն շնորհել, զոր այսօր ձեզ ընթեռնուլ սկսաք. զսկիզբն և որ զկնի՝ որ թուի թէ և ոչ հեռին

հեաց մեզ իշխանութիւնս, այլ և մեր ազգ բաժանեաց, է որ ըստ ձեռնադրութեան և է որ արտաքին և բնական. բնական որպէս առիւծ 'ի վերայ անասնոց և գազանաց, որպէս արծուի 'ի վերայ հաւուց թռչնոց. իսկ որ ձեռնադրութեամբ իցեն, որպէս թագաւորք 'ի վերայ մեր. այսինքն ոչ եթէ զբնութիւնն բռնաւորէ 'ի վերայ ընկերաց իւրոց, որով ըմբռնի 'ի նոյնն, ըստ արում և երկրորդն մանաւանդ փոխանակէ զառաջինն: Այսպիսիք են՝ որ ոչ են 'ի բնականս, դիւրաւ առնուն զփոխարկութիւնս: Իսկ առիւծ ոչ է այսպէս, այլ ըզբնութիւն իւր բռնաւորեալ ունի ըմբռնելով 'ի վերայ անասնոց և գազանաց, որպէս արծուի 'ի վերայ հաւուց միշտ: Սոքա ըստ ազգի ժառանգեալ են զսովորութիւն թագաւորութեան. զի ոչ ոք ետես զառիւծ փոխեալ 'ի բնութենէ կամ լեալ ողորմած 'ի վերայ անասնոց հօտի իւրոյ:

Այսպէս 'ի սկզբանէ զթագաւորութիւն շնորհեաց մեզ Ած և տէր կացոյց 'ի վերայ ամենեցունց. և ոչ այսոք միայն պատուեաց զբնութիւնս մեր, այլ և այսմ աթոռոյ բնակութեան առաւել բնակութիւն հրամանակարգեաց մեզ յերկինս զարքայութիւնն՝ բան առւեալ և զհոգին անմահ շնորհեալ: Եւ զի մի մի ասացէց, ուր անչափ մեծութիւն է համբառնալ այ գթութեանն: Բայց ոչ միայն պատուեաց, այլ և տանջէ ևս. այսոքիւք կարող է ցուցանել մեզ զբարերարութիւն և զմարդասիրութիւն իւր: Եւ յաղագս որոյ մանաւանդ աղաչեմ զձեզ զամենեսեան հանապազ, զի հանդերձ առուգութեամբ իմացուք՝ թէ Ած ոչ միայն պատուէ և բարեգործէ, այլ և տանջէ և խրատէ ևս ըստ նմանութեան բարութեանց: Եթէ ընդ հեթանոսս և ընդ հերձուածողս պատերազմ շարժի և մարտ վասն բարեբարութեանն այ և մարդասիրութեանն, մի միայն յորժամ պատուեաց զմեզ, այլ և յորժամ խրատեաց՝ ցուցցուք զնորա մարդասիրութիւնն և զբարերարութիւնն: Զի եթէ 'ի պատուելն միայն իցէ բարի և 'ի տանջելն ոչ երևեցի բարի, կիսակատար իցէ առա նորա բարութիւն. այլ չէ այսպէս, քաւ լիցի: Ի մարդկանէ լինել այսպէս յիրաւի է, քանզի խստութեամբ և բարկութեամբ ածեն զտանջանս. իսկ Ած յայսցանէ անախտ

է. եթէ բարի գործեսցէ և եթէ տանջեսցէ, ըստ նմին բարութեանց....

Օ այն իսկ զևանս ոչ մի անգամ առացից, այլ և բազում անգամ. զի յորժամ սով լինիցի և երաշտութիւն և պատերազմունք և յարիցէ բարկութիւն թագաւորական և այլ ինչ նոյնպիսի անկարծելի պատահարք, բազումք առանց օգտելոյ պատրեալք ասեն՝ եթէ ոչ են այսորքիկ արժանի խնամոցն այ: Նաև մեք զայսոսիկ մի անփոյթ արասցուք, այլ տեսցուք զգուշութեամբ, եթէ սով, եթէ պատերազմ, եթէ հիւանդութիւն, եթէ այլ ինչ հարուածս ածիցէ 'ի մարդիկ, 'ի մարդասիրութենէ և 'ի բազում գթութենէ զայս առնիցէ: Արդ տեսցուք զևանս այսպէս:

Քանզի և հարք մանկանց. որ սիրեն զորդիս իւրեանց, ոչ միշտ առ սեղանս պարապորդեալ հրամայեն, այլ և վէրս դիցեն....: Արդ եթէ մարդիկ խստութեամբ և բարկութեամբ բազում անգամ օգուտս գործեն, և այն ոչ եթէ գազանային և անմարդաբար, այլ անխայելով և սիրական գթով կարծեն տանջել զոր սիրեն, ապա որչափ յաղագս այ համարել զայս պարտ է, որ քան զամենայն հայրական գութ գեր 'ի վերոյ անցանէ իւրով առաւելական բարութեամբն:

Նա զի մի դժուարին զասացեալս համարիցիս, բեր այսուհետև 'ի գրոցս յայսցանէ յայտնեսցուք զևանս: Պատրեցաւ արհամարհեցաւ մարդն առաջին. տեսցուք թէ որպէս յանցեաւ նա, կամ զիարդ երևեցաւ ած: Մի թէ անյայտ արար զնա ամենևին, որպէս և բանն արդարութեան խնդրէ, որում զայնչափ բարութիւնս եցոյց, և այնչափ 'ի խնամոն վայելեաց, և անդէն յառաջնումն 'ի բարերարէն իւրմէ 'ի բաց կացեալ, ըստ այնմ բաժանել 'ի միջոյ և ամենևին անյայտ առնել պարտ էր: Բայց ած զայս ոչ արար, և ոչ իբրև զպիղծ համարեցաւ զնա և դարձոյց զերեսս իւր 'ի նմանէ որ այնպէս անմիտ և ապերախտ լեալ առ բարեգործն, այլ եկեալ առ նա որպէս բժիշկ առ հիւանդ:

Նա դու ով սիրելի, մի միայն ընթանալ ընդ ասացեալս, այլ խնացիր զչափ սիրոյ նորա. զի ոչ առաքեաց զհրեշտակս և ոչ հրեշտակապետս և ոչ զայլ ոք 'ի ծառայից, այլ ինքնին տէրն էջ առ անկեալն յարուցանել

զնա, միայնն առ մինն որպէս սիրելի առ սիրելի՝ որ չա-րիս գործեալ իցէ և կացցէ 'ի դժուարին կեանս՝ մնա-նիցէ սիրելին առ 'ի հարցանել և իմանալ զպատճառ վշտին, այսպէս եկն ած, և զբանն զոր խօսեցաւ ընդ նմա լի բազում գթութեամբ՝ ցուցանելով զանբաւ մար-դասիրութիւնն իւր։

Ոչ զինչ ասացից զբանս զամենայն, մինչ զի յառա-ջին բանսին նիւթեաց զգութ սիրոյ իւրոյ վաղվաղակի։ Ես ասաց անարգանօք զոր պարտն էր ասել. ով գարշ և ամենագարշ, այնչափ վայելեցեր 'ի խնամս ողորմու-թեան իմոյ, պատուեցի զքեզ արքայութեամբ և զամե-նայն երկիր ետու 'ի ձեռս քո ոչ վասն ուղղութեան և բարի գործոց քոց. առեր գրաւական գթութեան իմոյ և խնամոց որ ճշմարիտ ցուցանէին քեզ. զչար դեն ըղ-խաբօղն և զթշնամին քոյոյ փրկութեանդ արժանահա-ւատալի արարեր քան զգթութիւն տեառն քո. նա ինքն զինչ եցոյց քեզ որպէս և ես. ոչ արարքէն զերկինս և զերկիր վասն քո արարի, և զծով, զարեգակն և զլու-սին, զաստեղս. ոչ արարքէն հրեշտակք ամենայն զար-մացան յայսմիկ. և զայս վասն քո արարի և հանգըս-տեան քո և միահաղոյն իսկ զայսչափ աշխարհ. իսկ դու զփոքր և զանարգ բանս նորա և զսուտ խոստումն և ըղ-պատրանաց խօսս քան զգործս բարեգործի քո և զխոր-նամն գթութեան նորա հաւատարիմ կարծեցեր թէ իցէ, զքեզ ինքն ետուր նմա։

Օայս ամենայն և առաւել քան զայն պարտ էր ա-սել յանմիտ եղելոյն. իսկ ած ոչ այսպէս արար, այլ զհակառակն։ Ա վաղվաղակի յառաջին ձայնէն զանկեալն յարուցանէր, և զպարհուրեալն և զգօղացեալն հանդար-ձակութեամբ հաստատէր. նախ ձայնիւ կոչեաց զնա, և ոչ միայն կոչեաց, այլ յանուանէ. "Ադամ ո՞ւր ես" ասէ. այսիւ եցոյց զբազմապատիկ զսէրն և զգութ իւր։ Գիտէք զայս ամենեքեան, զի այս իսկ է նշան սիրոյ հարազատութեան. սոյնպէս և որք կոծին զվախճանեալսն՝ սովորութիւն է ասել, սոէս զանուանս նոցա յիշելով կոծին։ Իսկ որ թշնամութեամբ ատելիք են, ոչ երբէք զանուն տրտմեցուցանողին լսել կամին. որպէս և Սա-ւուղ զԴաւիթ ոչ ինչ անուանեալ՝ մեծապէս և բազ-մահնար որոգայթիւ վանել կամէր. և յորժամ զար-

Digitized by Google

ձաւ 'ի Նմանէ և ազատեաց զնա, զանուն Նորա յիշելով ոչ ընդունէր. քանզի յորժամ բազմեցաւ 'ի սեղան և զնա ոչ ետես մնեալ՝ զինչ առնէր. ոչ ասաց՝ ո՞ւր իցէ Դաւիթ, այլ "ո՞ւր է որդին Յեսսեայ,,. 'ի հօրն ա-նուանէ զնա կոչէր: Եւ դարձեալ Հրեայքն վասն Քրիս-տոսի նոյնպէս առնէին. յորժամ դարձան 'ի Նմանէ և ատեցին զնա, ոչ ասէին՝ ո՞ւր է Քրիստոսն, այլ թէ "ո՞ւր է նա,,. և ասէին թէ "ո՞չ է սա որդին Յովսեփայ,,:

Իսկ ա̃ծ ոչ այսպէս. այլ կամէր ցուցանել անդէն թէ յանցանքն ոչ վիճլից զսէրն իւր և ոչ զնախախնամու-թիւնն եհատ պատուիրանազանցութիւնն, այլ մնայ 'ի նոյն խնամսն, և գթացեալ ասէ. "Ադամ ո՞ւր ես,,: Ոչ էր տեղւոյն անծանօթ. այլ քանզի զմեղուցելոյն զկապեալ բերանն արձակէր և զմեղուցեալսն 'ի զղջումն դարձուցանէր առնուլ 'ի միտ զմեղսն և գտանել յի-մաստութիւնն իւրեանց, իսկ նոքա կային մնացին ապ-շեալք և լռեալք հանգոյն այնոցիկ որք կապանօք 'ի բան-տի անկեալ գնին, խորհէր ա̃ծ 'ի համարձակութիւն ա-ծել զնոսա հանդերձ յանդիմանութեամբն, և տայր նոցա ա-պաւինել և յուսալ 'ի նա, և հարցմամբն 'ի պատաս-խանիս ածէր զնոսա, զի այնու եկեսցեն յապաշխարու-թիւնն: Այսպիս զնա ինքն կոչեաց, որ զբազում պատե-րազմ զմտացն հատանէր յանուանէ կոչելովն, և զեր-կիւղն հալածէր, և բանիւն բանայր զփակեալ բերանն. վասն որոյ հարցանէր, "Ադամ ո՞ւր ես,,. այլ օրինա-կաւ թողի զքեզ և այլ ձևով տեսանեմ, ասէ. թողի զքեզ փառօք և բազում համարձակութեամբ առ իս, այժմ գտի զքեզ յանարգութեան և յանբանութեան:

Եւ դու միտ դիր զգուշութեամբ խնամոց և գթու-թեանն ա̃յ, զի նախ ոչ զԱդամ կոչեաց և ոչ զօձն, այլ որ քան զնոսա թեթևագոյն էր մեղուցեալ՝ զնա ածէր յառաջագոյն 'ի դատաստան, զի 'ի կարգելն սկիզբն ա-րասցէ վայելեալ 'ի զղջումն, և հանդարտագոյն մատու-ցանել նմա զվճիռն: Դատաւորք ոչ ընդունէին միայն լսել միայն քննումն առնել, այլ մերձ կարգեն զընկերս իւրեանց որք յայնս հաղորդք իցեն, և զդատաւորս իւ-րեանց կացուցանեն և առաջի նոցա բերեն զնոցին հարց-մունսն. այսպէս ատեան կազմեն, և ապա զյանցաւորսն առաջի կացուցանեն առ արդարացուցանել կամ դատա-

պարտակել, զանխտրական իմանալ, և լսել իւրեանց բանիցն խօսիցն և լսել, և ում կամին՝ իրաւունս տան, և այսպ զդատաստանաւորութեանն քննեսցեն: Իսկ ած ոչ խնդրեր միջ-նորդ առ մարդն, այլ ինքն վասն նորա դատ առնելը և միսիթարէր: Ոչ միայն այս էր սքանչելի, այլ զի և ուղ-ղէր հարցմանցն զյանցանսն: Իսկ դատաւորք ամենայն յորժամ ըմբռնեն զաւազակս և զանահաւատս, ոչ թէ որպէս նոքա գործեցին՝ խնդրեն, այլ առաւելապէս ըզ-գուշանան անդէն խնդրել զմեղացն զդատն: Այլ ած այսմ ամենայնի զհակառակն առնէ. ոչ թէ յորժամ զմեղուցեալն դատանէ՝ անդէն զգուշանայ դատել, այլ զի ուղղեսցէ և լաւագոյնս գործեսցէ, մինչ զի բոլորո-վին ինքն է ած և բժիշկ և՝ դատաւոր և վարդապետ. քանզի որպէս զած տեսանէ և որպէս դատաւոր քննէ և որպէս բժիշկ առողջացուցանէ և որպէս վարդապետ խրատ-տէ զմեղուցեալսն և բերել ածէ յամենայն իմաստու-թիւն: Տեսանէք զի բան մի սակաւ և փոքր այսչափ ե-ցոյց զՔի զթուլթիւնն: Որ զոր ասացաք, զնոյն ըն-թեռնուցուք զդատաստանն, և բոլորովին առ ձեզ զդի-շաւն սոցին: Տեսանես զի ամենայն գիրք միսիթարիչք են և միսիթարութիւն: Այլ զայս ամենայն առնեմ վասն հասարակ ժամանակիս:

Բայց նախ և զայս հարկ է ասել՝ եթէ երբ տուան գիրքս այս. զի ոչ 'ի սկզբանէ և ոչ վաղվաղակի 'ի ստեղ-ծանելն Ադամայ գրեցաւ, այլ յետ բազում ազգաց. և թէ ընդէր եբրայեցւոցն միայն, և ոչ ամենայն մարդ-կան. և ընդէր եբրայեցի լեզուով և հին յանապատին Սինայ. զի և առաքեալ ոչ պարզաբար զանեղին հանճա-րի, և սակայն ասա մեծ խնդիր կայ մեզ բանալ առ 'ի տեսանել. քանզի ասէ այսպէս. "Այս ինքն են երկու-կտակարանք, մինն 'ի լեռնէն Սինայ ծնեալ 'ի ծառայու-թիւն„: Իսկ եւս առաւել քան զայս հարկ է խնդրել. բայց տեսանեմ մեզ զժամանակս զի ոչ տայ թոյլ յայս-ակին ծով արկանել զբանս. վասն որոյ զայսուհետև զինի ժամանակս հասուցից ձեզ:

Զոր կանխատ առնէի փոխադրել յերեկոյնն, զնոյն ձեզ յանդիման ածից. և աղաչեմ զսէր ձեր զի վասն այսր հոգալով բազմապատիկ փոյթ արասջիք: Ո՛վ քանի ոչ իցէ սակաւ. ծառայ զսէր իւր ոչ համարձակի կա-

Digitized by Google

ցար երբէք ։ Գովէք այժմ զառաքեալս ․ բայց յորժամ դուք ուղղիցիք, յայնժամ լինիցի գովելի, ոչ միայն նոքա, այլ և դուք իսկ, և հանդերձ փափագանօք լուէք առա- ցելոցն, և ուղղեալ 'ի միտ առջիք իմաստութեամբ հա- ճել զա՟ծ ։ Ինքն այսպէս խնայէ 'ի քեզ, մինչ անգամ 'ի գլուխ քո չտայ երդնուլ․ իսկ դու այնպէս արհամար- հես զնա, մինչ զի համարձակիս երդնուլ 'ի փառս նորա ։

Այս զինչ լինիցիմ, ասէ, յորժամ նեղիցեն զիս 'ի տանջանս և 'ի հարկ մուծանիցեն ։ Այս է այն նեղութիւն, ով մարդ․ այլ զայս ամենայն 'ի քէն ուսանիցես՝ եթէ հաճոյ է զամենայն չարչարանս կրել, քան անցանել ըստ օրէնս տեառն և 'ի բաց կալ 'ի վտանգից ։ Արդ ոչ եր- բէք երդումն արժանի առնէ հաւատալոյ, այլ վկայու- թիւն կենցաղոյս, զգուշութիւն, վարք և ճգնութիւնք և կայումն բարութեանց ։ Բազումք բազում անգամ զանձինս հերձին յերդումն և ոչ զմի ոք ոչ հաւանեցու- ցին․ իսկ ոմանք հայեցուածովք միայն այսու և ոչ առելով՝ արժանահաւատալի են քան զայնոսիկ իսկ որք յեր- դումն ոչ սուտ երևեցան ։ Զայս տեսեալ ամենեցուն և զօր առաջիկայ տանջանսն, որք երդնուն և որք ուրա- նայցեն զերդումն, զի յոյժ առաւել է քան զաչաց տե- սանելիս, 'ի բաց կացցուք այսուհետև 'ի չար սովորու- թենէն․ զի այսու յայլ ուղղութիւնս ընթասցուք և հանդիպեսցուք հանդերձելոց բարութեանցն․ որոց միշտ ամենեցուն մեզ հանդիպել շնորհօք և մարդասիրու- թեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի․ որում վայելէ փառք յաւիտեանս յաւիտենից․ ամէն ․

## ՃԱՌ ՈՒԹԵՐՈՐԴ

*Յաղագս գնալոյ տեառն մրյ 'ի գլխաւորն անդ ընդ երեկս․ և վասն փախչելոյ յերդմանէ ։*

Իմացայք յառաջագոյն եթէ զիարդ ամենայն գիրք մխիթարիչք են և ամենեցուն զմխիթարութիւն բե- րեն, թէպէտ և պատմութիւնք իցեն ազգաց և տոհ- մից ։ Քանզի «Ի սկզբանէ արար Ած զերկինս և զեր-

Digitized by Google

կեր„, պատմութիւն է ազգաց. այլ եղոյց բանն որ բա-զում մխիթարութեանց լցեալ էր։ Նա զխորգ. քան-զի երկու սեղան արար ա՛ծ, զերկիր և եդ առաջի մեր և զծով. և դարձեալ ըստ Թուոց երկու լուսաւորս ա-րեգական և լուսին լուցեալ 'ի վերուստ. և երկու ըն-թացս ժամանակի տիւ և գիշեր, մին 'ի գործ, մին 'ի հանգիստ։ Ոչ փոքր քան զատուցեալն բերէ մեզ սպա-սաւորութիւն գիշերն. այլ որպէս 'ի վերայ ծառոց ա-ռացի, Թէ պտղաբեր ծառք և անպտուղք զոյգ ունին պէտս, նա զի և ոչ հարկէ զմեզ յընտանի ծառս մեր-ձենալ 'ի պէտս շինուածոց. և ընտանի անասունք ոչ ա-ռաւել ունին զպէտս քան զվայրենիսն, և զանընտանիս ածեալ 'ի քաղաքս մեր՝ երկիւղն համդարտագոյն առ-նէ և ընդելացուցանէ ընդ իրեարս, այսպէս ամենեքեան միաբան պնդութեամբ ընդ միմեանս. որովք զանձինս զզօրութիւնն մերձ կացուցանէ, և սամձբք զհիւանդու-թիւնս մեր լուծանէ. բազում անգամ 'ի նոցին իսկ 'ի վայրենեացն դեղս կազմեն որդիք բժշկաց, և զհին մեղս մեր յիշելով։

Յորժամ լսեմք յայն Թէ" զահ և զերկիւղ ձեր ար-կից 'ի վերայ ամենայն գազանաց երկրի„, յայնժամ զպատիւ ազգիս մերոյ զմտաւ ածեալ ուսանեմ զայս և յիշեմ զմեղս մեր։ Որպէս և զերկիւղն մեր եղծ, և զսկզբնականն պատուհասն եհատ և էած յառաւե-լութիւն, սակայն ուսանիմ զոր 'ի մեղացն եղև մեզ պատիժս այս։ Բայց որպէս և ասացի իսկ, զայսոսիկ այսպէս գիտեցոյց, և 'ի կենցաղոյս օգուտ մեզ կատա-րէ, այս է ասացեալն և առաւել քան զայն զոր արար ա՛ծ։

Այնպէս և գիշեր ոչ նուազագոյն քան զատուցեալն բերէ զպէտս անձանց մերոց, քանզի աշխատելոց հան-գիստ է և դեղ հիւանդութեան։ Բազում անգամ բը-ժիշկք զպէտս հիւանդաց քննեն, և բիւր դեղս կազ-մեալ ոչ կարացին փոխել զախտ հիւանդութեանն. ինք-նակամ քուն եկն 'ի վերայ և զհիւանդութիւնն եղծ և փոխեաց 'ի բազում աշխատութենէն։ Ոչ ախտից մարմնոյ միայն, այլ և հոգւոց ախտից գիշեր բժիշկ է և հանգուցանէ զաշխատեալ անձինս։ Բազում հարք կո-րուսին զորդիս, և բիւրք բիւրուց աղաչեն 'ի բաց ընկե-նուլ զկոծն և ոչ կարացին. եկն գիշեր և քնութիւն

քնոյ կատարոյց զաշան, և 'ի չարեաց աւուրն փոքր ինչ մխի-
թարութիւն ընկալաւ և լռեաց 'ի կոծոյ և յողբալոյ:

Նոր այսուհետև 'ի պատճառն եկեսցուք ուստի և զայս ասացաք: Զանզի բարի է գիտել ամենեցուն և 'ի ձէնջ ուսանել թէ վասն էր. ոչ 'ի սկզբանէ տուաւ գիրքս այս և պատմութիւն: Այլ զինչ արդեօք. այսօր եկն մեզ կատարումն շաբաթուս, և երկեայ մերձենալ 'ի պատճառս յայս և փաղփողակի հատանել զվարդապետութիւնս: Ոչ բազում այլ աւուրց պատճառս է մեզ, վասն որոյ կանխաւ զայս ասեմ. այլ մի դժուարանայք, աղերսեմք. սակայն տոկոսեօք հատուցից ձեզ ըզպարտս զայս. զի և այսպէս մեզ բարի է առնել:

Արդ զոր երէկն մնաց, այսօր ասացից: Այլ զինչ իցէ մնացեալն. "Այլ լուան զձայն գնալոյ տեառն այ 'ի դրախտի անդ ընդ երեկս,,: Ոչ ինչ է զոր ասես, պատմեա ինձ. ած գնայցէ: Ուր գնայ ած. և զիա՞րդ գնայ, ասա ինձ, որ յամենայնի է և զամենայն լնու և զամենեսեան կատարէ, զիա՞րդ գնայցէ: Արդ այսպէս իմանալ եմ Ադամայ, զի դողացուցեալ պակուսցէ զանձն նորա զի մի յանդգնաբար մերձեսցի և այնպէս կայցէ խօսել, զի 'ի փախչելն և 'ի թաքչելն բան ինչ պատասխանւոյ ուսանիցի նախ քան զբան նորա. Որպէս որք հանդերձեալ են 'ի դատաստան մտանել և ունիցին պարտաւորութիւն յանցանաց, ցամաքին և դեղնանան և պակուցեալք դժուարին երեսօք երևին դատաւորին, զի 'ի կերպարանաց իւրեանց մարդասիրութեան հանդիպեսցին, և 'ի դատաւորէն ողորմութիւն և թողութիւն ընդունիցին, նոյնպէս և Ադամայ եղև: Այլ պարտ իսկ էր նմա դողալ և ցանկալ 'ի մտանել առ դատաւորն. վասն որոյ այնպէս յայտնէր զինքն նմա ած. այլ ինքն ոչ գնայր. եթէ իմանայր, ուստի իսկ կարծէր եթէ գայր ած: Նայց այս մեղուցելոց սովորութիւն է. հանապազ ընդոստելով 'ի զարհուրման կայցեն, դողան 'ի սոսաւրաց անգամ, հանապազ երկնչին 'ի սասանայէ: Նազում անգամ զբազումս տեսանելով ընթացեալ յայլ պատասխանութիւն, և մեղուցեալն կարծէ թէ առ իս է մուտ նոցա: Այլ զայլս տեսանելով ընդ միմեանս 'ի խորհուրդ, կարծեն նոքա եթէ իմացան զմեղս մեր, և վասն մեր է զոր խօսին:

զամենայն ինչ գործէին. որպէս և Յովբ ոչ թէ միայն զԹագն և զծիրանին տեսանէր զԹագաւորին, այլ առաւել զհոգին տեսանէր զգեցեալ քուրձ, երաշտացեալ, այտուցեալ վիրօք և Թշուառական լեալ, գերի և ծառայ ախտից, արհամարհեաց զիշխանուԹիւն նորա. զի կերպ էր և ոչ ճշմարտուԹիւն, արտաքոյ Թագաւոր տեսանիւր: Նա զի՞նչ օգուտ իցէ 'ի վերոյ տեսիլք վայելչուԹեան, յորժամ 'ի ներքուստ այսպիսի աղքատուԹեամբ լի իցէ. կամ զի՞նչ վնաս իցէ արտաքոյ աղքատուԹիւն, յորժամ 'ի ներքս լի իցէ հարըստուԹեամբ:

Այսպիսի էր Պաւղոս. մտեալ 'ի բանտն աղօԹեաց միայն, և զհիմունս զամենայն շարժեաց, զկապանսն կապելոցն ելոյծ ոչ սրով հատեալ, այլ բանիւ. ըստ որում ոչ եԹէ միայն նման առիւծու, այլ ևս առաւել զօրաւորս պարտ է կոչել զայնոսիկ որ ըստ ա̃յ հաճոյք են: Քանզի առիւծ բազում անգամ անկանի 'ի վարմս որսորդաց, պարաւանդեալ շուրջ փակի և կապեալ ածի. իսկ սուրբքն յորժամ 'ի կապանս մտանէին, յայնժամ զօրանային: Որպէս և երանելիս այս 'ի բանտին արար. զկապեալսն արձակեաց, զհիմունսն շարժեաց, իսկ ըզբանտապետն կապեաց և անդէն ած 'ի բարեպաշտուԹիւն: Առիւծ գոչէ և փախուցանէ զգազանս. իսկ սուրբն բանիւ զդևս հալածէր յամենայն կողմանց: Ոչ էին առիւծու կուտակն Թաւամազեայ, մագիլք և ժանիք որքեալ ատամանցն. զէն արդարոյ իմաստասիրուԹիւն, համբերուԹիւն, անտեսուԹիւն կենցաղոյս ամենայնի: ԵԹէ այսպիսի զէնս ունիցի ոք, ոչ եԹէ զչար մարդիկ միայն, այլ և զհակառակ զօրուԹիւնն իսկ ծաղր առնէր: Դու ով մարդ, հոգա միայն յաղագս կենաց և հաճոյից ա̃յ, և ոչ ոք է որ գեր 'ի վերոյ լինիցի քեզ. այլ Թէ և քան զամենեսեան տրուպ իցես, քան զամենեսեան զօրաւոր լիցիս. որպէս և որ հեղգն է յառաքինուԹիւնս հոգևորականս, Թէպէտ և բազմապատիկ զօրուԹեամբ իցէ, դիւրաւ վնասի 'ի խորհողացն մա չար: Նա և զայս ևս ցուցանէ աստուածեալ պատմուԹիւնն, ուր առէ՝ իբրև զաղուէս տկար:

Այդ Թէ կամիցիս և այլ ուստեք ուսանել, ցուցանել փորձիւ զիւրդ անպարտանելի են արդարքն, և մեղա-

ւորք դիւրին առ 'ի կորնչել: Լուր զխորդ զերկոտասանն մարգարէն պատմէ. “Ոչ այսպէս են ամբարիշտք և ոչ այսպէս, այլ որպէս հողմ զփոշի զի հոսէ յերեսաց երկրի„: Որպէս փոշի, ասէ, առաջի սաստկութեան հողմոյ դիւրաւ հոսի, նոյնպէս և մեղաւորն յամենայն փորձութենէ յաղթահարի. յորժամ այլ ուսուցք ոչ գուցէ, ինքն ընդ անձին իւրում մարտնչի և պատերազմ յամենայն կողմանց բերէ 'ի վերայ իւր, և ոչ ուսուցք է նմա յոյս փրկութեան. իւրովք կամօք նախատ լինի, և ամէայ կախւս և փորձութիւնս ինքեան մատուցանէ յամենայն կողմանց բստ սովորութեան: Իսկ արդարն ոչ է այսպէս, և թէ որպէս է՝ ես ասացից. “Որ յուսայ 'ի տէր, ասէ, որպէս լեառն Սիոն ոչ սասանեսցի յաւիտեան„: Զանզի ուղղափ և պատերազմունք յաղթեն և նետք հարկանեն, զերանն փախուցանել ոչ կարեն, և ոչ հողք ինչ առնու զքէն. Թէպէտ և բազմապատիկ մեքենայս շարժեն, դու ինքնին քակեալ լուծանես ըղձոյին զօրութիւն: Նոյնպէս և արդարն ուղղափ և վէրս ընդունեցի յինքն՝ ոչ ազդէ նեղութիւնքն, և խորհըրդածութիւնք չարին լուծանեն զչար զօրութիւնն իւրեանց, ոչ եթէ մարդիկ միայն, այլ ես առաւել դևք: Լուեալ էք բազում անգամ եթէ բանսարկուն ուղղափ մեքենայս շարժեաց 'ի վերայ Յոբայ, և զանառիկ լեառն ոչ եթէ միայն ոչ սասանեցոյց, այլ ինքն իսկ գլորեալ և անմշեցեալ հեռացաւ, և նետք նորա խորտակեցան, և 'ի պատերազմաց իւրոց կորացաւ, և վանունն նորա եղև ընդունայն:

Ոչ այս գիտելով մի հեղգասցուք վասն կենաց մերոց, և վասն ընչից կորուսանելոյ մի ինչ փոյթ արասցուք, և մի վասն փառաց եղծանելոյ, մի վասն մարմնոյ ծերանալոյ, մի վասն գեղեցկութեան թառամելոյ, մի վասն փափկութեան հեռանալոյ. այլ հանապազ վասն ոգւոց մերոց մաշեսցուք 'ի հոգս: Զանզի զմարմինն հիւանդացեալ տեսեալ հնարիւք փութացեալ բժշկել. Թէպէտ և ամենեցուն ոչ է դիւրին. բայց հիւանդացեալ հոգի դիւրին է ամենեցուն որ կամիցին: Ի մարմնոյ հիւանդութիւն դեղոյ պէտք են և արծաթոյ առ 'ի բժշկութիւն. իսկ հոգևորականն՝ ուղղութիւն վարուց, որ է անմաշելի: Մարմնոյ բնութիւն բազում աշխատութիւն կրէ, մինչև զվէրսն կամ

Digitized by Google

զմեղութիւնսն փոփոխել. իսկ հոգւոյն ոչ այսպէս, այլ խորհելն և կամելն միայն բաւական է, և զամենայն ուղղէ. Այլ այս 'ի խնամոցն ոչ գործեցաւ. քանզի 'ի մարմնոյ հիւանդութենէ ոչ բազում ինչ վնաս լինիցի. զի թէպէտ և ոչ կամիցիմք և ոչ անձն ունիցիմք մահու, նա նոքին տառապանի և եղծանի անձնեւին. Իսկ հոգիք մեր անմահք և յաւիտենից են, և առողջութիւն նոցա ընտանի և բուռ բնութեան է, ուստի յոյժ վեհագոյն երևի, և հարկ է զօրհանապազ առողջ պահել, և մեծ հեշտեաւ արար և անծախելի և առանց երկանց զբժշկութիւն.

Արդ զի՞նչ ունիցիմք պատասխանի կամ զո՞ր ներել թողութեան, զի յորժամ մարմին հիւանդանայ որ արծաթոյ պէտք են և բժշկաց աղաչելոյ և բազում համբերութեան իբր յերկուսն՝ այնչափ բարեաւ հոգամք և խնամարկեմք, նա զի և ոչ ինչ վնաս յայնմ հիւանդութենէ լինիցի մեզ. և զոգիս մեր արհամարհել որ ոչ արծաթ կորուսանելոյ պէտք են և ոչ այլ ծանրութիւն ձանձրութեան կամ երկուղք ցաւոց, այլ առանց այս ամենայնի յօժարելն և խորհելն միայն զամենայն կարող է ուղղել. Այլ զայս հաւատեաւ գիտասջիք, եթէ ամենայն ջանիւ զայս ոչ արասցուք, հասանելոց եմք յետին տանջանացն և անհնարին չարչարանացն.

Ասա ինձ ով մարդ. եթէ ոք խոստանայր քեզ զարուեստ բժշկութեան ուսանել առանց արծաթոյ և աշխատութեան, ո՞չ բարեգործ համարէիր զնա, և ախորժելով ընդունէիր առնել և կրել զինչ և հրամայէր. Ահաւասիկ առանց աշխատութեան հանեալ կայ բժշկութիւնս՝ ոչ մարմնական որ անցանէ 'ի կենցաղումս, այլ հոգևորական. եթէ ուսանիցիս, հասանես և վայելես յանանց բարութիւնսն, և հեշտեաւ ուսանիս զդեղ հիւանդութեանն, և առանց երկանց և ցաւոց յառողջութիւն գայցես հոգւով. Մի այսուհետև հեղգասցուք. Ո՜ինչ վտանգ իցէ, ասա ինձ, 'ի բարկութենէ լռել և զյանցանս թողուլ . . . . . . . . . *
բամբասողս, կարող լինի լռեցուցանել. Ասա թէ տեսանէ ոք զայն որ ոչ երդնուն՝ գարշելի բան ինչ խօսեցեալ, այնպէս առնէ զնա վաղվաղակի և ծաղր, և հեգ-

* Թուղթս մի անկեալ է յօրինակէն.

նելով տեսացէ՝ եթէ դու որ զՀաւատացելքն և զայսն եր-դումն Համարէիր, և որ ոչ այսպէս՝ սաստէիր, այժմ զարշելի բանիւք անանչեցուցանես զլեզու քո։ Արդ մի ինչ ակամայ Հասեալ Հալածանք 'ի պարկեշտութենէս յայսմանէ 'ի բաց կացուցեն զմեզ։

Ոչինչ արդեօք եթէ Հարկ ամենեցեն երդնուլ։ Սուր օրինազանցութիւն է, անզ ըստ Հարկն ոչ է Հարկ։ Այո է, ասեն, կարողութիւն ամենեքին ոչ երդնուլ։ Ոչինչ խօսիս. Աստ Հրամայեաց, և դու Համարձակիս ասել ե-թէ կարողութիւն իցէ պահել զօրէնս. անկար իսկ և անհնարին ոչ պահէին է, և զայս արդէն իսկ 'ի Հասեալ իրաց Հաւան առնել զձեզ խորհիմ, զի ոչ չերդնուլն, այլ երդնուլն է անհնարին։ Հաւատրկ ոմն Հրամայե-ցաւ 'ի թագաւորէն Հանել որոց ընկեալ են 'ի քաղա-քիս, և այժմ իրի ակն ունիցիք և ասիցէք զՀրաման 'ի վեր եղեալ քան զզօրութիւն, և խնդրողաց ումեմն ա-սիցէք՝ վասն ո՞յր ստիպէք զմեզ որ անհնարին է կատա-րել։ Նա որ ասիցեն. զինչ է զոր ասէքդ, միթէ կարո-ղութիւն իցէ պատճառել. Թագաւորական Հրամանք են, առ որ Հեզգալ չէ Հնար, կամ ոմն զոր խնդրեաց՝ ոչ տանել, և 'ի նոյն փութայք մինչ կատարիցի։ Իսկ Աստ Հրաման ետ փախչել յերդմանէ, և ասիցէք զիարդ է կարող մարդ առնել զայդ։

Արդ վեցերորդ օր է յորմէ Հետէ վասն այսր միոյ պատուիրանիս ասաք խօսել ձեզ ձեր. այժմ կար-գել խորհիմ զամենեսին որպէս զԹոյլս և զանկատարս։ Եթէ ոչ զգուշանայցէք, ոչ ունիցիք պատասխանի և ոչ թողութիւն. եթէ ոչ էիր ասացեալ և պատուիրեալ, յանձնէ ձերմէ մնանալով պարտէիք առնել զայս. ոչ զանազան արուեստից պէտք էին, ոչ ինչս ծախելոյ առ 'ի կազմել։ Իսկ յորժամ այսչափ խրատուք 'ի խորհր-դակցութիւն առեալք՝ զինչ պատասխանի Համդերձեալ էք տալ բանին յաւուրն դատաստանի առաջի ահաւոր բեմին յորժամ պարտաւոր գտանիցք այսմ անօրէնու-թեան. յայտ է եթէ ոչ մի բան ոչ ունիցիք պատաս-խանի տալ։ Արդ ո՞ր նեղութիւն իցէ. ուղղութեամբ գնալ առատ, եթէ ոչ ուղղել և տանջել յաւիտեան, կալ և տեսել վերջին դատապարտութեանն։

Զայս ամենայն 'ի միտ առեալ, բազում ջանիւ 'ի

մեղացս յայսցանէ հեռասջիք, և միմեանց հրամայեսջիք պահել որ զայս չափաւորս լուեալ էք, զոր մեծաւ զգուշութեամբ ունիցիք յըշտեմարանս մտաց ձերոց. զի յորժամ մեք լռիցեմք, դուք զմիմեանս խրատեսջիք. հաւաստի օրինակ տայցէք զանձինս զտուեալսն կատարել, որով զամենայն իսկ զօրէնսն կարող լինիջիք տանել, և հասանիցէք յաւիտենական պսակացն: Որոց լիցի ամենեցուն մեզ հանդիպիլ շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ընդ որում հօր փառք հանդերձ հոգւովն սրբով այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԻՆՆԵՐՈՐԴ

Գովութիւն գովասանական յաղագս ուղղելոյ ժողովրդեանն չերդնուլ. և թէ զինչ կերպակերպ պարտ է մտանել յեկեղեցին և ունկն դնել բանից Տն. և ընդէր յետ բազում ժամանակաց տուաւ գիր. և յութե-տասներորդ սաղմոսէն Դաւթի. և թէ չէ պարտ երդնուլ:

Եւ նախ ընդ ձեզ էի և այժմ առ ձեզ եմ, պարտ է և հանապազ իսկ կալ ընդ ձեզ, ոչ եթէ ըստ մարմնոյ գոլով, այլ զօրութեամբ սիրոյ. ոչ իսկ այլ կեանս իցէ ինձ, բայց միայն դուք և ձերոյին փրկութեան հոգամ: Որպէս երկրավաստակն ոչ այլ ինչ ունի հոգալ՝ բայց զսերմանիսն և զբոյսն, և նաւուղիղն զալիս ծովուն և զնաւահանգիստն, այսպէս և ասող բանին զլսողացն և զնոցին զանդայթակղելի կենաց, որպէս այժմ եսս եմ: Ըստ որում զձեզ զամենեսեան հանապազ բերեմ յըշտեմարանս մտաց իմոց, ոչ եթէ աստ միայն, այլ և 'ի տունս ձեր: Թէպէտ և անչափ ժողովուրդ և անթիւ իցեն, և փոքր չափ ըստ հասակի սրտի իմոյ, սակայն լայն և ընդարձակ է սէր ձեր առ մեզ, և ոչ լինիջիք նեղեալ և անձուկ 'ի մէնջ. այսուհետև ասացից արժան է և ոչ մեզ առ ձեզ անձուկ լինել:

Եւ այս ուստի՞ լինիցի յայտ. իմանալ բազմաց և մեզ պատմել եթէ զպատուիրանն կատարեցէք, և միմեանց օրէնս դիք, և դատապարտութիւն սահմանիցէք և տան-



Digitized by Google

Ջանս այնոցիկ որ երդնուն, որպէս վայելէ խոկ ձերում իմաստութեանդ. և բարձրագոյն սիրոյդ այդ է նշան։ Այլ ես ոչ ամօթ համարիմ նախ և յառ ասել զայս. քանզի ոչ է այս բռնութեան, այլ խնամակալութեան և գթոյ այսպիսի քննութիւն։ Եթէ բժշկի ոչ է նախատինս քննութիւն առնել վասն հիւանդի եթէ զիարդ է կամ որչափ վտանգեցաւ, որչափ ևս առաւել մեզ պարտ է քննել վասն ձերոյին փրկութեանդ։ Որ այսպէս ուսանիմք եթէ զինչ շահեցայք կամ զինչ մնացեալ եղև. զայս հաւատեաւ գիտելով, ապա և այլ դեղս կենաց դիցուք։

Այլ զայս իմացեալ մեր, զի 'ի գործ արկեալ լցէք ըզպատուիրանս, գոհացայց զմեծ սիրոյն այ̃, զի ոչ 'ի վերայ վիմի սերմանեալք և ոչ 'ի մէջ փշոց, և ոչ երկար ժամանակի և բազում խնդրոց պէտք են ձեռնարկել 'ի հունձս հասկաց։ Վասն որոյ ստէպ ունիմ զձեզ 'ի սրտի իմում, յաղագս որոյ ոչ աշխատեմ զաշխատութի̃ վարդապետութեանս, յորժամ ունկնդիր եղեալ դիւրաւ շահիցիմք զմեծութիւն։ Այս և բաւական է մեզ ստանալ զվարձս զայս, թէև տարածել, օրինակ առնուլ և հաւանեցուցանել զամենեսեան և վասն ձեր համբերել աշխատութեան։ Այլ զի դուք երևեցուցէք բազում բարեմտութիւնս, բեր արդ և մեք զպարտս զոր խոստացաք յառաջագոյն՝ հատուսցուք։ Այլ արդ ոչ տեսանեմ զամենեսեան աստ որոց զբանն խոստացայ։ Այլ զինչ իցէ պատճառն. թերևս և ոչ ինչ։ Քանզի յայսմ սեղանոյ ոչ ինչ է պակասեալ, այլ սեղանս մեր լի է հոգևորական կերակրովք, և ճաշակեն ամենեքեան որք մերձ են.

Այլ կարծեն ոմանք եթէ զկնի կերակրոյ ոչ է արժան յունկնդրութիւն գալ ա̃ծաշունչ գրոց։ Բայց ոչ յիրաւի զայս կարծեն, և ոչ է այս առանց մեղադրութեան. զբազում և զերկար բանս Քրիստոս զկնի խորհրդական ընթրեացն խօսեցաւ, և այ̃ չէր անվայելուչ. կերակրեաց զբազմութիւն ժողովրդեանն յանապատի երկիցս և յոլով անգամ, և զկնի սեղանոյն բանս խօսեցաւ յականջս նոցա։ Եթէ պարտ է և սքանչելիս ինչ ասել, եթէ յայնժամ պատուական է ա̃ծաշունչ գրոց ունկնդիր լինել։ Յորժամ դու ինքն զքեզ հաւանեցուսցես, և զկնի կերակրոյ և ըմպելեաց ոչ նեղութիւն

համարեսցիս յեկեղեցիս հանդիպել և ըստ այսմիկ հա-գալ, յորժ լաւագոյն է և պատշաճ, և ոչ յարբեցու-թիւն և ոչ յաւելորդ կերակուրս ածցիս, սուրբ գալ խրատեսցէ զքեզ չափաւոր կերակուր և ըմպելի ընդու-նել. զի մի յորժամ խառնիցիս 'ի մէջ եղբարցս, հա-գինուոյն աղտեղութեան գարշելի թուէս 'ի քէն, և ծաղր մերձաւորացն լինիցիս։

Օ՛այս ոչ միայն ձեզ այժմ ասեմ, այլ և այնոցիկ որ մնացեալ իցեն 'ի ձէնջ, զի զայսոսիկ ձեզք ուսանիցեն թէ կերակուր ոչ արգելու ունկնդիր լինել գրոց, այլ տխրութիւն և ծուլութիւն։ Դուք իսկ ուսուցէք թէ յիմարութիւն է զայս ոչ պահել, և այլ ևս դնիցէք 'ի վերայ պարտաւորութիւն առաւելագոյն, այլ և չարա-չար՝ որ ոչ հաղորդեսցի այսմ սեղանոյս։ Օ մարմինդ դարմանես, և զհոգիդ սովամահ առնես, և զի՞նչ ունի-ցիս տալ պատասխանի։ Յաւուրս պահոց թերևս ունի-ցիս պատճառել զտկարութիւն մարմնոյ. իսկ յունկն-դրութիւն գալ զի՞նչ ունիցիս ասել. քանզի ոչ է պարտ և իրաւ վասն տկարութեան մարմնոյ արգելուլ և ոչ 'ի միտ առնուլ զամենայն բանս։ Եթէ ասէր՝ եթէ մի ոք որ կերակուր և ըմպելի առեալ իցէ՝ ունկնդիր լինիցի սուրբ գրոց, ունէիր ինչ թողութիւն. իսկ այժմ յոր-ժամ եկեալ եմք և կոչեմք զձեզ գթութեամբ և ոչ արգելումք յեկեղեցւոյ որ կերակուր առեալ իցեն, զո՞ր ունիցիք տալ պատասխանի։

Անպատրաստ ունկնդրութեան նոքա են որ ոչ թէ կերակուր ուտիցեն, այլ որ զասացեալսն ոչ առնուն 'ի միտ, որ լի են ծուլութեամբ և մոլորեալ մտօք և յօ-րանջելով, լոկ զմարմինս աստ ունիցին, և մտօքն յայլ իրս մոլորեալ. այնպիսիքն թէպէտ և մօտ իցեն 'ի լսել, ոչ ինչ օգտիցին։ Իսկ որ կայտառ մարմնով իցեն և զըւ-արթ մտօք, թէպէտ և տկարութեամբ անկեալ կայ-ցեն, աջողակ և 'ի դէպ է այնպիսեացն ունկնդիր լինել մեզ։ Յարտաքին ատեանսն յիրաւի օրէնքս այս եդեալ են, զի ոչ հաւասար կարեն լինել յիմաստասիրելն. քան-զի ոչ ուտեն կերակուր մինչև ցյագումն, այլ խճողին և պարպատին յառաւելութենէ, և արբեցութեամբն յիմարեալ թմբրին, ըստ որում զանձինս իւրեանց անօ-գուտս արարեալ՝ արգելուն 'ի դատաւորաց յայնպիսի

անօրէնութիւն և 'ի խորհուրդ գալ։ Իսկ աստ ոչ է այսպէս, քան լիցի. այլ որ ուտէ պարկեշտ անձամբ ըստ պատշաճի, քան զծամացեալ պահողն որ զբաղեալ և մոլորեալ միտք իցէ՝ պատուական է։ Ուտել ոչ այնչափ մինչ 'ի ծանրանալ որովայնի ուստի խաւարին միտքն, այլ մինչ զօրութիւն մարմնոյն հաստատիցէ։

Իսկ խրատս այս և այլում ժամանակի իցէ պատշաճա մերձենալոյ. Թէպէտ և յուլանայք և դժուարիք այժմ ընդ վարդապետութիւնս մեր, նա և մեք իսկ դժուարիմք միտք վասն չեկելոցն առ ընկերաց ձերոց. Զի որպէս գթական մայր յորժամ սեղան դիցէ և հանարէն որդիքն ոչ եկեսցեն՝ տխրի և երկնի, սոյնպէս և ես տոչորիմ և դժուարիմ, զի եղբարքն մեր այսմ սատացուածոյ ոչ ժամանեցին։ Իսկ դուք որ զծուլութիւնս զայս 'ի բաց ընկեցէք, և զայս ես խոստացարուք ինձ զի հանդերձ ստուգութեամբ զամենայն զոր լուէք՝ առ նոսա հեղուցուք, և ես յօժարութեամբ զամենայն առկից յականջս ձեր, զի և որք ոչ ժամանեցին՝ այս է մխիթարութիւն ձերումդ սիրոյ վարդապետութիւնս. և դուք խնամով լուարուք ինձ, գիտելով զայս թէ բազմացն զայս ձեզ հարկ է պատմել։ Այլ զի հաստատուն առ մեզ բանս լինիցի, 'ի վերուստ առցուք զասացուածս։

Խնդրէաք յառաջագոյն թէ վասն էր յետ այնչափ ազգաց և ժամանակաց տուան գիրք. ոչ Ադամայ, ոչ յաւուրս Նոյի և Աբրահամու, այլ Մովսիսի տուաւ գիր։ Ի բազմաց լուայ զի ասէին. եթէ պատուական ինչ էր, յառաջնմէ պարտ էր տալ. իսկ եթէ ընդունայն, և ոչ զկնի այնմ ժամանակի պարտ էր յաւելուլ։ Արդ զայսպիսի քննումն փորձեսցուք տեսանել զոր ասեն եթէ պարտ է 'ի սկզբանն տալ գիր, ապա թէ ոչ ընդէր յետ այնորիկ։

Քանզի կաթն ընդունել կերակուր պատուական է, այլ յորժամ տղայք իցեմք, և ոչ միշտ տայցեն. վերջին կերակուրս քաղցրագոյն է, այլ նախ քան զկաթամբ կերակրել ոչ տան մեզ մինչև մեկնիմք 'ի տղայական հասակէն։ Պարձեալ և հունձք ցանկալիք են, այլ հանապազ ոչ կատարին. աւուրք ձմերայնի հանգիստ են, բայց և նոքա փոփոխին։ Այլ զինչ արգեօք, գիրն ո՞չ էր պատուական. նա և ես պատուական և կարի կարեւոր. Ա-

գե՞ր, ասեն, ապա 'ի սկզբանէ ոչ տուաւ. զի ոչ գրովք, այլ գործովք կամէր խրատել և ուղղել ած զբնութիս մարդկան։ Ո՞ր ինչ իցէ գործովք խրատելն. գոյիւք արարածովքս՝ ասեմ։ Սա որում և մեծն առաքելոց Պաւղոս 'ի բանս անկեալ առ հեթանոսս կափէր զնոսա որք ասէին՝ եթէ ընդէր յառաջագոյն ոչ ուսաք 'ի գրոց զածածանօթութիւն, տես թէ որպիսի տանէ պատասխանի. "Յայտնելոց է, ասէ, բարկութիւն յերկնից 'ի վերայ ամենայն ամբարշտութեան և անիրաւութեան մարդկան, որք զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին,,։

Եւ զի փոխանակ ասելոյն զայս տեսանէին դարձուածս բանի և բազումք ընդդէմ խօսէին թէ ուստի գիտէին հեթանոսք զճշմարտութիւնն այ, ածեալ ասէ. "Գիտութիւնն այ յայտնի էր 'ի նոսա,,։ Եւ զիա՞րդ կարացէին գիտել զած, և ո՞վ եցոյց՝ ասա. "Աստուած, ասէ, յայտնեաց նոցա,,։ Որո՞վ օրինակաւ, զո՞ր մարգարէս առաքեաց, զո՞ր աւետարանիչս կամ զո՞ր վարդապետս, և գիրք երբէք ոչ գոյին։ Ասէ. "Աներևոյթք նորա 'ի սկզբանէ աշխարհի արարածովքս իմացեալ տեսանին, այսինքն է մշտնջենաւորութիւն և զօրութիւն և ածութիւն նորա,,։ Եւ զոր ասէն՝ այս ինչ է. զարարածս 'ի մէջ եդեալ առաջի աչաց մեր ամենեցուն, զի 'ի սքանչելի գործոցս զկենագործն փառաւորել պարտ էր հանապազ. զոր և այլ ոմն ասէր. "Ի մեծութենէ գեղեցկութեան արարածոցս արարիչն ած ծանուցեալ լինի,,. այսինքն ըստ կարգի սքանչելի յօրինուածոց սորա յօրինիչն տեսանի։ Տեսե՞ր զմեծութիւնն, զարմացիր ընդ արարողին զօրութիւնն. տեսե՞ր զգեղեցկութիւնն, սքանչացիր ընդ իմաստութիւն կազմողին, զոր և մարգարէն յերգս առեալ ասէ. "Երկինք պատմեն զփառս այ,,։ Ոիա՞րդ պատմեն, ասա ինձ. ձայն ոչ ունին և լեզու ոչ են ստացեալ և բերան ոչ գուցէ նոցա, ապա ո՞րպէս պատմեն. ես ասացից. 'ի տեսութենէ իւրեանց պատմեն։ Յորժամ տեսանես զգեղեցկութիւնն զմեծութիւնն զբարձրութիւնն զդիրսն կամարին զտևակութիւնն, զի այսչափ ժամանակս բովանդակեաց 'ի նոյնութեանն, զայս տեսեալ՝ իբր 'ի ձայնէ լսելոյ և ուսուցանելոյ երկիր պագցես արարողին զայսպիսի մարմին գեղեցիկ և սքանչելի։ Իրաւ են երկինք, բայց տեսութիւն

նորա քան զփող պայծառագոյն գոչէ, և աչօք մերովք և ոչ լսելեօք խրատէ. ուստի յայտ իսկ է եթէ այնպիսի իմացումն հաւատալի և յոյժ ստոյգ ցուցանի։

Իսկ եթէ գրովք էր խրատեալ կամ 'ի գրոց իմանալի էր, սակայն նոցա որ գրամարտիկքն էին. և որ ոչ այսպէս՝ գնայր անտի և ոչ օգտէր ինչ, եթէ այլ ոք նմա ոչ բանայր. և մեծատունն և վաճառականն զգիրսն գնէր, իսկ աղքատն ոչ կարէր ստանալ։ Դարձեալ որ զբանն զայն գիտէր զոր գիրքն նշանակէր, հասու լինէր և պատմութեան գրելոցն. բայց սկիւթացին և հնդիկն և բարբարոսն և այլք ամենեքեան որ յայնմ լեզուէ օտար էին, անցեալ գնային ունայն և ոչ ուսանէին։ Իսկ զերկնից ոչ է զայս ասել. այլ սկիւթացին և հնդիկն և եգիպտացին և բարբարոսն և ամենայն մարդ որ շրջին 'ի վերայ երեսաց երկրի, այսու միով ձայնիւս լուա լինի, ոչ ըստ տգէտ լսելեաց, այլ 'ի տեսութենէ յաւեմարտաճառց մերոց անկանի. նա և տեսանողաց ուսուցիչ ապաւէնն մի ինչ պիտոյ է, և ոչ այլ և այլ որպէս լեզուաց։ Զայս գիրս և տգէտն և իմաստունն, աղքատն և մեծատունն կարող են տեսանել. և ուր և գնասցէ ոք, կամաւ և ակամայ տեսանէ, և անհնար է ոչ տեսանել զերկինս, և բաւական է վարդապետութիւն միայն ընդունել 'ի հայեցմանէն. զոր և մարգարէն յայտնապէս մեկին ցուցանէ եթէ արարածք ձայն տան բարբարոսաց և հելլենացւոց և միանգամայն մարդկան մեկին և դիւրահաս, ասելով այսպէս. “Ոչ են բանք և ոչ են խօսք որոց ոչ լսին ձայնք նոցա”։ Եւ զոր ասէն՝ այս է, եթէ ոչ գոյ ազգ և ոչ լեզու որ ոչ կարէ գիտել զձայնս զայս. զի այսպիսի է բարբառ նոցա որ ամենայն մարդիկ կարող են լսել։

Եւ ոչ երկնից միայն, այլ և տունջեան և գիշերոյ. երկինք գեղեցկութեամբն մեծութեամբն և այլովն ամենայնիւ զարմացուցանեն զտեսողսն, և այնու սքանչելագործ արարողին փառս մատուցանէ։ Իսկ տիւք և գիշերք զինչ ունին մեզ այսպէս ցուցանել։ Այսպէս ոչ ցուցանեն, այլ ցուցանեն որ ոչ է նուազ քան զայս, զմեղմով կարգն իւրեանց զոր ամենայն ստուգութեամբ ունէին, զչափաւոր բաժինսն։ Եւ յորժամ իմանաս եթէ զտարի զինքեանս ըստ ամի բաժանեն, որ իբրև եր-

կուտ ըծակք և ստեղծակիցք զնմանութիւն զփոխար-կութիւն զամենայն երկարութիւն և զհեռաւորութիւն բաժանեալ, սքանչացիր ընդ իմաստուն կարգաւորիչն։ Որպէս եղբարք ոմանք որ զհայրենի ժառանգութիւնս բաժանեն համդերձ բազում սիրով, ոչ տրտնջեն ընդ միմեանս զհատեալ բաժինս, այսպէս տիւն և գիշերն համդերձ ամենայն ստուգութեամբ զիր և ունին բաժին միաչափ՝ նոյնչափ բաժանելին և ՚ի նմին սահմանի զըն-քեանս պահեն, ոչ երբեք միմեանց զմին արհամարհէ։ Ոչ ՚ի ձմերայնի տիւն ընդերկարեցաւ, որպէս և ոչ երբեք յամառայնի յայնքան անցեալ յաղթս. քանզի յայնքան երկարութեն ոչ մասն մի յաւուր, ոչ կէս ժամու, ոչ մի պահ և ոչ որքան ական թօթափել միմեանց զմիոյն ազա-հեաց։ Աման այսորիկ սաղմոսերգն սքանչացեալ ընդ նոցա միութեանն, գոչելով ասէ. « Օր աւուր բխէ զբան և գիշեր գիշերոյ ցուցանէ զգիտութիւն »։ Իսկ եթէ զայս իմացես իմաստասիրել, սքանչանաս ընդ ա-մենիմաստ յօրինողին՝ որ ՚ի սկզբանէ կարգեալ է զան-շարժելի սահմանս զայս։

Լուիցեն զայս ազահք և ՚ի բաց կացցեն յընչից օ-տարաց. լուիցեն զայս մեծամիտ ամբարտաւանք և մե-ծատոհմիկք, և մի խորհեսցին զառաւելութիւն այլոց բառնալ։ Տիւն զգիշերին բառնայ և ոչ անցանէ ըստ ե-դեալ սահմանն. իսկ դու պատուով վայելես և ոչ ըն-դունիս եղբարց տալ զայս։ Զգոյշ լեր օրինադրի ի-մաստութեանն. տես ՚ի ձմերայնի երկար հրամայեաց լինել գիշերին. յորժամ մատաղագոյն իցեն սերմանքն, զցրտութիւն և ոչ զջերմութիւն ընդունին զարեգականն, զի մի ընդ բուսանելն և խոպանացի թառամեալ. իսկ յորժամ բոյսն աճիցէ, դարձեալ աճէ ընդ նոսա և տիւն. և յորժամ պտուղն արմատ առնու, յայնժամ օրն լինի ընդ երկար։ Իսկ այս ոչ եթէ սերմանեաց միայն իցէ, այլ և մարմնոց իսկ հանդիստ է ՚ի ձմերայնի. քանզի նաւապետք և նաւորդք և վաճառականք և ճանապար-հորդք և զինուորք և երկրագործք և որք ՚ի տունս նստի-ցին, ամենեցուն հանգիստ է և անվաստակ ժամանակն ձմեռնայնին, ըստ այսմ եղև օրն փոքրագոյն. իսկ այլ տարւոյն գիշերացն մաշել արար ամ առ ՚ի յաւելուած և յերկարութիւն աւուրն. Իսկ աւուրքն ձմեռնայնին

փղձկալագոյն եղեն, քանզի ոչ հարկի և ոչ գիտէ զինչ առնիցէ մարդ։

Ո՜ինչ ասասցէ ոք և զժամուց բարեկարգութիւնս. զնարդ և տօքս որպէս օրիորդք պարեն շուրջանակի հանդերձ չորիւք եղանակօք, բազում բարեկարգութեամբ Ճեան միմեանց, և յանկարծակի երագահաս 'ի հակառակն ոչ փոխարկին, այլ զուգակշիռն 'ի մէջ անցուցանել ոչ խափանին։ Ըստ որում զկնի ձմեռայնոյ ոչ ընդունի զմեզ ամառն, և ոչ զհետ ամառայնի ձմեռն վաղվաղակի. այլ 'ի մէջ անցեալ գարունն և աշունն, զի առ փոքր փոքր նուազեալ ցրտաշունչ հողմոց, որով մրցեալ մարմինք մեր՝ ընդելանիցիմք ընդդէմ տօթոյ, և ապա եկեսցեն հունձք. քանզի յանկարծակի փոփոխումն 'ի հակառակն՝ ցաւք և վտանգաւորութիւն ծնանէր, ուստի Ած շնորհօք անօրինեաց զկնի ձմեռայնի գարուն, և զկնի հնձոց աշուն, և ապա բերէ զձմեռն և հաստուցանէ զամառն, որով անվնաս՝ որպէս ասացի՝ պահիմք 'ի հակառակացն։ Մի՛ ոք իցէ այնպէս թշուառական և տառապեալ միտք, որ տեսանիցէ զերկինս և զերկիր և զծով, զայսչափ ժամուց զգիւրադասակցութիւն այսպիսի առագութեամբ, և զտունջեան և զգիշերոյ զանխափանելի կարգն, և կարծիցէ զայս ինքնակամ լինել, և ոչ երկիր պագանիցէ այնմ որ զայս ամենայն արար և կարգաւորեալ յօրինեաց իմաստութեամբ իւրով։

Ունիմ և այլ ինչ առաւելագոյն ասել. քանզի պարտ է ոչ միայն ընդ մեծութիւն և ընդ գեղեցկութիւն արարածոցս նայել, և այսու օրինակաւ միայն զհրաշագործն գովել և յօրինմամբ օրհնութիւն մատուցանել. այլ 'ի յօրինելն զայս և 'ի հրաշագործելն ոչ ոք մերձեցաւ, և զի ոչ պարտ իսկ էր մերձենալ. և զի ոչ գիտեմք եթէ որպէս եղեն անտեսանելի զօրութեամբ նորա և կազմեցան, զայս փնշանակ հրաշագործութեան մեզ արար լինել Ճշմարիտ վարդապետ, 'ի վեր քան զմտութիւն զկայս պիտոյից դնելով ամենայն եղելոցս։

Մի թէ ոչ իցէ ատուգապէս զոր ասացիս. ո՞չ անդուստ 'ի բնէ կանխաւ ամենեքեան յայտնապէս խոստովանին՝ հետեւման իցէ ջուրց 'ի վերայ երկրի բերիլ. իսկ նա զերկիր 'ի վերայ ջուրց կացոյց։ Նա զի երկիր պնդութեամբ մեղմեալ խտագոյն է, բանավէժ, յաղթահարող, զիւ-

րաւ կարէ բառնալ զբնութիւն ջուրց. իսկ ջուր գնայուն է և թոյլ, կակղութեամբ լոյծ և հոսանուտ, և ամենայն պատկեր մարմնոյ որ անկանի 'ի նա՝ ոչ է կարող բառնալ, թէպէտ և յոյժ թեթև իցէ: Նազուամ անգամ փշրանն մասին փոքր ինչ անկեալ 'ի ջուր՝ 'ի վերայ ունել և ամբառնալ ոչ կարէ, այլ առաքէ 'ի խորն: Իսկ դու յորժամ տեսանիցես եթէ ոչ մասն կամ փշրան ինչ փոքր, այլ զամենայն երկիր 'ի վերայ ջուրց բերեալ և ոչ ընկղմեցի, սքանչացիր ընդ սքանչելագործն որ 'ի վեր քան զբնութիւն կարգեաց զայս:

Եւ ուստի, ասեն, յայտ իցէ այս՝ եթէ երկիր 'ի վերայ ջուրց բերեալ է: Լուր մարգարէին զի ասէ. «Նա ինքն 'ի վերայ ծովու հիմունս արկ նմա, 'ի վերայ գետոց պատրաստեաց զնա»: Ո՜ ինչ խօսիս. փշրանս փոքունս ջուրք 'ի վերայ ուսոց իւրեանց բառնալ ոչ կարեն, և զայսչափ երկիրս կարո՞ղ է բերել, զդաշտս զլերինս զբլուրս զվէմս մեծամեծս, զքաղաքս զտունկս զայրս զկանայս զանասունս և զանբանս ամենայն, և ո՞չ ընկղմի. այս ոչ ընկղմի: Ո՜ ինչ ասես. և որպիսի 'ի ներքուստ իցէ ջուրն, և բնութիւնք ամենայն 'ի վերայ ջուրցն այսչափ ժամանակօք ոչ լուծաւ ոչ մօրացեալ տղմացաւ ամենևին ամենայնք: Բնութիւն փայտի թացեալ 'ի ջուր տարեօք փտի և մանրի. և զի՞նչ ասեմ զբնութիւն փայտի, քան զերկաթ զի՞նչ լինիցի հզօրագոյն. այլ և նա թուլանայ բազում անգամ 'ի ժանգոյ մաշեալ, յորժամ հանապազ 'ի ջուր մնասցէ: Ըստ որում և ծառայ չար կապեալ երկաթի կապանօք 'ի տեառնէ իւրմէ, յորժամ փախչի և ընդ դաշտս քարշէ զերկաթ շղթայիցն, և եկեալ 'ի գնացս ջուրց և զկապեալ ոտսն դիցէ 'ի մէջ ջրոյն՝ թուլագոյն առնէ զերկաթն, յայնժամ դիւրեաւ քարիւ հարեալ մանրէ զերկաթն:

Արդ եթէ երկաթ թուլանայ և փայտ փտի և վէմք հարեալ ապականին 'ի բնութենէ ջուրց, երկիրս այս մեծահաստակ այսչափ ժամանակ կայ մնայ 'ի վերայ ջուրց և ոչ ընկղմեցաւ և ոչ հալեալ կորեաւ, իսկ ո՞վ իցէ որ ոչ զարհուրեսցի և սքանչասցի և ապաւինեալ 'ի զօրութիւն նախախնամողին ասասցէ՝ եթէ ոչ ըստ բնութեան են գործք նորա, այլ 'ի վեր քան զբնութիւն: Սան որոյ նմին ասէ. «Ո՞ կախեաց զերկիրս իբրև զկամար, և

զերկիր ամենայն 'ի վերայ ոչնչի կացոյց,,. և այլ ասէ. "Ի ձեռին նորա են ամենայն տիեզերք երկրի և բարձրութիւնք լերանց,,: Այլ թուի թէ այսոքիկ այսմ որ ասացաքս՝ հակառակ իցեն, այլ բազում ձայնակցութի ունին: Վասնզի որ ասացն՝ եթէ 'ի վերայ ջուրց հիմնարկեաց զնա, զնոյն ասաց զոր միւսն՝ թէ կացոյց 'ի վերայ ոչնչի. քանզի 'ի վերայ ջուրց հիմնարկեալն նոյն իցէ՝ թէ զոչնչէ կախեաց: Այլ կամ լուր դարձեալ որպէս ասելոյն՝ թէ "Ի ձեռին նորա են ամենայն տիեզերք երկրի,,: Ոչ եթէ ձեռս ունի ած, քաւ լիցի. այլ զի ուսանիցես եթէ զօրութիւն նորա որ խնամէ զամենեսեան, այն է որ բարձեալ ունի զամենայնն: Բայց ոչ հաւանիս առաջելոցս, հաւատա տեսանելոյն:

Ապա և յայլ տարերս է գտանել զսքանչելագործութիւնս զայս: Բնութիւն իսկ է հրոյ վերաբերիլ միշտ և հանապազ 'ի բարձունս ընթանալ. թէ և 'ի խոնարհ ունիցիս, թէ և բիւրապատիկ նեղես և հարկես, ոչ ընդունի զ'ի վայր խոնարհելն: Բազում անգամ 'ի փայտէ ջահ լուցեալ ածեն ոք և զգլուխ 'ի վայր խոնարհեցուցեալ, զերդանակ հրոյն ոչ կարէ 'ի վայր հայեցուցանել, այլ 'ի վեր ընթանայ և 'ի խոնարհելն բարձրանայ: Իսկ զարեգակն այսմ հակառակ արար ած. քանզի զնշոյլս նորա յերկիր դարձոյց, և զլոյսն և զհուր 'ի խոնարհ հայել արար. ոչ է ասել վասն տեսութեն միայն 'ի խոնարհ հայել և մարդկան լուսատու լինել. զի վասն նոցին իսկ եղև: Այս և բոց ճրագի մարդկան վասն է, բայց զայս ոչ ընդունի. իսկ արփիականի աստղ մեծ և սքանչելի 'ի խոնարհ հայի և յերկիր հասանէ, ոչ ըստ կարգի բնութեանն հակառակ հրոյն, վասն հրամայողին զօրութեանն:

Նաև զի և այլ այսպիսի ասացից: Ովիկունք երկնից զբազմութիւն ջուրց ընկալեալ է յամենայն կողմանց և ոչ 'ի վայր հոսի. մինթէ այսպիսի է բնութիւն ջուրց. ո՛չ 'ի հոսելոյ դադարէ, այլ առաւել սքանչելի և 'ի վեր քան զբնութիւն եղև և եկաց յերկինս. և զայս դարձեալ մարգարէն ասէ. "Ջուրք որ 'ի վերայ երկնից օրհնեսցեն զտէր,,: Տես զի ոչ ջուրքն զարեգակն շէջոյց, և ոչ արեգակն այսչափ ժամանակս ընթանալով որ 'ի խոնարհ են ջուրք՝ ցամաքեցոյց:

Նման զի դարձեալ յերկիր իջանիցեմք և զսքանչելիս ցուցանեմք։ Ո՞չ տեսանես զծովս զայս որ լի և լի գոլով, այլ այսքան ծով մեծ և անդունդք խոր ալեօք և սաստկագոյն հողմովք խռովեալ, 'ի վերայ տկար աւազի հաստատեալ կայ, որ յոյժ դիւրին է առ 'ի հեղեղել քան զհող։ Դու զգոյշ լեր ա̃յ իմաստութեանն, զի ոչ թոյլ ետ նմա լռել և ոչ 'ի յառնելն գնալ, զի մի կարծիցես եթէ 'ի բնութենէ իցէ նորա կարգաւոր բարեդաւանութիւնն։ Այլ զխռովութիւն նորա ո՞վ պատմեսցէ. Նաւք գամեալք երկաթով փշրին 'ի խռովելն նորա, և տկար աւազն ոչ լուծանի զայսչափ ժամանակս։ Զայն իսկ և ինքն նախատելով երբէք զՀրեայսն ասէ. «Զինէն ոչ երկնչիք որ կարգեցի զաւազ սահման ծովու յաւիտենական և ոչ անցանէ»։

Եւ այս միայն է զարմանալի զի զմեծ և զսքանչելի զերկիրս զայս արար և 'ի վեր քան զբնութիւն ստուգեաց զկայս սորա և զհետևումն ունակութեան, այլ զհակառակսն յարատևութ̃ միաբան կացոյց, զջերմութիւն ասեմ և զցրտութ̃ և զցամաքութիւն, զհուր զջուր զերկիր զօդս, զհակառակ տարերս զայս, զոր 'ի սկզբանէ զայս ամենայն կացոյց՝ ընդ միմեանս մարտուցեալ և 'ի միմեանց ոչ սատակին. ոչ հուրն ընթացեալ և եղծ զամենեսեան, և ոչ ջուրն շարժեալ ընկղմեաց զամենայն տիեզերս։ Սոքա բնութիւն իսկ են մարմնոց մերոց. յորժամ մաղձն աճիցէ, ծնանի ջերմութիւն և զամենայն զկենդանին ժանտացուցանէ. իսկ յորժամ արիւնն յաւելու, բազում հիւանդութիւն բերէ և ապականէ զկենդանին։ Բայց յընդհանուրս ամենեքեան սոքա զկայ առեալ յիւրաքանչիւրսն մնան որպէս սանձիւք ոմամբք և կապանօք կապեալք. յորժամ խորհին 'ի մարտ ելանել, զինքեանց սահման պահել ոչ կարեն. սա իսկ է պատճառ խաղաղութեան ամենեցուն։

Այսքիկ և կուրաց անգամ յայտնի են, և որք յոյժ անիմաստք իցեն՝ դիւրաւ կարեն հասանել եթէ 'ի խնամս ուրեք վայելեցին։ Ո՞վ իցէ այնչափ անզգամ և անիմաց, որ տեսանիցէ զայսչափ զմարմնոց բազմութ̃, զայսքան գեղեցկութիւն, զայսպիսի զգիրս զտարերաց, զընդհանրապազորդեան զմարտս և զհակառակութիւնս և զընտանի համբերութիւնս, և ոչ խորհի յանձն իւր ասել,

Digitized by Google

եթէ ոչ էր բարեկարգ նախախնամութիւնն այ որ ըզմարմնոցս զչափ ըմբռնեալ ունէր և բարձեալ և բովանդակեալ, անկեալ էին ամենեքեան և ոչ մնային և ոչ էր տեսեալ յայսպիսի բարեդասութիւնս, և ոչ այսպէս համաձայն զտիւ և զգիշեր, կամ զայսչափ անբանից անասնոց և գազանաց ծնունդս, և տնկոց և սերմանց և ամենայն դալարոյ զուգընթաց ճանապարհ, որ մինչև յօրս համեալ՝ ոչ մի ինչ 'ի կարգէ իւրմէ անկաւ և ոչ մաշեցաւ ։

Արդ ոչ միայն այս, այլ և առաւել քան զայս և խորինս կայ ասելոյ, և յաղագս այնց արարածոց իմաստասիրել 'ի յայլ աւուրս թողցուք, մանաւանդ զի և փոխարէնս պահանջեմք և փութամք զասացեալսն և այլոց մատուցանել ։ Այլ գիտեմք զի զլսելիս ձեր զարհուրեցուցանեն խորք իմաստութեանն. բայց եթէ առ սակաւ սակաւ զարթնուցուք և յայնս դիցուք պատրաստաբար զանձինս մեր, նա և այլոց իսկ դիւրաւ լինիմք վարդապետք ։

Իսկ այժմ զայն հարկ է ասել սիրոյդ ձերում. զի որպէս փառաւորեաց զմեզ Ած հանդերձ այսչափ հրաշագործութեամբս, փառաւորեսցուք և մեք զնա հանդերձ բազում ճգնութեամբ մերով ։ Երկինք պատմեն զփառս Այ երևմամբ միայն. և մեք պատմեսցուք զփառս Այ ոչ բանիւք միայն, այլ և լռութեամբ, և մի ընդ կենցաղոյս վայելչութիւնս ամենեքեան զքանչասցուք ։ "Լուսաւորեսցի, ասէ, լոյս ձեր առաջի մարդկան, որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զհայր ձեր որ յերկինս է,, ։ Ո՞ինչ արդեօք իցեն ասացեալքս՝ ես ասացից. յորժամ անհաւատք տեսանիցեն զքեզ զհաւատացեալդ պարկեշտութեամբ և իմաստութեամբ պատշաճեալ և զարդարեալ որպէս պարտն է, զարհուրի և ասէ. Ճշմարտապէս մեծ է Ածն քրիստոնէից, որպիսիս կազմէ զմարդիկ, որքան աշխարհս, հրեշտակս զնոսա յօրինեաց 'ի մարդկանէ ։ Եթէ անարգէ ոք, ոչ բարկանեն. եթէ հարկանէ ոք, ոչ տրտմին. եթէ թշնամութեամբ մեղանչէ ոք, աղօթս ևս առնեն վասն նորա. թշնամի զոք ոչ ստանան, յիշաչարութիւն ոչ ունին, բարբանջողաց ոչ միաբանին. ոչ գիտեն և ոչ են ուսեալ զստախօսութիւն, զերդմնազանցութիւնս ոչ ընդունին, մանաւանդ զի և ոչ երդնուլն իսկ. լաւ համարին զլեզու հատանել նախ, քան թէ երդումն ընդ բերան հանել ։

Digitized by Google

Զայսպիսիս տացուք¹ նոցա ասել վասն մեր, և ըզ-չար սովորութիւն զերդմանն ամենևին հալածեսցուք 'ի մէնջ. գոնեայ այնչափ տացուք պատիւ ա̃յ, որչափ և մարմնոց մերոց առ 'ի պճնել հանդերձիւք ։ Զիա՞րդ ոչ իցէ այս անտեղի, հանդերձ ունելով քան զայլս մեծագին և ոչ ընդունիմք ստէպ ագանել զայն, և աղտեղացուցանել զա̃յ անուանն յամենայն տեղւոջ բերելով սոսկ և վայրապար բանիւք ուր և հանդիպիմք ։ Ո՛հ աղաչեմ և վկայութիւն դնեմ, մի այնքան արհամարհեսցուք զփրկութիւնն մեր. և զջան փութոյ զոր յառաջնմէ սկսաք վասն պատուիրանիս այսմիկ, պարտական եք կատարել ։ Այսր աղագաւ և ես իսկ ստէպ աքարի աղաչանս վասն երդմանց, ոչ անգիտանալով զձեր տխրութիւնդ. այլ քանզի զբաղում 'ի ձէնջ յուղղութեան պատուիրանիս տեսանեմ, փութամ ջանիւ զի յամենեցունց բարձից, և առցէ զկատարումն ։ Սոյնպէս և հանդիսատեսք առնեն 'ի հրապարակս, յորժամ մրցողքն մերձ լինին 'ի բրաբիոնն՝ բանիւ առաւել զօրացուցանեն և կայտառս գործեն ։ Եւ մեք այսու մի անվաստակք երևեսցուք, մինչև ամենեքեան եկեսցեն յուղղութիւն. դժուարին յառաջագոյն սկիզբն էր ։ Իսկ յորժամ առաւել սովորականն հաստաւ և սակաւ ինչ մնաց, այժմ ոչ է պիտոյ ցաւագին վիշտք, միայն սակաւ մի քննութեան, զի ստոյգ և հաւաստի աղաչանօքս առ ձեզ և զայնս ուղղիցէք և լինիցիք այլոց վարդապետք, և համարձակութեամբ տեսցուք զսուրբ զատիկն, և հանդերձ բազում փափագմամբ և երկրորդ և երրորդ անգամ 'ի յայսմ ուղղութենէ պտղաբերեսցուք զուրախութիւն ։ Ոչ այսպէս է ընդ քրտունս պահոցս ուրախանալ, որչափ 'ի չար սովորութենէն ուղղելով, և զկնի փոփոխմանն պայծառ պսակաց 'ի սուրբ տօնին հանդիպել. այս պսակս ոչ երբէք թառամի ։

Արդ եթէ ջանս առցես վաղվաղակի լինել ուղղութեան, արասցես զոր ես ասացից. գրեա 'ի վերայ սեմոց տանց քոց և 'ի հաստատութեան սրտի քո զթռուցեալ մանգաղն զայն Զաքարիայն, և զայս 'ի դէմս անիծից թռուցեալ իմն, և զայս ստէպ խորհեա ։ Եւ եթէ զայլ ոք տեսանիցես յերդումն, երթ արգել զնա.

1 Յօրինակին սփասցաք. Եդաւ ըստ յունին ։

զնոյն և 'ի վերայ ծառայից քոց հոգա։ Եթէ այսմ ամենայնի զգուշանամք, ոչ եթէ միայն մեք ուղղիցիմք, այլ և զբազումս 'ի նոյն փոյթս յորդորեմք, վաղվաղակի զմեզ և զնոսա 'ի կատարումն ուղղութեանս հասուցցուք։ Իսկ եթէ զայլս զորս ընկալայք խրատել՝ պատկառէք և ամաչէք, եթէ զոր ձեզ և այլոց հրամայեցայք՝ զայն թողեալ և կատարեալ մեզ երևեսջիք, յայնժամ ոչ է առաւել պէտք խօսից։ Արդ զայս զոր բազում անգամ և զառաջասացեալսն վասն յիշելոյ հնարհօքն ևս միայն ասացաք. իսկ Աստուած մանաւանդ խնայեսցէ յանձինս մեր, և յայսմ և յամենայնի իւր կրկին հատուսցէ 'ի մեզ զբարիս, զի կատարեսցուք զամենայն պտուղ արդարութեան, և արժանի լիցուք հանդիպել արքայութեան երկնից շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի. որում վայելէ փառք յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

*Խօսք եթէ պարտ է յետ կերակրոյ ոչ հեռանալ յեկեղեցւոյ. և բնախօսութիւն զաշխարհէ և զարարչութենէն Աստուծոյ. և բնաւ 'ի բաց կալ յերդմանէ։*

Ուրախ եմ և ուրախակից լինիմ ձեզ ամենեցուն, և զխրատն մեր վասն նոցա որք ոչ պահեցին զմնացեալսն նախ 'ի ձէնջ այսօր 'ի գործ մատուցանել։ Բազումք 'ի հրաւիրելոցն մերձ թուին ինձ այսօր, մինչ զի զբարի ժողովետեղս մեր լնուլ. ըստ որում ուրախանամ և պայծառագոյն լինիմ 'ի հանդէսս, ևս առաւել յունկնդրութիւն ժողովրդեանս։ Զի ոչ 'ի նանիր վասն նոցին ծախեցաք զբազում բանս, աղաչելով զսէր ձեր գալ առ մայրս ձեր և հնազանդ լինել որպէս պարտ է, և զկնի մարմնական կերակրոյ հաղորդել 'ի կերակուր հոգևորական։

Որ մեծագոյն իցէ, ասա ինձ ով սիրելի, յանցեալ աւուրսն յորժամ զկնի սեղանոյն 'ի քուն մտանէիք, եթէ այժմ որ զկնի այնր 'ի ժողովարանս յաստուածային ունկնդրութիւն հանդիպեցայք օրինացն Աստուծոյ. յորժամ 'ի փո-

ղոյս հանդիպեսջիք և 'ի հանդէսս յօժարութեամբ ուր ոչ գոյր բարի ինչ, եթէ այժմ որ զհետ եղբարց ձերոց կանգուն կալով լսէք զբանս մարգարէականս և զառաքելականս։ Եւ եթէ ուտել իցէ ամօթ և գալն 'ի ժողովարանս. այլ որ ուտիցէ և 'ի տան մնասցէ, և 'ի սուրբ տօնէս յայսմանէ օտարացեալ հեռասցի։ Ի տան մնալով, զատարկ և տխուր. իսկ աստ գալով, ամենայն քուն և ամենայն ծուլութիւն թօթափի. և ոչ եթէ ծուլութիւնն միայն, այլ և ամենայն տրտմութիւն 'ի բաց դնի, և ախորժ և յօժարամիտ գտանի։

Իսկ զինչ պիտոյ է զայլն պատմել. կաց մնա միայն առ պահացողն, և վաղվաղակի առնուս 'ի նմանէ զանուշահոտութիւն. քանզի իւղ հոգևորական և անուշահոտ է պահողն։ Պահող ասեմ, ոչ եթէ յատուկ 'ի կերակրոց, այլ պահող աչօքն լեզուով ոտիւք ձեռօք խորհրդովք։ Եւ եթէ զմիւս զպահս բամբասիցեմ, այլ ցուցանեմ զշահս պահողին։ Պահք ոչ եթէ 'ի բացն կալ միայն 'ի կերակրոցն իցէ, այլ հանդերձ այլովքն և այս ևս, զի զինի կերակրոցն պատշաճապէս աստ եկեսցէ՝ նա ոչ է զատուցեալ 'ի պահողէն նօթի զաւուրս. որպէս և որք պահիցեն և ոչ ստուգութեամբ ունկնդիր ասացելոցն լինիցին, ոչ ինչ պտղաբերին 'ի պահոցն։ Իսկ որ ուտիցէ և 'ի սուրբ ժողովարանս հաղորդ լինիցի փութով, առաւել մեծագոյն է քան որ պահէն և ոչ ուտէն և յայսմանէ պակասի։ Քանզի չուտելն կերակուր ոչ այնպէս զմեզ օգտել կարասցէ, որպէս որ զհոգևորական վարդապետութիւնս 'ի միտ առեալ իցէ, ուստի բազում օգուտս բարեաց գտանէ։

Իսկ զոր աստ իմաստասիրես, յայլում տեղւոջ արդեօք ո՞ւր լուիցես. եթէ առ դատաւորս երթիցես, անդ դատապարտութիւն և մարտ տեսանիցես. եթէ 'ի խորհուրդս խորհրդականաց, անդ քաղաքային ընչից հոգս. եթէ 'ի տան, քոյին հոգն շուրջ պատէ զամենայն կողմանց. եթէ 'ի հրապարակս փողոցի, ամենայնն այն երկրային է և ապականացու. Նոյնպէս թէ վասն հարկաց կամ բազմակատար սեղանոյ կամ վաճառաց և այլոց հոգոց կամ կտակի կամ ժառանգութեան կամ այլոց սոյնպիսեաց, զոր անդ ամենեքեան քննեն և բազում խօսս վճարեն։ Իսկ եթէ երթիցես 'ի գաւիթս թա-

Digitized by Google

գաւառականս, և անդ դարձեալ այսպէս լուիցես խօսե-լով ամենեցուն վասն զօրութեանց, վասն աստի փա-ռաց և պատուոյ, վասն պատերազմաց, վասն հարկաց քննութեան. հոգևոր իրս յիշեն և ոչ ինչ։ Իսկ աստ հակառակ է այս ամենայնի. քանզի աստ յիշեմք վասն երկնից վասն որոյ յերկինս գործք իցեն, վասն հոգւոց և հոգևոր կենաց մերոց, և վասն էր արդեօք կամ ըն-դէր կամք այսչափ ժամանակս աստէն, և վասն որոյ հե-ռանամք աստի, և վասն էր են կաւեղէն մարմինքս մեր, և զինչ իցէ բնութիւն մահու, կամ զինչ աստի կեանքս կամ զինչ հանդերձեալն. և պարզաբար ոչ է խօսել աստ երկրային և ոչ ինչ, այլ ամենայն խօսք վասն հո-գևորական կենացն լինի. և բազում և մեծամեծս վասն փրկութեան մերոյ ընկալցուք Թոշակս, և այսպէս եր-Թիցուք աստի քաղցր յուսով հանդերձ։

Նաև քանզի ոչ 'ի նանիր և ունայն սերմանեցաք, այլ որպէս զձեզ զամենեսեան աղաչեցի որսալ զմնացեալսն 'ի մէնջ, զի և մեք զփոխարէնսն հատուցուք ձեզ, և փոքր ինչ 'ի բանիցն ձեզ յիշեցուցանելով՝ զմնացորդսն տացուք դարձեալ։

Զինչ արդեօք ասացեալն էր զոր նախ խնդրէաք կամ որո՞վ օրինակաւ։ Զինչ վասն մեր անօրինեաց ա͞ծ նախ քան զգիր տալ. և ասացաք եթէ համօրէն ա-րարածովք խրատեաց զազգս ամենայն. զերկինս հաս-տատեաց և եդ առաջի զգիրս զայս մեծ, զի և տգէտն և իմաստունն, աղքատն և մեծատունն, սկիւթացիք և բարբարոսք և ամենայն մարդիկ որ բնակեալ են յերկ-րի, յայտնապէս յինքեանս ընկալցին զգիրս զայս առա-ւել բազմապատիկ քան զբազմութիւն վարդապետու-թեան։ Բազում իմաստս վասն տունջեան և գիշերոյ և նոցին բարեկարգութեանն, և զմասունս իւրաքանչիւր զորս միմեամբք պահեն. բազումս և վասն եղանակաց տարւոյն և ժամուց աւուրց և նոցին չափաւոր կարգաց։ Որպէս զի տիւ և գիշեր անդուստ 'ի սկզբանէ ոչ մինչ 'ի կէս ժամու ագահեն յամենայն զոր 'ի նմանէ սահ-մանեցաւ, սոյնպէս ամք և դարք ժամանակաց ամենայնքն աւուրբք բաժանեցան։

Նաև զոր յառաջն ասացի եթէ արարածոցս ոչ միայն մեծութիւնք և գեղեցկութիւնք ցուցանեն զքանչելա-

Digitized by Google

բար զՀրաշագործողն, այլ և դիրք հաստատութեան առ-ցա որ 'ի վեր է քան զքննութիւն հետևման՝ յայտնի ցու-ցանէ զՀրաշագործ ամենիմաստ արարիչն ։ Ըստ բնու-թեան հետևման է ջուրց 'ի վերայ երկրի բերիլ, այժմ զհակառակն տեսանեմք՝ երկիր 'ի վերայ ջուրց բարձեալ. ըստ բնութեան հետևման է հրոյ 'ի վեր ընթանալ, այժմ զհակառակն տեսանեմք յերկիր 'ի խոնարհ սփ-ռեալ զհրային նշոյլս արեգականն ։ Իսկ ջուրք որ 'ի վեր քան զերկինս են, 'ի վերայ արեգականն ոչ իջանեն, և նա 'ի խոնարհ ընթանայ և 'ի ջուրց ոչ շիջանի, և ոչ ան-յայտ կարեն առնել զծնօտս նորա զլուսատու ։ Եւ առ-սղօք ասացաք եթէ 'ի չորից տարերց զայս ամենայն հաստատեաց, և սոքա հակառակեալք և մարտուցեալք մինն զմիւսն ոչ անցուցանէ, թէ և բարձիչք են միմեանց. ուստի յայտ իսկ է եթէ անտեսանելի զօրութիւն խառ-հըրդոցն ա՟յ զնոսա դաստիարակեալ և սանձս եդեալ ։

Զայսուհետ զբանս առաւել մանրակրկիտ խորհիմ առ-նել այսօր. բայց յարուցեալ 'ի միտ առջիք հանդերձ ստուգութեամբ զամենայն ։ Եւ զի հաստատեաւ լինի-ցին սքանչելիքն, 'ի մարմնոց մերոց վարդապետութեան սկիզբն արասցուք ։ Քանզի մարմինք մեր նուազ և փոքր 'ի չորից տարերց հաստատեցաւ, 'ի ջերմութենէ մաղձն խարտեաշ, յօդոյ արիւնն, 'ի ցրտոյ մաղաս, 'ի սառնէ և 'ի չորութենէ մաղձն սեաւ ։ Եւ մի ոք 'ի մէնջ 'ի կար-գէն օտարացեալ կարծիցէ զբանս զայս. քանզի հոգեւո-րական և ըստ իրաւանց է ամենայն, և ոչ յումեքէ դա-տապարտեալ ։ Այսպէս և Պաւղոս յերկրագործու-թենէ մերձեցաւ տալ մեզ վասն յարութեան մեռե-լոց. ասէ. “Անմիտ, դու զոր սերմանես, ոչ կենդանա-նայ եթէ ոչ մեռանիցի„ ։ Արդ երանելին այն 'ի սեր-մանեաց զբանն հաստատեաց, ապա և մեզ անմեղա-դրելի է 'ի բժշկականն մերձենալ յիմաստութի. քան-զի յաղագս հրաշագործողին զգոյս առաք խօսել, և 'ի հարկէ եղև մեզ գալ յիմաստութն պատճառս յայս ։

Զոր և յառաջն[1] իսկ ասացաք՝ եթէ յայս չորից տարերց եկաց մարմինս մեր, եթէ մինն զօրանայ մինչ իսպառ՝ մահ 'ի բռնութենէն յայնմանէ ծնանի, և է

1 Յօրինակին յանդրդմն. եդաւ ըստ յունին ։

ոչ ինքնակամ դիւրի մեզ հաշտել, այլ այնպէս միայն թշնամիք և հանապազ ոխս առ միմեանս ունիցիմք, և կարօտ միայն այլում գալ և հաշտեցուցանել զմեզ և 'ի մի ժողովել, և յետ ժողովելոյն 'ի նոյն պնդել զմեզ մնալ 'ի հաւանութիւն հաշտութեան, և մի դարձեալ 'ի բաց կալ 'ի պնդութեան բանիցն, իսկ զիա՞րդ կամ որպիսի՞ ոք իցէ որ ոչ ճանաչիցէ զի բնութեամբ պատերազմողական է հաղորդութիւն տարերցս և անհաշտ թըշնամութեամբ են առ միմեանս, և որպէս սիրով հանդիպին և գան և միան ընդ միմեանս, եթէ ոչ է զօրութիւն անճառելի որ 'ի մի ժողովէ և զկնի ժողովելոյն հանապազ 'ի նոյն իրք կապանօք ունելով...:

Քանզի նաւ առանց նաւուղղի ոչ ապրիցի, այլ ընկղմի դիւրաւ: Աշխարհս այս մեծ զիա՞րդ կայ միայն այսչափ ժամանակս, եթէ չէր ոք նմա կարգաւորիչ: Այս եւս առաւել զինչ ասացից. համարեաց թէ նաւ իցէ աշխարհս այս, ալիք զերեսս երկրի, առաստաղ զերկինս, ծով զ'ի ներքոյ կացեալ զանդունդս 'ի պնդութեան բանիցն. իսկ զիա՞րդ կամ որպիսի՞ այսչափ ժամանակս ոչ նաւակոծեցաւ: Այլ տուր նաւի միոջ զմի օր առանց նաւավարի և կարգաւորի և նաւուղղի, և անդէն տեսանես թէ որպէս վաղվաղակի ընկղմի. իսկ աշխարհս այս որ 'ի հինգ հազար ամ և ևս առաւել ունի, այսմ ոչ դիպաւ:

Այլ զի՞ ասիցեմ նաւ. տաղաւար ոք հաստատեաց յայգի ուրեք, 'ի ժողովել պտղոյն եթող զնա անապատ. և ոչ զերկուս աւուրս լինի բաւական կալ, այլ լուծանի խուղն և անկանի վաղվաղակի: Որք խուղ մի ոչ միայն առանց խնամակալութեան, և աշխարհս ամենայն միացէ՞ առանց հրաշագործողին, այսչափ գեղեցիկս և սքանչելի, բաժանեալ տունջեամբ և գիշերաւ, ժամուց փոփոխմամբք իւրաքանչիւր դասուց, և բնութեամբ ընթացիւք զանազան գոլով և ազգի ազգի որք 'ի ծովու և 'ի ցամաքի և յօդ, յերկինս լուսաւորք, յերկրի բոյսք և տունկք, անասունք, սողունք, գազանք, որք ըստ իւրաքանչիւր գնան մանչան վազեն սողան. և որ քան զամենայն զօրաւոր է ազգ մարդկան, զիա՞րդ այսչափ մնացին կանգուն՝ ասա ինձ՝ առանց խնամակալութեան:

Այլ եւս բանիւ և 'ի բուրաստանս ծառոց, ծաղկանց ազգի ազգեաց, դալարոյ ամենայնի, գունոց նոցա, անու-

շահատութեանց, տեսակի, ձիոց, անուանց, չափոց, ան-պտուղ ծառոց և պտղաբերաց, և կենդանեաց, և այլ և այլ բնութեանց որք 'ի ծովու, որք 'ի ցամաքի և որք 'ի յօդս ընթանան, զլերանց, զդաշտաց, զկաղնիս և զայլ ծառս, զ'ի խոնարհ բուրաստանս և զվերին բուրաս-տանս, զպէսպէս աստեղաց և զծաղկանց վայելչութիւս, 'ի խոնարհ վարդ և շուշան, 'ի վեր նշոյլք լուսոյ։ Կա-միս թէ և 'ի հաւուց ցուցից քեզ բուրաստան վայելչու-թեան. հայեաց զսիրամարգացն զտեսիլ վայելչութեան որ գեր 'ի վերոյ անցանէ քան զամենայն ներկուածս կունոց, զծիրանափայլ ձնձղուկսն և զայլսն ամենայն։ Ի միտ առ և զերկնիցն գեղեցկութիւն զիարդ նորոգ ա-նի զիւր գոյնն և ոչ սևանայ. իբրև թէ այսօր իսկ կազ-մեցաւ, այնպէս փայլուն և պայծառ տեսանի։ Օ երկ-րի զօրութիւն զիարդ միշտ կայ 'ի ծննդեան այսչափ ժա-մանակս, և ոչ եղև ամուլ որովայն նորա։ Տես զաղ-բերս որպէս ցանկ բխեն և ոչ պակասին, այլ 'ի լինե-լութենէ իւրեանց զօրհանապազ բխեն զտիւ և զգի-շեր։ Նկատեա և զծով թէ որչափ ընդունի զգնացս գետոց և ըստ չափն ոչ անցանէ։ Ուստի արժան է իւ-րաքանչիւր ումեք ասել. «Մեծ են գործք քո տէր, զամենայն ինչ իմաստութեամբ արարեր»։

Արդ զի՞նչ իցէ այլ ասել բանս իմաստութեան առ անհաւատս, յորժամ զայս ամենայն ընթեռնուցումք առաջի նոցա, զմեծութիւն, զգեղեցկութիւն ստացուա-ծոց, զառատութիւնս, զանանցութիւս զամենայն։ Այս ինքն մանաւանդ պարտաւորութիւն է, ասեն, զի այս-պիսի գեղեցիկ և մեծ արար ած̃ զաշխարհս. զի թէ ոչ էր գեղեցիկ արարեալ, ոչ էաք զնա ած̃ ծանուցեալ. իսկ մեք այժմ զարմացեալ զարհուրեցաք ընդ մեծու-թիւն նորա, սքանչացաք և ընդ գեղեցկութիւնն։

Կարծէին զսա ած̃. քննեսցուք և զայս։ Արդ ոչ ե-թէ մեծութիւն նորա կամ գեղեցկութիւն իցէ պատ-ճառ ամբարշտաց, այլ իւրեանց անմտութիւն, ցուցցուք զայս նախ 'ի մէնջ։ Ընդէ՞ր մեք ոչ այսպէս համարիմք, ընդէ՞ր զսա ոչ ածացուցանեմք. միթէ աչօք մերովք ո՞չ տեսանեմք, ո՞չ զնոյն ստացուած վայելեմք որպէս և նո-քայն, ո՞չ զնոյն մարմինն և զհոգի ստացաք. ապա զիա՞րդ ոչ զնոյն ետ իմանալ մեծութիւն և գեղեցկութիւն նորա

Digitized by Google

որպէս և նոցա։ Բայց ոչ այսու միայն յայտնեցից, այլ այլովք իրօք. զի ոչ վասն գեղեցկութեան սորա զսա Աստուածացուցանեն, այլ յաղագս խորհրդոց անմտութեանն. Թեպեկի[1] վասն էր երկիր պագանէին, կամ կոկորդիլոսի կամ շան, և որ այլ նուաստագոյն է 'ի գազանաց։ Եւ մեք յիրաւի ասեմք՝ եթէ "'Ի նանիր և ընդունայն են խորհուրդք նոցա և խաւարեալ անմտութեամբ սիրտք նոցա"․ և թէ "Որք զանձինս առ իմաստունս ունին յիմարեցան"։

Արդ մեք ոչ ըստ այսմ միայն պատասխանեմք, այլ և ստուգագոյն ասեմք, եթէ նախ զայս 'ի վերուստ գիտէր Աստուած, ըստ որում զպատճառս զայսոսիկ կարգս 'ի խնդրոյ իմաստութեանն. վասն այսորիկ ոչ եթէ մեծ և սքանչելի միայն արար Աստուած զաշխարհս, այլ՝ ապականացու և հաստատուն և 'ի բեկման, և զփոքր տկարութեանն բազում խայթ եդեալ սմա. որպէս առաքելոցն արար, զոյն ամենայն աշխարհի։ Զինչ արար առաքելոցն, եւ ասացից։ Բազում նշանս և սքանչելիս ետ 'ի ձեռս նոցա մեծամեծս և զարմանալիս. և յայսմիկ թոյլ ետ Աստուած զնոսա սակայ ապատակել հարկանել հալածական առնել 'ի բանտ արկանել, անկանել 'ի տկարութիւն մարմնոյ, կալ հանապազ 'ի վիշտս տրտմականս, զի մի երբէք 'ի մեծութենէ զարմանալեաց նշանացն ըզնոսա աստուածս անուանիցեն. վասն որոյ յետ այնչափ շնորհացն տուելոց թոյլ ետ մարմնոց նոցա լինել տկար և 'ի բազում ցաւս հիւանդութեան ծնկել, զի բնութիւնն յայտնի լինիցի։ Ոչ եթէ իմ իցէ բանս այս, այլ Պաւղոսի որ ասէ. "Եթէ կամիցիմ պարծել, ոչ եղէց անզգամ, քանզի զարդարն ասեմ. այլ անխայեմ գուցէ ոք համարիցի յիս աւելի քան զոր տեսանիցէ կամ լուիցէ յինէն"․ և դարձեալ. "Ունիմք զգանձս զայս յամանս խեցեղէնս"․ այսինքն 'ի մարմինս տկարս։ Զի որպէս անօթ քարեղէն 'ի հողոյ և 'ի հրոյ լինիցի, նոյնպէս և մարմինք սրբոցն այնոցիկ հողեղէն էին և հրով հոգւոյն սրբոյ ընկալան զօրնականութիւն և եղեն քարեղէն։ Եւ այսպէս եղեն գանձանակ, ուստի առատագոյն շնորհքն 'ի տկար և յապականացու մարմին եգաւ, "Զի

1 Յայնն կապկի։

առաւելութիւն զօրութեանն, ասէ, իցէ յիս և ոչ 'ի մէնջ,,....: Այս և զատս որ այսպիսիք էին, աստուածս կարծեցին և զոհել սկսանէին և ասէին, «Աստուածք նմանեալք մարդկան իջին առ մեզ,, , իսկ եթէ այսպէս ոչ էր լեալ, ո՞ւր ոչ էին լեալ անճառելիս մարդիկ յարժամ զայն սքանչելիս տեսանէին:

Արդ որպէս առ փառս սքանչելեաց նշանացն թողլ ետ բնութեանն կալ 'ի տկարութեան և առ միմեանս տեղի ետ փորձութեան, զի մի երբէք կարծիցեն թէ աստուածք իցեն, նոյնպէս և զերկիր նմանակից նոցա արար. յօրինեաց զնա գեղեցիկ և մեծ, և դարձեալ տկար զնա կազմեաց, զոր 'ի միասին յայտնեսցուք զնա 'ի գրոց իմաստասիրականաց: Զի վասն գեղեցկութեան ասէն. «Երկիրն պատուական զփառս իւր,,. և դարձեալ. «Ձգեաց զերկիրն որպէս կամար,,. և դարձեալ. «Որ ունի զծիր երկնից և զջուրն որ 'ի վերոյ նորա,,. և այլուր վասն երկրի ցուցանէ, որ թէպէտ և գեղեցիկ է և մեծ, սակայն ապականացու է. և ասէ այսպէս. «Ի սկզբանէ տէր զհիմունս երկրի հաստատեցեր և գործք ձեռաց քոց երկինք են. նոքա անցանեն, բայց դու կաս և մնաս յաւիտեան. ամենեքեան որպէս ձորձ մաշեսցին, որպէս վերարկու փոփոխեսցես զնոսա և փոխեսցին,,. և դարձեալ վասն արեգականն. «Որպէս փեսայ զի ելանէ յառագաստէ իւրմէ, ցնծայ որպէս սկայ, ընթանալ զճանապարհս իւր,,....:

Տեսե՞ր արդեօք զգեղեցկութիւն նորին. տես արդ և զպատմութիւն տկարութեան նորա, զոր և այն իմաստունն յայտ առնէ ասելով. «Զի՞նչ իցէ լուսաւոր քան զարեգակն, և սա ինքն նուազի,,: Եւ ոչ այսու միայն է տեսանել զնորա տկարութիւնն յարժամ պակասի և նուազի, այլ և յամպոց ընթացածածկի. թերևս արձակել զճառագայթս իւր հակառակի, բայց խզել զամպն ոչ կարէ, քանզի նա թանձրագոյն է և ոչ տայ երևել նմա:

Այլ զսերմանս սնուցանէ, ասեն: Եւ զիա՞րդ, միթէ նա՞ միայն սնուցանէ. այլ պիտոյ է և հողոյ և անձրևաց և ցօղոյ և հողմոց և ժամուց, եղանակաց բաժանմանն բարեխառնութեան. եթէ այս ամենայն ոչ եկեսցէ, պէտք արեգականն աւելորդ գտանի. զի և նմին իսկ պիտոյ է կցորդութիւն այլոց յորս և եգաւ առնել զայն. իսկ

մանաւանդ զգործս իւր արար ոչ առանց կարեաց ։ Այլ նա ինքն ոչ այսպիսի արուեստիւ զսերմանիս բխեաց յերկրէ, այլ հրամայեաց միայն և ամենայնն բուսաւ. քանզի առանց կարեաց նա միայն գործէ ։ Այլ դարձեալ զայս գիտասցեն թէ ոչ տարերցս բնութիւնք, այլ հրամանք նորա առնեն զամենայն, զի և զտարերքս յոչգոյից եբեր 'ի մէջ, և առ Հրէիցն ոչ յումեքէ աղաչեալ ի-ջոյց զմանանայն ։ « Ահա հաց երկնից, ասէ, ետ նոցա »....

Իսկ զտարերս կարօտ արար հանապազ, զերկինս՝ առ որով հուր, զօդս, զերկիր, զծով. և եցոյց զնոցա տկարութիւնն, և թէ զիարդ իւրաքանչիւր ոք զընկեր իւր խնդրէ, և առանց նորա լուծանի և ապականի ։ Վասնզի երկիր յոր արկանին սերմանիք, եթէ ոչ տեղայ անձրև յօդոց և պակասին աղբիւրք, թէ և յափն ծովուց կամ առ եզերս գետոց իցեն արկեալ սերմանիքն, չորանան և լուծանին վաղվաղակի ։ Այլ այլքն զմիմեանս խնդրեն, օդք զարեգակն և արեգակն զօդս ։ Այլ զի մի ընդյերկարեսցուք զբանս, առասցեալքս բաւական են. զի որք միտս ունին, պատճառս առաւք ։ Ոչ թէ որ քան զամենայն արարածս սքանչելի է արեգակն՝ 'ի տկարութեան է և 'ի կարիս հարեալ, որչափ ևս առաւել այլ մասունք աշխարհիս ։

Որ և առաջի իսկ վարդապետացն, փոյթ դարձեալ 'ի գրոց ունիմ ցուցանել ձեզ զի ոչ արեգակն միայն, այլ և ամենայն աշխարհ առ միմեանս կարօտին տարերքս ։ Ոչ է յորժամ լինիցի բազմութիւն ցրտոց, արգելու զզօրութիւն արեգականն. իսկ յորժամ ջերմութիւն արեգականն զօրանայ, մինչ զխայթոցս ցրտոյ. և այսպէս զհակառակութիւն կալեալ և եդեալ առ միմեանս, յաւէտ առնեն մարտ տարերքս. և յայտնէ յայտնի և ցուցանի մեծ ապականութիւն սոցա, և բարիոք երևի թէ մարմնական է ամենայն տեսութիւնս ։ Այլ քանզի յօգուտ ձեր բարձրագոյն է բանս այս, բեր այսուհետև բացցուք ձեզ զքաղցր աղբերս գրոց որով հանգուսցուք զլսելիս ձեր ։

Ոչ է ոչ վասն երկնի և երկրի լոկ կարգի ասել ձեզ, այլ վասն ամենայն արարածոց ընդ նմին ։ Զայս ինքն առաքեալն Պաւղոս մեզ ցուցանէ ասելովն թէ « Ամենայն արարածք ապականութեան ծառայեն ». և թէ

“Հեծեն և երկնեն մինչև ցայժմ”: Այս զոր ասէն այս է. ապականացու, ասէ, եղեն արարածք. այս խոկ է, 'ի նմանութիւն կարգեցաւ զի այ հրամայեաց: Ընդէր հրամայեաց. վասն ազգիս մերոյ. քանզի յապականութիւն հանդերձեալ էր գտանել և դատապարտեալ մարդն, պարտ էր և երկրի այսպէս կալ. զի ոչ էր արժան մարմնոց մերոց ապականացու լինել, և զերկիր անապական կարգել: Նայց սակայն և այսոքիկ բանաւորաց են, ասէ, “Ո՛չ և ինքեանք խոկ արարածքն ազատեսցին 'ի ծառայութենէ ապականութեան”. և ուստի այս լինիցի, յայտ ածեալ անդէն ասէ. “յազատութիւն փառաց որդւոյն այ”: Յորժամ յառնեմք, ասէ, և անապական ընդունիմք զմարմինս, յայնժամ երկինք և երկիր և ամենայն արարածոց մարմինք անապական լինիցի և անարատ:

Յորժամ տեսանիցես զարեգակն ծագեալ, սքանչացիր և երկիր պագ հրաշագործողին. և յորժամ տեսանես զնա թագուցեալ յամպոյ և աներևոյթ լեալ, խոկացիր զտկարութիւն բնութեանն, և մի երկիր պագաներ նմա որպէս այ: Ուստի ոչ թէ միայն 'ի բնութիւն տարերցս խայթս տկարութեան եդ այ, այլ և մարդկան իւրում ծառայից հրամայեաց նմա հրամանս տալ. զի եթէ 'ի տեսութենէ չճանաչես զնոցա ծառայութիւնն, 'ի հրամայողաց նոցա որք զնոսա 'ի ծառայութեան կացուցին՝ յայտնեցանէ ուսանիցիս: Որպէս Յեսու որդի Նաւեայ ասէր. “Կացցէ արեգակն հանդէպ Գաբաւոնի և լուսին հանդէպ ձորոյն Այլոնի”: Այս գործեալ մարգարէն Եսայի յաւուրս թագաւորին Եզեկիայ արարեալ. և Մովսէս օդոց և ծովու և երկրի և վիմաց հրամանս տայր, և որպէս հրամայէր՝ վաղվաղակի լինէր: Եղիշա զբնութիւն ջուրց դարձուցանէր. երեք մանկունքն զզօրութիւն հրոյ շիջուցանէին: Տեսանես զիարդ երկաքանչիւրովք խնամեաց զմեզ այ. գեղեցկութեամբ տարերցս ած զմեզ յաստուածածանօթութիւն. խոկ վասն տկարութեան նոցա ոչ ետ թոյլ մեզ պաշտել զնոսա:

Արդ վասն այսր ամենայնի փառաւորեսցուք զբարեգութն մեր այ ոչ բանիւք միայն, այլ և գործովք, և ճգնութիւնս համբերականս ցուցցուք խոկ, այլ ես վասն երդմանն պահելոյ ասեմ: Եւ եթէ ամենայն մեզք միա-

պէս տանջանս բերեն 'ի վերայ մեր, այլ որ դիւրին իցէ ուղղել և ոչ ուղղեցուք՝ առաւելագոյն բերէ մեզ ըզտանջանս. որպէս և Սողոմոն ասէ. «Ոչ ինչ են զարմանք եթէ ըմբռնեսցի ոք 'ի գողութեան, գողանայ զի լցուսցէ զանձն իւր քաղցեալ. ապա թէ ըմբռնեսցի, եօթնպատիկ տուժեսցի, և զամենայն ինչս տուեալ զանձն փրկեսցէ. իսկ որ շնայ առ պակասութեան մտաց, կորուստ անձին իւրոյ ստանայ, և ցաւս և անարգանս կրէ»: Այս զոր ասէն այս ինչ է. վտանգ մեծ է, ասէ, գողանալն, բայց ոչ որպէս շնացողն. զի նա ունի պատճառս ցուցոյ, զկարիս աղքատութեան. իսկ շնացողն ոչ մի ինչ կարիս ունի որ ստիպէ զնա, այլ յանմտութենէ միայն անկանի 'ի գուբ մեղացն: Զսոյն զայս է ասել և վասն այնոցիկ որ երդնուն. զի և ոչ սոքա ունիցին ինչ պատճառս ասել, այլ միայն արհամարհութիւն է պատուիրանին:

Այս գիտեմ զի դիւրին է, սակայն և երկիւղալի, և ոչ թողից ես ասել. և եթէ զառանց ամօթոյ զսէր իմ ծանուցեալ էք, 'ի բաց կացէք 'ի չար սովորութենէ երդման...: Աղաչեմ զձեզ զի որպէս ես այժմ ցաւագնիմ և կոծ առեալ սգամ վասն ձերոյ փրկութեան, նոյնպէս և դուք մի հեղգայք վասն ձերոց անձանց, մինչև զկատարումն առցէ ուղղութիւն պատուիրանին: Այս զի է շատ ինչ ասել. եթէ ոչ էր գեհեան և ոչ տանջանք արհամարհողաց և ոչ վարձք հնազանդելոց, և ես եկեալ առ ձեզ զայս մասն շնորհ 'ի ձէնջ խնդրէի, ո՞չ ապաքէն տեսեալ տայիք զխնդրուածս զդիւրինս զայսմ շնորհի: Իսկ յորժամ Ած զայս խնդրէ վասն ձեր որ տուող էք, և ոչ վասն իւր որ առողն է, ո՞վ իցէ այնպէս անմիտ, կամ ո՞վ իցէ այնպէս թշուառական և տառապեալ որ արգելու տալ այնմ յորմէ վայելէ և ընդունի զշնորհն զոր տայցէ բազմապատիկ:

Զայս այժմ իմացեալ, յորժամ երթիցէք աստի, յանձինս ձեր խոկացէք զասացեալս ամենայն. և որք 'ի միտ ոչ են առեալ, ամենայն հնարիւք ուղղեցէք, զի ըզձեր ինքեանց և զեղբարց ձերոց ուղղութեան զհատուցումն ընկալջիք 'ի տեառնէ այ մերոյ շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք յաւիտեանս. ամէն:

Digitized by Google

# ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Գոհութիւն այ վասն փոխարկելոյ անէկալի չարեացն և յիշելոյ զնոյն. և արհամարհանաց մարմնոյ մերոյ և նորին առաջնման. և ուղղելոյ զչափիզս երգման:*

Յորժամ զմտաւ ածեմ զանցեալ ձմեռն և զհանեալ համբերութիւն, ոչ դադարեմ ասել՝ օրհնեալ է Տր որ արար զձմ և կազմեաց զնոսա, որ արար 'ի խաւարէ լոյս, որ իջուցանէ 'ի դրունս դժոխոց և հանէ, որ խոցոտէ և ոչ մահացուցանէ: Սոյն և ձեզ խորհրդակից լինել համապազ ասել և ոչ դադարել, քանզի նա ինքն այսու գործովք զմեզ բարեգործէ. ապա որք բաւութեան արժանի եղաք, որովք բանիւք տացուք նմա փոխարէնս: Այսմ սորա աղաչեմ մի երբեք դադարել առ 'ի գոհանալոյ զնմանէ: Եթէ յառաջակայ աւուրս լինիցիմք բարեմիտք, բարւոք զի և առաւելագոյն վայելեսցուք: Որք տեսացուք համապազ՝ օրհնեալ է Տր որ ետ մեզ առանց երկիւղի խնդութիւն, և եղիր առաջի ձեր սեղան, և պարգևեաց ձեզ համարձակապէս անխռովիր լինել բանից մերոց. օրհնեալ է Տր զի ոչ ետ այժմ փախըստական լինել 'ի վտանգից, այլ յօժարել յանխռովութիւն գրոց ընթանալք սոսա. և ոչ երբէք համբերձ տագնապաւ և դողութեամբ և հոգովք լինիմք առ մեծամեծս, այլ այ երկիւղիւն համբերձ՝ զամենայն երկեւղ 'ի բաց թօթափեսք. մինչ զի զառաջագոյն աւուրսն և զընկղմելն մեր իբրև 'ի մէջ ծովու և զխաւարածածկ զօր ամենայն աւուր և ժամու ակն ունէաք գալոյ, ոչ առանց յիշելոյ թողցուք, յորժամ բերս համբաւէին համՁարս, զայլոցոնվին զօրն խռովեալք և սոսկացեալք յամենայն կողմանց զամենայն որ աւելագործութեամբ և բազմաքենին յուզմամբ եթէ ով եկն 'ի զօրագլխացն կամ ով պատմեացէ թէ եկն, կամ թէ Չշմարիտ են ասացեալքն կամ թէ սուտ, և զգիշերս անքուն կացարել: Յորմէ էր տեսանել զքաղաքս և արտասուել՝ թէ զիարդ եղեն յայնմ պահու սպառնալեացն: Սակայն և մեք զառաջին աւուրսն բերցուք, վասն զի զառաջիկայ

քաղաքս մեր և յանապատս փախապրեցան ամենեքեան. իսկ որք մնացին, տրտմութեանն ամպ զչարեալ զայրացուցանէր. քանզի հոգի՛ 'ի տրտմութիւնս անկեալ, միանգամայն յամենայն ունկնդրութիւնս առանց պատրաստութեան է: Սուտի և բարեկամքն Յոբայ մերձ եղեալ առ նա և տեսեալ զարգասն զայն նստեալ 'ի վերայ աղբեաց տրտմագին խոցմամբ վիրաւորեալ, պատառեցին զհանդերձս իւրեանց, և յողբս հարեալ և լռեալք նըստան մերձ, յայտ արարեալ եթէ զառաջինն խօսել ոչ է հանգիստ նեղելոց որպէս խաղաղական լռութեամբ կեալն. զի առաւել մխիթարութեան օգնի պէտքս այս: Ըստ որում և եբրայեցիքն որք 'ի ծառայութիւն կալոյ և աղխւոյ կապեալք էին, 'ի գալն Մովսէսի տեսանէին զնա և ոչ կարէին ունկն դնել բանից նորա 'ի տրտմութենէն: Եւ այս չէ սքանչելիք հասարակաց մարդկան լինել նեղասրտաց, ուր և զաշակերտսն տեսանեմք անկեալ յախտս յայս: Զկնի խորհրդական ընթրեացն յորժամ առանձինն առեալ զնոսա Քրիստոս ասէր, զոր յառաջագոյն հարցանէին ցնա աշակերտքն ասել՝ թէ յո՞ երթաս, իսկ յորժամ ասաց նոցա զոր փոքր ինչ յետոյ դիպելոց էր, զպատերազմունսն, զդաւանելն 'ի վերայ նոցա, զհալածանսն յամենեցունց, զապտակն, զհարուածն, զբանսն, զ'ի դատաստան մատնելն, որպէս բեռն ինչ ծանր՝ երկիւղ հանդերձելոցն և տրտմութիւն ըմբռնեաց զնոսա և մնացին լռեալք. վասն որոյ տխուր և գձուձ տեսեալ զնոսա Քրիստոս նախատելով ասէր. « Երթամ ես առ հայր իմ, և ոչ ոք 'ի ձէնջ հարցանէ ցիս թէ յո՞ երթաս. այլ զայս խօսեցայ ընդ ձեզ, տրտմութիւն ելից զսիրտս ձեր »: Սոսկ և ես լռեցի յանցեալ աւուրսն: Քանզի որ հանդերձեալն է մեծ ինչ խնդրել, եթէ բարւոք և ուղիղ կամիցի աղաչել, աջողակ ժամանակի մնասցէ, զի հանդարտ և 'ի բարւոք իցէ այն որ հանդերձեալ է տալ զխնդրուածսն, և այս երթիցէ զաջողակ զժամն մարտակից առեալ, որով հանդիպիցի շնորհին: Եւս մանաւանդ յորժամ կամիցիս ասել բան իմաստութեան, պատրաստական ժամանակ պարտ է խնդրել յորժամ ունկնդիրքն բարիօք կացցեն մնասցեն ազատ յամենայն հոգոց և 'ի տրտմութենէ, և այսպէս մատուցանել զբանս պատուիրանաց:

Digitized by Google

Արդ զոր վասն արարածոց ասացաք եթէ ոչ միայն զարմանալի և գեղեցիկ և մեծ արար զնա ա̃ծ, այլ և տկար և ապականացու, և եդ սմա խայթս բազումս, զի յերկոցունց զաջողակն մեզ շնորհեսցէ, 'ի սքանչանալն՝ արարողին ուսուցանել զզօրութիւն, իսկ վասն տկարութեանն զատեալ զմեզ 'ի սոցանէ, զի մի պաշտեսցուք զարարածս՝ այլ զարարիչն, զայս և 'ի մարմնոյս մեր է իմանալ: Վասն որոյ բազումք քննեն որք են թշնամիք արդարութեան միշտ հետազօտեալ զայսն, որք ընդ մեզ դատաւորեալք են՝ թէ ընդէր արդեօք ապականացու եղև մարմինս: Հեղլենացիք և հերձուածողք ասեն՝ եթէ ոչ է այս յա̃յ եղեալ. զի և ոչ էր արժան այսօրինակ, ասեն, ա̃յ հրաշագործութեանցն, աղտեղութիւնք և քրտունք և արտասուք և աշխատութիւնք և տառապանք և զայլ ամենայն որ ինչ է մարմնոյ:

Իսկ ես յորժամ վասն սորին բան ինչ լինիցի, նախ զայն ասացից՝ եթէ մի ինչ այսպէս զարհամարհեալ մարմինս զայս զանարգեալ և զդատապարտեալ. այլ եթէ կամիցիս գիտել եթէ զորպիսի մարմինս ստեղծ ա̃ծ, եկեսցուք 'ի դրախտն և զառաջին զմարդն տեսցուք եղեալ: Ոչ էր մարմինն այն ապականացու և արհամարհ և բեկանեալ. այլ զոր օրինակ պատկեր ոք ոսկեղէն հանիցէ նորոգ 'ի հալոցաց բովուց և պայծառ փայլմամբ երևեսցի, այնպէս յամենայն ապականութենէ յայսմանէ մարմինն այն փոփոխեալ էր. ոչ յաշխատութենէ ձանձրանայր, ոչ քրտամբք ժահահոտէր, ոչ հոգս խորհրդոց ինչ ունէր, և ոչ տրտմութիւն շրջապատէր և ոչ այլ ինչ կիրս յայսպիսի ախտից: Իսկ յորժամ ոչ զգաստութեամբ բարեկենդանութեանն համբերեաց, այլ անարգեաց զբարեգործն, և զպատրող դևն քան զխնամակալն ա̃ծ զարարող և զպատուիչ նորա արժանահաւատալի համարեցաւ և ակն ունէր լինել ա̃ծ, խորհուրդ առեալ առաւել քան զիւր իշխանութիւնն կամէր բարձրանալ, յայնժամ զգաստացոյց զնա ա̃ծ՝ ապականացու արարեալ զնա և տկար, և շուրջ պնդեաց զնա յամենայն նեղութիւնս յայս. ոչ եթէ ատեաց կամ դարձաւ 'ի նմանէ, այլ գթացաւ 'ի վերայ նորա և զկործանիչ զամբարտաւանութիւնն զանանաբարոյ արգելլոյր, և անկարօտ լինել 'ի վեր քան զպէտս չտայր թոյլ.

այլ այսու գիտութեամբ ուսուցանէր զնա թէ տկար և անզօր է. և այսպէս զնա հաւանեցուցանէր, զի մի երբէք տեսլեամբ և երազովք ցնորեալ խաբիցի. քանզի ասաց սատանայ՝ եթէ լինիք որպէս զա͞ծս։ Նախ զայպիսի իմացս խորհրդոյ արմատախիլ արար, բազմախտութեամբ վատագոյն զմարմինն արարեալ. այսու ընթեամբ խրատէր զնա զի մի երբէք այլ այնպիսի առցէ իմաստս։ Նա եթէ այսպէս իսկ է Ճշմարիտ, մանաւանդ զի որ 'ի նմանէ եղեն՝ նոքօք յայտ արար։

Ոչ ետ թոյլ նախ նմա մեռանել, այլ ուղղոյ նորա ետ տեղի այսմ զխպիլ. զի՞նա առաջի աչաց տեսեալ զմարմինն փտեալ և ապականեալ, մեծ իմաստութիւն ընկալցի 'ի տեսութենէն և ծանիցէ թէ զինչ եղև, և այսու զգաստացեալ այնպէս բարիոք ապա առնի երթիցէ։ Մանաւանդ զոր նախ ասացի՝ եթէ 'ի ձեռն գոյից զայս յայտնէ, ոչ նուազ իսկ և զկնի այսմ ասացուածոյս իցէ յայտնապէս։ Քանզի հարկս այս պնդեալ ընդմարմնոյ մերոյ ամենեցուն մեռանել և ապականել, և յայսմ կերպարանաց եղծանել և լինել որպէս փոշի, զոր և յարտաքին իմաստասիրացն ոմն զայս տեսեալ կատարեալ սահման եդ ազգի մարդկան, հարցանելով թերևս զինչ իցէ մարդ, ասէ՝ կենդանի բանաւոր մահկանացու. և ասեն՝ զայս ամենեցուն խոստովանել, բայց համարձակեցան ոմանք 'ի կարծիս բազումս և 'ի կերպարանաց վկայ լինել մահուն, հակառակեցան համբաւնալ զինքեանս յա͞ծս և այնպիսի պատիւ խնդրէին։ Իթէ ոչ էր նախ տեղի առեալ մահն և ապականութիւն, ո՞ւր ապա ոչ յայտնէր ամբարտաւանութիւն մարդկան։ Լուր զինչ ասէ մարգարէն յաղագս ումեմն բարբարոս թագաւորի. “Դու ասէիր 'ի սրտի քում. ելից 'ի վերայ աստեղաց երկնից, եղից զաթոռ իմ և եղէց նման բարձրելոյն„։ Նա ապա ասէ պատմելով յայտնապէս զվախճան նորա. “Ի ներքոյ քո մէջ տարածեցաւ, և 'ի վերոյ քո որդն յարկցի„։ Որէ թէ այսպէս իսկ ասիցէ, եթէ մարդ որ այսպիսի՝ վախճանի մնայ, զիա՞րդ այնպիսի երևմանց համարձակիցի։ Նա վասն այլոյ ումեմն որ զայսպիսի կարծիս մարմնոյ կազմութեամբ խորհեալ՝ ասէ ա͞ծ. “Դու ինքն ոչ ես ա͞ծ, այլ մարդ„։ Արդ որք բանիւք կամեցին զքեզ խոցոտել, զայս ասասցես՝ եթէ

ած անդուստ 'ի վերուստ կամեցաւ բառնալ զկառավարչ-ութե պատճառս, ուստի այսպիսի արար զմարմինս մեր։

Այլ զինչ սքանչելիք իցեն եթէ 'ի վերայ մարմնոց մերոց այսպէս եղև, որ և վասն հոգւոց մերոց այսպէս եղիցի։ Ոչ թէ մահկանացու արար, այլ անմահ գոլով ոչ սուրբ բնութաբար և անարատ և անտրտում և անմեղ և անախտ զհոգիս մեր կազմեաց։ Վասն էր արդեօք. զի մի զինքն 'ի մեծատոհմութեան տեսեալ, առաւել վասն ինքեան առցէ խմայուածս։ Իսկ եթէ այս եղև և համարձակեցան ասել ոմանք՝ եթէ յայդ գոյութենէն իցեն ոգիք մարդկան, եթէ այսչափ ախտիւք չէին փոփոխեալք և օտարացեալք, մի ոչ էին յարուցեալ խռովութիւնք։

Արդ զոր վասն արարածոցս ասացի, զնոյն և վասն մարմնոյ ասեմ, զի մի առաւել սքանչասցուք զերկրացւոց իբր նման գոլ նմայ. այլ յայսմ ցուցանի սքանչելիք ած, զի ապականացու և ախտաւոր զնա արարեալ՝ 'ի նմին եցոյց զիւր զօրութիւնն։ Այլ զի կարող էր վեհ մեծութեանն առնել և պահել զնիւթս, եցոյց և յերկնից կերպարանաց և յարեգակնէ, զայս այսպէս առնել կարող գոլով եթէ կամեցեալ էր. իսկ զպատճառ ակարութեանն վերագոյն ասացաք։ Ուստի ոչ թէ յայսմանէ հատանի հրաշագործողին սքանչելիքն, այլ մանաւանդ առաւելեալ յերկարանայ, զի 'ի տկար և 'ի գձուծ բնութիւնս զայսչափ ցուցանել զօրութեանց բարի գնացս, զի 'ի հողոյ և 'ի կաւոյ այսպիսի զօդուածս և զգայութիւնս զանազան և ազգի ազգի և այսպիսի իմաստասիրութեան կարող լեալ։

Ոչ որչափ ստորոգես զանութեանս զնուաստութիս, նոյնչափ մանաւանդ սքանչասցիս ընդ մեծութիւն արուեստաւորին. քանզի որ մեծամեծ հնարիւք պատկերս ոսկեղէնս յօրինեն՝ ոչ այնպէս սքանչելի և գեղեցիկ կարեն ձևացուցանել պատկեր, որպէս 'ի հողոյ անկեղոյ 'ի բարի կարգէ արուեստի կարող լեալ ստեղծուածն գեղեցկութիւն ցուցանել սքանչելի և անքնին։ Արդ և 'ի կատարածն նիւթոցն խանգարումն լինի և եղծումն. իսկ աստ մերկ արուեստին է ցուցմունս։

Դու իսկ եթէ կամիցիս գիտել եթէ որչափ է հրաշագործողին իմաստութիւնն առ մեզ, խնդրիր եթէ զինչ

Digitized by Google

լինիցի 'ի հողոյ. և զի՞նչ այլ, եթէ ոչ աղիւս և խեցի։ Սակայն արուեստաւորն Ա̄ծ ամենազօր կարողութեամբն 'ի նիւթոյ ուստի միայն աղիւս և խեցի ելանէ՝ արար առնել այսպիսի աչս գեղեցիկս, մինչև զամենայն տեսողս զարհուրեցուցանէ. և այսչափ ետ տալ սմա զօրութիւն, մինչ զբարձրութիւնս օդոց կարող գոլ տեսանել փոքր բբիւն օգնականութեամբ, և զլերինս և զդաշտս և զբլ-լուրս և զերկիր ծովու համօրէն 'ի ձեռն այնր փոքրիկ օգնականին տեսանէ։ Զայսպիսի տեսցես և մի ինչ ա-սասցես զարտասուս և զերկս, զի այնք վասն քոյին մե-ղացն եղեն. այլ խնա զնորա գեղեցկութիւն և զզօրու-թիւն տեսութեանն թէ զիարդ հասանէ 'ի բարձրու-թիւնս օդոց, ոչ աշխատի և վաստակեալ մնասցէ. ոտք յորժամ խուն մի երթիցէ, վաստակեալ լուծանի. իսկ աչք երթայ յայնչափ ճանապարհ, այնքան ընդերկար և հեռի և ընդարձակագնայ, և ոչ աշխատի և ոչ հիւան-դութեան ինչ հանդիպի։ Սա է հարկաւոր և պատուա-կան այլոց անդամոց մերոց, ըստ որում ոչ ետ ըմբռնել սմա 'ի վաստակոյ, և առանց աշխատութեան մեզ 'ի նո-րա սպասաւորութեանն լինել և անարգել։ Ո՞վ իսկ մա-նաւանդ կարիցէ յառաջ բերել զնորա զամենայն սքա-նչելի զօրութիւնս։

Այլ զի՞նչ ասեմ վասն բբի և տեսանող զօրութեան. եթէ զոր նուաղագոյն առես թէ իցէ քան զայլ մար-մինն, զարտևանունս աչացն առցես 'ի քննել, և յայս-մանէ տեսցես զհրաշագործողին զիմաստութիւն զօրու-թեանն։ Զի որպէս 'ի վերայ հասկաց հնձոց պահա-պանս կացուցեալ զթռչունս հալածեն և ոչ տան թոյլ նստել 'ի վերայ հասկացն և կոտորել՝ քանզի տկար են, այնպէս և զաչացն տեսցես. իբրև հովանիք և պահա-պանք 'ի վերայ կան մազ արտևանանցն, և զփոշի և ըղ-խայտումն նշողից արեգականն արգելու, և յամենայնէ որ արտաքուստ հարեալ զբիբն խաւարեցուցանէ՝ արտևա-նունքն ոչ տայ թոյլ հարկանել։

Տեսցես արդեօք և 'ի յօնսն զիմաստութիւն արա-րողին։ Ո՞վ ոչ զարմասցի ընդ նորա դիրսն յօրինման. տես զի ոչ է անցեալ ըստ չափն մազ յօնիցն զի մի զաչսն մթացուսցէ, և ոչ 'ի ներքսագոյն քան զպէտսն թողուն անցանել իրաց իւիք, այլ որպէս ցիւ տան՝ այնպէս ունի

շուք 'ի վերուստ. և զոր 'ի գլխոյն 'ի խոնարհ եկեսցեն քրտունք, ընդունին և ցուել աչացն ոչ տան: Տես զիարդ և մազ յօնիցն իցէ բուսեալ, զի խտացեալ թխութիւն և ամուր կայիւքն բազում գեղեցկութիւն տան երեսացն: Այլ այս միայն երեսայն վայել է, ոչ 'ի թաթաձեռացն կամ յայլ անդամս պիտոյ է: Նա և ոչ այսու միայն է սքանչելի, այլ և միւսն ոչ գծուծ քան զնոյնս. զիարդ արդեօք. զի հեր գլխոյն աճեն և փոքրել պիտոյանայ, իսկ յօնացն ոչ այսպէս: Այլ ոչ ըստ ամենայն հանդիպմամբ եղև, այլ հասարակաց. և մինչև ծերանալք և 'ի խորին իսկ ծերութիւն հասցուք, և խաւարին աչք մեր:

Ո՞վ կարիցէ և վասն գլխոյ և զգայարանաց որ 'ի նմա ցուցանել զամենիմաստ արուեստ արարչին: Նախ զնա 'ի տղայութեանն կակուղ արարեալ, իսկ յորժամ զամենայն զգայութեանցն բանայ զաղբերս, յամենայն կողմանց ոսկերօք զնա հաստատեաց, զի ըստ իւրում բնութեանն անվնաս մնասցէ: Պարզեալ զի մի 'ի խիստ պնդութենէ ոսկերացն ծանունց ձանձրասցի, իբրև մտացանող դայեակ պահապանս 'ի մէջ կացուցեալ՝ ոչ մի միայն, այլ և երկուս. մինն զի հաստատուն կայցի զ'ի ներքոյ զգործի զգայարանացն, իսկ երկրորդն զի 'ի վերուստ 'ի վերայ բերեալ գլխոյն մարմնոյ, և նա քան զայս է խստագոյն: Այլ պատճառ՝ զի մի յեկելոց վտանգից կամ գանից 'ի վերայ գլխոյն՝ վնաս կրեսցեն զգայարանքն, այլ զի ընդդէմ կացցեն զօդուածքն այնոցիկ և զամենայն զընդդէմսն լուծանեն և առանց վնասու զնա պահեսցեն. ըստ որում ոչ եղև մի զօդուած և ոչ մի ոսկր որ ծածկէ զնա, այլ յամենայն կողմանց կարս բազումս ունի, և բազում զգուշութիւն նորա ըստ ամենայն պատճառի: Իսկ ծխոյ արտաքուստ սահէպ մտելոյ դիւրաւ արտաքս քաղի, ոչ կարելով ազդել 'ի ներքս ընդ այնմ կարամուտս ոսկրազօդիցն, և մի կարել զնա հեղձուցանել. իսկ եթէ եկեսցէ գան ուստեք, ոչ ամենայն գլխոյն առնիցէ վնաս: Ո՛ր թէ մի էր և ընդ մի ոսկր խառնեալ էր ամենայնն, յորժամ 'ի մի կողմն գան առնոյր կամ վէրս, ամենայն գլուխն ապականէր. բայց քանզի բազում բաժին առնի այժմ, ոչ լինի այնպէս: Այլ եթէ դիպեսցի խոցումն միոյ մասին, բողոքն գաղով

յոսկերաց հաստատեալ, միայն այն մասն մնասի, իսկ այլքն անշարժ մնասցեն, և ստէպ 'ի վիրաց կոծել 'ի խղելոյ ոսկեր՝ 'ի յայլմն ոչ կարէ մերձենալ ցաւն ։ Ըստ այսմ պատրաստութեան 'ի բազում ոսկերաց զգլուխն հաստատեաց ած ։ Եւ զոր օրինակ տուն որ շինեալ՝ ցիւս և 'ի վերուստ կողմանէ ծածկոյթս աղիւսայս դիցէ, նոյնպէս զոսկերս զայս եդ 'ի վերայ գլխոյն ած և զհերն բուսանել կազմեաց, զի փոխանակ քողարկութեան այս լինիցի գլխոյն ։ Իսկ եթէ ամենայն գլուխն ջախջախի, առ հասարակ բնութիւն առնու զգան ցաւոցն և կործանի կենդանին ։

Նոյնպիսի և սրտին արար․ քանզի տիրապէս է բնութիւն նորա ամենայն անդամոց մերոց, և ամենայն կեանք մեր ընդ այսմ տէրութեամբս ըմբռնեալ է, և յորժամ հանդիպի նմա խոցումն կամ ցաւ՝ անդէն և մահ, ուստի կարծր և բուռն ոսկերօք պատեաց զնա յամենայն կողմանց իբրև վահանօք ընդդէմ նետից, և զթիկունսն յետուստ կողմանէ ամրացուցեալ ոսկերօք բիձացն և այլովք բազում պահապանօք, և զհոգին շնչոյ միայն 'ի նմա եդ և շուրջ զնովաւ իբրև անկողինս կակուղս, զի հանապազ անպակասելի 'ի շարժման գոլով՝ հաստատեաց զնա, զի մի դժուարութեան դիպեսցի ։ Եւ զինչ ասիցեմ վասն զգայարանաց գլխոյ և սրտի․ զի թէ և վասն ոնգաց քննեսցես, բազում և յայսմ տեսցես զայ իմաստութիւնն, և ըստ ամենայնի իսկ է ցուցանել և 'ի կերպարանաց և 'ի դրից ։ Հայեաց 'ի ձեռան․ ընդէ՞ր ոչ հաւասարաչափ եղեն ամենայն մատունքն ։ Այս և այլ բազում և առաւել քան զոյն են ծանուցիչք իմաստութեանն այ․ բայց ասացեալքս բաւական են ոյք միտադիւր կամօք ունկնդիր լինին իմաստագործ արարչութեանն այ որ փայլեաց առ մեզ․ վասն որոյ թողեալ զայսր բաժանմունս զերկս աշխատութեան զգործ սիրոյ ձերոյ, 'ի յայլ դիւրինս դարձցուք ստուգութեամբ ։

Բայց զկնի ասելոյ զայսոսիկ պատասխանեն ոմանք․ եթէ թագաւոր անասնոց եղև մարդս, ընդէ՞ր զզօրութիւն և զթեթևութիւն և զարագութիւն բազում կարեօք ապահէ 'ի նոցանէ․ քանզի ձի արագագնաց է քան զմարդ, և եզն զօրաւոր, և պրծուի թեթև է, և առիւծ կարող զօրաւոր և բուռն ։ Եւ առ այս զինչ ասասցուք

նոցա, թէ և աստի կարիցեմք գիտել զայն իմաստութիւն և զմեծ պատիւն զոր մեզ շնորհեալ է: Տես արդ. երագընթաց է ձի քան զմարդ, բայց ՚ի գնացս հեռագոյնս աջողակ է մարդ քան զձի: Ձի արշաւէ և է երագագնաց, առանց հեծանելոյ թէ ընթացցի յաւուր՝ երկերիւր ասպարէզ. իսկ յորժամ հեծեալն վարէ զնա, կարող լինի և հազար ասպարէզ գնալ. զի թէպէտ և նա արագ իցէ, այլ սա խորհրդական արուեստիւն առաւելագոյն գտանի. ոչ ունի սա զօրաւորս որպէս երիվարն, ունի զնորայն իբրև զիւր ոչ ինչ նուազ քան զիւրն սպասաւորել ինքեան. քանզի այսպէս վայել է թագաւորի: Ոչ կարէ երիվար զայլ անասուն ածել ըմակցեալ ՚ի պէտս իւր. իսկ մարդ զամենայն ինչ հնարանօք առնէ համօրէն պէսպէս արուեստիւ զոր բնա այսմ տուեալ է սմա բնա իւրաքանչիւր կարգի զամենայն անասուն ածել ինքեան ՚ի սպասաւորութիւն: Իսկ եթէ էին ոտք մարդկան արագահաս իբրև երիվարաց, ակայն յայլ ինչ առիք յետնեալ գտանէին, ՚ի կառապանս, ՚ի ծայրս լերանց, ՚ի ծառ ելանել, յորս երիվարին յաջսաակ ընթանալ արգելու: Որ թէպէտ և ոչ խիստ, այլ կակուղ են ոտք սորա, սակայն յամենայնի աջողակ գտանին, և ոչ նուազ է տկարութիւնն քան զձիոյ զօրութիւն արագութեան սպասաւորել ՚ի պէսպէս ընթացս:

Դարձեալ ոչ ունի թևս բարձրաթռիչս արծուոյ, այլ ունի բան և արուեստ որով կարող է զամենայն թռչունս ընդ ձեռամբ ածել: Իսկ եթէ կամիցիս տեսանել թևս իմանալիս և գեղեցիկս զիմ, ունիմ ևս թեթևագոյնս քան զնոցին, ոչ տասն ասպարէզ կամ քսան բարձրանալ և ոչ մինչ յերկինս հասանել, այլ ՚ի վեր թռչել յերկինս երկնից, անդր հասանել ուր Քրիստոս իցէ նստեալ ընդ աջմէ Հօր:

Անասուն կենդանիքն զզէնս իւրեանց ՚ի մարմինս իւրեանց ունին. որպէս եղն եղջիւրս, և խոզ վայրի ժանիս, առիւծ մագիլս. իսկ մեզ ոչ ՚ի բնութիւն մարմնոյ զէնս ետ Ած, այլ արտաքուստ, ցուցանելով թէ մարդն ոչ է գազան վայրենամիտ, այլ ընտանի. ըստ որում ոչ միշտ ընդ նմա է զէնն, այլ բազում անգամ ՚ի բաց եդեալ՝ դարձեալ առնու յորժամ կամիցի. քանզի ազատ

է և 'ի կամս թողեալ. ոչ հանապազ հարկէ բաժանել զզէնն, զի այն ծառայական է:

Զի ոչ եթէ հոգիք մեր միայն են բաւական մեկնեալ յանբանից, այլ և դրիւք մարմնոյ վերագոյն եմք քան զնոսա. զի այսպիսի հոգւոյ բանականի օգնական կազմեաց զմեզ ա͞ծ, և 'ի հրամանս կարգի և զատու աջողակ: Բնաւ զայսպիսի մարմին ոչ պարզաբար արար, այլ որպէս իրաւունք են՝ բանաւոր հոգւոյ սպասաւորել. և եթէ ոչ էր այսպէս, յոյժ գայթակղէր օգնականութիւն հոգւոյն: Եւ այս յայտնի է 'ի ցաւոց հիւանդութեանց. քանզի թէ առ փոքր մի շարժի կամ մանրի յիւրոց կայից զարդ և յօրինուած մարմնոյս, բազում օգնականութիւն հոգւոյն արգելու, որպէս յորժամ առաւել ջերմ կամ ցուրտ գլուխն լինիցի: Մինչ զի 'ի մարմնոյս է գիտել զբազմապատիկ գթութիւն ա͞յ. քանզի յառաջնումն առաւել արար զմարմինս քան որ այժմ է, և յայսմանէ յետ պատուականագոյն հանցէ կազմեալ՝ մեծագոյն փառօք յարուցանելով:

Դարձեալ եթէ այլուստ կամիցիս ուսանել որչափ վասն մարմնոյ եցոյց ա͞ծ իմաստութիւնս, ասեմ և զայս, զոր մանաւանդ Պաւղոս զարմանալի զնիւթս առնէ ասէպ և հիանալի: Զխորգ արդեօք. զանդաման առաւելութեամբ առ միմեանս արարեալ և յիրերաց ոչ բաժանեալ, այն գեղեցկութիւն ունելով, և միւսն 'ի զօրութիւն կազմեալ և պատուական ցուցեալ. որպէս զի գեղեցիկ են աչք և զօրաւոր են ոտք և պատուական է գլուխ. բայց ոչ կարէ աչք ասել ցոտն թէ չէք ինձ պիտոյ, և այլքն նմանապէս. զայս և 'ի վերայ անասնոց պարտ է իմանալ, զնոյն և վասն կենցաղոյս ամենայնի: Թագաւորն կարօտ է ծառայից և ծառայք թագաւորին, որպէս գլուխ ոտից և ոտք գլխոյ նմանապէս: Դարձեալ յանասնոց ոմանք են վայելուչք և ոմանք զօրաւորք. ոմանք զմեզ զարդարեն և այլք կերակրեն. սիրամարգ վայելչացուցանէ, և ընտանի հաւ և խոզ կերակրեն, եւս և հօտք և անդեայք. եզինք գործեն, էշք բեռնակիրեն, և այլք ամենաքեան նման սոցին զկարիս մեր լնուն . . . :

Ո՞չ այսուհետև բամբասեր զա͞ծ վասն ապականացու մարմնոյս, այլ մանաւանդ երկրպագեա նմա վասն

այսորիկ և սքանչացիր ընդ իմաստութիւն և ընդ գթու-
թիւն նորա. ընդ իմաստութիւնն զի կարող է յայսմ ապականացու մարմնի այսպիսի ցուցանել յօրինուածս. Իսկ ընդ գթութիւնն՝ զի վասն օգտութեան հոգւոյն ա-ւեր զսա ապականացու, զի քակեալ փարատեսցէ զնո-րա բնութեանն զամբարտաւանութիւն։ Հարցանես՝ զիա՞րդ արդեօք. և պատասխանեմ քեզ, թէ ոչ 'ի սկըզ-բանէ զայս այսպէս արար, այլ եղև վասն մեղացն գոր-ծոց։ Եւ այս, ասէ, ոչ միայն վասն յանցանաց այնմիկ՝ եթէ զքեզ յառաւել պատիւ կոչեցի, դու անարժան պարգևացն զքեզ կացուցեր և անկար 'ի դրախտէն. այլ զիարդ ոչ անտես արարի զքեզ, այլ զյանցանս քո բառ-ձի և զքեզ ուղղեալ յերկինս հանի։ Վասն որոյ թոյլ ետու քեզ այնչափ ժամանակս փտել և ապականել, զի 'ի բազմութեան ամացն հաւանեսցիս, և առանձին լիցի քեզ խոնարհութեան և զգաստութեան վարդապետու-թիւն, և ոչ երբէք զառաջակայ զգաստութիւնն 'ի քէն ընկեսցես։ Վասն այսր ամենայնի գոհասցուք զմեր մար-դասիրութենէն, և գթութեան նորա տացուք հատու-ցումն, հատուցումն՝ որ մեզ է օգտութիւն։

Դարձեալ և վասն պատուիրանին զոր սակաւ ասացի ձեզ, բազում արարից զփոյթ և ոչ 'ի բաց կացից մինչև ուղղեցէք զպատուիրանն. քանզի ոչ 'ի ձէնջ խնդրեր ոչ եթէ այս իցէ զոր առ սակաւ սակաւ բազում անգամ ասեմք, այլ այն իսկ է հաւանեցուցանել զձեզ. Ընդ Հրեայսն ասէր ած 'ի ձեռն մարգարէին. „Եթէ 'ի դա-տաստան և 'ի կռիւս պահէք, զի՞ պիտոյ են ինձ այսպի-սի պահք ասէ տէր„։ Նոյն և առ ձեզ ասէ 'ի ձեռն մեր. եթէ յերդումն և յերդմնազանցութիւն պահէք, չեն պիտոյ այնպիսի պահք։ Զիարդ ապա զզատիկն սուրբ տեսանիցեմք, զիարդ զսուրբ պատարագն ընդու-նիցիմք, կամ որպէս 'ի սքանչելի խորհրդոյն հաղորդեա-ցուք, որ հանդերձ լեզուօք մերովք զանունն այ առ ոտն հարկանեմք յամենայն ժամ, լեզուաւ՝ որով զհոգիս մեր աղտեղացուցաք՝ 'ի հոգևոր հուրն մերձեսցուք։ Զթագաւորական ծիրանիս աղտեղի ձեռօք ընդունել ոչ ոք կարէ. իսկ դու զտէրունական մարմինն անսուրբ լեզուաւ ընդունե՞լ համարձակիցիս։ Երդումն 'ի չարէն է, իսկ պատարագն սուրբ իսկ է. „Զիարդ հաղորդեա-

ցի լցեալ ընդ խաւարի, կամ զխնդրող միաբանի Քրիստոս ընդ Բելիարայ":

Արդ այժմ զի փութայք փոխարկել յանօրէնութենէ՝ գիտեմ ստուգապէս. այլ իւրաքանչիւր ոք յանձնէ իւրմէ ոչ դիւրաւ զայս շաւիղ ուղղիցէ, արասցուք փութաւորութիւն և պաստիւ. և զոր օրինակ աղքատք ամենայն յուրախութեան իւրեանց, որպէս թէ բոլորովին իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ կօշկատէր իցէ, ոչ կան անհոգ 'ի հանդարտութեան, այլ ամենեքեան դիւրաւ բերեն զանխայտութիւն. զնոյն և մեք արասցուք, յորժամ յանձանց մերոց զանդադաղկոտ իցեմք լինել զնոյն, պատիւ արասցուք միմեանց երաշխաւոր լինել, բերել 'ի խորհրդածութիւն 'ի զգուշութիւն պատուիրանին, 'ի պատուիրանս և յաղաչանս, 'ի յիշումն և 'ի սպառնալիս, զի ըստ իւրաքանչիւր փութոյ ամենեքեան ուղղեսցուք: Եւ զընկերաց մերոց քան ըզմերն առաւել տեսցուք, մեք զայլոցն պահեսցուք, և ըզմեր պահեան ցուցանել և յայտնել նոցա. և զբարի խորհուրդս զայս արասցուք, զի այսպէս փոփոխեսցուք յայսմ 'ի չար սովորութենէ, և համարձակութեամբ երթիցուք 'ի սուրբ տօնն և հաղորդեսցուք սուրբ խորհրդոյն հանդերձ քաղցր յուսով և բարի մտածութեամբ շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր փառք հանդերձ Հոգւովն սրբով այժմ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Գոհութիւն առ Աստուած, և վասն Թողութեան զոր առ Թագաւորն մեղան. և վասն արարածոց, և բնական օրինաց մարդոյն. և վասն երդման:

Եւ երէկ առացի՝ օրհնեալ է Աստուած, և դարձեալ զնոյն ասեմ: Թէպէտ և անցին վտանգքն, այլ յիշատակ վտանգին մի անցցէ, ոչ զի տրտմեսցուք, այլ զի գոհացուք. զի եթէ յիշատակ վտանգին մնասցէ, փորձութիւն վտանգին ոչ երբէք կացցէ: Ոչ գայցեն փորձութիւնք, զի յիշատակաւն զմեզ զգաստացուցանիցէ: Որպէս ոչ եթող զմեզ Աստուած ընկղմել 'ի հասեալ տրտմութիւնս, նոյնպէս և մեք մի ծուլասցուք թողուլ յանձնէ մերմէ



Digitized by Google

ո՞վ ետես կամ ո՞վ լուաւ երբէք զչարչարանս մեր, զի այնպէս հասեալ անկաք 'ի խորխորատս խորին: Հանապազ ակն ունէաք թէ խլի քաղաքս մեր և բնակիչք սորա. այլ յորժամ յոյս առ սատանայ ընկղմել զնաւն, յայնժամ յատակ խաղաղական և հանդարտ զայլսն արար ա̄ծ:

Ո՛չ այսուհետև զմեծութիւն վտանգին մոռասցուք, որով յիշել կարասցուք զբարեգործութիւնսն որ եղև յա̄յ. քանզի որ ոչ ճանաչէ զբնութիւն հիւանդին, անգէտ է արուեստի բժշկութեան: Զայս ասասցուք որդւոց մերոց և յամենայն ազգս առաքեսցուք, զի լուիցեն ամենեքեան եթէ զիարդ փութայ սատանայ զյատակ անգամ քաղաքիս մերոյ անյայտ առնել, և որպէս կարողութեամբ ա̄ծ զայս որ այսպէս անկեալ դնէր կործան կերպարանօք կեցոյց կանխաւ, նա և ոչ պարապոյ թոյլ ետ լինել վնաս, այլ և զերկիւղն հալածեաց և զվտանգն խորտակեաց բազում փութով: Քանզի յանցեալ շաբաթուն զամենայն զօրս մեր աւարեալ կործէաք ամենեքեան հրապարակաւ, և զօրագլխաց գալ 'ի վերայ մեր, և այլ ևս յաճախումն բազում նեղութեան. ահաւասիկ այն ամենայն էանց, իբրև զամպ և որպէս սաւերք ընթացան, և միայն յակնկալութենէ վտանգից ապրեցաք և առաւել լուսաւորք եղաք, զա̄ծ հաշտեցուցաք և զսիրտ թագաւորին կակղացուցաք:

Ասասցուք այսուհետև և յամենայն ժամ՝ օրհնեալ է ա̄ծ, և առաւել փութով ընթասցուք յեկեղեցիս յունկնդրութիւն. աստ ընթասցուք ուստի և պաղատերեցաք զօգտութիւն: Գիտէք իսկ յառաջնումն թէ յով ապաւինեցաք կամ ուստի եղև մեզ փրկութիւն: Ունիմք այսուհետև զսուրբ զատիկն ամրութիւն հաստատութեան. և որպէս 'ի ժամանակի վտանգիցն զմեզ ոչ մոռանեաց, նոյնպէս և մեք մի թողցուք զնա յաւուրս դիւրութեան. այլ մնասցուք բազում ստուգութեամբ և պատրաստութեամբ 'ի ժողովարանս և յաղօթս, և լուռք լիցուք ա̄ծաշունչ գրոց. և զոր կանխաւ վայրապար զաւուրսն ծախեցաք, 'ի գործ կենաց դարձուսցուք և 'ի խնդիրս ա̄ծայինս. նախ 'ի զօրացն և 'ի զօրագլխացն ընթանայաք փութով փախչել և յեկեալ հասեալ չարեացն, այժմ զամենայն աւուրս ծախեսցուք յունկըն-

դրութիւն ա̄ծային օրինացն. և մի՛ 'ի շաւիղս մնասցուք յիմարութեանն, զի մի՛ դարձեալ 'ի նեղութիւս մատնիցիմք։

Յանցեալ երիս աւուրսն մի ա̄ծածանօթ յեղանակս քննեցաք և ածեալ 'ի կատարումն առ 'ի պատմել զայս եթէ զիարդ երկինք պատմեն զփառս ա̄յ, և երևեցուցաք թէ որպէս արարչութեամբ աշխարհի երկնի և երկրի հրաշագործն փառաւորի։ Իսկ այսօր զոր կանխաւն ասացաք, սակաւ մի իմաստասիրեսցուք, և ապա յայլ բանս ա̄յ ընթասցուք։ Արդ ոչ եթէ արար միայն զայսոսիկ, այլ և զեղեալսն որք ներգործեցան և կազմեցան. ոչ զամենայնն անշարժելի եթող և ոչ ամենեցուն շարժել հրամայեաց, այլ զերկին հաստատեաց անշարժ, որպէս և մարգարէն ասէ. «Հաստատեաց զերկին որպէս կամար»։ Իսկ արեգակն հանդերձ այլովք աստեղօք զօր ամենայն ընթանայ. իսկ երկիր 'ի սկզբանէ լըռեալ կայ, այլ ջուրք որ 'ի վերայ սորա՝ գնան հանապազ. և ոչ եթէ ջուրք միայն, այլ և ամպք և անձրևք գնան և հեղուն, և ըստ ինքեանս ժամանակաւ տացեն պտուղս այլևայլս։ Իսկ բնութիւն անձրևաց մի է, բայց յոյժ այլ և այլ որ 'ի նմանէ լինին. քանզի յորթ այգւոյ գինի լինի և յանդս ցորեան, 'ի ձիթենիս ձէթ և յայլս նմանապէս։ Ո՞ւր է որովայն երկրի, և ազգի ազգի բերէ պտուղ։ Ո՞ւր է և ջերմին նշոյլք արեգական, և զամենեսեան զանազանապէս յանգէ, զամենս յամելով և զկէսս փութացուցանելով։ Իսկ ո՞վ իցէ որ ոչ սքանչասցի ընդ այս և զարմասցի. մանաւանդ թէ և ոչ միայն սքանչելի է զանազան և պէսպէս կազմուած սոցա, այլ զի հասարակ ամենեցուն աչաց առաջի եդ զնոսա, մեծատանց և աղքատաց, արդարոց և մեղաւորաց, զոր և Քրիստոս իսկ ասաց՝ թէ «Զարեգակն ծագէ 'ի վերայ չարաց և բարեաց, և ածէ անձրև 'ի վերայ արդարոց և մեղաւորաց»։ Այլ և բիւր անասունք, գազանք և սողունք ելից զերկիր, և բնական որոշմամբք զատոյց, և եդ 'ի մեզ իմաստս բնականս՝ ոմանց նմանել և յոմանց փախչել, զոր և ասացից իսկ։

Մրջիւնն վաստակաւոր է և աշխատաւոր 'ի գործս իւր. և դու եթէ 'ի միտ առնուս, խրատ մեծ առնուցուս 'ի յայսմ անասնոյ։ Տես զիարդ հնարի ամբարել զիւր կերակուրն, զի մի՛ գիձասցի. հայեաց 'ի նա և մի՛ փախ-

չիցիս 'ի քրտանց և յաշխատութենէ. ըստ որում և իմաստունն Սողոմոն գծոյլն առ մրջիմն առաքեալ ասէ. "Երթ առ մրջիմն, ով վատ, և նախանձեա ընդ ճանապարհս նորա, և լեր իմաստնագոյն ևս քան զնա. զի նորա ոչ գոյ երկրագործութիւն և ոչ հարկադիր և ոչ այն որ տագնապիցէ և ոչ ընդ տերամբք է, և պատրաստէ ամառայնի զկերակուր և բազում համբարս դնէ 'ի հունձս": Ո՞չ խորհիս 'ի գրոց ուսանել եթէ բարիոք է վաստակելն. ո՞չ կամիս 'ի վարդապետէ լսել զայս, ևս խրատ յանասնոց: Նոյնպէս բազում անգամ առնեմք և 'ի տունս մեր յորդիսն և 'ի ծառայսն. զի մեծագոյնն որում ակն ունիմք թէ իմաստուն է և պատուեալ քան զայլսն, յորժամ յանցանէ ինչ՝ պարզամիտ տղայոցն համեմատեալ սաստեմք ասելով, տես զկրսերսն քան զքեզ զիարդ զգաստ և կայտառ և ամենեցունց երջանիկ: Եւ դու նոյնպէս յայսմ կենդանւոյ առցես օրինակ մեծ աշխատասէր լինել, և զքանչասցիս ընդ իմաստութիւն տեառն քո ոչ վասն երկնից և արեգական, այլ որ և զմրջիմն արար. որ թէ և փոքրիկ իցէ, այլ տայ նշանակ մյ մեծ իմաստութեանն և բազում իրս ուսուցանէ զքեզ: Իմա թէ որպէս իմացուն է նա, և զքանչացիր թէ որպիսի խուն մարմնոյ այնպիսի զօրութիւն ետ ած և յօժարութիւն անխափանելի վաստակոյ. և դու որ կարող ես, լեր այնպիսի աշխատասէր:

Այլ և մեղու խրատէ զքեզ վաստակասէր իմաստասէր և գեղեցկագործ լինել. և նոյն իսկ ոչ եթէ վասն իւր, այլ մեր աղագաւ աշխատի և տառապի զօրհանապազ. որպէս պարտ իսկ է ամենայն քրիստոնէի ոչ միայն վասն անձին իւրոյ հոգալ, այլ և ընկերին: Եւ որպէս նա յամենայն բուրաստանս ընթանալով հաւաքէ ծաղիկս և այլում կազմէ սեղան, այսպէս արասցես և դու, ով մարդ. եթէ ինչս ժողովես՝ այլոց բաշխեա. եթէ բան վարդապետութեան ունիցիս՝ մի 'ի խորս թագուցաներ, այլ տարածեա առաջի խնդրողաց. և եթէ այլ ինչ գոյս ստացուածոց ունիցիս, լեր պատուասէր առ այնաւիկ որ խնդրեն առնուլ զվաստակս քո: Ո՞չ տեսանես զի վասն այսորիկ մանաւանդ քան զայլ մեծամեծ թռչունս պատուական է մեղու, ոչ զի վաստակէ, այլ զի այլոց վաստակէ:

Digitized by Google

Նա և սարդ վաստակէ ոստայնանօք, և հաստատէ յորմս և 'ի գերանս հիմնուածս անօսրագոյնս որ զանգա-նէ զիմաստութեամբ ամենայն կանանց, այլ անպէտս է վաստակն և կենդանեացն անպատիւ. այնպիսիքն են որ վասն անձանց իւրեանց վաստակեն և ոստայնեն: Նման լեր իշոյ և եզին տիրասիրութեան. ընկալ և զերանու-թիւն գազանին, որ ասէ՝ լեր տիրասէր իբրև զշուն. Նմանեսցես հաւուց որ կան առանց հոգոց: Բազում ինչ է ուսանել 'ի սովորութենէ անասնոց 'ի պատրաստութիւն ուղղութեան. 'ի սոցունց և Տէր խրատէ զմեզ և ասէ. "Եղերուք խորագէտք իբրև զօձս և միամիտք իբրև զաղաւնիս,,. և կանխաւ ասէ. "Հայեցարուք 'ի թռչունս երկնից զի ոչ վարեն և ոչ հնձեն, և հայրն ձեր երկնա-ւոր կերակրէ զնոսա,,: Այլ մարգարէն նախատելով զեբրայեցիսն այսպէս ասէր. "Ծանեաւ եզն զստացիչ իւր և էշ զմսուր տեառն իւրոյ, և Իսրայէլ զիս ոչ ծա-նեաւ և ժողովուրդ իմ զիս 'ի միտ ոչ առ,,. և դար-ձեալ այլ մարգարէ ասէ. "Տատրակ և ծիծառն և ճընճ-ղուկ վայրիք գիտացին զժամանակ իւրեանց. բայց ժողո-վուրդ իմ ոչ ծանեաւ զիրաւունս տեառն այ իւրոյ,,:

Արդ յայսցանէ և յայսպիսի անասնոց իմա և ուսիր ուղղել զքեզ. 'ի շահիցս առաքինութեան, և 'ի գազա-նաց որ անընդել են և հակառակ՝ ուսիր փախչել 'ի չարեաց: Որպէս հիւրասէր է մեղու, այսպէս մահա-բեր և անընդել իժ և քարբ. 'ի բաց դարձիր 'ի չարեաց, զի մի լուիցես և առցես 'ի չըթանց նոցա թոյնս իժից: Ընտանի է շունն, առեա զնորա չարութիւնն. ներեղա-ւոր է աղուէս, մի ցանկար, 'ի բաց փախիր 'ի ներեղու-թենէ. և որպէս մեղու որ 'ի վերայ ծաղկանց թռչի, ոչ եթէ զամենայն ժողովէ, այլ զպիտանացուն ժողովէ և զայլն թողու, նոյնպէս և դու արասցես: Այլ յաղագս գազանաց և զբնաւորին առ խրատ 'ի նոցանէ. և զոր նո-քա բնութեամբ ունին զգայութիւնս, զայս դու կամօք քոյովք ուղղեա. զի և Ած իսկ պատուիրանաւ և զօրու-թեամբ զբնականն նոցա զգայութի՛ 'ի կամաց քոց ուղ-ղել շնորհեաց, որով և պատկերիցիս 'ի նմանէ: Նոքա ոչ բնութեամբ կամօք ուղղեն զոր ուղղենն, այլ բնութե՛ միայն. զոր և ասեմ իսկ. մեղու գործէ մեղր, ոչ բանիւ ուսեալ զայս կամօք, այլ 'ի բնութենէ խրատեալ. իսկ

եթէ ոչ էր 'ի բնութենէ, և զգործս նոցա յաջողս նոցա ոչ էր առնել ժառանգութիւն, պարտ էր ամենից 'ի նոցանէ անգէտ լինել արուեստին. իսկ այժմ յորժամ և յորմէ հետէ եղև աշխարհ մինչև ցայսօր ժամանակի, ոչ ոք ետես զմեղու խափանեալ 'ի վաստակելոյ մեղր: Այսպիսի են բնականքն առ հասարակ ամենայն անասնոց ազգաց. իսկ որ 'ի կամաց ուսանի, ոչ է առ հասարակ, այլ աշխատութիւն խնդրէ և ապա ուղղի:

Արդ և դու զբարին առ 'ի նոցանէ և զգեցիր, եթէ թագաւոր ես անասնոց. քանզի թագաւորք զամենայն ինչ որ գեղեցիկ է և պատուական, եթէ ոսկի, եթէ արծաթ, եթէ ականս պատուականս, եթէ հանդերձս ոսկեհուռն և բազմակատար, զայնս 'ի վայելչութիւն ստանան. յամենայնի սքանչացիր դու ընդ տէրն քո: Յարարածոց աստի որ 'ի վեր անցանէ քան զտեսանելիս, և զբանս ոչ կարես գտանել, վասն այսորիկ փառաւորեա զարարիչն որ 'ի վեր անցանէ քան զտեսանել իմաստութեան եղելոցն: Մի՛ ասասցես թէ ընդէր այս կամ վասն էր այն. զի իւրաքանչիւրքն 'ի պէտս են և ընդունական, թէպէտ և զբանս նոցա ոչ ճանաչեմք մեք: Որպէս 'ի բժշկանոցն երթիցես և տեսանիցես անդ զբազմակատար նիւթս արուեստին, սքանչանաս ընդ զանազան կերպս երանգոցն, այլ զպէտս նոցա ոչ ճանաչես թէ ո՛ր գեղ զո՛ր ցաւ առողջացուցանէ, նոյնպէս և վասն արարածոց արասցես. յորժամ տեսանիցես զանբանս, զբոյսս ամենայն և զտունկս և զայլ ինչ յեղելոցս որոց զպէտս ոչ ճանաչես, սքանչացիր ընդ զանազանութիւն սոցա և զարմացիր ընդ ամենեցուն ընդ ամենիմաստ արարիչն ած, զի ոչ զամենայն յայտնեաց քեզ և ոչ եթող անյայտ զբնաւն, զի մի՛ ասասցես առանց խնամոց լինել այնմ. 'ի միտ առ, ոչ ետ տեղի ճանաչել զամենայն քեզ, զի 'ի մեծամեծ և 'ի բազում իմաստութէ յամբարտաւանութէ գայցես դու: Այսու իրօք զմարդն առաջին չարն սատանայ գայթակղեցոյց, զի յառաւել իմաստութիւնն իւր յուսացաւ: Վասն որոյ ոմն իմաստուն ասէ. “Որ քան զքեզ զօրագոյն մի՛ խնդրեր, և զխորինս քան զքեզ մի՛ քննեսցես„. զյայտնիսն քեզ զայն իմացիր: Զայս առելով զտգէտն մխիթարէ և զանիմաստն որ ոչ զամենայն գիտէ. այս իսկ է, ասէ, որ հրա

մնացեալ գիտել քեզ, յոյժ 'ի վեր անցանէ քան զքոյին զօրութիւնդ. նա և զայս ոչ յանձնէ քումմէ գտեր, այլ յայլ ուստեր: Բաւական է այժմ որ տուաւ քեզ ճոխութիւն, և մի առաւել ինչ խնդրեր. այլ վասն որոց առեր՝ գոհացիր, և զոր ոչ առեր՝ ընդ այնր մի տրտմիր. զոր տեսեր՝ ընդ այնր փառաւորեա, և մի գայթակղեասցիս վասն որոց ոչ տեսեր. ամենայնիւ զերկաքանչիւրսն առ միմեանս բարի արար ա̃ծ, և որով յայտնեաց և որով թագոյց՝ զքոյին փրկութիւնն խնամարկեաց: Այլ որպէս ասացի իսկ, մի յեղանակ ա̃ծա̃ծպաշտութեան որ վասն արարածոց՝ զբազում աւուրս պիտոյանայ ծախել, զի միայն զմարդոյն ստուգութիւնն և զկարգաւորութիւնն իմացուք. ստուգութիւն ասեմք զայն՝ որ կարողանամք ասել. զի և որ ստոյգն է՝ թէպէտ և բազում քան զայս ասացեալ էաք բանս՝ ոչ զամենայն ասէաք, զի են այլ բազմապատիկ քան զայս անճառելիք զոր նա ինքն գիտէ որ արարին ա̃ծ, և ոչ մեք: Այլ զի մեք զամենայն ստուգութիւն ստեղծման մարդոյն գիտցուք, և զիւրաքանչիւր անդամոյ զյօրինուածս իմաստութեամբ գտցուք, զջլաց և զերակաց սահմանս և զբաժինս, ըղղերսն, զստեղծուածն և զայլն ամենայն, և ոչ զտարի մի մեզ բոլորովին բաւական է 'ի պատմութիւնս յայս: Ըստ որում զբանս այսոցիկ աստէն արձակեսցուք, և զվաստակսիրութիւս մեր զգիտութիւն սիրոց ձերոց շնորհել յասացելոցն, և զայլսն յարարածոց 'ի բաժինսն թողցուք, երթիցուք յայլ պատճառս դարձուցեալ ըղբանս. է և այս ընդունելի յայլ խնամոցն: Այլ զինչ իցէ երրորդ պատճառն:

Ի սկզբանէ ստեղծ ա̃ծ զմարդն և եդ 'ի նմա բնական օրէնս: Այլ զինչ իցէ բնական օրէնքն: Այսինքն զբնութիւնն տպաւորեալ իբր յարձանի ինքնագէտ իմաստութեան բարեաց. զի այնուհետև ոչ էին պէտք մեզ ժտել ուսանել եթէ չար է շնութիւնն, և բարի իմաստութիւն զգաստութեան: Այլ զի ուսանիցիս թէ անդուստ յառաջինմէ այս եդաւ 'ի մեզ, յետոյ յորժամ օրէնսգիրն ա̃ծ տայր օրէնս, ասէ "Մ՛ի սպանաներ". ոչ զայն յաւել եթէ չար է սպանանելն, այլ մեկին ըստ բանիւ ասէ՝ մի սպանաներ. անուանեաց միայն զմեղսն և ոչ ուսոյց: Ընդէ՞ր արդեօք ոչ ասաց եթէ չար է սպա-

նանելն. քանզի յառաջագոյն այսու գիտութեամբ խրա-
տեալ զմտութիւնս մեր, և որպէս գիտողաց այսպէս ա-
սէ. Իսկ յորժամ վասն այլում պատուիրանի ասէր, որ
ոչ էր բնաբար գիտել մեզ, զայն ոչ անուանէ միայն,
այլ և զպատճառն յաւելու. Օրէնս եղեալ ասէ. “Մի
գործեսցես յաւուր շաբաթու”. և զպատճառ դատար-
կութեան 'ի վերայ բերէ ասելով. “Զի հանգեաւ Ած
յաւուրն եօթներորդի յամենայն գործոց իւրոց զոր
սկսաւ առնել”. այս է պատիւ մեծի աւուրն այնորիկ.
Իսկ վասն սպանութեանն ոչ այսպէս. քանզի պատուի-
րանս այս ոչ յառաջնոցն էր թագուցեալ և ոչ 'ի բնական
իմաստից մարդկան, այլ առ ժամանակ մի զբնականսն
կորուսեալ՝ ապա զկնի այնորիկ չարն օրինօքն քակեցաւ.
զի կարի կարևորքն են պահպանք կենաց մերոց, միա-
պէս եղեալ են 'ի մեզ, և են այսոքիկ. “Մի սպանաներ,
Մի շնար, Մի գողանար”. Վասն այսոցիկ ոչ երբէք ար-
տաքուստ օրինօք կամ վարդապետութեամբ 'ի վերայ
յաւել զպատճառն, այլ բաւական եղև յանուանէ ա-
սելն միայն.

Այլ ոչ այսու միայն ցուցանել փորձիմ, այլ և այլուստ
թէ զիարդ ինքնիմաց էր մարդն յառաքինութեան ի-
մացուածս. Մեղաւ Ադամ զառաջին յանցանսն և
թագեաւ վաղվաղակի. արդ եթէ ոչ գիտէր եթէ չար
գործեաց, ընդէ՞ր ապա թաքչէր. Ոչ գոյր գիր, ոչ
օրէնս և ոչ էր Մովսէս. ապա ուստի՞ իմացաւ զմեղսն
և թագեաւ. և ոչ թագեաւ միայն, այլ և 'ի դատաս-
տանին յայլում վերայ դնէր զմեղսն և ասէր. “Կինս
զոր ետուր ընդ իս, նա ետ ինձ 'ի ծառոյ անտի և կե-
րայ”. Նոյնպէս և կինն յայլում վերայ դնէր զպարտա-
ւորութիւնն. “Օձն խաբեաց” ասէ. Այլ դու տես
զայս իմաստութիւն. զի յասելն. Ադամայ “Լուայ զձայն
քո գնալոյ և երկեայ, քանզի մերկ էի և թագեայ”,
ոչ վաղվաղակի յանդիմանեաց զեղեալն, և ոչ ասաց ե-
թէ ընդէ՞ր կերար 'ի պտղոյն. այլ զիա՞րդ. “Ո՞վ պատ-
մեաց քեզ թէ մերկ ես. բայց եթէ 'ի պտղոյն յորմէ
պատուիրեցի քեզ անտի միայն չուտել, կերա՞ր արդեօք
'ի նմանէ”. ոչ լռեաց և ոչ յայտնապէս զնա յանդի-
մանեաց. Այլ լռեաց, զի կոչէր զնա 'ի խոստովանութիւն
մեղացն. և ոչ դէմ յանդիման յայտնեաց, զի մի ամե-

նուէրն ընծայի անարատ զոս, ըստ որում և այժմ 'ի խոստովանութեն ընծայիւք մեր ապաշխարել զյանցանս ։ Վասն այսորիկ ոչ տաց յայտնապէս զպատճառն ուստի մերկացաւն, այլ 'ի հարցմանն կարգի մատուցանէ զբանն՝ առղի տալով նմա գալ 'ի խոստովանութիւն ։

Այսպէս է տեսանել կանխաւ առ Կայէնն և առ Հաբէլ. Նա սկսաւ տալ Այ յիւրոց վաստակոցն ։ Իսկ նա ոչ եթէ 'ի մրգոց միայն, այլ և յառաջնութենէ ցուցանեմ, զի երկրպագուացն տէր և արուեստաւոր էր մարդն ։ Զի գիտակ էր մտացն Ադամ, եցոյց. նոյն և զառաջնութիւն գիտէր զի բարի էր, յայտնեաց զայս Աբէլ կանխաւ. յումեքէ ոչ էր ուսեալ և ոչ 'ի նախնականն օրինաց լուեալ, այլ յիւրմէ անձնէ և յիւրմէ իմաստութենէ միայն ուսեալ մատուցանէր զպատուարագն զայն ։ Վասն այսորիկ ոչ 'ի խոնարհ բերելեմ զբանս, այլ 'ի նախնական մարդն և որ 'ի նմանէ՝ մերձ կացուցանեմ, յայնժամ որ ոչ գոյր գիր և ոչ օրէնք երբէք, ոչ մարգարէք և ոչ դատաւորք, այլ էր Ադամ միայն որդւովք իւրովք. և զի ուսանիցիս թէ բնութեամբ ըստ առաջադրութեան էր մարդոյն բարեացն և չարեաց գիտութիւն ։ Անտի ուսանէր Աբէլ թէ բարիոք է մատուցանել պատարագ, և բարիոք է յամենայն իրս պատուել զԱծ և յամենայնի գոհանալ զնմանէ ։

Իսկ զի՞նչ արդեօք, Կայէն ո՞չ մատոյց պատարագ ։ Այո մատոյց և նա, բայց ոչ նման եղբօրն. և անդ կանխաւ երևեցաւ ըստ կամս վարել զգիտութիւնն, յորժամ վասն պատուոյ եղբօրն նախանձեցաւ և 'ի սպանութիւն մտաբերեաց և թաղուցանէր զնենգաւոր զատակնիք խորհուրդն. և զի՞նչ ասէր. "Եկ, ասէ, երցուք 'ի դաշտ զբօսնուլ": Այս բանի տեսակ զոլրոյ գթութեան ունի կերպարան, և եղբայրասիրութեան խորհուրդ ։ Արդ եթէ ոչ գիտէր եթէ չար էր խորհուրդն, ապա ընդէ՞ր ծածկէր զնա. և զկնի սպանանելոյն յորժամ եհարց զնա Աստ "Ո՞ւր է Աբէլ եղբայր քո", նա զի՞նչ ասէ. "Ոչ գիտեմ, միթէ պահապա՞ն եմ եղբօրն իմոյ": Վասն էր արդեօք ուրանայ. բարիոք թերևս է ասել թէ յոյժ գիտակ էր վասն նորա ։ Այլ որպէս հայրն նորա թագեաւ, նոյնպէս և սա ուրանայ. և դարձեալ զկնի յանդիմանութեանն ասէր. "Մեծ

են յանցանք իմ քան զներել Թողութեան,,. բայց զապաշաւանսն ոչ ընկալաւ:

Եւ այսուհետեւ վասն այսր քննեսցուք. որպէս ըստ այլ արարածոցս արարաք, ոչ 'ի գրոց միայն, այլ և 'ի խորհրդոց զջան զոր առ նոսա սկսաք, զնոյն և վասն կամաց առցուք այժմ: Զինչ է զոր ասեմս. եթէ ոչ էր ինքնուսումն և 'ի բնական օրէնս կապեալ կայր, ուստի արդ՝ ասա ինձ, վասն հարսանեաց, վասն սպանութեան, վասն կտակարանաց, վասն ոչ ագահելոյ զմիմեանս, և այլ բազում վասն բիւր ինչ իրաց օրէնս գրեցին որք ոչ յայսց օրինագրաց. նա և յառաջնմէ նախ քան զօրէնսդիրսն ուստի ուսան, եթէ ոչ 'ի բնական կամաց իմաստութեան: Նա զայս ոչ ոք կարէ ասել եթէ Մովսէսի էին, կամ զբանս մարգարէիցն լուեալ էին. զիարդ այն որ հեթանոսք էին և տակաւին չէր յայտնեալ օրէնքն զոր եդ ած մարդոյն յառաջնումն 'ի ստեղծանելն զնա, իբր Թէ յայնմանէ օրէնս եդին և արուեստ գտին և զայլ իրս զամենայն, զոր և Պաւղոս ասէր: Յորժամ հեթանոսքն պատասխանի տանէին և ասէին Թէ որպէս դատի ած զմարդիկ որ քան զՄովսէս յառաջ էին. զի նոցա ոչ օրէնսդիր էր առաքեալ և ոչ օրէնս տուեալ, ոչ մարգարէս առաքեալ, և զիարդ զնոսա իբրև զպատժապարտս դատեսցէ. առ որս խորհէր Պաւղոս ցուցանել եթէ ինքնուսումն օրէնս ունէին, և զլինելն բարիոք գիտէին. լուր զինչ ասէ. “Յորժամ հեթանոսք որ զօրէնս ոչ ունէին, բնութեամբ զօրինացն գործեցին. նոքա որ զօրէնս ոչ ունէին, անձանց իւրեանց իսկ են օրէնք, որք ցուցանեն զգործս օրինացն գրեալ 'ի սրտի իւրեանց վկայութեամբ մտաց իւրեանց, և յանդիմանել զմիմեանս 'ի խորհրդոց իւրեանց, կամ Թէ պատասխանի իսկ տալ յաւուրն յորում դատի ած զգաղտնիս մարդկան ըստ աւետարանիս իմոյ 'ի ձեռն Յիսուսի Քրիստոսի,,: Եւ դարձեալ ասէ. “Որք միանգամ արտաքոյ օրինացն մեղան, արտաքոյ օրինացն և կորնչին. և որք ընդ օրինօքն մեղան, օրինօքն և դատեսցին,,: Զինչ իցէ արտաքոյ օրինացն կորնչելն. ոչ եթէ զի օրինացն անգոսնիչքն էին, այլ բնական իմացմանն և խորհրդոյ: Իսկ եթէ ոչ ունէին օրէնս ինքնագէտ իմացուածս, ապա մեղուցելոցն ոչ էր պարտ կորն-

չել, և ոչ ասէր թէ արտաքոյ օրինացն մեղան։ Բայց յորժամ առանց օրինացն ասէ, ոչ զայս ասէ եթէ ոչ ունէին օրէնս, այլ զի գրով օրէնս ոչ ունէին, բայց զբնական օրէնս ունէին։ Եւ դարձեալ ասէ. “Փառք և պատիւ ամենայնի որ գործէ զբարիս, նախ Հրէի և ապա Հեթանոսի,,։

Զայս իսկ ասաց վասն առաջին ժամանակին նախ քան զգալուստն Քրիստոսի. և Հեթանոսս ոչ զկռապաշտսն կոչէ, այլ որ երկրպագուք էին միայնոյ այ և ոչ էին կապեալ ընդ Հրէական օրինացն խտրանօք, զշաբաթն ասեմ և զթլփատութիւնն և զբաղարջակերութիւնն և զայլ կարգսն զամենայն։ Եւ դարձեալ վասն նոցին ասէ. “Երանութիւն և բարկութիւն, նեղութիւն և անձկութիւն ՚ի վերայ ամենայնի որ գործէ զչար, նախ Հրէին և ապա Հեթանոսին,,։ Դարձեալ և աստ Հեթանոս զայնոսիկ կոչէ, որ զատեալ մեկնեալ էին ՚ի Հրէականացն. իսկ որք ոչ էին լուեալ զօրէնսն և ոչ ընդ Հրէայսն շրջեալ, զիա՞րդ նոքա ընդ պատժօք բարկութեան և նեղութե՟ անկանիցին ՚ի գործելն զչարիս։ Վասն զի գիտութիւն ունէր ՚ի ներքուստ հնչեցեալ ՚ի նմա որ խրատէր և ուսուցանէր զամենայն։

Եւ ուստի, ասեն, այս յայտ լիցի. յայտմանէ զի յորժամ այլք մեղանչեն, դու տանջես....։ Եթէ զպատանութիւնն ոչ կարծիցես չար, յորժամ զմարդասպանսն ըմբռնես՝ մի՛ տանջեր և մի՛ սպանաներ. Նոյնպէս և զշնութիւնն եթէ ոչ կարծիցես չար, յորժամ զշնացողն տեսանիցես՝ մի՛ տանջիցես։ Իսկ եթէ այլոց մեղուցելոց օրէնս դնես և տանջել հրամայես, ապա յորժամ դու մեղանչես՝ զո՞ր պատասխանի ունիցիս, առիցես անգէտ էի պազտնեացն. շնացեր և դու որպէս և նայն։ Վասն էր, ասա ինձ, զնա տանջես և զքեզ թողութեան արժանաւորես. եթէ շնութիւն չէր չար, ոչ զայլս տանջել պարտ էր։ Իսկ դու զո՞ր պատասխանի ունիցիս փախչել ՚ի տանջանաց, և որք ՚ի նոյն մե՛ղս իցեն՝ նոցա ոչ տաս այդպիսի դատս, և զի դատաւոր ամենեցուն ած է։ Զայս ամենայն Պաւղոս իսկ ասէ. “Խորհիցես զայս, ով մարդ, որ դատապարտես զայնոսիկ որ զայնպիսիսն գործեն և դու զնոյն գործես, միթէ դու ապրելո՞ց իցես ՚ի դատաստանաց անտի այ,,։ Չէ, ասէ, այսպէս, չէ և

Digitized by Google

չէ իսկ. այլ այսու վճռաւ զոր 'ի վերայ այլում բերեր, նովին յայնժամ դատի զքեզ Տծ... քանզի հատուցանէ, ասէ, ըստ իւրաքանչիւր զգործս իւր: Վասն որոյ նախ քան զբնական օրէնս եդեալ 'ի մեզ, և ապա գրովեալ, զի անպարտ գործեսցէ զմեղուցեալսն որք զղջանան, և զուղիղսն պսակեսցէ հանդերձ ամենայն փութով: Իսկ մեք զիա՞րդ կարիցեմք կալ յահագին դատաստանին, գիտելով զի և ոչ 'ի մի յապաշխարութեան վայելեմք, և մեղէն տնօրինեմք զայսոսիկ որք զկնի բնական և գրաւորական օրինացն և աւետարանական վարդապետութեանս, վասն մերոյ փրկութեան այսչափ պղերգանամք:

Խորհիմ դարձեալ զկանխաւ եդեալ պատուիրանն վասն երդման յայտնել ձեզ, և ամաչեմ իսկ վասն ձեր: Զի ոչ էր պարտ 'ի տունէ և 'ի գիշերի զայս և վասն սորին ասել ձեզ. նա և երկնչիմ իսկ մի գուցէ որ այսչափ աւուրս բազումս զկնի ձեր հետևեալ, այժմ ճանաչեմ զբազումս 'ի ձէնջ դանդաղեալս վասն այսր գործոյ 'ի մէնջ այսչափ հեշտեաւ հանապազ և ժտելով յիշել: Ուստի ոչ ամաչեմ միայն, այլ և երկնչիմ իսկ. զի առէպ վարդապետութիւն պիտոյ է որոյ 'ի միտ առուն և փրկութիւն գործէ, իսկ ծուլացելոցն վնաս է և վիշտ...: Զի այսու և զչարեայսն նախատէր Տծ. ասէ. "Առաքեցի առ ձեզ զմարգարէսն իմ առաւօտել, և ոչ այսպէս լուարուք ինձ": Մեք իսկ 'ի բազում գըթոյ զայս առնեմք, բայց երկնչիմ թէ մի երբէք յահագին և յահեղական յօրն յայն հակառակ ձեզ կայցէ խորհրդածութիւնս այս և խրատ. զի յորժամ ուղղութիւն այսմ իրի դիւրին է, և որ ուսուցանէն՝ առէպ ուսուցանէ և ոչ պակասի, զո՞ր ունիցիք պատասխանի, կամ ո՞վ զձեզ ազատեսցէ 'ի բանից տանջանացն...:

Արդ մի այսուհետև առանց գործոյ երևեսցուք, այլ հանդերձ բազում ստուգութեամբ 'ի գործ արկցուք զպատուիրանս, զի բազում հաւաստեօք զսա յայնմ աւուր հատուսցուք: Նա և զայլս ես պարտիք յորդորել 'ի նոյն. իսկ եթէ ոչ առնիցէք, լսելոց էք զբանն զայն որ զքանքարն թաղոյց, որ քաւ և մի լիցի. այլ արժանի եղիջիք լսել զձայնն զայն զոր բարեգործացն ասաց Քրիստոս, եթէ մերոց ծառայակցացն զնոյն փոյթ ցուցանի-

ցեմք. «Ազնիւ ծառայ և բարի և հաւատարիմ», և որ զկնի սորա....:

Ժամ է այսուհետև յաղօթս աւարտել զբանս: Այլ այժմ համօրէն վասն ամենեցուն ասեմք ցԱծ. որպէս ոչ կամիս զմահ մեղաւորի, այլ դարձ նորին, արժանի արա զմեզ զպատուիրանս զայս հանդերձ ամենայն պատուիրանօք կատարել, և այնպէս կալ առաջի ահաւոր բեմին Քրիստոսի քո, ընկալեալ բազում համարձակութիւն և հանդիպիլ քոյին արքայութեանդ 'ի փառս քո. վասն զի քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Դարձեալ գոհութիւն Այ վասն ազատելոյ 'ի խռովութեանցն. և յիշումն զօր սաստկութեանն քարշէին և տանջէին. և դարձեալ վասն մարմնոյն հրաշագործութեան, և բնական օրինաց զգիտութիւն գործոյ. և սովորել ուղղել զերդումն:*

Ի նախկին բանս եկեալ և 'ի սոցին առաջաբանութիւն զոր յերէկն և յեռանդն սկսաք, և այսօր զնոյն սկսանիմք և ասեմք՝ օրհնեալ է Ած, եթէ որպիսի տեսաք զանցեալ զօր չորեքշաբաթուն, և կամ որպիսի այժմ զհասեալ զօրս տեսանեմք, զկնի յայնժամ միջամտեալ մրրիկք էին, իսկ այսօր որպիսի հանդարտութի: Քանզի 'ի սոյն օր չորեքշաբաթուն ահագին մեծիւ դատաստանին այժմ եղև 'ի քաղաքս մեր և սասանեցոյց զսիրտս ամենեցունց. և որ ոչ էր ըստ տունջեան լինել, եղև գիշեր յայնժամ. ոչ եթէ նշոյլք արեգականն շէջան, այլ տրտմութիւն և դանդաղումն և երկիւղ կալաւ զաչս մեր: Այլ մեք այնմ կերպարանօք առաւելապէս 'ի պտղաբերութի ածեմք զփափագումն ձեր. փոքր ինչ յայնմ չարեաց եկելոց այսօր խորհիմ պատմել: Զի և մեզ և ամենայն մարդկան բարի տեսանեմք ըղպատմութիւնս զայս. քանզի որք 'ի նաւակոծութենէ ապրին, պարտին յիշել զալեացն կոծումն, զմրրիկսն և զխռովութիւն հողմոցն յորժամ հասանեն 'ի նաւա-

հանգիստն. և որք 'ի հիւանդութիւնս անկանին, քննեն զխնի հիւանդութեանն զօրապնդողն, զջերմութիւնն զոր երեկն առ սակաւ մի 'ի մահ մերձեցան, պատմեն այլոց։ Ո՛չ յորժամ անցանեն վտանգքն, հեշտալի է պատմութիւն վտանգիցն. և հոգւոյն ոչ երբէք իցէ երկիւղ, այլ բազմապատիկ պտղաբերէ զուրախութիւն. քանզի յիշատակ անցեալ չարեացն միշտ զհասեալ բարիսն լուսափայլես տեսանել առնէ։

Որդ առաւելութիւն քաղաքիս յայն յերկեղէ և 'ի տարաւնալեաց յանապատս և 'ի դժուարին վայրս և 'ի ծածուկ տեղիս բնակելին, զի ահն յամենայն կողմանց հալածէր զնոսա. և դատարկացան տունք 'ի կանանց և փողոցք քաղաքիս յարանց. թէ ուրեք երկու կամ երիս էր տեսանել 'ի գնացս առ միմեանս ընդ մէջ փողոցացս, և զայսոսիկ որպէս շնչաւոր մեռեալս այնպէս տեսանէաք։ Գնայաք առ դատաւորս 'ի տեղի դատաստանին տեսանել զինչ լինիցի կատարածն, և տեսանէաք անդ զնշխարս քաղաքիս ժողովեալ. զայն մինչաւանդ զարմացեալ լինէաք, զի բազմութիւնքն որ 'ի վերայ զըրանցն՝ որպէս թէ չէր ոք՝ այնպէս խորին լռութիւն էր, ամենեցուն ընդ միմեանս հայելով, և ոչ իշխել ինչ խօսել առ որ մերձն էր, և ոչ լսել ինչ 'ի նմանէ համարձակէր....։ Զի հասարակ ամենեցուն յերկինս հայելով տարածանէաք լռութեամբ զձեռս մեր, մնայաք վերին պահուն աղաչելով զա͞ծ մերձ կալ առ դատապարտեալսն և կակղացուցանել զսիրտս դատապարտողացն և հանդարտ առնել զվճիռ մահուն։ Եւ որպէս որք 'ի ցամաքէ զնաւաբեկեալսն տեսանիցեն, և մօտ կալ և ձեռն հասուցանել և ուղղել զգայթակղութիւն ոչ կարասցեն վասն ալեացն խռովութեան՝ արտաքոյ առ եզր ծովուն զձեռսն տարածանեն և զա͞ծ աղաչեն հասանել 'ի փրկութիւն ընկղմելոցն, այսպէս և աստ ամենեքեան լռեալք՝ ընդ միտս աղաչէին զա͞ծ արժանի լինել որոց 'ի դատաստանս էին, որպէս յալիս ծովուն ձեռն տալ և ոչ թողուլ ընկղմել նաւին. և այս առաջի դրացն։

Իսկ յորժամ 'ի ներքսագոյն սրահին մտաք, տեսաք անդ կանխաւ ահեղակերպ քան զայս զինուորք սպառազինօք և բրօք, նոցա որք 'ի ներքս դատապարտեալք էին՝ լռել տային։ Քանզի ամենեքեան անօրինեալք էին և

կանայք և մարք և դստերք որք կանգուն կային առ դրունս դատաւորին առ 'ի տեսանել զիր հասցէ մահն կամ զկել հանցեն 'ի Ճանապարհս մահու, և ոչ երբէք 'ի տեսութիւն թողլին զոք, որք սաստկութեամբ վառեալք էին զինուորքն խռովութիւնս առնէին և աղաղակ և բարբառս աղմկի և հեռագոյն երկեցուցանէին զամենեսեան, որպէս զի նախ քան զսուգն երկիւղն էր 'ի միտս նոցա:

Այլ քան զամենեսին ումեմն մայր և քոյր յորոց 'ի ներքս դատապարտեալք էին՝ ողորմագինք էին, անկեալք առ դրանն հրանի ընդ գետինն քարշէին, և առ հասարակ ողոց անդն ամենեցուն տեսիլ էին՝ ծածկէին զերեսս իւրեանց, և այնչափ ամաչեցեալք՝ մինչ զի թոյլ տալ հարկի վշտացն. ոչ աղախին նոցա մերձ, ոչ դրացի, ոչ սիրելի, ոչ այլ ոք առ պատրաստ, այլ նոքա միայն գծուծ հանդերձիւք 'ի մէջ այնչափ սպառնացողաց զինուորաց ընդ գետին քարշէին առ դուրսն արտաքոյ, և քան որք 'ի ներքս դատապարտքն էին՝ ևս ողորմագին չարչարէին, որպէս զի լուր լինէին ամբոխն ամենայն ըղձայն ապտակելոյն, զողբս հարուածոցն և զահեղ սպառնալիս դատողացն, և իւրաքանչիւր ոք զարհուրեալ կայր, ևս չարաչար վշտաց համբերէին կանայքն այնոքիկ. խածատէին ծամելով զտինս իւրեանց և զբազուկս, և հոսումն արեանցն ներկէր զայլ առողջ անդամս նոցա. Ճաղէին զհերս գլխոյ իւրեանց, և զանձոյսն 'ի հերաց հարկանէին ընդ պարիսպ արիւնաթաւ գաւթին:

Իսկ որք տեսողքն էին պարտաւորացն, յայլոց վկայութիւնն վտանգէին. առեմ իսկ, ոմանք 'ի յապտակս հարուածոց էին, և որք անպարտքն էին՝ յողբս դառնութեան հայելով յերկինս զԱծ աղաչէին տալ նոցա զօրութիւն և համբերութիւն, զի ոչ կարէին գալ նոցա 'ի փրկութիւն յայլոցն սաստկութէ որ մատնելոց էին. և այսոքիկ որպէս 'ի նաւակոծութեան նմանեցաւ: Որպէս նոքա տեսանեն զգալն և զբարձրանալ ալեացն, 'ի բացուստ դիզանալ և առ փոքր փոքր աճել, և կամիցին ընկղմել զնաւն, ուստի նախ քան զգալ ալեացն մերձ 'ի նաւն՝ մեռանին յերկիւղէն, այնպէս և նոքա յորժամ ձայնս և աղաղակս իմանային գալով՝ երկնչէին, զուցէ երբէք 'ի տանջանս անուանեցին զնոսա, կամ վկայեալ նուզեսցեն. և առեմ իսկ վասն ոմանց, զի նոքա պատ-

բաստեալ էին յաճախագոյնս առաջի աչաց տեսանելով զմահն ։

Ոչ անդ էր տեսանել 'ի ներքուստ տանջանք և արտաքուստ տանջանք. զնոսա բռնաւորք վերակացուք ժողովելոցն, և զնոսա տանջէր բռնութիւն բնութեանն. և էր 'ի ներքուստ ողբք և արտաքոյ ողբք. 'ի ներքս պարտաւորացն, և արտաքոյ որ զնոսայն տեսանէին և լային ։ Մանաւանդ ոչ եթէ այսոքիկ միայն, այլ և որ չարչարիչքն էին ողբային 'ի միտս իւրեանց, և ևս դժուարին քան զամենեսեան տանջէին, այսպէս դառն քրթմնջել յայնժամ սպասաւորացն ։

Իսկ ես նստեալ կայի և տեսանէի զամենայն. տեսանէի զկանայս և զկուսանս որ յամբածածուկ առագաստի պահէին, այժմ հասարակաց եղեն տեսիլ. և որք յանկողինս կակուղս փափկանային, զգետին և զմոխիր այնր փոխանակ ունէին. և որք այնչափ վայելէին 'ի ծառայից և յաղախնաց և 'ի ներքինեաց և յայլ ամենայն երևմանց, այժմ յայնմ ամենայնէ անապատ մնացեալ 'ի քարշ գային առ ոտս ամենեցուն և զիւրաքանչիւր ոք աղաչէին... յայնժամ առէի ես զբանն Սողոմոնի. "Ունայնութիւն ունայնութեանց, ամենայն ինչ ընդունայն է"։ Տեսի իսկ յայնժամ և զմիւս[1] պատգամն այնու 'ի գլուխ ելեալ, այս է. "Ամենայն փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ. չորացաւ խոտն և անկաւ ծաղիկ նորա"։ Քանզի և մեծատունք էին յայնժամ և մեծազգիք և երևելի ամբարտաւանութեամբք և սիրելեաց առաջնորդք և յամենայն 'ի կենցաղական իրս յառաջացեալք. իսկ մեղք և անօրէնութիւնք որ եղև, զամենայն զմարտակից լինելութիւնս վերացոյց ։ Ոչ եղեն այժմ որպէս մայր ձնձղկաց որ զձագս իւրեանց յափշտակեն, նորա եկեալ զբոյն գտանէ ունայն, և փրկել զձագսն կորուսեալ ոչ կարէ, զի եղեն անկեալ 'ի ձեռս որսորդաց, միայն զերկունս կրէ զնոցա. այսպէս և կանայքն առնէին յայնժամ, յափշտակեալս 'ի տանց իւրեանց տեսանէին զորդիս իւրեանց և 'ի ներքս կապեալք որպէս յուռկանի ձկունք կամ թռչունք յորոգայթս, գալ

1 Թարգմանիչն զյունականն ἕτερον λόγιον զմիւս պատգամն յառնուլ անուն իմացեալ, տարաբերեալ է զՆիկողայոս Հնան ... Գործոյ Նշխարաց ...

և փրկել զգերեալսն ոչ կարէին. իսկ որք առ դուրս նացա լային ողբալով և կոծելով, կամէին որսորդաց որդեկայն իւրեանց մերձ լինել, ցուցանել նոցա զերկուոս իւրեանց, թերևս ողորմեսցին 'ի վերայ նոցա:

Զայս ամենայն տեսանէի ես յայնժամ, և 'ի միտ առեալ զաՀեղակերպ դատաւորութիւնն զայն՝ առէի ցանձն իմ, եթէ 'ի մշտնջենաւոր դատաստանին զինչ լինիցի, ուր ոչ Հայր, ոչ մայր, ոչ եղբայր, ոչ քոյր և ոչ այլ ոք, որ ևս Համարձակիցեն առ դատաւորն, և անպարտական 'ի դատապարտութենէ ոչ կարէն փրկել զդատապարտեալսն. զի յաՀեղական դատաւորութեն Քրիստոսի դատապարտեալ ոք 'ի մէնջ ո՞վ կարիցէ կալ և շշնջել ձայնիւ, կամ ո՞վ կարիցէ փրկել յանբուժելի տանջանացն: Այլ միթէ ո՞չ էին առաջինք քաղաքիս մեր այնք որ 'ի տանջանսն էին, և կամ այնց ազգաւ ազնիւ գլխաւորացն ո՞չ էն 'ի դատապարտութիւնս. այլ եթէ ոք սիրէր զնոսա, պարտ էր այժմ գութ սիրոյ ցուցանել և ժտել զփրկութիւն նոցա և վայելեալ անցաւոր կենօքս:

Երբ օրն կատարեցաւ և եղև խոր գիշեր, ամենեքեան ակն ունէաք լինել կատար վճռացն. ապա առաւել լինէին ամենեքեան 'ի տագնապի և դիմէին առ ած շրջումն և փոփոխումն առնել իւրին, արկանել գութ 'ի սիրտս դատապարտողացն, և 'ի միտս թագաւորին մատուցանել զզարՀուրելի զայս գիտութիւն. և առ Հասարակ ժողովրդեանն աղաչանք առ մարդասէրն ած առաքիւր փրկել զնշխարս քաղաքիս և ոչ մատնել իսպառ 'ի խորոց արմատախիլ առնել զնոսա: Այլ ոչ էր տեսանել անդ զոք առանց արտասուաց զայս գոչելով. բայց սակայն այսօքիկ դատապարտողացն 'ի ներքս ոչ լինէր լսելի. այլ միայն զպաշտօնեայսն թէ որպէս սաստգութեամբ լինիցի քննութիւն Համարձակողացն և կատարումն, 'ի շղթայս արկանէին և կապէին յերկաթս և 'ի բանտ առաքէին, տանէին ընդ մէջ փողոցի մարդկանն երկվարօք պատերազմականօք, և զայլսն որք ունէին բուրս և անՀամար սպասաւորութիւնս. և զզօրս 'ի Հրապարակի Հանէին, և զնոցա դրաւնսն զամենայն կնքեալ, և զկանայսն արտաքսեալ 'ի Հայրենական տանցն. և իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ գործովք զայն զ[illegible]օրայ

կնոջն կատարէին, տանէ 'ի տուն և տեղւոյէ 'ի տեղիս շրջէին մոլորեալք, և 'ի ժողովարան ժտէին. և ոչ այս նոցա դիւրաւ լինէր, զի իւրաքանչիւր ոք երկնչելով դողայր յայնցանէ որ շուրջ գալով դիտէին թէ ով ոք ընկալցի զոք 'ի մեղանչականացն և բժշկեսցէ:

Բայց սակայն այսչափ չարեաց հասելոց որք 'ի չարիսն անկան և յանցաւոր կենացս ոչ եղեն, զայն ամենայն ոչ ինչ գրեցին, ոչ զընչից առմանս, ոչ զանարգութիւնս, ոչ զայնչափ խայտառակութիւնսն, և ոչ այլ ինչ յայսպիսեացս զնոսա խածատէր: Արդ չարեացս այսոցիկ մեծութիւն և առաւել քան զոյն ակնկալութիւն համբերողս իմաստասիրապէս կազմէր և պատրաստէր զհոգիս նոցա. և յայնժամ ուսանէին թէ որպէս դիւրաւ են առաքինութիւնքն, թեթև և հեշտագոյն ուղղութիւնք: Այսքիկ նախ քան զայս ոչ առնէր զնոսա հեզս. իսկ յորժամ 'ի մահու երկիւղն անկան, առաւելագոյնք եղեն. զի թէպէտ և զամենայն ինչս իւրեանց կորուսին, յորժամ զկեանս իւրեանց ոչ կորուսին, այնպէս համարեցան որպէս թէ զանձանակ եղեալ գտին:

Արդ եթէ վասն հանդերձեալ դատաստանին առնոյր զմեզ երկիւղ, և զանբուժելի տանջանացն զայն զմտաւ ածէաք, եթէ զգոյս մեր եթէ զհոգիս եթէ զմարմինս տայաք վասն օրինացն այ, սակայն ոչ տխրէաք, գիտելով զի մեծագոյնս շահէաք փոխելով 'ի վտանգից համբերելոցն: Թերևս բաւականապէս կակղեցոյց զսիրտս ձեր ճառս ասացեալ. բայց մի զժուարիք, սիրելիք, զի յորժամ կամիցիմ 'ի նուրբ նորագոյն յիմաստութիւնս համարձակել, կակուղ միտս պարտ է ժտել. առ զգուշութեան զայս արարի, մինչ զի յերկիւղէ պատմութեանս թօթափիցէք 'ի մտաց ձերոց զամենայն զանդաղմունս, յարուցանել զձեզ յամենայն հոգոց կենցաղոյս, և բազում հեշտութեամբ 'ի խորս անձանց ձերոց առաքել զզօրութի̃ ասացելոցս. բաւական իսկ և առաջին բանքն ուսուցանէ որ 'ի բնութեանս կան օրէնք բարեաց, և որ 'ի վեր քան զբնութիւն իրքն լինիցի՝ ցուցաւ ձեզ:

Զսոյն զայս պատճառ և այսօր 'ի մէջ բերեմք բանիւս. զի այսպէս ստեղծ ա̃ծ զմարդն՝ յամենայն իրս արուեստաւորական արարեալ զնա, յայտնի արարեալ և զայս ամենայն մարդկան՝ ամաչել ամենեցուն 'ի պար-

Digitized by Google

տական մեղաց. զի բազում անգամ այր տանուտէր ընթանայ առ կին պոռնիկ, և յորժամ տեսանէ զոք 'ի համեստ ծառայից իւրոց՝ պատկառէ հեռանայ յաղտեղի Ճանապարհէն. դառն համարի զբամբասելն յայլմէն. ընդ չար անուանն յանարգութեան գործոյ՝ ասացաք եթէ 'ի չարիս գտանիմք մեզէն 'ի դատապարտութիւն տանիմք զարարողսն: Նոյնպէս գիտեմք զինչ է չարն կամ զինչ առաքինութիւնն:

Զայս իսկ Քրիստոս յայտնի ցուցանէ, զի ոչ օտար և ոչ որ քան զբնութիւնս մեր 'ի վեր անցանէ՝ օրինադրէ, այլ զոր կանխաւ յառաջագոյն եդեալ 'ի կամս մեր. քանզի զհետ բազում երանութեանցն այսպէս ասէր՝ եթէ "Զոր կամիցիք թէ արասցեն ձեզ. մարդիկ, այնպէս արարէք և դուք նոցա": Ասա ոչ են պէտք բազում բանից և ոչ ընդերկարութիւն օրինաց և ոչ զանազան վարդապետութեանց. կամք քո եղիցին քեզ օրէնք: Կամիս զի բարի արասցէ քեզ ոք, բարի գործեա և դու նմա. կամիս գովելի լինել, գովեա դու ինքնին զայլս. կամիս զի ողորմեսցի քեզ ոք, լեր և դու ողորմած նմա. կամիս սիրել, սիրեա և դու զայլս. կամիս զի առցես զառաջաւորութիւնս, 'ի բաց լեր յայլմէ. նախ դու լեր այսոցիկ դատաւոր, դու լեր օրէնսդիր. և զարձեալ զոր ատես, այլում մի առնիցես: Ասա այսորիկ զչարեալսն և զթշնամիսն բերէ 'ի հաշտութիւնս այս. իսկ վասն առաջնոյ՝ գործոց առաքինութեան: Իսկ զոր ատես, այլում մի առնես. ատես զանարգանս, մի զայլ ոք անարգեր. ատես ընդ քեզ զչարեալսն, մի և դու զչարեսցիս ընդ ումեք. ատես զխաբէութիւն, մի և դու զայլ ոք խաբեսցես. ատես զբամբասողն, մի դու զայլս բամբասեսցես: Ի վերայ ամենայնի եթէ զայս երկու բանս 'ի մտի ունիցիմք, ոչ պահանջեմք այլ վարդապետութիւն:

Իսկ զառաքինութիւն եդեալ է 'ի բնութիւն մեր, և զգործս և զվայս ուղիղս ժողովեալ է 'ի կամս մեր: Եթէ անյայտ է ասացեալս, փութամ սուղապէս յայտնի առնել զսա: Մինչ զի իմասջիք եթէ բարիոք է զգաստանալ, և ոչ է պիտոյ ժտել բան վարդապետութեան. և զի ունիմք 'ի բնութիւնս մեր զայսոցիկ զիմացութիւնս, և ոչ է պիտոյ աշխատութեան կամ վաստակոյ խնդրել

եթէ բարի է զգաստութիւն և ընդունելի. քանզի համօրէն ամենեցուն միտք խոստովանին զայս թէ բարիոք է, և ոչ ոք է որ ոտնհար առնէ զայս առաքինութիւն։ Այսպէս և զշնութիւն գիտեմք զի չար է, և ոչ աստ պէտք ինչ իցէ աշխատութեան և ուսանելոյ առ 'ի ճանաչել զչարութիւն մեղացս այսորիկ. քանզի ամենեքեան յայսպիսի վճիռ ինքնուսոյցք եմք. իսկ զառաքինութիւնս, թէպէտ և ոչ իցեմք յառաքինութեան, սակայն գովեմք զառաքինութիւն։ Եւ այս յայտ մեզ ուղղութիւն եղև մեծագոյն, մինչ զի 'ի բնութենէ մերմէ և 'ի բարուց նախ քան զգործելն մերձ լինել յառաքինութիւն։ Եւ ընդդէմ պոռնկութեան, զոր և ասացի իսկ, զի գիտութիւնս այս յիւրաքանչիւր բնութեան կապեալ կայ, և ոչ խնդրեմք այլուստ վարդապետութիւն ուսանել զայս. իսկ այսոցիկ ուղղութիւն այսուհետև 'ի յօժարութիւն 'ի փոյթ և 'ի ջանս ձեր արկեալ կայ։

Ոչինչ լինիցի այս, զի զայս ամենայն ըստ բնութեան արար, և մեք անպսակք և առանց բրաբիոնի երթիցուք աստի. և իբրև զանասունս զսնուել խնամս զոր ունին ըստ բնութեան, սակայն ոչ առնուն վարձս և ոչ գովութիւնս, սոյնպէս և մեք ոչ վայելեցաք յայսմանէ։ Քանզի ըստ բնութեան զգաստութիւն ոչ եթէ ոքք ունիցին, այլ տուողին է գովութիւնն։ Վասն որոյ 'ի կամաց և ոչ ըստ բնութեան է զամենայն տուեալ. և դարձեալ 'ի կամսն բոլորովին ոչ ընկէց, և ոչ բեռն եթող զիմացութեան իւրս և զուղղութեան, զի մի աշխատութիւն ինչ անուանեսցուք զառաքինութիւնս, այլ անուանեսցուք 'ի կամաց զգործս զայս, և մի յայսմանէ բերի աշխատութիւն առ զգաստութեան։ Քանզի ոչ առանց վաստակոյ միայն բնութեանն, ըստ իմացութեան իցէ զգաստութիւն, և ոչ կարեմք ուղղել զսա առանց վաստակոյ, և ոչ զցանկութիւն սանձել. զի այս ոչ եթէ բնութեանն որպէս իմացութիւնք, այլ խնդրէ սա յօժարութիւն և փոյթ։

Արդ ոչ եթէ այսու միայն թեթևացոյց զծանրութիւնս, այլ դարձեալ և այլ արուեստիւ, զի ոչ ուղղութեանց իմացութիւն միայն բնակից է 'ի մեզ, այլ և ընդ անարգ իրս դժուարել 'ի բնութենէ ունիմք, զի վաղվաղակի անարգ իրաց թշնամիք լինիմք. Եւ այսպէս

յամենայն օգնութիւնս վայելեցաք ապաւինեալք, և ոչ 'ի գիտելն միայն յուսալ, զի և վասն այլում որ գայթակղի տխրիմք 'ի լսելն, և զգութ սիրոյ բնական ունիմք առ միմեանս։ Ո՛չ ի թեթևս և փորձութիւնք իրաց ինչ տրտմութիւն հասուցանեն, այլ սակայն ունիմք սփոփանս համօրէն ընդ միմեանս սէր։ Եւ զայս ոմն իմաստասէր ասէ եթէ "Ամենայն անասուն սիրէ զիւր նմանին և մարդ զընկեր իւր"։

Բազում ևս այլ զկնի իմացութեան տուեալ է մեզ վարդապետս ած. քանզի և հարք զորդիս խրատեն և տեարք զծառայս և վարդապետք զաշակերտս և բարեկամք զբարեկամս։ Նա և զթշնամիս սիրել ոչ է նուազագոյն քան զայս, այլ մանաւանդ առաւելագոյն քան զայս և բազմապատիկ ըստ բանի աւետարանին։ Բազում անգամ և 'ի նոցանէ շահիմք յորժամ նախատեն զմեզ 'ի յանցանս ինչ, և ակամայ 'ի վեր յառնեմք յուղղութիւնս։ Այսչափ վարդապետս կացոյց մեզ ած, զի հեշտագոյն մեզ լիցին ուղղութիւնք, և ընդարձակապէս զկատարումն գտցուք. քանզի բազմութիւնք որ ըստ այսմ շուրջ պատեալ են զմեզ, ոչ տան թոյլ անկանել մեզ յօգտութենէ։ Եւ եթէ զայսոսիկ եղեալս 'ի մեզ արհամարհեմք, յիշխանաց երկնչիմք, և ամենեւին հանդարտագոյն լինիմք. և եթէ զնոսա տեսանեմք և զտանիմք մեղուցեալս, ոչ կարեմք 'ի բնական բանաւորութենէ փախչել։ Ապա եթէ զայսոսիկ անարգեմք և հակառակիմք, 'ի բազմաց կասկածեալ երկնչիմք, և ոչ անփոխարէնս մնալ ակն ունիմք. ապա եթէ 'ի սոյն յայս ամաչեցեալ լինիմք, օրինօք կայ եղեալ երկիւղն և ակամայ զմեզ զգաստ առնէ։ Արդ յորժամ 'ի մանկութեան էաք, վարդապետք և հարք զմեզ կարգեցին և ընկալան. և յորժամ աճեցաք, օրէնսդիրք և իշխանք։ Եթէ ծառայք ծոյլք լինին առ պատուիրանս տեառն, 'ի հարկէ տերանց իւրեանց զգաստութիւն առնեն, և կանայք յարանց. այսպէս բազումք 'ի բազմադիմի իրաց զանգս մեր պարապեալ են, զի մի հեշտաւ անկեալ հոլովեսցուք 'ի չարիս։

Եւ զհետ այսր ամենայնի ցաւք և փորձութիւնք խրատեն զմեզ. աղքատութիւնն ըմբռնէ և տագանն ըզգաստս առնէ և վտանգք ցամաքեցուցանեն և այլ այս-

պիսի բազումք. Ո՛չ երկեցոյց զքեզ հայր, ո՛չ վարդապետք, ո՛չ իշխանք, ո՛չ օրէնսդիրք, ո՛չ դատաւորք, ո՛չ պատկառեցեր 'ի սիրելեաց, ո՛չ խածատեաց զքեզ թշնամի, ո՛չ զգաստացոյց տէր քո, ո՛չ ուղղեաց սովորութիւնք. այլ եկն հիւանդութիւն մարմնական և զամենայնն ուղղեաց, և զբիրտ զվէսն՝ տուգանն հանդարտագոյն առնէ: Նաև այս իսկ է մեծ, որ ոչ միայն մեզ, այլ թէ և այլում հասանէ վտանգ, յոյժ օգտիմք մեք. և եթէ մեք չարի ինչ դիպիմք և զայլս տանջեալս տեսանեմք, ոչ պակաս քան զնոսա զգաստանամք: Այն և յուղղոց լինի մեզ. և որպէս 'ի տանջանս այլոց այլք առաւել գան 'ի զղջումն, նոյնպէս և որ բարիոք ուղղեցին, բազումք հաւասարել փութան. որ և վասն երդման ուղղութեանն եղև: Բազումք տեսին զկրքունս որ 'ի սովորութենէ երդմանց փոխեցան, նոցին ջանուց ցանկացան և փոխեցան 'ի մեղացն. վասն որոյ և մեք յօժարագոյն 'ի յայս մերձենամք 'ի խրատս:

Նաև մի՛ ոք ինձ ասիցէ՝ եթէ բազումք զպատուիրանս ուղղեցին, զի՞նչ այլ խնդրեսցես: Ոչ քաջ հովիւն այն որ ունէր ոչխարս հարիւր, և մի 'ի նոցանէ մոլորեցաւ՝ ոչ առնէր փոյթ իննսուն և իննուցն, մինչև զմոլորեալն գտանէր և դարձեալ խառնէր 'ի հօտն իւր: Ո՛չ տեսանէք և 'ի մարմինս մեր զլինելն. որ թէպէտ և զունգն միայն խլի, ամենայն մարմինն ցաւէ: Մի՛ այսուհետև ասասցես զայս թէ սակաւ ոմանք մնացին որ ոչ ուղղեցան. այլ այնմ զգոյշ լեր եթէ նոքա նուազունքն որ ոչ ուղղեցան, զբազումս ապականեն: Մի՞ է որ պոռնկեցաւ 'ի Կորնթոս, սակայն Պաւղոս այսպէս հեծէր որպէս թէ կորեաւ ամենայն քաղաքն. տեսանէր իսկ զոչ զգաստանալն նորա, վաղվաղակի զհիւանդն արտաքսէր 'ի ճանապարհէն ընթանալ 'ի մեղսն և յայլսն ամենայն: Տեսանէ՞ք նախ 'ի դատաւորութիւնս կալեալ զարս զերևելիս և տանել 'ի մէջ փողոցացն. և վասն աւելորդ անարգանացն զոր ոչ էր պարտ ումեք լսել, ոմանք սքանչանային ասել՝ ու՞ր իսկ լինիցի սրբութիւն, իշխանութիւնք անարգին: Զի մանաւանդ ուր ամբարշտութիւն է, ոչ օգտի իշխանութիւն:

Զայս 'ի միտ առեալ յարուսցուք զանձինս մեր. իսկ եթէ 'ի ձեռն ոչ բերջիք փոյթ, այս ամենայն 'ի մէնջ

ուեղորդ է։ Արծաթագործ յորժամ անօթ ինչ կազ-միցէ և ձուլիցէ 'ի խառնարհ, մինչ օրն եկեալ գտանիցէ որ-պէս եթողն. նոյնպէս պղնձագործ և քարահատ և ա-մենայն արուեստաւոր զգործի իւր որպէս թողու, նոյն-պէս առցէ։ Իսկ մեզ ոչ այսպէս, այլ հակառակն այսմ ամենայնի. զի ոչ անօթս անշունչս կազմեմք, այլ զան-ձինս բանաւորս։ Վասն որոյ ոչ այսպէս որպէս թողաք գտանեմք զձեզ. քանզի յորժամ առնումք զբանս հան-գերձ բազում աշխատութեամբ վաստակեալ, ուղղեմք և ջերմագոյնս գործեմք, ապա եկեսցէ ձեզ իրաց իրաց փորձութիւն յամենայն կողմանց, ըմբռնէ և դարձու-ցանէ զհոգին և առաւել դժուարութիւն բերիցէ ձեզ։

Վասն այսորիկ աղաչեմ և գիրկս տարածեմ, զի որ-չափ ատեն փութամք վասն ձերոյ ուղղութեան, նոյնն չափոյն 'ի գնալն ատարի ցուցանեմ հոգս վասն ձերոյ փըր-կութեան։ Եւ եթէ էր ինչ հնար ուղղել ինձ զպա-տուիրանս ձեր և ընդ ձեր ամենեցուն և լինէր ձեզ փըր-կութիւն, ես զճգնութիւնս առնուլ վասն ամենեցուն ձեր, սակայն ոչ այսչափ ննջէի։ Բայց զինչ գործեցից, զի այսմ անհնար է. իւրաքանչիւր ոք ըստ գործոց իւ-րոց տացէ վճիռ։ Որպէս մայր գթած տեսանէ ջերմա-ցեալ զորդի իւր, մերձ կալով տագնապի կիզեալ որդին, ողբայ բազում և ասէ ընդ հիւանդացեալ որդեակն. ե-թէ էր ինձ հնար, որդեակ իմ, բառնայի 'ի քէն զցաւս քո և ածէի զբոց այրմանն քո յանձն իմ։ Նոյնպէս և ես այժմ, եթէ էր ինձ հնար ուղղել վասն ձեր զամենայն։ Բայց չէ այս և չէ իսկ, այլ իւրաքանչիւր ըստ գործոց տալոց է 'ի հարկէ զպարտաւորութիւնս. քանզի ոչ է տեսանել զայս երբէք եթէ մարդ ընդ մարդոյ տանջես-ցի յայլ։ Վասն որոյ երկնեմ ողբալով, զի յօրն յայն յորժամ 'ի դատաստանի կայցցուք, ոչ կարեմ ձեզ մերձ կալ, մանաւանդ զի և ոչ համարձակութիւն իսկ է ինձ առ ա͞ծ կալ վասն ձեր. որ թէ և ունէի համարձակու-թիւն, ոչ երբէք իցեմ սուրբ քան զՄովսէս և ոչ քան զՍամուէլ արդար, որք յայնչափ առաքինութեան էին, սակայն ոչ կարացին հրէիցն օգնել։ Արդ յորժամ իւ-րաքանչիւր ոք 'ի գործս իւր տանջի և այրի, փութա-ցուք աղաչեմ և զկնի այլ պատուիրանացն կատարել և զայս պատուիրանս, զի բարի յուսով երթիցուք առաջի

և հանգիպեսցուք բարեաց խոստմանցն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք յաւիտեանս. ամէն:

# ՃԱՌ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Խօսք վասն նոյն քաղաքին իրաց. և զի ոմանք յաճախեցին զհամբաւ ահէին և յանդիմանեցան. և խրատ վասն երդման և զանցանելոյ օրինակաւ պատմութեան Յովնաթանու յԵփթայէ և 'ի Սաւուղայ:

Ոչ որպէս կամէաք զքաղաքս մեր խռովեցոյց սատանայ. բայց ա̃ծ ոչ կամեցաւ, այլ յամօթ արար զսատանայ և մխիթարեաց զմեզ, մինչև տալ իւրաքանչիւր ամենեցուն մեզ զմարգարէական բանն զայն. "Ըստ բազում նեղութեան սրտի իմոյ մխիթարութիւն քո ուրախ առնէր զանձն իմ": Ոչ զի մխիթարեաց միայն, այլ զի և տեղի ետ խռովեցուցանել, զգթութիւն իւր եցոյց ա̃ծ 'ի մեզ, որ խրատէն և անդէն բժշկէ: Եւ զոր նախ ասացի, զնոյն և այսօր պատմեմ, եթէ ոչ փոխարկութիւն վտանգիցն միայն, այլ և թողուլ 'ի վտանգսն և թոյլ տալ լինել յո̃յ[1] բարերարութենէ է: Յորժամ տեսանէ զմեզ 'ի դանդաղանս և 'ի ծուլութիւնս և զատեալս 'ի մօտաւորութենէ իւրմէ և ոչ փոյթ արարեալ բանից հոգևորականաց, թողու առ փոքր մի, զի աստի վտանգիւքս զգաստացուք 'ի դարձ եկեալ և փութով առ նա դարձցուք: Եւ զի՞ սքանչանաս որ մեզ ծուլից զայս առնէ, որ երբեմն և Պաւղոսի և այլոցն իւրոց աշակերտացն զնոյն պատուիրէր և առնէր. զոր և նա իսկ առ Կորնթացիսն երկրորդ թուղթ առաքեալ զայս ասէր պատճառ փորձութեանն յասելն. "Ոչ կամիմ, եղբարք, եթէ տգէտ իցէք վասն նեղութեան մերոյ եղելոյ յԱսիա, զի առաւել քան զկար մեր ծանրացաք մինչև անյոյս լինելոյ մեզ 'ի կենացս յայսցանէ. այլ անձամբ յանձինս զվճիռ մահու ընկալաք, զի մի յանձինս ապաստան իցեմք, այլ յա̃ծ": Եւ զոր ասէն այս իսկ է.

1 Պակասէր յօրինակին յոյժ բարերարութենէ է. յաւելաւ 'ի յունէն:

Digitized by Google

այնքան մեծ, ասէ, եհաս վտանգն, մինչև հրաժարեցաք 'ի կենացս, և ոչ երբէք ակն ունէաք և յոյս՝ լինել փոխարկութի չարեացն, այլ ամենևին 'ի մահու լինել։

Արդ զնոյն և մեք դիցուք 'ի յանձինս մեր, գիտելով զի զդատապարտութիւն մահու ունէաք. այլ զկնի անզգամութեան մերոյ ընդարձակեաց մ̃ծ զծուփս ձմերայնոյ, զի զամպս տխրութեան մերժեաց և 'ի դրաց մահու յափշտակեաց զմեզ, ցուցանելով զի զոր և Թողլետ գնալ մինչ 'ի դրունս մահու՝ խնամքն բարեաց էր ամենայն որ ինչ եղև։ Եւ յայսմ փորձութենէ պատահեցաւ մեզ շահ՞ մեծ, այս ինքն է, ստէպ առ Նա հայել մեզ. բայց ընդ այս մի մեծ խորհել և մի հպարտանալ ձեզ։ Վասն այսորիկ ասացի եթէ “յանձինս մեր ունէաք զդատապարտութի մահու„. և զպատճառն ծածկեալ 'ի մէնջ։ Զինչ իցէ պատճառն. այս ինքն է, “Զի մի յուսասցուք յանձինս մեր, այլ յԱ̃ծ որ յարուցանէ զմեռեալս„։ Քանզի 'ի նիրհելն մեզ և յանկանելն՝ փորձութիւն զարթուցանէ զանութիւնս մեր և յարուցանէ և անվնաս գործէ....

Մի այսուհետև մերժեսցուք 'ի յուսաւելութենէ մխիթարութեանս և մի անգէտք լիցուք, այլ ակն կալցուք վաղվաղակի լինել հանդարտութեան, և զկատարումն աղմկոյ խռովութեանս որ պատեալ էր զմեզ՝ ընկեսցուք 'ի տէր, և մեք 'ի մեր սովորութիւնն դարձցուք և յառաջ բերցուք զվարդապետութիւն բանին։ Եւ նախ զձեզ վասն այսմ մի պատուիրանի քննել կամիմ մինչև արիմատաքի խլել զչար սովորութիւն երդմանն. ըստ որում հարկ է կանխաւ յայսր պատուիրանի պաղատանս ապաւինել։

Որպէս և նախ աղաչեցի զձեզ, արդ զգլուխ կարապետին Յովհաննու յիշեցէք զառնուլն և զհատանելն և զջերմ արեանն զհոսանս. և յորժամ երթիցէք իւրաքանչիւր 'ի յարկս ձեր, զնոյն առաջի աչաց ձերոց կարծիցէք տեսանել և լսել զարձակեալ զձայնն, և Թէ ընդ ձեզ այսօր խօսի սատանայ և ասէ. Նման լերուք ինձ սպանութեան երդմանն. զի զոր յանդիմանութիւնն ոչ արար, արար երդումն. և զոր սրտմտութիւն բանաւորին ոչ արար, հարկ երդմանն դիւրաւ պատրաստեաց։ Յորժամ յանդիմանէր զնա առաջի ժողովրդեանն, բըա-

նաւորն քաղցրութեամբ բերէր զխանդաղրութիւնն. իսկ յորժամ 'ի հարկ երդմանն ած զնա, յայնժամ եհատ զերանելի գլուխն զայն: Արդ ես ըստ այսմ աղաչեմ և յաղաչելոյ ոչ դադարեմ, զի ուր և երթիցէք զսուրբ և զպատուական գլուխն 'ի վերայ ուսոյ բարձեալ համարեսջիք տեսանել առաջի զոր երդումն զօրեաց առնել, և այնպէս բամբասեսջիք զստվարութիւն երդմանն: Արդ եթէ զայս զմտաւ ածիցէք, որչափ և իցէք ծոյլք և դանդաղկոտք, յորժամ տեսանիցէք զաչս գլխոյն այնորիկ աչեղակերպ և խոժոռատես հայել 'ի մեզ լի սպառնութբ խալորելով երդմնողաց՝ սանձեսցէ դիւրաւ սոսկալի ահս այս և ածցէ 'ի զգաստութիւն և հարկ առնիցէ դարձուցանել հեշտեաւ զլեզուս մեր 'ի գնացից երդմանց:

Արդ ոչ եթէ զայս միայն ունիցի վտանգ երդումն, կամ տանջէ որք սովորեցին զանցանել և ոչ պահել զերդումն, հաւասարէ՝ եթէ իմասցի ոք՝ այսմ մեղաց ոչ այլ մեղք, բայց է և այլ վտանգ որ ոչ է նուազագոյն քան զայս: Ո՜ինչ իցէ արդեօք. զորս ոչն կամին և ոչ փութան՝ յերդումն ածել: Վասնզի որ սովորական է ստէպ երդնուլ, և կամաւ և ակամայ, գիտութեամբ և անգիտութեամբ, 'ի շտապ խառվութեան և 'ի հանդարտութեան, ևս և 'ի սրտմտութենէ, բազում անգամ և յայլ բազում պատճառանաց երդնու, նմա ով կարիցէ տալ պատասխանի, արգելուլ և խրատել. բայց նախ այս է յայտնեալ և խոստովանեալ եթէ որ երդնուն, հարկ է և երդմնազանց լինել: Երկրորդ եթէ ոչ յափշտակիցիս, ոչ կամաւ և ոչ ակամայ յայս դիպեսցիս, սակայն յայսմ իրաց բնութենէ կամաւ և գիտութեամբ հարկեսցիս երդմնազանց լինել: Բազում անգամ լինիցի այս 'ի տունս իւրաքանչիւր 'ի սպասաւորաց մերոց և 'ի ծառայից. յորժամ մեղանչեն ինչ՝ երդնու կինն առն ապտակել զնա, իսկ այրն երդնու հակառակ նորա, և անտի յարուցանէ վէճ և ոչ լռեն: Իսկ աստ զոր ինչ և գործեսցեն, հարկ է երդմնազանց լինել. թէ և խորհեսցին երկոքեանն փութալ ամենայն ջանիւ, ոչ կարեն պահել զերդումն. եթէ ապտակէ կինն զծառայն, եբարձ այրն զերդմնազանցութեան զմեղս. և եթէ առն արդարանայ բանն, եբարձ կինն յանձն իւր ....

Պահեսցուք ապա այսուհետև յերդմանէ. զի ոչ եթէ 'ի տունս միայն, այլ և 'ի փողոցս լինի սաստիկ, և առաւել 'ի վիճմունս և 'ի մարտս. մանաւանդ յորժամ միցին ընդ միմեանս, հակառակ երդնուն. ոմն երդնու հարկանել, և ոմն եթէ ոչ հարցես. ոմն թէ տացէ զհանդերձն, և ոմն թէ ոչ տացէ թոյլ. ոմն թէ առնում զարծաթն, և ոմն թէ ոչ տամ. բազում և այլ հակառակս որք ընդ միմեանս մարտնչին՝ երդնուն: Նոյն 'ի վաճառս և յարուեստանոցս և յուսմունս լինիցի այս եթէ ուսսանես. բազում անգամ արուեստաւորն երդնու աշակերտին ոչ տալ թոյլ ճաշակել կամ ըմպել նախ մինչև զտուեալ գործն կատարեսցէ: Նմանապէս և յուսմունս. զոյն առնէ և մայր առ մանկունսն և յազախնայս և 'ի ծառայս. եհաս երեկոյ և գործն ոչ եղև կատարեալ, կամ լինին 'ի հարկէ սովամահ, և կամ որ երդուաւն զանցանէ: Բանզի դեռ չար որ դարանի հանապազ 'ի վայր արկանել զբարին մեր, մերձ կայ և լսէ զհարկ երդմանն, 'ի ծուլութիւն ածէ զպարտաւորսն կամ այլ դժուարութիւն գործեսցէ, մինչ զի ոչ կատարեսցի գործն, և յայնմանէ զանք և անարգանք և այլ բազում նեղութիւնք լինին: Որպէս մանկունք գունդ փոքր և հնացեալ ձգեն հակառակ միմեանց, ապա դիպեսցի յորմ ինչ հասեալ՝ անկանի և պատառի, և յայնմանէ ոմանց զգլուխն և կիսոց զայլ անդամս խոցոտեն, նոյնպէս և որ հակառակ երդնուն միմեանց, յիրացն հարկէ երդումն հերձի, և նոքա 'ի հարկէ յերդմնազանցութեան գուբն անկանիցին. իսկ ոմանք երդմնազանցք լինին, և ոմանք պատճառ այլոց երդմանն լինին:

Եւ զի մի այս ամենայն 'ի տունս և 'ի փողոցս և յարուեստանոցս լինիցի զօր ամենայն, 'ի գիրս տոհմից և թագաւորաց յայտնեալ է 'ի հնումն, և 'ի խրատ մեր գրեցաւ: Եղև երբեմն պատերազմ 'ի հրէաստան, և Յովնաթան որդի Սաւուղայ առեալ զկապարճակիրն իւր գնաց յայլազգիսն, զոմանս հարեալ 'ի սուր սուսերի, և զոմանս արգելեալ 'ի կիրճս ճանապարհաց. իսկ Սաւուղ հայր նորա իբրև գիտաց, խորհեցաւ առաւելապէս յարուցանել 'ի վերայ մնացորդացն զզօրականն, և առնել զի մի նախազոյն 'ի բաց կայցեն մինչև զամենեսեան ըմբռնեսցեն. և զօր կամեցաւն՝ այնմ հակա-

տակ գործեաց, երդուեալ թէ մի՛ ոք ճաշակեսցէ հաց մինչև ցերեկոյ, զի խնդրեսցէ զվրէժ թշնամեաց իւրոց։ Արդ զի՞նչ քան զայս անմտութիւն լինիցի. աշխատեալք և վաստակեալք և խոցոտեալք զօրք և զօրավարք, որ կամէին հանգչել՝ և ևս ուժգին առնել զպատերազմ, նա առաւել ևս վատթարս գործեաց, հարկիւ երդմանն եւս զնոսա ՚ի չարաչար սովս քաղցոյ։ Վասն անձին իւրում ումեք երդնուլ վնաս մեծ է, թէ և յիրս և ՚ի փորձութիւնս ինչ նեղիցիմք. իսկ զայլոց բնութիւն իւրով երդմամբն կապել՝ ևս բազում և մեծ վնաս է, մանաւանդ յորժամ ոչ վասն միոյ կամ երկուց և երից, այլ վասն բազմաց ոք երդուիցէ, զոր և Սաւուղն յայնժամ արար անպատրաստաբար. ոչ եած զմտաւ զոր պարտն էր յայնպիսի անչափ ժողովրդեանն, և մի ոք զանցանել չիմացաւ զերդումն. նա և ոչ զայս յիշեաց թէ զօրք և զօրք ընդ միմեանս մարտուցեալք ոչ պահիցեն զերդումն։ Բազումք յիմաստութեան և ՚ի հանդարտութեան կացին. և ընթանել զորովայնս ոչ կարացին, մանաւանդ յորժամ բազում վաստակք լինիցի։ Նա զայս ամենայն անտես արար, և որպէս վասն միոյ ծառայի ոք երդնուցու զոր դիւրաւ իցէ պահել, այսպէս համարեցաւ վասն զօրացն և զօրապետացն։ Վասն այսր սատանայ դուռն եբաց այնչափ, զի ոչ միայն երկուց և երից և չորից, այլ բազմաց յայժ յարոյց յերդմանէս յայսմանէ ՚ի նուազ ժամու հիւսեալ երդումն և երդմնազանցութիւն։

Արդ զի մի՛ ամենեքին երդնուցուք երբէք, զամենայն մտաւս չարին այսօր խցցուք. գիտելով այսպէս թէ և ՚ի մի երդումն մնամք միայն, բազում իշխանութիւն առնու և երդմնազանցս առնել։ Եւ որպէս որք զպաճնեալսն հիւսեն, թէ գիտիցեն որպէս եղանէ սկիզբն հիւսոյն, ստուգապէս զամենայն հիւսն գործեն. ապա եթէ զսկիզբն ոչ գիտիցէ, զայլսն ոչ կարէ առնել։ Նոյնպիսի օրինակաւ և սատանայ զպաճնել մեղաց մերոց հիւսէ. և թէ ոչ առցէ սկիզբն ՚ի լեզուէ մերմէ, ոչ կարիցէ սկսանել. ապա եթէ սկսանիմք յերդումնն և միշտ ՚ի ձեռին ունիմք զնա, բազում աներկիւղութեամբ ըզչար արուեստս իւր ցուցանէ, և ՚ի միոյ երդմանէ բիւր պատճառս գնէ և հիւսէ երդմնազանցութիւն, զոր յայնժամ Սաւուղն այն արար։

Տես արդ թէ որպէս փաղփաղակի երդումն այս լինի որոգայթ մեծ ։ «Ուր եկին, ասէ, ժողովուրդն և անօգ էր անտառ մեղուաց հանդէպ անգին. և եմուտ ժողովուրդն 'ի մեղուանոցն և անցանէին քրթմնջելով» ։ Տեսե՞ր եթէ որպիսի զուր ետ նոցա պատիժ, մեղան ունելով և խորտիկս հեշտ 'ի սկսանել և պարզ քաղցր 'ի կերակուր և յուսով 'ի յարձակումն պատուիրանին. այսու կոչէր զնոսա 'ի սեղան երդմնազանցութե... ժամանակէն, «Մաննայն երկիր, ասէ, 'ի պատուհասութիւն կերակրոյ պարապեալ». այսու նեղէր յանօրէնութիւն ։ Ուր տես, մեղրածին զնոսա արարեալ կոչէր առ 'ի յարձակել զկապանսն ։ Դու երդնուս, ով Սաւուղ, վասն ամենայն ժողովրդեանդ, այլ մեղրն կոչէ զքաղցեալ ողին. և ոչ եթէ ստար ոք, այլ որդի քո անօրինեցաւ, քանզի անօթի կազմեալ էր սեղանն ։ Եթէ միս էր եփեալ կամ խորովեալ պիտոյ էր, ուստի ոչ վայն հնարեալ եդ, զի 'ի պատրաստութեան և կերակուր կազմել և ամփոփելոյ ամէն ունել 'ի պղերգութեն անձէր. իսկ այժմ ոչ էր այսպէս, այլ մեղր միայն որոյ ծախս ոչ գոյր. բաւական էր գծայր մատինն թանալ հաղորդել 'ի սեղանոյն և մտանել ։ Այլ սակայն նոքա ունէին յօժարութիւն և ոչ ասէին ընդ անձինս իւրեանց՝ զինչ հարկ է մեզ այս, մինթէ վասն մեր ոք երդուաւ. նա տացէ վրէժ որ երդուաւ առանց պատրաստութեան. վասն որո՞յ արդեօք երդուաւ ։ Նայց ոչ այսպէս զմտաւ ածէին, այլ 'ի բաց կացին բազում պարկեշտութեամբ. և այսու խրախ չափ էր և կեալ նոցա, խմաստնանայքն. «Ուր անցանէր, ասէ, զզոյն քրթմնջելով» ։ Ո՞ր ինչ էր՝ անցանէին և քրթմնջէին, ասէ, մինթէ վասն նեղութեա՞ն. բանիւք զկրեաւքս միխթարէին խօսելով ընդ միմեանս ։ Ուր զկո՞րդ, քանզի ամենայն ժողովուրդն խնամատարեցաւ, մինթէ ո՞չ եղև ինչ առնել, մինթէ պահեցաւ երդումն. և ոչ երբէք. այլ էանց պատուէրն ։ Ոխո՞րդ և արա՞լ օրինակս. սաս քաղջ միա դիքս, զի զամենայն պատուէսս սաստանայր իմաստիւք ։ «Ուր Յովնաթան, ասէ, ոչ էր լուեալ եթէ հայր նորա երդմնեցոյց զժողովուրդն, և կարկառ ծայր գաւազանի իւրոյ որ 'ի ձեռին իւրում՝ եհար 'ի խորիսխ մեղուն և դարձոյց 'ի բերան իւր զձեռն իւր և բացան աչք նորա» ։

Digitized by Google

Տես թէ զով ուղղեաց յերդմնազանցութիւն սատանայ, ոչ եթէ զմի ՚ի զօրականացն, այլ զնոյն ինքն զորդի երդմնողին. և զնա ոչ միայն յերդմնազանց խորհեցաւ առնել, այլ և յորդեսպանութիւն եղեւ և կազմեալ, և զանութիւն իւր յանձն իւր դարձուցանէ. որպէս և յԵփթայէ երբէք արար, զնոյն որ զկնի սորա յուսացաւ առնել։ Վասնզի և նա խոստացաւ այ զկնի յաղթութեան պատերազմին որ նախ հանդիպեսցի նմա՝ նուէրս մատուցանել այ, և այսու յորդեսպանութիւն անկաւ։ Դուստր նորա նախ ել ընդ առաջ նորա, զոհեաց զնա և ած ոչ արգել։ Եւ գիտեմք որ բազումք յանհաւատից գազանս անուանեն զմեզ և ոչ մարդիկ վասն այսմ զոհիս։ Բայց ես բազում այ գթութիւն համարիմ և զրոյցս մարդասիրութեան թոյլ տալ այսմ պատարագիս լինելոյ. և քանզի գթայ յազգս մեր, ոչ արգել զպատանութիւնն զայն։ Զի թէ զկնի աղօթիցն այնմ և խոստմանն զոհն արգելեալ էր, բազումք յետ Յեփթայեայ ակն ունելով թէ ոչ ընդունի ած առնել զայս, և բազում անգամ աղօթէին այսպէս առ ած, և յորժամ ՚ի ճանապարհս ելանել խորհէին, որդեսպանութիւն առնէին. իսկ այժմ յորմէ հետէ թոյլ ետ կատարել գործոյն, որ զկնի այնր զամենեսեան արգել։ Եւ զկնի սպանանելոյ զդուստրն Յեփթայեայ, մինչ յիշատակ եղև մշտացն և ոչ ՚ի բարի յայտնեալ զախտն, եղև օրէն Հրէից գալ կուսանացն յայնմ ժամանակի առ ՚ի յողբալ քառասուն օր զեղեալ սպանութիւնն. քանզի ողբումն զոհին՝ զի յիշատակն վերաբերէր և որք զկնի նորա եղեն՝ զամենեսեան զգաստացուցանէր, և ուսանէին թէ ոչ այ հրամանաւն այն եղև. եթէ ոչ՝ ոչ էր թոյլ տուեալ ողբալ և կոծել կուսանացն։ Իսկ լռութեամբ թոյլ տալն եցոյց զկատարումն սպանցելոյն՝ այլ ոչ ումեք երբէք այսպիսի աղօթս աղօթել առ ած, վասն որոյ զայս ոչ արգել. իսկ զոր ինքն հրամայեաց արգել՝ զայն ասեմ զԻսահակայն. երկոքումբքն յայտնեալ՝ եթէ ոչ երբէք ուրախանայ յայսպիսի պատարագս։ Բայց անօրէն բանսարկուն հակառակնիւթէր և այժմ զբարբանջն գործել, ըստ որում և զՅովնաթան ՚ի պատուիրանազանցութիւն գլորէր։ Եթէ ՚ի զօրականացն ոք անցեալ էր ըստ օրինաց, նմա ոչ թուէր չար ինչ լեալ.

քանզի անյագ է 'ի մարդկանէ չարիս, և ոչ երբէք վճարք մերովք շատանայ նախանձուն ։ Տես եթէ 'ի մանկուոյն նուազագոյն որք մեռեալ էր, ոչ հաւանէր սպանութիւն գործեալ. այլ եթէ ոչ յորդորապանութիւն զաշ Թագաւորին խոստորէր, ոչ կարծէր եթէ մեծ ինչ գործեցի ։ Նմացաւ անարգն այն և զայս գործեալ սաաւելապէս սպանութիւն գտեալ ։ Եթէ գիտելով էր մեղուցեալ և սպանեալ, ոչ որդեսպանութիւն լինէր եղեալն. նա իսկ յանգիտութէ մեղաւ, զի ոչ էր լուեալ զերդումնն. երկրորդ անգամ զի բարձումն որդւոյն կրկին դնէր ցաւս հօր իւրոյ, զի որդի և սիրելի որդի, և նա ոչ մեղուցեալ և հանդերձեալ էր մեռանել ։ Այլ ըստ կարգին այսուհետև անցցուք բանիւս ։

“Յորժամ եկեր, ասէ, բացան աչք նորա„ ։ Նաղամ և սաս անգոսնէ զանմնութիւն Թագաւորին. ցուցանէ թէ սաստիկ սովն ըմբռնեաց զզօրն, և ասուեղապէս մէգ կալեալ պատեաց զաչս նոցա ։ Այլ պատասխանի ետ մի 'ի զօրականաց անտի և ասէ. “Երդմամբ երդմնեցոյց հայր քո զժողովուրդս և ասէ, մի որ կերիցէ այսօր հաց մինչև ցերեկոյ. և լքաւ ժողովուրդս ։ Եւ ասէ Յովնաթան. կորոյս հայր իմ զերկիրս„ ։ Ոչ ինչ իցէ կորուստ. ապականեաց, ասէ, զամենեսեան 'ի յանցանել երդմանն ։ Ամենքեան լուեցին, և ոչ որք էր որ ըզպարտաւորն 'ի մէջ ածեալ համարձակէր. և ոչ անց սակաւ մի և պարտաւորութիւն եղև, ոչ այնմ որ երդմնազանց եղև, այլ որ գիտակն էին և հաղորդ էին պարտաւորութեանն ։ Այլ նախ տեսցուք որ 'ի կարգիս է ։

“Եւ ասէ Սաւուղ. իջցուք զհետ այլազգեացն և յափշտակեսցուք զնոսա ։ Եւ ասէ քահանայն. մատիցուք առ Ած„ ։ Տես զի և 'ի հնումն Ած առաջնորդէր զպատերազմ, և առանց նորա կամացն ոչ որք էր որ համարձակէր 'ի պատերազմ ելանել, և պատերազմ նոցա պատճառ բարեպաշտութեան լինէր ։ Եւ ոչ 'ի սակաւութենէ մարմնոյ, այլ 'ի մեղաց յաղթեալք լինէին երբեք և Թշնամիքն յաղթողք երևէին. և ոչ 'ի զօրութէ և 'ի քաջութենէ, այլ 'ի վերին խնամոցն զօրացեալք լինէին երբեք և զօրանային 'ի վերայ Թշնամեացն և յաղթէին և յաղթահարէին. յանյիմանութիւն նոցա՝ և վարդապետութիւն առաքինութե էր. և ոչ եթէ նոցա

Digitized by Google

միայն, այլ և որոց ընդ նոսա պատերազմէին : Եւ նոցին իսկ նմա յայտնեալ էր, որ ոչ զէնս ըստ բնութեան 'ի Հրէաստանի դատէին ունել 'ի պատերազմունս, այլ ուղղութիւն կենաց և վարուց պատերազմողացն :

Սոյն իսկ իմացեալ մադիանացիքն և 'ի միտ առեալ թէ անմարտնչելիք էին ազգքն այնոքիկ, և մեքենայս իսկ և սպառազինութիւնս անմեքենայիցս մեղք միայն էին՝ որ և կարող էր զնոսա սատակել, կուսանս զարդարէին գեղեցիկս և կացուցանէին առաջի դրանց 'ի պագշոտութիւն կոչել զզօրն, զի վասն պոռնկութեանն 'ի բաց ունել ա͞յ զմարտակից լինելն փութային. որպէս լինէր իսկ և եղև : Յորժամ անկանէին 'ի մեղս, կապեալ ձեռօք լինէին ամենեքեան, և զօրս զէնք և վահանք, երիվարք և կառք և զօրք անչափ 'ի պատերազմունս փրկել ոչ կարէին, զնոսա բնութիւն մեղացն կապեալ մատնեալ 'ի ձեռս պատերազմողացն, զօրս իժք իսկ ասէին. քանզի զնիզակս զվահանս և զնետս զս͞մ առ ոտն հարկանէին. անձն անառակ և կերպարան գեղեցիկ զարիւն զայնոսիկ ձեռակապէր : Վասն այսորիկ խրատէ ոմն իմաստուն և ասէ. "Որդեակ, մի հայիր 'ի կին չար. զի մեղր կաթէ 'ի շրթանց կնոջ պոռնկի, որ առ ժամանակ մի պարարէ զքիմս քո, բայց յետոյ դառնագոյն ևս գտցի քան զլեղի, և սրեալ առաւել քան զսուր երկսայրի, և ոտք անզգամութեան իջուցանեն զմերձաւորս նորա մահու հանդերձ 'ի դժոխս". և եթէ "Սուր է քան զդանակ համբոյր պոռնկի. Թոյնք իժից համբոյր նորա, և դանակ մահու բերան նորա" : Տեսանես զի յերևելն վաղվաղակի կորուսանէ. վասն այսորիկ պարտ է 'ի նմանէ փախստական լինել, զի անյայտ ունի զկործանումն և 'ի բացեայ է, և զմահ թագուցեալ ունի. մինչև ցանկացի ոք փափաքմամբ և յօժարութիւն կենաց պոռնկել 'ի նոսա, ապաւինել 'ի նոսա հանդերձ գոյիւք. և ապա բիւր պատերազմունս և աղմուկ հաձողացն 'ի յանձինս լցուցանեն, և հանապազ շարժէ նոցա պատերազմունս և հակառակութիւնս բանիւք և գործովք. և որպէս որք ընդ թշնամիս պատերազմեալք, այսպէս և սոքա զնոյն առնեն մինչև ամօթ և աղքատութիւն հասցէ և արկանել 'ի յետին չարիս : Եւ որպէս որսորդք ցանցս տարածանեն և զվայրի երէսն սկսանին 'ի ներքս

Digitized by Google

արկանել մինչեւ սպանանիցեն զնոսա, այնպէս և կա-
նայք յորժամ թէ և զանառակութեանն զամենայն կողմն
տարածանեն, ապա աչօք և կերպարանօք և բանիւք ջա-
նան զցանկացողն արկանել 'ի գուբ կորստեան և այն-
պէս կապեն զնոսա, և ոչ նախ թողուն մինչև ծծեսցեն
զարիւն նոցա, և զկնի այսորիկ այսպն առնեն զնոցա ան-
մտութիւնն, և ածեն 'ի բազում ծաղր զնոսա։ Նա և
չէ իսկ ողորմելոյ արժանի այնպիսին, այլ ծաղր և այպն
առնելոյ յորժամ քան զկին և զկին պոռնիկ անասնա-
բարոյ ոք լինիցի։ Ըստ որում և խրատէ նոյն իմաստունն
և ասէ. "Արբջիր ջուր 'ի քոյոց ամանոց և 'ի քոյոց ջըր-
հորոց աղբիւրաց„. վասն արդարև օրինակարգ ամուս-
նութեանն ասէ զայս։ Ընդէ՞ր թողուս, ասա ինձ, զօգ-
նական քո և դիմես 'ի չարն. ընդէ՞ր դառնաս 'ի կենցա-
ղոյ հաղորդակցի քո, և այնմ որ խորտակէ զկեանս քո՝
նման սպասես. սա իւրքն անգամ քո է և մարմին, և այն
սուր սրեալ։ Վասն որոյ սիրելիք, փախերուք 'ի չնու-
թենէ, որ սաստ նախատինք է և անդ տանջանք։

Մի՛թէ կարծիցէք 'ի պատճառէս անկանել. այլ ոչ 'ի
յայամանէ լուել։ Բայց զի ոչ մեկին ձեզ 'ի տոհմից ըն-
թեանալ խորհիմք, այլ զի զօգիս ձեր իւրաքանչիւրոցդ
ուղղեսցուք յախտից. վասն որոյ ստէպ առնեմք զքննու-
թիւն՝ ազգի ազգի զբանս կազմել ձեզ, քանզի ազգի
ազգի հիւանդութիւնք են յայսչափ ժողովուրդս. և ոչ
եթէ միոյ վիրի բժշկութիւն առաջի կայ դնել միայն,
այլ բազում և զանազան և ազգի ազգի. վասն որոյ և
ըստ պէտս պէսպէս են դեղք վարդապետութեան։ Լը-
կեսցուք արդեօք ուստի եկաք զայս ասել։

"Եւ ասէ քահանայն, մատիցուք առ Տն։ Եւ ե-
հարց Սամուէլ զՏն. իջցո՞ւք զհետ այլազգեացն, եթէ
մատնեսցե՞ս զնոսա 'ի ձեռս մեր։ Եւ ոչ արար նմա պա-
տասխանի տէր յաւուր յայնմիկ„։ Տես զհեզութիւնն
և զհանդարտութիւնն. ոչ 'ի վերուստ կայծակունս ա-
ռաքեաց, ոչ զերկիր շարժեաց, այլ զոր սիրելիք սիրե-
լեաց առնեն յորժամ անարգին՝ զայս ծառային արար
տէրն. լռեաց միայն և լռութեամբն պատմեաց, ցուցա-
նելով նմա զամենայն բարկութիւնս։

"Իմացեալ զայս Սամուէլ և ասէ. իջուցէք այսր զա-
մենայն ազգս Իսրայէլի, գիտասցուք և տեսցուք եթէ

վասն որ եղեն մեզ այսպիսիկ. զի կենդանի է տէր որ փրկեացն զԻսրայէլ, զի եթէ զՅովնաթանայ զորդւոյ իմոյ տացէ պատասխանի, մահու մեռցի»: Տեսե՞ր զչարութիւն նորա. ետես զառաջին երդմնազանցութիւնն և ոչ այնպէս զգաստացաւ, այլ յաւել երկրորդ 'ի վերայ առաջնոյն: Եւ զգոյշ լեր չարապարծութեանն սատանայի: Յորժամ իմացաւ եթէ զպատանին 'ի հարկէ 'ի մէջ ածէին, տեսութիւն պատկերին փաղփաղուկի ըղհայրն 'ի հեզութիւն ածէ, և փութն կարողանայ կակուղ առնել զսրտմտութիւն թագաւորին, երկրորդ երդմամբն հարկ եած 'ի քնութիւն նորա և 'ի կրկին կապանս կալաւ զնա, և ոչ ետ թոյլ լինել տէր քնութեան նորա, այլ յամենայն կողմանց ուղղեաց զնա յանօրէնութիւնն յայն: Եւ նախ քան զերևումն մեղուցելոյն ալարեալ զդատաստանն, և հայրն եղև քննաւոր, և նախ քան զքննումն զվճիռն դատապարտութեան մատուցեալ: Օ՜ ինչ քան զայս լինիցի անտանելագոյն:

Օ՜ այս յորժամ ասացեալ առաւել կապեաց զբանաւորն, և ամենեքեան էին ահիւ և մեծաւ դողութեամբ. իսկ սատանայ ուրախանայր զի 'ի տագնապի կացոյց զամենեսեան: «Եւ ոչ ոք էր, ասէ, որ տայր պատասխանի յամենայն ժողովրդենէն, և ասէ Սաւուղ, դուք լիջիք 'ի ծառայութիւն, և ես և Յովնաթան որդի իմ լինիմք 'ի ծառայութիւն»: Եւ զոր ասէն այս ինչ է. ոչ յայլ ինչ փութայր, ասէ, բայց միայն մատնել զմեզ 'ի պատերազմունս, և ծառայս փոխանակ ազատութեան առնել, և զնա բարկացուցանել 'ի վերայ մեր առ 'ի չտալ 'ի ձեռն զպարտականն: Տես իսկ և այլ հակառակութիւն լեալ յերդմանեն. եթէ խորհէր զպատճառն գտանել, պարտ էր ոչ սպառնալ այսպիսի և՞ ոչ երդմամբ պնդել զտանջանս և զմահ, որով աներկիւղ լեալ դիւրաւ 'ի մէջ ածէին զպարտականն. 'ի սրտմտութենէ և 'ի բազում խռովութենէ և յառաջին անմտութենէն դարձեալ հակառակորդս խորհի առնել:

Եւ զի՞նչ պիտոյ է բազում ինչ ասել. վիճակաւ ըղգործն հաստատէր, և անկան 'ի վիճակ նախ ինքն Սաւուղ և Յովնաթան: Եւ ասէ Սաւուղ. «Արկէք վիճակ ընդ իս և ընդ Յովնաթան որդի իմ. և արկին վիճակ և ել վիճակն Յովնաթանու: Եւ ասէ Սաւուղ

ցՅովնաթան. զի՞նչ արարեր պատմեա ինձ։ Պատմեաց նմա Յովնաթան և ասէ. Ճաշակելով ճաշակեցի ծայրիւ գաւազանին իմոյ որ ՚ի ձեռին իմում սակաւ մեղր, և ահա մեռանիմ ես»։ Ո՞վ որք ոչ զգաստացուցանէր կամ զո՞վ որք ոչ ՚ի գութ ածէր բանքս այս։ Նմա թէ յորքան մեծի կայր Սաւուղ, և աղիք նորա հնձէին և սիրտ նորա խորովէր գալարելով. բայց սակայն և ոչ այնպէս զգաստանայր. և զի՞նչ ասէ. «Ոն և ոն արասցէ ինձ Աստուած և ոն և ոն յաւելցէ եթէ ոչ մեռանիցիս այսօր»։ Ահա դարձեալ երրորդ երդումն, այլ հանդերձ ժամանակին անձկութեամբ. ոչ միայն ասաց թէ մեռանիս, այլ այսօր, ասէ։ Կայր իսկ սատանայ, ներգէր և պնդէր զհետ նորա, քարշէր զնա յանօրէնութիւն։ Սակայն որոյ ոչ ետ թոյլ և ոչ ետ պայմանն մ՚ձեռին, զի մի ՚ի հանդերձեալ չարեացն լինիցի ուղղութիւն։

Իսկ ասէ ժողովուրդն ցՍաւուղ. «Ոն և ոն արասցէ մեզ Աստուած և ոն և ոն յաւելցէ եթէ մահու մեռանիցի այսօր որ արար զփրկութիւն Իսրայէլի. կենդանի է Տէր Աստուած եթէ անկցի ՚ի հերոյ գլխոյ նորա մազ մի յերկիր, զի ողորմութիւն արար Տէր ՚ի ձեռն նորա յաւուր աւուր»։ Ահա և ժողովուրդն երկրորդ անգամ երդուեալ, և ընդդէմ երդուեալ թագաւորին։ Յիշեցէք արդեօք զառաւելն իմ զգուշութիւն զոր ՚ի տղայոցն ձգեալ և ընդ որմն հարեալ պատառեցաւ։ Երդուաւ Սաւուղ ոչ միայն մի կամ երկու, այլ բազում անգամ. ընդդէմ երդուաւ ժողովուրդն և կեցոյց։ Հարկ է այսուհետև պատուաբել երդմանն. զի ամենեցուն արդարանալ յերդումն անհնարին է ամենեւին։

Իսկ մի դու ինձ զանցս իրացն քննեսցես, այլ իմա թէ որչափ չարիս ծնաւ. Եւ զիարդ զՄբեռաղոմայ չարիսն և սոսա կազմեաց սատանայ։ Ոչ թէ կամեցեալ էր թագաւորն աղինդ կալ և ՚ի կատար հանել զերդումնն, անդէնայն ժողովուրդն հակառակեալ էին և բանութիւնք էին լեալ չարաչար. դարձեալ թէ կամեցեալ էր որդին խնայել յիւր փրկութիւն և եդեալ զանձն ընդ զօրավարացն, անդէն հայրասպան էր լեալ։ Տեսանե՞ս որքան բանութիւնք և որդեսպանութիւնք և հայրասպանութիւն և պատերազմ ծանօթական և մարտ և սպանութիւն և արիւն և բիւրք մեռեալ էին ՚ի միոյ երդմանէ։

Digitized by Google

Այլ եթէ հանդիպեալ էր լինել պատերազմ, և Սաւուղ թերևս մեռեալ էր և Յովնաթան, և բազումք 'ի զօրացն կոտորեալք էին, և ոչ մի ոք 'ի նոցանէ արդարացեալ էին երդմամբ։ Այլ մի՛ դու զայս տեսանես որ ոչ եղև, այլ այնմ զգոյշ լեր որ իրացն բնութիւն զայս հարկէր լինել. բայց ժողովուրդն արգել։

Բեր այսուհետև թուեսցուք զեղեալ երդմնազանցութիւնս։ Անց զերդմամբն նախ Սաւուղ յորդւոյ իւրոյ. երկրորդ և երրորդ դարձեալ Սաւուղ վասն որդւոյն սպանութեանն. իսկ ժողովուրդն կամեցաւ երդմնապահ լինել. բայց եթէ ոք և զայս քննեսցէ ստուգութեամբ, և սոքա դարձեալ յերդմնազանցութեան պարտս պարտական եղեն ամենեքեան։ Քանզի զհայրն որդւոյն երդմնազանց արարին 'ի հարկէ, զի ոչ ետուն հօրն զորդին։ Տեսանե՞ս եթէ մի երդումն որչափ մարդիկ ած յերդմնազանցութիւն և կամաւ և ակամայ, կամ որչափ արար չար գործել և սպանութիւն։

Այս իսկ խոստացայ 'ի սկիզբն բանիս ցուցանել՝ թէ յինքենէ երդումն տայ երդմնազանց լինել։ Եւ այլ 'ի տոհմս նախնեացն զոր ցուցանեմ բազում առաւելութեամբ զանցեալ. և ոչ մի կամ երկուս կամ երիս, որում այլ պատմութիւն է ասելոյ, և ցուցանել յայնմանէ չարաչար քան զայս և առաւել պատիժս գործել մի երդումն։ Այլ քաղաքի հրկիզութիւն և բարբարոսաց գալուստ, կանանց և որդւոց գերութիւն, բիւրս բիւրուց կոտորածս, սրբութեանցն պղծութիւն և այլ բիւրս դժուարութիւն, որ և զամենայն արար մի երդումն 'ի հրէաստան։ Բայց տեսանեմ ընդ յերկար ըզբանս հատուցանել. վասն որոյ աստ յանդգեցից զպատմութիւնս ազգաց։

Արդ յիշեցէք զհետ Յովհաննու գլխոյն զՅովնաթանու սպանութիւնն և զամենայն ժողովրդեանն զծախումն զոր ոչ ետ լինել Աստուած, սակայն 'ի հարկէ ածան յերդմունս. զայս ասել ընդ միմեանս աղաչեմ, 'ի տան և 'ի փողոցս, առ կանայս և առ դրացիս և առ ամենայն մարդիկ բազում փոյթ առնել այսմ գործոյ. և մի՛ բաւական պատասխանի կարծել՝ եթէ 'ի սովորութիւն մտանեցայ և ոչ կարեմ փոխել։ Սնոտի բարուրք են այս և պատճառք, և ոչ սովորութիւնք, այլ դանդաղութիւն ո-

գւոց ածէ յանօրէնութիւնս. 'ի յայս գալոյ մեզ հաւան առնել փորձիւ:

Արգել 'ի բաղանիս մտանել թագաւորն և ոչ եւս հրաման լուանալոյ ուրուք անդ. ոչ ոք կարէ անցանել զօրէնսն, և ոչ պատճառել զեղեալսն կամ սովորութիւն յիշել. այլ և որք 'ի հիւանդութեան են բազում արք և կանայք և ծերք և մանկունք, և որք յերկունս են վտանգեալ բազում կանայք և ըստ հարկին խնդրեն զայս դեղ, սակայն հաճերեն կամայ և ակամայ հրամանացն. ոչ տկարութիւն մարմնոյ լինելոյ պատճառ, ոչ բանացեալ սովորութիւնք և ոչ այլ ինչ 'ի վնասակարաց տանջէ զնոսա. այլ հաճերեն այսմ խրատու, զի ակն ունին յանցանել զպատուիրանաւն այլ մեծագոյն չարեաց, և հանապազ աղօթեն մինչև 'ի բաց տանել զթագաւորական բարկութիւնն:

Տեսանես զի ուր երկիւղ է, դիւրաւ լուծանի սովորութիւնն, թէպէտ և յոյժ կարեւոր իցէ և առաւել 'ի հարկաւորացն. զի և երբեմն ոչ լուանալ յոյժ է չար: Թէ և բիւրս իմաստասիրեմք, մարմնոյս բնութիւն յանդիմանի, իսկ հոգւոյն իմաստասիրութիւն յիւրմէ առողջութենէն գովի. իսկ չերդնուլն յոյժ դիւրագոյն է և ոչ մի վնաս ածնի քեզ ոչ մարմնոյ և ոչ հոգւոյ, նա և բազում ունի շահս և մեծ զգուշութիւն, առաւել օգուտ: Ո՞րքան ոչ է այս անիրաւութիւն, թագաւորի հնազանդել և կամ բերել զժուարութեան, իսկ Այ օրինադրել որ ոչ է չար և ոչ դժուարին՝ այլ թեթև և հեշտալի յոյժ, զայս արհամարհել և ծաղր առնել և զսովորութիւն պատճառել:

Մի՛ աղաչեմ, մի այսչափ արհամարհեսցուք զփրկութիւնն մեր, այլ երկիցուք յԱյ որպէս և երկնչիմք 'ի մարդկանէ: Գիտեմք զի սոսկացայք 'ի լսելն զայս. այլ արժան է սոսկալ զի ոչ այսչափ պահեմք զԱյ պատուիրեն. զթագաւորական օրէնս ստուգութեամբ պահեմք, և զԱծեղէն օրէնս և որք յերկնից իջեալ՝ առ ոտն հարկանեմք և արհամարհեմք, և առանց գործոյ կարծեմք թէ բանք միայն իցէ: Որք վասն այսր միոյ փութոյ զոր պատասխանի ունիցիք կամ զոր ներել թողութեան, զի զկնի այսչափ խրատուց 'ի նմին մնայք. քանզի 'ի սկզբան պատուհասիս զայս խրատ սկսայ, և այժմ կամիմ լուծանել:

Մեք և ոչ մի պատուիրան ուղղեցաք. զիարդ ապա խնդրեմք 'ի նեղութենէս որ կալաւ զմեզ՝ փոխել. յորժամ մի պատուիրան ոչ կարացաք կատարել, զիարդ ապա ակն ունիմք քաղցր մխիթարութեան, և զիարդ աղօթեմք և կամ ո՞ր լեզուաւ զնա՞ աղաչել կոչեմք: Իսկ եթէ կատարեմք զօրէնս, ըստ փափագանաց մերոց բազում պտուղ բերի, և Թագաւորն հաշտ լինի քաղաքիս մերում. ապա թէ մնամք յանօրէնութիւնս, ամօթ մեզ է և նախատինս յամենայնէ. այլ լուծեալ 'ի մէնջ զվտանգս, և մեք մնամք 'ի նոյն դանդաղմանս: Թէ յօգուտ ինչ էր, կարող էի կապել զանձինս բազում երդմնաւորաց, և յերեսս նոցա ածել զանս և վէրս զոր հանապազօր առնուն յերդմանէ, և ոչ կարօտէաք խրատուց կամ խորհրդածութեան ...: Իսկ եթէ ոչ էի կարող յերեսս, կարող եմ յոգիս ածել զգանն, և ցուցանել զնա փտեալ և ապականեալ. և որպէս ասի "Ծառայ փորձ և կիրթ 'ի չարիս 'ի վիրաւորելոյ ոչ դադարէ, սոյնպէս և երդմնաւորն որ հանապազ երդնու և անուանէ զնոյն՝ 'ի մեղաց ոչ անպարտ լինի„: Անհնար, անհնար իսկ է՝ բերանն որ խորհելով երդնու, թէ ոչ ստէպ երդմնազանց լինիցի:

Սակս որոյ աղաչեմ զամենեսեան զկործանման իւրս կայս՝ և զչար սովորութիւնս 'ի բաց գնել յանձանց ձերոց, և այլ սքանչելի պսակ աստէն զգեցջուք: Ոչ որպէս վասն քաղաքիս մերոյ ամենայն ուրեք երգեն, որ և նախ քան զամենայն տիեզերս քրիստոնեայ անուն զգեցաւ, այսպէս և ըստ այսմ տուք ասել ամենեցուն՝ եթէ Անտիոք քաղաք 'ի վեր քան զամենայն տիեզերս զսովորութիւն երդման հալածեաց 'ի սահմանաց իւրոց: Եւ եթէ այս լինիցի, ոչ եթէ սա միայն պսակի, այլ և զայլս ածէ 'ի նախանձս յայս: Արդ որպէս քրիստոնեայ անուանս իբրև յաղբիւրէ միոյ աստի սկսեալ կալաւ զամենայն տիեզերս, այսպէս և այսր պատուիրանի ուղղութիւն՝ զարմատն և զպատճառն աստի առեալ զամենայն մարդիկ որ բնակեալ են յերկրի ձեզ աշակերտս գործեսցէ, ուստի երկրորդ և երրորդ ձեզ բարեաց վարձս հատուսցի վասն ձերոյ ուղղութեան և վասն այլոց վարդապետութեան: Սա լուսապայծառ թագ ձեզ լինիցի. սա մայր քաղաքաց առնէ զքաղաքս մեր ոչ միայն յերկ-

Digitized by Google

րի, այլ և յերկինս. առ յայնմ աւուր կայցէ ընդ մեզ և ձերում արդարութեանդ լինիցի պսակ. որում լիցի ամենեցուն մեզ հանդիպիլ շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ՃԱՌ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

*Դարձեալ խօսք վասն քաղաքին Երոյց. և թէ բարի է երկիւղն և ողբումն քան զծաղր. և 'ի բանն որ ասէ. «Ծանիր եթէ 'ի մէջ որոգայթից շրջիս». և թէ քան զսպանանել չար է յերդումն անել զոք ։*

Պարտ է այսօր որպէս յառաջնումն շաբաթուն վասն պահոց սկսանել զբանս. և մի ոք առանց ժամանակի կարծեսցէ զասացեալս ։ Քանզի յաւուրս պահոց ոչ է այնչափ բազում խրատուց և խորհրդածութեան, որպէս 'ի հատեալ աւուրս, զի աստ և որ յոյժ անկեալ են յարուցանէ 'ի ջանս պահոց ։ Բազումք 'ի մարդկանէ յորժամ հանդերձեալ են մտանել 'ի պահս, որպէս թէ հեռի աւուրց կարող է որովայնն բառնալ կերակուր՝ այնպէս բազմապատկեալ լնուն զնա, և այսպէս յաւելմամբ կերակրոց և արբեցութեանց յառաջ դնելով անօգուտ գործեն զմուտն 'ի պահս ։ Իսկ յելանելն կանխեն որպէս թէ 'ի յերկար սովս և 'ի չարաչար կապանաց ազատեցան 'ի պահոցն՝ հանդերձ անփորձ բարուց 'ի սեղանոյ 'ի սեղանս ընթանան, և այնպէս փութան՝ զի զոր 'ի պահոցն եղև նուազ օգուտ, աւելի և անչափ կերակրովքն 'ի բաց հանեն յանձանց և այսպէս անշահ մնան, հարկ էր յայնժամ և այժմ յաղագս[1] ժուժկալութեան սկսանել 'ի բանս ։

Բայց առակայն ոչ յառաջն ասացաք զայսպիսի իրաց և ոչ այժմ ասեմք. քանզի կալով ձեր յերկիւղ ցնո-րիցս, բաւական է ամենայն անձին փոխանակ բազում խրատուց և խորհրդածութեան ։ Ո՞վ իցէ այսպէս թըշուառական և տառապեալ հոգւով, որ յայնչափ ծուփս

1 Պակասէր յօրինակին յաղագս ժուժկալութեան. յաւելաւ 'ի յունէն ։

արբեալ է և յանխմայութիւն փոխեալ. ուր ամենայն քաղաքս շարժեալ է և նաւակոծութեան սպառնալիք, և ոչ ոքնի և հսկէ, և 'ի վեր քան զամենայն խրատ և զխորհրդածութիւն ելանէ ստուգապէս յայսմ տագնապէ ուղղեալ: Քանզի բանք մեր ոչ այնպէս զօրեն գործել որպէս գործէ երկիւղն. և զայս այժմ 'ի հասեալ իրացս կարեմք ցուցանել:

Ո՞րչափ յառաջագոյն ծախեցաք բանս խրատու և խորհրդոյ ծուլացելոցն թողուլ զտեսիլս և զոր անդ անառակութիւնք, և ոչ ընդունէին. այլ յայսմ աւուր յանօրէնութիւնս կաքաւչաց ընթանային տեսանել, և 'ի ժողովս անասնական փոխադրէին զլրումն եկեղեցւոյս, և զոր աստ պաշտամունք և սաղմոսք՝ փոխանակ ունէին զչար աղաղակն, և զայն բերելով բազում ժուժկալութեամբ: Իսկ այժմ մեք լռեալ կամք ըստ այնմիկ և ոչ շարժիմք ինչ. բայց ինքնակամ զտեղի կաքաւելոյն խցին և զկառարշաւսն թողին ունայն յընթացից: Յառաջ քան զայս բազումք 'ի մէնջ առ նոսա ընթանային. իսկ այժմ ամենեքեան յայնմ փութոյ յեկեղեցիս ընթանան և օրհնաբանեն զԱծ մեր: Տեսանե՞ս թէ որչափ շահ եղև յերկիւղէն:

Այլ եթէ ոչ էր բարի երկիւղն, ոչ էին հարք որդւոց օրինօք կարգեալ, և ոչ օրէնսդիրք 'ի վերայ քաղաքաց իշխանս կացուցեալ: Զինչ դժուարին քան զգեհենն իցէ. բայց ո՞չ քան զսա լաւ և պատուական երկիւղ. վասն զի գեհենին երկիւղն մատուցանէ մեզ զպսակս արքայութեանն: Զի ուր երկիւղ իցէ, ոչ է անդ նախանձ. ուր երկիւղ իցէ, սէր ընչից ոչ նեղէ. ուր երկիւղ իցէ, ոխակալութիւն ոչ դատապարտէ, որ չար է քան զամենայն մեղս. ուր երկիւղ իցէ, դիւրաւ սըրտմտութիւն շիջանի. ուր երկիւղ իցէ, ոչ է անդ բամբասանք որ հաւասար է մեղացն. ուր երկիւղ իցէ, զչար խորհուրդս և զցանկութիւնս ցամաքեցուցանէ: Այլ զի՞նչ ասացից, զի որպէս տուն ուր բազում զինուորք սպառազինեալ հանապազ ոքնին, ոչ գողք, ոչ աւազակք և ոչ այլ յայսպիսեաց չարագործաց համարձակին մերձ լինել, այսպէս եթէ երկիւղ ունէր զանձինս մեր, ոչ անփըրկելի ախտք դիւրաւ պատէին զմեզ, այլ զամենայն չարութիւն հալածէր և փախուցանէր բռնութիւն երկիւղին.

Digitized by Google

Այլ ոչ եթէ միայն զայսոսիկ պտղաբերէր 'ի մեզ երկիւղն զառ 'ի չարեացն փախուստ, այլ բազում և առաւել քան զայսոսիկ յաւելու 'ի մեզ առաքինութիւնս։ Ուր երկիւղ իցէ, անդ փոյթ ողորմութեան, կարգ աղօթից, ջերմ արտասուք և հառաչանք, ունելով զըղջումն բազում յոյժ։ Իսկ այսպէս կեալ մեր հանապազ երկիւղիւ, մեղք 'ի մէնջ անհետ լինէին և առաքինութիւն աճէր զուարճանայր 'ի բնութիւնս մեր։ Վասն այսորիկ որք ոչ կեան երկիւղիւ, ապրել 'ի մեղաց անհնարին է. որպէս և որք երկիւղիւ կեան, 'ի մեղս անհնարին է անկանել։

Մի՛ք տխրեսցուք այսուհետև, սիրելիք, և մի 'ի հանեալ տրտմութիւնս 'ի վայր անկցուք, այլ ազանչասցուք ընդ բարի հնարս մեր իմաստութեանն։ Ո՜վ ի ըստ որում ակն ունէր սատանայ կործանել զքաղաքս մեր, զաս յայտնեալ մեզ 'ի վեր յարոյց. քանզի սատանայ հնչեալ 'ի մարդս անօրէնս չարաբարոյս, և անարգեցին զանդրիանս թագաւորին, կամելով զքաղաքս զայս և զգետնին անգամ անյայտ առնել. իսկ մեք 'ի ձեռն երկիւղի և ակնունելոյ սպառնալեաց՝ որ եղև առ 'ի զգաստութիւն մեզ՝ առաւել կնքեաց զմեզ իւր տխրութեց. և զոր չարասէրն սատանայ կազմել կամեցաւ, եղև հակառակն։

Իսկ քաղաքս մեր սրբի զօրհանապազ, և փողոցք և գաւիթք և ապարանք 'ի պոռնիկ և 'ի զայթակղելի երգոց փոխեցան սրբեցան. զի ուր հայեսցի ոք՝ տեսանէ պաշտօն առ մեզ և գոհաբանութիւն և արտասուք փոխանակ անառակ ծաղեր, և բանք իմաստութեան փոխանակ բանից զարշելեաց. և եղև մի եկեղեցի ամենայն քաղաքս մեր. վաճառանոցք փակեցան և ամենեքեան այսր ժողովեցան, ամենաժողով բարեկենդանութեան լինէին յաղաչանս և 'ի պաշտօնս, և զմեծ համօրէն միաձայն հանդերձ բազում յօժարութեամբ կոչէին յօգնականութիւն։ Ո՞վ երբէք զայս վերացուցանել կարողանայր, ո՞ր խրատք, կամ ո՞ր խորհրդածութիւնք կամ երկարութիւն ժամանակի։

Վասն որոյ գոհասցուք զԱծ և մի դժուարասցուք. և զի բարւոք է երկիւղ, յառաջեալցս յայտնի է։ Լուր և Սողոմոնի որ ըստ այսմ խրատաւորել ասէ. նա որ յամենայն վայելչութիւնս շրջէր, ասա զինչ ասէ. "Երա-

րիոք է երթալ 'ի տուն ողբոց սգոյ քան 'ի տունս արբեցողաց և ուրախութեան ձայնս ,, : Ո՜ ինչ ասես պատմեա ինձ . ուր ողբք և արտասուք և հառաչանք և երկունք տխրութեան այսչափ՝ առաւել ա՛նդ պարտ է գնալ, եթէ ուր պարք և ձայնք ծաղու, փափկութիւն, առաւելեալ կերակուր և արբեցութիւն : Ա՛յո, ասէ : Վասն որո՞յ արդեօք կամ ընդէ՞ր . զի անդ հարկ անզգայութեան է և սաստ զգաստութիւն : Եթէ ոք 'ի չափաւորաց երթիցէ 'ի մեծատանց վաճառականի ուրախութիւնս, ոչ եթէ միայն փափագանօք հայի 'ի տունն յայն, այլ նախ դժուարանայ հայելով 'ի կինն, դժուարաւ հաղորդի սեղանոյն, դժուարախնդութիւն երևի նմա որդւոցն և ծառայիցն և ամենեցուն որ 'ի տանն իցեն . զի 'ի յայլում մեծութենէ սուգապէս իմասցի զիւր աղքատութիւն : Եւ ոչ եթէ այս միայն իցէ վտանգ, այլ և ցանկայ բազում անգամ այնմ որ կոչեացն զնա, և ամենևին ոչ ինչ առեալ բարութի այնպէս գնայ . . . :

Իսկ որ 'ի տունս ողբոց երթիցէ, վաղվաղակի արտասուէ, թէ և թշնամի իցէ . . . 'ի միտ առնու թէ փոքր մի յետոյ և ինքն այսմ դիպեսցի և ամենեքեան որ 'ի մեծութեան իցեն,. և թէ առժամանակեայ է անցաւոր ամենայն եթէ քաղցր իցէ և եթէ տրտմական . և այնպէս զոխրութիւն և զամենայն ցանկութի 'ի բաց դնելով և թեթև զհոգին՝ երթիցէ . . . : Եւ զայս ամենայն իմաստնոյն իմացեալ ասաց զայսոսիկ, եթէ "Բարիոք է երթալ 'ի տուն ողբոց քան 'ի տուն արբեցութեան ,, : Ա՛նդ հող և վէրք լինին, և սաստ սթափանք և ուրախութիւնք . անդ արհամարհութիւն, և սաստ երկիւղ, երկիւղ՝ որ զամենեսեան զմեզ ածէ յառաքինութիւն : Եւ թէ ոչ էր բարիոք երկիւղն, ոչ էր զբազում և զերկար բանսն ծախեալ Քրիստոս վասն հանդերձեալ տանջանացն ասելով և պատմելով : Երկիւղ ոչ այլ ինչ է, բայց միայն պարիսպ և հաստատութիւն և աշտարակ անպարտելի և բազում զգուշութիւն, վասն զի և դարանակալութիւնք բազումք են մեզ յամենայն կողմանց . որպէս և ինքն Սողոմոն դարձեալ խրատ տայ ասելով . "Իմացիր զի 'ի մէջ որոգայթից շրջիս ,, : Արդ թէ որչափ բարութեամբ լցեալ է բանս այս :

Գրեսցուք զայս այժմ 'ի տախտակս մտաց մերոց, և միշտ զայս ընդ մեզ բերելով ոչ մեղանչեմք վաղվաղակի: Տեսցուք նախ զայս և ուսցուք զնոյն ամենայն ստուգութեամբ. ոչ ասաց եթէ՝ տես 'ի մէջ որոգայթի շրջիս, այլ իմացիր: Վասն էր արդեօք. զի ծածուկ են որոգայթքն. այսպիսի՛ է որոգայթ, զի կործանումն յայտնապէս ոչ երևի և ոչ փխան, այլ յամենայն տեղւոջ թագուցեալ կայ. վասն որոյ ասէ թէ իմացիր:

Պարտ է քեզ ստանալ բազում իմաստութիւն, ընտոյգ քննութեամբ. որպէս տղայք մանկունք ձագուց 'ի յերկրի դնեն որոգայթ, նոյնպէս և սատանայ 'ի կենցաղս մեր թագուցեալ է զպարիսն: Վասն որոյ ասէ՝ իմացիր եթէ 'ի մէջ որոգայթից շրջիս...: Քանզի և 'ի տունս որոգայթ է և 'ի սեղանս որոգայթ է և 'ի ժողովուրդս և 'ի ճանապարհս: Բազում անգամ և 'ի մէջ սիրելեաց ոք անպատրաստութեամբ համարձակի և ասէ ինչ բան զոր չէր պարտ ելանել ընդ բերան. և անտի մեծ վտանգ յարուցանէ, մինչև բոլորովին զամ տունն շրջեցէ: Յամենայն կողմանց դիտեսցուք զմեզ զայս:

Ա՝ երբէք զի կին լինիցի որոգայթ, է զի որդիք, նա և սիրելիք իսկ և դրացիք: Ոչ վասն էր արդեօք այսչափ որոգայթք իցեն: Զի մի առ երկրաւ թռչիցեմք, այլ զվերինն խնդրեսցուք: Զի և զօրաւոր թռչունք մինչև զբարձրութիւն օդոց հասուցանեն, ոչ իշխանեն այսր. նոյնպէս և դու մինչև 'ի վեր հասցես, մի յորոգայթից, մի յայլմէ ինչ իրաց խորհրդովք ծախիցիս: Եղէգ[1] է սատանայ, լեր դու եղէգն քան զնա բարձրագոյն. քանզի որ 'ի բարձրագոյն վերանայ, ոչ երբէք սքանչանայ ընդ իրս կենցաղոյս: Որպէս յորժամ ելանեմք 'ի գլուխս լերանց՝ փոքր երևեսցի քաղաքս մեր և պարիսպ, իսկ մարդիկ մրջեանց չափ երևեսցին, սոյնպէս յորժամ 'ի բարձր իմացուածս և յիմաստութիւն ելանես, ոչ ինչ զքեզ երկրայինքս պակուցանեն. այլ ամենայնն նուաղ քեզ երևեսցին մեծութիւնք և փառք և զօրութիւնք և պատիւ և այլ ինչ յայսպիսեաց: Յորժամ յերկինս հայիս, որպէս և Պաւղոս, նուաստ երևին ամենայնքս, զի նմա և քան զմեռեալս անպէտ համարեալ էին ամենայն պայծառութիւն կենցաղոյս.

1 Նոյնն Հատորս է սատանայ, լեր դու քան զեղեգնաւն նորա բարձրագոյն:

վասն որոյ գոչելով ասէր. "Աշխարհս ինձ 'ի խաչ ե-
լեալ է և ես աշխարհի". ըստ այսմ և զմեզ խրատե-
լով ասէ. "Զվերինն խորհեցարուք". Զո՞ր ասես ար-
դեօք վերին, ասա ինձ, ուր արեգակն իցէ և լուսին. ոչ,
ասէ: Ապա զո՞ր, ուր հրեշտակք և հրեշտակապետք,
ուր քերովբէք և սերովբէք. ոչ, ասէ: Այլ զի՞նչ. ուր
ես ասացից. "Ուր Քրիստոս է ընդ աջմէ հօր նստեալ":
Հաւանեսցուք այսուհետև զայն խորհել հանապազ.
որպէս Ճնճղուկ յորժամ անկանիցի յորոգայթ՝ ոչ ինչ
օգտէ, այլ տարապարտ և ունայն տարածէ զթևս իւր,
այսպէս և դու յորժամ ըմբռնեսցիս 'ի չար ցանկու-
թիւնս և կապեսցիս խորհրդովք քո, ոչ ինչ օգտես.
այլ որչափ և տաղտկալով խայտաս, կապեալ կաս: Նման
այսորիկ են թևք Ճնճղկաց, զի փախչիցին յորոգայթէ.
ըստ այսմ են մարդկան խորհուրդք, զի փախիցեն 'ի
մեղաց: Զի՞նչ քաղցրութիւն կամ պատասխանի ունի-
ցիմք յորժամ քան զձագս և զանասունս անխելք իցեմք:
Յորժամ Ճնճղուկ մի անկանիցի յորոգայթ, և անտի
զերծեալ՝ այլ ոչ անկանի, և եղջերու անկեալ 'ի վարմս
և խզեալ, դժուարաւ անկանի այլ. կանխաւ իւրաքան-
չիւր փորձութիւն վարդապետ զգուշութեան լինիցի:
Իսկ մեք բազում անգամ 'ի նոյն անկեալ, և ոչ անտա-
նոց հաւասարիմք նախախնամութեան և հոգալոյ՝ որ բա-
նաւորքս եմք: Քանիցս անգամ տեսեալ կին՝ բիւրս
դիպաք նեղութեան. զի յորժամ զցանկութիւն ոչ ա-
ռեալ հեռացի 'ի նմանէ, բազում աւուրս երկնէ զեր-
ծանել, այլ սակայն ոչ զգաստանայ. յորժամ բուռն
ապաշխարութեամբ բժշկեցաւ 'ի վիրացն յայնց, դար-
ձեալ անկանի 'ի վտանգն ուստի ազատեցաւն. և դոյզն
տեսութեամբ միշտ ընդերկարելով մնամք 'ի նեղութեան:
Բայց եթէ ստէպ ուսանիմք զասացեալ բանս, զա-
մենայն վտանգս 'ի բաց դնեմք: Որոգայթ մեծ է գեղ
կնոջ. մանաւանդ ոչ եթէ գեղեցկութիւնն, այլ անար-
գել տեսութիւնն: Մի՛ զիրս ինչ վատթարեսցուք, այլ
զմեզ և զդանդաղկոտ ոգիս մեր. մի՛ ասասցուք եթէ
լաւ էր եթէ ոչ էր կին, այլ լաւ էր եթէ ոչ էր չնու-
թիւն. մի՛ ասասցուք եթէ ընդէ՞ր է գեղեցկութիւն,
այլ ասասցուք մի՛ իցէ պոռնկութիւն. մի՛ ասասցուք ըն-
դէ՞ր է անյագ որովայն, այլ ասասցուք թէ մի՛ իցէ աւե-



Digitized by Google

լի կերակուր. զի ոչ եթէ որովայնն առնէ զաւելի կերակուրն, այլ հեշտասիրութիւնն մեր: Մի ասիցէք եթէ վասն կերակրոց և ըմպելեաց լինին ամենայն չարիք. ոչ եթէ վասն այսր, այլ վասն ծուլութեան և անյագութեան մերոյ: Ահա եկեր և ոչ էարբ սատանայ, և անկաւ յերկնից. եկեր և էարբ Պաւղոս, և ել յերկինս: Որչափ լաւեմ, ընդէ՞ր է աղքատութիւն, ասեն. ըմբերանեսցուք զնոսա որք յայսպիսիս համարձակին. հայհոյութիւն է որք ասեն զայսպիսի բանս գայթակղութեան: Նայեսցուք և մեք առ նոսա՝ թէ մի որ իցէ նեղասիրտ, այն իսկ է չար, այլ աղքատութիւն բնաւ բարեաց պատճառ է մեզ 'ի կենցաղումս, նա և առաւել աղքատութեան մեծութիւնն անարգ է:

Մի այսուհետև զայն և մի զայս վատթարեսցուք. աղքատութիւն և մեծութիւն զէն է մեզ առ 'ի յառաքինութիւն, յիւրաքանչիւրոցն պտուղ կենաց բերելով եթէ կամիցիմք: Այլ զոր օրինակ արի և քաջ զինուոր զոր զէն և առցէ՝ զիւր առաքինութիւնն յայտնէ, այսպէս իսկ անարին և վատթարն յիւրաքանչիւրոցն գայթակղի: Այլ զի ծանիցես թէ այս ճշմարիտ է, յիշեա ինձ սատանայ և զՅոբ որ 'ի միասին մեծատուն էր և աղքատ եղև, և ըստ միմեանս ձեռնարկեալ սատանայէն երևեցաւ և յաղթող՝ բուռն հարեալ զերկոցունցն: Յորժամ մեծատունն էր՝ ասէր. “Դրուան իմ բաց էր ամենայն եկելոց„. իսկ յորժամ աղքատ եղև՝ ասէ. “Տէր ետ և տէր էառ, եղիցի անուն տեառն օրհնեալ„: Յորժամ մեծատուն էր, բազում էր օտարսիրութիւնն. իսկ յորժամ աղքատացաւ, բազում էր համբերութիւնն: Այլ դու այժմ մեծատուն ես, ցոյց բազում ողորմութիւն. եղեր աղքատ, ցոյց ներողութիւն և համբերութիւն. ոչ մեծութիւն չար է և ոչ աղքատութիւն, բայց միայն կամքն և բարք մարդոյն ըստ իւրաքանչիւրոցն լինել և առնել այսպէս:

Կրթեսցուք այսուհետև զանձինս մեր, և մի զայսպիսի իրս քննեսցուք և մի զգործս Այ, այլ զչար բարս մարդկան այսպէս արասցուք և զնեղասրտութիւն: Ահա մեծութիւն օգնել կարէ մեծամտին, և ոչ աղքատութիւն մեղանչել ինչ երբեք: Մնասցուք արդեօք զամենայն օրոգայթս և հետի ընթասցուք յայնցանէ. իմասցուք

զմեծութիւն անկմանն, և մի՛ լիցուք մերձ։ Եղիցի մեզ այս պատրաստութիւն մեծ՝ մի՛ միայն 'ի մեղաց փախչել, այլ և յայլոց բազմաց յորոց կարծեմք եթէ զմեզ 'ի մեղս արկանեն։ Որպիսի ինչ առեմ զծաղուէ, և զոր առեննն՝ ոչ կարծեմք եթէ մեղք իցէ. և զի մեղք է, այս խոստովանեալ և յայտնի է. քննեսցուք։ Բազում անգամ 'ի ծաղուէ ծնանին բանք գարշելիք, և 'ի գարշ բանից գործ աղտեղի. բազում անգամ 'ի ծաղրական բանից բամբասանք և անարգանք, և 'ի բամբասանաց և յանարգանաց խոցք և վէրք, և յայնցանէ սպանութիւնք։ Եթէ հոգաս վասն անձին քո և բարւոք խորհիս, ոչ եթէ զգարշելի բանս միայն և զգործս աղտեղիս, զխաղ և զվէր և զսպանութիւն 'ի բաց հանես, այլ և զանտեղի ծաղր և զոր անտի դատարկ և անպիտան բխումն բանից. քանզի այսչափ չարեաց արմատ և ըսկիզբն է, վասն որոյ Պաւղոս ասէ. "Ամենայն բան տգեղ 'ի բերանոյ ձերմէ մի՛ ելցէ"։ Ապա թէ զայս յանձին մեր փոքր կարծեսցուք, մեծամեծ չարեաց լինի մեզ պատճառ։

Պարձեալ փափկանալն եթէ պարապութիւն է՝ յայտնապէս ոչ գիտեն, բայց մեծապէս ծնանի չարիս, արբեցութիւն հարկանող, ագահութիւն, զրկանք, ապտակ, ծախս բազմնակատարս, և սպասաւորս որ անդուլս սպասաւորեն. որոց գոյքն ոչ հերիք է, հարկ է բազում անգամ զայլում յափշտակել և ագահել և հարկս հարկել։ Ապա եթէ փախչիցիս 'ի փափկութենէ և յագահութենէ և յարբեցութենէ, զաւել չարեաց պատճառս խլեցեր. 'ի քէն 'ի բաց հան զամենայն արմատս չարեաց։

Իսկ 'ի տեսիլս կանխել, երիվարս 'ի միասին տեսանել, ոչ կարծեն թէ յանցանք իցեն. բայց զի բիւր չարիս բերէ կենաց մերոց, 'ի բազմաց իրաց յայտնի է։ Քանզի որ 'ի տեսիլսն սովորի, անտի պոռնկութիւնք, շնութիւնք, անարգել անառակութիւնք և ամենայն պագշոտութիւն ծնանի. իսկ որ 'ի տեսութիւն 'ի խաղս կառաց և երիվարաց ելանիցէ, անտի վէճ, բամբասանք, խոցուածս գանից և անարգանս ծնանի...։

Ո՛չ այսուհետև 'ի մեղաց միայն փախուչիցուք, այլ զոր կարծիցեմք թէ անյայտ իցէ, առ փոքր մի զմեզ 'ի յանցանս յայս կործանիցէ։ Որ 'ի վախից տեղիս ընթանայ,

Digitized by Google

թէ և ոչ է անկեալ, դողայ և յայնմ դողալոյ աՀաբե-կեալ անկանի. Նոյնպէս և որ ոչ փախչի 'ի մեղաց, այլ մնա ընթանայ երկիւղիւ, Հարկ է անկանել: Զայսմա-նէ տեսցես որ զօտար գեղեցկութիւնն զննեսցէ, թէ և ոչ չնայ՝ սակայն ցանկայցէ, և եղև չնացող ըստ Հրա-մանին նց, ապա և յայնմ ցանկութենէ և յայսմ փոր-ձութենէ 'ի մեղս բերի:

Խորհիս զգաստանալ. մի միայն 'ի չնութենէ փախ-չիցիս, այլ առաւել փախիր յանարգել տեսութենէ. Ջանեա Հեռանալ 'ի գարշելի բանից. մի միայն 'ի բա-նիցն, այլ և ևս յանպատակ ծաղրէ փախիր և յամենայն ցանկութենէ: Սիրեա Հեռի կալ 'ի սպանութենէ. փա-խիր 'ի բամբասանաց: Ջանեա 'ի բաց կալ յարբեցու-թենէ. Հատ 'ի քէն զփափկութիւն բազմախառն սե-ղանոյ, և 'ի խորոց յարմարոյ խոյեցեր զչարիսն մեծ արա-գայթից: Նմանակ լեզուի բազում խոտորին կորանք. վասն որոյ ասէ սա. «Որոգայթ զօրաւոր առն շրթունք իւր»:

Նախ քան զայլ ամենայն անդամս զոս կապեսցուք. զբամբասանս, զանարգանս, զբանս գարշելիս, զզրա-վանս և զանդգոսնել Հեռի մերժեսցուք 'ի բերանոյ մե-րոց, ընդ նոսին և զերգս չար սովորութիւն: Պար-ձեալ յայոր պատուիրանի խրատ ածէ զմեզ բանն, զոր երէկ կարդեցաք սերոյ ձերում, որ ոչ այլ վասն այոր պատուիրանի պիտոյ էր զոր կանխաւ զամենայն ուսոյս բովանդակեցաք: Այլ զի՞նչ արարից. մինչև տեսից զաս ուղղեալ, ոչ խափանիմ 'ի բաց կալ 'ի խրատուէս....:

Լուայք զմարգարէին որ ասաց այսօր վասն երդման. «Այս դարձեալ ամբարձի զաչս իմ և տեսի և աՀա գե-րանդի թռուցեալ. և ասէ ցիս՝ զի՞նչ տեսանես. և ա-սեմ. գերանդի թռուցեալ տեսանեմ ես քսան կան-գուն երկայնութիւնն և տասն կանգուն լայնութիւնն: Այս ասէ ցիս. այդ են անէծք որ ելանեն 'ի վերայ ամե-նայն երկրի, զի ամենայն գողն մաՀու չափ 'ի դմանէ խնդրեսցի. և Հանից զդա՝ ասէ տէր ամենակալ, և մտ-ցէ 'ի տուն գողոց, և որ երդնուցու սուտ յանուն իմ 'ի մէջ տանն նորա, և վախճանեսցէ զնա և զփայտ նորա և զքարինս նորա»: Ո՞ւր իցեն ասացեալքս, և վասն էր արդեօք 'ի կարգ մանգաղի զՀեա երդմնաՀարաց եր-

Digitized by Google

թայ ։ Պռանգի զտանջանան ցուցանէ, և մանաւանդ թաու-
ցեալ՝ այսու յայտ առնէ զանձողութեան դատաստանին և
զանձրևանելի տանջանան ։ Տեսանես սուր թաուցեալ յոր-
մէ ով կարիցէ փախչել. մանաւանդ խոկ որ 'ի վերայ պա-
րանոցի անկանի և լինիցի փոխանակ վիճակի լինել, ոչ
ոք իցէ որ փախչի. իսկ յորժամ թեւս ունիցի, ո՞ր յայս
փրկութեան սպաս կայցէ ։

Սանէր արդեօք զքաղցս և զփայտս հատանէ զերդ-
մնողաց. զի քան զայլ չարչարանան զգաստութիւն բե-
րէ ։ Զի ամենայն որ երդուեալ, 'ի հարկէ մեռանի և
ծածկէ զնա երկիր. բայց զտունն քակել և 'ի հող ի-
ջուցանել՝ որ մերձեցան և տեսանեն, խրատին տեսու-
թեամբն և ոչ համարձակին այնպէս ։ Արդ զի մի ոք
չարչարեսցի այսպէս, և դատապարտ լինիցի համապա-
զորդ մեղքն վախճանելոցն, այսու օրինակաւ ահաբեկէ
զամենեսեան ։ Զի ոչ այսպէս հարկանէ սուր որպէս
բնութիւն երդմանն. և ոչ այսպէս սպանանէ զանակ,
որպէս հատանէ երդուեմնն ։ Ամենայն ոք որ երդնու, թէ
և ակն ունիցի արդել, սակայն մեռեալ է և զվէրս երկ-
րայրասու համամանն ընկալեալ է յոգին ։ Այլ որպէս
մահապարտ ոք որ առնու զվճիռ մահու, նախ քան զե-
լանելն 'ի քաղաքէն և զալ 'ի խորխորատ՝ թէ և զյա-
զում ժողովս տեսանէ 'ի կանգուն և զինքն ընդ նոսա՝
սակայն մեռանի յորժամ ելանէ ընդ դուռն դատաստա-
րին, նոյնպէս որ երդնու ։

Զայս խորհեսցուք համապազ և մի յերդուեմն գծ-
ցուք զեղքարս մեր ։ Զինչ առնես, ով մարդ, 'ի սե-
ղա՞նն սուրբ երդմնեցուցանես. ուր Քրիստոս զենեալ
և եդեալ կայ, դու անդ զենուս զեղբայրն քո ։ Արդ ա-
ւազակքն 'ի վերայ ճանապարհաց սպանանեն, դու ա-
ռաջի մօրն զորդին սպանանես. զի և քան զԿայենն վատ-
թարագոյն գործես սպանութիւն ։ Նա զեղբայրն իւր սպան
յանապատի, և մահն էր անցաւոր մահս. իսկ դու սպա-
նանես զեղբայր քո 'ի մէջ եկեղեցւոյն, և զհանդեր-
ձեալ անմահ մահն ։ Միթէ վասն այսորիկ եղև եկե-
ղեցի զի երդնուցումք, ով անմիտ, այլ եղև զի աղօթես-
ցուք. միթէ վասն այսորիկ եղև սեղան զի երդմնեցու-
ցուք, այլ զի զյանցանս մեր լուծցուք և ոչ 'ի նմին կա-
պեսցուք ։

Դու իսկ թէ և ոչ զամենայն խնամոցիս, զգիրս զայս զոր ածես առ 'ի յերդումն տալ՝ զաւետարանն սուրբ զոր 'ի վերայ ձեռաց ունիմ խորհրդականք՝ անդ հրաժարեսցես երդնուլ, բայց գնա և լուիցես թէ զինչ վասն երդմանն Քրիստոս ասէ անդ, և յայտնեսցէ տեսկս և 'ի բաց կաց։ Զինչ ասէ վասն երդման անդ. «Ես իսկ ասեմ ձեզ, ամենևին մի երդնուցուք»։ Արդ դու զաստուածեղէն օրէնսն որ արգել զերդումն, զնոյն երդումն առնես։ Ո՜վ անդար-գանացս, ո՜վ անօրէնութեանս. զայնպիսի իրս առնես, որպէս որք զօրէնսդիր և զարգելող երդմանն սպանանէ, և զնոյն մասնակից առնէ յայլոց սպանութիւն։

Որ այսպէս նեղիմ և արտասուեմ յորժամ լսեմ զամենայն սպանումն 'ի ճանապարհս, որպէս նեղիմ և արտասուեմ և սոսկամ յորժամ տեսանեմ զոք մերձ 'ի սեղանն գոլով և զձեռն դնելով և յաւետարանն մերձենալ և երդնուլ։ Վասն ընչից զանձ արհամարհես, սուտ խնձ, և զհոգիդ քո սպանանես. և զինչ այնչափ շահիս որչափ կորուսանես նախ զոգի քո և ապա զընկեր քո։ Եթէ հաւատաս զի ճշմարիտ է այդն, մի ածեր զնա 'ի նեղութիւն երդման. իսկ եթէ խնամաս զի սուտ իցէ, մի հարկեր զնա երդմնազանց լինել։ Այլ զի հաւատացուցէ, ասէ։ Յորժամ ոչ յերդումն ածես, յայնժամ բաւական ունիս զհաւատալն։ Զինչ այժմ ոչ լուիցես, յորժամ զնա յեկեղեցին տանիցես առնել զձեռս քո զայս խորհելով՝ միթէ 'ի նանիր ածի յերդումն, միթէ երդմնազանց եղև, միթէ ես եղէ պատճառ մեղացն։ Իսկ եթէ ոչ տայցես երդնուլ, յորժամ զնա յեկեղեցւոյն՝ բազում մխիթարութիւն ընդունիս. զոհանամ զՔեզ, ասես. օրհնեալ է Ած, զի ըմբռնեցի զիս ինքն և ոչ երդմնեցուցի 'ի նանիր և տարապարտուց։

Արդեւ ինքն. զայս դիր մանաւանդ քեզ հաւատալ մի զանցանել զօրէնսն, և մի հարկեր զայլ ոք առնել զայս։ Նոյն թէ վասն մեր ոչ երդմնեցուցեր, և բաւական է քեզ այս 'ի մխիթարութիւն։ Ի՛ երբէք և մեծ լինիցի, բազում անգամ անպարգևք և բերկրանք քաղցրութե՞, և ընդ անպարգևանս ասիցես. զինչ առնեմ քեզ, այս անուն առաջնորդ տասանեաց խնձ և նա կալաւ զձեռս իմ. և բաւական լինի մեզ այս 'ի մխիթարութիւն։ Նմանապէս և յորժամ կամիցիս զոք ածել յերդումն, ըմ-

Digitized by Google

տեան 'ի խորհուրդ փախստեան, եկեալ մխիթարեաց զմեզ և ած 'ի քաղաքս յոյս։ Նոյն եւ վասն ձեր աղաչեցի, և պատկառեմ զի արտաքուստ խնդրեցէք մխիթարութիւն զկնի այնչափ երկար և բազում բանիցն, յորում աղաչեցի զձեզ 'ի բաց կալ յերկիւղէն և մի կալ յերկուանս։ Նա յորժամ լուայ զնորա խօսելն ընդ ձեզ, և այժմ մխիթարել, զինչ ասացից և այժմ 'ի խոյզ արկանել զանժամ և զանտանելաբարոյ երկիւղն։ Նա զի ոչ էր արժան ձեզ 'ի նմանէ ուսանել, այլ ձեզ ամենայն անհաւատից լինել վարդապետս, և ոչ զատաստան ժտել յանհաւատից. իսկ դուք արտաքուստ վարդապետութիւն խնդրէք զկնի այսքան նախկին խրատուց։ Որո՞վք աչօք այսուհետև հայեսցուք յանհաւատս զի դուք այսպիսի իցէք երկչոտք. կամ որո՞վ լեզուաւ խօսեսցուք ընդ նոսա՝ հաւանեցուցանել համարձակ կալ 'ի նեղութեանս յորժամ դուք քան զնապաստակս յերկիւղի իցէք վասն այսր միոյ տագնապիս։

Զի՞նչ ասասցուք, ասէ, ապաքէն մարդիկ եմք։ Վասն այսորիկ իսկ չէ պարտ խռովել և աղմկել, զի մարդիկ եմք և ոչ անասունք։ Նոքա յանասնայնէ երկնչին, զի ոչ ունին զզայութիւն կալ ընդդէմ երկիւղի. իսկ դուք որ բանիւ և զգայութեամբ պատուեալ էք, զիա՞րդ անկանիցիք 'ի նոյն դժուարին տարտամի ահն։ Ասեն, ասեն, պատմեալ վասն գալոյ զինուորացն։ Մի՛ խռովիցիք, այլ 'ի բաց ընկեցէք զերկիւղն զայն. խոնարհեցո ծունր և աղաչեա զտէրն քո հաշտիլ ընդ քեզ. և նա հառաչեա դառնապէս, ընդդէմ կաց այսր նեղութեան։

Դու իսկ զգալուստ զինուորաց լուեալ զի ոչ ճշմարիտ, և զանցաւոր կեանս քո նեղութեամբ հերձանես. իսկ երանելին Յոբ այլ և այլ հրեշտակաց լուեալ գալով և զվտանգսն պատմելով, որ յաւելուին աւել զանբանիցն անցումն, զորդւոցն զկորուստ, և ոչ տխրեցաւ և ոչ հառաչեաց, այլ յաղօթս դարձաւ և գոհացաւ զՏէր։ Այն ցանկալ և լեր նմանող. եթէ եկեսցէ ոք և ասիցէ՝ զինուորք պատեցին զքաղաքս և զամենայն գոյս մեր համբերձեալ են յափշտակել, ապաւինեա առ տէրն քո և ասա. «Տէր ետ և տէր առ. որպէս հաճոյ եղև տեառն, այնպէս արար. եղիցի անուն տեառն օրհնեալ յաւիտեանս»։ Ո՞չ իրացն զխոտութիւնն ոչ երկե-

ցոյց, և զքեզ լաւրն միայն երկեցուցանէ: Որում ապա պատասխանւոյ արժանի գտանիցիք, և զիարդ մահու համարձակ հրամանաց՝ 'ի համբաւէ ասոյ այնպէս եր- կնչիք:

Վասնզի ազդեցարարն՝ ուր չիցէ երկիւղ, ինքեան մերձ կացուցանէ և զխռովութիւն՝ որ չէ յայտնի. իսկ որ համ- բարօն և համեստն է, և զոր ասոյգն է՝ լուծանէ: Ո՛չ տեսանես զնաւորդս, յորժամ ծովն խռովիցի, անկրքն ընթանան, որոտմունք և ճայթմունք արձակին և զամե- նեսեան որք 'ի նաւին են՝ զարհուրեցուցանեն, նոքա ա- ռանց երկիւղի նստիցին և առանց ազդկի և խռովութե, միայն արուեստին միտ դնելով թէ զիարդ ընդդէմ կայ- ցեն ալեացն ծփանաց: Նոյնս նմանեա և դու, անձլով 'ի քեզ զասուրբ համառոտութիւն զառ 'ի յանձ յաւոյն, որ է անյաղթելի և աննասանելի....:

Նախ բազում ինչ ասացաք սիրոյ ձերում վասն ո- րոգայթից որ յամենայն կողմանց եդեալ կայ, վասն եր- կիւղի, վասն տրտմութեան, վասն ողբոց և ցանկութե, վասն մանգաղին որ թռուցեալ մտանէր 'ի տունս ափխա- ցիկ որք երդնուն, և այլ բազումս այսպիսիս: Արդ յայնժամ ամենայնէ յիշեցէք ինձ վասն մանգաղին թռու- ցելոյ, և զառանց նոցա քակումն զքարինս և զփայտս մաշ- ուելոյ. և զկնի ամենեցուն զայն պահեցէք որ վերջին անգիտութեան իցէ՝ որք զաւետարան սուրբ ընդունին յերդումն, և զօրէնն որ արգելու զերդումն՝ զնոյն եր- դումն առնել. և թէ լաւագոյն է ինչս կորուսանել, քան երդմամբ ստանալ մեծութիւնս....: Օայսպիսի դուք պահեցէք և ամենեցուն ուսուսջիք: Գիտեմ եթէ զայս առ 'ի պահել պարկեշտագոյն անիցիք, զամենայն չար ավորութիւնս դիւրաւ 'ի բաց դնիցէք:

Նայլ խնդիր ոչ եթէ այս միայն իցէ զի սոտ խմա- տախրեսցուք, այլ զի և արտաքոյ զպարկեշտութիւն առնուլ և զնալ, զոր և խնդրեմ իսկ մանաւանդ 'ի ձէնջ: Այս արդէն գնալք զհեւոյ ոչ միայն զի լռուցուն փութանս զամենայն իւրեանց, և յորժամ 'ի տունս իւրեանց եր- թիցեն՝ դատարկ իցեն, այլ անդր մանաւանդ զգուշու- թեամբ առնիցին, զի մի գիտասցեն և 'ի նանիր լինիցի ա- խտութիւնն: Նոյնս նմանեսցուք և մեք. եթէ 'ի տան իցեմք, պահեսցուք զասացեալս համդերձ ստուգութ.

եթէ արտաքոյ՝ նմանապէս։ Որպէս և աստ լցեալ զա-մանս մտաց ձերոց ունիք, յորժամ երթիցէք՝ մի ու-նայնս և անպտուղ առնիցէք. ապա թէ ոչ՝ չէ ինչ օգուտ աստի լսութիւնս։ Ո՛չ ինձ ցուցանէր՝ ի մարտի զմեծերն, այլ ՝ի յաղթանակին. մի ինձ աստ ցուցանէր զպարկեշտ ունկնդրութիւն, այլ ՝ի ժամանակի գործոցն։ Կարելի զաւսացեալս այժմ, և չէ ինչ. այլ յորժամ պարտ լինի քեզ երդնուլ, յայնժամ զմտաւ ած զամենայն։ Եթէ վաղվաղակի ուղղիցէք զբանս, յայլ առաւելագոյն վար-դապետութիւնս անցից զբանս։

Մ՛հա երկրորդ ամ է զի միշտ ասեմ սիրոյդ ձերում, և ոչ հարիւր տուն ՝ի գրոց պատմել կարացի ձեզ. բայց պատճառն՝ զի ոչ ՝ի մէնջ պարտ է ուսանել միայն, այլ և յանձանց ձերոց ուղղել փոյթ որ առաւել է քան զմեր խրատս. ապա թէ ոչ՝ ունկնդրութեանց միայն ծա-խի բանս։ Այլ չէ պարտ այսպէս լինել. բնաւ առաւե-լոց յանձնէ ձերմէ հոգայք և խրատիք, բայց զխնամա-տութիւն գրոց և զտեսութիւն մեզ միայն ցուցանէք։ Եթէ պարտ է ՝ի մէնջ լսել ձեզ, առաւել քան զմի-ժամ յաւուր ոչ է խնդրեալ. թէպէտ և դժուարագին է ասացեալն, բաւական է յումեքէ խնդրելին։

Յորժամ ած ՝ի ձէնջ զառնելն խնդրէ, այնմ չիք ժամանակ։ Վասն ած՝ "մի երդնուցուս". և մի պատ-ճառս յանցանաց խնդրիցես։ Օրէն է թագաւորական. որ եդ զօրէնս ած, գիտէր զբան օրինացս. պարտ էր մեզ՝ թէ և չէր յայտ օգտակար՝ ոչ խափանել և ոչ հրաժարել։ Թագաւորաց բերին օրէնք ոչ ամենեքին յօգուտ, զի մարդիկ են և ոչ կարեն գիտել զօգուտն մեր որպէս զած. սակայն հաւանեալ հնազանդիմք ամենեքեան. նոյնպէս եթէ կին ածեմք, եթէ կտակս հաստատեմք, եթէ ծա-ռայս վաճառեմք կամ տուն կամ ագարակ կամ այլ ինչ այսպիսիս, ոչ յանձնէ զայս գործեմք, այլ որպէս նոքա օրէնս եդին և հրամայեցին. ՝ի մտաց մերոց բաւ կամին մեր ոչ եմք տէր ամենեւին յաւելուլ կամ պակասեցու-ցանել ինչ, այլ հանապազ նոցա կամացն ծառայեմք. իսկ եթէ առնեմք ինչ քան զոր նոքա ասեն ունելն, ան-ընկալ լինի։ Արդ յորժամ զմարդկան օրէնս զայս պա-տուեմք, զայ օրէնսն այսպէս կոխեմք, ասա ինձ. և ո-րում պատասխանւոյ կամ քաւութեան իցեմք արժա-

Digitized by Google

նի ։ Ասաց ինձ՝ մի երդնուլ. մի վասն ընչից հակառակ օրինադրին լինիցիս ։

Այլ վասն այսր ասացաք սակաւ. բեր այսուհետև քան մի զոր այսօր ընթերցաք՝ դիցուք ձեզ առաջի ։ « Պաւղոս կապեալ Յիսուսի Քրիստոսի և Տիմոթէոս եղբայր »։ Այս լուաք արդ. մեծ է Պաւղոսի երևելն՝ ոչ յառաջիմանէ և ՚ի պատուական անուանէն, այլ ՚ի բանտէն և ՚ի շղթայիցն. Ճշմարիտ մեծ է. ես բազում առաւելութեամբ պայծառ փայլէ այսիւ, քան մինչ յերրորդ երկինս յափշտակեցաւ և ՚ի դրախտն ածաւ և բանս անճառս լուաւ. ըստ որում ոչ եդ զայս, այլ փոխանակ այսմ ամենայնի զշղթայսն. այս զնա առաւել երևելի արար և պայծառ ։ Եւ խնդրդ արդեօք. զի այն այ̃ մարդասիրութեան և շնորհացն է, իսկ այս ներողութիւն ծառային և համբերութիւն ։ Որոշեմ սիրոյ սիրելեաց ոչ սովորութիւնք են, այլ յայսմիկ երևին յորժամ չարչարքն վասն սիրելեացն և ապա բարեգործեալ թուին ՚ի նոցանէ ։

Ոչ այսպէս թագաւոր ՚ի թագ իւր վայելէ, որպէս և նա ՚ի կապանս վայելչանայր. թագաւորի թագ յերկրի միայն բերէ զանուանութիւն զգլխոյն պսակեալ, իսկ զշղթայքն ՚ի վեր քան զաշխարհ ։ Թագաւորական թագ ՚ի զգուշութիւն է բազում անգամ մտանել զոր ՚ի վերայ կայցեալ զգլուխն, և հանդիպեցուցանէ գաղտնի խորհրդածութեան, և ՚ի բանութեանց կոչէ. և ՚ի պատերազմի այսպիսի զարդ պատրաստական է՝ ուստի թագուցեալ լինի ՚ի բաց դնելով. քանզի թագաւորք զկերպարանս իւրեանց փոխեն յաւուր պատերազմի և այսպէս խառնին ՚ի պատերազմ. ՚ի պսակէ թագաւորին այսպիսի մատնութիւնք լինին ։ Իսկ կապանքն ոչ այսպիսի աւանդէ որոց ունիցին, այլ հակառակ է այսմ ամենայնի. և յորժամ պատերազմ յառնիցէ դիմամարտ զօրութեանցն, որ զնա զգենուցու՝ զիւրաւ ընդդէմ կայ մարտից նոցա ։

Արտաքին իշխանք ոչ եթէ յորժամ սկսանիցին յիշխանութիւնս միայն, այլ և յորժամ ՚ի բաց երթիցեն յիշխանութենէն կոչի անուն նոցա. ասեն՝ այս անուն հիւպատոսական իշխանի, այս անուն եպարքոսական իշխանի. իսկ նա փոխանակ այսր ամենայնի « Պաւղոս կա-

պեալ„ ասէ ։ Այն իշխանութիւնք ոչ ամենեցուն է ըստ Հոգևորական առաքինութեանն ցուցման, այլ որք ինչ ունին և փաղաքշանօք սիրելի լինիցին. իսկ այս իշխանութիւն Հոգևորական խնամատարութեան իցէ դրոշմ, և մեծապէս նշան սիրոյն Քրիստոսի. այն պատիւ վաղվաղակի թառամեալ գնայ, իսկ այս պատիւ ոչ փոփոխի երբէք ։ Յայնմ ժամանակէ մինչև ցայժմ քանի ժամանակք անցին և առաւել պայծառագոյն եղև անուն այնմ կապանաց. Հիւպատք և Եպարքոսք և այլք որչափ եղեն յառաջագոյն՝ լուեցին, և ոչ ոք 'ի նոցանէ յանուանէ ծանօթ է բազմաց ։ Իսկ այսմ կապանաց անուն երանելւոյն Պաւղոսի բազում աստ է և բազում յերկիրս բարբարոսաց, բազում առ սկիւթացիսն և 'ի Հնդիկս. և եթէ ընդ ամենայն տիեզերս անցանիցես, լուիցես զանուանս զայս. և ուր և երթիցես, 'ի բերանոյ ամենեցունց Պաւղոս բերեալ լինի ։ Նա զինչ սքանչելի իցէ ընդ ծով և ընդ ցամաք տարածել. յերկինս եթէ ելանիցես, և անդ բազմապատիկ լուիցես զանուանն Պաւղոսի 'ի Հրեշտակաց, 'ի Հրեշտակապետաց և յայլ վերին զօրութեանցն և յամենեցունց թագաւորէն ա̃յ ։

Արդ որպիսի՞ էր կապանքն այն որ այսպիսի եւս փառս կալեալ իցեն. ո՞չ ապաքէն յերկաթոյ կազմեալ էր ։ Այո, այլ բազմապատիկ ծաղիկս և պսակ բերէր 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ, քանզի վասն Քրիստոսի 'ի վերայ եդեալ կայր ։ Ո՜վ սքանչելեացս. տէրն խաչեցաւ և ծառայքն կապեցան, և նոցին քարոզն զօրհանապազ աճէ, և զործն որում ակն ունէին խափանիչ լինել՝ այսիւ յայտնեցաւ. և խաչն և կապանքն զոր կարծէին խաւարելի լինել՝ սոյն իսկ նշան փրկութեան եղև. և երկաթն այն քան զոսկի պատուական եղև ոչ եթէ յիւրմէ բնութենէն, այլ 'ի պատճառէս յայսմանէ ։

Այլ տեսանեմ աստ խնդիրս յայսմանէ եկեալ 'ի մէջ. զուք 'ի մեր առէք հանդերձ սառուգութեամբ, եւ զկարգիրն պատմեմ և զթարգմանութիւնն աստացիք ։ Ո՞ր ինչ իցէ խնդիրն ։ Այն Պաւղոս առ Փեստոս, և յատեանն նորա և 'ի պատասխանեսն վասն պարտաւորութեանն զոր 'ի վերայ ածէին Հրեայքն, ասէր եթէ մաղթէս եւս զԱ̃ծ հայսու, կամ մաղթէս լսաւ զերանելի ձայնն զայն, զի՞նչ եւս զկնի կուրանալոյն, զի՞նչ անկաւ և յա-

ըսաւ, կամ որպէս գնաց. գերել 'ի Պտղոմայիս և կապել առանց կապանաց. և վասն մարգարէիցն և օրինացն ասելոյն՝ կանխաւ եցոյց և յայտ արար թէ նոքա զայս ամենայն ասացին, և այսու 'ի բաց խլեաց զդատախազն, և վազվազակի զնա 'ի հաւանութիւն ածել փութայր փոխել և դառնալ առ նա:

Այսպիսիք են հոգիք սրբոց. յորժամ անկանին 'ի նեղութիւնս, ոչ եթէ զերծանել 'ի նեղութենէն զգուշանան միայն, այլ և զածողսն 'ի նեղութիւնսն որսան հանապազ. որպէս և յայնժամ եղև. եկն ածել պատասխանի, և զդատաւորն ընդ իւր առ և գնաց: Այլ զայս լսելն դատաւորն վկայեալ ասէ. "Առ փոքր մի և զիս հաւանեցուցանես քրիստոնեայ լինել, ով Պաւղոս": Պարտ էր այժմ և այսօր լինել. և զիշխանս որ եկն առ մեզ 'ի գիտութիւն ածել լինել մեծահոգի, առնուլ զիմաստասիրութիւն, զհանդարտութիւն զամենայն, 'ի հաստատութենէ մերոյ վարդապետութեանս ընդունել և գնալ. քանզի սքանչանայ ընդ ժողովուրդս, գովելի վարկանի զատեանս: Ուսցին յայսմանէ և ոմք 'ի միջի մերում հելլենացիք և քրիստոնեայք:

Արդ զոր ասացի՝ յորժամ զնա յիւրմէն քակեաց Պաւղոս, և նա ասաց, "Փոքր մի հաւանեցուցանես զիս լինել քրիստոնեայ", պատասխանի ետ նմա Պաւղոս և ասէ. "Այս աղօթս առնեմ փոքու և մեծի, ոչ միայն զքեզ, այլ զամենեսեան որ լուիցեն ինձ՝ լինել քրիստոնեայ բաց 'ի կապանաց աստի": Զինչ ասես, ով Պաւղոս, ո՞չ միշտ դովլաւ պարծէիր ասելով. "Աղաչեմ զձեզ ես որ կապեալս եմ 'ի տէր, արժանի գնալ կոչմանն յոր կոչեցարուք". և առ Տիմոթէոս ասես. "Վասն որոյ չարչարիմ կապանօքս չափ իբրև չարագործ". և առ Փիլիմոն դարձեալ. "Պաւղոս կապեալ Յիսուսի Քրիստոսի". և յորժամ ընդ հրէայսն դատախազ եղեալ ասես. "Վասն յուսոյ յարութեան մեռելոց կամ 'ի շղթայս յայս". և փիլիպեցւոցն գրեալ ասէիր և զաւելորդ եղբարցն՝ եթէ "Վստահ եմ կապանօքս իմովք առաւել համարձակել առանց երկիւղի զբանն այ̃ խօսել": Ամենայն ուրեք զշղթայսն բերես 'ի մէջ, յամենայն տեղիս զկապանս յիշես և պարծիս դովլաւ. իսկ 'ի դատ մտեալ մատնես զիմաստասիրութե

քո, առ մանաւանդ համարձակել էր և ոչ երկնչել, և ընդ դատաւորին ասես՝ եթէ աղօթս անձեամ լինել քեզ քրիստոնեայ բաց 'ի կապանաց աստի: Եթէ էր բարիոք կապանքդ, և այսպիսի բարի, մինչ զի և այլոց պարգևս համարձակել 'ի բանս պարկեշտութեան; զոր դու ինք-նին ասես՝ եթէ եղբարց վստահանալով 'ի կապանս իմ խօսին զբանն Այ առանց երկիւղի, վասն էր արդեօք առ դատաւորին ոչ վայելուչ երևեցուցանես զայդ գործ և զհակառակն ասես: Միթէ չկարծէր եթէ խնդրուածք են առաքեալն: Այլ առ փաղփաղակի ածից զաւարտ բանիս:

Եւ եթէ յերկիւղէ կամ 'ի տագնապէ արար զայս Պաւղոս, այլ 'ի խորհրդոյ և 'ի բազում իմաստութե-նէ. և եթէ զիարդ՝ ասացից: Որ հեղինակացն խօսէր և առ անհաւատս: Եւ կամէր զնա 'ի դժուարութիւն ա-ծել. այլ որպէս և ասէր թէ "ընդ անօրէնս եղէ իբրև զանօրէն", զայն և աստ գործեաց: Եթէ լուիցէ, ասէ, կապանս և նեղութիւնս, փաղփաղակի ապստամբէ, զի ոչ ճանաչէ զզօրութիւն կապանացն. եղիցի նախ հա-ւատացեալ, ճաշակեսցէ 'ի քաղցրութենէս, և ապա իւ-րովի ընթասցի 'ի կապանս յայս. գիտեմ զբանս տեառն իմոյ, "Եւ ոք արկանէ, ասէ, կապերտ անթափ 'ի վե-րայ հնացեալ ձորձոյ. զի առնու ելանէ 'ի լրութենէ նո-րա, և ևս չար պատառումն լինի. և ոչ արկանեն գինի նոր 'ի տիկս հինս, զի պայթուցանէ գինին նոր զտիկս հինս": Հոգի սորա, ասէ, ձորձ է հնացեալ և տիկ պա-տառատուն, ոչ է միաւորեալ 'ի հաւատս և ոչ նորո-գեալ հոգւով սրբով, տկարացեալ է յոյժ, և զերկրա-ւորս ևեթ հոգայ և զիւրս կենցաղոյս, և յորդեանցս երևմանց երկնչի, քանզի անցաւորիս ցանկայ: Եթէ յա-ռաջնմէ լուիցէ, եթէ եղէց քրիստոնեայ՝ 'ի կապանս հասանէ փաղփաղակի լինել և 'ի շղթայս մտանել, ար-դէն ապստամբէ 'ի քարոզութենէս. վասն որոյ ասեմ "բաց 'ի կապանաց աստի":

Եւ եթէ ինքն խնդրէր 'ի բաց լինել 'ի կապանաց աս-տի, քաւ լիցի, այլ 'ի նորին տկարութիւնն գթայր. այլ ինքն այսպէս օրհնէր և համբուրէր, որպէս կին զարդա-սէր զոսկի զարդ իւր: Եւ ուստի, ասեն, յայտ է այս. լուր. "Ուրախ եմ ընդ չարչարանս իմ". և դարձեալ.

"Շնորհեցաւ մեզ յոյժ ոչ միայն 'ի նա հաւատալ, այլ և վասն նորա չարչարանս կրել". և դարձեալ. "Պարծիմք, ասէ, 'ի նեղութիւնս մեր": Արդ յորժամ ուրախանայ և պարծի և շնորհս կոչէ զնոյն, բարիոք յայտնի եղև թէ վասն այսր պատճառի առ դատաւորն խօսելով զայս ասէր: Քանզի և այլուր դարձեալ 'ի նեղութիւնս անկեալ պարծէր, զոր ինքնին ցուցանէ ասելով. "Այս ազգ լաւ լիցի ինձ պարծել 'ի տկարութիւնս, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի, վասն որոյ հաճեալ եմ ընդ տկարութիւնս, ընդ չարչարանս, ընդ թշնամանս, ընդ վիշտս, ընդ հալածանս և ընդ նեղութիւնս վասն Քրիստոսի". և դարձեալ. "Եթէ պարտ է պարծել, 'ի տկարութիւնս պարծեցայց". և թէ "Յամենայնի ընծայեցուցէք զանձինս ձեր իբրև զպաշտօնեայս Այ համբերութեամբ բազմաւ, 'ի նեղութիւնս 'ի վիշտս 'ի չարչարանս 'ի գանս 'ի բանտս 'ի խռովութիւնս յաշխատութիւնս 'ի հսկմունս 'ի պահս": Եւ եթէ զմեռեալս յարոյց կամ զբորոտս սրբեաց և ոչ զդևս հալածեաց և ոչ զայլ ինչ զոր արարեալ էր յայսցանէ՝ ասաց. այլ զի՞նչ. զբիւր նեղութիւնսն որոց դիպեալ էր ասէ. իսկ "առաւել ևս ես", եհաս փորձութեն բազմութիւն. զիա՞րդ. "Եթէ վաստակօք՝ առաւել, եթէ գանիւք՝ ևս առաւել, եթէ բանտիւք՝ աւելի քան զնոսա, եթէ մահուամբ՝ բազում անգամ, 'ի Հրէից հընգիցս քառասուն միով պակաս առի, երիցս ձաղկեցայ, մի անգամ քարկոծ եղէ, զտիւ և զգիշեր յանդունդս տառապեցայ, 'ի ճանապարհս բազում անգամ. վիշտս 'ի գետոց, վիշտս յաւազակաց, վիշտս յազգէ, վիշտս 'ի հեթանոսաց, վիշտս 'ի քաղաքի, վիշտս յանապատի, վիշտս 'ի ծովու, վիշտս 'ի սուտ եղբարց, 'ի ջանս 'ի վաստակս 'ի տքնութիւնս 'ի քաղց 'ի ծարաւ 'ի պահս 'ի ցուրտ 'ի մերկութիւն", և յայլ նոյնպիսիս: Այսպէս ամենայն ուրեք 'ի տրտմականսն պարծի Պաւղոս և վայելչանայ առաւել այսու գործովք, և մանաւանդ յիրաւի իսկ: Զի այսու ցուցանի զօրութիւնն Քրիստոսի, և սովին կալան զտիեզերս առաքեալքն հանդերձ կապանօք և տրտմութ՟բ և աշխատօք և յետին չարչարանօք:

Զայսոսիկ պատուիրեաց Քրիստոս, աստ տրտմութիւն և նեղութիւն, և ապա պսակք. քրտունք ցաւք

աշխատութիւնք, և քաղցր հատուցումն. այլ արտաքնա_ կանքն անցաւոր ժամանակիս են, և քաղցրութիւնն 'ի հանդերձելումն. ոչ 'ի միասին առնէն առնել զհատու_ ցումն՝ ցուցանէ թէ ոչ խառնէ զմարդիկ, և զայս վաստակ ոյսիւ բարձեալ և 'ի բաց հատանել խորհէր: Քանզի թէ խառնել խորհէր, նախ զքաղցրն դնէր առաջի, և ա_ պա յետոյ զդառնականսն: Որպէս և մանկավարժքն առ_ նեն 'ի գայթակղութիւնս անձել, յորժամ զկերակուրս տղայս խաբեն և գողանան. ոչ եթէ ապտակեն և տուգա_ նան և խոցոտեն, այլ աւելի ընդարձակագոյնս 'ի բար_ բանջս չար երգոցն զոր տղայական բնութիւնն սիրէ՝ ու_ րախացուցանեն, զի այսու սովորեալ՝ զազատութիւն նո_ ցա արկանեն 'ի յետին վտանգս...: Իսկ հայրք հակա_ ռակ նոցին առնեն. յորժամ 'ի վարդապետանոցս ա_ ռաքեն զմանկունսն, մանկավարժս կացուցանեն, տուգա_ նան ապտակեն և յերկիւղ հասուցանեն. ապա յորժամ ըստ առաջին հասակին անցանեն, յայնժամ զիւրութիւն լինին նոցա, պատիւ և զօրութիւն և վայելումն, և նոքին յառաւել ձոխութիւն ձեռնարկեն:

Նոյնպէս և Ած ըստ գթական հայրց 'ի մանկութեանն ա_ րար. նախ զդառնականսն եդ առաջի, որպէս մանկա_ վարժք և վարդապետք զանցաւոր տրտմութիւնս եդ, զի այսու զգաստացեալք զամենայն հանճարութիւն ցու_ ցանիցեմք, ուսեալք խնամատարէր գոլով. իսկ յորժամ աստի ելանեմք, զերկնից արքայութիւն ժառանգեմք...: Ոյք և որք աստ փափկանան, զկնի անկանին 'ի տան_ ջանսն յաւիտենականսն. վասն որոյ անցաւոր փափկու_ թեանս վայելումն անշահ է վասն այն ունելոյ նեղու_ թեանն. իսկ որք յառաջագոյն զդառնականս կրեցեն, յուսով հանդերձեալ վայելմանն զդառնականսն անտես առնեն: Ոչ զի 'ի նեղութիւնս զգուշացուցք միայն, այլ և փափկացումն և մխիթարութիւն կարգեաց զհանդեր_ ձեալ յոյսն որ հեշտալի առնէ զաստի վտանգս, որով անցաւորիս ոչ առնումք զզայութիւն: Եւ զայս դար_ ձեալ ինքն Պաւղոս ցուցանէ ասելով. "Առժամայն թե_ թև նեղութեանս մերում 'ի յաւիտենական առաւե_ լութիւնն զմեծութիւն փառացն գործէ 'ի մեզ. զի ոչ դիտեմք զերևելիս, այլ զաներևոյթսն": Եւ թէ և ըզ_ տրտմականսն կոչեաց՝ ոչ ըստ իւրոյն բնութեան վտան_

գիցն, առ ակն ունել հանդերձելոց բարութեանցն։ Որպէս և վաճառական ոչ 'ի մտի դնէ զնաւակոծութեան տառապանսն՝ ապաւինութեամբ բեռինն հեշտացեալ, և մրցողն արիաբար բերէ զվէրս և զխոցումն գլխոյն՝ ակն ունելով պսակացն, սոյնպէս և մեք զի յերկինս և որ յերկինս են բարութիւնք՝ մնամք, որչափ և բերիմք 'ի նեղութիւնս, զամենայն քաջութեամբ տարցուք՝ հանդերձեալ քաղցր յուսովն զօրացեալք։

Զայսոսիկ զբանս 'ի միտ առեալ երթիցուք. զի թէպէտ և սակաւ է, այլ բազում ունի վարդապետութի իմաստութեան, բաւական կալեալ մխիթարութիւն 'ի նեղութիւնս և 'ի տրտմութիւնս, որ է մեծ զգաստութիւն։ Վասնզի յորժամ 'ի փափկութիւնս իցես և 'ի բազմակատար սեղանս և յիշես զբանս զայս, վաղվաղակի 'ի բաց յառնես յարբեցութենէ և յաւելի կերակրոց, հաստատեալ յայսմ բանից՝ թէ պարտ է 'ի նեղութիւնս կեալ մեզ, և ասասցես ցքեզ ինքն. Պաւղոս 'ի կապանս կայր և ես յարբեցութեան և 'ի բազմախորտիկ սեղանս, և որո՞ւմ թողութեան գտայց արժանի։

Այն բան և կանանց առ պատրաստ կայ, որ զարդասէրք են, պճնողք և շուրջանակի ոսկւով զինքեանս կապեն, զշղթայս զայս յիշելով բարիոք իմանալ, ատել զայն և պիղծ համարել զայնպիսի զարդ, և ցանկալ այսպիսի կապանաց։ Վասնզի այն զարդ բազում չարեաց եղև պատճառ մարդկան և բիւր պատերազմունս ած 'ի յազգս մարդկան, և միշտ նախանձ և չարութիւն և ատելութիւն ծնանի. իսկ սա զյանցանս տիեզերաց ելոյծ, զդևս զարհուրեցոյց, զսատանայ փախստական արար։ Նա յորժամ սովաւ 'ի բանտ մտանէր, զբանտապետն հաւատացեալ առնէր. հանդերձ սովաւ զՓեստոս և զԱգրիպաս առ ինքն դարձոյց. սովաւ զամենայն տիեզերս աշակերտեաց Պաւղոս, վասն որոյ և ասէր՝ թէ "Չարչարիմ կապանօք չափ իբրև չարագործ. այլ բանն այ ոչ եթէ կապեալ իցէ"։ Որպէս զճառագայթս արեգական շիջուցանել անհնար է կամ 'ի տան արգելուլ, սոյնպէս և ոչ զբան քարոզութեանն։ Վարդապետն կապանօք կապեալ, և բան նորա ևս առաւել թռուցեալ տարածէր. նա 'ի բանտի եղեալ կայր, և

վարդապետութիւն նորա սլացեալ յամենայն կողմանս տիեզերաց հասանէր։

Զայս ամենայն իմացեալ մեք 'ի վայր անկցուք, յորժամ վտանգ ինչ 'ի վերայ գայցեն, այլ ևս յայնժամ համարձակս և զօրաւորս լիցուք. «Նեղութիւնք, ասէ, զհամբերութիւն գործեն»։ Մեք, ասէ, այսուհետև մի տխրեսցուք ընդ հասեալ վիշտս, այլ յամենայնի գոհասցուք զԱյ։ Երկուս շաբաթս 'ի պահոցս անցուցաք, այլ մի այսու միայն զգուշասցուք. զի ոչ է այս միայն ընդունելի պահք 'ի կերակրոց՝ միայն զշաբաթս անցուցանել. եթէ զբոլոր տարին անցուցանեմք պահօք առանց այլ օրինացն, 'ի կերակրոցն միայն պահել ոչ օգտեսցուք։ Այլ զայս խորհեսցուք, եթէ ամենայն բարութեամբ ելա՞ք 'ի պահս, եթէ արիք և փոյթ եղա՞ք, եթէ ուղղեցա՞ք ինչ 'ի մերոց յանցանացս, եթէ զգաստացա՞ք 'ի մեղաց։

Այս և այս սովորութիւն է ամենեցուն հարցանել յաւուրս քառասնորդացս թէ որչափ իւրաքանչիւր շաբաթս նօթի պահեալ է. և իցէ լսել թէ ոմն երկուս և այլ երիս և այլք ոմանք թէ զամենայն շաբաթս պահեալ են առանց կերակրոց։ Արդ զի՞նչ շահ իցէ եթէ յամենայն ուղղութենէ անապատ եմք մնացեալ, և քաղցիւ միայն ելաք ընդ աւուրս պահոցն։ Իսկ եթէ ոք ասիցէ ցքեզ՝ եթէ զամենայն շաբաթս պահոցն պահեցի ժուժկալութեամբ, դու ասասցես ցնա՝ թէ ես հանդերձ պահօքս թշնամի ունէի և հաշտ եղէ ընդ նմա. սովորեալ էի 'ի բամբասանս, և զայն խլեցի 'ի մտացս և լուծի զչար սովորութիւնն։ Այս է պահք ճշմարիտ։ Վաճառականին ոչ ինչ յօգուտ է երկարութիւն ճանապարհին ծովուն, այլ եթէ հանդերձ բեռամբ իցէ և բազում ճոխութեամբ. և մեզ ոչ ինչ յօգուտ են պահք, եթէ 'ի կերակրոց միայն պահեմք զպահսն, և յայլոց ուղղութեանց պակաս գտանիցիմք և ելանիցեմք ունայն անտի և տարապարտուց։

Վասնզի անցանեն աւուրք քառասնորդացս, անցանէ և պահելն. եթէ յամենայն յանցանաց 'ի բաց կացեալ եմք, թէ և պահքն գնայ, այլ ուղղութիւնն այն մնայ, և հանապազ այն լինի մեզ յօգուտ և 'ի փրկութիւն, և նախ քան զարքայութիւն երկնից ոչ ինչ սակաւ սա-

Digitized by Google

տէն տայ մեզ զհատուցումն։ Որպէս որ կայ չարեօք, նախ քան զգեհենն տանջի 'ի խղճէ մտաց իւրոց, այսպէս որ մեծանայ ուղղութեամբ, նախ քան զպսակն 'ի մեծի ուրախութեան վայելէ և ցնծայ քաղցր յուսովն։ Սմա որոյ և Քրիստոս ասէր. "Դարձեալ գամ առ ձեզ, և ուրախ լինիցին սիրտք ձեր, և զուրախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ 'ի ձէնջ"։

Եթէ ունիցիս ինչս, բազումք են որ կարող են զխնդութիւնն քո առնուլ զոր 'ի մեծութենէն ընկալեալ ես, և գողք փորեն և ական հատանեն, և ծառայ հաւատարիմ առնու և գնայ զոր 'ի նայն վստահացեալ ես, և թագաւոր հրապարակէ և բռնաւորք, և մարդ նախանձոտ ջանայ։ Իսկ եթէ զօրութիւն ունիս, բազումք կարող են առնուլ զոր 'ի յայսմանէ քեզ ուրախութիւն։ Յորժամ քակին յառաջարկութիւնք, քակին և որ անտի փափկութիւնք են. և յայնմ իսկզբանէ բազում դժուարութեամբ հասանէ յընչիցն անկանել, և այսպիսի հոգ հատանէ զքոյին յորդորումն։ Եթէ մարմնոյ ունիս զօրութիւն, գայ հիւանդութիւն և լուծանէ յայնմ ուրախութենէ։ Սեղան եթէ ունիս բազմակատար առ 'ի վայելել, հասանէ երեկոյն և եղծանին խնդութիւնք բարութեանց։ Ուրաքանչիւր կենցաղական իրացս փորձութիւն հասանէ, և մինն միւսոյն ոչ զօրէ շնորհել զխափանագումն։

Իսկ բարեպաշտութիւնն և ըստ հոգւոյ առաքինութիւնն հակառակ է այսմ ամենայնի։ Ողորմութիւնս եթէ առնիցէ ոք, ոչ ոք է որ կարիցէ բառնալ զայս ուղղութիւն. եթէ թագաւորք եթէ զօրապետք բիւր մեքենայս յարուցանեն և 'ի խորհուրդս խորհին, զոր 'ի յերկինս եդեալ են ստացուածք՝ առնուլ ոչ կարեն, այլ մնացէ հանապազորդ ուրախութիւնն։ "Սփռեաց, ասէ, և ետ աղքատաց. արդարութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից"։ Եւ մանաւանդ յիրաւի իսկ. զի որ յերկինս շտեմարանէ, գող ոչ գողանայ, աւազակ ոչ յափշտակէ, ցեց ոչ ուտէ և ուտիճ ոչ ապականէ։ Աղօթք եթէ աղօթեսցես հանապազ և հսկես, պտուղ զոր յայսմանէ է՝ ոչ ոք է որ կարող է գողանալ. քանզի պտուղս այս յերկինս արմատացեալ է, յամենայն հանմանէ զատեալ է և մնայ անձեռնարկելի։ Եւ եթէ

չարեաց բարի առնես, յորժամ չար լռիցես՝ իմաստասիրեսցիս, եթէ բամբասեսցիս՝ օրհնեսցես զբամբասողն, այս ուղղութիւն յաւէտ մնայ, և յայսմ ուրախութեննէս ոչ ոք առնուլ կարէ. այլ որչափ և յիշեսցես զայս, ցնծաս և ուրախ լինիս ես բազում պատղաբերես զփափագումն։ Նայեաս և փախչել յերդմանէ, թէ ուղղիցէք և հաւան զլեզուս ձեր առնիցէք 'ի բաց կալ 'ի կործանիչ սովորութենէս յայսմանէ, ուղղութիւնս այս սակաւժամանակեան է, իսկ ուրախութիւն ուղղութեանն միշտ և անպակասելի։

Պարտ էր ձեզ այսուհետև այլոց վարդապետ լինել և առաջնորդ սիրելեաց, դրացեաց, ծառայից և ընկերաց, զմանկունս սնոտիայս առնուլ խրատել և ուսուցանել։ Արդ եթէ ոք խոստանայր տալ քեզ տաղանդ մի ոսկւոյ ամենայն աւուր վասն այս մի ուղղութեանս, ո՞չ զամենայն ջանս ջանայիր և փութով հաւանէիր։ Իսկ այժմ ոչ եթէ մի տաղանդ ոսկւոյ, ոչ տասն, ոչ քսան, կամ հարիւր, կամ հազար, նա և ոչ զբոլոր աշխարհս տայ այսմ 'ի հատուցումն, այլ որ քան զամենայն աշխարհ մեծ է զայն տացէ քեզ՝ զարքայութիւնն երկնից. և[1] ոչ զայդ միայն, այլ և այլ ինչ, որպէս ասէն. "Որ հանէ զպատուականն յանարգէն, բերան իմ կոչեսցի,,։ Զինչ լինիցի այսմ հօգւոյն բան և զգուշալի և պատուական։ Որում պատասխանւոյ և թողութեան գտանիցք արժանի, որ զկնի այսմ խոստմանս պղերգանամք 'ի փրկութէ դրացեաց մերոց։ Նաիսկ եթէ 'ի խորխորատ տեսանէիր անկեալ զոք կոյր, ձեռն տայիր և ակն ունէիր, և թէ արժան է՝ ոչ անտես առնել զկորուսեալն. տեսանես յամենայն ժամ կախեալ զամենայն եղբարս քո զչար սովորութենէ երդմանն, և բանիւ միով ո՞չ համարձակիս խրատել։ Այլ ասացի, ասէ, մի անգամ և ոչ լուաւ. ասասցես երկրորդ անգամ և երրորդ և այնչափ մինչև 'ի հաւանութիւն ածցես։ Զօրհանապազ խրատէ զմեզ ա̃ծ և ոչ լսեմք, բայց նա ոչ լռէ յասելոյ և ոչ դադարէ. նմանեաց և դու այս գթութեան առ ընկեր քո։ Աստ այսօրիկ առ միմեանս կամք և 'ի միում քաղաքի բնակեմք և յեկեղե-

1 Պակասէր յօր. և ոչ զայդ միայն, այլ և այլ ինչ. յաւելաւ 'ի յաւելէն։

Digitized by Google

ցիս ժողովլինք, և զմիմեանց ծանրութիւն բարձցուք և զմիմեանց զյանցանս ուղղեսցուք ։ Այլ որպէս յարուեստանոցս որ բնակեալ են մարդիկ՝ յայլ և այլ տեղիս երթիցեն, և զամենայն առ հասարակ զոր և վաստակեն՝ 'ի մի ժողովեն, այսպէս և մեք արասցուք. զոր իւրաքանչիւր ոք կարիցէ 'ի բարիս ածել զդրացի կամ զընկեր իւր, մի ծուլասցի և մի դժուարեսցի. այլ եղիցի վաճառական իմաստուն, և զփոխարէնս զայսպիսի հոգևորական իրի որ առ հասարակ է՝ յամենեցունց 'ի միասին հաւաքեսցէ, որով բազում կարասցիք ստանալ մեծութիւն և յոլով գանձս ամբարիցէք յերկինս յանձինս. և առհասարակ արժանի լիցուք արքայութեան երկնից 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որ է օրհնեալ յաւիտեան ։

## ՃԱՌ ԵՕԹՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

.

*Վասն առաքելոյ իշխանացն 'ի Թագաւորէն Թէոդոսէ՝ Եղեբիքոս զօրավար և Կեսարիոն մագիստրիոն քննել զյանցանս քաղաքին վասն պատկերին զարձուցանելոյ ։*

Ի ժամանակի պաշտեցաք ամենեքեան առ հասարակ, «Օրհնեալ ես տէր ած Իսրայէլի, որ առնես զսքանչելիս միայն» ։ Այլ զի մեծաքանչ զարմանալիք եղեն յոյժ, զի մինչ գործս եղև. զքաղաքս բոլորովին և զայսչափ ժողովուրդ ընկղմել կամէր և անյայտ առնել և իսպառ կորուսանել, յանկարծակի 'ի մի պահ ժամանակի և յական թօթափել զնաւակոծութիւնս զայս փոխեաց ։ Արդ գոհասցուք զնմ ոչ միայն զի զկարծիս մահու ելոյծ, այլ զի և տեղի ետ լինել. ոչ զի զնաւակոծութիւնս փոխեաց միայն, այլ զի 'ի նոյն ժամու և զկնի կախել մեզ զվտանգից թոյլ ետ ։ Այսպէս և Պաւղոս հրամայեաց յամենայնի գոհանալ ։ Արդ յորժամ ասէ՝ թէ «Յամենայնի գոհացարուք», զայս ասէ. ոչ եթէ միայն 'ի յարձակմանէ վտանգեալ գոհանալ, այլ և 'ի ժամանակի վտանգից ։ «Որ սիրեն, ասէ, զած, յամենայնի գործակից լինին 'ի բարիս» ։ Գոհասցուք

զնոյն վասն աղաւթելոյ 'ի փորձութենէս զմեզ, և զփորձութիւնն մի երբեք մտասցուք. աղօթիւք խնդրեսցուք ունել 'ի մտի զոր աղաչեմք բազում պարկեշտութեամբ: Յորժամ զառաջինն դժուարութիւն չարեացս այսորիկ եհաս հրացեալ, ասէի՝ թէ ոչ ժամանակ վարդապետութեան, այլ աղօթից է ժամանակ. զնոյն և այժմ յորժամ չէջաւ, ասեմ՝ թէ այժմ է ժամանակ աղօթից քան յառաջագոյն, և այժմ է ժամանակ արտասուելոյ և զղջանալոյ և բազում ջանից և զգուշութե: Յայնժամ որպէս է բնութիւն տրտմութեանց՝ ակամայ զմեզ պակուցանէր և զգաստ կացմէր և յառաւելագոյն պարկեշտութիւն ածէր. իսկ այժմ յամբառնալ վտանգին և 'ի բաց գնալոյ ամպոյս պարտ է զի մի այլ 'ի տխրութեան իրս խոնարհեսցուք, զի մի և վասն մեր ասասցի՝ թէ "Յորժամ սպանանէր զնոսա, խնդրէին զնա, դառնային և առաւօտ առնէին առ ած": Վասն որոյ և Մովսէս խրատելով զեբրայեցիսն ասէր. "Յորժամ ուտիցես և յագեսցիս, զգոյշ լեր գուցէ մոռանայցես զտէր ած քո":

Այժմ բարեմտութիւն ձեր երևելի լիցի, եթէ մինայք 'ի նոյն պարկեշտութիւն: Յայնժամ 'ի բազում երկիւղէն և 'ի ծածկել ահէ վտանգից զջանս ձեր համարէին. իսկ այժմ մաքրապէս հաւատան, եթէ մնայք առ 'ի պահել զնոյն ջանս: Քանզի և տղայ որ եթէ 'ի մանկականն ուսմանէ յահարկու լինիցի, զգաստ և հանդարտ կեայ, ոչ ինչ զարմանալի է՝ զի յերկիւղէ դաստիարակին համարին ամենեքեան զգաստութի մանկանն. իսկ յորժամ 'ի բաց լինիցի յայնմ հարկէ և մնայ 'ի նմին պարկեշտութե, յայնժամ առաջին հաստակին նորա համարին ամենեքեան զգաստութիւն: Այնպէս և մեք արասցուք, մնալով 'ի նոյն պարկեշտութե, զի և զնախկին ջանս մեր բազում գովութեամբ առ 'ի յոյժ պտղաբերեմք: Նիւր վտանգից ակն ունէաք, բոլոր գոյից մերոց յափշտակութեան, այլման բնակարանաց մերոց հանդերձ բնակչօք, և զքաղաքս բառնալ 'ի միջոյ արարծոց, և զմնացորդս սորա կորուսանել զամենեսեան, զի եղեցի աշխարհիս ապօրագիր ակօսաբեկ առ 'ի վարատակել, այսմ տապաստելով ընդունել զնա: Այլ այս ամենայն 'ի յակընկալութենէ վերացաւ և 'ի գործ ոչ եկն: Բայց ոչ միայն

Digitized by Google

այս է սքանչելի զի ելոյծ զայսչափ նեղութիւնս, այլ զի մեծապէս բարի գործեաց 'ի մեզ և զքաղաքս մեր զարդարեաց, և հանդերձ այսու փորձութեամբս հանդիսաւոր գործեաց, և թէ զիարդ՝ ես ասացից։

Յորժամ առաքեցան 'ի թագաւորէն առնել քննութիւն եղելոցն հանդէպ այնմ անհեղական դատաստանացն, յորժամ զամենայն զպարտաւորսն և զհամարձակողսն կոչէին, և էր ամենեցուն մահու ունել կասկած, յայնժամ միայնակեացք որ 'ի գլուխս լերանց էին բնակեալ այսչափ դարուք ամաց ցուցանելով զիմաստասիրութիւն իւրեանց՝ արգելեալք 'ի խուցս իւրեանց, ոչ ուրուք աղաչելով և ոչ խորհրդակցեալք յումեքէ, յորժամ զայնչափ մէգս տեսին եկեալ 'ի վերայ քաղաքիս մերում, թողին զկայարկս իւրեանց և զայրս յամենայն կողմանց, և որպէս յերկնից հրեշտակ իջեալ կացին առ մեզ։ Այլ էր տեսանել յայնժամ զքաղաքս մեր յարկք երկնից ամենայն ուրեք երևեալ գունդ առ գունդ ժողով սրբոցն այնոցիկ, և 'ի տեսութենէն միայն մխիթարէին որք 'ի նեղութիւնսն էին։ Ո՞վ էր որ տեսանէր զնոսա և ոչ ծաղր առնէր զմահ և անտես առնէր զկեանս։

Այլ ոչ միայն այս էր սքանչելի, այլ և առ իշխանսն նոցա գոլով՝ համարձակութեամբ յանդիմանէին վասն պարտապանացն, և ամենեքեան պատրաստեցան 'ի հեղուլ զարիւնս իւրեանց և զգլուխս իւրեանց նախ 'ի բաց դնել խորհեցան, մինչ զի զգերեալսն ակն ունելով յափրշտակել 'ի նոցա վտանգիցն. և ոչ կամեցան նախ 'ի բաց կալ, մինչև դատապարտիչքն խնայեսցեն 'ի ժողովուրդսն, կամ առ հասարակ ընդ դատապարտեալսն առ թագաւորն զնոսա առաքեսցեն։ Աստուածասիրութիւն է, ասեն, առ նմա որ ունի զտիեզերս հաւատարիմ բարեպաշտութեամբ և կեայ ընդ մեզ. մեք իսկ զնա զատեմք յայսմանէ, և ձեզ ոչ թողացուցանեմք հեղուլ զարիւն կամ սրով զգլուխ հատանել։ Ապա եթէ ոչ յանձն առնուցուք զայս, մեք ամենեքեան ընդ նոսա մեռանիմք։ Նոցա իսկ մեծ էր համարձակութիւնն, խոստովանիմք և մեք, այլ ոչ 'ի վեր անցանէ եղեալ անօրէնութիւնս թագաւորին մարդասիրութեանն։ Ապացեալ մի ոմն 'ի նոցանէ բան լցեալ բազում իմաստասիրութեամբ. պատկերք, ասէ, անդրիանտացն որ կործ-

ծանեցան, յորեան կանխաւ և առէին զկերպարանս իւ-
րեանց, և եղելոցս այսմ եղև փութապէս աղդութիւն. իսկ եթէ զնոյ պատկերսն սպանանէք, զիա՞րդ դարձեալ կարող լինիք կոչել զմեղաւորսն 'ի դարձ կամ յարուցանել զկորուսեալսն և ածել զոգիս 'ի մարմինս իւրեանց զոր աւանդէք հակառակ լեալ նոյ։ Նաղում ինչ և վասն դատաստանացն տուացին նոքա։ Ո՞վ էր որ ոչ զարհուրէր կամ ո՞վ էր որ ոչ սքանչանայր ընդ իմաստութիւն տրանցն այնոցիկ։

Այլ և մայր միոյ 'ի պատանեացն մերկացուցեալ զգլուխ իւր զալիսն ձողէր, և զորոյ հանդերձեալ էր դատել՝ կալեալ զերասանակ երիվարին ընթանայր, և մտրակաւոր երիվարն և աղէտ զաւակին՝ մանուկ արիական տարեալ զկինն ծերացեալ, և ոչ եթէ մանուկ միայն, այլ և ընթացակից երիվարաց, կալեալ զերասանակն ընթանայր ընդ մէջ փողոցին և այնպէս երթայր 'ի դատարանն, և զարհուրեցան ամենեքեան և սքանչացան ընդ գութ սիրոյ այնմ կնոջ։ Որդի նա եթէ մեռաւ վասն որդւոյ իւրոյ, չէր սքանչելի, զի մեծ էր բռնութիւն բնութեանն, և անյաղթելի էր կարիք նեղութեանն։ Իսկ միայնակեացքն այնոքիկ զոր ոչ էին ծնեալ, մանաւանդ զոր ոչ էին երբէք տեսեալ և ոչ կեցեալ ընդ նոսա, զոր միայն 'ի ցնորիցն ծանեան, և այնպէս սիրէին՝ որ թէ ունէին իւրաքանչիւր բիւր հոգի, հանէին զամենայն վասն փրկութեան ժողովրդեանն։

Ու մի դու զայս ասիցես ինձ՝ եթէ ոչ սպանան և ոչ հեղին զարիւնս իւրեանց. այլ զի պարապիւք առ դատապարտողս երևեցան համարձակութեամբ, և այսպիսի կամօք 'ի լերանց 'ի դատաստանս ընթանային։ Զի թէ ոչ յառաջագոյն զանձինս իւրեանց պատրաստեալ էին 'ի սպանութիւն, ոչ էին այնպէս զօրացեալ առ դատապարտողսն և կամ այնպիսի ցուցեալ նոցա հոգի մեծագոյն. և ահա աւուրս երկուս առ դրունս դատաւորին նստեալ կային, և զոր հանդերձեալ էին տանել 'ի տանջանսն՝ յափշտակէին 'ի զինուորացն։

Ո՞ր էին յայնժամ ժողովուրդն բազում որք 'ի փողոցս ձեմէին յաճախեալք 'ի յափշտակութիւն չարեաց. զի քան զշունս առ սեղան թշուառականք երևեցան. վասն որովայնի զայն ամենայն առնէին։ Ամենեքեան

յայնժամ թողին զքաղաքս և փախուցեալք 'ի յայրս թագչէին, և ոչ ոք մնայր 'ի քաղաքին, միայն նոքա որք գործովք ճշմարտութեան զիմաստասիրութիւն ցուցանէին, և որպէս թէ ոչ և մի վտանգ քաղաքին եկեալ էր՝ այնպէս աներկիւղ 'ի հրապարակս երևեցան: Որք 'ի քաղաքս բնակեալ էին, 'ի լերինս և յանապատս փախեցան. իսկ անապատաւորքն 'ի քաղաքս մտեալ՝ ցուցանելով 'ի գործոց իւրեանց զոր յառաջին աւուրսն ոչ դադարէին յասելոյ՝ եթէ որ առաքինութեամբ կեայ, և ոչ 'ի հուր հնոցի երբէք մեղանչել կարէ: Այնչափ է հոգևոր իմաստասիրութիւն, որ քան զամենայն բարձրագոյն լինի և քաղցրութեան և տրտմականաց ամենայնի. ոչ յայնմանէ թուլանայ և ոչ 'ի միւսմէն ցամաքի և նուաղի, այլ մնայ հանապազ և կեայ զիւր զօրութիւն ցուցանելով...:

Յայսմանէ մի երբէք զեղծցուք, սիրելիք. այլ մնալով 'ի նոյն ակն կալցուք քաղցր յուսոյն...: Զայս և ընդ հելլենացիսն ասասցուք յորժամ համարձակին վասն իմաստասիրացն ասել մեզ: Յայսմանէ յայտնեալ է բարիոք, զի յառաջագոյն այն պատրանք էր որ 'ի նոցանէն. և 'ի սմին իրաց յայտնի է, զի անդստին յառաջնմէ ճշմարիտ էր որ 'ի մէնջ, զոր վասն Յովհաննու և Պաւղոսի և Պետրոսի և այլոցն ամենեցուն: Որք զնոցա բարեպաշտութիւնն ընկալան, և զնոցին համարձակութիւնն ցուցանէին. և զի 'ի նոցին յօրէնս շրջեցան, վասն որոյ և նոցա առաքինութեան ցանկացան: Իսկ վասն ցուցանելոյ մեզ զառաքելական առաքինութիւնն, չէ պիտոյ մեզ գիրք, զի գործք նոցա գոչեն ամենայն ուրեք, և աշակերտացն զվարդապետսն ցուցանելով. չեն[1] մեզ պէտք բանից զհեթանոսացն ցուցանելով շաղփաղփութիւն և զոր 'ի նոցանէ յիմար իմաստասիրութիւն և զնեղահոգի նեղասրտութիւնն. գործք նոցա գոչեն և նոցա թէ որպիսի յառաջագոյն ամենայն ինչ որ 'ի նոցանէ էր՝ բարբանջք և ստուերք և պատրանք էին:

Արդ ոչ եթէ միայնակեացք միայն, այլ և քահանայք զնոյն բարձրագահութիւն ցուցանելով բաշխէին զփրկութիւնն մեր: Ոմն 'ի զօրապետս եղեալ զանձն[2],

1 Պակասէր յօրինակին չէն... ցուցանելով. յաւելաք 'ի յունէն:

2 Յոյն. փոխանակ բառիցդ զանձն, զամենայն գրեալ էր զփրկենայն:

զամենայն երկրորդ դնելով 'ի սէր ձեր, և նա ինքն պատրաստեալ է մեռանել եթէ ոչ 'ի հաւանութիւն ածցէ զԹագաւորն. և այսպիսի աստ մնացին, և որքա մերձակեցացն ցուցանելով 'ի ձեռն սիրոյ դատաւորս զնոսա ունէին, ոչ յօժարեցուցանել գնալ նախ մինչև դատաւորացն խոստանալ 'ի կատարումն ածել զդատն. և յորժամ տեսանէին զնոսա, հայելով 'ի նոսա սուրբք բազում համարձակութեամբ, և նոքա զիջեալ երևէին։ Վասնզի յորժամ տեսանէին զնոսա յանցս, մերձենային յառս և 'ի ծունր և զձեռան համբուրէին, և իւրաքանչիւր զառաքինութեանն առաւելութիւն ցուցանէին՝ այլ և զաղատութիւն և զհանդարտութիւն։ Իսկ զի չէր խոզախելն նոցա համարձակութիւն, յայնմանէ զի 'ի ծունր իջեալ մերձենային յառս և համբուրէին զձեռս, մանաւանդ ցուցանէին կանխաւ զի ոչ էին այն բանք փաղաքշանաց և ոչ ծառայական ինչ և ոչ առանց ազատութե բնութե նոցա եղև. քանզի իրացն հաւելոց էր վկայել նոցա համարձակութեանն։

Եւ եթէ զայս միայն 'ի փորձութենէ պտղաբերեցաք զաւրիս, այլ և բազում զգաստութիւն բազում հանդարտութիւն, և վասն խուն եղև քաղաքս մեր։ Եւ այպէս զոր զարդարէր ոսկեղէն պատկերք անդրիանսք եթէ կանգնէր ոք 'ի մէջ հրապարակացս, որպէս է այժմ պայծառ և երևելի. նա զի և զգեղեցկութիւն առաքինութեանս պատկերք անդրիանտացն շնորհեցին, և ա զիւր ձոխութիւն եցոյց։

Այո, ասեն, բայց որ 'ի թագաւորէն՝ տրտմութիւն էր և սաստիկ պատուհաս. սակայն և այն ոչ եղև ծանր բեռն, այլ մատոյց մեզ շահս բազումս։ Մինչ դժուարին եղև, ասա ինձ, զի զկրպակսն արգել, և զասպարէզս կառավարացն անանցանելի գործեաց, զդուռ աղբիւրն արգե՞լ և եխեց, զի մի երբէք բացցի։ Աստի՛ն արմատ ամենայն չարեաց բխեաց քաղաքին, աստի և զսովորութիւն դարձուցին, որք զձայնս իւրեանց՝ կաքաւողացն ծախէին, և երեք դանգիւք մատնէին զփրկութիւնս իւրեանց։ Այս տրտմութեա՞ն իցէ, ով սիրելի, ասա ինձ։ Վասն այսորիկ ուրախանալ պարտ էր և ցնծալ և շնորհս խոստանալ թագաւորին, զի տանջանք նորա ուղղութիւն եղև և խրատ նորա մանկածո-

ղալ[1] եղև և բարկութիւն նորա վարդապետութիւն : Այլ բաղանիքք փակեցան մեզ . նա և այս չէ անպատճառ . զի որք լոյծ և թուլացեալ և եղծեալ կեանս կային, ակամայ յիմաստութիւն եկեսցեն :

Այլ զի քաղաքիս մեր իշխանութիւն բարձաւ, զի ոչ առ այլս կոչել զսա մայր քաղաքաց . . . : Նա այս տըխրիցես արդեօք . իմա եթէ զինչ էր իշխանութիւն քաղաքիս, և յայնժամ ստոյգ գտանիցես, եթէ նոքա որ բնակեալ էին 'ի քաղաքիս՝ ոչ էին մատնեալ, չէր ոք կարող բառնալ զիշխանութիւն քաղաքիս : Ոչ թէ վասն այնորիկ կոչէր քաղաքս մեր մայր քաղաքաց, զի ունէր ստացուածս և մեծութիւնս և գեղեցկութիւնս, և ոչ զի ունի սիւնս և սրահակս և գնացս բազմաց . զի որք բնակեալ էին 'ի սմա՝ բարեպաշտութեամբ կային, այս է իշխանութիւն և զարդ և պահապան քաղաքիս . և եթէ այս մեզ ոչ լինի, քան զամենայն քաղաքս նուաստ գտանի, թէ և բիւրապատիկ պատուով վայելէր 'ի թագաւորէն :

Խորհիս ուսանել զքաղաքիս քո զիշխանութիւն . կամիս տեսանել զհայրենիս սորա . ես ստուգութեամբ ասացից զայս, որ ոչ եթէ ուսցիս միայն, այլ և ցանկացիս նմին : Որինչ ևս իցէ իշխանութիւն մերում քաղաքիս . «Նախ յԱնտիոք երևեցաւ կոչելով զաշակերտեալսն քրիստոնեայս» . զայս ոչ ունէին որ յամենայն տիեզերս քաղաք էին, նա և ոչ Հռոմելան քաղաք . վասն որոյ 'ի վերայ տիեզերաց սա կարողացաւ իբրև զհայելի երևեալ վասն սիրոյն Քրիստոսի, վասն համարձակութեան ընդդէմ կռապաշտութեանցն, վասն այսպիսի քաջութեան :

Խորհիս և այլուստ լուր լինել զիշխանութիւն քաղաքիս և զգովաբանութիւն : Սով երբեմն հանդերձեցաւ լինել, և որ բնակեալ էին յԱնտիոք, ժամանեցին որպէս կարողացան վաճառանմամն առաքել առ սուրբսն որ բնակեալ էին յԵրուսաղէմ : Նա և երկրորդ իշխանութիւն 'ի ժամանակի սովոյ զգաստանալ . զի ոչ պակոյց զնոսա ժամանակն, և ոչ ծուլացեալս արար ակընկալութիւն ցնորիցն . այլ յորժամ ամենեքեան զայ-

1 Իմա՝ մանկածութիւն, դաստիարակութիւն :

լոց ժողովէին, յայնժամ նոքա զխուրեանց բաշխէին, ոչ թէ որոց մերձն էին, այլ և որոց հեռաւորս բնակէին։ Տեսե՞ր հաւատս առ ած և սէր առ եղբարս և զգացիս։

Խորհեիս և այլ իշխանութիւն զմերոյ քաղաքիս։ Եկին ոմանք 'ի Հրէաստանէ յԱնտիոք թիւրել զուղիղ քարոզն և հրէական խտիրս ածել 'ի մէջ։ Նոքա ոչ համբերեցին լռութեամբ ստութեան նոցա. այլ եկեալք և ժողովեալք յեկեղեցին՝ զՊաւղոս և զԲառնաբաս առաքեցին յԵրուսաղէմ և պատրաստեցին զառաքելոցն գրել ուղիղ և մաքուր պատուիրանս ընդդէմ հրէական խտրութեանցն, և առաքել ընդ ամենայն կողմանս աշխարհիս։ Այս էր քաղաքիս իշխանութիւն, այս աթոռ, այս մայր քաղաքաց զոր արարեալ ոչ եթէ յերկրի, այլ և յերկինս....։

Արդ որ իմն է քաղաք, եթէ ոչ ունիցի քաղաքացիս ածասէրս, քան զամենայն քաղաքս նուաղագոյն գտանի և քան զայլս անպատիւ։ Այս զինչ ասեմ վասն քաղաքի. այլ զի իմասցիս թէ առաքինութիւն միայն զարդարէ զբնակիչս, ասացից որ քան զամենայն քաղաքս պարկեշտագոյն էր՝ զտաճարն այ որ 'ի մէջ Երուսաղէմի կանգնեցաւ, զոր ցուցանել ձեզ փորձիմ։ Այժմ տաճարի յաճախ պատարագ և նուէրք և պաշտամունք և աղօթք էին, այժմ ո՞ւր են սրբութիւնք սրբոցն և քերովբէքն և կտակարանքն և սափորն ոսկեղէն և մեծ նշան խնամոցն այ. ուստի և օծմունք 'ի վերուստ առեալ բերիւր և յայտնութիւնք, ուր և մարգարէքն սովորական բանիւ մարգարէանային, ուր ոչ մարդկային արուեստ՝ այլ այ իմաստութիւնն սահման գործոյն եղև, ուր պարիսպքն ոսկեհուռն փայլատակէին, և բովանդակն առաւել քան զառաւել և նիւթքն բազմակատար և արուեստքն ստոյգ ճշգրիտ՝ միայն զոր յայնմ ժամանակի այսպիսի ցուցանելով տաճար յերկրի։ Մանաւանդ ոչ եթէ միայն ստոյգ արուեստիւ, այլ և իմաստութիւնն այ յայն շինուածս մերձեցաւ. զի ոչ յանձնէ իւրմէ, այլ յայ զամենայն իմացաւ Սողոմոն, և զդրոշմն նկարագիր գործոյն զրոյն յերկնից իջեալ՝ այսպէս նշանակեաց զտեղին և կանգնեաց զտաճարն։ Այլ սակայն սուրբս այս գեղեցիկ և սքանչելի և պայծառագոյն տապականեցաւ և այսպէս եղև անպատիւ, արհամարհե-

Digitized by Google

ցաւ և եղև պիղծ, զի նախ քան զգերութիւնն այրս ա-
ւազակաց կոչէր, և զկնի այնր այրս խողից, և յետ այ-
նորիկ 'ի բարբարոսական և յանօրէնց ձեռս մատնեցաւ։

Նամիս և վասն քաղաքաց այսպէս ուսանել։ Ո՛ր ինչ
քան զսոդոմայեցւոց քաղաքն պայծառագոյն. տունք գե-
ղեցիկ և շինուածք պայծառք, պարիսպք վայելուչք և
երկիր պարարտ և բարի և նման դրախտին այ, սակայն
գերեցան. իսկ խուղն Աբրահամու փոքր և գծուծ, և
ոչ ունէր պահապանս և ոչ մի։ Յորժամ եղև պատե-
րազմն բարբարոսական, զքաղաքն պարսպեալ որ բա-
զում ունէր ամրութիւնս՝ աւերեցին և ծառայեցուցին
բարբարոսքն, և զբնակիչսն գերելով գնացին. իսկ զա-
նապատ քաղաքացին Աբրահամ ոչ կարացին առնել
այնպէս։ Եւ այս մանաւանդ յիրաւի. զի քան զբազ-
մութիւն և քան զամրութիւն պարսպաց բազում և ա-
ռաւել ունէր զօրութիւն բարեպաշտութիւնն։ Եթէ
քրիստոնեայ ես, քաղաք ոչ ունիս յերկրի, այլ յեր-
կինս։ Իսկ քաղաքին մերում արուեստաւոր և հրաշա-
գործող ած է. և եթէ զամենայն երկիր հասանիցէ մեզ
ըմբռնել, սակայն օտար և նժդեհ և անցաւոր եմք ա-
մենեքեան. քանզի յերկինս գրեալ եմք, անդ քաղա-
քանամք. ապա մի զփոքունս զտղայական խաղալիկս իբր
զմեծ ինչ 'ի վեր անցեալ տեսանեմք։

Արդ ոչ եթէ մեծութիւն քաղաքի, այլ հոգի առա-
քինի է զարդ և ամրութիւն։ Ապա եթէ զիշխանութի
կարծես եթէ իցէ քաղաքիս, իմա եթէ որչափ շնացողք,
որչափ ախտաժէտք մեղօք և ապականեալ բիւր չարու-
թեամբ հաղորդեալ են քեզ այսմ իշխանութեանս, և
արհամարհեալք յայսմ պատուոյ։ Այլ ոչ նա այնպէս.
քանզի անհնար է նմա հաղորդել, ոչ ցուցանելով զա-
մենայն առաքինութիւնս։ Մի՛ արդեօք անգէտ լիցուք
բարեաց. յայնժամ տխրեսցուք, յորժամ զիշխանու-
թիւն մերոց հոգւոցս առցէ ոք, յորժամ մեղանչեմք,
յորժամ ընդ ամենեցունց ածն մարտնչիմք. իսկ այս որ
այժմս եղև, ոչ միայն թէ վնաս չէ քաղաքիս, այլ և օ-
գուտ մեծ 'ի զուարթանալն մերում. քանզի յազատ և
'ի բարեգործ և 'ի զգաստ կին նմանեցաւ քաղաքս մեր.
երկիւղն զսա հանդարտ և պարկեշտ արար, և ազատե-
ցաւ 'ի գարշելեացն յայնցանէ որ համարձակեցան յե-
ղեալ գործն։

Մ՛ի արգելուք կանանցաբար ողբս ողբասցուք. քանզի լուայ 'ի բազմաց 'ի մէջ փողոցիս զի ասէին՝ վայ քեզ, Ա՛նտիոք, թէ զինչ եղեր կամ որպէս անարգեցար: Ես զայս լուեալ ծաղր արարի զողբայաբարս խօսսն: Զի այժմ ոչ է պարտ զայս ասել, այլ յորժամ տեսանիցես 'ի կաքաւս, յարբեցութիւնս, յերգս գիւականս, զայթակղել յերդումն, յերդմնազանցութիւնս և 'ի ստութիւնս, յայնժամ ասիցես զայսպիսի բանս՝ վայ քեզ քաղաք թէ զինչ եղեր: Իսկ եթէ տեսանիցես զհրապարակս նուազեալ 'ի մարդկանէ և սակաւս ունել մարդիկ, և այնք համեստք և զգաստք և չափաւորք իցեն, երանեա զքաղաքն զայն: Զի ոչ նմա վնաս իցեն մարդկանն պակասութիւնն, յորժամ առաքինութիւն 'ի նոսա իցէ. քանզի և բազմութիւնն ոչ ինչ օգնէ երբէք, յորժամ 'ի չարութիւնս իցեն: "Եթէ իցէ, ասէ, թիւ որդւոցն Իսրայէլի իբրև զաւազ ծովու, սակաւ ինչ մնացորդք մնասցեն": Ոչ կարիցեն, ասէ, բազմութիւնքն հաշտ առնել զԱծ: Այսպէս և Քրիստոս առնէր վատթարելով զքաղաքս ոչ վասն պակասութեան և ոչ զի ոչ էին մայր քաղաքաց. նա և զԵրուսաղէմ կանխաւ վատթարեալ ասէ. "Երուսաղէմ Երուսաղէմ, որ սպանանէր զմարգարէսն և քարկոծ առնէր զառաքեալսն առ նա":

Զինչ օգուտ բազմութիւն բերիցէ, ասա ինձ, եթէ 'ի չարիս ճգնիցին. այլ հակառակն վնաս մեծ յայնմանէ լինիցի: Այժմ իսկ զեղեալ չարիսս զինչ այլ գործեաց, եթէ ոչ դանդաղումն և յանդգնութիւն և չարեաց բնակչացս. միթէ իշխանութիւն օգտեաց քաղաքիս ինչ. միթէ շինուածք, զի մայր քաղաքաց էր: Արդ երկրաւոր թագաւորութեանս 'ի սմա մեղուցելոյ ոչ ոք ընդդէմ կարացեալ՝ այլ ամենայն բարձաւ, և ստաւել տեսանն հրեշտակաց առաջի ոչ կացցէ իշխանութիւն այս յաւուր յայնմիկ, թէ և մայր քաղաքաց է, շինուածս յարկս և սրահակս ունի ընդարձակագոյնս և այլս այսպիսի իշխանութիւնքս: Ես զինչ ասեմ յայսմ աւուր, զի և յանցաւոր ժամանակիս զինչ օգուտ կարաց լինել զի մայր քաղաքաց էր քաղաքս: Միթէ ոք ոչ բնութ̅ 'ի չարիս իցէ, յայսմ իշխանութենէ քաղաքիս ուղղիցի, կամ օգուտ ինչ և շահ յայսմ իշխանութենէ առ-

նուչոյ, կամ թէ հակառակ գասու տրտմութեան, կամ զհիւանդութիւնս խստութեան թուլացոյց, կամ զչարիս երբէք յոգւոց 'ի բաց արար։

Մ՚ի խաղասցուք, ով սիրելիք, և մի 'ի բազում կարծիս անկցուք, այլ ուսցուք թէ զինչ խնդրեսցի քաղաքիս իշխանութիւն, կամ թէ զինչ կարիցէ առնել զքաղաքս մայր քաղաքաց։ Զայս ասեմ զի ոչ ունիմ դարձեալ զկերպարանս քաղաքիս դարձուցանել։ Մարդասէր է թագաւորն և ա̃ծասէր։ Խորհրդակցելով ձեզ որ յորժամ տացի անդրէն, մի մեծամտիցէք վասն այնր, մի զփողոցս զարդարելով՝ զքաղաքս այնու պարկեշտացուցանել։ Այլ յորժամ կամիցիք գովաբանել զքաղաքս, մի ասիցէք զդաշնիդայ կամ զբազմութիւն ծառոց մայրից ճշղարենեաց, և ոչ զաղբիւրս ջուրց և ոչ զբազմութիւն բնակութեան մարդկան 'ի քաղաքիս, և ոչ զի մինչ 'ի խոր գիշերաց սովոր եմք շրջել 'ի մէջ փողոցաց առանց երկիւղի. այլ թէ ունիցիք ասել առաքինութիւնս, հանդարտութիւնս, ողորմութիւնս, հսկումն, աղօթս, զգաստութիւնս, իմաստասիրութիւն հոգւոյ։ Յայսմանէ զարդարի քաղաքս, որք քան զամենայն քաղաքս պայծառագոյն առնեն զայս քաղաքս. և դարձեալ քան զամենայն նուաղագոյն լինի, եթէ ըզսոսա քաղաքակիցս ոչ ունիցի։

Զայս ոչ միայն վասն քաղաքաց ասեմք, այլ և վասն մարդկան։ Եթէ տեսանիցես մարդ բազմամարմին և արիական՝ յառաջագէմ գոլով 'ի վեր անցանէ քան զբազում հասակին բարձրութեամբ, մի սքանչանար ընդ նա մինչև զոգիս նորա ուսանիցիս. մի յարտաքին գեղեցկութենէն, այլ 'ի ներքին մտաց գեղեցկութենէ երանես զամենեսեան։ Փոքր էր Դաւիթ և դոյզն մարմնով. բայց նուազն և փոքրն յամենայն սպառազինութենէ մերկացեալ զզօրս և զզօրավարս յայնժամ՝ միայն զմարմնեղէն բուրգն 'ի միոյ խոցմանէ սատակեաց. ոչ սուր արեաց և ոչ նետաձիգ եղև և ոչ սուսեր մերկացոյց, այլ փոքր քարիւ միով գործեաց զամենայն։ Վասն որոյ ոմն իմաստուն ասէ. "Մի գովեր զմարդ 'ի գեղեցկութիւն իւր, և մի այպն առնիցես զայր 'ի տեսութենէ իւրմէ։ Փոքր է 'ի թռչունս մեղու, այլ քաղցր է պտուղ նորա"։

Զայս և վասն քաղաքաց և արանց ասացուք, և առ

Իրեարս խնամատարեսցուք, և ա̃յ շնորհս կալցուք հանապազ վասն անցաւորիս և վասն հանդերձելոցն, և համօրէն աղաչեսցուք զնա ամենայն պաղատանօք, մինչ զի որ 'ի բանտի են բնակեալ և որք յօտարութիւն փոխադրեալք հանդերձեալք՝ մի՛ թողցէ զնոսա: Այլ մեք փութասցուք զի անդամք մեր են և ընդ մեզ նաւակոծեցան և ընդ մեզ ընդդէմ կացին ծփանաց. աղաչեսցուք զմարդասէրն ա̃ծ, զի ընդ մեզ վայելեսցեն 'ի խաղաղութեան: Ո՛ր ոք տեսցէ՝ զինչ կարիս է ինձ այսուհետև ազատել զոք 'ի վտանգից, եթէ այս ամն կորեաւ և միւսն ապականեցաւ: Ո՛ր բարկացուցանէք զա̃ծ վասն անտես անձանց զայս. այլ որպէս թէ մեք ինքն իցեմք 'ի վտանգս, այսպէս երկնեսցուք և այսպէս պաղատանօք զա̃ծ աղաչեսցուք կատարել 'ի մեզ զբանն Պաւղոսի. “Ընդ կապեալսն կապեցարուք, ընդ չարչարեալսն չարչարեցարուք”. և այնպիսի ասէ՝ որպէս թէ մեք եմք մարմնով. “Եւ լալ ընդ լացողսն”: Այս զմեզ և զնոսա օգտէ մեծապէս. ոչ այսպէս ինչ զա̃ծ ուրախ առնէ, որպէս բազում յօժարութեամբ սրտիւ վասն անդամոց մերոց, որպէս թէ մեք իսկ իցեմք և ոչ այլ ոք: Աղաչեսցուք զնա համօրէն և վասն մերձաւորիս և վասն հանդերձելոցն ևս առաւել, զի զմեզ յափշտակեսցէ յայնմ տանջանաց: Իսկ որ մերձս են որչափ և իցեն՝ զերծանելիք են և վճարել ունին, իսկ անդ տանջանք անմահ և անձողոպրելիք են: Այլ մեք զկնի մխիթարութեանս փութասցուք մի՛ երբէք անկանել 'ի մեղս յայսպիսիս, գիտելով զի այնուհետև թողութեան հասանել ոչ կարեմք:

Արդ հասարակ ամենեքեան անկցուք առաջի ա̃յ և 'ի սուրբ տանս յորում եմք ժողովեալք՝ ասասցուք. որդարութեամբ և յիրաւի ածեր զայս 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց. և զամենայն զոր արարեր, արդա՛ր դատաստանաւ արարեր. և մեղք մեր յարեան 'ի վերայ մեր, արա զմեզ ըստ անուան քում. և մի՛ տալ թոյլ երբէք առնուլ զփորձ այսպիսի նեղութեան. “Ո՛չ տար զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա 'ի չարէն”. զի քո է արքայութիւն զօրութիւն և փառք ընդ Հօր և ամենասուրբ Հոգւոյդ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՃԱՌ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Վասն յառաջնաստացեալ վտանգիցն. և վասն պահոց. և 'ի բանն առաքելոյ «Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ»:

Ո բազումս տեսի ուրախացեալս և ընդ միմեանս աւետելով՝ յաղթեցաք անցաք զհասարակ պահոցս: Որք զայսպիսիս աղաչեմ մի վասն այսորիկ ուրախանալ զի անց հասարակ պահոցս, այլ այնմ զգուշանալ՝ եթէ յանցանաց մերոց մաքրեցաք հասարակն, և ապա յայնժամ ուրախասցուք. սա միայն արժանի է փափագանաց, սա խնդրուածոց, վասն որոյ ամենայնն լինի, զի զյանցանս մեր ուղղեսցուք, զի մի այսպէս ելցուք 'ի պահոցս որպէս մտաք 'ի պահս, այլ զարթուցեալք և զամենայն 'ի բաց դնելով զչար սովորութիւնս՝ և այսպէս երթիցուք 'ի սուրբ տօն զատկին: Ապա եթէ այս ամենայն ոչ է, ոչ միայն շահ ինչ չէ կատարումն պահոցս, այլ և վնաս մեծ: Ո՛չ հարդեօք ուրախասցուք եթէ կատարեցաք զերկարութիւն պահոցս, զի այս չէ մեծ ինչ. այլ յայնժամ ուրախասցուք, յորժամ հանդերձ ուղղութեամբ կատարեսցուք, զի 'ի գնալ պահոցս փայլեսցէ առաւ բարութեանցս պտուղ: Զանզի 'ի ձմերայնին անցանել յորժամ երթիցէ, յայնժամ ցուցանէ զշահն. ուստի ելանեն բոյսք և ծաղիկք, բխեն ծառք տերևս և պտուղս, և 'ի տեսութենէն գոչէ յելանել ձմերայնին զօգուտս նորա: Նոյնպէս պարտ է և մեզ լինել. քանզի սակաւուք 'ի միմեանց վայելեցաք 'ի ձմերայնիս 'ի ժամանակի պահոցս՝ հանապազ հաղորդեալք վարդապետութեանս, և սերմանս ընկալաք հոգևորականս, և զփուշս փափկութեան կտրեցաք: Ոնանք արգեօք այժմ զոր ընկալաք պահել բազում սաստկութեամբ, զի յորժամ պահքս երթիցէ՝ բխեսցէ պտուղ պահոցս. և հանդերձ բարութեամբն զոր պատրաստեցաք 'ի պահոցս, և զայս պահքս յիշելով: Եթէ այսպէս կազմեսցուք զմեզ, դարձեալ զգալուստ սորա փափագմամբ ընկալցուք:

Այլ քանզի տեսանեմ զբազումս որ նեղին և հոգան

վասն հանդերձելոյ քաւարանորդացն, 'ի բազմաց լսելոյ է իմ զի ասեն, յորժամ փախիցէք 'ի պահոցս, ոչ ա-նուցէք հանգիստ և դիւրութիւն 'ի հոգւոց հանդերձելոյ պահոցն: Ո՞րինչ լինիցի քան զայս նեղադրութիւն, ասա ինձ, կամ զի՞նչ տակաւին իցէ այսմ պատճառ. յորժամ եկեսցէ պահքն ոչ. զի 'ի հոգիս մեր դնել բա-րիս փութամք, այլ կերակրոց միայն սահմանեմք, որ-պէս թէ մեծ ինչ ուղղութիւն յայսմանէ պտղաբերե-ցաք: Արդ եթէ աղօթէաք զօրհանապազ, գալ խընդ-րեաք պահոցն, և հանդերձ գործովք ազդումն առնել 'ի մեզ զպահոցն ուղղութիւն, և ոչ երբէք զյօժարու-թիւնս զայս արտաքսէաք 'ի միտաց մերոց. զի եթէ այն ունէաք այսմ, ոչ լինէաք թախանձեալք և տաղնա-պեալք: Քանզի որ 'ի միտս իւր զպարկս դիցէ և հոգայ վասն հոգւոյ իւրոյ, ոչ ամենևին կարողանան նմա տրտ-մութիւնք, այլ վայելէ հանապազօր 'ի մաքուր ցան-կութիւն: Եւ զի այս ճշմարիտ է, լուայք այսօր Պաւ-ղոսի զի ասէ. "Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ, դարձեալ ասեմ ուրախ լերուք":

Գիտեմք զաղագումն զի անհնարին կարծեն զասա-ցեալս. զի՞նչ իցէ, ասեն, մարդոյ հանապազ ուրախա-նալ: Ուրախ լինելն չէ դժուարին. իսկ միշտ ուրախա-նալն անհնարին է կարծել, զոր և ասեն իսկ. բազում տխրութիւնք նեղութեանց պատահեալ են զմեզ: Եթէ կորուսանէ ոք որդի կամ կին կամ սիրելի կամ կարևոր հարազատ, ո՞չ ապաքէն տրտմութիւն է այս և նեղու-թիւն, կամ թէ հասցէ կորուստ ընչից կամ ախտ կամ ժանգ կամ գործոց խափանումն կամ տան գործոյ. մա-նաւանդ զի ոչ հասանեմք ամենայնի առնել որչափ վասն ընչից և 'ի հրապարակս գայցեն մեզ տրտմութիւնք: Եւ զի՞նչ հնար իցէ յամենայն ժամ ուրախանալ:

Հնար իսկ է, ով մարդ. և եթէ ոչ էր հնար, ոչ էր Պաւղոս պատուիրեալ և ոչ խորհրդականից լեալ, մարդ հոգևորական վայելեալ յիմաստութի հոգւոյն: Սա որոյ ստէպ մեզ է առնել և յաւելուլ ոչ խափանել. զի մի երբէք յայլոց ունելոց տակաւին ուսանիցիմք, այլ 'ի սմա-նէ պարտ է մեզ ուսանել և իմաստաւորել, զանձն և հա-նապազ ուրախանալ. քանզի այս է ամենեցուն ցանկա-լի, վասն որոյ զամենայն առնեն և ասեն և վաճառեն:

Վաճառականն վասն այսորիկ նաւէ, զի ինչս ժողովեսցէ. ժողովէ ինչս, զի ունիցի մնալ հանապազ յուրախութեան. և զինուորն վասն այնորիկ զինուորի, և երկրագործականն վասն այսորիկ վաստակէ, և իւրաքանչիւր ոք վասն այսորիկ ուսանի արուեստս. փառասէրք վասն այսորիկ ցանկան, զի 'ի փառս վայելեսցեն. 'ի փառս խորհին վայելել, զի ուրախասցին. և իւրաքանչիւր յիրս փոյթ առ այս ձեռնի լինել 'ի վախճանին, և յայլ ինչ ոչ հային իւրաքանչիւր ոք։ Այլ բազումք ոչ հասանեն այսմ փութոյ բարութեանց զոր ասացի. ամենեքեան ցանկան, այլ ամենեցուն հասանել անհնարին է, զի ոչ հաւասար բերի անդ ճանապարհն։

Բազումք կարծեն թէ այսր պատճառ ձախողանացն իցէ. և եթէ չէր սա պատճառ, ոչ ոք ցանկայր երբէք ինչս ստանալ։ Բազումք 'ի մեծատանց այսմ ոչ հասանեն, այլ այնպէս անկենդանաց կարծեն թէ իցէ կենցաղս, և բիւրք վասն մահու աղօթեն յորժամ դժուարին աւուրց հասանեն, և քան որ յոյժ ախտեալք են՝ աղքատանալ 'ի տխրութեան իցեն։ Այլ դու մի զանգիտանացես տեսանիցես և զկերակուրս, այլ զոր յայտնեաց իսկ ծնանելին, չարիք զուր, ներգործութիւնք, տագնապ և որ այլ ևս քան զայս չարագործք իցեն, և որ անքնին են քան զայս չարիք՝ 'ի փախարկութիւն զաղջ խոստովանելով ոչ ստանան, և ոչ քաղցրութեանց զոր զան 'ի վերայ նոցա՝ զօրեն բերել։ Վասն այսորիկ ոչ* այնպէս ինչ թուին նոցա դժուարինք որպիսի են ի բնութեանն, այլ և թեթևագոյն անբերելիք թուին լինել. որպէս և առ աղքատսն հակառակն լինի, անտանելիք տանելի թուին, զի բազում ինչ այսպիսի նոցա զմտաւ ածել է. զի ոչ այնպէս իրացն բնութիւն, որպէս կրելեացն հանգամանք՝ մեծամեծս և փոքունս երևեցուցանեն զհասանել մեզ չարիսն։

* Հաւասարածգ ոչ այնպէս... ըսրեալ 'ի նորոյ թարգմանեցաւ 'ի յունականէն, որ աղաւաղեալ թուէր յօրինակին մերում, որով և անիմանալի. և էր այսպէս. ոչ այսպէս նոցա վասնզի, որպէս է բուն բնաբանն, այլ զի ներհակագոյն առաջարկեալ կարծեն թէ իցէ այնոսիկ. որպէս և աղքատաց հակառակն այսմ լինի, անտանելին քաջանելի երևի, և ոչ քաղցրամ յաջողութեանց առաջի նոցա խորհել. զի ոչ բնութիւն իրաց, որպէս գիտութիւն ընդդէմ՝ և մեծ և փոքր առնել երևեցուցանէ զոր և գոյցէ 'ի վերայ մեր չար։

Այլ զի մի հեռագոյն ածից զօրինակս պատմութեան, իւրաքանչիւր այսոցիկ յիւրոցս որ եհաս մեզ՝ ասեմ. Նա-հատակին ժողովք աղքատաց ամենեքեան անզգոյշ 'ի վտանգից և աներկիւղ վայելեն. իսկ որք զքաղաքիս գործէին գործս, որք զերիվարս դարմանէին և զէնս կազմէին և յայլ այսպիսի սպասաւորութիւն էին, նոքա 'ի բանտի են բնակեալ այժմ. և վասն մերձին կատարածին երկիւղին, և ամենայն պատրաստականաց համարձակելոց տոքա ունին զպատրաստութիւնս և յերկիւղի կան հանապազ, և քան զամենեսեան թշուառական կան այժմ, ոչ եթէ վասն մեծութեան վտանգիցն, այլ զի փափկութեանն զառաջինն ժամանակս կային:

Նայեցուք 'ի սոյն մխիթարեալք և խորհին քաղաքութէ բերել զմխիթարան՝ զայս ասելով, եթէ ոչ այսպէս խորհէաք կամ զիտէաք այսպէս իմաստասիրել, վասն որոյ ունիմք բազում մխիթարութիւն: Այլ ասենք զօրձեալ կարծեն՝ եթէ որ ողջանդամք են, այս է պատճառ փափագանաց լրման, այլ չէ այս. զի բազումք որ առողջք են՝ և նոքա բիւրապատիկ աղօթեն մեռանել, զի ոչ համբերեն եկելոց նոցա փորձութեանց: Իսկ այլք առաջին ունեին որք 'ի փառս վայելէին և 'ի զօրութեան մեծան և 'ի բազմաց փաղաքշելով հպատակին, հանապազորդ ուրախութիւն եղեալ ասեն, որ և այս ոչ է: Այլ զինչ ասեմ զառաջինն յիշխանութեան. Թէ և առ թագաւոր իսկ գլխովին վերացուցանեմք զբանս, գտանեմք և անդ բազում տխրութիւն պատեալ, և այս չափու առաւել ունել տրտմութիւն, մինչ զի յոյժ զգեցեալ է սա ծանրութիւն: Այլ զինչ պարտ է ասել զպատերազմունս, զընդդիմամարտութիւնս, զաւարառութեանց 'ի վերայ յարուցմունս. բազում անգամ և ներքնոց երկիւղն զարհուրեցուցանէ: Զանզի բազում թագաւորք 'ի ձեռաց պատերազմողաց փախեան. իսկ 'ի պահապանաց մարմնոյ նոցա ոչ կարացին փախչել: Նոյնպէս անթիւ է թագաւորաց տրտմութիւն որպէս ալիք ծովու: Իսկ եթէ թագաւոր ոչ կարէ առանց տրտմութեան պահել զկեանս իւր, ո՛վ այլ ոք կարող իցէ ուղղել զայս: Զի 'ի կենցաղս յայս ոչ երբէք գտանել է զայս. տեսանես զի Պաւղոս 'ի սակաւ բանս յայս եբաց մեզ զգանձս զայս: Այլ ոչ է խնդրել բազում բանս և ոչ հեռի ձա-

նապարհ անցանել. այլ միայն եթէ 'ի միտ առնումք զա-
ռացեալս, դիւրաւ գտանեմք զճանապարհն որ բերիցէ
'ի բանս յայս:

Ահա տուոց պարզաբար' եթէ ուրախ լերուք յամենայն
ժամ, այլ 'ի վերայ յաւելուլ զպատճառն զհանապազորդ
փափագանացն. "Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ,,
ասաց: Որ 'ի տէր հանապազ ուրախանայ, ոչ է հնար
անկանել յայսպիսի փափագանաց. իսկ այլ ամենայն
յորս ուրախանամք, դիւրաւ յաղթելիք և եղծանելիք
են. և ոչ զայս միայն ունիցի վտանգս, այլ զի և որք
ձեռն 'ի նմին, ոչ ունի յայնմիկ զուրախութիւն, այլ
յորում 'ի նմին լինի մեզ ուրախութիւն և դիւմամար-
տութիւն: Իսկ երկիւղն այ զերկուս զայս ունի յինքեան,
զի տոյգ է և անյաղթելի, և այսչափ բաշխէ շնորհս'
զի և ոչ մի զգայութիւն տայ առնուլ մեզ զայլմէ տրտու-
մութեան: Ոչ եթէ որպէս պարտ է երկնչել յայ և առ-
նա կալ համարձակապէս, զորման փափագանաց պղտ-
ղալերէ, և զամենայն աղբիւրս ուրախութեան ունի-
ցի. և որպէս 'ի հաստատարած ծով մեղեղ անկեալ ան-
յայտ լինի փութապէս, այսպէս և երկիւղածին այ որ-
չափ և անկանելին տրտմութիւնք, որպէս 'ի ծովու շիջա-
նեին և լուծանին: Իսկ այս է սքանչելին մանաւանդ զի
տրտմեցուցանողքն մերձ գոլով, ձեռայ ինքն յուրախու-
թեան. և եթէ չէր ոք որ տրտմեցուցանէր, ոչ մեծ էր
յոյժ հանապազ ուրախանալ. իսկ բազմաց մեալով որք
ածեն 'ի տրտմութիւնս և 'ի մէջ տրտմականացն ուրա-
խանալ' վերապայն է քան զամենայն, այս իսկ են սքան-
չելիք: Որպէս և զերիս մանկունսն ոչ էր այնպէս սքան-
չելի զի ոչ կարաց կիզել բաբելոնական հուրն. այլ այս
հիացուցանէր զամենեսեան, զի այնչափ ժամանակ խո-
տէին 'ի մէջ հնոցին և օրհնէին և գոհանային, և ելին
անտի առանց տրտմելոյ: Նոյնպէս վասն սրբոց առաքե-
լոյն է ասել. եթէ նոցա ոչ ոք էր ածեալ տրտմութիւնս
և փորձութիւնս, ոչ էաք զարմացեալ ընդ նոցա հանա-
պազորդ ուրախանալն. ընդ որ հիանալ արժան է, զի
քան զգանութիւն մարդկան 'ի վեր անցանէ այսպէս, զի
ուր բիւր ալիք շուրջանակի պատեալ էին, և նոքա 'ի
խաղաղութեան վայելէին....:

Յորժամ ոչ մահ, ոչ կորուստ ընչից, ոչ հիւանդու-

Digitized by Google

լոց ժողովէին, յայնժամ նոքա զխուրեանց բաշխէին, ոչ թէ որոց մերձն էին, այլ և որոց հեռագոյնս բնակէին։ Տեսնե՛ր հաւատս առ Ած և սէր առ եղբարս և դրացիս։

Խորհիս և այլ իշխանութիւն զմերոյ քաղաքիս։ Եկին ոմանք 'ի հրէաստանէ յԱնտիոք թիւրել զուղիղ քարոզն և հրէական խտիրս ածել 'ի մէջ։ Սոքա ոչ համբերեցին լռութեամբ ստութեան նոցա. այլ եկեալք և ժողովեալք յեկեղեցին՝ զՊաւղոս և զԲառնաբաս առաքեցին յԵրուսաղէմ և պատրաստեցին զառաքեալսն գրել ուղիղ և մաքուր պատուիրանս ընդդէմ հրէական խտրութեանցն, և առաքել ընդ ամենայն կողմանս աշխարհիս։ Այս էր քաղաքիս իշխանութիւն, այս աթոռ, այս մայր քաղաքաց զոր արարեալ ոչ եթէ յերկրի, այլ և յերկինս....։

Արդ որ իմն է քաղաք, եթէ ոչ ունիցի քաղաքացիս Ածասէրս, քան զամենայն քաղաքս նուաղագոյն գտանի և քան զայլս անպատիւ։ Եւ զինչ ասեմ վասն քաղաքի. այլ զի իմասցիս թէ առաքինութիւն միայն զարդարէ զընակիչս, ասացից որ քան զամենայն քաղաքս պարկեշտագոյն էր՝ զտաճարն Այ որ 'ի մէջ Երուսաղէմի կանգնեցաւ, զոր ցուցանել ձեզ փորձիմ։ Այսմ տաճարի յաճախ պատարագ և նուէրք և պաշտամունք և աղօթք էին, այժմ ո՞ւր են սրբութիւնք սրբոցն և քերովբէքն և կտակարանքն և սափորն ոսկեղէն և մեծ նշան խնամոցն Այ. ուստի և օծմունք 'ի վերուստ ստէպ բերիւր և յայտնութիւնք, ուր և մարգարէքն սովորական բանիւ մարգարէանային, ուր ոչ մարդկային արուեստ՝ այլ Այ իմաստութիւնն սահման գործոյն եղև, ուր պարխալքն ոսկեհուռն փայլատակէին, և բովանդակն առաւել քան զառաւել և նիւթքն բազմակատար և արուեստքն ստոյգ ճշգրիտ՝ միայն զոր յայնմ ժամանակի այսպիսի ցուցանելով տաճար յերկրի։ Մանաւանդ ոչ եթէ միայն ստոյգ արուեստիւ, այլ և իմաստութիւնն Այ յայն շինուածս մերձեցաւ. զի ոչ յանձնէ իւրմէ, այլ յԱյ զամենայն իմացաւ Սողոմոն, և դրոշմն նկարագիր գործոյն գրովն յերկնից իջեալ՝ այսպէս նշանակեաց զտեղին և կանգնեաց զտաճարն։ Այլ սակայն սուրբս այս գեղեցիկ և սքանչելի և պայծառագոյն ապականեցաւ և այսպէս եղև անպատիւ, արհամարհե-

Digitized by Google

ցաւ և եղև պիղծ, զի նախ քան զգերութիւնն այրս աւազակաց կոչէր, և զկնի այնմ այրս խողից, և յետ այնորիկ 'ի բարբարոսական և յանարգոց ձեռս մատնեցաւ։

Կամիս և վասն քաղաքաց այսպէս ուսանել։ Ո՞ր ինչ քան զսոդոմայեցւոց քաղաքն պայծառագոյն. տունք գեղեցիկ և շինուածք պայծառք, պարիսպք վայելուչք և երկիր պարարտ և բարի և նման դրախտին այ, սակայն գերեցան. իսկ խուղն Աբրահամու փոքր և գծուծ, և ոչ ունէր պահապանս և ոչ մի։ Յորժամ եղև պատերազմն բարբարոսական, զքաղաքն պարսպեալ որ բազում ունէր ամրութիւնս՝ աւերեցին և ծառայեցուցին բարբարոսքն, և զբնակիչսն գերելով գնացին. իսկ զանապատ քաղաքացին Աբրահամ ոչ կարացին առնել այնպէս։ Եւ այս մանաւանդ յիրաւի. զի քան զբազմութիւն և քան զամրութիւն պարսպաց բազում և առաւել ունէր զօրութիւն բարեպաշտութիւնն։ Եթէ քրիստոնեայ ես, քաղաք ոչ ունիս յերկրի, այլ յերկինս։ Իսկ քաղաքին մերում արուեստաւոր և հրաշագործող ած է. և եթէ զամենայն երկիր հասանիցէ մեզ ըմբռնել, սակայն օտար և նժդեհ և անցաւոր եմք ամենեքեան. քանզի յերկինս գրեալ եմք, անդ քաղաքանամք. ապա մի զփոքունս զտղայական խաղալիկս իբր զմեծ ինչ 'ի վեր անցեալ տեսանեմք։

Արդ ոչ եթէ մեծութիւն քաղաքի, այլ հոգի առաքինի է զարդ և ամրութիւն։ Ապա եթէ զիշխանութիւն կարծես եթէ իցէ քաղաքիս, իմա եթէ որչափ չնացողք, որչափ ախտաժէտք մեղօք և ապականեալ բիւր չարութեամբ հաղորդեալ են քեզ այսմ իշխանութեանս, և արհամարհեալք յայսմ պատուոյ։ Այլ ոչ նա այնպէս. քանզի անհնար է նմա հաղորդել, ոչ ցուցանելով զամենայն առաքինութիւնս։ Ո՞վ արդեօք անգէտ լիցուք բարեաց. յայնժամ տխրեսցուք, յորժամ զիշխանութիւն մերոց հոգւոցս առցէ ոք, յորժամ մեղանչեմք, յորժամ ընդ ամենեցունց ածն մարտնչիմք. իսկ այս որ այժմս եղև, ոչ միայն թէ վնաս չէ քաղաքիս, այլ և օգուտ մեծ 'ի զուարթանալն մերում. քանզի յաղագս և 'ի բարեգործ և 'ի զգաստ կին նմանեցաւ քաղաքս մեր. երկիւղն զսա հանդարտ և պարկեշտ արար, և աղաւեցաւ 'ի գարշելեացն յայնցանէ որ համարձակեցան յեղեալ գործն։

Մի՞ արդեօք կանանցաբար ողբաս ողբասցուք․ քանզի լուայ 'ի բազմաց 'ի մէջ փողոցին զի ասէին վայ քեզ, Անտիոք, թէ զինչ եղեր կամ որպէս անարգեցար։ Եւ զայս լուեալ ծաղր արարի զողբայաբարու խօսն։ Զի այժմ ոչ է պարտ զայս ասել, այլ յորժամ տեսանիցես 'ի կաքաւս, յարբեցութիւնս, յերգս դիւականս, զայթակղել յերգումն, յերդմնազանցութիւնս և 'ի ստութիւնս, յայնժամ ասիցես զայսպիսի բանս՝ վայ քեզ քաղաք թէ զինչ եղեր։ Իսկ եթէ տեսանիցես զհրապարակս նուաղեալ 'ի մարդկանէ և սակաւս ունել մարդիկ, և այնք համեստք և զգաստք և չափաւորք իցեն, երանեսա զքաղաքն զայն։ Զի ոչ նմա վնաս իցեն մարդկանն պակասութիւնն, յորժամ առաքինութիւն 'ի նմասա իցէ․ քանզի և բազմութիւնն ոչ ինչ օգտէ երբէք, յորժամ 'ի չարութիւնս իցեն։ "Եթէ իցէ, ասէ, թիւ որդւոցն Իսրայէլի իբրև զաւազ ծովու, սակաւ ինչ մնացորդք մնասցեն"։ Ոչ կարիցեն, ասէ, բազմութիւնքն հաշտ առնել զա̃ծ։ Նոյնպէս և Քրիստոս առնէր վատթարելով զքաղաքս ոչ վասն պակասութեան և ոչ զի ոչ էին մայր քաղաքաց․ նա և զԵրուսաղէմ կանխաւ վատթարեալ ասէ․ "Երուսաղէմ Երուսաղէմ, որ սպանանէր զմարգարէսն և քարկոծ առնէր զառաքեալսն առ նա"։

Զինչ օգուտ բազմութիւն բերիցէ, ասա ինձ, եթէ 'ի չարիս ձգնիցին․ այլ հակառակն վնաս մեծ յայնմանէ լինիցի։ Այժմ իսկ զեղեալ չարիսս զինչ այլ գործեաց, եթէ ոչ դանդաղումն և յանդգնութիւն և չարիք բնակչացս․ միթէ իշխանութիւն օգտեաց քաղաքիս ինչ․ միթէ շինուածք, զի մայր քաղաքաց էր։ Ընդ երկրաւոր թագաւորութեանս 'ի սմա մեղուցելոյ ոչ ոք ընդդէմ կալացեալ՝ այլ ամենայն բարձաւ, եւ առաւել տեառն հրեշտակաց առաջի ոչ կացցէ իշխանութիւն այս յաւուր յայնմիկ, թէ և մայր քաղաքաց է, շինուածս յարկս և սրահակս ունի ընդարձակագոյնս և այլս այսպիսի իշխանութիւնքս։ Եւ զինչ ասեմ յայնմ աւուր, զի և յանցաւոր ժամանակիս զինչ օգուտ կարաց լինել զի մայր քաղաքաց էր քաղաքս։ Միթէ ոք որ բնութե̃ 'ի չարիս իցէ, յայսմ իշխանութենէ քաղաքիս ուղղիցի, կամ օգուտ ինչ և շահ յայսմ իշխանութենէ առ-

նաւցուն, կամ թէ հակառակն գտաւ տրտմութեանս, կամ զհեշտութիւնս խստութեան թուլացոյց, կամ զչարիս երբէք յոգւոց 'ի բաց արար։

Մ՛ի խաղաղացուք, ով սիրելիք, և մի 'ի բազում կարծիս անկցուք, այլ ուսցուք թէ զինչ խնդրեսցի քաղաքիս իշխանութիւն, կամ թէ զինչ կարիցէ առնել զքաղաքս մայր քաղաքաց։ Զայս ասեմ զի ակն ունիմ դարձեալ զկերպարանս քաղաքիս դարձուցանել։ Մարդասէր է թագաւորն և ա̃ծասէր։ Խորհրդակցելով ձեզ որ յորժամ տացի անդրէն, մի մեծամտիցէք վասն այնր, մի զփողոցս զարդարելով զքաղաքս այնու պարկեշտացուցանել։ Այլ յորժամ կամիցիք գովաբանել զքաղաքս, մի ասիցէք զդաբնիդայ կամ զբազմութիւն ծառոց մայրից ճշդարենեաց, և ոչ զաղբիւրս ջուրց և ոչ զբազմութիւն բնակութեան մարդկան 'ի քաղաքիս, և ոչ զի մինչ 'ի խոր գիշերաց սովոր եմք շրջել 'ի մէջ փողոցացս առանց երկիւղի. այլ թէ ունիցիք ասել առաքինութիւնս, հանդարտութիւնս, ողորմութիւնս, հըսկումն, աղօթս, զգաստութիւնս, իմաստասիրութիւն հոգւոյ։ Յայսմանէ զարդարի քաղաքս, սոքա քան զամենայն քաղաքս պայծառագոյն առնեն զայս քաղաքս. և դարձեալ քան զամենայն նուաղագոյն լինի, եթէ ըզսոսա քաղաքակիցս ոչ ունիցի։

Զայս ոչ միայն վասն քաղաքաց ասեմք, այլ և վասն մարդկան։ Եթէ տեսանիցես մարդ բազմամարմին և արիական՝ յառաջագէմ գոլով 'ի վեր անցանէ քան զբազում հասակին բարձրութեամբ, մի զքանչանար ընդ նա մինչև զոգիս նորա ուսանիցիս. մի յարտաքին գեղեցկութենէն, այլ 'ի ներքին մտաց գեղեցկութենէ երանես զամենեսեան։ Փոքր էր Դաւիթ և դոյզն մարմնով. բայց նուաղն և փոքրն յամենայն սպառազինութենէ մերկացեալ զզօրս և զզօրավարս յայնժամ՝ միայն զմարմնեղէն բուրգն 'ի միոյ խոցմանէ սատակեաց. ոչ սուր արեաց և ոչ նետաձիգ եղև և ոչ սուսեր մերկացոյց, այլ փոքր քարիւ միով գործեաց զամենայն։ Վասն որոյ ոմն իմաստուն ասէ. "Մ՛ի գովես զմարդ 'ի գեղեցկութիւն իւր, և մի այպն առնիցես զայր 'ի տեսութենէ իւրմէ։ Փոքր է 'ի թռչունս մեղու, այլ քաղցր է պտուղ նորա,,։

Զայս և վասն քաղաքաց և արանց ասասցուք, և առ

Digitized by Google

իրեարս իմաստասիրեսցուք, և ա̃յ շնորհս կալցուք հանապազ վասն անցաւորիս և վասն հանդերձելոցն, և համօրէն աղաչեսցուք զնա ամենայն պաղատանօք, մինչ զի որ 'ի բանտի են բնակեալ և որք յօտարութիւն փոխագրեալք հանդերձեալք՝ մի թողցէ զնոսա: Այլ մեք փութասցուք զի անդամք մեր են և ըստ մեզ նաւաբեկեցան և ըստ մեզ ընդդէմ կացին ծփանաց. աղաչեսցուք զմարդասէրն ա̃ծ, զի ըստ մեզ վայելեսցեն 'ի խաղաղութեան: Մի՛ ոք ասասցէ՝ զի՞նչ կարիս է ինձ այսուհետև ազատել զոք 'ի վտանգից, եթէ այս ոմն կորեաւ և միւսն ապականեցաւ: Մի՛ բարկացուցանէք զա̃ծ վասն անտես առնելով զայս. այլ որպէս թէ մեք ինքն իցեմք 'ի վտանգս, այսպէս երկնեսցուք և այսպէս պաղատանօք զա̃ծ աղաչեսցուք կատարել 'ի մեզ զբանն Պաւղոսի. «Ընդ կապելոցն կապեցարուք, ընդ չարչարելոցն չարչարեցարուք». և այնպիսի ասէ՝ որպէս թէ մեք եմք մարմնով. «և լալ ընդ լացողսն»: Այս զմեզ և զնոսա օգտէ մեծապէս. ոչ այսպէս ինչ զա̃ծ ուրախ առնէ, որպէս բազում յօժարութեամբ տրտմել վասն անդամոց մերոց, որպէս թէ մեք իսկ իցեմք և ոչ այլ ոք: Աղաչեսցուք զնա համօրէն և վասն մերձաւորիս և վասն հանդերձելոցն եւս առաւել, զի զմեզ յափշտակեսցէ յայնմ տանջանաց: Իսկ որ մերձս են որչափ և իցեն՝ զերծանելիք են և վճարել ունին, իսկ անդ տանջանք անմահ և անձողոպրելիք են: Այլ մեք զկնի մխիթարութեանս փութասցուք մի երբէք անկանել 'ի մեղս յայսպիսիս, գիտելով զի այնուհետև թողութեան հասանել ոչ կարեմք:

Ար հասարակ ամենեքեան անկցուք առաջի ա̃յ և 'ի սուրբ տանս յորում եմք ժողովեալք՝ ասասցուք. Արդարութեամբ և յիրաւի ածեր զայս 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց. և զամենայն զոր արարեր, արդար դատաստանաւ արարեր. և մեղք մեր յարեան 'ի վերայ մեր, արա զմեզ ըստ անուան քում. և մի տալ թոյլ երբէք առնուլ զփորձ այսպիսի նեղութեան. «Մի տար զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա 'ի չարէն». զի քո է արքայութիւն զօրութիւն և փառք ընդ հօր և ամենասուրբ հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ՈՒԹԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Վասն յառաջխաղացելոյ վտանգիցն. և վասն պահոց. և 'ի բանն առաքելոյ «Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ»:

Զբազումս տեսի ուրախացեալս և ընդ միմեանս ասելով՝ յաղթեցաք անցաք զհասարակ պահոցս: Արդ զայսպիսիս աղաչեմ մի վասն այսորիկ ուրախանալ զի անց հասարակ պահոցս, այլ այնմ զգուշանալ՝ եթէ յանցանաց մերոց մաշեցաւ հասարակն, և ապա յայնժամ ուրախասցուք. սա միայն արժանի է փափագանաց, սա խնդրուածոց, վասն որոյ ամենայնն լինի, զի զյանցանս մեր ուղղեսցուք, զի մի այսպէս ելցուք 'ի պահոցս որպէս մտաք 'ի պահս, այլ զարթուցեալք և զամենայն 'ի բաց դնելով զչար սովորութիւնս՝ և այսպէս երթիցուք 'ի սուրբ տօն զատկին: Ապա եթէ այս ամենայն ոչ է, ոչ միայն շահ ինչ չէ կատարումն պահոցս, այլ և վնաս մեծ: Մի՛ արդեօք ուրախասցուք եթէ կատարեցաք զկատարութիւն պահոցս, զի այս չէ մեծ ինչ. այլ յայնժամ ուրախասցուք, յորժամ հանդերձ ուղղութեամբ կատարեմք, զի 'ի գնալ պահոցս փայլեսցէ սորա բարութեանցս պտուղ: Վասնզի 'ի ձմերայնին անցանել յորժամ երթիցէ, յայնժամ ցուցանէ զշահն. ուստի ելանեն բոյսք և ծաղիկք, բխեն ծառք տերևս և պտուղս, և 'ի տեսութենէն գոչէ յելանել ձմերայնին զօգուտ նորա: Այսպէս պարտ է և մեզ լինել. քանզի սակայցուով 'ի միմեանց վայելեցաք 'ի ձմերայնիս 'ի ժամանակի պահոցս՝ հանապազ հաղորդեալք վարդապետութեանս, և սերմանս ընկալաք հոգևորականս, և զփուշս փափկութեան կտրեցաք: Ջանամք արդեօք այժմ զոր ընկալաք պահել բազում ստուգութեամբ, զի յորժամ պահքս երթիցէ՝ բխեսցէ պտուղ պահոցս. և հանդերձ բարութեամբն զոր պտղաբերեցաք 'ի պահոցս, և զայս պահքս յիշելով: Եթէ այսպէս կազմեսցուք զմեզ, դարձեալ զգալուստ սորա փափագմամբ ընկալցուք:

Եւ քանզի տեսանեմ զբազումս որ նեղին և հոգան

վասն համոզերձեալ քաստանորդացն, 'ի բազմաց լսեալ է իմ զի ասեն, յորժամ փոխիմք 'ի պահոցս, ոչ առնումք համգիստ և զերութիւն 'ի հոգոց համոզերձեալ պահոցն: Ո՜ինչ լինիցի քան զայս նեղապատութիւն, ասա ինձ, կամ զի՞նչ տանջութիւն իցէ այսմ պատճառ. յորժամ եկեղեցի պահքն ոչ զի 'ի հոգիս մեր գնել բարիս փութամք, այլ կերակրօք միայն սահմանեմք, որպէս թէ մեծ ինչ ուղղութիւն յայսմանէ պատրաստեցուք: Արդ եթէ ազօթեսցուք զօրհանապազ, զայլ խորհրդրեսցուք պահոցն, և համոզերձ գործովք ազգամն ատնել 'ի մեզ զպահոցն ուղղութիւն, և ոչ երբէք զյօժարութիւնս զայս արտաքսէաք 'ի մտաց մերոց. զի եթէ ունէաք այսմ, ոչ լինէաք թախանձեալք և տաղնապեալք: Ո՛ւնողի որ 'ի միտս իւր զպարիս գիցէ և հոգայ վասն հոգւոյ իւրոյ, ոչ ամենևին կարզամանանաս տաղտումութիւնք, այլ վայելէ համապազօրդ 'ի մաքուր ցանկութիւն: Եւ զի այս ճշմարիտ է, լուայք այսօր Պաւղոսի զի ասէ. "Որչափ լերուք 'ի ներ յամենայն ժամ, զարձեալ ասեմ ուրախ լերուք":

Պիտեմք զաղաղամ զի անհնարին կարծեն զասացեալս. զիա՞րդ իցէ, ասեն, մարդոյ համապազ ուրախանալ: Ուրախ լինելն չէ դժուարին. իսկ միշտ ուրախանալն անհնարին է կարծել, զոր և ասեն իսկ. բազում տխրութիւնք նեղութեանց պատեալ են զմեզ: Եթէ կորուսանէ ոք որդի կամ կին կամ սիրելի կամ կարևոր հարազատ, ծ՞չ ապաքէն տրտմութիւն է այս և նեղութիւն, կամ թէ հասցէ կորուստ ընչից կամ ավլ կամ ժանգ կամ գործոց խափանումն կամ տան գործոյ. մանաւանդ զի ոչ հասանեմք ամենայնի ասել որչափ վասն ընչից և 'ի հրապարակս զայցեն մեզ տրտմութիւնք: Եւ զիա՞րդ հնար իցէ յամենայն ժամ ուրախանալ:

Հնար իսկ է, ով մարդ. և եթէ ոչ էր հնար, ոչ էր Պաւղոս պատուիրեալ և ոչ խորհրդակից լեալ, մարդ հոգևորական վայելեալ յիմաստութեն հոգւոյն: Եւ առն որոյ սաէպ մեզ է ասել և յասելոյ ոչ խափանիմ. զի մի երբէք յայլոց ունից տակաւին ուսանիցիմք, այլ 'ի սմանէ պարտ է մեզ ուսանել և իմաստասիրել, զանց և հանապազ ուրախանալ. քանզի այս է ամենեցուն ցանկալի, վասն որոյ զամենայն առնեն և ասեն և վաճառեն:

նապարհ անցանել. այլ միայն եթէ 'ի միտ ածնումք զա-ռացեալս, դիւրաւ գտանեմք զճանապարհն որ բերիցէ 'ի բանս յայս:

Ոչ ասաց պատգամաւոր՝ եթէ ուրախ լերուք յամենայն ժամ, այլ 'ի վերայ յաւել զպատճառն զհանապազորդ փափագանացն. "Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ" ասաց: Որ 'ի տէր հանապազ ուրախանայ, ոչ է հնար անկանել յայսպիսի փափագանաց. իսկ այլ ամենայն յորս ուրախանամք, դիւրաւ յաղթելիք և եղծանելիք են. և ոչ զայս միայն ունիցի վտանգս, այլ զի և որք մնան 'ի նմին, ոչ ունի յաւիտենիկ զուրախութիւն, այլ յաղագս 'ի նմին լինի մեզ ուրախութիւն և զինամար-տութիւն: Իսկ երկիւղն այ զերկուս զայս ունի յինքեան, զի ստոյգ է և անյաղթելի, և այնչափ բաշխէ շնորհս՝ զի և ոչ մի զգայութիւն տայ առնուլ մեզ զայլմէ տրտմութեան: Արդ եթէ որպէս պարտ է երկնչել յայ և առ նա կալ համարձակապէս, զարմատն փափագանաց ալրա-ղաքերէ, և զամենայն աղբիւրս ուրախութեան ունի-ցի. և որպէս 'ի համատարած ծով մլեղ անկեալ ան-յայտ լինի փութապէս, այսպէս և երկիւղածին այ որ-չափ և անկանելին տրտմութիւնք, որպէս 'ի ծովու շիջա-նին և լուծանին: Իսկ այս է սքանչելին մանաւանդ զի տրտմեցուցանողքն մերձ գոլով, մնայ ինքն յուրախու-թեան. և եթէ չէր ոք որ տրտմեցուցանէր, ոչ մեծ էր յոյժ հանապազ ուրախանալ. իսկ բազմաց մնալով որք ածեն 'ի տրտմութիւնս և 'ի մէջ տրտմականացն ուրա-խանալ՝ վերագոյն է քան զամենայն, այս իսկ են սքան-չելիք: Որպէս և զերիս մանկունսն ոչ էր այնպէս սքան-չելի զի ոչ կարաց կիզել բաբելոնական հուրն. այլ այս հիացուցանէր զամենեսեան, զի այնչափ ժամանակ խօ-սէին 'ի մէջ հնոցին և օրհնէին և գոհանային, և ելին առանց տրտմելոյ: Այսպէս վասն սրբոց տակա-ւին է ասել. եթէ նոցա ոչ ոք էր ածեալ տրտմութիւնս և փորձութիւնս, ոչ էաք զարմացեալ ընդ նոցա հանա-պազորդ ուրախանալն. ընդ որ հիանալ արժան է, զի քան զբնութիւն մարդկան 'ի վեր անցանէ այսպէս, զի ուր բիւր ալիք շուրջանակի պատեալ էին, և նոքա 'ի խաղաղութեան վայելէին....

Յորժամ ոչ մահ, ոչ կորուստ ընչից, ոչ հիւանդու-

և զնոյն դարձեալ ստացար. և թէ 'ի նոցանէ ոչ օգտիս, յայդմ մեծագոյն ունիս հատուցումն: Այլ զի ուսանիցիս թէ առաքինութիւն վասն անկանելոյ եղբօրն՝ թէ և ոչ օգտիցէ՝ մեծագոյն մեզ հատուցումն բերէ.... Եթէ ես որ տանջեմ, ասէ, ոչ ուրախանամ առնել զայս, "զի ոչ կամիմ զմահ մեղաւորին", պարտ է քեզ ուսանել քո նմանել և վասն այսր տրտմել, որ թէ և խրատանք տան-ջի և դու տրտմիս լոկ նոյն, մեծամեծ օգուտս պարգևե-րես անձին:

Որդ յորժամ ապականեալքն քան զապականողն երանելիք են, և տրտմեալքն 'ի մէնջ քան զոր 'ի դիւ-րութիւնս արտաքոյ լաւագոյնք իցեն, և ախտեալքն քան որ 'ի խնդութիւնս են, զինչ ասես այսուհետև պատ-ճառ իցէ մեզ արտմութե: Որդ ոչ երանէ զայլ տրտ-մութիւնս, բայց որ վասն մեղ կենդանւոյ միայն: Զայս և գիրն ասէ. "Երանեալ է այր որ երկնչի 'ի տեառնէ: Երանի մարդոյ զոր խրատես դու տէր և յօրինաց քոց ուսուցանես զնա: Երանի ամենեցուն ոյք յուսա-ցեալ են 'ի նա". և Քրիստոս դարձեալ ասէ. "Երա-նի հեզոց. երանի խաղաղարարաց. երանի որ հալածեալ են վասն արդարութեան": Տեսանես զիարդ յամե-նայն կողմանց ոչ զմի ոք 'ի մեծատանց, ոչ զազնիւ ազ-գաւ, ոչ զայն որ վայելէ փառօք՝ երանեն ամենեղէն օրէնքն երբէք, այլ զայնոսիկ ոյք հոգան վասն առաքինութե: Նաև զինդրելիքն զամենայն զոր և առնեմք կամ չարչա-րիմք, հատուցանէ 'ի մեզ երկիւղն այդ, և նա է պատճառ. այլ և զարմանալի չարի խորտակէ. ոչ եթէ քաւութիւն միայն և պատիւ և փառս և բժշկութիւն մեզ հատու-ցանէ, այլ և չարիք ամենայն կործանին զոր, և անար-գանք, հայհոյութեան բանք յիշոցաց, տանջանք, աղքա-տութիւնք, և այլ որպիսիք են և բարեաց փափագմանս բերէ քեզ պտուղս: Զոր օրինակ արմատք ծառոց որք դառնաճաշակք են, և պտուղս ախորժելիս և քաղցունս բերիցեն, այսպէս երկիւղ և արտմութիւն յաղագս այդ բաղումն բերէ մեզ փափագումն բարեաց:

Ամենայն որք նեղութեամբ աղօթէին և արտասուս հեղուին՝ թէ որչափ պատուաբերեցին զուրախութիւն և զիարդ մաքուր եղեն յիմաստս հոգւոյ, զիարդ յարու-ցին զխնդութիւն քաղցր յուսով հանդերձ. զոր և ես միշտ

ոչ փութայցես լուծան ամենայնն, յայտ յայնմանէ է
եթէ տակաւին մնայ մնացորդքն մեղաց նախկի, և եւս
զի թագաւորին առ ումանս անդայտ է բարին, քանզի որք
մուծող էին քաղաքիս գործոց՝ ամենեքեան 'ի կապանս
են. և բաղումք որք 'ի կապանս բնակեն՝ 'ի լռգանալ կա-
րօտին ընթանալ 'ի գետ և բիւր խեղկատակութիւնս
անդ անտառակին, խայտան և պարեն կանայք զօշոտեալք։
Որք որո՞ւմ քաւութեան նոքա արժանաւորք են կամ
որո՞ւմ պատասխանւոյ, մանաւանդ թէ որո՞ւմ խոկ չեն
արժանի խրատուց և տանջանաց։ Պղուխք քաղաքիս մեր
'ի բանտի, անգամ մեր յաղքատս և մշիւն անդայտ վասն
նոցա. և դու պարես, ասա ինձ, և խաղաս և ծաղր առնես

Նշանց լուանալոյ, ասեն, ոչ կարեմք բերել։ Մ՛վ ա-
նամօթ մնացդ, ով ապականեալ և անպատկառելի խօ-
սիցդ. քանի՞ ամիսք անցին. ոչ տակաւին քսան աւուրք
են յորս փակեցան բաղանիք. և եթէ համապազ բա-
ղարովին առանց լուանալոյ մնայիր, տրտմիս և դժուարա-
նաս։ Նոյպէս էիր, ասա ինձ, յորժամ ակն ունէիր
գալոյ զինուորացն, յորժամ օր ըստ օրէ ակն ունէիր մա-
հու մեռանել, յորժամ յանապատս փախստական լի-
նէիր և 'ի գլուխս լերանց ընթանայիր։ Եթէ ոք քեզ
յայնժամ պատուէր տուեալ էր և առացեալ թէ հա-
նապազ առանց լուանալոյ կաց և ազատիս յեկեղյ տագ-
նապէս, ո՞չ ապաքէն խոստանայիր և պատրաստ լինէիր
համապազ կալ առանց լուանալոյ։ Պարտ էր քեզ գո-
հանալ զԱյ հանապազ, զի առանց ամենայն վնասուց
զայս եղյծ ա՛ծ. խայտաս կանխաւ և անարգես, և յոր-
ժամ չև է երթեալ բոլոր երկիւղն՝ դու առաւել եկիր
'ի գանդաղմունս։ Նոյպէս մերձեցաւ առ քեզ վտանգս
զի կարօտ լինիս բաղանեաց....։

Ողջոյ լեր զի առաւելագոյն տանջանաց 'ի ներքոյ
կացուցանես զքեզ և նեղութեան, և դարձեալ առա-
ւելապէս աղաչես և ոչ կարիցես անցանել և զերծանել
'ի պատժոցն, զի ոչ իցեն սպառնալիք գոյից. և զիպիս
դարձեալ անբժշկելի պատուհասից, կատարելով առ
քեզ զոր վասն դիւացն ասէր Քրիստոս, եթէ "Յոր-
ժամ այսն չար ելանէ 'ի մարդոյ անտի, շրջի ընդ ան-
ջրդին տեղիս, խնդրէ հանգիստ և ոչ գտանէ. ապա
ասէ՝ դարձայց անդրէն ուստի ելի, և գայ գտանէ պա-

բաւարդ մաքրեալ և յարդարեալ։ Ո՞չ ապա երթայ առնու ընդ իւր եօթն այսս չար քան զինքն և մտեալ բնակէ անդ, և լինի մարդոյն այնմիկ վերջինն չար քան զա-ռաջինն„։

Նմանիցուք արդեօք և մեք որ ոչ յառաջին չարեացն փոխեցաք, ուստի առաւել քան զառաջինն չարի հան-դիպիմք հանդերձ այսու ծուլութեամբս։ Գիտեմք զի դուք մաքուրք էք յայսմ աղտեղութենէ. բայց զան-զարդան կալէք և չարչարեցէք, տանջեցէք զդատաստանու-ցէք, զի հանապազ յուրախութեան կայցէք, որպէս և Առաքեալս հրամայեաց. որպէս զի ընդ ձերոց ուղղութեանց և այլոց խնամակալութեանց բազում առ և 'ի հան-դերձեալ կեանսն պտղաբերէք զհատուցումն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ Յիսուսի Քրիստո-սի, որում վայելէ փառք յաւիտեանս. ամէն։

# ՃԱՌ ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ

Խօսք վասն կեցուցիչ կիւրակէին տօնի, և յեկեղեցին բազմութիւն. և թէ ամենեքին չէ պարտ երդնուլ։

Ընդամանեցիք[1] 'ի սուրբ վկայիցն յառաջագոյն յա-ւուրս յայս, լցայք հոգևորական տօնիւս, խայտացիք զբարի խայտառն պարելով. տեսէք զկողս մարմնոյ բա-ցեալ, զաղիս հերձեալ, զարիւն հոսեալ և բիւր տան-ջանաց ժուժկալեալ. տեսէք բնութիւնք մարդկան 'ի վեր երևեալ քան զբնութիւնս, և յարենէ սատանայ. պա-րելով պարեցէք զբարի պարսն յամենայն կողմանս քա-ղաքիս՝ այսմ բարի զօրավարիս ժողովելով զձեզ, այլ զմեր տկարութիւնս հարկէր ակամայ 'ի տունս մնալ։ Բայց եթէ ոչ հաղորդեցաք տօնիս, այլ հաղորդեցաք փափագանաց. և եթէ տօնիւս ոչ վայելեցաք, այլ վայե-լեցաք յուրախութիւնս ձեր։

Այսպիսի է զօրութիւն սիրոյ, զի որք ոչ վայելեն, ընդ որս վայելեն՝ ուրախանալ առնէ լինել՝ հաւանորէն ընդ դրացիսդ 'ի բարիս ածեալ հաւան առնելով։ Վասն ո-րոյ և որք 'ի տունս նստէին, ուրախացան ընդ ձեզ. և

1 Յօրինակին կիսաղծ էր բանս։

որք 'ի հիւանդութեան էին, ամենեքեան յարեան և ե-
կին առ ձեզ՝ տեսանելով զկարօտելի պատկերս ձեր և
հաստատել տօնիւս հաղորդել։ Զոր մեծապէս կարծեմ
զհաստատել օրս վասն գալստեան ձերոյ, եղբարք, որք ըղ-
քաղաքս մեր այսօր վայելուչ արարէք և զեկեղեցիս
զարդարեցէք. ժողով որ 'ի լեզուաց մերոց զատեալ և
ընդ հաւատս մեր միաձայնեալ. ժողով տանց բազմա-
հնար հայթհայթանաց կերակրել, և կենցաղ զգաստ
և պարկեշտ ունել։ Քանզի արանցս այսոցիկ ոչ է հան-
դէս և տեսիլ անօրէնութեան, ոչ երկմարաց հոգս, ոչ
կանայք պոռնիկ և ոչ այլ ինչ քաղաքի բանջարմունք.
այլ ամենայն պատշաճ օրինակաւ կեցեալք են, յամե-
նայն կողմանց պարզաբերելով բազում զգաստութիւնս։
Իսկ պատճառն զինչ. վասն զի ցուցակին է կենցաղ
սոցա, և վարդապետութիւն առաքինութեան՝ կեալ
ըստ պատշաճի՝ գործել զերկիր, և ընդ այսմ արուես-
տիւս մտանել արար, որում և այլոց հանդիպեալ, քան-
զի հաստատակաց 'ի կենցաղս մեր բերելով զաս ա̃յ։ Այլ
նախ իսկ քան զյանցանսն Ադամայ յորժամ վայելէր
բազում համարձակութեամբ, 'ի սոյն հրամայեցաւ կալ.
ոչ ցուցակին և ոչ տառապանաց կեանս ունելով, բա-
զում պարգևեալ նմա իմաստասիրութիւն։ “Այդ, ա-
սէ, զնա 'ի դրախտին գործել զնա և պահել”։ Այլ զինի
սորին առաւել 'ի վաստակութիւնս հրամայեաց մտա-
նել։ Սոքա իւրաքանչիւր զայս իմացեալ՝ այժմ ընծեալ
եզինս յարօրի ուսանին զմանձս վարել 'ի խոր ակօսս հա-
տանելով. այժմ 'ի սուրբ բեմս երանելով և զանձինս
աշխատելոց 'ի մեղս իբր մանգաղաւ՝ որ զփուշս հա-
տանէ զերկրի՝ այնպէս բանիւ զմեղս մաքրեն 'ի ձէնջ։
Այլ զի ոչ ամաչեն 'ի գործս, որպէս որք բնակեալ են 'ի
քաղաքս մեր, այլ ամաչեն 'ի դատարկութիւնս կեալ,
գիտելով զի նա զամենայն չարիս ուսուցանէ և առաջ-
նորդէ չար վարդապետութեան որոց սիրեն զնա։
Այսքիկ են որ զառաքինութիւնս մեզ իմաստասի-
րեն, ոչ եթէ 'ի կերպարանաց, այլ 'ի բնութենէ զա-
ռաքինութիւնս իւրեանց ցուցանեն. մինչ զի արտաքոյ
երևեալք իմաստասէրք քան * զմորոսս թատերականս խու-

* Այսպէս է հարազատ իմաստ ոչ վարդապետաց որդիք, այլ այնպէս
հատուածոյս 'ի յունականն, զոր անխնամ ժամն։
մեր օրինակս ունէր ոչ 'ի յարկս և

ղուցին ոչ ինչ լաւագոյն ունին||, ոչ քան զխնդութեան և ոչ քան զձգործոց յօրինուածս առնել ունելցին ցուցանել: Ո՛ի այսպիսի հակառակ են այսմ անհնարին. և որք զա-ւազանոջք և փերթևոտեալ մորուաք չքիին, ոչ կարողանան մտանել 'ի մանկս ուսանելով, կամ արտահել զհրամանս նոյ, և զանձինս իւրեանց զարդարել 'ի հրամանաց ճըշմարիտ իմաստութեանն. և ոչ եթէ զհրամանս միայն, այլ և զգործս: Քանզի առնելի որ զայսս որք 'ի վայրի բնակեն և 'ի հալածանս և 'ի մանկակութիւնս մաչեալ ընդին, բառ հրամանացն նոյ, և են յիմաստութեան մեծի, վասն որոյ բնութք յիմաստասիրաց եկեալ և բաղդամ ծախեալ ոչ կարացին այդ առնել. սոքա բաղդամ առուզութեանք պատասխանի առնեն քեզ զամենայն մեծաիմաստութեանք:

Այլ ոչ միայն այս է զարմանալի, այլ զի գործովք բատուզեն զհրամանս հաւատոյն: Այլ զի հոգի անմահ ունիցիք, և զի հանդերձեալ եմք զոր առս գործեաք՝ պատասխանի տալ և առաջի կալ ահեղական բեմին, և ըղմիտս հաւան առնեն, և զամենայն կենցաղս 'ի յայսմիկ կացուցին յասով. ուսոյ գեր 'ի վերոյ եդեն ամենայն կենցաղոյս, խրատեալք յաստուածային գրոց՝ եթէ "Արդարն 'ի հաւատոց կեցցէ", և թէ "Զոյս ոչ երբէք անմահեցուցանէ". առ ոչ ինչ որոց մարդիկ ակն ունին եթէ պայծառագոյն է, անկեալ կայցեն: Որքա և վասն նոյ իմաստասիրել հաւատար լինելին զոր և հրամայեաց նոծ:

Այլ թէ զանն յիմաստասիրացն առցես և ածցես այժմ 'ի մէջ, մանաւանդ զի և ոչ մի կարողութիւն է զաստնել, և եթէ զատանիցէ ոք և հանդերձ գրովք նոցա զոր երբեմն նոքա իմաստասիրեցին՝ եկեսցէ յառաջ, բացցէ զգիրս նոցա և ընթեռնուցու, և յայնժամ իմանա թէ սոքա երկրագործքս զինչ առնեն պատասխանի կամ նոքա զինչ իմաստասիրեն, զիր առ միմեանս և քննեա, և տեսանիցես թէ որչափ իցէ սոցա իմաստասիրութիւն, կամ որչափ նոցա անմտութիւն: Ո՛ի յորժամ նոցա խօսքն ոչ 'ի նախախնամութեան վայելեալ զէքս, և ոչ զի յոյժ եղեն աղաղածք, և ոչ առաքինութիւն ինչ բաւականութիւն, այլ գրեալ կայ մեծութիւն, աղգի ադնուութիւն, արտաքոյ ամբարտաւանութիւնք և երեմունք և այլ ևս ծաղրականս քան զայսոսիկ. իսկ սոքա

և վասն խնամոց և վասն դատաստանաց և վասն հրա-շագործութեան և զի զամենայն յոչնչոյից ած 'ի մէջ ած և վասն այլոց ամենայնի իմաստասիրեն, որոց առ-աքինքն հաղորդ ամենեքին ոչ լինին այսմ խորատուց, վ աք որ ոչ յայսցանէ ուսցի զզօրութիւնս Քրիստո-սի . . . : Մ՚ի այսուհետև 'ի կերպարանաց զատաս արհա-մարհեսցուք, այլ սքանչասցուք ընդ միտս ոգւոյ: Ո՛չ ինչ օգուտ իցէ արտաքոյ զգեստ յորժամ ոգին թշուառա-կան իցէ. զայլոն ոչ 'ի ձորձոց և ոչ 'ի մեծութենէ մար-մնոյ, այլ 'ի յոգւոյն լաւութենէ պարտ է գովել և ըս-քանչանալ: Մ՚երկայցս զսոցա ոգիս, և ուսանիցեն զգե-ղեցկութիւն ոգւոյ և զձոխութեան մեծութիւն բանիւք և հրամանօք և ամենայն կարգօք:

Ամաչեսցեն այսուհետև հելլենացիք, քանզի ծած-կին և չքնաղին յիմաստասիրութիւնս իւրեանց: Ո՛չ ի-և 'ի ժամանակս յորս կենդանի էին և զնոսա ուսուցա-նէին, և զայն բնութեամբ յոյժ և բարձրամիտ հպար-տութեամբ կարացին ուսանել զոյգս հրամանաւս, և 'ի նեղութիւնս փոքր մի անկեալ՝ տակային և զայն կորու-սանէին. իսկ աշակերտքն որսորդք և մաքսաւորք և չու-նաւանք և փոկաձևք 'ի փոքր մի ժամանակս զտիեզերս ամենայն ածին 'ի ճշմարտութիւն. և բիւրս յայսմանէ եղեալ նոցա վտանգ և նեղութիւն, և ոչ եթէ միայն ոչ չիջաւ քարոզութիւն նոցա, այլ և ծաղկէր օր ըստ օրէ և 'ի մեծութիւն վերանայր, և իմաստասիրել ուսուցա-նէ մարդկան տգիտաց և երկրագործաց. որով բերկրեալ առ հասարակ խօսին և պատմեն սոքա հանդերձ այլով ամենայնիւ ամենայն բարութեանց պատճառն, զոր-րոյ ասեմ, զոր արմատացեալ ունելով փութացան առ մեզ այնչափ ընթացեալ ճանապարհ և վտանգեալ անդամօք իւրեանց:

Տուք այսուհետև և մեք փոխանակ պարգևացս, որ-րոյ ասեմ և խրատուցս, տացուք զոցա թոշակս, և այս-պէս զլսոսս առաքեսցուք. և նախ վասն երգմանն սկսցուք զբանս, և 'ի խոր արմատոյ 'ի մնաց մերոց յամենեցունց խլեսցուք զչար սովորութիւն: Խորհիմ փոքր մի զոր յա-ռաջին ասացի, և այսօր յիշեցուցանել ձերում սիրոյդ:

Յորժամ 'ի Պարսից ազատեցան Հրէայքն, և 'ի բռ-նութենէն յայնմանէ զերծեալք և եկեալք 'ի հայրենի

Digitized by Google

որ մերձ լինին երկրին այնմիկ՝ ցուցանէ ։ Զի և որք յաստուածաշունչ գրոց զնոցանէ ասել և լուեալ ոչ առնուն 'ի միտ այնպէս, իսկ յորժամ եկեալ անցցէ ոք յերկիրն յայն և տեսցէ զնա աներևոյթ եղեալ և զամենեսեան 'ի յայրման, տեսցէ զգետին ամենևին ոչ երևեալ, այլ փոշի և ծուխ և շամանդաղ, յայնժամ հայեցմանէ զարհուրեալ բազում զգաստութիւն ընդունի և երթայ այնպէս խրատեալ.... Վասն այսորիկ և զտունս սուտերդմանց աւերել երկեցուցանէ, զի և զայլս 'ի նոցին տանջանացն զգաստս առնիցէ ։

Այս այսօր ցուցանեմ զի ոչ մի տուն կամ երկուս կամ երիս աւերեալ են յերդմանց, այլ քաղաքք բոլորովին և ժողովուրդք աստուածապաշտք և ազգ և ազինք, որ վայելեցին 'ի բազում խնամոն և փախեան 'ի բազում վտանգից ։ Երուսաղէմ իսկ քաղաք Աստուծոյ, ուր սրբութիւնքն և տապանակն և պաշտամունքն և այլն ամենայն, ուր մարգարէքն էին և շնորհք հոգւոյն սրբոյ և տախտակքն կտակարանաց և սափորն ոսկեղէն, ուր և հրեշտակքն միշտ երևէին, քաղաք որ բիւր պատերազմաց հանդիպեալ և բարբարոսաց արշաւանաց, և որպէս անդամանդեայ զգեցեալ այնպէս միշտ այսպէս առնէր զնոսա, և երկրին ամենայնի գերելոյ և անյայտ եղելոյ՝ ոչ ինչ վտանգից դիպաւ քաղաքն այն ։ Եւ ոչ միայն այս է սքանչելի, այլ զի և բանս չարաչարս տայր պատերազմողացն և այնպէս զնոսա առաքէր, և այնչափ վայելեալ յԱստուծոյ խնամակալութիւնն, զի վասն նորա ասել Աստուծոյ. «Որպէս ողկոյզ խաղողոյ յանապատի գտի զԻսրայէլ, և որպէս վաղահասուկն թզոյ զհարսն ձեր»։ և վասն քաղաքին նոցա դարձեալ ասէ. «Իբրև սոսա ձիթենւոյ 'ի գլուխ լերանց սիրեցի»։ Բայց սակայն սիրեցեալ յԱստուծոյ քաղաքն այն՝ որ յայնչափ վտանգից փրկեալ և բազում մեղաց թողութեան հանդիպեալ և յորժամ ամենեքեան կործանեցան՝ նա միայն եղև կարող փախչել 'ի վտանգիցն մի անգամ և երկրորդ և երրորդ, նա 'ի մէջ երդմանէ կործանեցաւ. և թէ զիարդ՝ ես ասացից ։

Եղև թագաւոր նոցա Սեդեկիա անուն. այսմ Սեդեկիայի թագաւորն բարբարոսաց Նաբուգոդոնոսոր երդումն ետ զի մնասցէ 'ի հնազանդութեան և մի մարտիցէ ընդ նմա. իսկ նա յետ այսորիկ 'ի բաց եկաց 'ի

նմանէ և առ եգիպտացւոց թագաւորն դարձաւ և կոր-
ծանեաց զերդումն իւր, և վասն երդմանն այնմիկ դի-
պաւ չարեացն զոր լուայք։ Նախ հարկ է ասել և զպա-
տակս մարգարէին որ զամենայն յայտնեալ է. «Եւ ե-
ղև բանն տեառն առ իս և ասէ. որդի մարդոյ, պատմեա
պատմութիւն և խօսեաց առակ առ տունն Իսրայէլի և
ասասցես. այսպէս ասէ Ադոնայի տէր, արծուին մեծա-
թև երկայնաթարած լի եղնգօք որ խորհեցաւ մտանել
'ի Լիբանան և առ զընտիր ընտիր մայրիցն և հան զծա-
տաղատունկն և տարաւ յերկիրն քանանացւոց և արկ-
կեաց զնա 'ի պարսպաւոր քաղաքին, և առ 'ի սերմանէ
երկրին և ցանեաց ընդ երկոս դաշտին, տունկ մնաս-
ցատունկ ընդ առատութեան ջրոյ երևելի կարգեաց առ-
նել զնա. բուսաւ և եղև որթ տկար փոքր մեծութեա
յերևել ուռոց իւրոց 'ի նմա, և արմատք նորա 'ի ներ-
քոյ նորա էին և եղև յորթ մեծ. եհան ողկոյզս և ար-
ձակեաց զշառաւիղս իւր։ Եւ երևեցաւ այլ արծուի
մեծ, մեծաթև բազմամագիլ»։ Արծիւ առն զթագա-
ւորն բաբելացւոց կոչէ. մեծ զնա և մեծաթև և երկայ-
նամագիլ անուանեաց վասն բազմութեան զօրացն և հե-
ռի ճանապարհին և վասն մեծ զօրութեանն և փութով
հասանելոյն։ Եւ որպէս արծուոյ զէն մագիլք նորա են,
նոյնպէս և թագաւորի զօրք և սպառազինութիւնք։ Լի-
բանան զհրէաստան կոչէ, զի մերձ կայ լեառն այն յոր
խորհեցաւ մտանել բաբելացին. առ և տարաւ 'ի Բա-
բելոն' առնուլ 'ի սերմանէ երկրին և ցանել ընդ առատ
ջրով 'ի դաշտին, այսինքն բազում խնամով և տեսու-
թեամբ հրամանն ետ նմա զոր թագաւորն կացոյց։ Նախ
այդի զքաղաքն կոչեաց զԵրուսաղէմ. իսկ որ ասէ' արկ-
կեաց զնա արծիւն և արմատք նորա 'ի ներքոյ, զհաս-
տատութիւն նորա ասէ։ Եւ դարձեալ խորհի ցուցա-
նել զանօրէնութիւն, մարտիւ զօրացն ձգեացէ զնա ար-
տաքս։ Իսկ այլ արծիւ մեծ զթագաւորն եգիպտացւոց
ասէ և բազմամագիլ զնոյն կոչէ։ Եւ ապա զինչ. «Եւ
ահա որթս այս պատեալ է զնովաւ, և առաքեաց ար-
բուցանել զնա։ Վասն այսորիկ այսպէս ասէ տէր, ե-
թէ իցէ աջողեսցի». այսինքն զի էանց զերդմամբն
և զդնդութեամբ, եթէ կարիցէ մնալ և ապրել և
ոչ անկանել։ Եւ ապա ցուցանէ թէ ոչ է այսպէս,

Digitized by Google

այլ կործի վասն երդմանն, և վասն տանջանացն նորա ասելով զպատժաւան յաւել. "Ո՛չ ապաքէն արմատք նորա և պտուղք նորա նեխեսցին, և չորասցին ամենայն շառաւիղք նորա": "Ոչ բազկաւ մեծաւ և ոչ ազգաւ բազմաւ բուռն հարկանել և խլել զնա յարմատոյ իւրոյ": զայս կամի ցուցանել՝ եթէ ոչ մարդկային զօրութիւն աւերէ և կործանէ, այլ զի ինքն Ա͞ծ մարտնչի ընդ նոսա և ածէ 'ի վերայ նոցա վասն երդմանն: Նա և ապա զառակսն ստուգաբանեալ ասէ. "Յորժամ եկեսցէ Թագաւորն բաբելացւոց յԵրուսաղէմ": և ըստ կարգի յաւելլով զընդդիմամարտութիւնս և ապա զերդմունսն, "Նա զի ուխտեաց ընդ նմա, ասէ, ուխտ": Եւ ապա ասէ վասն ամբաստանութեանն և 'ի բաց կալոյն. և թէ առաքէ հրեշտակս յԵգիպտոս տալ նմա հեծեալս և զօրս բազումս: Նա զկնի սորին ցուցանէ թէ վասն երդմանն այս ամենայն կորուստ լինի, և 'ի սակս Թագաւորին որ թագաւորէ նոցա. "Կենդանի եմ ես, ասէ Ադոնայի տէր, եթէ ոչ զնա որ անարգեաց զնզովսն իմ և անց ըստ ուխտն իմ որ ընդ նմա, 'ի մէջ Բաբելոնի վախճանեսցի, ոչ զօրու մեծաւ, այլ զի անարգեաց զերդումն և անց զուխտիւն: Կենդանի եմ ես, ասէ Ադոնայի տէր, եթէ ոչ ըստ ուխտին իմում զորով անց և ըստ երդմանն իմոյ զոր անարգեաց, հատուցից 'ի գլուխ նորա, և սփռեցից զվարմ իմ և ըմբռնեսցի պաշարմամբ իմով": Տեսանե՞ս թէ զիարդ ոչ մի անգամ և երկիցս, այլ բազում անգամ ասէ վասն երդմանն այս ա͞մ դիպեալ նմա. և զի անհնարելի է Ա͞ծ անարգել յերդմանէ:

Նա և ոչ 'ի տանջանաց միայն եկելոց կործանման քաղաքին վասն երդմանն է տեսանել զայս, այլ և 'ի հոգալոյն տեսանն Ջանիւ մեծաւ. մի կոխեր զերդումն: "Նա եղև, ասէ, յամին իններորդի Թագաւորին Սեդեկիայ յամսեանն տասներորդի որ օր տասն էր ամսոյն եկն Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելոնի և ամենայն զօրք իւր 'ի վերայ Երուսաղէմի և բանակեցան շուրջ զնովաւ, և շինեաց շուրջ զնովաւ պարիսպ և պաշարեցաւ քաղաքն մինչև ցամն մետասաներորդ Սեդեկիայ արքայի. և սաստկացաւ սով 'ի քաղաքին և ոչ գոյր հաց ժողովրդեան երկրին": Կարող էր Ա͞ծ յառաջնմէ 'ի միում աւուր մատնել զնոսա վաղ-

վաղակի եւ տանել ընդ ձեռամբ պատերազմողացն. այլ վասն այնորիկ զերիս ամս Թոյլ ետ մնալ, եւ շրջապատեալ զնովաւ Թոյլ ետ չարաչար պատերազմել ընդ նմա, զի զխնուորացն արտաքուստ երկիւղն եւ 'ի ներքուստ սաստիկ սովն լքանէր զնոսա: Այլ զապստամբողսն եւ ակամայ զԹագաւորն հարկանէին հաւան լինել բարբարոսացն, եւ այնիւ լինել մխիԹարուԹիւն ինչ յանցանացն: Այլ զի այս Ճշմարիտ է, ոչ է իմ բանս, այլ մարգարէին որ ասէր ցնա. "ԵԹէ ելցես առ Թագաւորն բաբելացւոց, կեցցէ անձն քո եւ քաղաքս մի այրեսցի հրով, եւ կեցցես դու եւ տուն քո: Ապա Թէ ոչ ելցես առ իշխանս Թագաւորին, մատնեսցի քաղաքդ 'ի ձեռս քաղդէացւոցն եւ այրեսցեն զնա հրով, եւ դու ոչ ապրեսցիս 'ի ձեռաց նոցա: Այլ ասէ Թագաւորն ցԵրեմիա. իմ բանք ինչ են ընդ հրեայսն փախստականս առ քաղդէացիսն, գուցէ տայցեն 'ի ձեռս նոցա եւ ձաղիցեն զիս: Այլ ասէ Երեմիա, ոչ մատնեսցեն զքեզ. բայց լուր զբան տեառն զոր խօսիմ ընդ քեզ, եւ լաւ իցէ քեզ եւ կեցցէ անձն քո: Ապա Թէ ոչ կամիցիս ելանել, այս բան է զոր եցոյց ինձ տէր. ահաւասիկ ամենայն կանայք որ մնացեալ իցեն 'ի տան Թագաւորիդ Յուդայ հանցեն առ իշխանս արքային բաբելացւոց, եւ նոքա ասասցեն՝ խաբեցին զքեզ եւ յաղԹեցին քեզ արք խաղաղականք, եւ արկցեն 'ի գայԹակղուԹիւն զոտս քո եւ դարձցին 'ի քէն, եւ զամենայն կանայս քո եւ զորդիս քո հանցեն առ քաղդէացիսն, եւ դու ոչ ապրեսցիս 'ի ձեռաց նոցա, զի 'ի ձեռս Թագաւորին բաբելացւոց ըմբռնեսցիս, եւ քաղաքդ այրեսցի հրով": Իսկ յորժամ ոչ հաւանեցաւ լսելով զայս, այլ մնաց 'ի մեղս եւ յանօրէնուԹիւնս, զկնի երից ամաց մատնեաց զքաղաքն նմ, եւ եցոյց զիւր մարգարէուԹիւնն եւ զնորա անմտուԹիւնն: "Այլ պատմեցաւ, ասէ, քաղաքն, եւ մտին ամենայն զօրքն բաբելացւոց եւ այրեցին զտունն տեառն եւ զտունն Թագաւորին եւ զամենայն տունս Երուսաղեմի, եւ զպարիսպն Երուսաղեմի քակեցին. եւ զամենայն ազատս Յուդայ կոտորեաց արքայն առս վաԹսուն, եւ զամենայն ժողովուրդն առ հասարակ խաղացոյց 'ի գերուԹիւն. եւ զարքուԹիւնսն որ 'ի տանն տեառն, զսպասն պղնձիս եւ զմեքենայսն եւ զծովն պղնձի եւ զսանս եւ զկաԹսայսն

և զտաշտսն և զտուփս առին, և զբուրվառսն և զափսէսն արծաթիս և ոսկիս, առ դահճապետն և տարաւ 'ի Բաբելոն. և 'ի քահանայիցն զառաջինսն և զայլ պատուական գործակալսն տարաւ առ արքայն 'ի Բաբելոն 'ի Դեբլաթայ և սպան զնոսա անդ,,:

Զինչ և արդ ինձ զմանգաղն թուեցեալ առ 'ի կործանել զտունս երդմնաղաց և զխորտակումն զքարանցն և զփայտիցն: Զինչ և ինձ զայս եթէ զհարդ եմուտ երդումն 'ի քաղաքն Երուսաղէմ, և զտունսն և զտաճարն և զպարիսպս և զպայծառ շինուածսն քակեաց և 'ի հող խլեաց զքաղաքն. և ոչ սրբութիւնք սրբոցն և ոչ անօթքն սուրբ և ոչ այլ ինչ դարձոյց զտանջանսն և զչարչարանսն որ վասն երդմնազանցութեանն: Արդ քաղաքն այսպէս ողբալի և աղօրմելի եղեալ. և որպէս զնա քակեաց գերանդին թուեցեալ, նոյնպէս և զամենայն տունս որ երդումն լինիցի:

Արդ լուր դարձեալ. իբրև խրամատեցաւ պարիսպ քաղաքին, "Եկն արքայ, ասէ, և ամ արք պատերազմողք արտաքս 'ի գիշերի ընդ ճանապարհ դրանն ընդ աջմէ պարսպացն. և պնդեցաւ զօրն քաղդէացւոց զհետ թագաւորին և հասին նմա յԱրաբովթ Երիքովայ, և ամ զօրք նորա ցրուեցան 'ի նմանէ. և կալան զթագաւորն և ածին առ արքայն բաբելացւոց 'ի Դեբղաթայ. և խօսեցաւ ընդ նմա դատաստանօք, և զորդիսն Սեդեկիայ սպան առաջի նորա, և զաչս Սեդեկիայ կուրացոյց, և կապեաց զնա կապանօք և տարաւ 'ի Բաբելոն,,: Օ՜ ինչ է՛ խօսէր ընդ նմա դատաստանօք: Խնդրեաց 'ի նմանէ զպատրուս, և դատաստան առնոյր ընդ նմա. և նախ զորդիս նորա ըսպան, զի տեսող լինիցի իւրոց վշտացն և յիշեսցէ զառաջին անհաւատութիւնն, և ապա փորեցին զաչս նորա: Վասն էր արդեօք այս լինի դարձեալ. զի վարդապետ առաքեսցէ զնա բարբարոսացն և որոց գերեցան անդ երբայեցւոցն. և զի ասասցին հրեայքն որք տեսցեն զկուրութիւն նորա եթէ որչափ չար է երդումն. ոչ եթէ նոքա միայն, այլ և որ բնակեալ էին շուրջ 'ի ճանապարհին տեսանէին զկապեալսն, ուսանէին 'ի չարեացն զմեղացն զմեծութիւն:

Վասն էր այն 'ի մարգարէիցն ասէ՛ ոչ տեսանել ըզԲաբելոն, և միւսն թէ 'ի Բաբելոն երթիցէ: Մին

մեզ թէ հակառակ են մարգարէութիւնքս, այլ չէ այն-
պէս. երկոքին ճշմարիտ են. քանզի զԲաբելոն Սեդե-
կիա ոչ ետես և ածաւ 'ի Բաբելոն։ Այլ եթէ ածաւ, զիա՞րդ ոչ ետես զԲաբելոն. զի 'ի Հրէաստան զկուրու-
թիւնն ընկալաւ. ուր զերդումն ստեաց, անդ էառ ըն-
դառն և տանջանացն համբերեաց։ Որպէս ածաւ 'ի Բա-
բելոն. գերի եղև։ Այլ երկուս տանջանս կրեաց, մինն կուրութիւնն և միւսն եւս գերութիւնն. զայս մարգա-
րէքն բաժանեցին, մին ասաց թէ ոչ տեսանէ զԲաբե-
լոն և միւսն թէ ածաւ 'ի Բաբելոն։

Զայս իմացեալ, եղբարք, և զառաջեալսն նախքան զայս 'ի մի վայր ժողովեալ, յիշեցէք և լսեցէք յայնմ չար սովորութենէն, այս աղաչեմ և յաղաչելոյ ոչ դա-
դարեմ։ Այլ թէ 'ի հնումն որ ոչ ստուգիւ պահանջէին էր խմաստութիւն՝ այլ բազում ընդարձակութիւն էր այնմ օրինաց՝ այնպիսի բարկութիւն եղև վասն միոյ երդմանն և այնչափ գերութիւն, այժմ զկնի այսչափ պատուիրանաց և առաջադիմութեան զինչ խրատանս կամ թողութիւն կայցէ որք երդնուն։ Միթէ այս իցէ խնդ-
րելոյ, զի մինչ 'ի ժողովարանս եկեսցուք մեք և լուիցուք զառաջեալս։ Այս այս իսկ առաւել դատապարտութիւն է և տանջանք անհնարինք յորժամ ստէպ լսեմք և ոչ առնեմք զառաջեալսն։ Զո՞ր թողութիւն կամ զո՞ր պա-
տասխանի ունիցիմք յորժամ յառաջին հասանէին մինչև 'ի վերջին այլս աստ ժողովիմք և այսչափ վայելեմք 'ի վարդապետութիւնս, և յոր եմքն՝ 'ի նոյն մնամք և ոչ մի յանցանս ոչ ուղղեմք։

Մի ոք ինձ այսուհետև պատճառեսցէ զսովորութիւն երդմանն. վասն որոյ նեղիմ և սգամ և բարկանամ եւս, զի 'ի սովորութենէ փոխել ոչ կարեմք։ Այլ եթէ 'ի սովորութենէ փոխել ոչ փոխիմք, զիա՞րդ կացցուք ապա 'ի ցանկութիւնս. սա սկիզբն 'ի բնութենէ ունի։ Զի ցանկութիւն բնական է, և չար ցանկութիւն 'ի կամաց է. իսկ երդումն ոչ 'ի կամաց և ոչ 'ի բնութենէ, այլ 'ի ծուլութենէ միայն։ Այլ զի ուսանիցիս թէ չէ դժուա-
րին գործս, այլ 'ի մերմէ ստորոգութենէ մինչ 'ի յայս մեղս եկանէ, և զի չէ դժուարին զսա ուղղել մարդոյ, տեսցուք զինչ սատանայ կարգեաց կամ որպէս լի ցա-
ւօք կամ որպիսի փութով և ջանիւ, և ոչ եղև արգել նորին հրամանացն....։

Digitized by Google

Յորժամ 'ի խաղս կաքաւելով զհանդերձս քարշեն, և որպէս թէ թևս առեալ խաղասացէ ձեռնելովն մարմնովն աղջամղջեալ, ո՞վ տեսանիցէ զայս և ոչ զարհուրի։ Այլք դանակս որեալ և յօդս կախեալ և ամենեքեան փութով մնացեն, զիա՞րդ է ոչ ամաչել և պատկառել որ զայս ամենայն ջանս վասն մարմնոյ դնելով, և վասն առաքինութեան հոգւոյ՝ ուր չիք ցաւք և գան՝ ոչ մի ընրել փոյթ։ Այլ թէ զայնց արանց ասիցեմք որ ձողակերպ գերան 'ի վերայ ճակատուն բարձեալ և որպէս ծառ արմատացեալ 'ի վերայ երկրի՝ այնպէս անշարժ և հաստատուն պահեն։ Եւ ոչ այս միայն է զարմանալի, այլ և մանկունս փոքունս 'ի վերայ ելեալ փայտին մարտ եդեալ ընդ միմեանս պատրաստին, ոչ ձեռք մերձ և ոչ այլ անդամ 'ի մարմնոյ, այլ ճակատովն միայն կալեալ ամենայն զգուշութեամբ բերիցէ զգերանն անշարժելի։ Այլ ոմն դարձեալ 'ի վերայ չուանի բարակի և անձկոյ այնչափ աներկիւղ վազս առնէ որպէս և մանկունք 'ի դաշտս արշաւեն. և սակայն զայս 'ի մտաց հաստատել կարծեն վասն զօրաւոր արուեստին։

Ոչինչ ունիցիս վասն երդմանց ասել, ասա ինձ, զո՞ր դժուարութիւնս զո՞ր քրտունս զո՞ր արուեստ զո՞ր նեղութիւն. կամելոյ միայն և սակաւ մի ջանալոյ պէտք են մեզ, և վաղվաղակի ամենայն լինիցի։ Եւ մի ինձ ասիցես եթէ զաւելորդն ուղղեմ. եթէ ոչ զամենայնն ուղղիցես, ոչ ինչ է. և մի համարիր եթէ արարի, և ակն ունել. քանզի 'ի սակաւուս յայամիկ պղերգանալ՝ և այն ընդ նմին լուծանի։ Բազում անգամ տուն որք չլինիցէ և 'ի վերոյ ձեղուն արկանիցէ, եթէ դէպ լինիցի և միոյ աղիւսոյ անկանել և այնմ յարմարել ոչ ջանայցէ, բոլորովին զամենայն տունն կործանէ։ Ոչ այս և 'ի ձորձս է տեսանել. եթէ փոքր մի հերձ լինի և ոչ կարիցէ, մեծագոյն ևս պատառի. Նոյն տես և յուխս ջուրց. եթէ սակաւ մի անց գտանիցէ, զամենայն տեղին զայն գնացս ջուրց առնիցէ։ Եւ դու այնպէս արասցես, զի յամենայն կողմանց պարապեսցիս. և մի կողմ եթէ մնասցէ, խից և զայն 'ի սատանայէ, զի հաստատուն մնասցես յամենայն կողմանց։

Տեսե՞ր զմանգաղն, տեսե՞ր զգլուխն Յովհաննու, լուա՞ր զթուացն Սաւուղայ, հայեցա՞ր զհրէատանի գե-

բութիւնն, լուսոյ և զհրամանանն Քրիստոսի որ ասէ ոչ եթէ վասն երդմնազանցութեան միայն, այլ և վասն երդմանն. քանզի սատանայական է և կազմիչ այսմ ամենայնի չարեաց. լուսոյ և ուսար զի ամենայն երդումն երդմնազանցութիւն ծնանի. զայս ամենայն ժողովեալ և գրեալ 'ի միտս քո: Ո՞չ տեսանես եթէ որպէս կանայք • տղայոց փոքունց փոխանակ մեծ պահապանաց աւետարանս յօրինեն 'ի վերայ պարանոցացն, և յամենայն կողմանց ուր և երթիցեն՝ բերիցեն ընդ իւր. և դու զպատուիրանս աւետարանին և զօրէնս գրեա 'ի սիրտս մտաց քոց. զատ ոչ է պէտք ոսկւոյ և արծաթոյ, ոչ գրոց ծախու, կամք և յօժարութեան միայն պէտք են. ունիս պահապան զաւետարանն, ոչ եթէ արտաքուստ վերաբերելով, այլ 'ի ներքս յշտեմարանս հոգւոյդ դնելով զբանն վարդապետութեանն: Յորժամ եկանիցես 'ի մահճաց քոց, 'ի մտանել և յելանել քո՝ զօրէնս զայս ասասցես 'ի միտս քո զոր Քրիստոս ասաց. “Ասեմ ձեզ՝ ամենեւին մի երդնուցուք„. և եղիցի քեզ օրէնս այս վարդապետութիւն. և ոչ ինչ պէտք են վաստակոյ, այլ սակաւ մտադրութեան: Եւ զի այս ճշմարիտ է, յայտ յայտնանէ է, յորժամ կոչես զորդի քո և երկիցուցես զնա և սպառնաս և փոքր մի գանեցես և սաստկես, եթէ ոչ ուղղեսցես զօրէնս՝ տասնաւորս գանս արկցես, արդ տես թէ որպէս վաղվաղակի 'ի բաց կացցէ 'ի սովորութենէն: Եւ զիա՞րդ ոչ իցէ այս ապիրատութիւն, զի փոքունք տղայք առեալ 'ի մէնջ երկիւղ՝ կան 'ի հրամանս մեր, և մեք այսպէս յոյժ ոչ երկնչիցիմք որպէս և մանկունք 'ի մէնջ երկնչեն:

Զոր վերագոյնն ասացի, և աստ ասեմ. դիցուք մեք օրէնս մեզ նոքա ոչ վասն դիւթականն կարգաց և ոչ վասն մերոյ ինչ գործոյ մերձենալ յայլ ինչ մինչև լցցուք զօրէնս զայս. իսկ յորժամ հարկաւ զայցեմք յայս, հեշտաւ լինի և կատարի օրէնս, և այսու զարդարեսցուք ըզմեզ, զարդարեսցուք և զքաղաքս մեր: Իսկ և տես թէ որպիսի համբաւ տարածի ընդ ամենայն տիեզերս՝ եթէ Անտիոքս սովորութիւն կալաւ որպէս քրիստոնէից վայելլէ, զի ոչ ոք լսէ և ոչ հարկ ինչ լինիցի երդման: Ասացեն զայս և մեր դրացի քաղաքք. մանաւանդ ոչ եթէ դրացիքն միայն, այլ և ընդ տիեզերս բանս այս երթայ.

Digitized by Google

զի և վաճառականք որ խառնին ընդ ձեզ աստ, և այլք որք մնասեն պատմեն զայս ամենայն։ Յորժամ յայլ քաղաքում քաղաքս գովաբանեն, լուր լինի այս և 'ի ծովս և 'ի նաւահանգիստս պատմեն, տուք նոցա ասել որոց յայսմ վայրէ երանեն՝ եթէ զոր տեսաք ուղղութիւն յԱնտիոք, յայլ քաղաքս տակաւին զայս ոչ է տեսա-նել. զի առողջութիւն են ընկալեալ արք քաղաքին այն-մինչ նախ զլեզուն հատանել, քան թէ երդումն ելանի-ցէ 'ի բերանոյ նոցա։ Այս է ձեզ զարդ և պարծանս. և ոչ միայն այս, այլ և վարձ բազում. զանկան ձեզ այլք և նմանեն։ Մինչ մի կամ երկուս շահեցիս՝ այն-չափ վարձս խոստացեալ է ինձ, որ զամենայն անիրաւս խրատեսցէ՝ ըստ չափու ընկալցի հատուցումն յինէ։ Արդ պարտ է փութալ հոգել և ջանալ կշտամբութեանն, և խնամել զի ոչ 'ի մերոց ուղղութեանց եւեթ, այլ հատուցումն մեծ և փոխարէնս բազումս յայլոց ուղղութեանց առ-ցուք, և այսպէս վայելեսցուք 'ի յաւիտենից բարու-թիւնսն։ Որոց լիցի ամենեցուն մեզ հանապազ վայե-լեալ և հանդիպել արքայութեանն նոյն հօր 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր, որում փառք և զօրութիւն վայե-լէ և ամենասուրբ Հոգւոյն յաւիտեանս. ամէն։

## ՃԱՌ ՔՍԱՆԵՐՈՐԴ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ*

Վասն հաշտելոյ թշնամութեանն ընդ քաղաքին, և որք մնացին 'ի կործանել զպատկերս անդրիանտացն. և 'ի գալուստ եպիսկոպոսին Փլաբիանոսի։

Ի բանից որոց միշտ 'ի ժամանակի վտանգիցն առա-ջարկ սիրոյ ձերում, յայտնեմ և այսօր սկսանիմ և ա-սեմ ձեզ. օրհնեալ է Աստուած որ արժանի արար զմեզ այսմ սուրբ և պատուական տօնիս կատարել այսօր հանդերձ ուրախութեամբ և ցնծութեամբ, և շնորհեաց զգլուխն անդամոց և մարմնոյ զհովիւն հօտից, զվարդապետն ա-շակերտաց, զքահանայապետն քահանայից։ Օրհնեալ

* Վերջին ճառս անդրիանտաց մերում, քսաներորդ առաջներորդ ըստ կարգի նախընթացիցն քսան-է 'ի յունականն, որոյ քսաներորդ նշանակեալ յօրինակին բոլորն պակաս 'ի մերն։

է Ած որ արար ընդ մեզ առաւել քան զոր խնդրեաքն և ածեմք զմտաւ բոլորով սրտիւ ։ Մեզ արդեօք բաւական էր ազատել միայն 'ի հասանել վտանգէս, և վասն այսր առաքաք բազում աղաչանս պաղատանօք . իսկ մարդասէրն Ած այժմ 'ի կատարել զխնդրուածս մեր և յաղթել հանդերձ բազում առաւելութեամբ, և զհայրս մեր՝ զոր անյոյս ունելով՝ եառ մեզ ։ Ով իսկ կարծէր թէ այսպէս 'ի սակաւ աւուրս հասցէ առ թագաւորն և խօսեսցի ընդ նմա մաղթական ձայնիւ, արձակեսցէ զվը-տանգս և վաղվաղակի կանխեալ եկեսցէ առ մեզ, մինչ դեռ 'ի սուրբ զատկիս կարողանալ հասանել և ընդ մեզ կատարել զտօնն տօնս ։ Բայց աւանիկ եղև անակնկալի յոյս այս, և զհայրս մեր ընկալաք . որք մնացաք 'ի հօրէ 'ի վիշտս, և ընկալաք բարձրագոյն մխիթար ըղ-մայրս ամենեցուն ։

Եւ արդ ընկալաք զհայրս մեր հանդերձ բազում ուրախութեամբ մատուցեալ մեզ զքաղցրութիւն թագաւորին . և որում անյոյս էաք, ընկալաք արդեօք և առաւել պտղաբերեմք զփափագումն ։ Վասն այսր ամենայնի գոհասցուք զմարդասիրէն Այ և սքանչասցուք ընդ նորա զօրութիւնն և մարդասիրութիւնն և խնամութիւնն և գթութիւնն զոր արար վասն քաղաքիս մեր ։ Քանզի սատանայ կործանել խորհեցաւ և սկսաւ չարութեամբ վանել հանդերձ անբարտաւանութբ համարձակողացն . իսկ Ած և զքաղաքս և զքահանայս և զթագաւորն այսիւ զարդարեաց, և զամենեսեան պայծառագոյնս կացոյց ։ Քաղաքս հաճելի եղև զի այսպիսի վտանգից դիպաւ . քանզի որք զօրաւորք էին և զգեցեալ էին բազում մեծութիւն, նա և քան զթագաւորս բազում զօրութիւն ունէին, ընթանային ամենեքեան յեկեղեցիս և առ քահանայապետս փութային, և հանդերձ բազում հաւատովք զ'ի վերուստ յուսոյն կախեալ կային ։

Եւ զկնի գնալոյն մեր ամենեցուն հօրս, որք 'ի բանտի բնակեալք էին՝ խառնեալք և զարհուրեալք ամէին, եթէ ոչ թողու զբարկութիւն թագաւորին, այլ և առաւել բարկասցի և խորհի զկործանումն ամենայն քաղաքիս, և աւելի ևս քան զայն աղմկեալք ։ Եւ որք կապեալք էին յայնժամ, այնչափ յոյժ համբաւէ զար-

հուրեալք եղէն, զի մեր մխիթարական յայսմ սուտ թուէր նոցա. և սատանայի հնարագիտութիւնն տակաւ 'ի գործ արկեալ խորհէր խափանել զոգիս մեր՝ ոչ ժտել 'ի տեառնէ, և ոչ ունկն դնել բանից մխիթարութեան զոր ասէաք ձեզ, զի զառաջինն ոչ էին փախուցեալ. քանզի որք յուսով զանձինս մեր ամրացուցաք և կախեցաք ըղ-հաստատութենէ փրկութեանն և ոչ վստահացեալ 'ի մարդ եղաք, այլ յամենազօրն ած. վասն որոյ համարձակեցաք թէ կատարումն ամենայնի քաղցրագոյն լինիցի, զի ոչ երբէք է ամաչել 'ի յոյսս յայս յուսացելոց: Այլ այս որքան պսակաց փոխանակ է կամ որչափ գովաբանութեան բաւական քաղաքիս, որչափ և յայլ իրս հանդիպեցաք այ բարութեանց: Վասնզի չէ երբէք և չէ իսկ մնասել 'ի շուրջանակի փորձութեանց յորժամ անձինք հանդիպին 'ի տքնութիւն և 'ի հսկումն և հայել առ ած ուղիղ սրտիւ, և զմարդկայինս զամենայն աղբ առնել՝ և մնալ միայն 'ի նմանէ մարտակից լինել:

Արդ քաղաքս այսպէս հաճոյ եղև, իսկ քահանայապետս կանխաւ ոչ որպէս քաղաքս. քանզի սա զհոգի իւր եդ վասն ամենեցուն. թէպէտ և բազում արգելք էին նմա ոչ կարացին, ոչ աւուրքն ձմերայնի, ոչ չափ հասակի ծերութեանն, ոչ տօնիս աւուրք, և ոչ ինչ նուազ քան զայս քղյ իւր հասեալ 'ի վերջին կատարումն շնչոյ, որ և քան զամենայն արգելս գնալոյ 'ի վեր անցանէր. ոչ ասաց ընդ անձն իւր, զի՞նչ իցէ այս՝ սա միայն մնացեալ է ինձ յիմաստն և այսչափ ժամանակս կենակցեալ ընդ իս և բարձեալ ընդ իս զլուծն այ, և այժմ հասեալ 'ի վերջին կատարումն, մեք աստ զսա թողեալ երթիցո՞ւք, ո՞չ տեսցուք զվախճան սորա և զմահ և ըղվերջին բան լուիցուք: Զի սա որ զօր ամենայն աղօթէր մեզ, զգերեզմանականն ո՞չ երգեսցուք նմա, զխըրփել աչաց և զփակել բերանոյ և զայլսն ևս բազում. արդ այժմ որպէս յանապատս դմն առանց առաջնորդի կացցէ՝ ոչ միոյ իրիք հանդիպել յեղբօրէ, որում մանաւանդ կարօտութիւն ունէր հանդիպել, 'ի մեկնել ոգւոյն ոչ տեսանիցէ որ քան զամենեսեան նմա կարօտագոյն էր. և ո՞րպէս ոչ նմա քան զմահն ծանրագոյն իցէ: Սակայն թէ և հեռի ուրեք էի, ո՞չ էր պարտ ընթանալ և կցորդել նեղութեանն մինչև պարգևել նմա զկարօտու-

թագաւորանէ։ Բայց հարցեալ իմ ընդ ամենեսեան ե-
թէ զինչ ընդ թագաւորին խօսեցաւ կամ որպէս եած
'ի հաւան եւ կամ զխնդիր զամենայն բարկութիւն նորա
'ի բաց եհան, սա առ մեզ զայս բանս խօսեցաւ. ասէ։
Մեք ոչ ուղղեցաք զգործս զայս. այլ թագաւորն՝ որ
քաղցրացուցեալ զսիրտ նորա, եւ նախ քան զմեր բանս,
ասէ, զամենայն բարկութիւն եղծ եւ եղծ զոտմնու-
թիւն. եւ վասն եղելոցս ասէ՝ որպէս այլ ոք անարգեալ՝
այնպէս առաւել բարկութեան զամենայն պատմեալ թա-
գաւորին. եւ զայլսն թագացոյց հեզ գոլով եւ ցած, զոր ա̄ծ
'ի մէջ եած։ Օ խորհուրդ արդեօք. փոքր մի վերագոյն ե-
կեց 'ի բանս պատմել ձեզ։

Յորժամ եւ սա 'ի քաղաքէս եւ զամենեսեան եթող
'ի տրտմութեան, քան զմեզ որք յայս նեղութիս էաք՝
խիզն բազմապատիկ եւ դժուարինս չարչարէր։ Նախ ե-
կեալ սոցա 'ի հասարակ ճանապարհի եւ հանդիպեալ
զինուորաց որք գային վասն քննութեան եղելոց առա-
քեալք 'ի թագաւորէն, եւ ուսեալ 'ի նոցանէն թէ վասն
որոյ առաքեցանն՝ սա յորժամ յայտնեաց զեղեալ վը-
տանգ քաղաքիս, զաղմուկն, զխռովութիւնն, զփախուս-
տըն, զերկիւղն, զատագնապն, զնեղութիւնն, եւ հեղձոյր
զաղաղակս արտասուաց, զի հնձէին աղիք որոց։ Այլ քան
զհարց ասփորութիւն առաւելապէս ցուցանեալ, յոր-
ժամ չարչարեցին որդիք նոցա, եւ ոչ կարէին մերձ լի-
նել եւ փրկել, այնպէս եւ զթանէր հայրս մեր տանջէր.
ոչ զի 'ի նեղութիւնս թողեալ էր զմեզ՝ միայն ողբայր,
այլ եւ զոր 'ի հեռաստանէ դիպելոց էր մեզ. սակայն եւ
այս եղեւ վասն մերոյ փրկութեան։ Օ՜ ի յորժամ զայս
'ի նոցանէ լուաւ, ջերմապէս հեղձոյր զաղաղակս արտա-
սուաց, եւ հանդերձ բազում աղաչանօք առ ա̄ծ դիմեալ՝
զամենայն գիշերն անքուն կատարէր, աղաչելով զի մերձ
լիցի քաղաքիս որք 'ի չարչարանս էին, եւ զմիտս թագա-
ւորին հեզ անիցէ։

Իսկ յորժամ եմուտ 'ի մեծ քաղաքն յայն եւ եկն 'ի
զաւիթս թագաւորականս, եկաց հեռագոյն 'ի թագա-
ւորէն, եւ 'ի խոնարհ զձեռըն լռութեամբ արտասուէր,
զերեսս ծածկեալ պատկառանօք, որպէս թէ ինքնին էր
որ զամենայն գործեալ էր։ Նոյնպէս զայս կերպարանս
ողբալովն, մինչ զի տեսութեամբ եւ հանդիպմամբ ածէր

զԹագաւորն յողորմութիւն, և ապա սկսանէր տանել վասն մեր պատասխանի։ Իսկ լռեալն և որ ոչ խօսէր՝ խորհէր զի մինն արտաքս ելցէ և միւսն 'ի ներքս եկեսցէ. ելցէ սրտմտութիւնն 'ի սրտէ Թագաւորին և մտցէ քաղցրութիւնն. զի այս իսկ հորդէ ճանապարհ 'ի բանս պատասխանւոյ, որպէս եղև իսկ։ Որ օրինակ և Մովսէս ելեալ 'ի լերանն լռեաց մինչև կոչեաց զնա Տէր և ասէ "Թոյլ տուր և ջնջեցից զժողովուրդ զայդ", այսպէս արար և հայրս մեր։

Լուեալ զսա Թագաւորն արտասուեալ և 'ի վայր խոնարհեալ՝ եկն յինքն, և որ ինչ դիպաւ յարտասուաց քահանայիս յայտնեաց զայս 'ի խօսից զոր խօսեցաւ ընդ նմա։ Ո՛չ ի ոչ սրտմտութեամբ և ոչ խռովութեամբ էին բանք Թագաւորին, այլ տխուր միայն. ոչ բարկութբ̃, այլ տրտմութեամբ. բայց ոչ նեղապատութեամբ երկուծս ունելով. և զի այս մանաւանդ ճշմարիտ է, յայտ է 'ի բանիցն զոր ասաց։ Ասաց՝ զինչ է այդ որ վասն մարդկան գարշելեաց և ամենագարշից որոց ապրելն ոչ է պարտ՝ եկիր առ 'ի յաղաչանս մատուցանել որք արժանի են ամենայն տանջանաց։

Այլ զայս ամենայն Թողեալ զբանս՝ պատասխանի արար ծանրագոյն և լի պատկառանօք. և խօսէր զիւրոց բարեգործութեան զոր յիւրում ժամանակի քան զամենայն Թագաւորսն որ յառաջագոյն էին՝ առաւել բարեգործէր մերում քաղաքիս։ Ո՛ր անիրաւութեան, ասէ, փոխանակ զայս գործեցին Անտիոքացիքն. զինչ փոքր կամ մեծ դատաստանս ունիցին, ոչ եթէ առ իս միայն գտան անարգիչք, այլ և զգնացեալսն 'ի մէնջ 'ի հանդերձեալն անարգեցին։ Ո՞չ էր բաւական մինչ 'ի կենդանիս կացուցանել զբարկութիւնն, այլ և զորս 'ի գերեզմանի՝ անարգէին. Թէ և մեղանչական լեալ էաք նոցա, որպէս և նոքա կարծէին, ո՞չ էր նոցա պարտ խնայել 'ի մեռեալսն որք ոչ էին գործեալ նոցա անիրաւութի̃։

Իսկ ապա քահանայապետս հեղլով ջերմագոյն զարտասուսն և յոգւոց հանեալ մանչելով՝ ոչ լռէր այնուհետև. զի տեսանէր զպատասխանիս Թագաւորին, և ինքն առաւելապէս մեծ առնէր զանգոսնութիւնն մեր. բայց հառաչելով 'ի ներքուստ ծանրագոյն և դառն, Խոստովանիմք, ասէ, ով Թագաւոր և ոչ ուրանամք զա-

սացեալս զայս. վասն այսորիկ մանաւանդ ողբամ, զի առ ձեր անբառ ողորմութիւնդ և սէրդ նախանձեցաւ սատանայ, և այնչափ՝ մինչ զի և առ բարեգործդ մեր անգգամք երևեցաք: Եթէ սպանանես, եթէ հրով այրեսցես, եթէ զբնաւն ապականեսցես, ոչ ըստ արժանեաց մերոց խնդրեսցես վրէժս: Զի զինչ լինիցի դառնագոյն քան զայս յորժամ զբարեգործ և զայսպիսի սիրող և ողորմած երևեալ առ մեզ՝ այնպէս բարկացուցանել, և զայս տիեզերք ամենայն լուիցեն և գիտիցեն անմտութիւնս մեր իմասցին:

Զի եթէ ընթացեալ էին բարբարոսք 'ի վերայ քաղաքին մերում, և խլեալ 'ի հիմանէ զպարիսպն և զբնակութիւնս վառեալ հրով և գերեալ զամենեսեան, փոքր էր վտանգն մինչ դուք կենդանի էք. քանզի այնչափ բարութիւն ցուցեալ 'ի մեզ, որով յուսայաք արձակել զմեզ յայնմ նեղութենէ, և զի կարող իսկ էիք ածել զմեզ կանխաւ յառաջին կերպարանն: Արդ այժմ քոյին բարութիւնքն 'ի մէնջ պակասեալ և գութ սիրոյ շիջեալ, որ քան զամենայն ամրութիւնս պարսպաց զգուշութիւն էր մեզ, առ ո՞վ արդեօք ապաւինեսցուք ձողոպրեալ 'ի չարեաց, զո՞վ կարեմք տեսանել փոխանակ քո. և մեք զայդպիսի քաղցր տէր և հայր փոխանակ երկիր պագանելոյ բարկացուցաք: Աստի առ ամենայն մարդիկ անհամարձակ գտաք, և ոչ կարեմք առ ամօթոյ մերում հայել յերեսս ուրուք. նա և ոչ զարեգակնս զայս կարեմք տեսանել ազատ աչօք, զի արտևանունք մեր ծածկեալ են ամօթով, և զհամարձակութե բարբառ՝ ծանրութիւն լեզուաց մերոց որ յամօթոյ՝ փակեալ է 'ի մէնջ և 'ի բանից պապանձեցուցեալ. այս քան զամենայն գերութիւն թշուառագոյն է, և յիրաւի տանիմք վերջին անարգանաց....:

Այլ եթէ կամիս, ով Թագաւոր, կայ բժշկութիւն վիրացս և դեղ այսչափ չարեացս. և սակայն զի 'ի տգէտ մարդկանէ եղեն չարիքն այն մեծ և անհաստատելի դիմամարտութիւնն: Այսպիսի իսկ հանդիպեցաւ մերում բնութեանս. զի յորժամ զմարդն արար ած և ած զնա 'ի դրախտին, և մեծի հանգստեան և բազում պատուոյ արժանացոյց, ոչ համբերեաց այնչափ բարի կենդանութեան մարդոյն սատանայ. զչարացաւ ընդ նմա, և 'ի

է և տեւողին նշանակ պատուասիրութեան. իսկ որ 'ի մարդասիրութենէ հիւսեալ քեզ պսակ՝ քո միայն է աւգտութիւն և քոյին իմաստասիրութեանդ. և ոչ այսպէս սքանչանան զքէն վասն այդր պատուական քարանցդ, որպէս գովաբանեն զքէն վասն անտես սանելոյ բարկութեանդ:

Նկարեցին զքոյին պատկեր զանգրիանոսքն, այլ կարողութիւն է քեզ պայծառագոյն յարուցանել քան զայն: Եթէ թողցես մեզ ուսուցելոյն զպարկեշտութիւն, և չխնդրեսցես և ոչ մի մեղս 'ի նոցանէ, յայնժամ ոչ եթէ 'ի հրապարակս կամ 'ի փողոցս միայն յարուցանեն քեզ պատկերս 'ի պղնձոյ կամ յարծաթոյ և կամ յոսկւոյ և ոչ քարամբք պատուականաւք, այլ որ քան զամենայն նիւթս պատուական է՝ զմարդասիրութիւն և զողորմութիւն զգեցեալ պատմուճան: Այսպէս ըստ այսմ իւրաքանչիւր ոք 'ի միտս իւր յարուցանէ քեզ պատիւ. և այնչափ յօրինեալ ժողովես պատկերս, որչափ յամենայն տիեզերս բնակեալ են և բնակեն մարդիկ: Ոչ եթէ մեք միայն, այլ և որք զկնի մեր և որք զկնի նոցա ամենեքեան որ լուիցեն զայս, որպէս թէ բարի գտեալ 'ի քէն, այնպէս նոքա գովեն զքեզ և սիրեսցեն: Այլ զայս ոչ եթէ աշառանօք և ըստ երեսաց ասիցեմ, այլ որպէս և են իսկ, և գիտակ ես, ով թագաւոր, պատմեմ քեզ բան ինչ, զի ուսանիցիս թէ ոչ այնպէս զինուորք և սպառազէնք, յաղթութիւնք և ծառայից բազմութիւնք և այլ այսպիսիք պայծառագոյն արասցէ զթագաւոր, որպէս իմաստասիրութիւն հոգւոյ և հանդարտութիւն:

Երանելին Կոստանդիանոս պատկեր երբեմն զիւր առաքեալ, և անարգեալ՝ բարկացուցանէին զնա բազումք գնալ և խնդրել վրէժ զանարգանացն. և ասեն՝ եթէ զամենայն երեսս պատկերին քո մանրեցին քարամբք: Իսկ նա շօշափեալ զերեսս իւր ձեռօք իւրովք և ժպտեալ ասէ՝ եթէ ոչ երբէք գանս հայիմ 'ի ճակատս իմ, այլ ողջանդամ է գլուխս և ամենայն պատկերս իմ: Նոքա ամենեքեան պատկառեալք և ամաչեցեալք 'ի բաց կացին յանիրաւ խորհրդածութենէ: Իսկ զբանս զայս մինչև ցայժմ երգեն ամենեքեան, և այսչափ ժամանակս ոչ թառամեցաւ և ոչ շիջաւ իմաստութեանն յի-

շատակ։ Տեսանեմ թէ որպէս բազում և մեծ է յաղթութիւնս այս։ Բազում քաղաքս նա ինքն յարոյց և բազմաց բարբարոսաց յաղթեաց, այլ յայնմ ամենայնէ և ոչ մի ոչ յիշեմք. զբանս զայս մինչև ցայժմ 'ի բերան ունիմք, և որք զկնի մեր գան և զկնի նոցա՝ ամենեքեան լուիցեն։ Այլ ոչ այս միայն է սքանչելի թէ լուիցեն, այլ զի գովաբանութեամբ ասեն, և լուեալ ընդունին. և ոչ ոք իցէ որ կարիցէ մոռանալ յորժամ լսէ, այլ ընդ նմին գոչէ և զառողն գովէ։ Այլ եթէ 'ի մարդկանէ այսչափ վայելեաց փառօք վասն միոյ բանին, որքան վայելէ 'ի մարդասիրէն այ պսակօք։

Այլ զինչ պարտ է ասել զԱստուածգիտութեան կամ զայլ հեռի պատուութիւնս. պարտ է յանձնէ քումմէ տեսանել և 'ի քոյին ուղղութեանց աղաչել։ Յիշեա նախ զգալուստ այսմ տօնիս՝ թէ զիարդ Հրովարտակս առաքէիք յամենայն տիեզերս արարածոց, հրաման տըւեալ զի որք 'ի բանտի իցեն՝ զամենեսեան արձակել և զպարտիս իւրաքանչիւր թողուլ նոցա. և զոր ոչ էիք բաւական անդ ցուցեալ զձեր մարդասիրութիւն՝ առեալ հանդերձ թղթովք, եթէ կարող էիր՝ և զգնացեալսն յարուցանէիր այսօր, ածէիր 'ի կեանս և բնակեցուցանէիր 'ի յարկս իւրեանց։

Այլ արդ նոքա վասն որոյ աղաչեմս, մեռեալք են, և յայնմ ժամէ նախ քան զելանել վճռին մերձեալ է քաղաքն այս 'ի դրունս դժոխոց։ Արդ յարո զնոսա առանց ընչից, առանց ծախուց, առանց յամելոյ և աշխատանաց. բաւական է քեզ հրամայել միայն և յարուցանել զայնչափ քաղաքն որ 'ի վերայ երեսաց իւրեանց անկեալ կան 'ի մահ։ Այժմ տուր նոցա զձայն յարութեան քոյին մարդասիրութեանդ։ Ոչ այսպէս շնորհ երևի նոցա յառաջին տուողէն իւրեանց, որպէս և այժմ եթէ դարձցին 'ի վճռոյ քոց. զի որ կենաց սկիզբն ունէին՝ գնաց, և զի աճեցին և եղեն մեծ, դու իսկ այժմ հանդերձ բարեկենդանութեամբ ած զնոսա 'ի յարութի։ Ոչ էր այսպէս սքանչելի եթէ եկեալ էր նոցա պատերազմ և գերութիւն 'ի բարբարոսաց և դու ազատեալ էիր զնոսա 'ի վտանգից, որպէս այժմ սքանչելի է զի խնայեսցես 'ի նոսա. զի զայն բազում անգամ բազում թագաւորք արարեալ են, իսկ զայսոսիկ դու միայն գոր-

Digitized by Google

ծեօ։ Այն իսկ ոչ է այնչափ սքանչելի և զարմանալի, այլ 'ի վեր քան զամենայն անհնարինութիւն եղիցի դի-պուածս այս, զի ծառայք այնչափ բարի գտեալ և ան-չափ մեղուցեալ՝ և դու 'ի նոցանէ անցուցանես զբար-կութիւն. այս քան զմտութիւն մարդկան 'ի վեր անցանէ։

Իմա ով Թագաւոր, զի ոչ վասն միոյ քաղաքին միայն է խորհել քեզ, այլ վասն ամենայն քրիստոնէից։ Որք Հռոմայք և հեթանոսք և բարբարոսք և ամենայն տիե-զերք լուիցեն զայս և մնասցեն քեզ եթէ զինչ վճիռ խորհիս վասն նոցա։ Եթէ մարդասէր լինիս և հան-դարտ, գովեն զայն հրամանս և պատմեն ամենեքեան, և փառաւորեն զտէր Ած քո և ասեն ցմիմեանս. բարէ թէ որպիսի է քրիստոնէից կարգ և զօրութիւն. մարդ որ ոչ ունի պատուակից ինքեան 'ի վերայ երկրի, այլ տէր է ամենեցուն 'ի կորուսանել և յապրեցուցանել, նա ուր արժան էր այսմ զբարկութիւն ըմբռնել և խրատել զիմաստութիւն, զոր ոգէս մարդ ոչ կարէ ցուցանել. յիրաւի պարծանս մեծ է ամենայն քրիստոնէից, որ 'ի մարդկանէ հրեշտակս առնէ և վերագոյն կացուցանէ քան զամե-նայն կարգս բնութեան...։

Եւ եթէ անկարողութիւն էր գնալ անդ և յանկա-մակս լինէին քեզ զայս առնելով և հաւասարակից էր զօրութիւնն, յիրաւի և կասկածէիք։ Իսկ արդ եր-կուցեալ և 'ի մահ մերձեալ երկիւղիւ և առ ոտս քո ընթացեալ հանդերձ ինև և ոչ առ այլ ոք ակն ունիցի զօրհանապազ, միայն եթէ անկեալ 'ի խորխորատս, և աղօթս առնեն առ հասարակ յերկինս հայելով և զձեռս աղաչելով գալ և մերձենալ յաղաչանս յայս, որպէս թէ հասեալ իցեն 'ի յետին կատարումն շնչոյ, իւրա-քանչիւր ոք վասն իւրոյ կորստեան պատրաստեալ է, և զիա՞րդ ոչ իցէ աւելորդ երկիւղ այդ...։

Վասն որոյ յիշեա արդ զահեղական օր դատաստա-նին յորում ամենեքեան դատ ունիմք տալ վասն գոր-ծոց մերոց. իմա և դու եթէ մեղս ինչ և իցեն քեզ, զամենայն քաւեսցես այսու մարդասիրութեամբ 'ի թողուլ զյանցանս մեղուցելոց քեզ լոկ բանիւ փրկչին՝ առանց աշխատութեան, առանց քրտանց։ Ոմանք աղաչեն և կա-շառս մատուցանեն ակն և արծաթ. ես սուրբ տանիս 'ի թագաւորութեանն որէնս քո մերձեալ ես, և փոխա-

նակ ամենայն կաշառաց զայս ամենայն խորհուրդ տարածեալ առաջի քո, և աղաչեմ զքեզ նմանս լինել տեառն քո՝ որ զօրհանապազ անարգեալ 'ի մէնջ, ոչ երբէք պակաս ունիցի 'ի խնամելոյ զմեզ: Մ'ի յամօթ առնել ըզյոյս մեր և մի յանդիմանեսցես զխոստումն իմ: Այլ զայս ևս ծանուցանեմ քեզ. եթէ խորհիս հաշտել և ունել զառաջին բարեմտութիւնն քո ընդ քաղաքին և թագացուս զայս յիրաւի բարկութիւնս, հանդերձ բազում համարձակութեամբ երթայցեմ անդ. ապա թէ ոչ արձակես զբարկութիւնս 'ի քաղաքէն, ոչ եթէ միայն ոչ կոխեմ 'ի սահմանան յայն, այլ և ուրացայց զնա միանգամայն և յայլ քաղաքս պարապեցեմ զանձն իմ: Քաւ լիցի ինձ կոխել 'ի հայրենի հողոյ իմոյ, որում մարդասէր թագաւորդ և հանդարտ քան զամենայն մարդիկ և հեզ ոչ առնես ողորմութիւն և հաշտ լինիս ընդ նմա:

Զայս և առաւել քան զայն ասէր և հեղոյր առաջի թագաւորին արտասուս: Իսկ նա եղև որպէս Յովսէփ եղբարցն: Զի որպէս նա յայնժամ ետես զեղբարսն և խորհէր արտասուել, բայց լեցուցանէր զտրտմութիւն զի մի ապականեսցի պատասխանին, այսպէս և թագաւորն 'ի սիրտ իւր արտասուէր և ոչ յայտնէր վասն նոցա ամենեցուն որ մերձն կային, այլ և ակամայ յանդիմանեցաւ զհետ այսմ բանի: Ոչ խնդրէր երկարաբանել, բայց մի բան միայն ասացեալ՝ որ քան զթագն որ 'ի գլուխն նորա առաւելագոյն զարդարեաց զնա: Զինչ էր զոր ասաց թագաւորն:

Զինչ է մեծ այս կամ սքանչելի՝ եթէ անարգողաց թողցուք զբարկութիւն, և նոքա մարդիկ են իցեն, որովհետև տէրն մեր եկն յերկիր և վասն մեր եղև ըզծառայի կերպարանս, և որոց բարի գործեաց՝ 'ի նոցանէ խաչեցաւ, և վասն խաչահանուացն աղաչէր զՀայր և ասէր. "Հայր թող սոցա զի ոչ գիտեն զինչ գործեն": զինչ սքանչելի է եթէ մեք ընկերաց մերոց թողուցումք:

Այլ զի այս մի բանս ոչ էր պատասխանի, եցոյց յայտնապէս և զայլն ամենայն որ ոչ նուազ քան զոր հանդերձեալ է պատմել զայնոսիկ քահանայապետս այժմ: Ընդ յետ այսորիկ խորհէր հայրս մեր զի անդ հանօրէն ընդ նմա կատարեսցէ զտօնս զայս. յայնժամ ակամայ զատ

հաւանեցուցանէր և հարկէր փութով գալ և երևել քաղաքին ։ Գիտեմ, ասէ, զի հոգիք նոցա երկուցեալ և բազում վիշտք են 'ի մեծացորդան . երթ մխիթարեա, ասէ ։ Եթէ տեսանիցեն զնաւուղիղդ, ոչ յիշեսցեն զանցեալ ծուփս ալէկոծութեանն, այլ և զյիշատակ ողորմութեանն ջնջեսցեն զամենայն ։ Իսկ որպէս մեծայր քահանայապետս թէ արժան էր առաքել զորդի իւր, այլ նա խորհէր ցուցանել առուգապէս թէ բոլորովին զամենայն բարկութիւն ջնջեալ էր 'ի մտաց իւրոց ։ Այլ տուր, ասէ, բարձ յինէն զայսմ արգելս՝ շիջուցանելով զպատերազմն զայս, և ես գնամ սակայն ։

Արդ զինչ լինիցի առաւել քան զհոգին զայն հանդարտ և հեզ ։ Պատկառեն, ասէ, Հելլենացիք և ամաչեսցեն . և ոչ միայն ամաչեսցեն, այլ և խրատեսցին և թողցեն, ասէ, զմոլեգնութիւնս իւրեանց և եկեսցեն, ասէ, 'ի զօրութիւնս քրիստոնէական, և 'ի թագաւորէ և 'ի քահանայապետէ ուսցին զիմաստասիրութիւն ։

Յայնժամ ծածանէր թագաւորն ոչ միայն եկաց, այլ յորժամ եւ 'ի քաղաքէն քահանայապետս և անց ընդ ծով, առաքէ անդ զամենս քննել և բազում իրօք փութացուցանել, զի մի երբէք մնասցի ժամանակն, և սա անփոյթ արասցէ զխափանումն քաղաքին, որպէսզի կատարեսցէ զտօնն ։ Որպիսի հայր բարեգութ, քաղցր և գթած այսչափ 'ի վերայ անարգողաց որդւոց ջանս դիցէ ։

Նոյն և այլ ևս վասն արդարոյս գովաբանութիւն, զի զայս կատարել ոչ փութացաւ, որպէս և այլք կարծէին առնել . իսկ նա հրովարտակս արձակել յորում գրեալ կայր լուծումն տուգանականացն ։ Եւ եթէ զի սա ոչ բերիցէ, այլ քանզի սա մեղմաբար գայր, այլ անանց մրտրակավար երիվարօք արժանացոյց կանխել յառաջագոյն մատուցանել զաւետիս քաղաքին, զի մի սա մեղմաբար գալով 'ի Ճանապարհին՝ տխրութիւնն 'ի վերայ կայցէ ։ Այս միայն էր փութացուցանելն նորա, ոչ եթէ զի նոքա եկեսցեն բերցեն զքաղցր զայս և զլի բազում մխիթարութեամբս, այլ զի վաղվաղակի հայրենի մեր բնակութիւնս հանգիստ առցէ ։

Զօր և յայնժամ արարէք իսկ զարդարելով զփողոցս, և բազմականս բազում յարուեստանոցս եդեալ,

